ՄԱՆՈՒԿ ԱԲԵՂԵԱՆ

# ՀԱՅՈՑ ՀԻՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

(XI—XIX ԴԱՐԻ 30-ԱԿԱՆ Թ. Թ.)

Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՍԵՒԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՏԱՆ
1959 ՏՊ. ՍԵՒԱՆ ՊԷՅՐՈՒԹ

ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՄԲ

Խորէն Սարգսեանի
Յովհաննէս Մամիկոնեանի
Արամ Ղանալանեանի



Գործ՝ Նկարիչ Մհեր Մանուկի Աբեղեանի.

**Ակադ. ՄԱՆՈՒԿ ԱԲԵՂԵԱՆ**
**(1865–1944)**

# ՑԱՆԿ

## ԱՇԽԱՐՀԻԿ ՈԳՈՒ ՎԵՐԱԾՈՒՄ



## ԱՌԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՎԵՐՋԱԼՈՅՍՆ ԵՒ ԱՐԵՒՄՈՒՏԸ



## ԼՐԱՑՈՒՄ

### ՏԱՂԱՍԱՑՈՒԹԻՒՆ



### ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՆՈՐՈԳՈՒՄԸ 17—19-րդ ԴԱՐԵՐՈՒՄ



### 19-րդ ԴԱՐԻ ՍԿԶԲԻ ԳՐԱԲԱՐ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆԸ



## ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ

### ԱՌԱՋԻՆ ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ԵՐԿՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ԵՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՉՈՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՎԵՑԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ԵՕԹԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ

# ԱՌԱՋԱԲԱՆ

1940 թուականի աշնանը Մանուկ Աբեղեանը իր համաձայնութիւնը տուեց ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական ֆիլիալի Գրականութեան եւ Լեզուի Ինստիտուտին գրելու հայ հին գրականութեան պատմութիւնը:

Այս աշխատութեան առաջին հատորը, որտեղ հայ գրականութեան պատմութիւնը հասնում է մինչեւ Գրիգոր Նարեկացին, այսինքն 10-րդ դարը, հանգուցեալ գիտնականը աւարտել է — ինչպէս այդ երեւում է հատորի առաջաբանի թուագրումից — 1942 թ. ապրիլին:

Նոյն թուականի կէսերից Աբեղեանը սկսեց աշխատել երկրորդ հատորի վրայ, որ պիտի ընդգրկէր հայ գրականութեան պատմութիւնը 11-րդ դարից մինչեւ 19-րդ դարի առաջին տասնամեակների գրաբար գրականութիւնը: Երկրորդ հատորի վրայ Աբեղեանը աշխատեց՝ կարճատեւ ընդմիջումներով՝ մինչեւ իր մահը, բայց ցաւօք չաւարտեց այն, կարողացաւ մշակել միայն մինչեւ 14-րդ դարի վերջը, այն է՝ Առաքել Սիւնեցին:

Սկզբնական շրջանում Ինստիտուտը ենթադրում էր՝ օգտագործելով «Արարատ» ամսագրում Աբեղեանի հրատարակուած յօդուածները 19-րդ դարի գրաբար գրականութեան մասին, եղած բացը (15—18-րդ դարեր) լրացնել այլ հեղինակի շարադրանքով:

Սակայն, ժամանակի ընթացքում պարզուեց, որ Աբեղեանի արխիւում պահպանուել են Գէորգեան ճեմարանում նրա կարդացած՝ հայ հին գրականութեան պատմութեան հէնց այդ պակասող շրջանին վերաբերող դասախօսութիւնների սեւագրութիւնները: Ուսումնասիրութիւնը ցոյց տուեց, որ այդ սեւագրութիւնները իրենց շարադրանքով ու արծարծած տեսակէտներով՝ կարող են մշակուած մասի թէկուզ համառօտ շարունակութիւնը հանդիսանալ, որով եւ ապահովւում էր հատորի հեղինակային միասնութիւնը:

Այսպիսով, Մանուկ Աբեղեանի «Հայոց հին գրականութեան պատմութեան» տուեալ հատորը բաղկացած է հետեւեալ երեք հիմնական մասերից. ա) մշակուած մաս, որ ամէնից ընդարձակն է եւ ընդգրկում է, ինչպէս ասուեց, 11—14-րդ դարերը, բ) սեւագիր մաս, որ ընդգրկում է 15—18-րդ դարերը, եւ գ) տպագրուած մաս («Արարատ»ում), որ ընդգրկում է 19-րդ դարի առաջին տասնամեակները: Վերջին երկու մասերը հատորում անուանուած են «Լրացում» — տարբերելու համար առաջին մասից:

Մի քանի խօսք այս բաղադրիչ մասերից իւրաքանչիւրի վերաբերեալ:

# ԱՌԱՋԻՆ՝ ՄՇԱԿՈՒԱԾ ՄԱՍ

1· Մ· Աբեղեանի «Հայոց հին գրականութեան պատմութեան» երկրորդ հատորի մշակուած մասի ձեռագիրը պարփակուած է 19 տետրակի մէջ, որոնք համարակալուած են — բացառութեամբ 18-րդ տետրակի — իր իսկ Աբեղեանի ձեռքով: Մ· Աբեղեանը համարակալել է նաեւ էջերը, ըստ որում իր ձեռքով համարակալումը նա հասցնում է մինչեւ 16-րդ տետրակի վերջը, այն է՝ 1051-րդ էջը· 17 եւ 18-րդ տետրակների էջերը համարակալուած են արդէն Մ· Աբեղեանի որդու, նկարիչ Մհեր Աբեղեանի ձեռքով, ինչպէս եւ վերջինիս ձեռքով է համարակալուած վերը յիշուած 18-րդ տետրակը: Այս երկու տետրակները պարփակում են ձեռագրի 1052—1183 էջերը: Ինչ վերաբերում է 19-րդ տետրակին, ապա նրա համարակալումը նորից արուած է Մ· Աբեղեանի ձեռքով, բայց ոչ իբրեւ 18-րդ, այլ 16-րդ տետրակի շարունակութիւն և ընդգրկում է 1052—1060 էջերը· այս երեւոյթի բացատրութիւնը կը տրուի սոյն առաջաբանի երրորդ կէտում:

Մ· Աբեղեանի ձեռագիր տետրակները սովորական աշակերտական տետրակներ են, որոնց մի քանի հատի միացումից ստացւում էր ստուար մի տետրակ:

Այս հատորը նախորդի պէս ունի «Յաւելուածներ» բաժին: Առաջին չորս յաւելուածը նշուած են իբրեւ յաւելուածներ Մ· Աբեղեանի կողմից եւ մտնում են սոյն մշակուած մասի մէջ:

2· Իր ձեռագրի 19-րդ տետրակում—որը, ինչպէս յայտնի կը դառնայ քիչ յետոյ, գրուած է 16-րդ տետրակից անմիջապէս յետոյ—Մ·Աբեղեանը 1059րդ թերթի երկրորդ էջի վրայ ունի հետեւեալ նշումը իր անելիքի մասին·

Գրելիք (14—17-րդ դարեր)·

I· Եկեղեցական գրականութեան վերջալոյսն եւ արեւմուտը: Յովհան Որոտնեցի, Առաքել Բաղիշեցի, Առաքել Սիւնեցի եւ այլն:

II· Վիպական գրականութիւն:

III· Քնարերգուներ· Մկրտիչ Նաղաշ, Թլկուրանցի, Աղթամարցի եւ ուրիշներ:

IV· Գուսանական երգեր—հայրէններ:

*Չորրորդ շրջան* — գրականութեան նորոգումը 17—19-րդ դարերում:

Հետագայում, երբ Աբեղեանը աւարտում է սոյն «գրելիքի» առաջին կէտը՝ բացառութեամբ Բաղիշեցու, 18-րդ տետրակի վերջին, 1183-րդ թերթի երկրորդ էջի վրայ նա նորից նշում է իր անելիքը·

Շարունակութիւն — Առաքել Բաղիշեցի·

*Ֆարման Մանուկի սիրավէպը*·

*Տաղասացութիւն*

1· Մկրտիչ Նաղաշ

2· Թլկուրանցի

3· Գր· Աղթամարցի

4· Անանուններ

Գուսանական տաղեր:

Այդ երկու նշումներից կարելի է եզրակացնել, որ Մ· Աբեղեանը յստակ պատկերացում ունէր իր անելիքի մասին· նշումների առանձին կէտերը տեղ-տեղ տարբերւում են իրարից միմիայն ձեւակերպումով, բայց ոչ բովանդակութեամբ։

Սակայն, այդ «գրելիքը», ինչպէս յայտնի է, հիմնականում գրելիք էլ մնաց· 1183րդ էջով աւարտուող Առաքել Սիւնեցին Աբեղեանի «Հայոց հին գրականութեան պատմութեան» երկրորդ հատորի վերջին, հեղինակի կողմից մշակուած թեման էր։

«Գրելիք»-ից կարելի է եզրակացնել, որ Առաքել Սիւնեցուն պիտի հետեւէր Առաքել Բաղիշեցին, որը մեզ յայտնի 19-րդ տետրակում բացակայում է։

Բարեբախտաբար, Մ· Աբեղեանի թղթերի մէջ գտնուեց մի ձեռագիր տետրակ, որի առաջին 8 էջը ունի «Անանուն տաղեր» վերնագիրը, իսկ դրանց հետեւող 6 էջը՝ «Առաքել Բաղիշեցի»։ Տետրակի ընդհանուր վերնագիրն է՝ «Նիւթեր հայոց հին գրականութեան», որ եւ դրոշմուած է շապկի վրայ։ Թէ՛ տետրակից եւ թէ՛ գրութեան բովանդակութիւնից ու ձեւից կարելի է հաստատապէս ասել, որ դա Մ· Աբեղեանի վերջին շրջանի գրածներից է եւ որ այն բաղադրիչ մի մասը պիտի դառնար «Առաքել Բաղիշեցի» գլխի։

Նկատի ունենալով այն, որ Առաքել Բաղիշեցին Հայոց հին գրականութեան պատմութեան կարեւոր օղակներից մէկն է, առանց որի պակասաւոր կը լինէր այդ պատմութեան շարադրանքը, նպատակայարմար համարուեց յիշեալ հատուածը—թէեւ այն չի ընդգրկում Բաղիշեցու ամբողջական դիմանկարը—տեղաւորել ընդհանուր հիւսուածքի մէջ։

3· Կոստանդին Երզնկացու բաժինը, բաղկացած 15 պարագրաֆից ու մի յաւելուածից («Շահնամայի ձեւական ազդեցութիւնը»), աւարտւում է 16-րդ տետրակում, նրա վերջին, 1051-րդ էջի վրայ, ըստ որում յաւելուածը մըտցուած է հետագայում· հակառակ Աբեղեանի սովորութեան՝ տետրակների շապիկները դէն նետել կամ էլ կենտրոնացնել նրանց վերջում՝ յաւելուածը մնացել է պարփակուած իր շապկում։

«Հայոց հին գրականութեան պատմութեան» երկրորդ հատորի 19-րդ տետրակը բովանդակում է միայն մի պարագրաֆ, որի վերնագիրն է՝ «Վերածնութեան գրականութեան առաջին էտապը», թիւ 16, որ հետագայում մատիտով ջնջուած է ու դարձուած 1։

Թէ այս՝ 16 թուից եւ թէ պարագրաֆի ամփոփող բովանդակութիւնից կարելի է եզրակացնել, որ այն, ըստ սկզբնական յղացման, պէտք է լինէր Կոստանդին Երզնկացու ստեղծագործութիւնը քննարկող գլխի (որը, ինչպէս մեզ արդէն յայտնի է՝ համաձայն վերջնական ձեւաւորման՝ 15 պարագրաֆից էր բաղկացած) վերջին, յաւելուածին նախորդող 16-րդ պարագրաֆը։

Փոխելով իր միտքը, Մ· Աբեղեանը հանել է այս 16 պարագրաֆը 16-րդ տետրակից, նրա փոխարէն գրել յաւելուածը, էջերը համարակալել, ապա շարունակել համարակալումը 16-րդ պարագրաֆի էջերի վրայ՝ հասցնելով այն 1052-ից՝ 1060-ի։

Այդպիսով, դուրս է գալիս, որ 16-րդ տետրակի անմիջական շարունա-

կութիւնն է 19–րդ տետրակը: Ապա ո՞ւր մնացին այդ դէպքում 17 եւ 18–րդ տետրակները:

16–րդ պարագրափը, այսինքն՝ «Վերածնութեան գրականութեան առաջին էտապը» աւարտւում է հետեւեալ պարբերութեամբ. «Բարեբախտաբար գրի առնուած մնացել են գուսանական «հայրէնները», որոնք մեր քնարերգութեան գոհար զարդերն են: Սրանց միջոցին էլ կը տեսնենք այս գործի շարունակութեան մէջ»:

Հետագայում Մ. Աբեղեանը մատիտով երկու խաչ է դրել այս պարբերութեան վերջին, ու նախորդ թերթի (1059) երկրորդ էջում, կրկնելով երկու խաչը, նոյնպէս մատիտով աւելացրել. «բայց նախ քան այդ, մի հայեացք ձգենք մեր եկեղեցական գրականութեան վրայ»:

17 եւ 18–րդ տետրակները պարփակում են հէնց եկեղեցական գրականութեան այդ տեսութիւնը: Ինչպէս մեզ յայտնի է, 18–րդ տետրակի համարը Աբեղեանի ձեռքով չի գրուած, բայց դրա փոխարէն նախորդ տետրակի հոռմէական XVII–ը դրոշմուած է Աբեղեանի իսկ ձեռքով: Պարզ է, ուրեմն, որ Մ. Աբեղեանը երկրորդ անգամ փոխել է իր մտադրութիւնը «Վերածնութեան գրականութեան առաջին էտապը» հատուածի տեղի նկատմամբ ու որոշել չդնել այն ոչ միայն «Կոստանդին Երզնկացի» գլխում, այլեւ նրանից անմիջապէս յետոյ, այսինքն՝ նրա եւ եկեղեցական գրականութեան տեսութեան ապանքում:

Արդ՝ ո՞ւր դնել այդ պարագրափը: Աբեղեանը 16 թիւը փոխելով մատիտով 1–ի, ապա նոյնպէս մատիտով ընդհանուր վերնագիր «Տաղասացութիւն» (շապկի վրայ՝ «Տաղասացներ») և ենթավերնագիր՝ «Ընդհանուր տեսութիւն» տալով, պարզ է, որ մտադրութիւն ունէր լրացնելու այդ նորաստեղծ գլուխը նոր պարագրափներով, բայց թէ ուր պիտի զետեղէր այս ամէնը՝ չէր որոշել ու իր տարակուսանքները նա նշել է—դարձեալ մատիտով—հէնց վերնագրին կից հետեւեալ բառերով. «դնել միջական քերթուածներից առաջ?? յետոյ?»:

Այդ տարակուսանքները Մ. Աբեղեանը, որքան մեզ յայտնի է, չլուծեց: Միջական քերթուածների մասին, որ ըստ նրա յղացման պիտի հետեւէր եկեղեցական գրականութեանը, նա չգրեց: «Տաղասացութիւն» գլուխն էլ մնաց նոյնութեամբ՝ յոկ մեզ յայտնի «Վերածնութեան գրականութեան առաջին էտապը» պարագրափով:

Ելնելով այս ամէնից, այլեւ նկատի ունենալով, որ նշուած պարագրափը տեղի տեսակէտից միանգամայն համապատասխանում է Մ. Աբեղեանի սկզբնական մտադրութեանը՝ Ինստիտուտը որոշեց թողնել այն «Կոստանդին Երզնկացի» գլխում իբրեւ այդ գլուխը եւ նրան նախորդող գլուխները եզրափակող հատուած:

Յիշուած 16–րդ պարագրափը ներկայ հատորի մէջ նշուած է 17–րդ համարով, որովհետեւ Մ. Աբեղեանը հետագայում՝ այդ պարագրափը գրելուց յետոյ, 15րդ պարագրափի վերջին հատուածը առանձնացրել ու դարձրել է 16րդ պարագրաֆ հետեւեալ վերնագրով՝ «Պարսկական բանաստեղծութեան ձեւական ազդեցութիւնը եւ չափածոյ բանաստեղծութեան կատարումը»: Այս նոր վերնագրի տակ մատիտով Աբեղեանը նշել է՝ «միացնել տաղասացութեան»,

դնելով կողքին երկու հարցական, որով եւ արտայայտել է իր տարակուսանքը այս հատուածի տեղադրութեան առթիւ:

4. Ներկայ հատորի Ա. գլուխը, որ կրում է «Վերածնութեան գրականութիւն» ընդհանուր վերնագիրը ու «Կեանքի ու աշխարհայեցութեան փոփոխութիւն» ենթավերնագիրը, իբրեւ դասախօսութիւն, 1943 թ. յունուարի 18-ին, «Կեանքի եւ աշխարհայեցութեան փոփոխութիւնը 10-րդ դարի վերջերում եւ 11-րդ դարի սկզբներում իբրեւ հիմք Հայոց գրականութեան վերածնութեան շրջանի» խորագրի տակ, կարդացուած է ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական փիլիալում:

Նոյնը, առանց դասախօսութեան ժամանակ արուած սակաւաթիւ բացատրութիւնների եւ յաւելումների, տպագրուած է ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական փիլիալի «Տեղեկագրի» մէջ (1943, թ. 1, էջ 39—52):

Նկատի ունենալով, որ հատորի համար գրուածի եւ «Տեղեկագրում» տըպուածի մէջ էական փոփոխութիւններ չկան, տալիս ենք առաջինը:

5. Ներկայ հատորի «Յովհաննէս Սարկաւագ վարդապետ» գլուխը, որ բաղկացուցիչ մասն է «Նոր ժամանակաշրջանի առաջին փուլերը գրականութեան մէջ» բաժնի, իբրեւ առանձին հատուած տպուած է Հայկ. Գիտ. Ակադեմիայի «Տեղեկագրի» մէջ (1944, թ. 1—2, էջ 31—60):

Յիշեալ գլուխը Մ.Աբեղեանը, «Տեղեկագրին» տպագրութեան յանձնելուց առաջ, ենթարկել է զգալի փոփոխութեան թէ՛ ըստ բովանդակութեան եւ թէ՛ ըստ կառուցուածքի: Նա հարստացրել է իր գործը մի շարք նոր եւ կարեւոր նիւթերով, խմբագրել ու ընդլայնել է եզրակացութիւն-ընդհանրացումները, փոխել մի երկու հատուածի վերնագրերն ու կառուցուածքը, վերջից աւելացրել մի նոր հատուած՝ «Ձգտում դէպի բնութիւն եւ ռացիոնալիզմ եւ դրա ազդեցութիւնը գրականութեան մէջ» եւ այլն:

Այս ամէնի հետեւանքով աշխատանքն ընդհանրապէս դարձել է աւելի մշակուն ու կատարեալ:

Նկատի ունենալով յիշեալ հանգամանքը, Ինստիտուտը նպատակայարմար գտաւ ներկայ հատորում տալ ոչ թէ այս հատորի համար Աբեղեանի կողմից նախապէս գրուած «Յովհաննէս Սարկաւագ վարդապետ» գլուխը՝ «Սարկաւագ վարդապետի կենսագրութեան շուրջը» վերտառութեամբ յաւելուածով, այլ վերջինիս հիմնովին վերամշակուած վարիանտը իր նոյնանուն յաւելուածով՝ տպուած «Տեղեկագրի» մէջ:

Կարեւոր ենք համարում յիշելու նաեւ, որ այստեղ իբրեւ բնագիր օգտագործուում է՝ մեզ զբաղեցնող աշխատութեան «Տեղեկագրից» կատարուած այդ արտատպութեան հեղինակի գրադարանում պահպանուած այն օրինակը, որի վրայ նրա ձեռքով կատարուած են մի շարք նոր, ուշագրաւ լրացումներ եւ ուղղումներ:

6. «Դրեյլիք» երկրորդ կէտը «Վիպական գրականութիւն» բաժինն է, որը նոյն «գրեյլիք» երկրորդ վարիանտում կոչուած է «Ֆարման Մանուկի սիրավէպը» (տե՛ս երկրորդ կէտը):

Մահը խանգարեց հեղինակին ի թիւս մի շարք այլ բաժինների գրելու նաեւ Ֆարման Մանուկի սիրավէպի մասին:

Ֆարմանի վէպի արձակ եւ չափածոյ տարբերակները կարելի է գտնել

միջնադարեան մի շարք հայ գրչագրերում: Այդ վէպի ընտիր վարիանտներից մէկը (չափածոյ) «Պատմութիւն Զարմանի Ասմանի» վերնագրի տակ, հանդերձ ֆրանսերէն թարգմանութեամբ, հրատարակուած է Փարիզի «Անահիտ» ամսագրում (1904, թթ. 3—11 եւ 1905, թթ. 2, 4—9) եւրոպացի հայագէտ Ֆր. Մաքլէրի կողմից[1]:

Մ. Աբեղեանի կարծիքով, որ նա արտայայտել է Ինստիտուտի եւ Մատենադարանի մի քանի աշխատակիցների, Զարմանի վէպը ծագումով հայկական չլինելով հանդերձ (դա հաւանօրէն ընդհանուր արեւելեան մի սիւժետ է), ստեղծագործական արմատական մշակման է ենթարկուել հայ իրականութեան մէջ: Նա գտնում էր, որ յիշեալ վէպը իր գեղարուեստական արժանիքների շնորհիւ հանդիսանում է միջնադարեան հայ գրականութեան ուշագրաւ յուշարձաններից մէկը, որը յատկապէս աչքի է ընկնում իր կենդանի պատմուածքով, ժողովրդական պարզ լեզուով ու ոճով, սահուն-երաժշտական ոտանաւորով:

Այս նկատառումով էլ, ահա, Աբեղեանը անհրաժեշտ էր համարում՝ Զարմանի վէպը մտցնել Հայոց գրականութեան պատմութեան մէջ:

## ԵՐԿՐՈՐԴ՝ ՍԵՒԱԳԻՐ ՄԱՍ

7. Մ. Աբեղեանի «Հայոց հին գրականութեան պատմութեան» երկրորդ հատորի այս մասը կազմուած է հեղինակի՝ Գէորգեան ճեմարանում 1899—1900 թուականներին եւ հետագայում կարդացած դասախօսութիւնների շարադրանքից(տես՝ «Արարատ», 1908, էջ 890 եւ ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական ֆիլիալի «Տեղեկագիր», 1941, թ. 5—6, էջ 85):

Օգտագործուած ձեռագիրը ամփոփուած է երկու տարբեր շապիկների մէջ, ըստ որում առաջին շապկի մէջ գտնւում են հատորիս «Տաղասացութիւն» բաժնի նիւթերը, երկրորդի մէջ՝ «Պատմագրութիւն» և «Երգիչներ» (Սայաթ-Նովա) բաժինների նիւթերը:

Առաջին շապիկն ունի 68 համարակալուած եւ մէկ չհամարակալուած սովորական տետրակի չափի թերթեր, երկրորդը 48+23 թերթեր, ըստ որում

---

*1 Վէպի համառօտ բովանդակութիւնը հետեւեալն է։ Ասորեստանի Զարմանագան թագաւորը ծերութեան հասակում ունենում է մի արու զաւակ, որին կնքում է Զարմանի Ասման անունով։ Մեծանալով՝ Զարմանն աչքի է ընկնում իր գեղեցկութեամբ, իմաստութեամբ եւ քաջութեամբ։ Պարսից թագաւորի դուստր Շահիշավնուրինը լսելով Զարմանի համբաւը եւ տեսնելով նրան, սիրահարւում է եւ հօրից գաղտնի, երկու անգամ ծպտեալ այցելում նրան։ Պարսիկ նշանաւոր փահլեւան Հնդի Փուլադը փորձում է զաւել Զարմանին, սակայն վերջինս սպանում է նրան։ Այդ բանի համար Զարմանը բանտարկւում է պարսից թագաւորի կողմից, բայց շուտով իր հաւատարիմ ընկեր Փայփառի ջանքերով նա ազատւում է բանտից եւ սիրած Շահիշավնուրինի հետ հայրենիք վերադառնալով, ամուսնանում։ Ժամանակ անց, մեռնում է Զարմանի հայրը, եւ նա դառնում է Ասորեստանի թագաւոր։ Զարմանը կատաղի կռիւներ է մղում Շահիշավնուրինին վերադարձնելու եկած պարսից թագաւորի հետ եւ պարտութեան մատնում նրան։ Շուտով Զարմանն ունենում է մի արու զաւակ (Շահիշիրինին), որը մեծանալով դառնում է հօր նման գեղեցիկ, իմաստուն եւ քաջ մարդ։ Յաղթողի երջանիկ ուրախ կեանքով 60 տարի ապրելուց յետոյ, մեռնում է Զարմանը։ Նրա տեղը Ասորեստանի թագաւոր է դառնում որդին՝ Շահիշիրինը։*

վերջինը սկսւում է 8–րդ թերթից (որի առաջին էջը ջնջուած է ու ներկայացնում է շարունակութիւն այլ շարադրանքի) եւ վերջանում 31–ով:

Առաջին շապիկը ունի «Բանաստեղծներ. աշխարհիկ իռսանք. 15—18–րդ դար» վերնագիրը և մի շարք նշումներ կատարուելիք անհրաժեշտ լրացումների վերաբերեալ (հեղինակների անուններ, գրքերի վերնագրեր և էջեր): Երկրորդը վերնագրուած է՝ «Առաքել պատմագիր. Զաքարիա սարկաւագ. Աբրահամ Կրետացի»:

Հրատարակութեան պատրաստելով նշուած նիւթերը, Ինստիտուտը կատարել է հետեւեալը.

ա. Հանուած կամ կրճատուած են անմշակ մասերը եւ բնագիրը ծանրաբեռնող մէջբերումները, առանձնապէս Յովհաննէս Թլկուրանցու, Զաքարիա Սարկաւագի եւ Սայաթ–Նովայի բաժիններում:

բ. Համապատասխան սկզբնաղբիւրների հիման վրայ՝ ստուգուած եւ ճշդուած են հեղինակի կողմից արուած բոլոր մէջբերումները:

գ. Տեքստը լրացուած է մի շարք մէջբերումներով (գլխաւորապէս «Առաքել Դաւրիժեցի» գլխում), որոնց էջերը ցոյց են տրուած Աբեղեանի կողմից:

դ. Ձեռագրի լուսանցքներում եղած կարեւոր նշումները՝ վերնագրեր, դիտողութիւններ, բառեր, անուններ եւ այլն տրուած են տողատակի ծանօթութիւնների մէջ:

ե. Մոռացութեամբ կամ գրչի վրիպմամբ բաց թողուած բառերը վերականգնուած են քառակուսի փակագծերի մէջ. նոյնպիսի փակագծերի մէջ են տրուած աղճատ տեքստը հասկանալի դարձնելու համար արուած սակաւաթիւ խմբագրական լրացումները:

8. Հայոց հին գրականութեան 4–րդ շրջանի բովանդակութիւնն ու վերջինիս համապատասխան վերնագրումը եղել է Մ. Աբեղեանի մտորումների առարկան երկար ժամանակահատուածում, շարունակ ենթակայ լինելով վերափոխման եւ խմբագրման։

Իր ճեմարանական դասախօսութիւնների ձեռագիր տետրակներում այն անուանուած է «Վերածնութիւն եւ նոր գրաբար մատենագրութիւն», որ հետագայում մատիտով խմբագրուել է՝ «Հին լեզուի, ոգու վերածնութիւն եւ նոր գրաբար մատենագրութիւն»՝ լուսանցքում տրուած հետեւեալ ծանօթութեամբ. «Վերածնութիւն ոչ եւրոպական գրականութեան իմաստով, այլ վերակենդանացում» (սեւագիր մասի առաջին տետրակ, էջ 1):

Տարիներ անց իր «Համառօտութիւն հայ ժողովրդական վէպի եւ հին գրականութեան պատմութեան» ապակետիպ աշխատութեան մէջ (Երեւան, 1923), որ նոյնութեամբ արտատպուել է ՍՍՌՄ Գիտ. Ակադեմիայի Հայկական փիլիալի «Տեղեկագրի» 1941 թ. թ. 5—6 «Վերածնութիւնը Հայոց հին գրականութեան մէջ» վերնագրի տակ, Աբեղեանը նոյն շրջանը անուանել է «Հնի, կրօնա–եկեղեցականի վերածնութիւն եւ նոր գրաբար գրականութիւն» («Տեղեկագիր», էջ 106):

Նշուած յօդուածի ներածական մասում, որ գրուած է նոր, արտատպութեան կապակցութեամբ, Աբեղեանը տալիս է հետեւեալ ձեւակերպումը. «Եկեղեցական գրականութեան վերածնութիւն, նոր գրաբար եւ աշխարհիկ գրականութիւններ» (ն.տ., էջ 86):

վերջապէս, իր «գրելիք»–ում (1943—44 թ·թ·), Աբեղեանը տուեալ շըր–ջանը կոչում է «Գրականութեան ճորոգումը 17—19րդ դարերում»(«17—19րդ դարեր» ասելով Աբեղեանը հասկացել է 1600—1830 ժամանակահատուածը, ինչպէս այդ նշուած է մի քանի տեղ սեւագրում)։

Ինստիտուտը գերադասեց պահել վերջին ձեւակերպումը։

Այս շրջանի սկզբնական մասի «Ներածութիւն» վերնագիրը տրուած է մեր կողմից։

9· «Գրելիքի» երկրորդ վարիանտում «Տաղասացութիւն» բաժնում իբրեւ չորրորդ գլուխ նշուած է «Անանուններ» թեման։

Ինչպէս ասուած է առաջաբանիս երկրորդ կէտում, Աբեղեանի թղթերի մէջ գտնուեց մի ձեռագիր տետրակ, որի առաջին մասը ունի «Անանուն տաղեր» վերնագիրը, իսկ երկրորդը՝ «Առաքել Բաղիշեցի»։

Քանի որ տուեալ նիւթը աւարտուած եւ վերջնական մշակման ենթար–կուած չէ հեղինակի կողմից, այն տրւում է յաւելուածների բաժնում (5–րդ յաւելուած)։

10· «Գրելիքի» մէջ հաստատուն և «Վիպական գրականութիւն» ու «Քնա–րերգուներ» բաժիններին միանգամայն հաւասար տեղ է գրաւում «Գուսանա–կան երգեր—հայրէններ» բաժինը։

Գուսանական երգերի մասին, ինչպէս յայտնի է, Մ· Աբեղեանը ունի ընդարձակ մի հետազօտութիւն, որ տպագրուել է «ՀՍԽՀ Պետական Համա–լսարանի գիտական տեղեկագրում» (թ·թ·2–3, 4 եւ 6, 1927—30 թ·թ·), ա–պա հրատարակուել առանձին (1931)։

Իր այս հետազօտութեան մէջ Մ· Աբեղեանը ժխտում է Քուչակ Նահապե–տի հեղինակ լինելը նրան՝ Տեւկանցի («Հայերգ», Թիֆլիս, 1882) ու հետա–գայում մի շարք այլ բանասէրների կողմից վերագրուած սիրոյ երգերի նկատ–մամբ եւ ընդունում այդ երգերը իբրեւ գուսանական ժողովրդական, անանուն երգեր։ Միաժամանակ Մ· Աբեղեանը ասում է, որ 16–րդ դարի սկզբին, հա–կապէս, գոյութիւն է ունեցել Քուչակ Նահապետ անունով աշուղ, որին, սա–կայն, պատկանել են միանգամայն այլ տիպի ու բովանդակութեան երգեր։

Իր հետազօտութեան ամփոփումը, իբրեւ «Ներածութիւն», Մ· Աբեղեանը հետագայում զետեղել է 1940 թ· ՍՍՌՄ–ի Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական ֆիլիալի Գրականութեան եւ Լեզուի Ինստիտուտի հրատարակու–թեամբ լոյս տեսած իր «Գուսանական ժողովրդական տաղեր» ժողովածուի մէջ։ Մի տարի անց, 1941 թ· «Վերածնութիւնը Հայոց հին գրականութեան մէջ» յօդուածում Մ· Աբեղեանը կրկնեց իր այդ տեսակէտը («Տեղեկագիր ՍՍՌՄ Գիտ· Ակադեմիայի Հայկական ֆիլիալի», 1941, թ· 5—6, էջ 103, ծանօթութիւն)։

Մ· Աբեղեանը մինչեւ կեանքի վերջը չփոխեց իր տեսակէտը Քուչակ Նա–հապետի մասին։ Պարզ է միանգամայն, որ եթէ նրան վիճակուէր իրագործել իր միտքը՝ «Հայոց հին գրականութեան պատմութեան» 2–րդ հատորում յա–տուկ գլուխ նուիրել գուսանական տաղերին, ապա այս նա պիտի անէր միան–գամայն հաւատարիմ իր 1931 թ· հրատարակած հետազօտութեան սկզբունք–ներին։

Այդ իսկ պատճառով, Ինստիտուտը, ցանկանալով գաղափար տալ ըն–

թերցողին յիշեալ չգրուած գլխի մասին, բարւոք համարեց յաւելուածներում զետեղել՝ որոշ յապաւումներով՝ վերեւ յիշուած «Ներածութիւնը» (6-րդ յաւելուած)։

Ինչ վերաբերում է այս հատորի մէջ զետեղուած «Քուչակ Նահապետ» գլխին (որ մտնում է Մ. Աբեղեանի 1899—1900 թ. թ. կարդացած դասախօսութիւնների ցիկլի մէջ), ապա դեռ այստեղ առաջադրուած են՝ լրիւ կամ սաղմնային վիճակում՝ այն բոլոր թեզիսները, որ բնորոշ են 1931 թ. հեղինակի հրատարակած «Հին գուսանական ժողովրդական երգեր» հետազօտութեան համար։

Եւ ինկպէս իր դասախօսութիւնների մէջ Մ. Աբեղեանը՝

ա. Նշում է Քուչակի և Ակնայ ժողովրդական երգերի, հետեւապէս՝ հայրէնների եւ անտունիների առնչութիւնը.

բ. Պնդում է, որ հայրէնների առանձնայատկութիւնը պէտք է որոնել նրանց տաղաչափական առանձնայատկութեան, յատկապէս հայկական լինելու մէջ.

գ. Յայտարարելով մի կողմից, որ հայրէնների ամբողջութեան մէջ պակասում է անհատական բնոյթը եւ որ, միւս կողմից, նրանք ոչ թէ մի հեղինակի, այլ մի քանի հեղինակների վերամշակումներ են — Մ. Աբեղեանը դրանով իսկ սկսում է ժխտել այդ երգերի պատկանելիութիւնը Քուչակ Նահապետին։

Քուչակի մասին Մ. Աբեղեանի ունեցած տեսակէտի կազմաւորման այն սկզբնական էտապի համար հետաքրքրական է այն, որ նա իր դասախօսութիւններում մի տեղ հայրէնները դեռ իսկական ժողովրդական երգեր չի համարում, այլ «ժողովրդական՝ մշակութիւն կրած զրազէտների կողմից»։

Հետագայում այս մտքին Մ. Աբեղեանը անդրադառնում է միայն հաբեւանցիօրէն, 1923 թ. ձեռագրի իրաւունքով հրատարակած «Համառօտութիւն հայ ժողովրդական վէպի և հին գրականութեան պատմութեան» աշխատանքի մէջ ասելով, որ «դրանք [հայրէնները] ժողովրդական երգեր են, միայն առանձնապէս մշակութիւն կրած» (էջ 63)։ Նոյնը նա կրկնում է հայկական վերածնութեան մասին 1941 թ. հրատարակած մեզ յայտնի իր յօդուածում (էջ 103), որ հիմնականում արտատպութիւն է «Համառօտութիւն»-ից։

Իսկ «Հին գուսանական ժողովրդական երգեր»-ում նա վճռականապէս յայտարարում է, որ հայրէնները «բերանացի աւանդուած տաղեր են եղել եւ մէկ ժամանակի ու մէկ անհատի ստեղծագործութիւն չեն, այլ, ընդհակառակն, դրանց վրայ աշխատել են բազմաթիւ սերունդներ, եւ դրանք փոփոխութիւն, վերամշակութիւն ու զարգացում կրել են բնականաբար, երգիչների բերանին, երգելու ժամանակ, այն էլ դարերի ընթացքում» (էջ 115, տե՛ս նաեւ էջ 62)։

11. ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական ֆիլիալի «Տեղեկագրի» 1941 թ. թ. 5—6-ում (էջ 85—106) զետեղուած է Մ. Աբեղեանի «Վերածնութիւնը Հայոց հին գրականութեան մէջ» յօդուածը։

Այս յօդուածում Աբեղեանը նախ համառօտ խօսում է հայ գրականութեան պերիոդիզացիայի եւ վերածնութեան մասին ընդհանրապէս, ապա ըն-

րում է երկու ընդարձակ հատուած՝ «Գրիգոր Նարեկացի եւ նրանուորական ոդ-բերգութիւնը» եւ «Գրականութեան աշխարհականացումը 11-րդից 17-րդ դար» իր «Համառօտութիւն հայ ժողովրդական վէպի եւ հին գրականութեան պատմութեան» ապակետիպ աշխատանքից (Երեւան, 1923) և «Գրիգոր Նարեկացի» ուսումնասիրութիւնից, տպուած «Ազգագրական հանդէս»ում, 1916թ.։

Նկատի ունենալով, որ նախ՝ վերածնութեան խնդիրները հաւասար մշակուածութեամբ չեն ներկայացուած տուեալ հատորում (մինչեւ 14-րդ դար և 14-րդ դարից յետոյ), եւ երկրորդ՝ այս յօդուածում միեւնոյն խնդիրները տրուած են խտացած եւ ամփոփ, Ինստիտուտը որոշեց այն տալ յաւելուածների բաժնում (7-րդ յաւելուած)՝ անհրաժեշտ յապաւումներով։

## ԵՐՐՈՐԴ՝ ՏՊԱԳՐՈՒԱԾ ՄԱՍ

12. Մ. Աբեղեանի «Հայոց հին գրականութեան պատմութեան» այս մասը կազմուած է «Արարատ» ամսագրում հեղինակի տպագրած «Ուրուագծեր 19-րդ դարու Հայոց գրականութեան պատմութիւնից» յօդուածաշարքից՝ 1908 թ., էջ 890—904 եւ 1103—1115, 1909 թ., էջ 257—270, 321—334, 417—438 եւ 721—733։

Հրատարակութեան պատրաստելով նշուած յօդուածաշարքը, որ հատորում զետեղուած է «19-րդ դարի սկզբի գրաբար գրականութիւնը» վերտառութեամբ, Ինստիտուտը կատարել է հետեւեալը.

ա. Հանուած է «Յարութիւն Ալամդարեան» գլուխը, իբրեւ նոր գրականութեան վերաբերող թեմա։

բ. Յօդուածաշարքի «Մեր նոր գրականութեան սկիզբը» գլուխը դրուած է իբրեւ ներածութիւն 4-րդ շրջանի։

գ. Յօդուածաշարքը բաժանուած է համապատասխան գլուխների եւ ենթագլուխների, որոնց տրուած են վերնագրեր։

Սոյն հատորին վերաբերող բանասիրական բոլոր աշխատանքները կատարել են ընկ. ընկ. Խորէն Սարգսեանը եւ Արամ Ղանալանեանը։ Սեւագիր մասի տեքստը արտագրել է ընկ. Արփիկ Խաչանեանը։ Ամբողջ հատորի տեքստը համեմատել եւ ճշդել է ընկ. Ռուբէն Տօնեանը։

Հանգուցեալ գիտնականի ընտանիքը, յանձին նրա որդի Միհր Աբեղեանի, թէ՛ այս եւ թէ՛ մասամբ նախորդ հատորի պատրաստման ու տպագրման ընթացքում ցոյց է տուել անհրաժեշտ աջակցութիւն, որի համար եւ Ինստիտուտը յայտնում է շնորհակալութիւն։

Մ. ԱԲԵՂԵԱՆԻ ԱՆՈՒԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ՎԵՐԱԾՆՈՒԹԵԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

### ԿԵԱՆՔԻ ԵՒ ԱՇԽԱՐՀԱՅԵՑՈՒԹԵԱՆ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ

1. Վերածնութիւն:— *Հայոց հին գրականութեան երրորդ շրջանը* (11–17*րդ դար*) *արտայայտութիւն է գլխաւորապէս հայկական վերածնութեան: Արդարեւ դեռ շարունակւում են հին գրական տեսակները՝ մեկնութիւն, ճառ, հոգեւոր երգ եւ այլն, բայց աշխարհիկ տարրը հետզհետէ աւելի է մտնում եկեղեցականի ստեղծած գրականութեան մէջ՝ առաջ են գալիս գրական նոր թեմաներ եւ նոր տեսակներ, նոր լեզուով յօրինուած, մինչեւ որ լինում է մեր գրականութեան աշխարհականացումը: Առանձնապէս բանաստեղծութիւնը բոլորովին փոխւում է իր բովանդակութեամբ ու ձեւով, եւ մեր հին քնարերգութիւնը ձեռք է բերում գրեթէ բոլոր կարեւոր թեմաները:*

*Այս փոփոխութիւնը հետեւանք էր կեանքի եւ աշխարհայեցութեան փոփոխութեան: Մինչդեռ քրիստոնեայ աշխարհի ուրիշ կողմերում դեռ ընդհանրապէս իշխում էր թանձր միջնադարը,* 11*րդ դարի առաջին կէսին արդէն՝ մեր կեանքի ու մտածողութեան մէջ մտել էր մի յեղաշրջում, որով կրօնաճգնաւորական ոգին տակաւ առ տակաւ տեղի էր տալիս մի ուրիշ ոգու դիմաց, եւ առաջ էր գալիս ինքնուրոյն վերածնութիւն*[1], *որից չէր կարող չազդուել եւ հոգեւորականը:*

*Թէ երբ է եղել այդ փոփոխութեան եւ մեր հայկական վերածնութեան սկիզբը, այդ դժուար է որոշել: Ոչ մի գրական նոր հոսանք, — ինչպէս եւ ուրիշ մտաւոր, կուլտուրական երեւոյթներ, — մի քանի տարում չի սկսւում եւ երեւան գալիս որոշ գծագրուած կերպով: Ինչպէս Անանիա Շիրակացին գրում է, ամէն բնական երեւոյթի «Լինելութիւնն է սկիզբն ապականութեան, եւ ապականութիւնն դարձեալ անդրէն է սկիզբն լինելութեան»: Այս դիալեկտիկական, ըստ Շիրակացու, «անվնաս հակառակութեամբ» ծագում ու մահանում է նաեւ գրական երեւոյթը՝ տեղի տալով նորին, հարկաւ, իր ֆունկցիան կատարելուց յետոյ կամ, ինչպէս սովորաբար ասում ենք, բարգաւաճելուց յետոյ: Նորի սկիզբը հէնց այդ հնի մէջ է, նոյնիսկ նրա*

---

1 *Տես՝ այս շրջանի գրականութեան մասին՝* **Մ. Աբեղեանի** *«Համառօտութիւն հայ ժողովրդական վէպի եւ հին գրականութեան պատմութեան, դասընթաց Երեւանի Ժողովրդական Համալսարանի 1921-22 ճեմ. տարուայ, Երեւան, 1923 թ.: Ապակետիպ՝ ձեռագրի իրաւունքով»: Այլեւ* **Մ. Աբեղեանի** *«Վերածնութիւնը հայոց հին գրականութեան մէջ», ՍՍՌՄ Գիտութիւնների Ակադեմիայի Հայկական ֆիլիալի «Տեղեկագիր» թիւ 5—6 (10—11), Երեւան, 1941 թ.: Այլեւ առանձին արտատիպ:*

*բարդատճութեան մէջ: Հին կրօնա–եկեղեցական ուղղութեան եւ վանական կեանքի ամենափայլուն ժամանակը մեզնում եղել է 10րդ դարի երկրորդ կէսին եւ 11րդ դարի սկիզբներին, երբ դա ցայտուն կերպով արտայայտուել է եկեղեցական ճարտարապետութեամբ եւ Գրիգոր Նարեկացու գրական երկերով: Բայց հէնց այդ ժամանակներում, 10րդ դարի վերջերին եւ 11րդի առաջին տասնամեակներին, է սկիզբը հնի «տապալանութեան», այսինքն՝ քայքայման, որ եւ սկիզբն է նորի բացայայտ «լինելութեան», նոր մտաւոր հոսանքի, որ դանդաղ պրոցեսով զարգանում էր տակաւին շատ զօրեղ կրօնա–եկեղեցականի կողքին, եւ որի արդիւնքն է մեր վերածնութեան գրականութիւնը: Ուստի թէեւ Գրիգոր Նարեկացին իր էութեամբ պատկանում է նախորդ գրական շրջանին, բայց նրա երկերի մէջ արդէն, ինչպէս տեսել ենք, երեւում են վերածնութեան սաղմերը: Նոյնը նաեւ Անանուն Զրուցագրի մի քանի զրոյցների մէջ, որ նոյնպէս տեսել ենք:*

*Այս «վերածնութիւն» տերմինն առնուած է արեւմտեան եւրոպական գրականութիւնից. ուստի նախ մի քանի խօսք այն մասին, թէ ի՛նչ են հասկանում «վերածնութիւն» ասելով՝ եւրոպական գրականութեան մէջ: Այդպէս, այդ անունով կոչւում են Արեւմտեան Եւրոպայի եւ առանձնապէս Իտալիայի վաղ–բուրժուական (քաղաքացիական) կուլտուրան 14–16րդ դարերում: Այդ ժամանակ արդէն գլխաւոր հասարակական դեր էր կատարում բարձրացած նոր դասակարգը — բուրժուազիան (քաղաքացութիւնը), որի դասակարգային շահերի եւ իղձերի արտայայտութիւնն էին դառնում գիտութիւնը, արուեստն ու գրականութիւնը: Կուլտուրայի կենտրոն էին քաղաքները: Առեւտրական կապիտալով փարթամացած քաղաքացիները, հակադրուելով ֆէոդալին եւ եկեղեցականին, ճոխ կեանք էին վարում պարսպապատ քաղաքներում շինուած շքեղ բնակարաններում, ազնիւ հագուստներով, թանկագին կարասիքով, ընտիր անօթներով, աշխատելով ձեռք բերել ամէն վայելք խնջոյքներով, երաժշտութեամբ, եւ այլն:*

*Այս նոր դասակարգի կուլտուրայի առաջին յատկանիշն է դպրոցի եւ գրականութեան աշխարհականացումը. հակառակ հոգեւորական սքոլաստիկայի ձգտում է լինում ուսումնասիրելու բնութիւնը, բնագիտութիւն, մաթեմատիկա, իրաւաբանութիւն: Լատիներէն լեզուն դեռ երկար մնում է իբրեւ ընդհանուր միջազգային լեզու գիտութեան, փիլիսոփայութեան եւ այլի համար. բայց առաջանում է պահանջ գրելու մի այնպիսի լեզուով, որ հասկանային ոչ միայն գիտնականները, այլեւ ուրիշները: Ուստի ծագում են հասկանալի լեզուով ազգային գրականութիւնները, ազգային գրական լեզուները:*

*Նախորդ դարերում անհատականութիւնը ոչնչացած էր, անհատն իրաւունք չունէր եկեղեցուց անկախ մտածելու: Վերածնութեան ժամանակ սկսում են տեսնել մարդու մէջ անձի ազատութեան գաղափարը: Առաջ են գալիս մարդիկ, որոնք համարձակւում են եկեղեցու պէս չմտածել:*

*Այդ ժամանակներում աւելի մօտից ծանօթանում եւ ուսումնասիրում են անտիկ, այսինքն՝ հին յունական եւ լատինական արուեստը, գրականութիւնն ու փիլիսոփայութիւնը: Ծնւում է սէր անտիկ գրականութեան ընտիր ձեւերի եւ ձգտում կեանքի եւ ստեղծագործութեան մէջ յարութիւն*

տարրը անտիկ աշխարհի կուլտուրային: Այդ են համարել այս նոր կուլտուրայի հիմնական յատկանիշը, ուստի եւ ծագել է «վերածնութիւն» տերմինը, իբրեւ անտիկ կուլտուրայի վերածնութիւն ընդդէմ միջնադարեան ճգնաւորական եւ սքոլաստիկական կուլտուրայի: Իսկ միջնադարը եղել է միակերպ անկման շրջան, չի բովանդակել ոչ մի ներքին զարգացում, եւ անտիկ կուլտուրայի ազդեցութեամբ վերածնուել են գիտութիւն, փիլիսոփայութիւն, արուեստներ ու գրականութիւն: Չմերժելով անտիկ կուլտուրայի զօրեղ ազդեցութիւնը՝ պէտք է ընդունել, սակայն, որ վերածնութիւնն իրօք արգասիք է ներքին ուժերի վրայ հիմնուած անընդհատ զարգացման, եւ դրա արմատները գտնւում են աւելի եւս հին ժամանակներում: Վերածնութեան վաղ շրջանի սկիզբն եղել է միջնադարեան բարեպաշտութեան ժամանակ: Այսպէս՝ վերածնութիւն են տեսնում Դանթէի (1265–1321 Թ.) եւ մի քանի ուրիշների մէջ՝ չնայելով նրանց բարեպաշտութեանն եւ միստիցիզմին: Նոյնը երեւան է գալիս նաեւ Պրովանսի տրուբադուրների եւ գերմանական մինեզենգերների երգերի մէջ, որոնք նախակարապետներն են վերածնութեան: Այս բանաստեղծութեան ու պրոզայի մէջ ստեղծւում են նոր գրական ձեւեր եւ տեսակներ, որոնց մի մասը փոխառութիւն են անտիկ գրականութիւնից: Դրանցից են, օրինակ, Դանթէի «Աստուածային կոմեդիան», հռչակաւոր սոնետները Պետրարքայի (1304–1374 Թ.), նովելլաները Բոկաչչոյի (1313–1375 Թ.), էպիգրամմա, սատիրա, եւ այլն:

Հայոց գրականութիւնը, ինչպէս և արուեստն ընդհանրապէս, հարկաւ, կտրուած չի եղել այլազգիների, առանձնապէս արեւելեան գրական հոսանքներից: Բայց 10րդ դարում դժուար է տեսնել մեզնում անտիկ գիտութեան, արուեստի ու գրականութեան այնպիսի մեծ ծանօթութիւն եւ ազդեցութիւն, որի հետեւանքով կերպարանափոխուէր մեր եկեղեցա-ֆէոդալական գրականութիւնը: Անշուշտ «արտաքին» գիտութիւնների հին թարգմանութիւնները բոլորովին մոռացութեան տրուած չեն եղել, բայց նրանց ուսումն արդէն 10րդ դարից առաջ խամրած է եղել: Նոյնիսկ Անանիա Շիրակացու երկերն այլեւս ուսումնասիրութեան առարկայ չեն եղել: Գրիգոր Մագիստրոսը մի նամակով Արշարունի Պետրոս կաթողիկոսին (1019–1059 Թ.) խնդրում է իրեն ուղարկել Շիրակացու մի գիրքը, «զոր մեծ Քննիկոնն անուանեն», «որ են այժմ ի տան տէրունեան, զոր նախ քան զքեզ խրթնացեալ եւ թագնի ընդ գրուանաւ ծածկէին»[1]: Ապա նա այդ առթիւ յիշում է Շիրակացու գանգատը, թէ մեր ազգն անհոգ է գիտութեան վերաբերմամբ: Յետոյ նա ինքն էլ իր կողմից տրտնջում է, թէ «ի բազմաց անփոյթ եղելոյ այսպիսի զարծանութիւնք եւ հանդէսք», թէ «ի մոռացումն այսպիսի մատենի ոչ միայն՝ եղեւ անկանել, այլեւ բազմաց», «քանզի Արամեան սեռի հպարտութիւն եւ անամօք բնութիւն եւ խստապարանոց բարս ոչ ստորակայի յայտնիկ կրթութիւնս յարատեւական հաւանել, կամ եթէ ոչ փոյթ, որք պետականին հասին բախտի, մեծարու լինել եւ խուզել գլխոհեմական արհեստս ի զարդ-քարդոնսական [=արքայական] ապարանին, որպէս մեծ Փաղոմէոսն այն

1 Գրիգոր Մագիստրոսի թղթերը, ի լոյս ընծայեց Կ. Կոստանեանց, Աղեքսանդրապոլ, 1910, Բ. թուղթ, էջ 8:

եւ որք այլք այսպիսիք»: Իսկը՝ Մ. Խորենացու գանգատի նման: Մի անգամ որ այսպիսի վերաբերմունք է եղել դէպի արտաքին գիտութիւնները, բնականաբար չի կարելի մեր վաղ վերածնութեան ծագման համար անտիկ փիլիսոփայութեան եւ այլի ազդեցութիւնը տեսնել: Վերածնութիւնն ինքը, 11րդ դարի առաջին տասնամեակներից սկսած, թերեւս մասամբ նաեւ բիւզանդական ազդեցութեամբ, նորոգում է հին թարգմանութիւնների ուսումնասիրութիւնը եւ զարթեցնում է, ինչպէս յետոյ կը տեսնենք, առանձին սէր ու հակում դէպի հին յունական փիլիսոփայութիւնն ու գիտութիւնը: Իսկ մեր հայկական վերածնութիւնն ինքնուրոյն է: Դա ազգային կուլտուրայի ու գրականութեան շարունակական զարգացման մի իրականութիւն է, արդիւնք հայկական քաղաքային կեանքի բարգաւաճման, դրա հետեւանքով եւ ներքին ուժերի այն ռէալիստական շարժման, որ առաջ էր եկել հարիւրամեայ խաղաղութեան միջոցին: Եթէ «վերածնութիւն» բառով է անուանւում այստեղ մեր գրականութեան այս վերափոխուած շրջանը, որովհետեւ այդ ժամանակ «վերածնուել է» հեթանոսական դարերի բուն աշխարհիկ ոգին եւ աշխարհայեցութիւնը՝ հակառակ կրօնա-եկեղեցականի, եւ որովհետեւ այդ շրջանի գրականութեան յատկութիւններն ընդհանրապէս նոյնն են, ինչ որ եւրոպական վերածնութեան գրականութեանը: Դա գըլխաւորապէս հայ քաղաքացութեան, հայ բուրժուազիայի գրականութիւնն է:

2. **Քաղաքներ եւ քաղաքացական կեանք ու կուլտուրա**:— Հին դարերից ի վեր յայտնի են եղել Հայաստանում մի շարք քաղաքներ—Արտաշատ, Վաղարշապատ, Վան, Դուին, Խլաթ եւ ուրիշներ: Երկարատեւ խաղաղ շինարարութեան դարաշրջանում (10–11րդ դարերում) արագ բարձրանում է ժողովրդական տնտեսութիւնը. երկրի բնակչութիւնն աճում է. շինւում են բազմաթիւ գիւղեր, քաղաքագիւղեր ու գիւղաքաղաքներ, որոնք հետզհետէ դառնում են աւելի ու աւելի մարդաշատ: «Աղարակաց աւանացեալ եւ աւանաց քաղաքացեալ բազմամարդութեամբ եւ ընչեղութեամբ», գրում է Ստեփանոս Տարօնեցին[1]: Նոր բարգաւաճած քաղաքներից՝ մեր պատմագիրների յիշատակութեամբ՝ աչքի են ընկնում՝ Անի, Կարս, Արծն, Դուին, սրանց մէջ՝ առանձնապէս Անին, որի մասին աւելի պատմագրական տեղեկութիւններ ունենք եւ աւելի ծանօթութիւններ շնորհիւ պեղումների[2]: Անին մի շատ նշանաւոր տիպարն է այդ շրջանի մեծ քաղաքների: Նա եղել է ոչ միայն բերդ և մայրաքաղաք, այլեւ շահաստան, առեւտրական, արդիւնագործական ու կուլտուրական մեծ կենտրոն թէ՛ հայկական եւ թէ՛ նաեւ օտար իշխանութիւնների օրով 11–15րդ դարը: Այլադգիները ձեռքն անցնելուց յետոյ՝ այդ քաղաքի ներքին կեանքը քիչ է փոխուել. 11–14րդ դարերում Անին չի դադարել դարդանալ իբրեւ հայկական քաղաք: Բայց միաժամա-

---

1 Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 161:

2 Յովսէփ Օրբէլի, «Անւոյ աւերակները. Պատմութիւն, Այժմեան վիճակ, Պեղումներ»: Յաւելուածներով եւ ծանօթութիւններով, Վաղարշապատ, 1911: Նոյնը ռուսերէն, Ս. Պետերբուրգ, 1911:

Ն. Մառ, Անի (ռուսերէն), Մոսկուա, 1934:

նակ եւ նա, «կապ ունենալով Առաջաւոր Արեւելքի մահմեդական երկիրների քաղաքային կեանքի ընդհանուր զարգացման հետ»՝ «առատութեամբ ընդունել է հարեւան ժողովուրդների ստեղծագործութեան հարուստ արդիւնքները»[1] եւ դարձել միջազգային մեծ քաղաք իր բազմազգ բնակչութեամբ։

Գտնուելով մեծ առեւտրական ճանապարհի վրայ՝ Անին Բագրատունիների օրով արդէն բարձրացել է իր շահաստանով։ Այդ ժամանակ են շինուել եւ նրա նշանաւոր հզօր պարիսպները, ամրացուած բազմաթիւ աշտարակներով։ Ոչ միայն Անիի, այլեւ Կարսի, Արծնի եւ ուրիշ քաղաքների վրայով էին անցնում տարանցիկ առեւտրական մեծ ճանապարհի ճիւղերը․ ուստի եւ նրանք եւս դարձել են վեհաշուք կենտրոններ ե՛ւ ներքին, ե՛ւ արտաքին առեւտրի, ե՛ւ ապրանքների փոխանակութեան համար։ Արտաքին առեւտուրը լինում էր ե՛ւ Արեւելքի, ե՛ւ Արեւմուտքի հետ։ «Ծով եւ ցամաք երկնէր եւ առատանայր կրել ի սմա զզօրութիւն իւր», — ասում է Ա․ Լաստիվերցին իր հայրենի Արծն քաղաքի համար, «որ հոյակապ եւ ականաւոր էր ամենայն աշխարհաց»[2]։ Ծովային առեւտուրն անում էին Տրապիզոնի վրայով։ Նոյն հեղինակը (էջ 91) Կարսի համար գրում է, թէ «Ցանկակածի կէին, հարստացեալք ընչեղութեամբ ի ծովէ եւ ի ցամաքէ ամբարեալ»։ Բարգաւաճում էին եւ երկրի արտադրող ուժերը, ծաղկում էր արդիւնագործութիւնը։ Արտահանում էին նաեւ երկրի արդիւնագործական, ինչպէս եւ երկրագործական ապրանքներն ու բնական բերքերը։ Դրանք եւս կազմում էին մեծ եկամուտների կարեւոր աղբիւրներ։ Գիւղատնտեսութեամբ պարապում էին քաղաքների արուարձաններում, պարիսպներից դուրս,— ուր եւ ապրում էին սովորաբար նաեւ արհեստաւորները,— այլեւ գիւղերում, մեծամեծների կալուածներում։

Բնականաբար առաջ էր գալիս դրամական տնտեսութիւն, դրամը մի նոր աստուած էր դարձել․ մարդիկ ամէն տեսակ շահի ետեւից էին ընկնում։ «Յարգի եղեւ արծաթսիրութիւն քան աստուածսիրութիւն, եւ մամոնայն՝ քան զՔրիստոս», գրում է Լաստիվերցին (էջ 79)։ 10րդ դարից արդէն նիւթական կարողութիւնը — ոսկին, երկրի հարստութիւնները, կալուածներ եւ ուրիշ անշարժ կայքեր, կենտրոնանում էին առանձին վաճառական անհատների ձեռին․ առաջ էին գալիս կապիտալիստներ, որոնք կազմում էին մի նոր դասակարգ։ Իր դարի համար մի տիպիկ կապիտալիստ է եղել, մի փայլուն ներկայացուցիչ իր դասի, Տիգրան Հոնենց, 12րդ դարի վերջում եւ 13րդի սկիզբներում, տէր չափազանց մեծ հարստութեան թէ՛ դրամով եւ թէ՛ անշարժ գոյքերով[3]։

Այսպիսով Փէոդալական շրջանի երկու իշխող դասերի՝ ազնուականութեան եւ եկեղեցականութեան կողքին տնտեսապէս, ապա եւ մտաւորապէս բարձրանում եւ դիրք էր ձեռք բերում նոր դասակարգը — հարուստ քաղա-

1 Յ. Օրբելի, Անւոյ Աւերակները (ռուսերէն), էջ 4 եւ հտ., 19, 25 եւայլն։

2 Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ, Թիֆլիս, 1912, էջ 78։

3 Նրա շատ մեծ հարստութեան մասին գաղափար կարելի է կազմել նրա խիստ բազմաթիւ ընծաներից, որ տուել է իր շինած վանքին 1212 թ., եւ որ փորագրել է տուել արձանագրութեան մէջ։ Այս մասին տեսնել Ն. Մառ, Անի (ռուսերէն), էջ 33 եւ հտ.։

քացութիւնը, որ նոյնիսկ մրցում էր Ֆէոդալների հետ: Սոցիալ-քաղաքական կառուցուածքի, հասարակակարգի փոխուելով՝ փոխւում է եւ հասարակական պոլիտիկան, իրաւունքի հայեցողութիւնը, այս եւ գաղափարախօսութիւնը կրօնի, մորալի–բարոյականութեան, արուեստի ու գրականութեան վերաբերեալ՝ նախորդ շրջանի գաղափարախօսութեանը հակադիր: Հետզհետէ իշխանութեան եւ «իրաւունքի աղբիւրը» ռազմիկ Ֆէոդալներից անցնում է «խաղաղ առեւտրի վրայ»: Ստեղծւում է դեմոկրատիկ հոսանք ընդդէմ Ֆէոդալական հասարակակարգի: Անիում, հաւանօրէն եւ այլ քաղաքներում, «առաջ է գալիս քաղաքային ինքնավար կեանք, քաղաքային ինքնավարութիւն, քաղաքային աւագների գլխաւորութեամբ եւ օրէնսդրական իշխանութեամբ քաղաքի սահմաններում»[1]: «Աւագների խորհուրդը վարում էր քաղաքի բոլոր գործերը»: Դրա «ծագման մասին տակաւին չկան տեղեկութիւններ, յամենայն դէպս՝ դա գոյութիւն է ունեցել Անիում Շեդդադիդների, վրացի կուսակալների եւ Զաքարեանների օրով»[2]: Եւ որ գլխաւորն է՝ Անու կեանքը կանանց սոցիալապէս հաւասարացրել էր տղամարդկանց հետ. «Անեցի կանայք անարգել ունէին տղամարդկանց քաղաքացական իրաւունքները»[3]: Նրանք էլ հերոսաբար պաշտպանել են իրենց քաղաքն ընդդէմ թշնամիների, ինչպէս 1124 թ. Այծեամն (Այծեմնիկ) անունով քաղաքացուհին, որ «առնացի սրտացեալ սիրտ», քաղաքի պարսպի վրայ դիմադրել է պաշարողներին, «առ ոչինչ համարեալ զխոցուածս նետիցն զոր վիրաւորէին արտաքուստ»[4]: Այծեմնիկն իհարկէ մենակ չի եղել կանանցից:

Կուտակուած հարստութիւնը գործադրւում էր ամէնից առաջ քաղաքային շինարարութեան վրայ՝ քաղաքները ոչ միայն պարիսպներով ամրացւում էին արտաքին թշնամիներից պաշտպանուելու համար, այլեւ զարդարւում էին բազմաթիւ հոյակապ եկեղեցիներով ու պալատներով: Ա. Լաստիվերտցին[5] անպարիսպ Արծն քաղաքի համար գրում է. «վաճառականք սորա փառաւորք», «վաճառականք՝ եկեղեցւոյ շինողք եւ զարդարիչք»: Ոչ միայն տղամարդիկ, այլեւ կանայք մասնակից էին լինում շինարարութեան գործին, նոյնիսկ քաղաքի աշտարակների: Ազնուանում է մարդկանց ճաշակն ու պահանջը. ձգտում էին ամէն ինչ, ե՛ւ եկեղեցիները, ե՛ւ աշխարհիկ շէնքերը, նոյնիսկ պարիսպներն ու աշտարակները, գեղեցկացնել որեւէ կերպ: Եկեղեցիները զարդարւում էին քանդակներով, Ֆրեսկաներով ու նկարներով: Զարդարանքներով պճնւում էին եւ իշխանական պալատներն եւ այլ շինութիւնների Ֆասադները[6]:

Միւս կողմից քաղաքներում ստեղծւում են բարեկեցիկ կեանքի պայմաններ: Անիում, անշուշտ նաեւ միւս վաճառաշահ քաղաքներում, շինւում են քարվանսարաներ, որոնք անհրաժեշտ էին դրսից եկած առեւտրական-

---

1 Ն. Մառ, Անի (ռուսերեն), էջ 35:

2 Յ. Օրբելի, Աւերակներ (ռուսերեն), էջ 26:

3 Ն. Մառ, Անի (ռուսերեն), էջ 4:

4 Սամուէլ Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 126 եւ հտ.:

5 Ա. Լաստ., Պատմութիւն, էջ 78 եւ հտ.:

6 Յ. Օրբելի, Աւերակներ (ռուսերեն), էջ 29—31:

ները օթեւանելու համար, կառուցւում են քարէ տասնեակ գեղեցիկ կամուրջներ Ախուրեանի վրայ։ Անց են կացւում, նոյնիսկ 10րդ դարից սկսած, ջրմուղներ հեռաւոր աղբիւրներից քաղաքին ջուր մատակարարելու համար։ Անիի պեղումներով երեւան են եկել նաեւ քարարկուած փողոցներ եւ նոյնիսկ մայթերի հետքեր, աղքատ տնակների հետ եւ մեծ տուն, որ ունեցել է հոյակապ պորտալ՝ զանազան քանդակներով։ Միջնաբերդի ապարանքը հոծ է եղել հարուստ զարդարանքներով, մի դահլիճում «կենդանիների նկարներ՝ բուսական շրջանակների մէջ։ Մի ուրիշ դահլիճում որմերին նկարուած են եղել պատերազմական կամ որսորդական տեսարաններ. որմերը, բացի նկարներից, թանձր ոսկեզօծուած են եղել. առաստաղն ունեցել է երկրաչափական ձեւերի քանդակներ»։ Չի պակասել եւ բաղնիքը, իր նախասենեակով, աւազանով, տաք եւ սառն ջրի խողովակներով, եւ այլն[1]։ Ինչպէս երեւում է, Անին ունեցել է բարեկեցիկ կեանքի համար անհրաժեշտ շատ բաղանիքներ. ըստ Տիգրան Հոնենցի արձանագրութեան՝ ի թիւս բազմաթիւ ընծաների՝ նա իր շինած վանքին նուիրել է նաեւ երկու բաղանիք։ Այսպէս բարեշէն են եղել նաեւ միւս վաճառաշահ մեծ քաղաքները։ «Եւ իբրեւ ակն մի պատուական լուսաւէտ պայծառութեամբ փայլէր քաղաքս մեր ի մէջ ամենայն քաղաքաց, ամենեւին գեղեցիկ, բոլորովին զարդարուն», այսպէս է գրում Ա. Լաստիվերտցին Արծնի համար[2]։

Փարթամ քաղաքացիներն իրենց տանին կեանքը, նիստն ու կացը եւ հանդերձներն եւս յարմարեցնում էին իրենց հարստութեանը։ Հագնում էին դիպակ, մետաքսէ պատմուճաններ եւ, ինչպէս պեղումներից յայտաբերուել է, մետաքսի ամբողջ հագուստներ՝ ոսկեթել ասեղնագործութեամբ։ Երեւի կանայք էին բանեցնում պեղումների ժամանակ գտնուած երեսի քօղը՝ մետաքսով եւ ոսկեթելով նուրբ կարած (գուլաբաթնով կարած), մետաքսէ ժապաւէն գօտին, ապարանջաններն ու մատանիները։ Ամէն ինչ ճոխ ու պերճ էր։ Ա. Լաստիվերտցին[3] գովելով իր հայրենի Արծն քաղաքը, նրա վաճառականներին՝ գրում է. «Բարեացն առատութեամբ լի էր, ամենայն ինչ ըստ մտի էր սորա. եւ նման իմն էր նորահարսն կնոջ, որ գեղոյն վայելչութեամբ եւ զարդուցն պայծառութեամբ՝ ցանկալի գոլ ամենեցուն»։ Քիչ յետոյ նա, մարգարէի խօսքերով, ամբաստանում է կանանց «անբարտաւանութիւնը», նրանց «զստորինսն ընդ երկիր զքարշելն [երկայն քղանցքները գետնաքարշ տանելը], զգինդսն, եւ զմատանիսն զապարանջանսըն, զքօղէսն [=թեւի ապարանջան արմուկից վերեւ], եւ զմեհիանդսն, [=մանեակ, ոսկէ վզնոց, օղ], եւ զայլն ամենայն», նրանց «ոսկի զարդերը», «ոսկի կամարները» [քամարները], «պատուական հանդերձները»։ Նոյնպէս շքեղութեամբ են եղել եւ տնային կահ-կարասիքը, գորգերը, բազմոցները, վարագոյրները։ Բանեցնում էին արծաթէ ընտիր անօթներ, յախճապակեայ եւ ճենապակեայ ամաններ՝ հարուստ բազմազան նկարներով, ճաշակաւոր զարդարուն զանազան գոյներով եւ ցայտուն ֆիգուրներով։ Դրանք չի-

1 Յ. Օրբելի, Աւերակներ (ռուսերէն), էջ 41 եւ հտ.։
2 Ա. Լաստ., Պատմ., էջ 79։
3 Անդ, էջ 79—81։

նուած են եղել Անիում, «թէեւ հիմք չկայ այդ տարրերի ծագումը բացառապէս Անիից համարել»[1]: «Մուսուլմանական ճաշակը հետզհետէ աւելի մեծ չափով թափանցել է Անիի քաղաքացիների բնակարանները եւ երեւան է գալիս անօթների ձեւերի եւ զարդանկարների վրայ»[2]: Այս անօթների մի մասն, անշուշտ, դրսից են բերուած եղել:

Մահմեդականների ազդեցութեամբ, եւ աւելի՝ իբրեւ բնական հետեւանք կեանքի զարգացման, փարթամ քաղաքացութեան մէջ սկսում է ընկնել 10րդ դարի կրօնական խստակեցութիւնը: Այդ մարդիկը թէպէտ եւ դեռ կրօնասէր ու բարեպաշտ էին, բայց իրական կեանքն ու աշխարհը նրանց համար սատանում էին արժէք: Մի կողմից՝ նրանք ժամ էին դնում, բարեպաշտական գործեր կատարում, միւս կողմից՝ ճոխ ու հանդիստ ապրելով պարիսպներից ներս, զարդարուն պալատներում, շրջապատուած ճարտարարուեստի եւ գեղարուեստի պաճուճանքներով, սիրում էին ուրախ-զուարթ կեանք, ամէն վայելչութիւն: «Միայն հեշտութեան եւ փափկութեան սպասեն», — գրում է Ա. Լաստիվերտցին (էջ 167) Անիի եւ ուրիշ քաղաքների համար: Ուրիշ տեղ (էջ 56) նոյն պատմագիրը Հայոց աշխարհի համար գրում է. «Ուրախական երգոց եւ բանից միայն լինէին հանդէսք»:

Մատթէոս Ուռհայեցին գրում է. «Զկնի մահուանն Աշոտոյ [=Գագիկ Թագաւորի որդի եւ Յովհաննէս Թագաւորի եղբայր Աշոտի, Գագիկ Բ-ի հօր] թուլամորթեցան զօրքն Հայոց եւ առեցին զարուեստ պատերազմի, մտին ընդ լծով ծառայութեան ազգին Հոռոմոց, նստան ի գինարբուսն, սիրեցին զբարբուտ [=լայնափոր նուագարան մի] եւ զերգս գուսանաց»[3]: Ներսէս Շնորհալին 12րդ դարի կէսերին «Եդեսիոյ ողբի» մէջ գրում է, թէ խնջոյքներով էին զբաղւում, երգ ու երաժշտութեամբ ուրախութիւն անում: Մի դար յետոյ՝ Սմբատ Սպարապետը 11րդ դարի համար ասում է, թէ «թուլացան եւ ազարտեցին զպատերազմ, եւ սիրեցին զգինի եւ զգուսանս»[4]:

Այսպիսի զուարթ կեանքի, կերուխումի, ուրախ ժամանցի համար բնականաբար զարգանում էին գուսանների ուրախութեան եւ սիրոյ երգերը, որ ամենահին դարերից ի վեր սիրուած են եղել մեր ազնուականներից եւ այժմ էլ զուարճացնում էին հարուստ քաղաքացիներին: Այդ երգերի մասին, որոնք մեր վերածնութեան նախակարապետներն են, մանրամասն կը խօսուի առանձին իր տեղում:

Աշխարհիկ շքեղութիւնն ու պերճութիւնը մտնում էր նաեւ եպիսկոպոսների բնակարաններն ու կաթողիկոսարանը, որ ոչնչով ետ չէր մնում պալատներից: Այնտեղ էլ արծաթը յարգի էր դարձել եւ անարատ բարե-

1 Յ. Օրբելի, Անւոյ Աւերակներ (ռուսերէն), էջ 49 եւ հտ::

2 Ն. Մառ, Անի (ռուսերէն), էջ 36, 43:

3 Մատթ. Ուռհ., Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 79:

4 Սմբատայ Սպարապետի Պատմութիւն, Մոսկուա, 1856, էջ 37: Կիլիկիայի հայ ազնուականների մասին եւս Մարկոյ Պոլոյի ուղեգրութեան (1271—1295 թ.) մէջ կարդում ենք. «Հին օրերում այնտեղի ազնուականները քաջարի մարտիկ էին եւ կատարում էին զէնքի հերոսական գործեր. բայց ներկայումս ողորմելի արարածներ են եւ ոչ մի բանի շնորհք չունին, բացի հարբենալուց, որով նշանաւոր են»: Աղբիւրներ Հայաստանի եւ Անդրկովկասի Պատմութեան, Ուղեգրութիւններ, հատոր Ա. (1253—1582), Երեւան, 1932, էջ 44:

պաշտութիւնը պակասում էր: Եթէ վաճառականներն առուտուրի հետ նաեւ վաշխառութեամբ էին պարապում, հոգեւորականութեան մէջ էլ զարգանում էր կաշառակերութիւնը. «բարձաւ եւ ի քահանայից երկիւղ եւ ընտրութիւն սրբութեան. նեղին եւ մղին մերձենալ ի սեղանն... եւ զայն ի ձեռն արծաթոյ», գրում է Ա. Լաստիվերտցին (էջ 80):

Մեծ հարստութիւն էին դիզում եպիսկոպոսները: Պետրոս Արշարունի, մականուանուած Գետադարձ, կաթողիկոսը (1019–1059 թ.), որ խառնուել է եւ քաղաքական գործերի եւ բարի համբաւ չի թողել, ունեցել է մեծ հարստութիւն. «Ունէր կազմութիւն հայրենեաց՝ տուեալ ի թագաւորացն Հայոց՝ հինգ հարիւր գեղ անուանի եւ մեծանիստ եւ չահաւէտ ընտիր ընտիր, նոյնպէս եւ եպիսկոպոս հինգ հարիւր փառաւոր եւ գաւառատեաուչս ի վերայ եօթն հարիւր թիմի. համապազ երկոտասան եպիսկոպոս եւ չորս վարդապետ ի տանն հայրապետին եւ վաթսուն երէց ի կրօնաւորաց, եւ յաշխարհականաց՝ հինգ հարիւր: Եւ չէր նուաստ աթոռ հայրապետութեանն քան զթագաւորութեանն Հայոց: Նաեւ զարդարանք եկեղեցեացն եւ տանն հայրապետութեանն բազում և անհամար և հրաշալի մեծութեամբ (=հարըստութեամբ) լցեալ»[1]: Զնայելով, որ նա մեծ կալուածատէր է եղել, անձամբ ունեցել է այնքան բազմաթիւ հայրենական գիւղեր, որոնց հետ նաեւ «Սուրմառի բերդաւանի նման նշանաւոր կալուածքը»[2], չի քաշուել ըստ ժամանակի ոգու նաեւ արծաթասէր լինելու եւ մեծ գանձեր ձեռք բերելու. «Քանզի յոյժ սիրող էր գանձուց Պետրոս, որ եւ բազումք վասն այնր եպերէին զնա»[3]: Կաթողիկոսի իշխանութեան ներքոյ գտնուող 500 «գաւառատեաուչ» եպիսկոպոսների մի մասն արծաթսիրութեան եւ հարստութիւն կուտակելու վերաբերմամբ՝ հետեւելիս են եղել իրենց վեհին: Երբ սելջուկեան Թուրքերն առնում են անպարիսպ Արծնը, «հռչակաւոր եւ բազմամբոխ քաղաքն Հայոց», կոտորում ու կողոպտում են: «Այլ զոսկւոյ եւ զարծաթոյ եւ զպղնձակաց աւելորդ է ասել», — գրում է Մատթէոս Ուռհայեցին՝ խօսելով մեծ կողոպուտի մասին[4], եւ շարունակում. «Բայց զայս բազում անգամ լուեալ է մեր ի բազմաց յաղագս քորեպիսկոպոսին [=գաւառատեաուչ] որ ասէին Դաւթուկ, եթէ զգանձատունս նորա Արբիհիմն էառ եւ քառասուն ուղտ բարձան զգանձարանն նորա. ութ հարիւր վեցկի [=երեք լուծ, վեց եզ լծած արօր] եզանց ելանէին ի տանէ նորա»: Ահա իր կաթողիկոսին արժանի գաւառատեաուչ եպիսկոպոսը: Անշուշտ չափազանցութիւն կայ, բայց այս էլ ծագել է նրա հարստութեան մեծութիւնից:

Ժամանակի բարոյական անկման մասին, ըստ եկեղեցու հայեացքի, պարզ գաղափար է տալիս հետեւեալ աւանդութիւնը: 1022 թ. խաւարում է արեգակը, միաժամանակեւ երկրաշարժ է լինում: Նոյնը կրկնւում է եւ 1036 թ.: Յովհաննէս Սմբատ թագաւորը եւ Պետրոս կաթողիկոսը մի քանի իշխանների, որոնց թւում եւ Գրիգոր Մագիստրոսին, ուղարկում են Սեւանի՝

---

1 Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 153 եւ հտ.:

2 Կ. Կոստանեանց, Տէր Պետրոս Ա. Գետադարձ, Վաղարշապատ, 1897, էջ 18:

3 Ա. Լաստ., Պատմ., էջ 89:

4 Մատթ. Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, էջ 103:

են գրքութեամբ հուշակուած Յովհաննէս Կոզեռն վարդապետի մօտ՝ նրանից իմանալու, թէ ինչի՛ նշան է այդ երևոյթը։ Վարդապետը յայտնում է, թէ դա նշան է, որ սատանան արձակուել է կապանքից, ապա նա հին մարգարէական եղանակով նկարագրում է իրական դրութիւնը՝ ասելով. «Եւ ահա յայսմհետէ ոչ ոք կարասցէ կալ հաստատուն ի հաւատս Քրիստոսի եւ ի պատուիրանս Աստուծոյ՝ ոչ հայրապետ եւ ոչ վարդապետ, ոչ եպիսկոպոս եւ ոչ քահանայ, ոչ աբեղայ եւ ոչ կրօնաւոր, ոչ իշխան եւ ոչ ժողովուրդ, իշխանք յարենան ի գողս եւ յաւազակս եւ յափշտակողս, դատաւորք ի կաշառս եւ յանիրաւ դատաստանս. կրօնաւորք թողուն զանապատս եւ զմենաստանս եւ յաշխարհի զբաղմունս դեգերին եւ շրջին ընդ փողոցս եւ ի մէջ կանանց, ատեն զաղօթս եւ թողուն զկարգս կրօնաւորութեան իւրեանց, սիրեն զվարս աշխարհի եւ զհետ երթան գովեստից մարդկան, որոճալով որոճին զփւական երգս [=սիրոյ երգերը]...Այլ եւ իշխանք պիղծ և մեծախոխ յանդգնեալ եւ մոլորեալ... միշտ եւ հանապազ ի գինարբուսն դեգերին վասն սիրոյ եւ ցանկութեան չար եւ պիղծ ախտին։ Հայրապետք եւ եպիսկոպոսունք եւ քահանայք եւ կրօնաւորք արծաթասէրք առաւել քան աստուածասէրք»։ Նոյնը կրկնում է նա երկրորդ անգամին. «Եւ ահա յայսմհետէ բազում հերձուածք մտանին յեկեղեցի... Յաղագս արծաթոյն թողուն ի բաց զհաւատն... վասն զի մեղսասէրք եւ ցանկացողք լինելոց են չար ճանապարհին... Առաջնորդք եւ իշխանք լինելոց են կաշառասէրք եւ ստախօսք եւ սուտերդմունք եւ ի ձեռս կաշառացն թիւրեն զդատաստանս իրաւանցն աղքատին... իշխանք եւ դատաւորք պոռնկասէրք... եւ առեցողք լինին սուրբ ամուսնութեան եւ փակին ընդ պոռնկութեամբ ախտին... մեծարեն զմատնիչսն եւ զգողսն, յափշտակեն անիրաւաբար զաշխատողաց զինչսըն... Յաղագս արծաթասիրութեան [առաջնորդաց] տան ձեռնադրութիւն բազում անարժանից եւ զամենայն պղծեալսն ածեն ի կարգ քահանայութեան... եւ զանարատն դարձուցանեն ի քահանայութենէ առ ի չունելոյ արծաթ... բազումք ի քահանայից եւ ի կրօնաւորաց լինելոց են ցանկասէրք, ախտից փափագողք, որոճալով որոճեն զերգս դիւական... յղփանան առաջնորդք աշխարհի արծաթսիրութեամբ...»[1]։ Յովհաննէս Կոզեռն վարդապետի խօսքերով պատկերացուած է ոչ միայն 11րդ, այլեւ 12րդ դարի դրութիւնը։

**3. Թոնդրակեցոց աղանդը**։—Աշխարհիկ կեանքի ու ձգտումների այնպիսի վիճակի միջոցին բնականաբար ամէնից առաջ սկսում է զարգանալ վերածնութեան էական կողմը — եկեղեցուց անկախ, ազատ մտածողութիւնը։ Զօրանում է պայքարը նոր գաղափարախօսութեան համար՝ ընդդէմ նախորդ շրջանի գաղափարախօսութեան, որի պաշտպան էին իշխողները — եկեղեցին եւ ազնուականութիւնը։ Այդ հանդէս է գալիս, ինչպէս սովորաբար՝ աղանդաւորութեամբ, որի միջոցով Հայաստանում աւելի վաղ քան Եւրոպայում ձեւաւորուել է ընդդիմադիր, հեստող ոգին։ Հայաստանը եղել է մի ակուն աղանդաւորական անընդհատ շարժման համար՝ մերթ գաղտնի, մերթ յայտնի, նոյնիսկ ապստամբութեան վերածուելով։ Հայոց դրականու-

1 Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 53—55, 66—74։

թեան սկզբում հէնց՝ հանդիպում ենք «բարբարիանոս» (ինչպէս «բորբորիանոս») աղանդին Հայաստանի արեւմտեան կողմերում: Ապա մեր աշխարհում գործել են նաեւ Մարկիոնի աղանդին, մանիքէութեան, մծղնէութեան (մեսալեան աղանդ),«հայոց աղանդին» եւ ուրիշների հետեւողները[1]: Այստեղ չպիտի, հարկաւ, զանազան անուններով երեւացող աղանդների մասին մանրամասն խօսել։ Դրանցից առանձնապէս,—բայց համառօտակի, որքան որ մեր խնդրին հարկաւոր է, — յիշելու է երկուսը — Պաւլիկեան եւ Թոնդրակեցոց աղանդները, որոնք երկուսն էլ հայկական հողի վրայ են ծագել:

Պաւլիկեանները տարածուած են եղել Հայաստանում 8րդ դարի սկիզբներին. նրանց դէմ կռուել են Յովհան Օձնեցու ժամանակ ե՛ւ ճառերով, ե՛ւ եկեղեցական կանոններով: Այդ աղանդը 9րդ դարում բացարձակ ծաւալւում է գլխաւորապէս Փոքր Հայաստանում: Չնայելով կրած հալածանքներին՝ աղանդաւորներն այնքան զօրանում են, որ նոյն դարի կէսերին մի մեծ ռեւոլուցիոն շարժում են առաջ բերում: Նրանք զէն ի ձեռին ապըստամբում են բիզանդական կառավարութեան դէմ, պահանջելով կրօնական եւ քաղաքական ազատութիւն: Նրանց ուժն այնքան մեծ էր, որ կայսրութեանը դիմադրում են 25 տարի շարունակ, մինչեւ որ 873 թ. յաղթւում են կայսերական զօրքերից եւ կոտորւում: Նրանց կենտրոնը, Տեփրիկէ քաղաքն աւերւում է, եւ նրանց մնացորդները ցրւում են: Հետագայում նրանք փոխադրւում են Թրակիա: Ինչպէս սովորաբար ընդունում են, այս աղանդի ազդեցութիւնը մեծ է եղել ոչ միայն սլաւոնական, այլեւ ընդհանրապէս եւրոպական աղանդների կազմութեան վրայ: Այս աղանդն իր քարոզած սկզբունքներով մերթ նոյնացրել են մծղնէութեան հետ, մերթ մօտեցրել են մանիքէութեան, կամ Մարկիոնի աղանդին[2]: Այդ նրանից է առաջացել, որ երբեմն զանազան աղանդաւորներ, ինչպէս գրում է Յովհան Օձնեցին, յարում են իրար՝ եկեղեցու դէմ մի ընդհանուր կռիւ մղելու համար:

Պաւլիկեանների պարտուելուց յետոյ՝ աղանդաւորութիւնը չի մեռնում Հայաստանում: Շատ չանցած՝ դարձեալ հայկական հողի վրայ, հայ կեանքից ծնունդ է առնում մի նորը, Թոնդրակեցոց աղանդը, որ համարում են Պաւլիկեանների յաջորդը: Ըստ Ստեփանոս Տարօնեցու՝ Յովհաննէս Դրասխանակերտցի կաթողիկոսի (897–928 թ.) օրով, այն խառն ժամանակներում, հանդէս է եկել, իբրեւ այդ աղանդի հիմնադիր, Սմբատ անունով մէկը «հակառակ ամենայն քրիստոնէական կարգաց»: Այս նոր աղանդը շատ նմանութիւններ ունի Պաւլիկեան աղանդի հետ. նրա շուրջը խմբուած պիտի լինեն Պաւլիկեանների մնացորդները Հայաստանում, եւ երեւի նոյն հին աղանդն է նոր անունով երեւան եկած: Աղանդի կենտրոնն եղել է Ապահունիք գաւառում Թոնդրակ գիւղը, ուր նստում էր աղանդապետը, որից եւ աղանդի անունը: Բայց նրա ճիւղերը՝ նայելով տեղերին՝ կոչուել են նաեւ Կաշեցի, Թուլայլեցի:

Թոնդրակեցի կամ Թոնդրակեան աղանդաւորները տարածւում են

---

1 Տե՛ս նոյն աշխատութեան Ա. հատոր, Եօթներորդ յաւելուած:

2 Die Paulikianer im Byzantinischen Kaiserreiche und verwandte Ketzerische Erscheinungen in Armenien, von Karapet Ter-Mkrttschian, Leipzig, 1893. *Այստեղ էջ 82 - 91*, Die Thondrakier.

աւելի Մեծ Հայաստանի հիւսիս–արեւմտեան կողմերում եւ 11րդ դարի առաջին տասնամեակում արդէն բացարձակ կերպով բռնի գործողութիւններ են դիմում: Այդ ժամանակներում նրանց կողմն է անցնում մինչեւ անգամ Հարքի եպիսկոպոսը եւ եկեղեցուն հակառակ կարգադրութիւններ անում: Սարգիս կաթողիկոսը (992–1019 թ.) ստիպուած է լինում միջոցներ ձեռք առնել այդ եպիսկոպոսի դէմ եւ պատժել նրան: Աղանդաւորների թիւը, սակայն, չարունակում է աճել, Մանանաղի գաւառում նրանց յարում են աբեղաներ, ինչպէս եւ գիւղատէր ազնուական կանայք եւ ռամարդիկ: Նրանք քանդում են իրենց գիւղերի եկեղեցիները, խորտակում են անդաստաններում կանգնած խաչքարերը: Բայց երբ այդ աղանդաւորները 1011 թ. փշրում են Պարխար լեռների ճիւղերի մէկի վրայ կանգնած մի յայտնի խաչքար, ապա աղմուկ է բարձրանում, գաւառի եպիսկոպոսն այրում, աւերում է նրանց գիւղերը: Բանը հասնում է դատաւորին, որ, հաւանալի է, պահում է ոչ թէ աղանդաւորների, այլ եկեղեցու կողմը[1]: Թոնդրակեցիները, սակայն, չարունակ աճում ու ծաւալւում են եւ սպառնալից են դառնում: Յիշուած դէպքից մի 40 տարի յետոյ, 1051 կամ 1052 թ., նրանց դէմ ելնում է Գրիգոր Մագիստրոս Պահլաւունի իշխանը, որ բիզանդական կայսրութեան կուսակալն էր Միջագետքի վրայ, եւ որի իշխանութեան տակ էին նաեւ Հայաստանի այն կողմերը, ուր գտնւում էին այդ աղանդաւորները: Նա զէնքի ուժով ճնշումների է դիմում, աւերում է Թոնդրակ գիւղը եւ աղանդաւորներին վտարում է իր իշխանութեան սահմաններից: Բայց աղանդը չի ոչնչանում, այլ գաղտնի չարունակում է յարատեւել և հասնում է մինչեւ 19րդ դարը[2]: Այս աղանդաւորներն եւս, ինչպէս ընդունում են, անցել են Թրակիա եւ ազդել եւրոպական աղանդների կազմութեան վրայ:

Նրանց ազդեցութիւնը երեւում է ի միջի այլոց նաեւ Ալբիգեան կամ Ալբիգացոց աղանդի վրայ, որ 11–13րդ դարերում տարածւում էր Հարաւային Ֆրանսիայում: Ուստի եւ այդ Թոնդրակեցոց աղանդը, ինչպէս եւ Պաւլիկեանութիւնը, կարեւորութիւն ունի ընդհանուր միջազգային տեսակէտով եւս:

Ի՞նչ է եղել Թոնդրակեցոց ուսմունքը: Շատ բան, հարկաւ, դեռ կենդանի զարգացման մէջ է եղել բերանացի քարոզով եւ աւանդութեամբ: Նրանցից ոչ մի գրուածք չի մնացել: Մեր ձեռքը հասել են միայն հակառակորդների գրածները[3], որոնց մէջ ամէն լուտանք թափում են նրանց գլխին: Բայց եւ այնպէս բաւական ծանօթութիւն ենք ստանում այդ աղան-

---

1 Տես՝ Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ, գլուխներ ԻԲ եւ ԻԳ, էջ 142—162:

2 «Փորձ», Դ տարի՝ 1880, հոկտեմբերի համար, էջ 91—130՝ «Թոնդրակեցիները մեր օրերում», Ա. Երիցեանի:

3 Դրանք են՝ ա) Գրիգոր Նարեկացու «Թուղթը», որ տպուած է Բարսեղ Սարգսեանի «Ուսումնասիրութիւն Մանիքէա-Պաւղիկեան Թոնդրակեցիներու աղանդին եւ Գր. Նարեկացու Թուղթը, Վենետիկ, 1893» աշխատութեան վերջում, էջ 106—117: Նոյնը տպագրուած է նաեւ Վենետիկի «Բազմավէպ»ի մէջ 1893 թ., էջ 59—64, 113—119: բ) Գր. Մագիստրոսի ԿԷ եւ ԿԸ թղթերը. տես՝ «Գր. Մագիստրոսի թղթերը» Կ. Կոստանեանցի հրատ., Աղեքսանդրապոլ, 1910, էջ 148—168: գ) Ար. Լաստիվերտցու Պատմ. վերեւում յիշուած գլուխները:

դաւորների ընդդիմադիր գաղափարախօսութեան վարդապետութեան մասին։ Նրանք կատարելապէս չէին մերժում քրիստոնէութիւնը, այլ ժխտում էին եկեղեցու բոլոր կարգերը։ Չէին ընդունում Քրիստոսին իբրեւ աստուած· աղանդապետն ինքն իրեն քրիստոս էր անուանում։ Մերժում էին Ս. Գիրքը, Երրորդութեան գոյութիւնը, հանդերձեալ կեանքը, մեռելների յարութիւնը, հոգու անմահութիւնը եւ այլն։ Մերժում էին եկեղեցու նուիրապետութիւնը (հիերարխիա), քահանայական կարգը, ձեռնադրութիւնը, ըստ նրանց աղանդապետ Սմբատի, — գրում է Գրիգոր Մագիստրոսը (էջ 154), — «ոչ այլ ինչ է այդ, բայց վասն խաբելոյ ժողովրդեանն»։

Մերժում էին նաեւ եկեղեցու խորհուրդները՝ մկրտութիւն, հաղորդութիւն, խոստովանութիւն, ապաշխարութիւն եւ այլն։ Խափանում էին ամէն պաշտամունք, եկեղեցական արարողութիւնները եւ սովորոյթները — կիրակի օրը, ծնրադրութիւնը ծաղրում էին եւ ոչինչ էին համարում քահանայի զգեստը, պատարագը, զոհաբերութիւնները եւ այլն։ Չէին յարգում եւ նոյնիսկ ոչնչացնում էին եկեղեցիները, խաչերը, խաչքարերը, որոնցով զարդարուած էին հանդերը, լեռները· արհամարհում էին սրբերին, տիրամօրը եւ այլն։ Անգոսնում էին, արհամարհում, պախարակում էին ամուսնութեան կարգը։ Գրիգոր Նարեկացին նրանց ուրիշ ժխտումների հետ յիշում է եւ «զպսակին ամուսնութեան անգոսնութիւն... զպսակն անգոսնեն, եւ զոր սիրով մերձենան առ յիրեարս, կատարեալ սէր համարին եւ յԱստուծոյ, եւ հաճոյ Քրիստոսի, թէ Աստուած սէր է, եւ զսիրով միաւորիլն կամի և ոչ զպսակ» (էջ 110 եւ հտ.)։ Առն եւ կնոջ այսպիսի մերձաւորութիւնը ժամանակակիցները բնականաբար համարել են, ինչպէս գրում է Գր. Նարեկացին, «մծղնէական անխտիր պղծութիւն»։ «Եւ այս ինչ են անօրէնութիւնք չարագործացն այնոցիկ, — գրում է Գր. Մագիստրոսը, — ոչ պահք նոցա... եւ ոչ խտրութիւնք արանց եւ կանանց եւ ոչ ընտանեաց, թէպէտ եւ ոչ յայտնապէս համարձակին եւ ոչ պատուեն եւ ոչ զմի ինչ ոչ յաստուածայնոց եւ ոչ յեղելոց· այլ զամենայնն ծաղր առնեն՝ զհին եւ զնոր օրէնս»։ Այս հեղինակը՝ նրանց կենտրոնն անուանում է «Շնաւանք»։ «Եւ բնակեալք էին ի Շնաւանսն այն արք հանդերձիւք կրօնաւորաց եւ կանանց բազմութիւն բոզից» (էջ 152)։ Արիստակէս Լաստիվերտցին եւս այս աղանդաւորութիւնն անուանում է «մծղնեայ կրօնք», ասելով թէ «պոռնկական մոլեգին ախտը» «օրէն է նոցին փարախին», եւ թէ պոռնկութիւն են անում «անխտրապէս, ոչ ածեալ զմտաւ զարեան մերձաւորութիւնն»։ Եւ վերջն այս պատմագիրն աւելացնում է· «բայց զնոցա մծղնէ զգործն անպատշաճ համարեցաք ընդ գրով արկանել, քանզի կարի աղտեղի է»։ Այդ աղանդաւորների համար մեղքը նոյնպէս գոյութիւն չունէր· ուստի մեղքի պատիժ եւ ապաշխարութիւն էլ չկար։

Ճգնաւորական կեանքին եւ եկեղեցուն հակառակ մի վարդապետութիւն էր Թոնդրակեցոց ուսումը, ծայրայեղութեան հասած մի բողոք վանական ու ճգնաւորական կեանքի, եկեղեցական իշխանութեան, եկեղեցու կարգերի ու գաղափարների դէմ, որոնք, ինչպէս տեսել ենք, չափազանցութեան էին հասած 10րդ դարում եւ 11րդի առաջին տասնամեակներում։ Դա հակաեկեղեցական մի մեծ շարժում էր։ Թէ ինչի՛ց էր ծագում եւ զար-

կանում դա, մեզ այդ չեն բացատրում ժամանակակից գրողները: Բայց պարզ է այդ: Դա եղել է նախ՝ քաղաքակրթութեան փարթամ զարգացման եւ աշխարհիկ կեանքին հակուելու հետեւանքը: Ապա՝ եկեղեցականութեան վատ վարքերը, հոգեւորականներից շատերի զեղծումները, կեղծաւորութիւնը, եկեղեցական իշխանութեան ճնշումները, բուռն վերաբերմունքը դէպի այլամտածողութիւնը, այս ամէնը դրդել էին դրանցից զզուողներին հակառակ դիրք բռնելու: Եւ վերջապէս՝ շատ տարրեր, որոնք չէին կարող հրաժարուել իրենց բնական խելքից եւ հաշտուել եկեղեցու քարոզների հետ, սկսում էին կռիւ եկեղեցու դէմ, ձգտելով եկեղեցին հիմնովին վերանորոգութեան—ռեֆորմացիայի ենթարկելու, շատ աւելի վաղ քան Լութերի եւ ուրիշների գործողութիւնը: Պատահական չէ, որ Արիստակէս Լաստիվերտցին շատ գովում է Թոնդրակեցոց աղանդին յարած եպիսկոպոսի ու քահանաների եւ իշխանի նախկին մեծ բարեպաշտութիւնը[1]: Ինչքան էլ Պատմագիրը բացատրի, թէ նրանք ուրիշներին խաբելու համար կեղծաւորութեամբ են բարեպաշտ եղել, այդ ընդունելի չէ: Իրողութիւնն այն է, որ նրանք սկզբում, իրօք, ջերմեռանդ հաւատացող են եղել եւ յետոյ միայն անցել են Թոնդրակեցոց կողմը: Ի՞նչն էր ստիպում, օրինակ, որ այն նշանաւոր Վրրվեռ իշխանը հրաժարուէր եկեղեցուց, նա, որ իր կալուածում նոյնիսկ կրօնաստան էր շինել, «ճգնաւոր եղբարս ժողովեալ ի նմա, եւ ընդարձակ սահմանօք՝ անկարօտ պահէր զկեանս նոցա»· որ ամէն տարի մեծ պասին այդ կրօնաւորների մօտ էր գնում «եւ հանդիսակից լինէր նոցա՝ մինչեւ յաւուրս մեծի պասէքին· եւ բազում այլ գործս բարեաց ցուցանէր ի սոյն սպասաւորութիւն· նաեւ յաղքատասնութիւնս եւ ի քահանայից հնազանդութիւնս՝ քան զբազումս յառաջադէմ ցուցանիւր», — ի՞նչն էր ստիպում այդ յայտնի իշխանին,—որից ակնածում էր դատաւորը,— ինչպէս եւ Հարքի ազդեցիկ եպիսկոպոսին, ոչ միայն հրաժարուել եկեղեցուց, այլեւ բոլորովին հակառակ գնալ: Նրանք անպայման փորձով տեսել էին գոյութիւն ունեցող կեղծիքները, զզուել էին դրանցից, եւ այդ թելադրել էր նրանց մտնելու հակառակ բանակի մէջ եւ ձգտելու եկեղեցու վերանորոգութեան: Բայց նրանց գաղափարը չէր կարող Հայերի մէջ իրականանալ այն դարում, քանի որ եկեղեցին ու նրա պաշտպան իշխանութիւնը ու բիզանդական կայսրութիւնը դեռ շատ զօրեղ էին, իսկ այդ հեստող ու ժխտող աղանդը մի ռեւոլուցիոն ընդդիմադրութիւն էր իշխող դասակարգի դէմ, մի դասակարգային պայքար, որ անխնայ պիտի բնաջինջ անել աշխատէին իշխողները:

**4· Գաղափարախօսութեան զարգացման դանդաղ ընթացքը:**—Թոնդրակեցիների ընդդիմադիր վարդապետութեան դրական կողմը, ինչպէս ասուեց վերեւում, մեզ չեն հաղորդել նրանց հակառակորդ հեղինակները, բայց հասկանալի է այդ: «Հիմնական հերետիկոսական գաղափարն այն է, որ երկրին է առաւելութիւն տրւում, քան երկնքին»: Այդ նշանակում է, որ բնութեանը, իրական կեանքին առաւելութիւն պիտի տրուէր· յայտնութեան կրօնի փոխանակ պիտի իշխէր ռացիոնալիզմը: Հոգին ետ պիտի մղուէր մարմնի առաջ, իրաւազուրկ մարմինն ու բնութիւնը ստանային իրենց իրա-

1 Արիս. Լաստիվերտցի, Պատմութիւն, էջ 142—146, 152—153:

ւունքը, եւ գրականութիւնն աշխարհականանալով՝ կապուէր գլխաւորապէս քրական կեանքի, երկրի եւ մարմնի հետ: Վերածնութեան այս դարաշրջանը, սակայն, չէր կարող իր ամբողջութեամբ արագ անդրադառնալ գրականութեան մէջ 11րդ դարի առաջին կէսին, երբ դեռ շատ զօրեղ էր կրօնական ոգին, եւ ծանրաձեռն ճնշող էր եկեղեցու իշխանութիւնը, եւ գրականութիւնը դեռ գտնւում էր գլխաւորապէս հոգեւորականների ձեռին: Գրաւոր դպրութեան մէջ զարգացումը, սկսուելով եկեղեցու տեսակէտով անվնաս գաղափարներից, կատարւում էր շատ դանդաղ տեմպերով, եւ ոչ միակերպ համաչափ ընթացքով, եւ ոչ էլ անընդհատ, քանի որ Հայոց երկիրը հէնց այդ դարերում ենթարկւում էր պարբերական ցնցումների: Բայց այնուամենայնիւ սկսուած առաջադիմութիւնն այսպէս կամ այնպէս շարունակւում է, մինչեւ որ վերջիվերջոյ գրականութեան մէջ էլ երկրաւորին տրւում է առաւելութիւն: Եւ մեր գրականութեան այս շրջանը հետաքրքիր է նոր գաղափարախօսութեան աստիճանաբար զարգացման ընթացքով: Խնդիրն այստեղ գրաւոր դպրութեան մասին է եւ ո՛չ գուսանական երգերի եւ ժողովրդական բանահիւսութեան, որոնք սկզբից ի վեր աշխարհիկ բնաւորութիւն են ունեցել:

## ՆՈՐ ՄՏԱՒՈՐ ՀՈՍԱՆՔԻ ԱՌԱՋԻՆ ՓՈՒԼԵՐԸ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ

### ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

1· Լուսաւորութեան եւ ուսման ծաւալումը:—*Գրականութեան աշխարհականացումը պիտի լինէր ամէնից առաջ քաղաքներում ապրող աշխարհականների ձեռով: Եւ իսկապէս, վաղ վերածնութեան շրջանում ազնուականների մտաւոր վիճակը բարձրանում էր, նրանք եւս սկսում էին ուսում առնել եւ գիտութեամբ ու գրականութեամբ պարապել, միաժամանակ եւ հովանաւորել ուսումնականներին: 10րդ դարից ի վեր հանդէս եկող Պահլաւունի տոհմի մարդիկը յայտնի են դարձել ոչ միայն շինարարութեամբ ու ռազմական գործերով, այլեւ իրենց ուսումնասիրութեամբ· նրանք ջանացել են «ուսուցանել զմանկունս»*[1]*: Լաւ ուսում են տուել եւ մանուկ Գրիգոր Պահլաւունուն: Ուսումնասէր են եղել եւ Բագրատունիները· իմաստուն կամ իմաստասէր է յիշւում Յովհաննէս Սմբատ թագաւորը: Նրա ժամանակ իր գիտութեամբ յայտնի է եղել Անիի Սարգիս վարդապետը, Գրիգոր Մագիստրոսի բարեկամներից մէկը, որին այդ Պահլաւունի իշխանը իր մի նամակի մէջ*[2] *դիմում է գրելով՝ «հզօր հռետոր եւ աստուածային տելետիս... Միշտ կարօտեալ կամ բանի քում եւ դրի, քանզի հզօր ես ի պուետիկոսականն մատենագրութեան: Եւ սիրելի է ինձ, — աւելացնում է նա, — ոչ այլ ինչ, եթէ այնպիսի լսել ինչ կամ ասել»*[2]:

---

*1 Գր. Մագիստրոսի թղթերը, ԺԱ, էջ 42 եւ հտ.:*

*2 Անդ, ԺԹ, էջ 57:*

*3 «Տելետոս» նշանակում է «կատարելութիւն», այդ բառը Բիզանդիայում գործածւում էր իբրեւ տիտղոս «գլուխ իմաստասիրաց կամ հռետորաց» նշանակութեամբ: Հետաքրքիր է այս գիտնական վարդապետի յիշատակարանը, որ նա մուծել է մի գրքի մէջ. «Յամի յորում էր հայ թուականն ՆՂ (=490+551=1041), վճարեցաւ ի*

Անիի արքունիքում եղել է դրադարան. նոյնը կար եւ կաթողիկոսարանում: Իբրեւ ուսումնասէր եւ գիտուն յիշւում է նաեւ Գագիկ Բ.ը, որի համար Մատթէոս Ուռհայեցին գրում է. «Այր հզօր էր յիմաստասիրական ջոկսն եւ անյաղթ ի պատասխանիսն»[1]: Այսպէս նաեւ եւ Վանանդի Աբասեան Գագիկ Թագաւորը: Այս վերջինիս մի նամակ է գրել Գրիգոր Մագիստրոսը՝ յանձնարարելով նրան տեղեակ Գրիգոր Հնձացի (Հինձք վանք եւ գիւղ Կարինի մօտ) կրօնաւորին: «Գրիգոր անուանեալ տեղեակ, — գրում է նա, — իմասցի սուրգել արքայութիւն քո, զի այր հմուտ է աստուածեղէն դաւանութեան մերոյ բախտի, նաեւ հնում եւ արտաքին գրոց յոյժ տեղեակ: Եւ ըղձայ տենչացեալ զփափագանս իւր լնուլ պատարուն ընթերցմամբ, զի այնու ոչ երբեք չատանայ: Եւ կամիմ զի եւ դա արքունիս քոյոյ քարգոնսական [=արքայական] ապարանի ամկայացեալ արասցէ ինձ ճեմարան, զի մի՛ բնաւին Ասքանազեան եւ Արամեան դպրութիւնս՝ ի բազմաց սատարեալ՝ ի մոռացումն անկցի... Զի տեսանեմք զքեզ ի հոմերական տաղսն վերառեալ չափաբերական եւ ոտանաւորս հայնեղական կարկառեալ. զի եւ դա [=Գրիգոր Հնձացի] յաջողիկ յարդարեալ» (Թուղթ Խ, էջ 97): Կը նշանակէ՝ այս Գագիկ Թագաւորը եղել է իմաստասէր, միաժամանակ եւ ոտանաւորներ է յօրինելիս եղել: Նա հովանաւորել է գիտնականներին եւ ունեցել է ճեմարան, այսինքն փիլիսոփայական դպրոց, ուր աւանդում էին կրօնականի հետ եւ արտաքին գիտութիւններ: Այդպիսի ուսումն արդէն վերածնութեան ոգու առաջին պահանջն էր, որ պայծառ արտայայտութիւն է գտել յանձին Գրիգոր Մագիստրոսի:

2. Կենսագրութիւնը:— Գրիգոր Նարեկացին իր հանճարով ունէր բնութեան զգացումը, բայց իր երկով նա ուղեցոյց չի դարձել անմիջական յաջորդների համար: Գուցէ եւ եղել են նրան հետեւորդներ, ժամանակակից կամ քիչ ուշ հանդէս եկող բանաստեղծներ, բայց այդպիսիների գրուածքներ երեւան չեն եկել: Վերածնութեան առաջին «պուետիկոսը», միայն ոչ մեր հին մեծ բանաստեղծի բնագաւառում, դա Պահլաւունի Գրիգոր Մագիստրոսն է, Գրիգոր Նարեկացու շատ կրտսեր ժամանակակիցը, որից մնում են բազմաթիւ թղթեր եւ մի քանի չափածոյ երկեր[2]: Նա մի հետաքրքիր դէմք է, մի յայտնի իշխան, որ շատ հմուտ է եկեղեցական գրականութեանը, սիրող եւ պաշտպան է հանդիսացել Հայոց եկեղեցու, կրօնասէր է, բայց իր ժամանակի համեմատ՝ ազատամիտ ու լուսամիտ մի բազմագէտ անձ: Նրա մէջ մարմնացել է իր ժամանակի վերածնութեան մտքի մի կողմը — չբաւականանալ միայն կրօնականով եւ եկեղեցական դպրոցով, վերանորոգել եւ

---

մարդկանէ արքայն Հայոց մեծիմաստն Յովհաննէս: Գտի ես Սարգիս վարդապետ զգիրքս զայս յարքունական տան գանձուն անկեալ ի յանկեան միում, անայցելու թափառեալ թաւալեր յաճիւն յատակին եւ գրեթէ լայր լռելեայն: Իսկ իմ հայեցեալ խնամով ի գրանոցին, եւ ըստ սովորական մեր ախորժակացս զյոքունս բացեալ՝ ի բանսն բերկրէր (= բերկրէի?). եւ սա զատուցեալ յընկերացն կայր կարաւտ ձեռին առ ինքն կարկառելոյ: Զոր տպա առեալ իմ ընդ իս տարայ՝ հանեալ ի բանդէն»: Գար. Զարբհանալեան, Մատենադարան Հայկական Թարգմանութեանց Նախնեաց (դար Դ—ԺԳ), Վենետիկ, 1889, էջ 455:

1. Մատթ. Ուռհ., Ժամանակագր., Վաղարշապատ, 1898, էջ 161:

2 Գրիգոր Մագիստրոսի Թղթերը, բնագիրն առաջաբանով եւ ծանօթութիւններով առաջին անգամ ի լոյս ընծայեց Կ. Կոստանեանց, Ալեքսանդրապոլ, 1910:

զարգացնել Հայերի մէջ հին յունական գիտութիւնը, ուսումնասիրել մաթեմատիկա, երկրաչափութիւն, բժշկութիւն, ծանօթանալ հին յունական գրականութեանը եւ ընդհանրապէս բազմակողմանի գիտանքներ ձեռք բերել:

Այս նշանաւոր անձը որդին էր Վասակ Պահլաւունու, ծնուած մօտ 990 թ.: Նա մեծացել է Անի քաղաքում, Պահլաւունիների պալատում, վայելելով նաեւ խնամքն իր հօրեղբայր Վահրամ Պահլաւունու, որ Անիի թագաւորութեան վերջին շրջանում մեծ դեր է կատարել իբրեւ սպարապետ եւ ութսունամեայ հասակում 1047 թ. մարտի մէջ ընկել է քաջաբար: Նրա մահը ողբում է Գրիգոր Մագիստրոսը իր մի թղթի մէջ (ԺԱ, էջ 36 եւ հտն.), յիշելով, թէ ինչպէս նա իրեն սիրել է: Մեր այս հեղինակն ուսումն առել է Անիում, հմտացել է Ս. Գրքին եւ եկեղեցական հայրերի գրուածքներին: Բայց որ կարեւորն է, ժամանակի ոգու տեսակէտով՝ նա պատանեկան հասակից արդէն պարապել է նաեւ արտաքին գիտութիւններով, ուսումնասիրելով փիլիսոփայութիւն եւ այլն: Միաժամանակ նա վարժուել է զինուորական արհեստին, որ շատ անհրաժեշտ էր այն դարում:

Թուրքական հրոսակներն արդէն մտել էին Հայաստան: 1021 թ. Դելումք կոչուած մի ցեղ Ատրպատականի կողմից յարձակւում է կենտրոնական Հայաստանի վրայ, հասնում Դուին եւ ասպատակ սփռելով մօտենում Բջնի ամրոցին, որ Գրիգորի հայրական կալուածն էր: Վասակը Բջնու պահպանութիւնը թողնելով իր որդուն՝ ինքն իր մարտիկներով ելնում է ասպատակաւորների դէմ, ջարդում, հալածում է նրանց: Յաղթութիւնից յետոյ նա Սերկեւելայ (Արայի) լեռան ստորոտում՝ յոգնած քնում է քարերի ստուերում. քնած տեղը մէկն սպանում է նրան[1]: Հօր մահից յետոյ, հայրական ընդարձակ կալուածները, որ Նիգ գաւառից հասնում էին մինչեւ Գեղամայ լճի եւ Ազատ գետի հովիտները եւ այլուր, անցնում են Գրիգորին: Նա էլ, ինչպէս վարուել էր իր հայրը, առանձին ուշադրութիւն է դարձնում վանքերի շինարարութեանը Բջնիում, Կեչառիսում (Ծաղկաձորում) եւ ուրիշ տեղերում:

Գրիգոր Մագիստրոսը միւս Պահլաւունիների հետ պաշտպան է կանգնում Անիի թագաւորութեան եւ Գագիկ Բ.ի գահակալութեան: Նա իր զօրքերով օգնում է Գագիկին ճակատ մղելու Թուրքերի դէմ եւ ջարդելու նրանց 1042–1043 թ., բայց շուտով գժտութիւն է ընկնում այդ երկուսի միջեւ, եւ նա հալածւում է թագաւորից, ինչպէս ինքը գրում է, կրելով բանտ, կապանք ու զրկանքներ եւ մինչեւ անգամ մահուան սպառնալիքներ (Թուղթ ԿԱ, էջ 139 եւ հտ.): Յետոյ թագաւորը զղջալով կամենում է հաշտուել նրա հետ, բայց հաւանօրէն գլուխ չի գալիս հաշտութիւնը, եւ Գրիգորը հեռանում է Տարօն:

Յայտնի է, որ Յովհաննէս Սմբատ թագաւորը Անին իր կալուածներով կտակում է բիզանդացոց կայսրին: Երբ Գագիկ Բ.ը գնում է Կոստանդնուպոլիս այդ կտակի խնդիրը կարգաւորելու, Գրիգորն եւս 1045 թ. գնում

1 Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 11 եւ հտ.:

է այնտեղ, յուսալով, թէ գուցէ իր այցելութեամբ օգնի Գագիկին, բայց նա ոչինչ անել չի կարողանում: «Իբրեւ ետես, եթէ ոչ են թողլոց զԳագիկ ի տեղի իւր, — գրում է ժամանակակից Արիստակէս Լաստիվերտցին, — յառաջ կացեալ տայ զբանալին Բջնոյ ցթագաւորն, եւ զամենայն գիր հայրենի ժառանգութիւնն, եւ մեծարեալ ի նմանէ՝ առնու զպատիւ մագիստրոսութեան, եւ զտեղիս բնակութեան ի սահմանս Միջագետաց գեօղս եւ քաղաքս, գրով եւ ոսկի մատանեաւ յազգէ յազգ մինչեւ յաւիտեան»[1]:

Ինքը Գրիգոր Մագիստրոսը Պետրոս կաթողիկոսին ուղղած մի թղթի մէջ (Գ, էջ 13) իր այդ արարքն անուանում է «անտեղի մտածութիւն», այսպէս գրելով. «Արդ ե՛կ դու, ո՛վ գերակատարդ իմաստից, տե՛ս զիմոյ անտեղի մտածութեանս, յորս անկայ փորձութիւն առաւել քան զպոռմիականն, յորս ոչ բարերջանիկ գոլ նմա եհաս հանդէս. ըստ որում որ է դռեհիկս պատմի առակեալ՝ արտուտի զգուշութիւն. երկնի յատորս կործանիլ, եւ նա անկեալ պորտ յորսայս, զոտն ի վերայ յերկին ջանայ կարկառել, զի մի՛ երկին յերկիր անկցի խափուցեալ: Ի պարսաւ առեալ ոմանց թէ՝ Որո՞վ ծղէ ծնգօք ծառանաս, ծտիկ, քո ծովդ խեյօք: Պատասխանեալ հաւն ասաց. Որքան կարեմ, զայն առնեմ: Արդ իմ ծղէ ծնգօքս է... Սակայն յուսալով ի Տէր եւ հաւատալով իբրու անսուտ խոստմանց, յարեալ աճապարեալ քաջազօտի գտեալ՝ ի սեպհականն հաստուցի հայրենի, զոր ի բազմաց վաճառեալ եւ ծախեալ, եւ այժմ հալածական լեալ փախչիմք: Տէր արասցէ դատաստան»: Գրիգոր Մագիստրոսն, ուրեմն, չի կարողանում դէմն առնել Հայոց թագաւորութեան անկման: Թէպէտ եւ նա մի րոպէ հաւատում է խոստումներին, հաւանօրէն, բիզանդական կողմից, եւ այս մասին նոյնիսկ իմաց տալու համար շտապով մարդ է ուղարկում հայրենիք, բայց վերջինս արդէն վաճառուած էր շատերից: Եւ ոչ միայն այդ. նա ընկնում է «փորձութեան» մէջ: Նա եւս ենթակայ է լինում նոյն վիճակին, ինչ որ հայ իշխաններից շատերը: Նա եւս ստիպուած է լինում իր ծախուած հայրենի երկրից դուրս մնալու: Այդ մասին նա խորին տրտմութեամբ յիշում է իր թղթի մէջ:

Նա 1048 թ. ուրիշների հետ արեւելք է ուղարկւում Թուրքերի դէմ երկրի սահմանները պաշտպանելու, եւ կարգւում է Միջագետքի — հետը նաև Վասպուրականի, Բերկրիի, Արճէշի, Մանազկերտի ու Տարօնի—կառավարիչ դուքս («կիտօն եւ դուկ») կամ բդեշխ կոչումով: Նրա «մագիստրոս» պատուանունը ոչ թէ մի զինական աստիճան էր այն ժամանակ, ինչպէս այժմ, այլ Բիզանդական կայսրութեան մի պալատական տիտղոս էր ռազմական գծով: Գրիգոր Մագիստրոսն, ինչպէս իր թղթերից երեւում է, շատ բարեկարգութիւններ է արել իրեն յանձնած մարզերում, բայց միշտ ցանկացել է թողնել իր վարչական գործը և միայն գրականութեամբ զբաղուել: Կայսրը, սակայն, չի արձակել նրան իր պաշտօնից: Իր բդեշխութեան ժամանակ նա յաճախ եղել է Տարօնի ս. Կարապետի վանքում, ուր նրա համար կանգնած են եղել ապարանք եւ դպրոց: Նա վախճանուել է 1058 կամ 1059 թ.:

**3. Ուսման ծրագիրն ըստ Գրիգոր Մագիստրոսի եւ նրա թարգմանու-**

---

1 Արիստ. Լաստ., Պատմութիւն, Թիֆլիս, 1912, էջ 61:

թիւնները:— Բոլոր ուսեալ աշխարհականների մէջ առանձնապէս փայլում է այս Պահլաւունի իշխանը, մեր վաղ վերածնութեան շրջանի լաւագոյն ներկայացուցիչը, իսկական լուսաւորական գործիչ: Նա ոչ միայն ուրիշներին յորդորել է գիտութեամբ պարապելու եւ դպրոց ունենալու, այլեւ ինքը շարունակ սիրով եւ անխոնջ հետեւել է դրան՝ նշանաբան ունենալով «պատարուն ընթերցմամբ», «գիտութեամբ լուսաւորել զանձն»: Նա ունեցել է իր դպրոցը: Նամակների մէջ դիմում է աշակերտներին խրատներ տալով նրանց, ծոյլերին յանդիմանելով («Առ հեղգս ոմանց յաշակերտացն, որք ուսանին դիմաստասիրութիւն»), կամ անկեղծ ուրախանալով նրանց առաջադիմութեան համար:

Հետաքրքիր է նրա ծրագիրն ուսանելի առարկաների վերաբերեալ: Այդ պարզ իմացւում է նրա ԽԵ Թղթից (էջ 105 եւ հտ.) «Առ աշակերտս իւր Բարսեղ եւ Եղիսէ յաղագս գրոցն Արիստոտելի»: Նրանք այդ միջոցին գտնւում էին Պետրոս կաթողիկոսի մօտ: Լսելով, որ սա նրանց տուել է Արիստոտել՝ Մագիստրոսն այդ առթիւ գրում է՝ (1). «Եթէ Արիստոտէլի հաւաքմունքդ այն է, որ ասացեալն է յաղագս երկնային մարմնոյն եւ դընդատեսութեան երկրի, կամ յաղագս օրինադրութեան կենցաղոյս, յորս յիշատակէ եւ զօրականութեանցն քակտումն եւ զախտիցն բաժանմունս, զոր անուանեն խորհրդական, առաքեա՛ այսր զդա:

(2). Ապ՝ եթէ միայն Պորփիւրի առասութիւնքն իցէ բացորոշեալ ի խնդրոյ Քրիսաւորին հնգից ստորոգութեանցն, որք են այսոքիկ՝ սեռ, տեսակ, տարբերութիւն, յատուկ եւ պատահումն, կամ եթէ ութիցն, որք են՝ դիտաւորութիւնն, պիտանացուն, պատճառն, մակագրութեան կարգն, վարդապետական յեղանակն, թէ առինչ, մասն, տարբերումն, կամ զիւրն Ստագիրացւոյն՝ գոյացութիւն, որակ, քանակ, եւ առինչ, ուր, երբ, կալ, ունել, առնել, կրել, այսոքիկ ոչ են մեզ բղձալի ի հեռաստանէ զայսպէս խնդրել: Քանզի տրամադրութիւնքս այս վաղ ուրեմն պատահեաց մեզ մինչ տակաւին պատանեակ եղելոյ»:

Բերուած հատուածից ուշադրութիւն է գրաւում այն, որ երկրորդ պարբերոյթի վերջում Մագիստրոսը յայտնում է, թէ ինքն ի՛նչպիսի փիլիսոփայական ուսում է առել դեռ իր պատանեկութեան ժամանակ: Ծերունակութեան մէջ գրում է, թէ ինքն առանց յոգնելու ամէն ջանք գործ է դրել իր այդ ուսումը կատարելագործելու պարսկականից ու արաբականից, եւ թէ այդ Թուղթը գրելիս էլ աշխատում է «Յունաց անդանդաղ քարից արհեստից հետեւաբար մասին ինչ տեղեակ լինել: Քանզի, — աւելացնում է նա, — յայսոսիկ կրթեալ զմեզ վեհագոյն վարկանէի անկողոպտելի եւ անծայրագոյն ստանձնել, քան զամենայն ինչ որ ի կենցաղումս ազնուագոյն»: Ահա իմաստասէր մարդու կարծիքը գիտութեան մասին:

Գալով իր ծրագրին ուսանելի առարկաների վերաբերմամբ, նա ասում է, թէ Արիստոտէլից առաջ (վերեւի առաջին պարբերոյթը), «Նախ՝ պարտ է զքերականութիւն հանդերձ թարգմանութեամբն [=մեկնութեամբ, բացատրութեամբ] ուսանել տիրապէս մակատացականութեամբ, եւ զկնի այսր՝ զհռետորականն երիւք հանդիսիւք անսխալ տրոհութեամբ, եւ ապա՝ զսահմանացն պարունակել, եւ զպղատոնականն եւ արիստոտէլականն, եւ զարձեալ՝

պիւթագորական կարակնակերտութեանն բացորոշմանց եւ դատողութեանց»: Ուրեմն չորս կարգի ուսում, որոնցից երրորդն են Պղատոնինն ու Արիստոտէլինը: Բայց այդ, այսպէս ասած, բարձրագոյն շրջանի դասընթացն է: Դրանից առաջ հարկաւոր է ուրիշ բաներ սովորել.

«Նախուստ քան զայսոսիկ կրթեցելովք ներկուռ վերծանութեամբ զհին եւ զնոր կտակարանս, եւ առասպելավարժութիւնս ի բազում և զանազան տեղիս եղեալ զարքանութեամբ արտայայտել հուանիմք, եւ ի խոյզ ելանել ջերմագոյն եւ քաջողջական խոհականութեամբ եւ տրամաբանական հաստուածոց հոմերական եւ պղատոնական նախաստականին եւ այլոցն բոլոր արհեստից եւ մատենից: Զի յամենայնի իմաստասէրն խոստովան լիցի զգիտութիւն եւ ուրացեալ զանգիտութիւն մանաւանդ ըստ կարողութեան քառիցն արհեստից՝ թուական, երաժշտական, երկրաչափական, աստեղաբաշխական»: Այս էլ, ուրեմն, առաջին շրջանի դասընթացն է: Ուսումը պէտք է սկսել Ս. Գրքի ընթերցանութեամբ եւ առասպելավարժութեամբ, ապա հոմերական ու պղատոնական եւ այլ գրքերի հատուածներից յետոյ «չորս արհեստները»՝ թուաբանութիւն, երաժշտութիւն, երկրաչափութիւն եւ աստեղաբաշխութիւն, եւ նոր անցնել երկրորդ աստիճանի ուսման, որ է՝ քերականութիւն եւ միւսները:

Այս միեւնոյն խնդրի մասին նա խօսում է եւ ուրիշ անգամներ. այսպէս, օրինակ, Բ Թղթի մէջ, էջ 8 եւ հտ. ասում է, թէ ովքեր առաջուց այդ ուսումը չեն առել, նրանք չեն կարող սովորել «աստուածաբանութիւնը», այսինքն փիլիսոփայութեան բարձրագոյն ուսումը. «Քանզի պարտ է նախ ի բնաբանականէն [=Ֆիզիկայից] յուսումնականն [=մաթեմատիկայի] ամբառնալ եւ անտուստ աստուածականն [=փիլիսոփայութիւն Աստուծու մասին]... Եւ Պղատոն խոկ զգուշացուցանէ այսպէս յիւրումն աստուածաբանութեանն՝ Աներկրաչափական ոք մի՛ ներամտեսցէ զայսոսիկ ասելով, զի մի՛ ոք անկատար ի քառիցն ենթակայէ [=քառիցն արհեստից] մտցէ ի լսարանն, քանզի բնաւորեալ էր հրաշալին այն միայն աստուածաբանութեանն պարապել»:

Գրիգոր Մագիստրոսն ուսման ծրագրի մէջ դնում է, ինչպէս տեսանք, եւ «առասպելավարժութիւնս»: Հայերէն «առասպել» բառը նշանակում է ե՛ւ զրոյց աստուածների ու դիւցազների մասին, ե՛ւ առակ արդի սովորական իմաստով: Գրիգոր Մագիստրոսն այդ երկու նշանակութեամբ էլ հասկանում է այդ բառը: «Առասպելների համար նա իբրեւ աղբիւր դրում է՝ «ի բազում եւ զանազան տեղիս եղելոյ»: Ուրեմն դրանք պէտք էր վարժութեան համար քաղել ամէն տեղից, ուր կային այդպիսիները, ոչ միայն գրքերից, այլեւ ժողովրդական աւանդութիւնից: Եւ ինքը Մագիստրոսն ուշադիր է եղել թէ՛ «ի գռեհիկս» պատմուած առակներին, ինչպէս վերեւում բերուած ծտի առակն է, եւ թէ այլ բանահիւսական երկերին, ինչպէս եւ Արտաշէս Պարթեւի (Արշակունու) «ի գռեհիկս աւանդեալ» հանրածանօթ խօսքը, որ ծագում է հին Վիպասանքից (Թուղթ ԼԳ, էջ 87. «Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի...»):

Ուսումը լինում էր հայերէն. հարկաւոր էր ունենալ հայերէն լեզուով

գրքեր: Դրա համար կային հին թարգմանութիւնները, ինչպէս՝ Ողոմպիանոսի առակները, որ յիշում է Մագիստրոսը (ԾԸ, էջ 132): Կար եւ Անանիա Շիրակացու «Մեծ Քննիկոնը», «յորում մթերեալ են,—ասում է նա,—տոգորք աստուածային եւ ենթակայացեալ ամենայն արհեստի մակացութեան եւ նախադասեալ է թուականութեանն եւ երաժշտականութեանն... երկրաչափութեանն եւ աստեղաբաշխութեանն... եւ զկնի այսոցիկ յարամանեալք արհեստք եւ մակացութիւնք, մատենագրութիւնք, եւ դրէ եթէ ամենայն բոլորվարժումն հռետորական» (էջ 8):

Գրիգոր Մագիստրոսն ինքն էլ աշխատել է ուսումնասէրներին յարմարութիւն ընձեռել սովորելու. նա արել է հին Քերականի մեկնութիւնը, որով հետագայ դարերում ուսուցիչները սովորեցրել են աշակերտներին: Նա իր ծերութեան հասակում, Միջագետքում վարած մեծ պաշտօնի օրերում էլ շարունակել է թարգմանութեան գործը: «Ոչ եմք երբեք դադարեալ ի թարգմանութենէ եւս. բազում մատեանս, զորս ոչ եմք գտեալ ի մեր լեզուս՝ զերկուս մատեանս Պղատոնի, զՏիմէոսի տրամաբանութեանն և զՓեդովնի... եւ զայլս բազումս յիմաստասիրացն... եւ զերկրաչափականն զԵւկլիդոսին սկսայ թարգմանել. եւ եթէ տակաւին կամեսցի Տէր երկարանալ մեզ ի կենցաղումս, բազում հօգս յանձին կալեալ զմնացեալսն բոլոր՝ Յունաց եւ **Ասորւոց** թարգմանել ոչ դանդաղեցայց: Եւ կարօտիմք քեզ մերձ ելոյ մեզ օգնականութեան այսպիսում իրողութեանց» (Թուղթ ԻԱ, էջ 66), գրում է նա իր բարեկամ Սարգիս վարդապետին, որի մասին յիշատակութիւն եղաւ վերեւում:

4. «Թղթերը»:— Գրիգոր Մագիստրոսի թղթերն ունեն վերնագրեր, որոնք ծագում են հաւանօրէն կամ հեղինակից, կամ նրան մօտիկ մարդկանցից, քանի որ վերնագիրներ դնողներն իմացել են, թէ ի՛նչ առթիւ են գրուած և ո՛ւմ են ուղղուած այս կամ այն թուղթը: Գրութեան բովանդակութիւնից միայն երբեմն չի իմացւում այդ: Հեղինակը գիտութեան մարդ է. նրա այդ գործերն ամենից առաջ ունեն իր ժամանակի համար գիտական, մասնաւորապէս պատմա—հասարակական արժէք: Այստեղ կարեւոր չէ դրանց բովանդակութիւնը մի առ մի թուել, այլ այսքանը միայն պիտի ասել, որ այդ գրութիւնները յաճախ վերաբերում են գիտութեան եւ ուսման, աւելի են ընդարձակ ծանօթութիւններով, որոնք արդասիք են գրողի երկարամեայ բազմակողմանի ընթերցանութեան: Կան նաեւ կենցաղական բովանդակութեամբ թղթեր: Սրանց մէջ նոյնպէս հեղինակը հանդէս է բերում իր հարուստ գիտանքները զանազան նիւթերի մասին, երբեմն այնպիսի մանրամասնութիւններով, որ հիացնում է ընթերցողին:

Նրա թղթերով մեր գրականութեան մէջ մտել է մի նոր գրական տեսակ — նամականի ասածը: Արդարեւ յայտնի են մեզնում «Գիրք թղթոց» ժողովածուի մէջ եղածները, բայց դրանք պաշտօնական գրութիւններ են որեւէ խնդրի առթիւ. մինչդեռ Մագիստրոսի թղթերը մասնաւոր նամակներ են, որոնց նմանները չեն պահուած կամ երեւան չեն եկած մեր գրականութեան նախորդ շրջանից:

Նա ունի գրելու իր յատուկ եղանակը: Պետրոս կաթողիկոսին ուղղած մի նամակի սկզբում (Ա, էջ 3) գրում է. «Թէպէտ եւ ըստ գեղեցիկ խնդրոյ

քում լուսափայլութեան, պետակա՛նդ բոլոր արքայանից և գլո՛ւխ առաքելական, պարտ վարկանիս երկարաբան նորաբան բանս իմաստասիրել ծառայի քում, որով զուարճանաս իբր զհայր ի վերայ որդւոյ, սակայն սիրելի է ինձ միշտ կարճառօտ հատանել: Վասն զի բոլորն մասն միակի — ուղղակի զբովանդակն պարառէ զուղղանկիւնեացն թէպէտեւ մասն զոլ: Եւ իմաստնոյն մի բան բաւական է զկնիս բերել զկնի հետեւաբար»: Կաթողիկոսն, ուրեմն, պատշաճ է համարել, որ Մագիստրոսն աւելի երկար «իմաստասիրի» նորագոյն բաները, բայց նրա համար սիրելի է եղել կարճառօտ գրելը. «Վասն զի, — ասում է նա, — ինչպէս մի հատ ուղիղ գիծը ցոյց է տալիս ուղղանկեան [քառակուսու] բոլոր ամբողջութիւնը, նոյնպէս եւ հասկացողի համար մի խօսքը կարող է եռեւից իբրեւ հետեւութիւն շատ խօսքեր բերել»: Ահա նրա յօրինելու հիմնական ձեւը — կարճառօտ գրել, մի որեւէ գիտական կամ այլ օրինակով բացատրել ասածը, մնացածը թողնել ընթերցողին լրացնելու: Բայց նա երբեմն բաւական երկար եւ ընդարձակ էլ է գրում:

Հետաքրքիր է վերեւում ընդգծուած «իմաստասիրել» բառը, որ այս գիտուն հեղինակը սովորաբար գործածում է իր գրածների բովանդակութեան համար: Դա համապատասխան է յունարէնի Փիլոսոփէ՛ոյ բային, որ նշանակում է՝ սէր ունենալ դէպի իմաստասիրութիւնը կամ գիտելիքները. գիտութիւն գործադրել, գիտութեամբ պարապել, իր գիտանքները կիրառել, ուսումնասիրութիւն անել: Եւ Մագիստրոսը միշտ «իմաստասիրում է». կարճառօտ գրելիս թէ ընդարձակ՝ նա միշտ երեւան է բերում իր բազմաղան ծանօթութիւնները: Այդ բառի փոխանակ նա գործածում է նաեւ «պուետիկոսել» (ԺԵ, էջ 50). «Երեկ զկաղնեացն իմաստասիրել քեզ... շատացեալ... Այժմ զխնձորոցս կամիմք քեզ պուետիկոսել»: Եւ բերում է զանազան մատենագիրներից տեղեկութիւններ խնձորի մասին:

Ամէնից շատ սիրում է նա հին յունական առասպելները, դիցաբանութիւնը: Դրանց կիրառութեամբ նա նոյնիսկ գերազանցում է կեղծ-դասական կոչուած գրական դպրոցի հեղինակներից: Յիշում է դրանք սովորաբար կարճառօտ, երբեմն ակնարկներով: Այսպիսի դէպքերում մեզ համար այժմ երբեմն անհասկանալի են մնում նրա գործերը, երբ չգիտենք այդ առասպելների բովանդակութիւնը, կամ հին աստուածների բնորոշ գծերը: Նոյնպէս անշուշտ եղել են դրանք նաեւ Մագիստրոսի ժամանակակից հեղինակներից շատերի համար, բայց ոչ այն անձերի, որոնց ուղղել է նա իր նամակները: Նրանք պէտք է մի բան հասկանային իրենց թղթակցի գրածներից, թէ չէ՝ նրա կողմից գրուած կը լինէին ծիծաղելի դրութեան մէջ:

Բերենք դրա համար իբրեւ օրինակ սկզբի մասը ԻԲ թղթի, որի վերնագիրն է. «Առ վարդապետն Սարգիս առաջնորդ ուխտին Սեւանայ, զանզի գրեալ էր Գագիկ առ վարդապետս այս, եթէ եկեսցես առ իս եւ ի մասին գրոց պարապեսցուք»: Գագիկը, դա Գագիկ Բ.ն է շատ երիտասարդ եւ զահազուրկ ժամանակ, քանի որ Մագիստրոսն իր նամակի մէջ նրան «մանուկ» է անուանում եւ նամակի սկզբում գրում է. «եկաւ հասաւ մեզ մօտ մեր առաջուայ եղած [=երբեմնի] արքայից ուղարկուած մարդը, որին նա ուղարկել էր քեզ մօտ»: Բերենք սակայն բնագիրը. «Եկն եհաս առ մեզ յղեալն ի մերոյ նախուստն ելոյ արքայէ, զոր առաքեալ առ քեզ, սրբա-

զա՛նդ եւ գերակատա՛ր բոլոր ճեմարանի Արամեան ազգին եւ քրիստոսական կրօնիւք եւ կուսական բրաբիոնիւ սողարթացեա՛լ, որ եւ ինձ յոյժ ըղձալի եւ յոյս բարեաց: Այլ մեր յոյժ երկիւղի եղեալ՝ տապ տագնապի տարակուսանաց հասանէր, յորժամ ղառնէս համբաւոյ հրոսակք նախընթացից ազգեցին մեզ, ոչ ուղղախօսելով զԳորռոնս Գդուհոն մեզ ծանուցին. զոր մեր երկիւղի կասկածանաց եղեալ նախնույն այն կապտողի եւ յեղուզակի, աստ՝ զիա՞րդ կրկին մատնեաց Տէր զոտնս Մամիկոնեան ի ձեռս նորա: Եւ ահա կարծիս կասկածանաց մեզ եղեալ յԱշտիշատայ դից դիւցազնական դիւական յարձակման, գուցէ սանդարամետականին խզեալ կապանաց, կամ եթէ իղձք կիսոյ հմայից դիւթութեան՝ իբրու առ ի չաւղովն յարուցանեն զՍամուէլ, կամ չուայատական չիդարացն չարս չամանդաղեալ չահանան ի վերայ մեր: Մինչ յայամ էաք զարհուրման, վառեալ վահանօք եւ սպառազինեալ անարի նիզակօք, պատախտի յուզական չիկորական որակեալ, ուչ եղեալ առ Նախընթացն Ամլածին եւ ի մերն Պարթեւ՝ օգնականութեան կարօտեալ: Իսկ յայամ եղեալ հանդիսի, տեսի զԳդուհոն եղեալ սա Գորռոն, և ի Դիոնիւսեայ զմայլեալ, ատրրակ կայծակացեալ հրաշխմական կարմրութեամբ, եւ զթեալ Գոբոոն գայթակղեալ, գաղափարեալ զԳդուհոն: Սակայն ծանոյց մեզ զքոյդ ողջութիւն, եւ զաւետեացն ձիր զմա չնորհելով, վերջնանահանջ առ քոյդ առաքեցաք սրբութիւն: Եւ այս այսքան զանհօրէն եւ անկափ կարկատուն բան կատակական» (էջ 66 եւ հտն.): Այստեղ կան ակնարկներ ե՛ւ Հայոց պատմութիւնից, ե՛ւ Ս. Գրքից, ե՛ւ յունական դիցաբանութիւնից: Որպէսզի ընթերցողը հասկանայ այդ «կատակական» խօսքը եւ հաճոյք ստանայ դրանից, նա պէտք է գիտենայ, թէ ո՛վ է եղել Գդուհոնը (իսկապէս Գդիհոն, Սիւնիքի իշխանը, Վահան Մամիկոնեանի հակառակորդը, որ անցել էր Պարսիկների կողմը եւ մարտերից մէկի մէջ սպանուել): Նա պէտք է տեղեկութիւն ունենայ Աշտիշատի աստուածների, Սանդարամետականի, վհուկի միջոցով Սամուէլի յարուցման առասպելի մասին ըստ Ս. Գրքի, այլեւ չիզարների (առանձին ոգիներ են) մասին: Նա պէտք է իմանայ, թէ ո՛վ են «Նախընթաց Ամլածինը» (Ս. Կարապետ Յովհաննէս Մկրտիչն Ամլորդի), «մեր Պարթեւը» (Գրիգոր Լուսաւորիչ), եւ Դիոնիսոսը (գինու աստուածը, «ի Դիոնիւսեայ զմայլեալ» =հարբած): Սարգիս վարդապետը Հայոց պատմութեան եւ Ս. Գրքի վերաբերեալ ակնարկներն անշուշտ շատ լաւ գիտէր: Բայց նա անպայման ծանօթութիւն ունէր եւ Դիոնիսոս (=Բաքոս) աստուծու մասին: Նա մի յայտնի գիտնական է եղել, Մագիստրոսը նրան անուանում է «գերակատար բոլոր ճեմարանի Արամեան ազգին», «մակացու բոլոր մակացութեան» (=տեղեակ ամէն գիտութեան), եւ Գագիկը հրաւիրել էր նրան միասին գրականութեամբ պարապելու:

Թղթի զուարճաբանական առաջաբանից յետոյ՝ Մագիստրոսը ծաղրում է Գագիկին ըստ երեւոյթին նրա համար, որ նա կնոջից բաժանուել է ուղեցել «ըստ մերոյն Պարթեւի» (այդ մասը մութն է). ապա մի ամբողջ բժշկական տեսութիւն է անում նա կնատութեան մասին՝ յիշելով յոյն բժիշկներ Հիպոկրատէսին ու Սիապիոսին, եւ դարձեալ յունական դիցաբանութիւնից Պառնաս սարն եւ մի առասպել Դիոնիսոսի եւ Ապողոնի վերաբերեալ:

Վերջում նա ցանկութիւն է յայտնում, որ Սարգիս վարդապետն իր

ուղեւորութեան ժամանակ նախ հանդիպի իրեն՝ Մագիստրոսին, որպէսզի,— ասում է նա, — «առ միմեանս զգեղեցիկ հակառակութիւնսն ճեպեմք իմաստասիրել»: Այդ արդէն կը նշանակէ, ըստ հին յունական փիլիսոփայութեան, դիալեկտիկայով—տրամաբանութեամբ զբաղուել, որ է «դիա՛լոգոս»—տրամախոսութիւն վարելով վիճաբանել երկու միմեանց հակառակ պնդումների շուրջը: Մեր «տրամաբանութիւն» բառը, որ այժմ ստացել է «լոգիկա» բառի իմաստը («լոգիկա» հնումն թարգմանել են «բանականն» բառով), հին ժամանակ ունեցել է «դիալեկտիկայի» վերեւում դրուած նշանակութիւնը: Ինչպէս երեւում է, Մագիստրոսի եւ նրա ժամանակի գիտնականների համար սիրելի է եղել «տրամաբանութիւնը», որ նա յիշում է իր նամակների մէջ: Օրինակ՝ ԾԳ (էջ 124) Թուղթը («Առ երաժիշտն Դանիէլ») սկսում է այսպէս. «Զմտաւ ածի զՊորփիւռփիոնոս, զորմէ յիշատակեալ մեր յեռանդեանն տրամաբանութեանն, եւ գիտեմք, զի տարակուսանս իմ սակաւ առաջի ձեր սփռեցաւ»: Եւ յետոյ պատմում Պորփիւռփիոնոսի առասպելը:

Մագիստրոսը չի մտածել գրական գործ կատարել, այնպէս գրել, որ իր Թղթերը գրական-գեղարուեստական արժէք ունենան: Նա գրում է մեծ մասամբ անսեթեւեթ եւ անպաճոյճ: Գեղեցիկ յօրինելու միակ ոճական եղանակը, որով ազդել է ձգտում նա, է՛ համանիշների կուտակումը և բաղաձայնոյթը—բաղաձայնների հանգիտութիւնը: Բայց եւ այնպէս նա կարողանում է իր նիւթը սովորաբար հետաքրքիր դարձնել՝ ճարտարութեամբ համեմելով այն՝ նմանութիւններով, զրոյցներով, առասպելներով եւ առակներով: Առանց դրան էլ՝ Թղթերի մեծ մասը գրաւիչ ու գեղեցիկ են: Այդ առաւելապէս նրանից է բխում, որ այդ փոքր երկերը մասնաւոր նամակներ են. գրողն իր անձը չի թաքցնում երբեք: Նա ինքն անմիջականօրէն շատ կարկառուն, կենդանի ու եռանդուն հանդէս է գալիս իր հայեացքներով ու գաղափարներով, իր կարծիքներով ու զգացումներով առ այն անձերը, որոնց ուղղում է իր խօսքը, կամ վերաբերմամբ այն անձերի եւ նիւթերի, որոնց մասին գրում է: Նա երբեմն շեղումներ է անում կամ արագ թռչում է ուրիշ խնդիրների, բայց չի մոռանում ընդհանուր կապը: Առհասարակ նա յուսադրում է իրեն կամ իր բարեկամներին. յաճախ գովում է կամ պարսաւում, ծաղրում ու հեգնում, երբեմն էլ «գռեհկօրէն անկափ կարկառուն կատակական» խօսք է յօրինում միայն զուարճանալու համար, առանց որեւէ ուրիշ նպատակի:

Ուրիշ դէպքում (Ը, 29) նա լուտանք է թափում կաթողիկոսի դէմ ըմբոստացած մի եպիսկոպոսի գլխին. «Զիա՞րդ սկունդն այն առ առիւծ համարձակիւր, եւ խռիւն առ հուր զմերձենալն եւ դհակառակելն խնդրէր, եւ գիշերայածու բուն առ արծիւն ի տունջեան մրցի, եւ չուայտացեալ շունն այն առ տէր իւր մատչի»: Եւ ապա բացատրում է, թէ ինչո՛ւ «շնական» իմաստասէրներն այդպէս են կոչուել: Առանց քաշուելու նա քննադատում, դիպչում է նաեւ իր բարեկամ մեծերին, ինչպէս, օրինակ, այն ժամանակ յայտնի Եփրեմ եպիսկոպոսին, որ իր գործակիցն էր Թոնդրակեցոց աղանդի վերացման ժամանակ: Նրան ուղղած մի նամակի մէջ, որի վերնագիրն է՝ «Յաղագս նռանց բան կատակական առ Եփրեմ եպիսկոպոս Բջնւոյ» (ԾԸ, էջ 131), Մագիստրոսն ի միջի այլոց գրում է. «Այլ ինձ ոչ սակաւ եհաս հիա-

ցումն համարողութեանդ քո՝ երկրաչափականն համարձակելոյ մտանելդ եւ զմեղ չարժելդ։ Ահա զօրէն ճային Ոլոմպիանեայ կամ ասացեալն թէ ճանճն ճոխացեալ ճողոպրեալ կամեցաւ զճաչակս ի ծամելեաց առիւծուն, ի քուն զնա գտեալ. զոր, այսր անդր զայլն զալարեալ, հողմահարիւր ի բաց մղեալ. եւ ոչ ստուցեալ թռչունն արտակայիլ։ Ապա կռճեաց կեռեօքն կափել կոկորդակոփ կասեաց ընդ ժանեօքն, եւ ժպտեալ, զոմանս եթող կիսամահ ընդ ռնգունսն զերծեալք. զոր ի դատաստան մտեալ Ակկարովնեան ճանճիցն, ճենճերելով ճեմեալք ճոռոմաբանեն զճաչակաց առիւծուն. զոր ոչ ընկալեալ իրաւունսն ի Կրիտիսէն Կրետացի ասէ. «Ճանճի՛կ, ի ճոխ առիւծուց ծամելիս մի՛ մտաներ, յորժամ ի քուն մտանէ, եթէ ոչ՝ ճմլիս, ճօպճօպիս, չատ ճենճերաս ի ծա՛կն, ի փեթա՛կն, ճանճի՛կ, անդ տզզա, բզզա եւ յարքունիսն մի՛ երթար»։ Արդ՝ ի խո՛ւղն, ի խո՛ւցն, ի խրճի՛թն. անդ սաղմոսէ. նուագել ի ճեմարանսն մի՛ ճեպիք, եթէ ոչ՝ ճանճին պէս ճմլիք»։ Ուրեմն եպիսկոպոսին առակով հասկացնում է եւ անգամ պարզապէս գրում է, թէ՝ Քո բանը չէ համարձակուել թուաբանութեան ու երկրաչափութեան մէջ մտնելու եւ գիտութեան ճեմարանում նուագելու, այլ դու մտիր խուց, խուղ, խրճիթ եւ սաղմոս ասա, եթէ չես ուզում ճանճի պէս ճմլուել։

Մագիստրոսը կարծես շատ անգամ առիթ էր փնտռում՝ իր հմտութիւնը, իր ունեցած գիտանքները ցուցադրելով զգալի դարձնել իր գիտական առաւելութիւնները։ Այսպէս, օրինակ, Սասունի նշանաւոր իշխան Թոռնիկ Մամիկոնեանին (որ իր փեսան էր) գրած նամակների մէջ (ՀԴ—Հէ, էջ 212–225)։ Այս իշխանը խոստացած է եղել կարմրախայտներ ուղարկել նրան, բայց ուշացրել է։ Մագիստրոսն առաջին նամակով շատ ուժեղ ծաղրում է նրան՝ յիշելով մի քանի առասպելական ձկներ կամ ձկնակերպ գազաններ եւ ասելով, թէ ինքը քաղցած մնալով սպասում է մեծ խնջոյքի եւ ձկնից պատրաստած կերակուրների. «Սապէս կամելով մեր զյօշուածս կիտին, զոմանս ի չամբուրս հարեալ ի վերայ Հեփեստեայ, զոմանս ի սանի Պոսիդոնիւ ամոքեալ, եւ զոմանս ի տապակի տրամադրական մակեղուտ ելով ելլադացի իւղովք, և զոմանս ծպտեալ ի մէջ Դիայ, պարապատեալ արմանօք, քառանկիւնի եւ ուղղանկիւնի յարմանեալ ըմբռն, եւ զոմանս գծօրէն կտապըս, եւ դարձեալ խորտակեալս մանրադոյն պարսկական խորտիկս, եւ զայլս որակացեալս ոսկէտեսակ քրքմով, ռետին մակաւասար արկեալ եւ ոքսեմելի։ Եւ այսօքիկ յանհատան վարին զյատուկսն յանուանէ թուել»։ Թոռնիկ Մամիկոնեանն անցած է եղել յունադաւանութեան, որ չէր արգելում պաս օրերը ձուկ ուտել։ Այդ ծաղրելով՝ Պահլաւունի իշխանն իր նամակի վերջում գրում է. «Բայց դու Մամիկոնեա՛ն, որ համօղեան հաւանեցար Ղեւոնեան ընդարձակագոյն տօմարի, ո՞ ոք ի քէն այժմ կարասցէ կորզել զուզակս, զոր Պոնտոս եւ Ովկիանոս ոչ հանդուրժէ կերակրել. որ եւ զայլոց ոմանց պատրաստեալ կերակուր յափշտակել փութայք՝ զթռչնոց եւ զզեռնոց, որպէս զխեչս և զքառաձէտս եւ զօձաստա՛նըրս եւ զկրայակիրոս եւ զայլ զբիւրս ի բզզոց անզարդ զեռունս։ Բայց դու փութա՛ զխոստացեալն առաքել, թէ ոչ՝ զկնի այսրմ նամակի ճահեցուցից քեզ ճարտասան բանիւք ճայթմունս առասութեան, զի ոչ քաղցրասցի ի կոկորդս քո պարարտութիւն կարմրախայտիդ. զի ոչ միայն զայդ, այլ եւ զամենայն զեռունս եւ զբղխզսն եւ զճճիս, զոր

յուրբայթու ճաշակեալ է քո, տաղտկացեալ ախոռղեացդ զօրէն կռնեայ ժայթքեալ արտաքս բերցես»: Վերջապէս Մամիկոնեանն ուղարկում է կարմրախայտները եւ խնդրում է նրան «իմաստասիրել յաղագս ձկանց»: Եւ նա գրում է առասպելական ձկների կամ ձկնակերպների մասին զրոյցներ՝ թուով տասներկուսից աւելի, եւ դեռ վերջն էլ կցում է. «Յայսցանէ յոլովագոյն ինձ մակագրել քեզ՝ ոչ դժուարին է»:

Դարի արդէն փոխուած ոգու տեսակէտից աչքի է ընկնում ԼՁ թուղթը (էջ 89), «Առ Հնձացին Գրիգոր Տելետիս սակս որոյ ել ի վանաց եւ չոգաւ ի լեառն Վարագայ»: Սա այն կրօնաւորն է, որի մասին խօսւեց վերեւում:

Ինչպէս երեւում է, նա, նախ քան Կարս ուղարկուելը, թողել է վանքը եւ գնացել Վարագայ լեառը միանձնական կեանք վարելու: Մագիստրոսն այդ առթիւ «իմաստասիրում է» մի շարք լեռների մասին եւ յետոյ դժգոհում է, որ «սակս Աստուծոյ» փախչում են լեռները, մինչդեռ ինքը Յիսուս լինում էր ժողովրդի մէջ, եւ «ոչ միայն ի լերին կարող եմք զԱստուած բանն ի մեզ ընդունել, այլ եւ յամենայն տեղւոջ», — ասում է նա, եւ դրութիւնը վերջացնում է այսպիսի մի ծաղրով առանձնական ճգնաւորների. «Այլ եկն առ մեզ նամակ յանտառէ կեղերջական [=գանգատական] տրտունջ տաչարեալ սրտի՝ յեղանց, յեղջերուաց եւ ի բոլոր գազանաց, եթէ ելեալք ի դրախտէն՝ զմեզ ի մերոյն սեփականէ արտաքս հանին. իսկ Դաւթայ մեզ ի լերինս հրամայեալ կալ. այժմ եւ անտուստ հալածեն»: Երեւի արտագրողներից մէկը դրել է այս բացատրութիւնը. «Հանաք եւ տնաղ առնէ զղնացողս ի լեառն, ասելով անբանից, թէ ի դրախտէն հանած վարածքն եկին լցուցին ի լերինս եւ զմեզ պէհուզուր անեն ի բնակութիւնս մեր»: Գրիգոր Նարեկացու օրով մի բարեպաշտ մարդ չէր կարող «լեռնականներին», այսինքն լեռը քաշուած ճգնաւորներին, այպն ու ծանակ անելով՝ հաւասարեցնել վայրենի անասուններին ու գազաններին: Դա նոր աշխարհայեցողութեան արտայայտութիւնն էր, — որ երեւում է մինչեւ անգամ Թոնդրակեցիների դէմ գործող Գրիգոր Պահլաւունու թղթի մէջ: Բայց այդ աղանդի բարձման ժամանակ էլ նա ցոյց է տալիս մեղմութիւն: «Ոչ զոք վնասեցաք մարմնական պատուհասիւք, — գրում է նա պարծանքով, — թէպէտ եւ յօրէնն հրամայէ զվերջին պատուհասն կրել նոցա. որպէս եւ նախ քան զմեզ բազում զօրավարք եւ պետք ի սուր սուսերի մատնեցին զնոսա եւ անողորմաբար ոչ խնայեցին ի ծերս եւ ի մանկունս, որպէս արժանն էր. նաեւ մեր քահանայապետք ի կիզումն դիմաց եւ ի դրոշմ աղուեսակերպ» (Կէ, էջ 162): Այսպէս վարուել էր հէնց Մագիստրոսի օրով Սարգիս կաթողիկոսը:

5. Գրիգոր Մագիստրոսի լեզուն, առանձնապէս թղթերի եւ մի քանի չափածոների, իրաւամբ համարուել է ընդհանրապէս խրթին եւ շատերին անմատչելի: Այդ առաջանում է առաւելապէս այն յատկութիւնից, որ նա գործածել է բազմաթիւ յունաբան կազմութեամբ բառեր, որոնք չեն ընդհանրացել մեր նոր լեզուի մէջ, ուստի այժմ մեզ համար անհասկանալի են մնում: Այդպիսի բառերը ծագում են կամ հին յունաբան գրողներից, կամ Մագիստրոսի իրեն կազմածներն են ըստ յունարէնի: Մեր նոր լեզուն չի իւրացրել այդ բառերը, զի դրանք գտնւում են փիլիսոփայական եւ այլ

մասնագիտական գրքերի մէջ, որոնց ընթերցումն եւ ուսումը կարեւոր չի համարուել մեր նոր դպրոցներում: Իսկ Մագիստրոսը սիրում է հէնց այդպիսի բառերի յաճախութեամբ յօրինել: Դրանց փոխանակ մեր նոր լեզուն այժմ ունի աւելի յարմարաւոր բառեր, կամ եթէ չունի էլ՝ դրանց կիրառութեան կարիքը չի զգում: Կան, հարկաւ, եւ այնպիսիները, որոնք բոլորովին աւելորդ են, օրինակ՝ մակացութիւն=գիտութիւն, մակացու=գիտակ, գիտցող, տեղեակ[1]:

Այս հեղինակի լեզուի մթնութեան մի պատճառն էլ այն է, որ նա գործածում է երբեմն բառերն այնպիսի նշանակութիւններով, որոնք չափազանց հնացած են եւ գրաբարում անգամ անսովոր են, օրինակ՝ «տախտակ» բառը «գիրք» բառի իմաստով: Նրա գրածների մէջ կան նաեւ բազմաթիւ հնացած կամ գաւառական բառեր, որոնք ուրիշ հեղինակների մէջ չեն պատահում, եւ որոնց նշանակութիւնը դժուար է իմանալ, օրինակ՝ «ատինել», «չոհանալ»: Շարահիւսութեան վերաբերմամբ էլ կան շատ անսովորութիւններ — բազմաթիւ շրջումներ, նախդիրների ու հոլովների այնպիսի գործածութիւններ, որոնք հեռու են մեր կլասիկ հայերէնից, որին վարժուած ենք: Իբրեւ մասնաւոր նամակներ՝ երբեմն անփոյթ են յօրինուած, ուստի կան պակաս բառեր, կիսատ մնացած խօսքեր, որոնց թերութիւնը, սակայն, կարող է բնագրի աղճատումից եւս առաջացած լինել: Մի կողմ թողած իւրայատուկ մտածութեան ձեւերը, որոնք իսկոյն հասկանալի չեն լինում, պէտք է ասել, որ Մագիստրոսի գրածների մթնութիւնը ծագում է նաեւ նիւթի նորութիւնից եւ անհասկանալիութիւնից: Եւ վերջապէս՝ նա յաճախ պատասխանում է ուրիշների գրութիւններին, որոնց բովանդակութիւնը մեզ անծանօթ է. ուստի Մագիստրոսի ակնարկներն այդ մասին՝ մեզ անհասկանալի են[2]: Դիտաւորեալ կերպով խրթին է գրուած նրա մի թուղթը (Ջէ, էջ 238) «Առ հեզգս յուսումն իմաստից», որ յայտնի է իր սկզբի «Գամագտական» բառի անունով: Այդ արդէն առանց իր բանալին ունենալու հնարաւոր չէ հասկանալ:

6. Չափածոյ գրուածքները[3]:—Գրիգոր Մագիստրոսի մեծ գրուածքը ո—

1 Այս բառը լաւ օրինակ է, թէ ինչպէս երբեմն յունարէնին հետեւելով բառեր են կազմել. դա պիտի լինի՝ մակ-կացութիւն, մակ—կացու (ինչպէս վերա-կացու), բայց կ տառերից մէկը դուրս է ընկել: Իսկ մակ-կացութիւն կազմուած է ըստ յունարէնի եպիստէ՛մէ բառի (եպի=մակ, վրա. ստէ՛մէ=կացութիւն), որ նշանակում է՝ գիտենալը, տեղեկութիւն, ծանօթութիւն, մի բանի վերաբերեալ գիտութիւն: Նոյն կազմութեամբ «եպիստամայ» բայը նշանակում է՝ մի բանի վրայ կալ (կանգնել), ապա փոխաբերաբար՝ ճանաչել, գիտենալ, տեղեակ լինել. ինչպէս հին հայերէնում «կամ ի վերայ» նշանակում է՝ վրան կենալ, կանգնել, ապա՝ հասկանալ, հասու լինել:

2 Կ. Կոստանեանցն իր ժամանակին շատ կարեւոր եւ նշանակալից գործ է կատարել հրատարակելով Գր. Մագիստրոսի «Թղթերը» բազմաթիւ ծանօթութիւններով հանդերձ. բայց հրատարակութիւնը դեռ բաւարար չէ: Պէտք է ամէն մի նամակի բնագրի համար աւելի մեկնութիւններ անել, մութ ու խրթին կտորները լուսաբանել, ինչպէս եւ Գր. Մագիստրոսի գործածած դժուար հասկանալի բառերի ու դարձուածների համար մանրամասն բառարան դնել գրքի վերջում: Ապա ձեռագրական այլ ընթերցուածները պէտք է դնել ամէն մի էջի ներքեւում, որպէսզի կարելի լինի կարդալիս անմիջապէս նկատի ունենալ:

3 Տաղասացութիւնք Գրիգորի Մագիստրոսի Պահլաւունւոյ, Վենետիկ, 1868: Գ. Մագիստրոսի Թղթերը, էջ 31 եւ հտ., 294 եւ հտն.:

տանուորով՝ սովորաբար կոչւում է «Հազարտողեան», կազմուած է 1016 տողից: Ինքը հեղինակը առաջաբանի մէջ («Պատճառ ոտանաւոր բանիցս») պատմում է դրա ծագման մասին: Նա 1045 թ. Կոստանդնուպոլսում շատ օրեր զանազան խնդիրների մասին զրոյց է ունենում մի արաբ հմուտ բանաստեղծի հետ: Սա գովում է իրենց Կուրանը՝ ասելով, թէ դա ոտանաւոր է «միայօդ չափաւորութեամբ գծի», մինչդեռ Աւետարանն այդպէս չէ: Գրիգոր Մագիստրոսը դրան առարկում է ասելով. «Տաղասացութիւնք Արաբացւոցն սովորաբար վարժաբանութեամբ մրցեալք միայօդ աւարտեալ գծի. զոր դուք կափայ անուանէք: Սակայն թէ համարիս զայս մարգարէական տեսութիւնս՝ զոր Մահմէտ քոյ գքառասուն ամ գրեաց, քառօրեայ գծագրեցից քեզ. յԱդամայ սկսեալ մինչեւ զգալուստ կրկին այնմ որ ստեղծ զնա. և մատենագրեցից առաւել եւս հրաշալի միով գծիւ՝ յօդաւորեալ նուիւն զոր զովէիր զնա»: Իսկ նա բազում զրաւս ի մէջ եդեալ. «Թէ կարասցես առնել դու զայդ, յայնժամ լինիմ եւ ես քրիստոնեայ»: Մագիստրոսը չորս օրուայ մէջ կատարում է իր խօսքը, գրելով «Հազարտողեանը», որի վերնագիրն է՝ «Առ Մանուչէ»:

Այդ երկը մի շատ համառօտ բովանդակութիւն է Ս. Գրքի. վերջին մասի մէջ (էջ 70—73) խօսում է նաեւ Հայոց եկեղեցական պատմութեան մասին՝ Սուրբ Գրիգորից մինչեւ հայերէն գրերի գիւտն ու թարգմանիչները.

Կամի՛մ աստ քեզ ասել յառաջ քան զայս ըզՊարթեւին,
Զսրբո՛յն մեր Գրիգորի եւ ըզՀայոց Լուսաւորչին,
Քաղաքաւըն Պահլաւին եւ ըստ ազգին Արշակունին...
Արդ զիս յա՛յս տոհմէ գիտեմ ազգաւ Պարթեւ իմ հայրենին...

Ամբողջը ոչ թէ բանաստեղծական յղացման, այլ լոկ սառն արուեստի արդիւնք է, այն էլ շուտափոյթ յօրինուած: Սակաւ են գեղեցիկ կտորները. սրանց մէջ լաւագոյնն է վերջին դատաստանի զգածուած նկարագիրը սովորական մոտիւով.

Ի չորից հողմոց երկնից ձայն արձակէ զԳաբրիէլին,
Եւ զայլոցն հրեշտակաց քառակողմեան հրաւիրողին:
Ես անկեալ կամ դողալով, սարսափելով վասն ատենին,
Ցայնմ աւուր ահեղ մեծին եւ ի վերջին հրապարակին,
Մինչ երկինքըն գալարին եւ լուսաւորքըն խափանին,
Աստեղքըն շիջանին եւ արեգակըն խաւարին,
Լերինքըն հուրբ ծախին, երկիր դողայ, վէմք երեւին,
Հրեղէն կամարն որ կայ՝ երկնից վերեւ այն գալարին.
Ելանէ թնդիւն հրաշից եւ ցոլանայ ջոկ սրօբէին...

Դատաստանի աթոռի առաջ գալիս կանգնում են բոլոր մարդիկ՝ յարութիւն առնելով.

Անդ ոչ բարեխօսել, ոչ մեծութիւն թէ պատկառին...
Ոչ տո՛ւր կայ, ոչ առնուլ, բանըն կապած է հռետորին,
Ոչ արքայ, ոչ թագաւոր, իշխան չկայ յայն համարին,
Ոչ հզօր, ոչ զօրաւոր, ոչ մարտական պատերազմին...

Ինչպէս Գրիգոր Նարեկացին՝ Գրիգոր Մագիստրոսն եւս դողում է, երեւակայութեամբ լսելով դատաւորի խօսքը.

Արդ զայս լուեալ դողամ եւ սարսափեմ հոգեվարին,
Պատէ զիս արհաւիրս եւ տատանիմ ի տապանին,
Եւ արդ կամ ահաբեկեալ յորժամ յիշեմ զօր վախճանին,
Եւ սո՛ւտ եմ զմբաղած ի կենցաղումս ցաւագին,
Սուտ խաբած չար պատրանօք եւ մեծութեամբ որք սովորին...

Գրիգոր Մագիստրոսը չի օժտուած քերթողական տաղանդով, այլ միայն վարժ ու հմուտ տաղաչափ է. ուստի եւ նրա «Հազարտողեանին» ու մի քանի ուրիշ ոտանաւոր գրուածքներն արժէք ունեն միայն տաղաչափական տեսակէտով: Գրիգոր Նարեկացին արդէն դարի սկզբում իր Ողբերգութեան մէջ, հետեւելով ողբասացկանաց, գործածել էր յանգը. բայց առաջին անգամ Գրիգոր Մագիստրոսն է ընդարձակ չափով կիրառում այդ, հետեւելով արաբական կափային (ոտանաւորի յանգ, այլ եւ յանգաւոր ոտանաւոր): Նոյնայանգ են յօրինում քերթուածի բոլոր տողերը: Դարձեալ՝ մեր հին մեծ բանաստեղծի երգերի մէջ կան երկուսը, որոնք ոգուած են մեծ տողերով, բայց Գրիգոր Մագիստրոսն է առաջին անգամ այդ բանեցնում վիպական գրուածքի համար եւ պարզացնում յանգով: Այդ ոտանաւորը մի սովորական, ամէնից երկար չափն է. տողը նորմալ ձեւով կազմուած է 16 վանկից, բաժանուած չորս անդամի, չորս չորս վանկերով (4+4+4+4), յամբական բարձրացող ռիթմով: Տողերի առաջին անդամները, սակայն, մեր հին բանաստեղծները մեծ մասամբ կազմում են 1–3 վանկերից, որոնք առանձնապէս չեշտուելով երկարում եւ հաւասարեցւում են չորս վանկի, այսպէս, օրինակ, «Հազարտողեանի» սկիզբը.

Մե՛ծ են գործք / աստուածային, // ըսքանչելի / նորա բանին,
Հրաշալի՛ / անպատմելին, // յամենայնի / զարմանալին,
Այն որ նստին / յերկինս երկնից // ի բարձրութեան / սերոբէին,
Լուսո՛վ / ինքնամատոյց, // պարածածկեալ / անքննելին:
Լո՛յս / ինքն առաջին, // լուսոյ բերող / երկրորդ մասին:

Տողամիջի հատածն անհրաժեշտ է, բայց ոչ՝ տողամիջի ուելի յանգը, որ մէկ մէկ, երբեմն եւ յաճախ, գործածում է Մագիստրոսը[1]:

7. Մագիստրոս և Պետրոս Գետադարձ:—Մեր այս գրողը մի քերթուած ունի՝ ուղղած առ Արշարունի Պետրոս կաթողիկոսը՝ «Ցաղագս խաչանշան գաւազանին զոր ընծայեաց տեառն Պետրոսի Հայոց կաթուղիկոսի, ասացեալ խորհուրդ խաչին»: Սրա վերջում նա իրեն յատուկ մութ լեզուով մանրամասն բացատրում է այս ոտանաւորի կազմութիւնը ե՛ւ ոտքերի, ե՛ւ յանգերի վերաբերմամբ. «Հազներգութիւնս այս... տաղ է հոմերական քաջ ոլորեալ, եւ սա տաղ դիւցազնական չափաբերեալ ըստ Ելլենացւոցն»: Վերջը նա աւելացնում է, թէ դա «մեծի տեսութեան ունի պէտս, եւ որք ոչն են

---

1 Մ. Աբեղեան, Հայոց լեզուի տաղաչափութիւն, Երեւան, 1933, էջ 209 եւ հան.:

հետեւեալ տրամախոհութեանս՝ այս մեծի լողութեանս, զոր հազիւ հազ ոք կարասցէ ներուժեղագոյնս առնել, մի՛ այժմ հետեւեսցի ճեմարանի»: Եւ ապա դիմելով կաթողիկոսին՝ կցում է. «Այլ քեզ որ ծայրագոյնդ ես լոյս, եւ զամպարափայլ ջահավառութեամբ պայծառանաս եւ լուսաւորես, որ քեզն հետեւին լուսափայլ շաւղաց. այլ ինչ յայտնի է: Վասն զի ըստ սրովբէականն դերունակութեան՝ մակպետական հեղումն ի ստորակայեալսն առ ի ծայրագոյն արփւոյն փեռեկի, սոյնպէս եւ քեւ ի քո հաւատացեալ հօտ: Ողջ լեր, փոխան Քրիստոսի»: Թւում է, թէ Պահլաւունի իշխանը բիւզանդական հաճոյախօսութիւն է անում: Նա այդ կաթողիկոսին ուղղած թւով ինը թղթերի մէջ եւս չափազանց բարձրացնում է նրան: Ինչպէս երեւում է, այդ հոգեւոր պետը ոսկեսիրութեան հետ նաեւ գիտուն եւ ուսումնասէր է եղել, դրա համար եւ Մագիստրոսը միշտ առանձին սիրով ու յարգանքով է վերաբերուել նրան. «Որ ամենայնի ես բաւական, — գրում է նա մի թղթի մէջ (Ա, 3), — եւ զանսպառն հեղուս գիտութիւն եւ շնորհ»: Այս կաթողիկոսը եղել է նաեւ հոգեւոր երգիչ. շարականոցների ձեռագիրները նրան վերագրում են մի շարք շարականներ. «Պետրոս Գետադարձն՝ զՀանգստեան շարականսն, զՄարտիրոսացն, եւ զբազումս ի Մանկտեացն» (ասաց)[1]: Այս աւանդութիւնն անշուշտ միայն այն ունի պատմական, որ այդ բազմաթիւ երգերի մէջ կան նաեւ նրա յօրինածները, թէ որոնք՝ այդ մենք այժմ չենք կարող իմանալ: Այդ կաթողիկոսը, որ բռնելով Յոյների կողմը՝ բարի համբաւ չի թողել Անիի բիւզանդացիներին յանձնելու պատմութեան մէջ, այս քաղաքի անկումից յետոյ ստիպուած էր մինչեւ կեանքի վերջը տարագիր մնալու իր հայրենիքից, նախ բիւզանդական կուսակալների հրամանով այս ու այն կողմ տարուելու, եւ ապա Կ. Պոլսում ու Սեբաստիայում ապրելու իբրեւ պատուաւոր կալանաւոր: Կեանքի վերջում նա դառն փորձով զգացել է իր աշխարհային մեծութեան ու փարթամութեան ոչնչութիւնը:

Հանգստեան շարականները մասամբ համապատասխանում են նրա այդ անձնական վիճակին, բայց շատ ընդհանուր ձեւով[2].

Ոսկի եղեալս անպիտանացայ,
Գեղեցկայարմար շինուածոյս քակտումն.
Իմաստունս յիմարեցայ
Ի յալեաց մեղաց յոր ընկղմեցայ...
Կոչողն եհաս վերին կոչողին,
Կոչնատէրն ահեղ, կոչողն ահաւոր.
Դատաւորն անաչառ, դատաստանն արդար,
Հրեշտակք անողորմ դատեն զմեղաւորս[3]:

Ուրիշ երգի մէջ քերթողը ննջեցեալի բերանով ասում է[4].

Պակասեցայ յազգատոհմէ,
Լքեալ թողի զկեանս-աշխարհի.

---

1 Շարական հոգեւոր երգոց, Էջմիածին, 1861, էջ Բ:
2 Կ. Կոստանեանց, Տէր Պետրոս Գետադարձ, Վաղարշապատ, 1897, էջ 47 եւ հտն.:
3 Շարական հոգ. երգոց, էջ 684:
4 Անդ, էջ 690:

Եւ մարմին ունայնութեան
Դարձաւ ի հող ուստի առեղծաւ:

Գրիգոր Մագիստրոսն էլ յօրինել է մի հոգեւոր երգ՝ «Զօրս ըստ պատկերի քում առեղծեր»[1]:

8. Մագիստրոս և Վահրամ—Գրիգոր Վկայասէր:—Աւելի կարեւոր է իր որդի Վահրամին ուղղած նրա մի ոտանաւոր գրուածքը (ՁԳ, էջ 234. «Լուաք թէ եկն»...), որի մէջ առաջին անգամ կիրառուած է մեր 14 վանկանի (4+3//4+3) չափը, որ բաւական սիրուած է 19րդ դարում եւ յետոյ[2].

Այս քեզ Բէլայն հաս հանդէս եւ Թորգոմեանքն Հայկայ,
Աճապարեա եւ փութա՛, զի ես Կազմեանն Արամեան:

Ոտանաւորների վերջում հայրը դիմելով իր որդուն՝ գրում է. «Աղէ՛ առ ընթերցի՛ր զարհեստ ոտանաւորացդ. դիւցազնական է տաղդ, քաջ ոլորեալ, եւ տաղ պղպջուն, օդուն եւ զեղուն, եռակի վանկօք չարակայեալ... իբր առ մանկականսն քեզ կամեցայ յըստակ վճիտ չարադրել զայսոսիկ, զի մի՛ անկարելի ոմանց թուեցեալ, արտավազիկ արշաւանօք փախիցեն, այլ դիւրալուր եղեալ թերեւս լսիցեն. զի սովորեալ կաթին, կարասցեն զկնի այսր զմերս փութացուցանել բանաստեղծութիւնս, զի զկատարեալն կերակուր տացուք իբր զքաջ խոհակեր»:

Գրիգոր Մագիստրոսի դիտաւորութիւնն է եղել, ուրեմն, իր որդուն եւ ուրիշներին մի օրինակ տալ, որպէսզի նրանք իրեն հետեւելով զարգացրնեն մեր չափածոյ բանաստեղծութիւնը: Նրա որդի Վահրամից, սակայն, չեն մնացել չափածոյ երկեր: Մագիստրոսի մի գրութիւնից՝ «Առ վեստն Վահրամ որդին իւր»՝ իմանում ենք, որ նա իր որդուն նոյնպիսի ուսում է տուել, ինչպիսին ինքն առել է պատանեկան հասակում. «Ցուստիկեցի կրթմունսն, մինչ տակաւին յանտիական տիս հասեալ, ի տէրունեան ճեմարանին զարգանաս: ... Առասանութիւնս Պիւթագորեան եւ Պղատոնական եւ Ստագիրացւոյն [=Արիստոտէլի] իբրու զատինս դիեցեալ, մինչ ի տարերս տակաւին տարբերէիր, տենչացեալ րղձայի քեզ արբուցանել անդանդաղ... եւ փոխարէնս հայցեմ ի քէն զաւանդութիւնն մեր ոչ մոռանալ երբեք եւ զփոյթ սիրոյն առ Քրիստոս Աստուած մեր եւ զլոյս ճրագի նախնւոյն մերոյ ոչ շիջուցանել, զՊարթեւին ասեմ քոյոյ հաւուն» (ՁԳ, էջ 235 եւ հտ.):

Հօր մահից յետոյ Վահրամը նշանակւում է հօր յաջորդ՝ Միջագետքի, Տարօնի եւ միւս մարզերի կուսակալ: Բայց նրա մէջ կրօնական ոգին աւելի զօրեղ էր. ուստի նա պաշտօնը թողնելով՝ բաժանւում է կնոջից եւ դառնում կրօնաւոր՝ Գրիգոր անունով: Ապա նրան՝ հակառակ իր կամքի՝ 1065 թ. ընտրում են կաթողիկոս. բայց նա երկար չի զբաղւում կաթողիկոսական գործերով, այլ ուրիշներին թողնելով իր պաշտօնը վարել, ինքը պարապում է գրական գործունէութեամբ: Նա գնալով Կ. Պոլիս, Եգիպտոս եւ Պաղեստին՝ հաւաքում եւ յունարէնից եւ ասորերէնից հայերէն թարգմա-

1 Անդ, էջ 495:
2 Մ. Աբեղեան, Հայոց լեզուի տաղաչափութիւն, էջ 224 եւ հտ.:

*նում է կամ թարգմանել է տալիս յատկապէս վկայաբանութիւններ, դրա համար կոչւում Գրիգոր Վկայասէր։ Մինչեւ կեանքի վերջը (վախճ. 1105 թ.) նա շարունակում է իր սիրած գործը՝ թարգմանելով կամ թարգմանել տալով նաեւ ճառեր ու մեկնութիւն։*

*«Երկրորդ Մեսրոպ մեզ երեւեալ,*
*Զգիրըս բազումս թարգմանեալ,*
*Առ ի Յունաց եւ յԱսորւոց*
*Ճառըս սրբոց վերաբերեալ»։*

*Այսպէս է գրում Ներսէս Շնորհալին նրա մասին իր «Վիպասանութեան» մէջ 1121 թուին։*

*Այսպէս՝ նա, Վահրամը թէպէտ եւ բանաստեղծ չի դառնում, ինչպէս կը ցանկար իր հայրը, բայց ջանացել է լրացնել մեր վկայաբանական թարգմանական գրականութեան թերին։ Նրանից առաջ եւ յետոյ ուրիշներն էլ աշխատել են նոյն գործի վրայ. թէ յատկապէս ո՛ր վկայաբանութիւններն է նա թարգմանել՝ այդ յայտնի չէ։*

## ԱՐԻՍՏԱԿԷՍ ԼԱՍՏԻՎԵՐՏՑԻ

1. Ընդհանուր դրութիւնը։—*Գրիգոր Նարեկացու Ողբերգութեան հրատարակութիւնից մի քանի տարի անգամ չանցած՝ սելջուկեան Թուրքերը սկսում են հրոսել Հայաստան։ Նրանք քանդում, հրդեհում են ամէն ինչ։ Ցաւով Հայոց բազմաթիւ իշխանութիւնները միմեանց ետեւից կործանւում են։ Նրանք փոխանակ միահամուռ ուժերով դէմ դնելու արտաքին թշնամիներին, պառակտուած են մնում։ Միւս կողմից բիզանդական կայսրները հետզհետէ ընդարձակում են իրենց իշխանութիւնը Հայաստանում, տիրելով Վասպուրականին, Անու թագաւորութեանն եւ ուրիշ կողմերի։ Նրանք, փոխանակ հին կայսրներին հետեւելով՝ երկրի պաշտպանութիւնը թողնելու տեղական իշխանութիւններին՝ իրենց նշանակած սպարապետի գլխաւորութեամբ, անմիտ քաղաքականութեամբ դէպի արեւմուտք, Փոքր Ասիա եւ Միջագետք են հեռացնում հայ ազնուականութիւնը, որ կռուող տարրն էր, երկիրը թողնում են առանց պաշտպանութեան սելջուկեան վայրենի հրոսակների դիմաց։ Սրանք առնում, սրի մատնում, աւերում են Արծն, Անի, Կարս, Մելիտինէ եւ այլ հարուստ ու շահաստան քաղաքները. իրենց արշաւանքները եւ ասպատակութիւնները կրկնում են պարբերաբար։ Հայաստանի բնակչութիւնը կոտորուելով եւ գերուելով ու տեղափոխուելով պակասում է։ Ոչնչանում է քաղաքացութիւնը, կամ ազնուականութեան հետ երկրից դուրս է հալածւում, ցրւում։ Հէնց այդ շրջանում սկիզբն է առնում հայ ազգի երկար դարեր տեւող եղերական վիճակը՝ տառապել ու ցրուել բնիկ երկրից դուրս՝ «զորս ո՛չ սուր սատակեաց՝ ցրուեցան զօրէն մոլորական աստեղաց»[1], — գրում է Արիստակէս Լաստիվերտցին։ Բիզանդական*

*1 Պատմութիւն Արիստակեայ վարդապետի Լաստիվերտցւոյ վասն անցիցն անցելոց ի յայլազգեաց ազգաց որք շուրջ զմեօք են. Թիֆլիս, 1912։*

*տիրապետութիւնը եւ սելջուկեանների արշաւանքները տակն ու վրայ են անում Հայաստանը; եւ նոր քաղաքակրթուող երկիրը ետ է ընկնում: Երկիրը հանգստութիւն չի ունենում: Աւերւում են առանձնապէս երկրի հարաւային կողմերը եւ կենտրոնական մասը, ուր ծաղկում էր ուսումն ու գիտութիւնը: Այստեղ կազմւում են մահմեդական իշխանութիւններ: Աւերմունքները շարունակւում են, մինչեւ որ Թուրքերը Ալփասլան թագաւորի օրով տիրում են Հայաստանին եւ դիմում դէպի Փոքր Ասիա:*

*Անշուշտ ոչ բոլոր վայրերը Հայաստանում միաժամանակ ենթակայ են եղել լիովին աւերման: Ուսումն ու գրականութիւնն ապաստան են գտնում պակաս կուլտուրական վայրերի վանքերում, հիւսիսային եւ արեւելեան Հայաստանի անտառապատ, աւելի պաշտպանուած լեռների վրայ, ուր մնում են հայ իշխանութիւններ, ինչպէս եւ հեռաւոր Սեւ լեռների անապատներում, հետագայում նաեւ Կիլիկիայում, ուր կազմւում է մի նոր հայ իշխանութիւն: Այդ վայրերում էլ ազնուականներն անընդհատ կռիւների մէջ լինելով՝ միջոց չունէին ուսման վրայ մտածելու. ուստի դրականութիւնը մնում է դարձեալ մենաշնորհ վանականների: Իսկ սրանք պարապում են դաւանական վէճերով, մեկնութիւններով, ներբողներով, կամ ժողովում ու թարգմանում են, ինչպէս տեսանք, վկայաբանութիւններ ու ճառեր: Հայ կեանքը չի շարունակում իր բնական շաւղով արագ առաջ ընթանալ: Քաղաքական հանգամանքներն այնպէս շուռ են տալիս ամէն շինարարական գործ, որ աջող սկսուած մտաւոր շարժումն ու փոխուած ոգին շուտով չեն զարգացնում մի նոր տեսակի վայելուն գրականութիւն: Առանձնապէս բանաստեղծութիւնը դադարում է արուեստաւոր զարգացումից, եւ մինչ սպասելի էր, որ հոգեւոր զօրեղ քնարերգութիւնից յետոյ՝ ծագէր վիպական բանաստեղծութիւն, բարգաւաճէր մի նոր կենսուրախ բանաստեղծութիւն, մենք երկար տասնամեակներում ոչինչ չենք գտնում: Ժողովրդական ու գուսանական սիրոյ ու պարի երգը չի բարձրանում իր բնական դրութիւնից. գոնէ մինչեւ այժմ յայտնի չեն եղել Գրիգոր աշխարհականի կամ հոգեւորականի յօրինած այդպիսի երգեր:*

2. Պատմագրութիւնը:—*Այս ողբալի շրջանի կարեւոր երկը Արիստակէս Լաստիվերտցու գրած Պատմութիւնն է*[1]*: Կենսագրական տեղեկութիւններ չունենք այս հեղինակի մասին: Պէտք է կարծել, թէ Լաստիվերտը, որտեղացի է նա, գտնուել է Կարին գաւառի Արծն քաղաքի մօտերը, քանի որ նա դրա համար գրում է «քաղաքս մեր»*[2]*: Իր գրքից իմանում ենք, որ նա ապրել է 11րդ դարում, ու նա իրեն ականատես է դնում շատ դէպքերի, այսպէս, օրինակ, 1026 թ. Վասիլ կայսրի դէմ ծագած ապստամբութեան մասին գրում է. «զայս հաւաստեաւ գիտեմ, եւ աչօք իմովք տեսի»*[3]*: Սմբատայ լեռան վրայ 1048 թ. տեղի ունեցած մեծ կոտորածի, ապա եւ Արծնի աւերման մասին գրում է. «Զոր աչօք մերովք տեսաք ի ընդ*

---

*1 Պատմութիւն Արիստակեսայ վարդապետի Լաստիվերտցւոյ վասն անցիցն անցելոց ի յայլազգեաց ազգաց, որք շուրջ զմեօք են, Թիֆլիս, 1912:*

*2 Անդ, Ժ, էջ 63:*

*3 Անդ, Գ, էջ 13:*

փորձ չարեացն անցաք, զայն միայն գրեցաք»[1]: Պատմութիւնը սկսում է Տայքի Դաւիթ Կիւրապաղատի մահից յետոյ, երբ Վասիլ կայսրը (Բարսեղ Բ, 976–1025 թ.) իր թագաւորութեան քսան եւ հինգերորդ տարում (976+25=1001 թ.) գալիս է տիրելու նրա կալուածներին, եւ ապա կայսրների յաջորդութիւնը պահելով վերջացնում է Ռոմանոս Դիոգենէս կայսրի մահով 1071 թ., յիշում է եւ Ալփասլանի մահը 1072 թ.:

Նրա գրքից շատ կարեւոր պատմական տեղեկութիւններ ենք ստանում Հայաստանի մասին այդ շրջանում, որի ընդհանուր դրութիւնը գծագրուեց վերեւում: Ուրիշ առիթներով էլ բերուած են կարեւոր նիւթեր այս պատմագրքից: Այստեղ այսքանը միայն պէտք է չեշտել, որ նա առանձնապէս մանրամասն պատմում է Յոյների եւ սելջուկեան Թուրքերի զազանութիւնների մասին, նրանց կատարած սրածութիւններն ու աւերածութիւնները, երկրի ամայացումը: «Նոքա իբրեւ զգայլս գիշախանձս՝ որք հանդիպին հօտի՝ որոյ ոչ գուցէ հովիւ, զի ոչ թէ իւրեանց կերովն միայն շատանան կոտորել, այլ զամենայն ջանան, — նոյնպէս եւ ի Պարսից եկեալ զօրքն ոչ թէ աւարաւ յագենային, այլ անյագ քաղց մերոյ սատակմանն ունէին. զի զոր աչօք տեսանէին, անհնար էր նմա ի ձեռաց նոցա ապրանիլ, մեծ բարեպործութիւն համարելով զայն»[2]: Այսպէս խիստ է բնորոշում Պատմիչը նրանց զազանութիւնները. նրանք չեն բաւականանում, «ըստ իւրեանց արիւնարբու բարուցն», մարդկանց կոտորելով, այլ սիրում են չարաչար տանջել բոլորովին անմեղ մարդկանց: Բերենք այստեղ երկու օրինակ: «Իսկ զթանձրամարմինսն եւ զհարստակոզսն յերկիր ի դուճս արարեալ, եւ պարզեալ զձեռսն ի ցիցս վարեալս՝ ի գետինն պնդէին, եւ կորզեալ զմորթն եղնգամբքն հանդերձ յայսկոյս եւ յայնկոյս ընդ բազուկ եւ ընդ թիկունս մինչեւ ի ծայրս ձեռինն երկրորդի բռնաբար քարշեալ եւ հանեալ, լար աղեղանցն առնէին»: Այս գրելուց յետոյ՝ բացագանչում է Պատմագիրը. «Ո՛հ, քանի՛ դառն է պատմութիւնս», եւ շարունակում է գրել ուրիշ նման եղեռնագործութիւնների մասին. «Իսկ զերիցանցն եւ զկրօնաւորացն ո՞ր լսելիք տանին զնորանշան չարիսն՝ զոր նոքա կրեցին. զորոց ի կրծիցն ի վեր քերթեալ զմորթս՝ տարեալ երեսօքն հանդերձ զգլխովն շրջէին, եւ այնպիսի դառն տանջանօք տանջեալ, յետոյ ապա սպանանէին. որ քան զայս զի՞նչ այլ ոք դառն եւ անհնարին տանջանս իմանայցէ, որ ի սրբոց վկայութիւնս չերեւի ուրեք եղեալ»[3]:

Բարի մարդը չի կարողանում երեւակայել անգամ, թէ այդպիսի անասելի չարչարանքներ կարելի է տալ մարդկանց: Նա չի կարողանում եւ այն հասկանալ, որ ժողովուրդները երկար տարիներով ապրեն միմեանց մօտ եւ չբարեկամանան իրար հետ: Եւ եթէ այդպէս չի եղել, դրա պատճառը ոչ թէ արդէն մեղմաբարոյ Հայերն են եղել, այլ արիւնռուշտ խուժադուժները, որոնք մինչեւ վերջը շարունակել են մնալ նոյնը: «Զի ոչ մի օր, կամ միոյ ժամանակի հանդիպեցաք անդորրութեան կամ դիւրութեան,—գրում է նա, — այլ ամենայն ժամանակ աւուրց մերոց լի եղեւ խռովութեամբ եւ

1 Անդ, ԺԲ, էջ 85:
2 Անդ, ԺԸ, էջ 123:
3 Անդ, ԺԸ, էջ 128 եւ հտ.:

նեղութեամբ. եւ օր ըստ օրէ յաւելոյր եւս ի չարչարանսն եւ ի տառապանսն: Եւ ոչ ոք ի նոցանէ բարեմիտ եղեւ առ մեզ, թէպէտ եւ բազում ամօք բնակեցան առ մեզ. ոչ արդելաւ սրտմտութիւն նոցա որպէս իժի, եւ ոչ եղեւ յագումն ագահութեան նոցա իբրեւ հրոյ. զի ամենայն խորհուրդք նոցա որ վասն մեր՝ ի չարութեան են, եւ բանք նոցա՝ լի նենգութեամբ: Վասն զի ամենայն առաւօտու նորայոյն սկիզբն չարեաց առնէին. զի այն էր խորհուրդ նոցա ամենեցուն՝ մաշել եւ սպառել զմեզ իբրեւ զհնացեալ ձորձս, եւ բառնալ զյիշատակս մեր ի միջոյ իւրեանց, զի բնաւ մի՛ հայեսցին եւ տեսցեն զմեզ կենդանիս. այլ եղիցին գերեզմանք մեր անհետ ի ներքոյ ոտից նոցա»:— Ահա՛ այն եզրակացութիւնը, որին յանգում է Պատմագիրն այդ բարբարոսների բնաւորութեան վերաբերմամբ:

Իսկ Հայերի վիճա՞կը. «Մերս ծանրագոյն եւ տաժանագոյն է քան զամենեսեան, անթագաւոր եւ անիշխան, անտէրունչ եւ անվերակացու՝ ըստ հոգւոյ եւ ըստ մարմնոյ, եւ ոչ գոյ մի տեղի ապաստանի գտանել մեզ. այլ նուաղեալ հնազանդեալ եմք ի ներքոյ թագաւորութեան հեթանոսաց կալ, եւ դատարկ հարուած գաւազանի նոցա օր ըստ օրէ ընդունել»: Եւ այսպէս մինչեւ Պատմութեան վերջին տարին, 1072 թուականը:

Պակաս բարբարոսաբար չէին վարւում եւ Յոյները: Ահա թէ ի՛նչ է գրում նա Վասիլ կայսրի հրամանով 1025 թ. կատարուածների մասին. «Թագաւորն ընդ կողմանս աշխարհին զօրս առաքէ, ասպատակ արձակէ, պատուէր տայ մեծասաստ հրամանաւ՝ մի՛ ողորմիլ ծերոյն եւ մի՛ երիտասարդին, մի՛ տղային եւ մի՛ հասակաւ կատարելոյն, մի՛ առն եւ մի՛ կնոջ, եւ մի՛ ամենեւին ամենայն հասակի: Եւ այսու ձեռնարկութեամբ, քանդեալ ապականէ զաւառս երկոտասան: Յորս էր տեսանել տեսութիւն ողորմելի եւ բազում արտասուաց արժանի. քանզի բարձրաձեղուն ապարանք արքունական տաճարաց՝ որք մեծամեծ ծախիւք եւ հնարագիտութեամբ ճարտարաց՝ ի սքանչանս տեսողաց եւ ի վայելս ուրախութեան բնակողացն շինեալ էին հրայրեացք անկեալ կործանեցան, եւ որք նոցին տեարքն՝ առ նմին սրակոտորք: Աւա՜ղ պատմութեանս, աւա՜ղ չար արարուածին. զիա՞րդ կարացից ես աղքատս գիտութեամբ եւ տխմարս քան զամենեսեան ընդ գրով արկանել զայն ժամու եղեալսն, եւ կամ ողբալ ըստ արժանւոյն զմեր թշուառութիւնս»[1]: Եւ այսպէս յունական բանակը, որ իր կազմութեամբ բնաւ եւս չէր մնում Թուրքերից:

3. Աշխարհայեցութիւնը:— Լաստիվերտցին չափազանցութեան է հասցրել նախորդ պատմագիրների մի ոճական յատկութիւնը. չունի յաճախ ինքնուրոյնութիւն: Բնականաբար նա եւս ազդուած է մեր հին մատենագիրներից, բայց այդ այնքան էլ զգալի չէ: Չափազանց է Աստուածաշնչի ազդեցութիւնը: Կարելի է ասել, որ ներշնչուած է մարգարէական գրքերից և երբեմն դրանցից է առնում իր գրութեան ուժը: Երբեմն էլ նա որեւէ անցք նկարագրելիս՝ բերում է Ս. Գրքից ամբողջ հատուածներ՝ յարմարեցնելով այն իր պատմած եղելութեանը եւ մինչեւ իսկ՝ ինչ որ մարգարէներն ասել են Եբրայեցիների համար՝ համարում է հայ ազգի համար, եւ մեր ժողովրդի

1 Անդ, Բ, էջ 13 եւ հտն.:

գլխին եկած թշուառութիւնները համարում է իբրեւ կատարումն հրէական մարգարէների կանխատեսութիւնների: Բայց պէտք չէ նրան այնքան միամիտ կարծել, թէ հին հրէական ժողովուրդը եւ հայ ազգը շփոթէր մի-մեանց հետ: Այդ խիկարէս միայն մի արտաքին ձեւ է, որի մէջ նա միշտ նկատի ունի ներքինը, որ է հայ ժողովրդի իրական վիճակը եւ Աստուծու կամքը: Իբրեւ իր դարի զաւակ ու վարդապետ, ամէն պատմական դէպք նա համարում է աստուածային կամքի արտայայտութիւն:

Մինչ սպասում ենք, որ 11րդ դարում երեւան գար համեմատաբար ընդարձակ աշխարհայացք, հակառակն ենք գտնում: Եղելութիւնների իրա-կան պատճառների քննութիւն չկայ: Մարդկանց միտքը ճնշուած էր ետեւէ ետեւ արագ վրայ հասնող աղէտների ծանրութեամբ: Ժամանակի ազգային չարաբաստիկ վիճակն ստիպում էր նրանց նորից ետ դառնալ, կրօնի մէջ գտնել մխիթարութիւն, եւ իրենց դժբախտ կեանքի բացատրութիւնն ու ելքը որոնել: Առաջին հարցը, որ տալիս էին մտածողները, այս էր. ինչո՞ւ են գալիս մեր գլխին այս աղէտները: Հայերը, որ այնքան բարեպաշտ էին, այնքան եկեղեցիներ ու վանքեր էին շինել Աստուծու փառքի համար, ինչո՞ւ են տառապում Թուրքերի ձեռքին:— Պատասխան գտնելը դժուար չէր՝ հին մատենագիրներն արդէն պատրաստել էին այն գաղափարը, — որ եղել է հին հրեաների եւ բոլոր քրիստոնեաների մէջ, — թէ մարդիկ մեղք են գոր-ծում, եւ Աստուած նրանց պատժում է իրենց մեղքի համար: Նա, Լաստի-վերտցին էլ, ամէն թշուառութիւն համարում է աստուածային պատիժ մեղքի համար: Բացի մեղքից՝ նրա համար էլ ուրիշ պատճառ չկայ սել-ջուկների եւ Յոյների գազանութիւնների համար: «Զայս ամենայն յաղագս այնորիկ եղաք, զի ընթերջիք եւ գիտասջիք, եթէ մեղքն եղեւ այս ամե-նայնի պատճառ որ անց ընդ մեզ զի հայեցեալ ընդ մեզ՝ զարհուրեսջիք երկնչել յերեսաց տեառն եւ զգոյշ յահէ զօրութեան նորա. կանխել յառա-ջագոյն խոստովանութեամբ եւ ապաշխարութեամբ»,— ահա՛ դժբախտ եղե-լութիւնների միակ պատճառն ու ելքը եւ իր երկի նպատակը, որ նա շեշտում է իր գրքի վերջում եւ որ յաճախ կրկնում է նա գրքի մէջ իբրեւ պատգամ, խորին համոզմունքով, վճռաբար, իբրեւ մի մարգարէ:

Այդպէս խօսում է նա իբրեւ մեկնաբան եւ բարոյախօս վարդապետ, մեղք եւ ապաշխարել, մեղքը լալ փրկութեան համար: Կարծես դա հին բա-նաստեղծութեան, ապաշխարութեան շարականների եւ Գրիգոր Նարեկացու Ողբերգութեան իշխող գաղափարն է: Բայց այդ ըստ երեւոյթին միայն նոյնն է: Մեղք եւ ապաշխարել, նմանութիւնը միայն այսքանն է. սրա-նից դէնն արդէն գալիս է նոր ոգին: Մինչեւ հիմա մեղաւորն էր անհատ մարդը, նա լալիս էր իր սեփական անձնական մեղքը. մինչեւ հիմա միստիկ ճգնաւորներն ու նրանց արտայայտիչ բանաստեղծը ողբում էին անհա-տական մեղքը: Հիմա մեղաւոր է ազգը, նա՛ պէտք է ապաշխարի: Ան-հատն ապաշխարում էր մարմինը տանջելով. դրանով նա ձգտում էր գտնե-լու իր հոգու փրկութիւնը, որ մահից յետոյ հանդերձեալ կեանքում էր լինելու Աստուծու հետ միացումով: Իսկ Արիստակէս Լաստիվերտցու համար այդպիսի բան չկայ. նա հեռու է միստիցիզմից: Այստեղ ապաշխարութիւնը քարոզւում է տանջանքից ազատուելու եւ ազգի փրկութեան համար, որ

այս աշխարհում պիտի լինի, այն էլ ոչ թէ մարմինը մեռցնելով, այլ բարքերի մաքրութեամբ, կեանքի բարոյական կարգաւորութեամբ:

Եթէ միստիկ ճգնաւորի համար աշխարհի վրայ մտածելն անգամ մեղք էր, Լաստիվերտցին չի մերժում աշխարհը եւ նոյնիսկ հարստութիւնը հարկաւոր է համարում: Բայց ամենայն հարստութիւն պիտի ծառայի բարի նպատակների եւ ձեռք բերուի արդարութեամբ եւ իրաւունքով, առանց վաշխի ու տոկոսիքի: Առաջ այսպէս էր,—գրում է նա իր հայրենի Արծն քաղաքի համար, ուստի «ամենայն ինչ ըստ մտի էր սորա»: Բայց կեանքը փոխւում է. սկսում են հարստութիւն դիզել միայն իրենց վայելքի համար, փարթամ ապրելու, ճոխ հագնուելու եւ զարդարուելու համար, իշխաններն ու վաճառականները դառնում են գողերի գողակից, կաշառառու, վաշխառու, խաբեբայ, զրկող, շահախնդիր: Նրանք յղփանում եւ ամբարտաւանանում են: Այսպէս եւ «ամուրն Անի եւ որ շուրջ զնովաւ դստերք իւր՝ առաւել յամբարտաւանութիւն կրթեալ՝ ընդդէմ երկնից կայթս հարկանէին», «քաղաք՝ որ զմեղս իւր ի կատարումն լրիւ իւրով ունէր»:

Այդ քաղաքի բնակիչները թշնամիների դէմ յոյս են դնում իրենց ամուր պարիսպների եւ անմատչելի աշտարակների վրայ, մոռնալով, «զի սրբութիւնն է ամրութիւն, եւ պարիսպ՝ ընտիր գործք աստուածպաշտութեան»: Եւ ահա 1064 թ. Պարսից թագաւորը բազմաթիւ սպառազէններով գալիս, պաշարում, առնում է այդ քաղաքը, կոտորում է բնակիչներին. «Այլ եւ ի ճարպոյ անիրաւութեան ի նմա գործելոցն տոչորեցաւ բարձրաշէն եւ գեղեցկայարմար ապարանքն, եւ եղեւ ամենայն բնակութիւնն իբրեւ հողաբլուր. եւ վաշխն եւ նենգութիւնն որ ի նմա՝ խափանեցաւ», — գրում է Լաստիվերտցին եւ աւելացնում. «Այս է բաժին անիրաւ քաղաքաց, որ շինեն զինքեանս արեամբ օտարաց, եւ ի քրտանց տնանկաց փարթամանան, եւ ի վաշխից եւ յանիրաւութեանց զտունս իւրեանց ամրացուցանեն. եւ ինքեանք զմիտս իւրեանց անողորմ ունելով առ աղքատս եւ տնանկս՝ միայն հեշտութեան եւ փափկութեան սպասեն, եւ ի գործոց աղտեղութեան ո՛չ խորշին, այլ միայն արբեալ լինին ի ցանկութեանցն, որ զնոսա ըմբռնեալ ունի»[1]: Այսպէս՝ թէպէտ կրօնական ձեւի տակ, բայց արդէն ընդարձակւում է Արիստակէս Լաստիվերտցու պատմահայեացքը: Ազգի ուժը իր ներքին բարոյականութեան մէջ է: Եթէ չկայ այդ ներքին ուժը, ինչքան էլ նա փարթամացած լինի, պարիսպներով եւ աշտարակներով ամրացած չէն քաղաքներով հարուստ, նա անխուսափելի պիտի ընկնի, ինչպէս Անին, որի համար գրում է, թէ «Արկ տէր ի մէջ պահապանաց եւ իշխանացն երկպառակութիւն եւ անմիաբանութիւն, ամբոխումն եւ բաժանումն. եւ անդէն թողեալ զգործ պատերազմին՝ ի փախուստ դարձան»: Եւ այլապէս չէին կարող վարուել բարքերի ապականութեան ժամանակ հեշտասէր, ցոփ ու թուլամորթ մարդիկ: Ապաշխարել, ուրեմն, ըստ Լաստիվերտցու՝ չի նշանակում ուրանալ աշխարհը; ուրախ ու երջանիկ կեանք չվարել, ապրել ինչպէս մի ճգնաւոր, այլ մեծացնել ներքին բարոյական ուժը եւ դրանով

1 Անդ, ԻԴ, էջ 162 եւ հտն.:

*միայն հնարաւորութիւն ունենալ պատերազմելու արտաքին թշնամիների դէմ եւ փրկուելու:*

4. Աշխարհասիրութիւն եւ հայրենասիրութիւն:— *Աշխարհն արդէն ստացել էր արժէք այն աստիճանի, որ նոյնիսկ այդ կրօնասէր մարդը, սգաւոր պատմիչ Լաստիվերտցին, խորին սիրով սիրում է այն, սիրում է իր հայրենիքի անդաստանները, մշակած դաշտերը, շինանիստ աւաններն իրենց բարձրաձեղուն ու մեծամեծ ցանկալի տներով, ժողովրդի բարեկեց կեանքը, ուրախ-զուարթ աշխատանքը, կատարած ուրախութիւնները, երգերն ու պարերը, թագաւորն իր փառաւորութեամբ, զօրքերն ու կռիւները, որոնք կային մի ժամանակ եւ չկան այլեւս: Ուստի այժմ, ասում է նա, «յողբս փոխեցաւ մեզ ամենայն»: Այս աշխարհասիրութիւնից է, որ նա, յաճախ կրօնական ձեւի տակ, բայց իսկապէս մեր աշխարհիկ կեանքի դժբախտութեան ողբերգուն է դառնում:*

*«Աշխարհ՝ որ երբեմն ժամանակաւ իբրեւ դրախտ տնկախիտ առաջի իւր, կանաչագեղ, տերեւալից, պտղաբեր, գեղեցկաշուք եւ երջանիկ անցաւորացն ցուցանիւր. քանզի իշխանք նստէին յիշխանական պահու զուարթահայեաց դիմօք, եւ զգարնանաբեր ծաղկանոցաց բերեալ զնմանութիւն՝ վառ ի վառ գունովք առաջի կացեալք, ուրախական երգոց եւ բանից միայն լինէին հանդէսք. ուր եւ ձայնք փողոցն եւ ծնծղայիցն եւ այլ երգեցողական արուեստիցն զլսողացն անձինս լի առնէին ուրախական բերկրանօք: Անդանօր եւ ծերք նստէին ի հրապարակս հարկեւոր եւ պատուական ալեօք բարգաւաճեալ. այլ եւ մարք զմանկունս ի գիրկս ընկալեալ, եւ մայրենի գթովքն աղէխարշեալ, վասն առատ ուրախութեանցն մոռանային զտխրական ժամանակս երկանց, զօրէն աղաւնեաց գնորափետուր ձագօքն միշտ թռթռելով: Զի՞նչ ասացից եւ զհարսանցն ի սենեկի, եւ զփեսայիցն յառագաստի զսիրահարուստ ըղձիցն զբոլորաքումն եւ զանժոյժ բնութեանն զհակամիտութիւն...*

*Արդ այժմ թագաւորն անկեալ ի պատուոյ, իբրեւ զգերի կալանաւոր նստի ի հեռաբնակ տեղիս. այսպէս եւ հայրապետական աթոռն ամայացեալ ի բնակողէն՝ ցուցանի տխուր դիմօք իբրեւ զկին նորահարսն՝ մնացեալ յայրիութեան: Հեծելազօրն անտէրունչ շրջեալ ոմն ի Պարս եւ ոմն ի Յոյնս, եւ ոմն ի Վիրս: Սեպուհ զունդն ազատաց ելեալ ի հայրենեաց, անկեալ ի ճոխութենէ, մռնչեն ուր եւ են իբրեւ զկորիւն առիւծուցն ի խշտիս իւրեանց: Արքունական ապարանքն աւերակ եւ անմարդի: Մարդաբնակ աշխարհն թափուր ի բնակչացն: Ոչ լսի ձայն ուրախութեան ի կութս այգեաց եւ ոչ բարեբանութիւն առ կոխօղս հնձանի: Ոչ խաղան մանկունք առաջի ծնողացն, եւ ոչ նստին աթոռով ծերք ի հրապարակս: Ոչ լսի ձայն հարսանեաց, եւ ոչ զարդարին առագաստք հարսնարանին»:*

*Ինչպէս որ զորովագութ մայրն իր մահացած որդու բարեմասնութիւնների գովքն անելով՝ աղիողորմ ողբում է նրա մահը եւ նորինորոյ սրտառոչոր հեծկլտում է, որովհետեւ սիրում է որդուն, նոյնպէս եւ այս բանաստեղծ պատմիչը: Եթէ նա չարունակ դառնակսկիծ սրտով գովքն է անում աւերուած Հայաստանի անցած կեանքի, այդ նրանից է, որ նա սիրում է այն ամէնը, ինչ որ վերյիշում է:*

«Եհաս կատարած կենաց տանս Հայոց... աւերեցան գաւառք եւ գնացին յաւար տունն Յունաց. եղեն չինանիստ աւանք բնակութիւն գազանաց»[1], — ահա նրա ողբերգութեան նիւթը: Նա Հայաստանի չէն եւ ուրախ կեանքի, չինանիստ աւանների ու բարգաւաճ քաղաքների երգիչն է, միայն ոչ ցնծութեամբ ու բերկրանքով, այլ դառն վշտով ու հառաչանքով. ոչ թէ ուրախութեան երգ յօրինելով, այլ ողբերգութիւն: Բայց նա ոչ թէ աշխարհի ու կեանքի ունայնութիւնն ու ոչնչութիւնն է երգում, ինչպէս Գրիգոր Նարեկացին իր Ողբերգութեան մէջ, այլ աշխարհի, Հայոց գեղեցիկ ու չէն աշխարհի ոչնչացումը: Ունայնութեան գաղափարի նշոյլ անգամ չի երեւում նրա մէջ: Ուրիշներն այն աւերածութիւններից յետոյ կարող էին յանգել այդ գաղափարին, բայց Լաստիվերտցին հեռու է դրանից: Նա սիրում է իրական կեանքը. միայն նա ցաւում ու լալիս է, չի ուզում, որ այդպէս աւեր լինէր, եւ ցանկանում է, որ աշխարհը մնար իր նախկին դրութեան մէջ: Ահա նրա վշտի ու հեծեծանքի աղբիւրը — աշխարհասիրութիւն ու հայրենասիրութիւն:

5. Իրականութեան սրտայոյզ պատկերը:— Լաստիվերտցին ռէալիստ գրող է այն մտքով, որ նկատի ունի իրական կեանքը: Նա իրական դրութեան, եղելութեան ճշգրիտ վերարտադրութիւնն է անում, լինին թշուառութեան օրերը, թէ փառաւոր անցեալի ցանկալի չինարարութիւնը, աշխարհի մարդաշատութիւնը, հարուստ քաղաքներն ու աւանները, նրանց բնակիչների ուրախ, բարելից ու բարեպաշտ կենցաղը: Այդ ամէնը նա անդրադարձրել է ոչ թէ իբրեւ մի ձեւ, մի նմանութիւն պատկերաւոր արտայայտութեան համար, եւ ոչ թէ այլաբանօրէն, այլ նպատակ ունենալով հէնց իրականութիւնը ցուցադրել, պատկերացնել ընթերցողի առաջ: Եւ նա կարողացել է իբրեւ բանաստեղծ տալ մեզ այն, եւ տալ գեղեցիկ, պարզ ոճով, Աստուածաշնչի կարճ ու պատշաճ օրինակներով, բայց նիւթին վայելուչ եղանակով, առանց մթնութեան, առանց պերճութեան եւ ուռուցիկ կուտակութեան, երբեմն ազդուելով Ս. Գրքի և հին հեղինակների արտայայտութեան ձեւերից: Այս է նրա սեփական գրութեան ձեւը: Եթէ դուրս թողնենք Ս. Գրքից բերած մեծ ու երկար ցիտատները եւ դատողութիւնները, նրա գրուածքը միանգամայն ե՛ւ հաճելի է, ե՛ւ խիստ ազդու. որովհետեւ նա չի յօրինում սառն եւ անտարբեր, այլ միշտ զգացուած, որով եւ համակում է ընթերցողին իր զգացմունքով: Եթէ նա երբեմն մեր առաջ չի էլ բաց անում իր հեղձամղձուկ սիրտը, բայց միշտ էլ զգալի է նրա խորին վիշտն իրականութեան համար: Եւ այս նա հաղորդում է մեզ մեծ կենդանութեամբ, յօրինելով սովորաբար նկարէն եւ նմանութիւններով, որոնք յաճախ շատ դիպուկ ու գեղեցիկ են: Շատ բանաստեղծական եւ ուժեղ է, օրինակ, նրա արտայայտութիւնը, երբ նա Հայոց աշխարհի ամայացումը տալիս է աշխարհարարման վիճակի նմանութեամբ եւ մեռելութեան եւ կենդանութեան հակապատկերներով.

«Վա՜յ տարւոյն, վա՜յ աշխարհաւեր խորհրդոյն, յորում կործանեալ ապականեցան բնակիչք երկրի. քանզի դարձաւ յառաջին անզարդութիւնն

---

1 Անդ. էջ 31:

ըստ աշխարհապատում բանին. «Երկիր, ասէ, էր ամայի եւ անպատրաստ, վասն զի մարդ չէր որ գործէր զերկիր»: Զի զոր օրինակ գեղեցիկ դէմք առն՝ ի ծաղկի հասակի սիրուն եւ ցանկալի տեսողացն ցուցանի, իսկ յոր- ժամ զարդարիչ հուլին մահուամբ բաժանի ի նմանէ, յառաջին պայծառ եւ գեղեցիկ զարդուցն ահարկելի և անշուք ցուցանի տեսողացն, նաեւ զուժն ընդ նմա հատանի. ըստ այնմ, թէ «Մոռացեալ եղէ ես որպէս մեռեալ ի սրտէ. ըստ նմին օրինակի զերկիր է տեսանել. զի յորժամ մարդաբնակ շինու- թեամբ հարստանայ, յայնժամ երկրագործք առատութեամբ սերմամբ զան- դաստանս լնուն. որք յորժամ բուսանին, կանաչագեղ տեսլեամբ զվայրսն վայելչացուցանեն, եւ բարձրաբերձ աճմամբ ի վեր ընձիւղին. եւ յորժամ զհասկիցն զկերպարանս ի զաղաթունսն երեւեցուցանեն, յայնժամ թանձրա- խիտ բարձրութեամբն ամպաձեւ տեսողացն ցուցանի, եւ ի քաղցրաշունչ օդոյն՝ ճօճի, ճեմի զօրէն ծովային ալեաց. այսպէս եւ հօտք անդէից արօ- տականաց ի հովիտս դալարաբեր բուսոց առ ցուրտ աղբերակամբք խայտան խաղան, եւ երկիր իբրեւ զդայեակ՝ գեղեցիկ դիմօք զարդարի նոքօք, ըստ այնմ, եթէ «Ցնծասցեն դաշտք, եւ ամենայն որ է ի նոսա»:

Իսկ այժմ զնորին հակառակն տեսանեմք. երկիր աւերակ, թափուր ի բնակչաց. քաղաքք կործանեալք, եւ անդաստանք խոպանացեալք եւ փշա- բերք, ահագին եւ զարհուրելի անցաւորացն ցուցանի: Նաեւ քաղցրաձայն հաւուց տարմք, որք մարդասէր բարոյիւք բնտանի գոլով մերային աղինս, որ քաղցրանուագ եղանակօք զվայրսն հնչեցուցանեն, եւ յառաւօտինսն ճռուական երգովք եւ բարձրաձայն կարկաչիւք զերկրագործսն ի քնոյն զանդաղանաց իբրեւ խթանաւ զարթուցեալ, իւրաքանչիւր արուեստից պատ- րաստաբար յարդարէին. բայց այժմ չէնք աւերակք եւ ամայիք եւ անմար- դիք, եւ նոցա ոչ գոյր տեղի բնակութեան. զի ո՞ւր տառեղունքն բոյն կառուցանեն, եւ ո՞ւր տկարք ի թռչնոց ի նոսա ապաւինին ըստ սաղմո- սին ձայնի. եւ կամ ուր ծիծառն գիւր վարանից բունիկն յարդարէ՝ աներ- կիւղ սնուցանել զառ ի յինքենէ ծնեալսն»[1]:

Ինչպէս կարելի է նկատել, բանաստեղծական նմանութիւններն այս- տեղ այնքան ընդարձակ են, որ կարող են նոյնիսկ անկախ նկարագիրներ դառնալ: Դրանք, անցեալն ու ներկան, գրողի իրեն ապրած իրականու- թեան անդրադարձումն են շատ պայծառ վերլիշումով: Նրա մտքից չարու- նակ անբաժան է մնում այն, թէ ո՛րքան լաւ եւ ուրախ էր առաջ, եւ ո՛ր- քան վատ ու տխուր՝ յետոյ:

Եւ նրա գրուածքի կենդանութեան գլխաւոր գաղտնիքն այն է հէնց, որ նա ապրած է իր գրածների նիւթը, ե՛ւ երբեմնի ուրախ, ե՛ւ հետագայի տխուր իրականութիւնը: Հէնց դրանից էլ բխում է նրա լիրիզմը — քնարա- կանութիւնը, որ անպակաս է: Բերենք իբրեւ օրինակ մի հատուած նրա ԺԱ գլխից, տեսնելու համար, թէ ինչպէս է նա յօրինում պատմուածքը:

«Ի սոյն ամս բացաւ դուռն բարկութեան յերկնից ի վերայ աշխար- հիս մերոյ. եւ շարժեալ զօրք բազումք ի Թուրքաստանէ, որոց երիվարք արագունք իբրեւ զարծուիս, եւ սմբակք նոցա իբրեւ զվէմս հաստատունք.

1 Անդ, ԺԸ, էջ 120 եւ հան.:

աղեղունք լարեալք, եւ սլաքեալ նետք նոցա, զօտեւորեալք քաջապէս, եւ անլուծանելի ունելով զխրացս կօշկաց: Եւ ելեալ ի գաւառն Վասպուրականի, յարձակեցան ի վերայ քրիստոնէից իբրեւ գայլս քաղցեալս անյագեալս ի կերակրոյ. եւ եկեալ մինչեւ ի գաւառն Բասեան, եւ մինչեւ ի գաւառակերտն մեծ, որ կոչի Վաղարշաւան, քանդեալ ապականեցին գաւառս քան եւ չորս սրով եւ հրով եւ գերութեամբ: Ողորմագին եւ բազում ողբոց եւ արտասուաց արժանի է պատմութիւնս: Որք իբրեւ զառիւծս ընթացան, եւ իբրեւ կորիւն առիւծուց անողորմաբար արկին զդիակունս բազմաց զէշ գազանաց եւ Թռչնոց երկնից. եւ կամէին այնու ձեռնարկութեամբ գալ ի քաղաքն Կարնոյ: Բայց որ ծովու եդ սահման՝ ասելով՝ «Ցայդ վայր եկեսցես, եւ այլ մի՛ եւս յաւելուցուս, այլ անդրէն ի քեզ խորտակեսցին ալիք քո», նա արկ զխաւար Թանձրամած առաջի նոցա, եւ արգել զնոսա յընթացից իւրեանց»:

6. Հայրենասիրական ողբերգութիւնը:— *Այս սգաւոր պատմիչը մի ուրոյն տեղ է բռնում մեր պատմագիրների շարքի մէջ: Նա իսկապէս քնարերգու բանաստեղծ է. բայց գրել է պատմութիւն եւ գրել է ոչ Թէ որեւէ ուրիշի խնդրով կամ պատուէրով, ինչպէս նախորդ պատմագիրներն առհասարակ, այլ ինքնաբերաբար, իր տանջուած սրտի զգացումները զեղելու պահանջից դրդուած: Դրա համար եւ նա շատ բան անտես է արել իր պատմութեան մէջ առնելու[1]: Ապրելով դառն ու դժնդակ ժամանակներում եւ լինելով շատ բաների ականատես եւ անձամբ «ընդ փորձ չարեացն» անցած, նրա փափուկ ու զգայուն սիրտը չի դիմանում իր տեսածներին ու լսածներին: Նա չի կարողանում պաղարիւնութեամբ վերյիշել այն աւերներն ու կոտորածները, որ արել են Յոյներն ու Թուրքերը. սգում ու ողբում է, իր սրտի խորքից հեծեծելով ու Թառանչելով իր դժբախտ հայրենիքի ու ժողովրդի համար, երբեմն նոյնիսկ, ինչպէս տեսանք, աղօթում է նրանց համար: Եւ նա այդ ողբն անում է ոչ իբրեւ մի միստիկ ճգնաւոր աշխարհից կտրուել կարողանալու համար, այլ իբրեւ մի հայրենասէր, որ սիրում է աշխարհը, Հայոց աշխարհը: Ցաւած սրտով նա շարունակ ընդհատում է պատմութիւնը եւ արտասուալից ողբեր է յօրինում: Էականը նրա համար ողբն է: Եղելութիւնների պատմութիւնը յաճախ նրա համար է անում, որ ընթերցողին հասկանալի դարձնի իր ողբի նիւթը: Եւ այսպէս վարւում է նա գիտակցաբար, առանց խորշելու, նպատակ դրած իրեն: Նրա «Նախերգանքն» անգամ ոչ Թէ «առաջաբան» է, այլ մի ողբագին երգ է.*

*Ժամանեցին մեզ աւուրք չարչարանաց,*
*Եւ գտին զմեզ նեղութիւնք անհնարինք.*
*Քանզի լցեալ չափ մեղաց մերոց,*
*Եւ ել աղաղակ մեր առաջի Աստուծոյ...*
*Որոյ աղաղաւ ազդօք օտարածնաց*
*Օտարացուցին զմեզ ի բնակութենէս մերմէ,*
*Եւ դարձան փառք մեր յապականութիւն:*
*Շունչ ի մեզ ոչ մնաց,*

1 Անդ, **ԻԵ**, *էջ* 168:

Եւ կործեաք ի համաման յուսոյ մերոյ։
Զօրացաւ մահ եւ եկուլ,
Եւ դժոխք չառ առել ոչ կամեցան։
Ամենեցուն յարձակեցան ի մեզ ձեռք,
Եւ յանգման յաւուրս մեր ժամանակ ոչ ծանեաւ
Զմնացորդս պատուհասին վճարմամբ անցելոց։
Յաջորդք ի յաջորդաց փոխանակեցին,
Եւ նուաղեաց արդիւն արծարծիչ չնչոյ կենդանութեան։
Հաստատունք յաչխարհի ի պանդխտութեան իւրեանց
Պանդխտեցան երկրորդ անգամ եւ եղեն վտարանդիք...
...Զարթեան պատերազմունք ի չորից կողմանց.
Յարեւելից սուր, յարեւմտից սպանումն,
Ի հիւսիսոյ հուր, եւ ի հարաւոյ մահ։
Բարձան ուրախութիւնք յերկրէ,
Լռեցին ձայնք քնարաց.
Լռեցին բամբիւնք թմբկաց,
Բարձրացան աղաղակք լալեաց։

Այսպէս ողբերգելուց յետոյ կցում է. «Եւ այսոքիկ այսքան։ Բայց ժամ է մեզ ի գլուխ պատմութեանս ընթանալ, եւ առաւ սկիզբն առնել, որպէս զի դիւրածան լիցի մեզ բանս», այսինքն՝ հասկանալի լինի, թէ ինչու ինքը հէնց սկզբում ողբում է։ Ուրիշ անգամ[1] կոտորածների մասին գրելուց յետոյ բացադանչում է. «Ո՜վ քանի՜ դառն է պատմութիւնս եւ ողբոց արժանի», եւ խկոյն, ողբալ սկսելուց առաջ, աւելացնում է. «Այլ թերեւս ոք մեղադիր լինիցի մեզ, թէ մինչեւ ցերբ զվշտաց եւ զնեղութեանց արկանես առաջի մեր զրոյցս»։ Ապա իրեն արդարացնում է, թէ եղած ու կատարուած բաներ է պատմում, «որպէս զի ամենեցուն՝ որք լսիցեն՝ չարժեցից արտասուս, թէ ո՛րքան դառն ժամանակի հանդիպեցաք. կարծական եղեւ մեզ այս կեանքըս... Աշխարհ ամենայն ի խաղաղութեան բնակէ, եւ մեք գերիք եւ կալանաւորք, սրակոտորք եւ տնաւերք եւ յրնչից կողոպտածք»։ Եւ անմիջապէս սկսում է իր ողբը Հայաստանի քաղաքական եւ կուլտուրական անկման համար։

Ողբեր յօրինել են եւ մեր նախորդ պատմագիրները, բայց փոքր ծաւալով, աւելի ճարտասանական զուսպ քնարականութեամբ. մինչ Լաստիվերտցու երկի մէջ խնական բուռն լիրիզմ կայ, յորդառուխ բռնկում եւ անմիջական արտայայտութիւն սրտակէզ մորմոքի։

Այսպիսի ողբերն, ինչքան էլ ազդու են, յաճախ կրկնուելով դանդաղեցնում են պատմութեան ընթացքը եւ յոգնեցնող ու նոյնիսկ ձանձրալի կարող են լինել իրենց միակերպութեամբ, բայց միայն այն ժամանակ, երբ այս բանաստեղծի երկը կարդում են պատմական եղելութիւններ քաղելու համար։ Թէպէտ եւ պատմութեան համար էլ դրանք ունեն իրենց նշանակութիւնը, — նա այդպիսի ողբերի մէջ եւս տալիս է կեանքի գծեր, կա-

---

1 Անդ, ԺԷ, էջ 111 եւ հտն.։

րեւոր մանրամասնութիւններ, որոնցով կարողանում ենք կենդանի պատկերացնել կատարուած բարբարոսութիւնները եւ երկրի ընդհանուր դրութիւնը, — բայց եւ այնպէս դրանց արժէքն աւելի բանաստեղծական է: Մենք դրանց մէջ տեսնում ենք սրտի կսկիծն այն դժբախտ օրերի հայրենասէր մարդու, որ երբ պատմում է Թուրքերի ու Ցայների գործած խժդժութիւնների մասին, ինքնաբուխ արտասուքով լցուած, յաճախ բանաստեղծութիւն է յօրինում արձակ լեզուով եւ դառն ու աղիողորմ հառաչելով լալիս է իր հայրենիքի կործանուած փառքը, կուլտուրական եւ քաղաքական կեանքի անկումը, քաղաքների ու աւանների աւերումը, եւ երգում է այնպէս խորն ու անկեղծ ու յուզիչ, որ խորին վշտով համակում է ընթերցողին: Եւ նրա այդ տրտմալի երգը երկու պատկերով, փառաւոր եւ ուրախ անցեալի եւ իր ժամանակի անփառունակ ու տխուր վիճակի, դարեր շարունակ նմանողութեան աղբիւր է դարձել: Եւ այսպէս Հայոց թագաւորութիւնների անկումից յետոյ, Հայաստանում սելջուկեան թուրքերի տիրապետութիւնը դեռ չհաստատուած, սկսւում է հայրենասիրական ողբերգութիւնը Արիստակէս Լաստիվերտցու երկով:

## ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏ

1. Կենսագրութիւն:— Մեր վերածնութեան նոր մտաւոր հոսանքի առաջին արտայայտիչներից մէկն է եւ Յովհաննէս Սարկաւագ Վարդապետը: Այս համբաւաւոր գրողի կենսագրութեան համար, ցաւօք, սակաւ տեղեկութիւններ ունինք, եւ եղածներն էլ մասամբ դեռ չեն ստուգուած: Այս մասին՝ հատորի վերջում «Սարկաւագ Վարդապետի կենսագրութեան շուրջը» վերնագրով յաւելուածի մէջ: Նա վախճանուել է 1129 թուականին. ծննդեան տարեթիւը յայտնի չէ: Որովհետեւ նա մեռնելիս եղել է շատ ծեր, առնուազն 80–85 տարեկան, հետեւաբար ծնուած պիտի լինի մօտաւորապէս 1045–1050 թուականներին, հաւանօրէն աւելի եւս վաղ: Ըստ Վարդան Արեւելցու[1] նա Փառիսոս գաւառից էր, «ի քահանայական ազգէ»: Արցախի այս գաւառը մի ժամանակ եղել էր մի հայկական փոքրիկ քաղաքական կենտրոն, որ ունեցել էր իր առանձին թագաւորները: Կարսի Աբաս թագաւորի (984–990 թ.) մայրն, ըստ Ստեփանոս Տարօնեցու[2], Փառիսոսի թագաւորների քոյրն էր, «բարեպաշտուհի ի բարեպաշտ ծնողաց»: 1003 թ. «իշխանքն Փառիսոսոյ, որ ի Հայկազեան ազանց բաւեալ մինչեւ ցՍենեքերիմ եւ ցԳրիգոր՝ սպառեցան մահուամբ: Զորոց աշխարհն բաժանեալ հակառակութեամբ ի միջի իւրեանց արքայն Հայոց Գագիկ եւ Փադլուն ամիրայն Գանձակայ»: Գանձակի ամիրան նուաճել է բնականաբար արեւելեան դաշտային մասը, իսկ Հայոց թագաւորին անցել են Վայոց Ձորից դէպի հիւսիս-արեւելք ընկած լեռնային գաւառները. «եւ տիրեաց նա [Գա-

1 Մեծին Վարդանայ Պատմութիւն տիեզերական, Մոսկուա, 1861, էջ 159:

2 Ստեփաննոսի Տարօնեցւոյ Պատմութիւն տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 198, 256, 283:

գիկ] յոլով բերդից եւ գաւառաց ի սահմանացն Վայոց ձորոյ, Խաչենոյ եւ Փառիսոսոյ»[1]:

Թէ ո՛րքան է տեւել այս բաժանումը, այդ յայտնի չէ. բայց դրանով ոչ միայն չի մարել ազգային անկախութեան գաղափարն ու ոգին այն կողմերում, ուր կային միշտ տեղական հայ իշխաններ, այլ, ընդհակառակն, աւելի եւս վառ ու բորբոք է մնացել հանդէպ այլազգիների ոտնձգութիւնների: Բացի այդ՝ շարունակ զարգացել է այնտեղ եկեղեցական մշակոյթը, ինչ որ ծնողների միջոցով անպայման զօրեղ ազդեցութիւն է գործել մանուկ Յովհաննէսի կրթութեան եւ բնաւորութեան վրայ, եթէ միայն ստոյգ լինի Վարդանի հաղորդումը, թէ նա Փառիսոս գաւառից էր: Ալիշանը[2] գրում է, թէ ինքն իսկ Սարկաւագն «իր խօսքովը... գրուածքի մը մէջ» ասում է իր մասին. «Ի նախնեաց բարեպաշտից եւ յիմաստուն ծնողաց բուսեալ, որք սնուցին զիս օրինօք հոգւոյն կենաց՝ առնել քան ըստ բնութեան տածիւք խնամս յառ մանկունս. որովք յառաջնումն հասակին դաստիարակեալ՝ յոյս տայի քաջութեան»[3]: Յովհաննէսի ծնողներն, ուրեմն, առանձին խնամքով սնուցել եւ դաստիարակել են իրենց որդուն, ներշնչելով նրան բարեպաշտութիւն եւ գիտութիւն, անպայման եւ հայրենիքի ու Հայ ժողովրդի սէր: Նա մանուկ հասակից արդէն իր բնատուր շնորհքով յոյսեր է տուել իր ապագայի համար: Ուսումը կատարելագործելու նպատակով, անշուշտ ծնողների որոշումով, նա մտել է Հաղբատի վանքը:

Յովհաննէսի մանկութեան եւ պատանեկութեան տարիներին Հայաստանի ամենադժբախտ ժամանակն էր: Հայկական իշխանութիւններն իրար ետեւից ընկնում էին, եւ երկիրը մատնւում էր աւերմունքի: Բայց Հայաստանի հիւսիս–արեւելեան կողմերը, ուր տիրում էին հայ Թագաւորներ և իշխաններ, ապա եւ Վրաց Թագաւորները, ընդհանրապէս դեռ խաղաղ էին մնում: Կենտրոնական Հայաստանում վանքերը հետզհետէ խափանւում էին. ուսումն ու գիտութիւնն եւս աւերուող քաղաքներից փախչելով՝ ապաստանում էին երկրի համեմատաբար ապահով վայրերում, լեռնային ամուր եւ խուլ անկիւններում: Այստեղ դարձեալ վանքերն էին դառնում դրականութիւն մշակող: Սանահնի ու Հաղբատի վանքերը, որոնք հիմնուած էին 10րդ դարում, վայելելով Հայոց Բագրատունի Թագաւորների, հետագայում նաեւ Վրաց Թագաւորների առանձին խնամքը, նուէրներով հարստացել ու դարձել էին ոչ միայն բազմաթիւ կրօնաւորների եղբայրանոցներ, այլ միաժամանակ նաեւ լուսաւորութեան կենտրոններ իրենց անուանի ղրագէտ վարդապետներով: Սկզբում Սանահնի վանքն է հռչակւում իր դպրոցով եւ գիտուն վարդապետներով, որոնցից Անանիա Սանահնեցին նշանաւոր է հանդիսացել իր գրական երկերով[4]: Սանահնից յետոյ սկսում է բարձրանալ Հաղբատի վանքը:

---

1 Անդ, էջ 256:

2 Յուշիկք հայրենեաց Հայոց, Գ. Մ. Ալիշանի, Բ. հատոր, Վենետիկ, 1870, էջ 284:

3 Այս ցիտատը բերում է եւ Զարբհանալեանը «Հայկ. հին դպր. պատմ.» մէջ, աղբիւրը ցոյց տալով «ուրիշ տեղ մը» անորոշ բառերով ըստ հին վենետկեան սովորութեան: Հետաքրքիր է իմանալ, թէ Սարկաւագ Վարդապետն իր ո՛ր գրուածքի մէջ է գրել այն:

4 Հաղբատ եւ Սանահին վանքերը (967–1300). Եր. ս. (Երուանդ ս. Տէր-Մինասեան), «Արարատ» ամսագիր, Էջմիածին, 1901, էջ 271–277, 338–344:

Տուղրիլ եւ Ալփասլան սուլթանների վայրագութիւններն արգելք չեն լինում, որ մեր պատանի Յովհաննէսը Հաղբատի (դուցէ եւ Սանահնի) վանքի խաղաղ անկիւնում ուսումը պարապէր եւ զարգացնէր իր ընդունակութիւնները: Նա այնտեղ խորը հմտանում է իր ժամանակի ոչ միայն եկեղեցական, այլեւ արտաքին գիտութիւններին, ինչպէս եւ ճարտասանութեան ու քերթողութեան, եւ դառնում է մի շատ գովելի անձ իր ձեռ բերած ուսումով: Նա մնում է նոյն վանքում իբրեւ կրօնաւոր եւ իր անխոնջ գործունէութեամբ ու հռչակով բարձրացնում է իր վանքի անունը:

Երեւի, ինչպէս կարծում են, Յովհաննէսը վաղ տարիքում ստացել է սարկաւագութեան եկեղեցական աստիճանը, եւ երեւի երկար իբրեւ սարկաւագ է մնացել. ուստի եւ «Սարկաւագ» յորջորջը մնացել է նրա վրայ իբրեւ սովորական անուն: Նա բնականաբար ունէր նաեւ ժամանակի գիտական աստիճանը՝ վարդապետութիւն, որով եւ սովորաբար կոչւում է «Սարկաւագ Վարդապետ»: Նրան անւանում են նաեւ՝ «Իմաստասէր», «Մեծ Սոփեստէսն Հաղբատայ»: Նրա գերեզմանը, որ ցայժմ մնում է Հաղբատի վանքում, ունի այս տապանագիրը. «Արձանս այս՝ նշմարան է[1] Սոփեստոսի Սարկաւագի»: Այս «սոփեստոս» բառն առնւում է, հարկաւ, իր հին յունական լաւագոյն իմաստով՝ իբրեւ իմաստուն, գիտուն, գիտնական, այլեւ ճարտասան, ճարտասանութեան ու փիլիսոփայութեան ուսուցիչ: Նա իր բանաստեղծութեան մէջ, որի մասին ներքեւում կը խօսուի, ինքն իրեն անւանում է «կիսակատար իմաստակ», այսինքն կիսակատար սոփեստէս: Շատ պարզ է, որ այս «Իմաստասէրն» ուսումնասիրել է նաեւ իմաստասիրութիւն: Թէ այսպիսի բովանդակութեամբ երկեր էլ յօրինել է նա, թէ չէ, այդ չգիտենք: Նրա մահից մօտ հարիւր տարի յետոյ ծնուած, շատ տեղեկութիւնների գիտակ պատմագիրը[2] նրա մասին գրում է. «Յոյժ իմաստուն էր այրն եւ աստուածային շնորհօք զարդարեալ. սորա բանքն ամենայն իմաստասիրական ոճով, որպէս զԳրիգորի Աստուածաբանի, եւ ոչ գեղջուկ»: «Մեծիմաստն գիտութեամբ քան զյոլովս եւ հանճարեղն յամենայնի՝ մատհարուստն Յոհաննէս, Սարկաւագ կոչեցեալ», մեր այն վարդապետներից է, որ երբեք չի գոհացել իր իմացածով, այլ յարաջան աշխատելով ձգտել է նորանոր գիտանքներ ձեռք բերելու: Եւ ի զուր չէ, որ նրա աշակերտ Սամուէլ Անեցին, առանց նրա անունը տալու, պարզապէս կոչում է նրան «Վարդապետն մեծ», «Իմաստասէրն», «Իմաստասէրն աստուածային», իսկ աւելի ուշ՝ Կիրակոս Գանձակեցին մի տեղ նրան յիշում է լոկ «Աշխատասէրն» մականունով: Նա ինքն էլ ներքեւում մէջբերուած իր բանաստեղծութեան մէջ իր մասին գրում է, թէ ուսման ու գիտութեան համար շատ տարիներ գիշեր ցերեկ դեգերել ու տքնել է: Վերջերս յայտաբերուած մի հին յիշատակարան[3] նրա մասին գրում է.

1 Այսինքն՝ յաւիտենական կեանքի մուտքի «սեամն», շեմակալն է, որի վրայով պիտի անցնել հանդերձեալի մէջ մտնելու համար:

2 Պատմութիւն Հայոց Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ, Թիֆլիս, 1909, էջ 104 եւ հտն.:

3 Տե՛ս Երեւանի Պետ. Համալսարանի «Գիտական աշխատութիւններ», հատոր XIII, Երեւան, 1940, էջ 410—414. Աբ. Մովսիսեանի «Հայագիր դպրոցի ծագումը եւ նրա հետագայ վիճակը» յօդուածի մէջ:

«Սա ի մանկական անուէ տիոց մինչեւ ցվերջին որոշումն հոգւոյն յերկրորդէն [յերկրէն?] ոչ երբեք չեղեւ սայթաքեցոյց երբեք զուշ ոգւոյն ի նպատակէ ընթերցման· ուսանելոյ եւ ուսուցանելոյ, գրելոյ եւ ընթեռնլոյ, հըսկելոյ եւ աղօթելոյ, զտիւ եւ զգիշեր արտաքոյ ամենայն զբաղմանց եւ վայրաքարշ իրաց»:

Կիրակոս Գանձակեցին (էջ 107 եւ հտ.) պատմում է նրա ընթերցասիրութեան մասին հետեւեալ զրոյցը· «Այնպէս փոյթ էր այրն յուսումն, զի պատահեաց յաւուր միում գնալ նմա յայրն, ուր գրեանն էին, եւ այլք ընդ նմա: Իբրեւ ելին՝ որ ընդ նմայն էին, եւ փակեցին զդուռն, նա թաքոյց զանձն ի ներքս, այսպէս գիտելով նոցա՝ եթէ նախ ել նա: Իբրեւ անցին աւուրք բազումք ի վերայ, դարձեալ գնացին յայրն ի պէտս ինչ, տեսին զնա եւ սքանչացան: Հարցանէին զնա, թէ՝ «Ո՞րպէս ապրեցար առանց կերակրոյ եւ ըմպելոյ»: Եւ նա եցոյց նոցա զգրեանն, զոր ընթերցեալ էր, եւ «Այս է, ասէ, իմ կերակուր եւ ըմպելի, զոր կերայ եւ արբի զաւուրս զայսոսիկ»:

Այսպիսի անդուլ աշխատանքով նա դառնում է բազմակողմանի հմտութիւնների տէր, մեծ գիտնական, փիլիսոփայ մատենագիր, տոմարագէտ, պատմագիր, ճարտասան հեղինակ կրօնական ներբողների, միաժամանակ եւ բնական գիտութիւններով պարապող ու բանաստեղծ: Նրա գիտնականութեան հետ բնականաբար մեծանում է եւ նրա իմաստութեան համբաւը եւ նիւթ դառնում զրոյցների: Նա մենակ չէր· միաժամանակ կային եւ ուրիշ գիտնական վարդապետներ—նրա ընկերները: Նրանցից յիշւում են՝ Ալաւկայ որդի Դաւիթ, Թոքակերի որդի Գրիգոր· բայց Սարկաւագ Վարդապետն ամենից բարձր էր: Այս երեքն էլ, ասում է Կիրակոս Գանձակեցին, «էին յաշխարհէն Գանձակայ»: Եւ ապա (էջ 107) բերում է, երեւի Գանձակում լսած, հետեւեալ զրոյցը· «Դէպ եղեւ զի յաւուր միում նստէին երեքեան արքս սքանչելի, եկն անդ ոմն չինական այր մի եւ ասէ ցնոսա· «Երանի՛ որ գիտէ ո՞ իմաստնագոյն իցէ»: Զայս իբրեւ ծաղրական ասաց: Պատասխանի ետ Թոքակերի որդին եւ ասէ· «Ես ասեմ քեզ· մինչդեռ էաք ի մերում աշխարհին, ես կորող էի եւ կարող· իսկ Սարկաւագս՝ կարել միայն գիտէր: Իսկ այժմ սա կարէ եւ կարէ, եւ բազում նկարս յաւելու ի վերայ»: Զայս առակաբար վասն իմաստութեան նորա ասաց»:

Նա իր շնորհքն ու մեծ պատրաստութիւնն ամուլ չի թողնում· բացի այն, որ աշխատասիրում է շատ գրուածքներ, այլև անտարբեր եւ անհոգացող չի մնում ժամանակի հրատապ խնդիրների վերաբերմամբ: «Սա զբազմաց փափաքելին, եւ ո՛չ ձեռնհաս, զհաստատ եւ զանշարժ տոմարն կարգեաց Հայոց՝ փոխանակ շարժականին եւ անհաստատանոյն· արար եւ միաբանութիւն ամենայն ազգաց տոմարի ընդ Հայոց»[1]: Հայկական տոմարի այս կարգաւորութիւնը Սարկաւագ Վարդապետի նշանաւոր գործերից մէկն է: Հայոց թուականը, որ սահմանուած էր Մովսէս կաթողիկոսի օրով, սկսւում է 552 տարեթուից եւ շարժական էր: Տարին հաշւում էին միշտ միայն 365 օր: Նահանջ տարի չկար, որ չորս տարին մի օր աւելի հաշուէին, եւ տարին

1 Անդ., էջ 104:

ունենար 366 օր։ Տոմարի այս թերութիւնը չփոթութիւնների տեղիք էր տալիս։ Արդ՝ Սարկաւագ Վարդապետի ձեւով 1084 թուականից ընդունւում է անշարժ տոմարը նահանջ տարով։ Բացի այդ՝ տարեգլուխը կամ Նաւասարդի մէկը, որ տարիների ընթացքում Յուլիսի 11ից դէպի ետ չարժուելով՝ 1084 թ. ընկնում էր Փետրուարի 29ին, ըստ «սարկաւագադիր» անշարժ տոմարի՝ նշանակւում է Օգոստոսի 11ին[1]։

Սարկաւագ Վարդապետի հոգացողութեան առարկայ են դառնում ժամանակի համար կարեւոր ուրիշ խնդիրներ եւս։ Այսպէս, օրինակ, նա բանասիրական աշխատանքներ է անում, պարզելով եւ դիւրիմաց դարձնելով հին իմաստասիրական գրուածքները, աշխատելով ձեռք բերել ստոյգ օրինակներ ոչ միայն արտաքին կոչուած երկերի, այլեւ կրօնականների համար[2]։ Սաղմոսների թարգմանութիւնը փոփոխութեան է ենթարկուած եղել կամ աղճատումով, կամ այլեւայլ թարգմանութիւններով։ Այդ դրութիւնը շփոթութեան առիթ է տալիս եղել։ Սարկաւագ Վարդապետը դրա առաջն առնելու համար՝ Հաղբատի վանքի գրանոցում որոնելով գտնում է հին թարգմանիչների գրած մի Սաղմոսարան եւ արտագրել տալով տարածում Հայաստանի բոլոր կողմերը, որպէսզի ամէն տեղ միատեսակութիւն լինի այդ երգերի նկատմամբ։ Եւ ուրիշ այսպիսի հոգացողութիւններ։

Նրա գործերից ամենակարեւորը, սակայն, եղել է այն, որ նա իբրեւ վարդապետ միշտ յօժար է եղել ուսուցանելու. սիրով գրաւոր պատասխանել է ուրիշների տուած հարցերին եւ, որ գլխաւորն է, ուսուցչութիւն է արել եւ պատրաստել է բազմաթիւ աշակերտներ, որոնց մի քանիսի գրական աշխատութիւնները դեռ մնում են։ Նա իր այս ժրաջան աշխատանքով մեծացրել է Հաղբատի դպրոցի անունը եւ, կարելի է ասել, որ ինքը պատճառ է դարձել այդ վանքի գիտական եւ ուսումնական փառաւոր համբաւի։ Նա ուսուցել է եւ Անի քաղաքում. վերեւում յիշուած հետաքրքիր ձեռագրի մէջ[3] Սարկաւագ Վարդապետի համար պատկերաւոր ձեւով գրուած է նաեւ հետեւեալը. «Որ իբրեւ զիմաստուն մեղու՝ բարձեալ յանդամս մտաց զծաղիկս յերանգոց գունոց հոտոց եւ համոց՝ բերէր ի քաղաք իւր եւ տեղի սննդեան ի քաղաքամայրս Անի, եւ լի առնէր զտունն ի փարթամութենէ անտի... Շուրջ բակ բոլորեալ զմանկունս զիւրեաւ խոնարհաբար եւ ախորժելի սիրով ուսուցանէր զխրթին եւ զխորին իրս»։ Այս դպրոցում նա ուսուցել է նաեւ քերականութիւն, թուաբանութիւն եւ այլ առարկաներ։

Այսպիսի բազմակողմանի ու բեղմնաւոր գործունէութեան համար՝ ինքն, այս մեծ վարդապետը, վայելել է մեծ յարգանք ամէնքից։ Այս «Վարդապետն սուրբ», — ինչպէս կոչում է նրան Սամուէլ Անեցին, —իբրեւ կրօնաւոր եւս յայտնի է եղել իր «բարուոք քաղաքավարութեամբ» — կենցաղավարութեամբ։ Նոյնիսկ զրոյցներ են պատմել նրա սրբութեան մասին[4]։ «Կարի յոյժ սիրէր զնա թագաւորն Վրաց Դաւիթ... այնքան զի մինչ լսէր

1 Օրմանեան Մաղաքիա արքեպիսկոպոս, «Ազգապատում», Կոստանդնուպոլիս, 1912, էջ 569–574, 1306–1309։

2 Ղ. Ալիշան, Յուշիկք հայրենեաց Հայոց, հատոր Բ., Վենետիկ, 1870, էջ 286 եւ հտն.։

3 Տես նախորդ ծանօթութիւնը։

4 Կիր. Գանձ. Պատմ. Հայոց, էջ 405 եւ հտ.։

*զգալուստ նորա, յառն յանէր ընդ առաջ նորա, եւ խոնարհեցուցեալ զգլուխըն՝ խնդրէր ի նմանէ օրհնութիւն»*[1] :

2· Երկերը :—*Բազմաթիւ եւ ըստ բովանդակութեան բազմազան են եղել Սարկաւագ Վարդապետի գրական գործերը, որոնք մեծ մասամբ չեն տպագրուած, մասամբ երեւան չեն եկել, կան այնպիսիներն էլ, որոնցից հատուածներ են միայն յայտնի : Նա յօրինել է ներբողեաններ, մեկնութիւն, ճառեր, տաղեր, չարականներ, աղօթքներ, տոմարական աշխատութիւններ, խրատներ («Բան խրատու առ ուսումնասէրս»), տիեզերագիտական եւ ուրիշ բնագիտական գրուածքներ, փիլիսոփայական, բարոյագիտական երկեր եւ այլն*[2] :*Ցաւօք ցաւալի է կորուստը նրա յօրինած Պատմութեան (ըստ երեւոյթին՝ երկու գիրք), որ յիշատակում են հետագայ գրողները, եւ որից հատուածներ է մէջ բերում Սամուէլ Անեցին*[3] : *Նա գրած է եղել Սելջուկների պատմութիւնը սկզբից սկսած : Տուղրիլի վերջին տարիներում, ինչպէս եւ Ալփասլանի ու Մելիքշահի օրով կատարուած դէպքերին նա ժամանակակից է եղել : Մեզ հասած հատուածների մէջ ցոլանում է նրա վերաբերմունքն իր պատմած եղելութիւններին եւ նրա ճարտար ու բովանդակալից շարադրութիւնը՝ պարզ, մշակուած եւ արուեստաւոր, միանգամայն և ազնիւ ոճով : Աւելորդ չի լինի այստեղ բերել այն կտորը, որով նա բնութագրում է Մելիքշահին : «Իբրեւ առնոյր զփառս իշխանութեան բարերարդն Մելիքշահ զկնի հօրն մահուան՝ Ալփասլան կոչեցելոյն, մեծապէս կարգօք յօրինէր զթագաւորութիւնն ըստ անուանն արդարեւ եղեալ արքայ արքայից : Ոչ հետեւեալ հօրն բարուց եւ կամաց, այլ յաւէտ մանաւանդ ընդդէմն ախորժեալ · մինչ զի եւ մտահաճ եղեալ զնորայն բառնէր զխմացմունս, իբրեւ եղեալ հակառակ խաղաղութեան եւ կենաց մարդկան՝ արեամբ եւ զրկմամբ խանդացեալ : Իսկ ինքն իմաստաբար քաղաքավարութեան կարգօք պատրաստէր զամենայն : Արդ՝ խոհեմն այն եւ արի քան զյոլովս ի թագաւորաց եւ քան զամենեսեան որ առ մեօք՝ ոչ այնքան ատնէր հող՝ որքան արդարութեամբ առ ամենեսին վարիլ · զի մի՛ ոք լիցի արտաքս ի զրկելոց, եւ հպարտ՝ ի զոռոզաց : Էր եւ ազատաբարոյ եւ մեծախորհուրդ · այլ եւ տեսիլ մարմնոյն արժանի թագաւորութեան · ընդ որում հեզութիւն ի քաղցրութիւն բարուցն լծակցեալ՝ առնէր սիրելի ամենեցուն · զոր միայն կոչեցից թագաւոր եւ փարթամ : Սա ի դոյն ժամանակի փոքր ինչ նուազ զբոլորս հնազանդէր տիեզերս, զորս այլք ի թագաւորաց ի բազում ժամանակս եւ կամ ո՛չ բնաւ : Բայց ո՛չ այնքան պատերազմաւ եւ բռնութեամբ, որքան սիրով եւ քաղցրութեամբ : Զի թէ սակաւ ժամանակաւ այնքան զօրեաց, կարծեմ թէ եւ ոչ Ներոպէ կարէր ոչ տալ*

---

1 *Անդ, էջ 105*:

2 *Ղ. Մ. Ալիշան, Յուշիկք հայրենեաց Հայոց, հատոր Բ., Վենետիկ, 1870, էջ 278—307; «Սարկաւագ Սոփեստէս», էջ 299-300*:

*Գ. Զարբհանալեան, Հայկ. հին. դպր. պատմ., Վենետիկ, 1897, էջ 609—616*:

*Հ. Ոսկեան, «Յովհաննէս Սարկաւագի գրութիւնները», «Հանդէս Ամսօրեայ», Վիեննա, 1925, էջ 118-126, 233-247: Անդ, էջ 27—39՝ «Յովհաննէս Սարկաւագի կեանքը», նոյն հեղինակի*:

3 *Սամուէլ քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 97 եւ հտ., 119 եւ հտ.*:

մուտս արքայութեան նորա, եթէ յոլովեալ էին կենաց նորա ժամանակք»: Նրա մահից յետոյ,— ասում է,— «անպատմելի եղեւ խռովութիւն ամենայն ազգաց ... Եւ այսպէս բարիքն ի բաց վճարեցան ընդ խզման կենաց Թագաւորին. որոյ երկք եւ աշխատութիւնք Թագաւորական ուրոյն, եւ ջահն եւ օգուտն՝ հասարակաց ամենեցուն, մեծամեծքն եւ ընտրելիքն, մանաւանդ զխաղաղականն ասեմ զկեանս, եւ զանկարօտս եւ զանհակառակս»:

Այս մեծ հեղինակի գրական դէմքը լիովին կը պարզուի, երբ նրա բոլոր երկերը, ինչ որ մնացել է, կը հաւաքուեն եւ իսկական գիտական եղանակով կը հրատարակուեն ու բազմակողմանի կ'ուսումնասիրուեն: Այն ժամանակ մենք կը տեսնենք նրա հայեացքները, թէ ինչպէս նա իր լուսաւոր մտքով յաճախ բարձր է կանգնած եղել միջնադարեան թանձրամած խաւարից, մի խռովախնդիր ու որոնող ոգի, ձգտող իրերը բնական ձեւով բացատրելու, մաքառող ընդդէմ սնահաւատքի կամ, ինչպէս ինքը գրում է, «առասպելական, ստութեան», «յիմարների կարծիքների»: Ալիշանը[1] նրա գրուածքներից,— ցաւօք դարձեալ առանց յայտնելու, թէ նրա ո՛ր երկերից,— բերում է երկու ցիտատ՝ ասելով, թէ ինքը Սարկաւագ Վարդապետն ուսումնական բաներ սովորելու եւ գրելու համար յայտնապէս պահանջում է, թէ «Ամենեւին բազմահմուտ պարտ է գոլ ձեռնարկողին այսմ, ոչ միայն սրբոց եւ աստուածաշունչ գրոց, այլ եւ արտաքնոց»: Ուրեմն պէտք է տիրապետել ժամանակի ամբողջ գիտութեանը: Բայց այդքանն էլ դեռ բաւական չէ. նա պահանջում է նաեւ փորձով ստուգել գիտցածը. «Դարձեալ թէեւ սոքօք [կրօնական եւ արտաքին գիտութիւններով] կիրթ եւ վարժ, առանց փորձի՝ կարծիքն հաւատարմանալ ոչ կարասցեն. եւ փորձն՝ հաստատուն եւ աներկբայ...վասն զի ոչ է պարտ միայն հնագիտակ [=հին բաներն իմացող] լինել, այլ եւ ինքնաբաւ [=ինքն իրեն բաւական, ուրիշի անկարօտ] ըստ շնորհացն Աստուծոյ»: Ահա թէ Սարկաւագ Վարդապետը որպիսի արժէք է տալիս փորձին: «Առանց այսպիսի հնարից գրող կամ խօսող գիտնոց խելքը՝ մեղադրելով կ'անուանէ. «Խօլ հանճար՝ անհանճարիցն», — աւելացնում է մեր բազմահմուտ բանաստեղծ-բանասէրը եւ շարունակում. «Արդ անտարակուսաբար կրնանք ըսել որ Սարկաւագ Վարդապետ շատ մեծ արդիւնք ունեցաւ այսպիսի ջանքով եւ գործերով, որոց բովանդակութիւնն է՝ ըլլալն իր ժամանակին եւ երկրին մէջ նորոգող ուսմանց եւ ընտիր ախորժակ մտցնող ինչ որ ԺԵ. դարուն մէջ սկսան Եւրոպացիք՝ ինքը մետասաներորդին սկսեր էր, կամ թէ իրեն ժամանակակից դպրոցական ըսուածներուն հետ»: Այս բնորոշումը շատ ճիշդ է: Արդարեւ Բագրատունի Թագաւորների օրով արդէն, Անիում, ինչպէս տեսել ենք, մեծ ձգտում եւ ջանք կար գիտութիւնը նորոգելու հայերի մէջ եւ այդ ձգտման ու ջանքի ներկայացուցիչն էր Գրիգոր Մագիստրոսը, բայց իսկական կատարողը, գլուխ բերողը եղել է Սարկաւագ Վարդապետը: Նա շարունակել է Անի քաղաքի գործը, անպայման նաեւ այս քաղաքի ազդեցութեամբ, քանի որ նա ամենայն հաւանականութեամբ վաղ մանկութեան ժամանակ, ծնողների հետ տեղափոխուել է Անի, այնտեղ մեծացել ու սնուել եւ այնտեղ ուսումն ու գիտութիւն ամբարել իր գլխում:

1 Յուշիկք Հայրենեաց, Բ., էջ 295:

*Ուստի եւ անհիմն չէ այն, որ Վրաց Թագաւոր «Դաւիթ Շինողի պատմիչը (12-րդ դ.), խօսելով 1123–1125 թուերի միջոցին Թբիլիսիում գումարուած հայ-վրացական եկեղեցական ժողովի մասին, նշում է, որ ժողովին հայերի կողմից ներկայ էին «բազմաթիւ եպիսկոպոսներ եւ վանքերի առաջնորդներ, որոնք պարծենում էին նրանով, թէ ինչպէս հասել են ամենայն ուսմանց եւ գիտութեան գագաթնակէտին»:[1] Դա հայկական վերածնութեան առաջին փուլերի արգասիքն էր, բայց միայն այդ չէր: Ապագան անշուշտ կը յայտաբերի Սարկաւագ Վարդապետի գրական վաստակի ուրիշ կողմերն եւս եւ նրա լուսապսակ դէմքն աւելի եւս կը պայծառանայ: Մինչ այդ՝ կանգ առնենք նրա երկու գործի վրայ եւ որոշենք սրանց արժէքը մեր տեսակէտով:*

3. Հայրենասիրական գաղափարախօսութիւնը:— *Ինչպէս վերեւում ասուեց, Սարկաւագ Վարդապետը ժամանակակից էր սելջուկեան թուրքերի, «արիւնախանձ Ալփասլանի» եւ ուրիշների խժդժութիւններին եւ գրել էր նրանց պատմութիւնը: Թէ ինչպէս են դրանք անդրադարձած եղել նրա Պատմութեան մէջ, եւ ինչպիսի զգացումով է վերաբերուել նա իր պատմած աղետալից իրակութիւններին եւ արդեօք նա էլ ողբեր յօրինե՞լ է իր պատմածների առթիւ, մենք այդ չգիտենք: Բայց որ իր ժամանակի թշուառութիւնը նրա մէջ եւս զօրացրել է հայ հայրենասիրական ոգին, այդ հաւաստի է: Արիստակէս Լաստիվերտցին, հարկաւ, մենակ չի եղել իր հայրենասիրական ցաւով. նա ներկայացուցիչն էր իր ժամանակի մարդկանց, որոնք լցուած էին նման զգացումով: Եւ այդ բնական է. ընդհանուր թշուառութիւնը մարդկանց միացնում է մի ընդհանուր կապով: Զարթնում եւ աճում է ազգային ինքնագիտակցութիւնը. համազգային հայրենասիրութեան գաղափարն ու զգացումը, ծնուելով ժողովրդի դառնաղէտ վիճակից՝ հետզհետէ ընդհանրանում է, ազգային միութեան օղակներից մէկը դառնում, անբաժան մնալով թշուառ ու տանջուող ժողովրդի վիճակի արտահայտութիւնից, — ահա թէ ի՛նչն է կազմում վերածնութեան շրջանի նոր ողբերգութեան էութիւնը սկզբում: Քաղաքական կեանքի, հին անկախութեան եւ ազատութեան, ժողովրդի բարեկեցութեան կորուստը, ժողովրդի հայրենաթափ լինելն ու ցրուելը, նախ այս են ողբում Լաստիվերտցու հետ մեծ աղէտից ցնցուած ու խելաթափ:*

*Բայց երկրորդ սերունդն արդէն ուշաբերում է. լոկ ողբը բաւական չէր: Եւ ահա ծնւում է ցրուած հայ ժողովրդին ի մի հաւաքելու եւ փրկելու ձգտումը որոշ գաղափարախօսութեամբ, որի առաջին արտայայտիչը գրականութեան մէջ՝ է մեծիմաստ Սարկաւագ Վարդապետը: Կիրակոս Գանձակեցին (էջ 105) հաղորդում է նրա մասին. «Սա գրեաց ճառս ներբողականս ի մեծազօր արքայն Տրդատ, ի սուրբ հայրապետն Ներսէս, եւ ի սքանչելին Սահակ եւ Մեսրոպ. արար շարական Ղեւոնդեանցն քաղցր եղանակաւ եւ յարմար բանիւ, որոյ սկիզբն է այս՝ Պայծառացան այսօր սուրբ եկեղ. գրեաց եւ նոցա ճառս ներբողականս»: Նրա անունով մնում է եւ մի ներբողական*

---

1 *Լ. Մելիքսէթ-բէկ, Յովհաննէս Սարկաւագ Վարդապետ Հաղբատացու «Վասն շարժման եւ տատանութեան երկրի», ՍՍՌՄ Գիտ. Ակադ. Հայկ. Ֆիլիալի «Տեղեկագիր», սերիա* I, No *1, Երեւան, 1943 թ., էջ 76:*

*Լուսաւորչի, «հաճոյական ոճով եւ կիրթ հանճարով յօրինուած»:*[1] *Որ Սարկաւագ Վարդապետը ճառ, ներբողեան ու շարական յօրինել է Հայկական պատմական անձերի վրայ, կարելի է ասել, որ դրանցով յիշեցնելով Հայ անցեալը՝ նա ցանկացել է խրախուսել արտաքին մարդկանց: Ի պատիւ Ղեւոնդեանց ոդած հոգեւոր երգի*[2] *մէջ նա գրում է. «Հեզմամբ արեան սրբոց քոց հօտապետաց եկեղեցւոյ քոյ ցրուեալ մանկունքս ժողովեա՛ յուրախութիւն, ըղձալրատեալս տրամութեամբ եւ արտասուաց յորդահոս բղխմամբ փրկութեան մերոյ պարգեւաց բաշխօ՛ղ»: Նա խնդրում է, ուրեմն, որ Աստուած հայ եկեղեցու ցրուած մանուկներին, տրամութեամբ եւ յորդահոս արտասուքով վարատուածներին (իրենց տեղից, երկրից քշուած, ցիրուցան եղածներին) ժողովի ուրախութեամբ եւ փրկի: Ցրուած հայ ժողովրդին հաւաքելու այս տենչն ու ձգտումն ահա դառնում է մի նուիրական իղձ ու աղօթք եւ շատ վաղ, Լատինվերացու կրտսեր ժամանակակցի, Սարկաւագ Վարդապետի ձեռով մտնում մեր ժամերգութեան մէջ: Այդտեղ դեռ չկայ քաղաքական անկախութեան խնդիր, այլ միայն տառապանքից ազատուելու եւ Հայաստանում մնալու մի իղձ է այդ:*

*Սարկաւագ Վարդապետի այս աղօթքը շատ փոքր, իր ձեւով շատ համառօտ ու հեռաւոր բան է. բայց իր բովանդակութեամբ մեծ ու վսեմ է եւ անկեղծօրէն բխած լինելով իրականութիւնից, խորն ազդու է մանաւանդ երբ իր «քաղցր եղանակով» երգւում էր եկեղեցում տառապեալ հաւատացեալներից, առանձնապէս նրանցից, որ դեռ երկար դարեր զգում էին իրենց վարատուած լինելը եւ աչքերը կարօտով դարձնում էին դէպի իրենց բնիկ երկիրը՝ Հայաստան:*

*Այսպէս՝ մեր* բանաստեղծութիւնը, *կրօնական զգացումից եւ հայրենասիրական ոգուց յետոյ, գտնում է արդէն իր կարեւոր եւ մեծ թեմաներից մէկը, որ այլեւս կրօնական չէ: Ճիշդ է, դրա տոնը դեռ շատ տխուր է, բայց դա այլեւս ողբ էլ չէ, այլ մի նոր բովանդակութեամբ ու նոր ոգով մի երգ է, դարձեալ հայրենասիրական: Եւ այսպիսի զարգացումը բնական էր. խիստ կրօնականից մի անգամով թռիչք չէր կարելի անել դէպի մաքուր աշխարհականը, աշխարհիկ կենցաղն ու սէրը, քանի որ բանաստեղծները դեռ հոգեւորական էին, իսկ հայրենասիրութիւնը նաեւ սրանցն էր: Այսպիսի հայրենասիրական թեման միաժամանակ եւ այն դարի պահանջն էր: Եւ քանի որ հայ ժողովրդի վիճակը նոյնն է մնացել 11–րդ դարից մինչեւ առ ի 20–րդ դարի առաջին երկու տասնամեակները, քանի որ կրկնուել են կոտորածներն եւ ժողովրդի վտարանդումը, ուստի եւ այդպիսի թեմայով երգը, անգամ աղօթքը, յարատեւել եւ կրկնուել է մինչեւ 19–րդ դարում եւ դէպը: «Իմ սիրելի զաւակունքս կը թափառէն օտար աշխարհ...». «Եկայք, որդեակք իմ սիրելիք...». «Մեր հայրենիք զիս կու կանչէ...». «Մինչ իմ որդիք, ո՛վ գիտէ՛... օտար աշխարհ յածում են», ահա 19րդ դարի երկրորդ*

1 «Քահանայութեան ճառք, ինչպէս նաեւ ներբողական գովեստք ի ս. Լուսաւորիչն եւ ի Թարգմանիչս եւ Աղօթամատոյցն հրատարակեալ են ի Վենետիկ ի շարս Հայկական Սոփերաց 1853 թ.»: Զարբհ., Հայկ. գպր. պատմ., Բ., էջ 613, ծանօթ., այլեւ էջ 612:

2 Շարական հոգեւոր երգոց, Էջմիածին, 1861, էջ Բ., «Յովհաննէս Վարդապետն Սարկաւագն զՂեւոնդեանց Դ.Զ մանկունք՝ զՊայծառացար այսօրն»: Տե՛ս էջ 581:

կէսին սիրուած երգերի ընդհանուր կողմը: Դա իր բովանդակութեամբ մի ամբողջ գրական տեսակ է, որ իր սկիզբն առնում է Սարկաւագ Վարդապետի այն բառ երեւոյթին աննչան հոգեւոր երգից:

4. «Բան իմաստութեան»: Արուեստի ծագման նոր տեսութիւնը:—Սարկաւագ Վարդապետի բանաստեղծութիւններից մնում է միայն մէկը՝ «Բան իմաստութեան ի պատճառս զբօսանաց առ ձայն որ զազօթանոցաւ Նորա ճռուողէր քաղցրաձայն որ կոչի սարիկ»:[1] Այս մեծ (188 երկայն տողերով) քերթուածն իր ձեւով ու բովանդակութեամբ մի նշանակալից նորութիւն է մեր հին գրականութեան մէջ: Եթէ դա պատահմամբ փրկուած չլինէր կորստից, մեր նոր մտաւոր հոսանքի զարգացման տեսութիւնը թերի կը մնար: Եւ ո՞վ գիտէ՝ քանի՛ այդպիսի արժէքաւոր բանաստեղծութիւններ ոչնչացել են:

Այս երկն իր նիւթով՝ բանաստեղծի եւ սարեկ թռչունի միջեւ փոխանակուած մի տրամախօսութիւն է, որի մէջ թռչունը ներկայացուցիչն է արտաքին բնութեան:

Թեման՝ արուեստի ծագման խնդիրն է, յատկապէս երաժշտութեան ու բանաստեղծութեան, որոնք երկուսը հնումն սերտ կապուած են եղել միմեանց հետ. բանաստեղծը երգի՝ ե՛ւ խօսքերը, ե՛ւ եղանակը յօրինողն էր, ե՛ւ երգողը, այսինքն կատարողը: Այսպիսի ստեղծող է եղել եւ Յովհաննէս Սարկաւագը, որ ինքն այս քերթուածի մէջ իրեն անուանում է սարեկի արուեստակից, այսինքն՝ երգիչ: Նա արուեստի ծագման մասին մի նոր տեսութիւն է առաջ բերել: Մինչդեռ ըստ հին կրօնական հայեացքի՝ արուեստի աղբիւրը «յայտնութիւնն» է, նա բանաստեղծութիւնը համարում է բնութեան նմանողութիւն եւ ներբողում է բնութիւնը:

Այսու հանդերձ, նրա այս քերթուածի ամբողջութեան գեղեցկութիւններից մէկն այն է, որ բովանդակութեան առաջխաղացութիւնը լինում է կրօնական առէջքի վրայ, որը, սակայն, երկրորդական տեղն է բռնում: Մի կողմից՝ իր դարից տարբեր եւ անկախ մտածողն է հանդիսանում, միւս կողմից՝ ամէն ինչ պարուրուած է կրօնական պարուտակով, որ բնական է այն ժամանակի համար: Փիլիսոփայ մտածողը գտնւում է իր ժամանակաշրջանի մէջ եւ ոչ նրանից դուրս, եւ այս տալիս է նրա երկին իրականութեան դրոշմ, որով եւ աւելի գրաւիչ է դառնում այն: Խականը կրօնականը ոչ թէ Ս. Գրքից առնուած սակաւաթիւ խօսքերն եւ ակնարկներն են, այլ քրիստոնեաների աչքին կարեւորութիւն ունեցող մի քանի խնդիրներ, — որ են, այսպէս ասած, «յայտնութիւնը», «սկզբնական» կամ «Ադամայ մեղքը», որ իբր ժառանգաբար անցնում է բոլոր մարդկանց, Բաբելոնի աշտարակաշինութեան յանցանքը, — որոնց մասին բանաստեղծի տեսակէտը ծաւալւում է գլխաւոր մտքի, թեմայի հետ զուգընթաց: Առհասարակ քերթուածը հարուստ է զանազան բովանդակութեամբ, առլի է ուրիշ դրոյթներով եւս,

1 Տպագրուած է «Բազմավէպ» հանդէսում, Վենետիկ, 1847, էջ 221 եւ հտն. «Յովհաննու Սարկաւագի իմաստասիրի եւ վարդապետի ասացեալ Բան իմաստութեան ի պատճառս զբօսանաց առ ձագն» եւ այլն. մի նախորդող հմտալից յօդուածով՝ «Յովհաննէս Սարկաւագ», որ ունի «Հ. Ղ. Մ.» ստորագրութիւնը, որ է՝ «Հայր Ղեւոնդ Մարգարեան»: Ալիշանի հին ստորագրութիւնը:

որոնք առաջին հայեացքից թւում է թէ կողմնակի խնդիրներ են, բայց դը-րանցով իսկապէս պարզաբանւում է քերթուածի թեման.

Ըստ հին տեսութեան, ինչպէս տեսանք վերեւում, արուեստի աղբիւրը «յայտնութիւնն»[1] է: Արդ՝ դա, ըստ կրօնական հայեացքի՝ այն գիտանքն է, որ Աստուած տալիս է կամ յայտնում է մարդուն այլեւայլ գերբնական միջոցներով, կամ իր երեւալովը նրանց, կամ հրեշտակի միջոցով: Յայտնութիւն է եւ սուրբ աստուածային ներշնչում. այսպէս, օրինակ, կարծում էին, թէ այդ ունեցել են Ս. Գրքը գրողները, ուստի մեկնում այն կոչուել է «Աստուածաշունչ»: Դա մի շատ հին կրօնական հասկացութիւն է. Հոմերեան քերթուածների մէջ էլ աստուածուհին—մուսան է խօսում: Մեր գրականութեան մէջ էլ նոյնը երեւում է. Դաւթակ Քերթողն իր Ողբի սկզբում դիմում է «աստուածային բանի արուեստաւոր հոգուն», ասելով՝ «յօրինեա՛ իմաստս զտխրական երգմունս»: Գրիգոր Նարեկացին էլ դեռ նոյն կրօնական հայեացքն ունի. նա, ինչպէս տեսել ենք, իր Ողբերգութեան մէջ դիմում է Աստծուն, ասելով.

Ընկեցի հողի [=շունչ] քո խառնեալ ի սա,
Շունչ զօրութեան Մեծիդ միայնի
Ի քո՛ ինձ շնորհեալ ստեղծաբանութիւնս:

Իսկ մի ուրիշ տեղ նոյն գրքի մէջ նա գրում է՝ դարձեալ խօսքն ուղ-ղելով Աստծուն.

Ի քէն ազդեցաւ գրել ինձ զսոսին:

Այսպէս, հին կրօնական հաւատալիքով, Աստուած ինքն է խօսել մարգարէների բերանով կամ «ի ձեռն մարգարէից»:

Զգլխի կարծել, սակայն, թէ Սարկաւագ Վարդապետը մերժում է ընդհանրապէս յայտնութիւնը: Այդ դեռ շատ վաղ էր նրա դարի համար, երբ իշխում էր մեծ բարեպաշտութիւնը: Նա ընդունում է կրօնական յայտնութիւններն իբրեւ ճշմարիտ եղելութիւններ եւ իր քերթուածի մէջ յիշատակում էլ է առաքեալներին եկած յայտնութիւնը վերնատանը Հոգեգալստին. «որպէս եւ այլ տնտեսականքն». այսինքն՝ Քրիստոսի մարդեղութեան վերաբերեալ յայտնութիւնները, որոնք ասւում են նաեւ «տնօրինականք»: Նա այդ հին տեսութիւնը չի ընդունում մարդկային արուեստի—երաժշտութեան ու բանաստեղծութեան նկատմամբ:

Ինչ վերաբերում է Սարեկի «բազմանուագ եղանակների պատճառին», այդ էլ, ըստ մեր իմաստասէր Սարկաւագ Վարդապետի, յայտնութիւն է, բայց այլափոխ մի հասկացողութեամբ: Երբ Սարեկն իր արուեստի ծագումը բացատրելու համար՝ ասում է Բանաստեղծին. «Արդ կացի ի բնականին որոյ պարգեւն է յայտնութիւն», այդ կը նշանակի բնականի մէջ մնալու հետեւանքով է տրուել նրան երգելու շնորհքը, կամ նրա արուեստի ներշնչումն «բնականի պարգեւ» է, արդի բառով ասած, բնատուր է: Ուրիշ տեղ էլ

1 «Յայտնութիւն»— Révélation, Offenbarung, otkrovienié (ռուսերէն):

քերթուածի մէջ Բանաստեղծն ասում է, թէ սարեկ, սոխակ եւ այլն «Բնական են պաճուճեալք»: Այս կարգի «յայտնութիւնն», ուրեմն, ուրիշ բան չէ, բայց եթէ մի բնական յատկութիւն: Այստեղ էլ, ուրեմն, Բանաստեղծը չեչտում է բնականը, բնութիւնը, լինի արտաքին աշխարհն իր ամբողջութեամբ, թէ որեւէ էակի յատկութիւնների միահամուռը, իբրեւ նրան իրեն յատուկ բնութիւնը, ընդաբոյս բնութիւնը: Սարեկը երգում է «ըղհայրենին բարբառելով», այսինքն՝ նա երգում է ինչպէս իր հայրերը, ինչպէս իր սեռի թռչնիկներն իրենց ընդաբոյս բնութեամբ:

Մինչդեռ թռչնիկների երգեցողութիւնը բնածին է եւ ոչ-սովորովի, այդպէս չէ մարդկայինը: Մարդս զարգանալով բարձրացել է մտաւորապէս, հեռացել է բնական վիճակից, ընկել է «ոչ-բնաւոր»—ոչ-բնական, անբնական վիճակի մէջ: Հէնց այդ պատճառով նրա արուեստն, ըստ Սարկաւագ Վարդապետի, բնածին չէ, այլ նա այն սովորում է նմանելով բնութեանը, բայց միշտ էլ ցած է մնում բնութիւնից:

5· Յօրինուածքը:— Դժբախտաբար մեզ չեն հասել Սարկաւագ Վարդապետի ուրիշ բանաստեղծութիւնները, որ տեսնէինք, թէ ինչպէս է գործադրել նա իր տեսութիւնը:[1] Բայց հէնց այս միակ քերթուածի մէջ էլ երեւում է, որ նա իբրեւ քերթող գեղեցիկ յօրինել գիտէ: Նախ տեսնենք, թէ նա ինչպէս է անդրադարձրել բնութիւնն ու իրականութիւնն իր այս երկի մէջ: Գրիգոր Նարեկացին էլ, որ դեռ կանգնած է կրօնական հայեացքի վրայ, ունի բնութեան զգացում: Նա բնութիւնն զգում է ներհայեցական—ինտուիտիվ կերպով. նա բնութիւնից վայրկենական տպաւորութիւն ստանալով՝ անմիջական ծանօթութիւն է ունենում նրա մասին եւ այդ, — ինչպէս եւ իր գիտակցութեան մէջ ծնուած մի միտք կամ մի յուշիկ, — արտայայտում է բանաստեղծօրէն ինքնաբուխ եւ արագ ծագած պատկերներով: Այսպէս չէ Սարկաւագ Վարդապետի համար: Սա էլ, հարկաւ, տպաւորւում է բնութիւնից, բայց նրան մտածում է երկար դիտելով այն, խորհելով ու դատելով, ուսումնասիրելով եւ եզրակացութիւն հանելով նրա մասին: Այսպէս վարւում է նա իբրեւ իմաստասէր, եւ որովհետեւ նա միաժամանակ եւ բանաստեղծ է, իր այսպիսի հոգեկան գործունէութիւնը ձեւաւորում է բանաստեղծօրէն: Նա նախ մտածել է իր քերթուածի հիմնական գաղափարը—թեման եւ ապա ստեղծել է դրա համար պատշաճաւոր սիւժետը—Բանաստեղծի իրեն եւ Սարեկի տրամախօսութիւնը: Բայց այդ ստեղծումը կատարուել է ոչ սառն, անկենդան եղանակով, այլ ջերմ

---

1 Սարկաւագ Վարդապետի տեսութեան մասին այս եզրակացութիւնը ես եմ պարզել առաջին անգամ 1899 1900 թ.: Այնուհետեւ նոյնը կրկնել եմ Հայոց Հին գրականութեան դասախօսութիւնների ժամանակ Էջմիածնում, Թիֆլիսում, Բաքւում եւ Երեւանում: Նոյնը կայ նաեւ 1923 թ. ուսանողների համար դասախօսութիւնների ապակետպուած Համառօտագրութեան մէջ, որ հրատարակուած է «Ձեռագրի իրաւունքով», որ եւ 1941 թ. տպուեց ՍՍՌՄ Գիտ. Ակադ. Հայկ. Ֆիլիալի «Տեղեկագրի» մէջ: Արդ՝ 1940 թ. Երեւանում տպուած մի գրքի մէջ աղքատիմացի մէկը բաւացի սեփականել է իմ եզրակացութիւնը: Նա իւրացրել է նոյնիսկ իմ ցաւը՝ «դժբախտաբար մեզ չեն հասել...»՝ եւ ուրիշ բաներ: Ուստի խնդրում եմ ընթերցողներին, որ չկարծեն, թէ ես օգտւում-եմ 1940 թ. տպուած գրքից: Ես քաղում եմ սեփական աշխատութիւնիցս, մի փոքր փոխելով նիւթի դասաւորութիւնը: Աղքատիմացն ա՛յս անգամ չի արել:

լիրիզմով յօրինել է նա մի իմաստասիրական քնարերգութիւն: Մեծ ճարտարութեամբ նա ընթերցողի առաջ սփռում է իր մտածմունքներն ու ըզգացմունքները, եւ ինչպէս լաւ դիտել դիտէ, նոյնպէս եւ դիտածը տալիս է մեզ. մանրամասնութեամբ նկարում է Սարեկ Թռչունը, միշտ ցոյց տալով իր վերաբերմունքն առ նա: Չկայ քերթուածի սկզբում այլաբանութիւն, այլ մեր առաջ երեւում է իրական երգեցիկ Թռչունը, Թէպէտ Բանաստեղծը խօսքն ուղղում է նրան: Մենք տեսնում ենք ե՛ւ իրեն Բանաստեղծին իր որոնող մտքով, միաժամանակ ե՛ւ կրօնաւորին իր աղօթանոցում: Նրա երկի գեղեցկութիւններից մէկն էլ հէնց այս է, որ նա ե՛ւ իրական Թռչունի մասին է երգում, ե՛ւ իր տեսութեան, այլեւ բանաստեղծութեան նիւթ է դարձնում իր անձնականը:

Նրա քերթուածի մէջ ամէն բան ասուած է պարզ ու հասարակ ձեւով, սակաւաթիւ պատկերաւոր արտայայտութիւններով, սակայն այդ՝ իր պարզութեամբ հանդերձ՝ ազդեցութիւն է Թողնում իր հարուստ բովանդակութեամբ, որ շարունակութեան մէջ հետզհետէ աւելի ճոխանում եւ առլըցւում է զանազան մտքերով, որոնց արտայայտութեան համար նա գըտնում է բառեր ու խօսքեր մեծ փարթամութեամբ, բայց ոչ ճոռոմութեամբ: Քերթուածն ազդում է նաեւ իր մեծավայելուչ ոտանաւորով, որ մարդու լսելիքը շոյում է իր յամրական ռիթմով, որ եւ իր երկայն տողերով ու տողամիջի հատածներով ունի լուրջ բնաւորութիւն եւ շատ պատշաճում է բովանդակութեանը: Այս չափը, հարկաւ, Սարկաւագ Վարդապետի ստեղծածը չէ. նոյնով յօրինել է Գրիգոր Մագիստրոսը, այն էլ միակերպ յանգերով. դա գալիս է աւելի հին ժամանակներից եւ գործածական է եղել նաեւ հետագայում:[1] Սարկաւագ Վարդապետն այդ կիրառել է մեծ աջողութեամբ, առանց յանգերի, ինչպէս են մեր ոտանաւորներն իրենց հին ձեւով:

Հետեւենք քերթուածի բովանդակութեանը, որով կը պարզուի գլխաւոր խնդրի դրումն ու լուծումն ըստ հեղինակին, ինչպէս եւ Քերթողի մտածութեան ընթացքը եւ նրա երկի յօրինուածքի ընդհանուր բնոյթն ու գեղեցկութիւնը: Իսկապէս պէտք է կարդալ եւ ուսումնասիրել քերթուածի բնագիրը՝ սրա գեղեցիկ ամբողջութեան մասին ճիշդ եւ լրիւ գաղափար կազմելու համար: Ցաւօք այստեղ չենք կարող մեծ հատուածներ մէջ բերել:

Քերթուածն սկսւում է դիմումով Սարեկին: Եւ որովհետեւ հեղինակն իր աղօթանոցում է, հրաւիրում է Թռչնիկին գովերգելու արարչին: Այնուհետեւ նա ամենայն մանրամասնութեամբ, մի ամբողջ մեծ հատուածով (34 տող) վերլուծում է Սարեկի երգի Թողած այլազան տպաւորութիւնները. մէկ ա՛յս է լսում նա այդ երգի մէջ, մէկ՝ ա՛յն: Ինչպէս մի բնագէտ՝ նա յաճախ ուշադրութեամբ լսել ու դիտել եւ ուսումնասիրել է այդ Թռչունին, ուստի եւ մեծ ճշդութեամբ բնորոշում է ե՛ւ Թռչունի, ե՛ւ նրա երգի այլ եւ այլ, իրար հակառակ յատկութիւնները:

1 Այս չափի մանրամասնութիւններ կարելի է տեսնել՝ Մ. Աբեղեանի «Հայոց լեզուի տաղաչափութեան» մէջ, Երեւան, 1933, էջ 341—351:

*Արթո՛ւն եւ զուարթուն թռչուն հըսկող եւ բարբառող,*
*Կանչող ու կարկաչող, ճռճռուող ձայնով պաշտօնատէր...*
*Անմեղ եւ մօտաւոր, ուրախարար լռախրաց.*
*Քաղցրաձայն դաշնակաւոր, որպէս կարծեմ, ըստ արուեստին.*
*Սաստկախօս եւ հարթալանկ, խանդաղատող եւ ողբերգակ.*
*Հրամայող եւ ողոքող, ըղխրատականըս ներադրող,*
*Սպառնացող եւ հեզախօս, դըրդուող կոչող եւ հրաժարող.*
*Կականող եւ ձայնարկու, յոյժ խընդացող եւ զուարճացեալ.*
*Արդ գիշերըն քեզ ի տիւ, եւ խաւարն որպէս ըղլոյս...*
*Պիտոյիւք սըղաղունիւք իբր անճաշակ մարմին լըցեալ,*
*Նուազօքըն կերակրեալ որպէս ունող զայն զօրութիւն...*

*Թռչունի երգի գովքով հանդարտութեամբ սահուն կերպով զարգացընում է նա իր նիւթը եւ դիմում իր բուն խնդրին: Բանաստեղծը լսելով Սարեկի երգը՝ յափշտակւում է դրանով եւ հարցնում, թէ այն «արուեստիւ ամենահնար երաժիշտը» ո՛րտեղից է ստացել իր «քաղցրաձայն դաշնակաւոր» երգելու շնորհքը, քանի որ նա «անվարդապետ» եւ ինքնուսումն է, ոչ մի ուսուցչի մօտ չի սովորել:*

*Ո՛վ պարող դու անձանձիր եւ կաքաւիչ յոքնանըւադ...*
*Արդ* ուստի՞ իցէ քեզ խօսել յայլալեզուս եւ յընտանիս.
*Ե՛կ ուսո՛ ինձ, զի ծանեայց, կիտակատար իմաստակիս.*
*Մի՛ պատճառեր զանրանութիւն, դո՛ւ յօդաձայնդ վերծանօղ,*
*Անյօդ ձայնիւ* վարդապետեա՛, եւ ըստացի՛ր զիս աշակերտ:
*Զի հատուցից քեզ փոխարէն ընդ ուսելոյ իմաստութեանն,*
*Արձակեալ քեզ ներբողեան թողից ըղկնի անապական,*
*Առ հանդերձեալըն ժամանակ անջինջելի քաջայարմար,*
*Յորդորականս եւ վայելուչս, յորմէ օգտին իմաստնացեալք:*

*Այստեղ առաջին մասի մէջ հէնց, — Քերթողն ինքն իր երկը մասերի է բաժանել, — գծւում են այս «իմաստութեան բանի» կարեւոր կողմերը. 1) գովաբանում է բնութիւնն ի դէմս Սարեկի. 2) դրւում է նրա երաժըշտական շնորհքի ծագման խնդիրը. 3) Քերթողը ցանկանում է, որ ինքը ի դէմս Սարեկի՝ դառնայ բնութեան աշակերտ եւ սովորի նրանից, եւ 4) որ բնութեան աշակերտ դառնալով՝ նա անմահ, «անջինջելի, քաջայարմար» ներբողեան կը թողնի ապագայի համար:*

*Երկրորդ մասի մէջ Թռչնիկը պատասխանելով Քերթողի հարցին՝ ասում է, թէ մարդիկ մեղանչել են եւ դրա հետեւանքով ընկել են «ոչ բնաւոր» — անբնական վիճակի մէջ. մինչդեռ ինքը Սարեկը չի մեղանչել, չի կորցրել իր սկզբնական ունեցածը, մնացել է բնականի մէջ. ուստի իրեն տրուել է «յայտնութիւն»:*

*Վերեւում արդէն բացատրուեց, որ այդ նշանակում է թէ Սարեկի երաժըշտական արուեստը բնատուր է, բնածին է, ոչ-սովորովի է տարբերութիւն մարդկայինից, որ «յայտնութեամբ» չի ծագում: Որպէսզի հնաւոր լինէր մարդկային արուեստի ծագումը համարել բնութեան նմանո-*

ղութեամբ սովորոյթի, եւ ոչ յայտնութեամբ, պէտք էր հիմնաւորել այդ՝ բացատրելով, թէ մարդս զրկուած է յայտնութիւնից: Եւ ահա անհրաժեշտօրէն մէջ է բերուել միջնադարեան մտածողութեան համար անխուսափելի մեղքը: Մարդս իր գործած մեղքի պատճառով կորցրել է իր բնականը, բնական վիճակը. բնականը կորցնելով, զրկուել է յայտնութեան շնորհից. ուստի եւ մարդուս արուեստը չի կարող յայտնութեամբ լինել: Այսպիսով ժխտւում է յայտնութիւնն իբրեւ մարդուս արուեստի աղբիւր, եւ հնարաւոր է լինում արուեստը համարել բնութեան նմանողութեամբ սովորոյթի: Ահա՛ թէ որպիսի դրոյթներով է մտածել մեր Քերթողը, դրոյթներ, որոնց հաւատացել է այդ կրօնաւոր իմաստասէրը, որոնք եւ անհրաժեշտ են եղել քերթուածի թեման բազմակողմանի լուսաբանելու եւ հիմնաւորելու համար:

Սարեկի այս պատասխանը մեծ մասամբ վերացական բնաւորութիւն ունի, համապատասխան արտայայտութեամբ. բայց տրամախօսութիւնը կենդանացնում է նիւթի բացատրութիւնը, տալով նրան շարժում: Ձեւի եւ բովանդակութեան նկատմամբ շատ գեղեցիկ եւ ուժեղ է առանձնապէս երրորդ մասը, որի վերնագիրն է՝ «Իրաւացուցանէ Վարդապետն զխմադրութիւն [=պատասխան] Ձայնին եւ տանու ած ամբաստանութեան»: Քերթողն ընդունում է Սարեկի պատասխանը, թէ «բնականին ի բաց դրութիւնը» եղել է յանցանքի համար, բայց աւելացնում է, թէ ինքն այդ պիտէ «ի բնութենէ», այսինքն՝ այդ տեսակէտին հասել է նա բնութիւնը դիտելով եւ գիշեր ցերեկ ուսման ու գիտութեան հետեւելով: Ուրեմն յայտնութիւն չունենալը մեղքի հետեւանք համարելով հանդերձ՝ բացատրում է նաեւ իրերի բնութեամբ: բերենք այս կտորը:

*Զա՛յս ասաց պատճառ բազմանուայ եղանակացն*
*Թռչունքն քաղցրախօս ի հարցանելըն մեր ըղնա...*
Բնականին ի բաց դրութիւն *վասն սղալման առ վեհագոյնն*
*Նմանապէս են պատուհաս, որպէս* գիտեմ ի բնութենէ,
*Ուսայ ես դեղերմամբ եւս ի բազմաց ամաց հետէ.*
*Զի տքնեցայ զօր ամենայն եւ զգիշերըն բովանդակ*
*Առ իմաստըս ցանդութեամբ, նաեւ սիրոյն որ առ հանճար,*
*Զա՛յս ասաց եւ հաստատեաց որպէս կրնիք իւրոցն իրաց.*
*Յանդիմանեաց զմեզ ուղիղ, եւ ինքն օդավըն սըլացաւ,*
*Ի բարձրութիւն ոստոյն նըստաւ ըղհայրենին բարբառելով:*

Սարեկը շարունակում է երգել, իսկ Բանաստեղծն ընկնում է մտածմունքների մէջ: Մեր աչքի առաջ պայծառ պատկերանում է գիտութեամբ ու գրականութեամբ պարապող իմաստասէրն իր հոգեկան վիճակը վերլուծելիս: Մենք տեսնում ենք խոհուն, գործունեայ, հետազօտող ու հաւատացող կրօնաւորին, որ ոչ միայն շատ կարդացել է, այլեւ դիտել է բնութիւնը, զգացել է նրա վսեմութիւնը եւ աշխատել է ըմբռնել նրա վեհութիւնը, եւ նոյնիսկ փանաքի, աննշան, գեղով անվայելուչ եւ անարդ էակների մէջ ներդաշնակութիւն տեսնել: Նա նստած է իր խուցի «անապատի» մէջ, «որ հանդարտութեամբ օգտուի», որպէսզի իր իմաստութիւնն ի զուր տրուած չլինի իրեն, եւ ապարդիւն չանցնի իր մեծ ջանքը: Բայց նրան տանջում

*է այն միտքը, թէ ինքն իբրեւ մարդ մեղքի տակ է ծնուած եւ բնականից զրկուած: Այս միտքը սեւեռուած է նրա գլխի մէջ, քանի որ Թռչունը նստած է ծառի ճղին ու երգում է, ու երգում ճռուողելով եւ իր «բնականի պարգեւով» հանգիստ չի տալիս նրան, խանգարում է նրան մտածելու եւ նոյնիսկ աղօթելու: Մերթ նա աչքը պտտեցնում է այս ու այն կողմ Թռչկոտող Սարեկի ետեւից, մերթ ուրախանում է՝ յառած ունկնդիր լինելով իր սիրած թեւաւորին, մերթ տխրում է, յուզւում, մտածելով, թէ Սարեկը «յանդիմանեաց ըզմեզ ուղիղ»: Ապա ուրեմն անչափ է իր բոլոր դեղերանքը, որ ինքը մի Թռչնիկից անգամ ցած է գտնւում: Բայց վերջը նա այն եզրակացութեանն է գալիս, թէ իր վերաբերմամբ անարդար է Սարեկի «յանդիմանութիւնը», քանի որ նրա ասած մեղքն՝ ի՛նքը չի գործել: «Մարդկանց մէջ պատահած բազմատեսակ յանցանքներն ինձ վրայ ձգելով, — ասում է նա Սարեկին, — Դու ինձ նեղում ես առանց յողնելու, իբր թէ ինձնից մի վնաս գտած լինէիր. Աղաղակելով ամբաստանում ես ինձ, ինչպէս զրկուածների սովորութիւնն է. Սաստիկ մեղադրում ես ինձ հրապարակով դատաւորի առաջ. Կամ գուցէ կարծում ես, թէ ես թշնամի եմ եւ իբրեւ օտար կռուել եմ քո դէմ. Ես՝ որ քեզ սիրում եմ՝ քեզնից տրտնջում եմ...»: Այսպէս նա չի հասկանում, թէ ինչո՛ւ ուրիշների մեղքերի համար ինքը պիտի պատժուի: Այնքան խորասուզուած է նա իր խոհերի մէջ, որ թանաքամանը թափւում է իր զգեստի վրայ, ապա սթափուելով ինքն է ամբաստանում Սարեկին եւ հարցնում, թէ ինչո՛ւ նա անապատ չի քաշւում եւ այնտեղ երգում միայնութեան մէջ, ինչպէս սոխակները, որոնց լսողները քիչ են. էլ ինչո՞ւ է նա մարդկանց մէջ ապրում: Բերենք այս մասի վերջից մի կտոր, որ շատ կարեւոր է թեմայի տեսակէտով:*

*Թէ ազգակից ես սոխակի, ասա՛ դու ինձ դիմադրութեամբ,*
*Ընդէ՞ր չունիս դու քեզ կայան յանապատի որպէս նոքայն.*
*Երաժիշտք են եւ նոքա, բայց ցանկացան անապատի,*
*Դաշնականացըն նուագօք ըզբացավայրսըն զարդարեն.*
*Սակաւուց եղեւ լըսել ըզբարեձայն երգատրութիւնսն.*
*Գովեցան եւ զըզուեցան յորոց լուան ըզքաղցրավանդսն:*
*Ամփիոն այր Թեբացի եւ Արիոն Միթեմնացի,*
*Որփեւս Թրակացի, այս երաժիշտք են մեծագովք.*[1]
Այլ նուագեալ առ նոքօք որք բնականաւն են պանունեալք,
Ջի գործի այսր արուեստի նոքա չունին ի բնութենէ:

*Այստեղ դարձեալ յայտնւում է, որ արուեստի համար կարեւորն է բնականը, բնութիւնը: Բայց չարունակենք նրա դիմումը Սարեկին.*

---

1 Հրատարակիչն այս յունական առասպելական երաժշտների մասին դրել է հետեւեալ ծանօթութիւնը. «Ամփիոն երաժիշտ յոյն՝ արքայ Թեբացւոց, որ պարսպեաց զԹեբէ, կամ որպէս քերթողքն առասպելեն, քնար յԱպողոնէ ընկալեալ, եւ նորին նուագացն քաղցրութեամբ զքարինս շարժեալ ի շարս եւ ի զետեղումն պարսպացն ընթացուցանէր:— Արիոն քերթող եւ երաժիշտ ի Միթեմնա քաղաքէ Լեսբոսի՝ թովեալ սոփ քնարաւն զդելփին մի, որ ապա ընդ աստեղատունս դասեցաւ:— Իսկ Որփեւս երգիչ կամ քերթող էր անուանի, յորոյ ի լուր ձայնին գազանք ամենեքեան ընթանային, եւ կողերք (=ճղեր) ծառոց ծափ զծափի հարկանէին»:

*Մի եւ զո՛ւ ես յայնցանէ զորոց լուար ըզպատմութիւնն,*
*Համարուեսս եւ անուանի, որպէս արդիւնքըն վըկայեն·*
*Բայց միով ես պակասեալ, զի չսիրեցեր զընդ նոսա կեալ*
*Եւ չարարեր անդ քեզ ղաղարս, ուր եւ նոքա են տաւաղեալ:*
*Աստ զաս նստիս մերձ առ ինեւ իբր արուեստիւ ինձ յանդակից,*
*Բազմազեաւ երգարանաւ եղանակես եւ կաքաւես·*
Հոմերական տաղիցըն չափ քեւ ծանուցեալ լինի բազմաց՝
*Յոտանաւոր եւ ցուցական (?) ըստ քերթողացն տեսակի,*
*Կամ թէ եւս աւելազոյն, որպէս թըւի ինձ գիտողիս·*
Զի վարժումն եւ կրթութիւն ոչ ժամանէ առ բնութիւն:

*Երրորդ մասի այս վերջին տողերի մէջ քերթողական արուեստն իր ծագումով պարզապէս բնութեան նմանութիւն ու արդիւնք է համարւում եւ զօրեղ կերպով շեշտւում է, որ բանաստեղծութեան աղբիւրը բնութիւնն է: Առաջին մասի մէջ արդէն, ինչպէս տեսանք, բանաստեղծը ցանկանում է, որ ինքը դառնայ ի դէմս Սարեկի՝ բնութեան աշակերտ: Այս երրորդ մասի մէջ նա ասում է, թէ քերթողները նմանելով բնութեանը՝ սովորում են իրենց արուեստը, բայց չեն հասնում իրենց արուեստի նախագաղափար բնութեանը: Այստեղ Քերթողը «բնութիւն» բառը գործածելով Սարեկի փոխանակ՝ պարզ յայտնում է, որ այդ թռչունը քերթուածի մէջ հանդիսանում է բնութեան ներկայացուցիչ:*

*Չորրորդ մասի մէջ բանաստեղծն աւելի եւս պարզաբանում է նախորդ մասի մէջ արծարծուած խնդիրները: Սարեկը պատասխանելով Քերթողի հարցին, յայտնում է, թէ մարդու հետ ապրելու խորհուրդն այն է, որ մարդը ստիպուած լինի այդ կենակցութեամբ տեսնելու, որ ինքը՝ մարդն անհաւասար է նոյնիսկ իր «ծառաներին», այսինքն բնութեանը, որ, ըստ հին կրօնական հայեացքի, ստեղծուած է մարդուն ծառայելու:*

*Ընդ մեզ կենակցութիւն ձեզ չընտրողացըդ [զկենակցութիւն] առ Աստուածն,*
*Առ ծառայս անզուգութիւն՝ զանզուգութիւն մեծարողացդ:*

*Դարձեալ, ուրեմն, անհաւասարութիւն («անզուգութիւն») բնութեանը· անհաւասարութիւն, հարկաւ, արուեստի նկատմամբ, ինչ որ արդէն երկու անգամ ասուած էր երրորդ մասի մէջ:*

*Մենք տեսանք արդէն, որ Բանաստեղծը երրորդ մասի մէջ չի ըմբռնում այն, որ ուրիշների մեղքերի (Ադամայ մեղքի եւ աշտարակաշինութեան) համար ինքը պիտի պատժուի, եւ մի վայրկեան նա ըմբոստանում է Ադամայ մեղքի դէմ եւ թւում է, թէ նա պիտի մերժէր այն: Բայց այդ հնարաւոր չէր 11-րդ դարում՝ առանց ընկնելու Թոնդրակեցոց աղանդի մէջ: Թերեւս սրանից իրեն զերծ պահելու համար՝ նա այս չորրորդ մասի սկզբում Թռչունի բերանով կանգ է առել նոյն խնդրի վրայ՝ մեկնաբանելով յիշուած մեղքերը եւ աւելի պարզելով՝ ինչ որ ինքն երրորդ մասի սկզբում ասել էր, թէ մարդուս «բնականին ի բաց դրութիւնը» գիտէ «ի բնութենէ» եւ իր ուսած գիտութեամբ: Այստեղ նա իր այս տեսութիւնը հիմնաւորում է բա-*

*նականօրէն: Մարդիկ, իբրեւ մտաւոր ու բանական էակներ, իրենց ազատ կամքով աշխատել են բարձրանալ նախնական բնական վիճակից՝ «աստուածութեանըն ցանկալ», «առ գերակայն ամբառնալ», «ճախանալ» «յերկինս ելանելով»· այս են եղել նախամարդու եւ աշտարակաշինութեան մեղքերը:*[1] *Դրանով է, որ նրանք կորցրել են իրենց անմեղութիւնը: Բանաստեղծն այսպիսի ռացիոնալիստական մեկնութեան ճանապարհ բռնելով հանդերձ, իբրեւ իր դարի զաւակ, իր լռութեամբ համակերպւում է աստուածաշնչեան գաղափարին ժառանգական մեղքի մասին: Բայց նա չի կարողանում լռութեամբ հաշտուել մի ուրիշ կրօնական մտքի հետ, թէ իրենց «իշխանի» — առաջին մարդու մեղքի համար դրախտից հանուելով պատուհասուել են եւ աւելի եւս զառն ճակատագիր ունեն մարդկանց «ծառայելու» համար ստեղծուած անմեղ կենդանիները: Բնութեան սիրահարը, որ Գերթուածի սկզբում հրճուանքով ներբողում էր իր սիրելի թռչնիկին, վերջում էլ նրա բերանով, իբրեւ բողոք այդ կրօնական հայեացքի դէմ, — դրանով լռելեայն եւ Ադամայ մեղքի դէմ, — անկեղծ կարեկցութեամբ նկարագրում է թռչունների ծանր դրութիւնը·*

*Բայց եւ անմեղքըս վնասեցաք վասըն ձերոյդ ժպրհութեան,*
*Ի փառս ձե՛ր մեք գոյացեալք եւ վասըն ձե՛ր ապականեալք···*
*Եւ աղէտք վըշտագինք պարապատեն ըզմեզ յերկրի,*
*Որջակք եւ ձըմերունք եւ պիտոյից պակասութիւնք,*
*Ցաւք եւ խօթութիւնք եւ տարաժամ մահու արկուածք···*
*Յորս աւելի՛ մեք աշխատիմք՝ ոչ ունելով յարկս եւ քաղաքս,*
*Ոչ համբարըս մըթերեալս ի լիութիւն հարկաւորացն,*
*Ոչ դեղս եւ ոչ բըժիշկս որով ցաւոց ախտ դադարէ,*
*Ոչ կակուղ ինչ կերակրիկ մեզ ի սփոփանըս դիւրութեան···*
*Զըրկումն մեր ի ձէնջ, եւ դուք ըզմէնջ ամբաստանէք···*

*Հինգերորդ վերջին փոքրիկ մասը եզրակացութիւնն է·*

*Ճշմարտիւ զայս խօսեցաւ ըստ պատահմանցն հանդիպման,*
*Ըզբացայայտեալ հոյլըս բանից իմաստաբար բարբառելով·*
*Որով* յաղթեալ մեզ իմաստնոցս եւ կարծեցեալ բանաստեղծացս···

*Յաղթող է հանդիսանում, ուրեմն, բնութեան ներկայացուցիչը, «արուեստիւ երաժիշտն ամենահնար անվարդապետ», որ բուն արուեստաւորն է, իսկական երգիչը, իսկ նա «աշակերտ» եւ «արուեստակից» Իմաստասէրը՝ «կարծեցեալ բանաստեղծ», որ չի հասնում իր վարպետին — բնութեանը:*

6· Զգտում դէպի բնութիւն ու ռացիոնալիզմ եւ դրա ազդեցութիւնը գրականութեան մէջ:— *Սարկաւագ Վարդապետի «Բան իմաստութեան» քեր-*

---

*1 Այս բացատրութեան համար նա նկատի է ունեցել Օձի հետեւեալ խօսքը, որ ասում է Եւային խաբէլիս. «Զի գիտէր Աստուած թէ յորում աւուր ուտիցէք ի նմանէ, բանայցեն աչք ձեր, եւ լինիցիք իբրեւ աստուածս՝ ճանաչել զբարի եւ զչար» (Ծնունդ., Գ, 5): Իսկ Բաբելոնի աշտարակաշինութեան համար նկատի է ունեցել հետեւեալը. «Եկայք շինեսցուք մեզ քաղաք եւ աշտարակ, որոյ լինիցի գլուխն մինչեւ յերկինս» (Ծնունդ., ԺԱ, 4):*

թուածի բովանդակութիւնից, որի մանրամասնութիւնների վրայ դիտմամբ կանգ առանք, պարզ երեւում է, որ եղել է ձգտում դէպի բնութիւն եւ ռացիոնալիզմ կրօնի մէջ, որով գլխաւոր նշանակութիւնը տրւում էր ոչ թէ յայտնութեանը, այլ բնութեան գիտութիւնից բանականութեամբ ձեռք բերած ճշմարտութիւններին: Դրա արդիւնքն է եղել արուեստի ծաղման նոր տեսութիւնը եւ առհասարակ մի նոր արուեստի պահանջը: Մեր իմաստասէր Բանաստեղծը շատ յաջող լուծել է կարեւոր գրական խնդիրը, պնդելով, թէ բանաստեղծը նմանում, հետեւում է բնութեանը, իրականութեանը: Այս հայեացքը, որով արժէքը տրւում է բնութեանը, այս արդէն մի մեծ նորութիւն էր մեր գրականութեան մէջ եւ կարող էր ծագել միայն վերածնութեան դարում իբրեւ հետեւանք այն նոր ոգու եւ ազատախոհութեան, որ առաջ էր եկել կեանքի մէջ: Սարկաւագ Վարդապետն այդ անդրադարձրել է բանաստեղծութեան մէջ: Բայց նա մենակ չի եղել այդպէս մտածող:

Այսպէս ուրեմն՝ ինչքան էլ սելջուկեան թուրքերի աւերածութիւններով քայքայուել է Հայոց աշխարհը, դարձեալ քաղաքային կեանքի պերճ զարգացումն անհետեւանք չի անցել: Նոր մտաւոր հոսանքի առաջին արտայայտութիւնները, որ տեսանք կորստից փրկուած երկերի մէջ, այդ եւս 11-րդ դարի համար խոշոր գրական երեւոյթ է իր նոր տեսակներով եւ նոր թեմաներով: Յովհաննէս Սարկաւագ Վարդապետից յետոյ՝ 12-րդ եւ հետագայ դարերում մեր բանաստեղծները, թէկուզ հոգեւորական, այլեւս չէին կարող գիտակցաբար չանդրադարձնել բնութիւն եւ իրական կեանք, եւ չերգել հայրենասիրութիւնն իր գաղափարախօսութեամբ:

Բանաստեղծութեան մասին նոր հայեացքն ազդում է եւ ձեւի վրայ: Դրա անմիջական հետեւանքը լինում է եւ այն, որ մեր բանաստեղծներն եւ առհասարակ մատենագիրները թողնում են սեթեւեթ չինծու ձեւերը, անհասկանալի հնաբանութիւններն ու ճոռոմ ոճը, որ մտել էր բանաստեղծութեան մէջ անգամ: Պարզութիւնն ու բնական մտածողութիւնն սկսում են իշխել ընդհանրապէս: Գրականութեան մէջ երեւան է գալիս 12-րդ դարում կենդանի խօսակցական լեզուն՝ միջին հայերէնը, որ արդէն բաւական հեռացած էր հին գրական լեզուից՝ գրաբարից: Ստեղծւում են, ինչպէս գրում է Սարկաւագ Վարդապետը, ըստ բովանդակութեան եւ ըստ ձեւի աւելի գեղեցիկ, «անապական», «առ հանդերձեալն ժամանակ անջնջելի քաջայարմար» քերթուածներ: Այս է եղել ազդեցութեան արդիւնքը բնութեան աշակերտի, մեր տքնող Իմաստասէրի աշխատանքի, ինչպէս եւ նրա պէս մտածող նրա ընկերների, որոնց մէջ ինքը Սարկաւագ Վարդապետը փայլել է իր մեծ սիրով առ բնութիւնը եւ այժմ փայլում է իր «իմաստութեան բանով», որ մի ներբող է բնութեան:

## ԴԱՒԻԹ ԱԼԱՒԿԱՅ ՈՐԴԻ

*Կիրակոս Գանձակեցին,[1] յիշելով Սարկաւագ Վարդապետի մահը 1129 թ., շարունակում է. «եւ զկնի ամի միոյ վախճանեցաւ սուրբ լուսաւորիչն Դաւիթ վարդապետն, Ալաւկայ որդի, որ գրեաց զկանոնական օրինադրութիւնս գեղեցկայարմարս եւ պիտանացուս ի խնդրոյ քահանայի միոջ, որում անուն էր Արքայութիւն, ի քաղաքէն Գանձակայ». Դաւիթն ինքն էլ Գանձակ քաղաքից էր: Նրա մասին յիշում է եւ Վարդան Արեւելցին,[2] ասելով թէ Սարկաւագի մահից մի տարի յետոյ վախճանուել է եւ «լծակիցն իւր Ալաւկայ որդին Դաւիթ, որ կանոնքն էր դիւրահաս»: [Այլ ընթերցուած՝ «որ կանոնքն գրեաց դիւրահաս»]: Թէ Դաւիթ վարդապետն ինչի՛ մէջ է եղել Սարկաւագ Վարդապետի «լծակիցը», այսինքն գործակից, աշխատակից ընկերը, այդ յայտնի չէ: Երեւում է, որ նա եւս իր ժամանակին յայտնի հեղինակաւոր մի անձ է եղել, որ նրա մահուան մասին յիշում են ե՛ւ Վարդանը, ե՛ւ Կիրակոսը եւ վերջինս նրան «լուսաւորիչ» է անուանում: Նրա «Կանոնական օրինադրութիւնները» կամ «Կանոնները», բարեբախտաբար, մնում են, թէպէտ եւ դեռ ձեռագիր, բայց այդ մասին ունենք քաղուածաբար տպուած բաւական տեղեկութիւններ:[3]*

*Դաւթի գործը, որ բաղկացած է 98 կանոններից, ունի ոչ թէ գրական արժէք, այլ կուլտուր-պատմական: Դա ունեցել է իր ժամանակի համար գործնական կարեւորութիւն, թէ ինչպէս պէտք է վարուի մի քահանայ կամ այլ ոք իրեն վերաբերեալ որոշ դէպքերում: Դրա համար նա, յաճախ օգտուելով եկեղեցու հայրերի կամ Հայոց եկեղեցական կանոններից, ինչպէս եւ աւանդութիւններից, տալիս է խրատներ ու հրահանգներ, բայց ոչ սառն, հակիրճ օրինադրական եղանակով, այլ սովորաբար ընդարձակ բացատրութիւններով: Այդ եղանակով նա ձգտել է մտքերը «լուսաւորելու» եւ «դիւրահաս» դարձնելու իր ասածները, ինչպէս բնորոշել են նրան եւ նրա գործը Կիրակոսն ու Վարդանը: Նրա ասացուածքը պարզ ու կենդանի է եւ անգամ ժողովրդական. նրա քննարկած բազմազան նիւթն եւս մեծ մասամբ ժողովրդական է: «Ալաւկայ որդու այս գործը Հայոց գրականութեան մէջ իր տեսակով առանձին մի բան է, զուգէ առաջինն ու միակը: Նա ներկայացնում է կեանքն, ինչպէս կայ, ինչպէս ինքը տեսնում է այդ, եւ իր կանոնները դնում է իր աշակերտին [այսինքն՝ Արքայութեան քահանային] ըմբռնելի երեւոյթների դէմ: Այդ գիտողական նկարագիրն է, որ բարձրացնում է Կանոնական օրինադրութիւնների արժէքը: Նրա պատմական նշանակութիւնը հէնց այնտեղ է, որ նա սերտ կապուած է իր ծագման, միջավայրի ներքին վիճակի եւ զարգացման պայմանների հետ եւ ճշգրիտ յայտաբարն է նրանց»: Այս բնորոշումը, որ գալիս է մեր հին գրականութեանը հըմուտ մի անձից,[4] բաւական է արդէն Դաւիթ վարդապետին համարելու Սարկաւագ Վարդապետի արժանաւոր «լծակիցը»:*

---

1 Կիր. Գանձ. Պատմ. Հայոց, էջ 107:

2 Մեծին Վարդանայ Պատմութիւն տիեզերական, Մոսկուա, 1861, էջ 159:

3 «Ազգագրական Հանդէս», ԺԴ գիրք, 1906, էջ 105–132. նոյն, ԺԵ գիրք, 1907, էջ 62–67. «Դաւիթ Ալաւկայ որդի» Կ. Կոստանեանցի: Այս յօդուածը մեր միակ աղբիւրն է:

4 «Ազգ. Հանդէս», ԺԵ, էջ 67. յօդուած Կ. Կոստանեանցի:

Անշուշտ, կարելի չէ պահանջել, որ նա մեր ժամանակի տեսակէտներն ունենայ. այլ բնական է, որ նա իր կանոններով մաքառել է իր դարի վատ սովորութիւնների եւ ապականուած բարքերի դէմ, ինչպէս եւ զանազան առողջապահական միջոցներ է առաջարկել «պղծումների» եւ մի քանի այլ բաների վերաբերմամբ ըստ իր ժամանակի հասկացողութեան: Նրա գրքից հնարաւոր է լինում ծանօթանալ մեր հին կենցաղին, բարքերին, մասամբ բարոյական դրութեանը, եւ, կարելի է ասել, Ալաւկայ որդին յաճախ հին սովորոյթները կամ սովորութական դիրքերն է վերածել «կանոնների» կամ «կանոնական օրինադրութիւնների»: Այսպէս են, օրինակ, այն բազմաթիւ կանոնները, թէ ինչպէս պէտք է վարուել կամ ինչպիսի մաքրութեան միջոցներ գործադրել, երբ որոշ կենդանիներ՝ շուն, կատու եւ ուրիշներ դիպչում են ուտեստի, եւ աւելի եւս առանձնապէս «մկնանկի» դէպքերում, այսինքն երբ զարշելի մկնով պղծւում է որեւէ ուտելեղէն: «Զի նորա [մկան] չարն շատ է, քան զամենայն», գրում է նա: Այժմ եւս «մկնանկը» կամ «մկնառը» զզուելի է: Այդ, ի հարկէ, առողջապահական զգուշութիւնից է ծագում: Արքայութիւն քահանան ամէնից առաջ դրանով է հետաքրքրուել. նա մկնանկի մասին է սկսել իր հարցումը, ուստի դրան վերաբերեալ կանոնները դրուած են Դաւիթ վարդապետի գործի սկզբում:

Սակաւաթիւ չեն այն կանոնները, որոնց մէջ խօսւում է պատժի ենթակայ զանազան մեղքերի ու յանցանքների մասին, ինչպէս են՝ ամուսնական սրբապղծութիւն, տափական ախտեր, «սպանութիւն, գողութիւն, վաշխառութիւն, հրդեհումն, երդմնազանցութիւն, յիշոց, կախարդութիւն եւ այլն»: Առանձնապէս մանրակրկիտ ձեւով գրում է նա կանոններ ընդդէմ զանազան հմայութիւնների եւ սնահաւատութեան. հրահանգներ է տալիս զանազան բարեպաշտական ծէսերի, տօների, ժամերգութեան, պահքի, մըկրտութեան, մեռելի կոծի եւ այլի վերաբերմամբ: Կան կանոններ նաեւ սեռական յարաբերութեան, ծննդաբերութեան, քահանաների երկրորդ ամուսնութեան, ձրի ուսման մասին, եւ ընդդէմ այն անկարգութեան, որով քահանայական տների պատկանող աշխարհականներից ոմանք իրենց սեփականութիւնն էին դարձնում ժողովուրդը եւ, նոյնիսկ քահանայ չեղած դէպքերում էլ, բռնութեամբ յափշտակում էին «զշահաւորութիւն քահանայից»: Յատկապէս հետաքրքիր է վերջին (98–րդ) կանոնը, որի մէջ խօսւում է այն ժամանակի «շնորհավաճառութեան եւ կաշառակերութեան մասին» Աղուանից աշխարհում: Առաջնորդները պսակուած ամուսիններին բաժանում էին միմեանցից եւ գրով թոյլ տալիս ուրիշների հետ կենակցել: Այսպիսիներին նրանք որոշ հարկի տակ էին դնում եւ ամսէ ամիս պահանջում հարկը: Նրանք «ունէին իրենց գործին հաւատարիմ գործակալներ, որոնց ձեռքն էին յանձնուած օրհնութեան թղթերը եւ անուանական ցուցակները: Այդ մարդիկ, ինչպէս միջին դարերում ինդուլգենցիա բաժանողները, իւրաքանչիւր ամիս գաւառից գաւառ էին շրջում... եւ խստութեամբ պահանջում էին նշանակած տուրքերը» եւ այլն: Հետեւանքը լինում էր «կնոջ եւ առն բաժանումն, զաւակաց ցրումն, ընչից առումն, տանց աւերումն, ի հայրենեաց ելումն, ի դատաւորս եւ՛ յատեանս բազում քարշումն... այլ եւ յոլով բճախեղդութիւն»:

Այս է ահա «Կանոնների» կամ «Օրինագրութիւնների» բովանդակութիւնն ըստ յիշուած աղբիւրի: Այդ աշխատութիւնից օգտուել էր Մխիթար Գոշը, բայց դա «պիտանացու» է համարուել նոյնիսկ 13-րդ դարում, եւ, ինչպէս երեւում է, դրանով առաջնորդուել են ընդհանրապէս, մինչեւ անգամ Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» հրատարակուելուց յետոյ: Դրա պատճառն այն է, որ Դուէթի Կանոնների բովանդակութիւնը, թէպէտ եւ մասամբ եկեղեցական կանոններից ծագած, ինչպէս ասուեց, սերտ կապուած է այն ժամանակաշրջանի իրականութեան հետ, եւ ամէն ինչ արտայայտուած է դիւրըմբռնելի ձեւով: Նկատի ունենալով այդ գործի գործնական կիրառական նշանակութիւնը, կարծում ենք սխալ չէ, որ այդ «Կանոնական օրինագրութիւններ»» դնում են հայկական դատաստանագրքերի շարքի մէջ:[1] Իսկապէս որ այդ երկն իր տեսակով մի նոր բան է եղել մեր հին գրականութեան մէջ, եւ այդ նորն էլ ծնունդ է նոր մտաւոր հոսանքի:

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

### ՄԱՏԹԷՈՍ ՈՒՌՀԱՅԵՑԻ ԵՒ ՈՒՐԻՇՆԵՐ

1. Ժամանակագրութիւն:— *Հայոց գրականութեան 12-րդ դարը,— յայտնի չէ, թէ առաջին անգամ ումից,— կոչուած է «Արծաթի» դար՝ համեմատութեամբ 5-րդ դարի կամ «Ոսկեդարի»: Այդ կը նշանակի՝ մեր գրականութիւնն առաջընթաց զարգացում չի ունեցել: Բայց այդ ճիշդ է միայն պատմագրութեան համար, այն էլ երբ նկատի ենք առնում այս գրական տեսակը յօրինուածքի կողմից: Արդարեւ 5-րդ դարում գրուած պատմութիւններն աւելի կամ պակաս չափով գեղեցիկ են. ունենք Եղիշէի «Հայոց պատերազմի» նման գեղարուեստական երկը՝ իր ընդհանուր գոյնով եւ գլխաւոր գաղափարով ու խնդրով, որ սկզբից մինչեւ վերջն իշխում է ամբողջի վրայ՝ տալով նրան մի գեղեցիկ միութիւն: Սակայն հետզհետէ արուեստը պակասում է մեր պատմագրութեան մէջ, մինչեւ որ առաջ է գալիս ժամանակագրութիւնը կամ տարեգրութիւնն առանց որեւէ արուեստաւորութեան, անգամ առանց անձնական ոճի նոյնութեան: Եթէ Եղիշէի երկի յօրինուածքի գեղեցկութիւնը ծագում է յունական կլասիկ գրականութեան ազդեցութիւնից, ժամանակագրութիւնն արդասիք է միջնադարեան ընդհանուր քրիստոնէական կուլտուրայի: Նոյն գրական տեսակը նոյն ձեւերով եւ նման աշխարհայեացքով սիրուած է եղել նաեւ եւրոպական ժողովուրդների մէջ: Տարեգրութիւնն այն ժամանակներում պարզամիտ գրագէտների համար համեմատաբար հեշտ կատարելի մի գործ է եղել—գրի առնել եղելութիւնների պատմութիւնն առանց որեւէ ուսումնասիրութեան ու ներքին կապի, առանց որեւէ յաւակնութեան գեղեցիկ յօրինուածք առաջ բերելու մի ղեկավար գաղափարով, որ ի մի միութիւն, ի մի ամբողջութիւն ձուլէր պատմուած դէպքերը:*

---

*1 Խ. Սամուէլեան, Հին հայ իրաւունքի պատմութիւնը, հատ. Ա., Երեւան, 1939 թ., էջ 75*

2. Մատթէոս Ուռհայեցու ժամանակագրութիւնը:—*Այսպիսի պարզ ու հասարակ տեսակի առաջնակարգ ներկայացուցիչն է մեզնում Մատթէոս Ուռհայեցին իր «Ժամանակագրութեամբ»*[1]*: Նա Սարկաւագ Վարդապետի օրով է ապրել, բայց ոչ Հայաստանում: Նրա կենսագրութիւնը յայտնի չէ. ինքն իրեն անուանում է՝ «Մատթէոս Ուռհայեցի և վանական», «Մատթէոս Ուռհայեցի եւ վանից երէց»*[2]*: Հաւանօրէն Ուռհայի մի վանքի երէց: Նա Ժամանակագրութիւնը գրել է այդ քաղաքում. «Ես Մատթէոս... զամս բազումս քաջաջան քննութեամբ կացի եւ արիաբար մտօք ի քաղաքս Միջագետաց յՈւռհա ժողովեալ գրեցաք մինչեւ ցայս վայր»*[3]*, որ է* 1000 *թուականը ներառեալ: Միջագետքում հին դարերից ի վեր ապրել են շատ հայեր. 11րդ դարի երկրորդ կէսին, բիզանդական քաղաքականութեան հետեւանքով, նրանց թիւն աւելանում է այնտեղ: Բաւական թուով քաղաքներ իրենց շրջակայ գիւղերով անցնում են հայ աղնուականների ձեռքը, որոնք իշխում են այն տեղերում իբրեւ բիզանդական կուսակալներ: Այդպիսիներից մէկն եղել է մի ժամանակ նաեւ հին նշանաւոր Եդեսիա կամ Ուռհա քաղաքը, որի բնակիչների մի խոշոր մասը 11րդ դարի վերջերին եւ 12րդ դարում հայեր էին: Մեր ժամանակագիր Մատթէոս ահա այդ կողմերի հայութեան արտայայտութիւնն է 11–12րդ դարում եւ հետաքրքիր է իբրեւ այնպիսին: Ինչպէս իր աշխատութիւնից երեւում է, նա իր ժամանակի «վարդապետներից եւ կարողի գիտնականներից» չէ. ոչ ճարտասանական արուեստն է սովորել, ոչ էլ քերականական ուսում ստացել: Կրօնական գիտութեանն էլ հմուտ չէ. բայց, հարկաւ, նա եւս, ինչպէս ուրիշներն այն դարում, տոգորուած է կրօնական ոգով եւ հայեացքով: Նա համեստ մարդ է եւ շատ համեստ էլ կարծիք ունի իր մասին: Բայց մի մեծ առաւելութիւն է ունեցել այդ երէցը: Սիրել է իր գործը, հոգով-սրտով նուիրուած է եղել դրան, եւ սկսած 12րդ դարի սկզբից կամ 11րդի վերջերից, երկար տարիներ մեղուաջան աշխատութեամբ կարողացել է բազմազան աղբիւրներից նիւթեր ժողովել, դէպքերի տարեթուերը որոնել, գտնել եւ ըստ կարի ճշդել, եւ եղելութիւնները, տարիների կարգով դասաւորուած, միմեանց ետեւից գրի առնել եւ յօրինել մի մեծ եւ ընդարձակ գիրք, վերջացնելով այդ գործը 1140ական թուականներին, ծերութեան օրերում:*

*Ճիշդ է, նրա աշխատութեան բազմազան նիւթերի մէջ չկա որեւէ ներքին կապակցութիւն, բայց նա այդ արել է ոչ սառն, ոչ անտարբեր կերպով: Նրա երկի մէջ յաճախ գտնում ենք նոյն ոգին եւ զգացմունքը, ինչ որ Արիստակէս Լաստիվերտցու, միայն ոչ բուռն սաստկութեամբ, աւելի զուսպ ու նստած, եւ քաղաքական դրութեան եւ հայութեան վիճակի պայծառ հասկացութեամբ: Այս տարբերութիւնն առաջացել է այնու, որ Ուռ-*

*1 Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898: Գրքի սկզբի վերնագիրն է. «Պատմութիւն արարեալ Մատթէոսի մեծի քահանայի Ուռհայեցւոյ վասն Բագրատունեաց թագաւորացն եւ այլոց բազմաց ի ԴԾ թուականէն սկըսեալ մինչ ի ՈԺԱ թիւն աւարտեալ»: Այս վերնագիրն ըստ երեւոյթին ուրիշի գրած է. ՈԺԱ (=611+551=1162) թուականը վերաբերում է շարունակող Գրիգոր Երէցի Տարեգրութեանը: Գրքի սկզբում էլ պակասում է մի փոքր կտոր:*

*2 Անդ, էջ 113, 114:*

*3 Անդ, էջ 278:*

հայեցին ժամանակով եւ տեղով բաւական հեռու է եղել Լաստիվերտցու ապրած աղետալից ժամանակից ու տեղից, թէպէտ եւ իր օրով եւ իր ապրած երկրում էլ պակաս չեն եղել աւերածն ու կոտորածը։

Նրա աշխատութիւնը կազմուած է երեք մասից. առաջինը բովանդակում է Հայոց ՆԱ (=ք. 952) թուականից մինչեւ Հայոց Շ (=ք. 1051) թուականը։ Երկրորդ մասի առաջաբանի մէջ (էջ 114) գրում է. «Նա եւ այլ եւս ունիմք ասել ձեզ ամաց ութսնից զաշխատութենէ Մատթէոսի Ուռհայեցւոյ եւ վանաց երիցու»։ Ուրեմն մտադիր է գրելու մինչեւ 1131 թուականը (1051+80=1131)։ Պէտք է ընդունել, որ նա յիշուած առաջաբանը գրել է այս թուականից ոչ առաջ, քանի որ կարելի չէ կարծել, թէ նա մտադրուած լինէր գրելու իր դեռ չապրած տարիների ժամանակագրութիւնը։ Երկրորդ մասը հասցրել է մինչեւ Հայոց ՇԾ (=ք. 1101) թ.։ Դրանից յետոյ, ասում է երրորդ մասի առաջաբանի մէջ (էջ 277), «զամս տասն [ուրեմն ոչ վաղ քան 1141 թ., քանի որ 1131+10=1141] ոչինչ արարաք հոգս վասն այս ժամանակագրութեանցս եւ թողեալ էաք ի բացեայ զարուեստ դրչութեանցս»։ Ծերութեան ժամանակ վերսկսելով իր գործը՝ յայտնում է, թէ «զամաց երեսնից դեռ եւս առաջի կայ ի դրի հաւաքել»։ Ուրեմն դարձեալ մինչեւ 1131 թուականը (1101+30=1131)։ Նոյն առաջաբանի վերջում եւս յայտնում է, թէ ՇԾ (=1101) թուականից յետոյ պիտի գրի «զայլ եւս զամաց քսան եւ հնգից եւ երեսուն՝ լիցի վճարումն գրոցս»։ Ուրեմն մինչեւ 1126 կամ 1131 թուականը։ Այսպէս ուրեմն, նա մտադիր է եղել իր ժամանակագրութիւնը հասցնել մինչեւ Հայոց ՇՁ (=580+551=1131) թուականը, բայց բերել հասցրել է մինչեւ 1136 թուականը։ Ըստ այսմ նա իր աշխատութեան երկրորդ եւ երրորդ մասերը գրել է 1131 թուականից յետոյ եւ երկար ժամանակում։ Գործի համար նիւթեր հաւաքելը, հարկաւ, նա վաղ է սկսել. «Եւ այս եղեւ ի հայրապետութեանն տանն Հայոց տեառն Գրիգորիսի եւ տեառն Բարսղի, յորժամ եղեւ սկիզբն առաջին՝ երկրապատմութեանս»։ Գրիգորիսը Գրիգոր Վկայասէր կաթողիկոսն է (1066–1105 թ.), իսկ Բարսեղը՝ նրա աթոռակից Բարսեղ կաթողիկոսը (1181–1213 թ.)։ Ուրեմն ոչ ուշ քան 1105 թուականը, որպէսզի միաժամանակ այն երկուսի օրով եղած լինի «առաջին սկիզբը»։

Ուռհայեցին իր գործի համար մեծ ջանք թափելով՝ հարցուփորձ է արել հին ժամանակների ականատեսներին եւ ականջալուրներին, շատ բան իմացել է ծերունիների աւանդութիւնից եւ կամ քաղել ուրիշների թողած յիշատակարաններից։

Առաջին մասի հարիւր տարուայ պատմութիւնը գրել է նա «ըստ այնքանեաց տեսողացն եւ լսողացն, որք էին ի հին ամաց ծնեալք, եւ ընդ ընթերցողսն յառաջին պատմագրացս, որք ականատեսք էին լեալք ամենայն եղելոցս»[1]։ Երկրորդ մասի դէպքերի համար նա գրում է, թէ կատարուել են «յաւուրս հարցն մերոց, որք էին բազում անգամ տեսեալ աչօք իւրեանց»։ Այդ մասի վերջին տասնամեակների, ինչպէս եւ երրորդ մասի մէջ պատմուած դէպքերի նա ժամանակակից է. որոշ բաներ նա անձամբ է տեսած կամ

1 Անդ, էջ 112։

ականատեսներից լսած. «Զայս բազում անգամ լուեալ է մեր ի բազմաց». «Զոր եւ մեք իսկ լուաք զայս ի քաղաքացեացն», եւ նմ.:

Որքան նրա ժամանակագրութիւնն իր հարուստ բովանդակութեամբ շատ կարեւոր մի աղբիւր է պատմութեան համար, նոյնքան այնտեղ գըտնում ենք միամիտ դիւրահաւանութեամբ, տարիների կարգով, իրար ետեւից մէջ բերուած ամէն տեսակի բաներ եւս. բնութեան երեւոյթներ՝ երկրաշարժ, գիսաւոր աստղեր, զանազան օդերեւոյթներ, կարմիր ձիւն, սեւ ձիւն, անասունների կոտորած, թռչունների պատերազմ, մարախ, սովեր, մահտարաժամ, նախապաշարումներ: Ինչպէս ընդհանրապէս տարեգիրներն այլ ազգերի մէջ, նա պարզամտութեամբ հաւատ է ընծայում ամէն տեսակի պատմուածքների, երկնային նշաններ—երեւոյթները համարում է դժբախտութիւնների չարագուշակ ազդարարներ, եւ նմանները: Դրանց հետ միասին խառն պատմում է նա, երբեմն կարճառօտ նշումներով, երբեմն էլ բաւական ընդարձակ ու հանգամանօրէն, ամէն տեսակ եղելութիւններ եկեղեցական եւ քաղաքական կեանքից: Խօսում է Հայոց թագաւորների եւ կաթողիկոսների, յունական կայսրների եւ ուրիշ իշխողների մասին: Փոխէփոխ բեմ է հանում բազմաթիւ վայրերի ու բերդերի տէրեր, մեծ ու փոքր բռնակալներ—յոյն ու հայ, արաբ ու թուրք, եգիպտական թէ վրացական, ժամանակագրութեան վերջին մասի մէջ՝ նաեւ խաչակիր (Ֆրանկ): Նրանք շարունակ արշաւանքներ են գործում, իրար հետ պատերազմների մէջ են, միմեանցից յափշտակութիւններ են անում, կազմում են իրենց համար նոր իշխանութիւններ կամ կորցնում են իրեն իշխանութիւնը: Ամէնքն ամէնքի դէմ են: Երկիրը գտնւում է շարունակ խռովայոյզ ու մրրկածուփ վիճակի մէջ: Եւ հետեւանքը լինում է երկրի աւերում, ժողովուրդների կոտորած, տնտեսական քայքայում, սով, — «դառնաշունչ կոտորած», «կորուստ հաւատացելոց», «զոր կրեաց ազգս Հայոց ի գիսաւոր եւ ի պիղծ ազգէն Եգիպտացւոց, Թուրքաց յեղբարոյ իւրեանց Հոռոմոց», յետոյ նաեւ՝ «ի մոլի ազգէն Ֆրանկաց»: Բացի Միջագետքից նա ուշադրութիւն է դարձրած նաեւ Ասորիքին եւ Հայաստանի հարաւային կողմերին անշուշտ այն պատճառով, որ դրանք Ուռհային մօտիկ են, եւ դրանց մասին աւելի նիւթեր է ժողովել: Մեզ հասած գրքի սկզբում հէնց պատմուած է, թէ «Եղեւ սով սաստիկ ի բազում տեղիս. բայց յաշխարհն հարաւոյ, յերկրին Տաճկաց [=արաբաց] եղեւ նեղութիւն մեծ, եւ առաւել քան զամենայն ի Միջագետս. եւ ի խստութենէ սովոյն տագնապ եւ տառապանումն լինէր ի բազում տեղիս, եւ եւս ի հռչակաւոր մայրաքաղաքն յՈւռհա, զոր կանգնեաց Տիգրան արքայ Հայոց», եւ այլն:

Նա պատմում է շատ պարզ ու հասարակ լեզուով, սովորաբար աղքատ ու մերկ, անպաճոյճ ոճով, նոյն բառերի ու դարձուածների կրկնութեամբ, մեծ մասամբ, անշուշտ, իր աղբիւրներին հետեւելով: Գրուածքը մէկ մէկ կենդանի եւ աշխուժ, նոյնիսկ ազդու է դառնում. այդպիսի հատուածների մէջ ժողովրդական զրոյցների արձագանքն է լսւում: Բայց հանդէս է գալիս եւ ինքը ժամանակագիրը՝ բարեհոգութեամբ դատելով ու կարծիքներ յայտնելով զանազան անձերի եւ իրակութիւնների մասին, իր սրտով դէպի ամէն ինչ, որ ժողովրդի օգտին է, լինի դա հայ թէ օտարազգի, իր ատելութեամբ դէպի աւերիչներն ու հարստահարիչները, եւ իր հայրենասիրու-

թեամբ: Մերթ ընդ մերթ Արիստակէս Լաստիվերտցու ձեւով, բայց ոչ նրա չափ յաճախ, նա էլ ողբեր է յօրինում: Հայրենասիրութիւնն է դրդում մեր այս տարեգրին ատելու ե՛ւ Յոյներին, ե՛ւ Թուրքերին: Նրա այդ զգացմունքը, սակայն, կոյր չէ. նա ուրիշների վատ կողմերը եթէ պախարակում է, լաւերն էլ տեսնում է. երբեմն պակաս չի գովում նաեւ յունական կայսրներին ու զորավարներին: Բայց երբ նրանք դիպչում են Հայերին եւ անիրաւութիւններ են անում, այն ժամանակ նա բառ չի գտնում իր դայրոյթն եւ ատելութիւնը ցոյց տալու: «Գազանաբար սպանմամբ ընթանայր իբրեւ զօձ թունաւոր, որ ելից զտեղի անհաւատ ազգաց», — ասում է նա յոյն զորավարներից մէկի համար, որ եգիպտացիներից յաղթուելուց յետոյ՝ վրէժը հայ ժողովրդից էր առնում: Մինչ Հայոց «սրբասնեալ» մեծ սպարապետ Վահրամ Պահլաւունին չի թողնում, որ յաղթական հայ զօրքերն անողորմաբար կոտորեն փախչող յոյն զօրքերին, սրանք, ընդհակառակն, չեն խնայում նոյնիսկ խաղաղ հայ ժողովրդին: «Սովոր են ազգն Հոռոմոց երդմամբ կորուսանել զամենայն մեծամեծս աշխարհի», — ասում է նա: Եւ այսպէս վարւում են նրանք ոչ միայն Հայերի, այլեւ ուրիշների եւ իրենք իրենց վերաբերմամբ: Այդ պատճառով Յոյները նրա համար «աստուածուրաց եւ նենգաւոր ազգ են», «անողորմ եւ չար ազգ»:

Մատթէոս Ուռհայեցին, սակայն, հանգիստ չի կարողանում խօսել յունական իշխանութեան մասին գլխաւորապէս այն պատճառով, որ Հայոց երկիրը՝ հայ իշխողների ձեռից խարէութեամբ յափշտակելուց յետոյ՝ անպաշտպան են թողնում արեւելքից խուժող Թուրքերի առաջ:

Նոյնպէս նա զայրոյթով լցուած է այս վերջինների դէմ: Նրանց գործած գաժանութիւնները պատմելիս՝ բռնկւում է մեր այս տարեգրի հայրենասիրութիւնը, եւ նրա գրիչը թափ է առնում՝ ստեղծելով գեղեցիկ գրական հատուածներ: Բերենք այդպիսիններից մի փոքր կտոր: Սեբաստիայի աւերումը մանրամասն պատմելուց յետոյ՝ նա գրում է.

«Ո՞վ կարասցէ մի ըստ միոջէ պատմել զկորուստ բարկութեանն եւ զլաց ապաշաւանաց տանն Հայոց, զոր յանօրէն եւ յարեանարբու գազանացն զօրացն Թուրքաց կրեաց յանտիրութենէ, ի սուտ պահապանացն, ի տկար եւ ի թուլամորթ վատ ազգէն Յունաց: Վասնզի մի առ մի քակեալ հանին զքաջ զօրականն ի տանէն Հայոց, զորս հանին յարկաց եւ ի գաւառաց եւ բարձեալ խափանեցին զաթոռ թագաւորութեանն Հայոց. քակեցին զցանկ պահպանութեանն զօրաց եւ զօրավարաց. եւ ազգն Հոռոմոց իւրեանց անուն քաջութեան զանդարձ փախչելն արարին պարծանք. նմանեցան վատ հաւուցն, որ յորժամ զկայլն տեսանէ՝ փախչի: Սակայն Հոռոմք յայն ջանս ջանացան, որ զուր զպարիսպ ամրութեան տանն Հայոց քակեալ կործանեցին եւ զՊարսիկս ի վերայ արձակեցին սրով, եւ զամենայն յաղթութիւնն իւրեանց համարեցան, եւ ինքեանք անպատկառելի երեսօք կուրտ զօրավարօք եւ ներքինի զօրօք զՀայս պահել ջանային, մինչ եւ Պարսիկք անտէր տեսին զամենայն արեւելք: Եւ յայնժամ մեծաւ զօրութեամբ զօրացան այլազգիքն, որ ի մէկ տարւոյ հասան մինչեւ ի դուռն Կոստանդնուպոլսի եւ առին զամենայն աշխարհն Հոռոմոց, զքաղաքս ծովեզերաց եւ զկղզիս նոցա, եւ

արարին զազգն Յունաց որպէս զբանտարկեալս ի ներս ի Կոստանդնուպոլիս»[1]:

Այսպիսի հատուածների մէջ Ուռհայեցին բարձրանում է պատմագրի աստիճանի. նա ճիշտ ըմբռնել է պատմական իրականութիւնը եւ գեղեցիկ արտայայտել է այդ: Նրա պատճառաբանութիւնը սելջուկեան Թուրքերի արագ ծաւալուող աջողութիւնների նկատմամբ՝ մինչեւ այժմ էլ պահում է իր արժէքը:

Գալիս են խաչակիրները իբր «յօգնութիւն քրիստոնէից»: Ուռհայեցին ուրախանում է: Սեւ լեռան հայ կրօնաւորները եւ այն հայ իշխանները, որոնք հաստատուած էին Տաւրոսի բարձունքների վրայ, ինչպէս Ասորիքում ու Միջագետքում, սրտաբաց ու գրկատարած ընդունում են նրանց, ամէն կերպ օգնում: Բայց երբ նրանք մի փոքր ամրանում են Արեւելքում, սկսում են այժմ նրա՛նք նեղել Հայերին. հայ իշխանների ձեռից խլում են նրանց կալուածները եւ ոչնչացնում նրանց իշխանութիւնները: Եւ Ուռհայեցու տեսութիւնը չուռ է գալիս այն նորեկ քրիստոնեաների վրայ, որոնք «ամենայն անիրաւութեամբ եւ անառակ գնացիւք մոռացան զպատուիրանս տեառն»: Ուստի Աստուած էլ նրանց այլեւս չի օգնում, ասում է Ուռհայեցին: Նրանց կրած առաջին կոտորածը պատմելիս՝ մեր Տարեգիրը նոյնիսկ ուրախանում է: Այս դեռ առաջինն է, — ասում է նա. «յառաջ միտ դիք եւ մի՛ ձանձրանայք»: Նրա այս չարախնդութեան պատճառն այն է, որ խաչակիրները բարբարոսաբար մեծ չարիքներ են հասցնում եւ անմեղ ժողովրդին: Ֆրանկներն, — ասում է նա, — «յօժարութեամբ հեղումն արեան առնէին անմեղ եւ արդար արանց»[2]:

Դառն արհաւիրքների ու կոտորածների հետ՝ Ուռհայեցին արձանագրել է նաեւ սիրալի գործեր, երբեմն իսկական փոքրիկ վիպակներ մանրանկարչական ձեւով, անգամ ժողովրդական վիպական մանրամասնութեամբ պատմուածքներ:

Այսպէս, օրինակ, մենք տեսնում ենք, թէ ինչպէս Թոռնիկ Մամիկոնեանը այն խառնաշփոթ ժամանակներում քաջութեամբ պաշտպանում եւ պահպանում է Սասունի անկախ իշխանութիւնն ընդդէմ յարձակուող Թուրքերի եւ բռնակալ Փիլարտոսի ու Ֆրանկների եւ ուրիշների եւ սպանւում է դարանամուտ նենգահարութեամբ[3]: Մի իսկական վիպական հերոս է նա, որի ժամանակն ու կեանքի գծերն անպայման ազդել են մեր ազգային հերոս Սասունցի Դաւթի վէպի ու բնաւորութեան վրայ[4]: Այսպիսի վիպական կտորներից է, օրինակ, նաեւ ծերունի մեծ իշխան Խաչիկի եւ իր որդիների մասին պատմածը: Խաչիկը սակաւաթիւ մարդկանցով քաջաբար մարտնչում է յարձակուող այլազգիների բազմութեան դէմ: Նրա կտրիճ որդին, տասնուհինգամեայ իշխանը, փախչելով իր արդելանոցից, ուր փակել էին

1 Անդ, էջ 135 եւ հտն.:

2 Անդ, էջ 302 եւ հտ., 308 եւ հտն., 337 եւ հտն.:

3 Անդ, էջ 130 եւ հտ., էջ 206—210:

4 «Մուրճ» ամսագիր, Թիֆլիս, 1889, էջ 1739—1741, 1743—1746՝ «Ազգային վէպ» յօդուածը Մ. Աբեղեանի: Շարունակութիւնը նոյն ամսագրի 1890 թ. Յունուար ու Փետրուար ամիսների համարներում:

Նրան, որ կախ չգնայ, ինչպէս մի առիւծ մարտի մէջ է մտնում եւ սպանւում: «Եւ տեսեալ Խաչիկ՝ բեկաւ ողն նորա, անկաւ սուսերն ի ձեռաց նորա»: Նա էլ սպանւում է: Նրա միւս որդիները, Հասան եւ Ճնճղուկ, որոնք իրենց երկրից բացակայ էին, վերադառնալով՝ մարտով լուծում են իրենց հօր եւ եղբօր մահուան վրէժը[1]: Այս արիութեան գործը, որ ժամանակագրութեան մէջ պատմուած է ինչպէս մի ժողովրդական վէպ, կատարուել է 1041 թուին Վասպուրականի Թոռնեան գաւառում: Բայց միւս կողմից տեսնում ենք նաեւ շատ ցաւալի արարքներ եւս:

Ահա նոյն Վասպուրականի թուլամորթ թագաւորը՝ Սենեքերիմ, այդ նախապաշարուած նեղ խելապատակը, որ թագաւոր լինելով հանդերձ՝ չի հասկանում իւրերի դրութիւնը: Խուժադուժ Թուրք զօրքերը 1018 (ըստ այլ ընթերցուածի 1016) թուականին մտնում են Վասպուրական[2]: Արքայորդին՝ Դաւիթ եւ Շապուհ զօրավարը զօրքով ելնում են նրանց դէմ: Մինչեւ այն ժամանակ,—ասում է Տարեգիրը,—Հայերը «չէին բնաւ տեսեալ Թուրք զօրք հեծելոց. եւ ի հանդիպելն նոցա՝ տեսին այլակերպ գնդսս, աղեղնաւորս եւ հերարձակս իբրեւ զկանայս: Եւ յայնժամ զօրքն Հայոց չէին սովոր պատրաստ լինել ընդդէմ նետիցն»: Բայց եւ այնպէս մերկացնում են իրենց սուսերները, քաջաբար յարձակւում թշնամու վրայ եւ շատերին կոտորում: Այլազգիներն էլ հեռուից նետաձգութեամբ վիրաւորում են հայ զօրականներից շատերին: «Քաջ եւ հզօր պատերազմող» Շապուհ զօրավարը, հակառակ արքայորդու կամքին, նահանջել է տալիս, որպէսզի գնան «այլ զգեստ» պատրաստեն նետերի դէմ: Գնում են Ոստան քաղաքը եւ թագաւորին պատմում եղելութիւնը: Սենեքերիմը, փոխանակ իր զօրավարի խրատին հետեւելով նոր պատրաստութիւն տեսնելու թշնամիների դէմ, եւ կամ միւս հայ թագաւորներից օգնութիւն խնդրելու, ահա թէ ի՛նչ է անում. «Ոչ եկեր եւ ոչ էարբ,—ասում է Ուռհայեցին,—այլ կայր մտախոհ, լի տրտմութեամբ, եւ զգիշերն ամենայն անքուն անցուցանէր, եւ նստեալ քննէր զժամանակագրութիւնս եւ զասացուածս աստուածախօս տեսանողացն, զսրբոց վարդապետացն, եւ գտանէր գրեալ ի գիրսն զժամանակն ելանելոյ Թուրքաց զօրաց եւ զօրականաց. եւ ծանեաւ զկորուստ եւ զկատարած ամենայն երկրի. եւ գտանէր ի գիրսն գրեալ այսպէս, եթէ «ի ժամանակին յայնմիկ փախիցեն յարեւելից յարեւմուտս...»: Եւ այդքանը բաւական էր. մարգարէներն իբր գուշակած են եղել Թուրքերի այս յարձակումը Հայաստանի վրայ եւ Հայոց ամբողջ երկրի կորուստն ու վերջը: Էլ կարելի չէր դիմադրել: Բայց նոյն մարգարէներն իբր խորհուրդ են տուել փախչել արեւելքից արեւմուտք: Ահա թէ ո՛րչափով կործանարար է եղել նախորդ դարում ծայրայեղութեան հասած նեղ կրօնական ոգին եւ սրա հետ կապուած սքոլաստիկական անմիտ մեկնաբանութիւնը: Այդ մորթապաշտ Սենեքերիմին հէնց այդ էլ հարկաւոր էր՝ «փախչել արեւելքից արեւմուտք», եւ նա իր հայրենի աշխարհը տալիս է բիւզանդական կայսրին, որ մեծ ուրախութեամբ ընդունում է այդ նուէրը, եւ փոխանակ տալիս է նրան Սեբաստիա քաղաքն իր գաւառներով:...: Ժամա-

1 Մատթ. Ուռհ. Ժամանակագր., էջ 90 եւ հտն.:

2 Անդ. էջ 46 եւ հտն.:

նակագիրն այս տխուր պատմութիւնը մանրամասն անելուց յետոյ՝ յիշում է միայն այս հետեւանքը. «Եւ անտէրացաւ աշխարհն Հայոց ի թագաւորաց եւ յիշխանաց»: Շատ ճիշդ խօսք է: Սենեքերիմի բացած կորստեան դուռն այլեւս չի փակւում, շուտով նրան հետեւում են եւ ուրիշները: Կամայ թէ ակամայ ելնում են ու ելնում երկրից դուրս, եւ ոչ միայն իշխանները: Փոխանակ միահամուռ ուժերով ետ մղելու ներխուժող թշնամիներին՝ թուլամորթութեամբ փախչում են ոչ միայն արեւմուտք, այլ եւ ուրիշ կողմեր, եւ այդ է եղել հայութեան չար բախտն ամբողջ իննհարիւր տարի շարունակ:

Այդպիսի հայրենախոյս մեծամեծների դիակները միայն երբեմն երբեմն վերադարձրել են իրենց երկիրն՝ այստեղ թաղելու համար, ինչպէս վարւում են վերաբերմամբ նոյն Սենեքերիմի, որ մեռնում է 1022 թ., եւ դին բերում թաղում են Վարագում իր հայրերի մօտ: Այս է դրանց հայրենասիրութիւնը:

Այդպիսի հայրենաթափութիւնը՝ հասկացող մտքերի ու զգայուն սրտերի, ինչպէս եւ իրեն՝ Մատթէոսի համար եղել է աղբիւր դառն վշտի, որով շարունակ համակուել են մեր հեղինակները 12րդ դարում: Կարելի չէ առանց զգածուելու կարդալ Գրիգոր Վկայասէրի թաղումը (էջ 300): Նա 1105 թ. մեռնում է Հայոց մեծ իշխան Գող Վասիլի մօտ, որ Եփրատից արեւմուտք կազմել էր մի բաւական մեծ հայկական իշխանութիւն: «Եւ թաղեցաւ մեծաւ հանդիսիւ ի Կարմիր վանքն մերձ ի Քեսուն [Գող Վասիլի իշխանութեան կենտրոնն է]... Եւ իշխանն Հայոց Վասիլն եւ այլ ազատագունդքն Հայոց արարին կոծ մեծ ի վերայ նորա, եւ դառնակոծ արտասուօք լային առ հասարակ ի վերայ նորա... եւ նովաւ յիշեալ լային տունն Հայոց, եւ լային զանտիրանալն իւրեանց ի յօտար աշխարհ եւ զելանելն ի հայրենի տանէն իւրեանց»:

Մատթէոս Ուռհայեցին ինքն ամէնից լաւ տալիս է իր գործի գնահատութիւնն իր գրքի երրորդ մասի առաջաբանի մէջ[1], իրեն նմանցնելով բոյն շինող ծիծեռնակին. «Որպէս եւ այն թեթեւ թռչունն, թէպէտ եւ ձայնովն ընդդիմանայ բազմաց, այլ մարմնովն տկարանայ, այն որ կոչի ծիծառն. սակայն նա զմերս ունի նմանութիւն առ զարմանալի գործ բնակութեանն իւրոյ, թէ զիա՛րդ յոչնչոյ բնակութիւնս կազմէ եւ ի բարձունս առանց հիման կառուցանէ, չաղախաբեր եւ չիղաբեր փաստակս հնարով հնարէ, եւ ամրութիւնս պնդագոյնս հաստատէ, եւ որդւոց իւրոց զնա տայ, ժառանգութիւնս, զոր եւ այլ յաղթանդամ թռչնոց անհնար է զայն գործել արծուոյ ասեմ եւ նմանեաց նորա...: Արդ այսպիսի օրինակաւս հանճարեղք եւ գիտնականք զամենայն քննութիւնս Հին եւ Նոր Կտակարանացն Աստուծոյ կարող են առնել... բայց զայս հաւաստապէս ասացից եւ առանց երկբայութեան, վասն այս՝ որ ի մէնջ քննեալ գծագրեցաւ, անհնար է եթէ այլ կարող լինի զայս գտանել եւ կամ հաւաքումն առնել միահամուռն ազգաց եւ թագաւորաց, հայրապետաց եւ իշխանաց, զամենայն ժամանակս թուականութեամբ ի գիր հաւաքել, վասն զի վճարեալ հատան առաջինքն, որք

1 Անդ, էջ 279 եւ հտն.:

*ականատեսք էին ամենայն ժամանակացն: Արդ զայս ոչ ոք է կարող առնել, զոր ինչ մեք արարաք, զի զոր ինչ գրեցաք՝ գրեցաւ»: Եւ նա մեծ յիշատակ է թողել իրեն՝ իր երկով դառնալով իր ժամանակի հարազատ հայելին եւ տալով մեզ մի մեծ ժամանակաշրջանի ընդարձակ պատկերը:*

3. Գրիգոր Երէց *անունով մէկը շարունակել է Ուռհայեցու ժամանակագրութիւնը* 1137 *թուականից մինչեւ* 1162 *թ. ներառեալ*[1]:

4. Սամուէլ Անեցի:— *Նախորդից աւելի կարեւոր է այս ժամանակագրի աշխատութիւնը*[2]: *Նրա մասին կենսագրական տեղեկութիւններ չունենք. իր գրքի մէջ* (*էջ* 137) *գրում է. «Ի ՈԺ* (=1161) *թուին թագաւորն Վրաց Գորգի էառ զԱնի ի յունիս ԺԳ. եւ ապա յօղոստոս ամսամտին՝ կոտորեաց զՇահիարմէնն էՌ. ու գութուն Ռ. մն. եւ այսորիկ ականատես եղաք մեք»: Բերել է բազմաթիւ այլերի պատմութիւններից տարեգրութիւններ չափազանց համառօտ: Հայոց պատմութեան նիւթամամբ՝ սակաւաթիւ դէպքերում համեմատաբար ընդարձակ քաղուածքներ է արել: Այսպէս են նաեւ Սարկաւագ Վարդապետի գրած Պատմութիւնից հատուածները: Ժամանակագրութիւնը հասցրած է մինչեւ* 1180 *թուականը: Ոչ մի դեղարուեստական գրական արժէք չունի:*

*Սամուէլ Անեցու ժամանակագրութիւնը շարունակել են սկսած* 1181 *թուականից մինչեւ* 1336 *թ.: Ուրիշ ձեռագիրների մէջ եղել են յաւելումներ նոյնիսկ մինչեւ* 1657 *եւ* 1665 *թուականները*[3]:

5. Մխիթար Անեցի:[4]— *Եղել է Անի քաղաքի Կաթուղիկէ եկեղեցու աւագերէցը. ապրել է* 12*րդ դարի վերջերում: «Պատմութիւնը» գրել է Հառիճայի վանահայր Գրիգոր վարդապետի խնդրով: Պատմութիւնն ունեցել է երեք «պրակ»: Մեզ հասել է միայն առաջին պրակը—«սկիզբն եւ գլուխք Թ-ն»:*

---

1 *Անդ, էջ 369—429. Գրիգոր երէց անունը՝ էջ 370:*

2 *Սամուէլ քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց յաղագս Գիւտի ժամանակաց մինչեւ ի ներկայս ծայրաքաղ արարեալ:— Յառաջաբանով, համեմատութեամբ, յաւելուածներով եւ ծանօթութիւններով Արշակ Տէր-Միքելեանի, Վաղարշապատ, 1893:*

3 *Տես՝ Սամ. Անեցու «Յառաջաբանը», էջ ԻԸ, եւ էջ 140, 161, 175:*

*Սամուէլ Անեցու աշխատութեան հետ տպագրուած են եւ շարունակողների գործերը: Բացի այդ՝ նաեւ երբեմ յաւելուածներ—էջ 185—199. Յովհաննիսիկ Վարդապետի «Համառօտ պատմութիւն անցիցն անցելոց ի վերին կողմանս Հայաստանի ըստ կարգի ժամանակագրութեան (սկսեալ ի ՌԻԱ թուականէն Հայոց ցՌԽԹ, այն է՝ յամէ տեառն 1572 ց1600)»: Էջ 200—203. «Թարեխ տաճկաց»: Էջ 204—212. «Պատմութիւն ազգաց Ռովբինեանց...»: Էջ 212—223. «Համառօտ պատմութիւն Ռուբինեանց իշխանաց»: Էջ 224—243. «Պատմութիւն Վարուց Ներսիսի եպիսկոպոսի երգոցս Սաղմոսի քննօղի»:*

*Կայ նաեւ «Վահրամայ րաբունւոյ ոտանաւոր պատմութիւն Ռուբինեանց», Փարիզ. տպ. Կ. Վ. Շահնազարեան, 1859, ժամանակակից Շնորհալու:*

4 *Մխիթարայ Անեցւոյ Պատմութիւն, Ս. Պետերբուրգ, 1879:*

# ԱՇԽԱՐՀԻԿ ՈԳՈՒ ՎԵՐԱԾՈՒՄ

## ՆԵՐՍԷՍ ՇՆՈՐՀԱԼԻ

### Կենսագրութիւն

**1. Հայ գաղութն ասորական Միջերկրայքում իբրեւ հայկական մշակոյթի վայր:**—*Մինչ Հայաստանի հիւսիսում Յովհաննէս Սարկաւագ Վարդապետը խոնարհուել էր արդէն դէպ իր արեւմուտը, եւ Մատթէոս Ուռհայեցին Միջագետքում աշխատում էր իր ժամանակագրութեան վրայ, նոյն միջոցին Հայաստանից դուրս, Ծովք բերդում, 1121 թ. իր առաջին բանաստեղծական փորձն էր անում քսանամեայ Ներսէս Պահլաւունին՝ յօրինելով իր «Վիպասանութիւն» աշխատութիւնը: Յոյների եւ սելջուկեան Թուրքերի ձեռից 11րդ դարում Հայերը դիմում էին դէպի արեւմուտք: Բազմաթիւ հայ իշխաններ իրենց մարդկանցով, յաճախ իրենց ժողովրդի բազմութեամբ, մայր երկրից դուրս քաշուելով կամ քշուելով՝ տեղաւորւում էին Փոքր Ասիայում, Կիլիկիայում Տաւրոսեան լեռների վրայ, Միջագետքում, այլեւ Ասորիքում Եփրատ գետից արեւմուտք: Նրանք կազմել էին այդ կողմերում անկախ կամ կիսանկախ փոքր իշխանութիւններ, երբեմն էլ անուանով միայն ենթարկուելով Բիզանդիային՝ իրենց անկախութիւնը պահում էին կռուելով մի կողմից՝ Թուրքերի դէմ, միւս կողմից՝ յոյն իշխողների: Այսպիսի տարադիմիկ վայրատականներից մէկն էր եղել եւ Ներսէսի պապը, մի Պահլաւունի իշխան, Գրիգոր Մագիստրոս Պահլաւունու չորրորդ դստեր ամուսինը. Նրա որդիներից մէկն էր Ապիրատ Պահլաւունին, Ներսէսի հայրը: Նա տէրն էր Ծովք կամ Ծով կոչուած փոքրիկ բերդի կամ դղեկի, որ գտնւում էր Տլուք գաւառում, Անտիոքի երկրի մէջ, Մարաշից (=Գերմանիկից) դէպի արեւելք եւ Այնթապից դէպի հիւսիս-արեւմուտք, Սեւ լերան շղթայի ճիւղերից մէկի մէջ, մի բրգաձեւ քարաժայռ ու քարակարկառ գագաթի վրայ, ամէն կողմից սեպացած[1]:*

*Աշխարհականների հետ գաղթում էին նաեւ կրօնաւորներն ու վարդապետները, որոնք տեղաւորւում էին նորաշէն վանքերում, գլխաւորապէս Սեւ լեռան վրայ: Այսպէս կոչւում էին Կիլիկիայի եւ Ասորիքի միջեւ հարաւից դէպի հիւսիս ձգուող Ամանոս լեռնաշղթան, աւելի եւս սրա դէպի հիւսիս-*

---

*1 Բաբգէն ծ. վ. Կիւլէսէրեան. Ծովք. Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ, Վիեննա, 1904:*

*Ղեւոնդ Մ. Ալիշան, Շնորհալի եւ պարագայ իւր, Վենետիկ, 1873, էջ 96 եւ հտն., 151, 189, 310:*

*Բ. Կիւլէսէրեանը մանրամասն ուսումնասիրել եւ որոշել է Ծովք բերդի եւ Տլուք գաւառի տեղը: Նա Երուսաղէմի տպագրութիւնից բերել է նաեւ Մատթէոս Ուռհայեցու ժամանակագրութիւնը շարունակող Գրիգոր Երէցի հետեւեալ վկայութիւնը. «Յայսմ ամի (1161—1162) Տէրն Անտիոքու... իջանէր յԱլեքսայ երկիրն, եւ ի բերդն Կաթողիկոսի, որ կոչի Ծով»: «Ալեքսայ» անուան տակ նա հասկացել է «Ալեքս Ա. կայսր Բիւզանդիոյ (1081—1118)»: Բայց պարզապէս աղաւաղում է դա: Որիշ ձեռագիրների մէջ, ըստ Էջմիածնի տպագրութեան, է «յերկիրն Տլքոյ»:— Մի ժամանակ սխալմամբ կարծել են, թէ Ծովքը Տաւրոսեան լեռների մէջ, Ծոփաց աշխարհում, Խարբերդից հարաւ գտնուած լճակն է:*

արեւելք եւ արեւելք թեքուող այն ճիւղերը, որոնք խառնւում էին Կիլիկիայի հիւսիսային կողմերով դէպի արեւելք պարզուած Տաւրոս մեծ լեռնաշղթայի ճիւղերի հետ:

Այս լեռան ընդարձակ թեւերի վրայ՝ բնական ամրութեան համար ժողովուած էին յոյն եւ ասորի կրօնաւորներ ու ճգնաւորներ: Գրիգոր Վկայասէրի ջանքերով հիմնւում են այնտեղ եւ հայկական վանքեր: Ասորիքի այս մասում,—Կիլիկիայից արեւելք, Տաւրոսից հարաւ եւ Եփրատից արեւմուտք եւ հիւսիս–արեւմուտք,—«Եփրատացիք» կոչուած աշխարհում (հին Կոմագէն թագաւորութեան երկրում, որի մայրաքաղաքն էր Սամոսատ), «Մէջերկրայքում», ինչպէս անուանում է Ներսէս Շնորհալին այդ կողմերը, 11րդ դարի վերջերին եւ 12րդի առաջին երկու տասնամեակներում կար, ինչպէս տեսանք, Գող Վասիլի հայկական մեծ իշխանութիւնը, որի կենտրոնն էր Քեսուն[1] քաղաքը Եփրատի մօտիկ: Կային այնտեղ նաեւ մի քանի ուրիշ հայկական մանր իշխանութիւններ: Այս «Մէջերկրայքն» ահա իր վանքերով ու հայկական իշխանութիւններով՝ դառնում է հայկական կուլտուրայի համար մի նոր վայր, որի փայլուն ներկայացուցիչներն են հանդիսացել Գրիգոր ու Ներսէս եղբայրները 12րդ դարում, իսկ 13րդ դարում՝ Վարդան Այգեկցին:

Գրիգոր Մագիստրոսի որդի Վահրամ–Գրիգոր Վկայասէր կաթողիկոսն իր կեանքի վերջին տարիներն անց է կացրել այդ կողմերի վանքերում, որոնք վայելում էին Գող Վասիլ ազդեցիկ իշխանի հովանաւորութիւնը: Ներսէս Շնորհալին իր «Վիպասանութեան» մէջ այդ կաթողիկոսի համար գրում է, թէ Եգիպտոսից վերադառնալիս՝ նա

Զօթեւանօք գանց արարեալ,
Մինչ ի Տաւրոս լեառն հասեալ,
Անդ ուր սրբոցն բնակք եղեալ...
Ի վայելուչ յայն վայր եկեալ
Հովուապետին գգօնացեալ,
Ի Սեաւ մըթին լեառն անուանեալ,
Ուր են հոգիք լուսաւորեալ...

Այնտեղ նա ոչ միայն կրօնաւորական կեանք էր վարում, այլեւ գրականութեամբ պարապում.

Զքանի սիրողսըն հաւաքեալ
Եւ առ ինքեան բնակեցուցեալ.
Զգիրքս Հոգւոյն միշտ ընթերցեալ
Եւ ընդ նոսին յար խօսակցեալ:

---

1 Բաբգէն Կիւլէսէրեանը «Ծովք» աշխատութեան մէջ, էջ 28, 71 եւ այլն, նոյնպէս եւ Մ. Օրմանեան, «Ազգապատում», էջ 1325, պար. 910 Քեսուն քաղաքը նոյնացրել են Պեհեսնիի հետ, որ գտնւում է Եփրատի վրայ աջ ափին: Գրիգոր Երէցը, սակայն, յաճախ յիշում է այդ երկուսն իբրեւ առանձին քաղաքներ. Քեսուն, Պհեսնի, Ռապան, Հռոմկլա ու Քեսուն, Պհեսնի, Ռապան,— Քեսուն Պհեսնի, Ռապան (Ուռհայեցի. էջ 370, 375, 395): Այդ չորս քաղաքները կամ բերդերն էլ Եփրատի վրայ կամ մօտ են եղել՝ ցոյց տրուած կարգով հիւսիսից հարաւ:

Յետոյ նա տեղափոխւում է Քեսուն եւ Կարմիր Վանքը, որ Քեսունի մօտ էր:

Ի Մէջերկրեայս անդուստ փոխեալ,
Որ Եփրատայ մերձ առակացեալ
Քաղաք Քեսուն իմն անուանեալ,
Յոր հուպ է վանք Կարմիր կոչեալ[1]:

Գող Վասիլ իշխանն ու իր ամուսինը պատուասիրում ու յանձանձում են նրան՝ «ըափոփմամբ ծերատածեալ»:

2. Ներսէսի ուսումն ու կրթութիւնը: — Գրիգոր Վկայասէրն իր ձեռի տակ մեծացնում ու կրթում էր իր քեռորդի Ապիրատ Պահլաւունու Գրիգոր որդուն, վաղ մանկութիւնից, կամ ինչպէս Ներսէս Շնորհալին գրում է,

Որ ի ստենէ զոլով հատեալ,
Առ համանուն հօրըն վարժեալ:

Յետոյ նա Գրիգորի հետ պահում ու խնամում էր նոյնպէս եւ նրա եղբայր Ներսէսին, որ ծնուած էր շուրջ 1101 թ. եւ Գրիգորից մօտ վեց կամ յօթը տարով փոքր էր[2]: Ներսէս Լամբրոնացին[3] գրում է, թէ Գրիգոր Վկայասէրը Ներսէսին էլ շատ վաղ տարիքից առնում է կրօնաւորութեան համար.

Տէր Գրիգորիս որ երկրորդ է,
Ի պատուական սուրբ իւր զարմէ
Զայս հարազատ եղբայրս ընտրէ
Ի յըստընդեայ փոքր հասակէ,
Ի միանձանց սրբոց կոչէ,
Դաստիարակ ուսման կարգէ,
Ներսէս զանուն նախնոյն կոչէ:

Բայց այդ երեխաները երկար չեն վայելում նրա խնամքը. նա վախճանւում է 1105 թ.: Մահից առաջ նա Անի քաղաքից իր մօտ է կանչում իր քեռորդի Բարսեղ կաթողիկոսին, — որ իր հայրական կողմից էլ Պահլաւունի էր եւ կաթողիկոսի աթոռակիցն էր արեւելքում, — եւ նրան է յանձնում այն երեխաներին, որ լաւ կրթի ու դաստիարակի նրանց, որպէսզի մեծ եղբայրը՝ Գրիգորը յետոյ կաթողիկոս դառնայ: Վկայասէրի մահից յետոյ Բարսեղ կաթողիկոսը սիրով կատարում է նրա կտակը: Նա մնում է Գող Վասիլի իշխանութեան մէջ եւ նստում է Շուղր անապատում:

Ի յանապատ իմըն բնակեալ՝
Ի մէջ լերանց՝ Շուղր անուանեալ:

---

1 Ներսիսի Շնորհալւոյ Բանք չափաւ, Վենետիկ, 1830, էջ 548 եւ հտն.:

2 Մաղաքիա Օրմանեան, «Ազգապատում», Կոստանդնուպոլիս, 1912, էջ 1399, պարագրաֆ 961 գրում է. «իր կաթողիկոս եղբօրմէն 5 կամ 6 տարեկան պզտիկ, որով շուրջ 1100-ին ծնած կ'ըլլայ Ծովք գիւղակին մէջ»: Ուրիշները նրան 1102 թ. են ծնուած դնում:

3 «Գովեստ ներբողական... Ներսիսի Լամբրոնացւոյ». տես՝ «Թուղթ ընդհանրական Ներսիսի Շնորհալւոյ», Էջմիածին, 1865, էջ 461–497, բերուած կտորը՝ էջ 473:

Այն ժամանակ իր ուսումնական վարդապետներով նշանաւոր է եղել Քեսունի մօտ Կարմիր վանքը, որի առաջնորդն էր իր գիտութեամբ հռչակուած Ստեփանոս Մանուկ կոչուած եպիսկոպոսը: Պատմում են, որ սա, Մեծ Հայաստանում արդէն քահանայ ձեռնադրուած, քարոզելիս է եղել: Այնտեղից գնացել է Քեսունի Կարմիր վանքը եւ այստեղ էլ տասնութ տարեկան հասակում սկսել է եկեղեցու բեմից քարոզել եւ վարդապետել ծերունի վարդապետների թոյլտուութեամբ: Ուրիշները Բարսեղ կաթողիկոսին գանգատուել են այդ առթիւ: Կաթողիկոսը կարգադրութիւն անելուց առաջ լսել է նրա քարոզը, շատ հաւանել է, ոչ միայն թոյլ է տուել, որ այդ նորահասակ երիտասարդը շարունակի վարդապետել, այլեւ իր մատանին ու գաւազանը նուիրել է նրան եւ եպիսկոպոս ձեռնադրելով նրան՝ կարգել է առաջնորդ Կարմիր վանքի եւ Գող Վասիլի իշխանութեան: Իր գիտութեամբ եւ սրբակեաց վարքով յայտնի այս վարդապետ-եպիսկոպոսին է ահա յանձնում Բարսեղ կաթողիկոսը Գրիգոր եւ Ներսէս Պահլաւունի եղբայրների կրթութիւնն ու դաստիարակութիւնը:

Քեսունի Կարմիր վանքը դառնում է մի նոր վարդապետարան. երկու եղբայրների հետ ուսանում են եւ ուրիշները, որոնցից են Սարգիս Շնորհալի, Իգնատիոս Շնորհալի, Բարսեղ Շնորհալի[1]:«Շնորհալի մականունին կրկնումը նշանաւորագոյն աշակերտներուն վրայ՝ մտածել կու տայ, թէ այդ կոչումը որոշիչ պատուանուն մը եղած է Շուղրի կամ Քեսունի Կարմիր վանքի աշակերտութեան մէջ. ինչպէս Ճերթող պատուանունը Սիւնեաց դպրոցին եւ իմաստասէր պատուանունը Արագածոտնի դպրոցին յատկացեալ մակդիր անունի պէս գործածուեցան»[2]:Այդ «Շնորհալիներից», ինչպէս եւ Ներսէս Շնորհալուց մնացել են մեկնութիւններ, իրենց վարդապետ Ստեփանոս Մանուկից, սակայն, չի մնացել ոչ մի գրական երկ:

Կարմիր վանքում Ներսէսն առել է եկեղեցական ուսումը, որ յետոյ էլ նա կատարելագործել եւ ընդարձակել է անդուլ ջանքով: Նրա ուսած առար-

1 Ղ. Ալիշան, Շնորհալի եւ պարագայ իւր, Վենետիկ, 1873, էջ 49 եւ հտն.:

2 Գ. Զարբհանալեան, Հայկական հին դպրութեան պատմութիւն, Վենետիկ, 1887, էջ 616 եւ հտն., էջ 642—648:

3 Մ. Օրմանեան, Ազգապատում, Կոստանդնուպոլիս, 1912, էջ 1336 եւ հտ. պար. 917. Օրմանեանն ու Զարբհանալեանը Շուղրի վանքն եւ Կարմիր վանքը սխալմամբ նոյնացնում են իրար հետ, գրելով՝ «Շուղր անապատին Կարմիր վանքն» (Զարբ.), «Քեսունի կամ Շուղրի Կարմիր վանք», «Շուղրի կամ Քեսունի Կարմիր վանք« (Օրման.): Այդ երկուսը տարբեր վանքեր են: Ներսէս Շնորհալին «Վիպասանութեան» վերեւում բերուած տողերի մէջ գրում է, թէ Գրիգոր Վկայասէրը բնակուեց Շուղր անուանուած մի անապատում (=վանքում) լեռների մէջ»: Յետոյ նա գրում է Բարսեղ կաթողիկոսի թաղման համար. «Զոր եւ յուխտին (=վանքում) նախասացեալ ի Շուղր անունըն հանգուցեալ»— որին եւ թաղեցին վերեւում յիշուած Շուղր անունով վանքում: Իսկ Կարմիր վանքը, ինչպէս վերեւում բերուած տողերից կարելի է տեսնել, է Քեսունի մօտ: Ուռհայեցին (էջ 329 եւ հտ.) գրում է, թէ վերաւորուած Բարսեղ կաթողիկոսն «եստանել զինքն ի վանքն իւր որ կոչի Շուղր», «մեռաւ եւ թաղեցաւ ի Շուղրն»: Ապա անմիջապէս պատմում է նա, թէ ժողով են անում «ի Կարմիր վանքն մերձ ի Քեսուն գաւառ» եւ կաթողիկոս են ձեռնադրում Գրիգոր Պահլաւունին: Ուրիշ տեղ (էջ 300) նա Գրիգոր Վկայասէրի համար գրում է, թէ «թաղեցաւ... ի Կարմիր Վանքն մերձ ի Քեսուն». նոյնպէս եւ Գող Վասիլի համար ասում է, թէ «թաղեցաւ ի Կարմիր վանքն» (էջ 324):

վաներն եղել են՝ Ս. Գիրք, սուրբ հայրերի գրվածքներ, եկեղեցու եւ սրբերի պատմություններ, դավանաբանություն, հայկական մատենագրություն ու թարգմանություններ թէ՛ եկեղեցական եւ թէ՛ արտաքին գիտությունների. Հմտացել է եկեղեցական կանոններին ու կարգերին, սովորել է եկեղեցական երաժշտություն ու տոմարագիտություն, վայելուչ շարադրություն գրաբար լեզվով, այլեւ վայելչագրություն «ի դանազան կերպս»:

Նա ունեցել է գեղեցիկ ձեռք եւ նույնիսկ ծերութեան օրերին, ազատ ժամանակին, արտագրել է գրքեր, որոնց մի քանիսը հասել են մեզ: Ներսէս Լամբրոնացին[1] գրում է.

Ներսէս պատուով գեր ճոխացաւ,
Այլ ի գործոյ ոչ կասեցաւ,
Ձեռացն երկոք վաստակեցաւ,
Գիրըս գըրել միշտ ճըգնեցաւ.
Որպէս հօրանս ուլուց ցուցաւ
Գեղեցկագիր գիրըն կարգաւ:

Ուսումնասէր լինելով, նա շատ ցանկացել է բարձրանալ իբրեւ գիտնական, բայց ժամանակի չփոթ դրությունը թույլ չի տվել նրան հասնել իր նպատակին: «Արտաքին» գիտությունների ուսման պակասը նա զգացել է դեռ իր գրական գործունէութեան սկզբում: «Վիպասանութեան» վերջում նա ինքն իրեն անուանում է «համրակ նուաստացեալ», իսկ նախերգանքի մէջ յատնելով իր «անկարութիւնն» եւ «տգիտութիւնը», գրում է.

Զի հրահանգից վարժարանի
Զեմ տակաւին ներկուռ բանի:
Յաթենականըն քաղաքի
Զանձն իմաստիւք ոչ կըրթեցի.
Ուր լըսարանըն Պղատոնի,
Եւ չափ ոտիւք Հոմերովնի.
Ուր ստորոգողն Արիստոտէլ,
Տասըն բանիւ գըրողն էր.
Ուր հոյլք ամէն հռետորի,
Ժողովարան ճարտասանի,
Ներհըմտութիւն քերականի,
Բայլ քերումըն քերթողի.
Զորըս գիտել նախ պատշաճի,
Եւ աստ ապա ձեռնարկելի:
Եւ զի յինէն այս է հեռի,
Տարաբերիմ յամենայնի՝
Եթէ զիա՛րդ սկըսանիցի
Եւ կամ ո՛րպէս վճարեսցի:

Ոչ միայն Սեւ լերան վանքերում, այլեւ Հայաստանի քաղաքներում չկար այլեւս հին յունական գիտութեան ու փիլիսոփայութեան ուսումը, որ

1 Թուղթ ընդհանրական Ներսիսի Շնորհալւոյ, էջ 470:

այնպէս անջող կերպով վերսկսուել էր աւելի քան հարիւր տարի առաջ, եւ որի ուսումն այնպէս լայն ծրագրում էր Գրիգոր Մագիստրոսը: «Ո՞ւր մեր վարժարանք՝ ի Թագաւորական պատրաստեալ հրամանացն», բացագանչում էր Ներսէսը իր ծերութեան տարիներին[1]:

Ազգային քաղաքական իշխանութեան հետ՝ այդ եւս վերացել էին, մնում էին վանքերը:

**3. Գրիգոր եւ Ներսէս եղբայրները Ծովք եւ Հռոմկլա բերդերում:—** Ներսէսը դեռ Կարմիր վանքում աշակերտ էր, որ նրա հայրն՝ Ապիրատը նահատակ սպանւում է իր բերդի պաշտպանութեան ժամանակ: Ցաւով նա ողբում է նաեւ իր «հոգեւոր հօրից»՝ Բարսեղ կաթողիկոսից: Կարմիր վանքում ժողով է լինում, եւ կաթողիկոս է ընտրւում 1113 թ. իր եղբայր Գրիգորը տասնութ կամ տասնինը տարեկան հասակում: Նա է հոգում իր ընտանիքի մասին, ինչպէս գրում է Ներսէսն իր Վիպասանութեան մէջ.

Զիւրաքանչիւրըս տնօրինեալ,
Եւ ըստ բախտի կարգաւորեալ.
Զեղբարս ինքեան հարազատեալ՝
Ցիշխանական պահ յառաջեալ.
Վասիլ անուն վեհ երեւեալ,
Եւ Զօրավոր համապատուեալ.
Եւ Մարիամ քոյր անուանեալ,
Որ յաշխարհի կարգըս մըտեալ:

Կրտսեր Ներսէսը մնում է իր կաթողիկոս եղբօր մօտ եւ շարունակում է իր ուսումը. երբ արբունքին է հասնում, քահանայ է ձեռնադրւում, յետոյ՝ նաեւ եպիսկոպոս: Կաթողիկոսը նստում էր կամ Կարմիր վանքում կամ Ծուղրի վանքում, բայց Գող Վասիլի մահից յետոյ Ուռհայի կոմսին աջողում է տիրել Քեսունի իշխանութեանը, եւ Գրիգոր Պահլաւունին 1116 թ. իր աթոռը փոխադրում է իր հայրենական Ծովք բերդը: Ժամանակի քաղաքական դրութիւնը շատ անկայուն էր: Խաչակիրները հետզհետէ բռնանալով՝ Հայերի ձեռից հանում են նրանց բերդերը Ասորիքում ու Միջագետքում: Սելջուկեան Թուրքերն էլ արեւելքից արշաւում էին դէպի այդ կողմերը: Կար նաեւ Փոքր Ասիայում հաստատուած սելջուկների մի ճիւղը, Իկոնիայի սուլթանութիւնը (1074–1294 թ.), որ կոչւում էր Հռոմ, Հռոմք (Ռում) եւ կենտրոն ունէր Իկոնիոն քաղաքը Կիլիկիայից արեւմուտք. դա էլ ձգտում էր տիրանալու այդ երկրամասին: Մի չորրորդ կողմից Եգիպտոսի իշխողներն էին խուժում դէպի Ասորիք: Այստեղ շարունակ տեղի էին ունենում ընդհարումներ, բերդերի եւ երկրամասերի յափշտակութիւններ ու խառնակութիւններ: Ծովք փոքրիկ բերդն եւս անապահով էր: Ուստի կաթողիկոսը մի լատին իշխողից գնում է Հռոմկլա կոչուած բերդը, որ աւելի ամուր էր (Եփրատի աջ ափին Թլպաշարի հարաւ-արեւմտեան կողմում, Այնթապից դէպի հիւսիս-արեւելք, Եդեսիայից արեւմուտք): Կաթողիկոսարանը 1150 թ. փոխադրւում է այդ բերդը:

1 Թուղթ ընդհանրական Ներսէսի Շնորհալւոյ, Էջմիածին, 1865, էջ 150, «Պատասխան առաջին թղթոյն... Մանուէլի»:

Ներսէսը 1151 թ· գրուած իր «Բան հաւատոյ» երկի «Յիշատակարանի» մէջ[1] պատմում է Իկոնիայի սուլթանի արշաւանքի եւ աթոռը Հռոմկլա փոխադրելու մասին եւ գեղեցիկ նկարագրում է այդ բերդը·

Արդ յայսպիսում ժամանակի
Դառն եւ դըժնեայ եւ անբարի,
Յորում բնակեմք յայսմ ամրոցի
Ի գետապատ քարանձաւի,
Ի յԵփրատայ պարագրելի,
Որ յԱգենայ քառորդ հոսի,
Ցելից կուսէ հեղիկ շարժի,
Ի միւս փոքուէ մրտիւք պատի·
Ինքս ամբարձեալ իբր ըղկըղղի,
Յալեաց ծովուց ոչ երկընչի·
Ի մարդկանէ ոչ ղարհուրի,
Զի է հնարից անյաղթելի:
Զոր տնօրինիչն ամենայնի
Տեղ պատրաստեաց ապաւինի
Սուրբ աթոռոյս ըսքանչելի·
Ի բարկութեան ժամանակի
Յորում նեղիմք յանօրինաց
Ի յարտաքին չար գազանաց,
Եւ ոչ նուազ ի դըրժանաց
Ի սուտանուն քրիստոնէից:

Ներսէսը, որ միշտ անբաժան էր իր եղբորից եւ նրան օգնում էր իր պաշտօնական գործերի մէջ, մինչեւ կեանքի վերջը կենում է այդ բերդում, ուստի կոչւում է նաեւ Ներսէս Կլայեցի: Գրիգոր Պահլաւունին ծերութեան պատճառով 1166 թ· հրաժարւում է աթոռակալութիւնից, եւ Ներսէսն ընտրւում է կաթողիկոս: Երեք ամսից յետոյ վախճանւում է Գրիգորը, իսկ Ներսէսն ապրում է մինչեւ 1173 թ·:

4· Երկու եղբայրների գրական վաստակը:— Այս եղբայրները մեր եկեղեցական պատմութեան գլխաւոր դէմքերից են· Նրանք ցոյց են տուել մեծ գործունէութիւն: Երկուսն էլ պարապել են նաեւ գրականութեամբ, աւելի Ներսէսը:

Ներսէս Լամբրոնացին[2] գրում է, թէ Գրիգորը գրադարան է կազմել, իսկ Ներսէսը ընթերցանութեամբ է պարապել·

Զգիրըս ցըրուեալս ի մի ածէր,
Սոքօք զաթոռն արմատացնէր,
Կցորդ բարեաց զեղբայրն ունէր,
Որ յիմաստից վարժ մըտեալ էր,

---

1 Ներսիսի Շնորհալւոյ Բանք չափաւ, Վենետիկ, 1830, էջ 223 եւ հտ.:
2 Թուղթ ընդհանրական Ներսիսի Շնորհալւոյ, Էջմիածին, 1865, էջ 476:

Միշտ ընթերցմանըն պարապէր
Եւ հայր խորին բանից լինէր։

Ուրիշ տեղ էլ[1] Լամբրոնացին գրում է Ներսէսի համար, թէ նա «ի յընթերցումըն պարապէր»։

Գրիգորն իբրեւ կաթողիկոս քաջալերող է հանդիսացել վարդապետներին զանազան երկեր յօրինելու. այսպէս, օրինակ, Սամուէլ Անեցին նրա յանձնարարութեամբ գրել է իր Ժամանակագրութիւնը, Ներսէս Շնորհալին յօրինել է իր մի քանի երկերը։ Նա, հետեւելով Գրիգոր Վկայասէրին՝ ինքը թարգմանել է եւ ուրիշներին թարգմանել է տուել վկայաբանութիւններ եւ կարգադրել է, որ սրբերի նախատօնակներին եկեղեցում կարդացուեն նրանց վարքերը, Կիրակոս Գանձակեցին[2] գրում է. «Իսկ սքանչելի Հայրապետն Գրիգորիս ձեռն ի գործ արկեալ շինեաց եկեղեցի հրաշագան գմբեթայարկ ի նոյն բերդի. եւ սկսաւ թարգմանութիւն առնել յատուածային գրոց, եւ բազում գիրս ետ թարգմանել ի հայ լեզու, զո՛րն ինքեամբք եւ զո՛րն ի ձեռն այլոց»։ Այդպիսի աշխատութիւնների համար նրան կոչել են Գրիգոր Փոքր Վկայասէր։ Նա հեղինակ է նաեւ մի քանի ինքնագիր հոգեւոր երգերի[3], որոնք յօրինուած են սովորական մոտիվներով։ Նրանն են եւ Լուսաւորչի մեղեդին՝ «Ի յելս արեւու արեւ» եւ Ջրօրհնէքի տաղը Յիսուսի մկրտութեան մասին։ Վերջինս մեր կրօնական գեղեցիկ երգերից մէկն է[4].

Ո՜վ զարմանալի խորհուրդ այս մեծ յայտնեալ,
Արարիչն Աստուած ի Յորդանան եկեալ...
Յորդանան լուեալ՝ փախստական դառնայր,
Վտակ առ վտակ պատգամաւոր լինէր։
Գե՛տ, մի՛ զարհուրիր, քո արարիչն եմ ես,
Եկեալ մկրտիմ եւ լուանամ զմեզս...

Գրիգորից աւելի է սէր ու յարգանք եւ ժողովրդականութիւն վայելել Ներսէսը թէ՛ մահից առաջ եւ թէ՛ յետոյ։ Նա Հայոց եկեղեցու մեծ հայրերից է, իսկապէս բազմակողմանի բնատուր ձիրքով օժտուած բանաստեղծ-երաժիշտ, շնորհալի մի անձ ոչ միայն իր բազմազան գրական ընդունակութեամբ, այլեւ իր կեանքով։ Ուստի եւ նրա անուան հետ անբաժան մնացել է Շնորհալի մականունը։ Նա շատ բեղմնաւոր է եղել իր գրական վաստակներով եւ առանձնապէս իր չափածոյ քերթուածներով ու երգերով. դրանց համար եւ նա կոչուել է նաեւ Երգող, ինչպէս ինքն էլ իրեն անուանում է իր մեծ քերթուածների յիշատակարանների վերնագրերում[5]։ Ծերութեան օրերին անգամ նա չի դադարել բանաստեղծելուց։

1 Անդ. էջ 470։

2 Պատմութիւն Հայոց արարեալ Կիրակոսի վարդապետի Գանձակեցւոյ, Թիֆլիս, 1909, էջ 102։

3 Տաղարան հոգեւոր երգոց, Էջմիածին, 1861, էջ Բ., էջ 12, 364 «Գրիգոր Վկայասէր՝ եղբայրն Շնորհալւոյն՝ (երգեաց) զԽորհուրդն Անճառն եւ զՄեծահրաշն»։

4 Կարելի է գտնել Աղեք. Մխիթարեանցի խմբագրած «Տաղեր ու խաղեր» ժողովածուի մէջ, Ալեքսանդրապոլ, 1900, էջ 3.

5 Ներսէսի Շնորհալւոյ Բանք չափաւ, էջ 160, 222։

# ՆԵՐՍԷՍԻ ՉԱՓԱԾՈՅ ԵՐԿԵՐԸ

1. Հայեացքը բանագործութեան վրայ։—*Ներսէս Շնորհալին արուեստի եւ գրականութեան վրայ նայում է ամէնից առաջ ձեւական եւ դիդակտիկական—ուսուցական տեսակէտներով։ Այդ յայտնում է նա իր մի քանի երկերի մէջ։ Խօսքի շնորհքն, — ասում է նա, — միատեսակ չի տրուած մարդկանց*[1].

*...Շնորհն ոչ միակի,*
*Այլ ի բազումս բաժանի.*
*Ոմանց տայ [Աստուած] շնորհ մեկին բանի,*
*Զի հանրականն լուր օգտեցի.*
*Այլոց իմաստ ծածուկ ճառի,*
*Զի զարթուցէ զնիրհեալ հոգի։*
*Ոմանց տայ բան՝ որ ոչ չափի,*
*Բայց զօրաւոր եւ ըստ կարգի.*
*Այլոց շնորհէ բանըս տաղի,*
*Զի եւ այնու միտքըն բանի։*
*Քանզի բնութիւն մեր է յայտնի,*
*Արագայագ եւ ձանձրալի,*
*Վասն այսորիկ տայ նա լեզուի*
*Զյոքնասեռեան ազգըս բանի։*
*Ըստ այսմ եւ ես նըկարեցի*
*Զներտաղական բանս ի քարտի,*
*Ի գուարճութիւն բանասիրի*
*Եւ բարեմիտ ընթերցողի։*

*«Յիշատակարան երգողի բանիս»*[2]

*Ոճի նկատմամբ, ուրեմն, խօսքը լինում է պարզ («մեկին բան»), որ ամէնքը հեշտ հասկանում են, եւ խրթին («ծածուկ ճառ»), որ դժուար հասկանալի է։ Այս տեսակն էլ, ըստ Ն. Շնորհալու, հարկաւոր է. Թմբած հոգիները դրանով սթափւում են, քանի որ մութ դրուածները հասկանալու համար մտքի լարում է պահանջւում։ Բայց ինքը, մեր բանաստեղծը մի երկու տաղ միայն ունի մութ ոճով, ինչպէս է, օրինակ, «Ի սուրբ քառասունսն»*[3]*։ Նա սիրում եւ կիրառում է ընդհանրապէս շատ հեշտ ու թեթեւ եւ դիւրըմբռնելի խօսքը։ Այսպէս յօրինելն այնուհետեւ նրա մեծ ազդեցութեամբ հաստատւում է մեր բանաստեղծութեան մէջ, եւ այլապէս էլ չէր կարող լինել, քանի որ արուեստի գեղեցկութիւնն արդէն տեսնում էին բնականին հետեւելու մէջ։ Ապա նա շարունակելով իր միտքը պարզել՝ ասում է, թէ մարդիկ կան, որ ունեն ոչ-չափածոյ, ազդու եւ կարգաւորեալ արձակ խօսքի շնորհ. ուրիշներին էլ՝ ոտանաւորի ձիրք է տրուած։ Ոտանաւորով խօսքն աւելի «գեղեցկանում» ու «վայելչանում է» ու «զուարճալի» է դառնում, բայց այդ երկու տեսակն էլ հարկաւոր են. որովհետեւ ձանձ-*

1 Անդ, էջ 164 եւ հտ.:
2 Անդ, էջ 164:
3 Անդ, էջ 464 եւ հտն.:

բալի չլինելու համար՝ բազմազանութիւն է պէտք։ Այդ երկու տեսակի էլ նպատակը մէկ է եւ գործնական, այն է՝ օգտակարութիւնը, մարդկանց «մտքի բացումը», զարգացումը։ Ինքը Ներսէս Շնորհալին ունի ոտանաւորի շնորհ։ Նա չափածոյ է յօրինել իր բազմաթիւ երկերը, բացի պաշտօնական թղթերից եւ մի քանի աղօթքներից։

2. Տաղաչափական արուեստի զարգացումը։— Հետեւելով իր շնորհքին ու հայեացքին ոտանաւորի վրայ, մեր այս բանաստեղծը մշակել է Հայոց լեզուի տաղաչափութիւնը. ուստի նախ տեսնենք նրա վաստակի այս կողմը, որով նա շատ ազդել է իր ժամանակակիցների վրայ։

Ներսէս Լամբրոնացին նրա գովեստի մէջ[1] գրում է.

Հոմերական տաղից չափող,
Ոտանաւոր տառից գլտող.
Ի հոգեւորս ընդոյն տնւող,
Որով ըզսիրտս կարծր ճմլող։

Ներսէս Շնորհալու ռիթմական զգացումը, ինչպէս իր գրածներից երեւում է, շատ մեծ է. նրա ոտանաւորները խիստ երաժշտական են։ Այդ պատճառով նա քիչ է բանեցրել մեր հին կրօնական բանաստեղծութեան ոտանաւորներն ազատ ոտքերով եւ ազատ անդամներով[2], այլ գերադասութիւն է տուել պարզ ոտքերին, այսինքն անթերի տակտերին։ Նրա ամէնից աւելի սիրած ոտանաւորն է յամբական երկանդամ 8–վանկանին, կազմուած երկու յամբական բարդ ոտքերից, որոնց մէջ առաջին ոտքերը կարող են եւ անչեշտ լինել։ Տաղերի, ինչպէս եւ ուրիշ հոգեւոր երգերի մէջ, սակայն, առաջին անդամը նա մէկ մէկ կազմում է երեք վանկերից, որոնք առանձնապէս չեշտուելով՝ երկարում են եւ հաւասարւում չորս վանկի։ Այսպէս է վարւում նա յամբական եռանդամ 12–վանկանի եւ յամբական քառանդամ 16–վանկանի ոտանաւորների մէջ եւս[3]։ Մեծ քերթուածների մէջ, սակայն, նա սովորաբար պակաս վանկեր չի թողնում եւ պահանջում է, որ ընթերցողն էլ այնպէս կարդայ, որ ոտանաւորի չափն անթերի երեւան գայ, ոչ աւելի եւ ոչ պակաս—

Արդ առընկա՛լ բանս ղուզնաքեայ,
Եւ վերծանեա ըստ իմաստից,
Ոչ առաւել եւ ոչ նուազ.
Այլ ի յոտին բերեալ չափոց։

Շնորհալու գործածած չափերը խիստ բազմազան են։ Մի քանի չափական ձեւեր նա այնպէս զարգացրել է եւ ռիթմիկ դարձրել, որ օրինակելի են մնացել եւ մեր հին գրականութիւնից նոյնիսկ նորին են անցել։ Կարելի է ասել, որ յաջորդներն իսկապէս նրա փորձերն են միայն գործադրել, շատ քիչ բան փոխելով։ Կան նրա չափածոյ ձեւերից, հարկաւ, եւ

---

1 Թուղթ ընդհանրական Ներսէսի Շնորհալւոյ. Էջմիածին, 1865 էջ 464։

2 Տե՛ս Մ. Աբեղեան, Հայոց լեզուի տաղաչափութիւն, Երեւան, 1933, էջ 320 եւ հտն., 341 եւ հտն.։

3 Անդ, էջ 198–209։

այնպիսիները, որոնք չեն ընդհանրացել: Ոտանաւորների բազմաթիւ տեսակները, սակայն, ոչ բոլորը նրա ստեղծածներն են. դրանցից մի քանիսը գտնում ենք Գրիգոր Նարեկացու եւ Գրիգոր Մագիստրոսի տաղերի մէջ: Կայ նաեւ Վարդան Հայկազն անունով մէկի յօրինած «Տաղ դերեզմանական վասն փոխման երանելւոյ եւ սուրբ կաթողիկոսին Հայոց Գրիգորի Վկայասէրի»: Հեղինակը, ինչպէս իր գրածից ենթադրում են, ժամանակակից եղած պիտի լինի Վկայասէրին[1]: Այդ «տաղը» գրաբարախառն աշխարհիկ լեզուով է, ութվանկանի ոտանաւորով, միակերպ «ի» յանգով, չառնման Ներսէս Շնորհալու գրածներին:

12րդ դարի սկզբից արդէն ժամանակի խօսակցական լեզուն եւ բերանացի աշխարհիկ բանաստեղծութեան ոտանաւորը մուտք են գործել գրականութեան մէջ. այդ ժամանակի սիրոյ երգերից, սակայն, բան չի հասել մեզ, որ կարողանայինք որոշել, թէ ի՛նչն է կազմում Շնորհալու իրեն տաղաչափական գիւտը: Բայց այն հանգամանքը, որ մասամբ հասակից ի վեր վանքերում ապրած այդ մեծ կրօնաւորը չի խորշել նմանելու սիրոյ երգերի ձեւին եւ նրանց ոտանաւորով յօրինել է ոչ միայն տաղեր, ինչպէս Գրիգոր Նարեկացին, այլեւ կրօնական բովանդակութեամբ մեծ բանաստեղծութիւններ, ա՛յդ միայն ցոյց է տալիս, որ վերածնութեան թարմ ոգին թափանցել էր նաեւ վանքերի խուցերը, բայց ոչ ամէն վանականի: Շատերը Ներսէս Շնորհալու պէս ազատախոհ չեն եղել եւ «անփակ բերանով» պարսաւել են նրա արարքը, եւ Շնորհալին ստիպուած է եղել ուրիշների հեղինակաւորութեամբ պաշտպանելու իր նորմուծութիւնը: Այսպէս՝ «Բան հաւատոյ» մեծ քերթուածի «Յիշատակարանի» մէջ[2] 1151 թ. նա գրում է.

Եւ զի ոտիւք է պարզական,
Եւ ոչ բանիւ անչափական,
Մի՛ յայս լեզուաւ պարսաւական
Բարբառեսցի անփակ բերան:
Քանզի բազումք նախ վարեցան
Այսպէս յիմաստ աստուածական,
Զի արարչին բանի բնութեան
Տացեն այսու բան գովութեան:
Որպէս Դաւթեան սաղմոսարան,
Եւ Սողոմոն առակարան.
Մեծըն Գրիգոր աստուածաբան,
Եւ սուրբ Եփրեմ ասորական:

Յետադէմ վանականներն այդ երկի ձեւի համար աւելի եւս պախարակել են մեր բանաստեղծին, որ նա ստիպուած է եղել հետեւեալ տարին, 1152 թ., «Ողբերգութիւն» մեծ քերթուածի վերջում («Յիշատակարան երգողի բանիս»)[3] դարձեալ պաշտպանելու իրեն.

1 «Բազմավէպ», 1873, 264. Զարբհանալեան, Հին դպրութեան պատմութիւն, 1887, էջ 700 եւ հտն.:

2 Բանք չափաւ, էջ 223:

3 Անդ, էջ 163 եւ հտ.:

Եւ մի՛ ի յայս ոք ախտանայ,
Թէ չափաւոր բանիւ է սայ,
Եւ արտաքին կարծի նըմայ.
Որպէս եւ զերգն Ափրոդիտեայ:
Զի եթէ սուտն որ ձեւանայ,
Սովաւ այնքան գեղեցկանայ,
Քանի՞ արդեւք վայելչանայ
Ճշմարտութեան բանս որ ի սմայ:
Երգըն Հանդոյն Սողոմոնի,
Սա, որ Երգոց երգ անուանի...
Եւ կամ Դաւթեանըն Սաղմոսի...
Եւ այլ բազմաց՝ որ են յայտնի,
Որք վարեցան չափով բանի...

Այս երկու մեծ զուտ կրօնական երկերը, որոնք յօրինուած են սիրոյ երգերի չափով 8-վանկանի տողերով, նաեւ յանգաւոր տներով են, ինչպէս հեղինակն ինքն անուանում է, «տամր յանգական», այսինքն՝ ամէն երկու նոյնայանգ տողերը միասին ըստ բովանդակութեան կազմել են մի միութիւն, մի «տուն» («բեյթ»): Այսպէս յօրինուել են, ուրեմն, հնուց սիրոյ երգերը: Մի անգամ որ այսպիսի ոտանաւորով եւ յանգերով խօսքն աւելի գեղեցիկ ու վայելուչ է դառնում, Ներսէս Շնորհալին, իր ռիթմական զգացումով ու ճաշակով, չէր կարող չկիրառել այդ արուեստը միայն նրա համար, որ Ափրոդիտեան երգերն էլ այդպէս են յօրինելիս եղել: Այսպիսով աշխարհիկ երգերի չափերի գործածութիւնը նրա մեծ հեղինակութեամբ ընդհանրացել է ամէն տեսակի կրօնական բանաստեղծութիւնների համար եւս: Նոյնը պէտք է ասել եւ ոտանաւորների յանգի նկատմամբ:

Արդարեւ Գրիգոր Նարեկացին եւ Գրիգոր Մագիստրոսը գործածել են աշխարհիկ չափերից մի քանիսը, բայց Նարեկացին դեռ գրել է անյանգ ոտանաւորներ: «Ողբերգութեան» մէջ միայն մի երկու տեղ նա, ինչպէս ինքն ասում է, նմանելով ողբասացների բանաստեղծութեանը՝ յանգեր է կազմել: Մեր այդ կրօնական մեծ բանաստեղծի հռչակը հաւանօրէն դեռ այնքան ծաւալուած չի եղել 12րդ դարի առաջին կէսին, որքան հետագայում. ուստի նրա տաղերի ոտանաւորը չի ունեցել հետեւողներ ամէն տեսակի կրօնական քերթուածների նկատմամբ, մանաւանդ որ նրա բանաստեղծական հմայքը հիմնուած է եղել ոչ թէ տաղերի վրայ, այլ «Ողբերգութեան», որ անյանգ է եւ կարող էր նաեւ «անչափական» համարուել: Գրիգոր Մագիստրոսն արդէն յանգը բանեցրել է կրօնական բովանդակութեամբ «Հազարտողեան» գրուածքի մէջ, բայց նրա գործը պատահական բան լինելով՝ ընդունելութիւն չի գտել: Հայ կրօնական բանաստեղծութիւնն անյանգ է մնացել մինչեւ Ներսէս Շնորհալին, որի երկերից շատերը, առանձնապէս տաղերը, նոյնպէս անյանգ են: Բայց եւ այնպէս նա քսան տարեկան հասակից արդէն՝ սիրում է՛ բանեցնել յանգերը, յատկապէս մեծ քերթուածների մէջ:

Յանգի գործածութիւնն այն դարում թէ՛ Արեւելքում և թէ՛ Արեւմուտքում շատ միակերպ էր․ նոյն յանգը սովորաբար անցնում է ամբողջ քերթուածի մէջ սկզբից մինչեւ վերջը։ Երբեմն հազարաւոր տողերի վերջում կրկնւում են նոյն հնչիւնները, եւ փոխանակ փաղաքշելու մարդու լսելիքը՝ շուտով յոգնեցնում են այն եւ տաղտկալի դարձնում երկի ընթերցումը։ Շնորհալին իր ընտիր ճաշակով՝ չէր կարող չզգալ այդ, եւ նա մի քանի տեղ յանգերի փոփոխութիւն է անում կամ տողեր անյանգ թողնում՝ այսպէս բացատրելով այն[1]․

Ո՛չ մի տառիւ վերջ յանգական,
Զի մի՛ ծուլից լուր ծանրանան.
Այլ խորաբար փոփոխական,
Զի ընթերցողք ոչ ձանձրանան։

Այս փոփոխութիւնը, ցաւօք, երբեմն այնքան շատ թուով տողերից յետոյ է լինում, որ գրեթէ աննկատելի է մնում։ Ժամանակի պահանջն այդպէս էր, եւ այդ համարւում էր արուեստի կատարելութիւն հանուր ազգերի բանաստեղծութեան մէջ։ Շնորհալին, սակայն, ունի նաեւ բաւական թուով երգեր, որոնց մէջ ամէն տուն իր առանձին յանգն ունի, եւ երբեմն նա նոյնիսկ տող ընդ մէջ անյանգ տանաւորներ է յօրինում։ Եւ նա յանգերի այսպիսի կիրառութեան նկատմամբ եւս անպայման ազդել է իր յաջորդների տաղաչափական արուեստի վրայ։

Նրա բանաստեղծութեան մէջ շատ սիրուած է նաեւ ծայրակապը կամ գլխակապը (ակրոստիխ), կա՛մ այբբենական կարգով Ա–Ք եւ կա՛մ շրջուած՝ Ք–Ա։ Նա յաճախ կազմում է այսպիսի գլխակապեր «Ներսէսի բանս է», «Բան Ներսէսի», «Ներսէսի է այս երգս», «Տէր Ներսէսի է սա» եւ այլն։ Այսպիսի գլխակապերը կարծես գիտաւորեալ կերպով են գործածուած՝ հեղինակի անունը պահելու համար։ Երբեմն երկատող տների տողերից առաջինն սկսւում է Ա–Ք կամ Ք–Ա տառերից մէկով, եւ երկու տողն էլ վերջանում են տների սկզբի տառով՝ կազմելով յանգեր կամ թէ լոկ բաղաձայնոյթ, կամ առձայնոյթ, օրինակ․

Աստուածեղէն հոգւովն ի սմա
Խաղաղութեան անուն արքա...
Երբեակ տառիւ վերաբերե,
Զմարդիկ յերկինքս մակագրե...[2]
Թըմբրեալ զհոգիս առնէ զըւարթ,
Յայս չանկանել դառն որոգայթ․
Ժամանակեայ զկենցաղըս յոժ
Աւէ, զանկեալսն ի սմա անբոյժ․
Իբրեւ երազ խոր գիշերի,
Կամ պըղպըջակ ինչ կաթուածի[3]։

1 Անդ, էջ 223։

2 Երեւում է, որ Շնորհալու ժամանակ արդէն է եւ ե տառերը միապէս են արտասանուել, եւ նա չի խորշում բառերի վերջում է տառի փոխանակ ե գրելուց։

2 Անդ, էջ 356։ Տե՛ս եւ էջ 359 եւ հմտ.։ «Անդրադարձութիւն տառից յիշատակի», որոնց տները սկսուած են Ք—Ա տառերով։

Այսպիսի սկսուածքները տողավերջերի հետ հանգիտութիւն կազմելով՝ տներին տալիս են ըստ ձեւի եւս ամբողջութիւն։ Երբ առանձին տների բոլոր տողերն սկսւում են նոյն տառերով եւ տողերը կարճ են, նոյն հնչիւնների կրկնութիւնը տողերի սկզբում՝ թողնում է ռիթմական հանգիտութեան—բաղաձայնոյթի, կամ առձայնոյթի տպաւորութիւն[1]։ Դրանով եւս զգալի է լինում տողերի, ինչպէս եւ տների ամբողջութիւնը, երբ վերջիններս փոքրաթիւ տողերից են կազմուած։ Այսպէս յօրինուած են Ն. Շնորհալու նշանաւոր «Առաւօտ լուսոյ» եւ «Աշխարհ ամենայն» երգերը, ինչպէս եւ մի քանի ուրիշները։ Բերենք իբրեւ օրինակ հետեւեալները·

*Առաւօ՛տ լուսոյ,*
*Արեգա՛կն արդար,*
*Առ իս լոյս ծագեա՛։*
    *Աշխա՛րհ ամենայն,*
    *Առ իս նայեցեալ՝*
    *Ախտակից լերուք։*
*Բանամ ըզշըրթունս,*
*Բարբառիմ լեզուաւս,*
*Բողոքեմ զանձնէս։*
    *Գող եղէ մեղաց,*
    *Գըտող կորըստեան,*
    *Գուբ ինձ փորեցի։*

3. Հոգեւոր երգեր ու տաղեր եւ թղթեր։— *Որչափ բազմազան են Ներսէս Շնորհալու բանեցրած տաղաչափական ձեւերը, նոյնչափ աչքի է ընկնում նրա ստեղծագործութիւնը նաեւ իր այլեւայլ գրական տեսակներով։ Այս նկատմամբ եւս նա շատ բան, հարկաւ, ժառանգել է նախորդներից, ինչպէս են՝ տաղեր ու գանձեր, հոգեւոր երգեր—շարականներ, հոգեբուխ աղօթքներ («Հաւատով խոստովանիմ»), թղթեր եւ այլն. բայց նա մեր գրականութեան մէջ մտցրել է նաեւ նոր գրական տեսակներ եւ հին տեսակները զարգացրել է։ Այսպէս, օրինակ, նրա չափածոյ թղթերի մէջ[2] ներքին մտերմական զգացումով աչքի է ընկնում իր եղբօրորդի Ապիրատին ի Կոստանդնուպոլիս ուղղած նամակը, որի մէջ նկարագրում է իր այդ տոհմիկի զինավարժական աջողութիւնները, ցանկանում է նրա գալուստն ի Հռոմկլա ամրոցը եւ տալիս է նրան խրատներ։*

*Աւելի կարեւոր են Շնորհալու բազմաթիւ հոգեւոր երգերը, որոնցով նա խիստ ճոխացրել է Հայոց եկեղեցու ժամերգութիւնը[3]։ Դրանց մէջ*

---

1 «Հանգիտութեան, յանգի եւ տան» մասին ընդհանրապէս՝ տեսնել Մ. Աբեղեանի «Հայոց լեզուի տաղաչափութիւն», Երեւան, 1933, էջ 398—452։

2 Բանք չափաւ, էջ 303—312։

3 Շարական, Էջմ., 1861, էջ Բ. եւ հտ. «Սուրբն Ներսէս (երգեաց) զվառ ձայնն Աւագ օրհնութեան, զԵօթանասնիցն, զՆինուէացւոցն, զԱղուհացից ամենայն կիւրակէիցն, զԾաղկազարդի հարցն, զՀոգւոյ գալստեան չորս պատկերսն, զՎարդավառի զերկու պատկերսն եւ զՓոխման զերկու պատկերսն, զՅօհաննու Դ.Զ հարցն, զՄարգարէից Դ.Զ հարցն, զՀրեշտակապետացն, զՆորահրաշն Վարդանանց, զՂեւոնդեանցն, եւ զԱյսօր

կան եւ չատ գեղեցիկները եւ այնպիսիները, որ մի ժամանակ սիրուած եւ ժողովրդականացած են եղել: Բերենք միայն երկու տուն Վարդանանց շարականից[1], որի գլխակալն է՝ «Ներսէսի երգ»: Ամէն մի տունը նուիրուած է Աւարայրի ճակատամարտի մէջ ընկած այն հերոսներից մէկի յիշատակին, որոնց անունները յայտնի են պատմութիւնից. բանաստեղծը մոռացութեան չի տուել նաեւ 1036 անանուն ռամիկ քաջերին:

Նորահրաշ պսակաւոր եւ զօրագլո՛ւխ առաքինեաց,
Վառեցար զինու հոգւոյն արիաբար ընդդէմ մահու,
Վարդա՛ն, քաջ նահատակ, որ վանեցեր ըզԹշնամին,
Վարդագոյն արեամբըդ քով պըսակեցեր զեկեղեցի:
Երկնաւոր Թագաւորին զինու յաղԹեալ պատերազմին,
Խոհական իմաստութեամբ խոհեմացեալ անճառապէս,
Խորէ՛ն խորհրդական եւ ծանուցեալ անուն բարի,
Խաչելոյն վըկայ եղեալ հեղմամբ արեան պըսակեցաւ:

Բազմաթիւ են Ներսէս Շնորհալու «յորդորակները», այն ոտանաւորները, որ նա կցել է յաճախ իր ուրիշ աշխատութիւնների վերջից: Աւելի եւս մեծ Թւով են նրա տաղերը[2], որոնք գրուած են տէրունական, ինչպէս եւ սրբերի տօներին երգելու համար: Դրանք յօրինուած են խիստ բազմազան չափերով: Հետաքրքիր է, որ «Աւետեաց» տաղը նոյն ձեւով է, ինչ որ հին գուսանական հայրէնները[3]. հետագայում մեր բանաստեղծներն «Աւետումը» երգում են ինչպէս մի սիրոյ երգ.

Բարբառ աւետեաց ձայնիւ
Գաբրիէլ գոչէր սրբուհւոյն.
«Ա՛ռ քեզ առաքիմ, մաքո՛ւր,
Պատրաստել տեղի տէրունւոյն:
Ըրւաք ցընծութեան երգեմք.
Ուրախ լե՛ր, բերկրեալդ, տէր ընդ քեզ»:

Շատ Թարմ եւ ուժեղ են հնչում նրա մի քանի տաղերը, ինչպէս, օրինակ, Հռիփսիմեան կոյսերի համար երգածները[4]: Սրանց նիւԹը բնականաբար ԱգաԹանգեղոսի Պատմութեան հետեւողութեամբ է. բայց քերԹողը սեփական երեւակայութեամբ նորոգած է այն: Մի քանի բառերով ու կարճ խօսքերով կատարուած է Հռիփսիմէի գովքն ու գեղեցկութեան նկարագիրն արագ ու եռանդուն եւ ռիԹմիկ տողերով: Բանաստեղծը գիտէ ուղղակի խօսքերով եւ դիմումներով աշխուժացնել պատմուածքի ընԹացքը: Նա այս հին դրական տեսակը կատարելութեան է հասցրել:

---

անճառն, զՆորոգողն, զԱստուած անեղն, զԱրարչականն, զԱրեւագալի շարականսն, զՕրհնեմք զքեզն, զՆայեաց սիրովս եւ զԻքէն հայցեմքն, եւ ըստ նմանց՝ զսուրբ Յակոբայն եւս սորա է ասացեալ»: Այլ եւ «Աստուած անեղ»: Բանք չափաւ, էջ 320 եւ հտ.:

1 Շարական, էջ 571 եւ հտն.:
2 «Բանք չափաւ», էջ 365—476:
3 Անդ, էջ 365 եւ հտ.:
4 Անդ, էջ 468—475:

Երջանի՛կ, հողխահրաչ
Կոյսըն մաքուր սուրբ Հռիփսիմէ.
Լոյս ծագեցաւ ի Լատինէ
Հայոց Մեծաց յարեւմըտէ:
Կուսա՛կան փողըն գոչէր,
Տայր աւետիս սուրբ Գրիգորի.
«Փութա՛, ե՛լ ի վիրապէդ,
Լուսաւորի՛չ Հայաստանի»...
Ծովային շուշան ծաղիկ.
Բուսեալ ի տանըս Թորգոմի...
Ի վայելուչ դեղ պատկերին
Ցիմարեցան ազգըն Հային.
Պետք եւ իշխանք առ հասարակ
Եկին ի դուռըն Հռնձանին...

Հռիփսիմէի վրայ անապեստեան ոտքերով յօրինած մի ուրիշ տաղի ամէն տների վերջում կրկնում է նոյն տողը եւ անում է նոյն բաղաձայնների հանդիսութիւն. օրինակ՝

Սիրանունդ սիրամարգ սըխրալի,
Նըրբափայլ ոսկէթել տարփալի,
Եռապսակ իւղադլուխ ցանկալի,
Հրեշտա՛կ հրաշալեդ, Հռիփսիմէ՛:

4. Նոր գրական տեսակները:— Բազմաթիւ են Ներսէսի նոր գրական տեսակները: Բայց մի անգամ որ նա, ինչպէս տեսանք, գործնական հաւեսցքով է առաջնորդուել իր չափածոյ ստեղծագործութիւնների մէջ, ուստի նրա այս աշխատութիւնների մէջ եւս կան այնպիսինները, որոնք գեղեցիկ ոտանաւորներով, յաճախ նաեւ փայլուն ոճով յօրինուած լինելով հանդերձ՝ պրոզայիկ գործեր են: Բնականաբար այստեղ երկար կանգ չենք առնի նրա այդպիսի գրուածքների վրայ, որոնք յօրինուած են ուսուցական կամ այլ նպատակներով: Մի բանաստեղծի որեւէ գրական երկի արժէքը, սակայն, պէտք է չափել ոչ միայն դրա գեղարուեստականութեամբ եւ իբրեւ արտայայտութիւն իր ժամանակի ոգու, այլեւ այնու, թէ դա ո՛րքան եւ ո՛րպիսի գրական-կուլտուրական ազդեցութիւն է թողել հետագայի վրայ: Այս վերջին տեսակէտով շատ բախտաւոր են եղել Շնորհալու անգամ նոր գրական տեսակները:

Այդպիսիներից է ամէնից առաջ նրա երիտասարդական տարիքում գրած «Վիպասանութիւնը», որ յիշուեց վերեւում[1]: Նպատակն է, ինչպէս հեղինակը գրել է նախաբանի մէջ, արտայայտել երախտագիտութիւն առ նախնիները.

1 Բանք չափաւ, էջ 493 եւ հմն. «Շարադրութիւն հոմերական վիպասանութեամբ սակս Հայկազանցն սեռի եւ Արշակունեացն զարմի ի սկզբանց մինչեւ ի վախճան, առասացեալ Ներսէսի եղբօր կաթողիկոսի Հայոց յիւրական նախնիս ի համբակութեան ելով տիս»:

*Պարտական է հօր որդի*
*Հատուցանել վարձըս ծնօղի,*
*Եւ անդրադարձ փոխարինի*
*Բազում երկանցըն պատշաճի:*

*Մովսէս Խորենացուն հետեւելով՝ նա ոտանաւորով պատմել է Հայկազն եւ Արշակունի տոհմերի մասին. շատ քիչ է կանգ առել Բագրատունիների համար: Երկար գրել է Գրիգոր Լուսաւորչի եւ Պահլաւունիների՝ Գրիգոր Մագիստրոսի, Գրիգոր Վկայասէրի, Բարսեղ կաթողիկոսի, իր եղբայր Գրիգոր կաթողիկոսի, իր հօր եւ եղբայրների եւ իրեն մասին:*

*Այս գրուածքը բանաստեղծական արուեստի տեսակէտից ընդհանրապէս մի հետեւակ բան է. բայց մի գիւտ կայ մէջը: Դա առաջին չափածոյ պատմական քերթուածն է մեր գրականութեան մէջ: Բացի տոհմասիրութիւնից, ինչպէս եւ աստուածաբանական միտումից, որ երեւում է նախաբանի մէջ, երիտասարդ Ներսէսն արդէն ցոյց է տալիս նաեւ ջերմ հայրենասիրական ոգի: Չի տանում Յոյներին,*

*Որք այժմ ըզմեզ զոն աղարտեալ,*
*Զանթագաւորքըս պարսաւեալ:*

*Առանձին սրտմտութեամբ խօսում է մահմեդական տաճիկների (արաբների) եւ աւելի եւս նրանց կրօնին հետեւող իր ժամանակակից այլ ազգերի մասին.*

*Արեանարբուք զազանացեալ,*
*Զաղխս գործովք անասնացեալ...*
*Զոսկերըս մեր ըզչորացեալ,*
*Զոր էր նախնի ազգաց ծըծեալ,*
*Վիշապօրէն սոցա կըլեալ,*
*Եւ առիւծուց նըման մանրեալ:*
*Չի ի համար թիւ ոչ անկեալ*
*Անպարտ արեանցըն զոր հեղեալ.*
*Կամ ծառայիցն անգին դերեալ,*
*Եւ կամ յայտնին որ վաճառեալ.*
*Կամ ըզգոյիցն յափշտակեալ,*
*Որք ընդ ձեռամբ նոցին անկեալ:*
*Որոց այնքան աղքատացեալ,*
*Որպէս յերկաթ գոլով՝ պընդեալ:*
*Թողից ըզչարըն մեծ ասել*
*Զհոգւոց կորուստըն գործեցեալ,*
*Ի հաւատոյն ուրացուցեալ,*
*Եւ չար գործովք ապականեալ...*
*Ի յաշխարհէ ծնընդեան ելեալ,*
*Ի հայրենեաց տարամերժեալ:*
*Յերկիր օտար պանդըխտացեալ,*

Մինչ զի ըղձերըն մոռացեալ.
Զաշխարհըս մեր օտարք կերեալ,
Մեր առաջի աչաց տեսեալ[1]:

Այս «Վիպասանութիւնը» իր կուռ ոճի եւ լեզուի պարզութեամբ շատ սիրելի է եղել եւ հետագայում, նոյնիսկ նմանողութեան օրինակ է դարձել: Կիլիկիայի Հայոց Լեւոն Գ. Թագաւորը 150 տարի յետոյ Վահրամ Րաբուն կոչուած վարդապետին չարունակել է տուել այն, սկսած Թուրքերի յարձակումից եւ վերջին Գագիկ Բագրատունի Թագաւորից մինչեւ մօտ 1275 Թիւը: Գրուած է Ռուբինեան տիրապետութեան մասին միեւնոյն ձեւով եւ նոյնիսկ նոյն «եալ» յանգով, ինչպէս Շնորհալու գործը[2]:

Մի ուրիշ նոր գրական տեսակ է չափածոյ ներբողեանը: Հին ներբողեանների ու ճառերի մէջ որոշ կտորներ ոչ միայն պերճախօսական բնաւորութիւն ունեն, այլեւ երբեմն իրենց ռիթմով եւ լիրիզմով մօտենում են չափածոյ խօսքին եւ անգամ չափածոյ բանաստեղծութիւն կարող են համարուել: Այդ բաւարարութիւն չի տուել Ներսէս Շնորհալուն. Նա ոտանաւորով բանաստեղծաբար յօրինել է ս. Խաչի ամբողջ ներբողեանը, նիւթն առնելով Դաւիթ Անյաղթի անունով յայտնի Ներբողեանից[3], որի եւ յապաւութիւնն է արել: Դրա վերջին մասը ջերմ հաւատով աստուած մի մեծ օրհներգութիւն է, բանաստեղծի սիրած ութվանկանի տողերով ու փոփոխ յանգերով:

Ոտանաւորով է յօրինուած եւ «Մաղթանք առ սուրբ հրեշտակսն»[4], որ կայ հրեշտակների մասին «Գովեստ ներբողական» գրուածքից յետոյ: Իսկ այս երկը Ներսէսը 1162 Թ. գրել է իր եղբայր Գրիգորիս կաթողիկոսի խնդրով, հետեւելով Դիոնեսիոս Արիսպագացու «Յաղագս երկնայնոյն քահանայապետութեան» (=հիերարխիայի), որ հայերէն թարգմանել է Ստեփանոս Սիւնեցի Քերթողը յունաբան լեզուով: Ըստ Շնորհալու ոճը, նրա ազդեցութեամբ, այս գրուածքի մէջ մութն է, «աւելի բարձր եւ արուեստակեալ է»[5]: Նա խօսում է հրեշտակների կամ զուարթունների ամէն մի դասի կատարած դերի ու պաշտօնի մասին:

Ներսէսն առհասարակ միշտ պատրաստ է եղել ոչ միայն իր եղբօր, այլեւ որեւէ խնդրով իրեն դիմող ուրիշներին սիրով պատասխանելու եւ յաճախ իրեն տրուած հարցերին իր մեծ հմտութեամբ լուծում տալու: Նա ունի նաեւ մի քերթուած՝ «Յաղագս երկնից եւ զարդուց նորա բարառնաբար ի դիմաց նորին ի չափ երկոտասանիցն պարգեալ ոտից ի խնդրոյ առն բժըշ-

1 Անդ, էջ 539 եւ հտն.:

2 **Dulaurier,** Historiens Arméniens, էջ 493: Տե՛ս եւ Զարբհանալեան, Հայկ. դպր. պատմ., էջ 701:

3 «Բանք չափաւ», էջ 229—263. «Ներբողեան կենդանատու սուրբ Խաչին առ ի սրբոյ հօրէն մերմէ Դաւթէ Անյաղթ փիլիսոփայէ ասացեալ, Ոտանաւոր չափով ասասնոր եղեալ». «Տեառն Ներսիսի Ներբողեան կենսատու սուրբ Խաչին»:

4 Անդ, էջ 267 եւ հտն.:

5 Ալիշան, Շնորհալի եւ պարագայ իւր, էջ 272 եւ հտն.: Զարբհանալեան, Պատմ. հին դպրութեան, էջ 622: Զարբհանալեան, Մատենադարան հայկ. թարգմանութեանց, էջ 382 եւ հտ.:

կապետի եւ աստեղագիտի Մխիթարայ»[1]: Քերթուածը «բարառնաբար», այսինքն դիմառնաբար է յօրինուած. խօսում է ինքը երկինքը իր կողմից առաջին դէմքով իբրեւ անձնաւորուած էակ.

Իմ եղական գոյով բնութիւն եւ սկզբնական,
Ցանեղէ՛ն ձգեալ կամար անդուպական,
Անջրպետեմ զջուրսն վերին եւ ներքնական...
Բոլորա՛կ եմ կիսագունդ որպէս խորան,
Բնութեամբ կայուն, անձամբ չարժուն անկայական:
Հիմն եւ աւարտ եմ գոյացութեանցս այս նիւթական.
Անդունդք ի խոր, բարձունք ի վեր, մինչ վերանամ:

Ամբողջը 12-վանկանի մի մեծ գրուածք է, որի մէջ նկարագրուած է երկինքն ըստ ժամանակի հասկացութեան՝ արեգակ, լուսին, յոթն մոլորակներ, տասներկու կենդանակերպներ եւ այլն, առանձին խորհրդածութիւններով, ինչպէս նոյն նիւթի մասին գրել են նոյն դարում նաեւ բիզանդացիների մէջ: Հայոց գրականութեան մէջ այդ մի նոր գրական տեսակ է մի նոր թեմայով, ոչ լիովին կրօնական բովանդակութեան, եւ առաջ է բերել նմանողներ հետագայում: Շնորհալու այդ քերթուածի մէջ պակասում է բանաստեղծական թռիչքը, բայց այն հաճելի է իր ընտիր ու ճաշակաւոր ոճով եւ սահուն ռիթմիկ ոտանաւորով: Գրուածքի վերջում կայ մի «յորդորակ» այս վերնագրով՝ «Նորին այլաչափ տաղք ի խնդրոյ անուան նախադիծ տառից տանց»: Ամէն տան (երկատողի) սկզբի տառերը կազմում են այս գլխագիրը՝ «Մխիթար բժիշկ, ընկալ ի Ներսէսէ զայս բան»:

Այս բժիշկ Մխիթարը[2], Շնորհալու բարեկամը, եղել է նաեւ «աստեղագէտ» եւ, երեւի, իբրեւ այնպիսին՝ նա մեր քերթողից խնդրել է տաղաչափութեամբ գրել երկնքի մասին: Նրանից չի մնում աստղաբաշխական գըրուածք, բայց կայ մի կարեւոր բժշկական գործ, որ նա անուանել է «Ջերմանց մխիթարութիւն, զի սա մխիթարէ զբժիշկն ուսմամբ, իսկ զհիւանդն առողջութեամբ»[3]: Իր ժամանակի այս նշանաւոր անձը, ինչպէս իր գրքի առաջաբանի մէջ ինքը յայտնում է, եղել է Հեր (այժմեան Խոյ) քաղաքից: «Ի մանկութենէ սիրող եղէ, ասում է, իմաստութեան եւ բժշկական արուեստից, եւ վարժեցայ ի դպրութիւն արաբացւոց, պարսից եւ հելլենացւոց»: Իր գիրքը գրել է 1184 թ. յորդորանքով Շնորհալու յաջորդ Գրիգոր Պահլաւունի Տղայ մականուանուած կաթողիկոսի, որին գովում է նա ասելով՝ «ամենեւին սիրող իմաստութեան եւ հմուտ»: Գիրքը նա յօրինել է քաղուածօրէն եւ թարգմանաբար արաբ, պարսիկ եւ յոյն բժիշկների գրուածքներից: Առաջաբանը գրաբար է, իսկ բուն նիւթը ժամանակի խօսակցական լեզուով. «Եւ արարի զսա դեղջուկ եւ արձակ բարբառով, զի դիւրահաս լիցի ամենայն ընթերցողաց, առ ի յիշատակել զմեզ»: Մխիթար Հերացին գրած

1 Անդ, էջ 279 եւ հտ.:

2 Ղ. Ալիշան, Շնորհ. եւ պար., էջ 257 եւ հտն.: «Հանդէս Ամսօրեայ», Վիեննա, 1888, հոկտեմբեր:

3 Մխիթարայ բժշկապետի Հերացւոյ Ջերմանց մխիթարութիւն, Վենետիկ, 1832:

է նաեւ «Վասն քարանց եւ յատկութեանց նոցա եւ բժշկութիւն նոցա», եւ ուրիշ բժշկական աշխատութիւններ եւս, որոնցից քաղուածներ կան հետագայ բժիշկների գրուածների մէջ, բայց բուն երկերը երեւան չեն եկել: Առհասարակ բժշկական ուսումն եւ արուեստը հնուց սիրուած է եղել Հայերի մէջ. Մխիթարից է՛ւ առաջ, է՛ւ յետոյ եղել են շատ բժիշկներ: Նրանցից առանձնապէս յիշելի են Ստեփանոս (բժիշկ Ահարոնի տոհմից) 13րդ դարում, յայտնի գիտնական մի բժիշկ 15րդ դարում՝ Ամիր Դովլաթ Ամասիացին, ինչպէս եւ Ասար Սեբաստացին 17րդ դարում: Առաջնորդուելով իր վերեւում բացատրուած տեսակէտով, թէ բանաստեղծութեան նպատակն է ուսուցանել եւ ոտանաւորը զուարճալի է դարձնում գրուածքը, Ներսէս Շնորհալին գրել է եւ երկու շարք չափածոյ խրատներ, եւ որպէսզի աւելի զուարճալի լինի, այդ փոքր երկերը յօրինել է «ի դիմաց այբբենից տառից», այսինքն այբուբենի կողմից[1]: Դրանք ունեն վերացական բնայթ, բայց շատ հաճելի են հեղինակին յատուկ սահուն, երբեմն եւ պատկերաւոր ոճով: Շարքերից մէկը՝ «Խրատ ուսումնականաց մանկանց»՝ կազմուած է մեր տառերի թուով քառեակներից: Դա իսկապէս մի մանկավարժական գրուածք է, որով թէ՛ այբբենն է կարգով սովորեցնում, թէ՛ միաժամանակ բարոյակրթական խրատներ է տալիս մանուկներին: Առանձնապէս աչքի է ընկնում եւ այն, որ նա յորդորում է սիրել ուսումն ու գիտութիւնը:

Այսպէս, վերջաբանի մէջ ասում է.

Եկ բեր, մանո՛ւկ, զունկըն քո յիս,
Լուր եւ անսա իմում բանիս…
Սիրեա՛ զուսումն, որով պատուիս
Ի յերկնայնոցն եւ ի յերկրիս:

Բուն քառեակների մէջ էլ յաճախ նա կրկնում է նոյնը. օրինակ՝

Գիմըն պանծէ քեզ բիւր բարի,
Գրելով զիմաստս ի տախտակի,
Զնա արկ ի քոյդ պարանոցի,
Որ պատուական է քան զոսկի:

Դեռ 19րդ դարի առաջին յիսնամեակին էլ, ինչպէս Շնորհալու ժամանակ, վարժապետները տախտակի վրայ գրում էին աշակերտների դասերը եւ կախում նրանց վզերից: /

Դայն դուռն բանայ քեզ գիտութեան
Ըզտաճարին իմաստութեան.
Բախեա եւ մուտ արիութեամբ,
Մի՛ արտաքոյ մնար հեղգութեամբ:
Զայն զարթուցանէ ըզքեզ, մանո՛ւկ,
Զայնիւ հընչմամբ որպէս թըմբուկ.
Մի՛ յուլանէ լինիր տաղտուկ,

1 Բանք չափաւ, էջ 326–350:

Զի մի՛ տաս վայ անձինդ յատուկ:
ԺԷՆ ժուժկալ լինել, սաէ՝ յուսումն,
Թէեւ ապտակ առնուս յարբումն.
Հայեա՛ց յոսկին, որ ի քրայումն,
Զի ծեծելով առնու զմաքրումն:

Այսպէս եւ ուրիշ քառեակների մէջ: Բարոյակրթական խրատները սովորական բովանդակութիւն ունեն, երբեմն եւ կրօնական — հեռանալ չարութիւնից, վատ մարդկանցից, սուտ խաղերով չզբաղուել, նմանել իմաստուններին, լսել ծնողներին եւ վարդապետին (ուսուցչին), հեռեւող լինել իմաստուններին, չլինել ծոյլ, հպարտ, լինել ջանասէր, խոնարհ, հնազանդ լինել ծերերին եւ նմանները:

Պէն պատուիրէ պարկեշտ լինել,
Մի՛ զորովայնդ խըճողել,
Մի՛ ըզգինի բընաւ սիրել,
Մի՛ տարաժամ զբերանդ յածել:

Խրատների միւս շարքը գրուած է ութեակներով՝ «Բան ներատաղական ի խրատ ոգւոց համայնից ի դիմաց մերոյին տառից տանց յիւրաքանչիւրսն քառից», այսինքն ամէն խրատ կազմուած է չորս տնից (երկու տողը մի տուն): Խրատներն ուղղուած են ամէն մարդու՝ ե՛ւ մանուկներին, ե՛ւ երիտասարդներին, ե՛ւ ծերերին, բայց ոչ գիտուն մարդկանց, «Սա ոչ գիտնոց՝ այլ տղայապէս մանկանց տըւաւ նուսխայապէս», գրում է հեղինակը: Ունին ընդհանուր բարոյակրթական բովանդակութիւն — օրինակ.

Բենըն բանից, սաէ, չարաց
Սանձեա զլեզուդ վասն ընկերաց.
Ի բերանոյ քո հան ի բաց
Զխօսս ապաեղխ նախատանաց:
Նաեւ ի բան բամբասանաց՝
Դիր պահապան քոյոց շըրթանց...
Ծայն ծանուցանէ յոյժ ծանրագոյն.
Զբան երդման ուրանալոյն...
Ձայն չար սաէ զագահութիւն,
Զի շատ մեղաց է ծնելութիւն:
Զի ի նմանէ է սպանութիւն,
Նա է աւար եւ գերութիւն.
Անտի սկսեալ է գողութիւն,
Եւ անիրաւ դատողութիւն.
Ի յայնմանէ վաշխառութիւն,
Եւ ըզմիմեանս ատելութիւն:

Խրատներ է տալիս եւ աշխարհի մեծամեծներին՝ չլինել անբարտաւան, այլ քաղցր ու հեզ, խոնարհ, եւ շատ նմանները: Կան նաեւ կրօնական բովանդակութեամբ խրատներ, այլեւ կեանքի անցաւոր լինելու մասին.

Կենըն կենաց զանցաւորէ
Կըրկին դըրամբք քաղաք առէ.
Ընդ մին մըտեր մերկ յարգանդէ,
Ընդ միւսն ելցես մերկ յաշխարհէ:
Արդ զի՞նչ օգտիս դու ի շահէ
Ի քաղաքիս այս վաճառէ,
Յորժամ ի դըրունըն կողոպտէ
Մահն, որ կենաց թըշնամին է:

Բոլորովին նոյն ձեւով, ինչ խրատական քառեակները, յօրինուած է եւ «Բան հաւատոյ վասն անեղին եւ եղելոց բարառնաբար ի դիմաց հայկական տառից չափաբերմամբ ոգեալ»[1]: Դա մի փոքր գրուածք է, սկզբի քառեակների նիւթը դաւանաբանական է, յետոյ շատ էական կէտերով համառօտ գրուած է Ս. Գրքի բովանդակութիւնը, սկսած աշխարհի ստեղծումից մինչեւ Քրիստոսի երկրորդ գալուստը: Բանաստեղծական արժէք չունի. յօրինուած է լոկ գործնական նպատակի համար:

Վերջապէս՝ վերեւում յիշուած Ապիրատի խնդրով, Հռոմկլայում 1151 թ. Շնորհալին գրել է իր մի ուրիշ աշխատութիւնը, դարձեալ «Բան հաւատոյ», որ նուիրել է ի յիշատակ իր ծնողներին եւ ազգականներին[2]: Դա Աւետարանի անզարդ եւ արագ ոճով համառօտ պատմութիւնն է մօտ 1500 ութվանկանի տողերով, յանգերի փոփոխմամբ.

Փոքր բանիւ կարճ ի կարճոյ
Միայն ըզմիտսըն ցուցելոյ,
Ընթերցողաց վերծանելոյ
Արագ մըտացն հասելոյ:

Սկզբում գրուած է եկեղեցու դաւանութիւնն աստուածութեան եւ «երկու բնութեան» մասին: Այս գործը, որ առանձին բանաստեղծական արժէք չունի, իր ժամանակին անպայման շատ հաճելի միջոց է եղել Աւետարանի պատմութիւնը սովորելու համար: Դա առաջին փորձն է «մեսիական» յօրինելու, բայց իրեն՝ հեղինակին, երեւի, չի բաւարարել:

5. «Առակf»—հանելուկներ:— Մեր Շնորհալի բանաստեղծը ոչ միայն մեկին գրելու հակումն է ունեցել, այլեւ հակառակ չի եղել իր խօսած լեզուով, անգամ ընտանեկան ոճով շարադրելուն: Նա գրականութեան մէջ մըտցրել է մի նոր տեսակ եւս՝ «Առակք վասն ուրախութեան մարդկան»[3]: «Առակք» բառն այստեղ չպիտի հասկանալ արդի իմաստով, այլ իբրեւ «հանելուկներ»: Տպագրած են 120 «առակներ», որոնց մէջ կան եւ ժամանակի խօսակցական լեզուով գրուած: Ինչպէս ժողովրդական հանելուկների, նոյնպէս եւ «առակների» նպատակն է ոչ այնքան մարդկանց ուրախացնել, որքան ըղձալի եղանակով սովորեցնել եւ սրամտութիւն զարգացնել, դիտել տալ բնութիւնը, զանազան իրեր եւ այլն:

---

1 Բանք չափաւ, էջ 313 եւ հտն.:
2 Բանք չափաւ, էջ 167—227. «Բան հաւատոյ ոտանաւոր տաղի չափոյ»:
3 Բանք չափաւ, էջ 560 եւ հտն.:

Դրանց նիւթը կիսով վերաբերում է կրօնական բաների եւ անձերի, ինչպէս են՝ աբեղայ, միակեաց, դրախտ, ապաշխարանք, առաքեալք, կանթեղ, Աբէլ և Կայէն, Աբրահամ, Ադամ, Դաւիթ, Ղովտ եւայլն. Նաեւ Հայոց պատմութիւնից՝ Վարազդատ, Տորք, Տրդատ: Հետաքրքիր են աւելի այն բազմաթիւ «առակները», որոնք, ինչպէս ժողովրդական հանելուկները, յօրինուած են կենդանիների, պտուղների, տարուայ չորս եղանակների եւ այլ ոչ կրօնական բաների մասին, օրինակ՝ ձիւն, երկինք, արեգակ, լուսին, անձրեւ, աշխարհ, ծառ, կշեռք, ճրագ, նուռն, դդում, խիար, խաղող, խնձոր, տանձ, ընկոյզ, ցորեն, ջրաղաց, ագռաւ, այծ, աղուէս, արջ, էշ, կատու, կրիայ, շուն, խոզ, մաքի, ուղտ, ջորի, սագ, սիրամարգ, կաքաւ, արտոյտ, բզէզ, մեղու, մրջիմ, գինի, գիրք, դանակ, դուռն, աշտարակ, աղեղ, սուր, սանդր, եւ այլն:

Շնորհալին այս նոր գրական տեսակը իւրացրել է անշուշտ ժողովրդական բանահիւսութիւնից. նրա հանելուկների մի մասի նիւթն էլ առնուած է ժողովրդականից: Այսպէս, օրինակ, մահմեդական չէյխի (=վանահօր) եւ կաթոլիկ Փրերի (=եղբօր՝ կրօնաւոր իմաստով) նմանեցրած արջի հանելուկի վերջին տողն առնուած է ժողովրդական առածից, թէ՝ «Արջի աչքը մերու տանձին է».

Շըխուկ մի կայր դեռ ըզՓըրեր.
Ու ինք խաւ ի վեր մուշտակ ունէր,
Խաղայր, քօլօլ[1] կենայր ու յառնէր,
Ու հետ տանձին դաչերն ածէր:

Ամպրոպ ու կայծակի հրեղէն եւ անձրեւաբեր աստուածուն—Վահագնին ըստ մեր ժողովրդական հաւատալիքների՝ փոխանակել է Եղիա մարգարէն, եւ վերջինս՝ Եղիան հանելուկի մէջ նկարագրուած է յիշուած աստուածութեան գծերով.

Տղայն չուտէր բայց միայն հուր,
Մեծին ագռաւըն տայր ապուր.
Հեծեալ հրեղէն ձի ու գնայ սուր,
'Ի ինքն ի յամպոյն հոսէ մեղ ջուր:

Ինչքան էլ ժողովրդական տարրը երեւում է մի քանի «առակների» մէջ, բայց սրանք էլ, ինչպէս եւ միւսները, իբրեւ գրական երկեր Շնորհալու իրեն ստեղծածն են: Նա ժողովրդական հանելուկների տեսակն ընդարձակելով վերածել է նոյնայանգ քառեակների (մէկն ութեակ է), եւ անպաճոյճ ու

1 Տպուած է՝ «քաջօլ կենայր», ուղղում եմ «քօլօլ կենայր»: Հ. Աճառեանի «Արմատական բառարանի» մէջ «քաջօլ» բառի համար գրուած է «անստոյգ բառ»: Դա աղճատումն է «քօլօլ» բառի: Տե՛ս Ս. Ամատունու «Հայոց բառ ու բան», Վաղարշ., 1912, էջ 676 եւ 674. «քըլմստրել, քօլօլել—շների, կատուների եւ այլն, իրար վայր ձգելով. թաւալելով խաղալը»: Գործ է ածւում եւ մարդոց համար. «Թագաւորի հէրն ու մէրը խաղացին ու իրար քօլօլեցին» (Պռոշեան): Տե՛ս եւ Հ. Աճառեանի «Գաւառական բառարան», Թիֆլ., 1913, էջ 1120. «Քօլօլ կենալ, քօլօլել, քօլօլուել—շան գզգզուիլը, իրարու հետ գզգզուիլ. շները քօլօլւում են, գետին տապալել», եւ այլն:

հակիրճ ոճով, բայց դիպուկ այլիմաց նմանութիւններով նկարագրել առակների մի քանի բնորոշ կողմերը եւ առաջ բերել իսկական փոքրիկ բանաստեղծութիւններ՝ լի ճշգրիտ իրականութեամբ: Այսպիսով ժողովրդական բանահիւսութեան այդ հասարակ տեսակն ստացել է որոշ գեղեցկութիւն եւ ունի մի առանձին համեղութիւն ու գրաւչութիւն, մանաւանդ երբ յօրինուած է խօսուած լեզուով: Բերենք մի քանի օրինակ: Հէնց սկզբում դրուած հանելուկի մէջ կենդանի տեսնում ենք սեւաւոր աբեղային՝ առանձնացած աղօթելիս·

Մէկիկ հաւուկ մի կայր փոքրիկ,
'Ւ ի գլուխն ունէր սեւուկ թեպրիկ·
Երթայր նըստէր ինքըն լըռիկ,
Աղօթք անէր խիստ սըպըրկիկ:

Ահա եւ քարաշրջիկ խեղճուկ այծը, որ իր մարմնով ծառայում է ե՛ւ քրձազգեստներին, ե՛ւ գինարբուներին, ե՛ւ ամէնքին·

Յամէն շըրջի ինքն ի քարեր,
Ունի ծախու մազէ քըրձեր,
Գինոյ ունի աղուոր տըկեր,
'Ւ օժտէր ձրրի դանկի կօթեր:

Ջանասէր մրջիւնների երկայնաձիգ կարաւանները նմանեցրած են Խորասան գնացող բեռնակիր էշերի կարաւաններին·

Կարի տեսայ ես շատ կարաւան,
Որ կու իջնայր ի Խորասան·
Իշուին բոկիկ էր ու անփալան,
Մէկիկ հատիկ բառնան ու գան:

Գեղեցիկ է կանաչազգեստ մանուկ գարունն իր արօտական խաշների հօտերով եւ բազմաթիւ գէր ձիերով· եւ ընդհակառակն՝ «տօթագին քարանձաւ» Հռոմկլայի եւ շրջակայ երկրի այրող աշունը, որ ցամաքեցրել է գետի ջուրը, խանձել ու հնձել է դաշտի խոտը՝ զրկելով ձիուն եւ էշին:

Թագուոր արքայ աղուոր տեսակ,
Զամէն հագնի կանաչ դիպակ·
Խաշինք ունի անթիւ բանակ,
Շատ գէր ձիան որձ ու մատակ:
Մանուկ մի կայր զօրեղ հրեղէն,
Խըմեց հատոյց զջուրն ի գետէն·
Ձիուն 'ւ իշուն արար նա քէն,
Հընձեց վերոյց զխոտն ի դաշտէն:

Ո՛րքան իրական է նկարագրուած աշխարհ կերակրող ջրաղացն իր ցրտոնում (ջրտուն) տատասկոյ անուով (փառ), շաղ առած ալիւրով ու չախչախով·

Մինն ի յանդունդըս տապալէր,
Մինն ի յերեսըն թըքանէր,

*Գըլխովն ծափըս հարկանէր,*
*Ըզկենարարըն մեզ բերէր։*

*Ո՞վ կը համարձակուի բռնակալի երեսին բան ասել․ բայց մի զարմանալի բան կայ թռչունի մագիլներով, եւ նա ցատկում է բռնակալի երեսի վըրայ։*

*Եկ դու մի՛տ դիր, սիրելի՛,*
*Իրք մի ասեմ զարմանալի․*
*Մէկ մի ունի մագիլք հաւի,*
*Վազէ յերես բըռնակալի։*
*(Սանդր)*

*Ինչքան էլ հանելուկների նուաստ տեսակն է մշակել մեր բանաստեղծը, նա չի մոռացել անցաւոր մարդ էակի յեղյեղուկ բախտը եւ որ* «աշխարհը *հիւրանոց է, մարդիկը հիւր են․ կու գան ու կ՚երթան», այն էլ ինչպէ՛ս կ՚երթան…*

*Պանդոկ մի կայր վերայ երկրի*
*Ի յանցաւոր ճանապարհի․*
*Որ անծանօթքն ի նմա գային,*
*Եւ ծանօ՛թքըն գընային։*
*Մինչ հիւրըն գայր՝ մեծարէին,*
*Եւ մինչ գընայր՝ կողոպտէին,*
*Ոչ թէ մասն ինչ իրս առնուին,*
*Այլ զբովանդակն խըլէին։*

## «ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ»

1․ Դարերի լեգենդաները եւ ողբերգութիւն։—*Յիշուած բոլոր նոր տեսակի երկերը թէպէտ ունեն գեղեցիկ հատուածներ, բայց իրենց նիւթով արդէն հնարաւորութիւն չեն տուել բանաստեղծին ոչ երեւակայութեան թռիչքներ վործելու եւ ոչ էլ ներսուզուելու իր հոգու խորքերը եւ քրքրելու իր զգացումները։ Կարծես Շնորհալին երկար որոնումներ է արել՝ դրա համար մի յարմար նիւթ գտնելու եւ գտել է ամբողջ Ս․ Գիրքը։ Ուստի վերեւում յիշուած «Բան հաւատոյ» երկից յետոյ, որի նիւթն Աւետարանի պատմութիւնն է, 1152 թ․ յօրինել է մի իսկական բանաստեղծական գործ՝ «Ողբերգութիւն վիպասանական ի տառից սրբոց», որ սովորաբար անուանւում է ըստ սկզբի բառերի* «Յիսուս որդի»*։ Ամբողջ վերնագիրն է՝ «Տեառն Ներսեսի նուէր մաղթանաց ներչափական տաղիւ տուողին բանից, ըղձումն աղօթից ներանձնական հոգւոց զարթուցելոյ մտօք ի թմբրութենէ կրից յիշատակաւ անցելումն իրի ներկայի եւ ապագայի, ողբումն հեծութեան սրտի, խօսք ընդ Աստուծոյ»*[1]*։ Այս ցիտատից հէնց կարելի է տեսնել, որ Շնորհալին այս երկի համար ազդուել է Գրիգոր Նարեկացու Ողբերգութեան Մատեանից։ Միւս կողմից նա հետեւել է նաեւ Գրիգոր Մագիստրոսի «Հազարտողեանին»։ Ինչպէս վերջինիս մէջ ոտանաւորով տրուած է Աստուածաշնչի բովանդակու-*

1 *Բանք չափաւ, էջ 7—166։*

*թիւնը, նոյնպէս եւ Շնորհալու երկի վիպական կողմն առնուած է Ս. Գրքից եւ նոյնիսկ ամբողջ երկը, չորս հազար տող («երկհազարեան տամբ յանգական»), յօրինուած է նոյն «ին» յանգով, ինչպէս «Հազարտողեանը»: Բացի Հին եւ Նոր Կտակարանների պատմութիւնից՝ վերջը նա յիշում է նաեւ քրիստոնէութեան համար աշխատող հայրապետներին ու նահատակներին, ճգնաւորներին ու չարչարուածներին եւ վիպերգը հասցնում է մինչեւ Քրիստոսի երկրորդ գալուստը—աշխարհիս վախճանը, վերջին դատաստանն ու յաւիտենական կեանքն ըստ քրիստոնէական հաւատալիքի: Դա բովանդակում է, ուրեմն, այսպէս ասած, դարերի լեգենդները, մարդկային պատմութեան անցեալը, ներկան եւ ապագան: Բայց դա լոկ վիպական աշխատութիւն չէ, այլ միաժամանակ եւ քնարական քերթուած է կամ, ինչպէս հեղինակը բնորոշել է, «այրերգութիւն վիպասանական». մի կողմով պատմուածք է, միւս կողմով՝ մի սրտաբուխ երգ: Եւ այս կողմից արդէն նա նմանել է Գրիգոր Նարեկացուն: Այս նմանութիւններով հանդերձ՝ նա յօրինել է մի օրիգինալ — ինքնատիպ, ինքնաստեղծ ընտիր երկ, որի մէջ անձնականը — լիրիզմը բռնում է կարեւոր տեղը: Բանաստեղծը կամ «Երգողը», ինչպէս ինքն իրեն անուանում է հեղինակն այդ երկի յիշատակարանի մէջ[1], — իր վրայ է դարձնում ըստ Ս. Գրքի եւ՛ մեղաւորների, եւ՛ արդարների արարքները, հարկաւ, իրեն չհամարելով արդար.*

*Սկիզբն ի հօրէն մեր նախնական*
*Մինչ ի վերջին դարուս վախճան,*
*Ըզբան եւ զգործ համանըմանայն*
*Առ իս փոխեալ դիմառական...*[1]

*Ամբողջ գրուածքի մէջ շարունակ իշխում է բանաստեղծի իր դէմքը, որ հեծութեամբ դիմում է Աստծուն.*

*Ընդ Աստուծոյ դէմ յանդիման*
*Խօսակցելով անձն անարժան:*

*Այդ «Խօսքն ընդ Աստուծոյ» խնկապէս մի «աղօթական բան» է, բազմաթիւ աղօթքների մի շարք, որոնց իւրաքանչիւրի մէջ երեւան է գալիս «Երգողի զղջումների մի գիծ, հոգեկան վիճակի մի կողմ: Նայելով պատմած իրողութիւններին՝ երբեմն նա զղջում է եւ խոստովանում իր արարքը, երբեմն որեւէ խնդրուածք է անում՝ «փրկս աղօթից», եւ այդ ամէնի ժամանակ, ինչպէս Գրիգոր Նարեկացին, շարունակ իրեն անարժան ու մեղաւոր է գտնում: Մարդկային զանազան վիճակների մասին պատմուածքների մէջ՝ «Աստծու հետ խօսքը», այս է կազմում երկի նպատակը եւ էական տարրը, ամբողջի ընդհանուր գոյնը, որով եւ երկի միութիւնը:*

*Գրեթէ անընդհատ կապակցութեամբ ամփոփ պատմուածքի մէջ իրար յաջորդում են անձերն եւ իրողութիւնները եւ ապա համապատասխան քնարերգութիւնն ու խորհրդածութիւնները: Երբեմն այդ երկուսն իրար կից են մէջ բերւում, ինչպէս, օրինակ, դրուագը կարճահասակ մաքսաւոր Զա-*

---

1 «Յիշատակարան երգողի բանիս», էջ 160:

քէօսի մասին, որ Յիսուսին տեսնելու համար բարձրանում է ժանտաթզենին (էջ 113):

2· Արտայայտութեան ձեւը Գրիգոր Նարեկացու ձեւի հետ համեմատութեամբ: Հասարակութեան ազդեցութիւնը ոճի վրայ:— Ներսէս Շնորհալու այս երկի համար, ինչպէս Գրիգոր Նարեկացու «Ողբերգութեան», իշխող է Աստուած, որից բխում է եւ երկուսի բանաստեղծութիւնը: Երկուսն եւս իրենց «բանի», այսինքն բանաստեղծութեան համար նոյն նպատակն են դնում թէ՛ իրենք իրենց համար եւ թէ՛ ընթերցողների (էջ 158)·

Եւ որք լինել եւ կամ լեալ իմ
Այսու բանիւ քեզ պաղատին,
Համարեսցիս միշտ ընդ նոսին
Զիս ըղձերակէս մաղթել սմին:
Եւ առ հոգիս իմ յուսանդին
Եւ ի մարմինս իմ տապանին
Բարեաց ազդումն ի քէն լիցին,
Եւ ցնծացեալք կայտառեսցին:

Այսպէս ձուլիչ նման կաղմեր երկուսի մէջ եւս:

Ինչպէս բերուած հատուածներից կարելի է նկատել, Ներսէս Շնորհալու այս բանաստեղծութեան մէջ ոգերգը մեղմ է, տխուր ու քնքուշ, ամենայն ինչ հանդարտ է ու փափուկ: Ոչ վերամբարձ սլացք ու թռիչք, ոչ սրտի այրուք ու ձենձերում եւ ոչ տաշորող ու կրակոտ զղջում: Այստեղ չենք գտնում յուսահատական ճիչ ու աղաղակ, որով ինքն իրեն կարատում եւ ոչնչացնում է Գրիգոր Նարեկացին աղբայիս: Ներսէս Շնորհալու մօտ եւս զգացումների զեղումն անկեղծ է, մեծ է կրօնական զղջման եռանդը, բայց, ինչպէս սովորաբար, նա չափաւորութեան սահմանից չի անցնում: Երկուսի մէջ եւս կատարեալպէս նոյն զգացումներն են, միայն արտայայտութեան թափով ու ձեւով տարբեր: Բայց Շնորհալին նման է մի բարեկիրթ մարդու, որ իրեն պահել գիտէ, մինչդեռ Նարեկացին յիշեցնում է մի բնական մարդ, որի ներքինն անզուսպ է եւ որ անմիջականօրէն, առանց քաշուելու արտայայտում է իր բռնկումները եւ հեկեկալով արտասւում: Նա համեմատւում է մի պղտոր հեղեղի, որ գլորանք տալով՝ ալիք ալիքի ետեւից քշում է առաջ, եւ որի մէջն ընկնողը տանջալից տարւում է երկար երկար, առանց հանելու եզրին. մինչդեռ Շնորհալին նման է մի ականակիտ, վճիտ աղբերակի, որ հանդարտ սահում է կարկաչելով, եւ որի խաղաղ ափին նստած՝ մարդ սուզւում է խորհրդածութեան մէջ աշխարհիս մասին: Բայց այսպիսի զանազանութեամբ հանդերձ՝ Շնորհալու այս երկը պակաս ազդու չէ, քան Նարեկացունը. դա մի հեծութիւն, մի հառաչ է, մեղմ ու հեզիկ, եւ ոչ հեծկլտանք ու թառանչ, բուռն ու սաստիկ:

Ինչի՞ց է առաջացել երկուսի այս ոճական զանազանութիւնը:—Անշուշտ, երկու բանաստեղծների խառնուածքի բնաւորութեան տարբերութիւնից. մէկինը տաք ու բռնկող, միւսինը՝ անուշ ու հանդարտ: Բայց կայ եւ հասարակութիւնը, որի արտայայտիչն են դառնում իսկական բանաստեղծները, ոչ միայն իրենց գործի բովանդակութեամբ, այլեւ ձեւով, ոճով: Եր-

կուսի էլ այս կրօնական գրականութիւններն արտացոլել են իւրաքանչիւրն իր ժամանակի հոգեւորական դասի պատկերը, առանձնապէս կրօնաւորութեանն ու ճգնաւորութեանը: Արդ՝ Նարեկացու Ողբերգութեան գրուելուց ուղիղ հարիւր յիսուն տարի յետոյ է ստեղծել Շնորհալին իր երկը, իսկ այդքան երկար ժամանակի ընթացքում շատ բան էր փոխուել: Վերածնութեան յեղաշրջող հոսանքը բաւական զօրացել էր արդէն. ազդել էին դրա համար եւ Հայաստանի ու հայ ժողովրդի քաղաքային վայրիվերումները, մահմեդական այլազգիների եղերական տիրապետութիւնները, անընդհատ երերուն վիճակը եւ նմանները: Այդ ամէնի հետեւանքով արդէն շատ փոխուել էր նաեւ կրօնաւորութեան ոգին: Գրիգոր Նարեկացու օրով, ինչպէս նկարագրուած է աշխատութեանս Առաջին հատորի մէջ, կրօնաւորութիւնն ու ճգնաւորութիւնը չափազանցութեան էր հասած թէ՛ ներքուստ մարդկանց բորբոքուած երեւակայութեամբ եւ թէ՛ արտաքուստ իր արտայայտութեան սուր ու բիրտ, ճչուն ձեւերով—մերկ ու բոկոտն մնալ, կամ գրգլեակներ հագնել, բազմօրեայ անսուաղ պահքերով եւ այլեւայլ միջոցներով տանջել մարմինները, ամէն տեսակ արտաքին ուժեղ ու բուռն ցուցադրութիւն մերկող հոգիների եւ միստիկական ցաւագար ձգտումների — մեղադրել ինքն իրեն, սաստիկ ապաշխարել, լալ, արտասուել եւ նոյնիսկ ինքն իրեն ծեծել եւ այլն: Այսպիսիները հոգով ու մարմնով անհանգիստ գերի էին ապաշխարութեան բռնակալ ուժին եւ համոզուած էին, թէ մեղքերի ծովն ընկած՝ ալեկոծւում են կատաղուած ալիքների մէջ եւ չարունակ աւելի ու աւելի խիստ միջոցների դիմելով՝ աշխատում էին միմեանցից գերազանցել ինքնատանջութեամբ: Նրանց հարկաւոր էր իրենց հոգեկան պղտոր վիճակի համապատասխան զգայացունց ապաշխարական արտայայտութիւն, զօրեղ ու բուռն խօսք, ձեւի չափազանցում, «սպեղանիք զօրաւորք վիրաց անբժշկականաց, դեղք ազդողականք ցաւոց անտեսականաց», որպէսզի այդպիսի ողբերգը կարդալով, դրա վրայ ազօթելով, աւելի եւս լային ու կոծէին իրենց: Թեթեւը, մեղմը, հանդարտը, միակերպը նրանց հաճելի չէին լինել եւ չէին էլ ազդել ու բաւարարել, քանի որ կեանքի մէջ կրում էին նոյնը ծանրաթախիծ փոթորկայոյզ կերպով: Արդ՝ ինչպէս կրօնաւորութիւնն էր, նոյնպէս եւ նրա պահանջած եւ նրա արտայայտիչ բանաստեղծութիւնը, ոչ միայն բովանդակութեամբ, այլեւ ուժեղ գոյներով եւ բազմապիսի խուռն ճնշող ձեւերով, մէկը միւսից ուժեղ պատկերներով, յորդահեղ ոճով:

Այսպէս չէր կարող լինել Շնորհալու ժամանակ, երբ կրօնաւորութիւնը, այսպէս ասած, աշխարհիկ էր դարձած, եւ լոկ ձեւ էր մեծ մասամբ, ինչպէս կը տեսնենք ներքեւում, երբ խօսք կը լինի Շնորհալու «Ընդհանրական» աշխատութեան մասին: Կային, հարկաւ, նաեւ դեռ մեծ ջերմեռանդներ. բայց ապաշխարութեան յորդ եռանդը պակասած էր, կրօնաւորութեան բարձրացած, յորձանահոս հեղեղը նստած էր, պղտորութիւնը պարզուած, թափը թուլացած: Չկար այլեւս բորբոքուած ուղեղների երկնաթռիչ միստիցիզմը, արտաքին ցուցադրութիւնը: Իսկական բարեպաշտ կրօնաւորը, ապաշխարողը, դարձած էր ներանձնաւոր, իր մէջ, իր հոգու մէջ քաշուած համեստ ու զուսպ վանական, սրբասէր, պարզ ու մաքուր կեանքով, բայց բնաւ ոչ ինքնատանջ ճգնաւոր, ոչ կամաւոր նեղութիւն կրող,

չարչարուող։ Չկար կրօնական հարբածութիւնն իր արտաքին ծանր ու կեղեքիչ ձեւերով։ Բաւական էր միայն, որ բարեպաշտը, իր մէջ ամփոփուած, ջերմ հաւատով դիմէր Աստծուն։ Այս տիպի կրօնաւորների լաւագոյն ներկայացուցիչն է եղել ինքը Շնորհալին. ոչ միայն իր ապրած համեստ միակերպ կեանքով, այլեւ իր Ողբերգութեան թէ՛ բովանդակութեամբ եւ թէ՛ ոճով, որ համապատասխան է իր եւ իրա նմանների ներքինին։ Ամէն ինչ չափաւոր, մեղմ, փափուկ, հանդարտ. եւ ոտանաւորն էլ միակերպ, բայց սահուն ու սիրուն։

3. Վերջին դատաստանը։— Շնորհալին այս երկի մէջ ունի մեծավայելուչ հատուածներ եւս։ Վերջին դատաստանի նկարագրի մէջ, որ մեր հին բանաստեղծների սիրած նիւթերից մէկն է, ինչպէս եւ մեղաւորների պատիժների թուարկութեան ժամանակ, մեր այս հեզաբարոյ քերթողի երեւակայութիւնը մեծ թափ ու թռիչք է առնում։ Նա սաստիկ դղածուած է։ Բերենք մի քանի կտոր՝ կրճատումներով.

Յորժամ տարերքըս դըղըրդին,
Հաստատութիւնքըն սասանին,
Իբր ըզծովու կոհակք կուտին
Ի յեռանդանըն կաթսային.
Լայնատարած դողայ գետին,
Ի թանձրութեանց հիմանց շարժին.
Մի ըզմիոյ հետ խափանին,
Կասեալ յերկուցըն տատանին,
Լերինք հիմամբըք զարհուրին,
Եւ ուժգնակի բախմամբ թընդին,
Կարծր բնութիւնք վիմաց հալին,
Եւ ամենայն նիւթք հըրդեհին։

Լռութիւն է լինում. կէս–գիշերին յանկարծակի գոչում է Գաբրիէլի փողը, հոգիները սլանում են իրենց տեղերից, ուր պահուած էին։ Գերեզմանները բացւում են, փտած մարմինները նորոգւում են, նոյնիսկ ծովի ձկների ու ցամաքի գազանների կերածները։ Հոգիները միանում են մարմիններին, եւ մարդիկ բոլորը դառնում են երեսնամեայ. ոչ ծեր կայ, ոչ մանուկ, ոչ արու, ոչ էգ եւ այլն։ Բացւում է ատեանը, նստում է դատաւորը։

Թագաւորում են աղքատները, քաղցածները, զրկուածները։ Պատժըւում են զրկողները, գողերը, սպանողները, պոռնիկները։

Պատժւում են եւ խաբեբայ վաճառականները, նենգաւոր արհեստաւորները, աղքատներին ուղիղ չդատող դատաւորները, եւ շատ ուրիշները։

Պարգեւներ են ստանում արժանաւորները—առաքեալներ, մարգարէներ եւ այլն։

Ներսէս Շնորհալին իր այս Ողբերգութեամբ հանդիսանում է երկրորդ եւ վերջին նշանաւոր եկեղեցական բանաստեղծն իբրեւ արտայայտիչ, ինչպէս ասուեց, արդէն մեղմացած, բայց իսկական բարեպաշտ կրօնաւորութեան—ներանձնաւոր վանականութեան։ Նրա այդ երկն իր խորաթափանց անկեղծութեան համար, որ քնարերգութեան էական պայմանն է, շատ

սիրելի է եղել հետագայ սերունդներին: Սաղմոսի հետ միասին հայկական տպագրութեան հէնց սկզբներում, 1565 թ., արժանացել է տպուելու, եւ այնուհետեւ յաջորդ երկու դարում նորից տպագրուել է աւելի քան ինն անգամ: Մեծ է եղել այդ գրքի ազդեցութիւնը, հմայքն ու պահանջը: Դարեր շարունակ դրա վրայ ոչ միայն աղօթել են եւ արտասուել. դա եղել է ոչ միայն «կարծր սրտերը ճմլող», ինչպէս գրում է Ներսէս Լամբրոնացին, այլեւ դրանով սնուել են Աստուածաշնչի պատմութիւնն ու եկեղեցու դաւանութիւնը եւ բարոյական խրատներ են առել. որովհետեւ բանաստեղծը չի մոռանում, որ ինքն իր կոչումով հոգեւոր դաստիարակ է: «Ընտիր եւ արգարեւ գերընտիր, միանգամայն եւ խակաշնորհ եւ բազմաշնորհ գրուած մը», այսպէս է բնորոշում այդ երկը բազմահմուտ բանասէր ու բանաստեղծ վարդապետը[1]:

## «ՈՂԲ ԵԴԵՍԻՈՅ»

1. Քերթուածի իրական պատմական նիւթը եւ ծագումը:— *Խոհական բանաստեղծական յղացմամբ եւ արուեստով գլուխ բերուած մի մեծ քնարական քերթուած է Շնորհալու այս երկը[2], նրա գլուխ-գործոցը: Դրա նիւթը ոչ կրօնական է եւ ոչ կրօնաւորների է վերաբերում, այլ աշխարհիկ է: Բայց դա մի արեւելեան արարական հեքիաթ էլ չէ, առանց ժամանակեան, տեղական եւ ազգային գոյնի, որի մէջ գեղեցիկ չափածոյ բանաստեղծութեամբ լալագին եղանակով պատմուած լինէր կորցրած սիրուհու մասին, ու սիրահար հերոսը, մենակ կամ հաւատարիմ ընկերի հետ, ելնէր իր սիրածին որոնելու եւ բազմաթիւ ընական կամ անընական արկածներից յետոյ՝ գտնէր նրան: Մեր այս կրօնաւոր բանաստեղծը հեռու է աշխարհիկ սիրուց: Նրա այս քերթուածի նիւթը պատմական է. դրա մէջ վիպերգուած է հեղինակի իրեն օրով կատարուած մի պատմական եղելութիւն: Նա երգել է, ինչպէս ինքը գրում է, «գիրս եղելոց, մեր ժամանակս դիպելոց»: Այն դարում ամենամեծ նորութիւնն էր այդ — բանաստեղծութիւն յօրինել ժամանակակից քաղաքական դէպքերի վրայ: Բայց միանգամայն այդ երկն իր մէջ լայնօրէն անդրադարձրած ունի հեղինակին ժամանակակից իրականութիւնը, հասարակական եւ ազգային իրական կեանքի պատկերը, լի է հայրենասիրական ոգեւորութեամբ, հարուստ եւ փայլուն նկարագրերով, լինի խաղաղ եւ բարօր կեանքի, բնութեան ու չէն քաղաքների, թէ քաջամարտիկ կռիւների, որ քրիստոնեաներն ինքնապաշտպանութեան համար մղում են այլազգիների դէմ, եւ թէ վերջիններիս գործած վայրագութիւնների: Եւ այս ամէնի վրայ ընդարձակ ծաւալով սփռուած են հեղինակի յոյզերն ու խոհերը, նրա դըյուն սրտի մորմոքն ու կսկիծը, նրա յոյսերն ու տենչերը, որ միայն իրենը չեն, այլ նաեւ իր ժամանակի քրիստոնէութեան ընդհանրապէս եւ Հայութեանը մասնաւորապէս:*

*Ի՞նչ է այս քերթուածի գործողութեան հիմք կազմող պատմական*

---

1 Գ. Ալիշան, Շնորհալի եւ պարագայ իւր, Վենետիկ, 1873, էջ 277:

2 Ողբ Եդեսիոյ յօրինեալ տեառն Ներսիսի Կլայեցւոյ, Տփխիս, 1829, ի տպարանի Ներսիսեան դպրոցի Հայոց:

դէպքը։ Հին Նշանաւոր Եդեսիա քաղաքն իր շրջակայ գիւղերով ազատ էր մնացել Թուրքական տիրապետութիւնից․ 11րդ դարի վերջերին այնտեղ կառավարիչ էր Թորոս անունով մի հայ, որ այդ դարի վերջում սիրով ընդունում է խաչակիրներին։ Նրանք, սակայն, շուտով սպանում են նրան, եւ Եդեսիան իր գաւառով մնում է նրանց ձեռին իբրեւ առանձին կոմսութիւն։ Հետզհետէ անարի են դառնում իշխող Ֆրանկները եւ դեխ կեանք վարում։ Եդեսիայի վերջին կոմսը՝ Ճոսլին անունով, առեւանգելով մի հայ իշխանի դուստրը, գնում է Եփրատ գետի միւս կողմն՝ իր զուարճութիւնն անելու։ Քաղաքը մնում է առանց հզօր պաշտպանութեան։ Այդ իմանալով Հալէպի կամ Բերիայի ամիրան՝ Զանգի, որ տիրել էր գրեթէ ամբողջ Միջագետքին եւ Ասորիքին, շատ զօրքով արագ արշաւում, պաշարում է Եդեսիան։ Քաղաքացիները մի ամիս քաջութեամբ պաշտպանւում են, բայց դրսից չստանալով սպասած օգնութիւնը, վերջը թուլանում են բազմաթիւ թշնամիների առաջ, որոնք գրոհելով առնում, աւերում են քաղաքը եւ բնակիչներին սոսկալի կոտորածի, կողոպուտի եւ գերութեան մատնում։ Քրիստոնեաներին մեծ սուգ է պատճառում այդ։ Լուրը հասնում է Արեւմտեան Եւրոպա, եւ պատրաստւում են նոր խաչակրաց արշաւանքի։ Այս է կատարուած դէպքը։

Ներսէսի Շահան կամ Զօրավար եղբօր որդին, պատանի Ապիրատը, պաշարման ժամանակ եղել է Եդեսիայում եւ այնտեղից ազատուելով գնացել է Ծովք եւ պատմել այն քաղաքի աւերումը։ Ուրիշ փախստականներ էլ անշուշտ հասած կը լինեն նոյն գիւղը եւ պատմած նոյն աղէտալի եղելութեան մասին։ Շնորհալին ահա այդ դէպքի տպաւորութեան տակ եւ Ապիրատի խնդրով հիւսել է իր «Ողբը»։

Շնորհալին այդ երկը յօրինել է ըստ երեւոյթին 1145 կամ 1146 թ․, Խաչակրաց երկրորդ արշաւանքից առաջ, երբ Ապիրատը, թէեւ արդէն գինավարժ ձիաւոր, բայց դեռ «մանուկ տղայ» է եղել։ Այս Ապիրատին (որ հետագայում, 1195 թ․ դարձել է կաթողիկոս՝ Գրիգոր Ապիրատ անունով) նա ուղղել է, ինչպէս տեսանք, վերեւում յիշուած ոտանաւոր նամակը եւ ընդարձակ «Բան հաւատոյ» աշխատութիւնը։ Արդ՝ իր պատանի տոհմիկի խնդրով եւ նրա ու նրա նման «տխմարների» եւ ոչ թէ «գիտունների» համար յօրինել է մեր քերթողն այդ «Ողբը», որ այսպիսի ծագում ու նպատակ ունենալով հանդերձ՝ նրա գրական վաստակների պսակն է, եռանդով ողուած մի գեղեցիկ քերթուած։

2․ Դիմառնութիւնը։— *Բանաստեղծն իր այս գրուածքն անուանում է «Բարառնական»։ Եդեսիան առնուած է դիմառնաբար իբրեւ ողբերգող որբեւայրի կին կամ «տիկին», որ ողբում է իր գլխին եկած մեծ աղէտը։ Նա սկզբում ողբակից է հրաւիրում համայն քրիստոնեայ աշխարհը․*

Ողբացէ՛ք, եկեղեցի՛ք,
Հարսո՛ւնք վերին առագաստի,
Քո՛րք եւ եղբա՛րք իմ սիրելիք,
Որք յընդհանուր կողմ աշխարհի․
Քաղա՛քք եւ գիւղք առհասարակ,
Ա՛զգք եւ ազինք որ էք յերկրի,

Հաւատացէ՛ք Քրիստոսի,
'Ի երկրպագուք նորին խաչի···

Դիմում է քրիստոնէական նշանաւոր կենտրոններին՝ Երուսաղէմ, Հռոմ, Կոստանդնուպոլիս, Ալեքսանդրիա, Անտիոք, բանաստեղծօրէն բնորոշելով նրանց կատարած դերերը: Ապա խօսքն ուղղում է Մեծ Հայքին, Հայոց Եկեղեցուն, առանձնապէս Վաղարշապատ եւ Անի քաղաքներին, եւ սաստիկ ողբալուց յետոյ պատմում է իր, Եդեսիայի, անցեալ փառաւոր վիճակը եւ արաբացիներից կրած թշուառութիւնը:

Այս նիւթը մեր բանաստեղծը վիպերգել է մեծ հմտութեամբ իբրեւ մի գիտակ անձ, որ արդէն իշխում է իր կատարելութեան հասած արուեստին՝ երեւան բերելով բացադրութեան թեթեւ ճոխութիւն եւ փայլուն գիւտեր: Որ նա խօսում է ոչ իր կողմից, այլ անձնաւորուած Եդեսիայի, այդ հէնց մի այնպիսի գիւտ է, որ ամբողջ երկին տալիս է մեծ կենդանութիւն: Նա հազուադէպ մոռանում է դիմառնութիւնը եւ գրում է իր կողմից, այսպէս, օրինակ, էջ 54 եւ հտ. 14 տողերի մէջ. «Բայց գի հնար ոչ լինիցի··· Մի բառ միոջէ գրել բանիւ··· Զի այս անկար չարագրողին», եւ այլն: Կան հատուածներ եւ տողեր եւս, որ չեն յարմարւում մի ողբերգու կնոջ: Բայց դիմառնութիւնը, այդ ճարտասանական ձեւն, ընդհանրապէս գեղեցկացրել է Շնորհալու երկը: Կարդալիս, մեծագոյն մասամբ, մոռացւում է բարառնութիւնը, եւ մեզ թւում է, թէ իրօք մի մանկակորոյս, զորովագութ որբեւայրի թշուառ կին է խօսողն ու կոծողը, Եդեսիայի տիրուհին, որ լալով պատմում է իր գլխին եկածները: Եւ այդ կենդանի մարդկային էակի դառն ցաւն եւ ալեկոծուր արտասուքը համակում է մեզ ի գութ եւ ի խանդաղատանք:

Լացէ՛ք, լացէ՛ք բարձր ձայնիւ,
Զիս ողբացէ՛ք կողկողակի:
Եդեսիա՝ Ուռհայ քաղաք,
Որդեկորոյս որբ եւ այրի,
Կանչեմ առ ձեզ ձայն կանացի,
Կականալիր 'ւ ողորմելի,
Քօղս ի գլխոյ մերկանալով՝
Զիմ պատառեմ ծածկոյթ զարդի.
Փետտեմ ըզվարս իմ ցանկալի,
Ծըզեմ ըզհերս անխնայելի.
Քարամբ ծեծեմ կուրծըս սրտի,
Բաղխեմ դերեսս իմ յապտակի:
Նըստիմ ի սուգ ի տան մըթին,
Որպէս օրէն է սըգաւորի.
Եւ փոխանակ որդան զգեստի՝
Սեւ ըզգենում զոյն տըխրալի.
Հեղում արտօսր անչափելի,
Ցորդ եւ առատ՝ նըման գետի.
Քանզի առակ եղէ յերկրի,

*Տիեզերաց նախատելի․*
*Եւ անցաւորք ճանապարհի*
*Վա՛յ ի վերայ աւեն վայի։*

*(Էջ 21 եւ հաջ.)*

3․ Խակաճ կողմը։—*Պաշարման, կոտորածի եւ կողոպուտի ենթարկուել են ոչ միայն Եդեսիան, այլեւ հայկական քաղաքները—Անին, Կարսը եւ միւսները, այն էլ մի քանի անգամ։ Եդեսիան Անի քաղաքի աւերն ու կոտորածը պատմելուց յետոյ՝ ասում է նրան* (*էջ* 19)․

*Վասն այսօրիկ, ո՛վ եղկելի,*
*Որ ես ներհուն այս ամենի,*
*Ի քոյն յայնժամ խիստ աղետի*
*Ծանի՛ր եւ զիմս ողորմելի…*
*Քանզի նըման յոյժ տեսանի*
*Իմըս քոյին հասեալ չարի։*

*Դէպքերը եւ աղետալից վիճակը շատ կողմերով նոյն եւ նման են եղել աւելի քան մի դարից ի վեր 12րդ դարի կէսից առաջ։ Ուստի Շնորհալին ի դէմս Եդեսիայի երգել է իսկապէս նաեւ Հայաստանի այդ իրականութիւնը։ Նա իր եռանդն ստացել է թէ՛ Եդեսիայի աւերման ցաւից եւ թէ՛, եւ աւելի եւս, Հայաստանի։*

*Դժբախտաբար այդ ողբերգական զգացումները յարատեւել են եւ հետագայ մի մեծ շարք դարերում, որովհետեւ յաճախակի աւերումներն է եղել Հայաստանի ճակատագիրը։ Ուստի Շնորհալու ստեղծագործութեան արժէքն աւելի ընդարձակուել է։ Եւ նրա «բարատնական բանը», հեղինակի ժամանակակից կեանքի երգը, միաժամանակ եւ մեր ժողովրդի դարաւոր վէրքերի առաջին բանաստեղծական ողբն է, «հայրենասէրի ողբը», առաջին «Վէրք Հայաստանին»։ Միւս կողմից՝ այս գեղեցիկ քերթուածի մէջ հանդէս է բերուած մի ուրիշ մեծ խնդիր եւս — քրիստոնեայ եւ մահմեդական ժողովուրդների, քրիստոնէութեան ու մահմեդականութեան հակադրութիւնը։ Դա միմեանց հետ նրանց վարած կռուի առաջին բանաստեղծական արտայայտութիւնն է։ Այս է կազմում քերթուածի էութիւնը — քրիստոնէութեան ու մահմեդականութեան հակամարտութիւն եւ հայրենասիրական ողբերգութիւն այլազգիներից կրած աւերմունքի հիման վրայ։*

*Արիստակէս Լաստիվերտցին, Հայաստանի յաւ օրերի այդ ականատեսը, արդէն մորմոքւում էր Հայաստանի անկման, շէն երկրի աւերման համար եւ, ինչպէս տեսել ենք, երբեմն իսկական քնարական արձակ բանաստեղծութիւն էր յօրինում։ Մեր հին պատմագրութիւնների մէջ էլ պակաս չի եղել հայրենասիրական ողբագին զգացման զեղումը։ Բայց այդ ամէնն արձակ են եւ, բացի Լաստիվերտցու գրածից, աւելի հռետորական, քան մաքուր քնարական-բանաստեղծական։ Նախորդ շրջանում մեր բանաստեղծութեան մէջ, ոչ էլ անգամ Գրիգոր Նարեկացու մօտ, չենք գտնում հայրենասիրական նուագը։ Ներսէս Շնորհալու այս մեծ «Ողբի»* 1070 *երկատող տների մէջ առաջին անգամ լսում ենք մի չափածոյ եւ յանգաւոր*

սրտայոյզ քնարերգութիւն: Բանաստեղծը մերթ սրտի կսկիծից բուռն ճիչեր է արձակում թշնամիների դէմ, մերթ մեղմ եւ անուշ, բայց խորին տրտմութեամբ լցուած, հառաչում է Հայաստանի համար. որոնում է նրա անցած հին փառքը, որ այլեւս չկայ: Ամբողջի մէջ տեսնում ենք մի անկեղծ կարօտալի վիշտ ու թախիծ վաղուց հեռացած ու կորած քաղաքական ազատութեան համար. տենչանք՝ ունենալու այն հին երկիրը, որ էր «նման փթթեալ ծաղկի», «պայծառացած ի գոյն վարդի», երանելի ու ցանկալի ամէնքի համար: Մի երկիր, որ վայելում էր ուրախ կեանք, երգ ու երաժշտութիւն, ամենալից սեղաններ, բարեկամական զուարճութիւններ: Ո՞ւր է այս ամէնը, — հարցնում է բանաստեղծը, դիմելով իրեն Հայոց աշխարհին.

Բայց հարցանեմ, ո՛վ բաղձալի,
Բանիւ խնդրեմ պատասխանի.
Այժմ արդ ո՞ւր է թագ քո գլխի,
Եւ կամ պսակըն հրաշալի:
Ո՞ւր զարդարանքըն դըշխոյի,
Հարսին որդւոյ թագաւորի.
Ո՞ւր պաճուճանք հարսնարանի,
Կամ ոսկեհուռ վերջաւորի:
Է՞ր չէ փեսայն ի խորանի,
Կամ փեսաւէրքն ի տաճարի.
Ո՞ւր են մանկունքն առապատի,
Զի ոչ հընչեն զերգըս Դաւթի.
Զիա՛րդ լըռեալ ոչ հարկանեն
Զփողըն հընչող տարօնացի.
Ո՞ւր պարարակ եղնամոլին.
Զիա՛րդ ի քեզ ոչ զենանին.
Կամ մատըռուակքըն բաժակին,
Զի ոչ բաշխեն զանոյշ գինին.
Ո՞ւր բարեկամք զուարճակից...
Ո՞ւր քաղցրաձայն երաժըշտի,
Կամ գեղգեղումն եղանակի...
Արդ ո՞ւր գահոյք թագաւորի
Վաղարշապատ քոյ քաղաքի,
Կամ նախարարքըն արքայի,
Արարատեանըդ գաւառի.
Ո՞ւր են իշխանք որք առաջին,
Կամ զինակիրք որք են վերջին.
Ո՞ւր զօրականքն յասպարիզի,
Կամ լեգէոնքն ի ճակատի.
Ո՞ւր մեծամեծքն ի բազմոցի,
Կամ ո՞ւր սեղանն ամենալի:
Ո՞ւր են ազատքն ի տաճարի,
Կամ տեառնորդիքն ի ծաղկոցի:
Ահա բարձաւ այս վաղագոյն,

Յոյժ հեռացաւ որ չերեւի.
Անուրջք 'ւ երազք էին յայտնի,
Արդ ծածկեցաւ ի պարթըմնի:
  Այլ փոխանակ այսր ամենի՝
Յոյժ հակառակըն տեսանի.
Քանզի նըստիս որբ եւ այրի,
Տըխուր դիմօք զերթ ի սըգի:

Ահա՛ Հայաստանի փառաւոր անցեալն ու թշուառ ներկան Շնորհալու օրով: Նա էլ ճիշդ նոյն վիճակին է եղել եւ է՛ր, ինչպէս Եդեսիան: Պակաս դժբախտ չի եղել եւ Անի մայրաքաղաքը, որ ձեռքէ ձեռք էր անցնում: Գրիգոր Պահլաւունին, Շնորհալու եղբայրը, մասնիկ է եղել եւ նոյնիսկ բանակցութիւն է սկսել Անիի իշխողների հետ՝ կաթողիկոսարանը Ծովք գիւղից փոխադրելու Հայաստան — Անի, բայց այս քաղաքի անկայուն դրութիւնը հէնց պատճառ էր դարձել թողնելու այդ միտքը: Կարելի չէր երգել Եդեսիայի վիճակը եւ անտես անել Հայոց քաղաքներից այդ մեծի բախտը, որ հետզհետէ դէպի անկումն էր գնում գոնէ ազգային հայեացքով: Եւ Շնորհալին Եդեսիային ողբակից է հրաւիրում առանձնապէս նաեւ Անի քաղաքը:

Բայց եւ ըզքեզ յայս հրաւիրեմ,
Արեւելեան քաղաքդ Անի.
Կցո՛րդ լեր դու իմոյս ձայնի.
Եւ ըմփոփիչ տարակուսի:
Քանզի երբեմն եւ դու էիր
Վայելչական հարսն ի քօղի.
Մերձաւորաց յոյժ ցանկալի,
Հեռաւորաց փափագելի:

Ապա սրտալի սիրուն նկարագրից յետոյ՝ բանաստեղծը վերհանում է եկեղեցու անցեալ վիճակն Անիում եւ շարունակում.

Սուրն անողորմ անօրինի,
Որ մեր արեանս է ի սովի,
Որ չէ յագեալ եւ ոչ յագի
Մինչեւ ի զալ կատարածի,
Նոյն նա եհաս ուրեմն ի քեզ,
Որպէս յիս յայս ժամանակի:
Հրնձեաց զորայն յանդաստանի,
Կանաչաւոր ի հասակի.
Զայգին խըլեաց արմատաքի,
Մերկեաց յոստոցն ըզձիթենի.
Եհեղ զարիւն սըրբոց յերկրի,
Հոսեաց նըման ջըրոց գետի.
Արար զկակն անթուելի,
Անթաղ մեռեալ պէշ գաղանի.

*Քահանայիցըն Քրիստոսի*
*Արեամբ ներկեաց զեկեղեցի.*
*Սարկաւագաց քրիստոնէի*
*Մարմինքն անկեալ մէջ փողոցի։*
*Եւ այլ բազումք որ ոչ թուի,*
*Եւ է՛ ասելն անկարելի։*
*Որ քեզ հասին յայնըմ վայրի,*
*Բոլոր ամէն մասունք չարի*[1]*։*
*Եւ արարին ըզքեզ գերի,*
*Քան ըզՍադոմ այլ աւելի։*

*Այդ ամէն չարիքները կրած լինելու համար՝ Անին հրաւիրւում է տրտմակից լինելու։*

*Արդ ժողովեա զըստերըս քո,*
*Վասն իմ ի լա՛ց նիստ ՚ւ ի սըգի։*
*Կոչեա՛ ձայնիւ կականելի,*
*Տարժեա ի յողբ զամէն հոգի.*
*Զի զովացումն այրման սրտի*
*Ոչ է այլ ինչ, քան այս լինի...*

*Ներսէս Շնորհալու այս տխուր ողբերգում՝ Վաղարշապատն ու Անի քաղաքը դառնում են Հայաստանի անցեալ մեծութեան սիմբոլներ, որ այնուհետեւ երգւում են եւ ուրիշներից։ Նոյնիսկ սովոր «Մայր Հայաստանի» կոչուած յայտնի նկարի գաղափարը 19րդ դարում առնուած է «Ողբի» այս տողերից, որոնցով Շնորհալին պատկերացրել է սգւոր Հայաստանը, «Նըստիս որբ եւ այրի, տըխուր դիմօք՝ զերթ ի սըգի»։*

**4. Իրականութեան հրապուրիչ Ներբողը։**— *Շարունակենք տեսնել այս բանաստեղծութեան ուրիշ կողմերը։ Նախ՝ թէ ինչպէս է նկարագրուած Եդեսիա քաղաքը՝ նրա բնական գեղեցկութիւնները, պարարտ հողը, ջրերն ու բուսականութիւնը, հարստութիւնները, շէնքերն ու մաքրութիւնը եւ շէն ու բերկրալից կեանքը եւ շրջակայ աւանները։*

*Ես մայր էի բազմորդութեան,*
*Անթիւ ծընայ դուստր եւ որդի,*
*Զորս մայրաբար դիեցուցի,*
*Ցըստեանց իմոց զկաթն արբուցի.*
*Գեղեցկատիպ յօրինեցի,*
*Վայելչապէս զարդարեցի։*
*Քանզի երկիր պարարտ էի,*
*Աղբիւր կաթին յորդ բըղխէի.*
*Աւետաբեր նըման վայրի,*
*՚Ի այլ գերագոյն որպէս թուէի.*
*Ջուր կենդանի յինէն բըղխէր,*

---

*1 Տպուած է «քարի». ուղղում եմ ըստ իմաստին՝ «չարի»։*

Զուարթ ծաղիկ բոյս յօրինէր·
Գետոց նըման վըտակ հոսէր,
Ըզբուրաստանս արբուցանէր·
Ծովն ի միջի իմ ծածանէր,
Քաղցրիկ օդովըն ծիծաղէր·
Զաղտեղութիւն ըղմին մաքրէր,
Ըղհրապարակըն զարդարէր·
Բազմագունի տունկ յօրինէր,
Որպէս ըզդրախտըն որ յԷդեմ էր·
Սաղարթաբեր ծառով ծաղկէր,
Առատապտոյն պըտղաւէտ էր·
Տերեւախիտ հեզիկ շարժէր,
Հոտ անմահից յիւրմէ բուրէր·
Նարդոս, քըրքում ինձ ընձիւղէր,
Վարդ, մանուշակ վերաբերէր:

Նախորդ շրջանում չենք գտնում այսպիսի բանաստեղծական նկարագիր, որի մէջ արտաքին բնութիւնը երգուած լինէր ոչ թէ պատկերների կամ նմանութիւնների համար, կամ այլաբանօրէն իբրեւ սիմբոլիկ պատկեր, այլ անկախ կերպով, բնութիւնն ինքն իբրեւ երգի նիւթ: Կայ Գրիգոր Նարեկացու «Վարդավառի տաղը», որի մէջ արդէն զգացւում է վերածնութեան շունչը, թէպէտ այդ էլ դարձեալ կրօնական նպատակ ու դիտում ունի: Արդարեւ մեր կլասիկ պատմագիրները, աւելի Մովսէս Խորենացին, պատմուածքի ընթացքում ունեն գործողութեան վայրերի մի քանի գեղեցիկ տեղագրական կարճ նկարագիրներ, բայց ոչ ստանաւոր եւ այնպէս մաքուր բանաստեղծական, բազմակողմանի եւ հեղինակի զգացմունքով տոգորուած, ինչպէս է Շնորհալուց վերեւում դրուածը: Սրանով մի նոր եւ աւելի գեղեցիկ ձեւով վերածընւում է մեր կլասիկների երկերի այդ երկրորդական կողմը: Այստեղ, «Ողբի» մէջ Շնորհալին մեղմ եւ անուշ, բայց եւ գունեղ ու նկարէն ոճով, երփնաւորել է տեսարանը: Ընթերցողն զգում է բնութեան եւ քաղաքի նուրբ եւ ակնհաճոյ գեղեցկութիւնը, կարողանում է երեւակայել քաղաքն իր դիրքով ու բարեմասնութիւններով, իր շրջակայքով, եւ նրա փայլուն փարթամութիւնը: Եւ այդ կատարուած է մերթ չքնաղ նմանութիւններով, մերթ մի երկու նկարչական բառով միայն, երբեմն անմոռանալի յստակ ու հոսուն տողերով·

Ծովն ի միջի իմ ծածանէր,
Քաղցրիկ օդովըն ծիծաղէր...
Տերեւախիտ հեզիկ շարժէր,
Հոտ անմահից յիւրմէ բուրէր...
Առաւօտուն ցօղն իջանէր,
Ոսկենըման ճաճանչ փայլէր...

Շնորհալու արուեստի հրապոյրը մեծ է եւ այնու, որ նրա նկարագիրը տոգորուած է հեղինակի յոյզով· նա բնութիւնը չի պատկերահանում սառն եւ անտարբեր ձեւով: Իսկոյն զգացւում է, որ նա սիրում է ամէն ինչ, որ

ինքը ներբողում է։ Բայց միաժամանակ այդ բոլոր պայծառ պերճութեան վրայ քաշուած է մի սեւ տխրութիւն, մի անհուն թախիծ, որ եւ համակում է մեզ։ Այդ ամէնն անցեալ է, եւ պատմւում է անցեալ ժամանակով։ Այս է բանաստեղծի շնորհալիութիւնը, որ բայերի անցեալ ժամանակով միայն՝ զգալ է տալիս այն, որ յետոյ աւելի մանրամասն պիտի պատմի, այն, որ այդ

*Բարիքն ամէն ըսպառեցան,*
*Եւ քաղցրութիւնքըն դառնացան։*

5. Բարբարոսական ռազմական գործողությունների ռեալիստական պատկերը։— Պակաս հաջողութեամբ չի վերհանել մեր բանաստեղծն իրականութեան այս պատն երեսն եւս — Եդեսիայի կործանումը։ Քաղաքի պաշարում, մարտերով պաշտպանութիւն եւ առում ու կոտորած, այդ շատ սովորական կրկնուած երեւոյթ էր այն դարերի քաղաքական կեանքի մէջ։ Գրեթէ բոլորովին նման ձեւով, ըստ Արիստակէս Լաստիվերցու, եղել է եւ Անի քաղաքի անկումը Եդեսիայի դէպքից ութսուն տարի առաջ, 1064 թ.։ Ներսէս Շնորհալին եթէ անձամբ ներկայ չի եղել այդպիսի ռազմական վայրագ գործողութեան, անշուշտ յաճախ լսել է ոչ միայն Եդեսիայի, այլեւ ուրիշ բերդերի մասին։ Նա իր «Վիպասանութեան» մէջ պատմում է, որ իսմայելացիները (=արաբները) արեւելքից ափաւերով հասնում, պաշարում են իր հօր Ծովք բերդը։ Նրա հայրն ու ամրականները քաջութեամբ պաշտպանւում են. թշնամիները չեն կարողանում առնել բերդը, բայց հայրը աշտարակի վրայ նետահար է լինում։ Նա իր մահից առաջ վրէժն առնում է նետն արձակողից եւ մեռնում է «բարիոք մահուամբ»[1]։ Այս դէպքը երիտասարդ բանաստեղծն իր առաջին երկի մէջ արդէն բաւական մանրամասն պատմել է։ Նոյնն աւելի եւս ընդարձակ եւ արդէն հասուն արուեստով եղերերգում է նա Եդեսիայի համար։ Նա մեծ տաղանդով եւ բանաստեղծական կենդանի հիւսուածքով ու կատարեալ յարդարութեամբ արձանագրել է միջնադարեան բարբարոսական ռազմական գործողութիւնների ընդարձակ ռէալիստական պատկերը։ Սկզբում դեռ համեմատաբար հանգիստ պատմում է Եդեսիայի իշխանութեան հետզհետէ թուլացումը շըջակայ մահմեդականներից—Հագարացիներից (=արաբներից)։ Երբ հասնում է բուն դէպքին, նա դառնանում է ատելութեամբ առ մարդակեր գազանները եւ թանձր գոյներով նկարում է թշնամիների արարքները։ Գործողութիւնն ամբողջ դառնում է մի ուժեղ դինամիկա, շարունակ փոփոխուող մի նկար։ Մեր աչքի առաջ շարժւում են մերթ դրսից յարձակուողները, մերթ ներսի պաշտպանուողները կամ թէ միաժամանակ երկու կողմերը եւս, եւ մերթ հնչում է նրանց քաջալերական խօսքն ու ճառը կամ մենք տեսնում ենք միաժամանակ թշուառների ծանր դրութիւնը եւ այլայլիների եղեռնագործութիւնները։ Եւ այս ամէնը վիպերգուած է մեծ վարպետութեամբ, շատ եռանդուն ու ցայտուն, լի դառնակսկիծ կամ բարկացայտ զգացումով, բայց միշտ Շնորհալուն յատուկ վճիտ ոճով։ Քանի առաջ է գնում վիպուածքը, աւելի խիստ

---

1 Բանք չափաւ, էջ 553 եւ հմն.։

լեզու է բանեցնում նա. զի աւելի եւ աւելի է դրդւում թշնամիների ոճիրներով, մինչեւ հասնում է վերջը սոսկալի անէծքների:

Պաշտպանուող քաջերն եւ արիները ժողովւում են միասին, երդւում են չլսել թշնամիներին եւ մինչեւ վերջը մարտնչել: Նրանք քաջալերում են միմեանց նախնի քաջերին յիշեցնելով: Հոգեւորականներն էլ խրախուսում են մարտիկներին: Սպասում են դրսից՝ Անտիոքից օգնութեան. ուստի հակառակորդը շտապում է: Վերջապէս թշնամիները պարիսպը մի տեղ կործանում եւ մուտք են բաց անում: «Աստանօր սիրտ իմ ճմլի», — ասում է պատմող այրին.

Երիկամունքս դալարին,
Ցաւ հարկանի որովայնիս.
Միտք եւ հոգիս իմ այլայլին,
Մինչդեռ յիշեմ զօրն ահագին,
Եւ զառաւօտըն մըթագին:

Բայց քաջարիները չեն վհատում ու փախչում. այլ յարձակուելով մարտնչում են, պարսպի ընկած տեղը վերականգնում: Քահանաներն անդամ սրերով կռւում են, իսկ եպիսկոպոսները խրախուսում.

Հա՛պա եղբա՛րք սիրելիք,
Մի՛ զարհուրիք, առձայնէին.
Զմահն ընտրեցէ՛ք դուք քաջութեան,
Որ քան ըզկեանս է՛ գովելին...

Միւս կողմից թշնամու զօրապետն է աշխատում քաջալերել իր զօրականներին պարգեւներ խոստանալով եւ սպառնալիքներ տալով: Զանգին ճանաչում էր իր զօրքի հոգին. նա լաւ գիտէր քաջալերութեան վերջին միջոցը: Նա երբ տեսնում է, որ չեն կարողանում յաղթել, աւարի է մատնում քաղաքը: Թշնամին քաջութիւն է ցուցաբերում աւարի համար:

Մի ամիս դիմադրելուց յետոյ՝ յոգնում են. պարիսպը մի այլ տեղ առանց պահապանի է մնում: Թշնամիներից ոմանք բարձրանում են այնտեղ: Քաղաքի ժողովուրդն այն տեսնելով զարհուրում է եւ սկսում է գուժելով փախչել: Թշնամի խուժանը մտնում է քաղաքը:

Սուսերամերկք լինէին
Մէջ քաղաքին յարձակէին,
Եւ ժողովոյըն բազմութիւն
Մի ըզմիոյ հետ կասէին.
Անդ առաջի ընթանային,
Մինչեւ ի դրունըս դըղեկին:
Իսկ մարդադէմ չար գազանին
Ըզպատրաստուրըն քամէին,
Եւ որպէս գայլք ի հօտ գառանց՝
Ի մէջ նոցունց անկանէին...

Կատարւում է սոսկալի արիւնահեղ կոտորած: Ժողովուրդը գլխակո-

*բոյս դիմում է դէպի դղեակը (Ներքի բերդը, ինչպէս կոչել են Անիում)· դռները փակ են· իրար վրայ են կուտակւում դռների մօտ: Սրտաճմլիկ տեսարան է բացւում, որ եւ շատ աղեխարշ նկարագրում է բանաստեղծը: Մարդկային թշուառութիւնը շատ մեծ է: Կարելի չէ առանց յուզուելու կարդալ նրա մեծ արուեստով հիւսուած այդ հատուածի տողերը (էջ 48 եւ հմն·), որ իրականութեան ռէալիստօրէն պծուած ճշգրիտ պատկերն է, մի իրականութիւն, որ յաճախ է տեղի ունեցել: Դրանք նկարագիր լինելով հանդերձ՝ ե՛ւ ողբ են, ե՛ւ ցաւի ճիչեր: Մի կողմում՝ անմեղ մարդիկ — կին, ծեր, երեխայ· հայր ու որդի, մայր ու դուստր· զարհուրագին տագնապի ու խուճապի են մատնուած, հեղձամղձուկ են լինում իրար վրայ դիզուած, այնպէս որ*

*Որպէս ի գետ կամ ի ծովի,*
*Վերայ գըլխոցն լողային·*

*Միւս կողմում՝ մի վայրագ պատկեր· այլազգիների բազմութիւնները հանդիստ սրտով ե՛ւ կոտորում են, ե՛ւ գեղեցիկներին ի գերութիւն ընտրում, իսկ սպանուածներին ու գերիներին կողոպտում, մերկացնում: Կապուտ–կողոպուտ ե՛ւ տներում, ե՛ւ եկեղեցիներում: Սեղանները կործանւում են, խաչերն ու պատկերները ոտնատակ տալիս:*

*Իսկ ի՞նչպէս է տօնում իր յաղթանակը ինքը Զանգի ամիրան: Նա երդւում է չվնասել դղեկի մարդկանց· սրանք անձնատուր են լինում· բայց նա երդմնազանցութեամբ կոտորում է նրանց: Ապա ինքն իր մեծամեծներով եւ Մահմեդի պաշտօնեաներով, այսինքն հոգեւորականներով նստում է եկեղեցիներից մէկի սեղանում, հարճեր է նստեցնում նոյն տեղում եւ երգով գինարբուք է անում: Նոյն անառակ շուայտութիւնները կատարում են եւ ուրիշ եկեղեցիներում·*

*Գործ գարշութեան անդ գործէին,*
*Զոր ուսուցեալ էր Մէհմէտին·*
*Զոր եւ խօսիլն է աղտեղի,*
*Լըսելըն գարշ՝ սըրբասիրին:*

*Եկեղեցիներից մի քանիսն էլ, ասում է, դարձնում են ուղտերի եւ էշերի տուն· մի քանիսի մէջ էլ բնակւում իրենք, «որ են վատթարք, քան զանբանին», եզրակացնում է բանաստեղծը: Գերիներ են միմեանց բաշխում եւ գեղեցիկներին ընտրելով ուղարկում Խորասան՝ մեծ սուլթանին, ինչպէս եւ խալիֆային:*

6· Մահմեդականութեան եւ քրիստոնէութեան կռուի հիմնական պատճառը, մեղքը: Նոր հայեացք: Երկբայութիւն:— *Արիստակէս Լաստիվերտցին զարմանում էր, որ սելջուկեան Թուրքերը, տարիներ շարունակ Հայերի հետ իբրեւ դրացի ապրելով, դարձեալ շարունակ չարութիւն են խորհում Հայերի համար: Շատ տարիներ յետոյ նորահասակ երիտասարդ Ներսէսն իր առաջին աշխատութեան մէջ այսպէս է բնութագրում այդ այլազգիներին·*

*Արեանարբուք գազանացեալ,*
*Զագիր գործովք անասնացեալ···*

Սուրն անողորմ անօրինի,
Որ մեր արեանս է ի սովի,
Որ չէ յագեալ, եւ ո՛չ յագի
Մինչեւ ի գալ կատարածի։

Մահմեդականների եւ քրիստոնեաների կռիւն, ուրեմն, անվերջ պիտի լինի։ Դրա հիմնական պատճառը նրանց տարբեր կրօնական հասկացութեան մէջ է գտնում Շնորհալին։ Այս բացատրութիւնը շատ բնական էր այն դարերում։ Բայց ինչո՞ւ տուժողը պիտի քրիստոնեաները, Հայերը լինեն։ Այս հարցի նկատմամբ մեկնաբան Շնորհալին, ցաւօք, հին մեկնաբաններից դէնը չի անցնում։ Երբ նա Զանգի ամիրայի համար գրում է, թէ «Խորհէր ջնջել զայլս [=զայլ քրիստոնեայս] որ կային», ապա անմիջապէս աւելացնում է հետեւեալը (էջ 69)․

Ոչ գիտելով զայս յիմարին,
՚Ի ոչ ըղմբռնու ածել կուրին,
Թէ ո՛չ ուժով իւրոյ բազկին,
Կամ զօրութեամբ իւր պիղծ զընդին
Մատնեալ ի սուր ՚ւ ի գերութիւն
Եղեւ Ուռհայ յանուն նորին․
Այլ իմ մեղացըն բազմութիւն,
Եւ յաճախել գործոց չարին․
Մատնեաց ի ձեռս անօրինին…

Եթէ այսքանը միայն լինէր եւ սրա ետեւից անմիջապէս շարունակուէր 78րդ էջի ութերորդ տողից՝ «Արդ մի՛ պարծիր, ո՛վ անըզգամ», ապա այդ ե՛ւ բնական, ե՛ւ գեղեցիկ կը լինէր։ Բնական կը լինէր, որովհետեւ թէպէտ այն դարերում կար վերածնութեան ոգու, նոր մտաւոր հոսանքի ազդեցութիւնը, բայց հինը դեռ բոլորովին չէր բացասուել եւ չէր դադարել գոյութիւն ունենալուց, մանաւանդ կրօնական աշխարհայեացքի այնպիսի կարեւոր մասը, որպիսին էր՝ աղէտները համարել աստուածային պատիժ մեղքերի համար։ Ուստի կարելի չէր, որ Շնորհալու նման մի խիստ բարեպաշտ եւ մեկնաբան եպիսկոպոս բովանդակութեամբ հարուստ մի քերթուած գրէր եւ այն գաղափարը մէջ չբերէր։ Բայց որ նա յետոյ երկար ու բարակ, ամբողջ 182 տողերի մէջ, Ս․ Գրքից բազմաթիւ օրինակներ բերելով պաշտպանում է մեկնաբանների կարծիքը, այդ արդէն իր սառնութեամբ եւ երկայնութեամբ վնասում է երկի վայելչահիւս գեղեցկութեանը․ անբնական է թւում այդ լսել մի ողբացող կնոջից․ այդպէս յօրինում է ոչ թէ բանաստեղծը, այլ մեկնաբանը։

Այդ կտորը, սակայն, մի ուրիշ տեսակէտով կարեւորութիւն ունի․ դրանով մենք տեսնում ենք հասարակութեան որոշ խաւերի մէջ երեւան եկած նոր հայեացքը։ Տարապլրութեան ընթացքից պարզ նկատւում է, որ այդ մեծ հատուածը յետոյ է աւելացրած։ Դրան առիթ տուողն եղել է մի շատ հետաքրքիր նոր մտածմունք, այն, որ երկրայութեան ոգին արդէն գործելիս է եղել․ խոհուն մարդիկ սկսած են եղել կասկածել մեկնաբանների

այդպիսի հին բացատրութեան ճշմարիտ լինելու եւ Աստուծու դատաստանի իրաւացի լինելու մասին.

Այլ զի ոմանք ընդդէմ բերին.
Եւ աստանօր հակառակին.
Ասին՝ զիա՞րդ իրաւացին
Այս է վճիռ դատաստանին:

Մի՞թէ բոլոր քրիստոնեաների մէջ նրանք են միայն մեղանչել, որ Աստուած նրանց է պատժել, — հարցնում էին մարդիկ.

Կամ թէ արդա՞ր արդեօք էին,
Որոց ի ձեռըս մատնէին,
Զանգի եւ իւրքն ամենեքին,
Որ ըզնոսա չարչարեցին:

Մեկնաբան բանաստեղծը, հարկաւ, պիտի հանգստացնէր այդպիսի հարցերով զբաղուողներին, ասելով նրանց, թէ Աստուած սաստիկ պատժում է այնպիսիններին, որոնց ամէնից աւելի է սիրում, եւ պատժում է, ինչպէս եւ աշխարհում վարւում են, ոչ թէ լաւ մարդու, այլ «անարժան վերջին մարդոյ եւ դահճի» ձեռով: Զանգին եւ իրայիններն, ուրեմն, մի պատժող գործիք են միայն, ինչպիսին են նաեւ կարկուտը, խիստ եղեամը, անչափ անձրեւը, կամ անխոնաւ երաշտը, մարախն եւ դաշտերն ապականող զզուելի մուկը, — մի հայեացք եւ օրինակներ, որ գտնում ենք նաեւ մեր կլասիկ հեղինակների գրուածքների մէջ, ինչպէս, օրինակ, նաեւ Մովսէս Խորենացու մեծ Ողբի մէջ: Այդպիսի «դահիճները» վերջն աւելի խիստ պիտի պատժուեն, — ասում է Շնորհալին:

7. Անէծքների շարանը: — Արուեստի նկատմամբ որքան անյարմար է յիշուած երկար մեկնութիւնը մեղքով, նոյնքան պատշաճ եւ տեղին է շարունակութեան մէջ լսել որդեկորոյս մօր բերանից թափուող սոսկալի սպառնալիքն եւ անէծքն, ուղղուած Զանգիին: Այդ մեծ հատուածի սկզբի մասի մէջ, որ հիւսուած է մեկնաբանների վերեւում բերուած օրինակներով, դեռ համեմատաբար հանգիստ է խօսում վշտահար տիկինը:

Հասարակութեան ներկայացուցիչ թշուառ կնոջ հոգին հետզհետէ աւելի է լցւում ատելութեամբ առ այն «արիւնարբուները», եւ առանձնապէս դէպի «Զանգին արիւնակեր», այնպէս որ նա նոյնիսկ եռում է կատաղի վրէժխնդրութեամբ: Եւ այդ ժամանակ խօսքի գիւտերն ու մէկը միւսից աւելի չարաղէտ պատկերները մեծ յորդութեամբ ու թափով յաջորդում են իրար, ասես թէ նրա բռնկած սրտի լրութիւնը դուրս թափելու համար: Նրա սիրտը չի հովանում, մինչեւ որ Զանգիին ձգում է «ի հուրն անշէջ կիզողական», որ յաւիտեան «այրէ իսպառ, բայց ոչ ծախէ»: Այդ ժամանակ, ասում է նա,

Ուրախ լիցին արդարք ի տէր,
Մինչ հատուցման լինին դատեր.
Զի ի յարեան մեղաւորին

Լուացեն ըղձեռս որպէս յաղբեր·
Եւ ասասցէ մարդ՝ արդարեւ
Գուցէ Աստուած իրաւաբեր։

Այս վերջին տողերով խօսում է դարձեալ հեղինակը· նա ակնարկում է վերեւում յիշուած երկրայողներին, որոնք իրաւացի չեն համարել Աստուծու դատաստանի վճիռը։

Դժուար է այստեղ անէծքի մեծ հատուածից (էջ 78–91) ընտրութեամբ տողեր մէջ բերել· բուռն եւ ուժեղ են դրանք գրեթէ բոլորը, շատ ազդու են եւ նոյնիսկ ճնշող են չարաբաղձ արտայայտութիւնների կուտակութեամբ·

. . . Աստուած խպառ
Կործանեսցէ՛ զքեզ յաւիտեան·
Եւ խլլեսցէ՛ զարմատըս քո,
Ցերկրէ հանցէ՛ կենդանական·
Զարք ամենայն որք անիծան
Ի սկըզբանէ մինչ ի վախճան...
Վերադայցե՛ն քոյդ գագաթան...
Արդ՝ եղիցի՛ս դու հալածեալ,
Որպէս փոշի հողմով հոսեալ...
Եւ ճանապարհ քո խաւարեալ,
Ցաջ եւ յահեակ զքեւ պաշարեալ...
Ի դուր խորին ապականեալ
Իջցե՛ս դու անդըր կորուսեալ...
Սըրով արեւըդ պակասեալ,
Լիցի՛ տանեաց խոտ ցամաքեալ...
Ընդ քեզ եւ ազգըդ կորուսեալ
Հադարացուց լիցի՛ ջընջեալ·
Որդիք ձեր որբ, կանայք դերեալ,
Լիցի՛ն մուրողք եւ տատանեալ...
Զինչս եւ ըղգոյս ձեր վատակեալ
Առցե՛ն օտարք յափշտակեալ...
Ձեր յիշատակ յերկրէ բարձեալ...
Ի դառնութիւն դարձցի՛ն տարերք,
Ջըրհեղեղին եկցե՛ն գետերք·
Սեաւ ամպ մըթին կարկըտաբեր
Զքեզ արասցէ՛ անպտղաբեր։

Եւ այսպէս բազմաթիւ անէծքների մեծ շարք։ Այդ բոլորն ասւում է այն խոր համոզմունքով, թէ խօսքի ուժը մեծ է, եւ անէծքն անպայման կ՚ազդի։ Նախնական հաւատքը, ըստ որի թովում էին թոթովելով եւ անիծում չարաբանելով, շատ մեծ է եղել մեր ժողովրդի մէջ, եւ յաճախ դրա արտայայտիչն է եղել մեր գրականութիւնը։ Ըստ մեր հին «Վիպասանքի» Արտաշէսն անիծել է իր որդի Արտաւազդին, նոր վէպով՝ Դաւիթը՝ Մհե-

քին, եւ այդ անէծքները, վէպերի ասելով, կատարուել են: Այդպիսի մի անէծք է անում եւ Դաւթակ Քերթողն իր գրած դամբանականի մէջ: Դժբախտաբար այդ սնահաւատքը բաւական դեր է կատարել նաեւ մեր ազգային պատմութեան նկատմամբ. իբր Մեծն Ներսէսի եւ ուրիշների անէծքները ծանրացել են մեր ժողովրդի գլխին: Շնորհալին եւս հաւատում է, թէ նրանց անէծքների հետեւանքով Աստուած բարկացել է՝ «Բառնալով զթագաւորութիւն եւ զիշխանութիւն [Հայոց] եւ մատնելով ի սուր եւ ի գերութիւն [զհայս], եւ ցրուելով ըստ հրէական տոհմին ի ստրկութիւն եւ ի ծառայութիւն ամենայն ազգաց»[1]: Թէպէտ մեր բանաստեղծը հաւատում է անէծքի զօրութեանը, բայց չպիտի մոռանալ, որ այդ մեծ չարք անէծքները նրա իրեն կողմից չեն ասուած: Անշուշտ, նա համոզուած էր, որ Զանգին եւ միւս չարագործներն առանց անէծքի էլ կը պատժուեն. նա կը ցանկար, որ բոլոր մահմեդականները քրիստոնեայ դառնան, կամ քրիստոնեաները յաղթեն, եւ նրանց «վարեն [=քշեն] մինչ յայն կոյս անբնակ»: Բայց որ նա «արիւնակերների» պատճառով ասէր Զանգիին իր կողմից նաեւ «Ընդ քեզ եւ ազգըդ կորուսեալ, Հագարացւոց, լիցի ջընջեալ», եւ ուրիշ մի երկու նման տողերը, այդ ընդունելի չէ: «Յիսուս որդի» քերթուածի երգողը չէր կարող չլինել «հուման» — մարդային եւ չքարոզել «հումանութիւն»—մարդայնութիւն, չլինել մարդասէր ու բարեգութ դէպի ամէն ոք, եւ անիծել անմեղներին: Բայց եթէ այդպիսի մի երկու տողը չեն յարմարւում մեր հեղինակի մեղմ ու բարի հոգուն, դրանք շատ բնական են մշտահար, որդեկորոյս Որբեւայրու համար, որի բերանով խօսում է եւ տառապած հասարակութիւնը: Նա ոչ միայն Զանգիին պիտի անիծէր, այլեւ նրա ազգ ու տակը եւ ասէր նրան՝ քո արմատը (քոքը) կտրուի: Շնորհալին այդ տողերն էլ ասել տալով Որբեւայրուն՝ ճշգրիտ հետեւող է եղել իրականութեանը. այլապէս թերի կը լինէր իր «տիկնոջ» կերպարը:— Բայց մենք շարունակենք:

Բարկացայտ եւ ցասումնալից անէծքներից յետոյ բանաստեղծը յօրինում է մի զօրեղ հակադրութիւն, որ իր կողմից բաց անելով անիծողի սրտի քնքուշ խորշերը՝ պարզաբանում է նրա անէծքների հիմքը: Որդեկորոյս մայրն առանձին գորովով ու գուրգուրանքով է վերաբերւում դէպի սպանուած սիրասուն զաւակները. եւ Քերթողը դրա համար եւս գտնում է պատշաճաւոր ոճ, ծաղկալից, կոկ ու շնորհալի տողեր:

Բայց դո՛ւք որդիք իմ սիրելիք
Զէք ինձ մեռեալ, այլ կենդանիք.
Քանզի յերկրի հաւատացեալք,
Եւ ի յերկինըս պըսակիք:

Եւ նա, մայրը, խանդակաթ սիրով նկարագրում է իր զաւակների համար մի բերկրալի տեսարան. նրանց յարութիւնն ու երանաւէտ կեանքն «անմահական դրախտում».

Յորժամ կենաց ցօղոյն արբջիք,

---

1 Թուղթ ընդհանրական, Էջմիածին, 1865, էջ 425 եւ հտ. «Ատենաբանութիւն» ասուած ճառի մէջ:

Վաղվաղակի բուսանիջիք,
Որոտ ընդոստ վերաբերիք…
Որպէս ծաղիկ բողբոջիցիք,
Սաղարթաղեղ պաճուճիցիք.
Ծառըն կենաց մերձեալ հըպիք…
Աշխատեցեալք իբրեւ մըշակք,
Ի տապ տօթոյ աստ քրտնեցիք,
Յորժամ հընձէք զոր ցանեցիք՝
Յանմահական դրախտին հանգչիք.
Ընդ զուարար տընկոյն նըստջիք,
Յաղբերէն կենաց արբջիք…
Անճառ լուսով լուսաւորիք,
Եւ թագ ի գլուխ պըսակեսջիք…

*Նահատակուածների այդ «անճառ լուսով լուսաւորուելը» պիտի լինի մնացողներին մխիթարութիւն: Այդ էլ իրականութեան անդրադարձումն է — ամէն մահացածի համար մաղթել հոգու լուսաւորում,—մի շատ հին կրօնական հաւատալիք եւ բարքի գիծ, որի վերապրուկը հասել է մինչեւ մեր օրերը:*

8. Քաղաքական լաւատեսութիւն եւ լաւ օրերի գեղեցիկ երազը: Աշխարհիկ կեանքի ծարաւն ու յաղթանակը բանաստեղծութեան մէջ: — *Քրիստոնեաների համար մի լաւագոյն բախտ է պահուած երկրում. շուտով ամէն ինչ կը փոխուի, ասում է մեր Քերթողը որդեկորոյս կնոջ բերանով.*

Ահա սկսաւ ինչ ժամանակ,
Փոխէ զպըղտոր ջուրն ի յըստակ.
Եւ տայ ըմպել զառնաճաշակ
Այնմ որ արբոյց ինձ դըժընդակ.
Զվերջին մըրուրըն կապուտակ
Արբուցանէ նըմին բաժակ.
Իսկ ինձ պայծառ եւ քաղցրունակ,
Զանմահարարն ըմպել վըտակ,
Ոչ թէ իմոյն միայն դիմակ,
Զոր ինչ հատոյց ինձ ձախողակ,
Այլ եւ եօթնիցըս չափ կըրկնակ
Բարձցի ի ծոց իւր հակառակ:
Իսկ ըզկապեալսդ որ էք ի փակ,
Արձակեսցէ տէր ընդարձակ.
Եւ զգերութիւնս իմ վտարակ
Դարձուցանէ այսրէն ի յարկ,
Մատնէ զգերիչս իմ ի յապտակ,
Սուր ՚ւ ի զընդան ձեր փոխանակ:

*Շնորհալին չափազանց լաւատես է ապագայի համար. Նա անշուշտ լսած է եղել երկրորդ խաչակրութեան համար նոր պատրաստութիւնը Եւ-*

քոպայում: Նա յոյս մեծ ունէր, որ պիտի գան շատ շուտով, յաղթեն մահմեդականներին: Այս յոյսը նրան ոգեւորութիւն է պատճառում. Նա խնդութեամբ ցնծում է եւ գեղեցիկ տողերով ու մեծ աշխուժով նոյնը հաղորդում է իր ժամանակակից ընթերցողներին:

Շարժէ կըրկին զազգըն Փրանկ,
Անհուն հեծեալ եւ հետեւակ:
Իբր ըղձովու ալեաց կուտակ՝
Բորբոքելով գան խիստ եւ բարկ.
Ափան ծովու աւզի ղունակ,
Կամ զերթ աստեղք երկնից ի կարգ,
Լընուն զամէն երկրի յատակ,
Ո՞րպէս ըղձիւն ասրաքատակ:
Հընչեն զերթ հողմըն հիւսիսակ,
Զամպըն վարեն ըղհակառակ,
Մաքրեն զաշխարհըս բովանդակ,
Ցանհաւատից առնեն դատարկ.
Զմահմետական ազգ հասարակ
Առնուն յաւար եւ յասպատակ.
Գերեն զխորինըն Խորասան,
ԶԲաբէլ[1] առնեն խիստ աւերակ...
ԶՄէքէ քակեն հիմն ի յատակ:
Զքարըն գլորեն ըղսեւորակ,
Զըգեն Կարմիր ծովուն յատակ:
Որպէս առիւծ ընդ նապաստակ՝
Զհետ մըտանեն նոցա երագ.
Կամ զերթ առիւծ գոչէ առակ,
Փախչին երէքն անհակառակ:
Այսպէս ջընջին նոքա իսպառ
Ի սուր սուսեր 'ւ ի տէգ նիզակ.
Եւ զայլն առնեն փախըստական
Վարեն մինչ յա՛յն կոյս անբընակ:
Առնուն զծառայս եւ զաղախնեայս,
Զկանայս նոցա եւ ըզզաւակ.
Տիրեն ամէն երկրի ծագաց,
Եւ յընդհանուր կողմն աշխարհաց.
Քրիստոնէից հանուր ազգաց
Փըրկիչ լինին յանօրինաց:

Ահա թէ ինչպէս է մեր Բանաստեղծն անդրադարձրել խաչակրաց արշաւանքների իրականութիւնը, կարծելով թէ նրանք գալիս են իբրօք արեւելեան քրիստոնեաներին օգնելու եւ նրանց փրկելու մահմեդականների ձեռից: Բայց նրա յաւատեսութիւնն այդքանով չի սահմանափակւում:

1 Բաբէլ, Բաբելոն են կոչում յաճախ Բաղդադ քաղաքը:

Յովհաննէս Սարկաւագն իր գրած աղօթքով, ինչպէս վերեւում տեսանք, խնդրում է Աստուծուն, որ ցրուած եւ արտասուահոս տրտմութեամբ վտարուած ու ցրուած ժողովուրդը ժողովուի ուրախութեամբ եւ փրկուի. Նոյնը Շնորհալին երեւակայում է արդէն շատ շուտով կատարելի, նոյնիսկ աւելի շուտ քան մի տարի («Չի չէ ամով այս լինելոց»), եւ այդ մասին բանաստեղծութեամբ աւետում է.

Գան ժողովին յամէն կողմանց,
Ուր հալածեալ են եւ ցրուած...
Յայնժամ որդիքդ իմ հեռացած,
Որ այժմ յինէն էք բաժանած,
Գայք ի վերայ բարձեալ կառաց,
Պալարակապ երիվարաց.
Որք ցրուեցայք յամէն կողմանց
Զորեքծագեան տիեզերաց.
Ի գաւառաց հեթանոսաց,
Եւ յաշխարհաց Պարսից, Թուրքաց:

Պիտի գան ժողովուեն աշխարհի բոլոր կողմերից, եւ ի՛նչ ուրախութիւն է որդեկորոյս մօր համար. բայց այդքանը միայն չէ.

Լինի աշխարհ քրիստոնէից
Անչափ 'ւ անբաւ բարեօք լցած:
Լինի առատ պտուղ բազմաց,
Սերմանց 'ւ ամէն պտղաբերաց.
Մարդիկ ցընծան զուարճացած,
Յուտել յըմպելըն պարարած.
Որք վա՛յ ասէն, վա՛յ մեռելոց,
Եղուկ կարդան դերեզմանաց,
Թէ է՞ր չհասիք յորըս կենաց,
Յանդիւտ բարիս հասարակաց:

Ահա թէ ի՛նչ է տենչով երազում մեր բանաստեղծը: Հարկաւ, նա չի մոռանում եկեղեցու վերստին պայծառացումը, բայց էականն այդ չէ: Նա մեծ կրօնասէր լինելով հանդերձ՝ չի քարոզում «Մի՛ կալ հակառակ չարին» սկզբունքը. այլ, ընդհակառակն, սիրում է քաջութիւնը, քաջամարտիկ կռւին այլազգի թշնամիների դէմ՝ նրանցից պաշտպանուելու համար: Նա համոզուած է, թէ մահմեդականութեան եւ քրիստոնէութեան կռւի մէջ պարտութիւնը մահմեդականներինը պիտի լինի: Եւ ինչ որ կարեւոր է՝ քրիստոնեաները պիտի յաղթեն ոչ թէ հին կրօնա-ճգնաւորական ոգին զարգացնելու, աշխարհն ունայն համարելու եւ մերժելու համար, այլ ուրախ-զուարթ կեանք վարելու, լաւ հագնուելու, ուտել-խմելու եւ նոյնիսկ պարարուելու: Շնորհալու ստեղծագործութիւնն, ուրեմն, լի է կեանքի ծարաւով, իբրեւ արտայայտութիւն ե՛ւ իրեն հեղինակի, ե՛ւ իր ժամանակի հասարակութեան բաղձանքի: Այսպիսով վերջ է տրւում Նարեկեան խիստ կրօնա-ճգնաւորական հայեացքին մեր բանաստեղծութեան մէջ, միաժամանակ եւ սկիզբն է

գլում մի քաղաքական գեղեցիկ երազի — արեւելեան քրիստոնեաների լաւ օրեր եւ վերածաղկում եւրոպացիների օգնութեամբ: Բայց Շնորհալին դեռ չունի բուն հայրենիքի, մայր Հայաստանի անկախութեան, Հայոց թագաւորութիւնը սեփական երկրում վերականգնելու երազը: Նա դարձել է երգիչ իր շրջանի արեւմտեան հայութեան սպասելիքների եւ ընդհանրապէս այն ժամանակուայ դրութեան, որի մէջ ապրել է ինքը: Միաժամանակ եւ նա դեռ 12րդ դարում բանաստեղծել է խաչակրութեան մասին, այն՝ որ մեր «Եդեսիոյ ողբի» յօրինումից չորս հարիւր տարի յետոյ ծնուած իտալացի բանաստեղծ Տորկուատոյ Տասսոն պիտի երգէր իր «Ազատուած Երուսաղէմ» հռչակաւոր վիպական քերթուածի մէջ: Արդարեւ մեր բանաստեղծի երկի նիւթը խաչակրութեան շրջանի մի միջադէպ է միայն, քրիստոնեաների համար մի դժբախտ եղելութիւն, բայց նա ոչ պակաս ուժով նկարագրել է ռազմական իրականութեան այդ փառաւոր կողմն եւս:

Եւ այսպէս՝ Ներսէս Շնորհալու ձեռով հմտօրէն կիրառուել է նրա աւագ ժամանակակից Յովհաննէս Սարկաւագ Վարդապետի տեսութիւնը, թէ բանաստեղծութիւնը հետեւում է բնութեանը, որ է՝ իրականութիւնը: Դժուար է կարծել, թէ նա ծանօթ չլինէր Սարկաւագի աշխատութիւններին, զի այն շրջանում արեւելեան եւ արեւմտեան վարդապետները, թէեւ քաղաքականապէս բաժանուած, բայց միմեանցից կտրուած չէին: Արեւելքից միշտ երթեւեկել են Հայոց կաթողիկոսարանը, որի նշանաւոր եպիսկոպոսն էր Ներսէսը: Բայց եթէ սա տեղեակ էլ չլինէր Սարկաւագի տեսութեանը, կարող էր նրանից անկախ եւս արտայայտիչ լինել նոյն հայեացքին. ժամանակի ոգու պահանջն էր այն: Նա անդրադարձրել է աշխարհիկ իրականութիւնը, հարկաւ, ոչ բոլոր կողմերով, այլ այն միայն, ինչ որ չէր կարող պարսաւուել «անդուան բերաններից», քանի որ այն դարում շատ բան դեռ անպատշաճ էր համարւում մի հոգեւորականի համար: Բայց ինչ որ նա երգել է վեհ ներշնչումով ու ոգեւորութեամբ, դա մաքուր իրականութիւն է առանց գերբնական ուժերի եւ էակների մասնակցութեան, որին հաւատում էին այն դարի մարդիկը, որով եւ լի է խաչակրութեան քերթող իտալացի բանաստեղծի նշանաւոր երկը: Որ մեր բանաստեղծը հեռու է այդպիսի վիպական հրաշալիքներից, դրա մէջ հէնց պէտք է տեսնել նոր մտաւոր հոսանքի յաղթանակը: Մեր բանաստեղծութիւնը 12րդ դարի կէսին արդէն երկնքից իջել էր երկիր եւ դարձել կեանքի եւ բնութեան գեղեցիկ արտացոլումը ոչ միայն իր ընդհանուր էութեամբ, այլեւ բովանդակութեան մանրամասներով, ինչպէս և բնական ու պարզ ձեւով, չնորհալի Քերթողի փափուկ, տրտմական կամ լուրջ յոյզով եւ անուշ, սրտաշարժ չեչտերով, որոնց տաղաչափը բնաւ չէր դիմում արուեստակեալ պերճութեան ու փայլի, աւելորդ զարդարանքների: Ամէն ինչ թեթեւ ու ճաշակաւոր, անբռնազբօս ու կենդանի:

## ԱՐՁԱԿ ԳՐՈՒԱԾՔՆԵՐԸ

1. **Ատենաբանութիւն**:— Շնորհալին իր գրական երկերը յօրինել է ոտանաւորով. արձակ լեզուով գրել է միայն պաշտօնի վերաբերեալ գործերը: Բայց վերջիններս էլ իրենց տեսակի մէջ որոշ չափով գրական, աւելի

եւս պատմական արժէք ունեն: Դրանցից ժամանակով առաջինն է «Ատենաբանութիւնը», որ նա ասել է իր կաթողիկոս ձեռնադրուելու առթիւ բազմութեան առաջ[1]: Անում է իր նախորդի, իր կաթողիկոս եղբօր, Գրիգոր Պահլաւունու գովքը՝ թուելով նրա արժանիքները, նուաստացնելով եւ ամբաստանելով իրեն: Գիտակցելով իր նոր վեհ պաշտօնի ծանր պարտականութիւնները՝ չարունակ համեստութեամբ չեչտում է իր անարժանութիւնը: Նկատի ունի նաեւ ժամանակի ծանր դրութիւնը: «Զարհուրիմ երկիւղիւ նայեցեալ յիմս տկարութիւն եւ ի մեծի այսր աստիճանի բարձրութիւն եւ ծանրութիւն, մանաւանդ ի չար եւ յանման բարեաց ժամանակիս, որք ոչ միայն յարտաքնոցն որք հակառակ են հաւատոյս՝ նեղեալ տագնապիմք ըստ մարմնոյ, եւ աղաւաղին կարգ եկեղեցւոյ, այլ եւ անուամբ քրիստոնէից. նաեւ յորոց կցորդ են կարգի մերոյ եւ ձեւոյ, որք յաղագս փառամոլ ախտի հակառակ գտեալք Աստուծոյ եւ աստուածայնոյ աթոռոյս ի սկզբանէ հայրապետութեանս տեառն մերոյ մինչեւ ցայժմ՝ որպէս ծանօթ է ամենեցուն, եւ զազատեալս ի Քրիստոսէ զեկեղեցի սուրբ ընդ հարկաւ արարին անօրինաց՝ կամաւ եւ ո՛չ ի հարկէ» (էջ 421): Դժուարութիւններից մեծն այն է, որ հայ ժողովուրդը, ասում է նա, «ոչ ի միում աշխարհի բնակեն՝ որպէս այլոց ազգաց, զի դիւրին էր շրջել առ նոսա առաջնորդացն եւ սերմանել զբանն, այլ ըստ մեղաց մերոց ցրուեալ են ազգ մեր եւ ժողովուրդք ընդ ոլորտս տիեզերաց ի մէջ օտարասեռ ազանց: Նաեւ աթոռս սուրբ դրդուեալ է ի հաստատութենէ ի զանազան եւ յանպատչաճ վայրս տարբերի ընդ հարկաւ եւ երկիւղիւ այլասեռից եւ անօրինական եւ աննուէր ի մերասերաց, որում ոչ է կար համարձակ շրջել եւ ուսուցանել, այլ թագնաբար լինել որպէս զվնասապարտս» (էջ 422): Վերջաբանի մէջ նա մի ցանկութիւն ունի, որ Աստուած հաճի «փրկել զմեզ... եւ դարձուցանել զամենեսեան յաշխարհն հայրենի... յարուցանել թագաւոր արդար»: Ահա նրա աղօթքն ու փափագը:

Ով սիրում է ճոճուն Ֆրազներ, այնպիսուն հաճելի չի լինիլ այս ատենաբանութիւնը, որ վսեմ է իր պարզութեամբ, ազդու է ոչ թէ արտաքին ձեւով, այլ ջերմ ներքինով, որ բխում է ջերմ սրտից: Մէկ մէկ բանեցնում է երկար ասացուածներ, բայց ընդհանրապէս շատ հասարակ, իսկապէս մեկին ոճով մի յօրինուածք է դա, առանց որեւէ ճարտասանական ճոռոմ զարդարանքների, կիրառում է հարցումներ եւ շրջումներ միայն եւ սակաւաթիւ պատկերաւոր ձեւեր: Բայց դրանց փոխանակ՝ նրա ճառն ուժեղ է տրամաբանութեամբ, մտածութեան կապակցուած ու կարգաւորեալ ընթացքով, որ այսպիսի խօսքերի համար անհրաժեշտ պայման է:

2. «Թուղթ ընդհանրական»:— Գրա-պատմական եւ բանաստեղծի կենսագրութեան կողմից աւելի արժէք ունի Շնորհալու այս Թուղթը, որ ուղղուած է բոլոր Հայերին[2]: Սկզբում յայտնում է իր կաթողիկոս ընտրուելն եւ

1 Թուղթ ընդհանրական Ներսիսի Շնորհալւոյ. Էջմիածին, 1865, էջ 411—426։

2 Անդ, էջ 1—112. «Թուղթ ընդհանրական Ներսէսի կաթուղիկոսի Հայոց առ համօրէն հայաստան ազինս»: «Ընդհանուր հաւատացելոց հայկականացդ սեռից, որք յարեւելս ի արփհական աշխարհդ Հայաստանեայց բնակեալք, եւ որք յարեւմտեան կողմանդ սահեալք նժդեհութեամբ, եւ որք ի միջերկրեայս՝ ի մէջ այլալեզու ազանց

*կաթողիկոս եղբօր մահը. «Ինքն... եհաս անկնաս յանքոյթ եւ յառանց ալեաց նաւահանգիստն, եւ զմեզ եթող ի տաժանելի եւ յաղցաւոր կեանս ի մէջ օձից եւ կարճաց եւ զանազան խածանող կաղանաց, երեւելեաց եւ աներեւութից, եւ ոչ այս միայն, այլ ծանրութեան բեռանց ի ներքոյ՝ հոգեւորաց եւ մարմնաւորաց»:*

*«Օձ, կարիճ ու գազան» կոչում է նա Համկլան շրջապատող այլազգի բնակիչներին: Ուրիշ տեղ էլ[1] նոյնպէս գրում է, թէ կաթողիկոսը մեռնելով իրեն թողել է «ի ծովու աշխարհի եւ շուրջ եղելոց օձից եւ կարճաց» եւ վերջում յիշում է իր նեղութիւնը, ասելով, թէ եկողները կը պատմեն ձեզ «զմարմնաւոր կրից մեր տաժանումն՝ զոր ունիմք ի շուրջ եղելոցս զմեօք»: Յայտնելով, թէ ի՛նչ է իր պարտականութիւնը՝ խորապէս ցաւում է, որ «շրջել առ ամենեսեան՝ ընդ ամենայն կողմանս աշխարհի, եւ քարոզել... անկարելի է յաղագս ժամանակիս չարութեան եւ բազմիշխանութեան: Եւ քաղաք թագաւորական եւ բազմաժողով ո՛չ գոյ ազգի մերում, որպէս զի անդանօր նստելով յԱթոռ հայրապետութեան եւ վարդապետութեան՝ ուսուցանէաք ժողովրդեան մերոյ»: Շատ դժուար է եղել կաթողիկոսարանի, ինչպէս մեր բանաստեղծի նիւթական կացութիւնը ծերութեան օրերում: «Այլ եմք իբրեւ զայծեամն յորսորդաց եւ ի շանց փախուցեալք ի քարանձաւիս յայս բնակելով,—գրում է նա,—յորում ո՛չ եւ մարմնական հարկաւոր պիտոյիւք շատացեալք ի գիւղից կամ յագարակաց, յորոց ունիմք եւ ո՛չ մի: Նաեւ ո՛չ անդաստան հողոյ, զի վաստակօք եւ աշխատութեամբ զպէտս մեր լնուաք, եւ ո՛չ օգնութիւն ուստեք, որպէս արժան էր, ի թագաւորաց եւ յիշխանաց»: Զկարողանալով անձամբ «խրատել եւ ուսուցանել», ասում է նա, «մեք իբրեւ ի կամաւոր բանտէ եւ կապանաց՝ յայսմ տօթագին քարանձաւի արգելեալք՝ գրով ձեռին մերոյ խօսիմք՝ որպէս բերանով՝ ընդ ամենեսին»:*

*Նրա այս գրութիւնը շատ հարուստ ու բազմաբովանդակ է: Խրատների մի մասն, ի հարկէ, սովորական ընդհանուր տեղիք են, բայց շատը շօշափելով ժամանակակից իրական կեանքի այլ եւ այլ կողմերը՝ տալիս են մեզ բարքերի ընդարձակ պատկեր: Սկզբում գրում է դաւանաբանական խնդիրների եւ կրօնական գիտելիքների մասին, որոնք, որովհետեւ Շնորհալու գրչից են ելել՝ ապագայ դարերի համար եւս արժեքաւոր են եղել: Ապա խօսքն ուղղում է ժողովրդի զանազան դասերին՝ կրօնաւոր, վանահայր, առաջնորդ, քահանայ, իշխան, զինուոր, քաղաքացի, երկրագործ եւ ամէնից վերջը՝ կանայք: Այս ամէն ինը կարգի մարդկանց տալիս է իրենց վիճակին համապատասխան խրատներ: Կանանց, օրինակ, պատուիրում է «պարկեշտութեամբ եւ բարեձեւութեամբ լինել յամենայնի... եւ առաւել քան ոսկւով եւ արծաթով՝ ամօթխածութեամբ եւ պատկառանօք զարդարել զանձինս»: Անմիտ երիտասարդներին գայթակղեցնելու համար ներկերով չայլազունել իրենց երեսի գոյնը. կաւատութեամբ չպարապել, հետեւող չլինել*

---

*տարաբերեալք, եւ որք յիւրաքանչիւր յեղերս աշխարհաց ըստ մեղաց մերոց ցրուեալք ի քաղաքս եւ ի դղեակս, ի գիւղս եւ յագարակս»:*

*1 Անդ, էջ 148—162. «Պատասխանի առաջին թղթոյն թագաւորին Հոռոմոց Մանուէլի»:*

կախարդութեան եւ դեղատուութեան աղանդներին: Այս մասին յիշում է նա իր նամակներից մէկի[1] մէջ եւս. «Կանանցն պատուէր տուք, — գրում է նա Թորոս քորեպիսկոպոսին,—ի կախարդութենէ եւ ի դեղատուութենէ եւ յամենայն դիւական աղանդաւորութենէ ի բաց կալ»: Արժանի չհամարել քրիստոնէական թաղման «նոյնպէս եւ որ զպիղծ եւ զաղտեղի իրս ի կերակուրս եւ յըմպելիս խառնեալ՝ տայ ուտել քրիստոնէի վասն դիւական սիրոյն [=սիրահարեցնելու համար]... զգուշացուցէ՛ք զնոսա յամենայն ի յայսպիսի ըժժագործութենէ»:

Երկրագործներին ու բոլոր ժողովրդականներին խրատում է՝ չապականուել «պղծալից պոռնկութեամբ եւ շնութեամբ», չհարբել գինով, «յորում զեղխութիւն եւ յիմարութիւն է, որ է մայր պոռնկութեան եւ անիրաւութեան եւ վիճման եւ աղտեղի բանից անարգանաց, յորմէ եւ սպանութիւնք լինին»: «Դարձեալ, — ասում է, — մի՛ զլեզուս ձեր առնէք գործի սատանայի ի ձեռն չար եւ դառն յիշոցաց, մանաւանդ որ զհաւատ եւ զհոգիս անարգեն, եւ զմկրտութիւն աւազանին եւ զմկրտիչ քահանայն եւ զերես եւ զբերան»: Ապա դարձեալ՝ պատուիրում է կրթել մանուկներին եւ ուսում տալ նրանց. «Սաստեցէ՛ք չսովորել ի խօսս աղտեղիս եւ ի յիշոցատուութիւնս»: Այսպէս խրատում է ըստ պատշաճին նաեւ քաղաքացիներին, զինուորներին, իշխաններին:

Հոգեւորականների բարոյական եւ ուսումնական վիճակն անպայման աւելի ծանօթ է եղել Շնորհալուն, եւ նա երկար ուսուցանում ու խրատում է նրանց. իսկ մենք նրա «Ընդհանրականով» բաւական ծանօթանում ենք նրանց, ըստ եկեղեցական հայեացքի, ընկած բարքերին: Տեսնենք այդ մի փոքր մանրամասն, քանի որ նրանց այդ դրութիւնը կարեւոր է գրականութեան պատմութեան համար: Կրօնաւորների կեանքի մէջ արդէն մեծ փոփոխութիւն էր կատարուել. այլեւս չկար Ստեփաննոս Տարօնեցու նկարագրած անընչասէր եւ անսասան աշխարհուրացութիւնը: Ընդհակառակն, նրանք առհասարակ արդէն բռնել էին, այսպէս ասած, աշխարհականացման եւ աշխարհասիրութեան ուղին: Վանք, անապատ քաշուելով հանդերձ՝ կրօնաւորները չէին կտրւում **երկրաւոր ցանկութիւններից** եւ միշտ ետ էին նայում դէպի աշխարհը: Հետաքրքիր է այն, որ կրօնաւորութիւնն արդէն դարձած է եղել հարստացման միջոց: «Բազումք են ի ժամանակիս կրօնաւորաց, որ յաշխարհի առանց ժառանգութեան էին, եւ հարկաւորք իշխանաց, եւ աղքատք ի գոյից, եւ կարօտք հարկաւորացն. եւ յորժամ զձեւ կրօնաւորութեան ընկալան՝ տեարք եղեն ի վանորայս բազում ժառանգութեան, եւ փարթամացան ստացուածովք. եւ ոչ միայն հարկաւոր պիտոյիցն եղեն անկարօտ, այլեւ աւելորդօքն լցան, եւ յաշխարհի հոգովք եւ երկօք տաժանեալք, եւ աստ անհոգոլութեամբ եւ հեշտութեամբ ստուարացեալ»:

Այսպէս հարստանում էին նրանք, որովհետեւ վանքերում ապրելով փոխանակ հասարակաց աշխատանքին մասնակցելու՝ իրենց առանձին սեփական տնտեսութիւններն ունէին եւ դրանցով էին պարապում՝ «ի յիւր-

---

1 Անդ, էջ 315. «Թուղթ ի Սամոսատ քաղաք յաղագս արեւորդեաց դարձի», էջ 308 եւ հտն.:

եանց առանձնական գործս արի եւ արթուն լինելով, եւ ի հասարակացն՝ հեղգ եւ պղերգ»: «Զգուշացուցանեմք,— գրում է Շնորհալին, — զճշմարտագունիցդ երամս՝ յաղագս նոր եղելոյ սովորութեանդ ի վանորայս ի մերում ժամանակի, այգեգործ ինքնաքանչիւր ոք լինելով ի կրօնաւորաց, որպէս ի գեօղս, որ անվայելուչ է կրօնաւորական կարգի»: Մեր կրօնաւորներն, — ասում է նա, — իրար նախանձում են, «թէ ո՞վ քան զընկերս յընդարձակագոյն տեղւոջ եւ ի պարարտ երկրի տնկիցէ այգի, եւ թէ՝ զիա՞րդ սնուցանիցէ իմաստութեամբ զնորատոյն տունկսն: Եւ փոխանակ զարուեստս առաքինութեան ուսանելոյ ի միմեանց՝ յայգեգործութեան հնարս վարժին անհմուտք ի հմտագունիցն: Արժա՛ն է, ասեն, այսպիսի օրինակաւ վաստակել եզամբք, եւ բրել ձեռամբ՝ փայտատօք եւ բահիւք, եւ հակառակ տնկոցն զարմատս եւ զբոյսս արմատաքի խլել... Այլ եւ հատանելոյն օրինակ զանազանեալ է՛ ինքնաքանչիւր տնկոյն սեռից առ իմաստունսն յայտնելի, զի զոմանս հուպ յարմատսն, եւ զայլսն ի բացեայ հատանեն. յոմանս սակաւագոյնսն, եւ ի կէսս յոլովագոյնս թողուն, եւ այս ամենայն՝ որպէս զի յաճախագոյնս պտղաբերեսցեն, եւ յոլովս գինւոյն չափոյ աճեցուսցեն զթիւս: Թողից ասել զպատուաստելոյն հնարս, մի քան զմի առաւելեալ ի հանճար, եւ զգործելոյն եռանդն ջերմութեան, զի ոչ զտիւն ոմանք բաւական համարին ժամանակ գործելոյ, այլ եւ զգիշերն եւս խառնեն ընդ տուընջեանն»: Այսպէս մի ամբողջ արուեստ եւ ուսում այգեգործութեան, որով պարապել են կրօնաւորները: Շատ բնական է, որ այդպիսիների ուշ ու միտքն իրենց սեփական գործին է եղել: Երբ այլ եւ այլ տեղերից իրար հանդիպում են այգեատէր կրօնաւորները, — ասում է նա, — նրանք իրար ողջունելուց յետոյ՝ ոչ թէ կրօնաւորական գործի մասին են հարցնում միմեանց, «այլ թէ յայսմ ամի, ո՛վ եղբայր, զիա՞րդ է պտղաբերութիւն քոյին տնկոցն. առաւե՞լ է՝ թէ նուազ: Եւ նա թախծեալ սրտիւ պատասխանէ՝ զինչ ասացից, ասէ, զաւէտսն որ պատահեցան. զի ոմանք ի ճճեաց վնասեցան, եւ յոմանց ծաղիկքն թօթափեցան, եւ այլքն արեւակէզ եղեալ ողկուզաց չորացան, եւ կէսք՝ նեխութեամբ ապականեցան, եւ թէ զի՞նչ արարից՝ անգիտանամ զելս վտանգիս եղելոյ: — Եւ ընկերն թելադիր եղեալ նմին՝ խրատ տայ, զոմանս պատուաստել ի տնկոցն՝ որք պտղակորոյսք լինին, եւ զայլսն՝ զանազան փորձեալ հնարիւք բժշկել ի պատահելոց կրիցն» (էջ 28 եւ հտն.):

Այս բոլոր աշխատանքն անում էին կրօնաւորները, որպէսզի շատ գինի ստանան եւ «ագահութեամբ եւ որկորստութեամբ» ապրեն, եւ ոչ թէ, ըստ կանոնի, բաւականանան «միաբանական կերակրով եւ հանդերձով». Նրանք նոյնիսկ արբեցութիւն էին անում: Գինին վաճառելով էլ էին պարապում եւ արծաթ ամբարում, կամ թէ կրօնաւորին անվայել «լոյծ եւ մեղկ կեանք» էին վարում: Այդպիսիները թողնելով ընկերակից կրօնաւորների կենակցութիւնը՝ առանձին էին բնակւում, «ոչ յաղագս ճգնողական վարուց՝ որպէս միայնակեացք, այլ վասն ագահութեան ախտի, զի զանձին իւրոյ աշխատութիւն ոչ հասարակաց եկեղեցւոյն, այլ իւր միայնոյ ամբարիցէ...Զի առ բազումս, — աւելացնում է Շնորհալին, — քան զերկիւղն Աստուծոյ առաւել զօրէ ընկերակցացն ամօթոյ երկիւղ, յետս դարձուցանելով զյօժարութիւն մտացն ի չար՝ ցանկութեանց մեղացն կատար-

մանէ»: Դրանք, այդ թաքուն մեղք գործողները, դեռ համեմատաբար լաւերն են եղել: «Են ոմանք դարձեալ յաշխարհասէր եւ ի մեղկ կրօնաւորաց, — շարունակում է Շնորհալին, — զի ··· անձամբ իսկ ընդ աշխարհականս բնակեն ի գիւղս եւ ի քաղաքս եւ ի բանից բերանոյ գարշութիւնս եւ ի գործս վատթարութեան, եւ յորովայնամոլութիւնս անպատկառս եւ յարբեցութիւնս անառակս, եւ յամենայն անկարգութեանց բերմունս՝ առաւելուն քան զնոսա» (էջ 26): «Դիւական երգերն» էլ պակաս չեն եղել այդպիսի կրօնաւորների բերանից:

«Եւ քանզի ի նիւթականացս ցանկութիւն զբաղումս ի կրօնաւորաց ժամանակիս տեսանեմք ըմբռնեալս, որք զթեթեւանալն յայսպիսի ծանրութեան հողոց՝ դժուարինս վարկանին», ուստի, ասում է Շնորհալին, «եւ մեք ոչ դնեմք օրէնս՝ այսպիսի կրօնաւորաց ամենեւին ի բաց կալ ի տնկագործութենէ եւ յամենայն գոյից ստանալոյ»: Նա լաւ գիտէ, որ այնպիսիներն իրեն չե՛ն լսելու. ուստի պատուիրում է, որ նրանք գոնէ իրենց եկամուտներից մաս հանեն աղքատների ու կարօտների համար, այն էլ իրենց ձեռով եւ ոչ թէ մահից յետոյ ուրիշների միջոցով:

Կրօնաւորների ուրիշ պակասութիւններ էլ թւում է կաթողիկոսը: Ինչպէս, օրինակ, չնչին պատճառով նրանք թողնում են իրենց եղբայրակիցներին ու շրջում են վանքից վանք: Հէնց որ նրանց մի նկատողութիւն են անում իրենց անպատշաճ գործերի կամ խօսքերի համար՝ գիշերը թողնում, փախչում են: Գողութիւն են անում, «այլ եւ ստութիւն վասն գողութեանն. ոչ լոկ բանիւ, այլ եւ մեծամեծ երդմամբ ուրացութիւն», եւ նմանները: Եւ սակաւ չեն եղել ստահակները. «Յազգի մերոյ կրօնաւորաց զբաղումս տեսանեմք անհրահանգս եւ անխրատս եւ անհնազանդս ուսուցողունից, եւ գրեթէ զբովանդակն բաց ի սակաւուց» (էջ 39):

Թողնում ենք վանահայրերի եւ աշխարհի եպիսկոպոս առաջնորդների համար գրուածները: Բերենք մի քանի բան քահանաների վերաբերեալ: Կան քահանաներ, — ասում է, — որոնք, ինչպէս լսում ենք, «յառաւօտէ մինչեւ ցժամ պատարագին ի վաճառափողոցս քաղաքին շրջին ի տուրեւառութիւն վաճառաց». կամ հասարակաց զգեստներով եւ աղտեղի տրեխներով ելնում են բեմ եւ պատարագ անում. եկեղեցիների պայծառութեան եւ ընդհանրապէս մաքրութեան հոգ չեն տանում, վարում են զանազան աշխարհիկ պաշտօններ, եւ այլն: «Լսեմք զոմանց քահանայից ձիավարժս լինել եւ զէնս առնուլ ըստ զինուորաց, եւ ի խրախճանութիւնս խաղուց ձիընթացից ընդ նոսին արշաւել երիվարօք եւ ի յորս երէոց եւ ի նետաձգութիւնս եւ յամենայն ինչ յայսպիսիս» (էջ 89): Վիճակաւոր առաջնորդ եպիսկոպոսներին էլ պատուիրում է՝ «Ո՛չ սրընթաց ձիովք շահատակել, եւ շամբք եւ բազէիւք որսականօք բերել առ երէվայրիս եւ թռչունս, որպէս լսեմք զոմանց թէ լինեն»: Դրանք եպիսկոպոս լինելով հանդերձ՝ չեն տարբերուել աշխարհական տէրերից, եւ նրանց «բանք բերանոյն» եղել են «անմտաբար խեղկատակութեամբ կամ աշխարհօրէն զառականս կամ զանկածութիւնս ի լեզուն յեղյեղլով անարգել զոք» (էջ 57):

Այսպէս՝ Ներսէս Շնորհալու «Ընդհանրական թղթից» իմանում ենք, որ հոգեւորական դասի հասկացութիւնների ու կենցաղի մէջ արդէն մեծ

փոփոխութիւն էր մտել. 12րդ դարի կէսերին կրօնաւորութիւնն անգամ ձեւ էր դարձած: Այս փոփոխութիւնը կաթողիկոսը բացատրում է ժամանակի թշուառութեամբ, աղքատութեամբ, «յաղագս ձմեռն գոլով ի բարեաց՝ ժամանակիս», որ նա շեշտում է յաճախ (էջ 48, 50, 52, 65): Նաեւ ուրիշ թղթերի մէջ (օրինակ՝ էջ 309. «ի նուազեալ բարեաց ժամանակս մեր»): Այդպէս չէր առաջ, ասում է նա. Հայաստանեայց եկեղեցիները պայծառ էին սկզբից «մինչեւ յաւերումն աշխարհի ի հիմանց»: Որ հին բարի աւանդութիւններին հակառակում են, դրա պատճառն ուրիշ բան չէ, «քան թէ տգիտութիւն եւ ինքնօրէն անձնահաճ կամապաշտութիւն՝ որք ո՛չ տեսին զառաջին պայծառութիւնս, մինչ ողորմութեամբ տեառն լի էր երկիր, այլ ի հալածանացս ծնեալ ժամանակի ընդ խրթնատեսակս նայեցան տգեղութիւն, որովք կապեալ են յամենայն ուրեք ազգ մեր յաղքատութեան, որպէս ընդ երկաթոյ ի ներքոյ լծոյ ծառայութեան իւրաքանչիւր ազգաց՝ ուր եւ իցեն. ոյք եւ հարկաւոր պիտոյիցն կարօտ են ըստ մարմնոյ, թող թէ պայծառութեան եկեղեցւոյ ի խնդիր» (էջ 71): Շնորհալու հիմնաւորումը ճիշդ է մասամբ, ինչ որ եկեղեցիների բարեզարդութեանն է վերաբերում: Թէ չէ՝ կրօնական ոգու թուլացումը, որ սկսուած էր արդէն 11րդ դարից, բնական զարգացման հետեւանքով առաջատուութեամբ շարունակուել է մինչեւ 12րդ դարի կէսերը եւ յետոյ մինչեւ 17րդ դարը, ազդելով նաեւ մեր գրականութեան զարգացման ընթացքի վրայ:

Ներսէս կաթողիկոսի այս մեծ գրութիւնը որքան իր բովանդակութեամբ շատ կարեւոր պատմական փաստաթուղթ է, նոյնքան եւ արժէքաւոր մի գրական երկ է: Իբրեւ բանաստեղծի գործ՝ դա բնականաբար յօրինուած է գեղեցիկ ձեւով, հեղինակին յատուկ հաճելի ոճով: Մարդ այդ կարդալով՝ երբեմն հրապուրւում է նրա կարդուորեալ ու թեթեւ, միաժամանակ եւ յաճախ պատկերաւոր մտածութեամբ: Նա միտքն արտայայտում է սովորաբար կարճ ասացուածներով, յստակ ու սրտալի խօսքերով, խուսափելով բառերի եւ քերականական ձեւերի կրկնութիւնից: Չի մոռանում իր աստիճանին պատշաճ խրատական եղանակը. գրուցում է մեղմ, հանդարտ ու ծանր. ոչ հրամայողաբար, ոչ ինքնագով մեծամտութեամբ, այլ համեստաբար, իրեն էլ ոչ արդար համարելով: Ոչ մի չինծու խօսք չկայ. յաճախ խօսում է մեկնաբան Շնորհալին: Գործածած նմանութիւնները մեծ մասամբ ոչ թէ բանաստեղծական պաճուճանքի համար են, այլ միտքն օրինակներով հեշտ հասկնալի եւ համոզիչ դարձնելու: Բայց դրանք միաժամանակ եւ առանձին համ ու հոտ են ընծայում նրա խօսքին: Այսպիսի դէպքերում երբեմն, ինչպէս ներքեւում բերուած հատուածների մէջ, ասացուածները բաւական ընդարձակւում են միջանկեալ խօսքերով, բայց մեծ մասամբ չեն կորցնում իրենց հեշտ հասկանալիութիւնը, որովհետեւ հեղինակը չի մոռանում խօսքերի կապակցութիւնն ու մտածութեան թելը: Շատ բան, անշուշտ, Ս. Գրքի եւ ուրիշ կրօնական գրուածքների խօսքերով եւ օրինակներով է համեմած, ինչ որ անհրաժեշտ էր ըստ ժամանակի պահանջի: Բայց պակաս չեն եւ իր սեփական գիւտերը, բնութիւնից եւ կենդանի իրական կեանքից առած, միշտ չմոռանալով, որ ինքը գրում է ոչ միայն խրատելու, այլեւ ուսուցանելու համար: Խօսելով, օրինակ, գրաւոր աղօթքների ծագման մա-

սին՝ գրում է. «Յառաջագոյն ի ժամանակս... մինչդեռ նոր ծաղկեաց դարունն հաւատոյ», ամէնքը «յինքեանց մտաց խօսէին զբանս աղօթից՝ ըստ ժամուն պիտոյից... Իսկ ի ժամանակս յետինս՝ քանզի հանդերձեալ էր ձմեռն մեղացն սառնամանեօք խստութեան ցրտացուցանել զբորբոքումն առ Աստուած սիրոյն», դրա համար եւ հոգելից վարդապետներն իրենց աղօթքները գրելով թողել են յետնորդներին: Բայց ի՞նչպէս են ասում քահանաներն այդ հոգեբուխ աղօթքները: Դիմելով նրանց՝ պատուիրում է. «Մի՛ իբր ջուր ընդ խողովակ անցանիցէք անմտաբար ընդ խորհրդական բանս աղօթիցն...» (էջ 68):

Շնորհալին ճանաչելով իր ժամանակի հոգեւորականներին, գիտէ, որ չա՛տերին ախորժելի չեն լինիլ իր ասածները «կամ յաղագս ծուլութեան եւ մեղսասիրութեան, կամ վասն արհամարհելոյ զմեօք»: Այդպիսիներին էլ, ասում է նա, «Մեք զոր հրամայեալն է մեզ՝ արասցուք, աղաղակելով որպէս դէտ ի բարձր դիտանոցէ զպատուիրանս Աստուծոյ ի լսելիս ձեր»: Եւ իսկոյն աւելացնում է համեստաբար. «Բայց մի՛ ոք կարծիցէ զմէնջ, թէ իբրեւ առողջս զմեզ համարելով յախտից մեղաց՝ ձեզ միայն զբժշկականս զայս մատուցանեմք դեղ՝ որպէս հիւանդացելոց: Այլ ծանիցէ ամենայն ոք, զի մեք առաւել քան զամենեսեան ունիմք պէտս հոգւոց բժշկութեան: Բայց որպէս յիմար հիւանդի է զիւրն առողջութեան դեղ, զոր մատուցանէ նմա ախտացեալ ոմն բժիշկ՝ ի բաց մերժել, տեսանելով զցաւս մարմնոյ նորա, — նոյնպէս իմաստո՛յ է ոչ զբնութեան բժշկին ունել փոյթ, թէ առողջ է եւ կամ հիւա՞նդ, այլ զդեղին քննել զօգտակարութիւն, եթէ առողջարա՞ր իցէ, եթէ վնասակար: Արդ՝ եւ դուք մի՛ վասն մեր անարժանութեան եւ ի հոգեւորսն պակասութեան՝ զօգտակար դեղս հոգւոց՝ զորս մատուցանեմք ձեզ՝ արհամարհիցէք եւ ոչ ընդունիցիք» (էջ 21):

Նկատի ունենալով, որ իսկական բարեպաշտ կրօնաւորները, — եւ կային դեռ բաւական թւով այդպիսիներն եւս,—գուցէ իրենից նուաստ մտածելով, թէ իրենք խրատների կարօտ չեն, ասասում է նրանց. «Թէպէտ եւ... չունիք ինչ պէտս կարեաց՝ մերոյ դուզնաքեայ բանից, այլ որպէս ծառայք՝ որք զհասարակականն կերակուր հրաման առնուն ի տէրանց բաշխել՝ ո՛չ միայն քաղցելոց, այլ եւ յագեցելոցն շնորհին, — նոյնպէս եւ մեք: Եւ ընդհանուր ծառայակցաց մերոց՝ հրամայեցաք ի տեառնէ՝ տալ զբանին կերակուր, հասարակաբար պարտիմք մատակարարել՝ փարթամաց գիտութեամբ եւ աղքատաց ի գիտութենէ, զօրաւորաց առաքինութեամբ եւ տկարացելոցն յառաքինութենէ» (էջ 23):

Բերենք նրա՝ երկար պարբերոյթներով եւ բարդ ասացուածքներով գրուած պրոզայից իբրեւ օրինակ եւ հետեւեալ գեղեցիկ հատուածը. «Առ առաջնորդս սրբոց ուխտից վանականաց», այսինքն՝ վանահայրերին ուղղուած գլխի սկիզբը: Նա մարդուս երկու աչքերի նմանութեամբ խրատում է նրանց, թէ լաւ առաջնորդ լինելու համար՝ նրանք պէտք է ե՛ւ գիտութիւն ունենան, ե՛ւ առաքինասէր գործեր:

«Փոքր ինչ եւ առաջնորդացդ ի յերկինս ճանապարհորդելոցն [=կրօնաւորների առաջնորդներիդ] տացուք ծառայակցաբար զհոգեւորական եւ

*զաստուածային բանին կերակուր, որք աչաց ունին զործ եւ սպասաւորութիւն մարմնոյ եկեղեցւոյ:*

*Զի զո՛ր օրինակ աչք առաջնորդեն անձին յամենայն շարժումն՝ ի լաւագոյնն կամ ի վատթարագոյնս, ըստ այսմ նմանութեան եւ ոչ առաջնորդք՝ առաջնորդելոցն: Եւ որպէս բիբք աչացն, եթէ մաքուրք լինիցին ի յախտից ինչ ի ներքս անկելոց, սրատեսութեամբն անմոլար առաջնորդէ անձին յուղիղ ճանապարհն. իսկ եթէ շամանդաղք մթինք վերակին լուսոյ՝ որ ի գլխոյ անտի յաչսն իջանեն՝ խնուն անտեսութեամբն, սխալէ՛ եւ ընդ ինքեան ի խորխորատ մահու զբոլոր անձն իւր արկանէ, — ըստ այսմ օրինակի եւ առաջնորդք եկեղեցւոյ:*

*Որ ոք երկոքումբք աչօք լուսաւորեալ իցէ, այսինքն՝ գիտութեամբ աստուածաշունչ գրոց, եւ առաքինասէր գործովք՝ ամբծութեամբ եւ սրբութեամբ եւ ամենայն արդարութեամբ, զոր պատուիրանք Աստուծոյ ուսուցանեն, այնպիսին որպէս անձին իւրոյ, սոյնպէս եւ համօրէն եղբայրութեանն բարւոք առաջնորդէ յաստուածայինսն:*

*Իսկ որ զմի յաչացն բա՛ց ունիցի, եւ միւսոյն կափուցեալ իցէ, այսինքն՝ որ կամ գիտութիւն առանց գործոց առաքինութեան, եւ կամ առաքինութիւն առանց գիտութեան ունիցի, թերի՛ է ի բարեաց եւ ոչ կատարեալ. քանզի միականեաց նմանի այնպիսին: Զի թէպէտ եւ որ զիմաստութիւնն ունիցի՝ գիտէ զշաւիղս արդարութեան ճանապարհին ուսուցանել բանիւ, այլ ինքեան ո՛չ գնալովն ընդ նոյն՝ գործով, ո՛չ կարէ հաւանեցուցանել զայլս գնալ: Նոյնպէս եւ այն՝ որ սրբութեամբ վարուք իցէ միայն՝ առանց գիտութեան գրոց, թէպէտ եւ անձամբ իւրով գնայ ընդ ճանապարհ օրինացն Աստուծոյ, բայց զի այլոց՝ որպէս արժան է՝ ո՛չ գիտէ իմաստութեամբ առաջնորդել, վասն այնորիկ բազում անկարգութիւնս մտանէ յեկեղեցի:*

*Իսկ այնոքիկ՝ որ զերկոսեան տեսարանս աչաց խաւարեալս ունիցին ի լուսոյ, այսինքն՝ զի են տգէտք աստուածային գիտութեանց, եւ են պղերգ յամենայն գործս արդարութեան, մա՛նաւանդ թէ՝ եւ հակառակօքն լցեալք, եւ յանդգնին առ գանձիւս յառաջնորդութիւն եկեղեցւոյ. (որ եւ զբազումս տեսանեմք յայսպիսեաց ի մերումս թշուառացեալ ժամանակի՝ ձեռնամուխ եղեալ յայսոսիկ), — լինին այնպիսիքն ըստ տէրունական առակին, կոյր կուրի՛ յորժամ առաջնորդէ՛, ասէ, երկոքին ի խորխորատ անկանին. որք ո՛չ յԱստուծոյ, այլ ի սատանայէ շարժեալք՝ դիմեն յառաջնորդութիւնն յայն՝ ի կորուստ ինքեանց եւ առաջնորդելոյն» (էջ 46 եւ հտն.):*

3. Ուրիշ գրութիւններ: — *Ներսէս Շնորհալուց մնում են եւ բազմաթիւ ուրիշ թղթեր, գրութիւններ, որ նա ուղղել է այլ եւ այլ անձերի, երբեմն իբրեւ պատասխան նրանց տուած հարցերի: Նամակների մէջ կան նաեւ մասնաւոր, անձնական բովանդակութիւն ունեցողներ, բայց այդ գրութիւնների մեծ մասամբ վերաբերում են դաւանական եւ այլ կրօնական խնդիրների, որոնցով հետաքրքրուել են ժամանակակիցները: Ուստի նա երբեմն դրանց մէջ դիմում է նաեւ մեկնութեան, մանաւանդ որ նա լաւ ծանօթ եւ վարժ էր մեկնութեան, քանի որ գրած ունէր նաեւ Մատթէոսի Աւետարանի մեկնութիւնը: Այդ գրութիւնները իբրեւ պատմական փաս-*

տաթղթեր կարեւոր են գլխաւորապէս Հայոց եկեղեցու պատմութեան համար, բայց երբեմն էլ ձեւով բարձրանում են եւ ստանում գրական արժէք իբրեւ պերճախօսութիւն: Այդպիսիներն աչքի են ընկնում իրենց զօրեղ տրամաբանութեամբ, բերուած գեղեցիկ օրինակներով եւ զանազան ճարտասանական ձեւերի գործածութեամբ, ուժեղ հակաճառութեամբ եւ առարկութեամբ, մի քանի դէպքում նաեւ ծաղրով ու հեգնութեամբ:

Պատմութեան համար առանձին նշանակութիւն ունեն այն թղթերը, որոնք վերաբերում են այսպէս կոչուած «Միութեան խնդրին», այսինքն՝ Հայկական եւ յունական եկեղեցիների միացման խնդրին, որ յարուցուել էր մի կողմից՝ Հայոց կաթողիկոսի եւ միւս կողմից՝ Բիզանդիայի Կիռ Մանուէլ կայսրի միջեւ: Միութիւնը գլուխ չի եկել Ներսէսի մահուան պատճառով: Այդ թերթերից տեղեկանում ենք Ներսէսի խոհեմ, քաղաքագէտ եւ զգոյշ բնաւորութեանը. տեսնում ենք, թէ ինչպէս նա պաշտպան է Հայոց եկեղեցու պատուին, թագաւորի հետ խօսում է եւ պահանջում է եկեղեցիների վերաբերմամբ խօսել ինչպէս հաւասարը հաւասարի հետ (էջ 159): Նա չի կամենում միութիւնը գլուխ բերել մենակ ինքն անձամբ, առանց Հայոց եկեղեցական ժողովի, որ պատրաստւում էր անելու: Ինքը պաշտպան է հայկական եկեղեցական մի քանի ծէսերի, սովորութիւնների միայն նրա համար, որ չգրգռի դրանց վարժուած ժողովրդին, թէ չէ պատրաստ է նոյնիսկ զիջող լինելու, «եւ այն,—աւելացնում է նա,— յաղագս աստուածային սիրոյն հաղորդութեան եւ ո՛չ իբր ի մոլորութենէ դառնալով ի ճշմարտութիւնն» (էջ 221): Այստեղ արդէն լսում ենք Ներսէսի այսպէս ասած՝ ազատամտութեան ձայնը: Այդ եւս ծագած էր անշուշտ նոր մտաւոր հոսանքի ազդեցութեամբ. բայց այդ մասին գործօն էր նաեւ Յոյների մէջ ցրուած հայ ժողովրդին յունական կրօնական հալածանքներից ազատելու ներքին դիտումը[1]:

4. Գրիգոր Տղայ:— Ներսէս Շնորհալուց յետոյ կաթողիկոս է դարձել (1173–1193 թ.) նրա Վասիլ եղբօր որդին՝ Գրիգոր Պահլաւունին, «Տղայ» մականունով: Նա սնուել, կրթուել եւ ուսում է առել կաթողիկոսարանում եւ հաւանօրէն այնտեղ էլ մանուկ հասակում կոչուել է այդ մականունով: Նա էլ փափագում է եկեղեցիների միութիւնն առաջ բերել, նկատի ունենալով, որ այդու կը թեթեւանայ յունական տէրութեան մէջ ապրող Հայերի վիճակը, բայց հաստատ պահելով «ճշմարիտ հայութիւնը»[2]: Այս մտքով շարունակում է նա բանակցութիւնները միութեան մասին Յոյների եւ հայ հոգեւորականների հետ. 1179 թ. ժողով է գումարում Հռոմկլայում, բայց Մանուէլ կայսրը մեռնում է, եւ միութիւնը գլուխ չի գալիս: Գրիգոր Տղայից մնում են մի քանի թղթեր[3], որոնք գրուած են հմտութեամբ, երբեմն

---

1 Ընդհանրական. Էջմ., 1865, Միութեան խնդրի համար փոխանակուած բոլոր թղթերը եւ Ներսէսի եւ ուրիշների՝ էջ 113—280, 426—457: Ներսէսի միւս թղթերն ու գրութիւնները՝ էջ 285—411:

2 Անդ, էջ 449, 457:

3 Անդ, էջ 229 եւ հտն., 250 եւ հտն., 266 եւ հտն., 432 եւ հտն: Վերջինս՝ «Պատասխանի վարդապետացն Հայոց հիւսիսային կողմանց» կայ նաեւ՝ «Գրիգորի կաթողիկոսի Տղայ կոչեցելոյ նամականի», Վենետիկ, 1865, էջ 53—90: Այստեղ նաեւ «Պատասխանի թղթոյն վարդապետին Գրիգորի Տուտէորդւոյն», էջ 5—52. Գրիգոր Տու-

*եւ սուր ոճով, բայց չունեն առանձին գրական նշանակութիւն եւ կարեւոր են եկեղեցական պատմութեան համար:*

*Նրանից մնում է եւ մի ոտանաւորով գրուածք: 1187 թ. մահմեդականները Սալահադինի ձեռով նորից տիրում են Երուսաղէմին. կործանւում է խաչակիրների հիմնած թագաւորութիւնը: Այս դէպքն ազդում է ի միջի այլոց եւ Հայոց կաթողիկոսի վրայ, եւ նա յօրինում է «Բան ողբերգական վասն առման Երուսաղէմի»*[1]*: Այն գրուած է Ներսէս Շնորհալու «Եդեսիայ Ողբի» նմանողութեամբ բարառնաբար, ութավանկ տողերով եւ «ին» յանգով (1395 տող): Խօսում է անձնաւորուած Երուսաղէմ քաղաքը, սկզբում դիմելով նշանաւոր քրիստոնէական քաղաքներին, թուելով իր սրբավայրերը եւ ողբալով իր աղէտները: Լի է բացադարձութիւններով, կրկնութիւններով եւ, ինչպէս յաճախ վարուել են մեր գրողները, բռնազբօսիկ ակնարկներով Հին Կտակարանի մէջ պատմուած դէպքերին: Չունի այն կենդանութիւնը, պատկերների փայլն եւ մտածութեան ու զգացմունքի խորութիւնը, ինչ որ Շնորհալու քերթուածը: Արժեքաւոր է միայն պատմութեան համար իր հաղորդած «հարուստ պատմական իրողութիւններով եւ Պաղեստինում ապրող Ֆրանկների բարքերի, սովորոյթների ու հաւատալութիւնների նկարագրով»:*

## ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

1. Կենսագրութիւնը:— *Ինչպէս «Միջերկրայքը» Եփրատի եւ Ամանոսի միջեւ, նոյնպէս եւ Կիլիկիան Ամանոսից արեւմուտք՝ շատ հին ժամանակներից ծանօթ էր Հայերին, որոնք առեւտրական յարաբերութիւն ունէին այն կողմերի հետ: 11րդ դարում Հայաստանի քաղաքական աղէտների հետեւանքով՝ շատ հայ իշխաններ իրենց ժողովրդով տեղաւորւում են նաեւ Կիլիկիայում, որ բիւզանդական իշխանութեան ներքոյ էր, որ եւ իր ծովափնեայ դիրքով մի յարմարաւոր վայր էր Արեւմտեան Եւրոպայի հետ հաղորդակցութիւն պահելու համար: Հայութիւնը հետզհետէ թուով աճում է այնտեղ եւ տնտեսապէս զօրանալով դառնում է ազդեցիկ: Հայ իշխանները սկզբում բիւզանդական կուսակալների պաշտօն են վարում, յետոյ տիրանում են որոշ բերդերի բիւզանդական գերիշխանութեան տակ. ապա ձգտում են նաեւ քաղաքական անկախ իշխանութիւն կազմելու: Բագրատունի Գագիկ Բ. թագաւորի մօտիկ ազգական Ռուբէնը 1080 թ. հիմնում է Կիլիկիայում անկախ հայկական իշխանութիւն, որ 12րդ դարի վերջում դառնում է թագաւորութիւն ընդարձակ սահմաններով և յարատեւում է մինչեւ 1375 թ.: Այս նոր Հայաստանը ծովային մեծ առեւտրական յարաբերութիւն ունէր Եւրոպայի հետ եւ բարեկամական կապեր՝ մօտիկ խաչակիր իշխանութիւնների հետ, միաժամանակ եւ չէր կտրուած Մեծ եւ Փոքր Հայաստանների հետ հաղորդակցութիւնից. նա շուտով ծաղկում ու բարձրանում է եւ՛ քաղաքա-*

---

*տէորդու երկու թղթերն առ Գրիգոր Տղայ տե՛ս «Արարատ» ամսագիր 1893, էջ 321 եւ հտն., իսկ «Թուղթ վարդապետացն Հայոց հիւսիսային կողմանցն... առ... տէր Գրիգորիոս» տե՛ս Ընդհանր., Էջմ., էջ 426 եւ հտն.:*

*1 Բնագիրը ֆրանսերէն թարգմանութեան հետ տպուած է Փարիզում.* **Dulaurier,** Recueil des Historiens des Croisades, Historiens Arméniens.

կանապէս, ե՛ւ տնտեսապէս, հանդիսանում է մի նոր կուլտուրական վայր իր բազմաթիւ նորաշէն վանքերով: Գրականութեան մէջ աչքի ընկնող ներկայացուցիչը 12րդ դարում է Ներսէս Լամբրոնացին:

Լամբրոնացու մեծ պապը, Օշին անունով մի ազնուական, Գանձակի կողմերից 1073 թ. տեղափոխւում է Կիլիկիա, ուր կուսակալ էր նրա ծանօթ ու բարեկամ Ապլղարիպ Արծրունի իշխանը: Սա տալիս է Օշինին Լամբրոն ամուր բերդը Տորոսեան լեռների մէջ: Օշինը եւ նրա որդին՝ Հեթում մնում են կայսերական ծառայութեան մէջ եւ դառնում են այն կողմերի յայտնի իշխանները: Այդ Հեթումի դուստրներից մէկի հետ ամուսնանում է Ներսէս Շնորհալու մեծ եղբայրը՝ Վասիլ: Հետագայում Հեթումի որդին՝ Օշին անունով՝ Շնորհալուց թաքուն կին է առնում Շնորհալու կրտսեր եղբօր Շահանի, նոյն եւ Զօրավարի Շահանդուխտ դուստրը: Այս Օշինի եւ Շահանդուխտի զաւակն է Սմբատը, ապագայի Ներսէսը, որ ծնուել է 1153 թ., վախճանուել 1198 թ.: Ստնդեայ ժամանակ ծանր հիւանդացել է նա, եւ ծնողներն ուխտել են իրենց որդուն, եթէ առողջանայ, նուիրել եկեղեցու ծառայութեանը: Ուստի մանուկ հասակից նա կրօնական կրթութիւն եւ ուսում է առել Սկեւռա վանքում, որ շինել էր իր հայրը, եւ յետոյ՝ Ներսէս Շնորհալու մօտ կաթողիկոսարանում: Այստեղ նա սովորել է նաեւ յոյն, ասորի, լատիներէն լեզուները: Շնորհալին նրան տուել է կուսակրօն քահանայի կարգ՝ մկրտութեան՝ Սմբատ անունը փոխելով ի Ներսէս, եւ յետոյ, երբ նա դեռ քսաներկու տարեկան երիտասարդ էր, Գրիգոր Տղայից ձեռնադրուել է եպիսկոպոս եւ նշանակուել Տարսոնի, Լամբրոնի եւ Սկեւռա վանքի առաջնորդ:

Մեծանալով Շնորհալու ձեռի տակ՝ Ներսէս Լամբրոնացին սիրում է ուսումն եւ գիտութիւնը, եւ վաղ երիտասարդական տարիքից արդէն անխոնջ պարապում է գրականութեամբ՝ անելով թարգմանութիւններ եւ յօրինելով մեկնութիւններ եւ այլ կրօնական երկեր: Բացի այդ՝ ազդուելով Ներսէս Շնորհալուց՝ նա սերտ փարում է եկեղեցիների միութեան խնդրին, այդ նկատմամբ հետեւում է իր մեծ ուսուցչի, յետոյ եւ Գրիգոր Տղայի ուղղութեանն ու հայեացքին: Չափազանց ցաւում է, որ միութեան գործն անկատար է մնացել: Սիրել է եւ միանձնական կեանք՝ իտէալ ունենալով Գրիգոր Նարեկացուն:

«Ուսումնասիրելով օտարների մէջ տիրող եկեղեցական կարգ ու սարքը, եւ բաղդատելով Հայերի մէջ տիրացած անկարգութիւնների հետ, որոնք հետեւանք էին քաղաքական աննախանձելի ու վարատական կացութեան, Լամբրոնացին սկսում է սիրահարուել ուրիշների մօտ տեսածին»[1] եւ ինքնագլուխ ինչ-ինչ փոփոխութիւններ եւ նորութիւններ է մտցնում եկեղեցու կարգերի մէջ: Արեւելեան վարդապետները դժգոհում են նրա ընթացքից եւ այդ մասին յայտնում են Կիլիկիա Լեւոն Բ.ին, որ արեւելցիներին հաճելի լինելու համար յօժարում է Լամբրոնացուն հեռացնել իր մօտից: Այս հանգամանքներն ահա՛ առիթ են ընծայել Լամբրոնացուն յօրինելու իր նշանա-

1 Մ. Օրմանեան, Ազգապատում. Կոստանդնուպոլիս, 1912, էջ 1479 եւ հտն. էջ 1518 եւ հտն.:

ւոր Ատենաբանութիւնը եւ գրելու Լեւոնին ուղղած Թուղթը[1]: Ատենաբանութիւնը, ըստ վերնագրին, խօսուած է «Յաստատուածախումբ եւ ի տիեզերական ժողովն Տարսոնի», որ տեղի է ունեցել 1197ին: Դա «միութեան խնդրին ի նպաստ եռանդուն եւ պերճաբան յորդորական է», «ազգային գործերի քննադատութեամբ»: Լեւոնին ուղղած Թուղթը գրուած է լի զայրոյթով իր հակառակորդների դէմ. արեւելցիներին համարում է «տխմարք եւ անկարգք եւ յիմար բանից չաղակրատողք»: Ակնարկելով Գրիգոր Տուտէորդուն եւ Քոբայրեցուն՝ գրում է. «Ի Ձորոյգետ երկուց արանց, որք իբրեւ զշունս լիրբս հաչեն՝ զկա՞մս հաճեմ, որք վասն զԱնեցի արբեալն ի գուսանաց եւ յորովայնամոլութենէ, յարբեցութենէ ի կաթողիկոսութիւն քարշելոյ՝ զմեզ նախատեն» (էջ 232): Անեցին՝ Անի քաղաքի Բարսեղ եպիսկոպոսն է: Եւ այսպիսի նախատական խիստ խօսքերով նա անարգում է իր արեւելեան հակառակորդներին: Եկեղեցական պատմութեան համար կարեւոր այդ երկու գրութիւնները եթէ ՝մի կողմից՝ վաւերագրեր են ժամանակի բարքերի համար, միւս կողմից՝ ճշգրիտ բնութագրում են իրեն՝ Ներսէս Լամբրոնացուն իբրեւ համարձակ, բուռն եւ եռանդոտ, բայց եւ կրքոտ ու յուզուող, տաքարիւն ու բռնկուող մի մարդու, որ իրեն զսպել չգիտէ: Բայց դրանք միաժամանակ եւ լաւ ապացոյց են նրա հռետորական շնորհքին:

2. Համբարձման Ներբողեանը:— Ն. Լամբրոնացու ճարտասանութիւնն աւելի եւս փայլուն է նրա Հոգեգալստեան եւ Համբարձման ներբողեանների մէջ[2], որոնցով նա հանդիսանում է տաղանդաւոր հռետոր, լաւագոյն ներկայացուցիչը մեր հոգեւոր պերճախօսութեան. ուստի եւ այստեղ մանրամասն, հարկաւ, մեծ կրճատումներով, տեսնենք նրա Համբարձման ներբողեանը, քանի որ մեր հին դրականութեան այս տեսակի երկերից ոչ մէկի վրայ առանձնապէս կանգ չենք առել: Նա բնականաբար կիրառում է ամէն տեսակի ճարտասանական ձեւեր՝ դիմում, բացադարձութիւն, ձայնարկութիւն, հարցում, նմանութիւն, կրկնութիւն եւ այլն: Դրանք նա բանեցնում է վարպետօրէն, ոճի պէսպէսութեամբ: Կրկնութիւններով էլ, օրինակ, նրա ասացուածը ոչ թէ թուլանում է, ճապաղ ու ձանձրալի դառնում, այլ, ընդհակառակն, զօրանում եւ դրաւչութիւն է ստանում: Ամէնն ասում է նա վայելուչ դարձուածներով, ոչ սակաւ բանաստեղծական պատկերներով, յորդ ու ծաղկուն, բայց պարզ ու մեկին ոճով, առանց կուտակաբանութեան, հեռու մըթնութիւնից եւ բարդ ու պարբերական ասացուածներից: Ֆրազները յաճախ ետեւէ ետեւ կազմում է երկ–երկու խօսքից, ինչպէս երկատող տները բանաստեղծութեան մէջ, դրանով որոշ չափականութիւն եւ կշռական դաշնակաւորութիւն առաջ բերելով: Բայց Լամբրոնացու ներբողեանի գեղեցկութիւնը

---

1 Տպագրուած Վենետիկ, 1865, «Ընտիր մատենագիրք» շարքի մէջ «Գրիգոր Կաթողիկոս Տղայ, Ներսէս Լամբրոնացի», նախ՝ «Գրիգորի կաթողիկոսի Տղայ կոչեցելոյ նամականի», էջ 5–90. յետոյ՝ «Ներսեսի Լամբրոնացւոյ Տարսոնի եպիսկոպոսի ատենաբանութիւն», էջ 93—205. Թուղթ, էջ 207—248. Ճառք, էջ 249—326:

2 Անդ, էջ 249—289. «Բարեբանութիւն ներբողական գովութեամբ ի Համբարձումն տեառն Յիսուսի Քրիստոսի յերկինս»: Էջ 290—326. «Ներբողեան ասացեալ ի Հրաշափառ գալուստ Հոգւոյն սրբոյ»:

միայն արտայայտական ձեւերի մէջ չէ, այլ աւելի եւս նրա ներքինի, ճառի ամբողջ կառուցուածքի եւ լիրիզմի մէջ։

Սկզբից հէնց նա իր բնաբանին պատշաճ մի շարք դիմումներով դրսեւում է ժամաւոր ունկնդիրների ուշադրութիւնը եւ զարթեցնում նրանց հետաքրքրութիւնը՝ կենդանի հաղորդակցութիւն ստեղծելով իր եւ նրանց միջեւ, ինչ որ հարկաւոր է ամէն ճառախօսի։ «Ցնծա՛ այսօր, հա՛րսն ողջախոհ, եկեղեցի՛ հեթանոսաց, ի պատիւ յիշատակի փեսային քո Քրիստոսի խորհրդոց»։ Այսպէս է սկսում նա այդ ճառը եւ ապա շարունակում. «Պարեցէ՛ք, ո՛վ մանկունք առագաստի, այսօր ուրախութեամբ, զի հաստատեցաւ սիրտ ձեր ի հանդէս փառաց նորա մեծութեան։ Զուարճացեալ խրախոյս խընդութեան հարէք ի մէջ տաճարիս, զասպե՛տք դասուց հանդիսի ժողովոյս։ Քանզի ահա այսօր լրումն փափաքանաց ձերոց յերկինս երկնից կառուցեալ ամրացաւ։ Ո՛վ արեամբ փրկեալ ամբիծ գառինն՝ սեպհական ժողովուրդք... այսօր եկա՛յք բարձրացիք սլացեալ ընդ նմին թեւօք հաւատոյ ի փառս երկնաւորս, յոր մտեալ նստաւ ընդ աջմէ հօր, առհաւատչեայ եւ ճանապարհ ամենեցուն ձեզ»։ Ապա իրեն դառնալով՝ ասում է. «Այլ ինձ, որ զտարտամութիւնս ընթադրեալ՝ պաշտպան կացի աւուրս մեծի, ո՛վ տայր հաւասարել խորհրդոյս եւ զամենեսեան զձեզ սխրացուցանել՝ իմաստութեամբ տօնելոյս»։ Յետոյ մի մի կարճ ասացուածներով յիշեցնելով հրեշտակների երգակցումը սքանչելի փառքի տօնին, առաքեալների պչած սքանչացումը եւ մարգարէների օրհնութեան երգերը՝ բացականչում է. «Ո՛վ դուք եկեղեցւոյ մանկունք, բարձեալ զձայնս քաղցր եղանակաւ՝ սաղմոս ասացէք Աստուծոյ մերում, սաղմոս ասացէք թագաւորին մերոյ, սաղմոս ասացէք»։

Անպայման մեծ է եղել ջերմ հաւատով եւ անկեղծ ոգեւորութեամբ ասուած այս խօսքերի ազդեցութիւնը հաւատացեալների վրայ, բայց այդ չի բաւարարել ճառախօսին. ուստի իսկոյն հառաչում է նա՝ «Այլ աւա՛ղ, զի հեղգութիւն մեր ծանրացեալ ի զբաղմանէ մարմնոյ՝ հաւանել հրամանիս վերջացաւ, եւ զճաշակ համեղ պիտութեանս՝ ջամբել անձին երգօք օրհնութեամբ՝ յուլացաւ։ Քանզի որպէս մարմնոյ ոչ է մի տեսանելն զյագեցուցիչ իւր համադամս՝ եւ ճաշակելն, այսպէս ո՛չ է հաւասար լսել զբանս Աստուծոյ, եւ ո՛չ խուզողական հանճարովն որոնել. զի այսու պարարեալ բերկրի, եւ այնու երբէք ոչ մխիթարի»։ Շարունակելով զարգացնել ասածը՝ բերում է մի ուրիշ նմանութիւն, թէ մարդուս կեանքի համար բաւական կը լինէր մէկ տեսակ կերակուր, բայց նրա մարմնին տրուած են զանազան պտուղներ ու կերակուրներ, որպէսզի իւրաքանչիւրի էլ համ ու հոտն առնի եւ զուարճանայ։ Այսպէս եւ նրա հոգուն տրուած են մէկից աւելի կերակուրներ — զանազան աստուածային տօներ, իրենց առանձին խորհուրդներով եւ անուշահոտ բուրմամբ, որպէսզի նրանցով զուարճացնի իր մտաւոր գիտութիւնները։

Եւ անմիջապէս կորովի ձայնով կանչում է Սատանային, իբրեւ ամենամեծ թշնամուն. «Ո՞ւր ես, անզե՛ղջդ ի չարիս բանսարկու. ո՞ւր դու, զըրպարտի՛չ դատախազ. ե՛կ այժմ կա՛ց մեզ առընթեր, ոչ իբր զսիրելի, այլ իբրեւ զթշնամի» եւ այլն։ Եւ այսպէս շարունակում է մի մեծ շարք խօսքեր, որոնցով Սատանայի տկարութիւնն ու պարտութիւնն է մէջ բերում,

ամաչեցնելով ու խայտառակելով նրան, եւ փառաւորում է Համբարձումը, մինչ այնպէս ճառելով, որ կարծես Սատանան կողքին կանգնած լինէր: Եւ նա հաւատում է դրան եւ հաւատացնում է իր ունկնդիրներին: Հաւատում է, որ՝ ինչպէս հին դիւթերը, երդմնեցուցիչները սաստում էին չար ոգիներին, ինքն էլ իր այդ խօսքերով դուրս է քշել Սատանային: Ուստի իր ճառի այս նախաբանի վերջում աւելացնում է. «Զայսոսիկ առ բանսարկու թշնամին ի դէպ էր մեզ ի սկզբանս բարբառել, եւ զմախանօք յաչաղօղն ի ժողովոյս մեր ամօթով արտաքս վարել եւ ապա զհոգեւոր սեղանս բարեկամացդ սփռել եւ զամենեսեան կերակրել»:

«Հոգեւոր սեղանի», այսինքն ճառի կենտրոնական մասի նիւթն է, «(1) թէ զի՛նչ հարկ Աստուծոյ իջմանն ի յերկիր, (2) կամ այսօր՝ ուր էնն ի յերկինս՝ փառօք համբարձմանն»: Այս խնդիրներից առաջինն է փրկագործութեան խորհուրդը, փրկիչ Յիսուսն իբրեւ մարդ յաղթել է մեղքին. մարդս հետեւելով նրան՝ նոյնպէս պիտի յաղթի մեղքին եւ վերադառնայ իր առաջին հայրենիքը. «Պարտաւորքս որբեալք առ Աստուած դարձցուք»[1]: Այս խորհուրդը համառօտակի, թէթեւ, աշխոյժ ոճով բացադրելուց յետոյ՝ անցնում է երկրորդին՝ Համբարձմանը, որ ճառի բնաբանն է: Նոր Կտակարանի փոքրիկ պատմութիւնն եւ աւանդութիւնն ընդարձակում է՝ ստեղծելով մի վիպական երկ պատկերների ու տեսարանների բնութագիրների եւ խօսքերի մանրամասնութիւններով, մինչ աշխատելով ազդելու ժամաւորների երեւակայութեան եւ զգացմունքների վրայ: Եւ այստեղ երեւում է նրա մեծ շնորհքը:

Յիսուս իր աշակերտների հետ Ձիթենեաց լեռան վրայ է եւ այնտեղից սկսում է երկինք վերանալ. «Ի վայրն՝ ուր ուսան զճառս նորին թշնամեաց. եւ ուր լուան զբանս չարչարանացն եւ երկեան, ծանուցեալ զփառաւոր համբարձումն՝ բերկրեցան: Ի լեառն՝ ուր տեսին զնա յաղօթս տարակուսանօք, անտի տեսին զնա սլացեալ ընդ ամպս լուսեղէն փառօք... Ի Կեդրոնեան ձորոյն՝ ուստի տարան զնա ի խաչ սուսերօք, ի նմանէ ամբարձաւ ի կառս քրովբէից նուրբ հողմոցն թեւօք»:

Հանդէս է գալիս ամենից առաջ Յիսուսի մայրը. «Մայրն՝ ուր խոցեցաւ յայնժամ ի նախատանացն սայրասուր սլաքօք, այժմ տեսանէ զորդին իւր թագաւոր պճնեալ պսակօք... Վասն այսորիկ ցնծայր, հրճուէր, եւ այսպիսի ինչ ի բարձրանալն որդւոյն զկնի բարբառ արձակէր.

— Այսօր սիրտ իմ հաստատեցաւ, և բերան իմ յարձակեցաւ ի վերայ թշնամեաց, ո՛վ անդրանիկ իմ եւ տէր, որ կափուցեալ տատանէր ի քո յանճառն խոնարհութենէ: Այսօր բարձրացուցեր զգլուխ մօր քոյ փառօք, որդի՛ իմ եւ Աստուած, որ լռութեամբ կորանայր ի բամբասելն զկուսութիւն իմ յուզթի բժժանօք: Այսօր պայծառացուցեր զդէմս իմ՝ նշուլից հետոց տինդ ճառագայթիւք, որ ի ժամ չարչարանաց քոց զգեցաւ սուգ՝ մթին սուսերօք...»:

Ապա Մարիամը դիմում է առաքեալների դասին, որ հաղորդակից լինեն իր ցնծութեանը.

---

1 Վերեւում յիշուած «Ընտիր մատենագիրք...», էջ 529 եւ հտն,:

— Ո՛վ Պետրէ, ընդէ՞ր լռես․ ահա հրեշտակք ակումբ առեալ եղանակեն շուրջ զվարդապետաւն քո զօրհնութիւնս․ ա՛ռ զգունդս քո, եւ խառնեա ի պարս նոցա, երգակցեա՛, տալով օրհնութիւն այնմ՝ որ օրհնեաց զերկիր զալստեամբ իւրով, եւ պայծառացոյց զերկինս ընթացիւք իւրովք… Օդդահա արտափայլէ ի փառաց նորա, եւ երկինք խոնարհի ընդ ոտիւք նորա, եւ բարապանք նորին բանան զդրունս մտից նորա․ դուք մինչեւ ցո՞ր վայր պշուցեալ՝ կամիք տեսանել զընթացս նորա:

Բայց Յիսուսի աշակերտների ուշքն ուրիշ բանով է տարուած: Յարութիւնից յետոյ փոխուել է նրանց վերաբերմունքն առ իրենց ուսուցիչը․ «Եւ այնուհետեւ սկսան յայլ դէմս կերպարանաց պատիւ տեառն եւ վարդապետին առնել․ ի նայելն ընդ նա զարհուրէին, յիշելով զթեւասքօղեալ սերովբէն… Ի խօսելն պատկառէին… Սէրն բորբոքեցաւ ի սիրտ նոցա նորոգապէս… յայս կոյս յայն կոյս ընթանային ամօթխածութեամբ եւ հայէին ի դէմս նորա անյագ փափագմամբ…»: Այսպիսի հոգեկան վիճակի մէջ էին նրանք, երբ Յիսուս ձեռները բարձրացնելով՝ օրհնեց նրանց, «եւ անդէն փութապէս մեկնեալ՝ սկսաւ վերանալ յերկինս: Իսկ նոքա սրտաթափ յուսակտուր խոնարհեալ, զերկիր համբուրեալ՝ շնորհ ունելով օրհնութեանն, յարուցեալ փութապէս եւ երագ պշուցեալ նայէին ընդ երկինս յերթալն նորա»:

Նրանք յոգնում են դէպի վեր պշնած նայելուց: Ահա տեսարանի մէջ շարժում է մտնում․ գալիս են երկու բարեկամ հրեշտակներ՝ նրանց սփոփելու եւ դէպ երկինք նայելը դադարեցնելու: Ասում են․

— Արք գալիլեացիք, այժմ զի՞ կայք հայեցեալ ընդ երկինս անջրպետութեամբ ամպոյդ որոշեալք ի սիրելւոյն: Այս Յիսուս որ վերացաւ ի ձէնջ՝ սոյնպէս դարձեալ եկեսցէ: Արդ դարձիք սպասեցէք սորա կրկին գալստեանն…:

Աշակերտները հարցնում են․

— Եւ զի՞նչ լիցուք աշակերտքս յանկարծ բաժանեալք ի վարդապետէն … Մեզ զի՞նչ տայք մխիթար, ո՛վ զուարթունք, ի տրտմութեան եւ ի ցնծութեան միջի վարանեալ աշակերտացս․ ցնծութիւն՝ զի տեսաք զնա յայնպիսի փառս ճոխացեալ, եւ տրտմութիւն զի ստորեւ ի նմանէ եղաք աստ մնացեալ:

Հրեշտակներն ասում են․

— Արք գալիլեացիք, մի՛ հիանայք, ցնծացէք, զի գայ համբարձեալս ի յերկիր, եւ պսակէ զամենեսեան զձեզ ի նորոգութիւն յարութեանն հրաշապէս…:

Եւ ճառախօսը հրեշտակի բերանով նկարագրում է մի ուրիշ տեսարան․ նա ունկնդիրների երեւակայութեան առաջ բանում է աշխարհի վերջը, երբ Յիսուս փառքով կ՚իջնի երկնքից երկիր, նրա հետ բոլոր հրեշտակները, մարդիկ էլ գերեզմաններից ամպերի վրայ ընդ առաջ կը թռչեն:

Դարձեալ փոխւում է տեսարանը․ հրեշտակները նորից դառնում են համբարձմանը:

— Ահա դուք տեսաք, — ասում են նրանք, — թէ ինչպէս սլացաւ նա, եւ թեթեւ քայլելով օդերի վրայ՝ սքանչելապէս բարձրացաւ ու ձեր մարմ-

նական աչքերից ծածկուեց ներքեւի ամպով: Այժմ բացէք ձեր մտաւոր աչքերը եւ դէպի երկինք յառեցէք՝ «ուսանել խորհուրդս անպատումս»:

Ի՞նչ է դա:—Այդ հասկանալու համար՝ դիմենք այստեղ հետեւեալը քրիստոնէական զրուցաբանութիւնից: Հին հայեացքով ամպերից վեր, տեսանելի երկնքից դէնը, էր երկնային զօրութիւնների կամ զուարթունների վայրը: Ներսէս Շնորհալու ըստ Դիոնիսիոս Արիսպագացու գրած մի աշխատութիւնից, որի մասին խօսուեց վերեւում, իմացւում է, որ նրանք, այդ երկնայինները, բաժանւում են ինը դասերի, որոնց ամէն երեքը կազմում են մի կարգ: Բարձրագոյն կարգի մէջ են՝ Սերովբէներ, Քերովբէներ եւ Աթոռներ. յետոյ գալիս են՝ Տէրութիւններ, Զօրութիւններ եւ Իշխանութիւններ. իսկ ստորին կարգի մէջ են՝ Պետութիւններ, Հրեշտակապետներ եւ Հրեշտակներ: Այս երկնային «հոգեղէնները» բոլորն էլ ընդհանուր անունով կոչւում են Զօրութիւններ կամ Զուարթուններ կամ Հրեշտակներ. բայց «հրեշտակ» կոչւում են սովորաբար իններորդ դասի զուարթունները միայն, եւ Ներսէս Լամբրոնացու այս ճառի մէջ «հրեշտակ» բառը միայն այդ նշանակութեամբ է գործածուած: Նրանք, լինելով վերին երկնքի ամենացած մասում, երկրին աւելի մօտ են եւ երեւում են մարդկանց, նոյնպէս երբեմն նաեւ հրեշտակապետները, առանձնապէս Գաբրիէլ եւ Միքայէլ:

Դառնանք Լամբրոնացու ճառին:

Նրանք, հրեշտակները, մարդկանց վերակացուներն են, տեղեակ են մարդկային գործերին, ուստի գիտէին, թէ ո՛վ է երկինք համբարձողը: Վերին կարգի երկնայինները մօտ են Աստուծուն, որի կամքը եւ նրանք հաղորդում են ցածի կարգերին: Բայց նրանք հեռու լինելով երկրից, չգիտէին, թէ ո՛վ է վեր համբարձողը: Ուստի իններորդ դասի հրեշտակներն այդ մասին տեղեկութիւն են տալիս վերիններին. «քանզի Աստուած ի ստորնայնոցս ի վեր ելանէ», ասում է Յիսուսի աշակերտների հետ խօսող հրեշտակը, որ ինքն էլ ստորիններից էր: Յիսուս, ուրեմն, ամբառնալիս նախ հանդիպում է իններորդ դասին—հրեշտակներին, յետոյ հետզհետէ բարձրանում է դէպի վերին դասերը, մինչեւ հասնում է «Հայր Աստուծուն» եւ նստում նրա աջ կողմը: Ներսէս Լամբրոնացու ճառի այս մասը յօրինուած է ահա՛ այս «երկնային դասակարգութեան» եւ այս քրիստոնէական զրուցաբանութեան վրայ. պատմւում է Յիսուսի համբարձման գործողութիւնը, նրա ընթացքն երկնայինների դասակարգութեան — հիերարխիայի միջով:

Երբ Յիսուս հասաւ իններորդ դասի հրեշտակներին, նրանք, որովհետեւ գիտէին, թէ ո՛վ է համբարձողը, ցնծութեամբ եկան նրան ընդ առաջ, — ասում է պատմող հրեշտակը եւ շարունակում, թէ՝

«Ոմանք զդրունս աւետարանին համբառնալ, եւ ոմանք զթագաւորէն հարցանէն ուսանել: Ներքինքս անուանեն զնա Թագաւոր փառաց եւ վերինքն տարակուսին, թէ ո՞վ է սա Թագաւոր փառաց, որ ընդ երկինս ճանապարհ ի յերկրէ առանց օգնականի ինքնիշխանութեամբն հորդեաց: Գաբրիէլեանքն աղաղակէին. «Տէր զօրութեամբ իւրով, տէր կարող ի պատերազմի». եւ Միքայէլեանքն հիանան. եւ «Զի՞րդ կարմիր ունի հանդերձ զ՚ի գոյն արեան եւ մարմնոյ»... Նրանք բողոքում են Յիսուսին եւ աղաղակում.

— Տէ՛ր ամենակալ, մինչեւ ե՞րբ ոչ ողորմիս վերինս Երուսաղէմի, եւ քաղաքացն դրախտին, ուստի արտաքս ձգեցեր զերի զբնակիչն զԱդամ...

Յիսուս մխիթարական խօսքերով պատասխանում է.

— Փրկեաց զնոսա բազուկ իմ, և սրտմտութիւն իմ միայն զդէմ կալաւ:

Հրեշտակներն ու հրեշտակապետները լսելով, որ մարդկային ազգը փրկուած է, ցնծում ու հրճւում են եւ ուղեկցելով համբարձող արքային՝ ձայն են տալիս վերիններին, որ չտապեն ճանապարհ բանան:

Եւ մինչդեռ հրեշտակներն ու հրեշտակապետները եւ սերովբէներն ու քերովբէները խօսում էին միմեանց հետ, — շարունակում է պատմող հրեշտակը դառնալով դէպի աշակերտները, — ինքը Յիսուս, որ հրեշտակների դիմացից էր գնում, առաջ անցնելով այսպէս պատասխանեց վերին դասերին.

— Ես եմ որ խօսիմ զարդարութիւն եւ իրաւունս փրկութեան. ես եմ որ իրաւամբք եւ արդարութեամբ յաղթեցի եւ կոխան զթշնամին հակառակամարտ՝ արարի. ես եմ որ զգերեալ ազգ մարդկան փրկեցի, եւ դարձեալ զյոյս նոցին յերկինս ուղղեցի. ես եմ որ զթշնամութիւն ի մարմին իմ սպանի, եւ խաղաղութիւն յերկինս եւ յերկրի արարի:

Վերին դասերը հարցնում եւ ասում են.

— Եւ զի՞ կարմիր են, ասեն, պատմուճան քո եւ հանդերձ քո՝ իբրեւ զհնձանահարի լիոյ հնձանի կոխելոյ... Արդ զի արարեր զայս ամենայն աստուածապէս՝ հաւատամք. մարմնոյ հանդերձ արիւնդ ընդէ՞ր զգեցեալ ես ի վերայ աստուածութեանդ փառաց, եւ բոսորատիպ գունովդ զնոյն պաճուճեալ... Եւ զի կարելի է աքանչելի գործ յերկրի անմարմնոց զօրութեանց՝ հաւատամք. բայց դու ահա տկար պատմուճանաւդ վանեցեր զմեծամեծ մարտս՝ հիանամք, եւ զյեղանակ բազմապատիկ իմաստից քոց ուսանել ըղձանամք. յայտնեա՛ իշխանութեանց եւ պետութեանց երկնայնոց զնորոգ արուեստի քոյ իմաստս, Աստուա՛ծ մեր եւ տէր:

Յիսուս պատասխանում է.

— Ոչ թէ որպէս դուք կարծէք, ասէ, աստուածային զօրութեամբ իմ, ո՛վ երկնաւորք, ի գլուխ ածեալ զմարդկան փրկութիւն ուղղեցի, եւ ոչ թէ կառք եւ երիվարք հրեշտակացդ ինձ ի մարտս պաշտպանեցին... այլ փրկեաց միայն բազուկ իմ, եւ սրտմտութիւն արդարութեան մարմնոյս իմոյ միայնակ առանձինն կացեալ ընդդէմ՝ կոխեաց զթշնամիսն: Միայն ի լեառնն պէսպէս փորձութեանցն յաղթեցի... Միայն ընդ մաքսաւորսն ճաշակեցի... Միայն ի խաչին չարչարանս դիմեցի... Զէն ոչ առի ի ձեռս զհրեղէն ձեր սուր, այլ տկար մարմին... եւ այսպէս պատերազմեալ յաղթեցի աշխարհի: Վասն այսորիկ արդարութեամբ իմով եւ կամաւոր մահուամբ զմեղաց մարդկան զմուրհակն պատառեցի. եւ այժմ ելանեմ նստել ընդ աջմէ հօր, բարեխօս եւ քահանայ հօտին իմոյ, զոր պատուական արեամբ իմով գնեցի:

Այս որ լսում են հրեշտակների գնդերը, — շարունակում է պատմող հրեշտակը, — զարմանում են, որ նա իբրեւ տկար մարդ յաղթել է սատանային: «Սկսան ապա նոր եղանակաւ զերգս նմին վերերգել, եւ զմարդիկ ի կցորդութիւն օրհներգութեանն իւրեանց ժողովել:

— Ծափս հարէք, ասեն, ա՛զգք հեթանոսաց, համաձայն քաղցր երգոցս հրեշտակաց, եւ աղաղակեցէք ընդ մեզ փառաց Թագաւորիս ի ձայն ցնծութեան զովութիւն օրհնութեան... Ահա մատնէ քահանայապետս առ Աստուած պատարագաւն հաշտութեան... եւ առնէ խնդրուածս վասն ձեր փրկութեան. «Հա՛յր, կամիմ զի ուր եսն եմ ի ծայրագոյն գահոյս... մտցէ եկեղեցի իմ տեսանել զփառս զոր ստացայ... Հա՛յր, զորս ետուր ինձ գինք արեան ժողովուրդ սեպհական, սիրեցի ի չափ սիրոյ քոյ ընդ միածնիս հաճութեան, եւ բարեխօսեմ ածել զնոսա ի պատիւ փառացս իմ հաւասարութեան»: Ուրեմն մարդկային ազգի փրկութիւնը կամ նրա բարձրացումն, աստուածային դառնալը:

Այստեղ վերջանում է երկու հրեշտակների խօսքը: Անմիջապէս հետեւում է ճառի վերջաբանը, որի մէջ ճառախօսն արտայայտում է իր սեփական զգացումները՝ խօսքն ուղղելով նորից եկեղեցուն, այսինքն քրիստոնեայ ունկնդիրներին, եւ յորդորելով նրանց, որ հետեւեն Յիսուսին. «Ո՜վ մեծի շնորհիս, — բացագանչում է նա, — ո՛վ անճառ երախտեացս, որում արժանի գտար, եկեղեցի՛, ի համբառնալս Քրիստոսի... Ա՛րկ ի բաց զքօղ տգեղութեան երկրաւոր սահեցման... Խարիսխ քո յերկինս, դու ընդէ՞ր ի խոտորինս կորանաս... Աստի օ՛ն հրաւիրեցար գնալ ի յերկրէ յերկինս, յապականութենէ յանապականութիւն, ի միջոյ կարճաց ի հրեշտակաց դասակցութիւն: Դարձիր յունայնութեանց եւ կեցո՛ զոտս քո յուղիղ պողոտայն զի...արժանի լիցուք յետ ելիցն աստի՝ երկնային տանն օթեւանացն...»:

Այսպէս՝ Ներսէս Լամբրոնացին իր Ներբողեանի բուն մասի մէջ զուարթ եղանակով նկարագիրներ է անում, բեմ հանում գործող անձեր եւ նրանց խօսել տալիս միմեանց հետ: Յիսուսի մայրը, Պետրոս առաքեալը, միւսները, ինքը Յիսուս, հրեշտակներն իրենց դասերով փոխ առ փոխ երեւան են գալիս ունկնդրի աչքի առաջ, հարցումներով դիմում իրար, պատասխանում, հիացմունք յայտնում, խօսում մեծ ցնծութեամբ ու հաւատով: Տեսարանները հետզհետէ փոխւում են, ամէն ինչ շարժւում է, կարծես՝ մի վէպ է պատմւում դրամատիկ ձեւով. ամբողջը կազմում է մի մեծ գործողութիւն, արագ ու եռանդուն ընթացքով: Ճառախօսը սկզբից մինչեւ վերջը մեծ աւիւնով ու սրտի զեղումով բանաստեղծում է ինչպէս մի քերթող, վառում է ունկնդիր ժամաւորների երեւակայութիւնը, նրանց տեսնել է տալիս իր պատմածը եւ լսել է տալիս գործող անձերի խօսքերը: Ահա թէ ի՛նչ է նրա արուեստի բնորոշ կողմը—ազդել ժամաւորների երեւակայութեան վրայ, առաջ բերել ոգեւորութիւն ու ցնծութիւն տօնի առթիւ: Այժմ իսկ՝ կարդալիս մարդ գրաււում է, հաճոյք ստանում նրա վսեմ, ազնիւ ու պայծառ խօսքից, ո՞ւր մնաց այդ գեղակազմ տղամարդի կենդանի բեմասացութիւնը լսող հաւատացեալներն այն դարում: Բայց Ներսէս Լամբրոնացին հետամուտ է ոչ միայն ազդելու եւ հաւատը մեծացնելու, այլեւ կրօնի ուսում տալու: Այս նկատմամբ էլ նրա ճառը շատ հարուստ է, բովանդակալից: Եւ նա սովորեցնում է քրիստոնէական «կրօնագիտութիւնը» յաճախ Ս. Գրքի բառերով ու խօսքերով ոչ միայն պատմելով, նկարագրելով, ուրիշներին խօսեցնելով, այլեւ նոյնիսկ մեկնելով, բայց այնպէս նուրբ ու թեթեւ եղանակով, որ չի զգացւում, թէ մեկնում է:

*Լամբրոնացու այս երկի վրայ դիտմամբ աւելի երկար կանգ առանք, զի դա մեր ընտիր ճառերից մէկն է, միանգամայն եւ մի պայծառ օրինակ է, թէ ինչպէս այս գրական տեսակը մնացել է նոյն հին կրօնական ներբողեանը, բայց փոխուել է ձեւի եւ ամբողջ յօրինուածքի գեղեցկութեամբ: Այդ բխում է ոչ միայն հեղինակի տաղանդից, այլեւ ընդհանուր նորոգիչ ոգուց: Ներբողեանի կամ ճառի այս գեղազան վերաճումն էլ մի արտայայտութիւն է նոր մտաւոր հոսանքի. ո՞ւր Լամբրոնացու այս ճառը, եւ ո՞ւր նման թեմաներով հին ճառերը:*

3. Ուրիշ աշխատութիւններ:— *Ինչպէս վերեւում ասուեց, մեր այս հեղինակը շատ վաղ հասակից սկսել է շարադրել եւ անդուլ ջանքերով գրել է բազմաթիւ երկեր*[1]*: Նրանից մնացել են բացի արդէն յիշուածներից՝ նաեւ ուրիշ թղթեր ու ճառեր, շատ մեկնութիւններ, այլեւ չափածոյ գրուածքներ — շարականներ եւ ուրիշներ, որոնք մեծ մասամբ կրօնական բովանդակութիւն ունեն: Նրա յօրինած հոգեւոր երգերը չունին բանաստեղծական արժէք. համբարձման շարականների մէջ, օրինակ, նոյն՝ քրիստոնէական դրուցաբանութիւնն է յեղյեղւում սառն եւ անպաճոյճ. բայց դժուար թէ ամբողջ կանոնը*[2] *մեր այս հեղինակի գործը լինի: Փոքր ինչ եռանդուն եւ խմաստալից է Զատկի կանոնի յայտնի օրհնութիւնը*[3]*.*

*Այսօր յարեաւ ի մեռելոց*
*Փեսայն անմահ եւ երկնաւոր,*
*Քեզ աւետի՛ք խնդութեան,*
*Հա՛րսն ի յերկրէ եկեղեցի.*
*Օրհնեա՛ ի ձայն ցնծութեան*
*ԶԱստուած քո, Սիօ՛ն:*

*Այսօր անճառ լոյսն ի լուսոյ*
*Լուսաւորեաց զմանկունըս քո…*
*Այսօր խաւարն անգիտութեան*
*Հալածեցաւ երրեակ լուսովն,*
*Եւ քեզ ծագեաց լոյս գիտութեան…*

*Ն. Լամբրոնացու ամենամեծ ոտանաւոր գրուածքն է՝ «Գովեստ ներբողական պատմագրական բանիւ յաղագս վարուց մեծի Հայրապետին տեառն Ներսէսի Կլայեցւոյ հայոց կաթողիկոսի»*[4]*: Այս 937 տողից կազմուած չափածոն յօրինուած է Ներսէս Շնորհալու հետեւողութեամբ ութավանկ տողերով. յանգերը փոխւում են մեծ հատուածներից յետոյ: Դա մի պոեմա, մի քերթուած է բառիս սկզբնական նշանակութեամբ իբրեւ արուեստով արուած մի գործ, կամ ինչպէս ընդհանրապէս կոչւում են ոտանաւորով յօրինուած երկերը, մանաւանդ երբ մի որոշ երկայնութիւն ունին եւ վիպում են որեւէ*

---

*1 Բազմաթիւ մեկնութիւններ, երեք թուղթ, հինգ ճառ եւ այլն: Տե՛ս Զարբ. Հանալեան, Հայկ. հին դպրութիւն, էջ 654—660:*

*2 Շարական, Էջմիածին, 1861, էջ Գ. 355 եւ հտն.:*

*3 Անդ, էջ 283:*

*4 Տպագրուած է ի «Թուղթ ընդհանրական… Ներսէսի Շնորհալւոյ», Էջմիածին, 1865 թ., էջ 461—497:*

դէպք։ Այդտեղ պատմւում է Շնորհալու կենսագրութեան մասին։ Բայց դա մի քնարական, լիրիկական քերթուած է, քանի որ դրա մէջ արտայայտուած են նաեւ հեղինակի զգացումները առ Շնորհալին. նա ոչ միայն պատմում է, այլեւ գովում, ներբողում է։ Այսպէս լինելով հանդերձ՝ նրա այս մեծ երկը, ինչքան էլ ոտանաւորով է յօրինուած, չունի առանձին գրական արժէք, որովհետեւ չի արտայայտուած բանաստեղծական ներշնչումով, կենդանի պատկերաւորութեամբ։ Որքան նա ջերմ, բուռն մի հռետոր է հանդիսանում իր ճառերի մէջ, այնքան պաղ ու թոյլ է իբրեւ քերթող։ Գուցէ այդպէս է մասամբ եւ այն պատճառով, որ նա անվարժ է եղել ոտանաւորներ հիւսելու.

...Զմինն յընտրելոց աչօք տեսի,
Գովել բանիւըս բաղձացի.
Այլ զի անվարժ ի չափ տաղի,
Ոտանաւոր տառից կարգի,
Քերթողական մեծ արհեստի
Զեղեալ ներհուն ըստ արժանի...

Եւ այսպէս վերացական մտածութեամբ է յօրինել նա այս «Գովեստն» ընդհանրապէս։ Չափազանց ներբողում, մեծացնում է Շնորհալուն, բնութագրելով նրան՝ իբրեւ տէր բազում ու բազմազան բարեմասնութիւնների. այդ ժամանակ մէկ մէկ նա դիմում է սովորական ձեւերի.

Բանիւքն աղբիւր յորդ հոսեցաւ,
Ծիծաղապէս ծաւալեցաւ,
Մինչ ընդ աշխարհըս ծովացաւ,
Եւ արբուցիչ մարդկան գըտաւ։

Հետեւեալ տողերը սակաւաթիւ գեղեցիկներիցն են.

Ծաղկեալ աղինք մեր փըթթեցան,
Երանդ երանդ գունով ներկան,
Ի նոր գարունս ուրախացան,
Շքեղ փառօք ճոխ փայլեցան.
Մարգագետինք եւ խաղ ցընծան,
Ցորդ անուշ հոտ բուրեցան...

Նպատակն եղել է իբրեւ «հետեւող» եւ «աշակերտ» գովելով պատմել Շնորհալու մասին, նրա վարքն ու արարքը.

Շարժեալ ստիպէ հարկ տէրունի
Ըզշարադրումն իմըս բանի՝
Նիւթ գովեստի տալ յապառնի
Հօրն որ արժան վարուք պատուի։

Այսպէս է սկսում նա իր երկը, եւ քիչ յետոյ գրում է.

Քանզի բազում հոգի բաղձայ
Տեղեկանալ զայս յարակայ,

Անյագ անուանըն սէր տենչայ
Տարաչխարհիկ հօտըն նորա.
Թաղծեալ ի սուգ նըստեալ ողբայ,
Մխիթարիլ կարօտանայ,
Ցորմէ երբեք ոչ թուլանայ,
Թէ նըշանակ վարուց չմնայ.
Եւ թէ պատմօղ ոք յառաջ գայ
Սիրովն ի բանս ուրախանայ...

Ներսէս Լամբրոնացին, ինչպէս ինքը գրում է.

Արձան կանգնեալ սըրբոյն յապայ:

Եւ իսկապէս, նրա այդ քերթուածը մի «արձան» է, որ ապագայ սերունդներին յիշեցրել է Շնորհալու կեանքն ու գրական գործունէութիւնը: Դա հեղինակի իրեն համար էլ մի յիշատակ է այն մասին, որ նա մեր գրականութեան մէջ սկիզբն է դրել մի նոր գրական տեսակի — ոտանաւորով կենսագրութեան: Լամբրոնացուն այս մասին հետեւել է իր աշակերտը, «Խաչատուր անունով մէկը, որ իր... վարդապետի վրայ գեղեցիկ ու քերթողաբան ողբ է շարադրել ոտանաւոր»[1]: Բայց մեզ յայտնի չէ, թէ այդ մի կենսագրակա՞ն է արդեօք, թէ՞ մի դամբանական ողբ, ինչպէս է Դաւթակ Քերթողի քերթուածը 7րդ դարում:

4. Թարգմանութիւններ:— Ներսէս Լամբրոնացին հմուտ է եղել օտար լեզուների, նրան են յանձնել թարգմանել պաշտօնական գրութիւններն ու նամակները, այլեւ «Գիր կարգաց յառին եկեղեցւոյ» եւ «Օրհնութիւն թագաւորի»[2]: Շատ նշանակալից են օրէնքների հաւաքումն ու թարգմանութիւնները, որ են՝ «Աւրէնք յաղթող թագաւորաց քրիստոնէից՝ Կոստանդիանոսի, Թէոդոսի եւ Լեւոնի», «Համառօտ ժողովումն օրինաց վերստին», «Աւրէնք եւ գիրք ի ձեռն Մովսիսի՝ յելից գրոց», այլեւ «Օրինագիրք մի քաղուած ի Ղեւտական գրոց»[3]: Բերենք այստեղ թարգմանչի հետաքրքիր յիշատակարանից հետեւեալը.

«Զայս ծայրաքաղ աւրինադրութիւնքս տառապեալ եպիսկոպոս Տարսոնի թարգմանեցի ի ծերացեալ հելլենացի մատենէ, թուին ՈԽԵ [=645+551=1196]... Ցամս քահանայապետութեանն Հայոց Գրիգորի[4], որ երրորդ էր նախնեացն իւրոց ի Հռոմկլայն, յաջորդ աթոռոյն, թուին ՈԽԲ [=642+551=1193], յութ եւ տասներորդ ամի նորին հայրապետութեան, խնդիր եղեւ առ նոյն սրբազանն ի քաղաքաց եւ ի գաւառաց բնակչաց՝ քաղաքական աւրինացն. զի որք Իսմայելացւոցն էին իշխանք ի քաղաքս եւ գաւառս՝ զդատ Հայաստանեայցս ոչ դատէին. այլ զխնդրողսն իրաւանց՝ առ իւրեանց աւրէնս առաքէին. զի այս էր ի նախադլուխ Մելիքացն հրա-

---

1 Զարբհանալեան, Հայկ. հին դպրութիւն, էջ 662. «Ողբք ի տէր Ներսէս արհին Տարսոնի, ասացեալ Խաչատուր պաշտօնէի, նորուն աշակերտի»:

2 Զարբհանալեան, Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ, 1889, էջ 500 եւ հտն.:

3 Անդ, էջ 750—755:

4 Գրիգոր Տղայ կաթողիկոսն է

*ման առ դատաւորս քաղաքաց՝ յիւրեանց յօրինացն զատ թողուլ զնոսին։ Եւ եկեալ ոմանք յեկեղեցին՝ հարցանէին աւրէնս ի քահանայից եւ ի քահանայապետաց. ոչ ունէին գիրս, որով ընտրեսցեն զիրաւունս. զոր եւ այլոց ազգաց տեսանէին՝ քրիստոնէից եւ մահմետականաց, այսինքն հոռոմայեցոց, հելլենացոց, ասորոց, եգիպտացոց, արաբացոց, պարսից եւ այժմու իշխողացս թուրքաց։ Ի խնդիր եկին ապա առ հայրապետս ի Հայաստանեայց՝ արթունք, կղերիկոսք եւ աշխարհականք, խեթկեալք յայլոց ազգաց եւ նախանձեալք զբարուոքն։ Եւ խուզեալ ընդ նա մեր՝ յարկեղս գրոց կաթուղիկոսարանին՝ ոչ գտաք աւրէն. բայց միայն զկանոնականս, որ ի սուրբ հարցն ժողովելոց էր գրեալ. եւ որ ի նոյն յարեցաւ ի նոցանէ կանոնս զգուշաւորս եկեղեցւոյ։ Իսկ* քաղաքի աւրէնս *ոչ գտաւ ի մէջ Հայոց, ոչ յեկեղեցիս եւ ոչ առ իշխանս։ Եւ՝ կարի վշտացեալ հայրապետն՝ խնդիր առնէր առ այլ ազգս եւ պատահեալ անդ յասորոց Թէոդոս անուն կիրթ յիմաստութեան քահանայ, յայտնեաց տեսանս զի գոյր առ ինքն այս համառօտ աւրինադրութիւնս, եւ հրաման տուեալ ինձ տառապեալ իւր ձեռնասուն որդւոյ Ներսէսի՝ յեղաշրջեցաւ ի հայս, նմին յիշատակ բարի, եւ զկնի եկելոցդ ուղղութիւն ընթացից։ Յետ որոյ ապա եւ ի հելլենացւոց արարի թարգմանութիւն մովսիսական աւրինացդ եւ Լէոնի եւ Կոստանդեայ աւրինացդ, ի նմանէ թարգմանեցի եւ* զզինուորական աւրէնքդ. *եւ ընծայեցի որոց սիրենն վարիլ սովաւ եւ հաճոյ գտանիլ Աստուծոյ, եւ կառավարիչք քաղաքաց եւ գաւառաց»։*

*Ներսէս Լամբրոնացին այս յիշատակարանի մէջ շատ լաւ բնորոշել է, թէ ժամանակի ի՛նչպիսի կարիքից են ծագել քաղաքական օրէնքների ժողովածուները, որ մինչ այդ չեն եղել Հայերի մէջ։ Բայց այդ միանգամայն եւ Կիլիկիայի հայ պետութեան պահանջն էր եւ վերածնութեան շրջանի նոր մտաւոր հոսանքի արդիւնքը։ Ճիշդ նոյն ժամանակներում, մի ութ-ինը տարի առաջ,* 1184 *թ. սկսել էր կազմել եւ Մխիթար Գոշն իր «Դատաստանագիրքը» հիւսիս-արեւելեան Հայաստանում՝ եւ այս ոչ թէ մահմեդականների ազդեցութեամբ, այլ օրինագիրք ունենալու պահանջից։ Բայց ինչպէս երեւում է, Մխիթար Գոշի գործը դեռ յայտնի եւ տարածուած չի եղել, գուցէ եւ դեռ չաւարտուած։*

## ԱՌԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

### ՄԽԻԹԱՐ ԳՈՇ

1. Հիւսիս-արեւելեան Հայաստանի ազատումը մահմեդական բռնատիրութիւնից։—*Սելջուկեան տէրութեան մէջ* 11*րդ դարի վերջերից սկսւում են ներքին խռովութիւններ. առաջ են գալիս կենտրոնից անջատուած անկախ իշխանութիւններ թէ՛ Հայաստանում եւ թէ՛ այլ երկրներում։ Վրաստանը, որ համեմատաբար զերծ էր մնացել թուրքերի գործած մեծ աւերմունքներից, կարողանում է շուտով զօրանալ. Նրա թագաւորներն օգտուելով թշնամիների ներքին գժտութիւններից՝ իրենց երկիրը մաքրում են նրանց բռնակալութիւնից։*

*Գէորգի Գ. թագաւորի օրով հանդէս է գալիս Զաքարեան կամ «Եր-*

կայնաբազուկ» (վրացերէն՝ «Մխարգրձելի») անունով յայտնի հայ իշխանական տոհմը, որ հաստատուելով Ձորագետում՝ խնամացել էր այնտեղի Բագրատունի թագաւորների հետ եւ որի սերունդներն իրենց արձանագրութիւնների մէջ իրենց համարում էին ծագումով Բագրատունի՝ «յազգէ Բագրատունեան»: Այդ տոհմից Սարգիս անունով մէկը, իբրեւ ժամանակին յայտնի մի պաշտօնեայ, 1161 թ. դառնում է Անու կառավարիչ, իսկ 1174ին՝ կառավարչի տեղակալ: Նա նշանաւոր է դառնում աւելի եւս Թամար թագուհու (1184–1210 թ.թ.) օրով: Սարգիսը կարգւում է Վրաց թագաւորութեան ամիր-սպասալար, այսինքն՝ սպարապետ: Մի տարի յետոյ նա մեռնում է:

Սարգսի որդիները վայելում են Թամար թագուհու շնորհքը եւ կատարում Վրաստանում ամենաբարձր պաշտօնները. նրանցից Զաքարէն դառնում է իր հօրից յետոյ՝ ամիր-սպասալար, իսկ Իւանէն՝ աթաբէկ, այսինքըն հազարապետ: Այդ երկու եղբայրներն եւս շատ նշանաւոր են հանդիսանում եւ մեծացնում Թամարի թագաւորութեան սահմաններն ու փառքը:

Զաքարեանների մեծ աջողութիւնները տեղի էին ունենում այն ժամանակ, երբ Լեւոն Բ.ն ընդարձակել էր իր երկրի սահմանները՝ Կիլիկիայից դուրս նուաճումներ անելով եւ ձգտելով դէպի Մեծ Հայաստան: Թւում էր, թէ Զաքարեաններն ու Լեւոն թագաւորը պիտի աջողին միմեանց ձեռք մեկնել: Երկու եղբայրները յարձակւում են եւ Խուբեան (Ետլեան) իշխանութեան վրայ, պաշարում Խլաթ քաղաքը, բայց Իւանէն անզգուշութեան հետեւանքով գերի է ընկնում, եւ ստիպուած են լինում հաշտուել եւ բարեկամութեան դաշինք կռել՝ Իւանէի դուստրը կնութեան տալով Խուբեան մելիքներին: Զաքարեանների առաջխաղացումը կանգ է առնում Հայաստանի հարաւ-արեւմտեան կողմում Եգիպտոսի Խուբեան հզօր տէրութեան առաջ: Դրա փոխանակ Զաքարէն իր արշաւանքը մինչեւ իր մահը շարունակում է դէպի Ատրպատականի կողմերը: Թէ ինչպիսի կախում են ունեցել Զաքարեանները Վրաց թագաւորներից, այդ դեռ լիովին պարզուած չէ. բայց նրանք եղել են Հայաստանի տէրերը, ամէն կարգադրութիւններ անելու անսահման իրաւունքով: Նրանք անուանում էին իրենց ձեռին գտնուած երկիրը «թագաւորութիւն», «ինքնակալ պետութիւն», իսկ իրենց՝ նաեւ «թագաւոր», «շահինշահ»: Կիլիկիայի հայ եկեղեցականութիւնն եւս Զաքարէին ուղղած իր թղթի մէջ նրան կոչում է «մեծ սպարապետ եւ շահնշահ արեւելեան կողմանցն»[1]: Նրանք Հայաստանի գաւառները ոչ միայն իրենց էին սեփականում, այլեւ տալիս էին իրենց զինակից հայ ազնուական տոհմերին, որոնք իբրեւ վասալներ ենթարկւում էին Զաքարեաններին եւ անուանում էին նրանց իրենց «պատրոնը», այսինքն «տէրը»: Այսպիսով վերականգնւում է եւ ուժեղանում Հայաստանում ֆէոդալական (աւատական) հասարակական-պետական կառուցուածքն իրեն յատուկ հիերարխիական կազմով ու կախումով միմեանցից աստիճանաբար:

Իշխանութեան կենտրոնն էր Անի քաղաքը, որ Թուրքերի տէրութեան ժամանակ էլ պահել էր իր առեւտրական մեծ քաղաքի դերը: Կայլին եւ

1 Կիր. Գանձ. Պատմ. Հայոց. էջ 159:

ուրիշ առեւտրական կենտրոններ: Երբ հայ իշխանութիւններ են կազմւում, աւելի եւս զարգանում է առեւտուրը նաեւ Արեւմուտքի հետ Կիլիկիայի միջոցով: Բարձրանում են վաճառականները, որոնք ունէին ոչ միայն դրամական մեծ հարստութիւն, այլեւ գնումներ անելով կամ վաշխառութեամբ տիրանում էին մեծ կալուածների եւ անշարժ կայքերի:

Տնտեսական զարգացման հետեւանքով առաջ է գալիս կուլտուրական բարգաւաճում եւ շինարարութիւն քաղաքներում: Ծաղկում է նաեւ եկեղեցական շինարարութիւնը: «Շինեցան բազում վանորայք, որ ի վաղուց ժամանակէ անտի աւերեալ էին ի հենիցն Իսմայէլի, — գրում է Կիրակոս Գանձակեցին (էջ 155), — վերստին նորոգեցան եկեղեցիք... շինեցան եւ նոր վանորայք եւ եկեղեցիք, որ ի հնոցն չե՛ւ էին լեալ վանք»: Վաճառականներն ու ֆէոդալները ոչ միայն աշխարհիկ շէնքեր էին կառուցում, այլեւ նուէրներ էին տալիս վանքերին ու եկեղեցիներին եւ ամէն կերպ նպաստում նրանց: Այս եղանակով նրանք միջոց էին գտնում իրենց կուտակած հարստութեան մի մասը գործադրելու:

Ասել չի ուզիլ, որ ինչպէս Բագրատունիների շրջանում, նոյնպէս եւ այժմ հարստութիւնը տանում էր նաեւ դէպի ճոխ ու փարթամ կեանքի վայելչութիւնը: Բայց ինչպէս այն ժամանակ, նոյնպէս եւ Զաքարեանների օրով սրուած էր վայելող եւ աշխատաւոր դասակարգերի յարաբերութիւնը: Բուն արտադրող ժողովուրդը ենթակայ էր անխնայ կեղեքման ու շահագործման: Այսպիսի սոցիալական հակասութեան հետեւանքով բնականաբար սրւում էին սոցիալական յարաբերութիւնները, եւ իրար դէմ կանգնած էին երկու անտեսապէս հակառակ կողմերը: Նոյն ֆէոդալական դրութիւնն ու դասակարգային ներհակութիւնն էր եւ արեւմտեան հայութեան մէջ ու Կիլիկիայում: Շահագործող աշխատաւորութեան դրութիւնն աւելի եւս ծանր էր մահմեդականների իշխանութեան տակ մնացած ժողովրդի համար: Գրիգոր Տղան (1173–1193 թ.թ.) դեռ իր կաթողիկոսութեան առաջին տարիներում, ուրեմն Զաքարեան եղբայրների իշխանութիւնից առաջ, միութեան խնդրի առթիւ Գրիգոր Տուտէորդուն ի Հայրատ ուղղած թղթի մէջ[1] գրում է. «Յամենայն Հայոց ազգաց եկեղեցիքս որ յայդ կողմանքդ են, մանաւանդ թէ ի բոլոր սեռս՝ խաղաղութիւն, անդորրութիւն ձեզ է պարգեւեալ ի վերուստ: Թագաւոր քրիստոսասէր, եւ իշխանք բարեպաշտօնք, պարգեւք գաւառաց եւ անդոց՝ հոգեւոր եւ մարմնաւոր հանդերձ ազատութեամբ. եւ դուք կամաւ անդիմանայք եւ անտես առնէք զբեկումն ազգիս, եւ առայօղ պատճառօք հրաժարէք ի գլխոյս կոչմանէ...երբ դուք հրաժարէք, յառաջ զո՞վ կոչեմք. զԱյրարատեա՞նդ եթէ զԿարնեցիք, եթէ զՏարօնեցիքն՝ որ նեղեալ եւ զզուեալ են ի հարկապահանջ բռնակալացն, եւ կարօտին միայն աւուրն պարենի»: Այսպէս է նկարագրում Գրիգոր Տղան Հայերի վիճակը մի կողմից մահմեդականների, միւս կողմից վրացական իշխանութեան ներքոյ Գէորգ Գ.ի օրով, երբ սա Անին արդէն առել էր: Նա քրիստոնեայ տէրութեան մէջ ապրող Հայերի վիճակին հակադրում է տառապեալ

---

1 Գրիգորի կաթողիկոսի Տղայ կոչեցելոյ Նամականի, «Պատասխանի թղթոյն վարդապետին Գրիգորի Տուտէորդւոյն...», Վենետիկ, 1865, էջ 87 եւ հտն.:

*գրութիւնն այն Հայերի, որոնք դեռ գտնւում էին մահմեդականների ձեռին։ Բայց յիշուած «հոգեւոր եւ մարմնաւոր ազատութիւնն» ունէին միայն «բարեպաշտօն իշխաններն» եւ հոգեւորականներն ու վանականները։ Սրանք էին իշխաններից ստանում «պարգեւք գաւառաց եւ անդոց»։ Իսկ աշխատաւոր ժողովրդի տնտեսական վիճակը ծանր էր։ Այս մասին, ինչպէս սովորաբար, անուշադիր են պատմագիրները, բայց ոչ մեր այլ գրական յիշատակարանները, առանձնապէս առակները, որ կը տեսնենք յետոյ։*

*Որ իշխանները հովանաւորում էին վանքերը, այդ միայն նրանց բարեպաշտութիւնից չէր բխում, այլեւ նրա համար էր, որ գիտութիւնը, ուսումն ու գրականութիւնը, ինչպէս առաջ, հոգեւորականներն էին մշակում գլխաւորապէս վանքերում։ Երեւելի են հանդիսանում բազմաթիւ վարդապետներ, որոնց մէջ իր կեանքով, իր ուսուցչական եւ գրական գործունէութեամբ փայլում է Մխիթարը, Գոշ (=քարձ կարճամօրուս) աւելի անունով. «Այսպէս կոչէին զնա մականուամբ, քանզի հեղգագոյն եկին ալիք նորա», բացատրում է Կիրակոս Գանձակեցին (էջ 208)։*

*Նշանաւոր վարդապետներից է եւ Հաղարծին վանքի առաջնորդ Խաչատուր Տարօնեցին «գիտութեամբ հռչակեալ, մանաւանդ երաժշտական արուեստիւ։ Սա պայծառացոյց զսուրբ ուխտն՝ ուրում առաջնորդ էր ինքն, որ յառաջ քան զգալն նորա՝ ամայի էր եւ խամրացեալ։ Զսա պատուէր մեծապէս Թագաւորն Վրաց Գիօրգի, հայր Թամարին։ Եւ եկեղեցւոյն ձեռնագրովն իւրով ետ զերկուս գեղսն, զԱրաստաձոր եւ զՏանձուտն, եւ այգի մի ի Միջնաշինին... Սա եբեր զխաղն ի կողմանս յարեւելից, զանմարմին եղանակսն ի մարմին ածել, զարարեալսն յիմաստնոց, որ ցայն ժամանակս չե՛ւ էր սփռեալ ընդ աշխարհս։ Սա եկեալ դրեաց եւ ուսոյց՝ բազմաց»[1]։ Ցաւօք, Կիրակոսը չի յիշում, թէ Խաչատուր Տարօնեցին ո՛րտեղից էր եկել արեւելք, ո՛րտեղից էր բերել երաժշտական խազերը, եւ ո՛վքեր են եղել դրանց հնարողները։ Այդ ձայնանիշները շատ կիրառւում են հետագայում, բայց 18-րդ դարի վերջերից ի վեր մոռացութեան են տրուած, եւ այլեւս հնարաւոր չի եղել նրանց վերծանութիւնը, որով յայտնի կը լինէին մեր հոգեւոր երգերի հին եղանակները, որ խազերով նշանակուած են ձեռագրերի մէջ։ Խաչատուր Տարօնեցին եղել է նաեւ երգեցող եւ բանաստեղծ. նրա յօրինածն է եւ «Խորհուրդ խորին, անհաս, անսկիզբն» բառերով սկսուած երգը, որ ասւում է պատարագի արարողութեան սկզբում եւ շատ ծանօթ ու սիրուած է եղել նաեւ իր վսեմ եղանակի համար։*

2. Մխիթար Գոշի կենսագրութիւնը։— *Այս «մեծ վարդապետի» մասին կենսագրական տեղեկութիւններ հաղորդում է գլխաւորապէս Կիրակոս Գանձակեցին[2]։ Նա Գանձակ քաղաքից էր։ Ծնողները նրան տուել են «յուսումն Գրոց սրբոց»։ Զափահաս դառնալով նա ձեռնադրուել է կուսակրօն քահանայ։ Տարիներ յետոյ ցանկանալով աւելի «հմուտ լինել Գրոց սրբոց եւ առակաց խորոց՝ որ ի նոսա», աշակերտել է Յովհաննէս Տաւուշեցի վարդապետին, որ իր գիտութեամբ երեւելի է եղել այն ժամանակները եւ տեղեցտեղ*

*1 Կիր. Գանձ. Պատմ. Հայ., էջ 199 եւ հտ.։*
*2 Անդ, էջ 195— 205, եւ այլուր։*

շրջելով քարոզութիւն արել: Սրա, ինչպէս եւ մի քանի ուրիշների մօտ սովորելուց յետոյ՝ Մխիթարն ստանում է վարդապետական աստիճան: Բայց նա չի բաւականանում իր առած ուսումով, այլ գնում է արեւմտեան կողմը, Սեւ լեռը, եւ չյայտնելով, թէ ինքն արդէն վարդապետական պատիւ ունի, ուսանում է այնտեղի վարդապետների մօտ եւ շատ օգտւում է նրանցից: Վերադարձին Մխիթարը Կարին քաղաքում ծանօթանում է Քուրթ իշխանի հետ, որ այնտեղ էր «սարտուցեալ ի Թագաւորութենէ Վրաց»: Նա շատ սիրում է Մխիթարին: Թէ ե՛րբ եւ քանի՛ տարի է ուսում առնում այս «հռչակաւոր եւ գիտութեամբ մեծիմաստ» վարդապետը, այդ յայտնի չէ: Երբ վերադառնում է իր հայրենիքը, — ասում է Կիրակոս Գանձակեցին, — նրա գիտութեանը համբաւը տարածւում է ամէն կողմ, եւ շատերը ժողովւում են նրան աշակերտելու: Բայց յետոյ նեղուելով մահմեդականներից՝ գնում է Խաչէնի գաւառը Հաթերքի իշխան Վախթանգի եւ նրա եղբայրների մօտ, որոնք մեծ պատւով ընդունում են նրան:

Քուրթ իշխանը Թամար թագուհու օրով վերադառնում է իր հայրենի «աշխարհն Կայենոյ եւ Մահկանաբերդոյ»· Թագուհին շատ մեծարում է նրան՝ տալով նրան նրա հայրենի տեղերը, այլեւ ուրիշ շատերը: Այս որ իմանում է Մխիթարը, յիշելով իր հին բարեկամութիւնն այն իշխանի հետ՝ Հաթերքից գնում է նրա մօտ եւ բնակւում է Գետիկ վանքում, որ Կայենոյ գաւառում էր, Աղստեւ գետի վրայ, գետի աջ կողմում (ոչ հեռու Դիլիջանից): Վանքի առաջնորդը, Սարկաւագ անունով, որ Մխիթարի աշակերտներից էր, ուրախութեամբ ընդունում է նրան: Վարդապետն այնտեղ մնում է երկար ժամանակ:

Սաստիկ երկրաշարժից քանդւում է Գետիկ վանքը· միաբանները Մխիթարի խորհրդով չեն ցրւում, այլ Իւանէ Աթաբեկից խնդրում են մի «բարեվայելուչ» տեղ, որ անուանւում էր Տանձուտայ ձոր, եւ այնտեղ հիմնում են մի նոր վանք—«Նոր Գետիկ»: Նախ շինում են երկու փոքր եկեղեցի, յետոյ 1191 թ. սկսում են շինել եւ հինգ տարում աւարտում են մի «մեծափառ եկեղեցի կոփածոյ վիմօք եւ գեղեցկաշէն արուեստիւ, գմբէթայարկ երկնանման, սխրալի տեսողաց»: Շինում են եւ եկեղեցու գաւիթ «դեղազարդ կոփածոյ վիմօք»: Վանքի շինարարութեան օգնում են Հաթերքի տէրը՝ Վախթանգ Խաչենեցին եւ իր եղբայրները, Քուրթ իշխանի որդիները եւ դուստրը՝ Արզու Խաթուն, որ Հաթերքեցի Վախթանգի կինն էր: Շատ օգնում են նաեւ Զաքարէն եւ Իւանէն, որոնք Քուրթ իշխանի քեռորդիներն էին: «Քանզի նոքա ունէին զիշխանութիւն գաւառին, եւ զսուրբ վարդապետն [Մխիթար] յոյժ սիրէին· քանզի Զաքարէ խոստովանութեամբ որդի էր նորա հոգեւոր [ուրիշ տեղ, էջ 158· «էր հայր խոստովանութեան նմա»]: Եւ ընծայեցին եկեղեցւոյն սահման ջրաղարձովք լեռնէ ի լեառն, եւ բով մի յԱրասաձոր եւ զՋօրաձոր ի Նահանգին Բջնոյ եւ զԱղաւա ի գլուխ վանացն»: Շինում են մօտիկում եւ երկու գիւղ, այլեւ ուրիշ շէնքեր: Այսպէս Քուրթ իշխանի մերձաւորներն առանձնապէս հոգում են Մխիթար Գոշի վանքի համար: Նրա դուստր Արզուն ոչ միայն շատ օժանդակում է շինութեանը, այլեւ, ասում է Կիրակոս Գանձակեցին, «արար եւ վարագոյր գեղեցիկ՝ դստերօք իւրովք՝ ծածկոյթ սուրբ խորանին, զարմանալի տեսողաց, ի մազոյ այ-

ծից կակղագունաց, ներկեալ պէսպէս եւ գունագոյն, գործ քանդակակերպ եւ նկարեալ պատկերօք, ճշգրտագոյն հանուածովք, տնօրինականօք Փրկչին եւ այլ սրբոց, որ հիացուցանէր զտեսողսն...»: Նա նոյնն անում է եւ ուրիշ եկեղեցիների ու վանքերի համար: Այսպէս, իշխանների հովանաւորութեամբ զարգանում են վանքերը — այն ժամանակների կուլտուրական վայրերը:

Ինչպէս վերեւում ասւեց, Մխիթարի գիտնականութեան համբաւը մեծ էր. Նրա մօտ հաւաքւում էին բազմաթիւ աշակերտներ զանազան կողմերից. ամէնքը փափագում էին տեսնել նրան եւ սովորել նրանից: Ինչպէս ինքը Մխիթարը վարուել էր մի ժամանակ, շատ վարդապետներ ծածկում էին իրենց աստիճանը եւ աշակերտելով նրա մօտ՝ նորից ստանում էին վարդապետելու իրաւունք: Նրա աշակերտներից ոչ սակաւներ հետագայում յայտնի են լինում իբրեւ վարդապետներ: Նա մեծ յարգանք էր վայելում ոչ միայն իր աշակերտներից, այլեւ երկրի իշխողներից եւ եկեղեցականութիւնից: Նա հեղինակաւոր էր շատ խնդիրների մէջ: Երբ պատարագի համար չարժական սեղան ունենալու խնդրի առթիւ Զաքարէն եկեղեցականների ժողով է գումարում Անիում, եւ Մխիթարը հիւանդութեան պատճառով բացակայում է, եկեղեցականներն ասում են. «Անհնար է մեզ առանց մեծ վարդապետին առնել զայդ», այսինքն՝ ընդունել չարժական սեղանը: Իսկ երբ Մխիթարին թախանձելով բերում են, Զաքարէն դիմաւորելով նրան, ասում է. «որովհետեւ եկիր դու, ինձ ոչինչ է փոյթ զնոցանէ»: Նա Մխիթարին աւելի բարձր է դասում, քան եկեղեցականների համագումարը: Չնայելով դրան՝ նա չի մեծամտում, եւ մարդահաճութիւն չի անում. նա բնաւորութեամբ համարձակ է եւ առանց քաշուելու մեղադիր է լինում Զաքարէին, որ իշխանաբար է գործում եկեղեցական խնդիրների մէջ: Բայց եւ նա հոգացող է իր ազգի համար. պատրաստ է որոշ կրօնական ծէսերի մէջ զիջող լինելու, միայն թէ ազգային կորուստ չլինի: Նա բարի է եւ ներողամիտ իրեն մեղադրողների վերաբերմամբ եւ Զաքարէի մօտ միջնորդում եւ ազատում է շատերին, որ զօրավարն ուզում էր իրենց տեղերից վտարել:[1]

Եւ այսպէս շարունակ աշխատելով եւ ուսուցանելով՝ նա 1213 թ. վախճանւում է, իր աշակերտներով ու միաբաններով շրջապատուած, եւ թաղւում է իր շինած վանքում: Նրա ծննդեան թուականը յայտնի չէ: Նա մեռել է հասնելով «ի խորին ծերութիւնն», «այեւորեալ եւ լի աւուրբք»: Եթէ այսպիսի ծերութիւնն է 80–85 տարեկան հասակը, ապա նա ծնուած պիտի լինի շուրջ 1130 թուականին: Այս արեւելեան մեծ վարդապետը, ուրեմն, ժամանակակից է Ներսէս Շնորհալուն եւ Ներսէս Լամբրոնացուն, եւ ինչպէս սրանք դրականութեան մէջ փայլուն ներկայացուցիչներն են արեւմտեան հայութեան, նոյնպէս եւ Մխիթար Գոշն իր վարդապետական ու գրական գործունէութեամբ արտացոլումն է հիւսիս-արեւելեան հայութեան վիճակի 12-րդ դարում:

3. «Դատաստանագիրք Հայոց»:— Մխիթարի կենսագրութեան վերջում Կիրակոսը գրում է, թէ «Եթող նա յիշատակ եւ արժան գերեզմանի գիրս մտախորհս յօգուտ ուսումնասիրաց»: Եւ նա յիշատակում է հետեւեալները՝ «Համառօտ մեկնութիւն մարգարէութեանն Երեմիայի», «Սուղ ինչ կանոնք», թէ ինչպէս եւ ինչպիսի կարգով պէտք է պատարագ անել, «Գիրք մի Ողբք

1 Կիր. Գանձ. Պատմ. Հայոց, էջ 157—168:

ի վերայ բնութեանս՝ ի դիմաց Ադամայ առ որդիս նորա, եւ ի դիմաց Եւայի առ դստերս նորա», «Գիրք մի յայտարարութիւն ուղղափառութեան հաւատոյ ընդդէմ ամենայն հերձուածողաց՝ ի խնդրոյ մեծ զօրավարին Զաքարէի եւ եղբօր իւրոյ», եւ «Թուղթք խրատականք»: Կիրակոսի յիշածներից հետաքրքրէր կը լինէր «Ողբքը», բայց այս դեռ յայտաբերուած եւ տպագրուած չէ: Ձեռագրերի մէջ նրա անունով կան եւ ուրիշ երկեր, որոնցից տպագրուած են «Աղօթքներ», «Առակք» եւ «Դատաստանագիրք Հայոց»:[1] Վերջին երկուսը Մխիթար Գոշի ամենակարեւոր գրական գործերն են, եւ այդ երկուսն եւս ժամանակի արտայայտութիւնն են:

Հայոց հին կեանքը մինչեւ 12-րդ դարը կամ 11-րդ դարի վերջերը առաջ չի բերել որեւէ աշխարհիկ իրաւաբանական աշխատութիւն. եղել են միայն եկեղեցական կանոնները: Սրանցով եւ սովորոյթի աւանդական դիրքերով բաւականացել են եւ աշխարհիկ ֆէոդալները, մանաւանդ որ, ինչպէս յայտնի է, նրանք եւս մասնակցում էին եկեղեցական կանոնադիր ժողովներին: Աշխարհիկ օրէնսդրութեան չգոյութիւնը բացատրւում է այնու, որ մեր գրաւոր դպրութեան սկզբից ի վեր շատ դարեր գոյութիւն չի ունեցել ազգային ինքնուրոյն պետութիւն: Բայց զարմանալի է, որ Բագրատունեաց թագաւորութեան օրով եւս, դոնէ հարիւրամեայ խաղաղ շինարարութեան դարում, չի զգացուել գրաւոր օրէնքների պահանջ, եւ առաջ չի եկել հայկական որեւէ օրինագիրք: Այս բացատրւում է այնու, որ շատ վաղ վերջ տրուեց ընդհանուր հայկական պետութեանը, եւ կազմուեցին մի շարք մանր, իրարուց անջատ տէրութիւններ, որոնք չէին կարող ընդհանուր օրինագրքեր հրատարակել: Այպա եկեղեցին, հոգեւոր իշխանութիւնը, շատ զօրեղ էր իր ազդեցութեամբ նրանց վրայ. ուստի շարունակում էին եկեղեցական կանոններով բաւականանալ: Անիի թագաւորութեան վերջին տասնամեակներում դեռ նոր պիտի հասունանար սեփական ազգային օրէնքների պահանջը, բայց վրայ հասաւ հայկական սոցիալ-քաղաքական կեանքի քայքայումը, երբ այլեւս միջոց չկար այդ մասին խորհելու:

Այդպիսի աշխատութեան առաջին փորձը եղել է Այաւկայ որդի Դաւթի ձեռով. նրա «Կանոնները» կամ «Կանոնական օրինադրութիւնները» արտայայտութիւն էին հիւսիս-արեւելեան հայկական գաւառների առաջին բարգաւաճմանը վրաց թագաւորների հովանաւորութեան ներքոյ: Այդ դրութիւնն, ինչպէս տեսանք, գնալով զարգանում է, եւ առաջանում է Զաքարեանների իշխանութիւնը Հայոց երկրի մի ընդարձակ տարածութեան վրայ. միւս կողմից մեծանում եւ ուժեղանում է հայկական պետութիւնը Կիլիկիայում: Երկու կողմերում էլ կազմւում են հայկական աւատական իշխանութիւններ նման սոցիալ-քաղաքական պայմաններով. տնտեսապէս եւ կուլտուրապէս ծաղկում են նրանք, եւ ձգտում են աւելի եւս բարեկարգուելու: Եւ ահա՛ միաժամանակ երկու կողմերում եւս զգացւում է անհրաժեշտ պահանջ

---

1 Մխիթարայ Գոշի Դատաստանագիրք Հայոց. Իրաւաբանական հետազօտութիւնք հանդերձ ծանօթութեամբ Վահան Ծ. վարդապետի Բաստամեանց, Վաղարշապատ, 1880. բարձր գնահատութեան արժանի մի հրատարակութիւն, ընդարձակ «Յառաջաբանութեամբ» (1—180 էջ), բազմաթիւ ծանօթութիւններով եւ ձեռագրական այլ ընթերցուածներով:

աշխարհիկ օրէնքների: Պէտք էր գրաւոր օրինագրքի միջոցով հիմնաւորել եւ հաստատել ազգային պետութիւնների մէջ արդէն գոյութիւն ունեցող իրաւական դրութիւնը: Արեւմուտքում այդ, ինչպէս տեսել ենք, աշխատում է դըլուխ բերել Ներսէս Լամբրոնացին Հայոց կաթողիկոս Գրիգոր Տղայի հրամանով, հետագայում Սմբատ Սպարապետը, իսկ Արեւելքում՝ Մխիթար Գօշը Աղուանից Ստեփանոս կաթողիկոսի հարկադրանքով: Բայց այդ՝ ոչ լոկ կաթողիկոսների մտքի ծնունդն էր, այլ ընդհանրապէս այն ժամանակի մտաւորականների, մինչեւ անգամ Հայաստանի այն մասերում, որոնք գտնւում էին մահմեդականների ձեռին: Վերջիններիս դատաւորները հայերի դատը չէին անում, «այլ գխնդրողն իրաւանց՝ առ իւրեանց օրէնսն առաքէին», գրում է Ներսէս Լամբրոնացին: Այս էր այլազգի իշխողների կարգը: Իսկ հայերը չունէին դատաստանագիրք, որով ըստ օրէնքների լինէր արդարադատութիւնը, եւ դրանից առաջանում էին դատի ժամանակ շահախնդրական վերաբերմունքներ դատաւորների կողմից: Ոսոխները պահանջում էին ազգային գրաւոր օրէնքներ. եւ քանի որ այդ չկար, ետ դառնալով դիմում էին այլազգիներին: Այս դատարանական ծանր դրութիւնը եղել է ե՛ւ Արեւմուտքում, ե՛ւ Արեւելքում, եւ այս շատ խորը գիտակցում է Մխիթար Գօշը:

«Դատաստանագիրք»-ն ունի մի «Նախադրութիւն», որի առաջին գլխի վերնագիրն է. «Պատասխանի այնոցիկ, որ բամբասեն զմեզ ոչ ունել դատաստանս»: Եւ ապա նա հէնց սկզբից գրում է. «Հանդերձեալ գրել զգիրս դատաստանաց, յառաջ պատասխանի տացուք նոցա, որք բամբասեն զօրէնսն Քրիստոսի, թէ դատաստան ոչ կայ ի նմա. քանզի բազումք են որ զովեն զայլազգիս, որպէս թէ իրաւացի դատաստան ունին»: Մխիթարը կրօնաւորի ու մեկնաբանի վայել պատճառաբանութեամբ արդարացնում է դատաստանագիրք չունենալը, եւ յետոյ երկրորդ գլխի մէջ բացատրում է, թէ ի՛նչ պատճառից դրդուած՝ ինքը կամենում է «գրել դատաստանս»: Առաջին պատճառն այն է, ասում է նա, որ «բազում անգամ լուաք բամբասանս յայլազգեաց եւ ի քրիստոնէից, թէ՝ բնաւին ի Քրիստոս օրէնքս դատաստան ոչ կայ»: Եւ նա թւում է տասներկու պատճառներ, որոնցից եօթներորդն է. «Զի մի՛ վասն ոչ գոլոյ դատաստան՝ երթիցեն առ այլազգիս ի դատաստան»: «Ութերորդ՝ տեսանեմք զի այժմ ոմանք յեպիսկոպոսաց եւ ի վարդապետաց եւ ի քահանայից եւ ի գլխաւոր աշխարհականաց եւ յիշխանաց զի աչառանօք եւ կաշառօք եւ տգիտութեամբ թիւրեն զուղիղ դատաստանն: Վասն որոյ սակաւուք դրոշմել կամեցաք զգիրս դատաստանի, զի լիցի ի յանդիմանութիւն այնպիսեացն եւ յուղղութիւն»: Նա չի մոռանում ուրիշների նախատական խօսքերը. իններորդ պատճառաբանութեան մէջ դարձեալ ասում է, թէ իր գիրքը գրել է, որպէսզի «յամենայն ժամ ի ձեռս առեալ յիշեմք. եւ ցուցցուք այլոց ազգաց, թէ գրոց դատաստանաւ վարիմք. որով ըմբերանեալք մի՛ կարասցեն նախատել զմեզ»:

Մեծ վարդապետն իրեն ճնշուած է զգացել հայկական արդարադատութեան այդպիսի վատթար վիճակից. «Ի բազում ժամանակաց տարակուսեալ լինէի վասն սորին իրաց ի նախատելն զմեզ մերոց եւ օտարաց, — գրում է նա:— Այլ եւ հարկեաց զմեզ յայս սիրեցեալ աշակերտն Սուրբ Գրոց Պաւղոս հարկեցուցիչ բանիւք, եւ ոչ կարացի առնուլ յանձն պատճառ ունելով զտգի-

տութիւնս և զմարմնոյս տկարութիւնս»: Բայց երբ Ստեփաննոս կաթողիկոսը մի քանի անգամ առիպում է նրան կատարել այդ գործը, նա վերջը սկսում է այն: Վերջին ԺԱ. գլխի մէջ՝ «Յիշատակարան սակաւուք» յայտնում է, թէ ե՛րբ (1184 թ.) և ո՛ւր (Դանոյ անապատում և Հոռոմայչէն վանքում) սկսել է գրել «Նախադրութիւն»-ը, և որպիսի նեղութեամբ: Այստեղ նա թւում է դժուարութիւնները՝ «անպարապութիւն, զի ընդ առեամբ ախտաժէտի զմանկունս ունէի բանի. և պանդխտութիւն. և զանտեղութիւն գըրչութեան... և պակասութիւն գործեաց գծագրութեանց, և աղքատութիւն մատենից, յորոց ընկալեա հաւաքել ի դէպ էր բանից»:

«Նախադրութեան» մյուս գլուխների մէջ Մխիթարը պարզում է իր հայեացքը դատաստանական խնդիրների և անձերի մասին, ինչպէս են դատավարութիւն, դատաւորներ, վկաներ, երդում, օրէնքների աղբիւրներ, և այլն, և վերջապէս մի ամբողջ գլուխ (Թ.) դարձեալ ժամանակի ցաւոտ կողմի մասին՝ «Յաղագս թէ ո՛չ է պարտ քրիստոնէի երթալ յատեան անօրէնի, զի բարձում է միջոցն, որպէս այժմ ցուցանէ բանս»: Եւ Մխիթարը մանրամասն թւում է հայի և մահմեդականի հասկացութիւնների տարբերութիւնները: Բայց չնայելով դրան, ասում է նա, «զբազումս տեսանեմք այժմ, զի յորժամ ի հոգևոր դատաստանս մեր զխտեն թէ ոչ արդարանան՝ դիմեն և գնան առ այլազգիս, զի թերևս նոցա դատաստանաւն յաղթեսցեն»: ստախացն»: Ուրիշ տեղ (գլ. Զ., էջ 28) գրում է՝ երբ դատաւորներն ուղիղ դատաստան չեն անում, «Գայթակղին միտք տկարացն և դիմեն առ այլազգիսն երթալ ի դատաստան»:

Բուն դատաստանագիրքը կազմուած է երկու մասից, առաջին՝ «Եկեղեցական կանոնք», և երկրորդ՝ «Աշխարհական օրէնք»: Թէ ինչպիսի աղբիւրներից և ինչպէս է օգտուել Մխիթարը իր գիրքը յօրինելիս, այդ մասին կարևոր չէ այստեղ կանգ առնել: Միայն պէտք է նկատել, որ նա, ինչպէս «Նախադրութեան» մէջ յայտնում էլ է, աղբիւրների պակասութիւն է ունեցել, և, ինչպէս երևում է, աղբիւրները մի անգամից չի ունեցել ձեռքի տակ, այլ հետզհետէ, և այսպէս էլ հետզհետէ օգտուել է դրանցից: Ուստի նրա գրքում յօդուածների դասաւորութեան մէջ զգացւում է օրէնքների խմբաւորման նկատմամբ որոշ ձևական թերութիւն: Գալով բովանդակութեանը՝ պէտք է ասել, որ թէև Մխիթար Գոշն օգտուել է օտար աղբիւրներից, բայց նկատի է ունեցել և հայկական սովորոյթներն ու ազգային իրաւաբանական աւանդութիւնները, և յաճախ քննադատում է իր աղբիւրների յօդուածներն և իր տեսակէտն է առաջ քաշում. օրինակ՝ «Մխիթարը, ինչպէս պարզ երեւում է նրա Դատաստանագրքից, ամենևին չէ համակրում մովսիսական խիստ և վրէժխնդիր օրէնքներին, և ընտրելով նոցա միջից մեղմագոյնները՝ ինքն անդադար կա՛մ կերպարանափոխում է նոցա և կա՛մ թողնում է դատաւորի ազատ կամքին նոցա գործածելը կամ չգործածելը»:[1] Այդ իսկ պատճառով նրա Դատաստանագիրքը հիմնականում ունի ազգային բնոյթ ու գաղափարախօսութիւն ի հակադրութիւն նախորդ քաղաքական շրջանի

1 Մխիթար Գոշի Դատաստանագիրք Հայոց. «Յառաջաբանութիւն Հրատարակող Վահան Վ. Բաստամեանի». էջ 117:

այլազգի, այսինքն մահմեդական իշխողների շահերը պաշտպանող օրէնքների, իրօք մահմեատական կրօնի, «զի նոքա ըստ իւրեանց կրօնիցն առնեն զդատաստան», գրում է Մխիթարը: Այդ ազգային—կրօնական ներհակութեան հետեւանքով «Դատաստանագրքի բոլոր յօդուածներում կարմիր թելի նման անցնում է ազգային խորութեան գաղափարը, ուր հայը հակադրւում է «այլազգուն», ուր իրաւական դերակշռութիւնը պատկանում է հայութեանը, յանձին ֆէոդալական դասի եւ դրա համապատասխան չափով սեղմւում, սահմանափակւում են «այլազգիների» իրաւաբանական պաշտպանութեան միջոցները»:[1]

Մենք այստեղ, հարկաւ, չպիտի խօսենք այս նշանաւոր աշխատութեան առանձին յօդուածների մասին, բայց կը ցանկանայինք մի երկու կէտ բերել Առաջին մասի երրորդ գլխից, «Յաղագս դատաստանաց վարդապետաց», եւ այս նրա համար, որ «վարդապետ» բառը յաճախ յիշատակւում է մեր հին գրականութեան մէջ: Հայոց եկեղեցու մէջ վերջին դարերում գրեթէ չի գործածւում «աբեղայ» բառը.ամէն վանական, կրօնաւոր, որ ձեռնադրւում էր կուսակրօն քահանայ, միաժամանակ ձեւականօրէն ստանում էր վարդապետի կոչում: Այսպէս չի եղել հնումն, երբ «վարդապետ» նշանակել է «ուսուցող», «ուսուցիչ» (դոկտոր), եւ այդ անունը իբրեւ մի գիտական տիտղոս, կոչում՝ առանձին ծիսակատարութեամբ տրւում էր աբեղաներին: Դրանով նրանք իրաւունք էին ստանում ուսուցանելու, քարոզելու ժողովրդին, եւ իբրեւ նշան այդ կոչման՝ կարող էին ձեռներին գաւազան բռնել: վարդապետացուի գիտական պատրաստութիւնը քննելուց յետոյ: Արդ՝ Մխի-
վարդապետացու գիտական պատրաստութիւնը քննելուց յետոյ: Արդ՝ Մխիթար Գօշն իր Դատաստանագրքի մի ընդարձակ յօդուածով (88—93) կանոնադրում է եւ վարդապետական կարգը. քաղենք սրանից մի քանի հետաքրքիր կէտեր.

1. Հէնց սկզբից ասում է նա. «Եւ վարդապետք եղիցին ըստ իրաւանց նախակրթեալք Հին եւ Նոր Կտակարանաց եւ կանոնական հրամանաց»: Ուրեմն վարդապետացուները, նախ քան իրենց կոչումն ստանալը, պէտք է վարժուած լինեն եկեղեցական ուսումով:

2. «Յերկուց եւ յերից վարդապետաց կոչեսցին ի պատիւ հրամանի, թէ եւ պատահի միոյ աշակերտիլ. եւ թէ զկամս եպիսկոպոսի եւ կամ եւս առաւել զհայրապետի ընդ իւրեանս առնուցուն, նաեւ զիշխանի, բարիոք եւս գործիցեն. ապա թէ ոչ՝ ըստ օրինացն յերկուց եւ յերիցն հաստատեսցի: Իսկ ի միոջէ զկարգեալսն եւ զանձամբ ընտրեալսն իրաւունք կացցէ դատաստանի լռեցուցանել. այլ ըստ օրինացն զկարգեալսն պատուել»: Ուրեմն առնուազն երկու եւ երեք վարդապետ միասին պէտք է վարդապետական իրաւունք տային վարդապետացուին:

3. «Իսկ [որք] նախակրթեալք ի միոջէ վարդապետէ եւ ամբարտաւանեալք՝ յայլմէ առնուցուն պատիւ հրամանի արհամարհելով զիւրն, իրա-

---

[1] Խ. Սամուէլեան—Հին հայ իրաւունքի պատմութիւնը, հատոր Ա., Երեւան, 1939, էջ 80:

*ունք լիցին դատաստանի՝ ի նմանէ զունելն երկրորդել»: Հետաքրքիր է հետեւեալ կէտը.*

*4. «Այլ զայնոսիկ որ հանդերձեալ իցեն կոչիլ յաստիճան հրամանի, զհամար ուսման գրոցն արժան է պահանջել, թէ ո՛ւր եւ կամ յումմէ՛ զտառս [=զգիրս] գիւրաքանչիւր ընթերցաւ ուսմամբ. եւ այս առ այնք լիցի, զոր ի բազումս շրջեալ անդիտանամք ուսմանն. զի մի՛ պատրեալ անկատարս զպատիւ առեալ՝ բազում վնասս խակութեամբն գործիցեն»: Ուրեմն մեծ զգուշութիւն էին բանեցնում, որ տգէտները չստանային վարդապետական կոչում: Իսկ եթէ պատահեն կանոնների անհամապատասխան կերպով վարդապետ կոչուածներ, «զայնպիսին լռեցուցանել իրաւացի դատաստանաւ, առեալ ի ձեռանէ զգաւազանն՝ տայցեն ցուպ շրջողութեան»: Այդպիսիներին, ուրեմն, պէտք էր արգելել քարոզութիւն անել: Կան եւ ուրիշ կէտեր «վարդապետ կոչման մասին:*

*Վերջապէս պիտի շեշտել, որ Մխիթար Գօշի այս մեծ աշխատութիւնը, իբրեւ միակ հայկական օրինագիրք, շատ տարածուած եւ գործածուած է եղել ոչ միայն Հայաստանում, այլ եւ հայկական գաղութավայրերում՝ Լեհաստանում, Ղրիմում, ինչպէս եւ Վրաստանում, ուր մտել է Վրացական օրինագրքի մէջ եւ այստեղից իբրեւ նիւթ ծառայել ռուսական օրէնսդրութեան համար: Դրանից օգտուել է եւ Հեթում Թագաւորի եղբայր Սմբատ սպարապետը իր «Յաղագս դատաստանաց Թագաւորաց» օրինագրքի համար, որ կազմել է Կիլիկիայում: Այսքան ահա մեծ է եղել այս մեծ վարդապետի այս մեծ երկի գործնական ու կուլտուր-պատմական նշանակութիւնը: Դրանից օգտուել է եւ Հայոց հոգեւոր իշխանութիւնն իր իրաւասութեան ենթակայ գործերի համար վճռահատում անելիս:*

4. Առակներ:— *Ն. Մառը,[1]—որի սիրով կատարած երկարամեայ հետազօտութեանն է արժանացել մեր հին գրականութեան այս ճիւղն եւ որի շնորհիւ շատ բանասիրական խնդիրներ պարզուած են եւ ունենք Վարդանայ առակների մեծ խնամքով պատրաստուած մի ժողովածու,—ցոյց է տուել, որ թէպէտ եւ Եզոպոսի անունը չի գտնւում Հայոց հին գրականութեան մէջ, բայց հայերը հնուց անտի ծանօթ են եղել նրա առակներին, որոնցից մի քանիսը յիշատակւում են մեր հին մատենագիրների մէջ: Բացի այդ՝ մօտաւորապէս 7-րդ դարում հաւանօրէն ճարտասանութեան կամ քերթողական արուեստի գրքերից թարգմանել են* Ոլիմպիանու առակները,[2] *որ Եզոպոսի առակներից են հռետորական խմբագրութեամբ. այդ առակները, ըստ Ն. Մառի, թուով տասն հինգ են եղել, որոնց վրայ հետագայում աւելացել են նաեւ ուրիշները եւ դարձել են քսան եւ երեք: Հաւանօրէն 6—7-րդ դարում*

---

*[1] Ն. Մառ, Ժողովածու Առակաց Վարդանայ, մասն Ա., Ներածութիւն, Ս. Պետերբուրգ, 1889: Նոյնի, Ժողովածոյք առակաց Վարդանայ, մասն Բ., բնագիր, ՍՊԲ., ՌՅԽԳ: Նոյնի մասն Գ., Առակներ, Ս. Պետերբուրգ, 1894:*

*Տե՛ս եւ՝ Ժողովածոյք առակաց Վարդանայ, Թարգմ. Հ. Յ. Վ. Տաշեան, Վիեննա, 1900, Ազգ. Մատենադարան, ԼԶ:*

*[2] Տե՛ս Ն. Մառ, Ժողովածու Առակաց Վարդանայ Ա., էջ 289, ծան. մի ձեռագրի նկարագրի մէջ:*

Թարգմանուել է նաեւ «Բարոյախօս» (Ֆիզիոլոգ) կոչուած գիրքը,[1] որի հեղինակը յայտնի չէ եւ որի մէջ խօսում է կենդանիների «բարոյքի», այսինքն բարքերի բնաւորութեան մասին: Այս գրքին ծանօթ են երեւում նոյնիսկ մեր կլասիկ հեղինակները՝ Ագաթանգեղոս, Եզնիկ Կողբացի եւ ուրիշներ: «Բարոյախօսն» եւ Եզոպոսի առակները, Ողիմպիանոսի անունով, շատ սիրուած են եղել հնում հայ հեղինակներից: Հատ-հատ ուրիշ առակներ եւս յիշատակում են մեր հին հեղինակները:

Գրիգոր Մագիստրոսը, ինչպէս տեսել ենք նամակներից մէկի մէջ, պատուիրում է դպրոցներում աշակերտներին սովորցնել քերականութեան եւ ճարտասանութեան հետ նաեւ «առասպելավարժութիւն», այսինքն՝ աշակերտներին գրել, անգիր անել եւ մեկնել տալ առակներ, որ եւ մի շատ յարմար վարժութիւն է եղել ապագայ մեկնաբաններ պատրաստելու համար: Առակների հայկական ժողովածուներ, սակայն, յայտնի չեն, իսկ ժողովրդական առակները մշակելու եւ նրանցից ժողովածուներ կազմելու մասին՝ մտածել անգամ կարելի չէ մինչեւ 11-րդ դարի կէսերը եւ աւելի եւս ուշ: Ժողովրդական առակները, որոնցից մի քանիսը պատահաբար մէջ են բերում հին հեղինակները, նոյն բախտն են ունեցել, ինչ որ մեր հին ժողովրդական բանահիւսութիւնն ընդհանրապէս: Դրա պատճառն այն է, որ գրականութիւնը դեռ եկեղեցականների ձեռին էր. իսկ եկեղեցականը, ինչպէս յայտնի է, իր կոչումով արդէն ընդունակ չէր մշակելու թէկուզ մի խոնարհ գրական տեսակ, ինչպիսին առակներն են: Դրանք մեր գրագէտ եկեղեցականի կողմից ոչ միայն արհամարհուած են եղել իբրեւ գեղջկական, ունայն եւ անարժէք բաներ, այլեւ իրենց աշխարհիկ բնաւորութեան պատճառով հալածուած: Զանազան տեսակի գուշակութիւն անողների հետ, ինչպէս են՝ «հաւահմայք», «հացահմայք», «հատահարցք», մերժուած եւ հաղորդութեան անարժան են համարել նաեւ «կրախաւք, կրատեսք, շրջողք տանէ ի տուն, հետաքրքիր, կրուցարարք առասպելախաւսք»: Վերջինը վերաբերում է առակախօսներին. հայերէն «առասպել» բառը, բացի իր իսկական նշանակութիւնից, գործածւում է նաեւ իբրեւ առակ, ինչպէս որ նոյն կրկին նշանակութիւններն ունեն համապատասխան յունարէն mythos, լատիներէն fabula բառերը: Մխիթար Գօշը գրում է յաճախ «խրատէ առակս», «յանդիմանէ առակս» եւ այլն, «Ողոմպիանու առակներից» 3-րդի խրատական մասն սկսում է «խրատէ առասպելս»:

Այսպէս ուրեմն, հնում հալածուած են եղել ինչպէս գուսանները եւ ուրիշները, այնպէս եւ առասպելախօսները, այսինքն առակախօսները:

Բայց եւ այնպէս կեանքը կանգ չի առնում: Հոգեւորականի համար, ինչպէս տեսանք, այլեւս անպատշաճ չի համարւում, թէկուզ այլի ձեւով, երգել աշխարհային կեանքի բարիքները եւ երկրի, առանձնապէս քաղաքների, ծաղկումն ու աւերումը: Նա սկսում է յօրինել նաեւ նոր գրական տեսակներ: Ապա 12-րդ դարից սկսած՝ նա, ինչպէս ուրիշ երկրներում, մշակում է նաեւ առակներ: Եկեղեցականն իր կոչումով ուսուցիչ էր, վարժ մեկնաբանութիւնների մէջ գործադրուող այլաբանական ձեւին. նա ամէն

1 Տպագրուած են Մխիթար Գօշի առակների հետ. «Առակք Մխիթարայ Գօշի», Վենետիկ, 1854. ետեւից, էջ 167 եւ հտն. «Առակք Ողոմպիանու»:

առասպելի մէջ էլ տեսնում էր այլաբանութիւն. ուստի բնական է, որ նա սիրէր խրատական այլաբանութիւնը: Եւ սիրելով այդ, հոգեւորականները վերջ ի վերջոյ սկսում են ժողովել ամէն տեսակի պատմուածքներ, որոնց տալիս են խրատական այլաբանութեան ձեւը, եւ որոնք մեր հին գրականութեան մէջ յայտնի են մի ընդհանուր առակ անուան տակ:

Առաջին հեղինակը, որի համար հաւաստում են, թէ գրել է առակներ, է Ներսէս Շնորհալին (1102—1173), որի համար Կիրակոս Գանձակեցին գրում է,[1] թէ «Արար եւ առակս խորհրդաբար ի գրոց, զի փոխանակ առասպելեաց զայն ասասցեն ի գինարբուս եւ ի հարսանիս»: Շնորհալու անունով մնացած կան 120 «Առակք վասն ուրախութեան մարդկան»: Դրանք, սակայն, ինչպէս տեսանք, ոտանաւորեալ հանելուկներ են եւ ո՛չ առակներ:

5. Մխիթար Գոշի առակները:— Իսկական առակների առաջին ժողովողն ու խմբագրողն է Մխիթար Գոշը: Ն. Մառը կասկածում է, թէ Գոշի անունով յայտնի առակները նրանք՝ Մխիթար Գոշինը լինեն. բայց նրա կասկածը չի հաստատուած համոզիչ հիմունքներով: Որ Կիրակոս Գանձակեցին, — որը ոչ թէ Մխիթարի աշակերտն է, ինչպէս սխալմամբ դնում է Մառը(Ժող. մասն Ա. էջ 66 և հտ.), այլ Վանական վարդապետի աշակերտը և Մխիթարին ոչ ժամանակակից, — որ Կիրակոսը չի յիշատակում, թէ Մխիթարն առակներ է գրել, այդ, ի հարկէ, չի կարելի իբրեւ հիմք ծառայեցնել, ինչպէս անում է Ն. Մառը, կասկածելու, թէ Մխիթարն է հեղինակ նրա անունով յայտնի առակների: Գանձակեցին նպատակ չի դրել Մխիթարի բոլոր երկերի ցուցակը տալ եւ ոչ նրա բոլոր երկերն էլ նա յիշում է, ինչպէս ի միջի այլոց նա չի յիշատակում նաեւ Մխիթարի «Դատաստանագիրք»ն եւս:

Մառի կասկածի համար, սակայն, իբրեւ հիմունք ծառայել է նաեւ այն, որ Էջմիածնի Մատ. մի ձեռագրի մէջ (Թ. 2238), — որ ժողովածու է զանազան երկերի (մասամբ ամբողջապէս արտագրուած, մասամբ հատուածօրէն), — ի միջի այլոց կայ վերջում Մխիթար Գոշի առակների վերջին մասը՝ «Առակք ստեղծականք», որի համար իբրեւ հեղինակ, վերնագրի մէջ գրուած է Յովհաննէս Ծործորեցին եւ որի վերջում կայ հետեւեալ յիշատակարանը. «Եւ զվերջացեալս ի բարեաց գործոց զտարտամ գրիչս զՅոհ ծանօթ բանի եւ անկեալ Երզնկացի: Իսկ այժմ՝ Ծործորեցի: Աղաչեմ չմոռանալ ի բարիս զիս. եւ զիմսն ամենայն: Ի Թուականիս Փրկչին ՌՅԺԶ: Եւ զպիտակ պէտս Գրիգոր զվերջին գծօղ յիշել աղաչեմ»: Նոյն տեղում ներքին լուսանցքում. «Իսկ ըստ Հայոց ԷՃԽԳ աւարտ եղեւ գիրքս»: Ապա մի յիշատակարան եւս, որ, ըստ Ն. Մառի, ժողովածուն կազմողինն է: Վերեւում բերուած յիշատակարանից Ն. Մառը եզրակացնում է, թէ Ծործորեցին յիշուած ժողովածուն կազմողը չէ, այլ առակների արտագրողն է: Որ ժողովածուի մէջ Ծործորեցին դարձել է առակների հեղինակ, այդ իբր նրանից է, որ ժողովածուի մէջ սկզբնապէս առակների համար հեղինակ յիշուած չի եղել. այդ իբր նրանից է, որ Ծործորեցու արտագրածը, որից օգտուել է ժողովածուն կազմողը, այդպէս է եղել: Որ Ծործորեցու արտագրածի մէջ հեղի-

1 Կիր. Գանձ. Պատմ. Հայոց, Թիֆլիս, 1909, էջ 140 եւ հտ.:

նակ յիշուած չի եղել, այդ էլ ցոյց է տալիս, որ Մխիթարի անունով յայտնի առակները հին ժամանակ անանուն են եղել: Հետեւաբար, հետագայում, շատ ուշ ժամանակ, արտագրողներն այդ առակները վերագրել են Մխիթարին:

Այսպիսի ենթադրութիւններով, սակայն, եւ այն հանգամանքով, որ առակների ձեռագիրները յետին դարերի են, կարելի չէ անստոյգ համարել Մխիթարի հեղինակ լինելը: Բանը որ ենթադրութեան է հասնում, կարելի է շատ տեսակ-տեսակ ենթադրութիւններ էլ անել: Քանի-որ մեր ձեռքը չի հասել Ծործորեցու արտագրածը, կարող ենք ենթադրել, որ դա ունեցած է եղել Մխիթարի անունը, բայց սկզբի թերթը կարող էր մաշուած կամ պոկուած լինել, ուստի եւ յիշուած ժողովածուի կազմողն առակներն անանուն դրած լինէր իր ժողովածուի մէջ: Կարող է ժողովածուի կազմողը, քանի որ բոլոր առակները չէր արտագրում, այլ միայն վերջին մասը, մոռացմամբ չդնել առակների հեղինակի անունը: Նա կարող էր նոյնիսկ դրած լինել Մխիթարի անունը, եւ մի արտագրող մոռանայ, կամ թէ անզգուշութեամբ Մխիթարի տեղ Ծործորեցի դնել, եւ այլն եւ այլն: Կարելի չէ լոկ ենթադրութեան վրայ հիմնուելով հարցական թողնել այդ առակների հեղինակի ով լինելը, կամ յետին դարերում գրչակների ձեռով աւելացրած համարել Մխիթարի անունը, որ կայ ամբողջական ձեռագիրների վրայ, թեկուզ դրանք շատ հին չլինեն:

Թէ Մխիթարի անունով մնացած առակները նրանն են, այդ ցոյց է տալիս նրանց բովանդակութիւնն էլ, որ տանում է մեզ այն ժամանակը, «երբ հայերը դեռ քաղաքական ազատութիւն ունէին եւ մահմեդականներից աւելի ուժեղ էին զգում իրենց»: Եւ այդ հէնց Մխիթար Գօշի ժամանակն է, 12-րդ դարի երկրորդ կէսին, երբ հայերը թէ՛ Արեւելքում եւ թէ՛ Արեւմուտքում — Կիլիկիայում շատ աւելի ուժեղ էին, քան մահմեդականները:

Կանգ առնենք մի քանի ուրիշ հանգամանքների վրայ եւս: Այս առակների հեղինակը շատ հմուտ մարդ է եղել, ինչպէս եղել է եւ Մխիթարը: Նա գիտակցաբար վերաբերուելով իր գործին՝ հարկ է համարել մէկ-մէկ ծանօթութիւններ տալ իր կատարած գործի եւ ընդհանրապէս առակների մասին իբրեւ մի գրական տեսակի: Այդ ծանօթութիւններից հէնց իմանում ենք, որ այդ ժողովածուն իր տեսակում ժամանակով առաջինն է մեր մէջ:

Ամենից առաջ տեսնում ենք, որ առակներ ժողովելն ու գրելը դեռ անպատշաճ է համարւում. ուստի եւ հեղինակը բացատրում է, թէ ինչու է ինքը գրել. «Թէպէտ անըմբռն [անպատշաճ] տեսցեալքդ կարծի, սակայն թանձրամտաց տուեալ ախորժելի երեւին, որոյ աղագաւ սակաւդ յօժարացաք գրել»:[1] Ապա այդ գործն ուրիշները ծաղրելի են համարում, եւ հեղինակը խնդրում է, որ չծաղրեն իրեն: Ամէն անգամ որ մեր հեղինակները մի նոր բան են մտցնում գրականութեան մէջ, ստիպուած են կամ ապացուցել, թէ թոյլատրելի է իրենց արածը, կամ խնդրել, որ չծաղրեն իրենց: Այսպէս, Կորիւնը մեր գրականութեան սկզբում դեռ ստիպուած է երկար ու բարակ ապացուցել, թէ ո՛չ միայն թոյլատրելի է, այլեւ հարկա-

---

1 Առակք Մխիթարայ Գօշի, ԻԸ, էջ 30:

ւոր է Մեսրոպ Մաշտոցի նման մարդկանց վարքը գրել: Ներսէս Շնորհալին իր «Ողբերգութեան» յիշատակարանում ստիպուած է ապացուցել, թէ կարելի է մեր այժմ սովորական դարձած տաղաչափութեամբ, որ այն ժամանակ գործածւում էր միայն աշխարհիկ երգերի համար, բանաստեղծութիւն յօրինել նաեւ հոգեւոր բաների մասին: Յովհան Մամիկոնեանը ժողովրդական զրոյցներից ու երգերից խմբագրելով «Տարօնոյ պատերազմը», վերջը գրում է. «Յորժամ զչարադրութիւնս զայս ընդօրինակէք մի' ինչ թուեսցի ծաղր ումեք»... Նոյնիսկ Մխիթար Գոշն իր «Դատաստանագրքի» համար, որ նորութիւն էր մեր գրականութեան մէջ, գրում է. «Եւ արդ մի' ոք պարսաւեսցէ զասացեալս, զի թէ տխմար ոք իցէ՝ ուսցի, եւ թէ կատարեալ՝ զպակասն ի սմանէ ինքն լցցէ. զերկոցունցն պատրաստ եմք սիրով ընդունել զկամսն»: Ճիշդ այսպէս եւ նոյն Մխիթար Գոշն առակների համար գրում է վերջաբանում. «Եւ արդ մի' ոք ծաղր առնիցէ զմեզ, զի առնուլ ի սոցունց ի զրուցատրութիւն եւ յասացուածս ի դէպ համարեցաք, քան զաշխարհականացն վարել սովորութեամբ: Եթէ հաճոյ ոմանց թուիցի, տեառն շնորհ. ապա թէ ոչ, թողութիւն մեզ արասցէ սիրով նորին» (էջ 153):

Մեծ դժուարութեամբ ուրեմն, նոյնիսկ առակի տեսակը մուտ է գործում եկեղեցականի գրականութեան մէջ: Դա ծաղրի առարկայ է, զի դրա առասպելն աշխարհիկ բնաւորութիւն ունի. եւ եթէ եկեղեցականը մշակում է այն, որովհետեւ թանձրամիտներին ախորժելի է առակների առասպելը, եւ դրանով հեշտ է սովորեցնել ու կրթել:

Մխիթար Գոշն առակների մէջ տեսնում է բնականաբար երկու մաս. բուն պատմուածքը եւ խրատական եզրակացութիւնը:

Պատմուածքը, — որ նա կոչում է առակ, գաղափար, օրինակ, եղանակ եւ այլ բառերով, — ըստ Մխիթարի՝ լինում է երեք տեսակ՝ բարոյական, առասպելական եւ ստեղծական: Բարոյական առակները (բարոյք, բարք =բնութիւն բառից, որից եւ «Բարոյախօս» գրքի կոչումը) առնուած են կենդանիների բարքից, բնաւորութիւնից կամ բոյսերի յատկութիւններից եւ շատ քիչ ունեն կամ բնաւ չունեն գործողութիւն: Առասպելական առակների մէջ պատմուածքը վերաբերում է կենդանիներին, երբեմն եւ բոյսերին, իբրեւ գործող անձերի. իսկ ստեղծական առակներն առնուած են մարդկանց կեանքից, գործող անձերը մարդիկ են:

Խրատական եզրակացութիւնը, — որ հեղինակը կոչում է՝ խրատ, նշանակ, ճշմարտութիւն եւ այլ բառերով, — երկու տեսակ է՝ աշխարհիկ եւ եկեղեցական. «Դիցուք եւ սակաւուք առակք ստեղծականք, որ նման ասացելոցն կերպարանէ զճշմարտութիւնն աշխարհօրէն եւ եկեղեցականապէս» (Մխ. Առ., եր. 128):

Առակների երկու մասերից հոգեւորական հեղինակի համար բնականաբար աւելի կարեւոր արժէք ունի այս երկրորդը, խրատական մասը, այն էլ աւելի եկեղեցական մեկնութեամբ, որովհետեւ հեղինակը ցանկանում է, որ խօսակցութեան ժամանակ մէջ բերուեն այդպիսի մեկնութեամբ առակներ, քան աշխարհականների սովորութեամբ վարուել, այսինքն առակները լոկ աշխարհական մեկնութեամբ պատմել: Ուստի խրատների մէջ կարեւոր տեղ բռնում են հոգեշահ խրատներն ու հոգեւոր առաքինութիւնները: Բայց

Մխիթարի նման մէկը չէր կարող անուշադիր մնալ դէպի կենցաղական խրատը, առօրեայ ընկերական յարաբերութիւնները, սոցիալական եւ ազգերի յարաբերութեան եւ նման խնդիրները կամ «ճշմարտութիւնն աշխարհօրէն»:

Մի անգամ որ հեղինակի համար առակի մէջ էականն է առակի «ճըշմարտութիւնը», ուստի եւ նա առակը մշակում է այնպէս, որ կարեւոր տեղ բռնի «ճշմարտութիւնը»: Կը նշանակէ՝ առակը յօրինւում է ոչ իբրեւ ինքնուրոյն բանաստեղծական տեսակ, այլ իբրեւ մի ուսուցչական, դիդակտիկական երկ, որ նպատակ ունի ախորժելի ձեւով խրատել եւ ազդել: Դրա համար առակի առասպելն այնպէս է յօրինւում, կամ փոփոխւում (երբ ուրիշ աղբիւրներից է առնուած), որ յարմարուի բարոյախրատական մասին, կամ գործողութիւնն այնպէս կարճ է պատմւում, որ երբեմն նոյնիսկ խրատական մասն աւելի մեծ տեղ է բռնում, քան պատմուածքը: Ուստի սակաւ ենք գտնում բանաստեղծական նկարչութիւն, կենդանիների եւ մարդկանց բնաւորութեան էական գծերի բնորոշում եւ ոչ էլ միշտ արագ եւ ուժեղ գործողութիւն ենք գտնում սեղմ ու պայծառ պատմուածքի մէջ, որ գեղարուեստօրէն յօրինուած առակների կենդանութիւնն է կազմում: Արդարեւ Մխիթար Գոշն էլ սեղմ ու հակիրճ է, բայց ոչ միշտ պայծառ ու կենդանի: Սովորաբար մի երկու ընդհանուր գծեր է տալիս նա եւ ապա իսկոյն անցնում է խրատին: Երբեմն էլ պատմուածքն այնքան կարճ է եւ այնպիսի, որ դժուարութեամբ կարելի է եզրակացութիւն հանել, կամ հանած եզրակացութիւնը շատ թոյլ կապով է կապւում պատմուածքին, կամ համապատասխան չէ նրան:

Հեղինակը, սակայն, իր խրատը բաւական չհամարելով՝ դեռ գրում է. «Զառեալ նշանակդ չափաւորապէս համեմատեսցաք՝ պատճառս տալով տեառդաց բանին նմանապէս զթերին լցուցանել» (էջ 30): Կը նշանակէ՝ Մխիթարն առակն ասողին ազատ է թողնում մեկնութեան թերին լրացնել, ճիշդ ինչպէս նա իր Դատաստանագրքի «կատարեալ» ընթերցողի համար եւս ասում է, թէ՝ «զպակասն ի սմանէ ինքն լցցէ»: Այստեղ էլ, ուրեմն, առակների եւ Դատաստանագրքի հեղինակը նման ձեւով է մտածում:

Բնականաբար պիտի սպասենք, որ Մխիթար Գոշն առակների մէջ եւս նոյն հայեացքն ունենայ դատաստանի մասին, ինչ որ Դատաստանագրքի մէջ: Այստեղ Նախադրութեան մէջ (էջ 28) պատուիրում է, թէ դատաւորները պէտք է «ուղիղ դատաստան անեն» եւ ապա (էջ 32) գրում է. «Եւ թէ ոսոխքն յատենի անդ բանակռիւ լիցին՝ մի՛ տայցեն թոյլ, այլ սաստեսցեն... Ուսցին եւ դատախազքն, թէ ոչ վասն վիճոյ գան յատեանն... ըստ կարգի տայցեն խօսել ոսոխացն»: Այս երկու գաղափարն էլ, դատաւորի արդար մարդ լինելու հետ միասին, արտայայտուած ենք գտնում մի առակի մէջ:

Հաւբալ զբոյն տատրակի քակտեալ եւ իւր շինեալ. եւ եղեւ նոցա երթալ առ արդարն արագիլ ի դատաստան. եւ անդ զմիմեանս նախատէին եւ պարծէին, տատրակ ողջախոհութեամբ կրօնաւորութեամբ. եւ հաւբալ պահօք քառասնօրէիւք. եւ նախատէ ոմն կեղծաւորութեամբ, եւ ոմն զայլոց ուտելոյ զվաստակն։ Իսկ դատաւորն երկուցն սաստէ եւ հարցանէ զհաւբալ, թէ ընդէ՞ր քակտեցեր։ Եւ նա ասէ. Շինուածու նշան ինչ ոչ տեսի, եւ վասն այն առի ինձ։ Հարցանէ դարձեալ. Դո՞ւ էիր եղեալ զօր առեր։ Եւ

նա ասէ՝ ոչ։— Եւ կամ ո՞չ էր երկու հեծան եղեալ ի վերայ միմեանց։ Եւ ասէ՝ եղեալ էր։ Հրամայէ անդրէն դարձուցանել, նա եւ տուգանս եւս տալ։

Զդատաստան ուղիղ հրամայէ առակս դատել, եւ ոչ յայտնի մեծաբանել, եւ կամ Թշնամանել զմիմեանց դատախազաց։ Եւ դարձեալ զի զոր չիցեմք եղեալ՝ ուսուցանէ չասնուլ, եւ զշինուածս յայլոյ՝ թէ եւ յուր իցէ, չքակել։ (Մխ. Ճխ. 118)

*Այստեղ ուրեմն, տեսնում ենք, թէ ինչպէս սոխները՝ Հուրայն ու Տարակը, դատաստանի են գնում արդար Արադլի մօտ. բայց նրա առաջ իրար նախատում են, իրար հետ վիճում են եւ ամէն մէկն իր արժանաւորութեամբ պարծենում։ Դատաւորն երկուսին էլ լսում է, ապա հարց ու փորձ անում եւ դատաստան կտրում։*

*Տեսնենք մի ուրիշ գիծ էլ։ Դատաստանագրքի մէջ (Նախադրութիւն, էջ 29) Մխիթարը պատուիրում է, թէ «Դատաւորն մի՛ լուիցէ զոտախին կամ զդատախազին բանսն միայն»... Այսինքն նա մէկ կողմը միայն լսելով՝ չպիտի դատ անի։ Առակներից մէկի մէջ ասում է, թէ անընտրող դատողները՝ լինեն թագաւոր, իշխան, դատաւոր, թէ եկեղեցու առաջնորդ, «անփորձապէս դատապարտեն», այսինքն առանց քննելու դատապարտում են նոյնիսկ արտաքին տեսքից կամ համբաւից (այսինքն ուրիշներից լսելով) եւ առակախօսը պատուիրում է, թէ չպէտք է «ի տեսլենէ կամ ի համբաւէ դատել» (Մխ. ԺԸ. 19)։*

*Նկատենք եւ հետեւեալը։*

*Մխիթար Գոշի առակները, որոնց թիւը 190 է, խմբագրուած են, ինչպէս վերեւում ասացինք, մի շատ հմուտ մարդու ձեռով, ինչպիսին իրօք եղել է Մխիթարը։ Դրանց համար նա օգտուել է Եզոպոսի առակներից ու Բարոյախօսից, ինչպէս եւ այլ գրաւոր աղբիւրներից ու ժողովրդական առակներից։ Անպայման կան եւ այնպիսիները, որ հեղինակի իրեն ստեղծածն են։ Նա, ինչպէս երեւում է, մեծ նիւթ է ունեցել ձեռի տակ, բայց ամէն ինչ որ ունեցել է, չի գործածել. «Զբազումս ի գիտելեաց եւ յանգիտելեաց թողաք իբր համազօրս յօրինակս եւ յառակս» (էջ 29)։ Բայց ամէն ինչ, որ նա առել է իր ժողովածուի մէջ՝ շատ սրուչ կերպով դասաւորել է ըստ նիւթի, այսինքն՝ ըստ գործող անձերի, նախ՝ երկինք ու երկիր եւ երկնայիններ եւ ապա՝ բոյսեր, լեռներ, կենդանիներ ու մարդիկ։ Ամբողջի մէջ երեւում է մի մտածող, կարգ ու կանոն սիրող մարդու ոգին։ Այսպիսի միակերպութիւն չունեն Վարդանայ առակները, որոնք եւ մի մարդու գրչից չեն դուրս եկած եւ ոչ էլ մի դարու արդասիք են։*

## ՎԱՐԴԱՆ ԱՅԳԵԿՑԻ ԵՒ «ԱՌԱԿՔ ՎԱՐԴԱՆԱՅ»

1. Վարդան Այգեկցի։— *Մեր հին գրականութեան հարստութիւններից մէկն է կազմում եւ «Վարդանայ առակները»։ Սրանց նախահայրն է Վարդան Այգեկցին, որ Մխիթար Գոշից մի սերունդ կրտսեր է. Մխիթարը վախճանուել է 1213 թ. խորին ծերութեան հասակում, իսկ Վարդանն այդ ժամանակ արդէն տարիքաւոր է եղել եւ անուանի՝ իր բանաստեղծական քարոզներով։ Ծննդեան եւ մահուան թուականը յայտնի չէ. ապրել է 12 եւ 13-րդ դարերի մէջ։ Ծնուել է մի բազմանդամ ընտանիքում, հին Տլուք*

գաւառի Մարաթա անունով մի բնակավայրում․ ինքն իր մասին յայտնում է, գրելով․ «ողորմելի Վարդանս որ ի Մարաթաոյ», որ է՝ ի Մարաթայոյ: Սովորել է Կիլիկիայի Արքակաղին վանքում (Սսից հիւսիս, մի լեռան վրայ), որ մի ժամանակ եղել է կաթողիկոսական աթոռանիստ: Այդ ժամանակ եւ մոտիկ ծանօթացել է մի քանի իշխանների՝ «յոյժ ծանօթացաք նոցա սիրով Աստուծոյ», — գրում է նա:

Այնտեղ նա ոչ միայն կատարելագործել է իր ուսումը, այլեւ մշակել է իր համար դարին համապատասխան որոշ աշխարհայեացք յատկապէս դասակարգային յարաբերութիւնների վերաբերեալ: Իր թղթերից մէկում յայտնում է, թէ նուէր պիտի տալ սեփական աշխատանքով ձեռ բերածը միայն, որ Աստուծուն ընդունելի լինի․ բայց իշխաններին այդ վիճակուած չէ․ «Քանզի վա՛յ է զնա որ իշխան կամ առաջնորդ կացուցանեն յայս չար եւ ի դառն ժամանակիս: Զի թէ մեք որ սակաւ ունիմք զկարիքն, եւ իշխանութիւն եւ կարողութիւն ոչ ունիմք, բայց փոքր ի շատէ առանց զըրկանաց ո՛չ կարեմք մնալ, ապա վասն նոցա զի՞նչ ասացից, որ ունին զիշխանութիւնն եւ զկարողութիւնն եւ զբազում կարիքն եւ զաւելորդն եւ զբազում ծախքն, զոր բազում անգամ տեսայ շրջելով ի մէջ նոցա: Եւ աղաչանաւք ամենայն սրբոց թողցէ Աստուած նոցա եւ մեզ ողորմութեամբ իւրով, քանզի մարդիկք եմք դիւրակործան»: Իշխանների ստացուածքն, ուրեմն, «զրկանքի» վրայ է հիմնուած․ եւ այդ ասում է նա իբրեւ իրականութիւն: Ինչպէս Եղիշէն Յազկերտ թագաւորի չարութեան մասին խօսելիս՝ ասում է․ «Թէպէտ եւ ոչ ունիմք հրաման բամբասել զիշխանն, բայց եւ ոչ գովողք կարեմք լինել այնմիկ՝ որ աստուածամարտն լինիցի․ այլ զանցս իւրացն պատմեմք... ոչ բամբասէր մտօք, այլ ճշմարտութեամբ դէպս իւրացն ասելով», նոյնպէս եւ Վարդանն սկզբից դնում է, թէ իր ասածը բամբասանք չէ․ «Եւ զայս ասելով ոչ եթէ բամբասեմ զիշխանսն, քա՛ւ եւ մի՛ լիցի այս․ զի գրեալ է, թէ մի՛ բամբասեր զիշխան ժողովրդեան քո: Այլ ողորմելով նոցա՝ զչարութիւնն սատանայի ցուցանեմ ձեզ»: «Սատանայի չարութիւնն» իշխանների ձեռով:

Եւ տեսէք, թէ նա ի՛նչ զզուանքով է վերաբերում դէպի մի իշխանի կէս դահեկան չարավաստակ նուէրը, որ նա ստացել է ընդհանուր եղբայրութեանն Արքակաղին վանքում: Նա գիշերը երազներ է տեսնում այդ մասին․ «Զառաջին [երազը] յորժամ առի [նուէրը մի իշխանից], տեսայ ի նմին գիշերի․ եւ ա՛հա լցաւ բերան իմ յանկարծակի զազրելի աղբով, եւ ոչ կարէի թափել զնա ի բերանոյ իմմէ․ եւ իմ խնդրեալ անքայթ տեղի՝ փսխեցի զնա, եւ զութ աւրն ոչ փարատէր հոտ գարշութեան նորա ի քմաց իմոց: Այս յուսմանն ի ժամանակն եղեւ ի սուրբ ուխտն յԱրքակաղնին: Եւ տուրք իշխանին էր կէս դահեկան, զոր ետ հասարակաց եղբայրութեանն»:

Որ իշխանի տուրքը բոլոր եղբայրութեանը՝ Վարդանն է առել, այդ ցոյց է տալիս, որ նա Արքակաղին վանքի եղբայրութեան անդամներից մէկն է եղել եւ, հաւանօրէն, մի պաշտօնատար: Իր կեանքի այդ շրջանից արդէն նա եղել է կրօնաւոր: Նրա հետագայ կենսագրութեան մասին չկան տեղեկութիւններ․ չի ստուգուած նրա «Ամթեցի երէց» լինելը, եւ իր «ծխականները» կամ «ծուխն» ունենալը նախ Ամիդում, յետոյ՝ Տլուքում: Եթէ նա

«երէց» էլ եղած լինի, անշուշտ եղել է «վանական երէց», այսինքն կուսակրօն քահանայ, թէ չէ՝ նրան սովորաբար անուանում են «Վարդապետ»: Իբրեւ այսպիսին նա եղել է քարոզիչ, ոչ անպայման մի վանքում նստած. վարդապետները քարոզելով շրջում էին եւ տեղից տեղ աշխարհականների մէջ: Ծերութեան հասակում երիտասարդ կրօնաւորներին ուղղած մի խրատի մէջ[1] նա գրում է. «նոյնպէս եւ ես, ո՛վ որդեակք, ի մանկութենէ մինչեւ ի ծերութիւն շրջեցայ ի մէջ աշխարհի [=աշխարհի մարդկանց] եւ տեսի բազումս զմեղս մեծամեծս, եւ անչափ լուայ ծածկաբար ի գործողացն զչարիս. նաեւ ուսայ յաստուածեղէն գրոց որոց ոչ գոյ թիւ»: Մանկութիւնից (=երիտասարդութիւնից) մինչեւ ծերութիւն նա շրջել է, անշուշտ, իբրեւ քարոզիչ վարդապետ: Որ նա գրում է. «Անչափ լուայ ծածկաբար ի գործողացն զչարիս», այդ նա ծածուկ լսել է իբրեւ խոստովանահայր: Դրանից, սակայն, պէտք չէ հետեւցնել, թէ նա ծխատէր քահանայ է եղել. խոստովանահայր լինում էին եւ վարդապետները: Նա, ինչպէս ընդհանրապէս վարդապետները, ունեցել է եւ իր «ընիկ ժառանգութիւնը», այսինքն բուն, իսկական վիճակը, քարոզչութեան թեմը «Կիւրիսոյ երկրում», «Տլքոյ գաւառում», կենտրոն ունենալով իր հայրենի Մարաթան: Այստեղ, այս կողմերում 11-րդ դարից ի վեր կազմուած էին հայկական մեծ գաղութավայրեր. այստեղ՝ Տլուք գաւառում էր եւ կաթողիկոսական Ծովք բերդը: Բնական է, որ Ծովքից կաթողիկոսական աթոռի տեղափոխութիւնից յետոյ՝ նոյն գաւառում եղել է հայկական հոգեւոր իշխանութիւն եւ պէտք է եղել նաեւ մի քարոզիչ վարդապետի: Թէ ինչպիսի՛ հայ բնակչութիւն է եղել այն գաւառում եւ նրա քարոզներն իրենց բովանդակութեամբ որպիսի՛ աղերս են ունեցել տեղական ժողովրդի կեանքի հետ, այդ պարզուած չէ: Նա մի քարոզի մէջ դիմում է եւ արանց եւ կանանց («Դուք՝ դասք արանց», «Դուք դասք կանանց») եւ առանձին խրատներ տալիս նրանց. կանանց յորդորում է, որ հնազանդ լինեն եւ հոգատար, իսկ արանց՝ որ սիրեն իրենց կանանց եւ քաղցրութեամբ խրատեն նրանց, զի նրանք կարճամիտ եւ տկար են: Բայց սրանք քարոզչական ընդհանուր տեղիներ են: Նոյնպէս սովորական է յանդիմանել կանանց, նրա համար որ զարդարւում ու պճնւում են, երեսները շպարում, ունքերին դեղ դնում, որպէսզի գեղեցկանան ի գայթակղութիւն երիտասարդների, կամ դեղերով իրենց զրկում են երեխայ բերելու ընդունակութիւնից, եւ նոյնը սովորեցնում ուրիշներին: Մի ուրիշ ճառի մէջ նա դժոխքի տանջանքներով սարսափեցնում է վաշխառուներին, մշակների վարձը կտրողներին, նրանց, որ զրկում են որբերին, այրիներին ու տնանկներին կամ խաբում չափ ու կշռի մէջ, նրանց, որ կաթի ու գինու մէջ ջուր են խառնում եւ այնպէս ծախում: Այս ամէնն էլ սովորական, նոյնիսկ աստուածաշնչեան մոտիւներ են:

---

1 «Յաստուածային սուրբ գրոց խրատք վարուց առաքինութեան կարճ ի կարճոյ եւ համառաւտ միայն զբանիցն գրել ողորմելոյս Վարդանայ որ ի Մարաթայ, եւ այժմ ի ձորս Սուրբ Լերինս միանձանց առ մանկագոյնս կրաւնաւորս որ գան ի կարգս կրաւնաւորութեան եւ կամ միանձնութեան ի ծերպս վիմաց»: Ն. Մառ, Ժողովածու Առակաց Վարդանայ, Մասն Ա., էջ 297 (ռուսերէն):

Եթէ այդ բովանդակութեամբ ճառերն ասուել են Տլուքում, կարելի է դրանից հետեւցնել, ինչպէս վարուել է Ն. Մառը, որ այնտեղի հայ գաղութը չի եղել մի խուլ անկիւն, այլ մի առեւտրա–արդիւնաբերական հարուստ կենտրոն եւ Վարդանի այդ քարոզներն ուղղուած են հարուստ քաղաքացիների եւ վաճառականների դէմ:

Ճառերի այդպիսի ընդհանուր բովանդակութիւնից կարելի չէ ենթադրել, թէ դրանց համար այն շնորհալի քարոզիչը հալածանքի է ենթարկուել եւ ստիպուած է եղել իբրեւ հալածական հեռանալ կամ փախչել իր բնիկ գաւառից ու հայրենի Մարաթա գիւղից: Դրա պատճառը թաքնուած է, հաւանօրէն, քաղաքական յեղյեղուկ դրութեան մէջ, կամ գուցէ մի ծանրակշիռ հարցի շուրջը սաստիկ ընդհարման մէջ տեղի իշխողների հետ: Երկու տարի նա նիւթական նեղութեան մէջ է ընկնում:

Պաղտին իշխանի համար 1212 թ. գրած քսաներկու ճառ աշխատութեան մէջ ասում է. «Եւ այլ յոյժ ծանր եղեւ մեզ, զի երկու ամ է [ի] գրաւումն աշխարհի էաք եւ ոչ ընդերձուն [ընթերցումն] գրոց. քանզի բուռն է կարիք մարմնոյ յորժամ պակասէ. զի հալածական եղաք ի բնիկ ժառանգութենէ մերմէ յերկրէն Կիւրխայ եւ ի գաւառէն Տլքոյ եւ եկաք յԱյգեկս, եւ Աստուած ի բարի աջողեաց զամենայն գործս մեր եւ զպէտս մարմնոյ, խոկ ի հին ուամանէ յիշեալ հաւաքեցի... Հայոց ոկա [=661+551=1212], եւ էր թագաւոր Հայոց Լեւոն Ռուբինեանձ ի Կիլիկիայ...»:[1] Ուրիշ տեղ նա այն ճառի համար գրում է. «Ի չորրորդ ամի գալստեան մերոյ ի Մարաթայ ի սուրբ լերինս յԱյգեկս. եւ եդի ի գիրս զոր գրեցի ճառս .իբ. [=քսան եւ երկու] ի խնդրոյ թագաւորազն իշխանին որ կոչի Պաղտին»: Այս «չորրորդ ամն» է 1212 թուականը, երկու տարի էլ նեղութիւն է կրել մինչեւ Այգեկում տեղաւորուելը, ուրեմն նա իր հայրենի Մարաթայից, Տլուք գաւառից հալածական է եղել 1206 թուականին:

Շատ հաւանական է, որ իր ծանօթ թագաւորազն իշխան Պաղտինի (Բալդվինի) հովանաւորութեամբ յաջողուել է Վարդանին դառնալ միաբան Սուրբ լեռան կամ Սեւ լեռան վրայ 12–րդ դարի վերջին քառորդին հիմնուած Այգեկ կրօնաստանի: Այստեղ էլ Վարդանը երկար, գուցէ մինչեւ կեանքի վերջը, մինչեւ խորին ծերութիւն ապրել է, ուստի կոչուել է «Այգեկցի»: 1229 թ. նա դեռ կենդանի է եւ աշխատում է ըստ մի գրութեան:

Այստեղ այս «անապատում» կամ «սուրբ ուխտում» նա պարապել է գլխաւորապէս գրականութեամբ, թղթակցել է շատերի հետ. զանազան հարցերով դիմել են նրան, ինչպէս Պաղտին իշխանը, Անտիոքի Միքայէլ եպիսկոպոսը եւ ուրիշները, եւ նա սիրով պատասխանել է նրանց. գրել է ճառեր, խրատներ երիտասարդ կրօնաւորների համար. «Ես նուաստս յամենայնի յերիս ճառս կարգեցի զրանս խրատուց նորամուտ կրօնաւորաց մանկալունից եւ ո՛չ ծերոց»: Սկզբում նա աշխատել է առանց գրքերի, յիշողութեամբ, Պաղտին իշխանի համար 22 ճառը յօրինել է «ի հին ուսմանէ յիշեալ», գրում է նա: Նրա գրքերը մնացել էին Տլուքում: Միքայէլ եպիս–

---

1 Արտագրող գրչի տգիտութիւնից կամ անփութութիւնից են առաջացած սխալները:

*կոպոսի հարցմանն էլ նոյնպէս է պատասխանել. «Կա՛մ ես յանապատի աստ հեռի ի գրենաց եւ ի մեկնչաց», ասում է նա. «Եւ առաջի Աստուծոյ անսուտ ասեմ, որ չունիմ յանապատի աստ բազում գրեանս եւ կամ զմեկնութիւն հինգ բանիցս, զի եդից օրինակ եւ գրեցից: Այլ... սկսայց կատարել զհրամանս քո, զոր տայ սուրբ հոգին, ի հին յիշատակաց եւ յուսմանց, բայց եւ յամենայն շնորհաց որ լինի եւ ոչ ի մեր ջանաց. քանզի խաւարեցաւ միտք իմ յաշխարհիս եւ նուաղեցաւ լոյս աչացս եւ տկարացաւ ծերութեամբս»:*

2. Վարդանի գրությունների թեման կամ նյութն էապես նորություն չէ:— *Նա քարոզում է, թէ աւելի լաւ է, որ կրօնաւորները կենան եղբայրանոցներում. նրանք պիտի աշխատեն եւ ապրեն իրենց աշխատանքով, սեփականութիւն պէտք է չունենան: Նրանք նուէրներ պիտի ընդունեն միայն երբ կարող են աշխատել, այն էլ միայն երկրագործներից եւ արհեստաւորներից. որովհետեւ, ինչպէս վերեւում տեսանք, նա անընդունելի է համարում անարդար եղանակով ձեռ բերուածը. աւատի իշխաններից պարգեւ ընդունել թոյլատրում է լոկ ծայրայեղ կարիքի դէպքում: Այս վերաբերում է, հարկաւ, կրօնաւորների անձնականին. թէ. ոչ՝ դժուար է կարծել, թէ Վարդանը քարոզէր, թէ վանքերը չպէտք է նուէր ընդունէին. քանի որ այդ դարում եւ առաջ շատ սովորական էր վանքերին տալ ամէն տեսակ ընծաներ և՛ անշարժ, և՛ շարժական գոյքերով: Նա քարոզում էր, որ սեփականութիւն չունենան կրօնաւորներն անձամբ եւ ոչ վանքերը:*

*Ն. Շնորհալու «Ընդհանրականի» վերլուծութեան ժամանակ տեսանք, թէ ինչպէս կրօնաւորներն ընկած էին անձնական հարստութիւնների ետեւից, սեփական այգեգործութեամբ էին պարապում: Մի քառասուն տարուայ ընթացքում Շնորհալուց յետոյ՝ կրօնաւորների բարքերն աւելի ընկել էին, քան բարւոքուել: «Այգեկ» անունը հէնց ցոյց է տալիս որ այգեգործութիւնը մեծ տեղ էր բռնում այն անապատում, ուր ապաստանել էր Վարդանը: Նա գրում է. «Ասա՛ ինձ, ո՛րդեակ, թէ ընդէ՞ր ելեր աշխարհէ եւ կամ ի խցաւոր վանից, յորժամ պիտոյ էր քեզ այգիս եւ դրախտս տնկել: Ահա խաբեցեր զմարդիկ եւ զԱստուած, խաբեցար եւ դու. զի չես միայնակեաց: Զի ուր արտավարութիւն աւելի քան զպէտսն, եւ այգի եւ դրախտն տնկի եւ բուծանի վաստակով եւ ջրով, եւ ի գիշերի աղաղակէ զհետ գազանացն, եւ ի տունջեան գոչէ պարսաքարիւ զհետ թռչնոցն առ ի պահպանութիւն մրգոցն եւ ողկուզացն. եւ ի վերայ այսոցիկ ա՛յլ մեծագոյն կորուստ. զի վէճ եւ կռիւ, նախանձ եւ մախանք ոչ պակասէ. սա ի՛մ եւ այն քո՛, — ո՛չ է այնպիսի վարքն միայնակեցի, այլ աշխարհականի»:*

*Շարունակենք տեսնել, թէ ինչ է ասում այդ առթիւ Վարդանը երիտասարդ կրօնաւորներին.*

*«Ո՛վ որդեակք իմ, եղե՛ւ այսպիսի խռովութիւն եւ վէճ եւ մախանք ի միջի մերում, եւ աստի առի զփորձն զոր գրեցի: Քանզի բազում ծառս գեղեցիկ մրգաբերս տնկեալ էին առաջին միայնակեացքն որ բացին եւ սրբեցին զանապատս. որ է սակաւ ինչ պակաս ի քառասուն ամէն: Եւ այս երկու ամ է զի տնկեաց սատանայ մախանք ի միջի մերում եւ նախանձ ի վերայ մրգաբեր ծառոց եւ վէճ եւ աղաղակ. եւ մեծ պատերազմն ունէր զմեզ*

եւ տրտմութիւն զայս երկու ամս եւ ելք ո՛չ կարէաք գտանել, զի բարձցի վէճն եւ մախանք ի միջոյ, եւ աւր քան զաւր յաւդորէր չարն ի շնչոյ դիւացն: Եւ եկեալ եղբարքն յեկեղեցի ի մուտս կիւրակէին եւ խորհեցաք. թէ շահ ինչ որ կայ մեզ ի մրգաբերացս. այդ խռովութիւն էր ի մեզ. եւ Քրիստոս հրամայէ թէ զաջ ակնն եւ զաջ ձեռն հատանել եւ զոգին ապրեցուցանել: Եւ զայս ասացեալ եղբարցն եւ դիմեալ իւրաքանչիւր ի տապար իւր եւ սուր ի վերայ եդեալ կոտորեցաք զամենայն մրգաբերսն աւելի քան զհարիւր ծառս որ կային ի դրունս .Թ. [=ինն] խցին՝ թզենիս եւ ընկուզիս, սերկեւլիս եւ սալորիս մշմշիս եւ արքակաղնիս: Եւ ես մեղաւորս քաջալերէի զեղբարսն, թէ մի՛ երկնչիք. զի այս վարձք է եւ ոչ դատապարտութիւն, պարծանք է անապատիս եւ ոչ նախատինք: Եւ զայս արարաք եւ ի նոյն ժամու գրէի զգիրս զայս, եւ եղեւ խաղաղութիւն յոյժ ողորմութեամբն Աստուծոյ»:

Ամէն վանքում, հարկաւ, չկար Վարդանի նման մէկը, եւ այդպիսի կտրուկ ձեւով չէին վարուել, եւ կռիւն ու խռովութիւնը պիտի շարունակուէր անձնական սեփականութեան համար: Կային եւ շատ այնպիսիները, որոնք չէին հետեւիլ Վարդանին: Այդպիսիներին է ակնարկում նա գրելով ի միջի այլոց հետեւեալը.

«Վա՛յ զի կամա՛ւ սիրեցի զփառս աշխարհի եւ կեղծաւորեալ շրջեցա եւ ձեւացա առ աչս մարդկան. կամա՛ւ եւ գիտութեամբ մեղայ եւ եղա ողորմելի քան զամենեսեան: Բայց ո՛վ մանկունք նորա Սիոնի եւ ծնո՛ւնդք սրբութեան նորին սուրբ արդանդին, գիտեմ, որ ի միտս ձեր ո՛ւնչս առնէք եւ քամահէք զբանս իմ ասելով, թէ՝ «Ո՛վ դու զատանցեալ եւ զարշելի ալեւոր, որ լցար անաւրէն եւ չարաւարեր չար գործովք եւ չես ժամանեալ ի կարգ աշակերտի եւ դարձեալ վարդապետե՛ս մեզ զաւրէնս Աստուծոյ, զոր դու ոչ պահեցեր: Ժամ է քեզ լռել եւ պապանձել. զի ձանձրացան լսելիք մեր եւ ատակացան սիրտք մեր ի քո ընդվայր շատաբանութենէդ: Նաեւ ո՛չ այլ ինչ խորինս եւ անծանօթս պատմես մեզ, բայց միայն զոր քաջ գիտեմք ի մանկութենէ մերմէ»:

Ահա թէ ինչ են ասել Այգեկցուն նրա հակառակորդները. իսկ նա այնպիսիներին պատասխանում է.

«Իսկ ես հաւանիմ եւ արդարացուցանեմ զմտածութիւնս ձեր զոր կարծէք վասն իմ: Նաեւ զրով ձեռին իմոյ բազում արձանս կանգնեմ ի մէջ աշխարհի խոստովանելով մինչեւ ի լրումն ժամանակաց, թէ ադէտ եմ եւ բազմամեղ: Եւ զի լցաւ երկիր գիտութեամբն Աստուծոյ՝ լուր բանասացութեանն Սողոմոնի եւ Եսայեայ, եւ այդ ես ուստի՞ կարացից նորագոյնս ինչ պատմել ձեզ»: Բայց եւ այնպէս նա ասում, խրատում է, զի չի կարող այդ չանել եւ քանքարաթաքոյց լինել: «Նաեւ շունք պահեն զհաւտս ոչխարաց եւ զդրունս յաւագակաց, — ասում է նա, — եւ շար փշաւք զայգի եւ զդրախտ ամրացուցանեն, եւ չար ծառայք շուրջ զքաղաքաւ փոսս հատանեն, որպէս զի անվնաս մնասցեն բնակեալքն ի նմա: Նա եւ զգաւակ քահանայի անուցանէ զայծեակ պռնիկ. եւ անկերպ յեասնն զսուր հատանող առնէ ի պէտս մեր. եւ զպղրատեսակ ճրագն լոյս արձակէ եւ զխաւարն հալածէ. անպէտ զայլախազն եւ փոքր երկաթն հուր պարգեւեն ի պաշտաւնութիւն կենաց մերոց: Ա՛յսպէս համարեցարուք եւ դուք զիս եւ զբանս իմ, ո՛վ որդեակք, եւ Աստուծոյ լերուք շնորհակալ եւ զնա՛ ուրհնաբանեալ փառաւորեցէք»:

Ուրիշ տեղ էլ նա գրում է.

«Ապա քահանայք եւ ժողովուրդք Աստուծոյ, այս ձեզ սակաւ մի բանք ի պատուիրանացն Աստուծոյ մերոյ, զոր անդադար լսէք եւ գիտէք ի մանկութենէ. զի լցաւ աշխարհ գիտութեամբ Աստուծոյ. վասն որոց կարճ եւ համառօտ գրեցի. որ կարէ իմանալ տխմարն եւ տգէտն. եւ մի՛ մեղադրէք. զի չէ բանքս զերդ որ պատեհն է. զի ծերութիւնս եւ յերկար ցաւքս կուրացոյց զմիտս եւ զաչս իմ»:

3. Առակաւոր ճառեր:— Ինքը Վարդանն էլ չեշտում է, որ իր գրութիւնների, իր քարոզների նիւթը նորութիւն չէ: Հայոց գրականութեան սկզբից ի վեր մեր ճառագիրները բանեցրել են նոյն կրօնական թեմաները— մեղքից խուսափում, զղջում, արտասուք, բարեգործութիւն եւ այլ հոգեշահ խրատներ: Նորութիւն չի եղել ի միջի այլոց նրա խրատը կրօնաւորներին՝ «զղեցէք, կարդացէ՛ք»: Բայց այդպիսի հին թեմաները, որ այն դարում դեռ չէին կորցրել իրենց արժէքը, նա մշակում է մի բոլորովին նոր, ինքնուրոյն ձեւով: Վարդանը յօրինում է կատարելապէս պարզ ու հասարակ, մեկին ու թեթեւ, ախորժալուր: Նա ոչ թէ ճառում է, այլ կենդանի լեզուով զրոյց է անում, սիրով խօսակցում իր ունկնդիրների, աւելի եւս ընթերցողների հետ, հոգալով ոչ միայն ժամանակակիցների համար, այլեւ ապագայ սերունդների: «Վա՛յ ինձ, մանկո՛ւնք Սիոնի, որ գայք հետ մեր յաշխարհի, զի ցանկամ տեսանել զձեզ եւ ոչ կարեմ, զի հողացեա՛լ եմ ի գերեզմանի. ապա գրաւքս այս խաւսիմ ընդ ձեզ մինչեւ ի հինգ եւ յեւթն ազգն. եւ կա՛մ հոգւովս ի միջի ձերում»: Ահա յաւերժութեան համար մի անկեղծ ցանկութիւն, որ ուղղուած է ոչ առ իր անձը, այլ առ իր ապագայ ընթերցողները: Եւ այս անկեղծ ձգտումը չարունակ ուսուցանելու, տալիս է նրա երկին գրաւչութիւն, հետեւաբար եւ գեղեցկութիւն: Պակաս չեն, հարկաւ, նաեւ արտայայտութեան գեղեցիկ ձեւերը, բանաստեղծական պատկերաւորութիւններ, նմանութիւնները եւայլն, որոնք առանց որեւէ որոնումի, բնականօրէն ելնում են նրա գրչի տակից: Նախորդ ճառագիրների խօսքն էլ այդ նկատմամբ աղքատ չէ:

Բայց Վարդանն ունի մի ուրոյն ոճական յատկութիւն եւս, որ ըստ երեւոյթին նա առաջ է բերել Աւետարանին հետեւելով: Նա, ինչպէս Ն. Մառը ցոյց է տուել, իր ճառերի մէջ մտցրել է այլաբանական առակներ, որ «Վարդան Այգեկցուց առաջ հայ քարոզիչներն ըստ երեւոյթին չեն կիրառել իրենց խրատական ճառերի մէջ»: Վարդանն է առաջին անգամ հոգեշահ, բարոյակրթական նպատակով օգտագործում առակները, որ նրա գաղափարները պարզում եւ հեշտ հասկանալի են անում: Այսպիսով նա իսկապէս ստեղծել է մի նոր ձեւ, մի «առանձին գրական տեսակ», առակաւոր ճառեր, խրատներ: Դրանով նա իր խօսքը բազմազան է դարձրել, եւ աւելի գրաւիչ, հետաքրքիր եւ ազդու, մանաւանդ պարզամիտ ընթերցողների եւ ունկնդիրների համար: «Ապա թէ ախորժէք եւ կամիք լսելով, քահանայք, իշխանք եւ ժողովո՛ւրդք, նա՛ ես պարշելի եւ մեղաւք լցեալ ծերս ի վերայ խորհրդոյ ճառիս ցուցանեմ ձեզ այժմ պարզ առակաւ, թէ որպէս են այսաւր սիրտք եւ խորհուրդք ամենայն մարդկան: Եւ արդ՝ ահա էր ոմն փարթամ եւ յոյժ մեծատուն»:

Նա իր ճառերի համար առակները քաղել է զանազան աղբիւրներից․ երբեմն մանրամասնութիւնները մշակելով․ բայց երբեմն եւ ինքն է ստեղծել։[1] Նրա ստեղծածն ու մշակածն է, օրինակ, «Վասն տասն վաճառականացն» առակը, որ գրուած է Պաղտին իշխանին ուղարկած քսաներկու ճառ [=գլուխ] ունեցող թղթի մէջ, որ յիշուեց վերեւում։ Ինչպէս երեւում է, նա իր այս գրութիւնը մի քանի անգամ մշակել է․ վերջին անգամ Կիլիկիայի Դրազարկ վանքում, որ Սիս մայրաքաղաքից հեռու է եղել մի օրուայ ճանապարհով։ Այստեղ էր նստում Սսի եպիսկոպոսը, եւ այնտեղ է եղել մեծամեծների հանգստարանը․ բայց որ գլխաւորն է՝ վանքի միաբանները պարապել են ուսմամբ եւ գրել կամ արտագրել են բազմաթիւ ձեռագրեր 12–14-րդ դարերում։ Թէ ե՛րբ եւ ի՛նչ առթիւ է Վարդանը Այգեկից գնացել Դրազարկ վանքը, այդ յայտնի չէ։ Նա երկար ժամանակ ցանկացել է իր յիշուած աշխատութեան մէջ այլաբանական առակ դնել, բայց իրեն չի յաջողուել, մինչեւ որ վերջապէս այդ գլուխ է բերել Դրազարկում, ինչպէս ինքը պատմում է նոյն աշխատութեան առաջաբանի մէջ։ Վերջինս հետաքրքիր է եւ այնու, որ այնտեղ Վարդանը «պատկերացնում է իր ստեղծագործութեան երկունքը»։ Բերենք դրանից մի հատուած։

«Ողորմելիս Վարդան, որ ի Մարաթայ, ի միայնաւոր խցիս՝ ի սահմանս աստուածարնակ ուխտիս, որ կոչի Դրազարկ, [կամեցայ] ձեւացուցանել Ժ [=տասն] առակաւոր բանիւ վաճառականս եւ ութ որոգայթս առաջի նոցա եւ գտանել Ը [=ութ] մեղս նման յորոգայթսն եւ այն Ը [=ութ] մեղաւքն խաւսել առ ձեզ, ո՛վ քահանայք Աստուծոյ եւ բարեպաշտ իշխանք եւ հաւատացեալ ժողովուրդք Քրիստոսի Աստուծոյ մերոյ, եւ յայն ութ մեղք ժողովել զամենայն մեղս եւ զամենայն բարեգործութիւնս։ Եւ յոլով աւուրս աշխատեցայ եւ բազում անգամ սկսայ եւ ոչ յաջողեցաւ բանն․ եւ տրտմեալ վարանեցայ․ եւ իմացայ ստոյգ որ անբաւ անաւրէնութիւնք իմ խաւարեցոյց զմիտս իմ․ եւ փախեալ կապեաց զլեզու եւ զշրթունս իմ։ Իսկ անոխակալն Աստուած ոչ արար ըստ մեղաց իմոց, այլ հայեցաւ յաւգուտն»։ Ապա մանրամասն պատմում է գիշերը քնի մէջ տեսած՝ սկզբում ծանր մղձաւանջային երազը, որ յետոյ փոխւում դառնում է մի ցանկալի տեսարան ու գործ իր համար։ Երազներին միշտ սիմբոլիկ բացատրութիւն են տուել․ Վարդանն էլ զարթնելով՝ իր երազը բարենշան է համարում։ «Եւ ապա սկսա,— շարունակում է պատմել,— եւ անաշխատ յարմարեցի եւ գրեցի կարգաւ Ժ[=տասն] վաճառականս եւ Ը [=ութ] առակաւոր որոգայթս առաջի նոցա եւ Ը [=ութ] մեղս եւ զառակս Ըն[=ութն] մի առ մի․ ընդ մեղսն խորհրդաւոր համեմատեցի եւ պարբանիւ առընթեր մեղաց եդի․ այս Գ [=այս գոյն=այսպէս] կարգելով»։ Սրանից յետոյ գալիս է ընդարձակ այլաբանութիւնը՝ «Վասն տասն վաճառականացն», որ չենք բերիլ։ Այստեղ կարեւոր չի խօսել նաեւ առանձին առակների ու նրանցից հանած բարոյախրթական խրատների մասին։

4․ «Առակf Վարդանայ»։— Այս ճառախօսի գործածած առակները դիւր են գալիս եւ բերանացի ու գրաւոր տարածւում են։ Ինչպէս կարծում է Ն․ Մա-

---

1 Վարդանի գործածած առակները նրա երկերից հանած եւ ի մի հաւաքած տե՛ս Ն. Մառի յիշուած աշխատութեան երրորդ մասի մէջ, «Առակք Վարդանայ Այգեկցւոյն», էջ 65—93։

տը, ամենայն հաւանականութեամբ նա ինքը կազմած պիտի լինի իր առակների մի երկու փոքրիկ ժողովածու. դուցէ եւ ուրիշները նրա ճառերից հանել են առակները եւ ի մի խմբել, որով եւ առաջացել են Վարդանայ առակները:

Այդ առակների ժողովածուները, սակայն, անփոփոխ չեն մնում, այլ մինչեւ 17-րդ դարի կէսերը ենթարկւում են մեծ զարգացման: Հետզհետէ շատ նմանողներ են դուրս գալիս եւ կազմում են նորանոր ժողովածուներ թէ՛ Վարդանի առակներից եւ թէ՛ ուրիշ աղբիւրներից: Այսպէս զարգանում են առակների ժողովածուները՝ զի դրանց համար պահանջ կար: Դրանք հարկաւոր էին, նախ՝ քարոզութեան համար եւ պէտք է օգնէին քարոզիչ հոգեւորականներին, թէ ո՛ր հոգեշահ խրատի համար ի՛նչ առակ կարելի էր պատմել: Առակների ժողովածուներն, ուրեմն, ծառայում էին նախ նոյն գործնական նպատակին, որի համար եւ դրանք կիրառել էր Վարդան Այգեկցին: Ապա, ինչպէս սկզբում ասուեց, առակներ սովորեցնում էին դպրոցներում եւ զանազան ձեւերով վերամշակել ու մեկնել էին տալիս. ուստի եւ կազմւում էին նոր ժողովածուներ յաճախ վերամշակուած ձեւերով եւ նորանոր մեկնութիւններով: Բայց որ գլխաւորն է՝ 12—13-րդ դարերում եւ յետոյ ամէն տեղ առհասարակ, այնպէս էլ մեզնում սիրում էին պատմուածքներ, առակներ ու զրոյցներ եւ առասպելներ: Ուստի առակների ժողովածուները դառնում էին հաճելի ընթերցանութեան գրքեր նաեւ աշխարհականների համար եւ զարգանում զանազան տիպերով եւ զանազան ծաւալով:

Որովհետեւ ժողովածուների սկիզբը դրուել էր Վարդան Այգեկցու առակներով, ուստի ժողովածուները երեւան են գալիս Վարդանի անունով, ունենալով վերնագիրս՝ «Գիրք առակաց ասացեալ վարդապետին Վարդանայ ի պէտս հոգւոյ եւ մարմնոյ պիտանի»: Մի ուրիշ ձեռագրի մէջ էլ, բաւական աղճատ ուղղագրութեամբ, «Արդ՝ գրեցաւ Առակաց գիրքս ընդ թերձումն յուսումնասէր մանկանց. զի ասացեալ է սայ առն աստուածայրանի եւ տիեզերայհռչակ եռայմեծին և երիցս երանեալ նազելի բայրունուն եւ քաջ փադերային Վարդանայ զի հոգոյ եւ մարմնոյ չահ եւ օգուտ է ընդ թերձողաց»:[1] Ուրեմն «Գիրք առակաց» կամ «Առակաց գիրք Վարդանայ». Վարդանը դառնում է ամէն տեսակի եւ զանազան աղբիւրներից ժողոված առակների համար հեղինակ:

Ինչպէս երեւում է Առակագրքերի մեծ պահանջ է եղել, որ 17-րդ դարում՝ 1668, 1676, 1683 եւ 1698 թուականներին, ուրեմն երեսուն տարուայ մէջ չորս անգամ տպագրւում է Եւրոպայում, ուրիշ նիւթերի հետ, Վարդանայ առակների մի ժողովածու «Գիրք առասպելաբանութեանց որ է [կամ՝ որ ասի] Աղուէսագիրք» վերնագրով: Այդ տպագրութիւններով բնականաբար պակասում է առակների ձեռագիր ժողովածուների պահանջը, բայց եւ դրանցով մեծանում է առակների ծաւալումն ընթերցողների եւ առհասարակ պատմուածքներ սիրողների, առակախօսների շրջանում: Անշուշտ նոյն պահանջն է դրդիչ եղել, որ մեր Առակագիրքը՝ «Աղուեսագիրք» անունով թարգ-

1 Տես՝ Ն. Մառի յիշուած աշխատութեան Ա. մասի մէջ, էջ 104, 160: Աղճատ ուղղագրութիւնը դիտմամբ անփոփոխ է բերւում այստեղ:

մանուել է արաբերէն՝ արաբախօս քրիստոնեաների համար, ինչպէս աւելի ուշ՝ նաեւ վրացերէն լեզուով:

Մի անգամ որ առակների ժողովածուները դառնում են «ընթերցումն ուսումնասէր մանկանց», «հոգւոյ եւ մարմնոյ պիտանի», «հոգւոյ եւ մարմնոյ շահ եւ օգուտ ընթերցողաց», բնականաբար հոգեշահ առակների հետ՝ պահանջւում են նաեւ աշխարհային կենցաղական բնաւորութիւն ունեցողներ: Այս վերջին հանգամանքը պատճառ է դառնում, որ շուտով Վարդանայ առակների ժողովածուների մէջ մտնում են ոչ միայն առակներ սովորական մտքով, այլեւ ամէն տեսակ պատմուածքներ՝ կենցաղային մոտիւներով, հեքիաթներ, անեկդոտներ, զանազան զրոյցներ, ոչ միայն գրքերից, այլեւ ժողովրդի բերանից, վերջից ստանալով մի հոգեշահ խրատական մաս, որ շատ անգամ բռնազբօսիկ կերպով կցուած է բուն պատմուածքին: Այսպէս, օրինակ, «Միամիտ գողք» զուարճալիքը:

Երկու գողք գնացին ի մեծատան միում յերդիք եւ կամէին գողանալ զինչս նորա: Եւ էր լուսնկայ, եւ իմացաւ այրն, որ գողքն ի յերդիքն եկին: Եւ ասէ կինն ցայրն, թէ՝ Ամէն գանձս եւ դրամն եւ դումաշն ո՞ւստի է եկեր քեզ: Եւ ասէ այրն. Երթայի ի գողութիւն ի գիշերի մեծատանց երդիք ի լուսնկայ լուսոյն, որպէս որ այժմ կա. եւ շուք լուսնկին յերդից ի վայր ցայթէր զերթ հիմայ. եւ ես գիրկ առնէի զլուսնկին շուքն՝ բռնէի եւ ի վայր կիջնայի ի տունն եւ քան մի կասէի. որ ինչ գեղեցիկ դումաշ կայր ի տանն, նա ամէնն ինձ կերեւնայր եւ առնէի ի շուքն կապէի եւ զիս այլ ի հետ դումաշին. եւ շուքն զիս ի վեր կուհանէր ի տունս (տանիսն). եւ այսպէս զամէնն շահեր եմ: Իբրեւ լսեցին գողքն զբանս զայս, խիստ ուրախացան եւ հաւատացին պատրողական բանիցն եւ գրկեցին զշուքն, որ ի վայր իջնուն, անկան եւ խելաց թափեցան: Եւ այրն յարեաւ եւ եսպան զնոսա:

Ցուցանէ առակս, թէ մարդն որ գողանայ եւ սատանայական բանին հաւատայ, նա որպէս այն գողքն գորնչին. եւ պատճառն ի կնոջէն եղաւ, որ այն գողքն յերդից ի վայր անկան: Կինն ի կողէն է, եւ կողն ծուռ է եւ ինքն չար է (Առ. Վարդ. Բ., 298. ՄՂէ):

Նոյնպիսի է «Ճուհւոյ տղայ» զուարճալիքն իր մեկնաբանութեամբ, որ խրատ էլ չէ (Առ. Վարդ. Բ., 175, ՃԽԸ): Կամ՝ «Երէց ասորի եւ երիտասարդ հայ» պատմուածքը, որի մէջ ասորի քահանայի տխտութիւնն է ծաղրում (Առ. Վարդ. Բ., 63, ԽԴ):

«Հարսն եւ սկեսուր եւ սկեսրայր» գեղեցիկ առակի մէջ շատ պայծառ ու նկարէն երեւում է ընտանիքի մէջ հարսի սարկական վիճակը բռնակալ սկեսրի եւ սկեսրայրի ձեռի տակ, որոնց խոնարհ ծառան է նա եւ հլու հնազանդութեամբ ու մեծ համբերութեամբ պարտաւոր է կատարել նրանց ամէն անմիտ պատուէրները:

Նոր հարս մի եղեւ խոնարհ եւ համբերող. եւ կամեցան փորձել զնայ սկեսուրն եւ սկեսրայր նորա: Ասէ մին, թէ՝ Զդուռն փակէ: Եւ միւսն ասէ. Բաց. Մին ասէ. եւ փակէ զդուռն. հողմ է. Եւ իբրեւ գնաց եւ փակեաց զդուռն. եւ միւսն ասէ. Եւ բաց զդուռն, զի ծուխ է: Եւ սկսան ասել՝ փակէ եւ բաց: Եւ նա սկսաւ փակել եւ բանալ կարգաւ եւ ասէ. Քեզ փակեմ եւ դորայ բանամ: Եւ յերկարեաց եւ ոչ բարկացաւ:

Ցուցանէ առակս, թէ առաքեալքն եւ մարգարէքն մեծ համբերութեամբ եւ հեզութեամբ քարոզեցին աշխարհի եւ մեծ սպառնալեաւք փակեցին զդժոխքն, զի մի մտցեն ի նայ. եւ բացին զարքայութիւն ողորմութեամբ Աստուծոյ եւ շնորհաւքն, զի մեղաւորք դիմեն եւ մտցեն ի նայ յուսով ապաշխարութեամբ. այս է փակելն եւ բանալն (Առ. Վարդ. Բ., 67, ԽԷ):

Վարդանայ Առակների այս բազմազան մեծ նիւթը,[1] որ մինչեւ 19-րդ դարը շատ սիրելի է եղել ոչ պահանջկոտ ընթերցողների համար, դժբախտաբար գեղարուեստական զարգացման տեսակէտով կէս ճանապարհին կանգ է առել, անպայման այն քաղաքական դրութեան պատճառով, որ ունէր Հայաստանը 14—17-րդ դարերում: Մի Թլկուրանցի կամ Աղթամարցի, իր խաղաղ անկիւնը քաշուած, կարող էր իր սիրոյ եւ բնութեան երգը հնչեցնել եւ զարգացնել այն դարերում. առակները գեղեցիկ մշակելու համար, սակայն, բաւական չէր մի փոքրիկ խաղաղ անկիւնը: Դրա համար պէտք էր, որ խաղաղ ապրելիս լինէր եւ աւելի պահանջկոտ լինէր այն հասարակութիւնը, այն քաղաքացի բնակչութիւնը, որից ծագել էին առակները եւ որի համար պէտք է արուեստաւոր նոր յօրինուէին դրանք: Այդպիսի հասարակութիւն եւ այդպիսի պահանջ, սակայն, չկար եւ չէր կարող լինել 14—17-րդ դարերում, երբ Հայաստանի քաղաքներն աւերւում էին եւ ժողովուրդն ընդհանրապէս աւելի յետադիմում էր, քան առաջադիմում: Այդ պատճառով եւ առակների ժողովածուները մնում են իրենց նախնական ձեւով, բաւարարութիւն տալով միամիտ ընթերցողներին:

Ստեղծագործական հանճարը, կարելի է ասել, շատ քիչ է ձեռք տուել այդ ժողովածուների մէջ ամբարուած բազմազան նիւթերին, դրանք որոշ ուղղութեամբ բանաստեղծօրէն վերամշակելու համար: Թէպէտ եւ կան ընտիր ու կենդանի ոճով համեղ ու սրամիտ պատմուածքներ, եւս աւելի երկրորդ կամ երրորդ խմբագրութեամբ, բայց այդ ամէնը պատահաբար է կատարուած:

Նոյնպէս պատահաբար եւ ոչ գիտակցաբար ժողովրդականից ծագող առակների եւ զրոյցների հետ մտնում է նաեւ ժողովրդական լեզուն եւ ռամկաբանութիւնը եւ ընդհանրապէս ժողովրդական կեանքն ու ոգին: Դրանց ազդեցութեան տակ՝ գրական ծագում ունեցող առակներն եւս, որոնք մաքուր գրաբար լեզուով են, երբեմն վերամշակւում են կենդանի ժողովրդական լեզուով ու ձեւով. գործողութիւնը դառնում է աւելի լրիւ, պատմուածքն աւելի շարժուն, եւ լեզուն խօսակցական ու դուարթ: Նիւթն ուրեմն արտաքին ձեւով կենդանանում եւ ժողովրդական բնաւորութիւն է ստանում. բայց այդ արտաքինի հետ՝ ընդհանրապէս եւ ներքինն է առնում ժողովրդական ոգի: Այդ կատարւում է երբեմն երկու-երեք վերամշակումներով:

Հետաքրքիր կը լինէր այստեղ բերել մի քանի օրինակներ այդպիսի վերամշակութիւն կրած առակներից. բայց այդ մեզ հեռու կը տանէր, մանաւանդ որ ներքեւում բերուած են ուրիշ նպատակով բազմաթիւ առակներ: Լաւ կը լինէր, եթէ կարողանայինք այստեղ գրել նաեւ այն առակների մասին, որոնք ծագում են հայ ժողովրդական բանահիւսութիւնից թէ՛ Մխիթարի եւ թէ՛ Վարդանայ առակների մէջ, կամ գուցէ դրանք են ժողովրդականացել եւ մինչեւ վերջերս պտտում են մեր ժողովրդի բերանին. շատ բան, հարկաւ, ընդհանուր արեւելեան զրոյցներից է ծագում թէ՛ Վարդանայ առակագրքերի եւ թէ՛ մեր ժողովրդական բանահիւսութեան մէջ: Այս խնդրի ուսումնասի–

1 Ն. Մառի խմբագրութեամբ՝ «Ժողովածոյք Առակաց Վարդանայ», մասն Բ., բնագիր. 485 առակներ, յաճախ իրենց վարիանտներով, ինչպէս եւ այլ ընթերցուածներով: Տես նոյնի Գ. մաս, «Յաւելուածներ»:

րութիւնն եւս, որ դեռ չի կատարուած, մեզ շատ հեռուն կը տանէր, ինչպէս եւ այն, թէ արդեօք հայերի մէջ եղե՞լ է կենդանական վէպ ասածը, ինչ որ շատ հաւանական է։ Այսպիսի մի վէպի մնացորդներ են ըստ երեւոյթին թէ՛ Առակագրքերի մէջ մտած եւ թէ՛ ժողովրդի մէջ պատմուած բազմաթիւ առակները, ինչպէս եւ առածները, որոնց գործող անձերը զանազան կենդանիներ են, առանձնապէս աղուէսն ու գայլը։ Կենդանական վէպից են ծագում ըստ երեւոյթին «Գայլի պատահարները» («Պատահարք գայլի») — յիմար գայլի գլխին եկած բազմազան փորձանքները, որոնք մասամբ մտած են Վարդանայ առակների ժողովածուների մէջ։ Բայց այդ եւս յատուկ ուսումնասիրութեան խնդիր է։ Մեր նպատակի համար այստեղ բաւական է այն, որ ապահովապէս կարելի է ասել, որ ժողովրդական առակները բաւական առատ թուով մտել են Առակագրքերի մէջ։

Այսպիսով ուրեմն, առակները դառնում են մի տեսակ միջոց ժողովրդական տարրերը թէ՛ ըստ ձեւի, թէ՛ ըստ բովանդակութեան մտցնելու մեր հին գրականութեան մէջ, եւ դրանց միջոցով մեր գրականութիւնը հետզհետէ մօտենում է ժողովրդին, ենթարկւում է աշխարհիկ ոգուն եւ հոսանքին։ Սկսում են գրականութիւնը յօրինել նաեւ աշխարհականների, ժողովրդի համար։ Ուստի եթէ Վարդանայ առակների հին ժողովածուների մէջ երեւում է աւելի կրօնական ուղղութիւնը, հետագայ ժողովածուների, կամ հին առակների նոր մշակութիւնների մէջ տեսնում ենք նաեւ նոր, ոչեկեղեցական մտածողութեան նշանակներ. եւ, որ գլխաւորն է՝ ժողովրդական իրական կեանքի պատկերը մի բոլորովին նոր աշխարհայեցողութեամբ։ Եւ այս այսպէս է ոչ միայն Վարդանայ, այլեւ արդէն Մխիթար Գօշի առակների մէջ։ Այստեղ հնարաւոր չէ մանրամասն խօսել մեր հին գրականութեան այս նոր ոգու բոլոր կողմերի մասին. կ՚առնենք միայն նրանցից մէկը հետեւեալ գլխի մէջ։

## ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՆ ԱՌԱԿՆԵՐԻ ՄԷՋ

1. Դասակարգային պայքարը։— Այս հատուածի առաջին գլխի առաջին պարագրաֆի մէջ արդէն տեսանք, որ Բագրատունիների իշխանութեան շրջանից ի վեր աւելի ու աւելի ծանրացած էր աշխատաւոր ժողովրդի տնտեսական դրութիւնը։ Մինչ մի կողմից՝ երկրի հարուստները, լինին աշխարհական թէ եկեղեցական, ազնուական թէ քաղաքացի վաճառական, — փարթամացած վայելում էին կեանքի բարիքները, միւս կողմից՝ աշխատաւորութիւնը գիւղում ու քաղաքում տառապում էր չքաւորութեան ճիրաններում։ Իշխողների հարստութեան աղբիւրը կազմում էր ոչ միայն առեւտուրն ու վաշխառութիւնը եւ արդիւնագործութիւնը, այլեւ աշխատաւորների շահագործումը. բուրժուազիան կեղեքում էր մանր արհեստաւորներին։ Հողերը կենտրոնանում էին աշխարհական ու հոգեւորական իշխանաւորների եւ վանականների ու վաշխառուների ձեռին, որոնց տնտեսութեան հիմքը կազմում էր երկրագործութիւնն ու շինականների հարստութիւնը, թէկուզ եւ կային «հողագործ իշխաններ» եւ վանականներ, որոնք իրենք անձամբ էին մշակութիւն անում։ Այս տնտեսական-սոցիալական յարա-

բերութիւնների հետեւանքով տեղի էր ունենում մի պայքար ճնշող եւ ճընշուած դասակարգերի միջեւ, եւ այս ո՛չ միայն Զաքարեանների տիրապետութեան երկրում, այլեւ Արեւմուտքում, հայկական իշխանութիւնների մէջ, այլեւ մահմեդական տիրակալների ձեռի տակ։ Արտադրող ժողովուրդը նոյն կեղեքման ենթակայ էր նաեւ Թաթարների իշխանութեան օրով 13-րդ եւ հետագայ դարերում։

Այս տնտեսական հակասութեան հետեւանքով առաջած դրութիւնն ու դասակարգային պայքարն արտայայտուած գտնում ենք առակների մէջ։[1] Տեսնենք, թէ ինչպէս է գծագրւում հասարակական կեանքի պատկերն առակների մէջ, աւելի Մխիթար Գօշի, նկատի ունենալով, հարկաւ, ոչ այնքան առասպելական, որքան խրատական մասերը, որովհետեւ մինչ առաջինները կարող են ընդհանուր բնաւորութիւն ունենալ եւ մեծ մասամբ այդպիսի են, վերջինները ծագում են հայ հեղինակներից, որոնք եւ իրենց դասակարգի գաղափարախօսներն են։ Վարդանի առակների մէջ արծարծւում են ընդհանրապէս նոյն գաղափարներն, աւելի ազատախոհութեամբ։ Այստեղ կ՚առնենք յստակապէս, նախ՝ ազնուականութեան եւ աշխատաւոր ռամիկ դասի յարաբերութիւնը եւ երկրորդի պայքարն առաջինի դէմ. ապա՝ այն խուլ պայքարը, որ երեւում է մի կողմից՝ քաղաքի տարբեր արհեստաւորների, միւս կողմից՝ քաղաքի եւ գիւղի միջեւ. երրորդ՝ թէ ի՛նչ վիճակ ունի եկեղեցականութիւնը եւ ի՛նչ կարծիք ունեն նրա մասին աշխատաւորները, կամ աշխատաւորութեան կռիւը հոգեւորականութեան դէմ. եւ վերջապէս՝ հոգեւորականութեան հայեացքը հայերի եւ այլազգիների իրար հետ յարաբերութեան վերաբերմամբ։[2]

2. Աշխատաւորութեան պայքարն ազնուականութեան դէմ։— Երկրի գլուխը Թագաւորն է, որ ունի իր երկրորդը։ Առակախօս Մխիթարը Թագաւորի երկրորդն անհրաժեշտ է համարում։ «Հարկաւոր ցուցանէ առակս դերկրորդն լինել Թագաւորի եւ բնաւ կարգաց. զի ոմն զբարեկարգութիւն պահիցէ, եւ միւսն զմարտսն վանիցէ» (Մխ. ԿԸ. 64)։ Մնացած իշխաններին էլ Թագաւորն ըստ պատշաճի պաշտօններ է տալիս (Մխ. ՀԶ. 70)։

Թագաւորի գործը գլխաւորապէս այն է, որ նա կամ ասպատակում է ուրիշ երկիրներ, կամ թէ իր երկրի մէջ տեղէտեղ շրջելով՝ ծանրանում է իրայինների վրայ։

---

1 Սրանով, հարկաւ, չենք ուզում ասել, թէ նախորդ դարերում չի եղել դասակարգային պայքար։ Մեր հեղինակները լռում են այդ մասին, բացի գուցէ Արշակաւանի դրոյցից։ Մեր նոր պատմաբաններն այդպիսի դասակարգային կռիւ են ուզում գտնել Յովհաննէս կաթողիկոսի Պատմութեան իրար յաջորդող երկու ասացուածների մէջ։ Բայց դրանցից երկրորդը նրանք, գրաբար լաւ չիմանալուց, բոլորովին սխալ են հասկանում. ուստի նախորդ ասացուածի իմաստն էլ կասկածելի է մնում դասակարգային պայքարի տեսակէտից։ Այդ պայքարը մեր գրականութեան մէջ շատ որոշ երեւան է գալիս ամենավաղ առակների մէջ, որ եւ առաջին անգամ ցոյց է տուել տողերիս գրողն ներքեւում յիշուած իր աշխատութեան մէջ։

2 Մ. Աբեղեան, «Հայոց միջնադարեան առակներն եւ սոցիալական յարաբերութիւնները նրանց մէջ», Երեւան, 1935. (արտատպուած է «ՀԽՍՀ Կուլտուրայի պատմութեան Ինստիտուտի աշխատութիւնները» ժողովածուի Ա. հատորից, 1935 թ., Երեւան)։

*Յետ կարգելոյ զիշխանս ի ջուրսն, Լեւիաթա՛ն արքայ, ասեն, զիա՞րդ է՝ զի ոչ շրջիս կամ ասպատակես: Եւ նա ասէ. Զի թշնամիք առ մեզ ոչ գոն, եւ անկարօտ եմք իմիք. զմերս վայելեսցուք. եւ ընդ ձեզ ոչ զբօսանամք, զի մի ծանր ձեզ եղէց: Եւ ասացեալքն հաճոյ նոցա թուեցաւ:*

*Ակնարկութիւն առակիս այսպէս է. զի թէ թագաւորութիւն յայլմէ ոչ նեղիցի ի թագաւորէ՝ եւ բաւական կեանս ունիցի, բարի է խաղաղասէր լինել, նա եւ ոչ իւրոցն ծանրանալ շրջելով. ապա թէ հարկաւորի ի թշնամեաց, անարգութիւն է ոչ տալ պատերազմ* (*Մխ. ԿԶ.* 63):

*Մխիթարն, ուրեմն, խրատում է, թէ երբ թագաւորը բաւական ապրուստ ունի, աւելի լաւ է խաղաղասէր լինել, եւ ոչ իրայինների վրայ ծանրանալ շրջելով: Թագաւորը ոչ միայն շրջելով է կեղեքում, այլեւ իր մօտ երկրպագու եկած իշխաններից շատերին կլանելով իրեն կերակուր է դարձնում: Նրանք էլ թագաւորից օրինակ առնելով՝ աւելի յանդուգն են դառնում, աւելի եւս յորդորւում են չարիք գործելու եւ իրենցից թոյլերին եւ փոքրերին են ուտում: Եւ եթէ թագաւորը մէկ-մէկ մեղադրում ու յանդիմանում է այդպիսի իշխաններին, այդ արժէք չի ունենում:*

*Մեղադրեցան ձկունք ի թագաւորէն իւրեանց, թէ՝ Ընդէ՞ր զայլս ուտէք զմանունսն: Եւ նոքա համարձակեալ ասեն. Վասնզի ի քէն ուսաք. եկեալ բազմաց յերկրպագութիւն, եւ կլանելով կերակուր քեզ արարեր. ըստ այսմ եւ ինքեանք եւս յանդըգնագոյնք եղեն:*

*Զայնոսիկ յանդիմանէ առակս, զի որով ինքեանք գործեն, զայլս բամբասել կամելով առաւել եւս ի չարիս յորդորեն՝ քան թէ կարճեն. վասն զի գործով՝ քան բանիւ ի դէպ է լինել խրատուն* (*Մխ. Առ. ՀԵ*, 69):

*Ահա մի թագաւորութիւն, որ հիմնուած է այնոր վրայ, որ զօրեղը թոյլին ուտում է: Իսկական եւ վերջին ուտուողը ժողովուրդն է կամ աշխատող դասը՝ լինի քաղաքացի թէ շինական, իսկ ազնուականները՝ թագաւորը, իշխաններն եւ եկեղեցականները՝ միայն վայելողն են: Այսպէս եւ Մխ. Է.* 9.

*«... Զձեզ իշխանս կարգելով՝ այնպէս թագաւորեմ... Եւ յօրինեաց զկարգ թագաւորութեանն յանձն առնլով նոցա զորթ՝ գինէպետ, եւ զթզենի՝ հիպատոս, զդժնիկ՝ քահանայպետ, եւ զնռնենի՝ բժշկապետ. եւ զայլս ի պտղոց ի դարմանս, զմայրս՝ ի շինուածս, զանտառս՝ յայրումն, զմորենի՝ ի բանտ, եւ զայլսն ամենայն յիւրաքանչիւր գործ»:*

*Այրուողը հասարակ ժողովուրդն է, որ, հարկաւ, դոհ չէ իր վիճակից. ուստի առակախօսը եզրակացնում է.*

*Յանդիման կացուցանէ առակս, թէ ոչ ոք կարէ ճոխանալ առանց անփառից, եւ ոչ բարձրանալ առանց անարգից:*

*Շատ տխուր է այդ թագաւորութեան դրութիւնը: Մխիթարի մի շարք առակների մէջ այս սոցիալական անհաւասար դրութիւնը խիստ զգալի է: Ժողովուրդն իշխանների սեփականութիւնն ու ստացուածքն է: Նրանք շատ ուրախանում են, երբ իրենց հպատակները յաջողութիւն են ունենում, բայց այդ ոչ թէ իրենց բարեսրտութիւնից, այլ որովհետեւ այդ յաջողութիւնն էլ իրենցն են համարում, քանի որ ուզած ժամանակ կարող են հպատակներից ամէն մէկին խփել եւ ուտել:*

*Վարուժանի տեսեալ բազմորդի զլոր՝ գոհանայր զԱստուծոյ, եւ խնդակից նմա լինէր: Եւ ասէ լոր. Եթէ ճշմարտութեամբ գոհանաս, երանի է քեզ: Եւ անդէն*

հնար զմի ի ձագուց նորա՝ եւ ըմբռնեաց: Ասէ լորն. Ահա յայտ եղեւ, զի ոչ վասն Աստուծոյ գոհանայիր, այլ վասն ագահութեան:

Յայտնէ առակս զբարս իշխանաց, զի ուրախ լինին ընդ ձեռամբ անկելոց ընդ յաջողուածսն, ինքեանց վարկանելով զնոցայն՝ քան թէ ստացողացն (Մխ. ձժէ. 99):

Իշխանները, որ գողերին պատժում են, իրենք աւազակութեամբ ու գողութեամբ են պարապում:

Գող զբորէ ըմբռնեաց առիւծ. եւ նա ասէ. Զմեռեա՛լս ուտեմ, զի կենդանեաց ոչ յաղթեմ, իսկ դու զի յաղթող ես՝ անգանգատ զայդ գործես:

Զբռնակալ իշխանս առակս բամբասէ. զի զգողս պատժեն, եւ ինքեանք բռնակալութեամբ զնոյն գործեն, ըստ յանդիմանութեան առաքելոյ (Մխ. ՂԳ. 82):

Ո՞վքեր են այդ պատժուող գողերը.— միայն հասարակ ժողովուրդը: Իշխաններն ինչքան էլ գողութիւն ու զրկանք անեն, չարիքներ գործեն, նրանց համար դատ ու դատաստան չկայ: Դատուողն ու պատժուողը միայն ժողովուրդն է:

Դատելու ամենամեծ իրաւունքը, նոյնիսկ կաթողիկոսից աւելի, պատկանում է վարդապետին, այսինքն միջնադարեան գիտնականին: Բայց սա իրաւունք ունի դատելու միայն ժողովրդին, աշխարհականին, ռամիկին: Իսկ երբ իշխանաւորն է յանցանք գործում, այդ ժամանակ իբր թէ ինքը ժողովուրդն ասում է, թէ ժողովուրդը չպէտք է իշխանաւորին դատի. «Զի ամենայն իշխանաւոր Աստուծոյ աղխիւ ծառայ է»: Բայց չէ՞ որ յանցանքի մէջ բռնուել է այդ «աղխիւը»:— Այո՛, բայց այդ «ինքն գիտէ եւ Քրիստոս»: Ուրեմն իշխանաւորի դատը միայն Աստուած պիտի անի եւ ոչ ժողովուրդը, որ իշխանութեան տակ լինելով, ասում է առակախօսը, պարտաւոր է հնազանդ մնալ իր իշխանին, նոյնիսկ եթէ նա գող աւազակ լինի:

Ի՞նչ պիտի լինէր դրա հետեւանքով աշխատաւորի դրութիւնը: Բերենք Վարդան Այգեկցու իրեն առակներից մէկը.

## ՄԵԾԱՏՈՒՆՔ ԵՒ ՄՇԱԿՔ, ԻՇԽԱՆՔ ԵՒ ՇՈՒՆՔ ԵՒ ԹՌՉՈՒՆՔ

Եւ զարմեալ այս չէ զարմացումն, ով ժողովուրդք Աստուծոյ, թէ Աստուած ի ձեռն մեղաւորի զայլ մեղաւորս որդորէ՝ դառնալ առ նա՝ յուսով ապաշխարութեանն: Եւ զայս վասն այնորիկ առնէ Աստուած, զի տեսցեն մարդիքն եւ զնա փառաւորեսցեն եւ ոչ զմարդն. որպէս եւ ցուցանեմ ձեզ յայտնապէս եւ պարզ աւրինակաւ:

... Եւ արդ՝ ահա տեսանեմ զմեծատունսն, որ ի ձեռն մշակաց գործեն եւ փշովք պատեն եւ պահեն զայգիս եւ զդրախտս եւ ի ժամ ճաշակման ողկուզիցն եւ պտղոցն ոչ զմշակսն յիշեն եւ ոչ զփուշն, այլ տանուտեառն շնորհակալ լինին. եւ նմա կեանք եւ խաղաղական հայցեն յԱստուծոյ: Նոյնպէս եւ ժառագարդ մեծամեծ իշխանքն ի ձեռն շանց եւ գիշակեր թռչնոցն որսան զերէսն եւ զթռչունսն: իսկ ի ժամ ճաշակման պարարտ եւ անուշահամ մսոյն ոչ զշունսն յիշեն եւ ոչ զթռչունսն, այլ իշխանին լինին շնորհակալ, եւ յԱստուծոյ խնդրեն երկար ժամանակաւք վայելել նմա զիշխանութիւն (Առ. Վարդ. Գ. 77, Ե.):

Այսպէս ուրեմն, այն աստիճան ընկած եւ մոռացութեան է տրուած աշխատաւոր շինական դասը, որ իշխանների համար գործող մշակները հաւասարւում են այն շներին ու գիշատիչ թռչուններին, որոնց միջոցով իշխանները որս են անում: Վայելում են իշխաններն աշխատաւորի ձեռքի արդիւնքը, եւ աշխատաւորը մնում է քաղցած: Վարդան Այգեկցին այդ պատմում է իբրեւ մի սովորական հանրածանօթ երեւոյթ: Ուրիշ տեղ, սա—

կայն («Վասն զրկանաց») նա պաշտպանել է աշխատաւորի իրաւունքը դժոխքի սարսափներով զարհուրեցնելով մշակի վարձը կողողներին: Սոցիալական խնդիրներ, սակայն, նա չի յարուցանում: Բայց արդեօք կեանքի մէջ չկայի՞ն դրանք: Տե՛ս Մխիթար Գոշի առաջին առակը:

*Աստուած յառնելն երբեմն զարարածս՝ երկեաւ հակառակէ. եւ խառնեաց զծանրն ընդ թեթեւին, զտկարն ընդ հզօրին, զի մի հակառակ դարձցին՝ առ միմեանս, եւ ոչ ընդ արարչին:*

*Խրատէ առակս զթագաւորս՝ կարգել մեծամեծս ընդդէմ միմեանց. զի մի ընդ թագաւորս, այլ ընդ միմեանսն պատերազմեսցին* (Մխ. Ա. 5):

Ըստ այս առակի, թագաւորի կառավարութեան սիստեմն այն է, որ նա «մեծամեծներին ու նուաստներին» իրար հետ կռուեցնում է, որպէսզի իր դէմ չելնեն: Եւ վարչութեան այս եղանակը մի անհրաժեշտութիւն է համարում թագաւորական իշխանութեան գաղափարախօս եւ մեծ իշխանների անձնական բարեկամ Մխիթարը, որ խրատում է այդպէս վարուել: Նա մինչեւ անգամ Աստծու անունով սրբագործում է այդ, պատճառաբանելով, թէ Աստուած ինքն էլ այդպէս է վարուել արարչագործութեան ժամանակ:

Այսպէս ուրեմն, իրար դէմ հանել «մեծամեծներին եւ նուաստներին»: Բայց ովքե՞ր են դրանք: — «Մեծամեծքն» ազնուականներն են, ազատները, իսկ «նուաստքը», ոչ–ազնուականները, անազատները, կամ «վար, ցած, խոնարհած, յետին, տառապեալ, չնչին, խեղճ» մարդիկը, ինչպէս բացատրուած է այդ բառը Հայկազնեան լեզուի Առձեռն բառարանի մէջ: Թէ այս բացատրութիւնը ճիշդ է, երեւում է Մ. Խորենացու Հայոց Պատմութեան մի հատուածից (Ա. գլ. ԻԴ.): Այստեղ պատմագիրը երգիչներից առնելով գծագրում է Թագաւորի գաղափարական տիպը, որի համար ի միջի այլոց ասում է. «Ոչ ընդ լուսաւորին խանդայր եւ ոչ ընուաստն արհամարհէր»: «Լուսաւորքն» ազնուականներն են: Մ. Խորենացու ձեռագրների Ա. խմբի մէջ «ընուաստն» բառի փոխանակ կայ «զաղքատն»: Կը նշանակէ՝ հին ժամանակ նուաստ եւ աղքատ բառերը հասկացուած են իբրեւ հոմանիշ: Այսպէս «նուաստ» կոչուել է ռամիկը, հասարակ աշխատաւոր դասը, ինչպէս այժմ էլ կոչում ենք վերին կամ բարձր դասակարգ եւ ստորին կամ ցած դասակարգ:

Մխիթար Գոշը, ուրեմն, խրատում է, որ թագաւորն ազնուականներին ու հասարակ, աշխատաւոր ժողովրդին իրար դէմ հանի, որպէսզի չկարողանան թագաւորի իրեն դէմ ելնել: Մի անգամ որ Առակագիրն այդ է քարոզում, նշանակում է իրականութեան մէջ գոյութիւն է ունեցել այդ կռիւը, դասակարգային պայքարը, եւ հէնց այդ է պատճառը, որ Մխիթարը հանդէս գալով իբրեւ թագաւորական իշխանութեան գաղափարախօս՝ ամենից առաջ, իր առաջին առակի մէջ հէնց այն հոգացողութիւնն ունի, որ յեղափոխական շարժումն ուղղուած չլինի թագաւորի դէմ: Կա՞ր արդեօք այդ շարժումը:

Դասակարգային պայքարը տեղի է ունենում այն ժամանակ, երբ ճնշուած, հարստահարուած դասը գիտակցում է իր դրութեան վատթարու–

թիւնն եւ իր շահերի հակադրութիւնը ճնշողների ու հարստահարողների դէմ։ Եւ Մխիթարի առակների մէջ տեսնում ենք, որ ռամիկը շատ լաւ գիտէ իր տառապագին դրութիւնը։ Նա գիտէ, որ տէրերն իրեն տանջում են, կաշին քերթում են ոչ միայն կենդանի ժամանակ, այլեւ մեռնելուց յետոյ։ Ուստի եւ նա ստիպուած է թաքնուել տէրերից։

Մեղադիր եղեն ոմանք կղբու, եթէ զի՞րդ ի ջուր յաճախ դեգերիս։ Եւ ասաց. Զի ոչ շատանան զերկուորիս առ կենօք առնուլ, այլեւ մահուամբ մերկ ի մորթոյ առնեն։

Զչարաց տերանց առակս ազդէ, զի կենօք տանջի եւ մահուամբ (Մխ. ՂԶ. 83)։

Աշխատաւորն իր տէրերից ոչ մի լաւ բան չի սպասում․ մինչեւ անգամ Առակախօսը խրատում է, թէ պէտք է զգոյշ լինել տէրերից, զի նրանց բարքն այնպիսի է, որ նոյնիսկ «քաղցր» տէրերը միշտ էլ բարի չեն։

Հաւ ընտանի յըմբռնել ստացողին իւրոյ, յոյժ աղաղակէր. եւ ոմանք մեղադիր լինէին, եթէ զմէ վայրապար կռինչս ամբառնաս։ Որոց ասաց, թէ՝ Զարհուրիմ, զի ոչ յամենայն ժամու վասն բարւոյ ըմբռնէ. զի երբեմն գլխիվայր կախէ, եւ բազում աւուր ճանապարհ տանի. եւ երբեմն ի վերայ կայծակաց խորովէ եւ ուտէ։

Զբարս տերանց առակս յայտնէ, զի ոչ է յամենայն ժամու բարի ի նոցանէ գտանել. թէպէտ եւ քաղցր իցեն. այլ երբեմն եւ չարի ակն ունել արժան է, եւ զգաստ կեալ. եւ պատրաստութեամբ վարիլ ընդ նոսա (Մխ. ՃԻԵ. 106)։

Խեղճ մարդիկը տառապում են իրենց չքաւորութեան մէջ եւ մինչ մըտածում են իրենց դառն դրութիւնը թեթեւացնել, իշխաններն ու բռնակալ թագաւորներն աւելի եւս տանջում են նրանց կառ ու բեկարով եւ կողոպտելով։ Կարդանք «Աղօթք աղքատի» առակը.

Այր մի աղքատ երթայր ի քաղաք մի. ի ճանապարհին հիւանդացաւ եւ աղաչէր զԱստուած պատրաստել նմայ գրաստ տանել ի չինն. եւ ահա գայ ոմն չարաբարոյ՝ հարկանէր զնայ։ Արի յոտն. ասէ, եւ շալկէ զքուռակս. զի ոչ կարէ գալ զհետ մաւրն իւրոյ։ Եւ յարեաւ եւ լար դառնապէս. զի ոչ կարէր կանգնել. եւ այրն չարաբարոյ ոչ դադարէր ի հարկանելոյ զնայ։ Եւ նայ ասէ. Վա՜յ ինձ. Աստուած իմ, փոխանակ թեթեւացուցանելոյ ծանրացուցեր զվիշտս։

Ցուցանէ առակս, թէ աղքատքն տառապին վասն չքաւորութեան եւ խնդրեն ինչք եւ ստացուածք ի յԱստուծոյ. եւ թագաւորքն եւ բռնաւորքն, զինչ ունին, զան ալ կողոպտեն եւ թալնեն (Առ. Վարդ. Բ., 196, ՃՂԵ)։

Թէ ո՛րքան հետզհետէ աւելի վատթարանում է աղքատների տնտեսական դրութիւնը, եւ իշխանները մէկը միւսից աւելի դաժան են դառնում, այդ լաւ արտայայտուած է հետեւեալ «Իշխան եւ այրի» առակի մէջ.

Իշխան մի կայր՝ յոյժ չար եւ անիրաւ։ Եւ այրի կին մի կայր ի նոյն քաղաքի, եւ իշխանն հարկ պահանջելով նեղէր զնա. եւ կինն աղօթելով ասէր, թէ Աստուած զինքն խաղաղութեամբ պահէ։ Գնացին ասացին իշխանին, թէ քո չարիդ համար աղաւթք կու առնէ։ Եկն ձեռնաւորն եւ ասէ. Ես քեզ լաւ չեմ արարել. դու ինձ համար է՞ր կու աղաւթես։ Նայ ասաց, թէ քո հայրն վատ մարդ էր, ես անիծեցի, նա մեռաւ, դու նստար ի նորա տեղն այլ (=աւելի) խիստ չար. կու վախեմ, թէ մեռանիս, նա քո որդին այլ (=աւելի) խիստ լինի չար (Առ. Վարդ. Բ., 328, ՅԾԶ)։

Մարդիկ արդէն սկսել են գիտել սոցիալական անհաւասար դրութիւնը եւ մտածել դրա մասին։ Զրկանք կրողները դասակարգային գիտակցութեան գալով, բնականաբար տրտնջում ու դանդատւում են իրենց վիճակից։ Առակ-

ների մէջ «յանդգնում են» խօսել իշխանների դէմ, քննում են նրանց գործերը, դատում են եւ շատ չարիքների պատճառը նրանց համարում («Դատիչք լինին վարուց իշխանաց, եւ բազում պատճառս չարեաց դնեն նոցա»): Այս արդէն յեղափոխական մտքեր են, իսկ «յեղափոխական մտքերի գոյութիւնը որոշ դարաշրջանում՝ ենթադրում է արդէն յեղափոխական դասակարգի գոյութիւնը»: Կարդանք այս առակը։

Տրտունջ եղեւ տնկոց ամենեցուն զԹագաւորէն իւրեանց, թէ առաջօք բաշխեաց զիւրաքանչիւր պատիւ. զի զոմանս ի տունս բնակեցոյց՝ որպէս զնարինջ, և զոմանս ի բուրաստանս, և զոմանս յայգեստանս՝ և պատուին ի մարդկանէ, և զոմանս իբրեւ զանարգս ի վայրի զպտղաբերս, որ և կերակուր լինին խոզից և կոխան գազանաց, և զայլս յանտառս՝ որպէս զմայրս զսարդի և զնոճի և որ նման սոցին. զոր հարկանեն անխնայ, և անարգ քարշանօք ի շինուածս և յայրումն պատրաստեն: Եւ նորա լուեալ կոչեաց զնոսա, և սաստեալ ի վերայ նոցա ասէ. Ո՞չ գիտէք, եթէ զխորհուրդ Թագաւորին ոչ ամենեքեան գիտեն, որպէս և ոչ զԱստուծոյն. և թէ այլ եւս յանդգնիք, մեծագոյն ունիք պատուհասիլ: Եւ զարհուրեալք լռեցին:

Հանճարեղս զմեզ լինել կամի առակս, և հնազանդս Աստուծոյ և Թագաւորաց, և ոչ տրտնջել զանճառ խնամոցն Աստուծոյ, և ոչ ծածուկ խորհրդոց Թագաւորաց. այլ իւրաքանչիւր գործոյ ուշ ունել: Զի ոչ եթէ վայրապար ինչ եղեւ կարգել ի Թագաւորէն տնկոց զնոսա, որպէս և ոչ Աստուած և ոչ Թագաւորք տնօրինեն վայրապար. զի զոմանս յայգիս կարգեաց ի պտղաբերաց, զոմանս ի բուրաստանս, և զոմանս զհամացեղս յանտառս, այսպիսի պատճառաւ զի գազանաց և անասնոց կերակուր լինիցին, և մի նեղեսցեն զմարդիկ զտածեալս ի նոցանէ՝ ուտելիսն. և թէ ի տունս ոմանք տնկեցան, անուտելիք մանաւանդ են. ուստի համարին մարդիկ լինել ի զօսանս տեսլեան եւ ի բուրումն, զի կերակուր է ըռնգաց բուրումն, եւ տեսլեան ի զուարճացումն՝ որպէս բուրաստանք. նա եւ ի բժշկութիւն եւս: Եւ այլ թէ անտառք ի շինուածս եւ յայրումն պատշաճեցան, եւ այս նախախնամաբար, զի մի՛ լիցի՝ որ զպտղաբերս հարկանիցեն ի շինուածս և յայրումն: Այսպիսի եւ Աստուծոյն տնօրինի եւ Թագաւորաց զանխուլ և անքննելի դատաստանաւ, եւ թէ ոք յանդգնի անկարգաբար ասել, դատապարտի (Մխ. Ի. 21):

Առակախօսը փորձում է «այրուողների» տրտունջը լռեցնել եւ քարոզում է հնազանդութիւն Աստծուն եւ Թագաւորներին եւ նոյնիսկ դատապարտում ու սպառնում է իշխանների դէմ տրտնջացողներին: Բայց կարդանք հետեւեալ առակը.

Կարգեցաւ հրամանատար և ի Թագաւորէն բուսոց ճակնդեղ ի վերայ բանջարոց իբրեւ զտեսող յամարայնի ի կերակուր մարդկան: Եւ խանդացեալ սեխ եւ ձմերուկ, և այլ պտուղք բանջարաց եւ պարտիզաց՝ թաղթ եւ շաղգամ եւ ստեպղին և սխտոր չարախօսել՝ եթէ սաստիկ ամենեւին է, եւ գոչող որովայնի: Եւ գիտացեալ արքայի նոցա, տանջել զնոսա հրամայեաց, եթէ զի յանդգնիք ընդդէմ իշխանի, զի հնազանդել պարտիք եւ ոչ քննիչք լինել, զի մի անկարգութիւն լիցի:

Յածուցանէ առակս զյանդգնութիւն մարդկան, որ դատիչք լինին վարուց իշխանաց, եւ բազում պատճառս չարեաց դնեն նոցա. եւ ոչ իմանան՝ թէ անոքիւք լուծանին կարգք իշխանութեանն՝ մինչեւ ի բնաւին ժամանէ իշխանն Աստուած (Մխ. Ծ. 51):

Տրտնջացողներին ուրեմն տանջում են, որովհետեւ ոչ ոք չպիտի յանդգնի իշխանի դէմ: «Զի հնազանդել պարտիք եւ ոչ քննիչք լինել, զի մի՛ անկարգութիւն լիցի»: Այդ քննութիւնը, ինչպէս երեւում է Առակախօսի վերջին նախադասութիւնից, «հասած է եղել մինչեւ ամէնքի իշխան Աստուծուն»: Բողոքողները երբեմն Թագաւորի սաստելուց զարհուրած՝ լռում են: Բայց մի անգամ որ մարդիկ սկսել են տրտնջալ իրենց վիճակից, այլեւ

հնարաւոր չէ լոկ խօսք ու խրատով լռեցնել եւ հնազանդեցնել բողոքողներին: Դասակարգային կռիւն սկսուած է իշխանների ու նրանց բռնութեան ենթակայ գիւղացիների միջեւ եւ առակագիր վարդապետը, որ իր կոչումով իբրեւ դատաւոր՝ իբր միջնորդ է երկու դասակարգերի՝ ազնուականութեան եւ շինականութեան միջեւ, ստիպուած է առերես գոնէ ամէն մէկին իր տեղն ու արժէքը տալ եւ քարոզել, թէ՝ «ոչ ոք կարէ ճոխանալ առանց անփառից, եւ ոչ բարձրանալ առանց անարգից» (Մխ. Ի. 10): «Բնաւից կարօտ լինել մեծամեծաց եւ փոքունց առակս ցուցանէ, ոչ միայն թագաւորաց, այլ ամենեցուն՝ իշխանաց եւ այլոց աշխարհականաց. նմանապէս եւ յեկեղեցիս. զի պէտս ունին փոքունց եւ անարգաց» (Մխ. ՃԺԳ. 96): Բայց դրանով բնաւ չի բարուքւում աշխատաւորի վիճակը: Ի՞նչ մխիթարութիւն աշխատաւորի համար, թէ իշխող եւ իշխուած դասակարգերն էլ պէտք են եւ իրենց արժէքն ունին աշխարհում, քանի որ նրան կարգել են ինչպէս «զմայրս ի շինուածս, զանտեսան յայրումն». քանի որ նա աշխատում է, եւ ուրիշները վայելում են, իսկ ինքը միայն «այրւում է»: Այդ տանջուողները, մաշկուողները, ինչպէս տեսանք, թաք են կենում իշխաններից եւ նոյնիսկ մտածում են. «Ելցուք եւ մի՛ դարձցուք առ նոսա». ճիշդ ինչպէս մեր ժողովրդական վէպի՝ «Սասնայ Ծռերի» մէջ[1] իշխանից զզուած ժողովուրդն ուզում է թողնել հեռանալ իշխանի երկրից:

Եղեւ երբեմն տրտունջ անդէոց, թէ՝ Վասն ծննդոց մեր աշխատիմք. եւ սնեամբք ժողովեմք կաթն. եւ մարդիկ ձմլեալ զպտուկսն առնուն ի մէնջ զվաստակս մեր. ելցուք եւ այլ մի՛ դարձցուք առ նոսա: Եւ մի ոմն ի նոցանէ իմաստուն ասէ. Ոչ է այդպէս. զի զաւելորդսն քան զպէտս ծննդոց մերոց առնուն մարդիկ. եւ խնամեն մարդիկ զմեզ եւ ծնունդս մեր. զի առնումք շատ՝ քան թէ տամք: Եւ ուսեալք զայս՝ ուրախ եղեն:

Խրատէ առակս զքըթինջող սպասաւորս, որք շատ կարծեն զինքեանցն քան զտերանցն զոր առնուն, այլ ուսցուք յիմաստնոյ գիտել՝ զի սակաւ է ինքեանցն (Մխ. Չ. 73):

Առակախօսը փորձում է, ուրեմն, ուրիշ կերպ համոզել բողոքողներին: Աշխատաւորները չպէտք է տրտնջան, թէ իշխանները նրանց աշխատանքը վայելում են, զի ազնուականները իբր նրանց աշխատանքի աւելորդ մասն են միայն առնում եւ դրա փոխանակ խնամք են տանում, պահպանում են նրանց: Առակախօսը ձգտում է նոյնիսկ համոզելու, թէ իբր տէրերի տուածը կամ կատարածն աւելի շատ է, քան առածը: Աշխատաւորներն «իմաստուններից», այսինքն՝ հոգեւորականներից իմանալով այդ, հանդարտում են մի առժամանակ եւ նոյնիսկ ուրախանում են միամտութեամբ: Բայց դրանով չի վերջանում դասակարգային պայքարը: Ինչքան էլ աշխատաւորները տգէտ լինէին, պիտի տեսնէին, որ կան շատ իշխաններ, որոնք աշխատաւորներից կեղեքում են, բայց իրենց հարկատուներին ոչ խնամում են եւ ոչ պահպանում գայլերի ու գողանների դէմ, այլ, ընդհակառակն, իրենք գայլ դարձած՝ տանջում են նրանց: Կարդանք Մխիթարի հետեւեալ առակը.

1 Մեր «Սասնայ Ծռեր» ժողովրդական վէպը, ինչ որ պատմականին է վերաբերում, իր վերջնական յօրինուածքն ստանում է մինչեւ 13-րդ դարի կէսերը: Տե՛ս Մ. Աբեղեանի «Հայ ժող. վէպը», Թիֆլիս, 1908. այլեւ «Ազգագրակ. հանդէս», գրքեր 13–17, 1906—1908:

Բեկեալ առիւծու ոտք՝ տրտնջէր զբնաւ կենդանեաց, եթէ՝ Հարկատուք իմ էք, զի իշխան գազանաց եմ. ընդէ՞ր այժմ ոչ պատարագիք՝ զի դարմանեցայց: Եւ ասեն. Զի ի քէն ինչ ոչ գտաք պաշտպանութիւն՝ ոչ յարջոյ եւ ոչ ի գայլոյ եւ ոչ յայլ ինչ գազանէ. նա եւ ոչ դու իսկ ի մեզ խնայեցեր. այլ մեզ պատարագել Աստուծոյ արժան է, որ այդպիսի չարեաց զքեզ պատահեցոյց:

Յայտնի է առակիս միտք. զի չար յառաջնորդաց յաշխարհային եւ յեկեղեցականաց՝ տանջելով զհնազանդեալսն եւ ոչ յայլոց պահէն ի վտանգէ: Եւ ըստ արժանոյն անկեալք ի չարիս՝ Աստուծոյ գոհութիւն մատուցուք, զի ոչ ի մէնջ եղեւ (Մխ. ՁԵ. 76):

Իշխանները փորձում են մի ուրիշ կերպ էլ արդարանալ:

Թռչունք առ հասարակ զաղաղակ բարձին, եթէ՝ Չար է իշխանս մեր արծիւ, զի միշտ ի մէնջ կերակրի՝ եւ յայլոց որսողաց ոչ պահէ: Եւ լուեալ ասաց, եթէ՝ Զինչ քան զայն ձեզ բարի, զի երկու ծնանիմ որդի՝ եւ զմինն ապականեմ, զի մի՛ ծանր ձեզ եղէց. եւ մերձ լինելով իմ՝ ոչ ոք կարէ որսալ զձեզ. եւ այլ ուրեք յանպատրաստի զձեզ գտեալ՝ որսան. զուր զինէն ամբաստանէք:

Ըստ առակիս սովոր են առնել թագաւորք ամենայն. առ իւրեանս ունել որդի՝ ժառանգ թագաւորութեան, զի մի՛ պատճառ կործանման իցեն յաշխարհի. եւ ի մերձ կեալն նոցա՝ չիշխէ ոք գործել չար (Մխ. ՃԺԴ. 97):

Ձեզ համար դրանից աւելի ի՞նչ լաւ բան կայ, — ասում են թագաւորները աշխատաւորներին, — որ երկու որդի եմ ծնում, բայց մէկին սպանում եմ, որպէսզի ձեզ վրայ չծանրանամ: Այն, որ արեւելեան թագաւորներն իրենց որդիներին, բացի թագաժառանգից, կոտորել էին տալիս կամ հեռացնում իրենցից, Առակախօսը բացատրում է, ուրեմն, իբրեւ թագաւորի բարեհոգութեան նշան, որպէսզի իբր «չծանրանայ» աշխատաւորների վրայ, եւ կամ աշխարհի կործանման պատճառ չդառնայ: Բայց ուրիշների եւ հայ Արշակունեաց այդ սովորութիւնից ոչ ոք չէր խաբուիլ, ի հարկէ. ուստի նոյն առակի մէջ աւելանում է նաեւ հետեւեալը. «Եւ մերձ լինելով իմ ոչ ոք կարէ որսալ զձեզ, եւ այլ ուրեք յանպատրաստի զձեզ գտեալ՝ որսան. զուր զինէն ամբաստանէք»: Կը նշանակէ՝ թագաւորը կամ իշխանն իրաւունք ունի վայելելու աշխատաւորի վաստակը. բաւական է միայն, որ նրա հովանու տակ ապրելով՝ այդ աշխատաւորն ուրիշներից այլեւս չի կեղեքւում. «Ի մերձ կեալն նոցա՝ չիշխէ ոք գործել չար» (Մխ. ՃԺԴ. 97), ասում է Առակախօսը: Եւ եթէ այդպէս չի լինում, եթէ ուրիշներն էլ կեղեքում են, դրա մեղքն իբրեւ թէ իշխաններինը չէ: Բայց արդեօք հաւատա՞ւմ են դրան: Աշխատաւորները բողոքում են. «Չար է իշխանս մեր... զի միշտ ի մէնջ կերակրի եւ յայլոց որսողաց ոչ պահէ»:

Այդ չար իշխանն ահա, ինչպէս վերեւում բերուած ՁԵ առակի մէջ, մի օր թուլանում, ընկնում է, եւ հպատակներն ընդվզելով նրա դէմ, հնարաւոր են գտնում հարկ չտալ. ուստի եւ դադարեցնում են հարկատուութիւնը: Որի՞ կողմը պիտի լինի այժմ Առակախօս Մխիթարի համակրութիւնը: Նա գոհ է, որ ընկնում են այդպիսի չար ու տանջող իշխանները, լինին «յառաջնորդաց յաշխարհային եւ յեկեղեցականաց»: Բայց եւ այնպէս նա աւելի եւս գոհ է, որ չար իշխանները ժողովրդի ձեռքով չէ, որ պատժւում են. «Եւ ըստ արժանոյն անկեալք ի չարիս՝ Աստուծոյ գոհութիւն մատուցուք, զի ոչ ի մէնջ եղեւ» (Մխ. ՁԵ. 76): Ուրեմն դարձեալ նա չի մոռանում իր դասակարգը եւ չի ուզում, որ աշխատաւորի ձեռքով պատժուի

չար իշխանը։ Նոյնը նաեւ Վարդանայ առակների մէջ (Գ․ ԽԸ, էր․ 107)։ Եւ ոչ միայն այդ։ Ազնուականութեան գաղափարախօսը, հակառակ ժողովրդական առածի, թէ՝ «գեղ կանգնի, գերան կը կտրի», խրատում է, թէ տկարները, ինչքան էլ թուով շատ լինեն եւ միաբան, չեն կարող հզօրին յաղթել, եւ թէ խելօքութիւն կը լինի, որ այդ պատճառով տկարներն իրենց ուժը համեմատաբար պակաս ուժեղի, այսինքն՝ երկրորդական իշխանների դէմ փորձեն։

*Ժողովեալ երբեմն սատեղաց՝ ասեն ի նոյանէ ծերագոյնքն. Մեք բազում եմք. զիա՞րդ զտիւ եւ զգիշեր ոչ լուսաւորեմք նման արեգական եւ լուսնի: Ասէ մին. զի ոչ միաբանութեամբ վարիմք: Եւ խոնարհեալ միաբանութեամբ նախ հերքել զարեգակն, եւ ի ծագել լուսնի՝ պարտեցան եւ ասեն: Այսպէս ի սմանէ աղօտացաք, զի՞նչ եւ յարեգական ծագելն լիցուք: Եւ զղջացեալ զպարտութիւն խոստովանեցան:*

*Խրատէ առակս, թէպէտ եւ բազումք իցեն, եւ տկարք, հզօրի յաղթել ոչ կարեն: իմաստութիւն է՝ այլեւս տկարին զփորձ առնուլ՝ եւ զղջանալ որ եւ թողութեան է արժանաւոր (Մխ. Ե. 7):*

Մխիթարն ինչքան էլ մի կողմից տկարներին խրատում է չապստամբել հզօրների դէմ, միւս կողմից, սակայն, հզօրներին էլ զգուշացնում է տկարներից։

*Զբոյն մրջեան արջ փորէր եւ լեզուաւ ժողովէր եւ ուտէր. եւ հնարի մրջիւնն սատակել զնա. երթեալ առ պիծակ եւ զոռեխ եւ մժեխ եւ շանաճանճ եւ բզէզ եւ առ նմանս սոցին. եւ աղաչէ օգնել իբր ազգային: Ցուակցեն՝ հարկանին զաչս եւ զլսելիս արջուն, եւ հարկանէ զլուխ զքարի, եւ նեխի եւ որդունք եւս ծնանին. եւ զսատկութենէ ցաւոց զբերան բացեալ գոչէր եւ նոցա մտեալ յորովայնն՝ խայթեն զաղիսն. եւ նեղեալ դիմէ ի հոսանս ջրոյ, եւ այնչափ ի ներքս մտեալ՝ հեղձանի:*

*Զօրութիւն առակիս այսպիսի է. զի հզօրք զտկարս արհամարհեն, եւ ոչ երկնչին, սակայն իմաստութեամբ զօրանան փոքունք, եւ յաղթեն հզօրաց: Եւ այս իմաստութիւն է ի փոքունց իբրեւ ի մեծամեծաց երկնչել (Մխ. ՃԾԴ. 124):*

Բոլոր իշխաններն էլ չար չեն ըստ Մխիթարի․ կան եւ այնպիսիները, որոնք իրենց բերդերի մօտ տեղ են տալիս ժողովրդին ապրելու եւ իբրեւ կուսող պաշտպանում են նրան աւազակներից ու տապատակաւորներից։ Եւ այս անում են նրանք իբր մի բարեգործութիւն, իբր մի բարեպաշտական գործ, վշտակցելով տկարներին եւ փոխարէնն իբր թէ միայն աղօթք ու մաղթանք ստանալով իրենց ողջութեան եւ հոգու փրկութեան համար։

*Երամ ճընճղկաց երթեալ առ արագիլ, եւ աղաչեալ զնա ասեն. Ի բայն քոյ անդի մեզ տայցես հանել ձագս, եւ յօձից զձագ մեր պահեսցես: Եւ նա ասէ. Զի՞նչ ինձ առնիցէք, զի զայդ ձեզ առնիցեմ: Եւ ասեն. Աղօթս առնեմք, զի ձագք ձեր առողջութեամբ սնանիցին ի վնասակարութենէ օդոյ, եւ ի հանդերձեալսն կենաց արժանի լինիցիք յաղագս արդարութեան ձեր: Եւ յաղագս այսորիկ տեղի ետ նոցա: Եւ եղեւ ի հանել նոցա ձագ, սողաց օձ առնուլ ի նոցանէ, եւ տեսեալ տառեղան՝ եհար սատակեաց զօձն. եւ շրջէր եւս շուրջ ի սահմանսն միանգամայն սատակել զօձսն յաղագս փրկութեան նոցա:*

*Զվշտակցութիւն առակս ցուցանէ տկարաց՝ յերկաքանչիւրսն վայելել փրկութիւն սակս բարեգործութեան սոցա (Մխ. ՃԻԲ. 103):*

Վարդանայ առակների մէջ, սակայն, այդ պաշտպանութիւնը չկայ։ Մխիթարի այդ առակն այնտեղ փոխուել է այնպէս, որ իշխանն այլեւս չի պաշտպանում իր հովանուն ապաստանող ժողովրդին, այլ միայն իր դուսար–

ճութիւնն է անում. Նա ժողովրդին խաբում է, ըստ առակի առասպելին, երբեւ թէ օգնել չի կարողանում նրան, թէպէտ կամենում է։ Այս արդէն 14–15-րդ դարերի հայեացք է, երբ հայ ազնուականութիւնն ընկած էր։

## ՄԱՆՐ ԹՌՉՈՒՆՔ ԵՒ ԱՐԱԳԻԼ

Ժողովեցան մանր թռչունքն եւ աղաչեցին զարաքիլն, զի դիցեն զբոյնս իւրեանց ի ներքոյ բնին արաքլի։ Եւ եկեալ ածքն բնակեցան ի խռիւսն, զոր կուտեալ էր արաքիլն ի բունն իւր։ Եւ սկսան քարոզել զնորածին ձագսն մանր թռչնոցն։ Եւ արաքիլն ունի սովորութիւն, որ տանի զգլուխն յետ ի վերայ թիկանցն եւ զկտուցն կլկլեցնէ իբրեւ զձնձղայս. եւ կարծէին մանրաձագերն, թէ պաշտօէ (պաշտաւել=խղճալ, ափսոսել, ցաւել) զմեզ. եւ ասէին առ նա, թէ՝ Շատ շնորհակալ եմք քեզ. զի թէպէտ եւ աւգնել ոչ կարես, տրտմակից լինիս մեզ։

Նշանակէ առակս, թէ թագաւոր ոմն կամ իշխան ոչ կարէ աւգնել ժողովրդեանն եւ պահել ի թշնամեաց. այլ զհարկն յաւելորդ պահանջեն աղքատացն եւ ինքեանք փափկանան, նոյնպէս եւ հոգեւոր առաջնորդքն զի խնամ ոչ տանեն հօտին եւ ոչ հոգան զբորոտն զհիւանդացեալսն մեղօք, այլ զգէրն զենեն եւ ճարպոյն պարարտանան (Առ. Վարդ. Բ. 198. ՃԿԵ)։

Ըստ առակի խրատական մասի, ժողովուրդն արդէն գիտէ, որ ազնուականութիւնն այլեւս անպէտք է եւ աւելորդ է եւ զուր ծանրաբեռնութիւն։ Նա միայն փափկանում եւ իր անձն է պարարում։ Այսպէս է հոգեւորականութիւնը։

Բայց այդ չէ միայն։ Վարդանայ առակների մէջ, որոնք ժամանակով աւելի ուշ են, աշխատաւոր շինականի այս դասակարգային պայքարն ընդդէմ ազնուականի՝ մի փոքր աւելի է չարունակւում։ Աշխատաւորն այնտեղ արդէն կատարելապէս գիտակցում է իր արժէքը, իր շահերի հակադրութիւնն իշխանների դիմաց։ Նա ըստ արժանւոյն գնահատում է այն թագաւորներին, իշխաններին ու պարոններին, որոնք ոսկով ու արծաթով զարդարուն ձիերի վրայ բազմած ման են գալիս եւ ապրում են աշխատանքով մշակի, որ չարչարւում եւ յոգնում է աշխարհը չէն պահելու համար։ Ուտում են իշխանները եւ երախտամոռ լինում. հեծնում են ձի եւ միայն աշխարհ աւերում։

## ԵԶՆ ԵՒ ՁԻ

Եզն եւ ձին խաւսեցան ընդ միմեանս։ Ասաց ձին ընդ եզն, թէ՝ Դու ո՞վ ես կամ զի՞նչ պէտս ես։ Ասէ. Ես ձի եմ, որ թագաւորք եւ իշխանք եւ պարոնայք կազմեն զիս ոսկով եւ արծաթով եւ բազմին ի վերայ իմ։ Ասէ եզն. Ամէն աշխարհիս շէն եմ ես, որ վաստակիմ եւ չարչարիմ եւ խոնջիմ. եւ ապայ դու եւ քու թագաւորն ուտէք. եւ ամենայն մարդ զվաստակս իմ ուտեն, եւ թէ ոչ վաստակիմ, դու եւ քու թագաւորն մէկ հետ մեռանիք. եւ դու երախտամոռաց մի՛ լինար։

Ցուցանէ առակս, թէ մարդ կայ, որ աշխատի քան զեզն. եւ մարդ կայ. որ հանապազ զձի հեծնի ու աւեր ածէ աշխարհի. եւ թէ աշխատաւորն ոչ աշխատի, որպէս զեզն. նայ մեռանի ձին եւ հեծնող նորա (Առ. Վարդ. Բ. 151. ՃԻԷ)։

Ազնուականն, ուրեմն այլեւս ոչ միայն անպէտք է, այլեւ պարապորդ, աւերածու։ Այս գիտակցութիւնն այնուհետեւ մինչեւ այժմ էլ մնում է մեր աշխատաւոր ժողովրդի մէջ։ Ինչքան էլ իրականութեան համապատասխան է եղել առածը, թէ «էշը դատի, ձին ուտի», բայց եւ այնպէս ժողովրդա–

Վրան տաղը, որ տողերիս գրողը գրի է առել 1885 թ. Աստապատ գիւղում[1], ասում է.

«Ոսկէ թամքով ձին բռնան եղան տաս.
Ես ձի ամ ձիաւորին.
Ոսկէ աթոռ ամ թագաւորին:
Եղն տաս.
—Ես եղն եմ եղնաւորին,
Ոսկի աթոռ ամ ուրչպարին.
Ես չդատեմ արտն ու դարին,
Ղառղառնին [ագռաւներին] պոչիդ տակին կը շարուին»:

Այստեղ ուրեմն, վերջ ի վերջոյ աշխատաւորը, երկրագործ շինականն աւելի բարձր է դասում, քան նրան կեղեքող ազնուականութիւնը: Եւ այլապէս էլ չէր կարող լինել, քանի որ տաղերի տեսակը ինչքան էլ հոգեւորականի ձեռով գրուած, իր արմատներն ունէր աշխատաւոր դասի մէջ եւ տաղերն իսկապէս նրա գրականութիւնն են: Հէնց այդ պատճառով էլ դրանց մէջ տեսնում ենք այն կռիւը, որ կեղեքուած աշխատաւորները վարում են ազնուականութեան դէմ:

3. Արհեստաւոր քաղաքացիներ եւ քաղաքացիների վերաբերմունքն առ գիւղացիները:— *Տաղերը լինելով ամենից առաջ քաղաքացիական գրականութիւն, բնականաբար, նոյնիսկ Մխիթարի խմբագրութեամբ, իրենց նիւթն առնում են նաեւ քաղաքացիների կեանքից: Այսպէս, օրինակ, Մխիթար Գօշի տաղերի մէջ հանդէս են գալիս առանձնապէս* արհեստաւոր քաղաքացիները — *հիւս, ղարբին, կտաւագործ, կարող (դերձակ), պղնձագործ, երկաթագործ, արծաթագործ, ոսկեգործ, խաղախորդ (կաշեգործ), մորթեգործ, բրուտ, կօշկակար, շինողութիւն: Բացի դրանցից, կան նաեւ տնկագործ, վաճառական եւ այլն: Այս արհեստաւոր մարդկանց մէջ տեսնում ենք մի խուլ մրցութիւն: Յաճախ վէճ է ծագում, թէ որի՛ արհեստն է աւելի բարձր: Այսպէս, օրինակ, Մխ. ՃԿԵ. 133, ղարբնին առաւելութիւն է տրւում հիւսնից. ՃԿԷ 134. երկրագործը գերադաս է պղնձագործից:*

*Արքային Սողոմոնի հանդերձ ումն կարէր արուեստիւ սքանչելի եւ յոյժ պայծառացեալ պանծայր. եւ բեհեզագործն ընդդէմ զիւրն յարգէ արուեստ: Եւ լուեալ արքայի կոչեաց զնոսա եւ ընտրեաց ի մէջ նոցա, թէ անկայմ է կտաւ առանց կարողի. տակայն զո՞ կարէ արուեստիւն, եթէ չիցէ արարեալ կտաւ. զի եւ Ադամ զտերեւ եգիտ եւ արար հանդերձ: Եւ այսու առաջին ցուցաւ կտաւագործ քան զկարող:*

*Ամենայն ուրեք առակս անպարսաւ ցուցանէ զկտաւագործ, զոր բազումք այպանեն* (*Մխ. ՃԿՁ.* 133):

*Այս առակով կտաւագործն աւելի բարձր է, քան կարողը, այսինքն՝ դերձակը: Տաղերն այպանում են կտաւագործին, բայց թէ նա որքան գիտակցում է իր արհեստի արժէքը, այդ տեսնում ենք ներքեւում գրուած տաղից՝ Տմբատեցի կտաւագործի մասին: Տաղըն ու այպանումը տեսնում ենք եւ ուրիշների վերաբերմամբ. խաղախորդը մորթեգործին է այ-*

1 Տպուած է Տ. Նաւասարդեանի «Հայ ժողովրդական հէքիաթներ»-ի մէջ. եօթներորդ գիրք, Թիֆլիս, 1891, էջ 85:

պանում եւ սա նրան (Մխ. ՃԿԹ. 135). ուրիշները կոչկակարին (Մխ. ՃՀԱ. 136): Այս ցոյց է տալիս տարբեր համքարութիւնների վերաբերմունքը միմեանց: Տեսնենք մի ուրիշ կողմ — տարբեր վիճակների կամ դասերի յարաբերութիւնը: Այսպէս՝ Մխ. ՃԿԵ. 132 առակի մէջ դարբնութիւնը, քաղաքացու արհեստը, նախամեծար է դասւում, քան երկրագործութիւնը, շինականի պարապմունքը: Դա քաղքենիների կարծիքն է: Այդպէս չի մտածում, սակայն, ինքն Առակախօս Մխիթարը. ամէն արհեստ ու պարապմունք, ժամանակին նայելով, կարող է աւելի մեծարելի լինել:

Ի թագաւորելն ոսկի խնդրէր երկրպագութիւն յամենայն նիւթոց, եւ թագաւոր զանձն կոչէր, զի պատկեր եղեւ թագաւորի. եւ նովաւ ամբարտաւանէր գործովն եւս ի վերայ արծաթագործաց եւ այլոց. եւ ի գալն ամենեցուն՝ ոչ եկն ցորեան առնելով. Գամ, մինչեւ նախ ինձ եկեալ երկիր պագանիցէ:

Փոփոխելի առակս ցուցանէ զնիւթականքս, զի ոչ միշտ պատուին. զի յերբեմն մեծարի ոմն, եւ երբեմն անպատուի. վասն բազում անգամ վտանգի սոյոյն նիւթք ամենայն խոնարհին ընդ ձեռամբ ցորենոյ: Նմանապէս եւ յայլսն է տեսանել. բստ այամ եւ յարուեստաւորս պատահի, որոք չէ պարտ ամբարհաւաճել (Մխ. ՃԿԸ. 134):

Վերջ ի վերջոյ ցորենը, ուրեմն դարձեալ երկրագործ շինականն է, որ չի երկրպագում «Թագաւորի պատկեր» ոսկուն եւ հպարտութեամբ պահանջում է, որ իրեն զան երկրպագեն: Դա շինականի կարծիքն է: Քաղաքացիների կարծիքը, սակայն, այդպէս չէ: Քաղաքի եւ գիւղի միջեւ տեսնում ենք մի խուլ պայքար, որովհետեւ քաղաքի տնտեսութիւնն ուրիշ բնոյթ ունէր, քան գիւղինը. քաղաքինը նոր էր, արագ բարձրացող, գիւղինը՝ հին, ընկած:

Այս միեւնոյնը գտնում ենք նաեւ հայոց գրականութեան մէջ 150—200 տարով աւելի վաղ, քան եւրոպական գրականութեան մէջ: Մխիթարի մի քանի առակների մէջ ծաղրում են ոչ միայն հոգեւորականները, այլեւ շինականները — մշակը, երկրագործը, հողագործը: Մխ. ԾԳ. 54. «Զխստոր Գալիանոս՝ Թիւրակէ կոչէր շինականաց. եւ լուեալ մշակի միոյ, առեալ եկեր կայթիւ (=կողովով), եւ խելագարեալ կուրացաւ»: Կամ հետեւեալը. Մխ. ԾԴ. 54. «Եփեալ հողագործ ոք ի պարտիզէ իւրմէ զսոխ բազում, կարծելով զնա բանջար, եւ անկաւ յորովայնածութեան ախտս»: Կան առակներ, որոնց մէջ եւս ծաղրւում են իսկապէս յիմար գեղջուկները, բայց Մխիթարն, ինչպէս երեւում է, զգուշութեամբ, ընդհանուր ձեւով «ոմն», «ոք» բառերով է պատմել: Այդպիսիներից են, օրինակ՝ Մխ. ԾԸ. 56, ԿԱ. 59:

Վարդանայ առակների մէջ կայ դրա մի փոփոխակը, որի մէջ մի մարդ քաղաք է գնում մի էշ գնելու: Ուրեմն գիւղացի, որ քաղաք է գնում: Դրա մի փոփոխակն էլ ես գրի եմ առել 1885 թ. Աստապատ գիւղում: Այստեղ ծաղրւում են Դարաշամբի գիւղացիները, որոնց վրայ են պատմում ամէն տեսակի զուարճալիքներ:[1]

4. Աշխարհականի հայեացքն եկեղեցականի վրայ:— Առակների մէջ ինչպէս ազնուականութեան, նոյնպէս եւ եկեղեցական դասի նկատմամբ արդէն փոխուած է հայեացքը: Զնայելով որ Մխիթարի առակները գրել է մի

[1] Տ. Նաւասարդեանց—Հայ ժողովրդ. հեքիաթներ, վեցերորդ գիրք, Թիֆլիս. 1890, էջ 54–61:

հոգեւորական, — առակներից մէկի մէջ (ԺԺԵ, էջ 98) տեսնում ենք, որ հեղինակը հոգեւորական է, քանի որ նա քահանաների մասին խօսում է առաջին դէմքով,— բայց եւ այնպէս նրանց մէջ պարզ երեւում է աշխարհականի, այն էլ ոչ ազնուականի վերաբերմունքը դէպի հոգեւորականը, որ եւ ապացոյց է մի շարք առակների աշխարհիկ ծագման: Ինքն առակախօսն իբրեւ հոգեւորական դեռ շատ մեծ կարծիք ունի եկեղեցականների մասին. Նրանք, ինչպէս երկինքը երկրից, շատ բարձր են աշխարհականներից եւ լուսաւորութեան աղբիւրն են:

Երկիր հայեցեալ ի բարձրութիւն լերանց՝ համարձակեցաւ լինել և երկին. և ոչ կարաց զլուսաւորս ընդ ի՞նքեամբ առնել նման երկնի՝ և լուսաւորել:

Յանդիմանէ Նշանակս զաշխարհական ոմանս, որ փքացեալ ի ճոխութիւն իւրեանց, զքահանայից կամին յափշտակել զպատիւ. սակայն լուսաւորին՝ քան լուսաւորեն, նման երկրի, զի լուսաւորի՝ քան լուսաւորէ (Մխ. Զ. 8):

Քահանայական տոհմը, թէպէտ աղքատ, բայց հոգեւորով հարուստ լինելով՝ արժանի է Առակախօսի կարծիքով նոյնիսկ թագաւորական տոհմի հետ հաւասարուելու:

Խնամութիւն առնել ընդ միմեանս կամեցան թթենի և ձիթենի. և պանծայր ի զօրութիւնն իւր իւրաքանչիւր ոք, ձիթենի յարազուարճութիւն և ի պտղաւէտութիւն, մանաւանդ զի պտուղ նորա նիւթ է ձիթոյ. և ձէթ նիւթ է լուսոյ, և լոյս լուծիչ խաւարի: Իսկ թթենի ի քաղցրութիւն պտղոյ, և զի սաղարթ իւր նիւթ է մետաքսոյ, զոր որդունք ծնանին, յորմէ կերպասք լինին, զոր թագաւորք և իշխանք վայելեն: Որում և դիմադրէ ձիթենի զգիւրանցութիւն պտղոյ նորա, և զախտաւորն լինել հանդերձ, քան թէ հարկաւոր, և զի ի գիշերի մերկանայ, բայց լոյս ի գիշերի վառի: Ասէ թթենի. Այլ ի տունջեան չիջանի: Եւ ասէ ձիթենի, թէ՝ Ոչ չիջանի. այլ յազգակիցն իւր խառնի. իսկ փառք քո ծաղկընկէց է և անցաւոր: Եւ այսու պարտեալ թթենի՝ և հայցէ լինել իւրին:

Նշանակ առակիս այսպիսի է, զի թագաւորական ազգ թէպէտ փառաւոր է, այլ երկրաւորօքս ճոխանայ, որք հողանունք են, որում թթենիդ է նշանակ: Իսկ քահանայական տոհմ թէպէտ և աղքատ իցէ, մեծապատիւ է հոգեւորօք, և արժան է զուգիլ ընդ թագաւորական տոհմի (Մխ. ԺԳ. 41):

Բայց այդպէս չէ ժողովրդի հայեացքը եկեղեցականի վրայ: Ինչքան էլ սա երեւում է դեռ կարգապահ եւ մեծ ազդեցութեամբ ռամկի վրայ, ինչքան էլ կան նաեւ իսկական սեւազգեստ կրօնաւորներ, որոնք մի անգամ որոշած լինելով հեռանալ աշխարհից, միշտ սգաւոր են մնում եւ նոյնիսկ կարճ ժամանակով չեն ուզում ուրախանալ (Մխ. ՃԼԴ, 112), բայց եւ այնպէս եկեղեցականութիւնն ընդհանրապէս ընկած է պատկերանում: Հոգեւորականը նոյնպէս յափշտակող է, ինչպէս եւ իշխանը. ուստի նրա դէմ էլ պայքարում է աշխատաւորութիւնը, եւ այդ պայքարն երեւան է գալիս յաճախ ծաղրով: Հին ճգնաւորական խստակեցութիւնն այլեւս ոչ միայն յարգանք չի վայելում եւ ազդեցութիւն չի թողնում, այլեւ, ընդհակառակն, ծաղրի առարկայ է:

Գնդածաղիկք և կորնգան և խոլորձ՝ առուոյտ կապոյտ և սէզ և նմանք սոցին ծաղր եդեալ՝ զցինկ առէին, եթէ՝ Զի՞ է զի մեք զուարճացեալք կամք, և նա ծիւրեալ դեղնութեամբ: Եւ լուեալ՝ պատասխանեաց. Վասն զի անմիտք էք և աներկիւղ, ոչ խորհիք եթէ վասն մեր սուրք սրեն գերանդեաց. իսկ ես խոկալով յայսոսիկ՝ զարհուրեալ դեղնիմ:

Յայտնապէս ցուցանէ առակս, թէ յոյժ անմիտք են որ մոռանան, եթէ

*բնութեամբ մահկանացու է ազգ մարդկան. և պարտեալք յերեւելի ի մեծութիւնս՝ ծաղր առնեն զվարս երկիւղածս և զկրօնաւորս. ուստի յանդիմանիրն ի Նոցունց անմտութիւն Նոցա. և ինքեանք գիտելով զապականութիւն երկնաւորացս՝ ոչ պատրին. այլ ճնշեալ և երկիւղիւ միշտ Ներգեւրին (Մխ. Լգ. 39)։*

*Ծաղրում են, ուրեմն, կրօնաւորների կենցաղավարութիւնն ասելով, թէ՝ ինչո՞ւ մենք ուրախ ենք եւ նա հալումաշ է եղել, դեղնել։ Ի հարկէ, Մխիթարի համակրութիւնը ծաղրողների կողմը չէ, որոնց նա անմիտ է համարում։ Ծաղրում են կրօնաւորների վարք ու բարքը, նրանց գծծութիւնն ու ժլատութիւնը, եւ նոյնիսկ պահանջկոտ են նրանց եւ վանականների վերաբերմամբ։ Աշխարհականները հիւր են գնում աղքատ կրօնաւորների մօտ, նրանց նեղլիկ քարանձաւները, ցոյց են տալիս այդ դժուար տեղերն եւ միաժամանակ պահանջում են պարարտ կերակուրներ եւ խորտիկներ (Մխ. ՃԻէ. 107)։*

*Կրօնաւորները շատ անգամ բան չեն ունենում տալու. բայց եւ շատ անգամ էլ պատահում են այնպիսի ժլատ ու գծծի կրօնաւորներ, որոնք դեղի համար էլ բան չեն տալիս, եւ այդպիսիների գլխին աշխարհականները խաղեր են սարքում. «Ոչ եատուր դեղոյ, եատուր փորոյ» (Մխ. Ձէ. 77)։*

*Դրա պատճառն, անշուշտ, կեղծ կրօնաւորութիւնն է, կեղծ բարեպաշտութիւնը, որ յաճախ յանդիմանում է Մխիթարից։ Կրօնաւորները կորցրել են իրենց խոնարհութիւնը (Մխ. ԻԵ. 29). կան այնպիսիները, որ մահից վախենալով, այսինքն՝ զինուորական ծառայութիւնից փախչելով, ասում են, թէ կրօնաւոր են, բայց անապատում ապրելու փոխանակ՝ աշխարհում դատարկ շրջում են (Մխ. ՃԺԶ. 99)։*

*Այսպիսի կեղծ կրօնաւորներ միշտ էլ եղել են. բայց 12-րդ դարում նրանց թիւը մեծացած է եղել, որ Ներսէս Շնորհալին, ինչպէս տեսանք, իր Ընդհանրական Թղթի մէջ յատուկ ուշադրութիւն է դարձնում նրանց վրայ։ Եղել են, հարկաւ, եւ այնպիսիները, որոնք գնալով լեռը կրօնաւորելու, չեն դիմացել տեղի դժուարութեանն ու կեանքին եւ շուտով ետ են փախել աշխարհ՝ նորից իրենց հին կեանքին։ Մխիթարի համակրութիւնն, անշուշտ, այդպիսիների կողմն էլ չէ (Մխ. ՃԴ. 91)։*

*Շատ ուժեղ կերպով արտայայտուած է արդէն աշխարհական կեանքի ձգտումն առակների մէջ։ Քահանայութեան ուսումը, օրհներգութիւնն ու սաղմոսն այլեւս չեն գրաւում, զի սուգ եւ տրտմութիւն են պատճառում։ Թէպէտ դեռ գիտեն, որ այս աշխարհի տրտմութիւնը յետոյ այն աշխարհում ուրախութիւն է բերում, բայց եւ այնպէս այդ քարոզին լսող, հետեւող չկայ։ Մարդիկ աւելի սիրում են իրենց հօր արուեստը, ուրախ երգը, խաղ ու պարը, «երկրաւոր ուրախութեանց պատրանքը»։ (Մխ. ՃԼԳ. 112)։*

*Սարեկ եւս զորդի իւր յուսումն քահանայութեան, եւ նա ի սուրճս եւ ի մրմունջս թեւակոխէր։ Եւ խրատէր քահանայն օրհներգութեանց եւ սաղմոսաց փոյթ առնել, յորմէ սուգ եւ զղջումն յոգի գործի։ Իսկ նա ի պար յաւելոյր, թէ՝ Հօր իմոյ արուեստ ուրախութեան է պատճառ, իսկ քոյդ տրտմութեան։ Եւ թէպէտ ուսաւ յետոյ՝ թէ տրտմութիւն այժմուս բերէ ուրախութիւն յետոյ, սակայն անլուր եղեալ, դարձաւ ի տուն իւր։*

*Զերկնաւոր ուրախութեանց զպատրանս առակս նշանակէ, որով զկատարածն իմանան, եթէ ի յոյր վախճանի, որպէս եւ տէր իսկ ասաց. Նմանապէս եւ հոգեւորն սուգ յուրախութիւն յանգի (Մխ. ՃԼԳ. 112)։*

*Այսպէս ուրեմն, ինչքան էլ տեսականի մէջ դեռ իշխում է ճգնաւորական հայեացքը, գործնականի մէջ, ընդհակառակն, ուրախ կեանքը, աշխարհիկ ոգին է տէրը: Նոյնիսկ միայնակեացը սատանայի հետ պայման է կապում եւ նրա օգնութեամբ եպիսկոպոսական աստիճանի հասնելով եկեղեցին դարձնում է զուսանական նուագի վայր* (Առ. Վարդ. ՄԻԳ. 252):

ՈՒԽՏ ՄԻԱՅՆԱԿԵՑԻ ԸՆԴ ՍԱՏԱՆԱՅԻ

*Ասի յառակաց, թէ միակեց մի սատանայի ուխտ եդ, որ տարի մի պահկենայ, թէ զնա ի մեծութիւն հասուցանէ: Սատանայ յանձն էառ կատարել զխնդրուածս նորա: Յորժամ վճարեաց զպահսն, չարժեաց զեպիսկոպոս քաղաքին, որ եդ զնա եկեղեցապան. եւ ի միւս տարւոջն չարժեաց որ օրհնեաց զնա աբեղայ. եւ ի միւս տարւոջն եղեւ մեռանիլ եպիսկոպոսին չարժեաց զթագաւորն եւ զքաղաքացիսն առնել իւրեանց եպիսկոպոս: Եւ յորժամ կամէր զգեստաւորիլ, զի ժամ արասցէ, եկն սատանայ, ետ ի նա փոքրիկ չորեքալի մի եւ ասէ. իմ ամէն յաւին փոխարէն, որ զքեզ յայդ մեծագոյն աստիճանդ հասուցի, զայս արա. առ զայդ փոքրիկ չորեքալիգ ի ծոցդ դիր. եւ զգեստդ ի վերայ հագիր եւ յորժամ ի բեմն ելանես, նա մէկ մատամբդ ի վերայ մէկ լարին զարկ: Եւ այնպէս արարեալ պատրեալ եպիսկոպոսին՝ յանկարծակի հազարք հազարաց եւ բիւրք բիւրոց տաւնաղի եւ թմբկի եւ սուռնայի եւ չանկի եւ չորեքալւոյ ձայն հնչեաց՝ ի մէջ եկեղեցւոյն: Զարհուրեցան թագաւորն եւ ժողովուրդն եւ ո՛չ զոք տեսանէին հարկանող նուագարանացն: Հրամայեաց թագաւորն բռնել զգուռն եկեղեցւոյն՝ եւ զիւրաքանչիւր ոք մերկացուցանել եւ փնդռել: Եւ այնպէս արարեալ ո՛չ զոք գտին պատճառ, եւ մնաց թագաւորն եւ եպիսկոպոսն միայն: Թագաւորն եւս մերկացաւ. եւ ոչ գտաւ առ նա ինչ: Եւ յորժամ մերկացուցին զեպիսկոպոսն, գտին ի ծոցն զչորեքալին այն, եւ ի չարչարանս արկեալ խոստովան եղեւ զուրացութիւնն եւ զդաշինս, զոր եդեալ էր ընդ սատանայի: Յայնժամ կապեցին զնա ի յագի ամեհի ձիոյ եւ թողին ի դաշտի մանրամասնաբար կոտորեալ եղեւ մարմին նորա. եւ այնպէս աւանդեաց զպառնացեալ հոգին ի ձեռն սատանայի:*

*Ցուցանէ առակս, թէ ով ոք սատանայի բարւոյն եւ ուխտին հաւատայ. բաժին նորա վերջն այնպէս լինելոց է* (Առ. Վարդ ՄԻԳ. 252).

*Պակաս ընկած չէ իր զօշաքաղութեամբ եւ* քահանաների *դասը: Առակախօսը քահանաների արդար իրաւունքն է համարում, որ միայն մեռելների սատացուածքը կողոպտել անելով ապրեն եւ ոչ թէ իշխանների նման նաեւ կենդանի մարդկանց սատացուածքը յափշտակեն անիրաւութեամբ. բայց իսկապէս այդպէս չի լինում* (ՄԽ. ՃԺԵ. 98):

*Քահանաները սուտ ու կեղծ են. ծոյլ են, խաբեբայ, միայն արտաքին ծէսերը կատարող, մատաղի եւեւից ընկած: Ագուէնները լափելու համար քահանայ են դառնում* (ՄԽ. ՂԸ 84):

*«Հոգեւոր առաջնորդքն... խնամ ոչ տանեն հօտին... այլ զգէրն զենեն եւ ճարպովն պարարտանան»* (*Առակք Վարդ.* Բ. 198. ՃԿԻ): *Քահանաները, ինչպէս եւ եպիսկոպոսներն ագահութեամբ նոյնիսկ խոստովանութեան խորհուրդը դարձնում են եկամուտի աղբիւր, աղքատներին եւ պիղծ մարդկանց նախ եկեղեցուց մերժում են վախեցնելով, իսկ յետոյ կաշառքով ընդունում են եւ հաղորդում: Քահանան նոյնիսկ անմեղներին մերժում է եկեղեցուց, իսկ չարագործներին կաշառքով ընդունում եկեղեցի* (Առ. Վարդ. Բ. 257 ՄԻՉ):

*Այսպիսի դրութեան ժամանակ հասկանալի է, որ մարդիկ, նոյնիսկ հովիւները չցանկանային այլեւս հաղորդուել:*

*Յաւուր զատկին տօնին եկին հաւատացեալք հաղորդել, եւ զմի հովիւ բանադրաէին հաղորդել. եւ տեսեալ ի բաց փախեաւ ասելով. Ոչ ճաշ է զի կերայց, եւ ոչ հրամենք: Եւ ասեն. Այդքան է խորհուրդն: Եւ ոչ հաւանէր առնուլ, այլ ի բաց գնաց:*

*Զար ամենայն ուստեք առակս ցուցանէ զանգիտութիւն վայրենացելոց ոմանց, զի յերեւելիս միայն հային եւ գայթակղին* (Մխ. ՃՀԲ. 137):

*Առակախոս Մխիթարն այդ բացատրում է «վայրենացած մարդկանց անգիտութեամբ», բայց իրականի մէջ այդ առաջացած է եղել եկեղեցականների բարոյական անկման հետեւանքով: Եկեղեցու այդ խորհրդի ծաղրը երեւում է առակի պատմուածքից: Նոյն ծաղրը տեսնում ենք եւ մի ուրիշ առակի մէջ, ուր հովիւը գազանների կերածն է Աստծուն մատաղ անում:*

*Ի ձեռաց չահենի յորսալն զերծաւ ձագ հաւրալի, եւ ասաց. Եղիցի պատարագ տեառն: Ծաղր արար զնա հաւրալն. եթէ՝ Զոր ձեռօք մատուցանես, այն պատարագ տեառն:*

*Զհովուին ձեւացուցանէ զբարս՝ առակս, զի զկերակրեալս գազանաց եւ զբեկեալս գայլոց՝ նուէրս տեառն ասէր լինել* (Մխ. ՃԺԸ. 100):

*Վարդանայ առակների մէջ աւելի զարգացած է քահանաների ընկած վիճակը. ուստի եւ սուր երգիծանքներ են յօրինուած նրանց վրայ: Գող քահանաները եկեղեցու ոչ մի սրբութիւնը չեն պահում այն աստիճանի, որ գողացած կովը տիրոջից թաքցնելու համար նոյնիսկ եկեղեցու սեղանն են բարձրացնում եւ վարագոյրը քաշում:*

## ԳՈՂ ՔԱՀԱՆԱՅ ԵՒ ԱՅՐԻ

*Քահանայ մը գողացաւ զկով այրի կնոջ մի եւ էած ի յախոռն. եւ կին յիմացաւ, եւ ասէ առ քահանայն. Տէր, ժամ է մահուան իմոյ. եկ յախոռն, որ խոստովանիմ: Եւ յայնժամ անցուց զկովն ի ներսի տուն եւ անդի ի ժամայտուն եւ անդի եկեղեցին: Եւ ասէ կին. Տէր, առաջի բեմին պարտ է ասել զմահու խոստովանութիւն: Եւ հանին զկովն ի բեմն եւ քարշեցին զվարագոյրն ի դէմ: Իբրեւ մտան եկեղեցին եւ նստան, յայնժամ կին ի վեր կալաւ զվարագոյրն եւ ասէ ընդ կովն. Ո՛վ զարշելի, զքեզ կով գիտէի. եւ արդ զքեզ պատարագաւոր ո՞վ արար, ասայ ինձ:*

*Ցուցանէ առակս, թէ այսպէս համբերութեամբ եւ իմաստութեամբ պարտ է առաջնորդին եւ վարդապետին զամենայն ինչ քննել. եւ ստուգել ամենայն քահանայս եւ յիմանալ զվարս նոցա եւ որ չէ արժանի պատարագի, ծածկայրար յանդիմանել եւ ոչ տայլ թոյլ կրկին խաչել զորդին Աստուծոյ անարժան պատարագաւն եւ հաղորդութեամբն, որ չէ բարի անարժանութիւն* (Առ. Վարդ. Բ. 73. ԾԴ):

*Մենակեացները չնացող են* (Առ. Վարդ. Բ. 69), *նրանք էլ գողութիւն են անում եւ գողացած ապրանքը ծածուկ ծախում բոլորովին չնչին գնով, արդարացնելով իրենց, թէ Քրիստոս ասել է՝ ձրի առէք, ձրի տուէք* (Առ. Վարդ. Բ. 73. ԾԳ):

*Որկրամոլութիւնն ու ագահութիւնը հոգեւորականների, այլեւ աշխարհականների ամենամեծ պակասութիւնն է.* 15*-րդ դարում Մկրտիչ Նաղաշը կռւում այս ախտի դէմ իր ոտանաւորներով. նոյնը գտնում ենք եւ Վարդանայ առակների մէջ* (Առ. Վարդ. Բ. 33. ԻՋ):

*Այս ամէնի հետեւանքն այն է, որ ժողովուրդը սառել է եկեղեցուց: Այլեւս ժամասէր չեն: Աւելի սիրով զուարճութիւն անելու, զուարճալի տեսարանների մոտիկ տալու են գնում, քան աղօթելու եւ քարոզ լսելու:*

## ԵՐԷՑ ԵՒ ԺՈՂՈՎՈՒՐԴ

Կայր էրէց մի ի գիւղ մի և խիստ սաղմոսասէր. եւ գեղացիքն ոչ գային ի ժամ. էրէցն երԹայր ի տունս նոցա եւ ասէր, Թէ՝ ի ժամ եկէք: Եւ նոքա ասէին, Թէ՝ Գամք: Եւ ոչ գային: Եւ էրէցն օր մի սուտ խեւ եղաւ եւ զգաւազանն ի փիլոնին ծայրն ծալեց եւ ի վեր կալաւ եւ շուրջ գայր եւ գոռայր: Եւ ասեն գեղացիքն, Թէ էրէցն խեւցաւ, երԹամք եւ ծիծաղիմք: ժողովեցան այր եւ կին եւ տղայ, մեծ եւ փոքր եւ եկին առ էրէցն: Եւ ասէ էրէցն պժողովուրդն, Թէ՝ Նստէք: Եւ նստան: Եւ ասէ էրէցն ցժողովուրդն. Ո՛վ մոլորեալք. քանի որ սաղմոսէի եւ աղաւԹէի եւ ժամ ասէի, նա սատանայ կապել էր զխրտն ձեր եւ քարացուցել՝ որ դժար Թուէր ձեզ ժամ գալն. եւ այժմ սատանայի ձայնն եկիք շուտով լսել եւ ծիծաղել: Եւ բարկացեալ էրէցն ձգեց զփիլոնն եւ գնաց ի գեղէն (Առ. Վարդ. 265. ՄԼՁ):

Մարդիկ այլեւս հաւատքի խնդիրներով չեն զբաղւում․ դրեԹէ սառն եւ անտարբեր են դէպի այդպիսի վէճերը, որ միջնադարի էուԹիւնն էին կազմում: Ցայտնի պատուական ակի առակի մէջ՝ ճշմարիտ հաւատը բնականաբար դեռ քրիստոնեաներինն է․ բայց դա հոգեւորականի տեսակէտն է:

## ԵՐԵՔ ԹԱԳԱՒՈՐԻ ՈՐԴԻՔ ԵՒ ՊԱՏՈՒԱԿԱՆ ԱԿՆ ԵՒ ԴԱՏԱՒՈՐ

Ասի ի պատմուԹեանց, Թէ կայր Թագաւոր մի եւ ունէր բազում ճոխուԹիւն եւ Գ որդի եւ ակն մի պատուական, որ առնէր բժշկուԹիւն: Եւ նա ետ նշան որդոց եւ ասէ, Թէ՝ Յետ մահուան իմոյ, որ ունի զակս զայս, նա առնէ զԹագաւորուԹիւնս իմ: Եւ յորժամ մեռանէր ետ զակն ի միոյ որդոյ իւրոյ: Եւ Բ. որդիքն արարին իւրեանց ապակի ակն ի նմանուԹիւն այնմ ակին եւ եկեալ վիճէին ընդ միմեանս վասն ԹագաւորուԹեան․ եւ գնացեալ առ իմաստուն դատաւոր մի առնել նոցա դատաստան: Եւ նա առեալ զակն եդ ի վերայ հիւանդին. եւ յայտնեցաւ զճշմարտուԹիւնն եւ նա ետ զԹագաւորուԹիւնն այնմ որդոյն, որ ունէր զակն պատուական:

Առակս ցուցանէ զԹագաւորն ամենեցուն Աստուած, որ ունի բազում որդիս ըստ արարչուԹեան եւ ետ զպատուական հաւատքն քրիստոնէից միայն. Թէ որ ունիցի զայս, նայ է ժառանգ արքայուԹեան ըստ այնմ, Թէ որ ոք ոչ ծնցի ի ջրոյ եւ ի հոգւոյ, ոչ մտանէ յարքայուԹիւնն Աստուծոյ: Բայց բազում մարդիկք ունին զձեւ հաւատացելոց, այլ ոչ ճշմարիտ հաւատըն. քանզի այլազգ սքանչելիք ոչ լինին, բայց միայն քրիստոնէից. զի սոքա ունին զճշմարիտ ակն, զի այնով ժառանգեսցեն զհայրենի արքայուԹիւնն (Առ. Վարդ. Բ. 286. ՄՀԷ):

Ինչքան էլ Առակախօսը ասելու լինի «պատուական հաւատքը քրիստոնեաներինն է», բայց եւ այնպէս աշխարհականը, նոյնիսկ հոգեւորականը շատ էլ չի հետաքրքրւում դրանով (Առակք Վարդանայ, ՃԽԲ ,էջ 168—172): «Քրիստոնեայ եւ այլազգի, այլ եւ օրինակ վէճի յաղագս հաւատոյ» առակի եւ իր վարիանտների մէջ դրւում է այն խնդիրը, Թէ որի հաւատն է ճիշդ, հայի՞, Թէ՞ ուրիշ քրիստոնեաների, հայի՞, Թէ՞ այլազգու, այսինքն մահմեդականի: Եւ պատասխանն այն է, Թէ «12 քրիստոնեայ ազգերը» լծուած ամէն մէկը հաւատի վէմն (վարիանտների մէջ՝ քար, լուսեղէն լեռ) իր կողմն է քաշում, բայց վէմը տեղից չի շարժւում (Առ. Վարդ. Բ.171. ՃԽԲ):

Այսպէս եւ «72 ազգերն էլ՝ ամէն ազգ լուսեղէն լեռը — Աստուած իր կողմն է քարշում, Թէ՝ ես եմ առաջ․ բայց Աստուած ամէնքինն է եւ անշարժ»: «Լուսեղէն լեառն Աստուած է եւ ՀԲ [72] լուծքն ՀԲ [72] միլաԹն է, որ ամէն միլաԹ դէմ իւր քարշէ, Թէ՝ ես եմ յառաջ եւ Աստուածն ամենեցուն է եւ անշարժ»:

*Այս ամենից, այս ազատախոհութիւնից արդէն շնչում է մի նոր ոգի, որով վերջնապէս կազմակերպւում է աշխատաւոր դասի հայեացքը եկեղեցու եւ եկեղեցականի մասին: Նրա համար եկեղեցականը նոյնն է, ինչ որ ազնուականը: Նա հոգեւորականութեան դէմ մաքառելով՝ վերջ ի վերջոյ իրեն աւելի բարձր է դասում, քան հոգեւորականին, թէպէտ եւ չի համարձակւում այնպէս կոպիտ խօսել նրա դէմ, ինչպէս ազնուականի դէմ: Եկեղեցականը պատարագ է անում, մեղքի թողութիւն տալիս. բայց նա չէր անիլ այդ, եթէ չունէր աշխատաւորի վաստակը:*

*Բայց ո՞րն է աւելի բարձր, հոգեւո՞րը, թէ՞ մարմնաւորը: Կարդանք «Եկեղեցի եւ ջրաղաց» առակը.*

*Եկեղեցին պարծեցաւ ի սրբութիւն իւր եւ ասաց, թէ՝ Ես եմ տաճար Աստուծոյ եւ յիս գան քահանաք եւ ժողովուրդք յաղաւթս մատուցանել Աստուծոյ եւ պատարագ. եւ հաշտի Աստուած ընդ աշխարհիս. եւ մեղաց թողութիւն լինի: Յայն ժամ դայ ջրաղացն եւ ասէ ընդ եկեղեցին, թէ՝ Զինչ դու ասես, արդար է եւ ճշմարիտ է. բայց դու զիմ երախտիքն մի՛ մոռանար. որ գիշեր ու ցերեկ կու աշխատիմ եւ կու դատիմ, որ կոյ ուտեն քահանաքն եւ ժողովուրդքն. եւ ապայ գան առ քեզ աղաւթել եւ երկիր պագանել Աստուծոյ:*

*Յուցանէ առակս, թէ կան աշխարհի մարդիք, որ հանապազ աշխատին եւ դատին, որպէս մեղու. եւ թագաւորք եւ իշխանք եւ ամենայն մարդիք զվաստակս նոցա ուտեն եւ ապայ երթան յեկեղեցին եւ զԱստուած աւրհնեն եւ յիշեն (Ան. Վարդ. Բ. 151. ՃԻԶ):*

*Այսպէս ուրեմն, նախ մարմինը, ապա հոգին, նախ ուտել եւ ապա նոր եկեղեցի գնալ աղօթելու: Կարդանք եւ մէկ ուրիշը Վարդանայ առակներից:*

## ԱՂՈՒԷՍ ԵՒ ԿԱՔԱՒ

*Աղուէսն էառ կաքաւ մի ի բերանն եւ կամէր ուտել զնայ. եւ ասէ կաքաւն. Աւրհնեալ է Աստուած, որ կոչեաց զիս իւր արքայութիւն. զի զերծանիմ ի յայս չարեացս. եւ ապայ դու, աղուէս, գոհացիր զԱստուծոյ եւ ապայ ուտես զիս. քեզ մեծ վարձք է: Եւ աղուէսն կկլեցաւ եւ հայեցեալ յերկինս եւ բացեալ զբերանն՝ ասէ. Գոհանամ զքէն, Աստուած բարի, որ պատրաստեցեր ինձ սեղան բարութեան: Եւ կաքաւն զերծաւ ի բերանոյն եւ թռաւ: Եւ ասէ աղուէսն. Ո՛վ անմիտս եւ յիմարս, յառաջն պարտ էր ինձ ուտել եւ ապայ գոհանալ զԱստուծոյ:*

*Յուցանէ առակս, թէ զխոստացեալ իրքն մի՛ համարիր քեզ եւ մի՛ շնորհակալ մարդոյ լինիս, մինչեւ առնուս եւ թէ ջուր տան քեզ, ի նոյն ժամն ի գոգդ առ զինքն, զի շատք ասեն եւ ոչ տան զասացեալն իւրեանց, ո՛վ եղբայր, եւ սուտ լինին (Ան. Վարդ. Բ. 58. ԽԲ):*

*Ահա թէ ինչին է յանգում մեր միջնադարեան վերածնութեան միտքը մեր առակների մէջ. նախ ուտել եւ ապա գոհանալ Աստծուց: Եւ չկարծէք, թէ այս գաղափարը միայն մեր հին առակներինն է. դա բուն ժողովրդական հասկացողութիւն է, որ տարբեր ձեւով արտայայտուած գտնում ենք նաեւ մեր արդի ժողովրդական առակների մէջ:*

*«Աղուէս զկաքաւ բռնեց: Կաքաւ ասաց. «Ա՛ղուէս, ի՞նչ տ՛էնես»: Ըսաց. «Քի տ՛ուտիմ»: Ըսաց. «Փառք տու Աստուծն, նուր զի կի»:—Ինչ փառք իտու Աստուծն, կաքաւ բերնէն թռաւ: Աղուէս դարձաւ, ըսաց. «Էնու տուն աւեր ըլի, ինչ չուր կուշտ չուտը, փառք տա Աստուծն» (Գ. Վ. Յովսէփեան, Փշրանքներ, Թիֆլիս, 1892, էջ 30):*

# ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

1· Վանական վարդապետ:— *Մխիթար Գոշը մեռնելուց առաջ աշակերտներից իր «ընտանի» մէկին, Մարտիրոս անունով, կարգում է Նոր Գետիկ վանքի առաջնորդ: «Եւ գրեաց կտակ առ մեծ հազարապետն Իւանէ, եղբայր Զաքարէի,— ասում է Կիրակոս Գանձակեցին,[1]— եւ յանձնեաց ի նա զվանսն եւ զառաջնորդն»: Այս նոր վանահայրը թէպէտ եւ էր «մանուկ տիօք, բայց կատարեալ իմաստութեամբ, ո՛յր քաղցրաձայն յերգս պաշտամանն, եւ առատամիտ ընթերցող, եւ երագ ի գրչութեան»: Եւ Մխիթար Գոշը չէր սխալուել իր ընտրութեան մէջ: Առաջնորդ Մարտիրոսի «իմաստութեամբ» փառաւորւում ու հռչակւում է նրա վանքը «քանզի ա՛յր շինարար էր· շինեաց եւ այլ ժամատուն... Շինեաց եւ գրատուն մի գեղեցկաշէն յարկօք... Եւ բազում եղբարք ժողովեցան վասն հռչականուն տեղւոյն, եւ բազմաց եղեւ տեղի սննդեան եւ ուսման. որ եւ մեք իսկ սնեալ եւ ուսեալ եղաք ի նոյն վանս»,— գրում է Կիրակոսը:*

*Այս պատմագիրը ծնուել է շուրջ 1200 թուականին:[2] Նրա «Գանձակեցի» կոչումը ցոյց է տալիս, որ նա եղել է կամ Գանձակ քաղաքից, կամ «յաշխարհէն Գանձակայ»:[3] Ուրիշ տեղ[4] էլ նա Գետիկ վանքն անուանում է իր համար «տեղի սննդեան»: Պարզ է, որ նա մանկութիւնից մեծացել եւ ուսել է այն վանքում: Բայց նա չի գոհացել այնտեղի ուսումով:*

*Մխիթար Գոշի նշանաւոր աշակերտներից մէկն եղել է եւ Վանական վարդապետը· սրան նոյնպէս աշակերտել է Կիրակոս, եւ իր այս ուսուցչին էլ շատ գովում է նա՝ անուանելով նրան «ա՛յր սուրբ եւ պարկեշտ, եւ յամենայն գործս բարիս յառաջադէմ, ողջախոհ եւ զգաստ յամենայնի, եւ վարդապետական բանիւ քան զամենեսին՝ որ ի ժամանակին էին՝ գերազանցեալ, ծննդական մտօք եւ յարմար բանիւք:*

*Վասն որոյ,— շարունակում է Գանձակեցին,— դեգերէին առ նա ուսման աղագաւ ո՛չ միայն վարդապետական բանի, այլ ամենայն կեանք նորա եւ շարժումն անգիր օրէնք էին տեսողացն»:[5]*

*Վանականը, անշուշտ Մխիթար Գոշից վարդապետական կոչումն ստանալուց յետոյ, շինել է մի վանք, որ կոչուել է Խորանաշատ· «վասն յոլով եկեղեցեացն՝ որ ի նմա, ընկալաւ զանունն, որ կայ հանդէպ Երգեվանից բերդին եւ ի թիկանց Գարդմանայ»:[6] Այստեղ, իր շինած վանքում, նա ուսում էր տալիս իր աշակերտներին:[7]*

---

*1 Պատմութիւն Հայոց արարեալ Կիրակոսի Գանձակեցւոյ, Թիփլիս, 1909, էջ 207*

*2 Յիշելով 1241 թ. կատարուած մի եղելութիւն «Վասն Ոսպանին Սաորւոյ» գլխի մէջ (Պատմ., էջ 263), նա աւելացնում է, թէ այդ տեղի է ունեցել «ի ժամանակի կենաց մերոց ամս քառասուն՝ պակաս կամ աւելի»: Ուրեմն նա ծնուել է շուրջ 1200 թ.:*

*3 Ինքը գրում է. «... սոքա երեքեանս էին յաշխարհէն Գանձակայ, ուստի եւ ես» (Պատմ. Հայոց, էջ 107):*

*4 Անդ, էջ 239:*

*5 Անդ, էջ 206:*

*6 Անդ, էջ 311, 333:*

*7 Համազասպ Ոսկեան, Յովհաննէս Վանական եւ իւր դպրոցը, Վիեննա, 1922. էջ 8: Այստեղ, էջ 10 բերուած մի յիշատակարանում կարդում ենք. «Արդ գրեցաւ*

Դժբախտաբար այդ ժամանակներում սկիզբն է առնում Հայաստանի համար մի նոր եղերական վիճակ, որ չորրորդն էր հայկական կրաւոր դըրութեան շրջանում: Թաթարները Միջին Ասիայի խորքերից շարժւում են դէպի արեւմուտք: Նրանց հարուածից փլչում է Խորասանի թագաւորութիւնը, եւ նրա սուլթանը՝ Ջալալադին՝ 1225 թ. զօրքի մեծ բազմութեամբ փախչում է դէպի արեւմուտք, առնում Գանձակ, Տփխիս եւ այլ քաղաքները, եւ պարսիկ, արաբ ու թուրք զօրքերով հեղեղելով Հայաստանն՝ անցնում է դէպի հռոմների, այսինքն Իկոնիայի սուլթանութեան կողմերը: Այստեղ նա պարտւում է Իկոնիայի եւ Եգիպտոսի իշխանութիւնների, Փռանկների ու Կիլիկիայի հայերի միացեալ ուժերից եւ դառնում է Մուղան: Թաթարները յետոյ նրան հետապնդելով՝ քշում են մինչեւ Ամիդ եւ այնտեղ ոչնչացնում նըրան եւ նրա բանակը:[1] Թաթարներից առաջ Խորազմի սուլթանի այս վայրագ արշաւանքն արդէն մեծ պատուհաս է դառնում մեր երկրի համար. այրացուեր են լինում քաղաքներն ու վանքերը, կանգ է առնում հայ իշխանութիւնների մէջ բարգաւաճող շինարարութիւնը:

Աւերւում է նաեւ Վանական վարդապետի Խորանաշատի վանքը: Բայց նա չի դադարում աշակերտներին ուսում տալուց: Նա «ի սահմանս Տաւուշ բերդոյ» ստեղծում է իր համար մի նոր օթեւան. իր աշխատութեամբ փորում է իր համար «քարայրս ի կատարս բարձրաւոյն քարի միոջ, որ կայ հանդէպ գեղջն՝ որ Ոլորուտն կոչի, ի հարաւոյ կողմանէ Տաւուշ բերդի: Եւ շինեալ էր յայրի անդ եկեղեցի մի փոքրիկ, եւ անդ դադարէր պաղթութեամբ. իբրեւ աւերեցաւ առաջին վանք նորա, որ կայ հանդէպ բերդին Երդէվանից, ի Ջալալադին Սուլտանէն: Եւ անդ կայր զետեղեալ՝ ժողովեալ բազում գրեանս, զի յոյժ ուսումնասէր էր այրն, մանաւանդ թէ աստուածասէր: Եւ բազումք գային առ նա, եւ ուսանէին զբանս վարդապետականս ի նմանէ: Եւ իբրեւ շատացան մարդիկն, հարկ եղեւ նմա իջանել յայրէ անտի, եւ առ ստորոտ քարին շինեաց եկեղեցի եւ սենեակս, եւ անդ դադարեալ էր»:[2]

Այստեղ է, որ Վանական վարդապետին աշակերտում է եւ Կիրակոսը. նա իր ուսուցչին գովելուց յետոյ՝ աւելացնում է. «Եւ զայս ո՛չ թէ միայն ականջալուր եմ, այլ եւ ականատես իսկ եմ, զի բազում ժամանակս կացաք առ նա ի վարժս կրթութեան ի սահմանս Տաւուշ բերդոյ, յանապատի անդ՝ զոր ասացաք իւր բնակութիւն, եւ աղբիւրաբար արբուցանէր ամենեցուն զբանն վարդապետական»:[3]

Սակայն շատ երկար չի տեւում Վանականի լուսաւորական գործունէութիւնն այս նոր վայրում. վրայ է հասնում աւելի մեծ չարիքը: Թաթարներն ամբողջ Պարսկաստանին տիրելուց յետոյ՝ գալիս հասնում են «յաշխարհն Աղուանից ամենայն ախիւք բազմութեամբ իւրեանց, եւ ի բերրի եւ յարգաւանդ դաշտին՝ որ կոչի Մուղան, լի՛ ամենայն բարութեամբ,

---

սաղմոսարանս... Ձեռամբ Եսայի գրչի ի յերկիրս Տաւուշ եւ ի գիւղս որ կոչի Թաւուշ ընդ հովանեաւ սուրբ Աստուածածնիս... յաթոռս Խորանաշատի եւ Վանական վարդապետի...»:—Խորանաշատի վանքը մինչեւ այժմ էլ մնում է:

1 Կիրակոս Գանձ. Պատմ., էջ 211—217:

2 Անդ, էջ 230:

3 Անդ, էջ 206:

ջրով եւ փայտիւ եւ մրգով եւ որսով, անդ դետեղեալ՝ հարին զխորանս իւրեանց: Այսպէս առնէին զամենայն աւուրս ձմերայնոյն, եւ ի ժամանակս գարնանայինս սփռէին ընդ կողմանս ասպատակաւ եւ աւերմամբ. եւ դարձեալ դառնային անդրէն բանակէին»:[1] Նրանք առնում, կործանում են Գանձակ քաղաքը. հետզհետէ աւերում, կոտորում ու կողոպտում են ե՛ւ Հայոց, ե՛ւ Աղուանից, ե՛ւ Վրաց աշխարհները: Առնում, քանդում են եւ Վահրամի իշխանութեան ներքոյ գտնուած Շամքոր քաղաքը: «Ապա յարձակեցան ի վերայ այլ բերդերն՝ որ ընդ իշխանութեամբն Վահրամայ, ի Տիրունականն, եւ ի յԵրգեվանքն, եւ ի Մածնաբերդ, զոր ունէր Կիւրիկէ Բագրատունի··· եւ ի Գարդման, եւ յայլ կողմանս: Ի Զարեքն եւ ի Գետաբակս··· Բայց այնոքիկ որ առին զՇամքոր, եկին ամենայն ախիւն իւրեանց ի Տաւուշ եւ ի Կածարեթ եւ ի Նոր բերդ, եւ ի Գագ, եւ որ շուրջ զնոքօք. եւ ի նեղ արկեալ պաշարեցին զնոսա»:

Շրջակայ գիւղերի բնակիչներն ապաստանելու համար դիմում լցւում են Վանականի քարայրը. թաթարները պաշարում են նրանց. Վանականը երկու քահանայի հետ իջնում է թաթարների մօտ եւ աջողում է կոտորածից ազատել ժողովրդին: Նրանք որոշ թւով մարդկանց, որոնց մէջ եւ Վանականին ու Կիրակոս Գանձակեցուն, առնում են իրենց հետ: Վանականը նոյն տարին, 1235 թուականի վերջերին, ազատւում է փրկանքով, իսկ Կիրակոսը փախչելով պրծնում է նրանց ձեռից: — Այս դէպքը մանրամասն պատմել է Կիրակոսը եւ նրա Պատմութեան այդ հատուածը բերուած է ներքեւում:

Վանականն ազատուելուց յետոյ 1236 թ. լինում է Տփխիսում: Այդ անխոնջ աշխատաւորը չի լքւում ձախորդութիւնից եւ ձեռնթափ չի լինում իր սիրած գործից: Նա վերադառնում է Խորանաշատի վանքը, նորոգում է այն, եւ «առնէր նա շինուածս երեւելիս,— գրում է Կիրակոսը,[2]— զաւիթ շինելով ի կոփածոյ վիմաց ի դուռն մեծ եկեղեցւոյն, զոր իւր իսկ շինեալ էր, եւ զբան վարդապետութեանն ուսուցանէր այնոցիկ, որ ժողովէին առ նա յամենայն գաւառաց»: Այստեղ էլ նա վախճանւում եւ թաղւում է 1251 թ. «Եւ ժողովեցան անթիւ բազմութիւնք ի թաղումն նորա եւ մեծաւ սգով եւ տրտմութեամբ ողբային յոյժ, զի զրկեցան ի լուսաւոր վարդապետութենէն երանելւոյն եւ ի հոգեշահ բանիցն»:

Վանական վարդապետը մի գեղեցիկ տիպարն է իր դարի շինարար ու տոկուն ուսուցչի: Նրա կեանքը մի հոյակապ դրուագ է, թէ ինչպէս Մխիթար Գօշի եւ ուրիշների աշակերտները, բազում «դպրեանս հաւաքեալ» դպրատներ շինելով, սփռում էին գիտութեան լոյսը եւ, հայկական իշխանութիւնների մէջ արեւելեան խուլ անկիւններում ծաղկում էր կուլտուրան, լուսաւորութեան գործին նուիրուած անձերի անդուլ ջանքերով: Նրանք պատրաստում էին իրենց գործը շարունակողներ: Վանականն էլ, ըստ Կիրակոսի, «ի տղայական տիոցն աստուածագործ ծառայութեամբ կացեալ, բազում քրտունս եւ աշխատութիւնս ցուցեալ ի բանն վարդապետական, բազում ու-

1 Կիր. Գանձ. Պատմ., էջ 221 եւ հտն.:

2 Անդ, էջ 331—334:

դիս ի փառս ածեալ»։[1] Նրա այդպիսի «որդիներից» մէկն է եղել եւ Մեծն Վարդանը, որ անուանում է նրան «համբաւաւոր եւ արդիւնական վարդապետն Վանական», «սուէն թողեալ անուն քաջութեան յաշակերտս իւր ի գիրս գանձուց եկեղեցւոյ, զորս ամբարեաց ի շնորհացն Աստուծոյ եւ ի յստակ մտաց ծննդականաց»։[2] Իսկ Մաղաքիա Աբեղան[3] գրում է. «Ի դառն ժամանակիս փայլէր իբրեւ զարեգակն սուրբ հոգի վարդապետն մեր Վանականն յերկիրն արեւելեան երկրորդ արեւելք անուանեալ... Նոյնպէս եւ գովելի աշակերտքն իւր Վարդան եւ Կիրակոս, Առաքեալն եւ Յովսէփ Խաչանրման բաժանեալ զաշխարհն արեւելից լուսաւորեցին կենարար վարդապետութեամբ... այլ եւ բազում որդիս ի փառս ածին, ձրի բաշխելով զտիրական խաչանիշ գաւազանն [=վարդապետական գաւազան, վարդապետութիւն] նմանեալ փառաւոր վարդապետին իւրեանց»։

Ուսումնասէր վարդապետ Վանականը պարապել է նաեւ գրական աշխատութիւններով. Նա գրել է իր ժամանակակից պատմութիւնն ըստ վկայութեան Վարդանի եւ Կիրակոսի։ Վերջինս «Յառաջաբանի» մէջ նախորդ պատմագիրների շարքի վերջում յիշատակում է իբրեւ պատմութիւն գրող «Մեծիմաստ եւ հանճարեղ վարդապետն անուանեալ Վանական»։ Ապա Լոռիի եւ Անիի ժողովների (1204 եւ 1205 թուականների) պատմութեան վերջում[4] աւելացնում է. «Զբովանդակ իրս՝ զբան եւ զգործ այսմ ժողովոյս գրեաց մեծիմաստ եւ սաստամիտ վարդապետն Վանական յիւրում պատմութեանն, զի՝ ականատես էր նա իրացն եղելոց, եւ ականջալուր, յաշակերտի կարգի գոլով յայնժամ առ մեծ վարդապետին [=Մխիթար Գոշ]։ Այս եւ այլ յոլով իրք գտանին ի գիրս նորա, որք կամին մտադիւրութեամբ ուսանել»։ Իսկ Վարդանը գրում է.[5] «Արդ ի վեց հարիւր ութսուն եւ հինգ [=1236] թուականէն Հայոց մինչեւ յեօթն հարիւր չորեքտասանս [=1265], յորում եմքս մեք, զոր ինչ արարին ազգն Նետողաց ընդ իշխանս եւ ընդ իշխանութիւնս որ յայսմ կողմանէ ծովուն մեծի — ընդ Պարսս եւ ընդ Աղուանս, ընդ Հայս եւ ընդ Վիրս եւ ընդ աշխարհն՝ Հոռոմոց կոչեցեալ, ուր էին բնակեալ Հայք եւ Ասորիք եւ Յոյնք, Տաճիկք եւ Թուրքմանք — գրեալ են մանրամասնաբար Հայրն մեր եւ ընդ սուրբս Աստուծոյ փառաւորեալն Վանական վարդապետ, եւ հարազատն մեր Կիրակոս վարդապետն՝ հօրն համանման»։

Վանականի գրած պատմութիւնը, ցաւօք, չի մնացել, երեւան են եկել նրա անունով որոշ թւով երկեր՝ կրօնական բովանդակութեամբ։[6] Դրանց բոլորի համար իբրեւ հեղինակ յիշւում է «Վանական վարդապետ». աշակերտներն էլ այդպէս են անուանում նրան։ Նոյն անունը տալիս է եւ նրա եղ-

---

1 Անդ, էջ 331 եւ հտ.։

2 Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ Պատմութիւն տիեզերական, Մոսկուա, 1861, էջ 191 եւ հտ.։

3 Մաղաքիա Աբեղայի Պատմութիւն վասն ազգին Նետողաց, Ս. Պետերբուրգ, 1870, էջ 12։

4 Կիր. Գանձ. Պատմ., էջ 167 եւ հտ.։

5 Մեծին Վարդանայ Պատմ. Տիեզ., էջ 192։

6 Ցուցակը տե՛ս Համ. Ոսկեան, Յովհաննէս Վանական եւ իւր դպրոցը, Վիեննա, 1922, էջ 25—35։

բօրօրդին․ «Ես տէր Մարգարէ՝ եղբօրորդի Վանական վարդապետին, համախոհ եմ վերայ գրելոցս ի յանդարձոյ հօրեղբօրն իմոյ»:[1] Բայց 1858 թ. տպագրուած է մի աշխատութիւն՝ «Յովհաննէս Վանական վարդապետի Տաւուշեցւոյ Բացատրութիւն աղօթից Ամբակումայ մարգարէի» վերնագրով: Որ Վանական վարդապետը կարող էր «Տաւուշեցի» կոչուել, այդ հասկանալի է․ քանի որ նա ըստ «Յայսմաւուրքի»՝ էր «ի Տաւուշ գաւառէն», եւ նրա վանքերը եղել են «յերկիրն Տայուշ», «ի սահմանս Տաւուշ բերդոյ»: Բայց որ նրա անունը եղած լինի «Յովհաննէս», այդ ընդունելի չէ․ վերեւում յիշուած մի երկու տպագրել տուողները, ըստ երեւոյթին, նրան շփոթել են Մխիթար Գոշի ուսուցիչ «Յովհաննէս վարդապետ Տաւուշեցի» կրօնաւորի հետ: Եւ ուրիշներն էլ հետագայում այդպէս «Յովհաննէս... Տաւուշեցի» անունով շարունակել են կոչել Մխիթար Գոշի աշակերտ «Վանական վարդապետին»: Անունը՝ «Վանական» իբրեւ յատուկ անուն գտնում ենք մի ուրիշի համար եւս Կիրակոսի Պատմութեան մէջ,[2] ուր բազմաթիւ անունների շարքի մէջ՝ կայ «եպիսկոպոսքն Բջնոյ՝ Վանականն եւ Գրիգոր», եւ մի տասն անուններից յետոյ՝ «մեծ հռչակաւոր վարդապետն Վանական»: Ինչպէս Բջնոյ եպիսկոպոսի անունը եղել է «Վանական», նոյնպէս եւ Կիրակոսի վարդապետի անունը կոչուել է «Վանական», եւ ոչ «Յովհաննէս վանական Տաւուշեցի», որի մէջ «վանական» առնւում է իբրեւ հասարակ անուն:

2. Կիրակոս Գանձակեցու «Պատմութիւն Հայոց»:— Վանականի նշանաւոր աշակերտներից է Կիրակոսը, յայտնի մի վարդապետ, որին Վարդան Արեւելցին անուանում է «բարունեաց պետ»: Գրականութիւն սիրող է նա, հետաքրքրուող՝ ժամանակակից խնդիրներով, թէ կրօնական եւ թէ քաղաքական: Բայց, ինչպէս երեւում է, աւելի շատ աշակերտների հետ գործնական պարապմունքով է զբաղուել վարդապետը, աւելի դրդել է ուրիշներին գրելու, քան ինքը գրել է: Ուստի նրանից չեն մնում ուրիշ գրական երկեր, բացի նրա «Հայոց պատմութիւնից»: Սրա վրայ նա անպայման «բազում աշխատութիւն եւ երկար ջան» է գործադրել՝ նիւթեր ժողովելու եւ մշակելու, համարելով այդ իր համար մի «արժան գերեզմանի», ոչ թէ քարէ, «այլ կենդանի, զի յիշեսցի ի սմա անուն Կիրակոսի»: Այսպէս է գրում նա իր գործի Նախաբանի վերջում: Իր անուան անմահացման համար է հոգացել նաեւ այնու, որ Առաջաբանի սկզբի տառացուածների գլխագիրը կազմել է «Կիւրակոս»: Եւ իսկապէս, նրա յիշատակը կենդանի է մնացել իր միակ կարեւոր աշխատութեամբ, առանց որի անծանօթ կը մնային, կամ թերածանօթ կը լինէին մեզ Հայոց եւ Հայաստանի պատմութեան շատ կողմեր, քաղաքական եւ կուլտուրական շատ երեւոյթներ եւ բազմաթիւ պատմական դէպքեր ու դէմքեր:

Նրա Պատմութեան առաջին մասը քաղուած է նախորդ գրաւոր աղբիւրներից՝ «երկօք աշխատութեան հաւաքեալ ի նախագրելոց»: Այստեղ, սկսած Ս. Գրիգորից, շարունակաբար համառօտ պատմութիւն է անում

1 Ստեփաննոս Օրբէլեան, Պատմ. նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 462:
2 Կիր. Գանձ. Պատմ., էջ 295:

րաս կաթողիկոսների յաջորդութեան, գլխաւոր ուշադրութիւնը դարձնելով եկեղեցական անձերին ու դէպքերին եւ երկրորդաբար միայն մէջ բերելով քաղաքական եղելութիւններ: Մէջը կան եւ այնպիսի տեղեկութիւններ, որոնք յայտնի չեն ուրիշ պատմագիրներից: Երբ հասնում է Ներսէս Շնորհալուն, բերում է նրա մի ընդարձակ գրութիւնը՝ «Գիր հաւատոյ խոստովանութեան Հայաստանեայց եկեղեցւոյ»: Քանի պատմութիւնը մօտենում է հեղինակի ժամանակին, այնքան աւելի կարեւոր է դառնում իր նիւթով. վերջը նոյնիսկ ժամանակակից իրողութիւնների եւ անձերի մասին է խօսում:

Երկրորդ մասը սկսում է Լեւոնի իշխանութիւնից եւ նրա թագաւորելուց (1197 թ.) եւ հասցնում է մինչեւ 1265 թուականը: Այս մեծ հատուածի պատմութեան համար յայտնում է, թէ «է՛ որ ականջալուր, եւ է՛ որ ականատես» է ինքը: Աշխատութեան ընթացքում էլ մէկ մէկ ցոյց է տալիս իր աղբիւրները, ինչպէս՝ երբ խօսում է Հեթում թագաւորի ճանապարհորդութեան եւ նրա տեսածների ու լսածների մասին, աւելացնում է. «բազում իրս զարմանալիս պատմէր մեզ զբարբարոս ազգացն...»: Բաղդատի առման մասին պատմելուց յետոյ՝ ասում է. «Եւ զայս ամենայն պատմեաց մեզ իշխանն Հասան, զոր Պռօշն անուանէին... որ ականատես եւ ականջալուր էր իրացս»: Այսպիսի ծագում ունենալով, նրա հաղորդած հարուստ տեղեկութիւններն ընդհանրապէս մեծ արժէք ունին ե՛ւ արեւելեան, ե՛ւ արեւմտեան Հայոց, ինչպէս եւ Վրաց պատմութեան համար: Նա մանրամասն խօսում է Զաքարէ եւ Իւանէ եղբայրների գործերի մասին, այլեւ Հայաստանի արեւելեան կողմի ուրիշ իշխանների ու վարդապետների, նրանց շինած վանքերի: Բերում է նաեւ թղթեր կրօնական խնդիրների վերաբերեալ: Առանձնապէս աւելի կանգ է առնում թաթարների արշաւանքի, նուաճումների եւ հայերի ու նրանց յարաբերութիւնների վրայ: Թէեւ երբեմն մէջ է բերում նաեւ սին զրոյցներ, որոնց նա հաւատում է մեծ դիւրահաւանութեամբ, բայց նրա այդ գործն իր ամբողջութեամբ մեր առաջ բաց է անում մի շատ կարեւոր պատմական դարաշրջանի պատկերը: Անհեթեթ բաների մասին պատմուածքներն անգամ իրենց կողմից պարզում են այն ժամանակի եւ իրեն՝ Կիրակոսի, հետը նաեւ իր ժամանակակից մտաւորականների հասկացողութեան մակարդակը:

Ինչքան էլ դժուար ժամանակներում էր ապրում նա, բայց եւ այնպէս նա յուսահատ չէր, եւ այս է նրա անձնական մեծ առաւելութիւններից մէկը. «Վասն զի յօժարեցաք մեք յիշատակ թողուլ յազգս՝ որ գալոց են, քանզի ակն ունիմք մեք յուսոյ փրկութեան ի նեղութենէ աստի՝ որ պաշարեալ է զմեզ, սակաւիկ մի ցուցցուք քննասիրաց զկերպարանս եւ զխօսս նոցա» (=թաթարների): Այսպէս է սկսում նա իր Պատմութեան գլուխներից մէկը,[1] որի մէջ շատ հանգիստ ու լիովին բնութագրում է թաթարներին, որոնց անձամբ լաւ ճանաչել էր ինքը: Քիչ պատմագիրներ մերոնցից՝ ունին այդպիսի նկարագիրներ:

«Էին տեսլեամբ կերպարանաց դժոխատես եւ ահագնալուր, մօրուս

1 Կիր. Գանձ. Պատմ. Հայոց, էջ 257 եւ հտն. «Վասն ցուցման կերպարանաց թաթարին...»:

ո՛չ ունելով, բայց սակաւ ոմանց թուելով մազս ունելով ի շուրթն կամ ի կլափն. ակն նեղ եւ արագատես, ձա՛յն նուրբ եւ սուր բազմակեացք եւ տեւողք: Յորժամ անկանէր յաճախ ուտէին եւ ըմպէին անյագ, յորժամ ո՛չ անկանէր, ժուժկալք էին. ուտէին զամենայն կենդանիս՝ զսուրբս եւ զանսուրբս եւ զմիս ձիոյ առաւել մեծարէին, անդամ անդամ յօշեալ եւ եփեալ, կամ խորովեալ առանց աղի, եւ ապա մանր կտրեալ եւ թացեալ յաղաջուր, այնպէս ուտէին. ոմանք ի դուճս ըստ նմանութեան ուղտուց, եւ կէսք նստելով ուտէին, եւ յուտելն հասարակ բաշխէին տէրանց եւ ծառայից, եւ յըմպելն զղմուզ կամ զգինի, առեալ մի ոմն մեծ ամանով ի ձեռս իւր, եւ փոքր բաժակաւ առեալ ի նմանէ, ցանէին յերկինս, եւ ապա՛ յարեւմուտս, ի հիւսիս եւ ի հարաւ. եւ ապա իւր իսկ ցրուողին զայն սակաւ մի ըմպեալ ի նմանէ, մատուցանէր աւագագունին: Եւ թէ ոք բերէր նոցա կերակուրս ինչ կամ ըմպելիս, նախ բերողին տային ուտել եւ ըմպել, եւ ապա ինքեանք ուտէին եւ ըմպէին. զի մի՛ մահացու դեղոց ինչ դնիցին: Որչափ եւ կամէին՝ կանայս առնէին. բայց զպոռնիկս ամենեւին ոչ ապրեցուցանէին, որ ընդ իւրեանց կանայս. բայց ինքեանք ո՛ւր եւ հանդիպէին այլազգեաց, անխտիր խառնակէին, եւ գողութեան ատելիք էին. մինչ զի չարաչար մահուամբ սպանանէին: Եւ պաշտօն ինչ ո՛չ գոյր առ նոսա, կամ երկրպագութիւն, բայց ստէպ զանուն Աստուծոյ յիշէին յամենայն իրս. զայս՝ թէ զԷ՛ն Աստուծոյ գոհանային, եւ կամ թէ զայլ ոմն Աստուած կոչէին՝ մեք ո՛չ գիտեմք. եւ ո՛չ ինքեանք եւս: Բայց սովորաբար զայս ասէին. զի զարքայն իւրեանց ազգակից Աստուծոյ. զերկինս առեալ Աստուած իւր բաժին, եւ զերկիրս տուեալ Խաղանին. զի ասէին զՉանկզ Ղանն, զհա՛յր Խաղանին, ո՛չ ծնեալ ի սերմանէ առն, այլ լոյս իմն եկեալ յաներեւութից, եւ մտեալ ընդ երդ տանն, եւ ասացեալ մօրն, թէ յղասջի՛ր եւ ծնցիս որդի ինքնակալ երկրի. եւ յայնմանէ ասէին ծնեալ զնա:

Զայս պատմեաց մեզ Գրիգոր իշխանն որդի մարզպանին՝ եղբայր Ասլան պէկին Սարգսի եւ Ամիրային, յազգէ Մամիկոնէից, զոր իւր իսկ լուեալ էր ի մեծ յառնէ միոջէ ի կարի աւագացն, որում անուն էր Ղութու Նուին, յաւուր միում յուսուցանել նոցա զմանկագոյնսն: Եւ յորժամ ոք մեռանէր ի նոցանէ, կամ սպանանէին, է՛ր զոր բազում աւուրս շրջեցուցանէին ընդ իւրեանս, քանզի մտեալ դիւի՝ խօսէր անդուստ բազում բարբաջմունս, եւ է՛ր զոր այրէին. եւ զկէս թաղէին յերկրի խո՛ր փոսիւք, եւ ընդ նմին դնէին զզէնն եւ զհանդերձ, եւ զոսկի եւ զարծաթ, որ ինչ բաժին իւր էր: Եւ թէ ի մեծաց ոք լինէր, ի ծառայից եւ յաղախնեաց եւս դնէին ընդ նմա ի գերեզմանի, զի սպաս կալցի ասէին նմա. այլ եւ ձիս, զի ասէին անդ պատերազմ սաստիկ լինել. եւ զոր յիշատակ կամէին առնել մեռելոյ, ճեղքէին զփոր ձիոյն, եւ քարշէին ընդ այն զամենայն միսն առանց ոսկեր. եւ ապա զփորոտին եւ զոսկերսն այրէին հրով, եւ կարէին զմորթ ձիոյն, իբրեւ թէ զամենայն մարմինն ունիցի: Սրեալ փայտ մի մեծ, հարեալ ընդ որովայնն եւ հանեալ ընդ բերանն, այնպէս վերացուցանէին ի ծառ, կամ ի բարձրաւանդակ տեղւոջ:

Այլ եւ կանայք նոցա կախարդք էին, եւ զամենայն ինչ հմայէին. եւ առանց հրամանի կախարդացն եւ դիւթիցն ոչ երթային ի ճանապարհ

ուրեք, բայց թէ նոքա հրամայէին: Այլ եւ խօ՛սք նոցա խժականք եւ անծա-նօթք ի մէնջ. քանզի կոչէին զանուն Աստուծոյ՝ Թանգրի եւ զմարդն՝ հա-բերեան, եւ զկին՝ ափջի, եւ զանուն Հօր՝ էչկա՛, եւ զմայր՝ աքա, եւ զեղ-բայր՝ աղա, եւ զքոյր՝ աքանի, եւ զգլուխ՝ թիւրօն, եւ զաչս՝ նիտուն, եւ զականջսն՝ չիքին, եւ զմօրուս՝ սախալ, եւ զերես՝ ջիօզ, եւ զբերան՝ աման, եւ զատամն՝ սխուր, եւ զհաց՝ օթմակ եւ զեզն՝ աքար, եւ զկով՝ ունէն, եւ զոչխար՝ ղոյնա, եւ զգառն՝ ղուրղան, եւ զայծ՝ իման, եւ զձի՝ մօրի, եւ ըզ-ջորի՝ լօսա, եւ զուղտ՝ թաման, եւ զշուն՝ նօխա, եւ զգայլ՝ չինա, եւ զարջ՝ այտքու, եւ զաղուէս՝ հօքան, եւ զնապաստակ՝ թապլղայ, եւ զհաւ՝ թա-խեա, եւ զաղաւնի՝ կօկաչա, եւ զարծուի՝ ղուշ, եւ զջուր՝ ուսուն, եւ զգինի՝ տարասու, եւ զծով՝ տանկըզ, եւ զգետ՝ ուլանսու, եւ զթուր՝ խօլդու, եւ զաղեղն՝ նմու, եւ զնետ՝ որմու, եւ զթագաւոր՝ մելիք, եւ զմեծ պարոն՝ նու-ին, եւ զերկիր՝ էլ, եւ զերկինք՝ գօգայ, եւ զարեգակն՝ նառան, եւ զլուսին՝ սարա, եւ զաստեղս՝ սաղրա, եւ զլոյս՝ օտուր, եւ զգիշեր՝ սոյնի, եւ զգրա-գիր՝ բիթիքչի, եւ զսատանայ՝ բառահուտէ, եւ զայլ այսպիսի խժական ա-նուանս, զոր ի բազմաց մեզ անծանօթք. իսկ այժմ ակամայ ծանուցեալք»:

Կիրակոսի աշխատութեան վրայ կարելի չէ նայել գրական տեսակէ-տով. դա մի կարգաւորեալ ամբողջական երկ չէ, եւ ոչ էլ մի ժամանակա-գրութիւն տարիների յաջորդութեամբ. դէպքերն իրար ետեւից պատմւում են բաւական խառն դասաւորութեամբ. Հեղինակը գիտակցել է իր երկից մի ամբողջութիւն ստեղծելու պահանջը, բայց չի գտել դրա համար անհրա-ժեշտ կապը կամ կենտրոնը: «Իւրաքանչիւր ոք յառաջին աշխատասիրացն եգիտ տեղի ինչ բուռն հարկանելոյ, կամ թագաւոր երեւելի եւ կամ նախա-պետութիւնք ազգաց յայտնի, — գրում է նա իր Առաջաբանի մէջ: — Իսկ մեր յայսմ յամենայնէ թափուր եղեալ. զի թագաւորութիւնն վաղ ուրեմն բարձեալ, Արշակունին եւ Բագրատունին, եւ իշխանքն ոչ ուրեք երեւեալ Հայկազնի, բայց թէ ուրեք ուրեք ցրուեալք եւ թաքուցեալք յօտար աշխար-հի... Վասն որոյ, — շարունակում է նա, — աղաչեմք զկնի եկեալսդ ոչ ա-ղարտել զաշխատութիւնս մեր, որպէս անուամունք. եւ խնչել քթօք, եւ յո-նօք պռստել»:

Կիրակոսն, ուրեմն, իր ասելով, հայկական քաղաքական մեծութիւն չլինելու հետեւանքով՝ չի կարողացել եւ յօրինել իր երկն իբրեւ մէկ միու-թիւն կազմող, ներքին կապակցութեամբ շարունակական պատմութիւն: Նա պատմել է թռիչքներով, մէկ Արեւելքի մասին, մէկ՝ Արեւմուտքի, մերթ՝ վրացիների, մերթ՝ թաթարների, երբեմն՝ հայոց եկեղեցական գործերի, երբեմն էլ՝ հայ իշխանների: Եւ այդ պատմել է նա պարզ, հեշտ հասկանալի ձեւով, առանց ձգտելու որեւէ ճարտասանական զարդարանքների ու վերամ-բարձութեան, կամ որեւէ խորիմացութեան ու նրբամտութեան, բայց մեծ մանրամասնութեամբ ու սիրով, որովհետեւ նրան տանջել է այն միտքը, թէ չպիտի մոռացութեան տալ իր ժամանակի եղելութիւնները կամ ինչպէս ինքը գրում է. «Ջի հարկանեն զմեզ միտք մեր՝ ոչ տալ լռութեան զայս-պիսի աղէտ տարակուսանաց, զոր յուսք ականջօք մերովք, եւ տեսաք

աչօք»:[1] Եւ համն էլ հէնց այդ հասարակ ու անզարդ, բայց ջերմ սրտով, մանրապատում հաղորդումների մէջ է: Նրա երկի մէջ կան շատ հատուածներ, որոնք մենակ, առանձին առած շատ գեղեցիկ ու գրաւիչ են իրենց պարզութեամբ եւ անկեղծութեամբ, երբեմն անգամ իրենց միամտութեամբ եւ հեղինակի կենդանի ապրումներով: Դրա համար բերենք այստեղ այն հատուածը, որի մասին յիշուեց վերեւում: Թաթարները մօտենում են վանական վարդապետի քարայրին:

«Իբրեւ եղեւ այս կործանումն աշխարհի ի Թաթարէն, եւ եկն Մօլար նուինն յայն սահմանս, բնակիչք գեղջիցն այնոցիկ յայր անդ դիմեցին, եւ լցաւ արամբք եւ կանամբք եւ մանկտօք. եւ եկեալ Թաթարն պաշարեաց զնոսա յայրի անդր. եւ նոքա համբարս ո՛չ ունէին եւ ո՛չ ջուր. եւ է՛ր եղանակն ամառնային, եւ է՛ր տօթ յոյժ. եւ սկսան տապիլ յարգելանի անդ՝ իբր ի բանտի. եւ մանկունքն պապակէին ի ծարաւոյ, եւ մերձ էին ի մեռանել. եւ թշնամիքն ձայնէին արտաքուստ, թէ ընդէ՛ր մեռանիք, ելէ՛ք առ մեզ, եւ տացուք ձեզ վերակացուս, եւ թողցուք զձեզ ի տեղւոջս ձերում. եւ կրկնէին եւ երեքկնէին երդմամբ: Ապա որք էին յայրի անդ, անկանէին առ ոտս վարդապետին, աղաչէին զնա եւ ասէին. «գնեա՛ զարիւն մեր ամենեցուն, եւ է՛ջ առ նոսա, եւ արա սէր ընդ նոսա»: Իսկ նա ասէ ցնոսա. «ես զանձն իմ ո՛չ խնայեցից վասն ձեր, թէ գոյ հնար փրկութեան. զի եւ Քրիստոս զանձն իւր ի մահ ետ վասն մեր եւ փրկեաց զմեզ ի բռնութենէն սատանայի. ապա պարտիմք ի վերայ եղբարց մերոց զնոյն սէր ցուցանել»:

Ապա առեալ վարդապետին երկու քահանայս ի մէնջ, անուն միոյն Մարկոս, եւ երկրորդին Սոսթենէս, որք ապա յետ այնորիկ առին զպատիւ վարդապետական ի նմանէ, զի անդ էաք մեք ի վարժս կրթութեան Գրոց Սրբոց ընդ աւուրսն ընդ այնոսիկ, եւ էջ առ նոսա: Եւ գլխաւորն կայր հանդէպ այրին ի վերայ բլրակի միոջ, եւ հովանի ունէին ի վերայ գլխոյ նորա վասն տօթոյն, զի ի տօնի Վարդավառին արգելլին զմեզ: Իբրեւ մօտ եղեն ի զօրագլուխն, որք տանէին զնոսա՝ երիցս անգամ հրամայեցին երկիր պագանել նոցա ի վերայ ծնգաց իւրեանց, իբրեւ ուղտ ի ժամ ճգելոյն. զի այնպէս էր սովորութիւն նոցա: Եւ իբրեւ եկին առաջի նորա, հրամայեաց յարեւելս կոյս երկիր պագանել Խազանին՝ արքային իւրեանց. եւ ապա մեղադիր եղեւ, թէ «իմ լուեալ է զքէն, թէ այր իմաստուն եւ երեւելի ես, եւ կերպարանք քո յայտ իսկ առնեն զքեզ». զի ա՛յր բարի էր տեսլեամբ, հանդարտ օրինակաւ, փառաւոր մօրուօք, ծաղկեալ ալեօք. «դու իբրեւ

[1] Անընդունելի է ասել, թէ «Որովհետեւ Կիրակոս հմուտ էր թաթար կամ տաճիկ լեզուին, առանձին ուշադրութեան կ՚արժանանայ թաթար խմբապետին առջեւ, որ զինք կ՚որոշէ «ի պէտս դպրութեան՝ գրել թուղթ եւ ընթեռնուլ» (Հ. Ոսկեան, Յովհաննէս Վանական եւ իւր դպրոցը, էջ 94): Թաթարների լեզուից մի շարք բառեր բերելիս՝ Կիրակոսը գրում է. «Այլ եւ խօսք նոցա խժականք եւ անծանօթք ի մէնջ... Եւ զայլ այսպիսի խժական անուանս, զոր ի բազմաց մեզ անծանօթք. իսկ այժմ ակամայ ծանուցեալք»:— Կիրակոսը միայն գերութեան ժամանակ կարող էր սակաւ ինչ սովորել թաթարերէն: Նա գրագրութիւնը չպիտի անպատճառ եւ տաճիկ (=արաբերէն) լեզուով անէր, եւ ոչ թէ հայերէն, քանի որ Հայաստանում էին գտնւում թաթարները եւ գործ ունէին հայերի եւ հայ իշխանների հետ: Նրանք անպայման ունեցել են իրենց թարգմանները հայերի հետ յարաբերութեան ժամանակ:

լուար զհամբաւ գալոյ մերոյ ի սահմանս ձեր, ընդէ՞ր ո՛չ եկիր ընդ առաջ մեր սիրով խաղաղութեամբ, եւ ես հրամայէի պահել զամենայն, որ ինչ քոյ էր, անվնաս՝ ի մեծէ մինչեւ ի փոքր»: Պատասխանի ետ վարդապետն եւ ասէ. «մեք զբարեմտութիւն ձեր ո՛չ գիտէաք, այլ երկիւղիւ եւ զօրմամբ պաշարեալ էաք յահէ ձերմէ, եւ լեռնիդ անտեղեակ, եւ ի ձէնջ ոչ ոք եկն առ մեզ կոչել զմեզ առ ձեզ, վասն այս էր զանդաղումն մեր. արդ իբրեւ կոչեցիք, եկաք առաջի ձեր. մեք ո՛չ զինուոր եմք, եւ ո՛չ ընչից տեարք, այլ արք պանդուխտք եւ օտարականք, ժողովեալք յայլ եւ այլ աշխարհաց վասն ուսման ինչ մերոյ պաշտամանս. արդ աւասիկ առաջի ձեր եմք, զոր ինչ կա՛մ է ձեր՝ արարէ՛ք ընդ մեզ, թէ կենօք եւ թէ մահուամբ»: Յայնժամ ասէ ցնա իշխանն. «մի՛ երկնչիր». եւ հրամայեաց նոցա նստիլ առաջի իւր, եւ բազում հարցեալ զնա վասն բերդիցն եւ իշխանին Վահրամայ, թէ ո՞ւր իցէ. զի կարծէր զնա, թէ մարմնական ինչ իշխան իցէ ի վերայ երկրին: Եւ իբրեւ ասաց՝ զոր ինչ գիտէրն, և զայն եւս՝ թէ գործակալ ո՛չ ինչ իցէ նա մարմնական, ապա հրամայեաց նմա, զի իջուցէ զմարդիկն յամրոցէ անտի աներկիւղս եւ խոստացաւ իւրաքանչիւր յիւրում տեղւոջ կեալ իւրովք վե-րակացուօք, եւ յանուն նորա շինեալ զգեօղն եւ զագարակն:

Ապա ձայնեցին առ մեզ երիցունքն, որք էին ընդ հետ վարդապետին. թէ իջէ՛ք վաղվաղակի, եւ զոր ինչ ձեր է՝ բերէ՛ք ընդ ձեզ: Եւ մեր իջեալ դողութեամբ առ նոսա, որպէս զատինս ի մէջ գայլոց, երկուցեալք եւ զար-հուրեալք, ակն ունէաք մահու, ասելով զհաւատոյ խոստովանութիւնն, որ ի սուրբ Երրորդութիւնն. յառաջ քան զիջանելն մեր յայրէ անտի հաղորդեալ էաք պատուական մարմնոյ եւ արեան Տեառն. եւ տարան զմեզ ի փոքրագոյն աղբիւր մի, որ կայր ի մէջ վանիցն, եւ ետուն մեզ ջուր, զի յոյժ ծարաւի էաք զաւուրս երիս. եւ ապա տարան արկին զմեզ ի տեղի ինչ յարգելանի եւ զաշխարհականս ի զաւիթս եկեղեցւոյն. եւ ինքեանք շուրջ զմեօք պահէին զմեզ զգիշերն, զի ընդ երեկս էր օրն, եւ ի վաղիւ անդր հանին զմեզ ի գլուխ վանիցն ի բարձրաւանդակ տեղի ինչ, եւ խուզեալ առին որ ինչ կայր առ ումեք, որ պիտոյ էր նոցա. եւ որ ինչ յայրի անդ էր, եւ որ ինչ սպասք էր եկեղեցւոյն կամ շուրջառ, կամ այլ անօթ ինչ, կամ խաչ արծաթի, եւ երկու աւետարանս ընդելուզեալ արծաթով, զայն ետուն ցվարդապետն, զոր յետոյ առին ի մէնջ: Եւ ընտրեալ ի մէնջ արս, որք կարող էին շրջիլ ընդ նոսա, եւ զայլսն հրաման ետուն տանել ի վանսն եւ ի գիւղ անդր, եւ վերակա-ցու թողին ինքեանց, զի այլք մի՛ խուզեսցեն զնոսա: Հրամայեաց եւ վարդա-պետին կեալ ի վանս անդր, եւ եղբօր որդի մի էր նորա քահանայ, Պօղոս անուն, նմա հրամայեաց գալ ընդ մեզ զկնի նորա: Իսկ վարդապետն սուրբ խնայեաց յեղբօր որդին իւր, զի մանուկ տիօք էր, ինքն եկն զկնի նորա, յուսացեալ թէ հնարիցէ եւ զմեզ զերծուցանել: Եւ շրջեցուցեալ զմեզ զկնի իւր աւուրս բազումս նեղութեամբ եւ տառապանօք, հետի՛ եւ բոկ եւս, եւ որք կարգեալ էին պահել զմեզ, արք պարսիկք էին ծարաւի արեան քրիստո-նէից, նոքա առաւել կեղեքէին զկեանս մեր ամենայն տառապանօք յուղե-գնացութեան, այնքան ստիպմամբ տանէին զմեզ՝ որպէս զերիվարս յասպա-տակի: Եւ թէ դէպ լինէր ումեք վասն տկարութեան մարմնոյ, կամ խեղու-թեան սակաւ մի կասել ի գնացիցն, անխնայ ջարդէին զկառափունսն, եւ

ձեծէին զմարմինսն դանալից մինչեւ զի զփուշս անգամ ոչ կարէին հանել ոտից՝ թէ եղանէր ընդ նա, եւ ո՛չ ջուր ըմպել ոք կարէր վասն սախողացն: Եւ իբրեւ իջանէին, տանէին՝ լնուին զմեզ ի տունս նեղս, եւ ինքեանք շուրջ զատեալ պահէին, եւ ո՛չ տային թոյլ ումեք ելանել յարտաքս ի պէտս կարեաց մարմնոյ, այլ ի նոյն տունս անցուցանէին զպէտսն, եւ ի նմին ազանէին զյոլով աւուրս: Վասն որոյ ո՛չ կարեմ ընդ գրով արկանել զամենայն նեղութիւնսն, որ անցին ընդ մեզ, եւ զվարդապետն ո՛չ թողին առ մեզ, այլ ուրո՛յն հեռի ի մէնջ յայլս ոմանս յանձնեցին զգուշութեամբ պահել: Ապա առին եւ զկս յընկերաց իմոց զկնի իւրեանց ի պէտս դպրութեան գրել թուղթ եւ ընթեռնուլ. զօրն զկնի իւրեանց շրջեցուցանէին, եւ երեկոյին հասելոյ բերէին՝ տային զմեզ ի վարդապետն երաշխաւորութեամբ. եւ դարձեալ գային առնուին հետի՛ կամ մերկ ի վերայ տրմուղ գրաստոյ. եւ այսպէս առնէին զօրս բազումս:

Իսկ իբրեւ անցին աւուրքն ամարանի, եւ եկն եղանակն աշնանային, եւ հանդերձեալ էին հեռանալ նոքա ի ծանօթ յաշխարհէն մերմէ ի հեռաւոր օտարութիւն. ապա զանձինս ի մահ եդին ամենեքեան, եւ սկսան առ սակաւ սակաւ փախչել ի գիշերի՝ ուր եւ կարասցեն զերծանիլ: Այսպէս եղեւ շնորհօքն Քրիստոսի ամենեցուն զերծանիլ՝ բա՛ց յերկուց երիցանց, որք ի տունջեան կամեցան գաղտ երթալ, եւ ո՛չ կարացին զերծանիլ. զոր ըմբռնեալ ածին ի բանակն եւ սպանին առաջի մեր յերկիւղ եւ ի զարհուրումն մեզ. զի այսպէս առնէին ամենայն փախուցելոց: Ապա յաւուր միում ասէ ցիս վարդապետն սքանչելի. Կիրակո՛ս. եւ ասեմ՝ զի՞նչ հրամայես վարդապետ: Ասէ ցիս. որդեակ, գրեալ է թէ յորժամ ի նեղութիւնս անկանիցիք, համբերեցէ՛ք. արդ պարտ է մեզ զբանս գրոյն յանձինս մեր ցուցանել. զի ո՛չ լաւ եմք մեք քան զսուրբսն առաջինս զԴանիէլ եւ զԱնանիանսն եւ զԵզեկիէլ, որք ի գերութեանն իւրեանց զբարեպաշտութենէ բուռն հարին, մինչեւ Աստուած ա՛յց արարեալ, փառաւորեաց զնոսա ի գերութեան անդ. արդ եւ մեք կացցուք խնամոցն Աստուծոյ, մինչեւ ինքն ա՛յց արասցէ մեզ, որպէս եւ կամի: Եւ ասեմ. որպէս հրամայես, հա՛յր սուրբ, այնպէս արասցուք: Դէպ եղեւ ապա յաւուր միում գալ իշխանին այնմիկ, որ գերեաց զմեզ ի տեղին՝ ո՛ւր էաք մեք ի պահեստի. եւ տեսեալ զմեզ՝ խաստորեցաւ առ մեզ. եւ մեր ընթացեալ ընդ առաջ նորա, ասէ ցմեզ. զի՞նչ պիտոյ է ձեզ. մի՛ թէ քաղցեա՞լ էք. տաց մեզ միս ձիոյ ի պէտս կերակրոյ. զի ինքեանք անխտիր ուտեն զամենայն սուրբ եւ անսուրբ անասունս՝ այլ եւ զմուկն եւ զամենայն սողունս: Ասէ ցնա վարդապետն. մեք ձիոյ միս ո՛չ ուտեմք, եւ ո՛չ զայլ կերակուրս ձեր. թէ կամիս շնորհ առնել մեզ, արձակեա՛ զմեզ ի տեղի մեր, որպէս խոստացար. զի ա՛յր ծեր եմ ես եւ հիւանդոտ, եւ ո՛չ եմ քեզ ի պէտս ինչ գործոյ զինուորութեան, կամ հովուութեան, կամ այլ ինչ ի պէտս ձեր: Ասէ ցնա զօրագլուխն. յորժամ եկեսցէ Ջուչուղայն, հոգացից վասն այդորիկ. եւ էր Ջուչուղայն այն վերակացու տանն նորա. եւ է՛ր երթեալ ընդ զօրս նորա յաւար. այսպէս կացաք առաջի նորա երկիցս եւ երիցս, եւ նա զնոյն պատասխանէր: Ապա եկն այրն ի ճանապարհէն, եւ կոչեցին զմեզ ի դուռն իշխանին. եւ յղեաց նոյն այր առ մեզ հանդերձ թարգմանաւ, ո՞չ ապաքէն ասէք դուք, թէ ինչս տալ մեռելոցն օգուտ է հոգւոյ նորա. արդ մեռելոցն

ոգնէ, զկենդանիս ընդէ՞ր ո՛չ փրկէ. տո՛ւր զոր ինչ ունիս, եւ գնեա՛ զոգի քո, եւ երթ՝ նիստ ի տան քո: Պատասխանի ետ վարդապետն եւ ասէ. մեր ինչքն ա՛յն էին, զոր առէք դուք՝ խաչքն եւ աւետարանքն. բայց յայնմանէ մեր այլ ոչ ինչ գոյ: Ասէ ցնա այրն. եթէ ո՛չ ունիս ինչս, եւ ո՛չ է հնար քեզ երթալ աստի: Պատասխանի ետ վարդապետն. ճշմարտութեամբ ասեմ քեզ, մեր ո՛չ ինչ կայ, եւ ո՛չ գին աւուր միոյ կերակրոյ. բայց թէ կամք են ձեզ՝ առաքեցէ՛ք զմեզ ի մի ի բերդից յայսցանէ, որ շուրջ կան զմեօք, եւ քրիստոնեայքն որք կան ի նոսա, գնեն զմեզ: Իսկ նոցա հաւեալ գինս ծանունս ի վերայ նորա, եւ դարձեալ թեթեւացուցին յայնմանէ, եւ առաքեցին զնա ի բերդն, որ կոչի Գաղ: Իսկ նա խնդրեաց զմեզ գնոյ, զի ընդ իւրն եւ զմերն տացէ, եւ ո՛չ ետուն. ասեն՝ սա ի պէտք է մեզ թուղթ գրելոյ եւ ընթերցման, թէպէտ բազում գինս տայք, ո՛չ տամք զսա: Եւ բազում արտասուօք բաժանեցաք ի միմեանց. եւ ասէ ցիս. որդեա՛կ, ես երթամ անկանիմ առ ոտս Սրբոյ Նշանին, որ յանուն սրբոյն Սարգսի, խնդրել նովաւ ի Տեառնէ վասն քո, եւ այլ եղբարցդ՝ որ կան ի ձեռս անօրինացդ. զի թերեւս զերծուսցէ եւ զձեզ Աստուած զթութեամբն իւրով: Զի էր ի Գաղ խաչ մի սքանչելագործ առ ամենայն նեղեալս, եւ մանաւանդ առ գերիս. զի որք ապաւինէին բոլորով սրտիւ, ինքն իսկ սուրբ վկայն Սարգիս բանայր զկապանս բանտից եւ արգելանաց, եւ լուծանէր զերկաթն, եւ առաջնորդէր մարմնաւոր տեսլեամբ ի տեղիս իւրեանց. եւ համբաւ սքանչելեացն տարածեալ էր ընդ ամենայն ազգս, զոր կանգնեալ ասէին սրբոյն Մեսրոպայ վարդապետին մերոյ:

Եւ եղեւ որպէս ասաց վարդապետն. գնեցին զնա ութսուն դահեկանի. եւ իբրեւ տարան զնա, ի նմին աւուր ասէ ցմեզ Մօլարն. մի տրտմիր ընդ գնալ մեծ երիցուն. զքեզ վասն այնորիկ ո՛չ թողաք ընդ նմա, զի պիտանի ես մեզ. մեծացուցից զքեզ իբրեւ զմի ի մեծաց իմոց. եւ թէ կա՛յ քո կին, բերից զնա առ քեզ. եւ թէ ո՛չ՝ ի մէնջ տաց քեզ: Եւ առժամայն ետ մեզ վրան մի, եւ երկուս պատանիս սպասաւորս մեզ, եւ ասէ. ի վաղիւն տաց քեզ ձի, եւ ուրախ արարից զքեզ, միամիտ կացջիր. եւ գնաց ի մէնջ: Եւ խնամօքն Աստուծոյ պատահեաց մեզ ի նմին գիշերի դաղտագնաց լինել ի նոցանէ եւ զերծանիլ. եւ եկաք ի տեղի սննդեան մերոյ ի վանքն՝ որ կոչի Գետիկ. եւ նա աւարեալ էր ի նոցանէ, եւ այրեալ շինուածքն որ ի նմա, եւ անդ դադարեցաք:»

3. Վարդան Արեւելցի:—Վանական վարդապետի նշանաւոր աշակերտն է սա, իր ժամանակի համբաւաւոր գիտնական վարդապետը: Նրան կոչել են եւ «Մեծն Վարդան» ի տարբերութիւն ժամանակակից նոյնանուն ուրիշ վարդապետներից: Նրանց գործերը սխալմամբ մէկը միւսին են վերագրուած. Վարդան Արեւելցու պատմական աշխատութիւնն էլ համարել են մի ուրիշ վարդապետինը—Վարդան Բարձրբերդցունը:[1] Մեծն Վարդանի ծննդեան

1 Մեծին Վարդանայ Բարձրբերդցւոյ Պատմութիւն տիեզերական, ի լոյս ընծայեաց Մկրտիչ Էմին, Մոսկուա, 1861: Կայ եւ երկրորդ հրատարակութիւնը՝ Վարդան վարդապետ Մեծն, «Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի, լուսաբանեալ»: Ի

տեղը յայտնի չէ․ Նրա Արեւելցի կոչումից երեւում է, որ նա Արեւելեան Հայաստանից է եղել, հաւանօրէն Գանձակ քաղաքից կամ նրա շրջականերից։ Ծնուած է մօտ 1200—1210 թուականների մէջ։ Վանական վարդապետի մօտ ուսանելիս՝ նրա աշակերտակիցն եղել է Կիրակոս Գանձակեցին։ Սա պատմում է, որ Վարդանը գնում է Երուսաղէմ ուխտ, վերադառնալիս մտնում է Կիլիկիա, լինում է Հեթում արքայի եւ նրա եղբայրների մօտ։ Ապա նա գնում է Կոստանդին կաթողիկոսի մօտ, որ նրան տեսնելով՝ շատ ուրախանում է, «եւ առ իւր պահեաց յոլով ժամանակս, սիրով կապեալ ընդ նմա, եւ զոր ո՛չ կամէր երբէք մեկնիլ ի նմանէ»։[1] Կաթողիկոսը շրջաբերական թուղթ եւ եկեղեցական կանոններ է ուղարկում «իմաստուն եւ հանճարեղ վարդապետ» Վարդանի ձեռով Հայաստանի քաղաքներն, աւաններն ու վանքերը եւ Արեւելքի իշխաններին։ «Եւ եկեալ վարդապետն Վարդան եւ որք ընդ նմա առաքեալքն ի կաթուղիկոսէն յԱրեւելս, եւ շրջեալ ընդ գաւառս Հայոց, յեպիսկոպոսս եւ ի վանորայս եւ յիշխանս, եւ տուեալ ամենեցուն զհրամանս կանոնականս, եւ պահանջեալ յամենեցունց ձեռագիր հաւանութեան սահմանին եդելոյ»։ Վարդանը բազմաթիւ եպիսկոպոսների եւ իշխանների հաւանութեան գիրը, նրանց ստորագրութեամբ, ուղարկում է կաթողիկոսին Հռոմկլա 1246 թ․, «եւ ինքն եկեալ ի Կայենոյ ի միայնարանն իւր, զոր սուրբ Անդրէ կոչէին, հանդէպ անառիկ բերդին Կայենոյ, եւ անդ դադարեալ յուսուցանել զբազումս, որք աշակերտէին նմա, վարդապետական բանին»։[2]

Վարդանը, սակայն, յարատեւ մի վայրում չի մնում, այլ աստանդում է զանազան վանքեր — Խորվիրապ, Թեղենեաց վանք, Սաղմոսավանք, Հաղբատ, Հառիճայ վանք, Աղջոցվանք, ամէն տեղ էլ ուսուցանելով եւ գրականութեամբ պարապելով։ Նա ունեցել է բազմաթիւ աշակերտներ, որոնցից շատերը նոյնպէս աչքի ընկնող գործունէութիւն են ցոյց տուել․ Նրանցից մէկն է եղել եւ յայտնի գրող Յովհաննէս Երզնկացին։[3] Նա իր բազմակողմանի հմտութեամբ եւ անխոնջ վաստակով անուանի եւ հռչակաւոր է դառնում․ 1264 թ․ Հուլաւու Էլխանը կանչում է նրան իր մօտ․ Նա գնում է․ վերադառնալուց յետոյ շարունակում է իր սովորական գործը մինչեւ իր մահը՝ 1271 կամ 1269 թ․։

Այս մեծ եւ արդիւնաշատ ուսուցչի գրական վաստակն էլ մեծ է եղել․— մեկնութիւններ, ներբողներ, հոգեւոր երգեր, բազմաթիւ մանր երկեր, ինչպէս են՝ «Յաղագս մեկնութեան քերականին», «Թուղթ... առ Հեթում թագաւորն», եւ այլն․ Նաեւ թարգմանութիւններ։[4] Կան երկեր էլ, որոնց

---

Վենետիկ, 1862. Հրատարակողների «Յառաջաբանը» տես նաեւ՝ Զարբհանալեանի «Հայկական Մատենագրութիւն», Վենետիկ, 1883, էջ 639 եւ հտն.։

Բարձրբերդը գտնուել է Կիլիկիայի սահմաններում։

1 Կիր. Գանձ. Պատմ. Հայ., էջ 278–296։

2 Անդ, էջ 295։

3 Հ. Ոսկեան, Յովհ. Վանական եւ իւր դպրոցը, էջ 47։ Աղբիւրը՝ Տաշ. Ցուց. էջ 16. «Հօրն մերոյ Վարդանայ վարդապետի»։

4 Միքայէլ Ասորու Պատմութեան թարգմանութիւնը, որի «Յիշատակարանը» տեսնել Մաղաքիա աբեղայի «Պատմութիւն վասն ազգին նետողաց», Ս. Պետերբուրգ 1870, էջ 55—63։

նրանք լինելը կասկածելի է, կամ թէ վերագրուած են նրան: Այդպիսիներից պէտք է յիշել Վարդան աշխարհագրի «Աշխարհացուցութիւն նորոգ Թարգմանչին եւ Երկրորդ լուսաւորչին Վարդանայ վարդապետի», որ աւելի ուշ ժամանակի գործ է:[1]

Նրա ամենակարեւոր ոչ-կրօնական աշխատութիւնն է վերեւում յիշուած Պատմութիւնը, որ իբրեւ գրական երկ՝ շատ ցած է մնում Կիրակոսի Պատմութիւնից: Դրա մէջ Վարդանը ջանացել է օգտուելով հայ պատմագիրներից եւ բազմաթիւ այլ աղբիւրներից, հանդէս բերել իր բազմակողմանի հմտութիւնը, յօրինելով ոչ թէ հայոց պատմութիւն, այլ «Պատմութիւն տիեզերական»: Իր «Նախերգանքի» մէջ խօսում է առաջ «անսկիզբն» ու «մի եւ միակ է-ի» եւ նրա ստեղծագործութեան, երկնի եւ երկրի ու հրեշտակների, բնութեան եւ այլի մասին, ոչ միայն ըստ Ս. Գրքի, այլեւ «որպէս ասեն իմաստունք», այլեւ «ըստ Արիստոտելի», կամ «որպէս ասեն գիտողք»: Իր ժամանակակիցների համար, ըստ նրանց հայեացքի, հետաքրքիր մի կրօնագիտական ամփոփ տեսութիւն է այդ: Բուն պատմութիւնն սկսում է Ադամից ու մարդկային ազգի աճելութիւնից ըստ Աստուածաշնչի, մէջը հիւսելով նաեւ գիտնականների ստեղծած այլեւայլ զրոյցներ, աւանդութիւններ ու բացատրութիւններ, այսպէս, օրինակ, Բաբելոնի աշտարակաշինութեան զարդարուն զրոյցը:

«Եւ սկսան ապա շինել զաշտարակն յառաջին ամին Ռագաւու՝ ասեն, ոսկեղէն եւ արծաթեղէն սարօղօք, շուրջն դնելով ագիւս՝ խորովեալ հրով զանկեալ բռով, կրով ու կպրով, արձակահիմն խորամէջ լայնափողոց բացեալ պատուհանաւք լուսաբերօք. ասեն եւ ակունս յուսարձակս դնել առ պատուհանաւքն: Անխոնջ վաստակօք զամառն եւ զձմեռն գործէին եւ հողն ձեռն տային. եւ չար խմն մրջմանց՝ յամենայն կողմանց ելոյաց եւ իջողաց այր զայր զրգռէր եւ կին զընկերն իւր: Եւ ոչ ոք ասէր, թէ ես շատ գործեցի քան զքեզ, այլ թէ դու շատ գործեցեր քան զիս, զի դեռ անախտ եւ անցաւ ունէին զբնութիւն: Եւ մինչեւ յքառասուն ամն Ռագաւու ոչ առին պարապ գործոյն՝ մինչեւ հասուցին յօդն անտես, յորձուտն եւ մղձկուտն եւ ի սառակոյտն, յոր թռչուն ոչ վերանայ, եւ թէ ձկտի՝ թեւակիզեալ անկանի: Եւ ասեն, թէ զոսկին ի յատակացն սկսեալ տարան ընդ մէջն մինչեւ ի վեր եւ հալէր ի ջերմութենէն, եւ մարդիկն ջանային եւս հնարիւք անկէզ մնալ. եւ ոչ կասեալ ի գործոյն. մինչեւ ինքն Տէր ողորմեալ զադար տայր առնուլ յանօգուտ ջանիցն: Եւ գտանին զրոյցք ի տանն Նեբրովթայ, եթէ նախ հրեշտակ եկն առ Նեբրովթ, որ իշխան էր եւ որսայր շինողացն կերակուր, եւ ասէ ցնա. «Ես եմ հրեշտակ Աստուծոյ՝ կողմապետ արեւելից.— այսպէս ասէ Տէր Աստուած երկնի եւ երկրի. «լռեցէք զադարեցէք ի գալոյդ առ իս, զի ոչ կարէք. այլ ես եկից առ ձեզ ի ժամանակի եւ տաց ձեզ սանդուղս, որով կարէք գալ եւ դուք առ իս»: Եւ ոչ լուան հրեշտակին: Ապա ինքն ասաց ցէակիցսն իւր. «Եկայք՝ մեք իջցուք եւ բաժանեսցուք զլեզուս նոցա»: Եւ զի ստեղծուածք

---

1 Վարդան Արեւելցու եւ նրան վերագրուած երգերի ու նրանց տպագրութիւնների եւ ձեռագիրների մասին Հ. Ոսկեան, Յովհաննէս Վանական եւ իւր դպրոցը, 53—89: Այլեւ Գ. Զարբհանալեան, Հայկ. հին դպր. Ա., էջ 738 եւ հտն.:

ձեռաց նորա՝ ի ցասմանէ զարհուրեալք, փախչէին առ նա, ոչ պատմեաց զնոսա, այլ հոտով զրախտին արբեցոյց զնոսա, զի հանդէպ կայր զրախտին գլուխ բրգանն: Եւ այսպէս մխիթարեալք զմայլմամբ յանճառելի բուրմանէ հոտոյն՝ մոռացան զառաջին լեզուն: Եւ չարար զնոսա վասնակ միասանգամ քակելով, այլ հողմոյն հրամայեաց զործ, եւ ոչ զոք սպան ի նոցանէ՝ զի ոչ չրջեաց, այլ հոսեաց: Եւ չատ ինչ բարի եղեւ. մի՝ զի ծանեան մարդիկ զիւրեանց տկարութիւն, եւ զարձեալ՝ զի պատճառք իմաստից եւ գեղեցկութեան ի խոչոր լեզուէն առաջնոյ եւ ի կոպտաձեւ՝ փափկազոյն հելլենացւոց եւ սաստկազոյն հռովմայեցւոց, հոնն սպառնական եւ ասորին աղաչական, պարսիկն պերճական եւ ալանն գեղեցկաձեւ, գութն ծաղրական, եգիպտացին խարափաձայն եւ հնդիկն ճճուող, եւ հայն եւս ամենազարդ եւ համեղական. եւ որպէս ազգի ազգի գոյնք գեղեցկութիւն առնեն եւ զանազանութիւնք հասակաց, այսպէս եւ լեզուաց զանազանութիւնք: Եւ առաջին լեզուն մնաց առ Եբերայ, որ ոչ միաբանեցաւ ընդ այլսն: Եւ որպէս մեղքն բաժանեաց յերկու տուն զմարդիկ՝ ի Կայենին եւ ի Սեթայն, նոյնպէս եւ աստ երկու եղեն ազգ մարդկան՝ եբեր եւ ՀԲ տանուտէրքն»:

Հետաքրքիր է, որ, ինչպէս հաւատացել են, թէ սկզբում մէկ լեզու է եղել եւ յետոյ է առաջացել լեզուների զանազանութիւնը, նոյնպէս՝ թէ աշխարհի վերջում պիտի լինի մի ազգ ու մի լեզու, բոլոր մարդկութիւնը մի ընդհանուր լեզու պիտի ունենայ. «Ի յարութեան հասարակ ի յԵբերայն խօսի» [ազգ մարդկան][1]: Վարդանը, սակայն, համաձայն է մի ուրիշ կարծիքի. նա անմիջապէս կցում է. «բայց զայս է ասել, եթէ ցեղացեղ եւ բազմակարօտ մեր բնութիւնս եւ յոգնանուն երբ պարզի եւ մաքրի, անկարօտ լինի՝ զլեզուս հրեշտակաց առնու, ասէ սուրբն Եղիշէ, որով ընդ Աստուած եւ ընդ միմեանս խօսին». «բայց այս պէտք է ասել, որ երբ մեր [մարդկային] բազմացեղ, բազմակարօտ եւ բազմանուն բնութիւնը զտուի ու մաքրուի, անկարօտ դառնայ, ապա նա, — ասում է սուրբ Եղիշէն, կ՚ունենայ հրեշտակների լեզուն, որով կը խօսեն [մարդիկ] Աստուծու եւ միմեանց հետ»: Այսպէս է հին լեզուաբանական տեսութիւնը լեզուների ծագման եւ վախճանի մասին:

Աշտարակաշինութիւնից յետոյ անում է զանազան ազգերի, այսպէս ասած, համաժամանակեան պատմութիւնը մեծ համառօտութեամբ, յաճախ լոկ անունների ու տարիների թուարկութեամբ: Կարեւոր տեղ է բռնում, հարկաւ, հայոց պատմութիւնը, Հայկ ու Բելից սկսած մինչեւ վերջը: Հայերի հետ երեւան են գալիս՝ հրեաներ, պարսիկներ եւ այլն, յետոյ նաեւ բիզանդացիք, արաբներ, թուրքեր, վրացիք, թաթարներ եւ ուրիշները: Քանի մօտենում է 11-րդ դարին, աւելի ու աւելի հարստանում է պատմուածքը ընդարձակ տեղեկութիւններով եւ դառնում է ժամանակագրութիւն: Նրա հաղորդումների մէջ կան շատերը, որոնք ուրիշ աղբիւրներից յայտնի չեն եւ ունին պատմական նշանակութիւն: Կան եւ այնպիսիները, առանձնապէս հին պատմութեան վերաբերեալ, որոնք գիտական յերիւրանքներ

---

1 Եբեր կամ Հեբեր է, ըստ Ս. Գրքի, Աբրահամ Նահապետի նախնիներից մէկը, որի անունով, ինչպէս ենթադրում են, հրեաները կոչուել են նաեւ Եբրայեցի:

են, կամ անարժէք գրոյցներ, որոնց նա՛, իր ժամանակի այդ գիտնականը, նոյնպէս հաւատ է ընծայել:

Թաթարների առաջին յարձակումներն, ըստ Վարդանի, տեղի են ունենում 1221 Թ.: Սպասելի էր, որ այդ տարիներից սկսած նա մանրամասն պատմութիւն գրէր իբրեւ եղելութիւնների ժամանակակից, բայց, ցաւօք, նա չի թողնում համառօտ ժամանակագրելու եղանակը: Իր այդ վարմունքն արդարացնում է ասելով, թէ որովհետեւ 1236—1265 Թ. մանրամասնաբար պատմել են Վանական վարդապետն ու Կիրակոսը, նրանց գրածները «մեք ոչ համարձակեցաք երեքկնել կամ բազմարանել, այլ համառօտ բերեալ միայն զթիւ ժամանակին նշանաւոր իրաց եւ գործոց յիշատակաւք ի լրումն մերոյ գործառնութեանս՝ յոլով ժամանակօք սկսեալ եւ թերի թողեալ, պատկառելով ի գրողացն պատուոյ, զորս վերագոյն յիշեցաք»: Մանրամասն պատմում է միայն իւր տեսակցութիւնը Հուլաւու Ղանի հետ:[1] Այնուհետեւ յիշատակելով մի երեք դէպք, իր գործը վերջացնում է Կոստանդին կաթողիկոսի մահով, 1267 Թ.: Բերենք յիշուած տեսակցութեան կտորը.

«Յեօթն հարիւր երեքտասան թուին կոչեաց զմեզ Հուլաւու Ղանն ի ձեռն շնորհաւոր կոչեցեալ առն փառաւորելոյ յայնմ ժամանակի յամենեցունց եւ աւելի յաշխարհակալացն՝ ի Բաթու կուսակալէն հիւսիսոյ, ուր չողաւն եւ պատուեցաւ նախ, այլ ի Հուլաւու Ղանէն, որ տարաւ իւրով ծախիւք եւ դրամիւք զմեզ եւ որք ընդ մեզ էին վարդապետաք եղբարք մեր՝ Սարգիս եւ Գրիգոր եւ աւագ երէցն Տփխեաց աէրտէրն: Եւ տեսաք զմեծն զայն ի մեծի աւուրս ամսամտի եւ տարեմտի իւրեանց՝ յամսեանն յուլիս ըստ հռովմայեցւոց եւ ըստ մեզ արաց: Եւ էր նոցա աւուրք ուրախութեան իբր յուսին մի, եւ կոչէին զաւուրսն զայնոսիկ խուռուլթայ՝ իբր խորհրդատօնս յորս այլ ղանքն՝ ազգայինք Չանկզ ղանի, առ մեծն եկեալ խորհէին, զոր ինչ պատշաճ տեսանէին հանդերձ ամենայն աւագանօքն իւրեանց, ամենեքեան նոր զգեցեալ՝ յամէն աւուր արիչ գունով փոփոխս: Անդ լինէին եւ ամենայն հնազանդեալքն իւրեանց չատ եւ երեւելի նուիրօք՝ թագաւորք եւ սուլտանք, որպէս եւ ի մեր տեսն թագաւորն Հայոց Հեթում եւ թագաւորն Վրաց Դաւիթ եւ բրինձն Անտաքու եւ սուլտանք ի Պարսից կողմանց յոլովք: — Եւ ի տեսանել զմեզ՝ ծունր կրկնել ոչ եառւն եւ ոչ չոքել ըստ սովորութեան իւրեանց, իբր թէ արքայունք Աստուծոյ միայն երկրպագեն: Գինի ետուն օրհնել եւ ի մեր ձեռաց առնուլ: Եւ խօսք զոր ինչ հրամայեաց առաջին այս է.—

«Կոչել եմ զքեզ, որ տեսանես զիս եւ ճանաչես եւ ի սրտաց աղօթես վասն իմ». եւ աւելորդ է թերեւս զամենայն գրել: Շատ խօսեցաւ, եւ մեք տուաք պատասխանի: Եւ նստուցին զմեզ, եւ գինի ետուն, եւ չարական պաշտեցին եղբարքն որ ընդ մեզ, եւ Վրացիքն զիւրեանց պաշտօնն, եւ Ասորիք եւ Յոյնք զիւրեանցն: Յայնժամ տեսին զեկեալսն յամենայն կողմանց՝ մինչ ասել Ղանին, «թէ զքեզ միայն եմ կոչեցեալ, զի՞նչ է այս նշանս, որ ոչ յառաջ եւ ոչ յետ, այլ մի աւուրբ յամենայն կողմանց եկին ընդ քեզ տեսանել աւրհնել զիս»: Եւ յառաջեաց հրամայեաց ինքն. «Թուի թէ նշան է, որ Աս—

1 Մեծն Վարդ. Պատմ. Տիեզ., էջ 204:

տուծոյ սիրտն լաւ է ինձ»։ — Ասացաք. «զմեզ այլ կալաւ զարմանք եւ պատ-ճառք զոր դուք հրամայեցիք»։ — Ապա հրամայեաց, «թէ ծածուկ բան ունիմ առ քեզ»։

Եւ յաւուր միում արար անապատ յոյժ. — եւ հեռի կացուցեալ զամե-նայն բանակն՝ եւ երկու արամբ միայն խօսեցաւ ընդ մեզ յերկար՝ յիւր ծննդենէ հետէ եւ ի մօրէ, որ քրիստոնեայ էր՝ առէ. «Եւ թէպէտ դայեակ սնուցանէ զուղայն, իբր ի հասակ գայ՝ զիւր մայրն սիրէ. չենք օտար ի սի-րոյ քրիստոնէից — զոր ինչ ունիս ասելոյ՝ ասա». եւ բռնեալ էր զիմ ձեռքս։ Եւ մեք ասացաք զինչ Աստուած երետ ասել բան, «թէ որչափ ի վեր ես դու քան զայլ մարդիկ՝ մօտ ես յԱստուած։ Աստուծոյ աթոռն արդար դա-տաստանաւ է հաստատ։ Ամէն ազգի տուեալ է Աստուած տէրութիւն աշ-խարհի եւ փորձեալ։ Մինչ ի քեզ աշխարհաւեր են լեալ, եւ աղքատաց՝ ան-ողորմ՝ ծանր շալակ են դրեալ. նոքա հոգոց են հանեալ եւ լացեալ առաջի Աստուծոյ. — Աստուած առեալ է զիշխանութիւնն եւ յայլ ազգ տուեալ։ Թէ դուք աշխարհաշէն լինիք եւ աղքատաց ողորմած՝ ի ձեզանէ չառնու Աս-տուած զոր տուեալ է, թողու առ ձեզ, եւ զոր տալ կամի՝ զայն այլ տայ։ Ի քո դրան հանց մարդ կացո, որ յԱստուծոյ երկնչի եւ զձեզ սիրէ, որ զլալով եկած տառապեալն, որ աղերս չունի եւ կաշառք՝ ուրախ ի տանն յուղարկէ եւ քեզ յիշեցնէ։ Եւ զաշխարհս տուր հանց մարդոյ, որ յառաջ տեսանէ՝ կուրանայ ոչ՝ կաշառօք, եւ քեզ ասէ զիրաւն»։ — Եւ յայս կարգիս շատ խօսեցաք։

Հրամայեաց թէ, «ի սրտումս դրի զքո խօսեցեալքդ. — ո՞նց է որ զամէն զա՛յն ասացեր, որ իմ սիրտս կայր, որ ինձ դուր թուաց։ Աստուած խօսե-ցեա՞լ է ընդ քեզ, երեւեա՞լ է քեզ»։

Ասացաք թէ, «չէ՝ մենք մեղաւոր մարդ ենք. ապա զաստուածախօս մարդկանց զիրքն կարդացեալ ենք, եւ սիրտք թագաւորաց ի ձեռին Աստու-ծոյ են»։

— «Աստուած յայտնեա՞լ է քեզ առանց դրոց»։ —

Ապա ասացաք թէ — «առաջի Աստուծոյ խօսք մի եմ յասել, որ Աս-տուած լսէ եւ ապա դու, որ սուտ չկայ ի ներս»։

Հրամայեաց թէ — «ասա»։

Ասացի թէ — «զինչ քրիստոնեայ կայ եւ արքայունք ընդ ծով եւ ընդ ցամաք՝ ամենու սիրտն հետ քեզ լաւ են, եւ քեզ աղօթք են առնում»։

Հրամայեաց թէ — «հաւատալ եմ որ հանց է, ապա յԱստուծոյ ճանա-պարհն չեն արքայունքն՝ ինձ ինչ աղօթք առնեն. եւ թէ առնեն՝ Աստուած երբ լսէ, մէչում արքայունն զԱստուած յերկնից յերկիրս բերէ չբերէ՝ ասացէք, որ յԱստուծոյ ճանապարհն կենան եւ աղօթք առնեն։ Մեր եղբարքն հետ մեզ վասն այն են ի կռուի, որ մենք զքրիստոնեայ սիրենք եւ քրիստոնէու-թիւն կայ ի մեր տանս. նոքա տաճկասէր են եւ տաճկութիւն կայ ի նոցա տանն»... — Ապա ասէ ցմեզ. — «ոչխարենի է՞ր ես զգեցեալ եւ ոչ ոսկի»։

Եւ իմ ասացեալ թէ — «մեք մեծ մարդ եւ աստիճանի տէր չենք, լուկ աբեղայ միայն եմք»։

Եւ հրամայեաց թէ — «մեծացուցանեմ զքեզ ոսկի զգեստիւ, եւ շատ ոսկի տամ»։

*Եւ մեք ասեմք — «ոսկին եւ հողն մեզ մի են․ մեք այլ մեծ ուզեմք, որ վայել է քո մեծութեանդ — ողորմութիւն ի վերայ աշխարհի»:*

*Եւ հրամայեաց թէ — «մէջում քթէթ կարեմ քեզ՝ խիստ պէչ եւ խիստ փոքրիկ լուկ այնչափ, որ խունկ դնես եկեղեցոյն․ թէ չէ եկիր՝ ի՞նչ ասեն, թէ Էլղանն ո՞նց տեսաւ զքեզ: — Եւ զայդ՝ զոր ասացեր, առնեմ, եւ մարդիկք յղարկեմ, որ տեսանեն զաշխարհս»:*

*Իսկ երբ հրաման ուզեցաք գնալոյ՝ այլ կոչեաց զմեզ եւ խօսեցաւ, եւ ունէր ի ձեռին բալիշ մի եւ երկու հանդերձ էր կարել տուել: Յիշեցուցաք թէ — «Էլղան՝ այդ քո դրանդ հատանի եւ հանդերձդ մաշի, մեք անհատանելի եւ անմաշելի խնդրեցաք պարգեւք»:*

*Եւ հրամայեաց թէ — «առաջի օրն զքո խօսքդ լմնեցի․— առլեխ եմ գրել տուել՝ կարդալ տուր, եւ զինչ քո սրտիդ պիտի ասելի՝ զայն այլ գրել տուր: Եւ ի սախալթու եւ ի չահարատին եմ յանձնել զերկիրդ եւ զքեզ — զոր ինչ ասես՝ առնեն»:*

*Եւ մեք շնորհակալ եղաք եւ ելաք»:*

*Այս հատուածը կարեւոր է ոչ միայն իր բովանդակութեան, այլեւ ժամանակի խօսակցական աշխարհիկ լեզուի տեսակէտով: Այստեղ գտնում ենք արդէն միջին հայերէնի դրեթէ բոլոր ձեւերը, այլեւ այն, որ արդէն ծագած է եղել արեւելեան աշխարհաբարի «ում» վերջաւորութեամբ խոնարհման ձեւը, ինչպէս է, օրինակ, «աղօթք են առնում», որ է «աղօթք են անում»:*

4․ Մաղաքիա Աբեղայի «Պատմութիւն վասն ազգին նետողաց»:[1] *Այս հեղինակի կենսագրութեան մասին միայն այն գիտենք իր գրքից, որ նա եղել է Վանական վարդապետի աշակերտ: Յիշելով նրա մահը 1251 թ.՝ գրում է․ «Փոխեցաւ ի Քրիստոս աւագ եւ փառաւոր վարդապետն մեր Վանականն եւ սուգ մեծ եթող մեզ, եւ ոչ թէ միայն մեզ աշակերտելոցս նմա, այլ եւ ամենայն աշխարհիս»:*[2] *Բերուած վերջին թուականն է «հայոց Ջ եւ Ի»* (=720+551=1271), *երբ վախճանուել են «փառաւոր վարդապետքն հայոց Վարդան եւ Կիրակոս»:*[3] *Դրանից յետոյ շուտով աւարտում է նա իր աշխատութիւնը՝ պատմելով Հեթում թագաւորի (վախճ․ 1270 թ․) որդի Լեւոն թագաւորի առաջին տարիներում տեղի ունեցած մի խարդաւանական դէպքի մասին եւ աղօթելով նրա կեանքի ու յաղթող լինելու համար:*

*Գրուածքի վերջում կարդում ենք․ «Կատարեցաւ պատմութիւն Տաթարիս գործելոց ԽԴ (=44) ամաց, բայց համառօտ, եւ ոչ ամէնն»: Սակայն ըստ երեւոյթին վրիպակ կայ կամ այս, կամ ներքեւում բերուած 1214 թուի մէջ: Մաղաքիան իր աշխատութեան սկզբում գրում է թաթարների ծագման եւ Չանկզղանի մասին, ապա պատմում է նրանց յարձակումը Հայաստանի հիւսիս-արեւելեան կողմերում աղուանից եւ վրաց երկրների վրայ եւ*

---

*1 Մաղաքիա Աբեղայի Պատմութիւն վասն ազգին նետողաց, Ս. Պետերբուրգ, 1870. կայ նաեւ Երուսաղեմեան հրատարակութիւն. այստեղ այդ երկը թիւրիմացաբար վերագրուած է «Վարդան պատմիչին», այսինքն Վարդան Արեւելցուն: Հ. Ոսկեան, Յովհաննէս Վանական եւ իւր դպրոցը, Վիեննա, 1922, էջ 115 եւ հտ.:*

*2 Անդ, էջ 12, 21:*

*3 Անդ, էջ 52:*

յաղթութիւնը «ի թուականութեան հայոց ՈԿԳ» (=663+551=1214)։ Երեք տարի անց առնում, աւերում են Գանձակ քաղաքը, յետոյ եւ ուրիշները։ «Առին եւ զքարայրն մեծ վարդապետին բազում ընչիւք իւր, եւ տարան զինքըն զփառաւոր վարդապետն մեր Վանական՝ ծառայ՝ իւրովք աշակերտօքն»։ Հայ եւ վրացի իշխանները շուտով ենթարկւում են թաթարներին եւ բարեկամ մնում նրանց. նոյնպէս եւ Կիլիկիայի հայկական իշխանութիւնը։ Այնուհետեւ էլ Մաղաքիայի Պատմութեան նիւթը մեծ մասամբ նոյնն է, ինչ որ Կիրակոսինը եւ Վարդանինը թաթարների մասին, բայց մանրամասնութիւնների մէջ տարբերւում է նրանցից։ Բացի թաթարների վարած պատերազմական գործողութիւնների եւ նրանց կատարած աւերմունքների ու կոտորածների նկարագրից՝ այստեղ գտնում ենք նաեւ շատ բան ներքին կեանքի վերաբերեալ, ինչպէս են՝ հարկերը, ժողովրդին հասցրած նեղութիւններն ու կեղեքումներն այն ժամանակ, երբ հայերն արդէն ենթարկուած էին թաթարներին։ Եղել են նաեւ բարեմիտ իշխողներ, որոնցից մէկն է եւ Հուլաւուղանը եւ նրա որդին, որոնց կողմն է Մաղաքիայի համակրութիւնը։ «Եւ էր Աբաղանն բարի տեսլեամբ եւ գեղեցիկ հասակաւ ի մէջ Լ [=30] եղբարց իւրոց եւ յաւուրս ղանութեան նորա էր առատութիւն ամենայն իրաց ընդ ամենայն երկիր»։[1]

Գրական տեսակէտով Մաղաքիայի այս գործն աւելի բարձր է, քան Վարդանի «Տիեզերական պատմութիւնը»։ Պատմուածքի համար կենտրոն է ունեցել «Նետողաց ազգի» — թաթարների արարքները Հայաստանում եւ Հայաստանի սահմանակից երկրներում, միաժամանակ ուշադրութիւն է դարձրել նաեւ զուտ հայկական գործերին, եւ եթէ երբեմն աւելի երկար է կանգ առել այս մասի վրայ, բայց դարձեալ ընդհանրապէս թաթարների հետ կապակցութեամբ։ Նա յօրինել է առանց որեւէ մասերի բաժանելու, շարունակաբար, շատ պարզ ու հասարակ, միանգամայն եւ կենդանի ու հաճելի եղանակով, յաճախ իր ժամանակի խօսակցական լեզուով։ Շատ մանրամասըն եւ սրտառուչ կերպով պատմել է Մսրայ (Եգիպտոսի) Ֆնտուխտար սուլթանի յարձակումը Կիլիկիայի վրայ, Հեթում թագաւորի որդի Թորոսի սպանուելը, իսկ միւս որդու՝ Լեւոնի գերուելն ու գերութիւնից ազատուելը։[2] Այս դէպքը մեծ տպաւորութիւն է թողել ժամանակակիցների վրայ եւ արժանացել յայտնի ժողովրդական երգին՝ «Աւաղ ըզԼէոնն ասեմ, որ Տաճկա՛ց դուռն ընկել գերի»։

5. Մխիթար Այրիվանեցի։[3]— Սրա «Հայոց Պատմութիւնն» եւս մի ժամանակագրութիւն է, սովորական ձեւով համառօտ, սկզբից — Ադամից մինչեւ 1289 թ.։ Հեղինակն ապրել է 13-րդ դարում։ Այս, ինչպէս եւ միւս ժամանակագրութիւնները գրական արժէք չունին, բայց գնահատելի են իբրեւ պատմութեան աղբիւրներ։ Գրեթէ բոլորի մէջ եւս երեւում է նոյն կրօնական եւ հայրենասիրական ոգին։

6. Սմբատ Սպարապետ։— Այս հեղինակը Հայոց Հեթում Ա. արքայի

---

1 Անդ, էջ 37։

2 Մաղաքիա Աբեղայի Պատմ. վ. ա. Նետողաց, 1870, էջ 38—47։

3 Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն Հայոց, Մոսկուա, 1860։

եղբայրն է. ծնուած է 1208 թ., ինչպէս իր աշխատութեան մէջ[1] ինքը գրում է. «Ի թուին ՈԾԷ ծնաւ Սմբատ Գունդստաբլն թարգմանող Պատմութեանս»: Ռուբինեանների օրով Կիլիկիայում «գունդստաբլ» (connétable — ախոռապետ) պատուանունով էին կոչւում սպարապետները: Գրելով Կիլիկիայի Հայոց առաջին թագաւոր Լեւոն Բ.ի թագաւոր օծուելու մասին 1198 թ. եւ գովելով նրան՝ ասում է.[2] «Եւ ուր իմանայր թէ գոյ այր իմաստուն եւ գիտուն, եւ աջող ի գործ կամ ի զինուորութիւն, կամ ի խօսս եւ ի պատասխանիս, յղէր եւ կոչէր խոստմամբ, եւ յանդուցանէր պարգեւօք. յորոց մի ես եմ Սմբատ Սպարապետ թարգմանող տառիս եւ պատմութեանս»: Լեւոնի մահուան ժամանակ՝ 1219 թ. Սմբատը եղել է տասնումէկ տարեկան պատանեակ եւ, ինչպէս երեւում է, աչքի է ընկել իր ընդունակութեամբ եւ թագաւորից պարգեւ է ստացել: Ուրիշ տեղեր եւս ժամանակագրութեան ընթացքում յիշում է իրեն այսպէս՝ Կիլիկիայի վրայ Հոռոմքի, այսինքն Իկոնիայի սուլթանի յարձակումների ժամանակ 1226 եւ 1246 թուականներին:[3] Հեթում թագաւորն իր այս սպարապետ եղբօրը 1248 թ. դեսպան է ուղարկում թաթարների խանի մօտ. «Ի թուին ՈՂԷ գնացի ես Սմբատ Գունդստաբլս ի Թաթարըն. եւ ի թուին ՈՂԹ [=1250 թ.] դարձայ առ իմ եղբայրն Հեթում թագաւորն»:[4] Այս մասին պատմում է եւ Կիրակոս Գանձակեցին, ասելով թէ Սմբատ զօրավարը շատ մեծարուելով Ղանից՝ «դարձաւ երեւելի փառօք, եւ հաւաստարիմ հրովարտակօք տուեալ նմա գաւառս բազումս եւ բերդս յոլովս, զոր յառաջ լեալ էր Լեւոնի արքայի, եւ զկնի մահուանն առ ի նոցունց Ալադին Սուլտանն Հոռոմոց»:[5] Սմբատը վախճանւում է 1275 թ.: Եգիպտացիները զօրքի մեծ բազմութեամբ յարձակւում են Կիլիկիայի վրայ. հայ զօրքերը, Լեւոն Գ. թագաւորի եւ Սմբատ Սպարապետի զօրավարութեամբ, ջախջախում են թշնամիներին եւ կոտորում: Սմբատը, չնայելով իր տարիքին, անձամբ արշաւասոյր հետապնդում է թշնամիների փախչող զօրագլուխ Ամիրային. ձիու սաստիկ արագ վազելիս՝ քաջ Սպարապետի ոտքն առնում է մի ծառի եւ վնասւում է: Այլեւս չկարողանալով շարունակել թշնամու հալածումը՝ նա ետ է դառնում եւ մի քանի օրից յետոյ վախճանւում:[6]

Այն խառն ու խռովայոյզ ժամանակներում, երբ պէտք էր միշտ պատրաստ լինել զէնքով դիմադրելու ամէն կողմերից ներխուժող թշնամիներին, Սմբատը ոչ միայն կորովի զօրավար էր հանդիսանում, այլեւ խոհեմ քաղաքագէտ: Նա, ինչպէս տեսանք, կարողացաւ հեռատես ճանա-

1 Սմբատայ Սպարապետի եղբօր Հեթմոյ առաջնոյ արքայի Հայոց Պատմութիւն Յունաց ի Կոստանդնուպօլիս եւ Հայոց Մեծաց ըստ կարգի ժամանակաց. Մոսկուա, 1856, էջ 106. Ձեռագրի մէջ վերնագրի վերջին բառերը եղել են՝ «Եւ յայսմ ժամանակի ժամանակագրութիւն». հրատարակիչը՝ Ոսկանց Յովհաննիսեանց Երեւանցի՝ փոխել է՝ «ըստ կարգի ժամանակաց», տես «Յառաջաբան», էջ Ը:

2 Անդ, էջ 99:

3 Անդ, էջ 113 եւ 114:

4 Անդ, էջ 115:

5 Կիր. Գանձ. Պատմ. Հայոց, Թիփլիս, 1909, էջ 302:

6 Տես Սմբատայ Սպարապետի.. Պատմ. «Յառաջաբան», էջ Զ, ուր իբրեւ աղբիւր յիշուած է Մ. Չամչեանի Պատմ. Հայ., հատ. Գ., էջ 277—278. իսկ այստեղ իբրեւ աղբիւր յիշուած է «Յիշատակարան Ռամանոսի ժամանակակից վարդապետի...»:

պարհ անցնելով յաջողութեամբ լուծել արտաքին քաղաքականութեան խընդիրը եւ բարեկամութեան դաշինք կռել թաթարական տէրութեան հետ: Բայց միայն արտաքուստ ապահովութիւնը չէր նրա հոգացութեան առարկան. հարկաւոր էր հայկական երկիրը եւ ներքուստ բարեկարգ վիճակի մէջ դնել: Ներսէս Լամբրոնացին արդէն կատարել էր քաղաքական եւ զինուորական օրէնքների հաւաքումն եւ թարգմանութիւն, բայց այդ օրէնքները համապատասխան չեն եղել, բաւարարութիւն չեն տուել տեղական պահանջին Կիլիկիայում: Այստեղ հայ պետութեան մէջ արդէն ընդունուած էին Արեւմտեան Եւրոպայի Ֆէոդալական եւ ուրիշ կարգերը՝ վարչական, արքունի եւ այլն, եւ հայերը յենւում էին աւելի եւրոպացիների եւ աւելի մօտիկ Ֆրանկ իշխանութիւնների վրայ ընդդէմ հարեւան մահմեդական պետութիւնների, քան թէ յոյների վրայ: Ուստի Սմբատը Ֆրանսերէնից հայերէն թարգմանում է Անտիոքի Ֆրանկ իշխանութեան մէջ գործածուած օրինագիրքը՝ «Անսիզք Անտիոքայ» (Les assises d'Antioche), որի բնագիրը չի գտնուած: Թարգմանութեան առաջաբանի մէջ գրում է. «Եւ արդ վասն զի սովորութեամբ այն Անսիզսն կու պնայր ազգս մեր եւ դարպասս Հայոց, եւ սխալումն ինչ կու գայր մեզ վասն տգիտութեան եւ վտանգութիւնք ոգւոց, եւ պղերգանք ինչ վասն հարցանելոյ անդ զմեծամեծ դատաստանսն, եւ ես ուժգին տենչմամբ եւ բազում աշխատութեամբ գտի զսա եւ հալծեցայ ի փոխելն. եւ երբ փոխեցի ես՝ յուղարկեցի դարձեալ ի յԱնտաքոյ դարպասն, որ դէմ ընդդիմեցին եւ հաստատեցին իրենց ձեռնագրերովն եւ վկայութեամբքն, ու ստոյգ է եւ ըղորդ բան բանի»:[1] Բացի սրանից՝ Սմբատ Սպարապետը 1265 թ. կազմել է եւ մի համառօտ ազգային օրինագիրք՝ «Յաղագս դատաստանաց թագաւորաց», որի մէջ մտնում են օրէնքներ ու կանոններ աշխարհականների եւ եկեղեցականների համար: Նա օգտուել է Մխիթար Գօշի Դատաստանագրքից, բայց վերամշակելով սրա յօդուածները եւ յարմարեցնելով Կիլիկիայի պայմաններին ու Ֆէոդալական հասարակարգին ու սովորութիւններին:[2] Դա արտայայտութիւն է Կիլիկիայի հայ պետականութեան: «Գրեցի զսա, — ասում է նա, — վասն հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ, եւ վասն աշխարհի դատաւորաց եւ թագաւորաց. եւ զխիրտ բանիցն առեալ եղի համառօտաբար»:[3]

Մնում են Սմբատ Սպարապետից նաեւ քրոջն ու քեռայրին գրած նամակները եւ, որ գլխաւորն է, նրա «Պատմութիւնը», որ յիշուեց վերեւում: Այս մի ժամանակագրութիւն է, սկսած հայոց Ն (400+551=951) թուականից: Մինչեւ հայոց ՇՁԵ (=585+551=1136) թուականը բովանդակութիւնը նոյնն է, ինչ Մատթէոս Ուռհայեցու գործինը եւ մեծ մասամբ շատ համառօտ ու կրճատումներով քաղուածք է նրանից, երբեմն նոյնիսկ բառացի: Կան, հարկաւ, այնպիսի հաղորդումներ եւս, որոնք ուրիշ աղբիւրներից

1 Գ. Զարբհանալեան. Հայկ. թարգմանութիւնք նախնեաց, Վենետիկ, 1889, էջ 306 եւ հմն.:

2 Խ. Սամուէլեան, Հին հայ իրաւունքի պատմութիւնը, հատոր Ա, Երեւան, 1939, էջ 90—95:

3 Գ. Զարբհանալեան, Հայկ. հ. դպր. պատմ., Վենետիկ, 1897, էջ 774:

են ծագում: Սկսած ՇԽԱ (=341+551=1092) թուականից առանձին ուշադրութիւն է դարձրած Կիլիկիայի Ռուբինեան իշխանութեանը, մանաւանդ ՇՁԶ (=1137) թուականից յետոյ: Հայոց ՉԼԵ (735+551=1286) թուականից մինչեւ 1331 թուականը եւ յետոյ եղածները, բնականաբար, մի անծանօթ շարունակողի գործն են: Այս հատուածը, ինչպէս մասամբ նաեւ Սմբատի գործի իր ժամանակակից մասը, ընդհանրապէս շատ կարճ հաղորդումներ են եւ ունեն տարեցուցի նշանակուած յիշատակարանի բնոյթ: Չնայելով դրան՝ պատմաբաններն այդտեղ կը գտնեն թանկագին տեղեկութիւններ իրենց ճիշդ թուականներով:

Սմբատ Սպարապետի գործերը շատ կարեւոր են հայոց լեզուի զարգացման ուսումնասիրութեան տեսակէտով: Նա իր աշխատութիւնները յօրինել է այն լեզուով, որով խօսում էր ինքն ուրիշների հետ: Դա այլեւս ոչ գրաբարն է, ոչ գրաբարախառն կենդանի լեզուն, այլ Կիլիկիայի խօսակցական բարբառը:

7. Ստեփաննոս Օրբելեան:— Այս հեղինակի կենսագրութիւնն իմանում ենք հէնց իր գրքից:[1] Նա գրում է Սիսական տան, այսինքն Սիւնիքի պատմութիւնը, խօսում է Հայաստանի այս նահանգի իշխանների եւ եպիսկոպոսների մասին: Վերջում այնտեղ իշխել են Օրբելեանները, — ասում է նա, — եւ ինքն էլ եղել է այնտեղի եպիսկոպոսը, ուստի պատմում է ոչ միայն իր կենսագրութիւնը, այլեւ մի մեծ գլուխ առանձնապէս նուիրում է Օրբելեան տոհմին,[3] բացի այն, որ ուրիշ տեղեր էլ յիշատակում է նրանց եւ իր մասին:

Այս տոհմի ծագման զրոյցը բոլորովին նման է Մամիկոնեանների ծագման պատմութեանը: Նրանց նախնին, Ճենաստանի մի արքայազն, ըստ Ստեփաննոսի, իր ընտանիքով ու մարդկանցով փախչում է իր ազգայինների ձեռից, տեղաւորուելով Վրաստանում՝ մեծ պատուի է արժանանում: Նրանք բնակւում են Օրբեթ բերդում եւ դրա համար կոչւում են Օրբէլուք, այսինքն Օրբեթեցիք: Այդ արքայազնի սերնդի մարդիկը դառնում են Վրաստանի սպասալարներ եւ տէր շատ կալուածների: Բայց Գէորգի թագաւորը 1177 թ. կոտորել է տալիս նրանց. ազատւում են միայն երկու եղբայրներ: Նրանցից մէկը՝ Իւանէ՝ Թամար թագուհու օրով վերադառնում է Վրաստան եւ ստանում է Օրբեթ կալուածը. նրանից ծագում են վրացոց Օրբելները: Երկրորդ եղբայրը՝ Էլիկում՝ ծառայելով պարսիկների մօտ՝ կալուած է ստանում Երընջակ բերդը եւ Ճահուկ աւանը. նա ամուսնանում է մի ճահկեցի հայ ազնուականի դստեր հետ: Նրանից ծագում են հայ Օրբելեանները:

Թամար թագուհու օրով Զաքարէ եւ Իւանէ եղբայրները հայ Օրբելեանների նախնի Էլիկումի որդի Լիպարիտին կալուած են տալիս Հրաշկաբերդը Վայոց Ձորում, այլեւ կալուածներ Կայենում, Գեղարքունիքում, Կոտայքում, ապա եւ ամբողջ Սիւնիքն իր բերդերով: Այսպէս կազմւում է Սիւնիքի Օրբելեան մեծ իշխանութիւնը, որի կենտրոնն էր Արփա գիւղը:

---

1 Պատմութիւն նահանգին Սիսական, արարեալ Ստեփաննոսի Օրբելեան արքեպիսկոպոսի Սիւնեաց, Թիֆլիս, 1910. գլ. ՀԱ, էջ 477—497:

2 Անդ, գլ. ԿԶ, էջ 368—433:

Լիպարիտի որդի եւ յաջորդ «մեծ եւ արքայաշուք իշխան» Սմբատի օրով աւելի եւս զօրանում է Օրբէլեան իշխանութիւնը, որ ենթարկւում է թաթարների գերիշխանութեանը եւ ապահով մնում: Սմբատին յաջորդում է իր եղբայր Տարսայիճը, որ վախճանւում է 1290 թ.: Սրան էլ յաջորդում է իր որդին՝ Ելիկում: Այս իշխանները բարեկամական կապ պահելով թաթար բռնակալների հետ՝ կարողանում են նրանց բռնութիւններից զերծ պահել իրենց իշխանութեան ներքոյ գտնուած ընդարձակ երկիրը:

Տարսայիճի որդին էր Ստեփաննոսը, որին իր հօրեղբայր Սմբատն անզաւակ լինելով՝ որդեգրում եւ կրթել է տալիս՝ «ի հրահանգս ընթերցման եւ երաժշտութեան»: Նա շուտով դառնում է դպիր եւ սարկաւագ: Հայրը նրան քահանայ է ձեռնադրել տալիս, «եւ մանկական տիօք կարգեալ կղերիկոս», — ասում է նա իր համար. «վարժեցայ ի կրթարանի աստուածեղէն տառից... եւ տհաս խակութեամբ նստայ յաթոռ վարդապետական»: Քահանայ ձեռնադրուելուց հինգ տարի յետոյ, 1285 թ., հայրը եպիսկոպոսների ժողովի որոշմամբ ուղարկում է նրան «ի թագաւորութիւնն Հայոց ի Կիլիկիա» «առնուլ ձեռնադրութիւն մետրապօլտութեան ի վերայ աթոռոյս Սիւնեաց»: Այդպէս էլ լինում է. նստում է Տաթեւի մետրոպոլտական աթոռը: Նա, երկար մաքառելով ըմբոստ եպիսկոպոսների դէմ, մեծ նեղութեամբ միացնում է իր ձեռքի տակ Տաթեւի եւ Նորավանքի (Վայոց Ձորում) առաջնորդութիւնները: Նորոգում է Տաթեւի վանքը եւ իր բաժին հայրենիք կալուածները նուիրում է վանքերին, նիւթապէս եւ բարոյապէս հովանաւորելով հայ լուսաւորութեան կենտրոններին: Ինքն եւ իր եղբայրները համաձայն ու սիրով կառավարում են երկիրը, ինքը՝ հոգեւոր աթոռը, եղբայրները՝ աշխարհական իշխանութիւնը, «պահելով զաշխարհս զայս ի խաղաղութեան եւ զվանորայս ի շինութեան: Եւ զի յայսմ ժամանակի ամենայն աշխարհ աւերեալ եւ ապականեալ էր, եւ վանորայք խափանեալ ի պաշտամանէ, եւ ամենեքեան առհասարակ դիմեալ ի տէրութիւն սորա [Ելիկումի], առ զհանգիստ առնուլ վտանգէին... եւ էր տեսանել շնորհօքն Աստուծոյ զտունս զայս իբր զտապանն Նոյեան ի մէջ աշխարհակործան ալեացն»:[1] Այն «տունը» ձգւում էր «ի Բաղաց մինչեւ յԱյրարատ» եւ «ի դրանէն Բարկուշատայ մինչեւ ցսահմանն Բջնւոյ»:[2] Ստեփաննոսը մեծ անուն եւ դիրք է ձեռք բերում արեւելեան եպիսկոպոսների մէջ, որոնց եւ ղեկավար առաջնորդն է հանդիսանում ընդդէմ արեւմտեան եպիսկոպոսների եւ Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոսի նորաձեւութիւններին:[3] Նա վախճանւում է 1305 թ.: Կոստանեանց, «Ի հայկ. գրականութենէ ԺԳ.—ԺԴ. դարերում» [ռուսերէն], Մոսկուա, 1914, էջ 6, մահուան թուականը դնում է 1309 թ.:

Ստեփաննոս Օրբէլեանը մի կրօնաւոր եւ աւանդապահ անձ է, միաժամանակ եւ հայրենասէր, գործունեայ, հետաքրքիր, հմուտ ու լուրջ, զարգացմամբ եւ հասկացողութեամբ բարձր քան շատերը ժամանակակիցներից, հոգացող երկրի շինութեան եւ լուսաւորութեան: Լինելով ուսումնասէր՝ նա

1 Անդ, էջ 427—429, 431:
2 Անդ, էջ 447, 478:
3 Անդ, գլ. ԿԸ, ԿԹ, էջ 447—467:

ձեռք է բերել եւ իր համար ուրիշ տեղերում արտագրել է տուել մի շարք մատենագիրներ: Իր այս յատկութիւնների շնորհիւ նրա գրած Պատմութիւնը տարբերւում է մեր շատ պատմագիրների գրուածներից: Երկար ժամանակից ի վեր, ասում է նա,[1] — «եռայր յիս տարփումն բաղձանաց եւ խորհէի· ընձեռել գրով ըստ իմում կարի զպայծառութիւն նախարարութեանն եւ զմեծնահապետութիւն բարձր իշխանութեանս Սիւնեաց, եւ զնախագահութիւն վսեմական եւ աստուածամեծար աթոռոյ հայրապետութեանս այսմ··· զի ի նուաղեալ ուրուք եւ ի վերջին ժամանակս տեսաք ամենայնիւ բարձեալ եւ ջնջեալ զյիշատակ այսմ գեղեցիկ եւ մեծափառ աթոռոյ տէրութեանց· մարմնականն բնաւին սպառեալ եւ ի մոռացօնս անկեալ· եւ հոգեւորն ոչ ընդհատ քան զնա մերձ ի սպառումն»: Ուրիշների պատմութիւններ մենք տեսել ենք, — գրում է նա, — «Զայլոցն տեսաք՝ զՄամիկոնեանն եւ զՏարօնոյն զԲագրատունեացն, զՎասպուրականացն, որք յետոյ թագաւորեցին, զՎրացըն, զԱղուանիցն»,[2] իսկ Սիւնեաց իշխաններինը չկայ: «Յոլով երկօք արտնեալ, — շարունակում է նա, — ոչ գտաք յառաջնոցն զյիշատակ սոցա ընդ գրով արկեալ, եւ զկնի եկելոցս թողեալ արձան գովելի: Թէ ոչ էին գրեալ եւ կամ թէ ի բազում աւերմանց եւ հինահարութեանց կորուսեալ էր՝ ոչ գիտեմ»: Վերջում էլ նա կրկնելով գրում է· «Բազում խոյզ քննութեան ի մէջ առեալ՝ տեղեկացայ յաշխարհս հեռաւորս եւ մօտաւորս, ի վանորայս եւ յարկեղս կտակարանաց· այլ եւ ի գիտունս եւ ի տեղեակս հնագէտ պատմութեանց, եւ ոչ ինչ գտաք յիշատակ գրուցաբանութեանց ուրոյն այսմ աշխարհի եւ կամ տեղեկութիւն իրաց»: Դրա համար եւ ինքը հոգ է տանում գրելու Սիւնեաց աշխարհի իշխանների եւ եպիսկոպոսների գործերի մասին «զի ծանիցեն զպատիւ եւ զբարձ իշխանաց եւ հայրապետաց եւ իշխանաց եւ զամենայն կարգ սահմանի նոցա»: Այդ էր պահանջում Օրբէլեան մեծ իշխանութեան պատիւը· աշխարհին պէտք էր իմացնել եւ յիշատակ թողնել ոչ միայն Օրբէլեանների մասին, այլեւ թէ ինչպիսի՛ մեծ իշխանութեան երկրի տէր են եղել նրանք, եւ թէ ինքն Ստեփաննոսն ինչպիսի՛ մեծ աթոռի վրայ էր նստած: Նրա Պատմութիւնը, ուրեմն, արդիւնք է տոհմասիրութեան, որ ընդհանուր մի գիծ էր հին դարերում իշխողների համար:

Պէտք էր յօրինել առանձին տոհմային պատմութիւն Սիւնեաց· բայց ի՞նչ աղբիւրներից: Այստեղ արդէն Ստեփաննոս Օրբէլեանը ներկայանում է իբրեւ մի կիտակ անձ: Հին ժամանակի պատմութեան համար առանձին զգուշութիւն է ցուցաբերում նա· մի կողմ է թողնում աստուածաշնչեան նախնական պատմուածքները, որով սկսել են ուրիշները, նոյնիսկ Մովսէս Խորենացին· հարկ չկայ դրան· ամէնքն էլ, ամէն տոհմեր էլ, Ադամից են ծագում որդէցորդի: Նա չի ցանկանում, որ Սիւնիքի իշխանական տոհմը սկզբից մինչեւ վերջն անուանէ անուն ծննդաբանութեամբ առաջ տանի· դրա համար հարկ կը լինէր շատ բան յերիւրել· «Փափագելի է մեզ, — գրում է նա, — այժմ թողուլ զամենայն սնոտիապատում վէպս հնոցն, եւ բուռն հարուլ միայն զերջանկաւէտ բարերատութեանց եւ նախապահ նախակարգութեանց

1 Անդ, գլ. Ա, էջ 8—10:
2 Անդ. էջ 17 եւ հտ.:

վեհափառ տէրանցն Սիւնի եւ ցեղին Սիսակայ. քանզի երկք աշխատութեանց յոլովք են եւ չահ օգնութեան եւ ոչ մի ինչ. յորմէ ի բաց տարեալ զձգտումն մտացս՝ պիտանիքն միայն ի մէջ անցեալ արձանացին մեզ»:[1]

Նա օգտւում է դրսւոր աղբիւրներից, ամենից առաջ հին պատմագիր-ների յիշատակութիւններից Սիւնի տոհմի մասին. «Ապա հանդէս արարեալ ամենայն պատմագրաց Հայոց, եւ զոր գտաք՝ հաւաքեցաք ի նոցանէ ամե-նայն ճշգիւ, նաեւ սակաւ ինչ ի Պետրոսի՝ Սիւնեաց եպիսկոպոսի ճառիցն, որ վասն Բաբկայ՝ Սիւնեաց տեառն»: Ծանօթ հեղինակներից քաղած պատմութիւններն այժմ, ի հարկէ, առանձին արժէք չունեն, քանի որ ունենք բուն աղբիւրները, ինչպէս են՝ Մովսէս Խորենացի, Ագաթանգե-ղոս, Զենոբ եպիսկոպոս Տարօնացի, որ է Զենոբ Գլակ: Բայց կան, սակայն, անծանօթ, այսինքն մեզ չհասած աղբիւրներ եւս, ինչպէս վերոյիշեալ Պետ-րոս եպիսկոպոսը, որի մասին խօսուել է սոյն աշխատութեան առաջին հա-տորի մէջ: Բայց որ կարեւորն է, նա մեծ չափերով օգտուել է թղթերից, կաթողիկոսական շրջաբերականներից, հրովարտակներից, եկեղեցիների կա-լուածական թղթերից, արձանագրութիւններից, գրքերի յիշատակարաննե-րից, որոնք բոլորը պատմական վաւերագիր աղբիւրներ են, որով եւ Ստե-փաննոսի Պատմութիւնն առանձին արժէք է ստանում հին մասի մէջ եւս, որ հեղինակին ժամանակակից չէ: Եւ նա այդպէս վարւում է իբրեւ հասկա-ցող հեղինակ: «Եւ այլ ինչ ի հին նամակաց թագաւորաց Հայոց եւ իշխանաց Սիւնեաց, նաեւ ի կաթողիկոսաց Հայոց եւ յեպիսկոպոսաց Սիւնեաց, որ մը-նացեալ էին ի վաղ ժամանակաց յամուրս քարանձաւին եւ որ ի սուրբ ուխտս հայրապետանոցիս Տաթեւու, եւ յարձանագրութեանց եկեղեցեաց եւ ի յի-շատակարանաց գրոց: Աստ եւ անդ գտեալ զթիւ աւուրց եւ զթուական ժա-մանակաց իշխանաց եւ եպիսկոպոսաց, եւ իւրաքանչիւր գործոց եւ բանից, շինութեանց եւ աւերմանց, նաեւ կարգի եւ սահմանի եւ պատուոյ սուրբ ա-թոռոյս եւ առատատուր պարգեւաց ի սուրբ եկեղեցիս զոր ժողովեալ սեւա-գեղով՝ եդաք ի մի պարութայիկս սակաւ ինչ տեղեկութիւն, զոր հնար էր ի մէնջ եւ կար»:[2] Այս միեւնոյնը կրկնում է նա Պատմութիւնն աւարտելիս,[3] աւելացնելով նաեւ բանաւոր աղբիւրները. «Էր ինչ եւ որ յաւանդութեանց ստուգագէտ արանց որում վկայէին իրքն եւ տեղիքն, զհետ մտեալ ամենայն ճշգիւ ստուգութեան, ի բաց ձգեալ եւ զունայնախօսս գրաբանութիւնն, զի մի՛ տաղտկասցին լսողք»:

Արդարեւ նա իր Պատմութեան մէջ դնում է բաւական շատ ժողովրդա-կան զրոյցներ, վանքերի ծագման ու ճգնաւորների վրայ ասուած հրաշապա-տումներ եւ այլ աւանդութիւններ, եւ իբրեւ իր դարի որդի՝ հաւատում է հրաշալիքների, բայց գիտէ, որ դրանք պատմութիւն չեն, այլ բերում է մի-այն, որպէսզի Սիւնիքի մասին, որքան կարելի է, շատ ծանօթութիւններ տայ: Այդ բաների համար,—ասում է նա դիմելով ընթերցողին,—ոչ «աւելա-խոյզ զի ծանիցես. այլ պատշաճ եւ ի դէպ մերումս ձեռնարկութեան [վարկ-

1 Անդ. Գ., էջ 14:
2 Անդ, էջ 10:
3 Անդ, ՀԳ, էջ 505:

ցխս]. զի զՍիսական աշխարհի սկսայ ճառել զվէպս, վասն որոյ հարկ է ամենայնիւ զեղեալսն ի սմա գործս եւ հրաշս ցուցանել ձեզ»:[1] Աւանդութիւնների եւ աւանդական բանահիւսութեան գրառումն եւս կազմում է հարցաւէր Ստեփաննոսի Պատմութեան արժանիքների մի կողմը. դրանցով վառ գոյնով պատկերանում է մեզ տեղական ազգային կեանքը:

Եւ այս ամէն հաղորդումները, — լինեն գրաւոր յիշատակութիւններից հանած, թէ աւանդութիւնից գրի առած, — նա տալիս է մեզ պարզ ու թեթեւ ոճով, կամ հէնց յիշատակարանների լեզուով եւ անփոփոխ, եւ մարդ ախորժանքով կարդում է նրա Պատմութիւնը զանազան պատմական տեղեկութիւններից գրաւուելով:

Իսկ իբրեւ ուսեալ գրող՝ նա Սիսականի պատմութիւնն սկսելուց առաջ դնում է այդ նահանգի աշխարհագրութիւնը,[2] որ հազուադէպ մի գործ է մեր հին պատմագիրների մէջ. «Ցուցմունքն սահմանաց աշխարհիս Սիւնեաց, եւ թէ զինչ ունի պարարտութիւն ի պէտս մարդկան, եւ որքանութիւն գաւառաց եւ անառիկ բերդից»: Գլուխն էլ վերջացնում է այսպէս. «Եւ արդ՝ այս այսքան տեղեկութիւն քեզ բերոց եւ պարարտութեանց եւ սահմանաց եւ բերդից եւ գաւառաց Սիսական աշխարհիս»: Ցաւօք, աղճատուած է այդ գլուխը. պակասում են տեղեկութիւններն այդ նահանգի սահմանների եւ բերքի ու պարարտութեան մասին: Այդպիսով մենք չենք կարողանում մանրամասն ու ճիշդ որոշել Օրբելեան իշխանութեան ներքոյ գտնուած երկրի սահմաններն ու մեծութիւնը: Պատմութեան վերջում[3] էլ դրել է մի ընդարձակ ցուցակ տասներկու գաւառների իրենց բազմաթիւ գիւղերով եւ եկեղեցական հարկի քանակով: Ցաւօք, չեն բերուած աշխարհիկ իշխանութեանը տրուած հարկերը:

Աշխարհագրութիւնից յետոյ՝ Պատմութիւնն սկսում է Սիսակից, ըստ Մովսէս Խորենացու, եւ այնուհետեւ ժամանակագրական կարգով բերում է, ինչ որ գտել է Սիւնիքի իշխանների եւ եպիսկոպոսների մասին: Առանձնապէս պատմութեան նիւթ են դառնում այն նահանգի վանքերը, նրանց կալուածները, յատկապէս մեծ վանքեր Տաթեւն ու Նորավանքը, եկեղեցիների շինարարութիւնը, վանահայրերի եւ իշխանների ջանքերն իրենց վանքերը ծաղկած պահելու, նշանաւոր վարդապետներն ու վարդապետարանը: Գրում է նոյնպէս այդ կողմի եպիսկոպոսների յարաբերութիւնները Հայոց եւ Աղուանից կաթողիկոսների հետ, իշխաններինը՝ միւս հայ եւ օտար իշխանների եւ թագաւորների հետ: Վերջապէս 10-րդ դարի վերջերում, Սիւնիքի Սմբատ իշխանի օրով, Բաղաց գաւառում կազմւում է այդ կողմերի թագաւորութիւնը, որ երկար մաքառելով թուրքերի կրկնուող յարձակումների դէմ՝ ընկնում է 1170 թ.: Բաղաց վերջին ժառանգը, խաչենցի Հասանը, որին որդեգրել է Գրիգոր թագաւորը, քաշւում է Խաչէնի գաւառը, եւ վերջանում է Սիսական տոհմի թագաւորութիւնը Սիւնիքում: Նրա վերջին մնացորդներից մէկը, Համտուն անունով, կրօնաւորելով Նորավանքում՝

1 Անդ, ԻԱ, էջ 79:
2 Անդ, Գ, էջ 12—14:
3 Անդ, ՀԴ, էջ 509—523:

մեռնում է 1231 թ., իսկ մի ուրիշը, Մահեւան անունով, փախչում է Անի, անյայտ է մնում: «Ահա այսօրինակ բարձաւ տէրութիւն Սիւնեաց եւ Բաղաց, եւ եղեւ վախճան տոհմին Սիսակեայ եւ նախարարութեան Սիւնեաց»:

Շուտով այնուհետեւ այն տոհմի տեղը բռնում են Օրբելեանները, եւ Ստեփաննոսը սիրով ու մանրամասն հիւսում է սրանց պատմութիւնը: Վերջընթեր գլխի մէջ, որ է «Ցիշատակարան մատենիս նորին Ստեփաննոսի», նա յայտնում է. «Արդ յարմարեալ այս հանդէսք բանի շարագրեցաւ յաշխարհակալութեան մեծի եւ ինքնակալ արքայի Ղան Ղազանին...ի թուաբերութեան... 1299 ... ի վանս... ուխտիս Նորավանից»:

Այս Օրբելեան պատմագիրը Սիսական տոհմը իրեն համար խորթ եւ օտար չի համարում, մէկ՝ այն պատճառով, որ Օրբելեանները հանդիսացել են այն նշանաւոր նախարարական տոհմի անմիջական յաջորդներն եւ նրանց երկրի իշխողները, մէկ էլ՝ որ նա եղել է «ի մօրէ ծնեալ Սիսական եւ ի հօրէ՝ Օրբելեան, որ Տարսայիճ կոչի»:[1] Հէնց դրա համար էլ նա անտարբեր կերպով չի հիւսում Սիսական իշխանների պատմութիւնն եւս: Նա հրճուանքով գրում է նրանց թագաւորելու մասին.[2] «Այժմ լո՛ւր ինձ եւ պատմեցից քեզ, ո՛վ պատուական ընթերցող, զպանծալի բանից լուրս. զի սեռս Սիսակայ որ ի Հայկայ՝ երբեմն խառնեալ էր ընդ թագաւորական ցեղն Արշակունի եւ Պահլաւկաց եւ երբեմն ընդ Խազրաց թագաւորութեանն, եւ հուսկ յետոյ՝ ընդ Բագրատունիսն, բայց երբեք ոչ ըմբոստացան ի հայրենի տէրութեանցն: Իսկ յետ յոլով ժամանակաց մինչ դուռն բացին նախ՝ Արծրունիքն եւ թագ կապեցին ընդդէմ Սմբատայ՝ Հայոց Թագաւորի, թագ կապեաց եւ Ատր-Ներսէհ՝ Վրաց բդեաշխն. թագ կապեաց եւ Աղուանին Համամ... եւ ձորագետացիքն որ Կիւրիկեանքն կոչին, նաեւ Կարուցն եւ Վանանդայն որ Բասեանք կոչի»: Վերջիվերջոյ օտարների վրայ յենուելով թագաւորում է եւ Սիսական Սմբատը, որ «տուեալ էր զթոռն իւր.. զԿատրամիդէ կին Գագկայ թագաւորի՝ որդւոյ Աշոտոյ...»:«Եւ զի յայնմ ժամանակի Բագրատունիքն իշխէին միայն Շիրակայ եւ Այրարատու... եւ Սիւնիք կարեալ էր ի նոցանէ. վասն որոյ ոչ ինչ քրէական մեղս համարեցաւ [=իր թագաւորելը], զի թէ Բագրատունիքն (որք) դերութեամբ իմն ածեալ էին Հրաչէէ՝ այնմ արժանի գտան, ապա քանի՞ եւս առաւել սոցա անկ էր որ ի Հայկայ...»: Ահա թէ ինչպէս է արդարացնում Օրբելեանը Սիսական Սմբատի արարքն ընդդէմ Հայոց Բագրատունի թագաւորների, միաժամանակ շատ լաւ հասկանալով, որ ազգային տեսակէտով գովելի գործ չէր այդ, քանի որ դրա—

---

1 Անդ, ՀԱ, էջ 477 եւ հտ.:—Ուրիշ տեղ, ԿՁ, էջ 416, իր հօրը՝ Տարսայիճին գովելուց յետոյ՝ յայտնում է, թէ նա առել է «յԻսմայէլացւոցն՝ զդուստր տեառն Սիւնեաց՝ զԱրուզխաթունն, որ եղեւ քրիստոնեայ եւ երեւելի հաւատով... յորմէ ծնան որդիք երեք՝ Ելիկումն, Ստեփաննոս, որ կոչեցաւ յեպիսկոպոսութիւն...»:— Կ. Կոստանեանցն (Ստեփաննոս Օրպէլեան, Ողբ ի ս. Կաթուղիկէն, Թիֆլիս, 1885, էջ 6) այս կտորի հիման վրայ գրել է, թէ Տարսայիճը — «Սիւնեաց այլազգի իշխաններից մէկի դստերն՝ Արզու խաթունին իրեն կնութեան ուզելով՝ նախ քրիստոնեայ մկրտել տուեց նրան եւ ապա ամուսնացաւ նրա հետ»: Կասկածելի է այս բացատրութիւնը, քանի որ Ստեփաննոսն իրեն համար ասում է՝ «ի մօրէ ծնեալ Սիսական եւ ի հօրէ՝ Օրբէլեան»:

2 Անդ, ԾԵ, էջ 299 եւ հտ.:

ռով թուլանում էր հայկական իշխանութիւնը։ Լոկ հայ կամ «Հայոց թագաւոր» անունն անգամ այն դարերում հայկական ազգային միութեան մի ազդակ էր։ Ըստ Մատթէոս Ուռհայեցու,[1] նրա օրով, երբ չկար «Հայոց թագաւորութիւնը», Կապանի թագաւորներն էին յիշատակւում պատարագի ժամանակ, եւ այսպէս Միջագետքի Ուռհա քաղաքում, այն էլ այն թագաւորները, որոնք արդէն մի փոքր գաւառի կամ մի երկու բերդի վրայ էին իշխում։ Հայերին, որտեղ էլ լինէին, հարկաւոր էր, թէկուզ մխիթարութեան համար մի հայ թագաւոր, քանի որ սեփական թագաւոր չունենալը համարւում էր ազգային ամօթ ու նախատինք այլազգիների առաջ։

## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

### ՍՏԵՓԱՆՆՈՍ ՕՐԲԵԼԵԱՆ

1. «Ողբ ի դիմաց Կաթուղիկէին»։— Թաթարների տիրապետութեան օրով, 13-րդ դարի վերջին քառորդից սկսում է ծաղկել բանաստեղծութիւնը. իշխում է չափածոյ խօսքը։ Մօտ երեք դար շարունակ զարգանում է մի բանաստեղծութիւն, որ հին հայ գրականութեան պարծանքներից մէկն է։ Հետզհետէ երեւան են գալիս մի քանի քնարական տեսակներ հարուստ բովանդակութեամբ եւ գեղեցիկ ձեւով։ Նրանցից առաջինն է Ստեփաննոս Օրբէլեանի «Ողբը»։[2] Ստեփաննոսի ժամանակակիցներն են Խաչատուր Կեչառեցի, Ֆրիկ, Յովհաննէս Երզնկացի եւ Կոստանդին Երզնկացի. վերջինս թերեւս կրտսեր ժամանակակիցը։

Եթէ Ստեփաննոսի պատմութիւնը, ինչպէս տեսանք, արտացոլում է Օրբէլեան իշխանների եւ իրեն՝ Ստեփաննոսի տոհմային պահանջի, ապա նրա այն քնարական քերթուածը, որ նա յօրինել է 1300 թուականին,[3] իր մէջ անդրադարձրել է հեղինակի եւ նրա ժամանակի հայ հայրենասիրական ոգին ու խոհերը։ Այս տեսակէտով պէտք է մատչել նրա այս բանաստեղծութեանը, որի «բուն վերնագիրն» է. «Բան բարառնական ողբալ դիմառնաբար ի դիմաց Վաղարշապատու Ս. Կաթուղիկէին. Ողբ աւաղականք եւ ձայն աշխարհականք լեալ անհուն հեծեծանօք աւերման աշխարհիս Հայոց եւ բնաւին սպառելոյ հայրապետութեան եւ թագաւորութեան համազունդ իշխանութեան, շարեալ չափաբան բերմամբ հոմերական արհեստիւ ի Ստեփաննոսէ Սիւնեաց այցելուէ ի խնդրոյ շնորհազարդ վարդապետի Խաչատրոյ Կեչառեցի»։[4] Ով որ էլ եղել է այս «վերնագրի» գրողը,— քերթուածի հեղինա՞կը, թէ՞ հաւանօրէն ուրիշ ոքմին,— նա բնորոշել է դրա բովանդակութիւնը ոչ ամբողջ էական կողմով։ Դա լոկ ողբ չէ։ Քերթուածի վերջում

1 Մատթ. Ուռհ. Ժամանակագր., Վաղարշ., 1898, էջ 231։

2 Ստեփաննոս Օրբէլեանի «Ողբ ի ս. Կաթուղիկէն», բնագիրը առաջաբանով եւ ծանօթութիւններով հրատարակեց Կարապետ Կոստանեանց, Թիֆլիս, 1885։

3 Անդ, էջ 11։

4 Անդ, էջ 53 եւ հտ.։

*կայ մի «Ցիշատակ բանի ըստ անուան ոգւոյն»։ Ութ տնից յօրինուած մի «Ցիշատակարան» է սա (ամէն մի տունը ութ տողերից եւ տարբեր յանգերով), որի տների առաջին տողերը կազմում են «Ստեփանոս» (եւ ոչ «Ստեփաննոս») գլխակապը։ Տներից մէկի մէջ անուանելով յիշեալ Խաչատուրին «բաբունապետ հոգւոյ լցեալ, Անյաղթ հաւատ[ով] շնորհօք ծաղկեալ», «բանիբուն» եւ շատերից «գովաբանեալ», ասում է, թէ նա «յԱրարատեան տանէն եկեալ»՝ «փութով մեծաւ» հարկադրել է իրեն գրելու իր քերթուածը՝ «ի յայս հանդէս բանից մղեալ»։ Այս ցոյց է տալիս, որ Օրբէլեանի բանաստեղծութիւնն արդիւնք է ոչ լոկ անձնական խոկերի, այլ նրա պէս խորհել է նաեւ «Արարատեան տանը» ծանօթ նշանաւոր վարդապետը, Խաչատուր Կեչառեցին, անպայման եւ ուրիշներն արեւելեան վարդապետներից։ Ի՞նչ է եղել այդ խոհն ու խոկը, եւ ինչի՞ արտայայտութիւն է այդ։*

2. «Ողբի» պատմական հիմքը նկատմամբ արեւմտեան հայութեան եւ թեման։— *Օրբէլեանն իր Պատմութեան վերջին գլուխներից մէկի մէջ[1] մեծ զայրոյթով գրում է, որ Լեւոն թագաւորի մահից յետոյ՝ Կոստանդին կաթողիկոսի վրայ դնելով «բարբառս բազումս զրպարտ բանից»՝ զրկում են նրան կաթողիկոսութիւնից եւ բանտարկում են չորս տարի։ Այս լինում է 1289 թ.։ Նրա փոխանակ կաթողիկոս են դնում Ստեփաննոս անունով մէկին։ Այդ ժամանակներում Եգիպտոսի սուլթանը տիրում է Ֆրանկների իշխանութեան վերջին քաղաքներին եւ քրիստոնեաների մեծ կոտորածներ անում։ Պաղեստինն ամբողջ նորից ընկնում է մահմեդական լծի տակ։ Հերթը հասնում է Հայոց հայրապետական աթոռանիստ Հռոմկլային։ Մի ամիս պաշարելուց յետոյ՝ 1292 թ. առնում են եւ այս բերդը, կողոպտում, եւ կաթողիկոսին իր եպիսկոպոսներով եւ այլ մարդկանցով գերեվարում Եգիպտոս, ուր նա մի տարի բանտարկուած մնալով՝ մեռնում է բանտի մէջ։ Եւ այսպէս՝ մօտ 140 տարի յետոյ Հռոմկլան, Հայոց նշանաւոր կաթողիկոսների եւ գրողների նստավայրը, դադարում է Հայոց կաթողիկոսի աթոռավայր լինելուց։ Կաթողիկոս է ձեռնադրւում 1293 թ. Գրիգոր Անաւարզեցին, որ յօրինած ունի ներբողեաններ, մի դրուատ, թուղթ ու բազմաթիւ շարականներ։[2] Նա նստում է Կիլիկիայի Սիս քաղաքում։ Կիլիկիայի Հայոց թագաւորութիւնը մենակ է մնում եւ շրջապատուած մահմեդական իշխանութիւններով։ Մէջ է գալիս աւելի զօրեղ կերպով հին քաղաքականութիւնը՝ կրօնական զիջումներով օգնութեան թիկունք ակնկալել արդէն հեռու ընկած քրիստոնեաներից։ Գրիգոր կաթողիկոսը, որ «գիտէր եւ զկեզու եւ զդըպրութիւն լատին եւ յոյն ազգին», բռնում է Հռոմների հետ միաբանելու ընթացքը։ «Եւ սկսաւ,— ասում է Օրբէլեանը,— առ սակաւ սակաւ զամենայն աւանդութիւնս Հռոմոց եկեղեցւոյն սպրդեալ մուծանել ի մերս եկեղեցի. և ի մերոյս ի բաց քեցել մի մի»։ Առաջանում է դժգոհութիւն եւ խռովութիւն. «Իսկ մեք հանապազ աղեցաւ եւ լերդախոց լինելով ի վերայ այսր ամենայնի՝ հաչեալ մաչէաք ծիծական խորհրդովք ի տուէ եւ ի գիշերի»։ Եւ հետեւանքը լինում է այն, որ նա արեւելեան եպիսկոպոսների եւ իշխանների հա-*

1 Անդ, ԿԸ, ԿԹ, էջ 436—467։

2 Զարբհանալեան, Հայկ. հին դպր. պատմ., Վենետիկ, 1897, էջ 779։

*ւանութեամբ ու ստորագրութեամբ գրում է վերեւում յիշուած Թուղթը կաթողիկոսին:*

*Հեռատես եւ խոհուն վարդապետները շատ լաւ հասկանում էին, որ շրջապատող մահմեդական տէրութիւններից վտանգուած էր նաեւ Կիլիկիայի Հայոց Թագաւորութիւնը: Նրանք նկատում էին նաեւ արեւմտեան հայ հոգեւորականութեան գայթումը դէպի յունա-հռոմէական եկեղեցիները, ինչ որ գժտութիւն էր պատճառել արեւելեան եւ արեւմտեան հայ եկեղեցականների միջեւ, սկսած դեռ Ներսէս Լամբրոնացու եւ Գրիգոր Տուտէորդու ժամանակներից: Այս ամենի արդիւնքն է ահա պատմագիր եպիսկոպոսի քերթուածը, որ քարոզում է կաթողիկոսական աթոռ փոխադրել Արեւելք: Բայց կայ եւ աւելի կարեւոր կողմը:*

*Եթէ Շնորհալին, որ եկեղեցիների միութեան կողմնակիցն էր, համոզուած սպասում էր երկրորդ խաչակրաց արշաւանքի* (1147–1149 *թ.*), *թէ Ֆրանկները շուտով պիտի գան, եւ քրիստոնեաները տիրեն ամբողջ երկրին, եւ հալածուած ու ցրուած քրիստոնեաները գան ժողովուեն իրենց տեղերը եւ ուրախ կեանք վայելեն,—ապա այդ յոյսը չկայ այլեւս: Վերացել էր այդ երազը, որ թերեւս երբեք չէին էլ ունեցել արեւելեան հայերը իրենց բնիկ երկրում: Շնորհալին, թէպէտ ողբում էր Հայաստանի քաղաքական իշխանութեան կործանումը, բայց չէր մտածում Հայոց աշխարհում անկախ հայկական Թագաւորութիւն վերականգնելու մասին: Նա իր քերթուածի մէջ ներկայացուցիչ է հանդիսացել արեւմտեան հայութեան, 12-րդ դարի կէսերին: Իսկ Օրբէլեանը 13-րդ դարի վերջերում արտայայտիչ է բուն հայաստանցիների իղձերի ու տենչերի: Նա եւ Խաչատուր Կեչառեցին եւ նրանց նման մտածող արեւելցիները ամփոփուելով իրենց մէջ՝ աշխատում էին մի նոր ազգային գաղափարախօսութիւն զարգացնել եւ դրանով առաջ բերել ազգային հասարակական շարժում, այն, որ ցրուած հայերը ժողովուեն մայր հայրենիքի մէջ, եւ Հայաստանում, յատկապէս Վաղարշապատում լինի ազգի ոչ միայն եկեղեցական, այլեւ քաղաքական կենտրոնը: Ի՞նչ էր այս քաղաքական ձգտման հիմքը Մեծ Հայաստանում:*

3. Թաթարական իշխանութիւնը 13-րդ դարում:— *Զարմանալի չէ, որ թաթարների ծանրալուծ տիրապետութեան շրջանում, 13-րդ դարի վերջում ծագում է Մեծ Հայաստանի քաղաքական ազատութեան գաղափարը: Դեռ Կիրակոս Գանձակեցին յոյս եւ ակնկալութիւն ունէր, թէ հայերը թաթարական լծից կը փրկուեն: Այսպիսի քաղաքական լաւատեսութեան հիմքն այն էր, որ թէպէտ եւ հայերն, առանձնապէս գիւղացիք, տնտեսապէս շատ նեղն էին, բայց ազգայնապէս դեռ բոլորովին ընկճուած չէին այլադաւաններից. դեռ կային հայկական իշխանութիւններ, իրենց ներքին աւատական իրաւունքներով, թէպէտ թաթարների գերագոյն իշխանութեանը ենթակայ: Ինքը Ստեփաննոս Օրբէլեանը Սիւնեաց մեծ իշխանութեան պայազատներից մէկն էր, Խաչատուր Կեչառեցին կամ Կեչառուեցին էլ, ըստ երեւոյթին, էր յայտնի Պռոշեան տոհմից,*[1] *որ նշանաւոր Պռոշ իշխանից առաջ կոչւում*

---

1 *Յակովբոս վ. Տաշեան, Ուսումնասիրութիւնք Ստոյն Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի, Վիեննա, 1892, էջ 124 եւ հտն.:*

էր Հաղբակեան (Խաղբակեան) կամ Վարդանաց (այլեւ Հայկազուն): Պահլաւունիների սեփականութիւնն է եղել Կեչառուք կամ Կեչառոս (այլեւ Կեչառիս) (այժմեան Ծաղկաձոր կամ Դարաչիչակ) գիւղն եւ այնտեղի հռչակաւոր վանքը: Գրիգոր Մագիստրոսի շինածն է այնտեղի մեծ հոյակապ եկեղեցին: Իսկ 13-րդ դարի սկիզբներին այդ Կեչառուք գիւղն ու մենաստանը սեփական ստացուածքն էր Պռոշեան տոհմի, եւ նշանաւոր Պռոշ իշխանի հայրը, Խաղբակի որդի Վասակը, 13-րդ դարի առաջին քառորդին շինել է տուել այնտեղի փոքր դեղեցիկ եկեղեցին ի յիշատակ նաեւ իր պատրոնների, Իւանէ եւ Զաքարէ եղբայրների:[1] Թաթարական արշաւանքի երկրորդ տասնամեակի սկզբում հէնց նորոգում են այդ վանքը:[2] Կային եւ ուրիշ իշխանական տոհմեր: Այսպէս Զաքարեանները, ենթարկուելով թաթարական իշխանութեանը, դեռ երկար պահում էին իրենց դիրքը: Նրանք թաթարների օրով եւս առժամանակ ժառանգական իրաւունքով չէին կորցրել իրենց դիրքը նաեւ Անիում: Բայց այս քաղաքի կառավարութիւնը հետագայում մոնղոլ խաների կողմից յանձնուած էր ուրիշ, սովորաբար հայ իշխանների:

Աւելի կարեւոր է հետեւեալ պարագան: Երբ թաթարները տիրում են ամբողջ Հայաստանին, նրանց արշաւանքի աւերիչ հոսանքը, որ ինչպէս մրրիկ տակն ու վրայ էր անում երկիրը, շուտով նստում է: Նրանց կառավարիչները՝ սահմանուած մեծ հարկերը ստանալու համար՝ աշխատում էին երկիրը խաղաղ պահել, հպատակ աշխատաւոր ժողովրդին ապահով եւ զերծ անել կողոպուտից եւ աւերմունքից: Նրանք ձգտում էին, որքան կարելի է շէնացնելու եւ բազմամարդ դարձնելու աշխարհը. վերաշինում էին իրենց իսկ ձեռով քանդուած աւանները, քաղաքները, ինչպէս Գանձակ, Կարին: Բացի այդ՝ երկրի զանազան մասերի յարմարաւոր հաղորդակցութեան համար՝ շինել էին տալիս ճանապարհներ, հալածում էին աւազակներին: Յատուկ ուշադրութիւն էին դարձնում առեւտրական մեծ ճանապարհների ապահովութեան եւ կարաւանների ազատութեանը: Հայաստանի վրայով դէպի Տրապիզոն էր անցնում հին տարանցիկ ուղին, որ գործել էր Բագրատունիների եւ Զաքարեանների օրով եւ կապում էր Արեւելքն Արեւմուտքի հետ: 13-րդ դարի վերջերում թաթար ղաների ձեռներէցութեամբ իբրեւ վաճառաշահ մեծ կենտրոններ բարձրանում են Ատրպատականի քաղաքները՝ Սուլթանիա եւ Թաւրիզ. սրանցից էլ Հայաստանի վրայով էին առեւտրական ճանապարհները դիմում դէպի հիւսիս՝ Սեւ ծովի ափերն»[3] ու Խրիմ (Կաֆա, արդի Թէոդոսիա քաղաքը) եւ դէպի Արեւմուտք՝ Փոքր Հայաստանի — Իկոնիայի սուլթանութեան — եւ Կիլիկիայի հայ թագաւորութեան երկրով, որ բարեկամ եւ դաշնակից էր թաթարներին: Առեւտրական կապիտալի շնորհիւ զարգանում են նաեւ մեր երկրի քաղաքական կեանքն ու արդիւ-

---

1 Ղեւոնդ վ. Մ. Ալիշան, Այրարատ բնաշխարհ Հայաստանեայց, Վենետիկ, 1890, էջ 259—269:

2 Կ. Կոստանեանց, Ի հայկական գրականութենէ ԺԳ.—ԺԴ. դարերու, արտատպում ի հաւաքածոյէ ձօնեալ Ա. Ն. Վեսելովսկիի, Մոսկուա, 1914 (ռուսերէն), էջ 3:

3 Յ. Ա. Մանանդեան, Վասն վաճառականութեան եւ քաղաքաց Հայաստանի, Երեւան, 1930 (ռուսերէն), էջ 192, եւ հմն. «Ծաղկումն միջազգային վաճառականութեան մոնղոլական շրջանին եւ մասնակցութեանն ի նմա քաղաքաց հայկական լեռնաստանին» (ռուսերէն):

նագործութիւնը: Կարին, Երզնկա եւ այլ քաղաքներն առանձնապէս կարեւոր առեւտրական կենտրոններ են դառնում:

Առեւտրի, ինչպէս եւ երկրի կառավարութեան մէջ, բնականաբար, մեծ դեր էին խաղում եւ հայերը թէ՛ հին իշխանական տոհմերից եւ թէ՛ նորելուկ ընտանիքներից: Առաջանում են եւ նոր մեծ կապիտալիստներ, որոնք իրենց հարստութիւնը ձեռք էին բերում թէ՛ հին յայտնի միջոցներով եւ թէ՛ այնով, որ վերակացու եւ հսկող էին դառնում տէրութեան գանձարանը մըտնող հարկերի ու տուրքերի: Այսպիսի մեծ կապիտալիստներից պէտք է յիշատակել Պարոն Սամադինին, որի մասին տեղեկութիւններ են տալիս արձանագրութիւնները, սկսած 1263 թուականից մինչ 1291 թ., իսկ 1295 թուին արձանագրութիւններից մէկի մէջ յիշւում է նրա թոռ Բեսսութան:[1] «Սամադինը եղել է մէկն Անիի այն երեք պատրոններից, որոնք «իրիցունս բաժինը» վերացրել են տաղմաճիների[2] միջոցով»: Այդ իշխանը, ուրեմն, եղել է եւ վարչական անձ. ըստ արձանագրութիւնների, նա կարգադրութիւններ է արել հողային սեփականութիւնների ու հարկերի, կալուածների առ ու ծախքի եւ փոխանակութեան մասին: Ինքը գնել եւ ուրիշներին տուել է կալուածներ, ի միջի այլոց 1264 թուականին, — ինչպէս Երեւանի Կաթողիկէ եկեղեցու արձանագրութիւնից իմացուել է, — նա գնել է իր հողով ու ջրով եւ Երեւան քաղաքը, որ 13—14–րդ դարերում յայտնի է եղել ոչ միայն իր այգիներով, այլեւ իր խանութներով իբրեւ վաճառաշահ մի վայր:

Շնորհիւ վարչութեան խաղաղասէր քաղաքականութեան եւ համեմատական բարեկարգութեան, չնայելով չափազանց ծանր հարկերին, Հայոց Երկրի տնտեսական կեանքը սկսում էր փոքր ինչ աշխուժանալ: Երկրի ժողովուրդը ամենամեծ մասով հայ էր. ընկած դրութիւնից բարձրանում էին քաղաքները: Աւեր էր Վաղարշապատը, բայց դեռ կանգուն հայաբնակ կենտրոններ էին Դուին, Անի, Կարս, Կարին եւ այլն. հոծ հայ բնակչութիւն են ունեցել Մեծ Հայաստանի մի քանի նահանգները, ինչպէս եւ Կիլիկիայի հայկական թագաւորութիւնը եւ ուրիշ կողմեր:

Հայաստանի բախտը սկսած Հուլաղու ղանից (1256—1265 թ.) կապուած է եղել պարսկական մոնղոլների իշխանութեան հետ. «Իլղանները գովելի եռանդով ջանում էին նմանել Պարսկաստանի հին իշխողներին, որոնք հովանաւորում էին գիտութիւնն ու գրականութիւնը»:[3] Սրանից հայերին, սակայն, այն մասնիկն էր միայն հասնում, որ նրանք ընդհանրապէս համբերատար էին դէպի այլազգիներն ու այլակրօնները: Այդ համբերութեան

---

1 ՀԽՍՀ Պատմ., եւ Գրակ. Ինստիտուտի Տեղեկագիր, Ա. գիրք, Երեւան, 1938, էջ 165 եւ հտն. Կ. Ղաֆադարեան, «Երեւանի Կաթուղիկէի եւ նորայայտ յուշարձանի վիմական արձանագրութիւնները»: Այս յօդուածից են առնւում եւ մնացած տեղեկութիւնները Սամադինի վերաբերեալ:

2 «Տաղմա», «թամղա» ասւում էր քաղաքներից առնուող առեւտրի եւ արդիւնագործութեան հարկը. իսկ այդ հարկը հաւաքողները կոչւում էին «տաղմաճի» կամ «թամղաչի»: «Թամղա» բառի տեղ գործածել են նաեւ «բաջ», «բաժ»: Յ. Օրբէլի, Անւոյ աւերակները, էջ 61. Ծան. թարգմանչի:

3 Ստենլի Լէն Պուհլ, Իսլամական գերդաստանները. թարգմ. Վ. Բարտոլդի, Ս. Պետերբուրգ, 1899 (ռուսերէն), էջ 181:

եւ երկրի խաղաղութեան հետ՝ բնականաբար լինում է նաեւ կուլտուրական առաջադիմութիւն. մանաւանդ որ թաթարները մինչեւ մահմեդականութիւն ընդունելը շատ չէին խառնւում Հայաստանի ներքին գործերին. չկար ընդհանրապէս կրօնական հալածանք, հարկից ազատ էին մնում եւ նոյնիսկ հարստանում էին հոգեւորականները, եկեղեցիներն ու վանքերը, որոնք եւ ազգային լուսաւորութեան ու կուլտուրայի կրողներն էին: Անգամ թաթարական առաջին աւերիչ արշաւանքների ժամանակ եւ քիչ յետոյ արդէն եռանդուն կերպով սկսում էին նորոգել աւերուած վանքերը՝ Կեչառուք եւ ուրիշները, ինչպէս Վանական վարդապետն էր անում. կառուցում էին եւ նորերը, վարդապետները հաւաքում էին աշակերտներ, կազմում էին գրադարաններ: Հիմնում էին կամուրջներ, ջրմուղներ եւ նմանները: Մի քանի իշխանական տներ, կարողանալով թաթարների հետ բարեկամական յարաբերութիւն պահել, հովանաւորում էին վանքերին ու գիտնական վարդապետներին: Եւ այսպիսով Հայաստանում կանգ չի առնում լուսաւորութեան գործը, առաջ են գալիս գրողներ ո՛չ միայն հին սերնդից, այլեւ թաթարների օրով ծնուած նոր սերնդից: Նրանք պահպանում եւ զարգացնում են հայ կուլտուրական ժառանգութիւնը: Առանձնապէս յայտնի են դառնում հին Տաթեւի վանքը, եւ ապա Նորավանքն ու Գայլեձորի վանքը Վայոց Ձոր գաւառում:

Այս վերջինը կոչւում էր եւ «Աղբերաց վանք». դրա շինել տուողն ու հովանաւորն էր Խաղբակեան Պռոշ իշխանի որդին՝ Էաչի, սրա պապը՝ Վասակ, ինչպէս տեսանք վերեւում, շէն էր պահում Կեչառուքի վանքը, որ ըստ 1248 թուականի մի վիմական արձանագրութեան, նորոգւում են թաթարների աւերածութիւնների օրերում: Գայլեձորի վանքը հռչակւում է իր դպրոցով իբրեւ «երկրորդ Աթէնք»: Այնտեղ ուսուցիչ էր Ներսէս Մշեցի (մեռ. 1284 կամ 1290 թ.) վարդապետը, որ աշակերտել էր Վարդան Արեւելցուն, գիտէր եւ յունարէն եւ յունական գրականութիւնը: Նա սկզբում գործել էր Տարօնի Առաքելոց վանքում, յետոյ հաստատուել Գայլեձորի վանքում: Նրա աշակերտներից մէկն եւ նրա յաջորդող էր Եսայի Նչեցին (մեռ. 1338 թ.), Սասունի Նիչ գիւղից. շատ հեղինակաւոր մի վարդապետ, ժամանակի համբաւաւոր գիտնականներից մէկը, որին անուանում են «Եռամեծ փիլիսոփայ», «Անյաղթ հռետոր»: Նրանից մնում են եւ գրական աշխատութիւններ — Ս. Գրքի մեկնութիւններ, թղթեր, «Վիճաբանութիւնք», «Մեկնութիւն քերականի»: Նա իր երկարամեայ գործունէութեան ընթացքում Գլաձորի վանքում պատրաստել է բազմաթիւ աշակերտներ, թուով մինչեւ 363, ինչպէս հաշւում են: Այդ վանքում, ինչպէս նաեւ միւսների մէջ, բացի Ս. Գրքի ու կրօնական գիտութիւնների հմտութիւնից, ուսուցանում էին նաեւ քերականութիւն եւ փիլիսոփայութիւն, Արիստոտելի, Պորփիրի, Դիոնիս Թրակացու եւ ուրիշների մեկնութիւններով: Նրանք ժողովում էին եւ ձեռագիրներ, զբաղւում էին ձեռագիրների արտագրութեամբ՝ գրքեր բազմապատկելու համար. երբեմն եւ ծաղկի գրերով ու մանրանկարներով զարդարում էին իրենց արտագրած ձեռագիրները: Եսայի Նչեցու աշակերտներից իբրեւ ծաղկարար եւ մանրանկարիչ, միաժամանակ եւ իբրեւ գիտնական վարդապետ, յայտնի է Մխիթար Սասունցի,

(1291–1337թ.):[1] Սա աշակերտել էր նախ Ներսէս Մշեցուն, յետոյ Եսայի Նչեցուն. ապա ուսուցիչ է եղել Մեծոփայ վանքում եւ պատրաստել բազմաթիւ աշակերտներ: Պարապել է եւ գրականութեամբ՝ յօրինելով ճառեր, մեկնութիւններ եւ այլ գրուածքներ:

Արդարեւ քաղաքական կացութիւնը 13-րդ դարի վերջին քառորդին շատ յարափոփոխ էր. Թաթար իշխանները յաճախ զէնքի ուժով միմեանց դէմ էին ելնում. նրանցից շատերը յենւում էին մահմեդականների վրայ եւ հակուած էին մահմեդականութեան կողմը եւ նոյնիսկ երբեմն հալածանքներ էին հանում քրիստոնեաների դէմ. բայց կային նաեւ ղաներ, որոնք բարեմիտ էին դէպի քրիստոնեաները, զի սրանց մէջ էին տեսնում իրենց թիկունքը: Այսպիսիներից էին Հուլաւու ղանը, որի համար Ստ. Օրբէլեանը (էջ 419) գրում է. «Մեծ եւ բարեպաշտ արքայն աշխարհակալ, յոյսն եւ ակնկալութիւնն քրիստոնէից». Նրա որդին՝ Ապաղա, «այր հեզ եւ բարի եւ խաղաղարար. եւ սա սիրող քրիստոնէից»:Ապաղայի մահից յետոյ (1282թ.), ինչպէս գրում է Ստեփաննոս Օրբէլեանը,[2] «Նստի Թագաւորն՝ եղբօրորդի նորին՝ ղան ամենայն աշխարհի. որ եւ Ահմադ անուանեաց զինքն. եւ խորհեցաւ քակել զօրէնս քրիստոնէութեան եւ առնել մըսլման զամենայն ազգ»: Նա իր գահը հաստատուն դարձնելու համար՝ 1286 թ. «գնաց անհուն զօրօք ի Խորասան ի վերայ Արղունին՝ որդւոյն Ապաղայ ղանին, զի ապանցէ զժառանգ թագաւորութեանն. եւ կալեալ զնա դարձաւ այարէն: Իսկ Աստուածն քրիստոնէից յայնժամ գիշերի դարձոյց զսիրտ մեծամեծացն առ Արղունն, զոր հանեալ ի բանտէ կապանացն՝ թագաւորեցուցին եւ սուր ի վերայ եդեալ կոտորեցին զամենայն թշնամիս նորա: Հասեալ զկնի սատակեցին զԱհմադն եւ զհամախոհս իւր՝ զՀասան Մանլի չեխն, զՍահիպ դիւանն, զԱլինախն եւ զայլս բազումս:

Եւ էր ընդ նոսա թագաւորն Դեմետրէ, զոր սիրեաց Արղունն, եւ ետ նմա զամենայն աշխարհս Հայոց՝ զտունն Աւագեան [Աւագն Իւանէի որդին էր] եւ զտունն Շահանշահեան [=Զաքարէի] և զԳագեցին և զորդիսն Սադուն Աթաբեկին: Եւ ինքն էր յոյժ սիրող քրիստոնէից եւ եկեղեցեաց: Էր ընդ նոսա եւ Տարսայիճն [Ստեփաննոսի հայրը], զոր յոյժ մեծարեաց եւ սիրեաց Արղունն: Ապա դարձաւ Դեմետրէ մեծաւ խնդութեամբ եւ ամենայն ազատօք, եւ մեծամեծք Վրաց եւ Հայոց ընդ նմա :Եւ եկեալ ի Տարսուր՝ գնաց նմա ընդ առաջ Տարսայիճն մեծամեծ պատուով, եւ արքունական ընծայիւք մեծարեաց զթագաւորն: Եւ նա առեալ տարաւ ընդ իւր զնա յերկիրն Աւագեան՝ յԱյրարատ. եւ բազում թախանձանօք բռնադբօսեաց զնա ,եւ եդ Աթաբէկ ի վերայ ամենայն տէրութեան իւրոյ մինչեւ ի Տփխիս եւ յԱնի եւ ի Կարս... Եւ յայնմ հետէ ունէր Տարսայիճն զաթաբէկութիւն աշխարհիս Հայոց եւ բազում դիւրութիւն եւ ողորմութիւն առնէր նեղեալ ազգիս Հայոց»: Նա Տփխիս գնալով՝ այնտեղի արքունի դիւանի հարկատուութեան դաւթարից հանում է 150-ից աւելի հայկական վանքեր եւ ազատում է հարկից:

---

1 Կ. Կոստանեանց, Ի հայկական գրականութենէ ԺԳ.—ԺԴ. դարերու, արտատպում ի հաւաքածոյէ ձօնեալ Ա. Ն. Վեսելովսկիի. Մոսկուա, 1914 (ռուսերէն), էջ 6—8:

2 Ստ. Օրբ. Պատմ. նահանգին Սիսական, էջ 425 եւ հտն.:

Թւում է, թէ արդէն առաջացել էր հայկական մարզերի քաղաքական միութիւնը մէկ հայ իշխանի ձեռի տակ, եւ վերականգնւում էր Զաքարեան տիրապետութեան շրջանը։ Բայց ցաւօք, երկար չի տեւում այն. Դեմետրէ թագաւորը սպանւում է 1289 թ., եւ յաջորդ տարին վախճանւում է Տարսայիճը։ Վերանում է Հայաստանի քաղաքական միութիւնը մի հայ իշխանի կառավարութեամբ, եւ հայ իշխանները մնում են իրարուց անջատ։ Բայց դրանով չի մեռնում Հայաստանի քաղաքական միութեան գաղափարը, դուցէ եւ աւելի եւս ծաւալւում է այն, անշուշտ ոչ ժողովրդի բոլոր խաւերի մէջ, այլ նշանաւոր իշխանների ու վարդապետների։

Այլ դրութիւն է ստեղծւում, երբ Թաթարների մեծամասնութիւնը Արղունի որդի Ղազան ղանի (1295—1304) օրով եւ նրա հրամանով ընդունում են մահմեդականութիւն եւ հետզհետէ սկսում են, իբրեւ մոլեռանդ մահմեդականներ, աւելի ու աւելի նեղութիւն պատճառել հայերին, եւ հայերի ընդհանուր դրութիւնն աւելի ու աւելի վատթարանում է 14-րդ դարի կէսերին եւ յետոյ։ Հայերն այն ժամանակ արդէն յուսախաբ են լինում իրենց քաղաքական իղձերի մէջ, բայց 13-րդ դարի վերջերում, եւ նոյնիսկ Ղազան ղանի օրով, որ բարեհաճ էր դէպի հայերը, դեռ կենդանի է եղել Հայաստանի քաղաքական անկախութեան գաղափարը, որ եւ անդրադարձուել է մեր բանաստեղծութեան մէջ։ Տեսնենք այժմ այդ։

**4. Օրբելեանի «Ողբի» նիւթն ու յօրինուածքը։**—Այս քերթուածի հիմնական գաղափարի համեմատ էլ աջողութեամբ ընտրուած եւ յարմարուած է նրա նիւթը (սիւժետը) եւ ընդհանուր յօրինուածքը։ Ինչպէս միտումնաւոր վիպական բանաստեղծութեան մէջ անուղղակի տրւում է որեւէ բարոյական ուսում, նոյնպէս եւ այս քերթուածի հեղինակն իր հիմնական գաղափարը քարոզում է եւ իր զգացումներն արտայայտում է իբրեւ «Արքայուհի» անձնաւորուած կաթուղիկէի բերանով։ Սա քերթուածի կենտրոնն է։

Ձայն բարձրագուժ եւ ահագին
Նման օդոցդ որոտացին.
Կանչիւն ահեղ եւ սաստկագին
Գայ ի դաշտէդ Արարատին։

Այսպէս է սկսել Օրբելեանն իր «Ողբը»։ Ձայնը լսւում է ամէն տեղ եւ հրաւիրում է՝

Երթա՛լ ի գուժ աղաղակին։

Լեռներն այդ ձայնի վրայ զարթնում են մահաբեր քնից, խուռն կարաւան կապած իրար ետեւից դիմում են դէպի «Արամա[դ]նեան տունը», լցնում Արարատեան դաշտը, հասնում Հայոց Նոր Քաղաքը—Վաղարշապատ։ Եւ ի՞նչ են տեսնում.

Տեսին ի նմա զարքայուհին...
Զմայրն լուսոյ Հայկայ զարմին,
Մերկ, խայտառակ ի բաթրոնին,
Զանձամբ արկեալ զքուրձ խաւարին,

Հերքն ճողեալ որպէս կնտին,
Ստինքն ցամաք դէրդ ըսկընդկին.[1]
Ձկուրծքն բախէր քարամբ ուժգին,
Առուք արեանց իջանէին.
Մոխիր կուտէր նման բլրին,
Ցանէր ձեռամբըն ի գագաթին:
Երամք կանանց ճչող ջայլից
Շուրջանակի գնա պարէին.
Դասք երգողաց կանգնեալ կային,
Զդամբանական փողս ածէին.
Աւաղական ողբովք լային
Զգալարափողսըն հնչէին.
Կէսքն շիւան մեծ քարշէին,
Կէսքն զվարսիցըն փետէին:

Եկողները հարցնում են ողբացող Արքայուհուն.

Այս ո՞վ, այս ո՞վ ի բազմոցին
Նման մեծի արքայուհւոյն.
Այս ի՞նչ, այս ի՞նչ սուգ անհնարին...

Նա, մեծ Թագուհին, սրտի խորքից հոգոց հանելով պատասխանում է.

Այս ե՛ս, այս ե՛ս էջք Միածնին...
Իսկ այս՝ որ չուրջ զինեւ պարեն՝
Են իմ դստերքն որ նախ էլին...
Եկեղեցիք Հայաստանին.
Ժողովեցաք ի միասին
Լնուլ ողբովք զաշխարհ ընաւին:

Ուրեմն Արքայուհուն, այսինքն «Կաթուղիկէին» [դիմանաբար] շրջապատող լալկան կանանց երամը պատկերացնում է Հայաստանի «Կաթուղիկէի»—մայր եկեղեցու դուստր եկեղեցիներն ու վանքերը, որ մեծ մասամբ նոյնպէս ամայացած էին: Եւ արքայուհին բացատրելով իր սուգի պատճառը՝ ասում է եկողներին.

Երբեմն էի որպէս զերկին,
Հիմ հաւասար եմ դոեհին.
Երբեմն արփի արեւածին,
Այժմ խաւար անհնարին...
Երբեմն հարսն առագաստին,
Մածեալ գրկօքն իմ փեսային,
Այժմ եմ սեղեխ օտարոտին,
Անպէտ նման հոսեալ ջրին:

---

[1] Սկնդիկ—ամուլ կամ երեխայ չունեցող որբեւայրի կին:

Խաչատուր Կեչառեցին, անշուշտ, վշտահար սրտով պատմել է Օրբելեանների Վաղարշապատի Կաթուղիկէի տխուր դրութիւնը, որ եւ անդրադարձուել է «Ողբի» մէջ.

Այժմ անպիտան նման աղբին,
Եղեալ կոխան չորքոտանեայն...
... Սկիւթացի հօրանք թուրքին,
Կամ խայտառակ մանկունք նոցին,
Որք միշտ կոխան... առնէին,
Տեղիք չարեացն, որք գործէին...
Փոխան բուրմանցըն նարդոսի
Աղբք եւ աւիշք... կուտին...
Հօրանք այծից... բունին:

Կը նշանակի՝ Կաթուղիկէն լքուած, անուշադրութեան է մատնուած եղել, մի ամայի անշէն դաշտի մէջ: Աւեր է եղել եւ Վաղարշապատ մայրաքաղաքը, եւ շուրջը միայն խաշնարօտի տեղ: Այդ դրութիւնից է, որ «այրի» «Արքայուհին», այսինքն ի բաց լքուած եկեղեցին, ճչալով ողբում է: Եւ նա բացատրում է իր ցաւալից վիճակի պատճառը, այն է՝ Հայաստանի քաղաքական անկախութեան անկումը եւ այլազգիների տիրակալութիւնը, երկրի աւերումը, իշխանների դուրս քշուելը, կորչելը... Եւ քերթողը Արքայուհու բերանով երկար կանգ է առնում Արշակունի, Բագրատունի, Արծրունի եւ նոյնիսկ Սիւնական թագաւորութիւնների եւ նրանց կործանման վրայ, եւ վերջը յարում է.

Ահա՛ սոքա այսպէս անցին.
Բնաւին ի բաց եղծեալ գնացին.
Որպէս զատուերք այլ չերեւին.
Նման երազոյ կարծեօք թուին:
Որպէս ծաղիկք ամարայնոյն
Արեւակէզ թարշամեցին.
Որպէս սաղարթք վարսեալ ծառին
Խորշակահար ցամաքեցին...
Արդ ոչ եւս է, ոչ երեւին,
Անէացեալք նման նանրին:

Ի՞նչ է եղել հայկական քաղաքական անկախութեան անկման հետեւանքը: Հայ իշխանութիւնները, — շարունակում է ողբացող Արքայուհին, — անցան ոչնչացան, և

Միայն այրի զիս աստ թողին,
Որպէս զոչինչ ի բաց լքին:

Իսկ ի՞նչ է մտածում Արքայուհին, որ նոյն է՝ ի՞նչ գաղափար է քարոզում հեղինակը նրա բերանով: Նա շարունակում է ասել.

Արդ մենացեալ յանվայր [=անչէն] դաշտին
Ձերդ զդաղան անապատին,
Ջաչուերս ածեմ կողկողագին,
Ձայն արձակեմ ողորմագին.
«Ո՞ւր էք, որդի՛քդ իմ սրբածին,
Եկայք առ մայրըս ձեր նախկին,
Որպէս օրէնն է զաւակին,
Տանել խնամ ծեր ծնօղին»:

Ահա թէ ի՛նչ է քարոզում նա — վերադարձ դէպի մայր երկիրը, հոգալ նրա համար: Վերադարձ այն ամէնքի, որոնք իրենց օտարական են համարել Հայոց աշխարհից դուրս եւ միշտ կարօտով նայել դէպի իրենց մայր երկիրը: Բայց տակաւին առհասարակ ուշադիր չեն այդ կոչի ձայնին. եւ այրի Թագուհու վիճակը մնում է նոյնը, որ վերեւում տեսանք: Նա ոտնակոխ է այլազգիներից:

Տեսէ՛ք զիմ փառքըն զառաջին,
Տեսէ՛ք զվերջին նախատս անձին,
Թէ ո՛ւր էի, 'ւ ո՛ւր ընկեցին.
Յերկնից յերկիր զիս իջուցին,
Խորք անդնդոց զիս ծածկեցին...
Ո՞ւր են փեսայքն իմ առաջին,
Հայրապետաց ջոկքն որ անցին.
Ո՞ւր թագաւորքն իմ են նախկին,
Ո՞ւր եւ ազատքն ընդ սեպուհին.
Ո՞ւր են իշխանք գահագլխին,
Նախարարաց կոյտքն որ կային:
Ո՞ւր զօրութիւնք բիւր բանակին,
Խուռնեալ ամբոխքն անթուելին.
Ո՞ւր րաբունիքն որ յիս կային...

Եւ մի մեծ շարք ճարտասանական հարցումներով յիշեցնում է Հայաստանի անցեալ փառքն ու ճոխութիւնը, որ, — ասում է, —

Նման հողմոյ յիս շնչեցին
Ու անհետ ի բաց անցեալ գնացին:

Եւ իրեն մնում է լալ ու վա՛յ տալ իր գլխին եւ դիմում է եկողներին, որ նրանք էլ վայ տան:

Փոխան բուրմանցըն նարդոսի
Աղբք եւ աւիշք ի քեզ կուտին...
Փոխան զենմանց պարարակին
Հօրանք այծից ի քեզ բունին.
Ա՛յ վա՛յ քեզ վա՛յ որ չվճարին,
Վա՛յ քո փեսայքըն առաջին...
Վա՛յ զքո երէցն Արշակունին.

Վա՜յ զքո կրտսեր Բագրատունին.
Վա՜յ զքո Սիւնին եւ զԱրծրունին.
Վա՜յ զՄամիկոնին եւ զԱղուանին,
Վա՜յ զՇիրական եւ զՎանանդին.
Վա՜յ զՏարօնոյն եւ զՄոկացին...

Այսպէս սաստիկ ողբ ու կոծ. բայց՝ մինչեւ ե՞րբ: Եւ Արքայուհին վերջը դիմում է իր «նախածին դուստրներին» (Հայաստանի եկեղեցիներին–վանքերին), եւ նրանց, որ եկել էին նրա կոչին[1] եւ իր մօտ էին, խօսքն ուղղում է նաեւ այն ժամանակուայ բոլոր նշանաւոր վանքերին ու Հայկական կենտրոններին, եւ հայրենակ վայրերին, որ են՝ Դուին, Անի, «Սիւնիք եւ Աղուանք ընդ Վիրային», Ամարաս վանք, Արտազի Թադէոս առաքեալի վանք:

«Հաղբատ, Բջնին եւ Ամատունին,
Որ յԱրագած ես յԱնբերդին.
Բագուան եւ Կարս ընդ Բասենոյն,
Կարին քաղաք բարձր Հային,
Վասպուրական տունըդ Վանին,
Տարօն, Սասունք եւ Մոկային,
Եւ այլ աշխարհ Հայաստանին՝
Միջագետաց եւ Հռոմին,
Կիլիկիայ, Կողմ Ստորին,
Պատուեալ գլխովքըդ մեր նախկին:[2]

Նա խօսքն ուղղելով այս ամէնքին՝ ասում է.

Թողո՛ւմք զողբանքըս ցաւագին,
Անսէ՛մք աւարտ լալեաց բանին.
Յուսահատիլ չէ պարտ բնաւին:

1 Բնագիրն է՝ «Զորս եւ առ իս ժողովեցին»— եւ նրանց որ ինձ մօտ ժողովեցի: «Ժողովեցին» բայն այստեղ յոգնակի 3-րդ դէմքով չէ, այլ եզակի 1-ին դէմքով: Վերջի «ն» տառը յօդ է:

2 Տպուած է «Կիւլիկիայ կողմ ստորին», իբր Կիլիկիան կոչուելիս լինէր «կողմ ստորին»: Ուղղում եմ ինչպէս գրուած է վերեւում: Այսպէս՝ «Կողմ Ստորին», «Աշխարհ Ստորին» կոչւում է հին Կոմագէնի եւ հետագայի Եփրատեցիք կոչուած աշխարհը, Ներսէս Շնորհալու «Միջերկրայք» անուանած երկրամասը, որ, ինչպէս Շնորհալու կենսագրութեան մէջ տեսանք, ընկնում էր Կիլիկիայից արեւելք եւ Եփրատից արեւմուտք եւ հիւսիս-արեւմուտք, որ եւ միաժամանակ Անտիոքի ֆրանկ իշխանութեան ներքոյ է եղել: Այնտեղ էին Սեւ լեռները, Կարմիր վանք եւ Ծովք ու Հռոմկլա կաթողիկոսական աթոռանիստները: Սրան է ակնարկում Օրբելեանը, երբ «Ստորին Կողմի» համար գրում է «պատուեալ գլխովքդ մեր նախկին», այսինքն նախկին կաթողիկոսներով, որ են՝ Գրիգոր Վկայասէր, Գրիգոր Պահլաւունի, Ներսէս Շնորհալի եւ ուրիշները: Քիչ առաջ էլ «Ողբի» մէջ Օրբելեանը Կաթուղիկէի բերանով ասում է. «Փեսայս[=կաթողիկոսը] այրի թողեալ [զիս կաթուղիկէս] հալածեցաւ յԱշխարհ Ստորին»: Ներսէս Շնորհալու «Եդեսիոյ Ողբի» մէջ էլ Անտիոքին դիմելուց յետոյ՝ ասուած է. «Արդ՝ ի Ստորին Կողմն աշխարհի Զոր խօսեցաքըս՝ շատացի. Բայց բանըս մեր փոփոխեսցի, Յելս արեւու վերադարձցի, Առ Մեծըն Հայք, տուն Թորգոմի»: Օրբելեանի Պատմութեան մէջ (գլուխ ԿԸ, էջ 439) Մեծ Հայքը կոչւում է «Վերին Աշխարհ Արեւելից»:

Պէտք է զարթնել ինքնամոռացութեան քնից․

Զարթնուլ ի քնոյ գբաղականին։

Վախճան կը լինի հայերի կրած բազմամեայ չարիքին, կը նորոգուի կեանքն, — ասում է Արքայուհին։

Նա՛ [=ահա] նորոգումըն մեզ կրկին,
Որ բնաւ չյիշեմք զփառսն առաջին․
Կանգնէ [Աստուած] զաթոռ թագաւորին,
Եւ զգաւազան պատրիարքին,
Ամենեցունց ըստ իւր կարգին,
Ուղղէ զգահոյս տիրականին [=տէրութեան],
Նոր զարդարէ փառօքըն հին,
Եւս առաւել քան զոր էին․
Տայ մեզ գոչել ձայնիւ ուժգին․
«Վերջինս է մե՛ծ քան զառաջին»։

Ահա Օրբելեանի քերթուածի նիւթն ու գլխաւոր գաղափարը։ Հայրենասիրութիւնը նրա երկի մէջ աւելի խորացած է, դարձած մի կոնկրետ ձգտում։ Այդ այլեւս ոչ թէ լոկ ողբ էր, ոչ թէ տարագիր ժողովրդին հաւաքելու եւ փրկելու մի տարտամ իղձ եւ աղօթք էր, որ երգել է դեռ Յովհաննէս Սարկաւագ Վարդապետը․ ոչ թէ մի երազ արեւմտեան ազգերի ձեռով փրկուելու արեւելեան քրիստոնէութեան հետ, այլ քարոզում էր վերջ տալ ողբանքին, խնամ տանել սեփական երկրին, ձգտել բնիկ երկրում ունենալու եկեղեցական կենտրոնը․ եւ Այրարատեան դաշտում, իր նախկին վայրում, վերանորոգելու Հայոց թագաւորական գահը։ Այս արդէն մի նոր ու մեծ, պարզ ու որոշ զարգացում էր մեր հայրենասիրական երգի մէջ արծարծուած գաղափարի — սիրով կապուել բուն հայկական երկրի հետ եւ կը լինի «նորոգումը»։

5․ Ուրիշ ձեւական կողմեր։— Վերեւում բերուած բովանդակութիւնից եւ հատուածներից կարելի է տեսնել, որ Օրբելեանի բանաստեղծութեան ձեւն ըստ ընդհանուր կառուցուածքի յարմար ու գեղեցիկ է մտածուած․ ըստ ոճի կամ մանրամասների արտայայտութեան, սակայն, բաւական աղքատ է, չունի պերճութիւն․ հայ թագաւորութիւնների մասին պատմող կտորների մէջ նոյնիսկ պրոզայիկ է հնչում։ Բայց գրուածքն ընդհանրապէս չոր ու ցամաք չէ, ինչպէս զուցէ թուայ ոմանց։ Դա ազդում է, որովհետեւ հնչում է մի անկեղծ ջերմ զգացմունք, որ կենդանութիւն է տալիս ամբողջին, եւ որովհետեւ իր էական գաղափարով մտածել է թելադրում ընթերցողին։ Դրանցով այդ երկը հաճոյք է պատճառել իր ժամանակին, պատճառում է եւ մեզ իսկ։

Օրբելեանի քերթուածի ձեւական թերութիւնը պարզ ու հասարակ ոճի մէջ չէ,—քանի որ այսպիսի ձեւով էլ բանաստեղծութիւնը կարող է գեղեցիկ լինել,—այլ պակաս ինքնուրոյնութեան մէջ։ Դա մասամբ նմանողութիւն է Ներսէս Շնորհալու «Ողբ Եդեսիոյ»-ին։ Աւելորդ է այստեղ դնել այդ երկուսի մանրամասն համեմատութիւնը։ Երկուսի մէջ էլ ընտրուած է դի–

մտանութեան ձեւը, Եղեսիան իբրեւ ողբացող այրի կին կամ տիկին, Վաղարշապատի Կաթուղիկէն՝ իբրեւ նոյնպիսի թագուհի: Երկուսն էլ ուրիշներին կոչում են ի ողբակցութիւն: Երկուսի մէջ էլ հին լաւ օրերի եւ ժամանակակից աղետալից վիճակի հանդիպադրութիւն, որ սակայն Ն. Շնորհալուց առաջ էլ արել է ողբացող Արիստակէս Լաստիվերտցին: Երկուսի մէջ էլ դրա համար կիրառուած են «ուր» բառով ճարտասանական հարցումներ: Կան նաեւ մի քանի նման պատկերներ եւ այլ թեթեւ նմանութիւններ, որ երկրորդական են, օրինակ՝ սգացող կնոջ նկարագրի մէջ Շնորհալին ունի՝ «Քարամբ ծեծեմ կուրծքս սրտի», Օրբելեանը՝ «Ձկուրծքըն բախէր քարամբ ուժգին»: Անցնել եւ այլեւս չերեւալ ստուերի պէս կամ երազի պէս. կամ «Որպէս ծաղիկ ամարայնի» (Շն.), «Որպէս ծաղիկք ամարայնոյն» (Օրբ.): Բայց այդ ամէնը, բացի գուցէ բարառնութիւնից, կարող են համեմատ լինել նիւթի նմանութեան պատճառով եւ միմեանցից անկախ եւս ծագած լինել իրական կեանքից: Բացի այդ՝ շատ ճարտասանական եւ բանաստեղծական պատկերաւորութիւններ այն ժամանակներում եղել են ընդհանուր տեղիներ եւ սովորական դարձուածներ. ինչպէս՝ Կաթուղիկէն անուանել են մայր եկեղեցի, իսկ միւս եկեղեցիները՝ նրա դուստրներ: Սրանից էլ կարող է բխած լինել Վաղարշապատի Կաթուղիկէի բարառնական պատկերացումն իբրեւ մի կին, շրջապատուած իր դուստրներով — եկեղեցիներով, վանքերով: Բայց այս ամէն ձեւական նմանութիւնները երկրորդական են, քանի որ Օրբելեանի երկի ընդհանուր յօրինուածքն ու նրա զարգացումը հեղինակի իրեն (գուցէ Խաչատուր Կեչառեցու հետ խորհրդակցութեամբ) ստեղծածն են եւ նիւթին ու թեմային յարմար ու վայելուչ մտածուած ու գլուխ բերուած: Եւ որ գլխաւորն է, ինչպէս վերեւում ասւեց, նա արտայայտիչ է դարձել արեւելեան հայութեան որոշ խաւերի:

## ԽԱՉԱՏՈՒՐ ԿԵՉԱՌԵՑԻ

1. Ողբ վասն իշխանաց:— *Այս գրողի մասին չունինք ուրիշ կենսագրական տեղեկութիւններ, բացի վերեւում յիշուածներից, որ իմանում ենք Օրբելեանից, որոնցից եւ երեւում է, որ նա մի հեղինակ է, որ պատկառելի գիտնական է եղել, Կեչառուք կամ Կեչառիս վանքի առաջնորդ կամ միաբան, ուստի եւ ըստ ժամանակի սովորութեան կոչուել է Կեչառուեցի կամ Կեչառեցի: Գուցէ եւ այդպէս անուանուել է իր ծննդենիքով: Քանի որ, ինչպէս տեսանք, Կեչառեցու դրդելով է Օրբելեանը գրել իր «Ողբը», ապա սպասելի է, որ նա ինքն էլ հայրենասիրական ոգով տոգորուած լինէր: Ալիշանը յիշում է Կեչառեցու «Ողբք վասն աւերման տանս արեւելեան»[1] եւ բերում է սրանից ութ տող: Այդ, ըստ երեւոյթին, նոյնն է, ինչ որ մի ուրիշ ձեռագրի մէջ կայ «Ողբ Խաչատրոյ Կեչառեցւոյն վասն իշխանաց» վերնագրով.[2] որովհետեւ սրա մէջ կան մեր բանաստեղծ բանաստեղծի իր մեծ*

1 Ղ. Ալիշան, «Այրարատ», էջ 268 ա., 152—2:

2 Հայաստանի Պետ. Ձեռագրատուն (Մատենադարան), գրչագիր թիւ 425 (Գանձարան), էջ 681—685: Այս «Ողբի» արտագրութիւնը շնորհակալութեամբ ստացայ Մատ. գիտ. աշխատակից Լ. Խաչիկեանից:

աշխատութեան մէջ առած ութ տողերը: Այս «Ողբը» կազմուած է երկու մասից. երկուսն էլ արուեստի տեսակէտից աննշան բաներ են, բայց արժէք ունեն իրենց պատմական բովանդակութեամբ:

Ինչպէս վերեւում տեսանք, Սիւնիքի Տարսայիճ իշխանը, որ ընդարձակ սահմաններով Հայաստանի կառավարիչ էր, մեռել է 1290 թ., եւ դրանից յետոյ Արեւելեան Հայաստանի վիճակն սկսել է վատանալ: Ղազան ղանի իշխանութեան սկզբում (1295 թ.), նրա զօրավար Նաւրուզը, որ «յոյժ ատեցող էր քրիստոնէից եւ թշնամի եկեղեցեաց», հրամայում է «առհասարակ քակել զամենայն եկեղեցիս, եւ կողոպտել զամենայն այր քրիստոնեա եւ թլփատել զքահանայս»: «Քակեցին բազում եկեղեցիս. խողխողեցին բազում քահանայս. կոտորեցին բազում քրիստոնեայս. եւ որք ի սրոյն մնացին՝ կողոպտեցին զամենայն ինչս. գերեցին բազում կանայս եւ մանկտիս»: Եւ այդպէս վարուել են, մինչեւ որ Կիլիկիայի Հայոց թագաւոր Հեթումի միջնորդութեամբ՝ Ղազան ղանը հրամայել է դադարեցնել քրիստոնեաների հալածանքը, եւ «լինէր խաղաղութիւն մեզ եւ ամենայն աշխարհիս Հայոց», գրում է Ստեփանոս Օրբէլեանը:[1] Խաչատուր Կեչառեցու «Ողբի» մէջ պատկերացուած է ահա Արեւելեան Հայաստանի այս տխուր դրութիւնը 1295 թուականին, եւ երեւում է, որ նա այն միջոցին էլ յօրինել է իր քերթուածը, ինչպէս Ֆրիկն իր նշանաւոր մի բանաստեղծութիւնը, որ կը տեսնենք յետոյ: Նա ողբում է մէջ բերելով երկրի ըստ եկեղեցական հայեացքի ընկած դրութիւնը:

Զերկիրս արեամբ, մեղաւք ներկեցաք...
Զեկեղեցեաց դրունըս փակեցաք...
Զաւազանին խորհուրդն ուրացաք...
Զխաչն եւ զհաղորդըն զայրացուցաք,
Զեկեղեցին սուրբ քամահեցաք.
Ծաղր ու նախատ բազմաց մեք եղաք.
Յերկաթ ու ի նեղ զընդան մեք մըտաք,
Յաղքատութիւնս որ ժամանեցաք...
Ի ձեռըն չար ազգի դրաւեցաք.
Բըժիշկ չունինք ցաւիս որ դիպաք...

Ինչո՞ւ է այդպէս:—Որովհետեւ այլեւս չկան հին հայ իշխանները, — մտածում է քերթողը: Եւ նա իր քերթուածի երկրորդ մասի մէջ մէկ մէկ թւում է իր շրջանի նշանաւոր իշխաններին.

Մեռա՛ն իշխանքըն մեր ցանկալի,
Ու իրեանց որդիքն տղայ հասակի.
Սուգըն տիրեաց մեզ Իսրայէլի...
Սադո՛ն, սիրա՛ծ մեծ Ապա ղանի,
Գոված, ընտիր յամէն հանդիսի,
Զաչերըդ բաց, զինչ Դամասկոսի,
Տես ըզգաւառս ի յերերմանի,
Զեկեղեցիքս ի մեծ վըտանկի,

———

1 Ստ. Օրբէլեան, Պատմ. նահանգին Սիսական, Թիֆլիս, 1910, էջ 471—475:

Ու խառնայխս ի տարտարոսի,
Զթութլու բուղայն յարեան հալաւի,
Զիւրեան նման պատկերն ի մոխրի·
Զարքայն չիշխեմ յիշել զվրացի,
Զատլաս երեսն զԴեմետրէի,
Որ դեռ քըրտունքն ի վայր կու վաթի՝
Սիրտըն քաշած, ու դեռ կենդանի:
Պարոն Պռոշըն հեծելի,
Որ զերկաթի դուռն առնէր փոշի,
Աջու բազուկ էր Նոր Սիոնի,
Հիմն հաստատ Հայոց հաւատի...

Նա այսպէս գովելով յիշում է եւ Պռոշի որդիներին, Տարսայիճ իշխանին եւ ուրիշներին. վերջը բացականչում է տրտմութեամբ լի.

Աւա՜ղ, թէ զորն ասեմ ի լալի,
Զայն հին ու նորքն ի գերեզմանի:
Վա՜յ զմնացորդքըս սուտ կենդանի,
Մակար չէաք ծընեալ յաշխարհի:
Արդ գերեցաք ու խիստ արժանի,
Մեր գերադարձքըն չեն ի միջի:
Աւգնեա մեզ ի նեղութեան մերում,
Աստուա՛ծ, աղաչեմք:—

Այսպէս աղօթքով վերջացնում է նաեւ առաջին մասը:

Նրա երկի արժէքը միայն այն չէ, որ նա ազդուել է ժամանակի իրականութիւնից, այլ աւելի այն, որ ողբալով Հայաստանի թշուառ դրութիւնը՝ երկրորդ մասի մէջ կարօտով յիշում է հին նշանաւոր իշխաններին, որոնք «Կորիւնքն առեւծի» էին, «զաւրաւոր ի պատերազմի», «պատուեցան ի դուռն արքունի» կամ, ինչպէս մէկի համար գրում է միջնադարի համար մի անսպասելի համեմատութեամբ,

Հանց ուժընդակ էր ինքն յառենի,
Քան Քրիստոսի նըշանն [=խաչը] ի բեմբի:

Քերթողը խիստ ցաւում է, որ այլեւս չկան նրանք. եթէ լինէին այնպիսի իշխաններ, մեր երկիրն արիւնով չէր ներկուիլ: Թւում է, թէ նոյն տարիներին հէնց մեր այս քերթողի մտքում ծագել է Հայաստանի կենտրոնում հայկական քաղաքական իշխանութիւնը վերականգնելու գաղափարը, որ քիչ յետոյ երգել է Ստեփաննոս Օրբէլեանը հէնց այս քերթողի յորդորանքով: Պէտք է հայերին ուսուցանել, թէ ի՛նչ էր հարկաւոր իրենց փրկութեան համար:

2. «Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ»:— Խաչատուր Կեչառեցին գրականութեան համար ուրիշ կողմից էլ որոշ դեր կատարել է: Թաթարների իշխանութեան օրով, 13րդ դարի երկրորդ կէսին, ինչպէս տեսանք, կանգ չի առել հայկական քաղաքների բարգաւաճումը: Նրանց բնակիչ—

ներն էլ ունէին իրենց գրական պահանջը: Բացի գուսանական երգերից, որոնք զուարճացնում էին փարթամ քաղաքացիներին նրանց ուրախութեան խնջոյքների միջոցին, ծագում է նաեւ թեթեւ ընթերցանութեան գրքերի կարիքը: Սրբերի վարքերը, «Յայսմաւուրքի» մէջ մտած եւ ուրիշ վկայաբանութիւններն այլեւս չէին գոհացնում ընթերցասէրներին: Հարկաւոր էին, այսպէս ասած, զբօսուցիկ կամ զուարճական վէպեր եւս, որոնցով նրանք զբաղուէին իրենց պարապ ժամերին: Մեր դպրութեան առաջին դարում արդէն գեղեցիկ լեզուով թարգմանուած էր Կալիսթենէսին վերագրուած «Աղեքսանդրի պատմութիւնը»,[1] որ սիրուած է եղել հայերի մէջ: Միջնադարում ասպետական ռոմանների մի առանձին ցիկլ են կազմել Ֆրանսիայում նաեւ Ալեքսանդրի վէպերը, որոնք մշակուած են հնութեան աւանդութիւնների եւ ֆէոդալական սովորոյթների խառնուրդով: Ինչպէս երեւում է, մեզանում եւս 13-րդ դարի վերջերում պահանջ է եղել այդ գրքի համար, որ Խաչատուր վարդապետն անձամբ արտագրել է այն՝ «սրբագրեալ [=մաքուր գրելով] ի գրոց հնոց»:[2]

Բայց նա իբրեւ լոկ «գրիչ» չէ հանդէս եկել, այլ նաեւ իբրեւ քերթող. այն պատմութեան հատուածների վերջում դրել է քերթուածներ, որոնց մէջ նոյն նիւթը ժամանակի կենդանի խօսակցական լեզուով պատմում է նմանողութեամբ, կամ յօրինում, յարմարում է «ոտանաւոր նմանողական պատմութիւններ», որոնք կոչւում են «կաֆայք», այսինքն յանգաւոր ոտանաւորներ: Սրանց մէջ, սակայն, չի առնւում հատուածների բովանդակութիւնն ամբողջապէս, այլ այս կամ այն կէտը, որ արժանանում է հեղինակի ուշադրութեանը, որից եւ ազդւում է նա: Ուստի այդ ոտանաւորները միասին չեն կազմում մի կապակցուած պատմուածք: Այս ձեւով, սակայն, նա թարմացրել եւ աւելի եւս հետաքրքիր ու գրաւիչ է դարձրել Աղեքսանդրի առասպելախառն Պատմութիւնը: Յետոյ ուրիշները, — ինչպէս նոյն Պռոշեան տոհմից Զաքարիա եպիսկոպոսը Գնունեաց, որ կոչւում է Գնունցի, ինչպէս եւ սրա ուսուցիչ Գրիգորիս Աղթամարցին, — նոյնպէս յօրինել են համանըման քերթուածներ, որոնք հետագայում խառնուել են միմեանց եւ աղաւաղուել են, կրելով նորանոր խմբագրութիւններ յաւելումներով ու կրճատումներով: Այդ գրքի սէրն ու պահանջն այնքան մեծացել է, որ ծաղկագրուել ու նկարազարդուել էլ է. Զաքարիա եպիսկոպոսն էլ եղել է դրա նկարող ու ծաղկագրող. «Զաքարիա եպիսկոպոս՝ գծող եւ նկարող Աղեքսանդր գըրոց», գրում է նա իր համար: Ուրիշներն էլ նոյնն արել են, այնպէս որ կան ձեռագիրներ, որոնց ամէն երկու երեսին կայ մի նկար պատմուած դէպքերի վրայ:[3] Քերթուածներ գրուած կան նաեւ նկարների տակին կամ չուրջը եւ վերաբերում են երբեմն նկարներին:

Ինչո՞ւ է այսպէս սիրուել այս գիրքը: Դա միակն է եղել իր տեսակի

---

1 Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, Վենետիկ, 1842:

2 Տաշեան Յակովբոս, Ուսումնասիրութիւնք Ստոյն Կալիսթենեայ Վարուց Աղեքսանդրի, Վիեննա, 1892, էջ 86 եւ հտն., 112 եւ հտն.: Տեղեկութիւնների մի մասն առնւում են այս գրքից: «Սրբագրեալ» ոչ ուղղել ըստ այս բառի նոր նշանակութեան, այլ մաքուր գրել, արտագրել:

3 Անդ, էջ 113:

մէջ եւ ժողովրդականացած, իբրեւ Պատմութիւն Ալեքսանդր Մակեդոնացու, որի անձնաւորութիւնը ե՛ւ արեւելեան, ե՛ւ արեւմտեան շատ ժողովուրդների հիացմունքի առարկայ է եղել: Բայց կայ եւ հետեւեալ հանգամանքը: Այն ժամանակի պարզամիտ մարդիկն ընդհանրապէս շատ հեշտ հաւատում էին ամէն տեսակի հրաշալիքներով լի պատմուածքների, որոնք դրդում էին նրանց երեւակայութիւնը եւ դիւր էին գալիս նրանց: Յիշենք միայն, թէ ինչեր է պատմելիս եղել Հեթում թագաւորն առ Մանգու ղանն արած հեռաւոր ճանապարհորդութիւնից վերադառնալիս. «Բազում իրս զարմանալիս եւ անծանօթս պատմէր մեզ զբարբարոս ազգացն, զոր տեսեալ էր եւ լուեալ: Ասէն թէ կայ աշխարհ մի անդր քան զԽատայիքն, ուր կանայք են ի ձեւ մարդոյ բանականաց, եւ արքն ի կերպարանս շանց, եւ են անբանք, մեծք եւ մազեղք... Կայ կղզի մի աւազուտ, յորում բուսանի ծառօրէն ոսկր ինչ պատուական... եւ ի հատանելն այլ բուսանի ի տեղին ըստ նմանութեան եղջերուաց»:[1] Սրանց նման բաներ են եւ Սուտ Կալիսթենէսի ֆանտաստիկ պատմածները, թէ Աղեքսանդրը հեռաւոր երկրներում ինչ հրէշաւոր էակներ է տեսել: «Տեսաք շնագլուխս եւ անգլուխ մարդիկ, որք զաչսն ունէին ի լանջըն եւ զբերանն»: ... «Եւ էին յայնմ անտառին մարդիկ, որ տնկածոյք կոչէին, եւ ունէին մեծութիւն առ մարդ կանգունս քսան եւ չորս, եւ երկայնապարանոցք էին, եւ ձեռք եւ մատունք սղոցաձեւք... Ապա անդուստ գնացեալ՝ եկաք ի դաշտակուտ իմն վայր, ուր կային մարդիկ վայրենիք նման հսկայից, մեծութեամբ իբր զառաջինսն, լանջօք բոլորակք, թաւք, շէկք. եւ ունէին երեսս որպէս զառիւծու... Հերս ունէին կանգունս չորս եւ լայնութիւնն իբրեւ աշտէի, եւ եկին առ մեզ մաշկեայ պարեգօտիւք, հզօրք յոյժ, պատրաստք պատերազմ տալ՝ առանց տիգաց եւ նետից»: Տեսնում են եւ երեքաչքանի գազաններ, կրիայի չափ լուեր, մարդակեր մարդիկ, «թաւ իբրեւ այծ», որ շան պէս հաչում են. հրաշալի ծառեր, ձկներ, «որք հուրբ ոչ լինէին եփեալք, այլ ցուրտ ջուրբ աղբերաց», հինգ ոտանի գազաններ, «հինգ աչօք եւ այլք վեցաչք եւ վեցոտանիք», երկայնութեամբ իբրեւ կանգունս երեսուն»: «Անգլուխ» մարդիկ. «գլուխ ոչ ունէին բնաւ, այլ ի լանջս ունէին զաչս եւ զբերանն», եւ այլն:[2]

Դժուար թէ նոր Կեսարեցին հաւատացած լինի ամէն այսպիսի, իր բառով ասենք, «չաղփաղփ» բաների, բայց այսպիսի կտորներն էլ է նա վերածել քերթուածի.

Ա՛յ իմ հրաշագործ Աստուած՝
Արարիչ ազգաց ամենի,
Ու զարմանալի քոյ գործք՝
Զինչ պատմեն երամք տեսողի.
Ըղոնսանովի ոչխարս
Զր տեսաք ի Հունդուստանի.
Բայց զայս տընկածոյ մարդիկ՝

1 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, էջ 356:

2 Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, Վենետիկ, 1842., հատ. ՄԾԸ ՄԹ., էջ 168, 122 եւ հտն.:

*Զենք տեսել յառակս ամենի․*
*Այս են հըսկայքըն վայրենի*
*Որ են սըներ ի յանտառի,*
*Լանջք բոլոր թուք չիկամորթի,*
*Երեսս ունել իբր առիւծի,*
*Հերս ունէին չորից կանգնի՝*
*Ու լայնութիւն զինչ աշտէի․*
*Պարեգաւտաւք մաշկեղինի՝*
*Պատրաստեցան ի կռիւ յայտնի․*
*Եւ խարձ ածին յանկարծակի*
*Երկուց կողմանց վտանգելի։*
*Տեսողացս է հիանալի,*
*Եւ ի մէնջ է ձեռ պատմելի...*[1]

3․ Կեչառեցու կարծիքն Ալեքսանդրի կեանքի եւ Պատմութեան մասին։— *Կայ մի ուրիշ պարագայ եւս, որով այս գիրքն արժանացել է մեր այս քերթողի առանձին ուշադրութեանը։ Առաջաբանի մէջ՝ «Նախադրութիւն չարադրութեանց գրոց աշխարհակալին»՝ նա յայտնում է, թէ «Աստուածազան խնդիր հարանց հոգեւորաց եւ համշիրակ համբակաց եւ համակամ եւ մշտաջարժ սիրով ստիպել է» իրեն «արտաճառել... զաշխարհակալ իմաստունն, որ* տիպ եւ գաղափար եղեւ ճշմարիտ երկնաւոր թագաւորին՝ եւ կուսածին Աստուծոյն մերոյ Յիսուսի Քրիստոսի»․ *որովհետեւ թէպէտ եւ Արիստոտէլը գրել է այն վիպասանութիւնը, «սակայն արդիւնքն չահաւէտ ոչ ըմբամադրեցաւ ի տարմալուկ մտաց նորա», այսինքն նա իր պատմածները չի նմանեցրել Քրիստոսի տնօրինականներին, որ եւ ինքն այն անում է «յոգուտ ոմանց բանասիրաց»։ Վերջն աւելացնում է, թէ Ալեքսանդրի կեանքը պատմում է «յօգուտ եւ յօրինակ ամենայն թագաւորաց եւ իշխանաց... եւ քաջահմուտ արանց պատերազմողաց ․դ․ [=չորս] են արտադատմունք՝ գիտութիւն, արիութիւն, համբաւ եւ դատաստան։ Այսպէս եւ ըստ այսմ օրինակի վայել է արքայից եւ զօրապետաց իմաստուն եւ հանճարեղս լինել... Իսկ արդար դատաստանաւ՝ որ է մասն քառից խոհեմութեանց ըստ իմաստնոյն Պղատոնի, որ գրեալ է ի Տիմէական տրամաբանութեանն որ իսկապէս է սա տեսանի լաւաբախտ յաջողութիւն առ ասացեալ․ իրացս յայտարարութիւնքն»։*

*Բերենք նախաբանի բուն մասը, որի մէջ բացատրում է, թէ ինչպէս Ալեքսանդրի կեանքը «տիպ եւ գաղափար» կամ պատկերն է Քրիստոսի կեանքի։ «Աստանօր նախաճառեմք զծնունդ նորա [=Աղեքսանդրի],որ եղեւ շարժմամբ եւ նշանօք՝ բերելով զնկարագրութիւն ապէնիազն Աստուծոյն որ եղեւ ի Բեթղահէմ աստեղն զուշակմամբ եւ գալստեամբ Արաբացւոց։ Իսկ յաղթութեամբն խուժադուժ ազգաց՝ յայտ առնէ զյաղթութիւն Տեառն խաչիւ ի վերայ խաւարասէր իշխանին։ Նաեւ քակտումն Ծուրայ եւ Ծայդանայ՝ զաւերման դժոխոց բերէ զյիշխատակ։ Իսկ զըմպանակն մահաբեր արբեալ նմա՝ արտայայտէ զճաշակումն լեղւոյն եւ քացախոյն վասն յառաջաճաշակ պտղոյ նախաստեղծին։ Իսկ փայլակն որ անկաւ ի ծով եւ աստղն զոր վե-*

---

1 Առնուած է Յ. Տաշեանի գրքից՝ «Ուսումնասիրութիւնք Ստոյն Կալիսթենեայ», էջ 120։

բացոյց արծուին՝ ցուցանէ զաւանդումն հոգւոյ հզօրին՝ որ ի ծոց ծնողի նորա: Եւ գչանթն հրացեալ ի ջուր՝ ազդէր զնսեմանալ լուսաւորացն. իսկ չամանդաղն՝ զխաւարն աշխարհատարած, որ ընդ բոամբ ածեալ չօշափէր իբրեւ զհանդերձ: Նմանապէս ամք կենաց նորա ԼԳ [=33]. նոյնքանիւ չափեալ զժամանակ՝ ելանելոյ յաշխարհէ Աստուածն բանի»: Վերջն աւելացնում է, թէ ամբողջ համեմատութիւնը լիովին կը գտնես գրքիս վերջում:

Գրեթէ բոլոր ձեռագրերն ունին բարանութիւններին անմիջապէս կից վերջաբանական մի հատուած, որի խորագիրն է. «Եթէ ամենայն կեանք վարուց յաղթութեան եւ արիութեան, նաեւ վախճանն նշանօք առ յերն մեր, զոր բերեմք մարգարէութեամբ». կամ ըստ ուրիշ ձեռագրի՝ «Եթէ որպէս առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս վերաբերի Աղեքսանդրոս»:[1] Սրանից մի կըտոր տպագրուած է:

Խաչատուրը ջանում է համոզել, որ եթէ Եւային խաբող թշնամու սատը, «կամ առ Մովսէսիւ օձն օրինակ եղեւ տեառն չարչարանաց... նաեւ պտղնկըլըն Ովսէի եւ մեղանչելն Դաւթի ունի տեսութիւն մարգարէութեան, նաեւ պատկերն Աթենայ, ապա ո՞րչափ եւս առաւել այրս այս սքանչելի Աղեքսանդրոս Մակեդոնացի տիպ եւ գաղափար եղեւ երկնակալ թագաւորին մերոյ Յիսուսի Քրիստոսի, զոր Աստուծով եւ Աստուած օգնական պարգեւօք յայտ առնեմք»: Ապա բերում է 18 բաղդատութիւն Քրիստոսի եւ Ալեքսանդրի կեանքի: Կաֆաներից մէկի վերջին տողերի մէջ էլ նա գրում է.

Քաջ առիւծ էր [Աղեքսանդր] հեծելի....
Կարողութեամբ Սամսոնի,
Եւ օրինակ էր Քրիստոսի:

Խաչատուր Կեչառեցու այդ վարմունքը, որի դէմ 19-րդ դարում անգամ ծառացել են Եւրոպայում նստած կաթոլիկ վարդապետները, հետաքրքիր է նախ այնու, թէ մինչեւ ու՛ր է հասել մեղնում միջնադարեան սքոլաստիկ մտածողութիւնը. մեր վարդապետները քրիստոնէական Աստծու մարդեղութեան, այսպէս ասած «տնօրինականների» սիմբոլիկ պատկերները տեսել են ոչ միայն Հին Կտակարանի մէջ, այլեւ Աղեքսանդրի Պատմութեան: Այդ մի շատ պայծառ իլլուստրացիա — լուսաբանումն է այդ ուղղութեան, դրա համար եւ կանգ առանք այդ մասին: Բայց միայն այդքանը չէ Կեչառեցու գործի պատմական նշանակութիւնը, այլ դա միաժամանակ ցոյց է տալիս, որ նոյնիսկ սքոլաստիկ վարդապետն ազատախոհ է եղել: Նա, որ ծանօթ է Պլատոնի, գուցէ եւ ուրիշ փիլիսոփաների երկերին, առանց քաշուելու ազատ մեկնութիւններ է տալիս «հաւատով աշխատելով», այսինքն հաւատալով իր ասածների ճշմարտութեանը, չմտածելով անգամ, թէ դրանով պրոֆանացիայի—սրբապղծութեան է ենթարկում իր կրօնի խորհուրդները: Եւ այդ անում է նա «աստուածազան հոգեւոր հայրերի» ու «համչիրակ համբակների» խնդրելով՝ «յօգուտ ոմանց բանասիրաց»: Այսպիսի

1 Տաշեան, Ուսումն. Ս. Կալ., էջ 87, 100—105, 115:
2 Պատմ. Աղեքս. Մակեդ. էջ 195, ծանօթութեան մէջ:

պատամութիւնն, ուրեմն, լոկ անհատական չէր, այլ յատուկ էր եղել ողջ մատենագրական խմբի։

Ամէնքը, հարկաւ, այդպէս չեն մտածելիս եղել։ Կեչառեցին գիտէ, որ իրեն մեղադրողներ էլ կը լինեն այդ բանի համար. ուստի Աղեքսանդրի կեանքըն իբրեւ «տիպ եւ գաղափար» Քրիստոսի ներկայացնելուց յետոյ՝ «Յիշատակարանի» մէջ գրում է. «Եւ արդ զայս այսպէս համեմատեալ՝ մի՛ ստգտանիմք յոմանց, զի զպատճառն վերադոյն ճառեցաք. այլ ընթեռնլով զսա յիշման արժանի լիցի ի ձէնջ Խաչատուր Կեչառուեցիս. զի ի յարմարում սակաւ բանից եւ ի գրչութիւն գրոցս հաւատով աշխատեցայ. նաեւ զի [այլ ընթերցուած՝ «նա՛ զի»] հեթանոսական գրեալքն անմիաբան են եւ անվայելուչ՝ ի վերոյ չաղկապեալ բանիւք որակացեալ, եւ ներքոյ լի սնոտի կարծեօք եւ խաբէութեամբ»։[1] Շատ հետաքրքիր է եւ այս յիշատակարանը։ Որ այս, այսինքն Աղեքսանդրի եւ Քրիստոսի կեանքն այսպէս համեմատեցի,—ասում է նա, դրա համար թող չմեղադրուեմ ոմանցից. որովհետեւ պատճառը վերեւում յայտնեցի։ — Իսկ վերեւում ասել էր, թէ «աստուածազան հոգեւոր հայրերը» ստիպել են նրան այդ մեկնութիւնները գրելու։ Դրանք երեւի Կեչառուքի միաբաններ են եղել։—Չմեղադրէք ինձ,—ասում է նա,— այլ, ընդհակառակն,—շարունակում է նա,—այս որ կարդաք, ինձ յիշման արժանի արէք. «Որովհետեւ սակաւ խօսքերս (այսինքն իր բաղդատութիւնները) յօրինելու եւ այս գիրքը (Աղեքսանդրի Պատմութիւնն) արտադրելու համար հաւատով նեղութիւն կրեցի, մանաւանդ որ հեթանոսական գրուածքները (Աղեքսանդրի Պատմութեան) «անմիաբան» են, իրար չբռնող, հակասական են եւ «անվայելուչ», անվայել, անյարմար են՝ դրսից կապակցուած խօսքերով որակաւոր են, այսինքն գեղեցիկ են յօրինուած, եւ ներսից լի են սնոտի կարծիքներով ու խաբէութեամբ։ Կը նշանակի՝ թէեւ Կեչառեցին արել է իր 18 բաղդատութիւնները, բայց նա չի ընդունել ամէն ինչ, որ պատմուած է Սուտ-Կալիսթենէսի գրքի մէջ։ «Աղեքսանդրի Պատմութեան» կարճ ու գեղեցիկ քննադատութիւնն ըստ ձեւի եւ ըստ բովանդակութեան՝ մի անհրաժեշտ հիմք է Կեչառեցու եւ իր պէս մտածողների զարգացման աստիճանը որոշելու համար։ Նրանք այնքան էլ խիստ պարզամիտ եւ դիւրահաւատ չեն եղել, որ այն գրքի չափազանցութիւններն ընդունէին։ Հարկաւոր էր նրանցից զատել Աղեքսանդրի լաւագոյն բարեմասնութիւնները։ Դրա համար ահա նեղութիւն է կրել Կեչառեցին իր մեկնութիւնն անելիս։

**4. Կաֆաները եւ այլ ներդրուածները։**— «Աղեքսանդրի Պատմութեան» համար յօրինուած կաֆաների մասին դեռ չեն կատարուած բաւարար բանասիրական աշխատանքներ, որոնցով պարզուած լինէին նրանց աղճատումները եւ որոշուած լինէր, թէ ո՞րոնք են Կեչառեցու դրածները, որոնք՝ Ֆրիկինը, Գրիգոր Աղթամարցունը, կամ ուրիշներինը։ Երկու քառեակի նոյնութիւնը Ֆրիկի բանքերի հետ՝ ցոյց կը տրուի ներքեւում։ Բացի այդ՝ պէտք է նկատի ունենալ, որ Կեչառեցու գրուածքներից սակաւաթիւ պատառիկներ միայն կան տպագրուած. չեն հրատարակուած նրա այլ բանաստեղծութիւններն եւս։ Ուստի հնարաւոր չէ այժմ առհասարակ լիովին լուսաբանել նրա քեր-

---

[1] Տաշեան, Ուսումն., էջ 88 եւ հտ.։

Թողական դէմքը, պարզել նաեւ, թէ նա ի՛նչպէս է մշակել իր ըստ բովանդակութեան նմանողական կաֆաները, որքա՛ն եւ ի՛նչպիսի ինքնուրոյնութիւն է մտցրել նրանց մէջ՝ համեմատութեամբ «Ալեքսանդրի Պատմութեան»: Այդ պատճառով այստեղ կը բերենք նրա անունով եղած երկերից բաւարար հատուածներ, որոնցից կ'երեւայ նրա արուեստը:

Նա յաճախ յօրինում է բարառնութեամբ (պրոսոպոպոյիա), այսինքն կամ խօսքն ուղղելով անխօս կամ վախճանուած հերոսներին, կամ նրանց բերանից խօսելով: «Ալեքսանդրի Պատմութեան» այն հատուածի համար, որի մէջ պատմւում է Ալեքսանդրի ու Դարեհի ճակատամարտն եւ Դարեհի յաղթուելն ու փախչելը, տպագրուած կայ հետեւեալը.

Զա՛յն արար, ձա՛յն արար,
Փող քընարին ձայն արար...
Հաներ գթուըրդ քո ճօհար,
Ի երիվարըդ քո հեծար.
Զամբուխդ ի հանդէս տարար,
Զօրօք զօրավիգ եղար.
Ի Դարեհի հանդէպ հասար,
Ճակատըն բոլոր անցար.
Փոթորակի պէս խառնեցար,
Արծըւաբար դու բարձրացար:...
Ճակատ առ ճակատ եղէն,
Խառնեցան յանդուգն ու ահագին,
Դիակօք զվայրըն լըցին.
Խաւարաւ արեւն ի յերկին:
Խառնամբոխ մեծ հանդիսին
Աղեքսանդրու եւ Դարեհիս,
Սուսերամերկ կարաւանիս
Աճապարեալք ռատի գընդիս.
Դիաթաւալ արեան ծովիս,
Ճախր եւ ճակատ ի մէջ դաշտիս.
Կէսք վա՛յ ասէն յասպարիսիս,
Կէսք վա՛յ ասէն յաջողակիս:
Դարե՛հ, դարձաւ ալամդ ի չար.
Բաղդըդ նենդեց քեզ չարաչար.
Դարձի՛ր ի հետ 'ւ արա քեզ ճար.
Հա՛ն արտասուս անձրեւաչար.
Բանդ ի վերուստ է անհընար,
Խափանեցաւ խորհուրդդ անկար:[1]

Եթէ Կեչառեցու այս վիպական յատկութիւնների մէջ առանձին շնորհք չի երեւում, ընդհակառակն, ազդու եւ ճաշակաւոր են նրա տողերն ու բարո-

1 Սիսուան, Համագրութիւն Հայկական Կիլիկիոյ եւ Լեւոն Մեծագործ, Հաւաքեալ ի Հ. Ղեւոնդեայ վ. Մ. Ալիշան, Վենետիկ. 1885, էջ 399, ծան. 1—400:

յախօսական կաֆաները հայրենի չափով եւ կենդանի խօսակցական լեզուով յօրինուած․ սրանց մէջ խտացրած, սեղմ արտայայտուած է որեւէ իմաստալից միտք ըստ ժամանակի ոգու։ Այսպէս, օրինակ, մի որոշ չնորհքով է ոգուած Ալեքսանդրի մօր ողբն իր որդու մահուան համար․

Մա՛րք մանկադունից, լացէ՛ք,
Վա՛յ տուք ինձ թշուառականիս․
Որ փառաց թափուր եղէ,
Խաւարի աչեր ծնողիս․
Արեւն իմ չուտով մըտաւ,
Քաղեցաւ չունչս իմ ու հոգիս․
Ծառըս ծաղկաթափ եղէ,
Անպտուղ կամ ի յաշխարհիս․
Ա՛յ իմ միամօր որդի,
Աղեքսանդր հզօր մեծ արքայ․
Ձեղէ արժանի տեսոյդ,
Վա՛յ մօրըս քո Ոլոմպիայ․
Ոչ բան մի բերնէդ լուայ,
Թէ արտիս մէջըն կայ եարայ,
Քո ցաւուդ ես դեղ առնէի,
Կամ հէքիմ բերէի բէջարայ։[1]

Գեղեցիկ են եւ հետեւեալ իմաստական–ուսուցական քերթուածները․

Հիւանդին Աստուած է դեղ,
Որ մահու եւ տէրն է կենաց․
Ձհաքիմըն սարար սաեն,
Խելօքնուն է բանս սաուցած․
Զօր եւ իմաստուն խօսիւք
Գալինոս բազմաց վկայեաց․
Հրամանն ի վերուստ պիտի,
Որ ուղնէ բըժիշկըն գոված։

Միեւնոյն միտքն արտայայտուած է բախտի պատկերով եւս ըստ ժողովրդական հաւատալիքի․

Ցորժամ չարխն ի յետ քակի
Ու ձըգէ ի յաչքըն խոլոր,
Ոչ զաւրք եւ ոչ մալն ուգնէ,
Ոչ հարիւր հազար ձիաւոր։

Ահա եւ խարուսիկ բախտի դէմ զայրոյթը, կամ մարդուս անճարութիւնը յեղյեղուկ կեանքի եւ ապագայի անյայտութեան առաջ․

---

1 Կ. Կոստանեանց, Գրիգորիս Աղթամարցի եւ իր տաղերը, յաւելուած Աղեքսանդրի Պատմութեան տաղերը, Թիֆլիս, 1898, էջ 121 եւ հտ.։ Այս քերթուածը համարում եմ Կեչառեցունը ըստ ամենայն հաւանականութեան։

Է՛ չարխ, ես քեզ ո՞նց ասեմ,
Երբ չունիս դուք ոչ մաստեւոր,
Ոչ դավլ, ոչ երդում ունիս,
Զի քո սիրտըն է նենգաւոր...

Այս եւ նախորդ քառեակը կան նաեւ Ֆրիկի «Ընդդէմ Ֆալաքին» բանաստեղծութեան մէջ[1] եւ հաւանօրէն այստեղից են անցել «Ալեքսանդրի Պատմութիւնը»:

Երբ չարխն ու ֆալաք են մի,
Միացե՛ր, ես ո՞ւմ գանգատիմ.
Այս իմ սընուցած ծառայք
Զըթողին սակաւ մի հանգչիմ.
Տօլվաթն ի քամի նըման,
Որ յերկրէ յերկիր վարրիմ.
Աստուած գիտէ թ' ուր մեռնիմ,
Կամ ես ո'ւմ ձեռօք տի թաղուիմ:[2]

Վերջին տողերը հմմտ. Ֆրիկի հետեւեալ տողերի հետ.[3]

Ոչ գիտեմ թ' ուր մեռանիմ,
Ոչ ոք չունիմ որ թաղէ զիս:

Կեչառեցին սիրում է երգել կեանքի ունայնութիւնը, ուրիշ քերթուածների մէջ՝ երբեմն բազմաթիւ տներով, որոնք դասաւորուած են այբբենական կարգով ըստ իրենց սկզբի տառի: Այդպիսիներից է, օրինակ, «Այս կեանքս է երազ նման» տողով սկսուած չարքը,[4] որ լի է բարոյակրթական խրատներով. բերենք դրանից հետեւեալներն իբրեւ օրինակ.

Ճանապարհ անբիծ գնայ.
Որ չտիրէ տանջանքն անվախճան.
Մի՛ խաբիր սնոտի սիրով,
Որ խաւար բերէ հոգեկան:
Ցիմար գինին չէ՛ բարի,
Նայ է ամէն մեղաց բանալի.
Նըման այնոր մի՛ լինիր,
Որ չափէ ղքամին ի սարի:
Շատ ապրելըն չէ պարծանք.
Պատասխանն իրաւ կու պիտի, եւ այլն:[5]

---

1 Ֆրիկ, Բանաստեղծութիւններ, Երեւան, 1941, էջ 218 եւ հտ.:

2 Յ. Տաշեան. Ուսումն. Ստ. Կաղ. Վարուց Աղեքս. 119 եւ հտ. «Հիւանդին Աստուած է դեղ», նաեւ Կ. Կոստ., Գր. Աղթ., էջ 121:

3 Անդ, էջ 31. «Գեղեցիկ պատկերք ու հեր» տողով սկսուող բանքի մէջ:

4 Յիշում է Ալիշանը իր «Այրարատ» աշխատութեան մէջ, էջ 259 եւ հտն. Կեչառուքի եւ Կեչառեցու մասին գրելիս, բերելով այս առաջին տողը:

5 Անձամբ առնում եմ Հայաստանի Պետ. Ձեռագրատան (Մատենադարան) 1417 թուականին գրուած թիւ 8689 ձեռագրից, էջ 70: Սկզբից պակաս է, մի թերթ հանած

*Այս տաղից տարբեր է նոյն սկիզբն ունեցող Հետեւեալ գեղեցիկ քերթուածը մարդկային կեանքի ունայնութեան մասին.*[1]

*Այս կեանքս է յերազ նըման,*
*Զինչ զարթնու՝ լինի փոշիման.*
*Ի քուն զինքն իշխան գիտէ,*
*Երբ զարթնու՝ աղքատ է 'ւ անբան.*
*Թէ քաղցել է՝ հաց տեսնու,*
*Լըրջանայ՝ կարօտ 'ւ անպիտան:*
*Այսպէս Աղէքսանդր եղեւ,*
*Որ մտաւ ի նեղ գերեզման:*

*Աշխարհի երերուն կեանքի պատկերն ու ոչնչութիւնն է երգել Կեչառեցին նաեւ Հետեւեալ սիրուն կաֆայով.*[2]

*Այս կեանքս է ի ծով նըման*[3]*,*
*Որ մարդիկ ի ներս կու լողան.*
*Մարմինս է ի նաւ նըման,*
*Հոգիս է դանձ անմահական.*
*Միտքս է նաւավար ճարտար,*
*Որ հանէ զցամաքն յերեւան.*
*Աւա՜ղ թէ կոտրի այս նաւս,*
*Մեք ի վար մընամք փոշիման:*

*Աշխարհիս ունայնութիւնն ու մահն է ողբում նա երազի եւ մեռնող հօր պատկերով ու խրատական բովանդակութեամբ նաեւ Հետեւեալ անտիպ քերթուածի մէջ, որ բերում ենք ամբողջութեամբ.*[4]

*ՈՂԲ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ*
*ԱՍԱՑԵԱԼ Ի ԽԱՉԱՏՈՒՐ ԿԵՉԱՌԵՑՒՈՅ*

*Եղբա՛րք, ձեզ խրրատ մի տամ,*
*Մի՛ կենաք դուք չատ խոր ի քուն.*
*Զարթի՛ք եւ արթուն կացէք,*
*Խիստ ի մօտ եմք յօրն ի մահուն:*
*Աշխարհս է յերազ նըման,*
*Զինչ լինի մէկ մ՝ անուշ ի քուն.*
*Եւ ի քուն լինելն ի ներս՝*
*Գանձ դըտաւ անթիւ եւ անհուն.*
*Խընդալուն ցընծայր ի սիրտն՝*
*Եւ ուրախ էր գանձին սիրուն.*

լինելով. նոյնի այբբենական կարգով սկզբից սկսած («Այս կեանքս է երազ նման») կայ թիւ 7709 ձեռագրի մէջ, էջ 153 ա:

1 Կ. Կոստ. Գր. Աղթ., էջ 125. Տաշեան, Ուսումն., էջ 127, հեղինակը Կեչառեցին է:

2 Կ. Կոստ., Աղթ., էջ 115. տե՛ս եւ Տաշեան, Մ. Կալ. Ուսումն., էջ 119 եւ հտ.:

3 Պետ. Ձեռագրատուն, թիւ 7039 ձեռ. էջ 156 ունի «Աշխարհըս է ի ծով նըման»:

4 Առնում եմ Պետ. Ձեռ. վերեւում յիշուած թիւ 8689 ձեռագրից, էջ 70 եւ հտ.:

Եւ հանց համարէր յիւր միտքն,
Թէ լինիմ իշխան մեծատուն:
Երբ որ ի քընոյն զարթեաւ
Եւ տեսաւ որ է՛ր սուտ ի քուն,
Յայնժամ փոշիման դարձաւ
Ի վերայ իւր շատ խընդալուն:[1]
Յորժամ հրամայէ Աստուած,
Որ խընդիր գան մարդուն հոգւոյն՝
Պահիկ մը դադար չի տան,
Որ տեսնու զորդիքն իւր սիրուն:
Զաչերն ողորմուկ ածէ
Եւ նայի ի դէմ սիրելնուն.
Ի ճարկէ ճարակ ընկնի,
Զի գըտնու հնար զերծանելուն.
Հառաչէ սըտէն ի վեր
Ու կոչէ զմայր տղեկներուն:
Ու հանց պատասխան տայ իւրն.
Որ նուաղի ի խեղճ յասելուն:
«Քո կէս մարմընոյդ եմ ես,
Որ կ՚անցնիմ ի ներքեւ հողուն:
Տըղա՛յք, ձեր ծընօղքն եմ ես,
Որ կ՚երթամ 'ւ այլ ոչ գամ ի տուն:
Հիմիկ դուք ձեզ պէտ արէք,
Թողէ՛ք զչարն գնացէք հետ բարուն:
Զարին ատեցող լերուք,
Որ չլինիք բաժին դեհենուն.
Բարեացըն սիրող լերուք,
Գործեցէք 'ւ արէք ձեզ անուն.
Գիտեմ՝ քանի որ ապրիք,
Վերջք մահ է ձեզի գալուն»:

Ձեռագիրների մէջ կան Խաչատուր Կեչառեցու անունով եւ ուրիշ բանաստեղծութիւններ, այսպէս, օրինակ՝ հետեւեալները հայերէնի չափով. «Տաղ ի Խաչատուր Կեչառացուէ՝ Ես եմ կորուսեալ ոչխար, մոլորեալ ի սուրբ քո հօտէն»,[2] որ ունի կրօնական խրատական բովանդակութիւն, աղօթախառըն: Նաեւ «Խաչատուր Կեչառեցւոյ ասաց[եալ] տաղ ոգէշահ եւ պիտանի՝ Թէ մարդ ես եւ միտ ունիս՝ ես տամ ձեզ (քեզ) խրատ մի քանի»:[3]

Բացի այսպիսի ոգեշահ, խրատական քերթուածներից՝ գտնում ենք նաեւ «Վարդ ու պլպուլի» մի վէպ[4] նոյնիսկ խառն թուրքերէն տնով. «Ի

1 Վերջին 12 տողերը տե՛ս «Արարատ» ամսագիր, 1918, էջ 250, իբր Ցրիկի:
2 Վերեւում յիշուած թիւ 8689 ձեռ., էջ 69 բ.:
3 Տես. Ձեռագրատուն, թիւ 7709 ձեռ., էջ 149 բ. վերջին երկուսը յիշում է եւ Ալիշանը «Այրարատի» մէջ, էջ 259 եւ հտն.:
4 Տես. Ձեռագրատուն, թիւ 1636 ձեռ., էջ 35 բ. առնում եմ անձամբ:

Խաչատուր վարդապետէ ասացեալ Կեչառեցւէ»: Սկսում է այսպէս. «Ցորժամ եղեւ գարուն, եկ պիւլպիւլն այգին. Տեսեալ ըզթուփ վարդին ունայն ի նըմին, Տըրտմեցաւ դառնագին, Արտասուէր ուժգին. զի ոչ եգիտ անդէն ըզիւր սիրելին». [յաջորդում է մի թուրքերէն տուն. եւ շարունակութիւնը հայերէն]: «Ասէ ցայգեգործն. «Եղբա՛յր սիրելի, ո՞ւր է վարդըս պայծառ, զոր աստէն թողի. Միթէ տեսեալ ես դու. տուր պատասխանի, թէ ով տարաւ զնա արար զիս գերի», եւ այլն: Կասկածելի է, թէ այս տաղը Կեչառեցունը լինի:

5. «Բարանութիւնք ի մահն Աղեքսանդրի»: — Մակեդոնացի աշխարհակալի պատմութեան վերջում դրուած են Կեչառեցու չորս բարանութիւններ, որոնցից յետոյ դրեթէ բոլոր ձեռագիրների մէջ կայ այս յիշատակարանը. «Որք լսէք զաղիողորմ բարանութիւնս՝ զյարմարող սորա զԽաչատուր Կեչառուեցիս յիշեցէք ի Քրիստոս»:[1] Դրանից յետոյ կայ մի հինգերորդ բարանութիւն եւս խրատական բովանդակութեամբ, որ ոչ անհիմն կերպով Կեչառեցունը չի համարւում: Առաջին չորս բարանութիւնները ողբեր են՝ Ալեքսանդրի, նրա մօր, նրա կնոջ եւ նրա նախարարների բերանից ասուած: Դրանք մեր աշխարհիկ պերճախօսութեան լաւագոյն օրինակներից են, չորսն էլ իսկական գեղեցիկ յօրինուածքներ, որոնց մէջ փայլում է հեղինակի ճարտասանական արուեստը: Ի զուր չէ, որ Ստեփաննոս Օրբելեանը Կեչառեցուն անուանել է «անյաղթ հռետոր շնորհօք ծաղկեալ», «հոգւով լցեալ», «գովաբանեալ», այլեւ «շնորհազարդ»: Լեզուն հին հայերէն (գրաբար) է, եւ ոչ թէ ժամանակի այն խօսակցական լեզուն, միջին հայերէնը, որով յօրինուած են Կեչառեցու կաֆաները: Այն դարում միջին հայերէնը գործածում էին բանաստեղծութեան համար, իսկ ճառեր եւ այլն յօրինում էին գրաբար, ինչպէս, օրինակ, Յովհաննէս Երզնկացին, որ մեծ յաջողութեամբ ե՛ւ գրաբար է գրում, ե՛ւ միջին հայերէն: Նոյն յաջողութիւնն այս երկու լեզուի նկատմամբ ունի նաեւ Խաչատուր Կեչառեցին:

Բարանութիւնների նիւթի համար՝ հեղինակը բնականաբար օգտուել է «Ալեքսանդրի Պատմութիւնից»: Սրա թարգմանութիւնից ազդուած է նաեւ լեզուի նկատմամբ, եւ այս շատ հասկանալի է, քանի որ նա շատ զբաղուել է այդ գրքով եւ կաֆաները յօրինելիս էլ նմանել է դրան:

Բարանութիւնների մէջ գտնում ենք մի երկու հեթանոսական հասկացութիւններ եւ աստուածների յիշատակութիւն. բայց վերջինս ոչ իբրեւ մի ձեւ պատկերաւորութեան համար, ինչպէս յաճախ վարուել են կեղծ-դասական գրողները եւ նոյնիսկ մեր յայտնի բանաստեղծները:[2] Այդ մասամբ հետեւանք էր հին յունական գրականութեան ծանօթութեանը, որ սկսուել էր արդէն 11-րդ դարում: Գրիգոր Մագիստրոսը շատ սիրում է այդ կիրառութիւնը, երբեմն «պերճանալու», այսինքն պարծանքով բան ծախելու նպա-

1 Յ. Տաշեան, Ուսում. Ստ. Կաղ., էջ 107:

2 Այսպէս, օրինակ, երբ Յովհ. Յովհաննիսեանը գրում է՝

Երբ մատաղ մուսաս ժպիտն երեսին
Առաջին անգամ ինձ երեւեցաւ,
Նա գեղեցկութեան սիրոյ պատկերին
Երկրպագելու ինձ պատուէր տուաւ:

տակով: Այսպիսի «պերճանքից», սակայն, հեռու է Կեչառեցին․ նա մի երկու յոյն հեթանոսական անուններ մէջ է բերում սակաւաթիւ անգամներ, այն էլ մեծ մասամբ հետեւելով «Աղեքսանդրի Պատմութեանը»: Շատ բնական է հնչում, օրինակ, լսել Մակեդոնացի հերոսի կամ նրա մօր բերանից իրենց աստուածների անունները: Եւ այս բարձրացնում է մեր հռետորի հասկացութիւնն իր արուեստի մասին․ նա ողբացողներին իրենց խօսքն ասել է տալիս իրենց դարին եւ հաւատալիքներին համեմատ, ինչպէս մեր օրով վարւում են պատմական վէպեր գրողները: Բացի այդ՝ «շնորհօք ծաղկեալ» հռետորը բարառնութիւններից իւրաքանչիւրի մէջ մեծ հմտութեամբ դրել է նրանց ասողի վիճակին ու կեանքին համապատասխան բովանդակութիւն:

Առաջին բարառնութեան մէջ Աղեքսանդրի բերանով մանրամասն նկարագրուած է ուժեղ, առոյգ, բազմայաղթ երիտասարդի մահացման աղէտը «ի հիւանդութեանն իւրում ըմբռնեալ դեղով»: Նա իբրեւ դաւաճանութեան զոհ, թունաւորուած լինելով, կռւում է մահուան դէմ: Կեչառեցին այնպէս շնորհալի է յօրինած, որ այդ նրա հոգեւարքը կարդալիս՝ մարդ խղճում է նրան, այն դժբախտ հերոսին: «Զիարդ էի կամ յո՛րպիսի հասի տառապանս», ասում է նա, որ կարծում էին, թէ Ամոնից կամ Արամազդից սերուած լինելով՝ անմահ պիտի լինէր, «եւ այժմ յիմարեալ՝ անճողոպրելի ի մահուանէ, որ յաղթէ յաղթողաց»: Նա մտաբերում է իր արարքները՝ սկսած արբուն հասակից, եւ վերջը տուայտուած՝ ասում է․ «Արդ որ այսքան հզօր եւ յաղթական փառաց հասայ, արդ այժմ կա՛մ տարաբերեալ ծփմամբ կոհակօք ի մահիճս մինակն եւ մահահրաւէր: Տեսակս իմ ցանկալի՝ սեւացեալ, թխացեալ քան զքարինս եթովպական․ հասակս իմ պանծալի՝ գթատեալ ի վայելչալի պերճութեանց․ գլուխ իմ ընդդրկեալ ծնգեալ իբրեւ ըղհասկ՝ որ հասանէ ի մանդաղս մահու․ ճակատ իմ լիալիր եւ մաքուր՝ ծրաբեալ եւ պատեալ ի վարշամակս դեղոյ․ աչերս իմ ծովածաւալ ողորմանկատ, եւ քաղցրահայեաց՝ կաչկանդեալ եւ խիեալ մածմամբ՝ իբր խորդանց և ջրջլիկանաց․ վարս եւ հեր գլխոյ իմոյ փետեալ ցամաքեալ իբր դմանուչակ գարնայնոյ յերկս աւուրս սպառելով»: Այսպէս եւ բերանն ու լեզուն, ձեռքերն ու մէջքը եւ ոտներն ինչպիսի են եղել եւ են: Նա, ինչպէս յաճախ անում են մեռնողները, վերջը մտաբերում է իր պատանութիւնը, երբ Ստագիրացու (Արիստոտէլի) մօտ ուսում էր առնում, փիլիսոփայութիւն սովորում, ամէն ինչի մասին խոկալով եւ գիտութիւնների ու արուեստների մէջ խորանալով․ «յորժամ ծաւալէաք ի ծաղիկ բուրաստանաց իմաստութեանն, ի գիտութիւն գոյից եւ ի ծանօթութիւն աստուածայնոց եւ մարդկային իրողութեանց․․․ Իսկ այժմ յիմարեալ անասնաբար, ոչ կարել գիտել զգիարդն․ բայց զայս միայն՝ զի բաղկացեալ ի քառից տարերց ի նոյն իսկ լուծանիմ․ զի ինքն միայն է անմահ որ ամենից տիրէ»:—Ահա՛ հին հեթանոս իմաստասէրի եզրակացութիւնը մարդու եւ նրա մահուան մասին․ նա բաղկացած է չորս տարրներից, մահանալիս լուծւում է նոյն տարրներին: Չկայ նրա համար անմահութիւն․ միայն ինքն Աստուած է անմահ:

Երկրորդ բարառնութեան մէջ ողբագին խօսում է աշխարհակալի մայրը․ «Լացէ՛ք զիս, մա՛րք մանկազունից միամօր զաւակաց․․․ զի ոգիս թռեաւ եւ շունչս ել արտաքս․ իսկ մարմին թշուառականիս առաջելաբար

հրՋէր, դիակիր լինելով տատանեալ կենաց իմոց: Արեւն իմ էանց եւ սպառեաց լուսինն լրացեալ. պարք զօրու աստեղացն ինձ թօթափեցան, եւ խաւարեցան տեսլարանս ի հայեցուածէ»: Նա մտաբերում է իր յղացումն Ամոնից, ըստ եգիպտական մարգարէի ասելուն. յիշում է իր որդու սխրագործութիւնները եւ աւելացնում. «Եւ ես կարծէի զիս մայր կայսեր եւ ինքնակալի. այժմ մեռելոյ մայր... Մեռանիմ ընդ իմ մեռելոյդ. կործանիմ ընդ կործանելոյդ. նուաղիմ ընդ ոգեւարիդ...»: Խոր ցաւում է, որ որդին հեռացել է Մակեդոնիայից, եւ ինքն այլեւս չի տեսել նրան: «Ծագեցար իբր արուսեակ, եւ ցնդեցար նման մրրկի. գոչեցեր ամպօք իբր առիւծ, եւ տկարացար զինչ սարդի ոստայն. ծաղկեցար իբր զգարուն, եւ խորշակահար եղեր թարշամեալ, որ բազումք յինէն դարհուրէին, այժմ ես ի բազմաց կործանիմ»:

Նա կին է, որդեկորոյս մայր՝ զրկուած եւ անոք, եւ իբրեւ կին եւ մայր էլ վերջացնում է իր ողբը. «Ուրեմն յաղթեցին ինձ անէծք մօրն Դարեհի կամ ծնողին Պաւրոսի արքային հնդկաց, որ ես այս թշուառութեանս հանդիպեցայ»: Կատարուել է Ալեքսանդրի կողմից սպանուածների մայրերի անէծքը, որ տուել են Ալեքսանդրի մօրը:

Շատ աւելի թշուառ է Ալեքսանդրի մանկամարդ կինը՝ Հռոքսիանէ, Դարեհի դուստրը, որ սրտառուչ կերպով ողբում է իր հիքութիւնը երկու կողմից. «Դարեհ չէ ի միջի հայրն իմ հուչակաւոր, եւ Աղեքսանդրէ բարձաւ ի միջոյ... տուն եւ հօր իմոյ քայքայեալ ցրուեցան, եւ ապարանք առն իմոյ մեծապէս տատանեցան, իսկ ես հոսայ իբրեւ զջուր, կոխան եղէ իբրեւ զհող անպիտան... Ո՞յղպէս առես զիս յուսոյդ ի ձեռանէ հօր իմոյ, տէ՛ր իմ Աղեքսանդրէ, զի եւ աւուր միոյ տեսլեան երեսաց քոց ոչ եղէ արժանի. արարեր զիս դշխոյ եւ թագուհի, եւ քոյին սոսկալի սիրոյդ ես ոչ եղէ արժանի. որբ էի ի ծնողաց, արդ այրի եղէ ի գլխոյ: Կարօտիմ մահճիդ, դիրկս արկանեմ տապանիդ, խոնարհիմ քո դարչապարիդ, յանձն առնեմ զոգիս քում ոգւոյդ»: Սա էլ իր ողբը հեծեծելով վերջացնում է իբրեւ հին արեւելեան թագաւորի մի ամուսին. «Զի որպէս հանդերձեալ ես յաստուածոցն խառնիլ երամս, այսպէս եւ զիս արա գերեզմանակից եւ մահակից. զի կին կայսեր ոչ պարտ եւ պատշաճ է զուգել ընդ ումեք»:

Թողնում ենք նախարարների ողբն ու կոծը, որի ժամանակ խօսքերի փոխանակութիւն է լինում նրանց եւ Աղեքսանդրի միջեւ:

Խաչատուր Կեչառեցու գրիչը թռիչք ու թափ է տուել այս ողբերը յօրինելիս: Ծաղկալից ու շքեղ է նրա ոճը պատկերաւոր արտայայտութիւններով, միանգամայն եւ թեթեւ, պարզ ու յստակ: Նա կարողացել է թափանցել իր բարառնութիւններն ասողների հոգեկան վիճակի մէջ եւ իր հոգով անց կացնելով նրանց զգացմունքը՝ տալ մեզ այն՝ նրանց վիճակի համապատասխան լիրիզմով: Երբեմն կարծես նա բանաստեղծութիւն է յօրինում երկատող տներով՝

Տուն հօր իմոյ քայքայեալ ցրուեցան,
Եւ ապարանք առն իմոյ մեծապէս տատանեցան...

Այսպէս վարուել են նշանաւոր հռետորները. եւ դրանով էլ մեծ ազդեցութիւն են գործել ունկնդիրների վրայ: Կեչառեցին էլ իր այս երկերով

հանդիսանում է իբրեւ աչքի ընկնող մի հռետոր, եւ կարծում եմ, որ նա իբրեւ քերթող էլ աւելի պատուաւոր տեղ կը բռնէր մեր հին գրականութեան մէջ, եթէ ունենայինք նրա բոլոր երկերը: Բայց եւ այնպէս նշանաւոր հռետորները միշտ նուազ բանաստեղծ են, քան ճարտասան:

Տե՛ս երկրորդ յաւելուած՝ «Բարառնութիւնների հեղինակը»:

## ՖՐԻԿ

1. Գրականութիւն:— Վերջերս շատ խօսուեց, թէ Ֆրիկի նման բանաստեղծ ենք ունեցել եւ չենք տպագրել նրա երկերը, եւ նոյնիսկ իբր դիտմամբ թաքցրել են այն, եւ Ֆրիկն անյայտ է մնացել: Մինչդեռ իրականութիւնն այն է, որ այս բանաստեղծը շատ լաւ ծանօթ է եղել հայոց հին գրականութեամբ հետաքրքրուող ու պարապող մարդկանց: Սկսած 1513 թուականից, «Մեղապարտ Յակոբի» տպարանից, Ֆրիկի այս կամ այն քերթուածները գտնւում են զանազան ժողովածուների կամ պարբերական հրատարակութիւնների մէջ: Դեռ 1876 թ. Երուսաղէմի հայոց վանքի «Սիոն» լրագրի մէջ տպագրուած են սոցիալական խնդիրների տեսակէտով կարեւոր քերթուածները՝ «Վասն թալէհի եւ բրջի» եւ «Ընդդէմ Ֆալաքի» («Է՜յ չարխ, երբ ծախս մարդոյն»): Տփխիսում 1882 թ. տպուած է վարդապետ Տեւկանցի շատ ծանօթ «Հայերգ» ժողովածուն, որի մէջ եւ Ֆրիկի նշանաւոր «Գանգատը»՝ «Աստուած արդար եւ յիրաւի», այլեւ ուրիշ երեք բանաստեղծութիւնները: Ֆրիկից հրատարակութիւններ են եղել եւ յետոյ՝ 1885, 1896, 1905 թուականներին, ինչպէս եւ 1912 թ. «Հայ էջեր» ժողովածուի մէջ՝ վեց քերթուած: Տպուել են եւ թարգմանութիւններ Ֆրիկից՝ ֆրանսերէն եւ ռուսերէն լեզուով եւ քննադատական յօդուածներ կամ ակնարկներ նրա մասին: Արդարեւ չունենք Ֆրիկի բոլոր կամ ստուար թուով տաղերի հրատարակութիւն մի գրքի մէջ, բայց միայն այս սիրուած ու ժողովրդական բանաստեղծի քերթուածները չեն եղել այդպիսի վիճակի մէջ: Պատճառն այն է, որ սակաւ մարդիկ մեզնում հնարաւորութիւն են ունեցել մեր հին գրականութեամբ պարապելու, եւ աւելի եւս քչերը միջոց են ունեցել ձեռագիրները պրպտելու, նրանցից ժողովելու այս կամ այն բանաստեղծի երկերը եւ տպագրել տալու: Չպիտի մոռանալ եւ այն, որ դրանք ցրուած են ձեռագիրների մէջ, որոնք գտնւում են այլ եւ այլ մատենադարաններում, այն էլ աշխարհի զանազան կողմերում: Մեր մի շարք հին հեղինակները դեռ սպասում են իրենց երկերի հրատարակութեանն եւ ուսումնասիրութեանը. Ֆրիկն այդ նկատմամբ աւելի բախտաւոր է եղել. Նրա մասին խօսուել է եւ դասախօսութիւնների մէջ:[1]

---

1 Տողերիս գրողն էլ նրա մասին խօսել է Թիֆլիսում, Հայ Գրողների Կովկասեան Ընկերութեան հրաւէրով 1916 թ. արած դասախօսութեան ժամանակ՝ «Ընդհանուր տեսութիւն Հայոց հին բանաստեղծութեան», որ եւ յաջորդ տարում տպագրուել է Թիֆլիսում: Նոյն դասախօսութիւնը նա կատարել է նաեւ Բաքու քաղաքում: Նա 1917 թ. գարնանը, դարձեալ Հայ Գրողների Ընկերութեան հրաւէրով, դասախօսել է Թիֆլիսում «Հայոց միջնադարեան տաղերը եւ սոցիալական յարաբերութիւնը նրանց մէջ», որ եւ յետոյ տպագրուել է Երեւանում: Այս դասախօսութեան ժամանակ խօսուել է եւ Ֆրիկի մասին:

Այսպիսի գրութեան մէջ էր, եթէ կարելի է այսպէս ասել, «Փրիկագիտութիւնը», երբ 1918 թ․ էջմիածնի «Արարատ» ամսագրի մէջ լոյս տեսաւ մի յօդուած՝ «Մոռացուած մի հայ երգիչ» վերնագրով:[1] «Մոռացուածը» բնաւ մոռացուած չէր․ ինքը հեղինակն իր յօդուածի մէջ բաւական մանրամասն բերել է, ինչ որ իր գրուածքից առաջ տպուած է եղել Ֆրիկից եւ սրա մասին:[2] Այդ յօդուածը մի ուսումնասիրութիւն էր Ֆրիկի եւ առանձնապէս նրա ապրած ժամանակի մասին․ դա պիտի լինէր առաջաբան այն հրատարակութեան, որ ձեռնարկել էր հեղինակը: Նա էջմիածնի, Օքսֆորդի, Լոնդոնի, Պարիզի, Վիեննայի, Երուսաղէմի, Կոստանդնուպոլսի (Անտոնեան) մատենադարանների ձեռագիրներից հաւաքել էր Ֆրիկի երկերն իրենց այլ ընթերցուածներով հանդերձ եւ պատրաստել տպագրութեան եւ սկսել էր նոյնիսկ տպագրել, բայց իրենից անկախ պատճառով գլուխ չեկաւ այդ գործը: Հետագայում եւս 1927 թ․ փորձ եղաւ հեղինակի թոյլտուութեամբ Երեւանում տպագրելու նրա ժողովածուն իր առաջաբանով հանդերձ, բայց դարձեալ անկատար մնաց այդ: Վերջապէս նրա ժողովածուն լոյս տեսաւ 1941 թ․, բայց յայտնի չէ, թէ արդեօք ժողովածուի իրեն տպագրութեան համար պատրաստած գործի՞ց, թէ՞ սրա նախնականից:[3]

2․ Կենսագրութիւն:— Ֆրիկի կենսագրութեան միակ աղբիւրը նրա բանաստեղծութիւններն են: Նրա երկերի լեզուն միջին հայերէնն է, բայց նա լեզուի հետ բաւական ազատ է վարւում: Նրա գործածած բազմաթիւ խօսքի դարձուածներն ու լեզուական ձեւերը նկատի ունենալով՝ հաւանական է ենթադրել, որ նա եղել է Արեւելեան Հայաստանից, կամ ապրել ու գործել է աւելի այնտեղ, բայց ոչ թէ առանձնապէս Սիւնիքում, կամ Կիլիկիայում, ինչպէս կարծել են:

Կարելի է որոշել նրա մի քանի բանքերի գրութեան տարիները եւ սրանցով՝ դրանց հեղինակի ծննդեան եւ մահուան թուականները՝ մօտաւոր հաշուով: Նա ծնուել է թաթարաց արշաւանքի սկզբներում, շուրջ 1236 թուականին, «Ընդդէմ Ֆալաքին» քերթուածը յօրինել է ոչ առաջ քան 1286 թուականը եւ հաւանօրէն հէնց այս թուականին․ «Վասն Արղուն ղանին եւ Բուղային» երկը յօրինուած է 1289 թուականից ոչ առաջ, ամենայն հաւանականութեամբ, հէնց այս թուականին, իսկ «Գանգատ» քերթուածը՝ հաւաստի 1295 թուականին: Այս վերջին քերթուածը յօրինելուց յետոյ՝ դեռ նա

1 «Արարատ» ամսագիր, Էջմիածին, 1918, էջ 64–88, 171–203, «Մոռացուած մի Հայ երգիչ», Տիրայր եպիսկոպոսի: Այս յօդուածի մէջ կան չհասկացած կամ սխալ հասկացած կտորներից հանած եզրակացութիւններ, «վարկածներ», որոնց մասին չենք խօսիլ, զի բոլորովին անարժէք են: Բայց մնացածով մի կարեւոր գործ է դա, եւ այստեղ նկատի ունենք այդ:

2 Դրանից օգտուել ենք վերեւում: Աւելի մանրամասնութիւն ձեռք բերել ցանկացողը կարող է դիմել յօդուածին:

3 Ֆրիկ, Բանաստեղծութիւններ, Ժողովածուն՝ համեմատութիւններով, ծանօթագրութիւններով եւ բառարանով․ կազմեցին ֆիլ․ գիտ․ թեկնածու Մ․ Մկրեան եւ Ե․ Թորոսեան, խմբագրութեամբ Յ․ Մելիքեանի, Մ․ Մկրեանի, Հ․ Սիրասի, Արմֆանի հրատարակչութիւն, Երեւան, 1941: Այս հրատարակութիւնը, ցաւօք, անկրիտիկա—անքննադատ է, լի վրիպակներով, թերի բառարանով, առանց բացատրական ծանօթութիւնների:

ապրել է շատ տարիներ եւ հասել է լի ծերութեան եւ վախճանուել է 14-րդ դարի առաջին կամ երկրորդ տասնամեակին։

Այս թուականների մասին տե՛ս «Երրորդ յաւելուած», «Ֆրիկի կենսագրութեան շուրջը»։

Չի հիմնաւորուած այն կարծիքը, թէ «Ֆրիկ» անունը բանաստեղծի իսկական անունը չէ, այլ «բանաստեղծական անունը» կամ կեղծ անունը։ Այդ պարզապէս մի անճանաչուած նուազական ձեւ է, թերեւս, ինչպէս կարծել են, Ֆրեդերիկ անուան։ Ղ. Ալիշանը[1] գրում է. «Բարակ զգացման եւ ուղիղ մտաց տէր, նաեւ ճարտար տաղաչափ պէսպէս վանկերով՝ նորանուն քերդող մը կայ՝ Ֆրիկ, որդի Թագվոչի եղբօրորդի Դողոնայի, որուն ժամանակն որոշակի յայտ չէ, բայց այս (ԺԵ·) դարէս եաք այլ չէ. գրուածքն թարոյական խրատք են, սակայն սրտով սփռած»։ Պակաս «նորանուն» չեն Ֆրիկի հայրն ու հօրեղբայրը, որոնց մասին ոչ մի տեղեկութիւն չի հաղորդել Ալիշանը, եւ ուրիշներն էլ չեն գտել ցայժմ։

Ֆրիկն իր տաղերի մէջ ընդհանրապէս յիշել է իր անունը, եւ տաղերի վերնագիրների մէջ էլ սովորաբար կայ Ֆրիկ անունը. բայց չնայելով դրան՝ որոշ չափով անորոշութիւն կայ այս կամ այն ոտանաւորների հեղինակի վերաբերմամբ, որովհետեւ մի վատ սովորութիւն է եղել հեղինակի անուան փոխանակ ուրիշ անուն դնելու։ Դրա դէմ բողոքելով իր մի քերթուածի[2] վերջում գրում է մեր բանաստեղծը.

Ով զիմ անունըս խափանէ,
Զիւրըն գրրէ պարծենալոյ.
Աստէնս չառնէ ինքն թողութիւն,
Անդէն զըրկի ինքն ի բարոյ։

Կարեւորն այն չէ, թէ Ֆրիկն աշխարհական է եղել[3], այն էլ, ինչպէս

---

1 Ղ. Մ. Ալիշան, Յուշիկք հայրենեաց, հատ. Բ., Վենետիկ, 1870, էջ 125. «Ազգային փիպասանութիւն» յօդուածի մէջ։

2 «Արարատ», 1918, էջ 76. տես՝ Ֆրիկի «Բանաստեղծութիւնները», էջ 95. «Նորին Ֆրկանն ասացեալ», «Է՛ անօրէն եւ անառակ» քերթուածը։

3 «Ֆրիկը եղել է աշխարհական. այդ մասին ինքը հեղինակը մի քանի յիշատակութիւններ է արել իր բանաստեղծութիւնների վերնագրերում. այսպէս, օրինակ՝ մի վերնագիր. «Այլ տաղ վասն բարեգործութեան մարդկան ի Ֆրիկէ աշխարհականէ ասացեալ». կամ մի ուրիշը. «Ֆրիկ ճարտար աշխարհականէ» (Ֆրիկ, Բանաստ. Մ. Մկրեան, էջ 9)։

Ֆրիկի աշխարհական լինելու մասին էլ առաջին անգամ գրուած է Տիրայր եպս.-ի շատ անգամ յիշուած յօդուածի մէջ։ Նա իր կարծիքը հիմնաւորել է վերեւում բերուած առաջին վերնագրի վրայ, որ այդպէս կայ այդ տաղի հինգ ձեռագիր օրինակներից միայն մէկի մէջ կարմրագրով գրուած, «այժմ եղծուած, հազիւ ընթեռնելի»։ Բայց այս յօդուածագիրը չի նկատել, որ այնտեղ գրուած է ոչ թէ «ի Ֆրիկէ», այլ «ի Ֆիրիկէ»։ Այսպէս է տպուած նաեւ Ֆրիկի Բանաստ. էջ 89 նոյն քերթուածի («Իմ սիրտ, վատին մի՛ լսել») այլ ընթերցուածների մէջ։ Երկրորդ վերնագիրն էլ, որ բերել է Մ. Մկրեանը, դարձեալ այդ տաղի չորս թէ հինգ ձեռագիրներից մէկի մէջ միայն կայ այդպէս։ Տե՛ս Ֆրիկ, Բանաստ., էջ 95, «Է՛ անօրէն եւ անառակ» քերթուածի այլ ընթերցուածների մէջ։ Սակայն սրա համար էլ պէտք է նկատեմ, որ Հայաստանի Պետական Թանգարանի համար 383 ձեռագրից (որից առնուած է տպուած քերթուածը) ես 1926 թ. արտագրած ունիմ այսպէս. «եր. 272. վերնագիր՝ «Ֆիրիկ ճարտար աշխարհականէ»։ Շատ պարզ երեւում է, որ այս երկրորդ «վերնագիր» ասածը ոչ թէ հեղինակի

ենթադրել են, անգրագէտ եւ անուս, այլ թէ նա ուսում է ստացել, ե՛րբ է մտել արդեօք հոգեւորական դասի մէջ եւ բանաստեղծութիւնները կեանքի ո՛ր շրջանում եւ ի՛նչպէս է յօրինել: Նա իր համար գրում է.[1]

Յիմ հօրէն զայս լսեցի,
Թէ Քրիստոսի ըղքեղ կուտամ:

Այս ցոյց է տալիս, որ հայրն ուզեցել է որդուն հոգեւորական կոչումը նուիրել: Այսպիսի դէպքում նրան մանկական հասակից արդէն, ըստ ժամանակի սովորութեան, պիտի սկսէին կրօնական կրթութիւն տալ, ուրեմն եւ գրագիտութիւն սովորեցնել: Մի տեղ[2] նա գրել է.

Ի մանկութենէ ի վեր
Զիս ուսմա՛ն խոցըն կու մաշէ:

Այս էլ նշանակում է, որ նա մանկութիւնից սկսած սիրել է ուսումը, եւ պարապել դրանով: Եւ իսկապէս, նրա բանաստեղծութիւններից տեսնում ենք, որ նա մեծ ծանօթութիւն ունի Ս. Գրքի եւ առհասարակ կրօնական խնդիրների. մեծ հմտութիւն Աւետարանին, տալիս է Ս. Գրքի բովանդակութեան համեմատ խրատներ, ծանօթ է նաեւ ուրիշ երկերի, ինչպէս՝ Եփրեմի ճառեր, Վարք սրբոց. շարադրում է դաւանաբանական քերթուածներ, աղօթելով հանդերձ, կամ Քրիստոսի տնօրինականքի պատմութեամբ: Եւ, վերջապէս, նա մէկ մէկ յօրինում է եւ գրաբար լեզուով, յաճախ կրօնական երկերի մէջ ընդունուած սովորական դարձուածներով ու պատկերներով եւ բանաձեւերով, ինչպէս եւ բազմաթիւ ակնարկներով, որոնք վերաբերում են եկեղեցու ընդունած հաւատի խնդիրներին: Կարելի չէ ասել, թէ այսպիսի գրուածքներն անուս մարդու են, եւ կամ թէ այդ ամէնը նա իւրացրել է եկեղեցում ժամերգութեան ժամանակ՝ ընթերցուածները լսելով կամ այլուր ուրիշների կարդացածներին ունկնդիր լինելով: Նա ինքը կարդացել է: Երբ նա գրում է.[3]

Անալի դարձել եմ ի միտս ու անհամ,
Ո՛չ առնում ըզգըրոց ճաշակ եւ ըղհամ,—

այդ ապացոյց է, որ նա առաջ գրքեր կարդացել է եւ վայելել նրանց

գրածն է, այլ մի ուրիշ մարդու, որ դրանով ուզեցել է իր իմացած տեղեկութիւնը տալ բանաստեղծի մասին: Ապա՛ այն հանգամանքը, որ «աշխարհական» յիշատակութիւնը չորս-հինգ ձեռագիրներից միայն մէկի մէջ կայ, եւ որ երկու դէպքում էլ «Ֆրիկ» է գրուած, դեռ քննելի է դարձնում այդ երկու «վերնագիրները», թէ արդեօք հեղինա՞կն է այդպէս գրել իր համար, որ կասկածելի է: Ապա դարձեալ՝ «աշխարհական» բառը ես միայն բերուած երկու ձեռագիրների մէջ գրուած գիտեմ, եւ ոչ թէ «մի քանի», ինչպէս գրել է «Ֆրիկի Բանաստեղծութիւնը» առաջաբանի հեղինակը:

1 Ֆրիկ, Բանաստ., էջ 63. «Յիսուս անուն յիս գթացար» քերթուածի մէջ:

2 «Արարատ» ամսագիր, 1918, էջ 78. յիշուած յօդուածի մէջ: Չի ասուած, թէ ո՛ր բանքից է առնուած այդ: 1941 թուականի «Ֆրիկ, Բանաստեղծութիւններ» ժողովածուի մէջ չեն երեւում այդ երկու տողերը: Ըստ երեւոյթին [illegible] է իսկապէս ժողովածուն ամբողջապէս չի տպագրուած:

3 Բանաստեղծութիւններ, էջ 206. «Փափագել եմ ի ջուրն» քերթուածի մէջ:

*համ ու հոտը: Այս ամէնով հանդերձ՝ նրա երկերը չեն կրում հին քերթողական ուսման դրոշմ. պարզ երեւում է, որ նա չի առել վարդապետարանների մէջ ընդունուած իմաստասիրական ու հռետորական եւ սքոլաստիկ աստուածաբանական–մեկնաբանական ուսումն իր նրբամտութիւններով: Դրա համար եւ, ինչպէս երեւում է, չեն հաւատացել, թէ նա կարողանար այնպիսի բաներ յօրինել. ուստի նա ստիպուած է եղել գրելու.[1]*

*Տէր կենդանի է եւ օրհնեալ,*
*Որ չէ այլոց բանքս ասացած,*
*Զինչ ըղձաղիկ եմ ժողովել,*
*Բան զմարգրիտ պայծառ շարած:*
*Թէպէտ յերկար բան կու խաւսի,*
*Ֆրիկն ասել է ի մրտաց:*

*Ուրիշ տեղեր նա իր բանքեր յօրինելու շնորհքն Աստուծուց է համարում. օրինակ, նա ասում է.[2]*

*Գոհանամք յողորմածէն...*
*Որ զանարժանս արժանացոյց,*
*Որ հանց գոհար բան ի չար կու գայ:*

*Երեւում է, որ ծաղրել են նրա պարզաբան գրուածքները, մանաւանդ այսպիսի կրօնականները՝ «Բան մեկնութեան», «Ասացուածք ի տնօրէնութիւն փրկչին»[3], ասելով թէ նա ի՞նչ գիտէ, ե՞րբ է ուսում առել, որ այդպիսի բաներ է յօրինում: Դրա համար եւ նա շատ նուրբ կերպով հեգնում է այնպիսիներին իր «Ի ծնունդ սուրբ կուսին» քերթուածի մէջ:[4]*

*Ֆրիկն ի՞նչ հող է կամ մոխիր,*
*Որ հանց գոհար բան շարէ նա.*
*Ոչ է ծառայ վարդապետի,*
*Ոչ կարդացել է օր մի նա.*
*Ոչ[5] ի հօրէ առեալ միրաթ,*
*Ոչ Աստուծոյ տուած նորա,*
*Նա ե՞րբ կարէ հանց բան ասել,*
*Ով որ կարդայ՝ օրհնէ ըզնա:*

*Այս տողերը սխալ բացատրելով[6] եզրակացրել են, թէ Ֆրիկն իբր չէ*

---

*1 Ֆրիկ, Բանաստ., էջ 78. «Երբ քեզ խրատ էր պատրաստած» տողով սկսուած մեծ բանաստեղծութեան մէջ, բովանդակութիւնը գրքից է առած:*

*2 Անդ, էջ 50:*

*3 Ֆրիկ, Բանաստ., էջ 127, 150:*

*4 Անդ, էջ 126:*

*5 Բնագրի մէջ տպուած է «թէ», առնում եմ ըստ իմաստին այլ ընթերցուածը «ոչ»: Ապա յաջորդ տողի սկզբի «այս» բառն ուղղում եմ «ոչ» ըստ ամբողջի իմաստին. այլապէս անկապ եւ անմիտ է մնում դրա յաջորդ տողը: Եթէ «այս», այսինքն շնորհքն Աստուծուց է տրուած, ապա այլեւս կարելի չէր գրել, թէ «նա ե՞րբ կարէ հանց բան ասել»:*

*6 «Արարատ», 1918, էջ 78 եւ հտ., բայց յօդուածագիրն այս տողերի մէջ հեգնութիւն տեսնելով հանդերձ՝ տալիս է այդ սխալ բացատրութիւնը:*

ծառայել վարդապետի, հետեւաբար ուսում չի առել, նա մի օր էլ չի կարդացել, հետեւաբար եւ անգրագէտ է եղել. իբր հայրն էլ միջոց չի ունեցել, որ իր որդուն «դպրոց տար ու կարդացնէր»: Այդ տողերը, սակայն, հեգնութեամբ են ասուած. պէտք է հակառակ իմաստով հասկանալ: Ժողովրդական լեզուի մէջ շատ յաճախ հաստատական ու դրական խօսքերն ասւում են բացասական ու հարցական ձեւով: Այսպէս՝ բանաստեղծը երբ ասում է՝ «Ֆրիկն ի՞նչ հող է կամ մոխիր», նա ոչ թէ իրեն նուաստացնում է իբրեւ ինչպէս ուրիշ դէպքում,[1] այլ հեգնելով պատասխանում իրեն բամբասողներին՝ ասելով իսկապէս, թէ Ֆրիկը հող ու մոխիր հո՛ չէ, նա կարող է գոհար բաներ շարել. նա ուսում է առել վարդապետի մօտ, շատ կարդացել է, հօրից էլ միրաթ — կրթութիւն[2] է ստացել, Աստուած էլ շնորհք է տուել նրան. հետեւաբար նա կարող էր այնպիսի «բան» յօրինել, որ ով կարդայ՝ օրհնի նրան:

Ուշադիր պիտի լինել, որ խնդիրն այստեղ սովորական գրել-կարդալու կամ ուսում առնելու մասին չէ, այլ գեղեցիկ ոտանաւորներ, այն էլ ըստ ձեւի եւ ըստ բովանդակութեան «գոհար բաներ» յօրինելու: Այս բանաստեղծական շնորհքը նա, հարկաւ, վարդապետների մօտ չէր սովորել, եւ չէր էլ կարող նրանցից սովորել այն, որ բնատուր էր: Բայց այդպէս չէին հասկանում այն ժամանակի սքոլաստիկները. նրանք կարծում էին, թէ այն էլ պէտք էր դպրոցում — վարդապետարանում ուսած լինել:

Ժամանակակից բանաստեղծ Կոստանդին Երզնկացին իր մի քերթուածի սկզբում գրում է. «Ոմանք չարախօսեն զինէն վասն նախանձու, թէ որպէս խօսի սա այսպիսի բան [խօսքը ոտանաւորների մասին է], զի վարդապետի չէ աշակերտել», եւ ապա՝ բացատրում է. «ա՛յլ է աշակերտներին աշխատիւն եւ այլ է շնորհքն ի հոգւոյն»: Եւ ինքը բանաստեղծը պատմում է, թէ երբ տասնուհինգ տարեկան ժամանակ վանքում ուսում առնելիս է եղել («ի վանքն յուսումն էի»), իր մէջ զգացել է բանաստեղծելու «աստուածատուր» շնորհքը: Այսպէս եւ Ֆրիկը, որ հպարտ է իր «գոհար բաներով», անպայման ուսում առել է որեւէ վանքում կամ մի քահանայի մօտ, բայց յօրինել է բնատուր շնորհքով, որ «Աստուած տուած նրա»:

Նա յօրինել է բազմաթիւ «հայերէն բաներ», երաժշտական անխախտ ռիթմով, որ ապացոյց է, թէ նրա շնորհքներից մէկն էլ եղել է երաժշտական զգացումը: Նա հաւասար աջողութեամբ եւ գրեթէ հաւասար թւով ոտանաւորներ է յօրինել մեր երկու շատ ռիթմիկ չափերով — «հայրենի կարգով», որ է՝ 2+3+2||3+2+3 ոտքերով տողերը, եւ 4+4 յամբական տողերով. մի երեք բանը էլ ունի 3+3+2+3 պարզ ոտքերով: Այստեղ կարեւոր չի այս ոտանաւորների մասին մանրամասնել[3], միայն պիտի ասել, որ

1 Ֆրիկ. Բանաստ., էջ 119. «Բան պիտանի եւ լաւ» բանաստեղծութեան մէջ՝ «Ֆրիկն ի՞նչ հող է եւ մոխիր, որ այս բարոյս նա ցանկացաւ»:

2 «Միրաթ» բառն այսպէս «կրթութիւն» է բացատրուած («Արարատ», 1918, էջ 79):

3 Այս չափերը մանրամասն ուսումնասիրուած են սրա հեղինակի մի ուրիշ աշխատութեան մէջ. «Հայոց լեզուի տաղաչափութիւն, ուսումնասիրեց պրոֆ. դ-ր Մ. Աբեղեան, Երեւան, 1933, էջ 267—275՝ «Հայրենի կարգ», էջ 198—209՝ «Յամբական ոտանաւորներ բարդ ոտքերով» եւ էջ 240—241՝ «Անապեստեան 11-վանկանի, երրորդ ոտքը յամբ»:

Հայրենի չափի մասին տե՛ս առանձնապէս Մ. Աբեղեանի «Հին գուսանական

կան աղճատումներ, բառեր ետ ու առաջ ընկած, որով խանգարուած են չափերը:

Թէ բանաստեղծը միաժամանակ եւ երգիչ է եղել թէ չէ՝ այդ չգիտենք. մէկ քերթուածի վերնագրի մէջ կայ «երգիչ» բառը՝ «Վասն Թալէհի եւ բրջի ի Ֆրիկ երգչէ». մէջին, սակայն, չի յիշւում Ֆրիկ անունը: Իսկ վերնագիրների համար չենք կարող ապահովապէս ասել, թէ հեղինակից են ծագում: Մի քանիսի վերնագիրներն են «Տաղ» կամ «Այլ տաղ Ֆրիկանն ասացեալ»: Աւելի գործածւում է՝ «Նորին Ֆրիկանն ասացեալ բան...», կամ լոկ «Նորին Ֆրիկանն ասացեալ»: Այս «ասել» բայը չպիտի շփոթութեան մէջ ձգի. դա գործածւում է «յօրինելու» իմաստով նոյնիսկ պատմութեան համար, օրինակ՝ «Հայոց պատմութիւն ասացեալ Մովսիսի Խորենացւոյ»:

Ֆրիկն իր «բանները» կամ «բանքերը», ինչպէս աւելի յարմար է կիրառել աշխարհաբարում (սոյն բառը գործածւում է նաեւ որոշ բարբառների մէջ «բանք» կամ «բանս», նաեւ «բան» ձեւով) յօրինել է կարդալու համար եւ անձամբ գրելով: Այդ երեւում է նրանից, որ յօրինելու ժամանակ իր քերթուածն անուանում է «բան» եւ յետոյ դրա մասին գրում է՝ «ով որ կարդայ...», կամ «որ երբ կարդայ...»: Այսպէս, օրինակ, վերեւում բերուած վերջին ցիտատի մէջ: Մի ուրիշ քերթուածի մէջ եւս՝

Ով կարդայ զայս բաներս 'ւ ինքըն զըմբաղի...
Թէ քննէք զայս բաներս ի միտ 'ւ ի հոգի...
Եւ ուսիք, որ կարդայք ի մէջ ժողովի...[1]

Երբ բանաստեղծն իր երկը յօրինելիս խօսում է դրա կարդալու մասին, կը նշանակի նա յօրինում է գրելով: Ոչ մի հիմք չկայ կարծելու, թէ Ֆրիկը բերանացի յօրինելիս լինէր եւ յօրինելիս թելադրած լինէր մէկին, որ գրէր. կամ բերանացի յօրինէր եւ իրար նման եւ այնքան մեծ ու երկայն բանաստեղծութիւնները անշփոթ միտը պահէր եւ յետոյ մէկին թելադրէր, որ գրէր: Այդ հնարաւոր է միայն կարճ բանքերի ու եղանակաւոր երգերի վերաբերմամբ, այլեւ վիպական քերթուածների, որոնց մտաբերմանն օգնում է դէպքերի յաջորդութիւնը:

Թէ ե՛րբ է նա սկսել բանաստեղծել, այդ չգիտենք. նա իբրեւ քերթող աշխատել է նաեւ ալեւորութեան ու ծերութեան օրերին, ինչպէս յիշում է մի շարք երկերի մէջ, ինչպէս, օրինակ՝

...Երբ դարձաւ սեւդ ի սպիտակ:
էջ 57

Քո սեւդ ի սպիտակ դարձաւ:
էջ 86, 113

---

ժողովրդական երգեր» աշխատութեան մէջ, Երեւան, 1931. էջ 15—43. «Արտատպ. ՀԽՍՀ Պետ՝ Համալսարանի «Տեղեկագիր» թիւ 2–3, 4, 6:

1 Ֆրիկ, Բանաստ., էջ 153. «...Տնօրէնութիւն փրկչին» քերթուածի մէջ աղճատուած տող է հետեւեալը. «Աստուած օրհնէ զայսն կարդացօղն յորժամ երգէ զՖրիկն յիշեա» այլ ընթերցուածով վերականգնւում է «...որ ըզՖըրիկըս յիշէ նայ», էջ 49, «Մինչ ածէ զմահն...» քերթուածի մէջ:

Հողոյն չնորհք երետ ծերուս:
էջ 93

Թէ ինչո՛վ, ի՛նչ պարապմունքով է նա իր ապրուստը հայթայթել, այդ չի երեւում նրա բանքերից: Մի քանի անգամ նա խօսում է հարստութեան եռեւից լինելու մասին, բայց չի պարզւում, թէ արդեօք անձնապէս ի՞ր մասին է խօսում, թէ՞ իբրեւ բարոյախօս՝ ընդհանրապէս, բայց իր վրայ դարձնելով ասելիքն եւ առաջին դէմքով խօսելով, միաժամանակ իր անձնականը խառնելով հետը. այսպէս, օրինակ՝ հետեւեալների մէջ.

Շատ ոլորեցի մարդու մօրոյս...
Շատ պարծեցայ ի վերայ ոսկոյս...
էջ 92

Անշուշտ իրեն, հեղինակին են վերաբերում հետեւեալ տողերը, եթէ միայն յիշուած «Հարգայ», փարխանա՝ «Հարգայ» բառը տեղանուն է.

Անկայ ի յոսկոյ ցընոր
Ու ըղհոզոց տունըն չինեցի...
Ասցի թէ չինեմ ես բերդ
Ու քաղաք եւ դարպասընի...
Շատ մի [վար. դարգակ] դատեցայ, եղբա՛րք,
Ի Հարգայ [վար. Հարգայ.] ես շատ մի տարի.
Ասցի թ՚իմ ջանօքս առնեմ
Մեծութիւն առանց հրամանի...
էջ 42

«Հարգայ» անունը փորձել են նոյնացնել Կիլիկիայի «Հարգան» տեղանուան հետ.[1] բայց այդ դեռ կարելի չէ հաստատ համարել: Կարծում եմ պէտք է առնել աւելի շուտ «Հարգայ» փոփոխակը եւ նոյնացնել «Հազրա», շուռ տուած՝ «Հարզա» տեղանուան հետ, որ նշանաւոր կենտրոն է եղել Աղձնիքում, Թաթարաց իշխանութեան երկրում, քան թէ Կիլիկիայի մի հեռաւոր անկիւնում գտնուած մի տեղ, թաթարական տիրապետութիւնից դուրս:

Մաքուր անձնական բանաստեղծութիւն է «Ողբանք փոշիմանութեան» (էջ 25 եւ հտ.), որի մէջ կան հետեւեալ հետաքրքիր տողերը.

Բուռն եմ ածել ես աշխարհի,
Որ կու վաղեմ հետ շատ շահի.
Զինչ տէրն երետ՝ հերիք չածի,
Այլ մեծութիւն սիրտ ունէի.
Ժողովեցի շատ մի բարի,
Ըռզակ արի գնա թաթարի...
Այն բաղային եմ նըմանի,
Որ փոքր որսին ոչ հաւանի.

1 «Արարատ», 1918, էջ 86:

*Ով որ ածէ զաչքն այլ մեծի,*
*Քաղցած կենայ եւ անօթի:*
*Ահա եղաւ այնչափ տարի,*
*Որ տուն ու տեղն դեռ կու քակի.*
*Զինչ մեծամեծ վաստակ արի,*
*Ամէն դարձաւ հող 'ւ ի փոշի:*

Նա իր աշխատած հարստութիւնից զրկուել է թաթարների ձեռով կա՛մ կողոպտուելով, կա՛մ հարկահանութեամբ: Կիրակոս Գանձակեցին խօսելով իր ժամանակի ծանր հարկերի մասին՝ գրում է. «Եւ ոյր ոչ գոյր՝ զուստերս եւ զդստերսն առնուին ընդ պահանջմանն». «Որ ոչ կարէր հատուցանել զսակն՝ զմանկունս նոցա առնուին ընդ պարտուցն»:[1] Արդ՝ կարծում են, թէ Ֆրիկի որդին էլ նոյն դժբախտութիւնն է ունեցել.[2] բայց այն բանաստեղծութիւնը,[3] որի մէջ յիշատակւում է այդ, կարօտ է բանասիրական քննադատութեան:

Տե՛ս Երրորդ Յաւելուած՝ «Ֆրիկի կենսագրութեան շուրջը»:

Կենսագրական տեսակէտից շատ հետաքրքիր է մի բանը (էջ 40), որի սկիզբն է «Գնաց մանկութեան հասրաթն», բանաստեղծը խօսում է դառնացած հոգով. նա կորցրել է ամէն ինչ, ընկել է անհուն հոգսերի մէջ, չունի տուն ու տեղ, խոյսում է, ամբողջ օրը տանջւում է հարկի ձեռից —

*Գնաց մանկութեան հասրաթն*
*Ու երեկ ինձ հոգ անիհուն.*
*Զրրկած եմ երկու կենօք,*
*Վասն այնոր չեմ ելնել ի հուն:*
*Գազան 'ւ անասուն ու հաւ*
*Գէմ ունին իւրեանց տուն ու բուն.*
*Ոչ տուն ու ոչ տեղ ունիմ,*
*Կու խոցիմ զօրն ի յայն հարկուն:*
*[Վար.՝ Կու խոցիմ ի յանհաւատնուն]:*

Նա սկսել է գինու մէջ թաղել իր վիշտը, բայց քանի աւելի գինի է խմում, այնքան աւելի ծփանքի մէջ է ընկնում: Նա յոյսը կտրել է մարդկանցից, չի հաւատում, թէ որեւէ իշխան կ'օգնի իրեն, հասկանալի է՝ հարկի պարտքը տալով: Եւ վերջը մտածում է լինել, «սիրող վանքերուն», այսինքն վանական դառնալ, որպէսզի ծառայի Աստծուն, որ տէր է մարդուս «անձին ու հոգուն», եւ, եթէ աշխարհիս անցաւոր կեանքից, տուն ու տեղից զրկուած է, գոնէ անդենի կեանքի ճարն ունի: Գինու գործողութիւնը նա ուրիշ երգերի մէջ էլ յիշում է.

*Գանձով գրնած ես դու գերի,*
*Դու է՞ր խըմես զօրըն գինի:*
*էջ 28. տ. 91—92*

1 Կիր. Գանձ. Պատմ. Հայոց, Թիֆլիս, 1909, էջ 360, 349:
2 «Արարատ», 1918, էջ 83 եւ հտ.: Այստեղից եւ «Ֆրիկ, Բանաստ.», էջ 10:
3 Անդ, էջ 40 եւ հտ. «Գնաց մանկութեան հասրաթն»:

Եթէ բառացի հասկանանք, Ֆրիկը գերի է ընկել, հարկատու, թաթարների ձեռը, եւ փրկանքով գնուել, ազատուել է: Թէ նա ո՛ր տարիքին է ընկել այսպիսի դժբախտութեան մէջ, այդ դժուար է որոշել նրա բանքերով միայն: Ալեւորութեան ժամանակ նա իրեն դժբախտ է զգում մենակութիւնից:

Դու յէ՞ր կու դատիս, Ֆրիկ,
Երբ չունիս դուն դուստր ու որդիք:

էջ 85. տ. 34

Երբ նրա «սեւն սպիտակ է դարձել», արդէն յիշում է աշխարհի ունայնութեան մասին եւ մտածում.

Անմապ ա՛մ յէ՞ր կու դատիս,
Աշխարհիս երակ դու Ֆրիկ.
Ոչ տուն ու [ոչ] տեղ ունիս,
Եւ ոչ կին, ոչ դուստր եւ որդիք:
Ա՛մ երբ հանց ընկեր քո բախտն
Ու թալեհն, ա՛մ, ի՞նչ կայ հարկիք…

էջ 113, տ. 60 եւ հտն.

Ինչքան էլ «դատելու», այսինքն աշխատանք անելու մասին է գրում, բայց աղքատ է, աշխատածը, երեւի, գինու է տալիս, զգալով նոյնիսկ, որ լաւ բան չի անում.

Թէ՛ [=երանի՛ թէ] լինէր ինձ դոլուաթ եւ խելք ի բարի,
Որ կարի հա՛նց կենալ, ինչ որ կու պիտի:
Է՛, աւաղ, է՛, աւաղ, ափսոս կու լինի,
Զիմ խելաց ուժն յինէն գինին կու տանի:
Պարտական եմ հոգով, լեզուս կու կապի,
Թէ չէ՝ այլ շատ բաներ յառաջ հանէի:

էջ 153, տ. 60 եւ հտն.

Դառն է նրա վիճակը ծերութեան ժամանակ. նա իրեն բոլորովին մենակ եւ անճար է զգում.

Ոչ գիտեմ թ՝ ուր մեռանիմ,
Ոչ ոք չունիմ որ թաղէ զիս.
Ոչ ունիմ տեղ հանդըստեան,
Ոչ խընդացել եմ յորդիս…
　　Ոչ եղբայր ՚ւ ոչ զոք ունիմ,
Որ աւաղէ, ափսոսայ զիս.
Ոչ ծըլեմ, ոչ բուսանեմ,
Զերդ զաղընձած սերմ եմ կերիս:
　　Թէ ունէի ճորտ ու ծառայ,
Կամ կարեւոր յատըւորիս,
Սոքա այլ զիս ուրացան,
Եւ ատեցին զաղքատ հոգիս:

Զայս ի յիմ բախտէս ունիմ,
Որ չի նայել քաղցր աչօք յիս.
Ինձ նըման այլ չէ ծընել,
Ինչ կու նայիմ ի վերայ բանիս:

էջ 31—32, տ. 10—25

Նրա թշուառութիւնն այն աստիճանի է, որ վախենում է, թէ իրեն կարգին չթաղեն իր աղքատութեան պատճառով.

Եղո՛ւկ ու վա՛յ ինձ այս ծերիս.
Երկու կենօքըս չ՚յաջողեաց,
Այս խոց մնաց ի վերայ սրտիս:

էջ 33 եւ հտ., տ. 32—35, 55-57

Է՛, Ֆրիկ, պատրաստ կացիր,
Ի ծերութիւնդ չի գլորիս:
Այլ չունիս փող մի պահած,
Որ զքեզ թաղեն երբ մեռանիս...

էջ 32 եւ հտ., տ. 32—35, 57—61

Ապա աղաչում է Աստուծուն, որ «օրհնեալ հողը ծածկէ» իրեն: Ահա թէ ո՛րքան ծանր է եղել նրա վիճակը ծերութեան օրերին. նա սոսկում է, որ կարող է չարժանանալ նոյնիսկ կարգին թաղման, որ ամենամեծ դըժբախտութիւնն էր համարւում մինչեւ վերջերս մեր ժողովրդի մէջ:

Այսպիսի դժուար օրերին, երբ նա մենակ էր, տանջւում էր ե՛ւ նիւթապէս, ե՛ւ հոգեպէս, նա հայեացքը բնականաբար պիտի դարձնէր դէպի եղբայրանոցները, լինէր «սիրող վանքերուն» եւ այնտեղ գտնէր մխիթարութիւն: Թէ նա իրօք մտել է որեւէ վանք, այդ որոշ չի երեւում նրա բանքերից. իսկ որ նա շատ փափագել է դրան, գուցէ եւ դարձել է որեւէ վանքի միաբան, մնալով իբրեւ աշխարհական, այդ զգացւում է նրա բանաստեղծութիւններից:

Տե՛ս պարագրաֆ 8. «Հոգեշահ բանքեր եւ միստիկական ձգտում»:

Այսպէս ծանր ծերութիւն է ունեցել այս ժողովրդական բանաստեղծը, որի երկերը սիրուած են եղել եւ ամփոփուած մի տեղ «Ֆրիկգիրք» վերնագրով: Թէպէտ եւ նրա մասին չկան ուրիշներից հաղորդուած տեղեկութիւններ, բայց նրա բնաւորութիւնն ու գաղափարները լիովին ծանօթ են մեզ հէնց նրա սեփական բանքերից: Նա եղել է զգայուն սրտի տէր, դիտող ու խորհող, ոչ անտարբեր դէպի շրջապատի իրական կեանքը, կատարուած նշանաւոր եղելութիւնները: Նա անկեղծ կերպով տանջուել է հասարակական եւ ազգային թշուառ դրութիւնից. յաճախ վառուել է վրէժխնդրութեան բոցով, այնքան շատ նա ատել է ժողովրդի հարստահարիչներին: Նա առաջնորդուել է որոշ բարոյական սկզբունքներով, հարկաւ ըստ իր դարում իշխող ընդհանուր հասկացութեան եւ, ինչպէս շատերն իր ժամանակին, նա էլ տոգորուած է եղել կրօնական ձգտումով ու միստիցիզմով: Եւ նրա երկերի հիմնական մոքերը վերաբերում են բացի անձնականից նաեւ ազգային, սո-

ցիալական եւ կրօնական խնդիրների, կրօնականը, սակայն, յաճախ ընկերականի հետ շաղկապուած:

3. **Ազգային ու սոցիալական հարցեր**:— Վերածնութեան շրջանի գրականութեան կարեւոր թեմաներից են այս երկուսը: Ազգային հարցն, ինչպէս տեսել ենք, առաջին տեղն էր բռնել քաղաքական անմխիթար դրութեան հետեւանքով. իսկ սոցիալականը ծագում էր երկու դասակարգերի տնտեսական վիճակի ծայրայեղ տարբերութիւնից: Մինչ ազնուականը, հոգեւորականն ու փարթամ քաղաքացին հարստանում ու վայելում էին, աշխատաւոր ժողովուրդը տառապում էր յետին չքաւորութեան մէջ: Եւ այսպէս Բագրատունիների իշխանութեան ժամանակից ի վեր նաեւ Թաթարների օրով: Սրանց դրած մեծամեծ հարկերը վերջին հաշուով ծանրանում էին գիւղացի ու քաղաքացի աշխատաւորութեան վրայ. հարկահաններն եւս, լինէին այլազգի թէ հայ, կեղեքում էին ժողովրդին. գործում էր եւ կաշառակերութիւնը: Եւ հետզհետէ թէ՛ գիւղում եւ թէ՛ քաղաքներում առաջանում էր մի կողմում՝ ընչազուրկ մասսա, որ ճորտ ու ծառայ էր դառնում պաշտօնատար ազնուականութեան ձեռին, միւս կողմում՝ փարթամ հարուստներ ու չահագործողներ: Այս դրութիւնը, որի մասին կարեւոր չէ երկար կանգ առնել այստեղ, բնականաբար առաջ էր բերում դասակարգային սուր պայքար, որի արտայայտութիւնը 12—13-րդ դարի համար արդէն տեսել ենք («Առակներ» հատուածի «Սոցիալական յարաբերութիւններն առակների մէջ» գլուխը): Այս երկու խնդիրներն էլ, ազգային ու սոցիալական, չէին կարող չզբաղեցնել Ֆրիկի նման մի բանաստեղծի, որ ծնուել էր առակագիր Մխիթար Գոշի մահից մի քսան–քսանուհինգ տարի յետոյ, ժամանակով աւելի եւս մօտ էր Վարդան Այգեկցուն եւ ապրել էր Վարդանայ առակների սկզբնական զարգացման շրջանում: Երեք քերթուածների մէջ, որոնց երկուսի գրութեան թուականները շատ հաւանական ճշդութեամբ եւ մէկինը հաւաստի յայտնի են, առանձնապէս զօրեղ է հնչում Ֆրիկի ձայնն ազգային եւ սոցիալական հարցերի մասին:

4. **«Ընդդէմ փալաքին»**:— Այս բանքը նա յօրինել է Արղուն ղանի թագաւորութեան եւ Օրբելեան Տարսայիճ իշխանի աթաբեկութեան սկզբում, երբ յոյս մեծ կար ազգային վիճակի բարւոքման համար. ուստի բանաստեղծը լաւատեսութեամբ է յայտարարում գալիք քաղաքական փոփոխութեան մասին.

Հիմիկ դըժարեց բաներս,
Որ թաթարն եղաւ թագաւոր.
Զըրկեց զամենայն աշխարհս,
Ու ղո՛ղերն եդիր մեծաւոր:
Այս ա՛յլ չի մընայ հանցեղ,
Ու Փալաքն ոչում կարեւոր [=կարեկից],
Զարնու եւ ձըգէ ի վայր,
Զհամարէ զոչ ոք թագաւոր:[1]

---

1 Ֆրիկ, «Բանաստեղծութիւններ», էջ 217 եւ հտ., «Արարատ», 1918, էջ 190 եւ հտ.: Այստեղ 6-րդ տողն է «Ու փալաքն», իսկ նախորդի մէջ՝ «Ոչ փալաքն»:

Ուրեմն վերջ կը լինի զրկանք–զուլում անող թաթարական թագաւորութեանը: Նրա այս համոզմունքը հիմնուած է այն տեսութեան վրայ, թէ մարդկային բախտը յեղյեղուկ է: Դիմելով բախտի անուին (չարխ ի ֆալաք)՝ նա ասում է.

Է՛յ չարխ, ամ քեզ ո՞նց ասեմ,
Երբ չունիս զոչով մօտեւոր.
Ոչ ղալ, ոչ երդումն ունիս,
Զի քո սիրտդ է խիստ նենգաւոր:
Զով որ կու սիրես այսօր,
Կու դընես ի յոսկի աթոռ.
Յեգուց կու ձըգես յաչից,
Հաւասարես հողոյն մոխրաւոր:
Ոչ մուլքն, ոչ ապրանքն օգտէ,
Ոչ հարիւր հազար ձիաւոր.
Յորժամ չարխն ի յետ քակուի.
Եւ ձըգէ ի յաչքըն խոլոր:

Դրա համար նա իբրեւ լաւ ապացոյցներ ունէր ժամանակակից թագաւորների եւ իշխանների արագ բարձրացումն եւ անկումը:

Ինչ վերաբերում է սոցիալական հարցին, այս բանքի մէջ նա ,թէպէտ դեռ անհամարձակ, ֆալաքի պատկերով, բայց արդէն դժկամակում է կեանքի մէջ տիրող անհաւասարութեան եւ անարդարութիւնների դէմ, որոնց ենթակայ էր եղել եւ ինքը: Ֆալաքի, ճակատագրի կամ բախտի հին հաւատքը, որի դէմ պայքարել էր դեռ Եզնիկ Կողբացին, կարող էր ընդունելի լինել ռամկի համար, բայց ոչ Ֆրիկի պէս խոհուն ու քրիստոնէաբար զարգուն մտքի: Ֆալաքը նրա բանքի մէջ մի լոկ ճարտասանական ձեւ (ֆիգուր) է, որով նա վերացական գաղափարից ստեղծել է ըստ հին ժողովրդական հաւատքի մի խօսուն ու գործուն էակ, որ իբր բաշխում է մարդկանց բախտը, եւ ապա մեծ աջողութեամբ իր մտածմունքն արտայայտել է մի կենդանի արամախօսութեամբ, որ տեղի է ունենում բանաստեղծի ու վերացական գաղափարի անձնաւորման մէջ:

Այդ անհրաժեշտ էր բանաստեղծական գեղեցիկ արտայայտութեան համար: Բայց այս ձեւական կողմն է: Նրա ֆալաքն այլեւս հին կոյր բախտը չէ, բախտի կոյր աստուածութիւնը, որ մարդկանց բաշխում է պատահական վիճակներ: Բանաստեղծը նրանցից պահանջում է բարոյական սկզբունք, այն է, որ մարդկանց բախտն ըստ արժանիքի պիտի տրուէր, արդար եւ ուղիղ դատաստանով, մինչդեռ ֆալաքը ծուռ, անարդար դատաւոր է: Ինչո՞վ:— Մի անգամ որ մարդ անյաջողութեան է հանդիպում, ֆալաքն այլեւս չի ուղղում նրա գործը: Այսպէս է սկսել Ֆրիկն իր այս բանքը.

Է՛ չարխ, երբ ծըռիս մարդոյն,
Զօրն ի բուն փորես նորա հոր.
Յորժամ դու քակես ըզմանն
Ու չթողուս որ դառնայ յոլոր:

Սահուն 'ւ երերուն պահես,
Ցատըւորս ի գիլ 'ւ ի գըլոր․
Կապիճ մի չարի ցուցնես,
Թէ դու լից զայդ հողս ու ցընոր:

Այս իրեն՝ Ֆրիկի վիճակն է իր ծռուած բախտով, որ մինչեւ վերջը չի ուղղւում: Լաւ, իմաստուն, գիտուն, «ուղորդ» մարդիկը,—ասում է նա,— աջողութիւն չունին, աղքատ ու դժբախտ են, մի կտոր հացի կարօտ են մնում, նրանց տունը քանդւում է․ իսկ վատ, անգէտ, յիմար, անհունար ու ծուռ մարդիկը մեծ հարստութեան եւ իշխանութեան են հանդիպում․

Է՛յ չարխ, ըղվատի տունըն
Կու ծեփես դու ոսկով բոլոր․
Զաղէկն ի յերկիր ի ներս
Վըստրես որ ժողվէ կըտոր:
Զայն որ խոզարած չվայլէ՝
Կու չինես ահեղ ձիաւոր․
Ու զուղորդ մարդկանց տունըն
Կու քակես առանց բահաւոր:
Ֆալա՛ք, թէ քեզ քուֆր ասեմ,
Նայ ասեն, թէ մարդըն մոլոր․
Թէ չէ ի գիտուն մարդիքն
Ցերակ յէ՞ր նայիս դու խոլոր:
Զանգէտ ու զնաքաղ մարդիքն
Աստըւորս առնես մեծաւոր․
Զիմաստուն մարդկանց հացըն
Կու ձըգես ի սար կամ ի ձոր:

Մեր բանաստեղծն իր քերթուածի այս մասի մէջ առհասարակ անհատական կեանքի մէջ տեղի ունեցող անհաւասարութեան դէմ է դժգոհում, եւ մանաւանդ այն անարդարութեան դէմ, որ մարդ ըստ արժանիքին չի գնահատւում եւ աջողութիւն ունենում:

Նրա անունով յայտնի նոյնիմաստ երկրորդ բանքի մէջ,[1] որ արուեստի նկատմամբ թոյլ է, քան առաջինը, շեշտուած է դասակարգային անհաւասարութիւնը․

Թէ բուրջն ու թալեհն աղէկ՝
Ցաստուծոյ է քեզ հրամայած,
Զինչ յաշխարհըս մարդ որ կայ՝
Զերդ մըշակ են քեզ կանգընած…
Այն մարդն որ թալեհ ունի
Ցոչումէ իսկի չէ գըկած․
Զօրըն նա պարապ նըստի,
Ու բարիքն ի մօտն է կուտած…

1 Ֆրիկ, Բանաստ., էջ 225 եւ հտն., «Վասն թալեհի եւ բըջի ի Ֆրիկ երգչէ»:

Մէկն թաղաւոր լինի,
Մէկն աղքատ մուխրին պառըկած:

Այս իրական դրութիւնն է, աշխատող եւ չաշխատող դասակարգերի վիճակների մեծ տարբերութիւնը, որ միամտութեամբ բացատրւում է բախտով կամ Աստուծով: Բայց բանաստեղծը չի բաւարարւում դրանով: Նա ցանկանում է հաւասարութիւն, եւ ձգտում է իրական անհաւասարութեան բուն պատճառը որոնելու, բայց չի գտնում այն·

Ձայս ո՞նց գիտենալ կարենք,
Թէ այս է՞ր է (ի) հանց բաժանած...
Ձայս ո՞նց գիտենալ կարենք,
Ես մըտօքս ի հոգս եմ անկած·
Աւեմ, թէ այս է՞ր լինի,
Որ զամէն հաւսար չէ զուգած:

Նա դասակարգային պայքարի խնդիր չի դնում· բայց որ նա հասարակութիւնը բաժանում է երկու դասակարգի—անարժան վայելողներ եւ զրկուած արժանաւորներ, եւ որ նա դժգոհում է անարդարութեան դէմ, գտնելով այդ դրութիւնը ծուռ, եւ ցանկանում է, որ հաւասարութիւն լինի, այդ արդէն ըստ ինքեան դասակարգային պայքար է:

Ֆալա՛ք, դու (ես) ծըռին ընկեր,
՚Ի ուղղորդին ես խիստ նենգաւոր·
Թէ չէ՝ դու հայեց ի նա,
Որ չունի հունար հոգեւոր·
Անկել է յոսկուն ի մէջն,
Շըփոթել զինչ ըղթաղաւոր:
Է՛յ չարխ, ամ քեզ ի՞նչ ասեմ,
Քան զամէնն ես խիստ դու մոլոր...
Ծուռ է զինչ որ դու կառնես
Ո՞վ լինի հաւա՛ն քեզ այդոր:

Այսպէս ամէն ինչ ծուռ է, Ֆալաքի դատաստանն ուղիղ չէ· նա ծուռ դատաւոր է: Այսպէս է դիտել եւ անձամբ զգացել բանաստեղծն աշխարհի իրականութիւնը: Նա դժգոհ է եղած դրութիւնից, չի կարողանում հաշտուել դրա հետ: Եթէ նա միայն նրանով վերջացնէր իր բանքը, թէ ամէն ինչ որ անում է Ֆալաքը ծուռ է եւ թէ ոչ ոք նրա արածին հաւան չէ, այդ կը նշանակէ՝ բանաստեղծութեան մէջ անդրադարձնել իրականութեան պատկերը: Այս էլ անշուշտ արժէքաւոր եւ մեծ գործ կը լինէր, մանաւանդ որ քերթողն իր երկի մէջ ցոյց է տալիս քննադատական ոգի, կանգնում է աշխատաւորների թեր եւ պահանջում հաւասարութիւն եւ ըստ արժանիքի վարձատրութիւն, դառնալով աշխատաւորական՝ մտքի ու զգացմունքի թարգմանը: Բայց նա այստեղ կանգ չի առնում, աւելի հեռուն է գնում:

Ֆալաքն ինձի բարկացաւ·
— Մի՛ հաջել, անգէն ալեւոր,

Քանի ես Փալաք եմ լել,
Չեմ տեսել քան ըզքեզ մոլոր.
Զարիւնդ ի վերաս ձըգես
Թէ Փալաքն է մեղաւոր.
Զգիտե՞ս Թ՛արարչէն լինի,
Զով կամի առնէ մեծաւոր...
Հազար թէ Փալաք եմ ես,
Չեմ կարող որ տամ քեզ կտոր.
Հրամանքն Աստուծոյ լինի,
Ես առնեմ ըզքեզ Թագաւոր:

Ուրեմն ամէն ինչ տնօրինողն Աստուծու կամքն է, եւ ոչ Փալաք ասածը: Կը նշանակի՝ բանաստեղծի դժգոհութիւնը վերջին հաշուով վերաբերում է Աստուծուն: Սակայն բանը որ հասնում է Աստուծուն, այստեղ արդէն ետ է կանգնում նա, ասելով.

— Ֆալա՛ք, քեզ մեղ ո՞վ դընէ.
Զինչ առնես՝ զամէնն է աղւոր.
Գիտես ըզտալու տեղին.
Զանարժանն ու զարժանաւոր:
Ապա մեզ հանցեղ թուի,
Թէ դու չես իրաւ դատաւոր,
Զամէնն է հաշուով զուգել [Աստուած],
Ու զմարդիկք պահել ահաւոր:

Ուրեմն՝ մե՛զ է այդպէս թւում, թէ չէ Աստուած ուղիղ դատաստան է անում: Ապա ինչպէս անձնականով սկսել էր, նոյնպէս վերջացնում է իրենով, ցանկալով, որ իր դժբախտութեանը վերջ լինի եւ հին վիճակը հաստատուի.

Է՛յ չարխ, ամ հերիք արայ
Ու ձգէ զքակտիլդ ի յոլոր.
Կըրէ զչարութիւն յինէն
Եւ դարձո զինչ հին կայ ի նոր:

Այս է մեր բանաստեղծի այս բանքի բովանդակութիւնը: Այստեղ տեսնում ենք, որ ազգային եւ իր անձնական չարաբաստիկ հանգամանքների եւ հասարակական անարդար անհաւասարութիւնների պատճառով բանաստեղծութեան մէջ երեւում է դժգոհութիւն իրական անհաւասար սոցիալական վիճակից, եւ մի վայրկեան միայն բանաստեղծի մտքի մէջ շողում է երկբայութեան ոգին, թէ Աստուած «իրաւ դատաւոր» չէ: Բայց այս վերջինս, նրա մտքի ցոլքը, արտայայտւում է դեռ շատ մեղմ, անհամարձակ, նոյնիսկ երկչոտ եղանակով, ու վերջը բանաստեղծը նոյնիսկ համակերպւում է եղած դրութեանը, թէ Աստուած ամէն ինչ հաշուով է արել, անձնապէս մխիթարւում է, թէ՝

Աղքատն իմաստուն լաւ է,
Քանց հազար անդէտ գանձաւոր։

Այսպէս է եւ Աստուծու մօտ, զի

Աստէն նա [գանձաւորը] չունի հոգի,
Անդէնին է դառն ու մոլոր։

Ուրեմն ոչ թէ մի ծրագիր ազգային գրութեան եւ սոցիալական անարդար վիճակի բարուքման համար, այլ լոկ մի մխիթարութիւն անդէնի կեանքով՝ ըստ աւետարանական Աղքատ Ղազարի առակի։ Եւ այլապէս չէր կարող լինել 13–րդ դարում, երբ դեռ իշխում էր քրիստոնէական մեծ բարեպաշտութիւնը, եւ Ֆրիկն, ինչպէս նրա միւս երկերից կը տեսնենք, իր ժամանակի որդին էր այդ նկատմամբ։

Կենսագրական տեսակէտից էլ կարեւոր է բանաստեղծի այս բանքը· պարզ երեւում է, որ նա այս յօրինելու ժամանակները, 1286 թուականին, եղել է ալեւոր, մօտ 50—51 տարեկան· արդէն կորցրած է եղել իր ստացուածքը եւ աղքատութեան ու անյաջողութիւնների մէջ ընկած։

Տե՛ս երրորդ յաւելուած՝ «Ֆրիկի կենսագրութեան չուրջը»։

5· «Վասն Արղուն ղանին եւ Բուղային»։—Ֆրիկի այս քերթուածը նրա լաւագոյն գրուածքներից մէկն է։ Սրա մէջ աւելի պայծառ երեւում են նրա բանաստեղծութեան էական կողմերը, նրա մի քանի հասկացութիւններն ու մտածմունքն ազգային եւ սոցիալական խնդիրների մասին, միժամանակ եւ հայ ժողովրդի ծանր տնտեսական եւ ներքին քաղաքական դրութիւնը, այլեւ որոշ կենսագրական տեղեկութիւններ ենք ստանում հեղինակի մասին։ Այս երկն իր հիմքում մի քերթուած է հեղինակի օրով կատարուած մի պատմական եղելութեան եւ իր ժամանակի վրայ, ոչ թէ ոտանաւորով ժամանակագրութիւն, այլ մի իսկական բուռն քնարերգութիւն։

Պատմական դիպուածն է 1289 թ· Արղուն ղանի դէմ լարուած դաւադրութիւնը, որ չի յաջողուել· կոտորուել են դաւադիրները։ Հէնց այս թուականին էլ ամենայն հաւանականութեամբ Ֆրիկը յօրինել է իր այդ երկը։

Տե՛ս երկրորդ յաւելուած՝ «Ֆրիկի կենսագրութեան չուրջը»։

Օրբէլեանը, ինչպէս տեսել ենք, Արղուն ղանի համար հաղորդում է, թէ նա «ինքն էր յոյժ սիրող քրիստոնէից եւ եկեղեցեաց»։ Այս պատմագիրը նրա մասին պարզապէս գրում է, թէ «Աստուած քրիստոնէից յայնմ գիշերի դարձոյց զսիրտ մեծամեծացն առ Արղունն», որին հանում են բանտից, թագաւորեցնում եւ կոտորում նրա թշնամի Ահմադ ղանի ու սրա կուսակիցներին։ Ուրեմն հաւատում էին, թէ քրիստոնէական Աստուածն է թագաւոր կարգել հայերի բարեկամ Արղունին։ Կը նշանակէ՝ հայերի համակրութիւնն ուղղուած էր առ Արղունը, ինչպէս եւ դէպի նրա հայր Աբաղա ղանը եւ պապը՝ Հուլաւու ղանը։ Ֆրիկի համակրութիւնն էլ բնականաբար եղել է Արղունի կողմը եւ ոչ 1289 թ· նրա դէմ դաւադրութիւն սարքողների, որոնց պարագլուխն էր Բուղան։ Նա քերթուածի սկզբում փառք տալով «արդար ու իրաւ դատաւոր» Աստուծուն՝ բացագանչում է եւ բացադիմում սպանուած դաւադիր Բուղային·

Տեսէք թէ ի՛նչ զարմանք եղեւ
Հետ Բուղային եւ Արուխին։
Բուղա՛, դու ո՞նց կամիր նենգել
Աստուածադիր թագաւորին.
Զոր քրիստոնեայքն ամէն հաւսար՝
Ի յԱստուծոյ կու խնդրէին։
ԶԱրղուն Ղանն Աստուած եդիր,
Ո՞վ է յաղթող Արղուն Ղանին.
Արղունն ի՞նչ վընաս գործեց,
Գիտեմ՝ որդին էր Աբաղին։

Արղուն ղանն էր Բուղային «վեր քաշել» եւ ամէն բարիք տուել, մեծացրել այն աստիճանի, որ նա Արղունից պակաս չէր, — ասում է Ֆրիկը, — կամ, ինչպէս Օրբելեանը գրում է, եղել էր «չինքսան», այսինքն «աւագաց աւագ».

Դու քանց զԱրղունըն չիր [=չէիր] պակաս,
Ի քո յահէդ խիստ կու վախին [=կու վախէին]։
Բուղա էիր, չինքսան եղար,
Բէկլար բէկի՛ իր [=էիր] հեծելին.
Զգիտեմ, թէ զի՞նչ կամիր [=կամէիր] լինել,
Դու չի՛ր [=չէիր] որդի Չանկըզ-Ղանին։

Իր ստացած բարիքների փոխարէն՝ Բուղան կամեցել է Արղունին սպանելով ինքը դառնալ թագաւոր. բայց այդ, — ասում է Ֆրիկը, — Նրան տրուած չէր ի վերուստ։

Մըտիկ դրէ աշխարհ ամէն
Ըսքանչելեացն երկնաւորին,
Տեսէ՛ք, թէ ի՛նչ արար Աստուած
Ըզհաստուցումըն հըզօրին։
Քակեց ըզբարձրըն յաթոռոց,
Ջախեց զգըլուխըն միշապին.
Ով կուրըն տայ թագաւորաց,
Իւրըն բերէ կործանութիւն։

Սատանան էլ, — ասում է բանաստեղծը, — այդպէս մտածեց իր ըստեղծողի նկատմամբ. բայց իր փառքից զրկուելով վայր գլորուեց, կործանուեց, անդունդն ընկաւ։ Այդպէս էլ սատանայի գործակիցներին Աստուած

Հա՛նց խայտառակ հրապարակէ,
Զինչ որ արար հետ Բուղային։
Տէրըն էզարկ երկնից ի վայր
Զընքսա-Բուղին եւ Արուխին,
Եւ ամենայն գլխաւորացն,
Զինչ ի մէկ տեղ խորհուրդ արին։

Ազգային–սոցիալական խնդիրը *շատ կարեւոր տեղ ունի Ֆրիկի այս քերթուածի մէջ։ Շարունակ զգացւում է բանաստեղծի զայրոյթն առ դաւադիրները եւ նրանց* բաւարարումը, *որ նրանք պատժուել են իրենց գործերի համար։ Նրա այս երկու յոյզերը ծագում են երկու դրդիչներից։ Մէկն այն է, որ, ինչպէս տեսանք, դաւադիրները ցանկացել էին «նենգել աստուածադիր թագաւորին», որ բոլոր քրիստոնեաների ուզածն էր. բնականաբար Ֆրիկն էլ ուրիշների հետ պիտի զայրանար նրանց գործի համար եւ գոհ լինէր, որ նրանք պատժուել են։ Երկրորդ դրդիչն ազգային–սոցիալական է, այդ այն է, որ նա այդ դէպքից առաջ էլ սոսկալի ատել է դաւադիրներին, որոնց անունները դաւադրութիւնից ու կոտորուելուց առաջ արդէն իրենց չար գործերով հրապարակի վրայ են եղել եւ հանրածանօթ։ Մեր քերթողի խորին ատելութեան գլխաւոր աղբիւրը, դա աշխատաւորութեան թշուառ* իրականութիւնն *է, որ շարունակ մաշել է քերթողին։ Դա հայ ժողովրդի տառապագին վիճակն է այն բռնակալ մարդկանց ձեռին, խեղճերի հառաչանքն ու հեծութիւնը, զրկուած որբերի եւ այրիների քաշած նեղութիւնները, շատ մարդկանց տների քանդումը եւ ամէն տեսակի կեղեքումները, որ աշխատաւոր ժողովրդի գլխին բերում էին ոչ միայն դաւադիրները, այլեւ ընդհանրապէս բոլոր «մասասչիները»։*

*Ֆրիկի «Բանաստեղծութիւնների» գրքի վերջում դրուած «բառարանի» մէջ «մասասչիք» բառի դիմաց կայ «անծանօթ բառ»։ Այս բառը մի քանի անգամ գործածուած է տուեալ քերթուածի մէջ, թաթարական դարաշրջանի պատմութեան համար կարեւոր է, եւ պէտք է թէ՛ լեզուաբանները եւ թէ՛ պատմաբանները որոշեն դրա ճիշդ նշանակութիւնը։ Նոյն շրջանում քաղաքներից առեւտրի եւ արդիւնագործութեան համար առնուող հարկը կոչւում էր «տամղա» կամ «թամղա», իսկ այս հարկը հաւաքողները՝ «տամղաչի» կամ «թամղաչի»։ Նոյն կազմութիւնն ունի «մասասչի» բառը «մասաս» բառից, որ մի անգամ գտնում ենք Ֆրիկի սոյն քերթուածի մէջ։ Ըստ գործածութեան այս բառը նշանակում է՝ իշխանաւոր, կառավարիչ, վերակացու, պաշտօնեայ, իսկ «մասաս»՝ իշխանութիւն, կառավարութիւն (թաթարական), վերակացութիւն, գուցէ եւ կողոպտում, կամ սրանց նման մի բան։ Մասասչիներն, ըստ Ֆրիկի, կեղեքիչներ են։ Ինչպէս յայտնի է, իշխող ղաներից հողային ընդարձակ կալուածներ էին շնորհւում բարձր պաշտօնեաներին ու զինուորականներին, որոնք եւ ամէն կերպ չափազանց շահագործում ու հարստահարում էին ժողովրդին։ Այդպիսիներից են եղել նաեւ Բուղան, որ «ամէն բարիք» ստացել էր Արղունից, այլեւ իր ընկերչակները («օրթախընին»). Նոյնը եղել են եւ ուրիշ կառավարիչները կամ պաշտօնեաները։ Նրանք ոչ միայն ճնշում ու կողոպտում էին աշխատաւորներին, այլեւ իրենց մեծ թուով նախիրներն ու խաշների հօտերն արածացնելու համար՝ ոտնակոխ էին անում, աւերում մշակուած, շէն ու մարդաբնակ երկիրը, ձմեռն արան գնալով, ամառը քոչելով սարերը։ Այս քոչուորութիւնը՝ հարկերի ծանրութեան հետ միասին՝ հայ ժողովրդի ու Հայաստանի պատուհասն էր դարձած. նստաբնակ ժողովրդին տեղահան անելով՝ իբր նախիր ու հովիւ քշում էին այս ու այն կողմ։ Շատ բնական է, որ ժողովրդասէր Ֆրիկը զայրանար այդպիսի կեղեքիչների վրայ եւ շատ գոհ լինէր, որ «արդար եւ*

երաւ դատաւոր» տէրը խփել ոչնչացրել է Բուղային եւ նրա ընկերներին, որ նա անմեղ տանջուածների վրէժն առել է: Դրա համար եւ մեր բանաստեղծը վերեւում բերուած վերջին քառեակից յետոյ՝ իբրեւ հաւատացեալ իր գոհութիւնն է յայտնում.

Դու ես, տէ՛ր, խնդրող վրէժից,
Ի խոր նայիս անդնդային.
Լսես ձայնի հառաչանաց,
Եւ հեծութեանցըն տընանկին:
Դու դըրկելոց ես ողորմած,
Որբերըն քո՛ են եւ այրին.
Տէ՛ր, դու տեսար յերկնից ի վայր,
Զինչ քո ծառայքըն քարշեցին:
Գէմ չի մնաց աղբիւր ու գետ,
Որ լացուցածքըս չխըմեցին.
Գէմ չի մնաց լեռներ ու դաշտք,
Որ մասսաչիքըն չկոխեցին:
Զըմեռն յարան երթին [=երթային] լալով.
՚Ի ամառն ի քոչըն քարշէին.
Քըսան տարի դար [=տանջանք] քարշեցաք,
Ու հալեցաւ ոսկր ու մորթին:
Լոկ չնչաւոր ենք մնացել,
Խելք, դդայարանք մեզ չերեւին:

Ֆրիկի յիշած «քսան տարին» տանում է մեզ 1260-ական թուականները, երբ 1261 թուականի հայ-վրացական ապստամբական շարժումից յետոյ սկսում է աւելի եւս ծանրանալ ժողովրդի դրութիւնը, եւ Ֆրիկը կարող էր վստահօր սրտով ասել՝ «դար» — տառապանք, դառն օրեր քաշեցինք:

Անէծք ու վրէժխնդրութիւն, ահա թէ ինչով է բորբոքւում Ֆրիկը մասսաչիների հանդէպ: Եւ որքան մեծ է եղել ընդհանուրի թշուառութիւնը, նոյնքան եւ աւելի բուռն է մեր բանաստեղծի ատելութիւնը նրանց վերաբերմամբ: Նա անուններով յիշում է մի երեքին, որոնցից մէկի համար գըրում է.

Տէրըն սատեց խոլոր աչօք,
Որ ցրուեցաւ տունն ու բարին.
Հանց փոխարէն արար Աստուած
Այն Գրիգորին եւ իւր ազգին.
Որ ամենայն մարդ վկայեաց,
Թէ օրթախնին անիծեցին:

«Գրիգորը» Գրիգոր Լուսաւորիչն է, իսկ նրա ազգը՝ հայ ազգը: «Աստուած,—ասում է Ֆրիկը,—Գրիգորի եւ նրա հայ ազգի վրէժն ա՛յնպէս առաւ, որ ամէն մարդ վկայեց, թէ [հայերը] օրթախներին [=դաւաճանող ընկերներին] անիծեցին», այսինքն՝ հայ ժողովրդի անէծքով կատարուեց այդ. Աստուած նրա, ժողովրդի վրէժն առաւ: Անէծքի կատարման այս հասկացու-

թիւնը, որ դարեր շարունակ իշխել է հայերի մէջ, Ֆրիկի այս քերթուածի մէջ ուրիշ դէպքերում եւս ուժեղ կերպով երեւան է գալիս։ Իսկ Գրիգոր Լուսաւորչի հանդէպ գալը բացատրւում է այնու, որ եթէ «օրթախները» աջակցութիւն ունենային «քրիստոսադիր» թագաւորի դէմ, մահմեդականութեան կողմից պիտի վտանգուէր Գրիգորի հաւատը, հայոց եկեղեցին։ Հայերը նեղութեան մէջ էին ոչ միայն տնտեսապէս, նկատմամբ այս աշխարհի [=«աստէնիս»],—ասում է Ֆրիկը,—այլեւ այն աշխարհի [=«անդէնին»], այսինքն կրօնի․

Յերկու դիմաց ինք պարտական,
Մէկ՝ աստէնիս, մէկ՝ անդէնին։

Բայց մենք շարունակենք տեսնել, թէ ինչպիսի վրէժխնդրութեան կրակով եռում է Ֆրիկի սիրտը։ Մի ուրիշ «անօրէն» կեղեքիչի համար նա ցանկանում է․

Հանց խորտակէ Աստուած զնա,
Որ իւր ազգովն ամէն ջնջին։

Իսկ մի երրորդի համար նա գրում է․

Տիրապա՛ն, աստուածուրաց,
Լիրբ 'ւ անամօթ այն շուն Սօֆին․
Հանչաք վազէ դռնէ ի դուռն,
Մինչ որ անկնի ի մէջ գըբին։

Եւ վերջապէս բերելով Ս․ Գրքի խօսքերը՝ բացականչում է․

Թէ երանի՛, որ հարկանէ
Զորդիքն ի քարըն՝ չարկամին․
Մենք վա՜յ ասենք անձանց մերոց,
Թէ ո՞նց տեսաք ըզթշնամին։

Սրանից էլ աւելի չէր կարող լինել ատելութեան եւ վրէժխնդրութեան բոցը հայ աշխատաւոր ժողովրդի չարկամների ու թշնամու վերաբերմամբ։ Մեր գրականութեան մէջ կան ուրիշ նման անէծքներ եւս։ Դաւթակ քերթողն էլ, ինչպէս տեսել ենք, անէծքներ է տալիս մի իշխողի, մի անձի սպանողներին, բայց դա հնետրական բնաւորութիւն ունի։ Ներսէս Շնորհալու զօրեղ անէծքը «Եդեսիոյ Ողբի» մէջ մի քաղաքի կործանի համար է, որ բանաստեղծն ինքը տեղում չէր ապրել։ Իսկ Ֆրիկի խօսքերն աւելի ազդու եւ ուժեղ են, վերաբերում են ոչ թէ միայն մի անձի սպանման, կամ մի քաղաքի աւերման, այլ մի ամբողջ ժողովրդի չափ տասնեակ տարիներով կրած ամէն տեսակի ե՛ւ մարմնական, ե՛ւ հոգեկան տաղնապ ու տառապանքների, որ ոչ միայն զգացած է բանաստեղծը, այլեւ ինքն իր անձի վըրայ կրել է այն։

Այդ ամէնի հետ կար նաեւ բարոյական կողմը․ բաւական չէր, որ հարըստահարում էին, այլեւ չարախինդ մարդիկը ծաղրում, վիրաւորում էին անմեղ խեղճերին, նրանց բարոյական զգացմունքին դիպչում, ինչ որ տանել չէր կարողանում բանաստեղծի զգայուն սիրտը։

Գիտե՛մ, կային հանցեղ մարդիկք,
Որ ի մեր չարըն խնդային.
Երբ նստէաք ի հրապարակ,
Ամէն ըզմեզ ծիծաղէին:
Հա՛նց բարեատես աչուի ունինք,
Որ նոքա ա՛յլ գլխիվայրին.
Թող չյուսանայ մարդ ի դրամ,
Եւ ոչ ի զուր մարդ ծիծաղին...

Այդ չարախինդ մարդիկը հարստացած մաստաչիներն են, որոնց արարքներից այնքան դառն ցաւով լցուած է մեր բանաստեղծը, որ չի հանդըստանում, շարունակ դրդուած ու գրգռուած է մնում. ուստի կրկին ու կրկին դառնում է նա նոյն խնդրին.

Ապա զայս այլ կամիմ ասել,
Զինչ մաստաչիքըն գործեցին.
Խիստ յուսացան ի յանցաւորս,
Եւ պարծեցան յիւրեանց մտին,
Թէ մենք չինենք շատ մի թուման,
Երթանք կախենք զորըն եւ զայրին.
Հետ ընկերաց ծուռ են կացել,
Եւ շատ մարդկանց տուն քակեցին...
Զինչ որ տուել էր տէր նոցա,
Զայն գոհութեամբ հերիք չարին...
Հանց խար(ա)զանաւ տէրըն ծեծեց,
Որ իմացան զինչ գործեցին...
Հա՛նց սատակեաց Աստուած զնոսա,
Զինչ մաստաչեց [=մաստաչեաց] չար կամէին:
Իսրայէլի գերիքն էաք,
Ձեռն ինք ընկել ի Բուղային.
Ումեկ հատել էր ի սրտէ,
Թէ ի՞նչ լինի ճար մեր բանին.
Դառն եւ ողորմ ինք մնացել,
Թէ ե՛րբ հասնինք մեր մուրատին...

«Աստուած ա՛յնպէս սատկեցրեց նրանց (մաստաչիներին), ինչպէս (տանջուած մարդիկը) չար էին կամենում մաստաչիներին»,—այսինքն՝ կատարուեց ժողովրդի տուած անէծքը: Հարստահարուած խեղճ մարդիկը,—շարունակում է քերթողը,—

Յիւրեանց բարեացըն [=բարիքներից] զըկեցան,
Դէմ Աստուծոյ շատ մի լացին.
Գանգատ ասցին ի խոր սրտէ,
Հառաչանօք զայս ասացին.
«Տէ՛ր, մի՛ հաներ զմեզ ի կենացս,
Մինչ որ մեր պարտքըս վճարին»:

Այս նշանակում է, թէ տանջուածներն աղօթել են, թէ իրենք չմեռնեն, մինչեւ որ իրենց «հատուցումը» լինի, այսինքն իրենց վրէժն առնուի եւ իրենց աչքով տեսնեն Աստուծու արդար դատաստանը եւ մասսաչիների պատիժը:

Ֆրիկը շատ լաւ գիտէր, որ Բուղայի եւ սրա համախոհների ջնջումով չէր բարբոքւում կառավարութեան սիստեմը, դեռ չէր ոչնչանում «մասսար», դեռ մնում էր միւս մասսաչիների ոհմակը: Այս ամէնի բնաջնջումն էր կամենում նա, ծանր եւ անտանելի հասարակական ու քաղաքական կարգերի չեղյալ ջնջումն էր տենչում: Այս է նրան յուզում, եւ այս էր նրա երազի առարկան: Դրա համար, սակայն, նա դժբախտաբար ուրիշ միջոց չի գտնում եւ չի առաջարկում այս քերթուածի մէջ, բայց եթէ աղաչել Աստուծուն եւ անէծք.

Զինչ մասսաչի կայ՝ հաւասար
Ամենեքեան թող ժողովին.
Որ աղաչենք ըզտէր Աստուած,
Որ ցուցանէ[1] Արդուն Ղանին,
Թէ չէ՛ աղէկ այն արտասուքն,
Որ թափեցին օրթախընին:

Արղուն Ղանին Աստուած հասկացնի,— ասում է բանաստեղծը,— որ լաւ չէ այն արտասուքը, որ օրթախները—դաւադիր ընկերակիցները թափել են տուել: Ղանին արած այս նուրբ ազդարարութիւնը վերաբերում է նաեւ նրա մօտ ժողովուած բոլոր մասսաչիներին, որոնք դեռ կենդանի էին եւ հաւատարիմ էին Արղուն Ղանին. նրանք էլ պիտի իմանան, որ լաւ բան չէ այն չարիքը, որ բերում են ժողովրդի գլխին: Բանաստեղծը, սակայն, անմիջապէս նրանց մի երեքի անունները տալով՝ «Հոգացող անուն» Աստծու հրամանով յայտնապէս զգուշացնում է նրանց, որ շուտ հող տանեն իրենց մասին, այսինքն՝ չարիքներ չգործեն, թէ չէ՝ նրանցով կը զբաղուեն, ժողովուրդը նրանց անէծքը կը տայ, եւ Աստուած այդ անէծքը կը լսի, կը կատարի.

Կու հրամայէ Հոգցող անուն[2]
Թաչար Ղուջան Սաղաղաւլին,
Թէ չո՛ւտ հոգցէք զիւրեանց բաներդ,
Թէ չէ ի հետ ձեզ պարապին:
Անէծքըն չէ ոչում բարի,
Շուտ կը բռնէ զաղամորդին.
Աստուած յերկնից ականջ դրել,
Խիստ կու լսէ մեղաւորին...

[1] Ֆրիկի «Բանաստեղծութիւնների» մէջ տպուած է «ցուցածն է», իսկ «Արարատ» ամսագիր, 1918 էջ 176 է «ցուցանէ», որ եւ ուղիղն է:

[2] «Հոգացող» եւ համանիշ «խնամող», «խնամիչ», «նախախնամող» բառերն Աստուծու ստորոգելիներն են: «Հոգացող անուն» կիրառութիւնն Աստուծու համար՝ համեմատիր «Սէր անուն Յիսուս» կիրառութեան, որ գտնում ենք Ներսէս Շնորհալու մի երգի մէջ: Ինքը Ֆրիկը գործածել է «Յիսուս անուն»: Տե՛ս Ֆրիկ, Բանաստ., էջ 63. «Յիսուս անուն, յիս գթացար» քերթուածի սկզբում:

Քերթուածի վերջին մասը մի չափ ազդու հատուած է, որ առանձին առած կարող է լինել մի գեղեցիկ կրօնական բանաստեղծութիւն: Այստեղ արտացոլւում է Ֆրիկի ուղղութիւնը, ոգին եւ իղձը: Նա դեռ կանգնած է հին կրօնական, բիբլիական գաղափարի վրայ, թէ ուրիշների հետ ինքն էլ մեղաւոր է. մեղանչել է եւ ժողովուրդը, թէ Աստուած օտար դաժան բռնակալների ձեռով մեղքի համար պատժում է ժողովրդին, բայց պատժում է իր սիրելիներին եւ վերահաս դժբախտութիւններով՝ լոկ փորձում է մարդկանց: Այսպէս դեռ իշխում է նոյն հայեացքը, ինչ որ Ներսէս Շնորհալու ժամանակ:

Աստուած յերկնից ականջ դրել,
Խիստ կու լսէ մեղաւորին,
Թէպէտ որ քիչ մի կու դատէ,
Բայց կու փորձէ զիւր սիրելին:

Եւ ահա իրեն մեղաւոր զգացող մեր այս բանաստեղծը, իբրեւ մի երկար տանջուած մարդ, երեսը գետնին դրած՝ արտասուքով թրջելով հողը՝ աղօթում է: Նրա աղօթքը հաւատացող մարդու,—Գրիգոր Նարեկացու խօսքով ասած,—սրտի խորքերից բխած մի ջերմ խօսք է առ Աստուած: Բայց նա միայն իր անձի փրկութեան համար չէ աղերսում, այլեւ ընդհանուրի. ոչ թէ հոգեւոր փրկութիւն է հայցում, այլ մարմնաւոր ազատում «մասասից»:

Տէ՛ր, որ զՅունան տուեր կէտին,
Հաներ արձակ հող ՚ւ ի գետին,
Զայս մեղաւոր ծառայքս յետին
Մի՛ տար տանել մեղաց գետին...[1]
Ողորմութեամբըդ կու մընամք,
Որ վերջք առնես դու մեր չարին.
Աւուրքս անցաւ հետ մասասխս,
Եզըր չըկայ, հուն չերեւին:
Ցաւս յերկարեց ՚ւ ի յոսկր անցաւ,
Այլ չի մնաց համբերութիւն.
Տէ՛ր, վասըն քո աստուածութեանդ
Յօգըն հասիր մեզ յատենին:
Փրկեա՛ ըզմեզ ի տանջանաց,
Երեւեցո՛յ զերեսս քոյին:

«Օգնութեան հասիր մեզ յատենին»—դատաստանին: Այս նշանակում է՝ «արդար եւ իրաւ դատ» արա մեզ համար, ինչպէս վարուեցիր Բուղայի եւ ընկերչակների վերաբերմամբ, նրանց դիւան-դատաստանը տեսար, նոյնպէս վարուիր այժմ մնացած մասասչիների, ընդհանրապէս «մասասխ» հետ, վերջ տուր մեր կրած չարիքին ու ցաւին եւ փրկիր մեզ տանջանքից: Բայց թէ ի՛նչ միջոցով պիտի լինի փրկութիւնը, այդ չկայ: Ֆրիկի այս կերպի

1 «Մեղաց գետ» — դժոխքի հրեղէն գետը, որի մէջ իբր ընկնում եւ քշւում են մեղաւորները:

աղերսն արտայայտութիւն է հասարակ մարդու, անճարակ ժողովրդի, որ խորն զգում է իր տառապանքի սոսկալի ծանրութիւնը եւ ցանկանում է ազատուել դրանից, սակայն որեւէ գործնական միջոց չի գտնում, բայց եթէ անիծել եւ «Աստուա՛ծ–Աստուա՛ծ» կանչել: Այսպէս եւ Ֆրիկը, որ «արդար եւ իրաւ դատաւոր»–ով սկսում է իր այս նշանաւոր քերթուածը եւ նրանով վերջացնում: Այդ է նրա քերթուածի գլխաւոր, հիմնական գաղափարը: Այդ էլ մի աստուածաշնչեան հասկացութիւն է. «Դատ արա ինձ, Աստուած, եւ իրաւ արա ինձ ի դատաստանի իմում»: Աստուծու արդար դատաստան եւ իրաւունք:

Բայց դրանով բնաւ չի նուաստանում նրա այս գործը, որ սերտ կապուած է ժամանակի իրականութեան, իրական կեանքի հետ, անդրադարձնում է առհասարակ ամէնքին մտատանջող հարցը, թէ ե՛րբ պիտի գայ թաթարական իշխանութեան վերջը: Եւ եթէ նա դրա համար մի կոնկրետ քաղաքական ծրագիր չի տալիս իր բանքին մէջ, դրա փոխանակ նա այնպիսի թանձր ու մռայլ գոյներով նկարել է ազգային–հասարակական ծանր վիճակը, եւ այնպիսի սրտամորմոք զգացմունքով խօսում այդ մասին, այնպէս սաստիկ սրտնեղում, թէ ինչու ուշանում է սպասած փոփոխութիւնը, «մասսաի» ու «մասսաչիների» վերջը, եւ այնպէս մեծ իղձով եւ ուժգին թափով երգում է փափագած փոփոխութիւնը, որ անչափ գրաւում է եւ իր հետ յափշտակում ընթերցողին: Նա մեր գրականութեան մէջ հասարակական եւ ազգային–քաղաքական խնդիրների առաջնակարգ քնարերգուն է իբրեւ, այսպէս ասած, «պարագայական» կամ «դիպուածական բանաստեղծ»: Բայց այդ քերթուածը չէ միայն:

6. «Գանգատ»:— Մինչ բանաստեղծն իր նախորդ երկու երկերը յօրինելիս 1286 թուականից ի վեր անձկութեամբ սպասում էր «արդար եւ իրաւ դատաւոր» Աստուծու վճռին, որով վերջ պիտի տրուէր ժողովրդի տանջանքին, 1295 թուականին հակառակն է լինում, սաստիկ հալածանք է սկսւում հայերի դէմ: Ուստի նա այդ միջոցին յօրինուած «Գանգատ»[1] բանքի մէջ, «սրտի դառնութիւնից» դժգոհութեան ձայն է բարձրացնում առ Աստուած, դառնալով արտայայտիչ այն ժամանակի հայկական աղետաւոր իրականութեան եւ փոխուած աշխարհայեացքի: Դա մի խիստ բողոք է աշխարհի ամէն անարդարութեան եւ անհաւասարութեան դէմ, լինի այդ բնական թէ ընկերական, եւ մանաւանդ այն անարդարութեան, որ հայ ազգը կրում էր՝ դարեր շարունակ չարչարուելով իշխանների ձեռին: Նորից մեր իրականութեան մէջ հարց է տրւում կտրուկ կերպով, թէ ինչո՛ւ է քրիստոնեայ ժողովուրդն այնքան կեղեքւում այլակրօններից: Ներսէս Շնորհալու ժամանակ արդէն եկեղեցուց անկախ եւ ազատ քննադատութիւնն ու երկբայութեան ոգին գործում էին Աստուծու «արդար եւ իրաւ» դատաւոր լինելու մասին,—որովհետեւ ամենայն ինչ Աստուծուց էր ծագած ընդունւում: Բայց մեկնաբան

1 Այս «գանգատ» վերնագիրը ձեռագրից չի ծագում, այլ Արիստակէս Վ. Տեւկանցի գրածն է: Տե՛ս նրա «Հայերգ» ժողովածուն, Թիֆլիս, 1882, էջ 143 եւ հտն.: Ձեռագրի մէջ վերնագիրն եղել է՝ «Բան ի Ֆրիկ գրքոյն», վարիանտ՝ «Բանք ի Ֆրիկ գրոցն»: «Ֆրիկ գիրք» անունը ցոյց է տալիս, որ այդ վերնագրով մի ժողովածու է եղել Ֆրիկի ոտանաւորների:

բանաստեղծը հակաճառում էր այդպէս մտածողների դէմ՝ իր պաշտպանութեան տակ առնելով Աստուծու դատաստանը, բացատրելով, թէ իբր մեղքի պատճառով էին հայերի գլխին գալիս այն ամէն չարիքները: Եզնիկ Կողբացուց սկսած միամտութեամբ հաշտւում էին այդ մեկնութեան հետ. իսկ այժմ, երբ կրօնական ոգին համեմատաբար թուլացել էր, այդ այլեւս չէր բաւարարում շուրջ վաթսունամեայ հասուն տարիքն ունեցող Ֆրիկին, նրա հետ, հարկաւ, նաեւ ուրիշներին, եւ ինքը բանաստեղծն արդէն դատ է սկսում եւ վիճում նոյնիսկ «արդար եւ յիրաւի եւ ողորմած» Աստուծու հետ: Նրան զբաղեցնում է այս հարցը.

Ապա այս է՞ր որ կու լինի,
Եւ թէ յումէ՞ կայ եւ յայտնի:

Նոյնպէս եւ մի ուրիշ երկի[1] մէջ ինքն իրեն հարց է տալիս.

Զայս ո՞նց գիտենալ կարենք,
Թէ այս է՞ր է(ի) հանց բաժանած:
Զայս ո՞նց գիտենայ կարենք,
Ես մըտօքս ի հոգս եմ անկած,
Ասեմ՝ թէ այս է՞ր լինի,
Որ զամէն հաւսար չէ զուգած:

Կը նշանակի՝ բանաստեղծը երկար ժամանակ խորհում, ձգտում է թափանցելու իրերի խորքը, գտնելու աշխարհում եղած ե՛ւ ազգային, ե՛ւ դասակարգային անհարթութիւնների ու չարիքների իսկական արմատը: Ազգային դժբախտութիւնների հիմնական պատճառ նա համարում է այն, որ աշխարհում կան բազմաթիւ ազգեր, եւ ոչ թէ մէկը: Եւ այդ տեղից էլ սկըսում է իր ասելիքը: Չէ՞ որ սկզբում մէկ Ադամ–Եւա են եղել եւ «մէկ բարբառ համազգային»,[2] բայց զարմանալի է, շատ զարմանալի,—ասում է նա,— որ այն մի զոյգից

Ո՛րքան ազգեր ծնան յերկրի.
Ուրիշ լեզու ամէն մէկի,
Որ մէկ մէկի ոչ հաւանի:

Ապա նա թւում է իր ժամանակի իրեն յայտնի ժողովուրդներին, թըւով քսան, որոնք իրենց ցեղական ու լեզուական տարբերութեամբ ընդ-

1 Ֆրիկ, Բանաստ., էջ 227, «Վասն թալէհի եւ բրջի»:

2 Շատ դիւրագայթ պիտի լինել գրելու համար, թէ «Գանգատում» «վէճի բռնուելով Աստծու հետ, Ֆրիկն ամենից առաջ կասկածի տակ է առնում Աստուածաշունչը» (Ֆրիկ, Ժողովածու, Երեւան, 1937, էջ 114 յօդուած Ա. Ղանալանեանի): Իսկ մի ուրիշն՝ աւելի եւս զարգացնելով իր նախորդի միտքը՝ գրում է. «Իր այս բանաստեղծութեան մէջ Ֆրիկը համարձակօրէն վէճի կանչելով Աստծուն, նախ եւ առաջ լուրջ կասկածի է ենթարկում «Աստուածաշնչում» նկարագրուած աշխարհի եւ մարդկանց արարչագործութիւնը: Ֆրիկը չի հաւատում Ադամ-Եւայի լեգենդին» (Ֆրիկ, բանաստեղծութիւններ, Երեւան, 1941, էջ 10, Առաջաբան Մ. Մկրեանի): Այսպէս գըրողներն իրենց մտածածը վերագրում են Ֆրիկին. թող կարդան նրա «Բան պիտանի եւ լաւ ասացեալ Ֆրկանն վասն արարչութեան», եւ այլ կրօնական քերթուածները:

հանրապէս իրար դէմ անհաւան կերպով կանգնած են եղել։ Այս անհաւանութիւնը կրօնականի մէջ աւելի մեծ ուժով է երեւան եկել։ Մխիթար Գոշի առակների ուսումնասիրութեան ժամանակ արդէն տեսել ենք, թէ ինչպէս ծաղրում էին ուրիշների կրօնական ծէսերն ու սովորութիւնները. բայց հայերի եւ «այլազգիների», այսինքն մահմեդականների յարաբերութիւնն այն ժամանակ ընդհանրապէս բարեկամական էր։ Այդպէս չէր դրութիւնը հարիւր տարի անց։ Հայերս, որ ճշմարիտ հաւատն ունինք, ասում է Ֆրիկը, տանջւում ենք այլազգիների ձեռին։ Եւ նա գծագրում է 1295 թուականի թշուառութիւնները.

Այլ կամք ի ձեռս անօրինի,
Որք կու վարեն անգին գերի.
Ո՞րքան քակեն եկեղեցի,
Քանի՞ շինեն պիղծ մզկիթնի։
Քանի՞ կանայս առնեն այրի,
Եւ ո՞րքան որբ քրիստոնէի.
Ո՞րքան արիւն հեղան յերկրի,
Քանի՞ առնեն բան խոտելի։
Ո՞րքան տանջեն զմեզ յաշխարհի;
Եւ կեղեքեն զկեանս մեր յայտնի.
Եւ դո՛ւ ներե՞ս յամենայնի,
՚Ի անտե՞ս առնես զմեզ ի վըշտի։

Ինչո՞ւ պէտք է «արդար եւ իրաւ» Աստուածն այս ամէնը ներէ եւ այս անիրաւութիւնների վրէժը յայտնի կերպով չառնի։ Եւ մի տեսակ յանդգնութեամբ աւելացնում է՝ դիմելով Աստծուն.

Գիտե՞ս, մարմի՛ն եմք մըսեղի,
Գէմ արձա՛ն չեմք ինչ պըղընձի.
Եղե՛գըն չեմք, կամ խո՛տ վայրի,
Որ խանձ արկեալ ես կըրակի,
Քան զանդաստան փըշաբերի,
Կամ մացառաց ինչ պըրակի։

«Լա՛ւ, ասենք բարկացել ես հայ ազգի վրայ, ինչպէս երբեմն հրեաների վրայ, ուրեմն ինչ բարկութիւն որ քեզնից թափուի՝ մե՞ր գլխին պիտի գայ կուտակուի»։ Այս հարցադրումները եւ մանաւանդ հայ ժողովրդի ողբերգական վիճակը զօրեղ թափով են արտայայտուած, որովհետեւ բանաստեղծի վիշտն էլ սաստիկ է։ Ժողովրդի կրած տառապանքի մեծութեան պատճառով մէջ է գալիս այն գաղափարը, որ թեթեւակի երեւում էր արդէն Մխիթար Գոշի առակների մէջ, թէ աւելի լաւ է մի՛ անգամից մեռնել ոչնչանալ, քան թէ տանջուել չարունակ։

Արդ՝ եթէ չեմք ինչ պիտանի,
Եւ կամ չունիմք գործ ինչ բարի,
Կամ քո սրտիդ եմք ատելի,

Որ չարարաք ըստ հրամանի,
Նա՛ դու ընջէ՛ զմեզ մէկ հետի,
Որ քո բարի սիրտըդ հանգչի։

Այս՝ մի յուսահատական ճիչ է, որ ինքնաչարժ կերպով թռչում է բանաստեղծի բերանից. բայց իսկոյն նա զգաստանում է, որ հեգնել է Աստուծու «բարի սիրտը», եւ ուղղում է իրեն.

Թէ այս կամօքըդ քո լինի,
Ամենակա՛լ Աստուած բարի,
Նա՛ մեք տանեմ՛ք, որչափ պիտի,
Եւ համբերեմք ամենայնի.
Այլ որ վատուժն է՝ թող կորի,
Եւ զոր կամիս՝ թող ա՛յն լինի։

«Թող վատուժը, թոյլը կորչի, թէ չէ՝ մենք, եթէ այս լինում է քո բարի կամքով, կը դիմանանք ամէն բանի. թող ամենակալ բարի Աստուծու կամքը լինի»,— ասում է բանաստեղծը՝ այլեւս չյուսահատուելով իր ազգի համար եւ համակերպուելով Աստուծու կամքին։

Շարունակութեան մէջ անցնում է հասարակական ու բնական անհաւասարութիւններին։ «Իմ ազգը թողնենք»,— ասում է նա,— բայց մի՞թէ «արդար, իրաւ դատաւորի հրաման» է,

Որ մէկն ապրի տասն տարի,
Մէկն հարիւր այլ աւելի,
Մէկն ոչ ի տասն հասանի,
Երկու-երեք ամսոց մեռնի։

Եւ նա թւում է բնական եւ սոցիալական անհաւասարութիւնները — մէկի վաղաժամ մահը, միւսի բազմամեայ անպէտք կեանքը. մէկը՝ խիստ ուժեղ, միւսը՝ սարսափելի վախկոտ. մէկը հանճարեղ ի բնէ, միւսն՝ անշնորհք. մէկը՝ հրեշտակի պէս գեղեցիկ, միւսը՝ անճոռնի տգեղ. մէկը՝ բարեգործ, միւսը՝ չար, սպանող, եւ այլն։ Հապա դասակարգային անհաւասարութիւննե՞րը.

Մէկն ի պապանց պարոնորդի,
Մէկն ի հարանց մուրող լինի.
Մէկին հազար ձի եւ ջորի,
Մէկին ոչ ուլ մի, ոչ մաքի...
Մէկին ատլաս եւ դըրմըզի,
Մէկին չապիկ մի չի հասնի.
Մէկին հարամըն յաջողի,
Մէկին հալալըն կորուսի...
Մէկին ըռախտ եւ զըրեհի,
Ձոխով նըստի ի պէտաւ ձի.
Մէկն է բոպիկ եւ անվարտի,
Հետեւակին առաջ փախչի.

Նա բարկութեամբ ի հետ հանի,
Ջվիզըն կըտրէ եւ չողորմի·
Ջկին եւ զորդայքն առնու դերի,
Եւ հանց տանի, որ այլ չթափի:

Սրանք են աշխարհի ուժեղներն եւ այսպէս են վարւում թոյլերի հետ:

Իշխան զըրեր ես մէկ մէկի,
Բան զքանասար զայլ՝ ոչխարի,
Կամ զերդ վազան նապաստակի,
Կամ քաջ առիւծ՝ ամէն հօտի:

Այսպէս է խիստ ուժեղ խօսքով բնութագրում Ֆրիկը կեղեքող եւ կեղեքուող դասակարգերը· աշխարհի իշխանները հօտերը պատառող գայլեր եւ առիւծներ են: Նա առանձնապէս կանգ է առնում նաեւ հարուստների կամ «բախտաւորների» եւ աղքատների կամ «անբախտների» վիճակի մեծ տարբերութեան վրայ: Բախտաւորների մէջ են եւ հողեւորականները·

Անբախտըն զայ ամօթալի,
Հեզ եւ հանդարտ, առաքինի·
Գայ եւ կանգնի յետին տեղի,
Անշուք, անշնորհք եւ անյարգի:

Իսկ, ընդհակառակն, ահա թէ ինչպիսի վիճակ ունի «լուծն ի փորին», այսինքն՝ գիրուցի բեռ փորին՝ հաստափոր, ցնփոր, ագէտ եւ անգործ քահանան.

Բախտաւորն զայ ճօճկտալի,
Գայ եւ նըստի յաւագ բարձի·
Լուծն ի փորին թէ չուրջ անցնի՝
Ոչ ալելու մի չի դիպնի·
Բայց վասըն մէկ աւուր տօնի,
Որ թէ զատիկ, այլ տօն լինի,
Նա՛ խաչհամբոյրն իւր շատ անկնի,
Մորթ եւ էրի եւ զաղանի:

Ամէն լաւ ու վատ բան, ամէն աննման անհարթութիւնները կախուած են բախտից, իսկ բախտն էլ Աստուծուց է տրւում.

Ամէն ի բախտըն գայ կուտի,
Թէ Աստուծոյ տուեալ լինի:

Հետեւաբար բանաստեղծը բախտաւորի եւ անբախտի հակադրութեամբ եւս տարակուսում է Աստուծու «արդար եւ իրաւ» վերաբերմունքի մասին: Եթէ այդպէս է, Աստուծու վճիռն իրաւ է, ապա ինչո՞ւ աշխարհում գոյութիւն ունին այնպիսի չարիքներ, անհաւասարութիւններ ու դժբախտութիւններ: Բանաստեղծն ուզում է իմանալ այդ երեւոյթի պատճառը, բայց նա

իր հարցերի պատասխանը չի գտնում, եւ երկրայութեան մէջ մնալով՝ վերջը նա իր հարցերի համար «մեղայ գալով», դարձեալ խոստովանում է, թէ Աստուծու «դատաստանն իրաւ» է. նա, Աստուած, ամէն մէկին դիտաւորութեամբ, որոշ նպատակով («նեաթով») է տալիս իրենց վիճակը, ուստի եւ ինչպէս որ Աստուած կամենում է, այնպէս էլ պիտի լինի.

Ես քեզ մեղայ երկնաւորի,
Տեառն Աստուծոյ ահեղ մեծի.
Քո դատաստանն է յիրաւի.
Նեաթով կուտաս ամէն մէկի:
Տէր, քո կամացն է աշխարհս լի,
Այսպէս լինել, զոր տացի:
Քեզ օրհնութիւն ի մէնջ տացի,
Ամենազօր տեառնդ Յիսուսի:

Այս դէպքում էլ, ուրեմն, համակերպւում է Աստուծու կամքին ոչ միայն նրա համար, որ վերջիվերջոյ իրաւ է գտնում Աստուծու դատաստանը, այլեւ որովհետեւ Աստուած «ահեղ, մեծ», «ամենազօր տէր» է.[1] կամ, ինչպէս «Ընդդէմ Փալաքին» քերթուածի մէջ ասում է, Աստուած

Զամէնն է հաշուով զուգել [=արել],
Ու զմարդիկք պահել ահաւոր:

Այսպէս ուրեմն՝ Ֆրիկն իր երեք քերթուածներով, որ տեսանք եւ որոնց նիւթն են ազգային ու սոցիալական խնդիրները, հանդիսանում է մեծ հայրենասիրական բանաստեղծ, ժողովրդի ցաւերով վշտահար մի երգիչ եւ լաւագոյն ազգային ապագայի ձգտման, թաթարական լծից ազատուելու իղձի մի քարոզիչ: Նրա դրաւչութիւնն աւելի մեծ է այնու, որ նա ազգային խնդրի հետ միաժամանակ եւ իրար հետ կապակցուած ու միակերպ ուժով, զբաղւում է նաեւ հասարակական–տնտեսական, դասակարգային եւ ընդհանուր մարդկային խնդիրներով: Եզակի ուժգնութեամբ եւ խորին անելութեամբ ալպալակ է բարձրացնում աշխարհում իշխող ու հարստահարող կոպիտ ուժի դէմ, բուռն զայրոյթով նկարում կեղեքող պարոնին, չահազործող ուժեղին ու նրա վայրագութիւնը, հեգնութեամբ երգիծում բախտաւոր, ոսկէտ քահանային ու նրա պերճութիւնն ու վայելքը, եւ քնքշութեամբ արգահատում խեղճերին, թոյլերին ու կեղեքուածներին, միշտ ձգտելով մի լաւագոյնի, մի իղէալի:

Նա որոշ չի յայտնում, թէ ի՛նչ է իր իդէալը: Բայց երբ նա պժգահում է բազմաթիւ ալլերի եւ լեզուների գոյութիւնից եւ մարդկանց վիճակի անհաւասարութիւնից, այդ ցոյց է տալիս, որ նա բաղձում է, որ լինէր

1 Լսեցէ՛ք, թէ ինչ են ասում. «Այսպիսով, Ֆրիկի այս [«Գանգատ»] բանաստեղծութիւնից ինքնըստինքեան բխում է այն եզրակացութիւնը, որ Աստուած «արդար եւ յիրաւի» չէ, հետեւաբար նա Աստուած չէ (այսինքն Աստուածն Աստուած չէ: Մ. Ա.) եւ այդպիսին գոյութիւն էլ չունի» (Ֆրիկ, Բանաստ., էջ 18, Առաջաբան Մ. Մկրեանի).— Խե՛ղճ Ֆրիկ, 20-րդ դարում էլ քաշելիք ես ունեցած եղել. այն էլ ի՛նչպիսի:

աշխարհում մի ազգ ու մի լեզու, եւ որ բոլոր մարդիկ հաւասարապէս վայելէին բարիքները: Նրա քննադատութիւնը հէնց՝ վկայ է նրա ազգային ու դասակարգային գիտակցութեանը. եւ նա դրանով իսկ պայքարում է թաթարական բռի ու կեղեքիչ տէրութեան եւ ընդհանրապէս իշխող դասակարգի դէմ:

Բերենք մի համեմատութիւն: Սուրբ Գրքի մէջ Յոբը ահեղ ու հզօր Աստուծուց գանգատւում է եւ նրա հետ դատ վարելով արդար դատաստան է ուզում իր անձնական մարմնաւոր տառապանքի համար: Գրիգոր Նարեկացին 11-րդ դարի սկզբում իր Ողբերգութեան առաջին բանի մէջ «ահաւոր դատաստան» անող Աստուծուն դիմելով՝ ասում է.

Եւ ի դնելս իմ ընդ քեզ դա՛տ խառնեա աղերսիւ,
Հզօ՛ր, մի՛... տաղտկալի քեզ երեւեցի...
Այլ իբր զբուրեալ խունկն հաճոյական...
Ի վերստին գիւտ կորուսեալս հոգւոյ առակի
Ընդունելի կամաց քոց լիցի:

Իսկ Ֆրիկը 13-րդ դարի վերջերում իր «Գանգատի» սկզբում գրում է.

Աստուած արդար եւ յիրաւի,
Եւ ողորմած յամենայնի,
Հանդէս [=դատ] ունիմ, բան մի վիճի,
Թէ դու լսես քո ծառայի:

Ո՛րքան տարբերութիւն մեր այս երկու հին մեծ բանաստեղծների ոճի մէջ, մէկը վսեմ ու ճոխ ձեւով, միւսը՝ պարզ ու հասարակ, բայց ոչ պակաս գրաւիչ: Խնդիրը սակայն այդ չէ: Նրանք երկուսն էլ դատ են սկսում Աստուծու հետ: Նարեկացու «դատ դնելը» նոյնն է, ինչ որ Ֆրիկի «հանդէս» եւ «բան վիճի»: Այս երկու դարձուածն էլ նշանակում են իր «իրաւունքը փնտռել», ուզել, պահանջել, ինչպէս օտար բառով ասում են, «դավա անելով» — դատ վարելով, վիճելով, կռուելով:[1] Եւ ո՛րքան տարբերութիւն այս երկուսի «դատի» եղանակի, նիւթի եւ նպատակի մէջ: Մէկն աղերսախառն խոնարհութեամբ է դիմում «ահաւոր դատաստան» անող «հզօրին», միւսը դժգոհութեամբ ու համարձակ հարցապնդում է ուղղում նոյն «ահեղ, ահաւոր» «ամենազօրին» իր արած դատաստանի համար: Մէկի դատի «խօսքն ընդ Աստուծոյ» վերաբերում է իր եւ իրեն նման կրօնաւորների անձնական հոգեւոր, այսինքն կրօնական կեանքին եւ իր «կորած հոգու» փրկութեանը, որ լինելու է անդէնի աշխարհում — երկնքում ըստ ժամանակի հաւատքի: Նա արտայայտիչ է իր դարի վանական-կրօնական կեանքի ու միստիկա-

1 «Դատ» նշանակում է նաեւ «իրաւունք», իսկ «դատել»՝ նաեւ «վիճել»: Տես՝ Հր. Աճառեան, Արմատական բառարան, «դատ» բառի տակ: «Հանդէս» նշանակում է նաեւ «դատաստան», իսկ «վէճ» բառը՝ նաեւ «կռիւ»: Տես՝ «Առձեռն բառարան հայկազնեան լեզուի»: Օտար «դավա» բառը նշանակում է՝ դատ, վէճ, կագ, կռիւ: Տես՝ Բառգիրք յաշխարհաբարէ ի գրաբար, Վենետիկ, 1869, էջ 516, «տաւայ» բառը: Այլեւ Հր. Աճառեան, Թուրքերէնէ փոխառեալ բառեր հայերէնի մէջ, Վաղարշապատ, 1902, էջ 331՝ «Տավա»—կռիւ, դատ:

կան անուրջների։ Իսկ միւսի «դատ ու վէճի բանի» նիւթն է ընդհանրութեան, ժողովրդի իրական դժբախտ կեանքն այս աշխարհում եւ նրա մարմնաւոր փրկութիւնը տառապանքից։ Սա էլ արտայայտիչ է իր ժամանակի ազգային եւ հասարակական իրականութեանն, իր ժամանակի մտածմունքների ու ձգտումների։ Եւ այսպէս մեր բանաստեղծութիւնն երկնքից իջնելով աշխարհականացել է արդէն եւ դարձեալ կապուել իրական աշխարհիկ կեանքի, երկրի հետ։ Բայց այդ դեռ չի նշանակում, թէ արդէն առաւելութիւնը կատարելապէս տրւում էր երկրին. դրա համար դեռ հարկաւոր էր, որ ժամանակ անցնէր։

Ֆրիկն, իբրեւ տաղանդաւոր բանաստեղծ, բազմակողմանի կերպով արտացոլել է իր երկերի մէջ ժամանակի ամբողջ ոգին։ Տեսնենք նրա բանաստեղծութեան այլ գծերն եւս։

7. Մեղքն իբրեւ ժողովրդի տառապանքի պատճառ եւ նրա փրկութեան միջոցը։— *Սխալ է ասել, թէ Ֆրիկը Հայոց աշխարհին հասած դժբախտութիւնները հետեւանք չի համարում մեղքերի, եւ իբր նա «այդ կողմից խզում է այն կապը, որ ունի իր նախորդների հետ»։*[1] *Արդարեւ, նա «Գանգատի» մէջ առանձնապէս չի բերում մեղքը, որովհետեւ նրա խնդիրն է ազգային եւ դասակարգային անարդար եւ անիրաւ վիճակների դէմ բողոքելը. բայց այնտեղ էլ վերջը նա ոչ միայն համակերպում է Աստուծու կամքին, այլեւ կողմնակի յայտնում է մեղքի մասին՝ ասելով Աստուծուն, որ եթէ «քո սրտից կամք առելի, որ չարարաք ըստ հրամանի, նա՛ դու ջնջէ զմեզ»։ Աստուծու հրամանի համեմատ չգործելը հէնց՝ է մեղքը, որի համար եւ պատժում է Աստուած։*

*Մի բանքի մէջ (էջ 147) նա թաթարների օրով կրած անվերջ չարիքների ժամանակն անուանում է «մեղաց դար» — մեղքի համար կրած տանջանք, հալածանք, տառապանք.*

*Ես ի՞նչ գիտէի, եղբայր,*
*Թէ մեղա՛ց դարն հանց լինենայ,*
*Զինչ որ կու քարշենք հիմիկ,*
*Շատ չարիս,[2] եւ վճար չըկայ։*

*«Ես ի՞նչ գիտէի, թէ մեղքի տանջանքն այսպէս է, ինչ որ այժմ քաշում ենք շատ չարիքներ, եւ վերջ չկայ»։ Մի ուրիշ բանքի մէջ՝ «Վասն անմիաբանութեան քրիստոնէից», որ նա գրել է 1295 թ. հալածանքի ժամանակ, նա մասնաւորապէս մեղքի խնդիրն է դնում՝ այսպէս սկսելով.*

*Որք որ լսեն այս ողբերուս՝*
*Թող ըզմեղաց սուգըն պահեն։*

*Նա խօսում է քրիստոնեայ ազգերի՝ յատկապէս Փռանգների, հոռոմների մեղքերի մասին. ամէնքը «մեղաց տէր են».*

---

1 Վ. Բրիւսով. Հայկական բանաստեղծութիւնը, 1916, էջ 73։

2 Սխալ է այս «չարիս» բառը բացատրել իբրեւ «հարկի մի տեսակ», ինչպէս դրուած է Ֆրիկի Բանաստ. Բառարանի մէջ։ Այդ պարզապէս «չարիք» բառի հայցական հոլովն է։

Ամէնքն ատողք են միմեանց,
Վասն այն օտարք ըղմեզ կոխեն.
Գէմ քրիստոնեայք մեծ մեղք ունեն,
Որ հանց յերկար դար [=տանջանք] կու քաշեն...
Թող թ՚ապայ յո՞ր ազգի մեղաց
Ձեկեղեցիքըն հալածեն...
Թագաւորքըն չի հաշտին,
Հետ միմեանց ոխ կու պահին,
Հանապազ զուր ժողովեն
Եւ զմիմեանս ի սուր քաշեն:

Նա մանրամասն նկարագրում է քրիստոնեաների իշխող դասերի ընկած բարքերը. վարդապետներ, եպիսկոպոսներ, թագաւորներ, քահանաներ, վանականներ, միակեցներ, ճգնաւորներ ու հայրապետներ, ամէնքը, բացի աշխատաւորներից, մի առ մի ներկայանում են իրենց բացասական կողմերով եւ չեն պրծնում մեր բանաստեղծի հարուածող խարազանից: Ամէնքը մեղաւոր են ըստ իրենց կարգին: Քրիստոնեաները

Ձինչ մեղք որ կայ՝ զամէն գործեն.

Այդ պատճառով եւ, — ասում է նա, —

Ըզմեզ երետ Աստուած ի ձեռն
Անօրինաց որ կոտորեն:

Աստուած բարձիթողի է արել նրանց, քրիստոնեաներին, — ասում է նա.

Ապա ի՞նչ ցեղ առաջ երթան
Դէմ թըշնամոյն, կամ ո՞նց յաղթեն:

Ֆրիկն այդ ամէնն առաջ է բերում սրտի ցաւով եւ յուսալով, որ Աստուած օգնութեան կը գայ, ոխ չի պահիլ, եւ

Յարուցանէ մեզ թագաւոր
Սուրբ, որ առնէ զարդարութիւն.
Խնդրէ վրէժս ի թշնամեաց,
Որ քրիստոնեաց խոր կու փորեն,
Կը խորտակէ զմեր թշնամին...

Ապա վերջում, մեղքի թողութիւն խնդրելով եւ, ինչպէս ուրիշ բանքերի մէջ, աղօթքով դիմում է Աստուծուն, ասելով.

Յարոյ եղջիւր մեզ փրկութեան.
Օգնեա ազգիս քրիստոնէից...
Մի՛ տար անձանց մեր սասանումն,
Ոչ հաւատացըս մեր բեկումն...

Թէ ի՛նչ «սուրբ թագաւոր» է Ֆրիկի ցանկացածը, այդ չի ասում նա: Հաւանօրէն մի հայ, կամ ուրիշ մի քրիստոնեայ, հազիւ թէ Արղունի նման

մի թաթար թագաւոր, քրիստոնեաների բարեկամ, քանի որ դժուար է կարծել, թէ թաթարի համար գործածէր «սուրբ» տիտղոսը, որ ընդունուած էր քրիստոնեայ թագաւորների համար: Բայց յամենայն դէպս նա էլ, ինչպէս ժամանակակից Ստեփաննոս Օրբելեանը, փրկութիւնը տեսնում է մի թագաւորի ձեռով, այլեւ քրիստոնեաների միաբանութեամբ: Եւ փրկութիւնը «անօրէնների», այսինքն այլազգիների ձեռից, ոչ միայն հայ ազգի համար, այլ ընդհանրապէս քրիստոնեաների:

8. Մահուան եւ ունայնութեան երգը:— *Սոցիալական անհաւասար եւ անարդար բախտի դէմ բողոքելով հանդերձ՝ բանաստեղծը, չարիքն ուղղելու համար, տեսանք՝ ոչ մի գործնական միջոց չի առաջարկում: Նա դեռ կանգնած է հին կրօնական հայեցքի վրայ, այն է՝ «անարգել զփառքն եւ զպատիւն անցաւորական», լինել իմաստուն եւ աշխարհն համարել ունայն»:*

*Աշխարհս ունայն է, քանի որ մահը գալիս, սրբում տանում է ամէնքին հաւասարապէս: Եւ Ֆրիկը ողբում է համայնաջինջ մահը մի մեծ ղազելով, որի առաջին մասը հետեւեալն է.*[1]

*Յորժամ որ մահն մօտենայ*
*Եւ անողորմ գըրողըն գայ.*
*Ոչ ի ծե՛ր կու խընայէ,*
*Ոչ ի մանուկ 'ւ ոչ երեխայ.*
*Զի քըննել եպիսկոպոս,*
*Ոչ վարդապետ, ոչ քահանայ.*
*Զի քըննել թագ(ա)ւոր 'ւ իշխան,*
*Ոչ զայնոսիկ որ կու մուրայ.*
*Զի ասել, թէ պարտական (է),*
*Կամ աղքատ է, կամ տըղայ.*
*Զի խըղճար յոտարականն,*
*Թող թէ հազար դաւըն կու լայ.*
*Անողորմըն բաժանէ*
*Զնոր պըսակած հարսն ու փեսայ.*
*Բաժանէ ի մէկմէկէ*
*Զքոյր եւ զեղբայր՝ առնու գընայ,*
*Հանց կրակ դնէ ծընողացն,*
*Որ յաւիտեան երթայ մընայ.*
*Զհայրն ու մայրըն կու տանի,*
*Կաթնակեր տղայն ի տուն մընայ.*
*Հանց որբեր յետ կու թողու,*
*Որ սար ու ձոր ամէն կու լայ.*
*Ի հիմնէ' տուն կու քակէ,*
*Որ այլ իսկի չէն չի մընայ.*
*Հանց ցանկութիւն կու խափանէ,*
*Որ իւրն նըման իսկի չըկայ.*

---

1 Ֆրիկ, Բանաստեղծութիւններ, էջ 45:

Ոչ այն սըրբոց կու ամաչէ,
Որ Աստուծոյ բանիւ կու գայ.
Մեղաւորացըն չողորմի,
Զատէ՝ յէգուց նա գարձ կու գայ.
Ոչ ի գողոյ 'ւ ի պիսակէ,
Ոչ յաղտեղաց կու գարշի նա.
Պահլաւանից եւ ի քաջանց
Ոչ երկընչի 'ւ ոչ վախենայ.
Զինչ որ ծնեալ կայ՝ մեռանի,
Մահն ամէնի հասեալ կու գայ.
Ոչ մեծատան, ոչ աղքատի
Ցերբ հասանի՝ համբեր չը տայ.
Հանց բընութիւն զինչ մահն ունի՝
Զեմ ի մընալ, թէ նա խըղճայ.
Ցորժամ ելնի տաքն ու կակուղն,
Նա՛ հովն ու չորն անպիտանայ:
Լըսէ՛ խըրատ ի Ֆըրկանէս,
Իսկի յայս կեանքըս չահ չըկայ...
Ֆրիկն հանցեղ պարզ է խօսել,
Որ ամենա՛յն մարդ իմանայ,
Թէ ճըշմարիտ է բանս 'ւ ուղորդ,
Որ այս կենցաղըս խաբ կու տայ...

Այս միեւնոյն նիւթին նա դառնում է եւ ուրիշ քերթուածների մէջ, մահը պատկերացնելով իբրեւ անողոք եւ ամենազօր տիեզերական ուժ, որ անխնայ եւ անողորմ ոչնչացնում է ամէնքին, ամէնքին: Ուստի, — ասում է նա, — «իսկի յայս կեանքըս չահ չըկայ», «այս կենցաղըս խաբ կու տայ», այսինքն աշխարհիս կեանքն անօգուտ եւ խաբուսիկ է: Ինչի՞ է պէտք այս կեանքն ու հարստութիւնը.

Տեսէ՛ք, թէ քանի՞ մարդ [իկ]
Աշխարհէս դարտակ մընացին.
Զամէնըն յետին թողին,
Անընչիկ ի հոն գընացին...[1]

Մահն ինչքան էլ ցաւալի տեսարաններ է բանում, Ֆրիկի բանաստեղծութեան մէջ չի դառնում կատարեալ ոչնչացման մի սուր զգացում, այլ մահուան երգը ծագած լինելով քրիստոնէութեան էութիւնից, դեռ կապուած է քրիստոնէական հաւատալիքների եւ հասկացութիւնների հետ: Դեռ իշխում է Աւետարանի խօսքը՝ «Երանի սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին»: Ուստի մահուան մասին բանաստեղծութիւնն ասւում է իբրեւ մխիթարութիւն տառապեալների համար. այսպիսիները մահով ազատւում են աշխարհիս դժնդակ աղէտներից: Բացի այդ՝ ով որ այս աշխարհում եղել է աղ-

1 Անդ, էջ 174:

քաո, բայց իմաստուն, այնպիսին ոչ մի երկիւղ չունի մահից, որովհետեւ եթէ նա այս աշխարհում բախտաւոր չի եղել, մեռնելուց յետոյ անդէնը հաւկաւակ վիճակն է ունենում․ մինչդեռ վայելող հարուստը, կեղեքիչը՝

Ի յանդէնն է դառն ու մոլոր։

Կամ մի ուրիշ տեղ գրում է Ֆրիկը՝

Ով որ այս կեանքս է խիստ ուրախ,
Անդէնըն շատ ի լաց կենայ։

Սոյն միտքը նա յաճախ կրկնում է եւ դրա ճշմարտութիւնն ապացուցելու համար նա մի ուրիշ գեղեցիկ ղազելով շատ կենդանի պատկերացնում է աւետարանական Աղքատ Ղազարի եւ Մեծատան վիճակները ե՛ւ աստէն, ե՛ւ անդէն։ Եւ այս նա յիշեցնում է իր մի շարք ուրիշ բանքերի մէջ եւս։

Ցէ՞ր չես երթար ի միտքդ ի վար,
Է՛ գերեզմա՛ր մարդ ու տըխմար…
Ի կեր ՚ւ ի խում ի հետ մեղաց,
Ի շուրջ կու գաս զօրն անդադար․
Զըրկես ու տաս մարմնոյդ ի կեր,
Գիրացընես որդանց համար․
Գերեզմաներն ի վար հայեց,
Տե՛ս քանի՞ մարդ կայ ի շար․
Ամէն փըտեր ներքեւ հողին,
Քան զմեզ քանի՞ հարիւր հազար…
Քան զՄեծատունն այլ ո՞վ հարուստ,
Այնչափ ունէր ակն ու գոհար․
Կապայ հագնէր ցեղք ի ցեղաց,
Փողկապն ամէն մարգարտաշար․
Ի կեր ՚ւ ի խում ի շուրջ կու գար,
Եւ անդէնէն չունէր խապար․
Ամբարտաւան կեցաւ զամէնն,
Ցետոյ մեռաւ հանցկուն յիմար։

Նրա դռանը կենում էր տառապեալ աղքատ Ղազարը կարօտ հացի ու հագուստի։ Մեծատունը նրան չէր օգնում։ Երկուսն էլ մեռնում են։

Մեռաւ, գընաց Աղքատ Ղազար,
Տեղն է կանաչ սազ ու պայծառ,
Անմահութեան աղբիւրն առջին,
Շուշան ծաղկունք հարիւր հազար։
Նա՛ Մեծատունն աւէր լալով
Թէ՝ «Կաթ մի ջո՛ւր, Աղքատ Ղազար»…

Մահն, ուրեմն, զարհուրանք է միայն հարուստների, ուժեղների եւ կեղեքողների համար, որոնք զրկանքով վայելում են աշխարհի բարիքը եւ մահով զրկւում են դրանից։ Իսկ ճնշուածները, սովալլուկներն ու տառապեալ–

*ները մահով միայն ազատւում են իրենց թշուառ վիճակից: Մահը գոնէ հաւասար ու միակերպ է վերաբերում ամէնքին, եւ դրանով գէթ առնւում է անհաւասարութեան վրէժը եւ գոհացում տրւում սոցիալական հաւասարութեան պահանջին:*

*Այսպիսով մահուան եւ ունայնութեան երգը, որ սկսուած էր մեր միստիկական բանաստեղծութեան մէջ, մի նոր ձեւով եւ նոր բովանդակութեամբ կրկին երեւան է գալիս բոլորովին տարբեր Գրիգոր Նարեկացու մահուան երգից: Մինչ ըստ վերջինիս՝ ունայնութեան գաղափարը հեշտացնում էր ճգնաւորին աշխարհից կտրուելը եւ մահը միջոց էր տալիս նրան շուտով միանալու Աստուծուն, — ապա այժմ, 13-րդ դարում, ազգային եւ սոցիալական անարդարութիւնների հանդէպ դա հանդիսանում է, ինչպէս ասւեց, իբրեւ մխիթարութիւն, մօտ երկու դար աւելի վաղ, քան նման երգը, օրինակ, Ֆրանսիական գրականութեան մէջ: Եւ այնուհետեւ այս ցաւագար մրմունջը շարունակւում է յաջորդ դարերում, քանի որ ազգային եւ սոցիալական աղետաւոր դրութիւնը նոյնն է մնում: Մեր գրեթէ բոլոր բանաստեղծները երգում են այս ընդհանուր նիւթը, եւ ամէնքին էլ մերթ հանգըստացնում է, մերթ անհանգստացնում այս ողբերգական մեծ առեղծուածը, որ քնարերգութեան կարեւոր թեմաներից մէկն է:*

9. Կրօնական ու հոգեշահ բանքեր եւ միստիկական ձգտում:—*Ֆրիկը, սոցիալական անհաւասարութիւնը վերացնելու համար, ինչպէս ասւեց, ոչ մի գործնական միջոց չի առաջարկում: Նա հետեւում է աւետարանական խօսքին, թէ՝ սգաւորները մխիթարւում են անդէնը: Բայց մխիթարւում են ոչ ամէնքը, այլ «իմաստունները» կրօնական մտքով: Եւ Ֆրիկի քերթուածներն ամենամեծ մասով պտտւում են այս խնդրի շուրջը, թէ ինչպէս պիտի լինին «իմաստունները», «խելօքները»: Նրա այդպիսի բանքերն ունին հոգեշահ բովանդակութիւն խրատական բնաւորութեամբ. դրանք են՝ «Բան ոգեշահ», «Բան պիտանի», «Վասն հոգոյ», «Տաղ վասն հոգոյ» եւ նմանները: Դրանց մէջ փափուկ շեշտերով միակերպ յեղյեղւում են հոգու եւ մարմնի հակամարտութեան խնդիրը, այս աշխարհի եւ այն աշխարհի կամ առտէնի եւ անդէնի, երկնաւորի եւ երկրաւորի վերաբերեալ մտածութիւններ ըստ միջնադարեան սովորական կրօնական հայեացքի:*

*Սուտ է մարմին եւ ընտանի,*
*Ներքըն հողին կերթայ փըտի:*

*Էջ* 29

*Ուստի պէտք է հոգալ հանդերձեալ կեանքի, հոգու փրկութեան համար, զի հոգին առաւել է, քան մարմինը: Պէտք է միշտ պատրաստ լինել մահուան եւ վերջին դատաստանի համար, չպիտի խաբուել անցաւորին, քննել այս ու այն կեանքը, վերջին օրը հոգալ, լինել անընչասէր, հոգեւոր ճանապարհը բռնել գնալ, ուրանալ այս կեանքը, պահքով, աղօթքով ու լացով, արտասուքով սպանել մարմինը, մարմնաւոր վայելքների ետեւից չընկնել, կենդանի ժամանակն անել հոգու ճարը, աղքատներին օգնել, անցաւորը չսիրել, հառաչելով զղջալ, «մեղայ գալ», կացքը փոխել, այս կեանքը ոչինչ համարել եւ այն կեանքին ցանկալ, իրեն համար անդէնը հայրենիք շինել, բարիք անել ուրիշներին, չառնել կաշառք, շատ վաշխ ու մեծ տո—*

կոս, հետեւել միշտ աւետարանական խրատներին, մարմինն ուրանալ, որպէսզի հոգին պայծառանայ. եւ շատ նմանները: Կարիք չկայ այստեղ նրա այսպիսի երկերի մասին առանձնապէս խօսելու. միայն պէտք է ասել, որ Ֆրիկն իր այսպիսի քերթուածներով հանդիսանում է մեր հին գրականութեան նշանաւոր կրօնական բանաստեղծներից մէկը: Հաւանօրէն նա իր այսպիսի բանքերը մեծ մասամբ յօրինել է իր կեանքի այն շրջանում, երբ ցանկացել է լինել «սիրող վանքերուն», եւ ինչպէս վերեւում գրեցինք, գնացէ եւ դարձել է որեւէ վանքի միաբան, մնալով առանց որեւէ քահանայական աստիճանի, իբրեւ մի աշխարհական կրօնաւոր: Այսպիսի վիճակով միայն հասկանալի է ծագումը ոչ միայն այդպիսի, այլ նաեւ այն բազմաթիւ կրօնական քերթուածների, որոնց նիւթն առնուած է Ս. Գրքից կամ այլ կրօնական գրոյցներից: Բերենք հետեւեալ աղօթքը, որ մի կտոր է մի մեծ բանքից:

Առաւօտ խաղաղութեան,
Դէմ քո լուսոյդ ես կու մընամ,
Զինչ ըղձուկն յաղի ծովէդ՝
Քաղցըր ջըրիդ ի դէմ կու գամ...
Կենդանի աղբիւր դու ես,
Ծարաւիս տուր, որ զովանամ:
Ոչ ոսկոյ, ոչ արծաթոյ,
Ոչ աշխարհիս կու ցանկանամ,
Քո տեսոյդ եմ փափագած,
Յայս կարօտոյս զօրն երերամ.
Ժողովէ՛, տէ՛ր, ի քեզ,
Որ քո լուսոյդ արժանանամ*..
Քան զքեզ ա՛յլ ծանօթ չունիմ,
Քո դրանէդ ո՞ւր հեռանամ...

Այս գեղեցիկ մեծ քերթուածը[1] նա մի շնչով ոգել է այն ժամանակ, երբ կարծես դարձել է կրօնաւոր որեւէ վանքում, որի դռնից, իբրեւ Աստուծու դռնից, չի ուզում հեռանալ: Ապա՝ նա փափագում է, ինչպէս մոտիկ, աստուածային լոյսին եւ Աստուծու «տեսին» կամ «տեսլեանն» արժանանալ. ինչ որ կրկնում է եւ ուրիշ բանքերի մէջ: Նա իր այդ դերակայ նըպատակին տիրանալ է աշխատում սիրով ըստ կրօնական հայեացքի, ուստի մի քանի քերթուածների մէջ սիրոյ գովքն է անում, այսպէս, օրինակ, հետեւեալի մէջ.[2]

Այս է համասփիւռ ծաղիկն,
Որ թափէ ըզմարդն ի հողոյ.
Գիտեմ թէ զայս ո՛ւր ուզեմ,
Սա կենայ ի լեառն ի սիրոյ...

---

1 Ֆրիկ, Բանաստ., էջ 62–69:
2 Անդ, էջ 62:

Մի ուրիշ քերթուածի մէջ՝ «Ոտանաւորք ասացեալ Ֆրկանն յաղագս կենդանի սիրոյ առ Աստուած»[1] բացատրում է, թէ սիրով են եղել ամէն նշանաւոր գործեր, որ Ս. Գրքի եւ այլ սրբազան գրքերի մէջ պատմւում են.

Քան զամէն ինչ յառաջ սէրն է գոյացել:

Այդ աստուածային սիրու շառաւիղն իրեն բանաստեղծի մէջ էլ է ծագում, եւ դրանով է, որ նա կարողանում է իր «գեղեցիկ բաները» յօրինել.

Թէ չըկայ սէր հոգոյն ի սրտէ բըղխեալ,
Զայս ամէն գեղեցիկ բաներն ո՞վ առէր:

Ուրիշ քերթուածի մէջ էլ՝ «Նորին Ֆրկանն ասացեալ հաւատոյ»[2] իր առ Աստուած սիրոյ գովքն է անում.

Այս սէրս, որ ի յի՛մ սիրտս է
Բընակել, զայն նա՛ գիտենայ,
Որ ինքըն հանց սէր ունի,
Որ նըման ընկեր չունենայ:
Այս սէրս աշխարհիս սիրուս
Չէ նըման, ով ինքս իմանայ՝
Այս սէրս ի լուսոյ եկել.
Ով սիրէ, նա՛ անմահանայ:

Ապա թէ այս սէրն իր սրտում ունեցողը՝

Շատ հոգւոյ [=հոգու] բաներ առէ,
Ով լըսէ եւ զինքն իմանայ,
Զմարմինըն տաճար շինէ,
Որ Աստուած զայ հանգչի ի նայ:
Ցանկայ երկնային լուսոյն,
Եւ յերակ ըզմահն յիշէ նայ.
Զամէն ցեղ մեղաց տեսակ՝
Թող կոխէ ու անցնի գընայ:

Ուրեմն դարձեալ մի միստիկական փափագ մահով միանալու Աստուծու հետ. Աստուած իր մէջ, ինքն՝ Աստուծու, կամ՝ որպէսզի

Երբ որ յարութիւն լինի,
Նա անանց լուսոյն տիրանայ:

Դառնանք բանաստեղծի արուեստին:

10. Ստեղծագործութիւն ինքնաշարժ ազդումով: Ձեւական կողմը:— Առաջին տպաւորութիւնը, որ ստացւում է Ֆրիկի բանքերից, այն է, որ դըրանք մեծ մասամբ յօրինուած են սպոնտան կերպով, այսինքն մի ինքնաշարժ, ինքնաբուխ ազդումով, առանց խորը խոկալու, մի տեսակ բնազդա—

1 Անդ, էջ 159—166:
2 Անդ., էջ 146—149:

բար: Կարծես մի ներքին ձայն խօսում է նրա մէջ, նա ունենում է մտքի լուսաւորութիւն եւ սաստիկ յուզուած ու լցուած, մտասոյզ ու յափշտակուած, դիմում է բանաստեղծութեան: Այդ է պատճառը, որ նրա քերթուածներն ունեն մեծ քնարականութիւն: Հոգեշահ բանքերն անգամ, որոնք թւում է թէ իբրեւ խրատներ պիտի լինէին սառն եւ անկենդան, ունին անձնական բնոյթ, ինքնաբուխ ելնում են սրտի խորքից եւ առանց որոշ ծրագրի, ինչ-պէս ափերից դուրս ելնող գետ՝ յորդահոս ջեղումներով եւ անարգել առաջ ընթանում: Եւ բանաստեղծն ինքը լաւ զգում է իր ստեղծագործութեան այս եղանակը.

Յորժամ որ զմիտքըս կու պարզեմ [=կը մաքրեմ]
Ազդումն հոգոյս ի յիս կու գայ.
Երբ կու ծաղկի միտքս եւ հոգիս,
Լեզուս իմ հանց պըտուղ կու տայ:[1]

Այդ «հոգու ազդումը» — աւիւնը, ըստ բանաստեղծին, Աստուծու շընորհն է. ուրեմն նա նոյն կրօնական հայեացքն ունի իր բանաստեղծութեան ծագման մասին, ինչ որ Գրիգոր Նարեկացին:

Փառք Աստուծոյ միշտ կենդանոյն,
Որ հանց շնորհ նա մեզ կու տայ.
Որ կարենաք հանց բան ասել,
Որ իմաստունն հաւան կենայ:[2]

Այս միեւնոյն քերթուածի վերջին մասի մէջ նա ասում է.

Մեք գոհանամք յողորմածէն,
Թէ մի մեղաւորքս ոնց կու գըթայ.
Որ զանարժանս արժանացոյց,
Որ հանց զօհար ի չար կու գայ:
Փառըք փառաց Թագաւորին,
Որ մեր մըտացըս լոյս կու տայ.
Զինչ արեւն ի չող ջըրին՝
Ի մէջ հոգոյս կու թըռուըռայ:

Ուրիշ գրուածների մէջ էլ[3] իր ոտանաւորներն անուանում է «գօհար բան», «գօհար բան շարել»: Թէ ինչպիսի ուժեղ, արտասովոր ապրումներով ու տանջալի յոյզերով է նա յօրինել իր շատ երկերը, այդ պարզ տեսնում ենք նրա հետեւեալ տողերից,[4] որոնց մէջ նա աւելի եւս մանրամասըն նկարագրում է իր բանաստեղծելու պրոցեսը.

Շատ մի հայերէն բաներ խորհրդով դըրախտ տընկեցի,
Զաչիցս աղբերացըն ջուր քաշեցի զինչ որ սընուցի.

---

1 Ջրիկ, Բանաստ., էջ 48:
2 Անդ, էջ 50:
3 Անդ, էջ 126, «Ի ծնունդ Սուրբ Կուսին» քերթուածի վերջում:
4 Անդ, էջ 44, «Բան ոգեշահ եւ լաւ» քերթուածի վերջում:

Զիմ լերդս զինչ ըղձաց կերայ, ա՛յ եղբայրք, ինչ որ բուսուցի.
Երկու լուսն ի մին դարձաւ գիշերին, մինչ որ հասուցի·
Անկայ ի հողոց ծովըն, երբ որ զայս բաներս յիշեցի·
Զիմ միտքըս լողնորդ արի 'ւ ի ծովու յատակն իջուցի·
Զիմ աչուերը չափ արի ու ծովու ջուրըն չափեցի·
Վասն ա՛յն մարգարտին համար, որ ծովու յատակըն լինի:
Անչափ աղաչեմ զԱստուած, որ հոգոյ աչքըս բացուի,
Եւ իմ ըզգայարանքըս յաշխարհի ժանգէս մաքրի:

*Բանաստեղծն իր բանքերը* «գոհար» *կամ* «մարգարիտ» *է անուանում իրենց հոգեշահ բովանդակութեան համար, իսկ վերջինս, — հետեւաբար եւ «գոհարը», «մարգարիտը», — է իսկապէս այն անանց, անմահ կեանքը, աստուածային լոյսը, Քրիստոսի տեսութիւնը, որը տենչում է նա իբրեւ իր կրօնական իդէալը: Ինչպէս ամբողջ քերթուածները, նոյնպէս ինքնաշարժ, անբռնազբօս ծնւում են եւ ձեւաւոր արտայայտութիւնները, նմանութիւնները եւ առհասարակ փոխյարաբերութիւնները, որոնցով շատ հարուստ է Ֆրիկի լեզուն: Կարելի է ասել, որ նա մեծ մասամբ* նկարէն ձեւով, *գունագեղ պատկերների շարքով է մտածում, քիչ անգամ վերացական արտայայտութեան է դիմում, ինչպէս, օրինակ, հետեւեալ տողերի մէջ.*[1]

*Գերի Ֆըրի՛կ, մարդ մի՛ խաբիլ,*
*Մի՛ սուտ վարուք կեղծաւորիլ·*
*Գընա ի յօն դիր շինութիւն,*
*Որ յաւիտեան անհող լինիս:*
*Այս կեանքըս դուռ է եւ խաւար,*
*Եւ ի ձեռինդ լապտեր չունիս·*
*Դարանակալն հոն կայ թաքել,*
*Ճարտար փայլէ՛ որ չըմբռնիս:*
*Երբ ելանես, դու հանց գընա,*
*Որ յետ յաշխարհս այլ չի նայիս·*
*Տարաժամեալ օրն եւ գընաց,*
*Լաւ ընկերացն ե՞րբ հասանիս:*
*Մինչ դեռ ամառն է՝ պէտ արա,*
*Որ ի ձըմեռն չանկանիս·*
*Ձիւնն ի վերայ լերանց իջաւ,*
*Յաջողութիւն դու քեզ չունիս:*
*Թէ կալ ու կաս առնես այսօր,*
*Ձիւնն ի վայր գայ, դու մըսես·*
*Երթայ արեւն, եւ դու մընաս,*
*Ի շինութիւն չը հասանիս:*
*Ձիւնըն ալիքդ է սպիտակել,*
*Ձըմեռն է այն, որ ուժ չունիս·*
*Տե՛ս՝ դու տըղայ չես անիմայ,*

1 Անդ, է 35 եւ հտ.:

Աղէկ լըսէ՛, թէ խելք ունիս.
Թող զայս խաւար աշխարհս ի բաց,
Լուս աշխարհի թէ ակն ունիս...

Երբեմն պատկերներն ընդարձակւում, կազմում են մի մեծ ամբողջութիւն, ինչպէս, օրինակ, հետեւեալ կտորը, որի մէջ բանաստեղծը դիմում է Աստծուն՝ իբրեւ այգեգործի.

Թէ դընես ցանկ այս այգոյս,
Ի կողոպտէն անհոգանամ.
Այգէգործ ըզքեզ գիտեմ,
Թէ պէ՛տ չանես, նա՛ չորանամ:
Զիս տընկէ՛ ծառ յերկիր բարի,
Որ ես հաստատ արմատանամ.
Զհարաւային հողմըն գարնան
Հընչէ յիս, որ բողբոքամ:
Զիս յօտէ՛ 'ւ ի խոր փորէ՛,
Որ ես զարթչիմ զուարթանամ.
Խաղացո ջուր կենդանի
Յարմատ սըրտիս, որ կակղանամ:
Առոգա՛ յորդ վըտակով,
Որ կանաչեմ եւ մանկանամ.
Մի՛ թողուր զիս անարեւ
Եւ անծաղիկ, որ գօսանամ:
Զիս սընո եւ դարմանէ՛,
Որ ի ժամու պտուղ քեզ տամ.
Յանձըրդիս եմ ցամաքել.
Ամպ չէ ցօղեալ, որ զուարթանամ:
Ցօղեա՛, տէր, զցօղ ողորմութեան,
Լինի պտուղս իմ քաղցրահամ.
Աղերսեմ թագաւորիդ,
Առնում պարգեւս եւ պարծենամ:

Ինքնաբուխ ստեղծագործութեան հանգամանքից ծագում է նաեւ Ֆրիկի արուեստի թերութիւնները: Արդարեւ առանձին ձեւաւոր խօսքերը գեղեցիկ եւ ազդու են, բայց պատահում է, որ նա իրար ետեւից շարում է պատկերաւոր «գոհար բաներ», թեթեւութեամբ յօրինում է վերեւում բացատրըուած հայրենի եւ յամբական չափերով բազմաթիւ տողեր, որոնց ներքին կապակցութիւնը մնում է տարտամ, կամ թէ մի երկար շնչով, մի նուագով, բերում է բազմաթիւ նմանութիւններ, այնպէս որ գրուածքը, կարծես, այլաբանութիւն է դառնում: Այսպիսի ընդարձակուած պատկերները մէկ մէկ մնում են անյստակ, մութն ու դժուար ըմբռնելի, զի բանաստեղծըն էլ ետ չի դառնում իր երկերը յղկելու եւ կարգաւորելու. Նա դրանք այնպէս բնական ձեւով էլ թողնում է, ինչպէս սկզբում ինքնաշարժ ոգել է:

*Այդպիսով առաջացել են բազմաթիւ աւելորդ* կրկնութիւններ *ոչ միայն տարբեր բանքերի մէջ, այլեւ նոյնի:*

*Ապա՝ մի աչքի ընկնող թերութիւն էլ այն է, որ քերթուածները յաճախ շատ* երկարաշունչ *են եւ այնպէս, որ երբեմն հեշտ չի հասկացւում կամ պարզ եւ արագ չի իմացւում բազմաթիւ տողերի կամ տների ու մասերի յաջորդականութիւնը մի հիմնական մտքի, մի թեմայի շուրջ, կամ թէ դրանք իրար հետ միանում են լոկ ընդհանուր բովանդակութեամբ: Պատահում է, որ նոյնիսկ մութն է մնում եւ չի որոշւում քերթուածի թեման, հիմնական միտքը: Արդարեւ մի բանքի համար*[1] *հեղինակն ասում է, թէ*

*Ֆրիկն անցեղ պարզ է խօսել,*
*Որ ամենայն մարդ հասկանայ...*

*Բայց ոչ բոլոր բանքերն իրենց ամբողջութեամբ միշտ եւ իսկոյն հասկանալի են, թէպէտ եւ սովորաբար պարզ ու հաճելի են նրա տողերը:*

*Առնենք իբրեւ օրինակ նրա մի քերթուածը,*[2] *որի մէջ «անանց բարուն տիրանալու» միստիկական ձգտումը երեւան է գալիս սկզբում կենդանի կամ կենդանարար ջրի պատկերով, վերջը՝ ծովում որոնած գոհարի:*

*Փափագել եմ ի ջուրն, յուսով կու դընամ,*
*Թէ հասնիմ յայն աղբիւրն, որ կենդանանամ,*
*Ես խմեմ յայն ջրէն ու հետ գոհանամ,*
*Թէ թաղուն մէկ պահիկ, յոր յինքն լողամ.*
*Այն 'սիրովն յաւաղանն ես գիս լուանամ,*
*Նորոգիմ վերըստին քան ըղհին Ադամ:*

*Ապա մի երկայն շարք տողերի մէջ «Ջուրը» դէն դնելով՝ ասում է, որ եթէ արժանի լինի՝ մեծապէս կը փայլի. եթէ «կենդանեաց երկիրն» է կամենում, Աստուծու օրէնքից չի հեռանայ. եթէ ուզում է «անանց բարուն տիրանալ», պիտի մոռանայ տուն ու տեղ, քոյր, եղբայր, պիտի սաստիկ արտասուի, մեղքից մաքրուի եւ արդարանայ, թողնի հպարտութիւնը, քուրձ հագնի, նեղ ճանապարհով գնայ, Աստուծուն մօտենայ, որպէսզի վերջին դատաստանի ժամանակ անվախ արժանանայ Յիսուսի տեսին, լաւ ընկերներից ետ չմնայ: Յետոյ նորից վերադառնում «Ջրին».*

*Յայն աղբիւրն եմ կարօտ, որ լաց կու կենան,*
*Թէ հասնի կաթ մի յիս, որ արդարանամ:*
*Երանի՛ ինձ հազար, թէ հանց լինենամ,*
*Որ ի մեծ աղբիւրէն կարօտ չի մընամ.*
*Դու Աստուած ես գըթած եւ խիստ ողորմած,*
*Յայն ջրէն ինձ արբո , որ ես լիանամ,*
*Ի բըղխմանց սուրբ հոգւոյդ, որ ես զովանամ,*
*Յերեսաց ի լուսոյդ ուրախ լինենամ...*

---

1 *Ֆրիկ, Բանաստ., էջ* 47, *մահուան մասին յօրինուած ոտանաւորի մէջ:*
2 *Ֆրիկ, Բանաստ., էջ* 203—208:

Դարձեալ՝ մի աւելի եւս մեծ չարք տողերի մէջ նկարագրելով իր հոգեկան վիճակն ու տենչանքը՝ ասում է, թէ վերջին դատաստանի օրը Յիսուսի աջ կողմը գնայ, խոստացած բարիքներին տիրանայ այն կեանքում, բայց կասկածում է այդ մասին, համարելով իրեն մեղքերով մեռած. «անըզգամ փորձողից» ընդանուած, ինչպէս մի յիմար կամ հարբած: Վերջն Աստուծուն դիմելով՝ աւելացնում է.

Երբ բացեր զիմ ըզմիտս, որ կու ըզգամ,
Վառեցաւ սէրդ ի յիս, զերդ հուր կու եռամ.
Խօսեցայ հետ սրտիս, թէ ես ի՞նչ լինենամ,
Ո՞վ հանէ յայս կապէս, որ ես դուրանամ:
Տէ՛ր, դքո ձայնդ յիս հասո՛ւ, որ խաղաղանամ:
Լոյս ծագեաց խաւարիս, այլ ոչ կուրանամ.
Արդճացիր ծառայիս, որ չանպիտանամ,
Քարշեցեր զիս ի քեզ, տէ՛ր, ո՞ւր դառընամ:
Երբ յիշեմ զայս գոհար բաներս ու ցընծամ,
Ջահադին զիմ ըզմեղքն ու նըստիմ եւ լամ:

Պիտի սպասէինք, թէ քերթուածի վերջն է. բայց այս «գոհար բաներով» լուսաւորւում է նրա միտքը, եւ զուգորդութեամբ ծնւում է «գոհարը» [=մարգարիտը] ծովի մէջ որոնելու հետեւեալ ընդարձակ պատկերներն այլաբանութեամբ.

Զինչ ըզգետ յաշխարհիս բոլոր պիտի դամ,
Ու մտանիմ ես Ծըրիկս ի ծովն ու ծըփամ.
Ի յալեաց կոծելոյն ես ո՞նց [վ. է՞ր] վախենամ.
Երբ ծովուն ի միջին ես դարդ լինենամ [=ընկղմիմ],
Երբ որ զիս հարցանեն, թէ ո՞ւր կու գընամ,
Ես նորա պատեհի պատասխանի տամ,
Թէ՝ խնդրեմ զայն գոհարն, որ փարթամանամ
Ու տեսնում[1] իմ մըտայց աչօքս եւ դողամ:
Ո՞վ բերէ զինքն առ իս, որ պահ մի խընդամ,
Կու քաղի շունչս յինէն, թէ ե՛րբ մօտենամ,
Եւ առնում պահ մի յափս եւ ուրախանամ,
Եւ հոգով եւ մարմնով ես անմահանամ:
Ես հաստատ եւ անբեկ նաւի կու մընամ,
Որ մըտնիմ ես ի նա՛ եւ այլ չերերամ:
Նաւապետ է Քրիստոս, ի հետ կու գընամ,
Քան ըզնա այլ ինձի ճարակ չունենամ.
Հասուցէ զիս յայն տեղն, որ ես կու ցանկամ...
Թող մաշիմ ի յայս հոգս եւ խիստ հընանամ.
Իմաստուն եւ խելօք ապա լինենամ.

---

1 Ծրիկ, Բանաստ. տպուած է «Կուտեսնում», իսկ «Արարատ» 1918, էջ 203 ունի «Ու տեսնում»:

*Երբ առնեմ քննութիւն ու զլաւն իմանամ,*
*Երբ սակաւ մի ատ լամ, նա՛ անդ խընդանամ,*
*Արարչէն ես պատիւ եւ փառ ըստանամ,*
*Որ հանգչիմ ես անդէն 'ւ ի նա դոհանամ:*

*Նախ՝ նկատեմ, որ «ի նա գոհանալ», այսինքն «յարարիչն գոհանալ» գործուածը նշանակում է՝ ղաւանել, խոստովանել, ճանաչել արարչին իբրեւ Աստուած: Ապա՝ Քրիստոսի՝ նաւապետ լինելու համար իբրեւ համեմատութիւն՝ բերեմ հետեւեալ չարականները.*[1]

*Ծով կենցաղոյս հանապազ զիս ալեկոծէ,*
*Մըըրկեալ ալիք Թըշնամին ինձ յարուցանէ,*
*Նաւապե՛տ բարի, լեր անձին իմոյ ապաւէն:*
*Մերձ եմ յընկըղմիլ, օգնեա՛ ինձ, նաւապետ բարի,*
*Քանզի ծանրացան ի վերայ իմ բեռինք մեղաց...*
*Փըրկեա ի վտանգէ ըզնաւաբեկս ի յալեաց ծովուս...*

*Այստեղ երկար խօսուեց Ֆրիկի այս քերթուածի մասին իբրեւ մի օրինակի, թէ նա ինչպէս է յօրինում: Բացի այդ՝ մանրամասն բերուեց դրա բովանդակութիւնը, որպէսզի պարզուած լինի, որ մեր բանաստեղծի այս երկը զուտ կրօնական բովանդակութիւն ունի. թեման է, ինչպէս սովորաբար նրա միւս կրօնական երկերինը, «հոգով եւ մարմնով անմահանալ», «անանց բարուն տիրանալ»: Եւ նա այդ բանին հասնել է աշխատում սովորական միջոցներով — լինել իմաստուն եւ սաէն ապաշխարել անդէնի խնդութեան համար: Մի անգամ որ այս քերթուածի նիւթը, թոյլատրելի չէ թեթեւ մօտեցումով, — ինչպէս վարուել են, — ամբողջ քերթուածից պոկել հանել ծովի մէջ «գոհար» (=մարգարիտ) որոնելու պատկերը, որ տեսանք նախորդ 9-րդ պարագրաֆի վերջում եւս, եւ դրա մէջ գտնել ինչ որ ազգային բան,*[2] *կամ «հասարակական մի նոր կեանքի» ձգտում:*[3] *Այդ, կարծում եմ, կը նշանակի բնաւ չհասկանալ Ֆրիկի այս երկը, կամ թէ բռնի կերպով չուզ տալ դրա կրօնական իմաստը եւ իր ուզած բովանդակութիւնը դնել մէջը: Գէթ հին բանաստեղծութեան նկատմամբ պէտք էր լինել ուղղամիտ եւ ուղղատես: Նրա որոնած «գոհարը» կամ «մարգարիտը» ոչ թէ հասարակական երջանիկ կեանքըն է, այլ անդէնի «միստիկական անմահ կեանքը», «անանց բարին», «հոգով ու մարմնով անմահանալը»: Կրօնական բաների մասին խօսելու համար՝ պէտք էր ծանօթ լինել նիւթին եւ կրօնական լեզուին: «Գո–*

---

*1 Շարական հոգեւոր երգոց, Էջմիածին, 1861, էջ 132 եւ հտն.:*

*2 «Արարատ», 1918, էջ 202 եւ հտ. Տիրայր եպիսկոպոսի յիշուած յօդուածը:*

*3 Ֆրիկ, Բանաստեղծութիւններ, էջ 15, Մ. Մկրեանի յիշուած առաջաբանի մէջ. «Ֆրիկը... ձգտել է, երազել է հասարակական մի նոր կեանք, այնպիսի կեանք, որ կեղեքուող աշխատաւորութեանը կարողանար երջանկութիւն բերել: Իր այս ձգտումն ու մտորումները Ֆրիկն այլաբանօրէն արտայայտել է մի քանի բանաստեղծութիւններում. երջանիկ կեանքը՝ նրա փնտռած մարգարիտը կամ գոհարն է, որը ձեռք բերելու համար բանաստեղծը պատրաստ է ամբողջ աշխարհը պտոյտ գալ եւ ամէն մի դժուարութիւն յաղթահարել»:*

Զարդը» կամ «մարգարիտը» կրօնական լեզուի մէջ մի սիմբոլ է հէնց այդ հոգեւոր անմահութեան ըստ քրիստոնէական գաղափարի. այսպէս, օրինակ, Կոմիտաս կաթողիկոսն իր հռչակաւոր օրհներգութեան մէջ Հռիփսիմեան կոյսերին անուանում է «վաճառականք առատք անյայտ մարգարտին» = «անեբեւոյթ մարգարտի ճոխ վաճառականներ», այս դէպքում գնողներ, գընորդներ ըստ «վաճառական» բառի երկրորդ նշանակութեան: Բերեմ նաեւ Առաքել Սիւնեցու ներբողեանից[1] հետեւեալ կտորը, որով նա գովաբանում է Գրիգոր Տաթեւացուն. «Գրիգորիոս՝ վաճառականն անգին մարգարտին, որ զամենայն անցաւոր եւ զնանի՝ դիւրագին վաճառեաց եւ առ ոչինչ համարեցաւ, եւ միայն զմարգարիտն Քրիստոս առ ինքն ընկալաւ»:

Ֆրիկի երկերի մէջ ուրիշ դէպքերում էլ կիրառուած են եկեղեցական գրականութեան մէջ սովորական դարձուածներ, արտայայտներ, պատկերներ եւ նմանները: Դրանք արդէն ընդհանուր տեղիներ են, բայց բանաստեղծից նո՛րինորոյ ոգեշնչուած են, ուստի եւ կրում են իւրայատուկ դրոշմ: Այսպէս են, օրինակ; իրեն հոգեկպէս հիւանդ համարելը ֆիզիկապէս հիւանդի պատկերով, աշխարհիս կեանքը երազ ընդունելը, վերջին դատաստանն ու դժոխքը, որ բաւական յաճախ նա նոր ու թարմ ձեւով նկարագրում կամ յիշեցնում է ի վախ եւ ի զգուշութիւն մեղաւորների, այսպէս եւ հոգու եւ մարմնի միջնադարեան հակամարտութիւնը.[2]

Հոգիս ի մարմինս ասաց.
«Ա՛յ տրխմար, ողորմ ու լալի,
Վաղըն դատաստան լինի,
Չիս առնէ որդի գեհենի»:
Հոգիս է տրխուր նըստեր,
Ձօյլ տեսնու՝ լալով գանդատի,
Թ՝ «Եղայ հարամու ընկեր,
Թալանեց 'ւ արար զիս գերի»:
Ահա որ աչունն երեկ,
Կու չարժիմ, քամին կուտանի.
Ցօղուածս ի թոռմիլ արեր,
Չինչ կըտրած ծառն որ ցամաքի:
Ոտիցս ի գնալ առնում,
Նա՛յ գողայ 'ւ ի յետ կոլորի,
Աչերս իմ սակաւ գոցի,
Իմ թութակ լեզուս կու կապի...

Յօրինում է յաճախ ոչ միայն սովորական ոճական ձեւերով, այլեւ Ս. Գրքից ակնարկներով՝ Ադամից սկսած, կամ զղջում է Աւետարանի խօսքե-

---

1 Գիրք քարոզութեան... Գրիգորի Տաթեւացւոյն, Ամառան հատոր, Կ. Պոլիս, ՌՃՂ=1190+551=1741, էջ 719. «Առաքել վարդապետի ասացեալ ներբողեան առ քաջ հռետորն... Գրիգոր Տաթեւացի...»:

2 Ֆրիկ, Բանաստ., էջ 171. «Տաղ... վասն հոգոյ»:

րով եւ առակներով։ Ներսէս Շնորհալու «Յիսուս որդի» երկի ձեւով մի քերթուածի մէջ[1] էլ առնում է «Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ» յայտնի երգի տողերը։ Եւ վերջապէս՝ կան ամբողջ բանքեր աստուածաշնչեան նիւթերի մասին,[2] բոլորն էլ յօրինուած գունեղ, պարզ, թեթեւ ոճով եւ անձնական զգացմունքով։

11. Մի քանի ուրիշ գրական տեսակներ (գրական սեռեր)։— Յաճախ նա իր երկերի մէջ ստեղծում է անկեղծ, հոգեբուխ աղօթքներ, աղաչական ու ողբագին եղանակով, որոնց մէջ խօսելով Աստուծու հետ՝ ապաշաւում է մեղմ լիրիզմով, զգացւում է ցաւատանջ հեղինակի ճնշուածութիւնը, կարծես, մի ծանր բեռան տակ.

Իմ մեղքն ի վերայ ուսիս
Կու հակէ ի վայր կու տանի։

Աւելի եւս յաճախ խոր կրօնական ոգով տոգորուած՝ ինչպէս մի բարեհոգի ծերունի, զրոյցի ձեւով հանդիստ խրատում է իրեն, կամ իր անձով՝ ուրիշներին։ Նրա խրատներն էլ, որ ընդհանրապէս աւետարանական բովանդակութիւն ունին՝ ուղղուած ամէնին, միշտ քաղցր ու համեղ են, երբեմն ժողովրդական ձեւով.

Զայս վերայ ի՛նձ եմ խօսեցեալ,
Մի՛ մեղադրէք, խըրատ կու տամ։

Ուրիշներին չվիրաւորելու համար այսպէս է ասում նա վերջին դատաստանի եւ դժոխքի մի զգածուած նկարագրի մէջ։[2] Բայց աշխարհի հարստահարիչները, աշխատաւորների քրտինքով լաւ ուտող–խմողները շատ բան ունին Ֆրիկի լեզուից նեղանալու. Նա առիթ չի փախցնում ոչ միայն հումորով, այլեւ դառն հեգնանքով, անգամ կծու սարկազմով ծաղրելու այնպիսիներին եւ նրանց վրայ բանաստեղծական երգիծաբանութիւններ յօրինելու։ Ահա մէկը.[3]

Է՛ անմիտ եւ անասուն,
Գիտե՞ս՝ զոր տեղիքըն կուգես…
Հազար կապիճ մեղք ունիս,
Այդով ո՞նց երկինք ելանես։
Եղբա՛յր, թէ դու շա՛տ ուտես
Ու խըմես, նա՛ շա՛տ հառաչես,
Զասես, թէ դու մարդ ծընար,
Յիրաւի ի յէշ նըմանիս.
Երթաս թաւալիս յաղբին,
Հետ թոքաս եւ հետ փուք հանես.
Այդով դու ի՞նչպէս հասնիս
Յայն սըրբոց դասն որ դու կուգես…

1 Ֆրիկ, Բանաստ., էջ 118 եւ հտ., «Նորին Ֆրիկանն ասացեալ բան պիտանի ե-լաւ»։

2 Անդ, էջ 167—170։

3 Անդ, էջ 155—158, «Բան շահաւէտ»։

Մի մեծ խրատի մէջ (47 քառեակ), որ սկսւում է «Է՜յ անօրէն եւ անառակ երիտասարդ» բառերով,[1] ամէն երկու տողով նկարագրում է անառակ հարստի վարք ու բարքը եւ ապա ուրիշ երկու տողով՝ թէ ինչպէս պէտք էր ապրել.

Դու զատամունքդ կրճրտէիր,
Զինչ նենգաւոր հարբած ուղտոյ.
Քաղցըր պիտէր զինքըդ բանալ,
Անուշ խօսել հետ սիրելոյ:
Զլեզուդ մըխել ես չար ու սուր,
Զես ճանճրանալ յիշոնց տալոյ.
Փառաբանող ստեղծած է զա՝
Զտիւ եւ զգիշեր, զառաւօտու:
Բերանըդ պիղծ է ու զազիր՝
Ի յամենայն պիղծ ուտելոյ...
Զխուչակըդ լայն ես դու բացեր՝
Զհարամն անհոգ ի կուլ տալոյ...
Լանջացդ անուշ զայլը քո յերակ,
Զեռըն կնոջ անօրինոյ...
Բազուկըդ հաստ էր եւ յաղթող՝
Վասըն կըռւոյ եւ ծեծելոյ...
Զեռքըդ պիղծ է եւ անմաքուր՝
Ցաղտեղութեանց 'ւ ի զըկելոյ...
Սիրտըդ լցած է նենգութեամբ,
Քան ըզգայլոյ եւ զառիւծոյ...

Վերջին մասի մէջ կենդանի նկարագրում է, թէ այդպէս ապրողն եւ իր խրատը չպահողն ի՛նչ վիճակ է ունենում վերջին դատաստանին: Մի ուրիշ քերթուածի մէջ[2] սուր երգիծաբանութեամբ դիմում է հարստին ու փարթամին՝ ծաղրելով նրանց նիստ ու կացն ու վախճանը.

Է՞ր ես հագել դո՛ւ նասիճ
Ու նըստել զինչ մէկ ի նուրին.
Ճորտեր են կանգնած յառջեւդ.
Զըռօաչ գինին լընուին.
Տառպելքն են ի դուռն եկել,
Որ իւրեանցն կըտոր մուրային.
Կանչէր թէ՝ ի զատ հանէք
Ցերեսէս, որ իրք չուզէին.
Յորժամ դատաստան լինէր,
Որ ըզքեզ յառաջ կոչէին,

1 Ֆրիկ, Բանաստ., էջ 95—104. «Խրատ ոգեշահ ասացեալ Ֆրկանն վասն երիտասարդի եւ արբեցողաց»: Մի ուրիշ ձեռագրի մէջ «Խրատ ոգեշահ ասացեալ Ֆրկանն վասն ցանկութեան երիտասարդի շնութեան»:
2 Ֆրիկ, Բանաստ., էջ 127—129, «Բան մեկնութեան»:

Ի՞նչ ես դու տուել նոցա,
Որ ի քո՛ դուռըն կու գային:
Ո՞ւր են այն ամէն ճորտերն,
Որ կանչէին անո՛ւշ պարոնին.
Թող գան ու թափեն ըզձեզ
Կըրակէն 'ւ ի հուր գեհենին:
Ո՞ւր է քո ոսկի կապայն,
Որ ծառայքն ի թեւն առնուին.
Ո՞ւր է փափուկ անկողինդ,
Որ գիչերըն քեզ փըռէին:
Այսօր ոչ կապայ ունիս,
Ոչ անկողին ի մէջն ի հողին.
Ցայգուց հուր ու բոց ածեն
Ի բերան ըռօաշ խըմողին...
Ո՞ւր է ձեր ամէն դեկանն
Ու թաւերն եւ շատ ծառանին
Թող գան ու թափեն ըզձեզ
Ի ձեռացըն չար տանջողին...

*Այդպիսիներն իրենց արդարացնել են ուզում՝ իրենց արարքների համար մեղաւոր բռնելով* սատանային. *այդ էլ ծաղրում է մեր բանաստեղծը.*[1]

Աղէկ քընընէ ըզքեզ,
Ա՛յ յիմար, թէ ի՛նչ բանի ես.
Զչարըն քո կամաւ գործես,
Զսատանայ պատճառ դու դընես:
Եղբա՛յր, քեզ երդումըն տամ,
Սատանայ դու ե՞րբ տեսել ես.
Ասա՛, թէ ի՞նչ կերպ ունի.
Կամ ի յո՞ւմ բերնէ լսել ես.
Դու զմիտքդ սատանայ զուգես,
Ի յաշխարհս ի չուռ կու ածես.
Սատանայ զայն ի՞նչ գիտէ,
Զինչ որ քո մըտօքըդ քըննես.
Ցայն կեանքն ո՞վ առնէ մըտիկ
Այդ պատճառիդ ինչ որ դընես:

*Անամիտ պիտի լինել կարծելու համար, թէ Ցրիկը չի հաւատում սատանային, ինչպէս եւ Աստուծու գոյութեան.*[2] *Նա վերեւի տողերով միայն ծաղրում է մեղքը սատանայի վրայ գցողներին եւ սատանային իրեն, թէ չէ՝ մեր բանաստեղծը, ինչպէս ընդհանրապէս միջնադարում, ընդունում է սա-*

1 *Անդ, էջ 157:*

2 *Ցրիկին աթէիստ էլ դարձրին. «Ցրիկն իր մի քանի տողերի մէջ երեւան է գալիս նաեւ որպէս աթէիստ: Նա շառաչուն ապտակ է զարկում «անճառելի», «անքըննելի», «անեղ» Աստծուն» (Ցրիկ, Ժողովածու, Երեւան, 1937, էջ 66, յօդուած Ե. Թորոսեանի):*

տանայի սադրանքը նոյնիսկ իրեն համար, բայց դրանով չի արդարացնում նա ինքն իրեն: Նա իրեն էլ է խիստ ծաղրում այդ նկատմամբ, այն էլ խորին ծերութեան օրերին իր լաւագոյն բանքերից մէկի մէջ.[1]

Ջանացի թէ լոյսն ելնեմ,
Ի խաւարըն խիստ մօտեցայ...
Ալիքս է դեղին դարձեր,
Նա մեղօք այլուր սեւացայ...
Ականջս խարողին դըրի,
ԶԱստուծո՛յ բանըն մոռացայ...
Բելիար ինձ զայս ասաց,
Թէ՝ «Քան զքեզ ինձ մէկ այլ չըկայ.
Զիմ կամքս ես դու կատարել,
Ես քեզ տամ՝ զինչ քեզ պիտենայ,
Տանիմ ըզքեզ իմ դարպասն,
Որ անես աղէկ թամաշայ»:
Զթըմբուկն էր ի ձեռն առել
Ու ինձի կ՚ասէր, թէ՝ «խաղա՛,
Որ ես հանգչիմ իմ դասովն
Ու եղբայրն իմ Բեղզէբուղայ.
Հանցեղ դու չընորհք առնուս,
Ով հայի ի քեզ՝ ծիծըղայ»:

Ահա թէ ինչպիսի «թամաշայ» — տեսարան է բաց անում Բելիարը. Նա հանդիսաւոր կերպով բազմութեան առաջ պար է ածում իր կամքը կատարող ծերունուն եւ խաղք ու խայտառակ դարձնում նրան. Ֆրիկը մի բանքի մէջ[2] ինքն իրեն դիմելով ասում է, թէ «մեծ ատեանի» ժամանակ՝

Կապի քո բըլբուլ լեզուդ,
Ի յահէն լինիս դու լեղակ,
Ո՞ւր են քո ամէն բաներն,
Հայերէն մասալ ու առակ:

Վերջին տողից պէտք է եզրակացնել, որ նա որոշ թուով «մասալ ու առակներ» պիտի գրած լինի, բայց յայտնի է միայն մէկը,[3] որ վերնագրի մէջ անուանուած է «առակ»: Երկու հարուստ եղբայր կային Մսրում,—ասում է նա:—Մեծ եղբայրն ուզում էր մորթել փոքրին, որպէսզի բոլոր հարստութիւնն իրեն մնայ: Պատից մի աղւես պատմում է իր գլխից անցածները եւ համոզում մեծ եղբօրը չգործել եղբայրասպանութիւն: Գեղեցիկ պատմուած առակ է, որի բուն գաղափարն է մարդուն ոչնչութիւնը: Խօսող աղւեսը

1 Ֆրիկ, Բանաստ., էջ 79—81. «Նորին Ֆրկանն է ասացեալ լաւ հաւատոյ». ուրիշ ձեռագրի մէջ. «Ողբանք զղջման ի հոգւի ասացեալ Ֆրկանն»:

2 Ֆրիկ, Բանաստ., էջ 57 եւ հտն., «Նորին Ֆրկանն ասացեալ հոգեշահ», սկսւում է «Ֆրիկ զինչ ծընծղայ ես դու» խօսքով:

3 Անդ, էջ 199—202. «Տաղ Ֆրկան ասացեալ ի վերայ եղբայրասպանին»:

*ակզբնապէս եղել է մի մեծ պարոնի մարմինը, որ զանազան արկածների հանդիպելուց յետոյ՝ բանեցուել է իբրեւ աղւսի նիւթ:*[1]

*Այսպէս՝ Ֆրիկը կիրառել է բազմազան բանաստեղծական ձեւեր ու տեսակներ, երբեմն միեւնոյն բանքի մէջ: Նա Ե՛ւ ձեւով, Ե՛ւ հարուստ բովանդակութեամբ հանդիսանում է մի ինքնուրոյն առաջնակարգ բանաստեղծ, որ հաւասար զեղեցկութեամբ երգում է Ե՛ւ իր անձնական կեանքի վիճակը, Ե՛ւ ազգային-քաղաքական եւ հասարակական խնդիրներ, արտայայտիչ դառնալով իր օրերի իրականութեանը, պայքար մղելով ընդդէմ հարստահարիչների եւ խորը հաւատալով ժողովրդի լաւագոյն ապագային: Նա միաժամանակ եւ լաւագոյն կրօնական քնարերգու է: Նա աչքի է ընկնում եւ այնու, որ աջողութեամբ յօրինում է զանազան տեսակներ, ոչ միայն խսկական քնարական քերթուածներ, այլեւ խրատական երկեր, երգիծաբանութիւններ, աղօթքներ եւ այլն, բոլորն անձնական զգացումով հեղեղուած:*

*Վերջապէս՝ այս էլ պիտի յիշել, որ նա շատ սիրում է նաեւ* իմաստական ասքը, *բայց ոչ իբրեւ մի առանձին տեսակ, այլ այդպիսի տողերով ու տներով նա համեմում է իր բանքերը, ինչպէս վարւում են ժողովրդի մէջ չնորհալի խօսողները գործածելով առածներ: Կարծես այդպիսիներին էլ հետեւում է եւ նրանց առածներից էլ օգտւում է մեր այս բանաստեղծը: Յաճախ նրա քերթուածների մէջ գտնում ենք մեծ վարպետութեամբ յօրինուած մի քանի իմաստալից խօսքեր, որոնց մէջ խտացրած կերպով արտայայտւում է հեղինակի բուն գաղափարը կամ խրատը, մեծ մասամբ իբրեւ բարոյախօսական եզրակացութիւններ: Այսպէս, օրինակ, հետեւեալները նրա մի երկից.*[2]

*Զինչ զօրն ի բուն մարդըն խորհի,*
*Գիշերն ամէնըն խափանի...*
*Զինչ որ մարդոյ խորհուրդ լինի,*
*Ամէնըն հող է եւ քամի:*
*Այն բաղային եմ նմանի,*
*Որ փոքր որսին ոչ հաւանի.*
*Ով որ ածէ զաչքն այլ մեծի,*
*Քաղցած կենայ եւ անօթի...*
*Երբ ժամանակ մարդոյն ծըռի,*
*Երեսս ի վայր նա գըլորի,*
*Երթայ դիպնի հանցեղ դարի,*
*Որ մինչ ի մահն ոչ վըճարի:*

---

1 *Այս առակը նման բովանդակութեամբ կայ Վենետիկի Մխիթ. Ձեռագրատանը, թիւ 1823 (Գ. է), էջ 579—582, 1690 թուականի մի տաղարանի մէջ «Առակ լաւ եւ պիտանի» վերնագրով: Վերջին երկու տողերն են՝ «Այս քանի բանս իւրմէն ասեր Աշըխ Քօչակն կունեհքար»: Սկզբի եւ վերջի երկու տները, որ ձեռքի տակ ունիմ, նման չեն Ֆրիկի գործին: Երեւի, Քօչակը նոյն բովանդակութիւնը վերապատմել է. բայց հաւաստի կարելի է ասել միայն ամբողջը նկատի ունենալով: Գուցէ եւ Քօչակը իւրացրել է Ֆրիկի առակը:*

2 *Ֆրիկ, էջ 25 եւ հտ., «Վասն ողբանք փոշիմանութեան»:*

*Կան քերթուածներ, որոնք մասամբ կազմուած են իմաստական առակների շարքից. այսպէս, օրինակ, Նրա մի «Հոգեշահ եւ պիտանի» բանքը.*[1]

*Իմ սի՛րտ, վատին մի՛ լսել,*
*Ու չարին տեղ իսկի մի՛ տալ.*
*Յայս աստըւորիս վերայ*
*Վատն իսկի մարդու չի մնալ:*
*Այն մարդն որ ինքն վատ առնէ,*
*Հանդիպի ինքն վատի մի այլ...*
*Յորժամ քո չարկամն ընկնի,*
*Դու ի քո սիրտըդ մի՛ խընդալ...*

*Թէպէտ եւ այսպիսի խօսքերը յաճախուած են Ֆրիկի երկերի մէջ, բայց նա իմաստաբան քերթող չէ, այլ քնարերգու: Իմաստական առքերը, որ առաջ անուանում էին «առք իմաստնոց», մի առանձին գրական տեսակ են կազմում, եւ ունենք բանաստեղծներ, որոնք սիրում են այդ եւ յօրինում են ամբողջական իմաստա-ուսուցական գրուածքներ:*

## ԻՄԱՍՏԱԲԱՆՆԵՐ ԵՒ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՐԶՆԿԱՑԻ ԿԱՄ ՊԼՈՒԶ

1. Իմաստա-ուսուցական բանաստեղծութիւն:—*Առակների հետ միաժամանակ 13-րդ դարի վերջին քառորդից ի վեր, մինչեւ 17-րդ դարը եւ յետոյ, ծաղկում է իմաստական եւ ուսուցական կամ խրատական բանաստեղծութիւնը: Հայրենասիրական որոշ գաղափար արծարծել եւ ուսուցանելիս է եղել եւկապէս նաեւ Ստեփաննոս Օրբէլեանի «Ողբի» միտումը, բայց իմաստական բանաստեղծութիւն չէ այն: Վերջինս յօրինուած է սովորաբար միջին գրական հայերէնով ու ժողովրդական ոճով եւ բովանդակութիւն ունի ընդհանրապէս բարոյական գաղափարներ, երբեմն պարսաւի կամ խորհրդածութեան հետ միացած: Բանաստեղծներն իրենց ուրիշ երկերի հետ մեծ սիրով քերթում են նաեւ իմաստալից բանքեր կամ, ինչպէս հնում անուանում էին, «առք իմաստնոց», «բանք իմաստութեան», որոնց մէջ կան այնպիսիները, որ ժողովրդական առածների եւ իմաստալից ասութիւնների համեղ ու դուներ վերակերտումն են: Որքան մեր միջնադարեան առակները ձեւով մեծ մասամբ անմշակ են մնացած, այնքան աւելի գեղեցիկ են յօրինուած այս փոքրիկ իմաստական քերթուածները, որոնք մի քանի տողով, սեղմ եւ կուռ տանաւորներով տալիս են մեզ երբեմն ընդարձակ աշխարհայեցութիւն: Դրանց իմաստաբան հեղինակները մէկ մէկ փայլում են անձնական համարձակ, իրենց ապրած դարաշրջանի նկատմամբ՝ անգամ խիզախ տեսութիւններով, բայց նրանց առքերը մեծ մասամբ, ինչպէս մեր միջնադարեան առակները, տոգորուած են քրիստոնէական բարոյական գաղափարներով, զբաղւում են կրօնական ուղղութեան խրատներով, մերթ-մերթ նաեւ այնպիսի խնդիրներով, որ անձնապէս հետաքրքիր են եղել քերթողի ժամանակի մարդկանց համար: Կան հարկաւ եւ այնպիսի քերթուածներ, որոնց քարոզած գաղափարներն արժէք ունեն նաեւ ամէն տեղի եւ ժամանակի հա-*

1 Ֆրիկ, Բանաստ., էջ 89 եւ հտն., «Նորին Ֆրկանն ասացեալ Հոգեշահ եւ պիտանի»:

մար, քանի որ ընդհանուր մարդկային կեանքն է կազմում դրանց բանաստեղծների մտածութեան նիւթը: Թէպէտ եւ այդ քերթուածները պատմուած են բարոյակրթական քարոզներով, երբեմն կազմուած են մի ամբողջ շարք իմաստական ասքերից — բարոյական սենտենցիաներից, բայց դրանց հեղինակներն իսկական բարոյախօսներ — մորալիստներ չեն: Նրանց երկերն ուսուցական կամ խրատական լինելով հանդերձ՝ սովորաբար իսկական քնարերգութիւններ են, որովհետեւ օժտուած են անձնական տրամադրութեամբ, ջղոտ եւ խորն զգացած, եւ բարոյական խրատներն էլ ըստ երեւոյթին իրենց հեղինակների փորձառութեան եւ ապրումների արդասիք են, ինչպէս, օրինակ, Ֆրիկի եւ Կոստանդին Երզնկացու:

Այս տիպի, ինչպէս եւ ընդհանրապէս խրատական եւ հոգեշահ քերթուածները կազմում են մեր հին բանաստեղծութեան հարուստ ճիւղերից մէկը, բայց դրանց զարգացման պատմութիւնն անել այժմ հնարաւոր չէ, որովհետեւ դեռ չի կատարուած բանասիրական աշխատանք, չեն ժողովուած եւ հրատարակուած բոլոր այդպիսի երկերը, որոշուած չեն շատերի հեղինակներն եւ նրանց ապրած ժամանակը:

Այս իմաստական ասքերը յօրինուած են սովորաբար հայրենի չափով, եւ լեզուով ու ձեւով շատ նման են միմեանց. ուստի հեշտութեամբ հնարաւոր է եղել դրանցից կազմել մեծ կամ փոքր շարքեր, մեծ մասամբ առանց հեղինակների անուան, եւ այսպէս էլ մտել են դրանք զանազան ժողովածուների կամ տաղարանների մէջ: Իբրեւ հեղինակներ յիշւում են Պլուզ եւ Ֆրիկ: Կան նաեւ սակաւաթիւ այնպիսինները, որոնք Խաչատուր Կեչառեցունը կամ ուրիշներինն են: Դրանց մասին այստեղ հնարաւոր չէ առանձին մանրամասնութեամբ խօսել: Յիշենք այսպիսի ոչ մեծ տաղաշարքերից մի յայտնին, որ սկսւում է «Կ'ուզես որ աղիզ կենաս» տողով, որ կայ ե՛ւ Ֆրիկի անունով, ե՛ւ անանուն:[1] Դրա մէջ կան նաեւ քառեակներ Պլուզի անունով վերեւում յիշուածներից, ինչպէս եւ սիրոյ տաղերից: Բերենք առաջին երկու քառեակները, որոնց քարոզած խրատը խոնարհ եւ կակուղ բնաւորութեան մասին՝ շատ էլ չի յարմարւում Ֆրիկի ոգուն.[2]

Կ'ուզես որ աղիզ կենաս,
Որ ամէն մարդ ըզքեզ սիրէ՝
Դու հողու նըման կացիր,
Որ ամէն մարդ ըզքեզ կոխէ:

---

1 Տպուած է Կ. Կոստանեանցի «Նոր ժողովածու, Գ. պրակ. Միջնադարեան հայոց տաղեր եւ ոտանաւորներ» հրատար. մէջ, Թիֆլիս, 1896, էջ 35—40. առնուած է մի ձեռագրից, որի մէջ վերնագիրն եղել է՝ «Ֆրկան ասացեալ գայս տաղս», մի ուրիշի մէջ նոյնն անանուն է եղել:

Այս տաղաշարքը ես ունիմ Պետական Թանգարանի համ. 383 ձեռագրից. վերնագիրն է՝ «Տաղ հոգոյ եւ մարմնոյ», անանուն: Նոյնը Էջմիածնի Մատենադարանի համ. 2394, էջ 176. անանուն. իսկ Էջմ. Մատ. համար 3081, էջ 127 բ. «Ֆրկան ասացեալ գայս տաղս» վերնագրով:

2 Այսպիսի իմաստական ասքերի շարքեր կան Վենետիկի Մխիթարեան գրադարանի ձեռագիրների մէջ, համար 74 (Ա. Տ.), էջ 255—258. անդ, համ. 730 (Ջ. Ա.), էջ 85—87, անդ, համ. 1339 (=739 Ա. Բ.), էջ 21—34: Այլեւ Cod. Antonian համ. ԾՂԳ. fol. 11—15 «Տաղ Ադամայ» վերնագրով:

Քանց զերկաթն այլ ի՞նչ ամուր,
Որ կըրակն զինք կու հալէ.
Դու ջըրի նըման կացիր,
Որ կըրակն ի քենէ վախէ:

Դնենք այստեղ մի իմաստական առք եւս գիտութեան եւ ուսման մասին.[1]

Մտիկ կանթեղին արա,
Ջուրն ու ձէթն ու լուսն ի չարս.
Կանթեղն է մըտաց նըման,
Ջուրն ուսման, ձէթըն գիտութեան:
Քանի միտք դու սո՛ւրբ ունիս,
Որ կարող ես սիրող ուսման,[2]
Գիտուն է հոգիս պայծառ,
Որ լուս տայ քեզ ի մըթութեան:

Մի անգամ որ իմաստական առքերի ամբողջական ժողովածուներ դեռ չեն կազմուած եւ հեղինակներն ըստ հնարաւորին դեռ չեն պարզուած, եւ դեռ չեն կատարուած մենագրական աշխատանքներ, հասկանալի է, որ այժմ կարելի չէ, ինչպէս վերեւում նկատուեց, դրանց զարգացման ընթացքը որոշել եւ ձեւն ու բովանդակութիւնը բնութագրել ինչպէս հարկն է:

Բաւականանում ենք այս գլխի առաջին պարագրաֆի մէջ գրուածով: Աւելացնենք միայն, որ ոչ միայն իմաստաբան հեղինակների անձնական, այլեւ ազգային ոգու եւ պատմական փորձառութեան արտացոլումն եւս անշուշտ մեծ է դրանց մէջ:

13–րդ եւ 14–րդ դարերում բանաստեղծներից առանձնապէս աչքի են ընկնում՝ բացի Ֆրիկից, որ քնարերգութիւնների մէջ յաճախ իմաստական առքեր է խառնում, նաեւ Խաչատուր Կեչառեցին, որ տեսել ենք, այլեւ Յովհաննէս եւ Կոստանդին Երզնկացիները:

**2. Երզնկան իբրեւ առեւտրական եւ կուլտուրական կենտրոն:**— Այս քաղաքը, հին Երիզա (Երէզ) անունը, հնագոյն դարերից ծանօթ է իբրեւ կռապաշտական կրօնական կենտրոն: Քրիստոնէական շրջանում նշանաւոր է դարձել քաղաքից ոչ հեռու, արեւմտեան կողմում, Սեպուհ լեռն իր Ս. Լուսաւորիչ եւ այլ վանքերով ու ճգնարաններով: Այնտեղ, ինչպէս եւ շրջակայքի ուրիշ վանքերում, կենում էին ոչ միայն կրօնաւորներ ու մենակեցներ, այլեւ գրագէտներ, որոնք ձեռի տակ ունէին շատ գրքեր եւ ուսում էին տալիս երիտասարդ սերնդին: Կանաչով եւ ընտիր պտուղների պարտէզներով շրջապատուած Երզնկա քաղաքը, Եփրատ գետի վրայ, այլեւ նրա բարեբեր գաւառը (հին Եկեղիք), կարեւոր դեր է խաղում Թաթարների իշխանութեան օրով: Սահմանագլխի մի մեծ քաղաք էր այն, որից արեւմուտք, փոքր Ասիա–

1 Տես եւ Վենետկի Մխիթար. Մատ. համար 1339 մեծ տաղաշարքից: Տես եւ Նահապետ Քուչակի Դիւանը, էջ 91 ԽԱ:

2 Անդ, 6-րդ եւ 7-րդ տողերն այսպէս.
Դու սիրով ջանա ուսման,
Հոգիդ է պայծառ գունով...

յում, տարածւում էր Հռոմի (Հռոմ, Ռում) տէրութիւնը – Իկոնիայի սուլթանութիւնը: Առեւտրական տարանցիկ մեծ ճանապարհը Կիլիկիայից գալով՝ Թուրքերի իշխանութեան երկրից հասնում էր Երզնկա, այստեղից անցնում դէպի Մեծ Հայաստանի ներսը եւ դէպի հարաւ՝ Թաւրիզ քաղաքն եւ դէպի հիւսիս, Սեւ ծովի ափերը:[1] Համբաւաւոր վենետիկեցի ճանապարհորդ Մարկոյ Պոլոյի ուղեգրութեան (1271–1295 թ.) մէջ կարդում ենք Մեծ Հայաստանի մասին.[2] «Այս մի մեծ երկիր է: Սկսւում է մի քաղաքից, որ կոչւում է Արզինկա [Երզնկա], ուր հիւսում են աշխարհի լաւագոյն բեհեզները: Նա ունի որեւէ վայր գոյութիւն ունեցող բնական աղբիւրներից լաւագոյն բաղնիքները: Երկրի ժողովուրդը հայեր են, որոնք հպատակւում են թաթարին: Բազմաթիւ քաղաքներ եւ գիւղեր կան երկրի մէջ, բայց նրանց քաղաքներից ամենէն ընտիրը Արզինգանն է, որ արքեպիսկոպոսական թեմ է, եւ Արզերոն [=Արզրում] եւ Արզիզի [=Արճէշ]»: «Մի աւանում, կոչուած Պայպուրթ, որ անցնում ենք Տրապիզոնից Թաւրիզ գնալիս, կայ արծաթի հանք»:[3] Երզնկան իր նշանակութիւնը պահում է մինչեւ 15-րդ դարի մէջերը: Ռուայ Գոնզալէյ դի Կլավիխոյի ուղեգրութեան (1403–1406 թ.) մէջ[4] ասուած է. «Երզնկա, Սուրմալու [=Սուրմառի], Իգդիր եւ Խոյ քաղաքներն այդ ժամանակում քաղաքական եւ առեւտրական կարեւոր կենտրոններ էին: Թաւրիզը Պարսկաստանի առեւտրական մայրաքաղաքն էր այդ շրջանում: Առեւտրական ճանապարհը Կենտրոնական Ասիայից գալիս էր Թաւրիզ եւ ապա դէպի Սեւ ծովի նաւահանգիստները, մասնաւորապէս Տրապիզոն»: Երզնկա քաղաքն այսպէս է նկարագրուած.[5] «Ամէն քայլափոխի կային շատ գեղեցիկ պարտէզներ եւ այգիներ: Հայերն են շինել Արզինջան [=Երզնկան] եւ քաղաքի պարտէզներում կարելի է տեսնել շատ տեղեր քարերի վրայ փորագրուած խաչի նշանը… Քաղաքը շատ բազմամարդ է, եւ այնտեղ կարելի է տեսնել շատ գեղեցիկ փողոցներ եւ հրապարակներ: Շատ պաշտօնական անձնաւորութիւններ ապրում են այստեղ, որոնց մեծագոյն մասը հարուստ մարդիկ են, եւ կան փարթամ վաճառականներ»: Յիշւում է Թահարթէն անունով մի հայ իշխան Երզնկայի: Առեւտուրը հայերն են անում. «Արզինջանի հողերից բազմաթիւ կարաւանները տանում են վաճառականական շատ ապրանք, գալով Սուրիայից գնում են Թուրքիա» [=Հռոմ]:[6]

Յովհաննէս Երզնկացու պատանութեան եւ երիտասարդութեան ժամանակ, 13-րդ դարի երկրորդ կէսին, Երզնկա քաղաքն եւ իր շրջակայ վանքերը եղել են ծաղկած դրութեան մէջ: Քաղաքի առաջնորդ եղել է Սարգիս եպիսկոպոսը, մի շինարար եւ ուսումնասէր անձ. իսկ կառավարիչ իշխանը՝

1 Տես սոյն հատուածի առաջին գլխի 3-րդ պարագրաֆը՝ «Թաթարական իշխանութիւնը 13-րդ դարում»:

2 Աղբիւրներ Հայաստանի եւ Անդրկովկասի պատմութեան, Ուղեգրութիւններ, հատոր Ա. (1253–1582 թ.), Երեւան, 1932, էջ 48 եւ հտ.: Տարանցիկ առեւտրականն է Թաւրիզ:

3 Անդ, էջ 60 եւ հտ.:

4 Անդ, էջ 68:

5 Անդ, էջ 95:

6 Անդ, էջ 97:

*նրա որդին՝ պարոն Յովհաննէսը, որ հետեւող է եղել իր հօր օրինակին, երկուսն էլ վայելել են մեծ վստահութիւն ղաների կողմից։*

14-րդ դարում եւ յետոյ՝ *Երզնկան յաճախ անցնում է Թուրք ու Թուրքմէն ցեղերի մէկի ձեռքից միւսին, բայց, ինչպէս վերեւի նկարագրից տեսանք, ընդհանրապէս պահում է իր նշանակութիւնն իբրեւ առեւտրական կենտրոն, միաժամանակ եւ հայերի համար իր վանքերով իբրեւ մի կուլտուրական վայր։* 13-րդ *եւ* 14-րդ *եւ նոյնիսկ* 15-րդ *դարերում Երզնկայից ծագել են մի քանի նշանաւոր եկեղեցականներ եւ գրագէտ վարդապետներ։ Այս քաղաքի եւ իր շրջակայքի կուլտուրական կեանքի արտադրութիւնն են ահա եւ մեր երկու ականաւոր գրողները՝ Յովհաննէս եւ Կոստանդին Երզընկայիները։*

3. Յովհաննէս Երզնկացու կենսագրութեան մասին *բաւական տեղեկութիւններ ունենք իր գրուածքների յիշատակարաններից եւ ուրիշներից։*[1] *Նա ծնուած է շուրջ* 1250 *թուականին Երզնկա քաղաքում, ուստի կոչուել է Երզընկացի, Երզնկայեցի։ Իր ձեռով գրած մի գրքի մէջ գրել է իրեն համար. «Նուաստ եւ տկարոգի Յոհաննէս Երզնկայեցի, ողջաստուր բանի»։ Մխիթար Գոշի առակների մի մասի արտագրութեան յիշատակարանի մէջ* 1294 *թ. նա գրում է. «Զաարտամ գրիչս զՅոհ. ծանօթ բանի եւ տեղեաւ Երզնկացի, իսկ այժմ Ծործորեցի, աղաչեմ չմոռանալ...»։*[2] *Յովհաննէսը, որ յայտնի է նաեւ Պլուզ (կապուտաչուի) մականունով, ուսումն առել է Սեպուհ լեռան Ս. Մինաս վանքում, բայց այնտեղի ուսումով չի բաւականացել։ Նա մօտիկ վանքերն էլ այցելելուց յետոյ անցնում է հիւսիս-արեւելեան Հայաստան եւ աշակերտում համբաւաւոր Վարդան Արեւելցի վարդապետին Կայենոյ ձորի մի վանքում։ Նա* 1271 *թ. վերադառնում է Երզնկա, եւ տասը տարի յետոյ այստեղից գնում Կիլիկիա, ուր, իբրեւ մեծ հեղինակութեան տէր վարդապետ, լաւ ընդունելութիւն է գտնում ժամանակի կաթողիկոսից եւ Հայոց թագաւորից, պարապում է ուսուցչութեամբ։* 1284 *թ. նրան գտնում ենք Տփղիս քաղաքում։* 13-րդ *դարի վերջերում նա հաստատւում է Արտազու Ս. Աստուածածնի կամ Թադէոս առաքեալի վանքում, Ծործոր գիւղի մօտ շինուած, ուստի կոչւում է նաեւ Յովհաննէս Ծործորեցի։ Ինչպէս ուրիշ տեղերում՝ այստեղ էլ այս վանքի առաջնորդը, Զաքարիա անունով մի ուսումնասէր անձ, սիրով ընդունում եւ պահում է նրան։ Այստեղ էլ նա պարապում է նաեւ գրական աշխատանքով.* 1316 *թ. մի անգամ էլ ճանապարհորդում է ի Կիլիկիա եւ վերադառնալով Արտազու վանքը, այնտեղ էլ երեւի ապրել է մինչեւ մահը, որի ճիշդ թուականը յայտնի չէ. դնում են մօտ* 1326 *թ.։ Վերջին գրական աշխատութիւնից մէկը, եթէ ոչ վերջինը, որ յիշւում է, է* 1321 *թ. կատարած մի թարգմանութիւն լատիներէնից, որ նա սովորել էր, երեւի, Կիլիկիայում եղած ժամանակ։*

4. Երկերը։— *Յովհաննէս Երզնկացին իր ժամանակի գիտնական վարդապետի մի տիպարն է, որ պարապում էր միաժամանակ ե՛ւ ուսուցչու-*

---

*1 Ղ. Ալիշան, Յուշիկք հայրենեաց Հայոց, հատ. Բ., Վենետիկ, 1870, էջ 457—493. «Երզնկա եւ Յովհաննէս Երզնկացի»։*

*2 Էջմիածնի Մատ. ձեռագիր համար 2238։*

*թեամբ, և՛ գիտութեամբ, և՛ գրականութեամբ և՛, ինչպէս ուրիշները, արգաս ժամանակին նաեւ գրչութեամբ, այսինքն ձեռագիրներ էր արտագրում։ Նա ունեցել է ճարտար լեզու, եւ ամէն տեղ, ուր գնացել է, ճառեր է ասել եւ հիացում պատճառել իր ճարտասանութեամբ, միշտ քարոզչութիւն է արել եւ սովորեցրել։ Լինելով ուսումնասէր՝ բազմակողմանի հմտութեան տէր է դարձել, աշխատելով իբրեւ մեկնիչ, տոմարագէտ, քերականագէտ։ Յօրինել է ճառեր ու ներբողներ, այլեւ իբրեւ բանաստեղծ՝ տաղեր ու չարականներ եւ այլ քերթուածներ։ Նրա աշխատութիւններից մի քանիսն արդիւնք են ուրիշների դրդման. այսպէս՝ 1280 թ. Երզնկայի Ս. Գրիգոր վանքի միաբանութեան խնդրով գրել է «Կանոնք եւ սահման միաբանութեան եղբարց». կաթողիկոսի եւ ուրիշների դրդումով յօրինել է Դիոնիս Թրակացու Քերականութեան մեկնութիւնը, նկատի ունենալով հին մեկնութիւնները։*

*Տփղիսում նրանից խնդրում են, եւ նա գրում է «Յաղագս երկնային շարժման»։ Ապա ուրիշներն էլ խնդրում են նոյն նիւթի վրայ գրել բանաստեղծութիւն, եւ նա գրում է «ան» յանգով հազար տողով ոտանաւորներ,[1] նկարագրելով երկինքն ըստ ժամանակի հասկացութեան, երբեմն եւ դիմառնաբար երկնքին դիմելով։ Արուեստի տեսակէտից սակաւաթիւ գեղեցիկ տողեր միայն կան մէջին, ինչպէս հետեւեալը՝ «Ներբողական գովեստ երկնի»։*

*Ո՛վ սքանչելի ձեղուն յարկի այս մեծի տան,*
*Ի բարձրելոյն բանէ ձգեալ որպէս խորան...*
*Դու յարկ մեծին ձեռամբ շինեալ արքայական,*
*Ջահք ի բարձանց ի քեզ կախեալք անշիջական,*
*Դու անթառամ ծաղկանց լուսոյ մեծ բուրաստան,*
*Որք յանդաստան քո գեղեցիկ ծաղկադրեցան.*
*Ոչ թէ միայն քո պարանոց զարդարեցան,*
*Այլ բովանդակ մարմին եւ անձն չքեղացան։*
*Յոյժ մեծութիւն քո հրաշագեղ անչափական,*
*Հանդերձըս նուրբ եւ պատմուճան քեզ կարգեցան,*
*Ոչ թէ միայն կրկին ակունք որք ճոխացան,*
*Այլ յոգնակի ակունք լուսոյ շարադրեցան,*
*Եւ մարգարիտըս լուսափայլ որք յեռեցան*
*Ընդ գիշերոյ սպիտակափայլ ջահ ճախրական,*
*Իսկ ի տուէ բազմափայլիւն բոց կայծական,*
*Ցոր պիշերոյն աղօտ փայլունքն ծածկեցան։[2]*

---

*1 Տպագրուած է Նոր Նախիջեւանում 1792 թ. «Տետրակ համառօտ եւ լի իմաստնախոհ բանիւք, արարեալ հոգելից եւ իմաստուն վարդապետին Յօհաննիսի Երզընկացւոյ, որ եւ ասի Ծործորեցի...»։ Հեղինակի առաջաբանի վերնագիրն է. «Յաղագս երկնային շարժմանն, Յօհաննիսի Երզնկայեցւոյ շարադրեալ յիմաստնոց բանից ի խնդրոյ բարեպաշտ եւ երկիւղազարդ պատանւոյն պարոն Վաղթանկայ»։ Անում է իր աշխատութեան ծագման պատմութիւնը։ Երկրորդ մասը (էջ 21 եւ հմն.) ունի վերնագիրս՝ «Յաղագս որ ի սմա եղեալ բանիցն՝ կանխաբանութիւն». համառօտ դնում է իր քերթուածի բովանդակութիւնը։ Գրել է «ի խնդրոյ բարեպաշտ իշխանին Աււլողի»։*

*2 Անդ, էջ 51։*

Յաճախ նկարագիրն անում է իբրեւ այլաբանութիւն կամ իբրեւ խորհրդանիշ—սիմբոլ որեւէ կրօնական հաւատալիքի կամ մարդկային կեանքի մի երեւոյթի, ինչպէս, օրինակ, հետեւեալն արեգակի մասին.

Այլ եւ զպայծառ լուսոյն աղբիւր միշտ հոսական,
Ըզգեղեցիկ ակն աշխարհի լոյս ցուցական,
Զնա ի կամարըդ քո բերես ջահ փայլական,
Որ զկերակուրըն հրոյ բաշխէ բնաւից պիտան:
Սա մեզ խրատ օրըստօրէ քարոզական,
Ըզմահ եւ զկեանք օրինակէ դէմ յանդիման,
Առաւօտուն ծագմամբ զծնունդըն մայրական,
Երեկոյին թաղմամբ ըզմուտն ի գերեզման:
Սա զօրինակ բերէ լուսոյն անեղական,
Որ ի ծոցոյ հօրէ ծընունդ որդի եւ բան:
Յարեւելից գեղով ծագէ փեսայական,
Արագապէս ընթացս առեալ հըսկայական,
Զարեգականն արդարութեան պատմէ ըզբան,
Զաննիւթ լուսոյն մեզ քարոզէ լոյս եղական:[1]

Յովհաննէս Երզնկացուց մնում են բազմաթիւ եւ բազմազան բովանդակութեամբ երկեր, բացի վերեւում յիշուածներից նաեւ շատ ճառեր, մի «Ներբող ի սուրբ Լուսաւորիչն», որ ասել է Լուսաւորչի տօնի օրը նրա անունով վանքում Սեպուհ լեռան վրայ, մեկնութիւններ, խրատական երկեր, ոտանաւորներ խրատական բովանդակութեամբ, այլեւ տաղեր, շարականներ եւ այլն[2]: Սրանց մէջ նա յաճախ ցուցաբերում է ջերմ սրտագին զգացումներ դէպի հայկական սրբավայրերը եւ անցեալը: Նրա բանաստեղծութիւնները, ցաւօք, դեռ չեն հաւաքուած եւ միասին հրատարակուած մի ամբողջական ժողովածուի մէջ:

Նրա անունով մնում են եւ բազմաթիւ իմաստական ասքեր եւս, առանձնապէս յայտնի են մի մեծ շարք ասքերը՝ «Երզ. Պլուզ վարդապետի ասացեալ» վերնագրով:[3]

4. Յովհաննէս Պլուզի աշխարհայեացքը: Մարմնի իրաւունքը:— Մեր այս գրողն իր ասքերով հանդիսանում է իբրեւ իսկական իմաստաբան քերթող, հանդիսա ու գիտուն վարդապետ, լուրջ բնաւորութեամբ, աւելի մըտածող, քան զգացող: Նա իր ժամանակի աշխարհիկ ոգին շատ ուժեղ եւ բիւրեղակերպ ձեւաւորել է իր ասքերի մէջ: Արդարեւ նա դեռ երեւան է բերում մի քրիստոնէական յոռետեսութիւն, բայց արդէն խիստ տարբեր նախորդ շրջանի հայեացքից: Աշխարհը նրա համար այլեւս մի հառաչանքի հովիտ չէ, լի չարչարանքներով ու չարիքներով, այլ մի զուարթ կեանքի

1 Անդ, էջ 54 եւ հտ.:

2 Մանրամասնութիւնը տե՛ս Զարբհանալեան, Հայկ. հին դպր. պատմ., Վենետիկ, 1897, էջ 750—767, «Երզնկացւոյն երկասիրութիւնք»:

3 Ձեռի տակ ունիմ Վենետկի Մխիթարեան Մատենադարանի թիւ 324 թ. բ. ձեռագրից յատուկ արտագրութիւնը: Նոյնը մեծ մասամբ տպուած է Վ. Փափազեան, Պատմութիւն հայոց գրականութեան, Թիֆլիս, 1910, վերջի նմուշների մէջ, էջ 81:

վայր, որը, սակայն, իր մէջ ունի մի մեծ հակադրութիւն—մահը։ Եւ որպիսի՜ գեղեցիկ պատկերաւորութեամբ, սեղմ ու լի բովանդակութեամբ, մի քառեակի մէջ կարողացել է արտայայտել նա այդ։

Աշխարհս է կանաչ մարգեր,
Մենք ի մէջն ենք կաքաւ ձագեր.
Գըրողն է եղել բազա,
Կու կըրէ մէկ մէկ զար ի վեր։
[Վարիանտ՝ Հրեշտակնին արծիւ դարձեր,
Կու տանին զմեզ մէ՛կ մէկ ի վեր]։

Մարդս չի կարողանում ուրախ եւ երջանիկ զգալ իրեն, որովհետեւ մարդկային վիճակը եւ կեանքն իսկ անկայուն է.

Աշխարհս ի տոլապ նըման,
Որ ի վեր ՚ւ ի վայր թաւալի.
Վերինըն ի վայր դառնայ,
Եւ վարինն ի վեր ըլորի։

Մըտիկ դու հիւսանն արա՛,
Որ թապութ ՚ւ օրոցք շինէ նայ.
Մէկըն գայ եւ մէկն երթայ,
Նայ իւր բան պակաս չի մընայ։

Այսպէս ուրեմն, ծնունդ ու մահ միասին են շարունակ եւ այս երկուսի մէջ մարդուս բախտը վեր ի վայր է թաւալում։ Անցողիկ անցնում է կանաչ երիտասարդութիւնը, կարծես խկոյն վրայ է հասնում ծերութիւնն իր երկիւղով, որ մարդուս սիրուն շինուածքն անպասելի պիտի քայքայուի։

Աշխարհս է ի ծով նըման,
Ով որ գայ՝ անթաց չի մընայ.
Ցայս ծովս ես ի նաւ մըտայ,
Գընաց նաւս, եւ ես չիմացայ։
Եղեր մօտեցեր է նաւս,
Վախեմ թէ քարի դիպենայ,
Քակտի իմ աղուոր շինուածս.
Ու տախտակըս մէ՛կմէկանայ։[1]

Եւ մարդիկ կարաւան կապած գնում են անդէնը, առանց կշտանալու աշխարհից։

---

1 Վարիանտի մէջ աւելացրած է այս քառեակը.

Երթամ աղաչեմ զԱստուած,
Որ հանէ դիհայց մի քամի,
Այս մըթանըս լոյս մի տայ,
Զմեզ բարի երկիր մի հանի։

Շատ թագաւորաց մեծաց
Ցիմաստնոց արանց լըսեցի,
Թ՚այնչափ չըկըշտանայ մարդն
Աստնուորովս, ինչ որ մեռանի.
Տանին գերեզման դընեն
Եւ հողով խուր աչքըն լըցուի.
Ապա փոշիմնայ 'ւ ասէ,
Թէ հերիք է 'ւ այլ չի պիտի։

Մի անգամ որ մարդս անվերջ չի վայելում կեանքը եւ իր աշխատանքը եւ ծերութիւն ու մահ կայ, հետեւաբար ունայն է ամէն ինչ եւ անօգուտ՝ ամէն վաստակ։ Կեանքի այս անկայունութիւնն ու մահն են ձգում մեր իմաստաբանին յոռետեսութեան մէջ, թէ չէ՝ կ՚ուզէր նա իբրեւ «կաքաւի ձագ» անվերջ ապրել «կանաչ մարգագետնում»։

Աշխարհս է ոչինչ նման,
Շատ դատին, դառնան փոշիման.
Հալալ ու հարամ այնեն,
Հոս թողուն 'ւ ի հոն կու դընան։

Յոռետեսութիւնը շատ բանաստեղծների տանում է դէպի հաճոյքը, ռոպէական վիճակի վայելչութիւնը, բայց այս կենսուրախ հայեացքը մեր գրականութեան մէջ 17-րդ դարի վերջերին է առաջ գալիս, իսկ 13-րդ դարը դեռ շատ մօտ էր հին կրօնական շրջանին։ Ուստի ինչքան էլ մեր բանաստեղծի յոռետեսութեան հիմնական պատճառն աշխարհասիրութիւնն ու կենսասիրութիւնն է, բայց նա լոկ համակւում է տխուր վշտով՝ չհամարձակուելով անգամ դրա պատճառը բացայայտ չեշտելու կամ աշխարհն ու կեանքը երգելու։ Ուրիշներին նոյն յոռետեսութիւնը տանում է դէպի ամենայնի ոչնչացումն եւ անտարբերութիւնը. բայց մեր բանաստեղծը դեռ բարեպաշտ քրիստոնեայ է. նա հաւատում է անդէնի կեանքին։ Ուստի նրա համար ամէն բան ոչինչ է, բացի գիտուն լինելուց, գիտութիւնից ու բարի գործից, յատկապէս աղքատասիրութիւնից, ինչ որ Ֆրիկն էլ քարոզում է, այն էլ աստէնիս արարքներն անդէնի նկատմամբ։

Մանկտի՛ք, երբ ի հաց նըստիք,
Զէնեցէք աղքատք ձեզ ընկեր.
Մեռնիք 'ւ ի յանդէն երթայք,
Կու նըստէք մէկ մ՚ այլ ի վեր։

Բայց բարեգործութիւնը, աղքատասիրութիւնը, որ արւում է «վարձքի» համար, դեռ բաւական չէ։ Որովհետեւ մարդ չկայ, որ մեղաւոր չլինի. պէտք է ուրեմն զղջալ, սգալ, մեղքը լալ։ Սակայն կարո՞ղ էր արդեօք մեր իմաստաբան Պլուզն իրագործել այդ։ Մի Գրիգոր Նարեկացի 10-րդ դարում՝ համակերպուելով իր ժամանակի որոշ դասի փոխյարաբերութեանը՝ կարողանում էր շարունակ սգալ ու ողբալ, որովհետեւ նա խորը համոզուած էր, որ աշխարհն ու կեանքը վատ է, եւ մի՛միայն չարիք. նա մերժում էր

*աշխարհը, մեռցնում մարմինը, որ միանար Աստուծու հետ, եւ այդ էր անվերջ քնարերգում նա։ Յովհաննէս Պլուզն, — եւ իր պէս մտածող ուրիշները, — անընդունակ էր այդպէս վարուելու· նա չէր կարող ուրանալ աշխարհը, մեռցնել մարմինը· ուստի նրա ապաշխարական երգը սառն է հնչում եւ չի փրկում նրան·*

*Ելայ ժողվեցի զիմ մեղքն*
*Ու դըրի առջեւս ու լացի,*
*Ցանդէնըն քարւան կ՚երթար,*
*Շալկեցի 'ւ ի հետ գընացի·*
*Հրեշտակն այլ ի դէմս ելաւ,*
*Թ՝ «Ո՞ւր կ՚երթաս ողորմ ու լալի·*
*Այդ չալակդ որ դու ունիս,*
*Անդէնին քեզ տեղ չի ընկնի։»*

*Պլուզը ոչ միայն գործնականօրէն չի կարողանում հետեւել նախորդ շրջանի միստիկական ձգտումներին ապաշխարութեամբ, այլ նա տեսականօրէն էլ արդէն հակառակ է դրան· նա մարմնին գիտակցաբար տալիս է իր իրաւունքը։ Նա մարմին ու հոգի, այս երկուսը միմեանց հաւասար ընկերներ է համարում սկզբունքով, իր ժամանակի համար մի խիզախ տեսութեամբ։ Բերենք նրա նշանաւոր քերթուածը, որի մէջ նա պարզում է իր տեսակէտն ամբողջ միջնադարի մտքերն զբաղեցնող խնդրի մասին։*

*Երկուս ի մէկտեղ բերած,*
*Ձերդ զընկեր կ՚ասեն թէ՝ պահէ՛·*
*Ու չորս բընութիւնս օտար,*
*Հետ իր(ե)րաց կ՚ասեն թէ՝ սազէ՛։*
*Զայս չորս յիրար ո՞նց պահեմ,*
*Ամէն մէկ յինքըն կու քարշէ,*
*Զիս հոգս ի յայսոց միջին,*
*Ձերդ կըրակ ըզմոմ կու հալէ։*
*Հողըս չոր խուշկիկ առնէ,*
*Ջուրըս գէճ կու ցըրտացընէ,*
*Քամին զիս յերերք ունի,*
*Կըրակին բոցըն կու վառէ՛։*
*Հանցեղ սիրելի չարկամ*
*Մէկտեղ ո՞վ իսկի տեսեր է·*
*Հոգիս թէ ի վեր քարշէ,*
*Հողըս ծանր ի վայր կու հակէ։*
*Վախեմ թէ հողոյս լըսեմ,*
*Նա՛ հոգո՛յս բանըն դըժարէ՛·*
*Եւ հետ հոգոյն ո՞վ թըռչի,*
*Երբ նորա տունըն հեռի է։*

*Բանաստեղծը նոյնիսկ երկբայում է, թէ կարելի լինի իրար հետ իբրեւ ընկերներ հաշտ պահել հոգին ու մարմինը, որոնք իրար հակառակ*

ու «չարկամ» են, ինչպէս չորս տարրները։ Նա հնարաւոր չի համարում մարմինը թողնելով՝ հոգու հետ գնալ. եւ ոչ ոք էլ չի կարող հոգու հետ վեր ելանալ, ասում է նա, քանի որ «նորա [=հոգու] տունը հեռի է»։ Բացի այդ՝ կենդանի մարդը մի թոյլ էակ է՝ կազմուած լինելով չորս տարրերքից, որոնք իրար աննման են, մէկմէկու չարկամ են, միմեանց հակառակ ազդեցութիւն ունին, եւ մարդս նրանց պահանջին ենթակայ լինելով՝ անհրաժեշտօրէն պիտի կատարէ նրանց, որ է՝ իր մարմնի կամքը։ Բերենք եւ հետեւեալը, որ կայ իբրեւ շարունակութիւն նախորդ քերթուածի.

Հինգ դուռն է ի բաց թողած,
Թէ՝ փակէ՛ որ գող չի մտնէ։
Ըզգոյշըս ես տանէս ունիմ,
Որ զդըռներս ի բաց կու պահէ։
Շաղուած ես ի չորս իրաց,
Այդ ցեղ չէնքդ ամուր չի լինի.
Օդըն հողուն ի՞նչ նըման,
Հուրն ու ջուրն են խիստ ատելի.
Ի հակառակէ ստեղծած,
Եւ եղած ես մարդ կենդանի,
Վերնայ օդն ու հուրն ու ջուրն,
Եւ մարմինըդ դառնայ փոշի։

Այսպէս ուրեմն, մարդուս մարմինն ունի հինգ զգայարաններ, որոնց դռները բաց է թողած եւ կարելի չէ փակել եւ կտրուել աշխարհից. մարդս ուզի չուզի բաւարարութիւն պիտի տայ մարմնին, որը կարելի չէ մեռցնել հոգին փրկելու համար։ Այսպիսի աշխարհայեցութեամբ վերջ է տրւում հին կրօնական քնարերգութեանը, որ միստիկական բնաւորութիւն ունէր եւ արտայայտւում էր անվերջ ողբասացութեամբ ու մարմինը մեռցնելու ճիգերով։ Եւ եթէ այժմ էլ բանաստեղծը դեռ քարոզում է մեղքը լալ ու ողալ, այդ ինքն անկարող է անել, դա մի երանելի վիճակ է, որ իրենից շատ հեռու է։ Ուստի նա անմիջապէս շարունակում է.

Երնեկ ես նորա ասեմ,
Որ զաշխարհս ի սուգ կ՚ուզենայ.
Զիւր մեղքն ի յիշումն ածէ,
Զօրն ի բուն նըստի նա ու լայ,
Արտասուքն սապոն լինի,
Սեւութիւնն ըսպիտականայ.
Թէ չէ՝ օր հարսնիցըն գայ,
Նա հանդերձ հարսին չունենայ։

Եւ նոյնիսկ այս լացն էլ, որ երանելի մարդիկն արել են եւ անում են, ըստ մեր իմաստաբանի՝ ոչ մի օգուտ չունի եւ աւելորդ է։ Ահա թէ նա ի՛նչպէս է արտայայտել այդ միտքը հետեւեալ տողերի մէջ.

Մէկ մարդ մի ճուհար ունէր
'Ի ի խելաց չահել չը կարաց·
Զինչ խելքն ի վերայ եկաւ,
Նա՛յ գընաց ճուհարն ի ձեռաց։
Գընաց նա ի վայր Նըստաւ՝
Ողորմիկ ու չա՛ռ մի իլաց·
Նորա լացն այլ ի՞նչ չահէ,
Երբ գընաց ճոհարն ի ձեռաց։

Վերջապէս՝ փոշխացող մարմինը, որ իր տան դռները բաց ունի արտաքին աշխարհի դիմաց, ամենեւին պատասխանատու չէ մեղքի համար. Հոգու «ամալը» — գործը, արարքն է այդ, եւ նա թող պատասխան տայ·

Հոգին հողվըրտովն անցաւ
Ու զմարմինն ի հողն անիծեց,
Թէ՝ «զմեղքն ես ու դո՛ւ արաք,
Ցանդէնն ի՛մ երեսն ամաչեց»։
Մարմինն ի հողուն ի դուրս
Այս խօսօք զհոգին վճարեց,
Թ՝ «Ես հող էի ՚ւ հող դարձայ·
Քո ամալն է՝ ըղքեղ բըռնեց»։

Այսպէս՝ մարմինն ստանում է իր իրաւունքը։ Սրանից յետոյ մի քայլ էր միայն մնում, որ բանաստեղծը մարմնի գովքն անէր, եւ մեր բանաստեղծութիւնը թողնելով իր մռայլ բնաւորութիւնը՝ դառնար լուսաչող ու զուարթ։ Բայց Պլուզից չեն մնում այսպիսի տաղեր։ Առանց որեւէ հիմքի նրան վերագրել են մի սիրոյ երգ, որի մասին կը խօսուի յետոյ։

6. Ուրիշ իմաստական սաքեր։— Յովհաննէս Պլուզի անունով երեւան են եկել եւ ուրիշ սաքեր, որոնք մասամբ դեռ մնում են ձեռագիրների մէջ եւ չեն հաւաքուած ի մի։ Այս սաքերն ունեն ընդհանուր խրատական բովանդակութիւն եւ մասամբ ժողովրդական առածների եւ իմաստալի ասացուածքների բանաստեղծական զարգացումն են իբրեւ քառեակներ։ Բերենք հետեւեալները.[1]

Աւա՛ղ, մեզ հայիլ պիտի
Ցայն արեւն որ լոյս կու ծագէ·
Շատ կայ ի յարեւ նըման,
Ի պընչէն օձըն կու վազէ։
Գիտուն մարդն յարեւ նըման,
Խօսքըն լուս պայծառ կու ծագէ.
'Ի անգէ՛տ մարդն օձուն նըման,
Հանապազ ըզմարդ կու խոցէ։
Մարդ կայ որ հազար արժէ,
Հա՛զար կայ որ մէկ մի չարժէ·

1 Տպուած են՝ Վ. Փափազեանի «Պատմ. հայոց դրականութեան» աշխատութեան վերջից դրուած «Նմուշների» մէջ, էջ 82 եւ հտն.։

Ան մարդն որ հազար արժէ,
Անգէտին մօտ փող մի չարժէ։

Վերջին քառեակի առաջին երկու տողը յայտնի ժողովրդական առած է։

Բազան ի անտառ մորին,
Թէպէտ բո՛ւ, թէպէտ բազա է·
Ճոհարն ի ծովուն միջին,
Թէպէտ քա՛ր, թէպէտ ճոհար է։
Խելօքն ի յանգէտն ի մօտ,
Միտք արա, թէ ի՛նչ նըման է·
Ծըրագն ի յառջեւ կուրին՝
Կու վառի, ՚ւ ինքըն չի գիտէ։
Խելօքն է ի ծով նըման,
Որ քանի չափես՝ կու տանի·
Անգէտն է ի տիկ նըման,
Փառչ էւէլ լընուս՝ նա՛ պատռի։

Առնենք եւ հետեւեալները վերեւում յիշուած ձեռագրից·

Զորս բան ա՛ռ խըրատ յինէն,
Որ զամէն աշխարհս քեզ արժէ·
Զայլոց մեղք դու մի՛ քըններ·
Զքոյդ յերակ մըտօքդ անտիճէ։
ԶԱստուած մօտ ի քեզ դու տե՛ս·
Եւ զմահուդ օրըն դու յիշէ։
Զխըրատս ի սիրտըդ տընկէ,
Զքեզ յամէն չարեաց այս փըրկէ։
Լաւ մարդ ես նորա ասեմ,
Որ բանայ զբերանըն համով·
Հանցեղ լեզուն գին չունի,
Զինչ լընուն տուն մի ճոհարով։
Լեզուն է գործիք բանի,
Արդարոց քան զհալած ոսկի·
Զմարդոյն է մէկ փերթ ստեղծեր,
Եւ օձուն է երկու ճըղի։
Այն մարդն որ երկու խօսի,
Զմէկըն քաղցր եւ զմէկըն լեղի,
Եղբայր է օձին եղեր,
Եւ զնորա անէծքն ընդունի։

Այսպէս եւ մի շարք ուրիշ իմաստական տաղեր, որոնք կան Պլուզի անունով։[1] Կան տաղեր եւս, որոնք որոշ ձեռագրերի մէջ Պլուզի անունով

1 Այս տաղերի մի մասը տպագրուած են «Պղնձէ քաղաք», 1731, էջ բճիդ, «Բանք պիտանիք եւ օգտակարք ասացեալ առաջնոց» վերնագրով։

են, ուրիշների մէջ՝ անանուն, կամ երբեմն մի տեղ՝ Պլուզի, մի ուրիշ տեղ նոյնը՝ Ցրիկի անունով։[1]

## ԿՈՍՏԱՆԴԻՆ ԵՐԶՆԿԱՑԻ

1· Կենսագրական։— Յովհաննէս Երզնկացուն ժամանակակից է մեր այս անուանի բանաստեղծը, որ նոյնպէս, ինչպէս Յովհաննէսը, արտադրութիւն է Երզնկայի եւ իր շրջակայքի կուլտուրական կեանքի, որ տեսանք վերեւում։ Նրա կենսագրութեան մասին, ցաւօք, գրեթէ բան չգիտենք։ Բայց նա բախտաւոր է եղել այնու, որ նրա քերթուածները, թուով քսաներկու, մեզ հասել են 1336 թ· Թաւրիզում կատարուած մի արտագրութեամբ· դրանց վրայ աւելացած են ուրիշ երկուսը մի տաղարանից (ԻԴ եւ ԻԵ քերթուածները)։[2] Արտագրութիւնն ունի հետեւեալ յիշատակարանը· «Բայց գրեցաւ սայ ի Թաւրէժ ի Դաւմազայի Սնջայրանս... ձեռամբ մեղապարտ եւ դատապարտեալ ոգոյ՝ Նուաստ գրչի Ամիրիս՝ մականուն Փօլին Քալայմաչ՝ ի Յուսոփայ որդուս՝ Միթոռի թոռն՝ ի վայելումն անձին իւրոյ... ի թուիս ՉՁԵ [=1336] ի նաւասարթի գրէցաւ այս գիրս, ամէն»։ Կոստանդնի բանքերից մէկն[3] ունի այս վերնագիրս· «Բան Կոստանդնեայ առ մեր հոգեւոր եղբայրն Ամիր, հոգով ի հոգի եւ սրտէ ի սիրտ»· դա սկսւում է այս տողերով·

Պարո'ն Ամիր, մեր պարծանաց եղբայր եւ սիրելի·
Զայս սակաւ բանքս ի կարգի որ վասն ձեր շարադրեցի,
Աղէկ մըտիկ դի'ր ու ճանչէ', ուժով է բանքս եւ պիտանի·
Բայց յանդէտ մարդիքն ի մօտ է անպիտան, դառն եւ լեղի։

Բովանդակութեամբ ամբողջապէս կազմուած է իմաստական առքերից, որ բանաստեղծն ուղղում է իր մտերիմ բարեկամին։ Ենթադրում են, թէ այս «պարոն Ամիրը» նոյն Ամիր Փօլինն է, որ Թաւրիզում իր համար արտագրել է Կոստանդնի քերթուածները։ Թէ պարոն Ամիրն ի'նչ պարագաներով մեր բանաստեղծի սրտակից «սիրելին» է եղել, այդ յայտնի չէ։ Հաւանօրէն նա Կոստանդնի հետ միասին մանկութեան ժամանակ ուսել է մի վանքում, քանի որ բանաստեղծն անուանում է նրան «հոգեւոր եղբայր», բայց մինչ Կոստանդինը դարձել է վանական, նրա ընկերը մնացել է աշխարհական։ Կարծում են, թէ Կոստանդինը կենդանի եղած պիտի լինի դեռ 1336 թ·, երբ Ամիր Փօլինն արտագրել է նրա բանաստեղծութիւնները· բայց այդ կարծիքը հիմնաւորուած չէ։ Միայն այն ստոյգ է, որ Կոստանդնի քսաներկու քերթուածները յօրինուած են յիշուած 1336 թուա-

1 Տես՝ Նահապետ Քուչակի Դիւանը, Փարիզ, 1902. էջ 81 եւ հտն. «Սիրատական եւ այլաբանական երգեր», որոնք տպուած են Սուտ Քուչակի անունով, եւ էջ 125—129, «Ծանօթագրութիւններ», որոնց մէջ նոյն անունով տաղերից ինը յիշուած կան Պլուզի անունով, վերը՝ Ցրիկի անունով, իսկ երկուսը՝ ե՛ւ անանուն, ե՛ւ Պլուզի, ե՛ւ Ցրիկի անունով։

2 Կոստանդին Երզնկացի եւ իւր քերթուածները, ուսումնասիրութեամբ հրատարակեց Հ. Մ. Պոտուրեան, Վենետիկ, 1905։ Այս հրատարակութեան մէջ ենթադրաբար վերագրուած են Կոստանդինին նաեւ ԻԳ եւ ԻԶ քերթուածները։

3 Անդ, ԻԱ, էջ 153։

կանից առաջ: Ապա նրա բանքերից մէկի մէջ[1] մի ցուցմունք կայ հեղինակի ապրած ժամանակի համար. խօսելով կեանքի ունայնութեան եւ մահուան մասին՝ նա գրում է.

Թէ լինի հզօր փատիշահ զերդ Ղազան,
Ջմնայ՝ քանի է ինք սրտով զերդ գազան:

Այս տողերի մէջ Ղազան ղանը (1295—1304 թ.) յիշւում է այնպիսի ձեւով, որ նա մեռած պիտի լինէր այդ գրելիս: Կը նշանակի՝ Կոստանդինն իր այդ բանքը յօրինել է 1304 թուականին կամ յետոյ, հետեւաբար նա ապրել է 13–րդ եւ 14–րդ դարերի մէջերը: Որ մեր բանաստեղծն իր մի քերթուածի մէջ անուանում է իրեն Կոստանդին Երզնկացի, այդ ցոյց է տալիս, որ նա ծննդով Երզնկայից է եղել, կամ թէ մանուկ հասակից սնուել, ուսել, կրօնաւորել ու գործել է Երզնկայի վանքերում: Ինչպէս նրա բանաստեղծութիւններից իմացւում է, նա վաղ հասակից արդէն ցոյց է տուել գրական շնորհք: Վանականները կեղծ բարեպաշտութեամբ առել, նոյնիսկ հալածել են մեր քերթողին այն պատճառով, որ նա աշխարհիկ երգերի մոտիւներով կրօնական բանքեր է յօրինել: Այլեւս ուրիշ բան չգիտենք Կոստանդնի կեանքից, բացի նրա բանաստեղծութիւններից, որոնց մէջ տեսնում ենք նրա խոհերն ու զգացումները:

2. Կրօնական եւ խրատական բանք:— Կոստանդինն իր բանաստեղծական աշխատանքներն սկսել է, անշուշտ, իր նախորդներին հետեւելով, կրօնական քերթուածներով: Նրա առաջին (Ա.) երգն, ըստ Ամիր Փոլինի ժողովածուի, է մի կրօնական գրուածք, խրատական Ս. Գրքի պատմութեան բովանդակութիւնը ոտանաւորով: Դա մի համառօտ, բայց ճաշակաւոր պատմուածք է՝ հետեւողութեամբ Գրիգոր Մագիստրոսի եւ Ներսէս Շնորհալու: Իսկ երկրորդ (Բ.) քերթուածը կրօնական իմաստով խրատական «բանք» է, որ հաւանօրէն նրա այս տեսակի գրուածքներից առաջինն է ժամանակով: Դրա առաջին տունն այս է.

Ահա սկիզբն առնում բանից
եւ խըրատ տամ հասարակաց.
Իմաստութիւն ձեզ ցուցանէ՝
յով որ հոգոյ աչք կայ ի բաց:
Ջինչ մարգարիտ շարեալ յոսկի՝
հանց գեղեցիկ բանն ի մըտաց,
Բայց անգիտին ոչինչ թուի
զինչ մարգարիտն ի մէջ խոզաց:

Ամբողջը մի գովք է ոչ թէ «աշխարհիս» կամ «երկրաւոր իմաստութեան», այլ «երկնաւոր իմաստութեան» կամ «աստուածային գիտութեան», որի հիմքն է սէրը.

Ով սէր չունի իր հաւասար,
որ գիտութեան հիմն է դըրած,

1 Անդ, ժԴ 130:

Նա՛յ ողխութիւնն աստուածային
հըպարտ հոգով իսկի չգիտաց·
Հանց տես թէ հիմն ի վերայ ջրոց
կայ անհաստատ իրք մի շինած:

Կոստանդինն երկրորդ «բանքը» յօրինել է ըստ երեւոյթին այն ժամանակ, երբ իր կրօնական ուխտն է արել· նա քարոզում է չսիրել այս աշխարհըս, անցաւոր բաների ետեւից չգնալ, եւ վերջը խնդրում է Աստուծուց, որ իրեն բաշխէ երկնաւոր պարգեւը·

Տէ՛րըդ վերին, ի քէն խընդրեմ,
գըթա՛յ ի յիս, հայր ողորմած,
Եւ բաշխէ՛ անարժանիս
քո երկնային մեծ պարգեւաց·
Որ արբիմ շնորհօք Հոգոյն,
կենամ սիրովն երկնաւորաց·
Եւ թողո՛ւմ զայս անցաւորս
ես Կոստանդինս յինէն[1] ի բաց:

Այս երկու քերթուածներն էլ սովորական են իրենց բովանդակութեամբ, բայց գեղեցիկ են իրենց պարզութեամբ ու կենդանութեամբ: Կան տողեր ու տներ, որ յիշեցնում են բանաստեղծի միւս երկերը· ինչպէս, օրինակ, երկնքի ստեղծագործութեան պատկերը·

Կամարակապ խորանն երկնից
առանց սիւնի հաստատեցան,
Գեղեցկութիւնք վայելչապէս
զարմանալի յօրինեցան·
Ծաղկեալ երկինքն աստեղինօք՝
լուսաւորօք զարդարեցան,
Ի գիշերոյ զարդ աստեղացն
եւ ի տունջեան արեգական:

Ա, էջ 64

Գեղեցիկ տներից է, օրինակ, եւ հետեւեալը·

Լըսէ՛ քեզ բան խիստ գեղեցիկ,
ծաղիկ քաղած է ի բազմաց,
Անմահութեան պըտուղն է սայ,
որ է յերկնից յաշխարհս իջած·
Թէ զնորայ ճաշակն առնուս,
կամ սէր ունիս ՚ւ ես ծարաւած,
Այլ չհաւանիս անցաւորիս,
Թողուս զամէն աշխարհս ի բաց:

Բ, էջ 75

1 Արտագրողն իր անունն էլ աւելացնելով՝ այս տողը դարձրել է՝ «ես Կոստանդինս եւ զԱմիրս որ գրեցի ի մենէ ի բաց»: Արտագրողի աւելացրածը դուրս ձգելուց յետոյ՝ «ի մենէ» բառն էլ, որ թողել է հրատարակիչը, բնականաբար դարձնում ենք «յինէն»:

Այս երկրորդ «բանքի» մէջ արդէն Կոստանդինը ցոյց է տալիս իր հա- որոնք կարող են իբրեւ առածներ գործածուել, ինչպէս հետեւեալ տունը, որ կումն եւ ընդունակութիւնը յօրինելու կարճ ու կտրուկ իմաստական ասքեր, կազմուած է չորս այդպիսի խօսքերից·

Քանի հասնիս ի մեծութիւն՝
  խոնարհ կացիր մարդկան ու ցած:
Որչափ լինիս դու իմաստուն՝
  շատ մի՛ խօսիլ մէջ անգիտաց:
Աղքատին մի՛ բարկանալ,
  որ հրդատէ զքեզ Աստուած:
Քո ընգերին հոր մի՛ փորել,
  Թէ չէ՝ այն քե՛զ կայ պատրաստած:

Բ. էջ 75

Ուրիշ գրուածքների մէջ էլ նա կերտում է իմաստական ասքեր, որ մենք կը տեսնենք իրենց տեղում· բայց մեր բանաստեղծի առաջին գրական մեծ արժանիքը դրանց մէջ չէ, այլ այլաբանօրէն յօրինուած կրօնական երկերի մէջ:

3· Արեգակի, գարնան եւ լուսոյ բանքեր:— Սրանց մէջ արդէն տեսնում ենք կեանքի ու բնութեան սիրահար չնորհալի բանաստեղծին, որ հետեւող չէ ուսուցական քերթութեանը: Նա իւրացրել է Գրիգոր Նարեկացու այն տաղասացութիւնը, որ հոգեւոր իմաստով, անձնական չեշտերով երգում է ուրախ, լուսավառ բնութիւնը: Կոստանդնի այս կարգի քերթուածները շատ աւելի մաքուր ու ջինջ են, ուստի եւ աւելի գեղեցիկ են, քան իր վարպետ Գրիգոր Նարեկացու Ծննդեան ու Վարդավառի տաղերն իրենց մթնութեամբ եւ բառախաղերով: Արդարեւ, այլաբանութիւնը դեռ մէկ-մէկ ազդում է մաքի պայծառութեան վրայ, բայց Կոստանդնի արուեստն աւելի զարգացած է, բանաստեղծն ընդհանրապէս խուսափում է այլաբանական անյստակութիւնից: Նա կամ բաւականանում է վերնագրի մէջ միայն յիշելով, թէ իր բանքը հոգեւոր է, կամ իր երկի անկախ մեկնութիւնն է անում՝ դնելով այն իր գրուածքի վերջում, երբեմն էլ մեկնութիւնը դնում է իբրեւ առանձին քերթուած, այնպէս որ բուն բանքը մնում է իբրեւ մի մաքուր օրհներգութիւն բնութեան, կամ թէ այնպէս է յօրինում, որ կարելի է ե՛ւ հոգեւոր, ե՛ւ մարմնաւոր նշանակութեամբ հասկանալ այն: Նա բնութիւնից առնում է ընդհանրապէս մեղմ ու քնքուշ տեսարանները, արեգակի ծագումը՝ լուսով ու գոյնով, գարնանային կեանքով ու բուրմունքով լցուած: Այս տեսակի երկերի մէջ է ահա ամէնից աւելի փայլում Կոստանդնի բանաստեղծական տաղանդը: Որովհետեւ նա կեանքի եւ բնութեան էութիւնը գտնում է լոյսի եւ սիրոյ մէջ, ուստի նրա երգերի մէջ լոյսն ու սէրը դարձել են մի տեսակ պաշտամունքի առարկայ· Նա ներբողում է արեգակի ծագում, գարնան գալուստ, լոյս ու սէր, յօրինելով մէկը միւսից գեղեցիկ քերթուածներ (Գ, Ե, Զ, ԺԱ, ԺԵ, ԺԶ): Հետեւենք նրա այս երկերին այն կարգով, որով դրուած են Ամիր Փոլինի ժողովածուի մէջ:

4· «Գարուն»:— *Երրորդ քերթուածի վերնագիրն է՝ «Այս գարունս զգալուստն Քրիստոսի պատմէ առակօք»: Այլաբանական լինելը շատ պարզ է եւ ինքը բանաստեղծն իր երկի երկրորդ մասի (վերջին չորս տները) սկզբում դարձեալ այսպէս է յայտնում այդ մասին·*

*Ըզսակաւ բանքըս որ գըրեցի*
*վասն գարնան եղանակաց,*
*Եւ յիշեցի օրինակաւ*
*ըզյարութիւն դատաստանաց...*

*Կը նշանակի՝ գարնան նկարագիրը նա անում է իբրեւ օրինակ Քրիստոսի, ինչպէս ասում են, «Երկրորդ գալստեան», երբ մեռելները յարութիւն պիտի առնեն եւ դատաստան լինի ըստ քրիստոնէական հաւատքի: Այս երկի մէջ դեռ զարգացած չէ Կոստանդնի արուեստը: Քանի որ դատաստանի ժամանակ արդարները պիտի ցնծան, իսկ մեղաւորները պիտի լան, ուստի բանաստեղծը գարնան նկարագիրն անում է նկատի ունենալով ե՛ւ սրանց, ե՛ւ նրանց: Բայց երբեմն մեղաւորների մասին խօսելիս հեռանում է գարնան պատկերից եւ հետեւում հանրածանօթ կրօնական պատկերացումներին, որ կապ չունին գարնան հետ· ինչպէս, օրինակ, քերթուածի առաջին տան ներքեւում ընդգծուած տողերի մէջ·*

*Գարունն լինի ուրախութիւն*
*եւ ցընծութիւն երկրածընաց·*
*Կիսոց մի զայ մեծ հարսանիք,*
կէսք մի յերկաթ, ի բանդ 'ւ ի լաց,
*Ոմանք ծաղկին զերդ բուրաստանք·*
*դոյն ըզգոյնով ցեղք ի ցեղաց·*
Ոմանք զգենուն մեծ տրտմութիւն
Եւ չարչարին ըզհետ դիւաց:

*Միւս տների մէջ երկակողմանի նկարագիրներն առնուած են պարտէզի եւ արտ ու բուրաստանի գարնանային աշխատանքից եւ բուսականութիւնից· այստեղ էլ, սակայն, մեղաւորների համար բերուած չոր ու անպիտան, լաւ պտուղ չտուող ծառերը, փուշն ու հրով այրելը, որ կրկնուած են տարբեր տների մէջ, ինքնուրոյն գիւտեր չեն, բայց յարմարւում են գարնան եղանակին, ինչպէս հետեւեալների մէջ·*

*Ծառքըն ծաղիկս ի վեր փըշեն,*
*Թէ կան դալար ու չեն մըսած·*
Ով որ ընդրի չոր 'ւ անպիտան,
Նոքայ հըրոյն են պատրաստած·
*Բուրաստանքըն զարդարին,*
*վարդըն փըռէ տերեւ չարած,*
*Վասն այնոր ինք Թագաւոր,*
*որ համբերէ ի մէջ փըշաց:*

*Կամ հետեւեալ տների մէջ·*

*Ահա եղեւ յորդոր գարուն,*

յայտնեցաւ զինչ կայ պահած·
Ու զինչ ծածուկ գործք ու սերմանք,
զիրենք ցուցին յամէն ցեղաց:
Ահա բարի սերմանահանքն
հընձեցեն զպտուղ բարեաց·
Իսկ սերմանողքըն չարութեան
ժողովեցեն փուշ խոպանաց:
Ծառ մի ծաղկեալ գեղեցկապէս
եւ լի պըտղով կայ զարդարած·
Եւ մին մի չոր եւ անպիտան,
յինքն մահաբեր փուշ կայ բուսած·
Վասն այնորիկ սուրբըն հրեղէն
ի մեծ ծառոյ կայ պատրաստած,
Որ ոչ բերէ պըտուղ բարի,
Նայ հատանէ հասարակաց:

Բանաստեղծն այս քերթուածի մէջ դեռ շատ անվստահ է շարժւում իր յօրինման ժամանակ: Կարծես նա իր առաջին փորձն է անում այսպիսի մի երկ ստեղծելու, ուստի չի խիզախում շատ հեռանալու ընդունուած հին ձեւերից, եւ այնպէս է յօրինում, որ այլաբանութիւնը թափանցիկ լինի եւ անգէտներն էլ հասկանան բուն կրօնական իմաստը, նրանք որ

Զմարմինքըն են զարդարել
գեղեցկապէս ու խիստ պայծառ,
Եւ չեն ի հասկանալ,
մըտօք ճանչել բան ծածկաբար:
Դ, էջ 82

Բայց չնայելով քերթողի անհամարձակութեանը՝ արդէն երեւում է նրա ընտիր ճաշակը եւ մտածութիւնը իւրայատուկ գեղեցիկ ձեւերով, առանձնապէս զարնան հրճուալից նկարագրի մէջ, ինչ որ վերաբերում է արդարներին: Այստեղ պատկերները ոչ թէ յարասութիւն են Աւետարանի, այլ ինքնուրոյն գիւտեր են եւ շատ թարմ ու զուարթ են, ինչպէս, օրինակ,

Ոմանք ծաղկին զերդ բուրաստանք
գոյն ըզգոյնով ցեղք ի ցեղաց:
Ծառքըն ծաղիկս ի վեր փըռչեն,
թէ կան դալար ու չեն մըսած:
Վարդըն փըռէ տերեւ չարած:

5· «Բանք յերկու դէմս»:— Մեր հին բանաստեղծութեան գոհարներից մէկն է նրա առաւօտեան օրհներգութիւնը (Ե· քերթուած, էջ 85—88), որի վերնագիրն է· «Բանք յերկու դէմս մտաց տեսութիւնք ի հոգի եւ ի մարմին· զոր առակօք խօսի այսպէս»: «Առակօք խօսի» դարձուածը ցոյց է տալիս, որ այդ բանաստեղծութիւնը յօրինուած է այլաբանական նմանութեամբ, բայց այլաբանութիւնն այլեւս պարզ չէ եւ, ինչպէս հեղինակը յայտ—

նում է, բանքը կարող է եւ «ի մարմին» հասկացուել: Քրիստոնեայ հաւատացեալի վսեմ ներշնչումով ստեղծուած լուսաբացի մի նկարագիր է դա, որի մէջ պատկերներն, աւելի ու աւելի հրապուրիչ, յաջորդում են միմեանց: Մենք բանաստեղծի հետ տեսնում ենք բնութեան զարթօնքը, լուսազարդ չքեղութիւնն եւ կենդանութիւնն ու շարժումը. միաժամանակ եւ նրա հետ զգում ենք նրա սէրն առ առաւօտեան լոյսը եւ նրա խորազգաց սրտի սքանչացումը, որով նա դիտում է նախ կէսգիշերային արթուն-անքուն լուսատուները եւ ապա բնութեան միւս գեղերը:

Զարթի՛ք ի յերազուտ,
   բացէ՛ք զաչերտ՝ ով կայք ի քուն.
Տեսէ՛ք մէջ գիշերիս շա՛տք,
   որ պահ մի չեն լել ի քուն,
Անդադար ի շուրջ գալո՛վ
   կան հրամանաւ մի Աստուծուն,
Որ բանիւ դերկինք ի վեր
   կամար կապել երետ քամուն:

Բանաստեղծը զարթնում է քնից, վեր կենում. երբ երկար գիշերն անցնում է, տեսնում է՝ լուսինը պայծառ եւ բազմաթիւ աստղերն՝ «ի յիր սպասուն՝» զարդարում են երկինքը: Երեւում են առաւօտուայ նշանները. ծագում է պայծառ լուս-աստղը Արուսեակի[1] (=Արեգակի) առաջից.

Մի աստղ ելաւ պայծառ
   առջեւ Արուսեկին լուսոյն.
Ունէր լոյս գեղեցիկ
   քան զաստեղացն այլ գերագոյն.
Ետես ըղնա լուսին,
   եւ հրաման տայ աստեղնոյն.
Հաւասար ի մայր մտան,
   նուազեցան յիրենց լուսոյն:

Եւ ահա դուրս է գալիս ինքն արեգակը.

Ջերմս երկնից եբաց,
   երբոր ծագեց լոյսն արեւուն.
Տղայ երեւեցաւ,
   քաղցր կոչի իրենն անուն.
Հոգի հաւասար երետ շատոց
   պայծառ լոյս աչերուն,
Ով սիրով մընաց լուսոյն
   Արուսեկին առաւօտուն:

Մանուկ Արեգակի ծնունդը, բնութեան մեծասքանչ խորհուրդն եւ երեւոյթը, հոգի եւ կենդանութիւն է բերում, ամէն կեանքի աղբիւրն է:

---

1 Քրիստոնէական կրօնական լեզուի մէջ «Արուսեակ» է կոչւում յաճախ արեգակը, որ եւ իբրեւ սիմբոլ՝ նշանակում է Քրիստոս:

*Ամէն բարիք պարգեււում է մարդուս Արեգակի ծագելիս: Աստուածեան լուսաբացին է, որ Աստուած, սիրով լցուած, քաղցր է նայում արարածներին. եւ վերջապէս լուսածագի ժամին է բերում անմահութեան անուշ հոտը, որ հարբեցնում է հոգիները, եւ մահը յաւիտենական կեանքի փոխում. բանաստեղծը այնպէս յափշտակուած է աստուածով, որ տենչում է, որ կեանք, խնդութիւն, սէր լինի իր համար աստուածեան, նոյնիսկ իր մահը:*

6. «Բանք յաղագս Արեգական արդարութեան»:— *Պակաս գեղեցիկ չէ եւ այս բանքը (Զ, էջ 88—90), որի վերնագրի մէջ հեղինակը դարձեալ գըրում է. «զոր առակօք խօսի», եւ թէ այլաբանութիւնը վերաբերում է Քրիստոսին, «որ եւ ծագեաց ի Հօրէ միածին որդին»: Այստեղ էլ նկարագրուած է գարնան արեգակի ծագումն ու նրա սքանչելի ազդեցութիւնը բնութեան այլ եւ այլ կողմերի վրայ: Առաջին անգամ մեր բանաստեղծութեան մէջ խանդավառ ոգով, արագաթռիչ սլացքով ու թափով փառաբանւում է արեգակը կարծես մի արեւապաշտից. լոյս ու ջերմութիւն, խաւարի հերքում, ձմեռնային սառնամանիքի վերացում եւ աշխարհի ցնծութիւն:*

*Ահա՛ դիշերս էանց,*
*նըշան եղեւ առաւօտուն.*
*Աստղըն պայծառ ծագեց,*
*աւետաւոր երեկ լուսոյն.*
*Խաւարն հերքեցաւ*
*ու ցընծացաւ աշխարհքս ամէն.*
*Երնեկ ետուն միմեանց,*
*որ արժանի եղեն լուսոյն:*
*Զինչ որ ի բանդ կային*
*եւ ի խաւար լի խոր գընդան,*
*Նա՛յ լոյս ծագեց նոցայ*
*յարեգականն ի մեծ լուսոյն.*[1]
*Երկիրս էր սառն ու պաղ,*
*ու ցուրտ ձըմեռն ու հողմային,*
*Ահա եղեւ գարուն*
*յարեգականն ի մեծ լուսոյն:*

*Սկսւում է բնութեան մէջ կենսաբեր շարժումը—ծիլ ու ծաղիկ, ջրերի խաղացում եւ ընդհանուր կենդանացում.*

*Երկիր կենդանացաւ,*
*ու լեռն ու դաշտ կանաչ բուսան.*
*Ծաղիկ բերին ծառերն*
*յարեգականն ի մեծ լուսոյն.*
*Ծաղկունքըն զարդարին*
*ազգի ազգի գոյն ըզգոյնով,*

---

*1 Հմմտ. «Ժողովուրդ որ նստէր ի խաւարի, ետես լոյս մեծ. եւ որոց նստէին յաշխարհին եւ ի ստուերս մահու՝ լոյս ծագեաց նոցա»: Աւետարան ըստ Մատթ. Դ. 16.*

Փռի վարդըն կարմիր
    յարեգական ի մեծ լուսոյն։
Ակունքըս յորդորին
    ու ցընծալով յառաջ խաղան,
Գետերս ըլոր կապին
    յարեգական ի մեծ լուսոյն։
Զինչ որ կայ արարած,
    ու անհոգի մեռած կային,
Ահա՛ կենդանացան
    յարեգական ի մեծ լուսոյն։

Բանքի այս առաջին մասն այնպէս է յօրինուած, որ կարծես թէ դրա հեղինակը մեր ժամանակի մի բանաստեղծ լինի, որ հիացած է արեգակի հրաշակերտ զօրութեամբ եւ երգում է այն առանց որեւէ «ծածուկ» մտքի։ Բայց դա Քրիստոսի ծննդեան մի գովք է այլաբանութեամբ։

7․ Խորհրդաւոր նմանութեան օրինակներ։— Ինչի՞ց է բխում Կոստանդըսնի այս հիացական խորասուզումն առաւօտեան լոյսի մէջ եւ բնութեան այսպիսի վեհ ըմբռնումը, որ ունի նա, կամ այն, որ լոյսն ու սէրը նրա համար մի տեսակ պաշտամունքի առարկայ են։ — Անշուշտ այդ ծագում է ամէնից առաջ բնութեան լուսազեղ տեսարանի տպաւորութիւնից։ Բայց այդ չէ միայն։ Նա ներշնչուած է նաեւ քրիստոնէական սիմբոլիզմից, որով Քրիստոս կոչւում է «լոյս», «արեգակն արդար», «արդարութեան արեգակ»։ Սրա լոյսն՝ «իմանալի լոյս», եւ Քրիստոսի «ծնունդն ի Հօրէ» (ըստ դաւանութեան) սւում է նաեւ «ծագումն ի լուսոյ», Քրիստոս՝ «լոյս ի լուսոյ»։ Այսպէս երգւում է «Արեւագալի» եւ «Քրիստոսի Ծննդեան» շարականների մէջ․

Լո՛յս, ի լուսոյ ծագումն, արեգակն արդար…
Ի ծագել լուսոյ առաւօտու
Ծագեա ի հոգիս մեր զլոյս քո իմանալի։

Կոստանդինն, ինչպէս եւ իր «հոգեւոր եղբայրները», շատ անգամ երգել են Քրիստոսի համար նաեւ․

Ի Հօրէ ծագեցար
Լուսաւորել զարարածս,
Արդարութեան արեգակն…
Լոյս ի լուսոյ ծագեալ ի Հօրէ
Եւ լուսաւորեաց ըզտիեզերս,
Ծնունդ յանըստուեր լուսոյն…
Լոյս ի լուսոյ զմեզ լուսաւորեա…
Լոյս ի լուսոյ ի Հօրէ առաքեցար…[1]

Այս խորհրդանշանները, սիմբոլները, ինչպէս արդէն տեսել ենք, եկեղեցու մէջ մտել էին արեգական աստուած Միհրի (Միթրա) կրօնի ազդե–

1 Շարական, Էջմիածին, 1861, էջ 597, 24, 27, 672, 50։

ցութեամբ։[1] Արդ՝ Կոստանդին Երզնկացին սոյն հին նիւթն է երգում, նոյն «լոյս Աստուածը», կամ աստուածային լոյսը եւ «արդարութեան արեգակն» ու նրա ծագումը. բայց մինչ հոգեւոր երգերի մէջ, որպէսզի ֆիզիկական լոյսն ու ֆիզիկական արեգակը չհասկացուին, աւելացնում էին «իմանալի» եւ «արդար» կամ «արդարութիւն» բառերը, Կոստանդինը մի փոփոխութիւն է անում. նա այս որոշիչները դուրս է ձգում եւ առնում միայն լոյս եւ արեգակ։ Նրա երգն, ուրեմն, այնպէս է յօրինւում, որ թւում է թէ նա փառաբանում է իսկական ֆիզիկական արեգակն եւ նկարագրում է լոկ առաւօտեան լոյսի ծագումն իր շարժումներով եւ ազդեցութիւններով, բայց իրապէս այդպէս չէ։ Ֆիզիկական լոյսից եւ արեգակից ստացած ներշնչման հետ իշխում է եւ հաւատացեալ քրիստոնեայի զգացմունքն առ արդարութեան արեգակն եւ սրա ծնունդը, այնպէս որ նա երգում է միաժամանակ ե՛ւ նիւթական, ե՛ւ իմանալի լոյսերը, ե՛ւ ֆիզիկական արեգակը, ե՛ւ արդարութեան արեգակը կամ, ինչպէս ինքը հեղինակը ճիշդ բնորոշում է, նա ստեղծում է «Բանք յերկու դէմս մտաց տեսութիւնք ի հոգի եւ ի մարմին»։ Եւ այս է տալիս նրա բանաստեղծութեանն առանձին ուժ ու վսեմութիւն։ «Արդար», «իմանալի» բառերի բացթողումով արձակւում են մեր կրօնաւոր բանաստեղծի թեւերը. նա արդէն ազատ թռիչք է գործում իր սիրած բնութեան մէջ եւ երգում լոյս, առաւօտ, արեգակի ծագում, ուրախ գարուն, այնպէս, ինչպէս ինքն զգում ու հասկանում է բնութիւնը։ Դրա հետեւանքով եւ մեր բանաստեղծութիւնը ձեռք է բերում մի նոր անկախ գրական տեսակ — բնութեան քնարերգութիւն, որի մէջ մեծ տեղ են բռնում բանաստեղծի անձնական տպաւորութիւնները բնութիւնից ու զգացմունքները մի ներքին ջերմութեամբ եւ կրօնական խորհրդաւորութեամբ կամ «խորհրդականութեամբ», ինչպէս ասում էին հները։ Եթէ լուսոյ եւ արեգակի հին պաշտամունքը քրիստոնէական հաւատքի մէջ մտել էր իբրեւ մի սիմբոլ—խորհրդանշան միայն, այժմ այդ սիմբոլը մեր բանաստեղծութեան մէջ դառնում է արդէն ինքնուրոյն երգի նիւթ։ Բնութեան երգն, ուրեմն, ոչ իբրեւ մի հատուած ուրիշ մեծ երկերի, ինչպէս Ներսէս Շնորհալու «Եդեսիոյ ողբի» մէջ է։ Բայց այսպէս դեռ Կոստանդնի քերթուածների ոչ-մեկնական մասերի մէջ։

Անդէտ մարդիկը, որոնք խելամուտ չեն կրօնական գրականութեանն ու հաւատալիքներին, հեշտութեամբ միայն ֆիզիկական նշանակութեամբ կը հասկանան Կոստանդնի այդպիսի քերթուածները, եւ այդպէս հասկացողներ եղել են թէ՛ Կոստանդնի եւ թէ՛ մե՛ր իսկ՝ ժամանակակիցներից։ Կոստանդինը, սակայն, այդպէս չի մտածել, այդ երեւում է ոչ միայն վերնագիրներից, այլեւ քերթուածների մեկնական մասերից։ Ահա թէ ի՛նչ է գրում նա վերեւում բերուած արեգական բանքի չորրորդ տնից յետոյ.

Է՞ր չէք ի զարմանալ
ու կամ հարցուկ լինիլ բանիս,

1 Մ. Աբեղեան, Հայոց հին գրականութեան պատմութիւն, Ա. հատոր. «Հոգեւոր երգ» հատուածի երկրորդ գլուխ՝ «Ձեւն եւ բովանդակութիւնը», պարագրաֆ 6. «Միհրի կրօնի ազդեցութիւնը», էջ 501։

Վասն այս արեգականս
  եւ իր պայծառ լցեալ լուսոյն․
Այս նո՛ր ծագեց մեզ լոյս
  քան զարեգակն, ու ա՛յլ պայծառ․
Զինչ լուսաւորք կային՝
  ծառայ կոչին այն մեծ լուսոյն։

Ինչո՞ւ չէք զարմանում ու հարցնում, թէ այս ի՞նչ արեգակ է պայծառ լուսով (որ երգում է ինքը), ի՞նչ նոր մեծ լոյս է ծագել արեգակի պէս ու նրանից էլ աւելի պայծառ, այնպէս որ բոլոր լուսաւորները նրա ծառան են,— այսպէս հարցնում է բանաստեղծը եւ անմիջապէս պատասխանում․

Ի լուսոյն ի սկըզբանէ
  լի լուսով չառաւիղ ծագեց,
Լոյս ի լուսոյ ծընաւ
  յարեգական ի մեծ լուսոյն։
Այս լոյսս ի յայն լուսոյն,
  որ ինքն է տէր ամէն լուսոյն,
Ու թագաւոր կոչի,
  'ւ ամենուն լո՛յսն ի յիր լուսոյն։

Բանաստեղծն այստեղ բառախաղ չի անում, այլ ընդունուած բանաձեւով եւ «չառաւիղի» օրինակով խօսում է քրիստոնէական դաւանանքի մասին եւ բացատրում, թէ իր երգած լոյսը, ե՛ւ ամէն լոյս, ե՛ւ ամէնի լոյսն աստուածային լոյսից է․ (արդարութեան) արեգակի մեծ լոյսից, եւ սա էլ աստուածային հայր Աստուծոյ լոյսից «ի սկզբանէ» ծագած մի «չառաւիղ» (ճառագայթ), ինչպէս ընդունում եւ բացատրում էին դաւանաբանութեան մէջ։ Որ բանաստեղծը «լոյս» ասելով հասկանում է մտաւոր, հոգեւոր լոյսը, կամ քրիստոնէական կրօնի լոյսը, այդ պարզ երեւում է այս Զ․ բանքի վերջին երեք տներից․ ոչ քրիստոնեաները, որ չեն հաւատում «արեգական եւ իր լուսոյն», — ասում է նա, — «չունին մասըն լուսոյ յարեգականն ի մեծ լուսոյն», իսկ ինքը Կոստանդինը փափագում է, որ լուսաւորուի «յարեգականն ի մեծ լուսոյն»։ Բայց որ նա գրում է, թէ ամէն լոյս եւ ամէնի լոյսն աստուածային լոյսից է, պէտք է հասկանալ նաեւ ֆիզիկական արեգակի լոյսը, քանի որ այն էլ ծագում է Աստուծուց, բայց, հարկաւ, ոչ իբրեւ աստուածային լոյսի մի մասն, իբրեւ նրանից ծագող մի «չառաւիղ» (ճառագայթ), այլ իբրեւ Աստուծու «արարած»[1] լոյս։

Կոստանդնի քերթուածները, առանձնապէս Ե-ը ճիշդ հասկանալու հա-

1 Դիտմամբ այստեղ այսքան կանգ ենք առնում այս խնդրի վրայ, որովհետեւ անհաճ եւ անժուռ կերպով հրատարակել են եւ սովորեցնում են, թէ Կոստանդին Երզընկացին այս քերթուածներով իբր հանդիսանում է «պանթէիստ»։ Այդ մարդիկը կամ պանթէիզմ չեն հասկանում, կամ սնամտութեամբ բարձրացնել են ուզում մեր հին բանաստեղծներին։ Այդպիսիների ասելով՝ Ֆրիկի համար Աստուածը գոյութիւն չունի, նա «աթէիստ» է, Կոստանդին Երզնկացին, անգամ Գրիգոր Նարեկացին «պանթէիստ» են…։ Առանց դրան էլ մեծ է մեր հին բանաստեղծների փառքը։

մար՝ կանգ առնենք եւ հետեւեալի վրայ: Լուսածագն, առաւօտեան արեգակն ու գարունը հեթանոսական ժամանակից ի վեր կապուած են եղել նաեւ մի ուրիշ հաւատալիքի հետ, այն է՝ մեռելների յարութիւնը պէտք է լինի գարնանն արեւածագին: «Մազդեզական յարութիւնը վախճանական արշալոյս է, մինչդեռ վեդայական արշալոյսն ամէնօրեայ յարութիւն է»: Ըստ հայ ժողովրդական հաւատքի, արշալոյսն ամէն օր կրկնուող յարութիւն է միաժամանակ եւ հոգիների դատաստան, որից տարբեր է վերջին դատաստանը: Հաւատում են, թէ ամէն օր արեւածագին բացւում են երկնքի դռները եւ ինչպէս հին իրանական հաւատքով՝ լուսոյ աստուածը, որի աթոռն է արեգակը, այդ դռների առաջ դատաստանի է նստում. իրանցիների համար առաջին դատաւորն է Միթրան, առաւօտեան արեգակի աստուածը, ըստ հայ ժողովրդական հաւատքի՝ Քրիստոս, որ հարկաւ քրիստոնէական ժամանակում փոխանակել է հեթանոսական աստուծուն: Դատաստանից յետոյ արդարները գնում են անմահութեան անուշակ դրախտը:[1] Այս հաւատալիքը մինչեւ մեր օրերը կենդանի մնում էր մեր ժողովրդի մէջ եւ արտայայտւում է նրա լուսաբացի ժողովրդական աղօթքների մէջ: Սրանցից հանրածանօթ է հետեւեալ հիմնը, որ անշուշտ գալիս է շատ հին ժամանակներից.

Լուսացա՛ւ, լուսացա՛ւ:
Լոյսն է բարին,
Ծիտն է ծառին...
Երկնքի դըռները բաց է.
Ոսկի աթոռ դըրած է.
Քրիստոս վըրան նըստած է.
Լուսաւորիչ կանգնած է,
Ոսկէ գըրիչ բըռնած է.
Մեծ ու պըստիկ գըրում են,
Արդարները խաղում են,
Մեղաւորներ լալում են:
Լուսացա՛ւ, լուսացա՛ւ:

Այս հին հաւատալիքն եւս իր կողմից ազդել է Կոստանդնի Արեգակի ու գարնան երգերի վրայ: Մեռած բնութիւնը վերակենդանացնող գարունը դարձել է մի խորհրդաւոր օրինակ ոչ միայն Քրիստոսի ծննդեան համար, որով աշխարհս, ըստ հաւատացեալների, ստացել է մի նոր հոգեւոր կենդանութիւն,—այլեւ Քրիստոսի «երկրորդ գալստեան» եւ մեռելների յարութեան, երբ եւ դատաստան պիտի լինի: Դրա համար եւ Կոստանդինն, ինչպէս տեսանք Գ. քերթուածի մէջ, այդ երգում է գարնան պատկերով եւ վերնագիրն էլ դնում է. «Այս գարունս զգալուստն Քրիստոսի պատմէ առակօք»:

Նա գարնանային առաւօտեան լուսաբացի պատկերով երգում է երկրի կենդանացումը Զ. քերթուածի մէջ: Եթէ վերջինս հասկացւում է Քրիստոսի Ծննդեան համար, նրա Ե. քերթուածի մէջ՝ «բանք յերկուս դէմս», շատ

1 Մանրամասնութիւններն եւ աղբիւրները տեսնել Մ. Աբեղեանի «Հայ ժողովրդական հաւատքը». Dr. Manuk Abeghian; Der armenische Volksglaube, Leipzig, 1899, էջ 19 եւ հտ.:

կտորներ յարութեանն են ակնարկում, եւ կարող են այսպէս էլ հասկացուել, ինչպէս են հետեւեալները·

Հոգի հաւասար երետ,
    չատոց պայծառ լոյս աչերուն,
Ով սիրով մընաց լուսոյն
    Արուսակին առաւօտուն։
Քաղցր է ծընունդ լուսոյն,
    երանի տամ ես այն մարդոյն,
Որ բաժին ինքն ունենայ
    ի յայն լուսոյն առաւօտուն
Թէ դուռըն կայ երկնից
    պարգեւատու մի Աստուծուն,
Ի ծագել արեգականն
    ի մեզ բացվի դուռըն բարոյն։

Կամ հետեւեալները·

Թէ անուշ հոտ կայ բուրել
    'ւ ի կե(ա)նք փոխէ զդուռըն մահուն,
Են չատոց հոգի հարբած
    յանուշ հոտոյն յառաւօտուն.
Թէ անմահական սէր կայ՝
    Որ հոգի տայ հոգեստնուն,
Իմ բաժին սէրն ու հոգին
    խառնել ի սէրն առաւօտուն։
Թէ ինձ կեանք կամ խընդութիւն
    բաժին կայ ի դուռն ի Սիրուն [=Աստուծու],
Մէկ պահու սէրն ի 'սըրտէ՝
    Թող լինի ինձ յառաւօտուն...

Շատ ու թափանցիկ են մանաւանդ այս տողերը·

Ով կամի սիրով լինիլ
    ինքն յարութեան որդի լուսոյն,
Թող խընդրէ ի յայն Սիրոյն [=Յիսուսից],
    որ ինքն յարեաւ առաւօտուն·
Ի Սիրուն սէր յաւելու
    սիրով գըտնայ տունն ի Սիրուն [=Աստուծու]։
'Ի ով Սիրոյն ինք հետեւի՝
    հասնի սիրովն առաւօտուն [=յարութիւն առաւօտին]։

Եւ վերջապէս այս վերջին տողերը շատ պարզ կերպով ակնարկում են, որ Կոստանդնի երգած առաւօտը խորհրդաբար վերաբերում է նաեւ յարութեան արեգակի ծագմանը։ Այսպէս է իր համար աղօթում մեր բանաստեղծը·

Տէ՛ր, գըթա՛յ յիս ի ծառայս,
    եւ տուր բաժին ինձ յայն հոգոյն,

*Որ շատոք ին ցանգացել,*
*բայց քիչք հասան առաւօտուն...*
*Խընդրեմ ի քէն, տուր ինձ,*
*սէր ի սիրուն առաւօտուն:*

8. Վարդ ու սոխակի այլաբանական սիրավէպը եւ սիրոյ գովաբանութիւն:— *Մեր բանաստեղծը, որ լոյսի սիմբոլիզմից անցնում էր արեգակի եւ լոյսի երգերին, ինչպէս վերեւում բերուած կտորներից կարելի է տեսնել, լոյսի հետ անհրաժեշտօրէն սէր էլ էր երգում, քանի որ քրիստոնէական Աստուածը ոչ միայն «Լոյս» էր, այլ միանգամայն եւ սիրոյ Աստուած եւ «Սէր» էլ կոչւում էր: Նա հաւատում էր, որ ինչպէս աստուածային լոյսից է «ամէն լոյս» եւ «ամէնի լոյսը», նոյնպէս եւ «Սէր» Աստուծուց է ամէն սէր. «Ի Սիրուն սէր յաւելու»: Աստուածային սիրուց է, որ ծագում է արեգակը.*

*Թէ Տէրն [=Աստուած] ի յարարածս*
*հայի քաղցր ի յիր սիրուն,*
*Ցայն պահուն է որ լինի*
*նըշան լուսոյն առաւօտուն:*

*Առաւօտեան լոյսն, ուրեմն, Աստուծու քաղցր աչքից է, եւ նա քաղցր աչքով նայում է իր սիրուց: Ահա թէ ի՛նչ հայեացք ունէր Կոստանդինը ե՛ւ սիրոյ, ե՛ւ լոյսի ծագման մասին: Հէնց դրա համար էլ նա Լոյս երգելիս չի մոռանում եւ սէրը: Բայց նա առանձնապէս էլ երգում է սէրը: Բնութեան այս խանդավառ բանաստեղծը, որ իր ներշնչումները բնութիւնից ստանալով աստուածային լոյսն երգելիս առնում է ֆիզիկական լոյսն այլաբանութեամբ, չէր կարող իր կրօնական բանքերի համար չօգտուել սովորական իմաստով աշխարհիկ սիրու երգերի ձեւերից: Եւ իսկապէս՝ մեր հոգեւորականների յօրինած բանաստեղծութեան մէջ առաջին անգամ, — նրանից առաջինը ժամանակով՝ ցարդ յայտնի չէ, — նա կիրառում է* վարդ ու սոխակի սիրավէպը, *սիրոյ շատ տարածուած այս* այլաբանութիւնը:

*Հայոց գրականութեան մէջ վարդը երեւան է գալիս 10-րդ դարում արդէն, բայց վարդ ու սոխակի այլաբանութիւնն ընդհանուր գրականութեան մէջ, որքան յայտնի է, նախ երգել են պարսիկ բանաստեղծները: Մեր բանաստեղծների համար հեշտ ընդունելի է եղել այս այլաբանութիւնը, քանի որ վարդը մեզնում հնուց արդէն կապուած է եղել սիրու հետ. հեթանոսական ժամանակներում արդէն այս ծաղիկը նուիրական է եղել սիրու աստուածուհի Աստղիկին: Ուստի մեզնում եւս այս սիրավէպի այլաբանութեան տակից պարզ ցոլանում է զգայարանական հեշտաւէտ սէրը:*

*Արեւմուտքում,—առնում ենք առանձնապէս Ֆրանսիան,—այս սիրավէպն ստացել էր աւելի վերացական եւ ուսուցական բնաւորութիւն: «Կղերականները սիրոյ մասին գրելով՝ սիրոյ նիւթի մէջ բնականաբար մտցրել էին իրենց բոլոր մտաւոր սովորութիւնները. Նրանք են եղել գլխաւորապէս, որ քրիստոնէական աստուածաբանութեան դիմաց հաստատել*

*էին մի իսկական սիրային Թէոլոգիա, սիրոյ աստուծուն տալով Յիսուս Քրիստոսի տեղը, եւ այդ սիրոյ աստուծու փափկութեան նստավայրը յօրինելով եղեմական դրախտի պատկերով, ի անուն նրա օրինագրելով մի տասնաբանեայ պատուիրանք եւ վերջապէս՝ կազմելով մի ամբողջ դաւանանք ու պաշտամունք, ինչպէս եւ սիրահարների մի եկեղեցի, որ ունէր իր հաւատացեալներն ու հերետիկոսները, իր սրբերն ու մեղաւորները: Կղերականները կուրտուազական (մեծարական, քաղաքավարական) սիրոյ վրայ գործադրում են նոյնպէս իրենց վերացականութեան մոլութիւնն ու իրենց դիալեկտիկական ձգտումը, եւ նրանց ազդեցութեամբ՝ «սիրոյ արուեստները» բռնում են երգերի ու վէպերի տեղը. գրում են սիրելու արուեստ, Թարգմանում են Օվիդիոսի «Սիրելու Արուեստը»: Վերացականութեան եւ դիալեկտիկական բանաձեւերի սէրը երեւակայութեանը մուտք էր տալիս միայն այլաբանութեան կողմից, եւ այլաբանութեան յանգան սիրոյ մասին գրող բոլոր կղերականները: Եւ այս միջոցը միայն չթողեց, որ չոր ու ցամաք օրինագրութեան մէջ ընկնեն եւ շատ ու քիչ գունաւորեն վերացականութիւնը»:*[1] *Այսպիսի բնաւորութիւն ունի նաեւ Ֆրանսիական նշանաւոր սիրավէպը՝ «Վարդի ռոմանը»* (Le roman de la Rose), *որի առաջին մասը գրուած է* 1230–*ական Թուականներին, իսկ երկրորդ մասը՝ մի ուրիշ հեղինակի ձեռով մօտ* 1277 *Թուականին, ուրեմն, հաւանօրէն Կոստանդին Երզնկացու մանկութեան տարիներին: Դա սիրելու արուեստ է եւ կուրտուազական սիրոյ օրինագիրք:*

*Այսպիսի սիրավէպեր եւ սիրելու «արուեստներ» եւ օրինագրքեր չեն առաջ եկել մեր գրականութեան մէջ, զի մեզնում կեանքի մէջ չի եղել դրանց պահանջն ունեցող արքունիք, «կուրտուազական» վերաբերմունք տիկինների հանդէպ: Չեն եղել եւ «կուրտուազ ասպետները», այն ժամանակի կիլիկեան բառով՝ «ձիաւորները»: Ճիշդ նոյն դարում Թաթարական բռնապետութիւնն էր Մեծ Հայաստանում, եւ հայ ազնուականութիւնն արդէն դէպի քայքայում եւ անկում էր դիմում: Ուստի մի քանի սիրավէպերը, որ մնացել են մեր հին գրականութիւնից, ոչ վերացական, ոչ էլ ուսուցական բնաւորութիւն ունին: Վարդ ու սոխակի սիրավէպն այլաբանօրէն կիրառւում է ոչ Թէ իբրեւ «սիրոյ արուեստ», այլ իբրեւ մի սիրոյ քերթուած՝ ընդհանրապէս սէր գովերգելու համար:*

*Արեւմուտքում եւս, հարկաւ, յօրինուած կան նաեւ հզօր սիրոյ քերթուածներ, նոյնիսկ* 14–*րդ դարում: Բայց համեմատութեան համար բերենք այստեղ մի փոքր կտոր իտալական վերածնութեան վերջին շրջանի,* 16–*րդ դարի նշանաւոր բանաստեղծ Տորկուատոյ Տասսոյից: Նրա հռչակաւոր «Ազատուած Երուսաղէմ» վիպական քերթուածի մէջ*[2] *զէնքերի շաչիւնի ու շռինդի եւ արիւնահեղ կոտորածների ու մահուան հետ՝ մեծ տեղ է տրուած նաեւ սիրոյ քնարական գովքին: Ահա նրա Երջանիկ կղզիների մէջ Երջան–*

---

*1 Histoire de la Littérature française par Gustave Lanson, Paris, 1895, էջ 121 եւ հտ.:*

*2 Տորկուատոյ Տասսոյ (1544–1595 Թ.), «Ազատուած Երուսաղէմ»: Օգտուում եմ ռուս. Թարգմանութիւնից: Տասն եւ հինգերորդ ու տասն եւ վեցերորդ երգեր: Տե՛ս յատկապէս էջ 236 եւ հտ., 16-րդ երգ, ութեակներ 12—17:*

կութեան տաճարը, սիրոյ կախարդական ամրոցն իր մարդկային սիրահար զոյգով, չուրջը ծաղկող ու պտղող ծառեր, ականակիտ լճակներ իրենց մէջ լողացող սիրատարփ ու հրապուրիչ, մերկամարմին ջրանուշներով: Գարնանային գեղեցիկ բնութիւն սիրով լցուած:

«Սիրավառ թռչունները
Ճօճում են զմրուխտ չուաքարանները,
Եւ իրենց միայն հասկանալի լեզուով
Հառաչում են իրենց խինդ ու վշտի համար»:

Այդ թեւաւորներից մէկը, խատուտիկ փետուրներով մի կարմրակտուց թռչուն, մարդկային ձայնի նման հնչիւններով երգում է վարդի մասին.

«Ահա վա՛րդը, որ պատրաստ է բացուելու.
Որքան պակաս են բացուած նրա թերթերը,
Այնքան աւելի հմայք կայ նրա մէջ:[1]
Բայց ահա՛ նա փթըթել է մեր առաջ,
Ու փըթթումից յետոյ իսկոյն ծաղկաթափ.
Եւ այդ այլ եւս այն ծաղիկը չէ,
Որ գեղուհիների սրտում նախանձ էր բորբոքում,
Եւ նրանց կրակոտ պաշտողների հայեացքը գրաւում:
Բաւական է մէկ օր միայն,
Որ թառամի ծաղիկը մեր կեանքի:
Ամէն տարի բնութիւնը նորոգւում է,
Իսկ մեր երիտասարդութիւնը չի վերադառնում:
Քաղե՛նք ուրեմն վարդն առաւօտեան.
Օրը կ'անցնի, եւ իրիկնադէմին արդէն կը թառամի նա.
Քաղե՛նք շուտով սիրոյ ծաղիկն
Ու սիրենք, քանի կարող են մեզ սիրել»:

«Լռեց երգեցիկ հաւքը, եւ իսկոյն
Օդը նորից լցուեց թռչունների ճռուողիւնով.
Աղաւնիները համբոյրներ են տալիս,
Եւ ամէն ինչ բռնուած է գարնային հրայրքով:
Ե՛ւ կաղնին, ե՛ւ դափնին, թփերն ու խոտեր,
Ինքը հողը, գետնի ջրերը,—
Ամէն ինչ միայն սէր է շնչում,
Ամէն ինչ անձնատուր է սիրոյ բուռն իշխանութեանը»:

Մեր Կոստանդնի բանաստեղծութեան մէջ էլ (Քերթուած ԺԱ, էջ 110—118) սէրը դրուած է գարնային թարմ ու գեղեցիկ բնութեան մէջ, բայց առանց որեւէ կախարդանքի ու յաւերժահարսների: Ամէն ինչ բնական ձեւով է, հարկաւ, որոշ այլաբանութեամբ—ծաղիկներն աղջիկներ են, եւ ամենագեղեցիկը վարդն է, որին նախանձում են միւս գեղուհիները: Հաւ—

1 Հմմտ. հայ գուսանական հայրէնը՝ «Վարդն բացուած մի՛ սիրէ... Վարդըն պուլպուլիկ սիրէ՛...»:

քերը (Թռչունները) տղայք են։ Չկայ մարդկային սիրահար զոյգը, դրա փոխանակ այլաբանօրէն բլբուլն ու վարդն են սիրահար։ Զարդարուն բուրաստանում սիրավառ հաւքերը, գեղեցիկ հագնուած եւ ծաղիկների անուշ բուրմունքից հարբած, իրենց սէրն են քաղցր եղանակում։ Այստեղ էլ սէրը ներգործում է բնութեան բոլոր երեւոյթների վրայ, Թափանցում է ե՛ւ կենդանի էակների, ե՛ւ ծառ ու ծաղկի, անգամ ջրերի մէջ։ Ամէն ինչ լցուած է սիրով, ամէն ինչ լինում է սիրով եւ կենդանի ու գեղեցիկ է միայն սիրով։

Սիրով արեգակի լոյսից գեղեցկանում, բացւում, փԹԹում է վարդը. Նրա պայծառ տեսքից ուրախանում են երիտասարդները ու մոռանում ամէն հոգս ու տրտմութիւն։ Բայց նա ինքը վշտերի մէջ է, քանի որ վաղանցիկ է իր փԹԹած կեանքը։ Ուստի կրակի պէս վառուող այդ գեղանի սիրուհին իր սիրական բլբուլի առաջ բանում է իր սիրատանջ սիրտը եւ հրաւիրում նրան, որ համբուրի իրեն՝ վարդին՝ ու կշտանայ սիրով. որովհետեւ կը գան, կը քաղեն իրեն, — ասում է նա՛, — ու բլբուլն այլեւս չի գտնիլ նրան։

Ահա՛ մեր Կոստանդնի սիրավէպի նիւԹը, որ էապէս նոյնն է, ինչ որ նրանից աւելի քան 250 տարի յետոյ յօրինող խոալացի հռչակաւոր բանաստեղծինը։ Մեր քերԹուածի մէջ սէրը նոյնիսկ աւելի վեհ ու վսեմ է, զի դա հեշտանք չէ փափկուԹեան դրախտում, այլ, ըստ կրօնական հայեացքի, բխելով Սէր Աստուծուց՝ դարձած է յաւերժ կենդանուԹեան աղբիւր, մի աստուածային ստեղծագործ կենդանարար ու գեղեցկացնող զօրուԹիւն ամբողջ բնուԹեան համար։

Տեսնենք բնագրից հատուածներ։

Այսօր եղեւ պայծառ գարուն,
    ցընծան ծաղկունք եւ յորդորին,
Հագնին ցեղք ի ցեղաց
    մանդրուն հաւերն՝ ի հաւն խօսին.
Ի վերայ լերանց բարձանց
    գոյն ըզգոյնով ծաղկունք փըռին,
Ծածկեն զերեսս երկրի,
    ըզլեռն, ըզդաշտ ու զբաղչանին։
Են գեղեցիկ փետուր հագել
    փոքրիկ հաւերն ի ծաղկոցնին.
Ու հազար դասըս դասով՝
    քաղցրաձայնեն զանըլըռելին.
Զարբել են յանուշ հոտոյն,
    ու նստել (են) ի վրայ ծաղկին.
Ի սիրու են ըստեղծած,
    սէր կայ յիրենք որ կու խօսին։
Բուրաստանք է զարդարած,
    ու ցեղ ու ցեղ հաւեր խօսին.
Ու ամէն հաւ սէր ունի
    ու չատ հազարաԹ ի յէր սըրտին.

Ցանդադար քաղցըր ձայնէն
քունն է հատել ի գիշերին.
Ու ամէն հաւ յիր դիմաց
վասն ի սիրուն քաղցըր խօսին:

Ահա թէ ո՛րքան ուժեղ է արտայայտել մեր բանաստեղծը թռչունների գարնային հրայրքը — ցանկութեան բոցը: Ծաղիկները ցնծում են: Վարդը դեռ չի բացուած. մանիշակի նախաձեռնութեամբ՝ ծաղիկները—հօրոտ-մօրոտ, ձիւնծաղիկ, շուշան, նունուֆար, նարգիզ, մասրենի, սօսամբ ծաղիկ եւ ուրիշներ—հաւաքւում, խորհուրդ են անում, որ կտրեն վարդենին, ասելով՝

Որ ոչ գայ վարդըն կարմիր,
ու գեղեցիկ տերեւ փըռին,
Եւ ի նորա պայծառ տեսուն
որդիք մարդկան ի մեզ չհային:

Ուրեմն այստեղ փթթած վարդը գեղուհիների նախանձն է շարժում, քանի որ նա է գրաւում տղաների հայեացքը:

Բլբուլը, վարդի սիրահարը, յանկարծ վեր է կենում ու ձայն տալիս ծաղիկներին, թէ վարդը քնից զարթնել է իր կանաչ վրանի մէջ: Վարդը որ լսում է բլբուլի ձայնը, բաց է անում վրանի դուռը, հանում կանաչ կապան եւ կարմիրը հագնում: Ծաղիկները թառամում են, ոմանց տերեւները թափւում, ուրիշները փախչում, բարձր լեռներն են ելնում. ոմանք ամօթից կապտում ու սուգ են անում, մի քանիսն էլ երկիւղից դողում են ու դեղնում: Իսկ վարդը զարդարում է բուրաստանը, բլբուլը գալիս, նստում է նրա դիմաց եւ հօյակապ տողերով ամենասփիռ սիրոյ գովքն է անում աքանչացած, ասելով՝

Թէ՝ «Սէր է Ծառն ու սէր Ծաղիկն,
ու սէր հաւուն ձայնն ի Ծառին.
Սէր է վարդն ու սէր՝ բըլբուլն,
սիրով նըստել (ի) վերայ վարդին.
Սիրով են գոյն ու գոյն
ու գեղեցիկ այն ծաղկընին.
Վասն սիրոյ փոքրիկ հաւերն
ի ծաղկընուն վերայ նըստին»:
Նա՛յ բըլբուլն ուրախանայ
ու բազմի (ի) վերայ վարդին.
Թէ՝ «Հազար բարի գալուն
վարդին՝ ծաղկանց թագաւորին»:

Վարդն էլ խանդակաթ զմայլանքով պարգում է իր սիրոյ աղեցութիւնը եւ իրեն, եւ ամէնի վրայ.

Նա՛յ դառնայ վարդն ի բըլբուլն
ու պինդ փըռէ զիր տերեւնին.

Թէ՝ «Ես այլ եմ սիրու տէր,
ուսկայ սըրտիս մէջն է դեղին:
Թէ չըկար սէր յիմ սըրտիս
ու ես ունի անհոգութիւնն,
Նա՛յ ես է՞ր ի կախ լինի
զօրն ու գիշերն ի մէջ փըշին.
Ես սիրո՛վ կամ կենդանի
՚ւ եմ զարդարել զիմ տերեւնին.
Ու թէ սէրն յինէ զատի,
նա՛յ զիս տանի հողմ ու քամին:
Բըլբո՛ւլ, մի՛ դու զարմանալ
զպայծառ վարդիս գեղ պատկերին,
Զի ով որ սէր չունենայ՝
առ ինք չըկայ գեղեցկութիւնն.
Ջուրըն սիրո՛վ յիս վերանայ,
որ յարմատոյս առ իս քամի.
՚Ի ի լուսոյ արեգականն
ես ժողովեմ գեղեցկութիւնն:
Ի յիմ անուշ հոտոյս
կենդանացան որ զհոտն առին.
՚Ի ի յիմ պայծառ տեսուս
ուրախացան ՚ւ ի խաղ մըտին.
Զինչ որ յաշխարհի կայ
հողս ու ցընոր ու տըրտմութիւն՝
Ի յիմ չնոֆոր տեսուս
փարատեցան երբ զիս տեսին:
Յով որ սէր կայ յիր սըրտին,
նա՛յ զիս նորայ կամակ տանին:
Որ քանի նայ յիս հայի,
նա՛յ հանդարտի սէրն ի սըրտին:
Առնուն զիս եւ տանին,
սիրով փըռին ի մըճլիսնին,
Որ ի յիմ պայծառ տեսուս
ուրախանան ՚ւ ըմբեն զգինին:
Ահայ կա՛մ ես զարդարած
՚ւ իմ տերեւնիս զերդ հուր վառին.
Ու բացել եմ զիմ սըրտիս
մէջն ի դիմացդ որ է դեղին.
Ար՚եկ զիս համբուրէ.
ու կըշտացիր սիրովըդ հին.
Ահա՛ գան եւ զիս քաղեն
՚ւ այլ ոչ դըտնուս ի բաղչանին»:

*Սիրոյ այս գովքը 13-րդ դարի վերջերում կամ 14-րդի առաջին քառորդին՝ մեր հին բանաստեղծութեան մի աննման, մի փարթամ փթթած ծաղիկն է, որ, թէեւ այլաբանութեամբ, բայց այնպէս գունագեղ ու վճիտ է յօրինուած, եւ այնպէս պատշաճ է յարմարեցրած իրական կեանքին, որ պարզապէս հասկացւում է աշխարհիկ բովանդակութիւնը։ Չնայելով որ հեղինակը վերնագիրը դրել է՝ «Բանքս վարդի օրինակաւ զՔրիստոս պատմէ», բնականաբար շատ դժուար կարելի էր կրօնական այլաբանութիւն համարել այն։ Ուստի բանաստեղծն ստիպուած է լինում գրելու մի առանձին քերթուած (ԺԲ, էջ 119—125) այս վերնագրով. «Մեկնութիւն վարդին համառօտ։ Վարդն անգիտաց չինեցի. զի կարծէին եթէ մարմնաւորաց էր բանք վարդիս։ Ես վասն այն գրեցի»։ Այս «մեկնութեան» մէջ նա բացատրում է, թէ վարդը Յիսուս է, Մանիշակը՝ Յուդան, Բլբուլը՝ Քրիստոսի յարութեան փողը փչող Գաբրիէլ հրեշտակը եւ այլն։ Հեղինակն ինքը թերեւս սկզբից հէնց մի կրօնական այլաբանական բանք է ցանկացել յօրինել աշխարհիկ սիրու երգի ձեւով ու մոտիւներով, բայց նրա գրածն իսկապէս աշխարհիկ բանք է դուրս եկել. իսկ մեկնութիւնը, որ յետոյ աւելացրել է, չի յարմարւում բուն գործին։*

*Միեւնոյն նիւթին եւ այլաբանութեանն են վերաբերում նաեւ Կոստանդնի ԺԵ. եւ ԺԶ. (էջ 132—142) բանքերը, որոնց առաջինի վերնագրի մէջ՝ «Բան գարնան օրինակաւ խորհուրդ ի Քրիստոս. մի՛ մարմին հասկանայք զբանս, այլ հոգեւոր», զգուշացնում է հեղինակը սկզբից, թէ ինչպէս պէտք է հասկանալ իր «ի խոր ծածկեալ բանը», «ծածուկ բանը»։ Այս սիրավէպի մէջ նորանոր կողմերից լրացւում է գարնան գեղազարդ պատկերը։ Դա ջերմին, լուսաճաճանչ ու հրճուալից մի հարսանիք է մայր երկրի համար ձմեռնային մռայլ մթութիւնից եւ սառած քարացած մեռելութիւնից յետոյ, երբ հարաւ հողմի փչելով վերանում է ամէն տրտմութիւն եւ կենդանացած շարժւում, ծաղկում է բնութիւնը։*

*Հեզ որոտայ ամբ ցօղաբեր,*
*Կամար կապի յերկինս ի վեր,*
*Հոսէ յերկիր ահեղ գետեր.*
*Հաւսար զերկիր են արբուցել...*
*Ծովըն դըրուրդ առնու սիրով,*
*Խաղան զեռունք յերկիր 'ւ ի ծով.*
*Ակունքն յորդոր գան պաղ ու հով,*
*Եւ քարէն յառաջ բըխել։*
*Ահեղ գոչէն գետերն յոլով՝*
*Յորդ ի լերունքն ի վայր գալով.*
*Գան ման ի ման ծաւալելով,*
*Սիրով ի ծովն երես ղըրել...*
*Հաւերըն գան քաղցըր ձայնով,*
*Ծիծեռն ի հետ սաղմոսելով.*
*Գայ արտուտիկըն կարդալով,*
*Զառաւօտուն է բարբառել։*

Ամէն կենդանի էակ, կապանքից արձակուած, տեղից շարժւում է, ծնում եւ աճում։ Ժողովւում են եւ ծաղիկները բուրաստանում. վարդը միայն դեռ չի երեւում.

Բլբուլն եհաս շաքարբերան,
Աւետաբեր մեծ յարութեան.
Վարդին եհար կանաչ վըրան,
Որ գայ բազմի զերդ հուր վառել։

Բայց վարդը ծածկուելով կանաչ կապայով՝ թաքնւում է.

Կամով ծածկի ի մէջ փըշին,
Զերդ որ ի յամբ մըտնու լուսին։

Բլբուլը աղաչում է վարդին, որ երեսը բանայ, բայց վարդը, հակառակ բլբուլի յորդորներին, մերժում է նրա խնդիրը. որովհետեւ, իբրեւ մի ամօթխած աղջիկ, չի համարձակւում ազատ երեւան գալ եւ երեսը ցոյց տալ, քանի դեռ ժամանակը չի հասել, եւ անգէտները բամբասում են։ Վերջիվերջոյ նա դուրս է գալիս, նրան տեսնող ծաղիկներից ոմանք գունաթափւում ու փախչում են. իսկ գեղեցիկները շրջապատում են նրան ու գովում նրա գեղեցկութիւնը։ Ուրախանում է բլբուլը, մեծ հրաւէրք է անում. գալիս են բլբուլները (տղաները) խմբերով. մեծ խնջոյք են անում նուագելով։ Վարդն այժմ առանց քաշուելու բազմում է նրանց մէջ եւ ասում բլբուլին, թէ նա այժմ որքան կ'ուզէ թող գովի իրեն։ Ապա տեղի է ունենում վարդ ու սոխակի մէջ մի զրոյց, որով վարդը պարզում է, թէ ինչ է սպասում իրեն աշխարհում — լինել դեղ, վարդաջուր, եւ բանաստեղծն իրեն դառնալով ասում է.

Կոստա՛նդ, ի խոր ծածկեալ է բան,
Զայս որ առ մեզ տուեր նըշան.
Տուր գոհութիւն անլըռական
Այնմ որ կամաւ է խոնարհել։

9. Անձնական բանաստեղծութիւն։—Լոյսի ու սիրու, գարնան եւ արեգակի սիրահար քերթողի բաները, որոնց պատկերներն առնւում էին բնութիւնից եւ աշխարհիկ երգերից, խորթ եւ անհաճոյ են երեւում Երզնկայի վանականներին, որոնք թէպէտ սիրով լսում էին «Շահնաման», բայց քրթմնջում էին, թէ Կոստանդինը մարմնաւոր բաներ է յօրինում։ Կային եւ նախանձողներ նրա շնորհին։ Բանաստեղծը շատ վշտեր է կրում «սուտ եղբայրներից», որոնք չարախօսութեամբ բամբասում էին նրան։ Նա թէպէտ եւ հպարտութեամբ արհամարհում էր այնպիսիներին, որովհետեւ նրանք «անգէտ» ու «անմիտ» էին, բայց լինելով դիւրազգաց՝ հոգով շատ վըրդովւում է եւ կռիւ է սկսում նրանց դէմ իր երգերով։ Այդ առթիւ նա յօրինում է իմաստական ասքեր, այլեւ անձնական քնարերգութիւններ վշտահար զեղումներով իր խոցուած սրտից։ Այսպիսով նա ստեղծում է մի նոր տեսակի քնարերգութիւն — անձնական բանաստեղծութիւն, որի համար

*նիւթ են քաղում բանաստեղծի իրեն ապրած անձնական հանգամանքները, սէրն ու ատելութիւնը, բախտն ու դժբախտութիւնը, ինչ որ մասամբ արդէն տեսանք Ֆրիկի բանքերի մէջ։ Անհատն ուրեմն ընդհանրութիւնից անջատուելով առնում է իր արժէքն եւ պաշտպանում ու ցուցադրում է իրեն։ Կոստանդինի անձնական բանաստեղծութիւնները կարեւորութիւն ունեն եւ այնով, որ բխում են ոչ թէ մի որեւէ սոսկ անձնական պատճառից, այլ որ նա սիրում է կեանք, բնութիւն, լոյս ու գարուն։ Եւ իսկապէս կեանքի ու բնութեան սէրը, եւ սրա համար կրած թախիծն ու վիշտն են կազմում նրա ստեղծագործութեան, ինչպէս եւ նրա բանաստեղծական հառաչների ու գանգատների էական կողմն ու յատկանիշը։ Եւ դրանով է, որ արժէքաւորւում են նրա բանքերն իր անձնականի մասին, որոնց մէջ նա, իր սրտի ցաւերը երգելու հետ՝ պարզում է եւ իր աշխարհայեցութիւնը։*

10. «Տեսիլը»։ Հայեացքն իր բանաստեղծութեան ծագման վրայ։ — *Ը. քերթուածը (էջ 97—101) ունի այս բացատրական վերնագիրը. «Ոմանք չարախօսեն զինէն վասն նախանձու թէ որպէս խօսի սա այսպիսի բան, զի վարդապետի չէ աշակերտել. զի այլ է աշակերտելն եւ այլ է շնորհքն ի հոգւոյն. զոր ես պատմեմ ձեզ յաղագս տեսլեան իմոյ, զոր տեսի ի զարմանալի տեսիլ, մինչ ի վանքն կայի հնգետասան ամաց. զոր տեսի այր մի արեգակնազգեստ եւ լի լուսով»։*[1]

*Ոմանք չար են հետ ինձ ու նախանձով են յիմ վերայ՝*
*Վասն իմ գըրեալ բանիս, որ առ մարդիկ երեւենայ.*
*Ասեն, թէ՝ «Ո՞նց գըրէ բան քաղցրահամ ու մեզ կարդայ,*
*Որ ի մեր միջիս ընգեր կամ համեմատ իւր չըկայ»։*
*Կոյր են հոգւով աչօք, մըտօք յիմար են անյիմայ,*
*Թէ տէր ո՞վ է խելաց կամ այս շնորհիս որ առ իս կայ.*
*Ես եմ աման հողէ, 'ւ յիս լըցած կայ խազինայ.*
*Զոր ես խօսիմ հոգւով՝ այն մեծ տիրոջն է մանանայ։*
*Ով գող է այս գանձիս ու կամ նենգով ինձ լինայ՝*
*Աստուծոյ է հակառակ, 'ւ ինք դատաստան առնէ նորայ։*

*Բանաստեղծը չի բաւականանում ասելով, թէ իր շնորհքն Աստուծուց է, եւ իր նենգ նախանձորդներն Աստուծու հակառակ են գնում, նա անգէտներին այդ հասկացնելու համար՝ դիմում է տեսլի պատկերին, մեղմ ու փափուկ ձեւով ստեղծելով մի սիրուն բանք, որի ուրիշ նմանը չկայ մեր տեսլական գրականութեան մէջ։ Դա ե՛ւ տեսիլ է, մի վիպական երկ, ե՛ւ անձնական բանաստեղծութիւն։ Նա պատմում է, թէ երբ տասնուհինգ տարեկան մանուկ էր եւ վանքում ուսում էր առնում, մի գիշեր քնած ժամանակ տեսնում է, որ՝*

---

*1 Այս վերնագրի մէջ, էջ 97, տպուած է՝ «աշխատիլն», «զարմանալի» առանց սկզբի «ի» նախդրի, «վանք» առանց վերջի «ն» յօդի. մինչդեռ նոյնը հրատարակչի առաջաբանի մէ, ջէջ 11, տպուած է անսխալ «աշակերտելն», «ի զարմանալի», «վանքն»։*

Մանուկ մի լուսեղէն, յաթոռ նըստել որպէս արքայ,
Նըման արեգական է գեղեցիկ որ լոյս կու տայ:

Մեր մանուկ Կոստանդինը, զարհուրած եւ առանց հարցնելու, թէ ով է նա, երկրպագում եւ նրանից երեք խնդիր է անում․ խնդիրներից վերջինն է՝

Ասացի․ «Ես եմ աղքատ 'ւ յերակ բանի կարօտ կեցայ,
Շնորհէ դու այս գերոյս մասն ու բաժին ինձ եւ դիլայ:»

Տէրը շնորհում է նրան այդ ընդունակութիւնը: Եւ այնուհետեւ նա հանդստութիւնը կորցնում է, եւ յետոյ միայն, երբ ուսման մէջ վարժւում է, հասկանում է իր տեսլի խորհուրդը․

Եղեւ յանկարծակի ինձ բան խօսիլ ով ուզենայ․
Այնպէս որ ես ի յիմ խօսից շարելըն զարմացայ․
Սիրով ու մեծ յուսով ես այս բանիս ի փորձ մըտայ,
Ջհոգիս փոխան տուի, 'ւ ապայ ես այն հոգոյն հասայ:
   Իմ բանս ի յայն լուսոյն եկել առ իս ինձ մանանայ,
Որ իմ աչօքս ես զինք բարձր ի յաթոռ նըստած տեսայ...

Բանաստեղծն, ուրեմն, իր տաղանդը համարում է Աստուծու յայտնութեամբ պարգեւուած մի շնորհք: Դրա գիտակցութիւնը նրան ոչ միայն ուրախութիւն է պատճառում, այլեւ հպարտութիւն․

Այսօր հոգովս ուրախ եմ եւ ի մեծ մուրատ հասայ,
Որ ես առանց շըթունք կու խըմեմ յայն գինուն չիշայ․
Սարխօշ եմ յայն սիրուն, 'ւ է միտքս ի հօն յուր ինք լինայ․
Զունիմ չատոց կարիք, ով է չարկամ ու գիս որսայ:
   Ես եմ մէջ աշխարհիս զերդ ըղյիմար ի յանդիչայ․
Ոմանց թուիմ խելօք, ոմանց խիստ խեւ ու անյիմայ,
Ոմանք չարին հետ ինձ, կըրճեն ատամ ի յիմ վերայ,
'Ի ոմանց պատեհ թուի զարիւնս հեղուլ իր կամ լինայ...

Այս տողերից երեւում է, թէ ինչպէս հալածել են աւինով հարբած, «աւեալ» բանաստեղծին: Ցաւօք, պակասում է այս քերթուածի վերջին մասը՝ ձեռագրից թերթ դուրս ընկած լինելով: Բայց առանց դրան էլ՝ մենք լաւ տեսնում ենք վշտացած բանաստեղծի ազնիւ հոգին ազնիւ էլ ներշընչումով:

11․ Իմաստական ասքեր:— Կոստանդինը վարպետ իմաստաբան է եւ շատ էլ յօրինած ունի իմաստական ասքեր: Նրա զէնքն իր չարկամների դէմ կռուելու համար՝ է գլխաւորապէս բարոյական խրատը, իմաստալից ասացուածները, որոնք բխելով բանաստեղծի իրեն անձնական կեանքից, յօրինուած են խիստ զգայուն, թրթռուն ու եռանդուն: Ցաճախ իմաստա-խրատական ու քնարական տները փոխփոխ յաջորդում են միմեանց եւ կենդանի ցոլացնում են հեղինակի զգացումներն ու խորհրդածութիւններն իրեն եւ իր հակառակորդների վերաբերեալ․ դրանք ուղղուած են գլխաւորապէս «չար

ընկերների» դէմ։[1] «Բան յաղագս չար ընկերաց եւ պատրաստ կալ մոլորեցուցիչ ոմանց, որք հակառակին բարութեան» (քերթ. Դ, էջ 80—84)։ Այդպիսի ընկերները մոտենում ու մոլորեցնում են ինչպես քաղցրախոս թշնամիներ, զառնազգեստ գայլեր, թունաւորող բժիշկներ. հպարտ, չարասիրտ ու կոյր առաջնորդներ են նրանք, բարին ատող ու նախանձող, տգէտ յիմարներ, որ մարմիններն են միայն զարդարում, չեն հաւանում իմաստուն ու գիտուն մարդուն, որին «խեւ» են անուանում։ Բանաստեղծն ինչքան էլ աշխատում է սառնասիրտ լինել, չի կարողանում. գի այն տգէտներն իրեն են դիպչում, չեն հասկանում իր գրուածքների բուն իմաստը, չեն ըմբռնում «ծածուկ բան», «բան ծածկաբար», այսինքն այլաբանութիւն, ու չեն գնահատում իր գրուածքները.

Թէ մէկ մի զանձն ի մահ եղել ու պնայ ի ծովն ի վայր,
Ջոհար բերէ ի դուրս, նա՛ անպիտան կոչեն զնա քար…
Գիտունն ի յանգիտաց մէջըն ծառայ է չարաչար,
Որ նըման խամ ապիկու յաժան ձըգեն անգին ջոհար։

Նրա վրդովմունքն այնքան մեծ է, որ իմաստական բանքը հետզհետէ փոխւում է մի դառն ողբի ու երգիծանքի իր անմխիթար ժամանակի վրայ ընդհանրապէս.

Հազար աւաղ տամ ես որ տէրն ըզմեզ յետնորդս արար
Ի յանցեալ ժամանակիս՝ որ մեզ չըկայ իրք մըխիթար.
Հոլիւ չունինք տեսող ու մենք ենք մոլորեալ ոչխար,
Շատ գայլք են յարձակել ի վերայ մեր խիստ անհամար.
Պիտէր մեզ նաւապետ մարդ կենդանի դերդ Նոյ արդար,
Որ մեզ տապան գործէր, ծովուս լինէր եզր ու վըճար…
Չունինք մարդ կենդանի, հոգւով մեռած ենք հաւասար…
Ի մէջ ծովուս ծըփինք, ոչ նաւ ունինք, ոչ նաւավար։

Վերջը բանաստեղծն ինքն իրեն դառնալով խրատում է իրեն.

Զհոգիդ քանի՞ մաշես, է՛ Կոստանդին, զօրն անդադար.
Հերիք արա սըրտիդ, դքեզ ի ծովո՛ւդ մէջըն տեսար.
Դարձի՛ր ի յետ նայէ՛, ու գի՛տ խելօք թապտիր ու ճար,
Որ չմնաս ի մէջ ծովուն, ՚ւ յեզր ի հանդիստ իսկի չհասար։

Այսպիսի մի անձնական, միաժամանակ եւ հասարակական քնարական երգ է եւ Է. քերթուածը (էջ 91—96), որ վերնագիր ունի «Յաղագս անգիտաց սուտ խօսելոյ զբանս, անպիտան եւ հակառակ կալ իմաստնոց»։ Բանաստեղծը խիստ յուզուած է «անգէտ եւ անմիտ» մարդկանցից, այնպէս որ նա տանջւում է, կորցնում իր հանգստութիւնը եւ բողոքի ու հառաչի ճիչեր է արձակում բարկ խօսքերով, ուժեղ եւ անմոռանալի չեչաերով։

[1] Տես նաեւ՝ Քերթուածներ՝ Բ, էջ 74 եւ հտն., Դ, էջ 80 եւ հտն., Է, էջ 91 եւ հտն., Թ, էջ 102 եւ հտն., ԺԴ, էջ 129 եւ հտն., ԺԷ, էջ 142 եւ հտն., ԻԱ, էջ 154 եւ հտն., ԻԲ, էջ 158 եւ հտն.։

Ցըրխաթ[1] կանչեմ հազար 'ւ ահեղ հառաչ բերեմ լալով,
Ի յանգէտ մարդկան ձեռաց զհոգիս երեմ անշէջ հըրով.
Եմ յիմար դարձել ու խեւ ու սաւդայի[2] ի շուրջ գալով
Եւ վասըն էշ ու անյիմայ ոմանց՝ հանեմ զհոգիս շուտով։
Ես չունիմ հանդըստութիւն, 'ւ յերակ խոցիմ անգէտ խօսով...

Նա խիստ հարուածներով խարազանում է իրեն հալածողներին, որոնք անհոգի կենդանիներ են, չգիտեն մի պիտանի եւ խելօք խօսք ասել, ատելով ատում են իմաստուն մարդուն։ Եւ Կոստանդնի այս քերթուածը հետզհետէ դառնում է լաւ, բարի, իմաստուն եւ վատ, չար, տգէտ մարդկանց յաւերժ հակամարտութեան մի հոյակապ պատկեր. եւ որովհետեւ բանաստեղծը նըկատի ունի մի կողմից՝ ինքն իրեն եւ միւս կողմից՝ իր հակառակորդներին, ուստի նրա բնորոշումները ե՛ւ շատ սիրազեղ են ու փափուկ ոճով, ինչպէս սովորաբար յատուկ է Կոստանդնին, ե՛ւ խիստ, ցասկոտ ու ատելաբար, ամբողջը ազնիւ ձգտումով լցուած, անկեղծ ու խոր զգացումով ոգուած, դառն գանգատի եւ հոգեռանդն ջերմութեան խառնուրդով։

Զիմաստունն ո՞վ է յաղթել, թող թէ հընար բերեն չարով,
Կամ զուգեն բանք աղտեղի եւ բամբասեն սուտ խօսելով.
Նայ լոյս է, եւ նայ խաւար, որ չկայ հընար մերձենալով,
Զի յիրմէ փախչի հեռի ի խոր տեղիք բընակելով։

Եւ այսպէս իրար յաջորդում են մի շարք գեղեցիկ տներ իմաստուն եւ անմիտ մարդկանց մասին.

Իմաստունն է առաւօտ, աւետաւոր է ցընծալով,
Իսկ անմիտն ի խաւարի կայ թանձրացել երազ քընով։
Իմաստունն արեգական պէս է պայծառ եւ լի լուսով,
Իսկ անմիտն է խաւարի տուն եւ տեղի, լի ցաւով։
Իմաստունն է բուրաստանք ծաղկով լըցած գոյն ըզգոյնով,
'Ի անմիտին սիրտն է ի լի մութն ու մըլար սառնամանով։
Իմաստունն պըտուղ բարի, անմահութեան ճաշակ տալով,
Իսկ անմիտն է անպտուղ, դատարկացեալ եւ լի փըշով։

Իմաստունն աշխարհից կուշտ է, միտքն՝ առատ, իսկ անմիտը՝ ցանկութեամբ լի, քաղցած ու ծարաւ, ծակաչք. իմաստունը գնում է ճշմարտութեան ճանապարհով, իսկ անմիտն ընկած է խորխորատ ու ծով... Մի թուլութիւն միայն ունի իմաստունը.

Իմաստունն ոչ երկընչի թէ հարկանեն զինքըն սըրով,
Բայց յանգէտ մարդու խօսից խոցի հոգով ու մարմնով,
Զի անգէտն եւ անըզգամն Աստուած չունի ինք գիտելով։

Եւ խոցւում է մեր բանաստեղծը, որ այնպիսի մարդիկն աշխարհի սկզբից ի վեր հակառակում ու չար են կամենում իմաստուն մարդկանց եւ

1 Ցրխաթ—բողոք։
2 Սաւդայ—մելամաղձիկ։

*Հալածում նրանց: Եւ նա ընկնում է մեծ յուսահատութեան մէջ աշխարհի վերաբերմամբ, գրելով՝*

*Բովանդակ աշխարհս է դայլ*
*եւ միաբան կան մի ժողով,*
*Նա՛յ դարին ո՞ւր կայ հանգիստ*
*մէջ դալենուն ինք կենալով.*
*Ով խելօք է եւ ուզէ*
*զինք կենդանի սրտի կամով՝*
*Թող լինի ի յաշխարհէս*
*ինք անծանօթ հրաժարելով...*
*Լաւ է ինձ մէջ գազանաց*
*մարդակերաց բընակելով,*
*Քանց անմիտ 'ւ անիմաստ*
*որ յիս խօսի յանդէտ բանով:*

*Բանաստեղծն իր դրութիւնից մի ելք է որոնում եւ խրատելով իրեն՝ գրում է.*

*Կոստանդի՛ն, է՞ր կաս ազար*
*'ւ ի սիրտ ելնես թէզ մ' ըշտապով.*
*Վասն անդէտ 'ւ անմիտ ոմանց՝*
*զքեզ է՞ր տանջես շատ ցընորով.*
*Ոչ կարես հաւան պահել*
*դու զամէն մարդ հետ քեզ սիրով:*
*Թէ կամիս հանգիստ կենալ,*
*որ չըմաշես դու զքեզ հոգով՝*
*Մի՛ փառաց դու հետեւիլ,*
*մի՛ անգանիլ անեզր ի ծով,*
*Զի ծովուն ոչ կայ հանգիստ,*
*յերակ ծըփի յալիս քամով:*

*Սոյնպիսի անձնական եղանակով յօրինել է նա եւ միւս տաղերը, ինչպէս, օրինակ, Թ. քերթուածը, որի սկիզբը չունենք: Այստեղ խրատներն իբր ուրիշի կողմից ուղղուած են Կոստանդնին: Դրանցով նա երբեմն անձնաքննութիւն է անում եւ ինքն իրեն խրատական խօսքեր ուղղում, յանդիմանում իր պակասութիւնները, բայց այնպիսի ձեւով, որ գրուածքն ստանում է ընդհանուր խրատական բնաւորութիւն: Սիրում է, որ ուրիշներն իրեն գովեն, վրդովւում է ուրիշների խօսքերից, մինչդեռ, — ասում է, — պէտք է լինել խոնարհ, անփառասէր, համբերող, մի խօսքով՝ լինել «իմաստուն եւ հանճարեղ մարդ կատարեալ»: Իր ամենամեծ պակասութիւնը նա իր լեզուն է գտնում, իր բանաստեղծութիւնը, լի թանկագին խրատներով, որ իբրեւ բեռ դնում է ուրիշների վրայ.*

*Լեզուն նըման հըրոյ*
*բազում անդառք է հըրդեհել.*

*Դու լեր խալաս ոսկի,*
*որ չատ հետեր ի հուր մըտել.*
*Լեզուն հողմըն սաստիկ,*
*որ չատ խըռիւ է տարտարել.*
*Դու լեր ծառ պըտղաբեր՝*
*ի մէջ երկրի արմատացել։*
*Լեզուն է հեղեղատ,*
*չատոց հիմունս է կործանել.*
*Դու լեր վէմ հաստատուն,*
*դըլուխ անդեան հիմըն չինել.*
*Լեզուն է յորդ քամի,*
*ծովուն խըռովութիւն բերել.*
*Ի զա՛տ կաց ի նմանէ՝*
*յատակ ծովուն ջոհար պահել։*

*Բայց կարո՞ղ է արդեօք Կոստանդինն «ի զատ կենալ» իր լեզուից, այսինքն հրաժարուել իր բանաստեղծութիւնից։*

12. Մարմնի իրաւունքը։— *Մեր քերթողն իր աչքերը յօրինում է մի ներքին կռուով «հոգու եւ մարմնի» միջեւ։ Մենք զգում ենք, որ նա, զգալով հանդերձ իր մեծութիւնը լեզուագարների դիմաց, ճիգեր է անում կտրուելու աշխարհից, զսպելու իրեն, հեռանալու մարդկային անձնասիրութիւնից ու սնափառութիւնից։ Սակայն եւ այնպէս՝ նա ոչ մի կերպ բաւարարութիւն չի գտնում, եւ ի զուր Թ. քերթուածի մէջ, կարծես մի բարեկամի կողմից, ինքըն իրեն խրատներ է ուղղում.*

*Քո սիրտդ ի յաշխարհիս*
*ի հասրաթէն է հուր վառել.*
*Քանի որ չատ սիրես՝*
*նա՛յ չատ դըռներ է քեզ բացել.*
*Մարմինդ է ցանգութեամբ*
*ի յաշխարհիս սէրըն մաչել.*
*Քանի որ չատ վայլես՝*
*յետեւ կա՛րօտ ես մընացել։*
*Մարմինդ որ էր ըղղայ՝*
*նըման ծաղկի գեղեցկացել,*
*Իսկ այժմ ահայ հասեր*
*՚ւ երիտասարդ ես կատարել.*
*Հիմի գայ ծերութիւնն,*
*որ ինք ըզմահն էր գուչակել.*
*Ոչ փա՛ռք այլ երեւի,*
*եւ ոչ պատկեր գեղով լըցել։*

*Եւ ահա յետոյ գալիս է մահը, եւ յարութիւն զարունն իր բոլոր պարագաներով։ Բայց արդեօք այդ մահը եւ «անդէնը» սարսռեցնո՞ւմ է Կոստանդին Երզնկացուն, ինչպէս իր ժամանակակից Ֆրիկին։ — Բնաւ ո՛չ։*

Կոստանդինը սիրում է մարմինն ու աշխարհը: Եւ նա վերջիվերջոյ բռնկում է եւ խնդիրը բացայայտ դնում Ժ. (էջ 107—109) քերթուածի մէջ, որ մի պատասխան է նախորդ քերթուածի մէջ իբր բարեկամից տրուած խրատին ի դէմ: Բերենք այդ չափ հետաքրքիր բանաստեղծութիւնը, որի վերնագիրն է՝ «Կրկնեալ պատասխանի այսպէս ի դէմ»:

Հոգով տուեր խըրատ
  դու Կոստանդեայ կամաւ լըսել.
Ասէ, թէ՝ հասկացայ,
  կամիմ պատասխանի առնել:

Եւ ի՞նչ է նրա պատասխանն իր խրատատու բարեկամին: Նա սրա առաջ բաց է անում իր տանջուած սրտի ծածուկները, ասելով.

Մի՛ այդչափ ի գործոց
  զիս յայտնապէս յանդիմանել.
Տըկար եմ եւ անզօր,
  մի՛ ծանր ու մեծ բեռըն դընել:
Հոգիս է խիստ յօժար
  բանից իմաստընոց լըսել.
Մարմինս է հեշտասէր,
  զի յաշխարհէս է ինք ծընել.
Ի յերկուքիս միջին
  մոմ եմ ի մէջ հըրոյն վառել.
Անհիմն եւ անհաստատ՝
  եմ անհանդիստ ի չուրջ եկել:
Ի չորս հակառակէս
  ուսկամ յերեր եմ մընացել.
Զի հուրն ի վեր քաշէ,
  նա՛յ հողըս ծանդըր ի վայր հակել.
Սակաւ մի ի ջըրոյն՝
  բոցըն հըրոյս է հանդարտել.
Քամին է յօգնութիւն
  եւ բորքէ զհուրըս վառել:
Երկու կամաց ծառայ
  դըժար է ինձ յիրաց սազել.
Կամ հուրն ի ծոցն առնուլ
  ու անվընաս զինքըն պահել.
Կամ մարմնաւոր ոտօք
  վերայ ծովուն թեթեւ քայլել.
Կամ զհողմն արագընթաց
  մարդ ընդ ձեռամբն է արգիլել:

Եւ այսպէս՝ նա չի կարող չսիրել աշխարհը, քանի որ «հեշտասէր մարմինն» «աշխարհից է ծնուած». նրա, այդ կրօնաւորի, սիրած աշխարհի

կարօտով վառւում է, ինչպէս կրակով: Նա չի կարող և՛ Հոգուն, և՛ մարմնի կամքին ծառայել, ինչքան էլ ցանկանում է: Հնարաւոր չէ հաշտեցնել այդ երկուսը, որ իրար հակառակ են, ինչպէս չորս տարրերը, որոնցից կազմուած է մարմինը: Եւ այսպիսի հալումաշ եւ անհանգիստ հոգեկան վիճակի մէջ են, — ասում է նա, — ոչ միայն ինքը բանաստեղծը, այլեւ ուրիշ շատերը.

Զայս եմ ես ինձ խըրատ
եւ ի յանդիմանութիւն գըրել,
Եւ զիս բազմաց նըշան,
վըկայ եւ օրինակ բերել:

Անմիտ կեղծաւորները, սակայն, ուրիշի վիճակը չեն հասկանում՝ խոցում են Կոստանդինին եւ կսկիծ ու վէրք հասցնում նրան, յարձակւում նրա վրայ: Բայց մենք շարունակենք տեսնել, թէ ինչպէս այդ համեստ կրօնաւորը վշտահար կերպով եւ անհամարձակ սփռում է իր սրտի ցաւերը.

Ինձ չէ՛ պարտ համարձակ
նըման եղբօր ի քեզ խօսել.
Այլ ինձ երես դընել
փոխան հողոյ՝ ով որ կոխել:
Ի սըրտէ արտասուք
ու շատ գանգատ լալով բերել,
Ով որ սիրով սըրտի,
եղբայրութեամբ ի յիս նայել.
Զի շատ կըսկիծ ու վէր
ի մարդկանէ է յիս հասել.
Իմ սիրտս է խոց զուգած,
Դառն ցաւօք է զիս տանջել:
Եմ հողէ պարիսպ ածել
ու բերդ ամուր անուն հանել.
Զերկիր պատերազմաւ
ի յիմ վերայ եմ յարձակել.
Ես եմ առանց սըլէհ
ու մերկ եմ յանդիման կանգնել.
Հազար դեհաց խոցեն,
ու չերեւի, թէ են խոցել:
Նա՛յ կէսք մ'ասեն՝ Դայ է
յիմար ու խեւ մաղաս կալթել.
Ու կէսք մ'ասեն, թէ Պարտ
է զայսպիսոյս արիւնն հեղել:
Նայ ես պատասխանեմ,
թէ՝ Կոստանդի՛ն, չէ պարտ լըսել,
Եւ ոչ քեզ հաւատալ
ամէն մարդու 'ւ ի սիրտ մըտել:

Ահա թէ ի՛նչպիսի ուժգին անկեղծութեամբ խօսում է բանաստեղծն իր անձնական զգացմունքների ու վիճակի մասին, իր գանգատին տալով անմոռանալի գոյն: Մենք տեսնում ենք շնորհալի բանաստեղծի՝ յուզիչ դրութիւնը եւ նրա մէջ գտնում մի մարդ, որ բարձր է իր ժամանակակից վանականներից, որ եւ ունի իր հաստատ համոզմունքը եւ չի ընկճւում իր հակառակորդների առաջ:

Անշուշտ, նա մենակ չի եղել իր ազատ հասկացողութեամբ. իր հայրենակից Յովհաննէս Երզնկացին էլ, ինչպէս տեսանք, նոյնն է արտայայտել իր իմաստական ասքերով: Այս երկուսի այդ երկերը ոչ միայն գաղափարով նոյն են, այլեւ ձեւով, առանձնապէս չորս տարրների պատկերով, նոյնիսկ մի երկու տողերի նմանութեամբ. այնպէս որ, ըստ երեւոյթին, նրանցից մէկն ազդուած է միւսից: Բայց չնայելով այդ նմանութեանը, նրանք շատ տարբեր են միմեանցից: Մինչ Յովհաննէս Երզնկացին յօրինում է հանդիստ, սառն մտածմունքով, Կոստանդինը մի զգայուն բանաստեղծ է, աւելի քնարերգու, քան բարոյախօս: Նա իր անձնական շեշտերով երգում է ոչ միայն իր սեփական ապրումները, այլեւ իմաստա-խրատական ոտանաւորները: Եթէ Յովհաննէս Երզնկացին աւելի մտածելով է մարմնին տալիս իր իրաւունքը, Կոստանդինն իր խառնուածքով նոյնիսկ անհնար է համարում չսիրել ու չերգել աշխարհի կեանքը, բնութիւնը ու մարդկայինը:

13. «Սիրու բաները»:— Հոգու եւ մարմնի խնդրի մասին այնպիսի պարզ խոստովանութիւնից յետոյ մեր բանաստեղծն այլեւս չպիտի դիմէր այլաբանութեան եւ սէր պիտի երգէր նաեւ ոչ կրօնական իմաստով: Եւ հաւանօրէն այս շրջանից յետոյ են յօրինուած նրա սիրոյ երգերը, որոնցից երկուսը կորստի չեն մատնուել:[1] Դրանցից առաջինի վերջում հեղինակը, մի տեսակ իրեն արդարացնելու համար, դրել է հետեւեալ յիշատակարանը.

Եղբարք մի կան հետ մեզ սիրով,
Աշխարհի բան ուզեն գըրով.
Նա՛յ ես վասն այն յայտնի ձայնով՝
Սիրու բաներս ասցի յոլով:

Այդ «աշխարհի բան» ուզող «եղբայրները» պէտք է եղած լինին Կոստանդնի սննդակից աշխարհականներ: Չնայելով որ նա «յայտնի ձայնով», այսինքն առանց այլաբանութեան է յօրինել սիրոյ երգը, բայց դեռ ոչ կատարեալ վստահութեամբ է անում մարմնի գովեստը. տաղի վերջում ինքն իրեն յանդիմանում է՝ համարելով այդ ունայն, սուտ, անշահ եւ անօգուտ, սխալ եւ անցաւոր բանք եւ խրատում է իրեն՝ «դառնալ» (=ետ կենալ) դըրանցից, որովհետեւ իրեն «բաժին իրք մ՚այլ անկաւ», այսինքն ինքը կրօնաւոր է: Երկրորդ տաղի մէջ, սակայն, նա արդէն իբրեւ սկզբունք է դնում, թէ կին սիրողն է «ճշմարտութիւն եւ անմահութիւն գտնում».

1 Քերթուած ԻԴ, էջ 169—171. «Տաղ սիրոյ»: Քերթուած ԻԵ, էջ 171—173. «Տաղ սիրոյ ազնիւ»:

Ով ընկեր ի քո սիրուդ բանտ ի զընտան՝
Հաղեղէթ եւ անմահութեանդ է նա տես:

Սէր ունեցողն է «կենդանի հոգեւոր մարդը», ասում է նա. իսկ առանց սիրոյ մարդուն նա, կնոջ բերանով, անուանում է «անբան եւ անասուն»: Այսպիսի հասկացողութիւն յայտնելուց յետոյ՝ բանաստեղծն այս երկրորդ տաղի մէջ արդէն համարձակ է. նա այլեւս չի զղջում իր «աշխարհի բանքի» համար, այլ, ընդհակառակն, գրում է, թէ առանց իր սիրած էակի չկայ իր համար «կեանք մուրատով».

Այլ չըկա՛յ քեզ, Կո՛ստանդին, կեանք մուրատով,
Երբ ի յիւր քաղցըր տեսուն հանց կարօտ ես,
Է՛ սուրաթ պայծառ ու պատկե՛ր լուսատես,
Զիմ աչերս ի քո սիրուտ յէ՞ր կու զատես:

Կոստանդին Երզնկացու այս երկու սիրու տաղերը մեր այս տեսակի ամենահին բանաստեղծութիւններն են, որ մինչեւ այժմ երեւան են եկել, եւ հէնց իբրեւ այդպիսիք հետաքրքիր են: Մարմինը, մարմնի գեղեցկութիւնը միայն չէ, որ գովւում է դրանց մէջ, այլ արտայայտւում է նաեւ սիրահար երգչի հոգեկան վիճակը: Տաղերն արուեստակուած չեն, այսինքն ճարտար ձեռքով շինուած լոկ ոտանաւորներ չեն, այլ սիրաբուխ են, Կոստանդնին արժանի: Շատ պարզ զգացւում է, որ այդ կրօնաւորը երգում է անկեղծութեամբ իր սեփական ապրումները: Անշուշտ, նրա այս երգերի մէջ եւս, ինչպէս առհասարակ մեր գուսանական սիրու տաղերի, մեծ տեղ է բռնում սիրուհու մարմինը: Նա եւս յափշտակուած է կանացի գեղեցկութեամբ, կնոջ «պայծառ ու լուսատես պատկերով», «մորճ ու չիտակ» հասակով: Նա եւս սիրավառ գովքի է արժանացնում կնոջ՝ լուսանման բոլոր դէմքը, սեւ մազերը, «շուրջ երեսին մազերն ոլոր», շրթունքների ներսում «ակն ու արեգակ շարած» ատամները, կարմիր երեսը, անգամ գոյնզգոյն հագուստը, մանր քայլուածքը,— մարմնի մի գովք, որ անպայման հնուց է գալիս, որ եւ մասամբ գտնում ենք արդէն Գրիգոր Նարեկացու, ինչպէս եւ հետագայ բոլոր սիրոյ երգիչների ու գուսանների երգերի մէջ: Բայց մինչ մեր միստիկ մեծ բանաստեղծը խորին ակնածութեամբ եւ հոգեւոր հիացումով աղօթում ու երկրպագում է Սուրբ Կոյսին, իբրեւ մի աստուածային անհասանելի, աննիւթական էակի,— մեր այս Երզնկացու համար իր սիրածը մի մարմնաւոր կին է, մի իսկական տարփածու գեղուհի, որ դառնում է մեծ հիացմունքի առարկայ: Մի անգամ որ նա տեսել է իր անձկալիին, այլեւս սրա գեղեցիկ պատկերը չի հեռանում իր մտքից, եւ նա, այդ կրօնաւորը, մնում է հարբած դրութեան մէջ: Երբ նրան «իմ աչքըս տեսաւ», — ասում է նա, —

Զօրն ես ի յիւր սէրըն կենամ,
Ցերակ հետ իւր տեսուն դընամ,
Զաչերս արեամբ հետ իւր թանամ,
Զիրայ հոգիս յինէ տարաւ:

Երբ որ անուշ հոտն յիս բուրեց՝
Զիս ի խելաց չուտով թափեց.
Ի յայն պահուն սիրտս իմ եփեց,
Երբ իւր տեսն ինձ երեւեցաւ:

Ապա իր տեսած կնոջ նկարագիրն անելուց յետոյ՝ դարձեալ մեր առաջ բաց է անում նա իր հոգեկան վիճակը, որ ունի տարփալիի կողմից առանց պատասխանի մնալուց:

Ես եմ կարօտ ի յիւր սիրուն,
Զինչ ծարաւած յերկիր ցօղոյն,
Կամ զինչ գարնան անուշ քամուն,
Թէ երբ հընչէ հողմըն հարաւ:
Քանի որ յիմ տեսուս[1] զատեր,
Կենաց ճարակն է ինձ հատեր,
Լացն ու հառաչն է զիս պատեր,
Հոգու քաղիլ ու սըրտացաւ:

Թէպէտ եւ Գրիգոր Նարեկացուց մինչեւ Կոստանդին Երզնկացին երեք դար ժամանակամիջոց է ընկել, բայց մենք, ցաւօք, չունենք ոչ մի սիրու երգ, որ այդ երկար ժամանակաշրջանում յօրինուած լինէր, եւ նոյնիսկ չգիտենք էլ, թէ արդեօք եղե՞լ են ուրիշ սիրոյ երգիչներ եւս՝ բացի գուսաններից, որոնք միշտ էլ գոյութիւն են ունեցել: Սակայն քանի որ դեռ չէր մեռել կրօնական ոգին եւ Կոստանդինն ինքն էլ մի վանական էր, ուստի Գրիգոր Նարեկացու Ողբերգութիւնից եւ Աստուածածնի երգից անցումը Կոստանդնի երգին՝ կատարուել է, ըստ երեւոյթին, բնականօրէն: Երեւում է, որ այս բանաստեղծի սիրու երգերի վրայ ազդեցութիւն է թողած գուսանականների հետ նաեւ մեր միստիկական բանաստեղծութիւնը: Նա կինը երգում է նրման ձեւերով ու յատկութիւններով, ինչպէս միստիկ երգիչն իր Աստուծուն կամ իր պաշտած Ս. Կոյսին: Կինը, թէեւ մարմնաւոր, ոչ աստուածային էակ, նրա համար հանդէս է գալիս գաղափարական պատկերով, միստիկական Սէր ու Լոյս Աստուծու յատկութիւններով: Լուսոյ եւ արեգակի երգիչն իր սիրոյ առարկան ամէնից առաջ երեւակայում է բնականօրէն իբրեւ մի լուսատու էակ, իբրեւ մի արեգակ ու լուսին: Եթէ միստիկ երգիչ Գրիգոր Նարեկացին, խաւարի մէջ նստած, դիմում է իր Լոյս Աստուծուն եւ ասում. «Կամք քո յիս, եւ խաւարն ինձ ճառագայթ»,[2] նոյնպէս եւ մեր այս կրօնաւոր տաղերգուն «խաւարած սրտով» նստած է կէս գիշերին, եւ նրա տարփալին, իբրեւ մի լուսեղէն էակ «լուսատես պատկերով», արեգակ ու լուսին, լոյս է ծագում նրան, նրա աչքերին, եւ լուսաւորում նրա մութ ու տրտում հոգին.

1 Տպուած է աղճատ ձեւով: «Հիմ տեսնուս», ուղղում եմ «յիմ տեսնուս», որ է՝ իմ աչքից:

2 Գրիգորի Նարեկայ վանից վանականի Մատենագրութիւնք, Վենետիկ, 1840 Ողբերգութիւն. Բան ԿԵ, էջ 167:

Ի յերկրի ի՞նչ կայ նըման քեզ օրինակ,
Դու ի յերկնից լուսեղէնքն ես նըմանակ.
Քու տեսովդ ես դու լուսին պատրի թամամ,
Որ իմ սըրտիս խաւարեալ՝ լուս կու ծագես:
... Երբ որ դուն յորդորելով մանրաքայլես,
Ասեն՝ արեւ ծագեցաւ ի մէջ գիշերիս...

Այսպէս եւ ուրիշ տողերի մէջ արւում է լոյսի համեմատութիւն:

... Իմ աչերուս լուս ծագեցաւ:
Երբ դունըզգուն ելնէ փայլէ,
Ձերկէր ի յիւր լուսոյն հալէ:

Գրիգոր Նարեկացին դիմելով Աստուծուն՝ գրում է.

«Միայն Թագաւոր ինքնակալ զօրեղ... զալստեանդ քոյ ակն ունիմ եւ ողորմութեան փրկչիդ սպասեալ յուսամ. ի յոյս քո անկանիմ, եւ զզարչապարիդ հետս համբուրեմ...»:[1] Կոստանդնի համար եւս իր սիրած կինը Թագաւոր կամ Թագուհի է.

Դու սուլթան ես, պէհըրսապ չատ ծառանով,
Ջծառայիս ձայնըն գիտեմ որ կու կանչես...
Թէ լինէր որ զքեզ տեսնի առ յիս գալով,
Եւ խընդութեամբ ի դէմ գայի քեզ սիրով.
Ի յերկրի երես դընի քեզ կոխելով,
Ու հոգիս անդ հանէի յօժար կամով:

Այս գետնաքարշ սարկացումը բռնակալ սիրոյ (այսինքն՝ սիրական կնոջ) առաջ, ինչ որ ընդհանուր է արեւելեան ժողովուրդների բանաստեղծութեանը, անշուշտ խորին հնութիւնից ի վեր յատուկ է եղել նաեւ մեր գուսանական սիրոյ երգերին, եւ սրանցից օգտուել է մեր միստիկ բանաստեղծը: Բայց էականն այստեղ այն է, որ այդ սիրոյ բռնակալութիւնը նոյն կերպ ազնուացած է երկու դէպքում էլ. որովհետեւ ինչպէս միստիկի համար Տէր Աստուծու ծառայութիւնը սիրով՝ մի փրկութիւն է, բաւական է որ նա ողորմութեամբ քաղցր աչքով նայէ իրեն, — նոյնպէս եւ մեր այս սիրոյ երգչի համար նոյնպիսի ծառայութիւնն ազատութիւն է.

Դու հուքմով փատիշահ ես քու եասիրով,
Եասիր կամ քո ծառայ՝ գինքն ազատես.
Ես ազատ եղել եմ այսօր յերկրի վրայ,
Թէ ծառայ սըրտի կամով գիս տեսանես:

Ինչպէս որ միստիկը չարունակ զբաղուած է Աստուծով եւ փափագում է տեսնել նրան, նոյնպէս եւ մեր այս երգչի հոգուն յարատեւ իշխում է սէրը, եւ նա տենչում է իր սիրելիին մեծ կարօտով, ինչպէս տեսանք վերե-

---

1 Անդ, ԿՁ, էջ 171:

ւում բերուած տների մէջ։ Միստիկի համար՝ Աստուծուց բաժանուած վիճակը պատճառ է դառնում անվերջ ողբ ու լացի․ այսպէս եւ մեր այս երգիչը հառաչում եւ արտասւում է, որ իր սիրուհին հեռու է իրենից, ինչպէս տեսանք վերեւում, այլ եւ հետեւեալ տողերի մէջ․

Դու քանի հեռացեալ ես այս քո գերուս,
Արտասուքն ի վայր թափես ի յաչերուս։

Սիրելի կնոջ ներկայութիւնն ու տեսքը միայն արբեցնում է սիրահարին․ եւ նա միայն մի խնդիր ունի․

Բուրաստանք ծաղկով ի լի տես թէ վառես․
Որ ի յիս անմահութեան հոտ կու բուրես․
Դու ծաղկանց ես թագաւոր վարդի գունով,
Զիս ի քո դիմացդ ի փուշն յէ՞ր կու դատես…
Ա՛յ սուրաթ պայծառ ու պատկեր լուսատես,
Զիմ աչերս ի քո սիրուտ յէ՞ր կու զատես․
Դու գարնան քամի, ես ծաղիկ ծարաւած,
Իմ ծարաւ սրտիս համար հողմը հընչեց։

Միստիկ Գրիգոր Նարեկացու բոլոր ձգտումն է անվերջ սիրով անբաժանելի միանալ իր Աստուծուն, նոյնպէս եւ մեր այս բանաստեղծն է փափագում անվախճան սիրով, անբաժան կերպով, լինել իր սիրածի հետ, որ նրա համար մի տաճար, մի աստուածային տուն, մի սրբութիւն է միստիկի Աստուծու յատկութիւններով՝

Թէ սիրտ ունիմ՝ սէր անվըճար,
Որ բաժնելոյ այլ չըկայ կար․
Նա իմ հոգոյս եղեր տաճար…

Այսպէս մեր առաջին սիրոյ երգի վրայ, ինչպէս համեմատութիւնից կարելի է տեսնել, խիստ ազդել է մեր միստիկական բանաստեղծութիւնը, եւ այդ ազդեցութիւնը յարատեւել եւ հետագայ բանաստեղծների սիրոյ երգերի մէջ։ Նման ձեւերն առաջացել են, հարկաւ, մասամբ նաեւ երկուսի, Գրիգոր Նարեկացու եւ Կոստանդին Երզնկացու երգած նիւթերի էութեան նմանութիւնից, մէկի համար հզօր սէր առ Աստուած, միւսի համար նոյնպիսի սէր դէպի իր տենչալին, եւ երկուսի համար եւս հոգետոչոր ձգտումն միանալու նրա հետ, որին սիրում է ինքը։ Միստիկի միացումն իր Աստուծու հետ լինում է աղօթողի մահից յետոյ․ այդպէս չէ, հարկաւ, մեր սիրերգուի համար․ այդ կը լինի միայն այն ժամանակ, երբ նա իր սիրածի հետ խընջոյքի–ուրախութեան կը նստի․

Զնայ երբ ի խաղ տեսնում նազով,
Լուսին սուրաթ սիահ մազով,
Ես ի յիւր դէմ ելնեմ սազով,
Եւ թէ ծառայ լինիմ կամով։

Ցայնժամ լինի այն մեզ նըշան,
Երբոր խըմեն չինի[1] չիչան,
Նըռան գունով[2] գըինի ռաւշան,
Որ քու տեսուտ նըմանեցաւ:

«Մէջլիս», «ժողով» — խնջոյք, ուրախութիւն, գինի, նուագ ու երգ, պար ու խաղ անբաժան են սիրու երգերից, — դա հարսանիքն է, — ինչպէս նոյնը գտնում ենք նաեւ Կոստանդնի Վարդ ու սոխակի սիրավէպի վերջում: Այդ ժամանակ է միայն տեսնում նա կատարեալ եւ անբաժան սէրը: Կոստանդին Երզնկացին, հարկաւ, չի ունեցել այդ ուրախութիւնը. նա կուսակրօն վանական էր: Բայց որ նա ունեցել է, ինչպէս ասում են, իր «սրտի հատորը», որին եւ երգել է նա, այդ անկասկած է: Նա անյոյս սիրով սիրել է եւ երգել նրան, — անպայման աւելի մեծ թւով բանաստեղծութիւնների մէջ: Անյոյս սիրով մինչեւ կեանքի վերջը սիրել եւ երգել է իր հռչակաւոր Լաուրային նաեւ մեծանուն իտալացի բանաստեղծ Պետրարքան (1304—1374 թ.), մեր Կոստանդնի կրտսեր ժամանակակիցը: Բայց ո՛րքան տարբերութիւն այս երկուսի կեանքի մէջ: Իտալացի քերթողը, որ կուսակրօն էր դարձել իր անյոյս սիրոյ համար, մի փառապանծ երգիչ, ամէնքից յարգուած ու պռուած հէնց իր քնքուշ զգացմունքով լի բազմաթիւ չնորհալի երգերի համար, մի դափնեպսակ երգիչ, որի կեանքի մանրամասնութիւնները յայտնի են եւ որի գրական գործերը մնացել են: Իսկ մեր Կոստանդնի կեանքի մասին գրեթէ բան չգիտենք, բայց եթէ այն, որ նա իտալացի բանաստեղծից առաջ արդէն չնորհալի կերպով երգել է սէր, եւ որ նա նոյնպէս դժբախտ է եղել, բայց աւելի եւս նաեւ իր սիրու երգերի համար, որոնք, ինչպէս եւ նրա միւս քերթուածները, մնացել են ոչ բոլորը: Նրա կեանքն իր մէջ ներկայացնում է հայ ժողովրդի ընդհանուր կեանքի պատկերը:

14. Բանք ևր անձնական վշտի, աշխարհիս ունայնութեան եւ մահուան մասին:— Կոստանդնի «յայտնի ձայնով» երգերը նրան աւելի եւս վիշտ են պատճառում, եւ նա իր գործով ու գաղափարներով մենակ է մնում իր շրջանի կեղծաւոր մարդկանց մէջ, որոնք յարձակւում են նրա վրայ, յիմար ու խելագար անուանում նրան: Նա ոչ մի մխիթարութիւն, ոչ մի սիրելի մարդ չունի. սիրելիներն անգամ խորթանում են նրանից: Նրա ԺԹ. (էջ 147—149) քերթուածը, — «Բանք խօսիլ ի ժամ տրտմութեան, զոր գրեցի առ պա(հն վա)ս(ն) սուտ եղբարց, զոր վիրաւորեցայ», — ամբողջապէս դառն արտասուքով ողողուած անձնական վշտի մի սրտաճմլիկ հեծեծանք է: Սիրոյ կենսուրախ երգիչը մտերմական սէր էր որոնում մարդկանց մէջ, բայց չէր գտնում այն. նրա կեանքը «չունէր դիւրութիւն», քանի գնում ծանրանում էր. նա չէր վայելում հանգիստ ու ուրախութիւն, չարունակ վիշտ ու նեղութեան մէջ էր: Եւ նա խորտակւում է, ընկնում յուսահատութեան մէջ, մանաւանդ որ վերջ չէր տեսնում իր տանջանքներին:

---

1 Տպուած է աղճատ ձեւով «չլընի», ուղղում եմ «չինի» ըստ իմաստին:

2 Տպուած է «գինւով», ուղղում եմ «գունով» ըստ իմաստին:

Ես քանի՛ հառաչ բերեմ
կամ ի սըրտէ կենամ ազար,
Եւ յերակ զօրն ի ղուսայ
հոգօք մաշեմ զիս անդադար.
Ես չունիմ հանդըստութիւն,
'ւ ուրախութեան ինձ չըկայ ճար,
Որ պահ մի հանգիստ առնում,
կամ դուրանայ կեանքըս դըժար:
Զերդ ի ծով կամ տատանել,
յերակ ծըփիմ յալիս խաւար,
Եւ չըկայ եզր ի ծովիս,
կամ թէ ճամբուս թէզ կայ վըճար.
Ոչ ունիմ ես օգնական,
յոյս 'ւ ապաւէն ինձ կամ ճար,
Որ ի յայս շատ ցընորէս
լինէր խօսօք ինձ մըխիթար:
Ոչ ունիմ մարդ սիրելի
ի (յընտանեաց) ինձ կամ օտար,
Որ գըթայ սըրտովն ի յիս,
կամ աղխտայ զիս իր եղբայր.
Ով սըրտով էր սիրելի՝
եղաւ հեռի յինէ 'ւ օտար.
Նա՛ օտարին ի՞նչ մեղ գըտնեմ,
երբոր լինիմ յիմէն ազար:

Այլեւս ուրիշ մխիթարութիւն չէր մնում կեանքի ու բնութեան սիրով վառուած հրճուալից երգչին, բայց եթէ սթափուել իր արբեցութիւնից եւ տեսնել, որ «սուտ կենցաղս», այս «երազ» կեանքը չ'արժէր, որ մարդ դրա համար մտածուփ լինէր. մանաւանդ որ գողի պէս գալիս է ամենազօր եւ ամենասպան մահը, որ ոչ մի բանի մտիկ չի տալիս, գալիս յանկարծ որսում է ամէն մարդու եւ գերեվարում: Բանաստեղծն այսպիսով դիմում է աշխարհի ունայնութեան ու մահուան ցաւագար երգին՝ անձնական վշտերի մխիթարութիւն գտնելով դրա մէջ, քանի որ մահն է վախճան ամէն անհատական տանջալից կեանքի: Աշխարհն ունայն է ոչ այն պատճառով միայն, որ մահ կայ, այլեւ որ չկայ ոչ մի բարութիւն ու շահ, չկայ սիրելի եւ անկեղծ ընկեր, չկայ իսկական վայելչութիւն, չկայ, կենդանի ոգի, նոյնիսկ «մարդ» չկայ.

Այս կեանքս է ունայն եւ ժառանկ ենք մահու,
Չունի՛ մեզ դըրունք բարութեան եւ շահու.
Երազ է խաբող եւ խայալ[1] անցաւոր,
Է 'ստ'ւտ սիրելի եւ ընկեր նենգաւոր:
Ցուցնէ՛ մեզ սիրո'ւ դուռն ու տա'յ շատ նիշան,

1 Խայալ — առաջօք երեւոյթ:

Բայց է՝ ի ծածուկ զազանի՝ պէս ու չան.
Նըստեալ է սաղի[1] սայ ի մեծ ջամիաթ,[2]
Հանել զի ոչինչ սուտ բաներն ի ղիմաթ։[3]

Զգինին որ բաժնէ՝ կայ ի ներս մահու դեղ,
Ոմանք որ խըմեն՝ արբենան ցեղ ու ցեղ.
Հոգւով են մեռած ու թուրն կենդանի,
Ով որ ենք խըմել յայն գինուն չիշանի...

Եւ Կոստանդինն իր ԺԴ. (էջ 128—132) քերթուածի մէջ մեծ ուժով եւ տխրութեամբ, բայց հանգիստ երգում է աշխարհի ունայնութիւնն ու մահուան գործած աւերածութիւնները։ Նա չի վրդովւում, զի կեանքը նրա համար արդէն անարժէք էր։ Մահը նրան ցաւ կը պատճառէր, եթէ նա մահով զրկուելու լինէր այն գեղեցիկ կեանքից, որ նա երազել էր լոյսի շողինից եւ սիրոյ հրայրքից կերտուած։ Նա ամէն բանի մէջ ամենասիրո սէր էր տեսել, եւ իր համար սէր էր որոնել կեանքում, բայց փոխարէնն ատելութիւն էր գտել.

Զայս ի յո՞վ հարցուկ լինիմ,
որ ինձ խըրատ տար կամ կար,
Թէ զիս է՞ր աշխարհս ամէն
հանց կու տեսնէ թըշնամաբար.
Զով սիրով ես ընդունիմ,
Թէ ի սըրտէ ինձ տայ խապար,
Նայ յետեւ ինք յերեսաց
ցուցնէ զիր սէրն ու անկատար։
ԺԹ, էջ 148

Եւ մի անգամ որ կեանքի մէջ չկայ սէր, հետեւաբար չկայ եւ գեղեցկութիւն («Զի ով որ սէր չունենայ՝ առ ինք չկայ գեղեցկութիւն»), ապա թէկուզ ոչնչանայ այն — անսէր, պաղ կեանքը։ Ահա թէ ինչից էր ծագում նրա հանգստութիւնը մահուան եւ ունայնութեան մասին երգելիս.

Ես սիրո՛վ կամ կենդանի.
՚ւ եմ զարդարել զիմ տեւեինն.
Ու թէ սէրն յինէ զատի,
Նա՛յ զիս տանի հողմ ու քամին։
ԺԱ, էջ 116

Հաւանօրէն մեր այս սիրելի բանաստեղծն է 14-րդ դարի առաջին քառորդին 1304 եւ 1314 թուականներին ձեռագիրների մէջ յիշատակուած Կոստանդինը, Երզնկայի վանքերում «միաբան եղբայր», կամ «հոգեւոր հայր»,

1 Սաղի—մատուակ։
2 Ջամիաթ— խնջոյք։
3 Ղիմաթ—գին, արժէք։

տպա նոյնինքը նաեւ «միայնակեաց»:[1] Նա է, որ իր յուսախաբ կեանքի վերջին տարիներն անց է կացրել մի սառն ու մռայլ խուցի կամ քարայրի մենաւորութեան մէջ տխուր ու տրտում, եւ անշուշտ այնտեղ էլ աչքերը յաւիտեան փակել, երազելով վառ գարուն, լոյս, սէր:

15. Գուսանական երգերի ձևական ազդեցությունը:— Հասարակական եւ ընդհանրապէս աշխարհական կեանքի ազդեցութիւնը մեր հին կուլտուրական կենտրոնների — վանքերի վրայ՝ քանի գնում՝ զօրանում էր: Վանականներից շատերը, ինչպէս տեսել ենք, 12-րդ դարի երկրորդ կէսին արդէն իսկապէս անունով միայն կրօնաւորներ են եղել. իսկ իրենց նիստ ու կացով, ապրուստով ու հասկացութիւններով շատ էլ չեն տարբերուել աշխարհականներից: Այդպիսիների բերանից կրօնական երգերի հետ անբաժան են եղել նաեւ գուսանական սիրոյ տաղերը, բայց իրենք ըստ երեւոյթին տակաւին խոտելի են համարել այնպիսի բուն աշխարհական բաների յօրինումը: Միայն Կոստանդինն աշխարհիկ ոգուց դրդուած՝ վերջիվերջոյ գուսանների սիրած նիւթն էլ բանեցրել է ի «գայթակղութիւն» «սուտ եղբայրների», որոնք նոյնպէս ընդունում էին մարմնի իրաւունքը, բայց կեղծաւորում էին: Մինչ այդ՝ գուսանական ուրախութեան եւ սիրոյ երգերի ազդեցութիւնը վանականների բանաստեղծութեան վրայ՝ եղել է աւելի ձեւական կողմից՝ տռնաւորի չափերով եւ որոշ թուով մոտիւների ու պատկերների հետեւողութեամբ, ինչ որ տեսնում ենք արդէն Գրիգոր Նարեկացու տաղերի մէջ եւ, տռնաւորի նկատմամբ, նաեւ Ներսէս Շնորհալու երկերի մէջ: Կոստանդին Երզնկացին էլ բնականօրէն այդպէս է վարուել նախ քան սիրոյ երգեր գրելը:

Զարմանալի է, որ նրա բանաստեղծութիւններից ոչ մէկը հայրենի չափով չի, որ այնպէս յաճախ կիրառել են Յովհաննէս Երզնկացին ու մանաւանդ Ֆրիկը: Նրա սիրած չափն է մեծատող քառանդամ յամբական տռնաւորը, որի սկզբում դնում է սովորաբար եռավանկ, նոյնիսկ երկավանկ անդամ:[2] Սիրոյ բանքերից մէկը 11-վանկանի է՝ 3+4+4 անդամներով, եւ մի երեք բանաստեղծութեան մէջ էլ բանեցրել է նա երկանդամ յամբական տռնաւորը: Յօրինում է շատ ռիթմիկ, ընդհանրապէս ճիշդ պահելով ռիթմական շեշտերը, ինչպէս վարուել են սովորաբար մեր հին բանաստեղծները:

Գալով յանգերին՝ պէտք է ասել, որ Կոստանդինը մի քանի բանքի քառատող տների առաջին երեք տողերը կազմում է միանման յանգերով, իսկ չորրորդ տողը վերջացնում տարբեր յանգով, որ կրկնւում է յաջորդ տների չորրորդ տողերի վերջում (aaab cccb dddb եւ այլն): Մի բանքի (քերթ. ԺԶ.) առաջին տան չորս տողն էլ ունին նոյն յանգը, որ կրկնւում է միւս տների չորրորդ տողերի վերջում: Գուսանական երգերի նմանողութեամբ են արուած յանգերի այսպիսի կիրառութիւններն ե՛ւս, ինչ որ գտնում ենք նաեւ 18—19-րդ դարի աշուղական երգերի մէջ եւս:

---

1 «(Յիշեսջիք) ընդ նմին (Գրիգորիսի) եւ հոգեւոր հայրն իւր զԿոստանդին միայնակեաց, որ բազում առաքինութեամբ զարդարեալ է»: Մ. Պոտուրեան, Կոստանդին Երզնկացի, Վենետիկ, 1905, էջ 13 եւ հտ.:

2 Մ. Աբեղեան, Հայոց լեզուի տաղաչափութիւն, Երեւան, 1933, էջ 241 եւ հտ.:

**16. Պարսկական բանաստեղծութեան ձեւական ազդեցութիւնը եւ չափածոյ բանաստեղծութեան կատարումը:—** *Եթէ կրօնական հանգամանքների հետեւանքով միայն ձեւական կողմից էին նմանում մեր գուսաններին, ապա այլազգիների բանաստեղծութիւնների բովանդակութիւնից խուսափում էին նաեւ քաղաքական տեսակէտով: Սակայն մինչեւ այժմ դեռ չի պարզուել հայկական եւ իրանական գեղեցիկ գրականութիւնների յարաբերութիւնն ըստ ձեւի եւ ըստ բովանդակութեան մեր վերածնութեան շրջանի առաջին երեք եւ ոչ յաջորդ դարերի ընթացքում: Բայց այդ չի նշանակում, թէ մեր քերթողներն անծանօթ են մնացել պարսկական երգերին: Ապրելով իբրեւ հարեւաններ եւ միեւնոյն տէրութեան մէջ, հայերը հնագոյն ժամանակներից արդէն իւրացրել էին իրանական վիպական բանահիւսութեան շատ հատուածներ, իսկ Կոստանդին Երզնկացու ժամանակներում իրանական շրջիկ գուսանները մուտք էին գործում եւ Հայաստան: Մեր այս բանաստեղծն իր ԺԴ. (էջ 128 եւ հմն. «Բանք յաղագս անցաւոր մեծութեան...») քերթուածի վերնագրից յետոյ գրել է հետեւեալ ծանօթութիւնը. «Այր մին [նստ]ել կայր ու Շահնամայ ասէր ձայնով. նայ եղբայրք խնդրեցին, թէ ի Շահնամայի ձայն մեզ ոտանաւոր ասայ. ես չինեցի զբանքս զայս. ի Շահնամայի ձայն կարդացէք»:*

*Այս հետաքրքիր ծանօթութիւնից իմանում ենք, որ իրանական աշխարհիկ բանաստեղծութիւնը 13—14-րդ դարերում թափանցած է եղել անգամ մեր վանքերը, եւ «եղբայրները», այսինքն Կոստանդնի կրօնակից վանականները սիրով լսելիս են եղել Շահնամա եւ նոյնիսկ ցանկացել են դրա «ձայնով» ոտանաւոր լսել հայերէն: Շահնաման, հարկաւ, միայն Երզնկայի վանքերում չի ասուել, եւ աւելի եւս սիրով մեր աշխարհականներն են այն դարերում լսել Պարսից այդ մեծ դիւցազներգութիւնից: Պէտք է կարծել, որ Հայաստանում Շահնաման «ձայնով ասել են» պարսկերէն լեզուով: Այս մեծ քերթուածից հայերէն հին թարգմանութիւն, այն էլ ոտանաւորով, յայտնի չէ. հատուածները անշուշտ կը պատմէին հայերէն, ինչպէս դեռ եւս մեր օրերում էլ պատմում են հայերէն:*[1] *Կոստանդնի հաղորդածը՝ «ասել ձայնով», «ի ձայն կարդալ»՝ վերաբերում է ոտանաւորին, քանի որ նրանից խնդրում են յօրինել ոտանաւոր «ի Շահնամայի ձայն», այսինքն այնպիսի չափով, որ կարելի լինի Շահնամայի պէս առոգանել: Եւ նա յարմարում է մի քերթուած 11-վանկանի տողերով, ինչպէս Շահնաման է, անապեստեան ոտքերով, սկզբից ունենալով մի յամբ: Այսպիսի մի չափը, որ գործածել է նաեւ Գրիգոր Նարեկացին, շատ հեռու է Շահնամայի չափից, բայց կարելի է «ձայնով ասել», «ի ձայն կարդալ» ինչպէս Շահնաման: Կոստանդնի քերթուածի բովանդակութիւնն է աշխարհի ունայնութիւնը եւ ոչ թէ աշխարհիկ վիպական նիւթ: Ուրեմն պարսկական մեծ դիւցազներգութեան նմանողութիւնը եղել է լոկ ըստ ձեւի:*

*Տե՛ս չորրորդ յաւելուած՝ «Շահնամայի ձեւական ազդեցութիւնը»:*

**17. Վերածնութեան գրականութեան առաջին էտապը** *տեւում է մօտ ե-*

---

1 *Ֆիրդուսի, Բանաստեղծի ծննդեան հազարամեակին նուիրուած ժողովածու, Երեւան, 1934, էջ 157—222. «Ռոստոմ Զալ», հայ իրանական վէպ, գրի առաւ Արտաշէս Բարսեղեան:*

րեք հարիւր տարի, 11-րդ դարի առաջին տասնամեակներից մինչեւ 14-րդ դարի առաջին քառորդը, մինչեւ Կոստանդին Երզնկացին: Այնուհետեւ մօտ 75 տարի գրականութիւնը յայտնի չէ մեզ մինչեւ Առաքել Սիւնեցի եւ Բաղիշեցի — եկեղեցական բանաստեղծութիւնը: Եթէ մի յետադարձ հայեացք ձգենք այս երկար ժամանակաշրջանի գրականութեան ընթացքի վրայ, կը տեսնենք, որ, չնայելով հայերի անբարեյաջող քաղաքական վիճակին, մի խակական ինքնուրոյն վերածնութեամբ աշխարհիկ միտքը թափանցում է հայ եկեղեցականի գրականութեան մէջ: Մեր բանաստեղծութիւնը՝ Գրիգոր Նարեկացու Ողբերգութիւնից ի վեր՝ ձեռք է բերում նոր գրական տեսակներ եւ բազմաթիւ նոր թեմաներ — կրօնական միստիկական զգացումն ու մտածութիւնը, հայրենասիրութիւն, բնութեան սէր ու երգ, աշխարհի ունայնութեան ու մահուան գաղափարը, անձնական հանգամանքներ, բուն ժողովրդական աշխատաւոր դասի իրական կեանքն ու աշխարհայեացքը, սոցիալական խնդիրներ, ժողովրդի զանազան դասերի յարաբերութիւն ու դասակարգային պայքար, դժգոհութիւն եղած դրութիւնից, աշխատաւորի բողոքը սոցիալական անհաւասարութեան դէմ, երգիծանքը վատ կարգերի, ազգային քաղաքական ձգտումներ, կրօնական երկբայութիւն, ազատախոհութիւն եւ այլն: Ահա մի նոր աշխարհայեցութիւն, կրօնական կաշկանդումից ազատութիւն, որ հետզհետէ, թէպէտ դանդաղ եւ ընդհատումներով, արտայայտուած ենք գտնում մեր գրականութեան մէջ:

Որ մեր բանաստեղծութիւնն այսպէս շուտ, եւրոպականից շատ վաղ է թօթափել միջնադարեան ոգին, դրա պատճառը պէտք է տեսնել անշուշտ ոչ միայն ցեղի ընդունակ բնաւորութեան ու նրա այն մեծ շարժման մէջ, որ, ինչպէս տեսել ենք, ունեցել է 10-րդ դարում, այլեւ իր հայրենիքի դրութեան մէջ: Բացի արեւմտեան քրիստոնեայ ազգերից, հայերը շփւում էին նաեւ արեւելեանների հետ՝ պարսիկների եւ արաբների: Թէպէտ իրանական եւ հայկական բանաստեղծութիւնների յարաբերութիւնը եւ առանձնապէս իրանականի ազդեցութիւնը մերի վրայ ըստ ձեւի եւ ըստ բովանդակութեան, ինչպէս վերեւում ասուեց, դեռ չի ուսումնասիրուած, բայց արդէն պարզ է, որ մեծ է եղել արեւելեան ժողովուրդների կուլտուրական ազդեցութիւնը հայկական քաղաքային եւ ընդհանրապէս հասարակական կեանքի վրայ, հետեւաբար անպայման նաեւ գրականութեան վրայ: Այս ներքին եւ արտաքին հանգամանքների շնորհիւ ահա մեր բանաստեղծութեան մէջ լինում է մի կատարեալ յեղաշրջում, որ ընկնում է Պրովանսի մօտաւորապէս նոյնպիսի բանաստեղծութեան հետ միաժամանակ, հարկաւ, Պրովանսից անկախ, քանի որ մեր բանաստեղծութիւնն իր նախապատրաստութիւնը կեանքի մէջ ունենում է 10—11-րդ դարերում, երբ Ֆրանկների հետ յարաբերութիւն չունէին հայերը: Յաջորդ 12-րդ դարի վերջում եւ 13-րդի սկզբում միայն, այն էլ Արեւելքում ունեցած շփումով, նոր դեռ մտաւոր շարժում էր սկսում առաջ գալ Իտալիայում եւ Ֆրանսիայում, ուրեմն՝ մերինից բաւական ուշ: Բացի այդ՝ մեր բանաստեղծութեան զարգացման ընթացքը տարբեր է լինում եւրոպականից: Առնենք Ֆրանսիականը եւ սիրոյ քերթուածները:

Պրովանսի բանաստեղծութիւնն ընկնում է: Այնտեղ, ինչպէս եւ Հիւսիսային Ֆրանսիայում, բանաստեղծները պարապում են արուեստակեալ

*շինծու ձեւերով. միշտ միեւնոյն ընդհանուր գաղափարներով, կնոջ պաշտամունքի ու գեղեցկութեան մի գովքով միայն, այն էլ քարացած, աւանդական դարձած ու դժուար հասկանալի խրթին արտայայտութիւններով եւ ոտանաւորի բարդ, խճճուած տեսակներով: Չկայ անհատական զգացում, չըկայ բնութեան սէր. աւելի ու աւելի լոկ դատողութեան մի բանաստեղծութիւն, մտաւոր վարժութեամբ յօրինուած:* 14-*րդ դարի առաջին քառորդից, — ուրեմն մեր Կոստանդին Երզնկացու ժամանակից, — նոյնիսկ կանոն է դրւում, թէ սէրը չպէտք է սովորական ձեւով երգել, այլ միայն այլաբանութեամբ, եւ թէ կանանցից միայն Ս. Կոյսին եւ միւս սրբուհիներին կարելի է երգել: «Նրանց գոված կինը միայն կնոջ գաղափարն է, նրանց տարփանքը՝ միայն տարփանքի գաղափարը. ամէն ինչ նրանց գլխով անցնում է իբրեւ վերացական շինուածք եւ ոչ նրանց սրտով իբրեւ կենդանի յոյզ»:*[1] *Ահա թէ ինչպէս են բնորոշում Պրովանսի եւ Ֆրանսիական սիրոյ բանաստեղծութիւնը* 14 *եւ* 15-*րդ դարերում:*

*Մեր սիրոյ երգը, — այս ենք առնում միայն, — բոլորովին ուրոյն եւ աւելի յաջող ընթացք է ունենում:* 10—11-*րդ դարում արդէն լինում է Աստուածածնի կրօնական գովքը գուսանական սիրերգի մոտիւներով. ապա վարդ ու սոխակի պատկերով փառաբանւում է սիրաբորբոք տարփանքը.* 13-*րդ դարի վերջում կամ* 14-*րդի սկիզբներում այդ երգն ազատւում է այլաբանութիւնից, եւ եթէ հետագայում եւս Աստուածածնի անունով են սիրերգում կամ վարդ ու սոխակի պատկերով կամ այլաբանութեամբ եւս գրում են, այդ ոչ թէ նրա համար, որ թոյլատրուած չէր բացայայտ երգել սէր, այլ որ այլաբանական ձեւը դիւր էր գալիս կրօնաւորներին, իսկ եթէ Աստուածածնի անունով են սիրերգում, այդ այնպիսի վճիտ աշխարհիկ երգ էր լինում, որ բանաստեղծները յայտնում էին, թէ կ'ուզէք՝ աշխարհիկ սէր հասկացէք: Միւս կողմից՝ բանաստեղծութիւնը* 12-*րդ դարից սկսած ձըգտում է ազատուել կաշկանդանքից, խրթնաբանութիւններից ու «ծածուկ ճառերից», եւ Դանտէից մի դար առաջ արդէն մեզնում կարիք է զգացւում կենդանի խօսակցական լեզուով գրելու: Բայց որ գլխաւորն է՝ ինչքան էլ շատ միակերպութիւն կայ մեր սիրոյ երգի մէջ եւս, բայց եւ այնպէս* 15—16-*րդ դարերում մեր այդ երգը, ինչպէս առհասարակ տաղասացութիւնը, ոչ միայն չի ընկնում, այլ, ընդհակառակն, աւելի զարգանում, ուռճանում է եւ ստեղծւում են շատ ընտիր ու փայլուն բանաստեղծութիւններ: Առաջ են գալիս վիպական քերթուածներ՝ կրօնական ու այլ բովանդակութեամբ, ինչպէս նաեւ սիրավէպ առանց որեւէ այլաբանութեան, նովելլաներ եւ այլն: Սրանց կողքին, շատ վաղ դարերից ի վեր, մինչեւ վերջը միշտ գոյութիւն է ունեցել գուսանական բերանացի երգը, սիրոյ եւ ուրախութեան տաղը, բոլորովին զերծ որեւէ կրօնական կաշկանդանքից եւ այլաբանութիւնից: Բարեբախտաբար գրի առնուած մնացել են գուսանական «հայրէնները», որոնք մեր քնարերգութեան գոհար վարդերն են: Սրանց մասին էլ կը տեսնենք այս գործի շարունակութեան մէջ:*

*Բայց նախ քան այդ մի հայեացք ձգենք մեր եկեղեցական գրականութեան վրայ:*

---

1 Histoire de la Littérature française par Gustave Lanson, Paris *1895, էջ 84 եւ հտն.:*

# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՎԵՐՋԱԼՈՅՍՆ ԵՒ ԱՐԵՒՄՈՒՏԸ

## ԾԻԳԵՐ ԱՆԿՄԱՆ ԱՌԱՋՆ ԱՌՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

1. Աւերմունքների դարեր:— *Մենք թեւակոխում ենք այժմ մի պատմական ընդարձակ շրջան, որ կամ անծանօթ է, կամ սակաւ ծանօթ, զի մեր պատմաբանները խուսափել են ընդհուպ մօտենալու մեր ժողովրդի այս հինգհարիւրամեայ պատմութեանը 14-րդ դարի առաջին տասնամեակից մինչեւ 19-րդ դարի սկիզբները: Կարծես մի մեծ մայր ու ալեկոծ տարածութիւն են կազմում այդ դարերը, որոնք, չնայելով իրենց փոքր հանգրուաններին՝ աղետալի հետեւանքներ են ունեցել մեր ժողովրդի համար, աւելի եւս չարաչար, քան արաբական, սելջուկեան եւ թաթարական բռնատիրութիւնները: Այստեղ կարող ենք եւ կարեւոր է միայն ընդհանուր կերպով գծել մեր երկրի ու ժողովրդի չարաբաստիկ վիճակն այս մեծ շրջանի առաջին դարերում:*

*Ամենից առաջ աչքի է ընկնում իշխող տոհմերի եւ իշխողների յարափոփոխ դրութիւնը, որին ընկերակից էին յարատեւ պատերազմները, ուստի եւ երկրի յարատեւ աւերումն ու ժողովրդի աւելի եւս կեղեքումներն ու քայքայումը: Թաթարներն ընդունում են մահմեդականութիւն, եւ ընդհանրապէս այլեւս բարեհաճ չէին դէպի քրիստոնեայ հայերը: Մոլեռանդների կողմից տեղի էին ունենում սաստիկ ճնշումներ: Յետոյ, 14-րդ դարի երկրորդ տասնամեակից, Պարսկաստանի մոնղոլական հարստութիւնը, որ տիրում էր նաեւ Հայաստանին, թուլանալով խաղալիք է դառնում զօրաւոր կառավարիչների ձեռին եւ վերջապէս ընկնում է (1344 թ.): Առաջ են գալիս մի շարք ինքնագլուխ խաներ զանազան կողմերում. Հայաստանը մնում է Ատրպատականի իշխողների ձեռին: Խաները կարճատեւ տիրակալութեամբ յաջորդում են միմեանց եւ իրար հետ կռուելով աւերում են երկիրը մինչեւ մեծ աւերիչ Լանկթամուրը:*

*Այդ ժամանակներում բարեյաջող վիճակի մէջ չէր նաեւ Կիլիկիայի հայկական թագաւորութիւնը: Դադարել էր հայերի դաշինքը թաթարների հետ. երկրում մեծանում էին երկպառակութիւնները. կաթողիկոսները յաճախ զիջումներ էին անում կաթոլիկ եկեղեցուն, ինչ որ խռովութիւններ էր առաջ բերում: Դրսից անընդհատ յարձակւում էին շրջակայ մահմեդականները մասամբ այն պատճառով, որ հայերը չէին կտրւում արեւմտեան տէրութիւններից, թէեւ ոչ մի շահ չունէին նրանցից եւ չէին կարողանում մի ընդհանուր լեզու գտնել Եգիպտոսի տէրութեան հետ, որի ձեռով եւ վերջիվերջոյ 1375 թ. ընկաւ այն կողմերի հայկական անկախ թագաւորութիւնը:*

*Նոյն տարիներում Հայաստանին տիրում են երկու թուրքմէն հարստութիւններ — Ղարաղոյունլի, որ է Սեւ Խոյի (1378—1469 թ.), կենտրոնը Թաւրիզում, եւ Աղղոյունլի, այսինքն Սպիտակ Խոյի հարստութիւն (1378—1502 թ.), կենտրոնը Ամիդ (Դիարբեքիր) քաղաքը: Միաժամանակ եւ Ջանգիզ խանի սերունդներից (կանանց կողմից) Լանկթամուրը 1380 թ. սկսում է Ջաղաթայի խանութիւնից (Տրանսօքսիանում — Բուխարայում,*

*Սիր-Դարիա գետից հիւսիս, արդի Ուզբեկստան երկրում) իր արշաւանքները Պարսկաստանի վրայ, աւերում է նաեւ Ատրպատականն ու Հայաստանը: Նրա բանակները 1387—1402 թ. մի քանի անգամ հեղեղում են Հայաստանը եւ քարուքանդ անում Արցախ, Սիւնիք, Երնջակ, Կարբի, Բջնի, Գառնի, Կողբ, Սուրմարի, Կողովիտ, Արճէշ, Կարս, Վան, Մալաթիա եւ այլն. մտնում են նաեւ Կիլիկիա, 1400 թ. անցնում են Անատոլիա: Այստեղ Իկոնիայի (Հռոմի) սուլթանութիւնը 1294 թ. կործանուած էր թաթարների ձեռով, եւ կազմուած էին մի շարք իրարուց անկախ իշխանութիւններ. 1299 թ. մի թուրք ցեղապետ՝ Օսման անունով՝ իրեն հռչակել էր սուլթան եւ հետզհետէ զօրանալով ընդարձակել էր իր տէրութեան երկիրը: Կազմուել էր տաճիկների օսմանեան տէրութիւնը: Լանկթամուրը 1402 թ. ջարդում է օսմանեան թուրքերին եւս Անկիւրիայի մօտ, եւ վերջապէս կազմւում է նրա հսկայական մեծութեան տէրութիւնը՝ կենտրոն ունենալով Սմրղանդ մայրաքաղաքը:*

*Լանկթամուրի մահից (1405 թ.) յետոյ մեծ խռովութիւն է սկսւում նրա ժառանգի եւ նուաճուած տէրութիւնների միջեւ. օսմանցիներն ու թուրքմէնները վերականգնում են իրենց իշխանութիւնները: Ղարաղոյունլիների ցեղապետը՝ Ղարա Եուսուֆ՝ պատերազմում է Լանկթիմուրի որդի Շահրուհի դէմ (1405—1447 թ.). ապա նոյն պատերազմը շարունակում է Ղարա Եուսուֆի որդի Իսքանդարը (1420—1437 թ.), մինչեւ որ դառնում է տէր Ատրպատականի եւ Հայաստանի մեծ մասին՝ կենտրոն ունենալով Թաւրիզ քաղաքը: Իսքանդարից ապստամբում է իր եղբայր Ջհանշահը (1437—1567 թիւը), եւ իշխում է նաեւ Հայաստանի մեծ մասի վրայ (Այրարատ, Սիւնիք, Վասպուրական եւ ուրիշ կողմեր): Մի առժամանակ համեմատաբար խաղաղում է երկիրը. Ջհանշահի որդին իբրեւ ընդհանուր կուսակալ Հայաստանի եւ այլ երկիրների՝ նստում էր Նախիջեւանում՝ իր ձեռի տակ ունենալով կառավարիչ բէգեր Երեւանում, Վանում, Տփղիսում եւ ուրիշ տեղերում: Բայց շուտով սկսւում են պատերազմներ Աղղոյունլիների եւ Ղարաղոյունլիների միջեւ, յաղթում են Աղղոյունլիները 1469 թ. եւ տիրում են նաեւ Ատրպատականին եւ ամբողջ Հայաստանին ծանր լծով: Նրանց իշխանութիւնը, սակայն, երկար չի տեւում:*

*Սեֆեան տոհմից Շահ Իսմայիլը (1502—1520 թ.) Շարուրում ջարդում է թուրքմէններին, նուաճում է ամբողջ Պարսկաստանը, մայրաքաղաք դարձնում եւ Թաւրիզը: Իշխում է Սեֆեան հարստութիւնը (1502—1736 թ.): Այս նոր պարսկական տէրութիւնն արեւմուտքից սահմանակից է դառնում օսմանեան տէրութեան հետ. սկսւում է դարաւոր պատերազմ օսմանցիների ու պարսիկների միջեւ. Շահ Իսմայիլի օրով հէնց օսմանեան տէրութիւնը կցւում է Հայաստանից Կարնոյ, Կամախի եւ Մշու գաւառները: Բայց երկարատեւ պատերազմի ընթացքում Հայաստանի զանազան մասերը յաճախ մէկից միւսին են անցնում մինչեւ Շահ Աբաս թագաւորը (1587—1628 թ.) եւ յետոյ: Երբեմն էլ օսմանցիները տիրում են եւ ամբողջ Հայաստանին, բայց արեւելեան Հայաստանն ընդհանրապէս մնում է պարսկական իշխանութեան ներքոյ:*

*Այսպէս՝ այս երկու հարիւր եւ աւելի տարիների ընթացքում Հայաս—*

տանում իշխել են զանազան տոհմեր՝ մոնղոլ ու Թուրքմէն, Թուրք ու պարսիկ — բոլորը մահմեդական, թշնամի միմեանց եւ աւելի եւս հայերին: Պատերազմները գրեթէ անընդհատ էին. նոյն տոհմի իշխողներն անգամ յաճախ միմեանց դէմ էին ելնում, եւ Հայաստանը շարունակ դառնում էր պատերազմների ասպարէզ: Մահմեդականները, որ վայրագ անգթութեամբ կոտորում էին միմեանց եւս, աւելի եւս մեծ դաժանութեամբ էին վերաբերում դէպի քրիստոնեայ հայերը, որոնց իրենց թշնամիներն էին համարում կռուող կողմերը: Ուստի սուր ու կոտորած, աւար ու աւեր միշտ կախուած են եղել անպաշտպան հայ ժողովրդի գլխին: Ոչ միայն Լանկթամուրը, այլեւ ուրիշները մասսայական կոտորածներով բնաջնջում էին ժողովրդին, գերեվարում, մի տեղից միւս տեղը քշում: Բնակիչներն իրենք էլ գլխակորոյս դուրս էին գալիս իրենց բնիկ երկրից, գնում Փոքր Ասիա, Կ. Պոլիս, Բալկաններ դէպի քրիստոնեայ հայերը, որոնց իրենց թշնամիներն էին համարում կռուող եւ այլն աւելի մեծ բազմութիւններով, քան սելջուկեան եւ թաթարական արշաւանքների օրով: Աւելի սոսկալի է լինում դրութիւնը, երբ հին պատերազմող բռնակալների սովորութեամբ հրամայում են ժողովրդին գաղթել երկրից դուրս, իրենց ետեւում այրելով, աւերելով ամենայն ինչ, որպէսզի հետապնդող թշնամին միայն ամայի երկիր գտնի: Քանդւում են քաղաքները. գետնի տակն են մտնում Դուինի, Անիի նման վաճառաշահ կենտրոնները. ոչնչանում է արդիւնագործութիւնը, գրեթէ դադարում առեւտուրը: Պակասում է հողագործութիւնը. մշակուած, բերրի դաշտերը խոպանանում եւ ամայի դառնում: Չորանում, արմատախիլ են լինում այգիներն ու պարտէզները: Փոքրանում է երկրագործ հայ ժողովրդի թիւը. նրա տեղը հետզհետէ բռնում են վաչկատուն թաթարները, քոչուոր Թուրք ու քուրդ ցեղեր, որոնք երկար ժամանակ դեռ չեն դառնում նստակեաց եւ քոչուորութեամբ աւերում են շէն ու մշակուած հողերը, յաճախ յափշտակում անպաշտպան քրիստոնեայ ժողովրդի ձեռից այգիներն ու տները: Կրկնըւում են համատարած սովերը: Միւս կողմից՝ սովալլուկ ու մերկ ժողովուրդը տառապում է կողոպտիչների եւ հարկահան կոչուած հարստահարիչների ձեռին: Օսմանեան երկրում ժողովրդի համար մի պատուհաս է դառնում նաեւ «մանկաժողով» ասածը: Այս ամէնի հետ շարունակւում են կրօնական հալածանքները ե՛ւ մոլեռանդ կառավարիչների, ե՛ւ ֆանատիկ մահմեդական ամբոխի կողմից. փակւում կամ քանդւում են եկեղեցիները, ստիպում են մահմեդական դառնալ, եւ թշուառ ժողովուրդը յաճախ բռնի հաւատափոխ է դառնում. տեղի են ունենում նաեւ բազմաթիւ նահատակութիւններ կրօնի համար:

Այսպէս ահա հայ երկիրն ապրում է մի գրեթէ անընդհատ փոթորկայոյզ վիճակ եւ վերջիվերջոյ մի սոսկալի անկում, տնտեսական ու կուլտուրական: Հայաստանի պատկերն անգամ փոփոխւում է թէ՛ ազգագրօրէն, ըստ բնակչութեան ցեղերի, եւ թէ՛ նոյնիսկ ըստ աշխարհագրական անունների, իսկ ժողովուրդը յետադիմում է ըստ ամենայնի: Այսպիսի դրութիւնն առաջ է եկել հետզհետէ, աստիճանաբար, եւ մեր պատմաբանները պէտք է դեռ նոր պարզաբանեն այս աստիճանական անկումը բոլոր մանրամասնութիւններով: Դեռ նոր պէտք է յայտաբերուեն ի միջի այլ բաների նաեւ հայկական կուլտուրայի նեցուկ հայ ազնուականութեան աստի-

ճանական ոչնչացումը կամ աննշան դրութեան վերածուելը, ինչպէս, օրինակ, Սիւնեաց մեծ իշխանութեան Օրբելեան տոհմի, որ սպառուել է 1438 թուականին: Աւելի եւս կարեւոր է իմանալ մեր կուլտուրայի — լուսաւորութեան ակունքների — վանքերի վիճակը ե՛ւ նիւթական, ե՛ւ կուլտուրական կողմից 14—17-րդ դարերում եւ հետագայում:

**2. Ունիթոռական գրականութիւն եւ լատինաբան աղճատ հայերէն:—** Այս աւերմունքների մեծ շրջանի առաջին դարում Հայոց վանքերը բնականաբար դեռ բոլորովին ընկած չէին: Նրանք էին, որ դեռ շարունակ հակազդում էին Կիլիկիայի իշխանների եւ բարձր հոգեւորականութեան ձգտումին՝ քաղաքական նպատակով կրօնական զիջումներ անելու կաթոլիկ եկեղեցուն: Հռոմն արեւելեան հայ վանականների դիմադրութիւնը խորտակելու համար մի նոր միջոցի է դիմում. նա պարսկական մոնղոլ հարստութեան թուլացման սկիզբներում հէնց՝ 1319 թ. քարոզիչներ է ուղարկում Արեւելք: Հիմնում են Մարաղայի լատին եպիսկոպոսութիւնը՝ կենտրոն ունենալով մայրաքաղաքը՝ Սուլտանիա: Հայ վարդապետները սկզբում հետաքրքրւում են լատին եպիսկոպոս Բարթողիմէոսի (մեռ. 1333 թ.) ոչ թէ կրօնական քարոզներով, որոնցով նա հռչակուած էր այն կողմերում, այլ նրա բնագիտական հմտութիւններով: Այդ ժամանակ դեռ ծաղկած դրութեան մէջ էր Վայոց գաւառում Գայլեձորի (Գլաձորի) վանքը, որի մասին խօսուել է վերեւում. նրա վանահայր Եսայի Նչեցին, որ իր աշակերտների մէջ վարժեցրել էր գիտութեան սէր, թոյլ է տալիս նրանցից մէկին՝ Յովհան Քռնեցուն 1328 թ. գնալ յիշուած լատին եպիսկոպոսի մօտ՝ նրա նոր գիտութիւնը լսելու եւ լատիներէն սովորելու: Քռնեցին հրապուրւում է կաթոլիկ քարոզչից ու «լատին աստուածաբանութեան արուեստակեալ ձեւերից», յարում է կաթոլիկ եկեղեցուն եւ մի քանի ընկերներով 1330 թ. հաստատուելով Երնջակի Ապրակունիս կամ Ապարաններ վանքում՝ սկսում են քարոզել միացում կաթոլիկ եկեղեցու հետ: Նրանք ունենում են հետզհետէ աւելի ու աւելի հետեւողներ Նախիջեւանի եւ Ճահուկի գաւառներում. ստեղծւում է կաթոլիկ եկեղեցու հետ միանալու հոսանքը եւ միացումը գործնապէս, կամ «միաբանութիւնը», որ յայտնի է լատիներէն «ունիթոռութիւն» անունով:

«Ունիթոռները» գործում էին թէ՛ բերանացի քարոզներով եւ թէ՛ գրաւոր կերպով: Մի կողմ թողնելով եւ նոյնիսկ արհամարհելով Հայոց գրականութիւնը, անարգելով ամէն ինչ, որ հայկական է — ծէս, սովորութիւն եւ այլն, նրանք լատիներէնից թարգմանում էին կաթոլիկական ոգով կրօնական գրքեր, մեկնութիւններ, քարոզներ եւ այլն, նոյնիսկ լատին ծիսարաններ, երբեմն եւ ուրիշ բովանդակութեամբ գրքեր, որոնցով տարածում էին հայերի մէջ Արեւմուտքի սքոլաստիկական ուղղութիւնն ու գաղափարները: Այս ունիթոռական գրականութիւնը, հարկաւ, գրական արժէք չունի:

Ունիթոռների նախանձախնդրութիւնը լատին եկեղեցու համար այն աստիճանի է հասնում, որ եթէ հնար ունենային, Հայոց լեզուն կը փոխարինէին լատիներէնով. բայց որովհետեւ այդ անել անկարելի էր, ուստի նրանք Հայոց գրական լեզուն ձեւում են ըստ լատիներէնի. կիրառում են նորաստեղծ հոլովական ու խոնարհման ձեւեր, նոր տեսակի նախդիրներ, բառերի

լատինաձեւ շարադասութիւն ու համաձայնութիւն, լատիներէնի հետեւողութեամբ կազմուած նոր բառեր եւ արտայայտութիւններ եւ այլն: Այսպիսով առաջ է գալիս մի «տարօրինակ լեզու», մի լատինաբան հայերէն, որ բացի հայոց լեզուն խանգարելուց ոչ մի բանի եւ ոչ ոքի պիտանի չի եղել: Այս ունիթոռական աղճատ լեզուն իր գրականութեամբ հանդերձ բաւական գործածութիւն է ունեցել եւ երկար է տեւել, մինչեւ նոյնիսկ Մխիթարեան միաբանութեան հիմնադիր Մխիթար Սեբաստացին, որ եւ 1721 թ. առաջին անգամ Վենետիկում տպագրել է տուել Պետրոս Արագոնացի քարոզչի «Առաքինութեանց գիրքը»... «Նորում [=յորում, Մ. Ա.] նախ ընձեռին զեօթանց առաքինութեանց... Անդրածեցեալ [=թարգմանեալ, Մ. Ա.] ի լատինականէն ի հայ բարբառ, ի գաւառն Նախիջեւանու, ի վաղնջուց ժամանակաց: Իսկ աժմ ի լոյս ածեցեալ [=ածեալ, Մ. Ա.] աշխատասիրութեամբ եւ սրբագրութեամբ տեառն Մխիթարայ վարդապետի Սեբաստացւոյ Աբբայ հայր կոչեցելոյ»: Այս դեռ սրբագրուած լեզուով է: Վենետիկում 1772 թ. կատարուել է դրա երկրորդ տպագրութիւնն էլ, որի մէջ յիշւում է, թէ թարգմանութիւնը եղել է 1339 թ.:[1]

3. Յովհան Որոտնեցի եւ վանական դպրոցներ:— Ունիթոռների հայրենամերժ եւ աւանդուրաց անզուսպ գործունէութիւնն առաջ է բերում յուզումներ, խռովութիւն, եւ բնականաբար չի մնում առանց զօրեղ հակազդեցութեան, որ ունենում է իր բարերար հետեւանքները ոչ միայն հայոց եկեղեցու համար, այլեւ ընդհանրապէս կուլտուրայի, լուսաւորութեան եւ մանաւորապէս գրականութեան նկատմամբ: Տաթեւի, Գայլեձորի (Գլաձորի) եւ մի քանի ուրիշ վանքեր, որոնց մէջ դեռ շարունակւում էր հայկական ուսումը, իրենց աշակերտներին կրթում էին լինելու ոչ միայն ուսումնասէր, այլեւ հայրենասէր, եւ անաղարտ պահպանելու հայոց լեզուն, ինչպէս եւ ազգային եկեղեցին իր աւանդութիւններով: Նրանց աշակերտներն ահա հակառակ են ելնում ունիթոռներին ե՛ւ բերանացի, ե՛ւ գրաւոր քարոզներով: Այդպիսիների մէջ առաջին տեղը բռնում է Յովհաննէս Որոտնեցին, Կախիկ մականունով (1315—1388 թ.):[2] Նա Օրբելեան տոհմից էր, «ի գաւառէն Որոտնոյ ի գեղջէն Վաղանդնու՝ որդի մեծի իշխանին Իւանի, որ էր զարմէ առաջին իշխանացն Սիւնեաց, յորմէ Վասակն էր... յոյժ իմաստուն եւ գիտնական հին եւ նոր Կտակարանաց, լուծիչ Աստուածաշնչոյ նրբից եւ արտաքնոց»:[3]

Գրիգոր Տաթեւացին եւս իր Ներբողեանի[4] մէջ գրում է. «Գոլով նորա ազատ պարազատ յազնէ Սիսական ընիկ Հայկազնի. գաւառաւ Որոտնէի իշխան ազգաւ, տիրելով բազմաց եւ փարթամ գոյից»: Օրբելեանները վաղուց իրենց համարում էին Սիսական տոհմի ժառանգներ, ուստի զարմա-

1 Զարբ., «Հայկական մատենագիտութիւն», Վենետիկ, 1883, էջ 49:

2 Այս թուականն է դնում Մ. Օրմանեանն իր «Ազգապատումի» մէջ:

3 Պատմութիւն Լանկ-Թամուրայ եւ յաջորդաց իւրոց, արարեալ Թովմա վարդապետի Մեծոփեցւոյ. Փարիզ, 1860 էջ 14 եւ հտ.: Տպուած է Մովսէս Կաղանկատուացու «Աղուանից պատմութիւն» Բ. հատորին կից:

4 Գիրք քարոզութեան, Ամարան հատոր Գրիգորի Տաթեւացւոյն, Կ. Պոլիս, 1741, էջ 711 եւ հտն. «Նորին Գրիգորի Ներբողեան ողբերգաբար ասեալ ի թաղումն տիեզերալոյս վարդապետին իւրոյ Յօհաննու Որոտնեցւոյն»:

*նալի չէ, որ Որոտնեցուն այն տոհմից են դնում: Նա Գայլեձորի հռչակաւոր վարդապետ Եսայի Նչեցու աշակերտն էր. շատ տասնամեակներ նուիրուել էր ուսման, սովորել, — ինչպէս գրում են, — օտար լեզուներ, հմուտ էր գլխաւորապէս լատիներէնին, հետեւելով արեւմտեան ուսմունքներին եւ կաթոլիկական դպրոցներում ընդունուած մեթոդներին: Նա ուսումնասիրել էր նաեւ Հայերի մէջ հնուց ընդունուած արտաքին գիտութիւնները, Փիլոնի, Արիստոտելի, Պորփիւրի եւ ուրիշների երկերը: «Բազմահանճար իմաստիւք առլցեալ, — գրում է Տաթեւացին յիշուած ներբողեանի մէջ, — ընդ ոդեշունչ մատենի՝ յարտաքինսն վարժեալ սոփեստի»: «Ի սմանէ ընթերցումն սուրբ գրոց եւ վարժումն արտաքին կրթութեանց, տեսական իմաստից եւ գործնական արդեանց չարայարութեանց: Ի սմանէ յոքնանկար նորադիծ տառք, եւ երաժշտական եղանակք... Մեկնութիւն հոգեշունչ մատենից... եւ արտաբացումն արտաքին սոփեստից»: Ուրիշ տեղեր Գրիգոր Տաթեւացին[1] իր «վարժապետ» Որոտնեցուն անուանում է «մեծ հռետոր Հայոց», «ազգիս Հայոց մեծ հռետոր»:*

*Այս շնորհալի անձը թողնում է աշխարհիկ կեանքը եւ հաստատուելով Տաթեւի վանքում, որ հնուց նշանաւոր էր եղել իր վարդապետարանով, նա նորից կազմակերպում է այն վանքի դպրոցը եւ ուսուցանում է այնտեղ բազմաթիւ աշակերտների, աշխատելով իր ձեռ բերած բոլոր ուսումը տալ նրանց:*

*Այն ժամանակներում յայտնի է դառնում Նախիջեւանից ոչ շատ հեռու Աստապատի վանքի (Կարմիր վանքի) դպրոցն եւս, ուր ուսուցանում էր «մեծ վարդապետն Սարգիս»: Ունիթոռները հէնց սրա աշակերտների միջոցով անկարգութիւններ են առաջ բերում, ուստի նրանց դէմ կռուելու համար՝ Յովհաննէս Որոտնեցուն, իր աշակերտների հետ միասին Տաթեւից հրաւիրում են Ապրակունիսի վանքը, ուր նա շարունակում է ուսուցանել մինչեւ կեանքի վերջը: Նա մօտիկից զօրեղ ախոյեան հանդիսանալով ընդդէմ Երնջակի եւ Նախիջեւանի ունիթոռների եւ մեծ ժողովրդականութիւն ստանալով՝ արգելք է դառնում կաթոլիկութեան տարածուելուն հայերի մէջ:[2] «Ժողովեաց առ ինքն զբազում աշակերտս յամենայն գաւառաց եւ լուսազարդեալ պայծառացոյց զազգս Հայոց վարդապետօք եւ քահանայիւք». «որ իբրեւ արեգակն փայլէր ընդ ամենայն ազգս Հայոց եւ լուսաւորէր զամենեսեան գիտութեամբ», — գրում է Թովմա Մեծոփեցին:[3] Հետաքրքիր է, որ Ապրակունիսի եւ Աստապատի վանքերի դպրոցները մեծ յաջողութիւն են ունենում եւ հռչակ են վայելում ոչ միայն իրենց երկու վարդապետների շնորհիւ, այլեւ Որոտնեցու աշակերտ եւ Ղրիմեցի Մաղաքիա վարդապետի նիւթական օժանդակութեամբ, որ, ինչպէս գրում է Մեծոփեցին, էր «Ի ծովահայեաց քաղաքէն Ղրիմայ» [հաւանօրէն Կաֆայից, այժմեան Թէոդոսիայից], «յոյժ մեծատան որդի», «շինեաց զվանորայս Հայոց», «վասն զի զերկուց*

---

*1 Գիրք հարցմանց... Գրիգորի Տաթեւացւոյն, Կ. Պոլիս, ՌՃՀԸ=1729, էջ 773. այլեւ Քարոզագիրք, Ամարան հատոր, էջ 721:*

*2 Թովմա Մեծոփեցի, Պատմ., էջ 39 եւ հտ.:*

*3 Անդ, էջ 15 եւ հտ., 55 եւ հտն.:*

վարդապետաց դասատունսն՝ զՅովհաննու եւ զՍարգսին՝ նա պահէր ի չինութեան՝ զԱպրակունեացն եւ զԱստապատին»։[1]

Յովհաննէս Որոտնեցին ուսուցանում էր ոչ միայն բերանացի դասաւանդութեամբ ու քարոզներով, այլեւ գրաւոր աշխատութիւններով. նա գրած ունի դաւանաբանական աշխատութիւններ, մեկնութիւններ, քարոզներ եւ այլն։ Ինչպէս Գայլեձորի վանքի դպրոցում, Որոտնեցու դպրոցում եւս շարունակում էին ուսումնասիրել հին փիլիսոփայական երկերը։ Նրանից մնում են Արիստոտելի, Պորփիրի եւ Փիլոնի գործերի մեկնութիւններ, որ նա արել է, անշուշտ, իր աշակերտների համար։ Նրա անունով կան նաեւ առակներ, որոնցից է եւ հետեւեալը.

«Ասի յառակաց, թէ զաղուէսն բռնեալ կենդանի քերթեցին եւ մին փոքր չափ մորթ ի վերայ գլխին թողին, եւ այնչափ ի վերայ ագոյն եւ ի վերայ ճանկերոյն։ Եւ թողին գնալ։ Յայնժամ մարդիկն տեսեալ՝ ծիծաղէին բարձրաձայն։ Եւ ասէ աղուէսն. «Գեմ աբեղայ ի մէջ հարսանեաց չէմ՝ որ կու ծիծաղիք»։[2]

Որոտնեցին վախճանուել է 1386 թ., ըստ ուրիշների՝ 1388 թ. Ապրակունիսի վանքում եւ այնտեղ էլ թաղուել։ Նրա մահուան առթիւ Մեծոփեցին գրում է. «Ի սոյն աւուրս հանգեաւ [Որոտնեցին] ի Քրիստոս, եւ խաւարումըն եղեւ աշխարհիս Հայոց»։[3] Ահա թէ ինչպէս է անդրադարձել նրա մասին նրա երիտասարդ ժամանակակիցը, նրա աշակերտի աշակերտը։ Եւ նա, Մեծոփեցին, իրաւունք ունէր. «Զի ոչ միայն սով մարմնական տուաւ մեզ, — գրում է նա, — այլ եւ սով հոգեւորական»։ Այդ հոգեւոր սովը վերացնելու համար Որոտնեցու աշակերտները նրա մահից յետոյ տեղափոխւում են զանազան վանքեր. «Մեծն Յակոբ գնաց յերկիրն Արարատեան եւ բնակութիւն իւր արարեալ զսուրբ ուխտն Սաղմոսավանից, որ 20 ամ աշակերտեալ էր Յովհաննու Որոտնեցւոյ։ Եւ վարդապետն Գրիգոր գնաց աշակերտօք իւրովք ի գաւառն Եկեղեաց յԵրզնկայն. եւ այլք աստ եւ անդ ցրուեալ եղեն»։ Սրանցից Յակոբ ու Մխիթար վարդապետները գնում են Ուշտունիք։ Ապրակունիսի վանքում Որոտնեցու ամբիոնը ժառանգում է Գրիգոր Տաթեւացին, որի մասին կը խօսուի ներքեւում։[4]

«Մարմնական սովից» եւ իշխանաւորների բռնութիւններից, ինչպէս եւ նիւթական պակասութիւնից Ղրիմեցի Մաղաքիա վարդապետի եւ Յովհաննէս Որոտնեցու մահից յետոյ, ստիպուած է լինում «մեծ վարդապետն Սարգիս, որ ունէր զսուրբ ուխտն Աստապատու», թողնելու իր վանքը եւ գնալու «ի Հեր քաղաք սակաւ աշակերտօք ի նոյն ամի դառնութեան»։ Նա այնտեղ է անց կացնում «զաւուրս սովոյն դառնութեան», ապա անցնում

1 Անդ, էջ 15 եւ հտն ։

2 Պետ. Մատենադարան, Ձեռ. թիւ 57 (նոր համար), 91 (հին համար)։ Ժողովածու Յովհ. Որոտնեցու երկերից, Լուծմունք, գիրք պարապմանց, առակներ (160-րդ էջից)։ Առակներից յետոյ (էջ 172) յիշատակարան. գրիչը՝ Ռըստակէս Սեբաստացի. հաւաքած է «ի լուսաւոր բանից տեառն իւրեանց եւ վարժապետին Յովհաննու Որոտնեցւոյ»։ Առակների մի մասը կայ Վարդանայ առակների մէջ։— Հաղորդեց ՀՍՍՌ Գիտ. Ակադ. Գրականութեան Ինստիտուտի գիտ. աշխատակից Վիգէն Խեչումեան։

3 Անդ, էջ 15։

4 Անդ, էջ 33։

է Քաջբերունեաց գաւառը եւ, տեղի եպիսկոպոսի սիրալիր ընդունելութեամբ, հաստատւում է «ի մայրաքաղաք վասն Սուխարայ, որ այժմ Խարաբաստոյ վանք կոչի»: «Եւ նստաւ յաթոռ վարդապետութեան: Եւ ժողովեցան առ նա բազումք ի դըրոց աշակերտաց եւ ի կրօնաւորաց եւ յուսումնասիրաց աւելի քան 60 կարգաւորք եւ ուսումնականք: Եւ ուսոյց զամենայն ծովեզերս Վասպուրական գաւառիս ուսմամբ եւ գիտութեամբ»:[1] Նա այստեղ գործում է 1389—1402 թուականը: Նրա մահից յետոյ նոյն տեղում մեծ աջողութեամբ ուսուցանում է «պատկառելի քաջ վարդապետն», որ սակայն «ի հալածմանէ անօրինաց» ստիպուած է լինում իր աշակերտների հետ գնալու Տոսպ երկիրը, Սալնապատի վանքը, ուր եւ վախճանւում է 1406 թ.:

Յիշենք եւ Արճիշոյ գաւառի Մեծոփայ վանքը, որ նշանաւոր է հանդիսանում Յովհաննէս անունով մի ուսումնասէր կրօնաւորի աշխատութեամբ:[2] Նա այդ վանքում սովորելուց յետոյ՝ ցանկանում է աւելի բարձր ուսում առնել եւ վարդապետական աստիճան ստանալ: Եւ որովհետեւ «ոչ գոյր վարդապետ ի ծովեզերս Վասպուրականի», նա մի քահանայի հետ գնում է Յովհաննէս Որոտնեցու մօտ՝ տասներկու տարի աշակերտում է նրան: Որոտնեցին 1386 թ. մտադրւում է նրան վարդապետական իշխանութիւն տալ, բայց յանկարծակի հիւանդանում եւ վախճանւում է, մեռնելուց առաջ պատուիրելով իր աշակերտ Գրիգոր Տաթեւացուն՝ Յովհաննէսին վարդապետական աստիճան տալ: Այդպէս էլ լինում է: Յովհաննէսն այնուհետեւ վերադառնալով իր հայրենի երկիրը՝ ծաղկեցնում է Մեծոփայ վանքը դպրոցով ու շինարարութեամբ. նա յաջողում է նոյնիսկ մի եկեղեցի շինել այնտեղ եօթ դժուար տարիների ընթացքում՝ 1402—1409 թուականների մէջ. «Եւ սկիզբն արար շինութեան սուրբ եկեղեցւոյն յաւուրս Զաղաթային [այսինքն՝ Լանկթամուրի օրով 1402 թ.], յորմէ ամենայն եկեղեցիք Հայոց ի հիմանէ քակեալ լինէին»:[3]

Այսպէս՝ մեծ խեղճութեան ու տագնապի, նեղութեան ու կողոպուտների, հալածանքների ու կոտորածների, անգամ Լանկթամուրեան աւերմունքների օրերին կային դեռ վարդապետներ, մեծ մասամբ Յովհաննէս Որոտնեցու աշակերտները, որոնք անսպառ եռանդով, ամէն տնտեսական զրկանքներ կրելով, ճիգեր էին անում լուսաւորութեան ճրագը վառ պահելու մեր վանական դպրոցներում: Նրանք պահում էին բազմաթիւ աշակերտների խմբեր, երկար տարիներ, նոյնիսկ տասնամեակներ սովորեցնելով նրանց ոչ միայն Հայոց եկեղեցու մէջ ընդունուած ուսմունքը, այլեւ արտաքին գիտութիւնները, որքան կարողացել էին իրենք ձեռք բերել: Եւ հեշտ չէր այն ժամանակ ուսում առնելը. վարդապետները յաճախ նեղւում ու հալածւում էին, եւ ստիպուած էին լինում մի տեղից մի ուրիշ տեղ թափառելու, անգամ փախչելու իրենց բազմաթիւ աշակերտների խմբերով: Բայց եւ այնպէս նրանց մեծ ճիգերը ապարդիւն չեն մնում. Նրանք կարողանում են Հայաստանի որոշ թուով անկիւններում, գոնէ ժամանակաւորապէս, կուլտուրական եւ եկեղեցական անկման առաջն առնել:

1 Թովմա Մեծոփեցի, Պատմ., էջ 35 եւ հտն.:
2 Անդ, էջ 52—61:
3 Անդ, էջ 58:

4· Գրիգոր Խլաթեցի Ծերենց:—*Այդ վանքերում աւանդուած առարկաների մէջ եղել է եւ գրչութեան արուեստը, որով գրքեր արտագրելով՝ բազմացնում էին: Այս նկատմամբ կարելի չէ չյիշել այստեղ Գրիգոր Ծերենցին, «որդի հաւատարիմ առն Աստուծոյ ծերի, գոլով ի քաղաքէն Խլաթայ, յաշակերտացն մեծին Սարգսի՝ հոգեւոր հարազատ եւ համշիրակ»: Նա չի նստում Սարգսի վանքում (Սուխարայ ուխտ), այլ Բզնունեաց երկրի Արծկէ քաղաքի Ցիպնա կոչուած վանքում: Նա պարապում է գրչութեամբ· «Տիւ եւ գիշեր գիրս գրէր, եւ զամենայն աղքատս կերակրէր··· եւ զամենայն վարդապետս եւ կարգաւորս ի նոյն յորդորէր··· Եւ 50 ամ գիրս գրեաց տիւ եւ գիշեր անհանգիստ տքնութեամբ»:*[1]

*Նա ներկայանում է եւ իբրեւ գրական աշխատող· «Բազում նրգս գանձուց եւ տաղից յիշատակ թողեալ ինքեան»: Գրել է թղթեր զանազան մարդկանց ուղղած: Նրանից մնում է «Յիշատակարան աղէտից», որ ոտանաւորով յօրինած մի պատմութիւն է Հայաստանի 1386—1422 թ· թշուառութիւններին, որոնց ժամանակակից եւ ականատես է եղել ինքը:*[2] *Բացի այդ՝ նա «զերեց ժամանակաց պատմութիւնս ի լոյս ածէր ի հարցանելն եւ ի պատասխանատուութիւնս, եւ զգիրս սրբոց մարտիրոսաց եւ վկայիցն որ կոչի Յայսմաւուրց՝ սակաւաբան եւ անվթար չարադրեալ ի սրբոց հնոց եւ նորոց վարդապետացն՝ ի լոյս էած»: Իր կազմած «Յայսմաւուրք»-ի մէջ նա աւելացրել է նաեւ իր օրով նահատակուածների պատմութիւնը: Այս անխոնջ աշխատաւորին իրեն էլ 1425 թ· աւելի քան 75 տարեկան հասակում չարչարելով նահատակում են «պիղծ ազգն Մարաց», — ասում է Մեծոփեցին եւ պատմում ուրիշ երեք վարդապետների նահատակութեան մասին եւս: Ոչ միայն դրասիրութեան, այլեւ ուսումնասիրութեան մի տիպար է եղել այս վարդապետը: Երբ Գրիգոր Տաթեւացին 1409 թ· Տաթեւի վանքից Մեծոփայ վանքն է տեղափոխւում եւ դասաւանդում է աւելի քան 80 հոգու, Գրիգոր Խլաթեցին, չնայելով իր անցած տարիքին, մօտ վաթսունամեայ հասակին, Արծկէի վանքից գալով այնտեղ՝ ունկնդիր է լինում հռչակաւոր գիտնականի դասախօսութիւններին:*[3]

5· Գրիգոր Տաթեւացի:— *Տաթեւեան վարդապետարանի բարձրագոյն ուսումը եւ ժողովրդականութիւնը պահւում եւ աւելի եւս մեծանում է շնորհիւ Գրիգոր Տաթեւացու, որ մի աւանդապահ, գործունեայ եւ բազմագէտ ուսուցիչ է եղել: Ըստ Առաքել Սիւնեցու՝ նա «ընթերցման էր պարապօղ, աշակերտաց էր մարզօղ··· ծածուկ բանից բացայայտօղ»: «Ի գիշերի խոկմամբ զիմաստս գրոց հաւաքէր, եւ տուընջեան աշակերտացն պատմէր»: Արտաքուստ էլ նա գեղեցիկ է եղել, այնպէս որ երբ ամէն կողմից աշակերտելու էին գալիս նրա մօտ,— ասում է Առաքել Սիւնեցին,*[4]*— «նախ ի տեսն ուրա-*

---

1 *Թովմա Մեծոփեցի, Պատմութիւն, էջ 41 եւ հտն·:*

2 *Յիշատակարան աղէտից Գրիգորի Խլաթեցւոյ՝ պատմական վիպասանութիւն, Վաղարշապատ, 1897. հրատ. Գր. Խալաթեան. արտատպութիւն «Արարատ» ամսագրից, 1897, էջ 176–192:*

3 *Թովմա Մեծոփեցի, Պատմ., էջ 52:*

4 *Առաքել վարդապետի ասացեալ Ներբողեան առ քաջ հռետորն... Գրիգոր Տաթեւացի... Տպուած է Գր. Տաթեւացու Քարոզների Ամառան հատորի վերջում, էջ 716 եւ հտն.:*

*խանային, եւ ապա խօսիւքն ցնծային։ Նախ ի պատկերին գեղեցկութիւնն խնդային, եւ ապա ընդ բարբառոյն համեղութիւնն զուարճանային»։*

*Նրա հայրն արճիշեցի էր, մայրը՝ փարպեցի, ինքը ծնուած էր մօտ* 1446 *թ.*[1] *Վայոց Ձորում, ուր բնակւում էին ծնողները։ Երկար տարիներ, ըստ Մեծոփեցու* 28 *տարի, աշակերտել էր նա Յովհաննէս Որոտնեցուն, որից եւ ստացել էր վարդապետական իշխանութիւնը Երզնկայում, իսկ ծայրագոյն վարդապետական գաւազանը՝* 1387 *թ. Ապրակունիսում։ Որոտնեցին, վախճանուելուց առաջ* (1388 *թ.*), *— ասում է Մեծոփեցին,*[2]*— «կոչեաց զմեծ վարդապետն [Գրիգոր] եւ զընկերակիցսն նորա, օրհնեաց զնոսա... եւ եդ զԳրիգոր ամենեցուն գլուխ եւ ուսուցիչ»։ Ինչպէս երեւում է, Գրիգորն արդէն յայտնի է եղել իր գիտութեամբ, եւ նրա հոգեւոր եղբայրներն էլ ցանկացել են, որ նա՛ լինի Որոտնեցու ժառանգը. «Եւ յաջորդեաց յաթոռ սորա [Յովհաննու] քրիստոսածաւալ աղբիւրն եւ անմուտ արեգակն՝ երկրորդ լուսաւորիչն Գրիգորիոս վարդապետն Տաթեւացի հաւանութեամբ եւ կամօք մեծ վարդապետին Սարգսի...*[3] *եւ համշիրակ եւ եղբարց իւրոց՝ Յակոբայ Սաղմոսավանիցն Արարատեան գաւառին եւ Գէորգայ Երզնկացւոյ, եւ ամենայն աշակերտաց գնդին» եւ ուրիշների, որոնք, ինչպէս տեսել ենք, գնում են զանազան վանքեր։*

*Գրիգորը, սակայն, երկար չի մնում Ապրակունիսի վանքում, երեւի նոյն պարագաները — սովը, տնտեսական պակասութիւնը, որ ստիպում են Սարգիս վարդապետին հեռանալու Աստապատից, նոյն ժամանակում հարկադրում են եւ Գրիգորին թողնելու Ապրակունիսը եւ իր աշակերտների հետ գնալու Տաթեւ, «Ի տուն Օրբելեանց առ իշխանն Սմբատ՝ որդի Իւանէի՝ թոռն Բուրթէլի»։ Սմբատ իշխանը, որ Յովհաննէս Որոտնեցու եղբայրն էր, հաւանօրէն կանչել էր նրան՝ իր մօտ իր վանքում ուսուցանելու։ Այդպէս էլ անում է Գրիգորը. Տաթեւի վանքում ժողովւում է ամէն կողմերից բազմաթիւ աշակերտներ եւ ամէն եռանդով պարապում նրանց հետ* 1390—1409 *թ.։*

*Ըստ Գայլեձորի վանքի աւանդութեան, ինչպէս Որոտնեցին՝ Տաթեւացին եւս հմուտ էր ոչ միայն հին եկեղեցական եւ հայկական գրականութիւններին, այլ ուսումնասիրել էր նաեւ յունական փիլիսոփաների գործերը, ինչ որ Արեւմուտքում եւս անում էին, եւ ծանօթ էր ունիթոռների մէջ ընդունուած գրականութեանը։ Հաւանօրէն, ինչպէս կարծում են, նա գիտէր նաեւ լատիներէն լեզուն։ Իր դպրոցում նա սովորեցնում էր իր իմացածը, այն է՝ Հայոց գրականութիւն, Հին եւ Նոր Կտակարանների մեկնութիւն, սուրբ հայրերի գրուածքներ, «զգիրս արտաքին իմաստասիրացն», «լուծմունք արտաքին գրոց»,*[4] *որ են Պղատոնի, Արիստոտելի, Փիլոնի եւ Պորփիրի գրուածքները եւ նրանց բացատրութիւնը։ Բացի այդ՝ աշակերտներին վար-*

*1 Մ. Օրմանեան, Ազգապատում, էջ 1981. Թուականները բերւում են մեծ մասամբ ըստ Օրմանեանի հաշիւների։*

*2 Թ. Մեծոփեցի, Պատմութիւն, էջ 17. 33 եւ հտ., 56։*

*3 Աստապատի վանքի ուսուցիչը, որ յետոյ, ինչպէս տեսել ենք, տեղափոխւում է Խառաբաստա վանքը։*

*4 Թ. Մեծոփեցի, Պատ., էջ 51, 34։*

ժեցնում էին նաեւ երաժշտութեան, ճառասացութեան եւ գրչութեան արուեստներին:

Գրիգորի համբաւի վրայ ամէն կողմից հաւաքւում են նրա մօտ աշակերտներ, ոչ միայն Սիւնիքի զանազան տեղերից, այլեւ Եկեղիքից, Արարատից, Ջուղայից, Աստապատից, Շամախուց, Կապանից, Գանձասարից, Փայտակարանից, Թաւրիզից եւ այլն: Գալիս են նաեւ Արճէշի կողմերից: Ինչպէս արդէն տեսել ենք, Սարգիս վարդապետի մահից յետոյ՝ նրա աշակերտներին սովորեցնում էր Վարդան վարդապետը, որ մի չորս տարի յետոյ վախճանւում է: «Եւ որք մնացեալ աշակերտաց նորա, — գրում է Մեծոփեցին, — թողեալ գնացաք ի գաւառն Սիւնեաց առ մեծն Գրիգոր վարդապետին ամենայն Հայոց... Որ եւ նա ուրախացեալ յոյժ՝ սիրով ընկալաւ զմեզ իբրեւ զորդիս իւր սիրելի հոգեւոր եւ բաղձալի. զի հայր նորա էր ի գաւառէն Բաջբերունեաց ի քաղաքէն Արճիշոյ»: «Եւ երկոտասան եղբարք, աշակերտք մեծին Սարգսի, մեք էաք որ յետ մահուան նորա գնացաք յաշակերտութիւն նորա», շարունակում է Մեծոփեցին, յիշելով իր ընկերների անունները՝ վերջին տեղում յարելով «եւ ես անարժանս Թովմա»: Տաթեւացին ժողովում է իր աշակերտներից շատերին եւ վաթսունից աւելի քահանաներ, ինչպէս եւ Արճէշի կողմից եկած տասներկու կրօնաւորներին եւ սկսում է «ուսուցանել զգիրս արտաքին իմաստասիրացն», ապա եւ ուրիշ գրուածքներ: Նա իր գործը կատարում էր դժուար ժամանակում, երբ «ոչ գոյր անդորրութիւն եւ ոչ հանգիստ խաղաղութեան վասն անօրինաց չարութեան»: «Բռնաւորն Յուսուփ, տէրն Թաւրիզու, էառ զՍրոտն ի Սմբատայ իշխանէ, վասն բարեխօսութեան նոցա եկն. եւ նա ոչ լուաւ աղաչանաց վարդապետին»: Այդ Յուսուփը Ղարա-Ղոյունլի Ղարա-Յուսուփն է, որ Լանկթամուրի մահից յետոյ վերականգնել էր իր տէրութիւնը (1405—1420 թ.): Այն ժամանակ Գրիգոր Տաթեւացին, «ի հալածմանէ անօրինաց», առնելով իր աշակերտներին, 1409 թ. տեղափոխւում է Արճէշի գաւառը, Մեծոփայ վանքը. վանահայր Յովհաննէս վարդապետը սիրով ընդունում է նրանց: Հաւաքւում են զանազան կողմերից շատ ունկնդիրներ եւս, եւ աւելի քան ութսուն աբեղայ, եւ Տաթեւացին մի ամբողջ տարի պարապում է նրանց հետ, մեկնելով Ս. Գրքի հետ «եւ զգիրս գրչութեան երկոքեան վարդապետացն Գէորգայ Լամբրոնացւոյն եւ Արիստակէսի»: Այստեղ էլ, սակայն, նա չի կարողանում հանգիստ կատարել իր ուսուցչական գործը. նրա աշակերտները մի տարի յետոյ՝ «գաղտագողի առնում են նրան», այսինքն փախցնում են, գնում Արարատեան գաւառը, «առ մեծ վարդապետն Յակոբ Սաղմոսավանից՝ հոգեւոր հարազատն իւր: Եւ մեք ամենեքին վարդապետք եւ աշակերտք գնացաք առ նա», աւելացնում է Մեծոփեցին: Հետները գնում են եւ ուրիշները, որոնց թւում եւ Մեծոփայ վանահայրը՝ Յովհաննէս: Յայտնի չէ, թէ ո՛րքան է մնում Տաթեւացին Սաղմոսավանքում: Տաթեւից գալիս են նրա աշակերտները եւ քեռորդին, եպիսկոպոս Առաքել Սիւնեցին, վերադարձնում են նրան Տաթեւի վանքը, բայց նա այլեւս երկար չի ապրում. հիւանդանալով շուտով վախճանւում է 1410 թ., ըստ ուրիշների՝ 1414 թուականին:[1]

1 Թովմա Մեծոփեցի, Պատմութիւն, էջ 34, 51 եւ հտ., 59 եւ հտն.:

Ահա իր ժամանակի մեծ վարդապետը, որ չնայելով դժուարութիւններին՝ եռանդով անվհատ շարունակում է իր ուսուցչական գործունէութիւնը, պարապելով բազմաթիւ աշակերտների հետ, որոնք իրենց «վարժապետի» հետ աստանդում էին, փախչում Հայաստանի այս կողմից այն կողմը: Մեծոփեցին, ցաւօք, չի յայտնում, թէ ինչպէս եւ ում օգնութեամբ էին ապրում այն ուսումնասէրների բազմութիւնները: Անշուշտ օգնում էին առանձին անհատներ. վերեւում տեսանք «մեծատան որդի» Ճգնազգեաց Մաղաքիա վարդապետի նիւթական օժանդակութիւնը վանական դպրոցներին: Մի նոյնպիսի օգնութիւն յիշում է եւ Գրիգոր Տաթեւացին իր «Ամարան հատորի» վերջում գրուած «Յիշատակարանի» մէջ (էջ 721): Նա իր ուսուցիչ Յովհաննէս Որոտնեցուն եւ ուրիշներին յիշելուց յետոյ՝ ասում է.

Եւ զՀարապետ միայնական,
Որ նա եղեւ մեզ օգնական,
Հոգալ ըզպէտըս մարմնական
Աշակերտաց մերոց լըրման,
Յիշման ի տէր լիցի արժան:

Երեւի վանահայրերն էլ էին հոգում նրանց մարմնական կարիքները: Բայց անշուշտ այդ չէր այնքան նեղութիւն պատճառում այն սակաւապետ մարդկանց, որքան իշխողների կեղեքումը եւ խռովայոյզ վիճակը, որ արգելք էր լինում նրանց իրենց սիրած ուսումով պարապելու: Գրիգոր Տաթեւացին էլ ոչ թէ նիւթական պակասութեամբ էր մտահոգուած, այլ, ինչպէս ինքը գրում է,[1] իրենց ակամայ կրած չարչարանքներով, իրենց ստրկական ծառայութեամբ եւ որ իրենք իսկապէս ստրկացած են եղել խստասիրտ տէրերի ձեռին: Նա խնդրում է, որ Ս. Գրիգորի բարեխօսութեամբ Աստուած ազատի իրենց «յաշխարհակալէն յըստ հոգւոյ գերողէն եւ յըստ մարմնոյ նորին արբանեկաց չարաչար տանջողաց»:

Գրիգոր Տաթեւացու համբաւը մեծ է եղել ոչ միայն նրա սրբակրօնութեան եւ ուսուցչական գործունէութեան համար, այլեւ նրա բազմաթիւ գրական աշխատութիւնների: Դրանցից այստեղ կը յիշենք միայն երեք մեծ հատորները, որոնք տպագրուած են դեռ 18-րդ դարում:

Նրա «Հարցմանց գիրքը»[2] երկուսն են՝ մեծ եւ փոքր: Վերջինիս վերնագիրն է՝ «Հարցմունք Գէորգ վարդապետի եւ լուծմունք Գրիգորի նորին հարազատին»:[3] Այս Գէորգ վարդապետը վերեւում յիշուած Գէորգ Երզնկացին է, Յովհաննէս Որոտնեցու աշակերտներից մէկը, որ նոյնպէս պարապել է գրականութեամբ՝ գրելով լուծմունք ու մեկնութիւն: Տաթեւացին մանրամասն պատասխանել է նրա 14 հարցումներին «շրջագայութեամբ տոմարի Հայկազեան սեռից հարիւրից կրկնակի քառից եւ վեցեակ վեցից», որ է՝ 836+551=1387 թ.:

1 Գիրք քարոզութեան որ կոչի Ամարան հատոր, արարեալ... Գրիգորի Տաթեւացւոյն, Կ. Պոլիս, ՌՃՂ (=1330+551=1741), էջ 421, Ս. Գրիգորի քարոզի վերջում:

2 Գիրք հարցմանց... Գրիգորի Տաթեւացւոյն, Կ. Պոլիս, ի թուին Հայոց ՌՃՀԸ (=1178+551=1729):

3 Տպագրուած է նախորդի վերջում, էջ 773—789:

Մեծ «Հարցմանց գիրքը», ինչպես հեղինակը յայտնում է վերջում դրուած «Յիշատակարանի» մէջ, աւարտել է, «ի շրջագայութեան Հայկազեան տօմարի ՊԽԶ թուի», որ է՝ 846+551=1397 թուականին: Գրել է «ի խնդրոյ ումեմն բանասիրի Ատոմի», «բազում միջոցաւ եւ փախստեամբ ի տեղիս»: Սկզբի «Յառաջաբանի» մէջ (էջ 4 եւ հտ.) յայտնում է, թէ գրել է «ի խնդրոյ ուրումն աշակերտի Ատոմի», այլեւ թէ իր աշակերտներն էլ շատ անգամ աղաչել են իրեն «զխնդիրս ոմանս լուծանել»: Բացի այդ՝ աւելցնում է նա, «Զի աշխատութիւն իմ մի միայն լիցի ներկայիս լսելոյ, հող տարայ եւ յետնոցն գրչաւ աւանդել»: Ուրեմն չի բաւականացել բերանացի դասախօսելով, իր դասախօսածն աւանդել է եւ գրաւոր: Դա հարց ու պատասխանով յօրինուած մի դասագիրք է իսկապէս այն բոլոր խնդիրների մասին, որ հետաքրքրելիս են եղել այն ժամանակի հարցասէրներին: «Յիշատակարանի» մէջ (էջ 772) յայտնում է, թէ «է՛ ինչ ի սմա հաւաքեալ ի լուսաւոր բանից վարդապետաց սրբոց ըստ գրոյն կամ իմացուածոյն»: Օգտւում է եւ արտաքին իմաստունների կարծիքներից: Կայ բան էլ, որ իրենից է գրել: «Զոր եւ ես զօրէն մշակաց բազմահաւաք պտղոց. կամ փունջ մի անուշահոտ բազմերանգ ծաղկանց, կամ չնչին թռչնոյ զխորիսխ մեղու, կամ որպէս զլոմայս արտոյն տառապեալ գոյիւ աղերս [=պարգեւ] ընծայեցի ի գանձանակ ճոխութեան ձերդ մեծութեան, իմաստասէր եւ ճշմարտասէր եկեղեցոյդ Հայաստանեայց եւ ընթերցասէր մտաց»:

«Յառաջաբանի» մէջ խօսում է իր կիրառած տրամաբանական մեթոդի մասին: Դրանից առաջ, գրքի սկզբում, դրել է ամբողջ աշխատութեան «մեծ ցանկը» — քառասուն գլուխ, վերջից քառասունմէկերորդը՝ «Հարցմունք Գէորգայ»: Այդ ցանկի գլխակարգութիւնից արդէն իմացւում է գրուածքի ամբողջ բովանդակութիւնը — «գլխաւոր բանք»: Յետոյ էլ ամբողջը բաժանում է տասն հատորի, եւ ամէն հատորի սկզբում դնում է նոյն հատորի ցանկը՝ պրակների բաժանած, եւ ապա ամէն մի պրակն ունենում է իբրեւ մի մաս, որի վերնագրի մէջ յայտնւում է, թէ «մեծ ցանկի» որ կէտին է համապատասխանում, օրինակ՝ «գլուխ Դ. ի մեծ ցանկէն եւ առաջին պրակ երկրորդ հատորիս. վասն թիւրութեան հերձուածողաց»: Եւ վերջապէս՝ անհրաժեշտ է համարել այդ մեծ գրքի ամէն մի վերին լուսանցքում էլ դնել հատորը, պրակը, բովանդակութիւնը. օրինակ, «Հատոր Բ. պրակ Ա. վասն հերձուածողաց»: Այսպէս ամէն միջոցներ ձեռք է առել, որպէսզի, ասում է նա, դիմելով ընթերցողին, «դիւրաւ գտցես զամենայն զոր եւ խնդրեսցես առանց չփոթելոյ ի կարգի իւրեանց»: Այս ամէնը, հարկաւ, մի լոկ արտաքին ձեւ է, բայց այդ միայն վկայում է, թէ որքան, — մեր ժամանակի համար անգամ նախանձելի,— մեծ հոգացողութեամբ է վերաբերուել նա դէպի իր ընթերցողները, եւ որքան մեծ արժէք է տուել նա իր գործադրած նիւթի բաշխմանը եւ դասաւորութեանը:

Այստեղից եւ ընդհանրապէս «Հարցմանց գրքի» բովանդակութիւնից երեւում է, որ շատ կարդացած, շատ մտածած մարդ է եղել Գրիգորը, լաւ ծանօթ տրամաբանութեանը, կշռադատող եւ համեմատող, դասաւորող, տեսակաւորող եւ ուսանողների դիւրութեան համար խորհող: Նոյն ոգին երեւում է եւ նիւթի բացատրութեան կամ շարադրութեան մէջ: Զգտելով հար-

ցումներին ըստ կարելոյն լիակատար պատասխանել, բերում է նոյն խնդրի մասին զանազան վկայութիւններ ու պատճառներ, բազմաթիւ կարծիքներ ու լուսաբանութիւններ, եւ որպէսզի ընթերցողի համար չփոթում առաջ չգայ, սովորաբար դիմում է թուարկութեան — առաջին, երկրորդ եւ այլն, թուարկութիւնները հասցնելով երբեմն մինչեւ 30-ի, եւ աւելի եւս: Որպէսզի իր գործը թերի եւ անբաւարար չլինի, նա բերում է նաեւ հակառակորդների կարծիքները եւ ընդդէմ պատասխանները: Օրինակ՝ տասներորդ հատորի մէջ շատ երկար խօսելով «Վասն հանդերձեալ աշխարհին», մերժում է կաթոլիկների ընդունած «քաւարան» ասածը, եւ նոյն հատորի ԺԳ. պրակ դընում է «Վկայութիւնք հակառակացն եւ պատասխանիք նոցին» (էջ 695), այսպէս սկսելով. «Այլ եւ տեսցուք զվկայութիւնս հակառակացն եւ յարմարեսցուք զպատասխանիսն, զի առձեռն պատրաստ լիցի»:

«Հարցմանց գրքի» խնդիրները, բնականաբար, ամենամեծ մասով կրօնական են, «Ընդդէմ նոցա որք զբախտն եւ զհարկն ասեն», այսինքն ճակատագրի հաւատքն ընդունողների դէմ. «ընդդէմ հրէից», «ընդդէմ արիոսեանց», «ընդդէմ հոգէմարտիցն», «ընդդէմ Նեստորի եւ երկաբնակացն», «Աստուածաբանութիւն ըստ Դիոնէսիոսի» եւ այլն: Խօսում է եւ հրեշտակների եւ դեւերի, մեղքերի եւ առաքինութիւնների, մարդու հոգու եւ բազմաթիւ ուրիշ նիւթերի մասին: Հետաքրքիր է «մեծ ցանկի» ԺԵ. գլուխը՝ կամ հինգերորդ հատորը. «Վասն կազմութեան մարդոյն», որի մէջ բերում է ոչ միայն մարդակազմութեան, այլեւ բնախօսութեան վերաբերեալ գիտելիքներ, տալով ժամանակին հետաքրքրող հարցերի պատասխանները: Օրինակ՝ Ս. Գրքի մէջ պատմւում է, թէ մարդը հողից է ստեղծուել. ուստի առաջին հարցումն է. «Վասն է՞ր մարդն ի հողոյ ստեղծաւ»: «Պատասխանի՝ Ասեմք վասն բազում պատճառի: Նախ՝ որպէս ասացաւ ի վերոյ, հողն ունի զայլ գ [=երեք] տարերքն խառնեալ. յորժամ ի հողոյ ասէ՝ [Ս. Գիրք] իմանալի է զդ [զչորս] տարերս»: Ուրեմն՝ մարդն իսկապէս չորս տարրներից է կազմուած եւ ոչ թէ միայն հողից: Ապա բերում է թուարկութեամբ ինն ուրիշ պատճառներ եւս հողից ստեղծուելու, օրինակ՝ «Իններորդ՝ զի մայր մեր հողն է, ե՛ւ սեղան, ե՛ւ տեղիք, ե՛ւ գերեզման, թէպէտ եւ այլ տարերքն են մեզ ազգականք, այլ մեք ի մօրէ՛ ծնանիմք»:[1]

Կան դատողութիւններ եւ ապացոյցներ, որոնք շատ միամիտ են. բայց չպէտք է մոռանալ, որ հեղինակն ապրել է 14-րդ դարում: Այսու հանդերձ՝ նա եղել է մեծ մտածող, ուժեղ տրամաբանող, եւ նրա երկերի մէջ կան նաեւ իր ժամանակի համար շատ լուսաւոր մտքեր եւս: Այսպէս, օրինակ, ճակատագրի հաւատքը հերքելիս՝ իբրեւ մի երրորդ հիմք դնում է հետեւեալը (էջ 8 եւ հտ.). «Երրորդ՝ եթէ զոր ինչ ասէաք եւ ճշմարիտ էր, յայնժամ բանս մեր ոչ հետեւէր իրացն, այլ իրն բանիցն հետեւէր. որ է՛ յայտնապէս սուտ. զի մնացականն ոչ մնացականին ո՛չ հետեւի: Այլ անդրադարձեալ [=ուրիշ կերպ պատասխանելով, այլ կերպ ասած]. զի հետքն՝ ընթացից ոտիցն հետեւին, եւ ոչ ոտքն հետոցն. եւ ստուերն՝ մարմնոյ, եւ ոչ մարմինն՝ ստուերին:

---

1 Գրիգոր Տաթեւացի, Գիրք հարցմանց, էջ միթ=229:

«Ապա ուրեմն յայտ է, զի բանն զիրն ո՛չ կարէ ճշմարտել. այլ իրն զբանն ճշմարտէ, յորժամ գոյ կամ ո՛չ գոյ...»: Այսպէս ուրեմն՝ «բանը», խօսքը, մտածութիւնն է հետեւում իրականութեանը, ոչ թէ իրականութիւնը՝ խօսքին, որ մտածութեան արտայայտութիւնն է:

Աւելորդ չէ այստեղ դնել կաթոլիկ եւ հայկական աստուածաբանութիւններին հմուտ անձի կարծիքը:[1] «Տաթեւացին անկասկած պէտք է դասել ժամանակին գիտնականներուն շարքը: Հարցմանց գիրքը, թէ ոճով եւ թէ պարունակութեամբ համահաւասար կերպարան եւ արժէք ունի միջին դարու հռչակեալ լատին աստուածաբաններուն, Թովմաս Ակուինացիի, Ալբերտոս Սուաբեցիի, եւ սկովտոս Երինացիի (Thomas Aquinatensis,[2] Albertus Sueviensis,[3] Scotus Erigena[4]) գործերուն հետ, հանդիսակչիռ առաւելութիւններով եւ համանման թերութիւններով: Անկէ կը հետեւցնենք թէ ոչ միայն լատիներէնի հմտութեամբ, այլեւ լատիններուն ընդունած ձեւերով ուզած է մաքառիլ անոնց դէմ: Մինչեւ իսկ կրնանք աւելցնել, թէ Հարցմանց գիրքին մթին բացատրութիւններ կրնան լուսաբանուիլ Սկոլաստիկեաններուն լատիներէն դարձուածներուն համեմատութեամբ»: Սրանից, սակայն, չպէտք է հետեւցնել, թէ Տաթեւացին լատինաբան հայերէնով գրած լինի. նա յորինում է մաքուր հայերէնով: Բայց զարմանք չէ, որ այդպէս գրելով հանդերձ՝ նա մէկ մէկ գործածած լինի օտարաբանութիւններ, յատկապէս երբ իր կաթոլիկ հակառակորդների կարծիքներն է մէջ բերում:

Գրիգոր Տաթեւացու երկրորդ մեծ աշխատութիւնն է «Քարոզգիրք»ը, երկու մեծ հատոր. առաջինը՝ «Ձմերան հատոր»,[5] երկրորդը՝ «Ամարան հատոր»:[6] Այս երկրորդի վերջում (էջ 720 եւ հտ.) կայ հեղինակի յիշատակարանը, որից իմացւում է, որ նա քարոզների գիրքը կազմել է «ի սորաասուղեալ ժամանակի ի թուաբերութեան մեծի յուլթն հարիւր յիսուն եւ վեցերորդի ամի» (856+551=1407): «Ձմերան հատոր»-ն, ասում է, պարունակում է ճԿ (=160) քարոզ, եւ «Ամարան հատորը»՝ ճՁԴ (=184): Նա յայտնում է, որ քարոզների մէջ կան այնպիսիները, որոնք իրենը չեն, այլ ուրիշներից են առնուած. ուստի վերնագիրների մէջ դրուած են «նորին» եւ «յայլմէ», «զի յատկացին ի միմեանց, եւ մի՛ զողացեալ թուեցին տխմարաց մտաց»: Ուրիշներից առած քարոզները բաւական թիւ են կազմում, հեղինակների անունները չի յիշում սովորաբար: Առաջին հատորի (էջ 15) երկրորդ քարոզն է «Եռամեծի Յօհաննու Որոտնեցւոյ տիեզերալոյս բարունապետի...»:

Այստեղ, հարկաւ, չպիտի խօսենք քարոզների բովանդակութեան մասին, որ շատ բազմազան է, ընդհանրապէս բարոյակրթական եւ ուսուցական

1 Մ. Օրմանեան, Ազգապատում, էջ 2029:

2 13-րդ դարի ամենից գիտուն եւ մեծ աստուածաբանը:

3 13-րդ դարի սքոլաստիկ փիլիսոփայ եւ աստուածաբան:

4 9-րդ դարում, սքոլաստիկայի հիմնադիրներից մէկը:

5 Գիրք Քարոզութեան, որ կոչի Ձմերան հատոր, արարեալ... Գրիգորի Տաթեւացւոյն, Կ. Պոլիս, թուին ՌՃՁԹ (=1189+551=1740):

6 Գիրք Քարոզութեան, որ կոչի Ամարան հատոր, արարեալ... Գրիգորի Տաթեւացւոյն, Կ. Պոլիս, թուին ՌՃՂ (=1190+551=1741):

ուղղութեամբ: Խօսում է, օրինակ, սիրոյ, խոհեմութեան, արիութեան եւ գործի, հեղգերի, երկրագործների մասին, այլեւ քնի, «հալալ ամուսնութեան», «վասն արդար վաճառաց եւ կշռոց», եկեղեցու խորհուրդների եւ այլն եւ այլն: Մեծ տեղ են բռնում նաեւ սրբերի ու տօների վերաբերեալները:

Տաթեւացու «Քարոզը», որ իբրեւ տեսակ, փոխանակել է հին «ճառին» եւ «ներբողեանին», չունի վերջիններիս պերճ ու պաճուճած եւ եռանդալից ձեւը, ընդհանրապէս սառն ու ցամաք է, պարզուկ ու հասարակ, խօսուած լեզուին մօտ, բայց ոչ միջին հայերէնով: Իշխող տոնն է հանգիստ սովորեցրնող ուսուցչի, որ տալիս է լուրջ բացատրութիւններ. ազատ չէ սքոլաստիկ ձեւերից, թուարկութիւններից եւ մեկնութիւններից, որոնք իր ժամանակի մարդկանց համար անհրաժեշտ ու հաճելի են եղել: Առաքել Սիւնեցին չափազանց գովելով իր «մեծ վարդապետ» Գրիգորին՝ անուանում է նրան «մեծ հռետոր», «քաջ հռետոր», «հոգեշարժ լեզուի» տէր: Անշուշտ, նա իր բերանացի քարոզների մէջ աւելի հռետորական շնորհք է ցոյց տուել, քան գրաւորների մէջ: Յովհաննէս Որոտնեցու թաղման ժամանակ ասած Ներբողեանն[1] իսկապէս հարուստ է ճարտասանական ձեւերով — հարցում, բացագանչութիւն, կրկնութիւն նման կազմութեամբ խօսքերի եւ այլն. կան նաեւ պատկերաւոր եւ առատաբան արտայայտութիւններ առանց ճոռոմութեան, տրամագին զգացմունքով եւ անկեղծ սիրով լի մի գեղեցիկ ներբողեան, Սուրբ Գրքից առած նմանութիւններով մի երախտագիտական գովեստ արժանաւոր գործչի:

Բայց ինչպէս էլ լինի, այս շրջանի վարդապետների գլխաւոր երկերը մեծ մասամբ ունեն ոչ թէ գրական-գեղարուեստական արժէք, այլ ընդհանրապէս կուլտուրական: Կարելի չէ, հարկաւ, մեր ժամանակի չափանիշով վերաբերուել նրանց գիտական գրուածքներին ու գործունէութեանը: Առասպելներն ու զրոյցները, սին դատողութիւններն անգամ պարզում են այն դարու ոգին ու հասկացութիւնները, կեանքն ու բարքերը, էլ չենք ասում կան նաեւ բազմաթիւ փայլուն մտքեր ու դատողութիւններ, որոնք այն ժամանակի համար ակնբախ են: Չպէտք է մոռանալ, որ այն մարդիկը տքնել եւ յօրինել են գործնական նպատակի համար — պատրաստել, ըստ իրենց ժամանակի հասկացութեան, գիտուն աշակերտներ, որ ընդունակ լինէին մաքառելու եւ ազգային անկման առաջն առնելու:

Նոյնպիսի գործնական նպատակի համար է յօրինել Գրիգոր Տաթեւացին իր ուրիշ աշխատութիւններն եւս, այսինքն՝ «զԱրիստոտելի գրոց լուծմունսն, զՍտորագրութեանցն, զՊէրիարմէնիասին, եւ զԱռաքինութեանցն. նաեւ զՊորփիւրին զպարապմանց լուծմունքն զՍաղմոսի քաղուածոյն, զԱռակաց քաղուածոյն, եւ զԻմաստութեանն, եւ զԺողովողին... զՅոբայ լուծմունքն, զՅօհաննու աւետարանի քաղուածուն զԼուծմունքն Արիստակիսի եւ Գէորգեայ գրչութեանն... զՔաղուածուն Մատթէոսի աւետարանին, եւ զԵսայեայ քաղուածուն, եւ զՈսկեփորիկն, եւ այլն»:[2]

---

1 Քարոզգիրք, Ամառան հատոր, էջ 711 եւ հտն. «Նորին Գրիգորի Ներբողեան ողբերգաբար ասեալ ի թաղումն տիեզերալոյս վարդապետին իւրոյ Յօհաննու Որոտնեցւոյ» (գլուխ ՃԶԵ):

2 Տես՝ Գիրք հարցմանց. էջ 791. «Յիշատակարան տպեցման Գրքոյս»:

6. Թովմա Մեծոփեցի:— *Քաջբերունեաց դասարից էր սա. սովորել է Մեծոփայ վանքում, նաեւ վերեւում յիշուած Սարգիս վարդապետի մօտ. աշակերտել է, ինչպէս տեսել ենք, Գրիգոր Տաթեւացուն: Նա իր ժամանակի ուսումնասէր ու գործունեայ վարդապետներից է եւ առանձին մասնակցութիւն է ունեցել կաթողիկոսական աթոռը 1441 թ. Սիս քաղաքից Վաղարշապատ տեղափոխելու գործի մէջ: Իր յիշատակը մնում է գլխաւորապէս երկու փոքրիկ գրաւոր աշխատութիւններով:*

*Նրա առաջին գործն է վերեւում շատ անգամ յիշուած «Պատմութիւն Լանկ-Թամուրայ եւ յաջորդաց իւրոց»,*[1] *որ գրական արժէք չունեցող մի հասարակ գործ է: Իսկապէս մի տեսակ ժամանակագրութիւն, մեծ մասամբ յիշողութեամբ գրուած, երբեմն նոյնի կրկնութիւններով: Եւ ինքը հեղինակն էլ լաւ գիտէ իր գրուածքի թերութիւնը. այսպէս՝ (էջ 44) խօսելով չորս վարդապետների նահատակութեան մասին, աւելացնում է. «Այս չորս վարդապետքս յաւուրս մեր անօրէնք սպանին... Այս էր ի յ 874 [=1425] թուականին աւելի կամ պակաս. դու անմեղադիր լեր, զի ծեր էի եւ յետ 50 ամացս սկսայ. վասն այսօրիկ յետ եւ յառաջ գրեցի»: Բայց եւ այնպէս Թովմայի աշխատութիւնը պատմական տեսակէտով կարեւոր է: Հայաստանից դուրս կատարուած եղելութիւնների մասին գրածները շատ համառօտ են, եւ մասամբ անճիշդ: Հայաստանի վերաբերեալ պատմութիւնն սկսւում է 1386 թուականից Սիւնիքի աւերմունքով հիւսիսային թաթարների ձեռով: Այստեղ համառօտ պատմում է Լանկթամուրի 1387 թ. գործած կոտորածներն ու գերութիւնները Հայաստանի զանազան կողմերում, մի առ մի յիշատակելով տեղերի անունները: «Եւ անտի [Թաւրիզից] չուեալ եկն յերկիրն Սիւնեաց ի վերայ դղեկին Երնջակու. եւ ապա ի վերայ երկրին Ծակատուց՝ էառ զքաղաքն Սուրբ Մարի ի հիմանց տապալեալ զամուրն մեր... եւ գերեաց զքաղաքն եւ զամենայն շրջակայ գեղորայսն»: Հայերն ամրանում են Բարդող լեռան վրայ, որ թշնամիները չեն կարողանում առնել: «Եւ անտի չուեալ եկն յերկիրն Արարատեան եւ Կարբու եւ Կոտայից. եւ խաղեալ [պաշարեալ] զամուրն Բջնոյ՝ էառ զնա եւ սպան զեպիսկոպոս աշխարհին զտէր վանական, որ էր այր իմաստուն եւ գիտնական... Եւ զայլ ամենայն բազմութիւն հաւատացելոց չարչարէին տանջանօք, սովով, սրով, գերութեամբ, անտանելի չարչարանօք եւ անպատրոյն բարուք անմարդաձայն արարին զամենալից գաւառն Հայոց... Եւ առեալ զառ եւ զաւար եւ զգերին անթիւ, զոր ոչոք կարէ ճառել զաղէտս եւ զդառնութիւն մերոյ ազգին: Եւ ընթացեալ բազում զօրօք ի Փայտակարան Տփղիս քաղաք, էառ զնա եւ գերեաց անթիւ եւ անհամար»:*

*Համեմատաբար մանրամասն պատմում է յաջորդ տարում* (1388 *թ.*) *գարնանը Լանկթամուրի յարձակումը Ղարա-Ղոյունլի թուրքման Ղարա Մահմատի վրայ եւ պարտութիւնը Ճապաղջրում, ինչպէս եւ նոյն տարում նրա զօրքի ջարդուելը Սասունի վրայ յարձակուելիս: Պատմագիրն անձամբ եղել է այս իրողութիւնների մէջ: Նա գրում է. «Եհան զմեզ զառ ի վեր լերինն Խութայ: Եւ նոյն օր հասին զօրք Չաղաթային [=Լանկթամուրի]*

*1 Թովմա Մեծոփեցի, Պատմ., Փարիզ, 1860:*

ի վերայ մեր… եհաս մեզ ի յօգնականութիւն… և մեք ի լեառն ելանէաք… Եկն եհաս առ մեզ… Որ եւ ես ի ներս կայի» (էջ 21–28): Նա անձամբ եղել է եւ Վանի մեծ կոտորածի մէջ. «զոր տեսաք աչօք եւ լուաք ականջօք մերովք»: «Բայց ո՞վ կարէ պատմել զթիւ գերեացն եւ զսպանումն անմեղացըն… զի լցաւ աշխարհ ամենայն գերութեամբ Հայոց. մեռան քահանայք եւ աշխարհականք, հաւատացեալք եւ անհաւատք… Աւա՜ղ եւ եղո՜ւկ ամենայն Հայոցս՝ զի աւերեցաւ ամենայն երկիրս. զի յԱրճիշոյ մինչեւ ի տունն Վրաց. եւ մինչեւ ի Կուր գետն Աղուանից չաղախեցաւ արեամբ անմեղաց երկիր ամենայն չարչարանօք, սպանմամբ եւ գերութեամբ: Եւ յետ գնալոյ նորա յաշխարհէս մերմէ եկն սով սաստիկ յաշխարհս մեր եւ տարածեցաւ յամենայն տեղիս… Զի ոչ կարեմ պատմել զդառնութիւնս մեր զոր տեսաք աչօք եւ լուաք ականջօք. զի ջնջեցաւ մարդկութիւնս, մանաւանդ Հայկազեան գաւառիս» (էջ 30 եւ հտն.):

Ապա պատմում է, թէ 1395 թ. Լանկթամուրը Միջագետքից դարձեալ արշաւում է Հայաստանի վրայ, սրով ու հրով եւ գերութեամբ աւերում Երզընկա, Բասեն, Արարատեան գաւառը, Սուրմառի, Կողբ եւ այլն: Դրան էլ յաջորդում է սովը: Կռիւ է լինում Զաղաթայի եւ Յուսուփի (Թուրքման Ղարա Յուսուփի) միջեւ, որ փախչում է Զաղաթայի ձեռից: Երրորդ անգամ էլ Լանկթամուրը 1401 թուին արշաւում է մեր աշխարհի վրայ, 1402 թ. անգութ կոտորածներ անում Սեբաստիայում, յաղթում է Իլտրումին [=սուլթան Բայազիդին], վերադառնալով աւերում, գերում մինչեւ Վրաստան եւ ետ գնում իր քաղաքը:

Այնուհետեւ Մեծոփեցին աւելի ու աւելի մանրամասն գրում է Լանկթամուրի յաջորդ Շահ-Ռուհի (1405–1447 թ.) եւ Ղարա Ղոյունլի Ղարա Յուսուփի, սրա որդի Սքանդարի (1420–1437) եւ սրա եղբայր Ջահան-շահի օրով կատարուած դէպքերի մասին: Շարունակ պատերազմներ, յարատեւ նոյն աւերմունքները, կողոպուտները, շատ կարճատեւ խաղաղութիւն այս կամ այն շրջաններում, այն էլ մեծ հարկապահանջութեամբ նեղում են մերկ, ընչազուրկ ժողովրդին: Պատմագիրն իր պատմած եղելութիւններին ոչ միայն ժամանակակից է, այլեւ ականատես եւ անձամբ կրել է շատ նեղութիւններ: «Եւ այս կսկիծ դառնութեանս անճառելի է ընդ գրով արկանել, զայս աղէտ տարակուսանաց նեղութեանս: Բայց սակաւ մի ծանօթութիւն տամ յետ մեզ եկելոցդ զի լալով լայք զկորուստ ազգիս Հայոց, զի անձամբ ի ներս կայաք» (էջ 91), եւ ապա որքան կարող է՝ սրտաճմլիկ նկարագրում է երկրի թշուառութիւնը: «Եւ այս եօթն ամքն են որ ի ներքոյ դառն պատուհասի կամք. զի սուրն կորոյս, սովն սպան, գերին պակասեաց, գազանք կերան զմարդիկ, թռչունք կերան զվաստակս…» (էջ 95): Վերջին դէպքը որ պատմում է, Շամշուլտէ քաղաքի, ապա եւ Տփղիսի առումն ու կործանումն է 1440 թ. Ղարա Ղոյունլի Ջահան-շահի ձեռով:

Ինչքան ըստ երեւոյթին աննշան է Մեծոփեցու այս պատմական գործը, բայց նա դրանով շատ պայծառ տալիս է մեզ իր չարաբաստիկ ժամանակի թշուառութիւնների տխուր պատկերը 1386–1440 թ., երկրի անկումն աւելի քան Լանկթամուրի ձեռով՝ նրանից յետոյ իշխող թաթարների, թուրքմենների ու քրդերի վայրագ արարքներով: Յարատեւ իշխում է մի

մղձաւանջային դրութիւն, որ շատ զգայուն սրտով եւ կենդանի ցուցադրում է մեր այս պատմագիրը, որովհետեւ ինքն էլ ուրիշների հետ անձամբ ապրել է շատ բան: Պատկերը լրիւ է, քանի որ նա միաժամանակ խօսում է նաեւ վանքերի եւ նշանաւոր վարդապետների — Յովհան Որոտնեցու, Գրիգոր Տաթեւացու եւ նրանց աշակերտների անդուլ գործունէութեան մասին՝ Հայաստանում լուսաւորութեան ու գիտութեան ճրագը գոնէ՝ վառ պահելու այդ աղետալից դարում: Այդ մենք տեսել ենք արդէն:

Մեծոփեցու երկրորդ աշխատութեան նիւթն է կաթողիկոսական աթոռը 1441 թ. Սիս քաղաքից Վաղարշապատ տեղափոխելը եւ Կիրակոս կաթողիկոսի աթոռակալութիւնն ու անկումը յաջորդ երկու տարում:[1] Սկըզբում անուններով յիշում է այն նշանաւոր վարդապետներին, որոնք զանազան վանքերից հաւաքուելով եկեղեցական ժողով են անում: «Եւ այլ բազում վանորայք եւ կրօնաւոր սուրբ հարք եւ պատուական երիցունք աւելի քան զերեք հարիւր անձինս եւ բազում միայնակեացք. եւ ազատք եւ որդիք ազատաց ձեռնաւորք եւ տանուտէրք. եւ անթիւ եւ անհամար բազմութիւն ժողովրդեան՝ արանց եւ կանանց»: Մի խումբ հեռաւոր վարդապետներ եւ եպիսկոպոսներ գրաւոր թղթով իրենց համաձայնութիւնն են տալիս աթոռի տեղափոխութեան համար: Ապա Մեծոփեցին մի առ մի թւում է այն պատճառները, որոնց հետեւանքն է եղել կաթողիկոսական աթոռի տեղափոխութիւնը, որ կատարւում է Հայոց եկեղեցու անկման առաջն առնելու համար: Այդ վերաբերում է Հայոց եկեղեցու պատմութեանը:[2] Այստեղ այն միայն պէտք է շեշտել, որ այդ խնդիրն, ինչպէս տեսել ենք, մեր բանատեղծութեան մէջ արծարծուած էր դեռ 1300 թ. Ստեփաննոս Օրբէլեանի «Ողբի» մէջ եւ այժմ, մօտ դար ու կէս յետոյ, իրագործւում էր Գրիգոր Տաթեւացու եւ ուրիշների աշակերտների — լուսադոյն հոգեւորականների ձեռով, որոնցից մէկն եւ այդ գործին նախաձեռնողներից ու ձեռներէցներիցն էր ինքը Թովմա Մեծոփեցին:

Բայց նրանք եկեղեցական դասի մի փոքր մասն էին կազմում, այն էլ ոչ ամէնքը լուսադոյններից: Այն կողմում կար կրօնաւորների, վանականների ստուար մեծամասնութիւնը, նրանք, այսպէս ասած, աշխարհական վանականներն էին, որոնք վանքերից օգտւում էին միայն իրենց վայելքների եւ հաճոյքների համար, իսկ իրենց կենցաղով չէին տարբերւում աշխարհականներից եւ երբեմն ամէն տեսակ արատներով ապականուած եւ աւելի եւս ընկած քան աշխարհականները:

Թովմա Մեծոփեցին իր Պատմութեան մէջ հանդէս է բերել 14–15-րդ դարերի անձնուիրութեամբ աշխատող լուսադոյն վարդապետներին, իսկ այստեղ, նրա այս փոքրիկ երկի մէջ մենք տեսնում ենք եկեղեցական դասի վատթար կողմերը 15-րդ դարում, նրա բարոյական քայքայումը, զեղծումները, խարդաւանքներ, կաշառակերութիւն, անուղղայ եւ անկարգ ու վաւաշ, հեշտասէր ու ցոփ կենցաղ եւայլն: «Անառակութեամբ եւ արբեցու-

---

1 Թովմա Մեծոփեցու «Յիշատակարանը», հրատարակեց յառաջաբանով Կարապետ Կոստանեանց, Թիֆլիս, 1892:

2 Տես անդ, էջ 7—48. Կ. Կոստանեանցի առաջաբանը. «Ս. Էջմիածնի վերանորոգութիւնը ԺԵ. դարում»:

թեամբ եւ պիղծ վարուք շրջէին, եւ ինքեանք կապող եւ արձակող նստէին Հայոց» (էջ 56), — եւ այսպէս իրենք կաթողիկոսները:

Վանական կրօնաւորների անկումը սկիզբն էր առել շատ վաղուց. Ներսէս Շնորհալու գրուածքների մէջ արդէն այդ տեսանք: Այդ դրութիւնը երբեմն զօրանալով, երբեմն թուլանալով յարատեւել էր, եւ 15–16–րդ դարերում արդէն, կարելի է ասել, ծայրայեղութեան էր հասել: Թէպէտ կային, անշուշտ, եւ սրբակրօններ, բայց նրանք փոքրաթիւ են եղել եւ հետզհետէ կորցրել են իրենց ազդեցութիւնը: Այդ է պատճառը, որ Էջմիածինը 1441 թ. դառնալով եկեղեցական կենտրոն, երկու հարիւր տարի շարունակ, մինչեւ 1640–ական թուականները, չի կարողացել դառնալ նաեւ կուլտուրական կենտրոն եւ առաջ բերել գրականութիւն:

## ԱՌԱՔԵԼ ՍԻՒՆԵՑԻ

1. Կենսագրական:— *Տաթեւեան դպրոցի առաջնակարգ եկեղեցական բանաստեղծն է Առաքել Սիւնեցին, որի կենսագրութեան մասին շատ բան չգիտենք: Նա Գրիգոր Տաթեւացու քեռորդին էր եւ աշակերտել էր նրան, ինչպէս պէտք է եզրակացնել նրա հետեւեալ տողերից.*[1]

*Զմեծ վարդապետն իմ դասասաց,*
*Գրիգոր անուն պատճառ բարեաց,*
*Յիշէք յաղօթս ձեր առ աստուած...*
*Զիմ մեծ բաբունապետն յոյժ իմաստասէր*
*ԶԳրիգոր մեծ ճգնազգեաց աղերսէք առ տէր...*
*Զմեծ վարդապետն իմ հանճարեղ...*

*Առաքելն արքեպիսկոպոս էր, «Սիւնեաց վերադիտող», այսինքն գըլխաւոր տեսուչ, առաջնորդ, որ նստում էր Տաթեւի վանքում: Նա բնականաբար հովանաւորում եւ օժանդակում էր իր առաջնորդարան վանքի ծաղկմանը: Ինչպէս տեսել ենք, նա անձամբ ուրիշների հետ գնում էր Սաղմոսավանք՝ Գրիգոր Տաթեւացուն իր աշակերտներով վերադարձնելու Տաթեւ, որտեղից նա այլազգիների պատճառով ստիպուած հեռացել էր: Թովմա Մեծոփեցին, որ Տաթեւում լսում էր Գրիգորին, շատ գովում է Առաքելին. «Եւ էր սուրբ ուխտին առաջնորդ հեզահոգին եւ ընտրեալն յորովայնէ՝ սուրբ եպիսկոպոսն տէր Առաքել եւ* մեծ իմաստասէրն, *քուերորդին մեծ վարժապետին, որ ունէր զմիտքն իբրեւ զհրեղինաց. եւ էր սիրող ամենայն առաքինութեանց»: Ուրիշ անգամ այս պատմագիրը նրան անուանում է* «իմաստասէր *եպիսկոպոսն եւ վարդապետն Տէր Առաքել»*:[2]

*Գրիգոր Տաթեւացին էլ* 1407 *թ. գովեստով է խօսում Առաքելի մասին, գրելով թէ իր գրքով*[3] *յիշատակումն լինի՝*

---

1 Առաքել Սիւնեցի, «Ադամգիրք», Վենետիկ, 1907, էջ 229, 271, 332 (յիշատակարանի մէջ):

1 Թովմա Մեծոփեցի, Պատմութիւն, էջ 51, 53:

3 Գր. Տաթեւացի, Գիրք քարոզութեան, Ամառան հատոր, վերջին յիշատակարան, էջ 721:

*Նախ քեռորդւոյն իմոյ ըստ մարմնի,*
Ծընընդամիտ երգարանի,
*Առաքելոյ առաքինի,*
*Եւ Սիւնական գըլխոյ արհի:*

*Վերջին տողից էլ իմանում ենք, որ Առաքելը եղել է Սիւնիքի «արհին», որ է՝ գլխաւոր առաջին եպիսկոպոսը, արքեպիսկոպոսն ու առաջնորդը (գլուխը):*

2. Երկերը:— *Բացի առաջնորդական գործերից եւ գրականութիւնից նա ամենայն հաւանականութեամբ ունեցել է նաեւ ուսուցչական գործունէութիւն, եւ իր աշակերտների համար յօրինել է «Մեկնութիւն կամ համառօտ լուծմունք Սահմանաց՝ գրոցն Դաւթի անյաղթի», եւ «Քերականութեան մեկնութիւն» կամ «Քերականութեան լուծումն»: Եւ ի զուր չէ, որ Մեծոփեցին նրան «իմաստասէր» է անուանում:*

*Բացի այս երկուսից՝ Առաքել Սիւնեցին ունի նաեւ բազմաթիւ ուրիշ արձակ գրուածքներ, մեծ մասամբ քարոզներ եւ ներբողներ,*[1] *բայց նա աւելի չափածոյ գրող է, մի «ծննդամիտ երգասաց», արգասաւոր բանաստեղծ: Տաղարանների եւ գանձարանների մէջ կան բազմաթիւ տաղեր, որոնց հեղինակ գրւում է Առաքել Սիւնեցին կամ «Տէր Առաքելը» կամ «Տէր Առաքեալը», ինչպէս նա ինքն իրեն անուանել է իր գրուածքների մէջ: Բայց կան շատ այնպիսի տաղեր էլ, որոնց հեղինակը յիշւում է լոկ «Առաքել» անունով, եւ այդպիսիները կարող են նաեւ Առաքել Բաղիշեցունը լինել: Հաւաստի կամ հաւանօրէն Առաքել Սիւնեցունը համարում են մօտ յիսուն տաղ եւ մի մեծ աստղաբաշխական քերթուած «Վասն երկոտասան կենդանակերպիցն ... ասացեալ ի յԱռաքել վարդապետէ», միջին կայ նաեւ այս տողը. «Տէր Առաքել գրեցի զայս բան»:*[2] *Այստեղ քննութեան չենք առնիլ նրա այս երկերը, այլ միայն նրա մի մեծ քերթուածը, որ յայտնի է «Ադամգիրք» անունով: Առաքել Սիւնեցին, ըստ երեւոյթին, ունի նաեւ աշխարհիկ ոգով բանաստեղծութիւններ, անգամ սիրու երգեր, բայց տաղերիս գրողը ձեռի տակ չունի այնպիսիք:*[3]

---

1 *«Բազմավէպ», 1913, մարտ, էջ 97—101. Մ. Պոտուրեանի «Մատենագրութիւնք Առաքել Սիւնեցւոյ».— Այստեղ յիշուած են 12 արձակ գրուածքներ, որոնց վրայ պէտք է աւելացնել նաեւ վերեւում յիշուած ներբողեանը, որ նա ասել է Գրիգոր Տաթեւացու մահուան առթիւ:*

2 *Տպագրուած է 1792 թ. Նոր-Նախիջեւանում, Յովհաննէս Երզնկացու «Յաղագս երկնային շարժմանն» [տպուած է «Տետրակ համառօտ եւ լի... վերնագրով»] աշխատութեան ետեւում, էջ 62—73:*

3 *Ռուսերէն թարգմանուած «Հայոց բանաստեղծութեան ծաղկաքաղի» մէջ (Մոսկուա, 1940), էջ 259—261 «Աղօթք» վերնագրով. Առաքել Սիւնեցու անունով տպուած են 19 քառեակներ, որոնք շատ գեղեցիկ սիրու երգի տներ են: Ոչ մի կերպ հնարաւոր չեղաւ ինձ գտնել դրանց հայերէն բնագիրը: Այդ ժողովածուի հայ խմբագիրն էլ չկարողացաւ յայտնել, թէ որտեղից են թարգմանել տուել յիշուած բանաստեղծութիւնը: Ցաւալի է, որովհետեւ Տէր Առաքելի ամենագեղեցիկ գործերից մէկը պիտի մնայ առանց նկատի առնուելու այս աշխատութեան մէջ:*

3․ Ադամգիրք Գ․:— *Առաքելի Ադամգրքի երրորդ տպագրութիւնը*[3] *կազմուած է երեք գրքերից, որոնք ոչ թէ նոյն երկի մասերն են, այլ ամէն մէկը մի առանձին գործ է․ բայց երեքն էլ վերաբերում են նոյն նիւթին, առաջին մարդկանց — Ադամ—Եւայի մեղանչմանն ըստ Ս․ Գրքի: Ամենից առաջ* 1401 *թուականի սկզբին յօրինուած է երրորդ* (Գ) *գիրքը, ինչպէս ինքը հեղինակը յայտնում է այդ գրքի «Յիշատակարանների» մէջ:*[2] *Այդ մի փորձ է մի նոր դրական տեսակի: Առաջին գլուխը ութվանկանի քառատող նոյնայանգ տներով* (*թւով* 30), *դրամատիկական ձեւով մի յօրինուածք է, մենախօսութիւններ Ադամի եւ Եւայի, եւ կամ խօսքերի փոխանակութիւն այս երկուսի միջեւ: Դրախտից արտաքսուելուց յետոյ է․ նախ՝ ինչպէս մի տեսարանի մէջ հանդէս է գալիս Ադամը, յետոյ՝ Եւան: Դիմում են խաբող բանսարկուին, թէ ինչո՛ւ նա նախանձում է մարդուն, կնոջը դարձնելով իր չարիքի ընկեր՝ զրկել է նրանց անճառ փառքից, անմահ կեանքից, ինքն էլ ոչինչ չօգտուելով պիտի ժառանգի անէծքն ու անշէջ հուրը: Բանսարկուի վրայ յարձակուելուց յետոյ՝ յիշում են իրենց կորցրած վիճակը․*

*Ադամ ասէ․*
*Զերդ զարեգակն էի մարմնով,*
*Ճառագայթեալ պայծառ հոգով․*
*Աստուածատիպ ծաղկեալ լուսով,*
*Ընդ հրեշտակաց պարակցելով:*

*Եւա ասէ․*
*Եւ որպէս հարսըն զարդարեալ,*
*Եւ յառապատ լուսոյ բազմեալ․*
*Որպէս դըշխոյ փառօք հրըճուեալ,*
*Նորանշոյլ ճառագայթեալ:*

*Ադամը մեղմութեամբ յանդիմանում է Եւային․ սա մեղքը ձգում է իրեն խաբողի վրայ․*

*Եւա ասէ․*
*Ինձ վայել է՝ զոր դուն ասես,*
*Պատճառ չարեաց եղէ ես քեզ․*
*Բայց դու տիկնոջ դիր ըր լըսես,*
*Զիս հէնց խաբեաց՝ զինչ ես ըղքեզ:*

*Ադամ ասէ․*
*Ես ի սիրոյ քո յաղթեցայ,*
*Վասն այն ի քէն հէնց խաբեցայ․*
*Ով որ կընոջն ա՛յլ հաւատայ,*
*Այսպէս չարիք լինին նմա:*

---

*1 Առաքել Սիւնեցի, Ադամգիրք, հրատարակեց Մ. Պոտուրեան, Վենետիկ, 1907. Երեք գիրք՝ Ա, Բ, Գ, ձեռագիրների բաղդատութեամբ. հին տպագրութիւններ մէջ՝ 1721 թ. եւ 1799 թ. պակասում է Բ գիրքը:*

*2 Անդ, էջ 321. «Ի յութ հարիւր Հայոց թուականն եւ յիսներորդ մտեալ նոր ամ», էջ 323. «Ի յութ հարիւր Հայոց թուական եւ յիսներորդ սկսեալ նոր ամ»:*

Եւա ասէ.
Ես վասըն քո չար չկամեցայ,
Վասն ա՛լ փառաց զայն խորհեցայ.
Քո ինձ լըսելն ես չշահեցայ,
Այլ զքեզ քան զիս առաւել տեսայ:

Ադամը չարունակում է իր յանդիմանական խօսքերը: Եւան արդարացընում է իրեն.

Եւա ասէ.
Ինձ լըսեցեր վասըն փառաց,
Հանդիպեցար անարգանաց.
Համբերեսցուք չարչարանաց,
Քանզի կերաք մեք հետ իրաց:

Յետոյ երկուսն էլ զղջալին ողբում են իրենց վիճակը.

Ադամ ասէ.
Ահա բանամ զբերանս ցաւօք,
Աղաղակեմ հառաչանօք,
Սաստիկ կոչեմ դառն արտասուօք,
Քանզի ի հուրն անկայ ազգօք:

Եւա ասէ.
Կըսկըծեցաւ սիրտս ի փորիս,
Ընդ ճաշակել դառըն պտղիս.
Մորմոքեցաւ առ իս հոգիս,
Ընդ բարբառել թիւնաւորիս:

Ադամ ասէ.
Հառաչելով զանձն իմ բախեմ,
Գոչմամբ ըզսիրտըս պատառեմ.
Ծիչ բառնալով աղաղակեմ,
Մինչեւ ի հող դարձեալ նիրհեմ:

Եւա ասէ.
Քունըս հատեալ է ինձ յաչաց,
Ի սաստկագին հառաչանաց.
Երկունք մահու զիս պաշարեաց,
Զի ինձ անշէջ հուրն է վառած:

Ադամ ասէ.
Լալով իմ սիրտս ոչ հանդարտի
Որքան ողբամ՝ հոգիս մաշի.
Հեղձամղձուկ լինիմ յերկրի,
Յետոյ ի հուրն անշիջելի:

Եւա ասէ.
Ինձ հուր վառեալ կայ ի սրտիս,
Եւ մորմոքէ միշտ ըղհոգիս.
Ծուխ ու ծըծումբ այս մըրըրկիս
Զթողու հանգչել ինձ յաշխարհիս։

Ադամ ասէ.
Ես որպէս մոմ հալեալ դողամ,
Հառաչանօք պանձն իմ ողբամ.
Թ՝ յորժամ մատնիմ ի դատաստան.
Աստուծոյ ի՞նչ տամ պատասխան։

Եւա ասէ.
Դու որ յինէն եղեր խաբած,
Այդքան ողբաս տարակուսած,
Ես որ պատճառ եղէ չարեաց,
Ինձ թէ քանի՞ հուր կայ վառած։

Վերջը երկուսն էլ մեղքը ձգում են Աստուծու վրայ, ասելով, որ եթէ նա ծառն ու պտուղը կամ օձը ստեղծած չլինէր, կամ իրենց պատուիրան տուած եւ անձնիշխան թողած չլինէր, ապա

Զէաք խաբեալ որպէս անբան,
Կամ մերկացեալ զփառս անվախճան։

Շարունակութեան մէջ իշխում է ստանաւորով մեկնաբանութիւնը հեղինակի կողմից, թէ ինչու նախամարդերն այնպիսի փորձանքի պիտի հանդիպէին։ Նա մեղադրում է նախնիներին, որ օձին են լսել եւ ոչ Աստուծուն. նրանք պատասխանում են, թէ իրենց յանցանքը մի խրատ պիտի լինի մարդկանց համար։ Ադամը դարձեալ ողբում է, որ կորցրել է իր նախկին վիճակը։ Հեղինակն իր կողմից դիմում է բանսարկուին եւ օձին՝ ուժեղ խօսքերով բնորոշելով նրանց. դեւերը պատասխանելով՝ արդարացնում են իրենց։ Ապա նա մի գլուխ նուիրում է «արարչութեանը» եւ վերջին գլուխը (Ժ), դարձեալ «վասն օձին եւ բանսարկուին, թէ որպէս պատրեաց զնախնիսն»։ Այս է ահա այս «Ադամգրքի» Բ–Ժ գլուխների բովանդակութիւնը։

Մէջը կան սակաւաթիւ գեղեցիկ տներ. բայց այնքան մեծ տեղ են բռնում մեկնութիւնն ու դատողութիւնները ժամանակին հետաքրքրող կրօնական հարցերի մասին, որ ամբողջութիւնը դառնում է ձեւով անկատար մի երկարաբան գործ։ Հեղինակը չի կարողացել մինչեւ վերջը պահել սկզբնական յղացման ձեւը. գործող անձերին — Ադամ, Եւա, Բանսարկու, օձ, Աստուած — հետզհետէ բեմ հանելով՝ նրանց բերանով յայտնել կարեւոր համարած նիւթը։ Այդ, երեւի, անհնարին է եղել այն շրջանում, երբ իշխում էր սքոլաստիկական մեկնաբանութիւնը, որը բանեցնելը համարւում է ամէն հեղինակի համար մի անհրաժեշտ պահանջ ու պարծանք, մանաւանդ որ Առաքելն իր այս աշխատութիւնը յօրինել է Գրիգոր Տաթեւացու

հրամանով ու ծրագրով եւ «Նա ուղղեաց ըղկարգ բանին ըստ իւրաքանչիւր պատշաճին», ասում է նա երկրորդ յիշատակարանի մէջ:[1]

Բայց եւ այնպէս Տէր Առաքելի այս բանաստեղծութեան մէջ որոշ չափով կայ մի նորութիւն, որ ըստ երեւոյթին հաճելի է եղել ժամանակակիցներին:

4. Ադամգիրք Ա.:— Առաջին գիրքը բաւարարութիւն չի տուել բանաստեղծ հեղինակին իրեն. ուստի նա 1403 թուի սկզբներին գրել է մի ուրիշ «Ադամգիրք», ըստ տպագրածին՝ Ա–ը,[2] ըստ գրութեան ժամանակի՝ երկրորդը՝

Ի յութ հարիւր Հայոց թվական,
Յիսուն 'ւ երկու մտեալ նոր ամ,
Խորհրդաւոր բանըս գրեցան՝
Ի խրախութիւն սըրտից մարդկան:

Այս գիրքն էլ նախորդի պէս լի է նման թերութիւններով եւ աւելի եւս մեծ չափերով, որովհետեւ ամբողջի ծաւալն էլ աւելի մեծ է. բայց անպայման մեծ են սրա եւ առաւելութիւնները: Այս անգամ Առաքելը գրել է մի գեղեցիկ վիպական բանաստեղծութիւն, մի գրական տեսակ, որ վաղուց արդէն սիրելի էր հայ ընթերցողներին: Նա յօրինել է մի կրօնական քերթուած՝ նիւթ առնելով Ս. Գրքից Նախնիների մեղանչումը — դրախտի կորուստը, ինչ որ շատ ուշ դարձած է բանաստեղծութեան առարկայ այլ ազգերի մէջ: Այս քերթուածն իր վիպական մասով մի սիրուն նորութիւն էր մեր կրօնական բանաստեղծութեան մէջ, մի ուշագրաւ ընթերցանութեան գրուածք, որ բաւարարութիւն է տուել ոչ միայն ժամանակակիցներին, այլեւ հետագայ դարերում, անգամ 19–րդ դարում, ինչպէս երեւում է այն հանգամանքից, որ դա երկու անգամ տպագրուել է 18–րդ դարում՝ 1721 եւ 1799 թուականներին: Այժմ էլ դրա որոշ մասերը կարդացւում են հաճութեամբ:

Պատմուածքը ճաշակաւոր է. Աստուածաշնչի պարզ զրոյցը ճոխացրած, կենդանացրած է՝ ստեղծելով արտաքինի եւ ներքինի — հոգեկան կողմի հա–

---

1 Անդ, էջ 324, բերենք եւ հետեւեալ տները.

Վերադիտողն իմ ըստ Հոգւոյ,
Եւ ազգակից հիքիս մարմնոյ,
Նա հըրամեաց ինձ գըրելոյ
Զոտանաւորքս ըստ խորհըրդոյ:
Ասաց գըրել ինձ ըստ կարգի
Յաղագս նախնեացն յիշատակի,
Վասն Ադամայ եւ Եւայի,
Ի դէմս օձին եւ բանսարկուի:
Րաբունապետ յոյժ պանծալի,
Ծով իմաստից, ծաւալք շնորհի.
Ի նոյն շնորհէ մասն ինչ առի,
Զոտանաւորքս շարադրեցի...

Ապա 16 գեղեցիկ տներով գովաբանում է նա Գր. Տաթեւացուն:

2 Անդ, էջ 229:

մար թարմ մանրամասնություններ, նոր մոտիվներ, միջադէպեր ու նկարագիրներ:

Սկզբում, Ա գլխի մէջ, պատմում է արարչութեան մասին, իսկ Բ գլխի մէջ խօսում է «Վասն գեղազարդութեան Նախնեացն եւ դրախտին»․ մի նոր յղացում, որ չկայ Ս․ Գրքի մէջ: Ամբողջապէս լոյս ու փայլ է, ծաղիկ ու բուրմունք, անմահութեան հոտ, բերկրանք ու ցնծութիւն: Եւ երջանիկ է Ադամն իր փառքով․

Անդ լոյս սիրոյն ճառագայթէր,
Եւ խընդութեամբ փառքըն փայլէր․
Ուրախութիւն յորդահոսէր
Եւ հըրճուանաց ձայնըն հնչէր:

Այս գլուխը (20 տուն) գրուածքի չքեղ նկարագիրներից մէկն է, հաւասար գեղեցիկ են գրեթէ բոլոր տները․

Էր փառք դրախտին անպատմելի,
Զըքնաղատես եւ 'ըղխրալի,
Ծաղկունքըն տայր փայլըս փայլի՝
Արեգական նման եւ լուսնի:
Դէմքն Ադամայ փառօք ծաղկեալ,
Եւ որպէս լոյս ճառագայթեալ․
Ցոլմունք լուսոյ անտի հոսեալ
Եւ որպէս հուր փայլատակեալ...
... Բուրէր եւ հոտ անմահութեան,
Բերկրեալ խայտար ինքն ընդ ինքեան:
Ադամ ծաղիկ էր նորածին,
Լուսաբողբոջ դարնանային,
Փըթթեալ փառօք ի մէջ դրախտին՝
Ծափըս ծափի տայր ի սըրտին...
Ոտօքըն ճեմս առեալ պարէր,
Ի մէջ ծաղկանցն որ վառ վառէր
Ձեռօքըն ծափըս հարկանէր,
Զի խընդութեանցն ոչ հանտարտէր:
Ծառքն եւ ծաղկունքն որ ի դրախտին՝
Զերդ ղարեգակըն փայլէին,
Ցանուշահոտ բուրմանց նոցին՝
Որպէս թըմբրեալ լինէր Նախնին:
Մարմնովըն անմահ էր 'ւ անթառամ,
Փառօք ծաղկեալ էր ղանազան․
Սըրտիւ ցընծայր խրախճանական,
Բերկրեալ ի փառըս արքունական...
Անդ հող դրախտին փայլըս փայլէր,
'Ի ի ջըրոյն ցոլմունք լուսոյ հոսէր,
Օդք զանմահից հոտըն բուրէր,
Հուրըն վառեալ ճառագայթէր:

Ամէն ինչ լուսաւոր ու փայլուն էր, բայց միակերպ չէր Աստծու եւ մարդու, ծառերի ու ծաղիկների լոյսը,— ասում է բանաստեղծը.

Անդ կերպ լուսոյն էր զանազան,
Յեղ մ' անեղին, ցեղ մ' եղական,
Ա՛յլ ազգ դրախտին, ա՛յլ ազգ մարդկան,
Ծառք եւ ծաղկանցն այլ զանազան:

Բանաստեղծը տեսանելիքի հետ չի մոռանում նաեւ լսելիքը, հոտոտելիքն ու ճաշակելիքը.

Անդ աչքն ի գոյն ծաղկանցն հրճուէր,
Ականջն ի ձայն զուարթնոցն զմայլէր,
Ռընկունք յանոյշ հոտոյն թըմբրէր:
Բերանըն միշտ քաղցր ճաշակէր:

Ադամի փառքն ու հրճուանքն աւելի մեծ էր եւ այնու, որ նա, Աստուծու պատկերը, ծաղկում էր աստուածային լուսով, իսկ

Աստուած ընդ փառք մարդոյն հանդչէր
Եւ յիւր պատկերն ուրախանէր:

Կան միայն Աստուած ու հրեշտակներ եւ երկու նախնիները: Կան եւ Սադայէլն իր դեւերով, որոնք արդէն երկնքից կործանուած են անդունդ եւ ընկած են իրենց սկզբնական փառքից: Գեղազարդ դրախտը, նախնիների բնակարանը, ու նրանց դրախտային վայելչութիւնը գրգռում է չար Սադայէլի նախանձը եւ այս դառնում է մի մոտիւ, մի դրդիչ քերթուածի մէջ գործողութիւն առաջ բերելու: Եւ բանաստեղծը բնական ձեւով անցնում է «վասըն բանսարկուին եւ օձին եւ խաբմանն» (Գ. գլ. 130 տուն): Այստեղ երեւում է Քերթողի շնորհքը տեսարաններ ու դրութիւններ, հոգեկան վիճակներ ըստեղծելու, գործողութիւնն ընդարձակելու եւ գործող անձերին խօսեցնելու իրար հետ եւ բնութագրելու աւելի իրենց սսած խօսքերով:

Ամենից առաջ հանդէս է գալիս Սադայէլը, «չարն առաջին», իր դեւերի հետ (տներ 1—51): Նա Ադամի դրախտային երջանկութիւնը տեսնելով՝ նախանձից տրաքում է: Բայց աւելի լաւ է՝ բերենք Քերթողի տողերը.

Զայս ամենայն տեսեալ չարին՝
Հեղձամղձուկ լինէր յանձին.
Եւ մորմոքէր կըսկըծագին՝
Պիղծ Սադայէլ չարն առաջին:
Որպէս ըղհուր վառեալ հնոցին՝
Նա բորբոքէր զչարն ի հոգին.
Եւ դիզանայր ծուխ նախանձին,
Կայր խաւարեալ բոլորովին:
Ողբայր սաստիկ հառաչագին,
Եւ մախանօք մաչէր զհոգին.
Զար նախանձովն որ առ Նախնին՝
Հանգիստ չունէր ամենեւին:

Զմաղձ դառնութեան իւրոյ անձին
Փրսխէր զդառօքըն անդընդային.
Սպառնմամբ ցասոյր չար բանակին,
՚Ի ի բարկութիւն շարժէր զնոսին:

Ժողովւում են նրա մօտ խաւարային դասերը, որ իմանան, թէ ի՛նչ է կամենում իրենց պետը: Եւ նա

Ասէ «Բերէ՛ք զարկածք չարին
Առ հասարակ ամենքին.
Արկէ՛ք ի բովս հրահալոցին,
Տեսցուք, թէ զի՛նչ ծնանիցին:

Սադայէլի հպատակները բերում են «չարի արկածները», այսինքն չար փորձանքները, ամէն տեսակ մեղքերի պատրանքները, ինչ որ ապագայում լինելու էին, լցնում են անշէջ հրատի բովի (քուրայի) մէջ ու բորբոքում եւ իրենց խօսքերն ասում, ճիշդ ինչպէս Նոյնը, ըստ միջնադարեան անհաւատքի, երբ չար ոգու զօրութեամբ անում էին կախարդները: Եւ ի՛նչ են ասում չար ոգիները Սադայէլին: Մենք Ադամի ծնունդներին չար կ՚անենք,— ասում են նրանք, — իսկ նրան, այդ առաջին մարդուն, դու պիտի խորտակես: Դու հակառակ կանգնեցիր Արարչին, եւ մենք քեզ հետեւելով՝ անճառ փառքից արտաքսուեցինք, իսկ այս հողածինը մեզ հակառակ՝ պիտի գնայ եւ բնակուի Հզօրի մօտ: Այդ դէպքում մենք էլ չենք կարող յաղթել նրան: Այժմ է ժամանակը նրա կորուստը հնարելու: Մենք քեզ շատ բամբասեցինք, թէ ինչո՛ւ հակառակ բան չի մտածում: Դու շատ զօրք ունես.

«Այնպէս մեծ չար խորհեա՛ դոցին,
Որ յաւիտեան ոչ ապաւին.
Զի վիշտք չարեաց հողեղինին
Ցիւր Արարիչըն հասանին:

Մինչ այդ Բանսարկուի բովը փառւում է եւ

Հալեալ ծընաւ զպատկեր չարին,
Որպէս եւ որթն յանապատին:

Այդ ժամանակ ահա Բանսարկուի մտքում ծնւում է իր անելիքը.

«Ուրախ լերուք, ասէր ցնոսին.
Ես իմացայ զկորուստ մարդին»:

Եւ նա բացատրում է, թէ իրենք անհնազանդութեան պատճառով են արտաքսւել երկնքից, այնպէս պիտի անել, որ Ադամն էլ չհնազանդի Աստուծուն եւ արտաքսուի դրախտից:

«Ես Ադամայ յաղթեմ, ասէր,
Բայց դուք կացէք այլոցըն տէր:
Բայց թէ յաղթեմք հողեղինին,
Այն որ հընարք է մեր չարին,

Այլ հնարեսցուք զանհընարին՝
Մինչեւ ի մահ գալ Անմահին»։

Եւ բանաստեղծը թւում է բազմաթիւ չարիքներ, մեղքեր, որ չար ոգիները պատրաստում են մարդու համար։

Ասեն. «Բերէք զանպակ գինին,
Ըղձառն եւ զմրուրն խաւարային.
Թաս բըռնեսցուք նախաստեղծին,
Զի նա արբցէ զմահն իւր անձին»։
Բերին զխաղողն դառնալի,
Զողկոյզըն չար որպէս լեղի.
Արկին ի հընձանըս թիւնալի,
Զի բարկութեան բաժակ լիցի...
Սըրտմտութեամբ զայն կոխէին,
Եւ բարկութեամբըն ճըմլէին.
Ի վիշապաց գինի հանին՝
Խառնեալ թիւնօք մահաբերին։
Զարըտմըտութիւն իժից չարին.
Զմըրուր մաղձից թիւնաւորին,
Զի որ ըմպէ զնա կամովին,
Այլ հնարք չըկայ թէ բըժըշկին։

Պէսպէս սկաւառակների մէջ լցնում են այն գինին, որ զանազան մեղքերի որակ ունէր, — «ոմն գինի յիմարութեան», «ոմն գինի մոռացութեան», «ոմն գինի խաբէութեան», գողութեան, ագահութեան եւ ամէն տեսակ մեղքերի գինին։ Այսպիսի չարիքներ նիւթելուց յետոյ՝ Սաղայէլը մտնում է օձի մէջ, որ սկզբից հէնց ոխ ունէր Ադամի դէմ, որովհետեւ սա նրա անունը «օձ» էր դրել, իսկ այս անունն այն կենդանին իր համար պարսաւ էր համարում։ Բանսարկուն որ մտնում է նրա մէջ, իր թոյնով լցնում է նրան, որ առաջ թունաւոր չէր։

Գալիս է թունալի օձը Եւայի մօտ կանգնում ու խաբում նրան (տներ 52—72).

Ասէ. «Ուրախ լեր եւ բերկրեա՛,
Քեզ աւետիս տամ 'ւ Ադամայ»։

Նա նենգութեամբ ձեւանում է նախնիների հնազանդ բարեկամը եւ ոչ անգէտ, ինչպէս անասունները, այլ իբրեւ իմաստուն, որ գիտէ ծածուկ բաները, լինելիքները. գիտէ, որ մարդկանց համար մի ուրիշ մեծ փառք կայ, որ Ստեղծողը ծածկել է, չի յայտնել նրանց։ Եւան հաւատում է, թէ նա ամէն բան գիտէ։ Իսկ օձը շարունակում է շողոքորթելով.

«Դու իմ դըշխոյ ես անձնիշխան,
'Ի ես քո ծառայ հնազանդութեան.
Որքան դու տէր լինիս ու իշխան,
Այնքան փառօք ես ճոխանամ...

«Բայց երբ հասնիս այնըմ փառաց,
Հրաշափայլիս իբրեւ զԱստուած.
Ի յանձառ կեանս հրճուանաց՝
Ցիշեա, թէ նա՛ զայս բարբառեաց»:

Ուրեմն նա, որպէսզի հաւատացնի Եւային, թէ իր ասելիքը ստոյգ է, այնպէս է ձեւացնում, թէ իբր ինքն իր (օձի) օգտի համար էլ է մտածում: Բայց նախ քան գաղտնիքը յայտնելը՝ մի պայման է դնում, որ Եւան այն չասի Ադամին, Ադամը չիմանայ այն.

«Զի նա հըպարտ է, բարկանայ,
Եւ անկատար բանըս մընայ.
Բայց դու հնազանդ ես, հաւատա՛,
Զի դու լիցիս տէր Ադամայ»:

Այսպէս նա խորամանկութեամբ գրգռում է Եւայի անձնասիրութիւնը: Ապա պահ մը լռում է, մինչեւ որ կախարդելով խելքահան է անում նրան, եւ ասում, թէ՝ ինչու Ստեղծողը նախանձել է եւ պատուիրել. «Մի՛ ուտէք յամէն ծառոց»: Եւան յիմարանում, դառնում է օձի խօսակիցը եւ առանց Ադամին հարցնելու՝ պատասխանում է.

«Ծառոց դրախտիդ որ այսըր կան՝
Մեզ ուտելոյ հրաման տուան,
Բայց ի ծառոյն չար գիտութեան,
Ասաց չուտել, զի մահ կուտան»:

Խրոխտալով ուրախանում է Չարը. նա արդէն գիտէ գաղտնիքը եւ ասում է, թէ Տէրն այդպէս պատուիրելով՝ խաբել է նրանց, եւ որպէսզի իր ասածը հաստատի, աւելացնում է, որ եթէ այն ծառը բարիքի պատճառ չլինէր, ինչո՞ւ պիտի Աստուած ստեղծէր այն: Դրա պտուղն ուտողը ոչ թէ կը մեռնի, այլ կ'աստուածանայ.

«Թէ դուք ուտէք՝ աչք ձեր բանան,
Իբրեւ զԱստուած լինիք բնութեան:
Ահա ձեզ ձայն մեծ աւետեաց,
Որ ի յականջըս ձեր հընչեաց,
Զանձառ խորհուրդ զոր Տէր ծածկեաց,
Ես յայտնեցի ձեզ սիրելեաց»:

Այստեղ վերջացնում է օձն իր ասելիքն ու դերը: Բանաստեղծը դառնում է Եւային եւ շատ կենդանի պատկերացնում է նրա վիճակը պտուղն ուտելուց առաջ, ուտելիս եւ յետոյ (տներ 73—86): Նա, թեթեւամիտ Եւան, ցնծում է փառամոլութեամբ. կարծես մի նոր արեւ ծագած լինէր իր գլխին: Նա արդէն մոռացել է Աստուծու պատուէրը եւ մինչեւ անգամ խէթ սրտով էր վերաբերում նրան, որ արգելել էր պտուղն ուտել. զի երկնքից ընկած չար փայլակն, այսինքն Սադայէլը, — ասում է բանաստեղծը, — նրա խելքն առել էր, միտքը խաւարեցրել: Ուրախութիւնից ի՞նչ էր անում նա.

Խաղայր մարմնով զինչ դիւահար,
Ճեմս առնելով պարէր յերկար,
Վազէր ի ծառն անասնաբար:

Պտուղն առնում է ձեռը, բայց դողում է մարմնով. զի դեռ կասկածում է, թէ մի՛ գուցէ կորուստ լինի: Պտուղը դնում է բերանի մօտ, բերանը չի բացւում, բերանի պահապանները — շրթունքներն ու ատամները փակւում, արգելում են.

Իսկ չար լեզուն որ բարբառէր՝
Ի ներսկուսէ զփականս բանէր...
Բացեալ զբերանըն զըժնային՝
Ծամեաց ըզթիւնքն օձի լեզուին,
Զմաղձըն մահու որ ի պըտղին՝
Նա կլանէր բոլորովին:

Եւ յանկարծ պատահում է սպասածի հակառակը.

Յանկարծ լինէր ի հիացման,
Ետես զոր ոչ կարծէր յինքեան.
Խլեցին զլուսոյն պատմուճան,
Լինէր խաւար գիշերանման:

Նա սկսում է մորմոքալ, կսկծալ, հառաչելով աղաղակել. սաստիկ գոռում, գոչում է ինչպէս անբան, բարձրաձայն ճչում է մոլեգնած.

Նա արտասուս սաստիկ հոսէր,
Լալով միշտ զանձն իւր հեղեղէր,
Որպէս սգաւոր զհերսըն փետէր,
Եւ արեամբ զանձն իւր շաղախէր:
Որպէս մոլեալ ինչ կատաղէր,
Որ եւ ըզմիս բազկին ուտէր.
Քունըն հատեալ, հանգիստ չունէր,
Յաղաղակէն ոչ դադարէր:
Յերկինս հայել՝ աչքն մըթնէր,
Դիտել զերկիր՝ միշտ խաւարէր.
Յետ եւ յառաջ տարակուսէր,
Յաջ եւ յահեակ միշտ երերէր:

Եւայի դառն դիպուածի նմանը ոչ եղել է եւ ոչ էլ կը լինի,— ասում է Քերթողը,— ամէն տեսակ դժնդակ ցաւ երեւում էր նրա մէջ: Նա այնքան կսկիծ ունեցաւ, որքան ունենում են մարդիկ, երբ մեռնում են եւ դժոխքում տանջւում անվերջ:

Հերթը հասնում է Ադամի խաբուելուն (տներ 87—130): Ս. Գրքի այս կարճ խօսքը» «Եւ ետ առն իւրում ընդ իւր, եւ կերան»՝ բանաստեղծն ընդարձակել, դարձրել է առն եւ կնոջ յարաբերութիւնների մի սիրուն պատկեր, որի մէջ Եւան, որ արդէն ճաշակել է բարու եւ չարի գիտութեան ծառի պտուղը, հանդէս է գալիս ոչ իբրեւ մի պարզամիտ էակ, այլ արդէն ճանա-

չում է իր չարն ու բարին, եւ մարդու թոյլ կողմը, եւ թէ ինչպէս պիտի ազդել նրա վրայ, որ ենթարկուի իր կնոջը եւ հետեւի նրան: Ադամը միամիտ ու թոյլ է, նա սիրում է Եւային. սկզբում տատանւում է, բայց Եւան, ինչպէս ասում են, լեզու է թափում, մինչեւ որ

Խարբալեցաւ միտքն Ադամայ…
Խելքն ընդ աչացըն գընացին,
Եթող զԱստուած եւ ոչ ըզկին:

Պէտք է կարդալ այս հատուածը՝ բանաստեղծի թեթեւ ներշնչումն եւ Ադամ—Եւայի խօսքերի գեղեցիկ տողերը վայելելու համար: Այստեղ կը բերենք սակաւաթիւ տներ միայն:

Եկն առ Ադամ որպէս օտար,
Մերկ, խայտառակ անասնաբար.
Ադամ տեսեալ զնա զարմանայր,
Թէ զի՞նչ եղեւ այդըմ պատճառ:
Ասաց, թէ՝ «Զի՞ կու լաս դու, կի՛ն.
Զի՞ հառաչես ողորմագին.
Այդ ի՞նչ չարիք որ քեզ եկին,
Ո՞ւր է քո լոյս պատմուճանին…»:
Ասէ, թէ՝ «Զիս չարըն խաբեաց.
Պըտղով ծառոյն, զոր Տէրն յայտնեաց.
Առի ձեռօք իմ չորացած,
Եւ մերկացայ յանճառ փառաց:
Բայց թէ դու սէր ունիս ընդ իս,
Փութով լսէ՛ քո կողակցիս.
Առ կե՛ր եւ դու զպըտուղս ընդ իս,
Զի մնամ ընդ քեզ ես ի դըրախտիս:
Թէ կայր քո սէր ընդ իս նախկին՝
Այն սէրն այսօր երեւեսցին.
Վասըն սիրոյ քո Արարչին
Ցի՛չեա՛ եւ զմեր սէրն առաջին:
Բայց թէ չլըսես ամենեւին,
Յորժամ եհաս ցաւս իմ անձին,
Սուտ է քո սէրն այն առաջին,
Զի ոչ հոգաս վասն իմ դարձին:
Թէ անասնոց լինէր այս չար,
Դեռ մեզ պիտէր զնոսին հոգալ.
Ես քո մարմին՝ ա՛յսպէս խոցեալ,
Դու ա՛յդպէս կաս անհոգացեալ…
Ես որ դիպայ այս փորձութեան՝
Մեռեալ ի հող դառնամ անձամբ,
Հոգիս տանջի անանց մահուամբ,
Թող դու մընա՛ս յայդ խնդութեան»:

Պատասխանեալ Ադամ նըմին,
Խանդաղատեալ ի սէր նորին.
Տարակուսեալ մորմոքէին
Ոչ գիտելով ըզդեղ ցաւին:
«Մի՛ մեղադրեր դու ինձ, ո՛վ կին,
Ես նոյն սիրովն եմ առաջին.
Բայց թէ ուտեմ զպտուղ ծառին՝
Ես քեզ նըման պատուհասիմ...»:
Ուրախացաւ կինն ի հոգին,
Զի ետ սիրով զպատասխանին.
Հընար գըտաւ թըշուառ հոգին՝
Սիրով խաբել զմարդն առաջին...

Նա զանազան ձեւերով ջանում է համոզել մարդին, որ հետեւի իրեն.

«Թէ դու սիրով ուտես վասն իմ՝
Իմ նենգութեան մեղքն ջընջին»:

Վերջիվերջոյ Ադամը՝ Եւային ազատելու համար՝ ինքն էլ ուտում է պտուղը եւ նոյն վիճակն ունենում, ինչ որ կինը. Նա աղաղակելով, ողբում ու վա՛յ է տալիս իրեն:

Յաջորդ Դ գլուխը (12 տուն) ամբողջապէս Ադամի ողբն ու սուգն է, որ անում է նա՝ կանխատեսելով իր եւ իր սերունդների ապագան՝ դրախտից զրկուելը, մահը, դժոխքը եւ այլն: Այդ ողբի մէջ մի գլուխ (Ե, 28 տուն) նուիրուած է «Վասն հողեվարին եւ ճանապարհի հոգւոյն եւ պատերազմի դիւաց եւ կայանին հոգւոցն»: Հոգեվարի մասին խօսում է եւ Գրիգոր Տաթեւացին:[1] Մարդու մահուան ժամանակ՝ հոգին երբ բաժանւում է մարմնից, դէպի երկինք է դիմում իր հրեշտակի ետեւից՝ «գնալ ի կայանս հոգւոց»: Նա դժուարին եւ անտես ճանապարհին՝ սարսափած ու ապշած վիճակի մէջ է ընկնում. զարհուրում է դեւերի բազմութիւնից, «որ դառն եւ դաժան կերպարանօք շուրջ լինին ի վերայ հոգւոյն եւ պատերազմին ընդ նա»: «Զամենայն մեղս իւրեանց տեսանեն եւ առաջի բերեն դեւքն մանր քննութեամբ, զոր գործեալ են եւ զոր մոռացեալ»: Տաթեւացին ազդուել է Անտոնի տեսիլից, որ գրել է Աթանասը:[2] Այս երկուսից էլ ներշնչուել է եւ Առաքել Սիւնեցին: Նիւթի յղացումն, ինքնուրոյն չէ, բայց նա բանաստեղծել է Ադամի բերանից իրեն՝ Ադամի եւ նրա սերունդների համար եւ զգացմունքի ու պատկերի բաւական ուժեղ մանրամասնութիւններով, որոնց մէջ նա անկախ եւ ինքնուրոյն է:[3]

---

1 Գիրք քարոզութեան, Ձմերան հատոր, Կ. Պոլիս ՌՃՂԹ (=1189+551–1740), էջ 230—223:

2 Վարք սրբոց հարանց, հատոր առաջին, Վենետիկ, 1855, էջ 17—80. «Վարք երանելոյն Անտոնի Եգիպտացւոյ միայնակեցի, թուղթ Աթանասի»:

3 Համեմատելու համար դնում ենք այստեղ Անտոնի տեսիլը (էջ 61): Միայնակեաց Անտոնը աղօթելիս «զգաց զինքն յափշտակեալ մտօքն, եւ... տեսանէր զինքն իբրեւ արտաքոյ ինքեան եղեալ եւ իբրեւ յօդս զինքն առաջնորդեալ յոմանց: Եւ տե-

*Առաքելը Թանձր գոյներով նկարում է մի տեսարան, որով խիստ պիտի սարսռային կրօնամիտ ընթերցողները եւ Ադամին հետ աւէին.*

*Վա՜յ իմ ասուր հողեվարին,*
*Վա՜յ որ առեալ զհոգիս տանին.*
*Վա՜յ ապշութեան ճանապարհին,*
*Վա՜յ որ չգիտեմ, թէ ո՛ւր տանին:*

*Խառնիխուռն երեւում են դեւերի գնդերը, ահեղ դէմքերով, բերանները բաց արած, մեռելի «մեղաց նամակը», այսինքն մատեանը բռնած: Ուղեկից հրեշտակը թողլ է տալիս, եւ նրանք պատում են հոգու չուրջը, կատաղում նրա վրայ, տանջելով նրան՝ զանազան կերպերով կռւում են նրա հետ,*

*Պէսպէս զիմօք կերպարանին,*
*Զարատեսակք եւ դժնային.*
*Մըռմըռալով միշտ կատաղին,*
*Եւ պատառել ջանան զհոգին...*

*Դէմքն այլակերպք եւ ահագին,*
*Զարհուրական կերպարանին.*
*Հուր ցոլանայ յընդգայ նոցին,*
*Եւ պաշարէ զգերեալ հոգին...*

---

սանէ զոմանս դառինս եւ անհնարին դժնեայս, որք կային յօդս եւ կամէին արգելուլ զնա զի մի՛ անցցէ: Իսկ որք մարտնչէին ընդ նոսա, առաջնորդէին Անտոնի, եւ պահանջէին նոքա բան ի սոցանէ եւ ասէին, թէ տեսցուք մի՛ գուցէ պարտապան է մեզ. քանզի կամէին առել իւն բան ի նորա ծննդենէն եւ արգելուլին զնոսա: Իսկ որք առաջնորդէին Անտոնի, ասէին ցնոսա, եթէ զծննդեան նորա տէր ի բաց ջնջեաց. այլ յորմէհետէ եղեւ միայնակեաց եւ խոստացաւ Աստուծոյ իշխանութիւն ունիմ խնդրել ձեզ համարս: Յայնժամ նոքա ամբաստան եղեն եւ յանդիմանել ինչ ոչ կարացին, քանզի ազատեցաւ ինքն եւ անարգել եղեւ նմա ճանապարհն»: Դարձեալ քիչ յետոյ (էջ 62). «Եւ ի վեր հայեցաւ եւ ետես զոմն երկայն ահագնատես չարատեսիլ եւ ահագին, քանզի կայր եւ հասանէր մինչեւ յամպս, եւ ելանէին ոմանք իբրեւ թռուցեալք, եւ նորա տարածեալ զձեռսն եւ զոմանս արգելոյր եւ ոմանք ի վերոյ քան զնա թռուցեալք եւ անցեալք՝ այնուհետեւ աներկիւղ եւ անհոգ վերացեալք: Եւ ի վերայ այսպիսեաց եւ երկայնն կրճէր զատամունսն, եւ ի վայր անկելոցն ի նմանէ ուրախ լինէր: Եւ անդէն վաղվաղակի ձայն եղեւ առ Անտոն եւ ասէ. իմա՛ որ եղեւդ: Եւ բացան նորա միտքն եւ գիտաց զի հոգւոյն էին անցք ճանապարհին. եւ երկայնն որ կայր, նա է որ զչարի ընդ բարիս հաւատացելոց, եւ որ դատապարտք են նմա՝ զնոսա ունի եւ արգելու եւ չտայ անցանել: Իսկ որք ոչն հաւանեցան նմա, ոչ կարէ ըմբռնել, այլ ի վերոյ քան զնա զանց առնեն»:

Աւելորդ չի լինիլ այստեղ բերել նաեւ Սերապիոնի պատմածն Աբբա Մարկոսի հոգու մասին, երբ այս ճգնաւորը վախճանւում է. «Իսկ ես ի վեր նայեցայ ափշեալ եւ տեսի հոգի նորա ի կառս հրեշտակաց սպիտակ աղաբողոնամբ պատեալ, եւ տանէին զնա դունդք հրեշտակաց փառօք յերկինս սաղմոսիւք եւ երգովք ընդ վերին լուսաւոր օդսն: Եւ տեսի զքննիչ ոգւոց. տեսի եւ զգուշութիւն սատանայի զի կային մնային եւ արգելուին զնա ժամ մի: Եւ լուայ ձայն յերկնից որ ասէր. ի բաց կացէք յերեսաց լուսոյդ, որդիք խաւարի: Յայնժամ ձայն եբարձ մի ոմն ի դիւացն, աղաղակեաց եւ ասէ. փախերուք, որդիք սատանայի, եւ ամօթալից եղերուք, զի այրդ այդ արդար է: Եւ իբրեւ անց վերացաւ հոգի նորա ընդ ամենայն փորձութիւն սատանայի, տեսի իբրեւ զաջ հրեղէն ի վերայ նորա, եւ աներեւոյթ եղեն յինէն»: Վարք ս. Հարանց, հատ. երկր., Վենետ., 1855, էջ 205:

Ձայնիւ դոչեն յոյժ սաստկագին,
Որպէս ճայթմունք յորոտ ամպին.
Եւ ճըչել ձայնից նոցին
Սարսեալ հոգւոցն նուաղին…
Հոտ դարշութեանց յոյժ գազրագին
Որ ի դիւաց դասէն բուրին…
Շուրջանակի պատեն զհոգին,
Ըստ վեց շարժմանցն որ յանձին,
Ի վեր, ի վար, յաջ 'ւ ահեկին,
Յետ եւ յառաջ մըրցեալ կըռուին…
Ի խաւարեալ օդոյ միջին
Խաւարային դիմօք յայտնին.
Հոգին ապշեալ միտքըն ցընդին,
Միջարեկեալ յուսահատին:
Եւ զօղանջեն զոչմամբ նոքին.
«Այո՛, այո՛, աչք մեր տեսին
Զարկածք չարեաց մերոց ի դմին
Ի սկըզբանէ մինչ ի վերջին»:

Նրանք ջանում են յափշտակել հոգին. բայց երբ հրեշտակն ասում է՝ «Ի ձեզ սաստէ Տէր»՝ ցրւում:

Այս այդպէս խորտակուած, նուաղած հոգին հրեշտակը հանում է հոգիների կայանը, ուր հոգիները՝ նայելով իրենց գործած մեղքերին՝ դաս դաս ամբարուած պահւում են հառաչանքով եւ լաց ու կոծով մինչեւ դատաստանի օրը, վա՜յ տալով իրենց առաջուց, երբ յարութիւն եւ դատաստան պիտի լինի:

Սրանից յետոյ բանաստեղծն երկու առանձին գլուխներով (Զ, 37 տուն, Է, 56 տուն) գրում է «Վասն ահեղ դատաստանին քննութեանցն» եւ «Վասն տանջանաց դժոխոց», որոնք երկուսն էլ մեր քերթողների սիրած նիւթերից են եւ նորանոր կողմերից եւ ինքնատիպ մտքերով ու պատկերներով մշակուած են Առաքելի ձեռով: Ադամգրքի այս վերջին երեք գլուխները (Ե, Զ, Է) շատ հաճելի են եղել մեր հներին, ուստի դրանք մի քանի ուրիշ հատուածների հետ, իբրեւ անկախ քերթուածներ, առնուած են ծաղկաքաղ ժողովածուների մէջ:

Դժոխքի տանջանքների նկարագրով եւ տանջուողների ողբով՝ վերջանում է եւ Ադամի ողբը.

Այս ողբ երգոց նախատեղծին,
Որ դէմ բնութեանը բարբառին.
Այս գոյժ ողբոց միշտ կատարին
Յանցեալն, ներկայս եւ յապառնին:

Այսպէս է վերջացնում բանաստեղծն այդ գլուխը, միանգամայն եւ Ադամի «տեսիլը»: Մենք զգում ենք, որ դործող անձը, Ադամ, մեղանչելուց յետոյ, դեռ Աստուծուն չհանդիպած, իր գլխին վայ տալով, ինչպէս մի կար-

*ճառեւ երազի մէջ տեսնում է շատ երկար ու դառն բաներ, ե՛ւ Աստուծուն իր վճռով, ե՛ւ Հոգեվարքը, ե՛ւ վերջին դատաստանը, ե՛ւ դժոխքը: Բանաստեղծը, ցաւօք, տարտամ ու ոչ պայծառ է յօրինում Ադամի այս «տեսիլը», մէկ մէկ էլ իր անձը, դէմքը խառնում է վիպական պատմուածքի մէջ եւ աւելորդ կրկնութիւններով ձիգ դարձնում այն: Արուեստի պակասութիւն է այդ: Աւելի մեծ պակասութիւն է այն, որ դժոխքի տեսլից յետոյ, մոռանալով որ ինքը վէպ է յօրինում, նա երեք գլուխ (Ը, Թ, Ժ, էջ 56—77) նուիրում է մեկնաբանութեան եւ իր տեսութիւններն է բացատրում իրեն հետաքրքրող նիւթերի մասին («Վասն չարին թէ ուստի՞ ունի զսկիզբն կամ զի՞նչ է», «Վասն ցանկալոյ բարոյն», «Վասն մարդոյն թէ ո՞րպէս է պատկեր Աստուծոյ...»): Պատմուածքին չեն վերաբերում նաեւ ԺԲ. եւ ԺԳ. գլուխներն (էջ 82—102) իբրեւ մեկնութիւններ: Այս հինգ գլուխները երբ անջատւում են, մնացած ԺԱ, ԺԴ, ԺԵ գլուխների մէջ պատմւում է քերթուածի գործողութեան շարունակութիւնը. «Վասն՝ յետ յանցման Ադամայ՝ հարցափորձելոյն Աստուծոյ, որ ասաց, թէ Ո՞ւր ես»:*

*Յետ ողբալոյն Տեառն Ադամայ*
*Հարցաքննել գայ ըզնոսա.*
*Զի զղջացեալ ասեն մեղայ,*
*Եւ ջնջեսցին յանցանք նոցա:*

*Տէրն ասէ.*
*Ո՞ւր ես, Ադամ, մարդս առաջին.*
*Ո՞ւր է քո փառքն հրաշալին.*
*Փառօք եդի զքեզ ի դրախտին,*
*Եկեալ չգտի ընդ նոյն տեղին:*

*Ադամ ասէ.*
*Լուայ ըզձայն գնալոյ քոյին,*
*Որ հեռանաս վասն իմ յանցին.*
*Երկեայ միայն կեալ ի դրախտին,*
*Եկեալ թագեայ առ թզենին, եւ այլն:*

*Տիրոջ, Ադամի, Եւայի միջեւ տեղի է ունենում մի տրամախօսութիւն, որի հիմքը Ս. Գրքից է, բայց շատ սիրուն զարգացրել է բանաստեղծը: Նրանք «մեղայ» չեն ասում եւ մեղքը նոյնիսկ Աստուծու վրայ են ձգում: Եւ Աստուած դնում է իր յայտնի վճիռը Ադամի, Եւայի եւ օձի վերաբերմամբ: Այս ԺԱ գլխի բնական շարունակութիւնն է ԺԴ եւ յետոյ՝ ԺԵ գլուխն («Վասն տարակուսանօք փոշիմանելոյն նախնեացն ի զրկմանէ ծաղկապանծ փառացն», «Վասն զղջմամբ ողբալոյն Եւայի»): Ադամն ու Եւան դրախտից արտաքսուած են, զղջում են իրենց յանցանքի համար, եւ ցաւ ի սիրտ յիշում են դրախտի վայելչութիւնները. ողբում են իրենց ողորմելի վիճակը եւ մխիթարւում են, որ վերջը պիտի փրկուեն: Այս գլուխները գեղեցիկներից են. բանաստեղծը մի երկրորդ անգամ Ադամի բերանով սքանչացած նկարագրում է նրանց կորցրած դրախտի շքեղութիւնը եւ աւար-*

*տում վիպական քերթուածը, բայց ոչ «Ադամգիրքը»: Նա գրում է էլի 11 գլուխներ, «Վասն կողին» [այսինքն՝ կնոջ] եւ այլն, որոնք սքոլաստիկական մեկնութիւններ են, որոնցով Առաքել Սիւնեցին իր սրամտութիւնն է ուզեցել ցոյց տալ: Մի գլխի մէջ (ԺԸ) բնութագրում է կանանց ոչ լաւ կողմից, առաջաբանի մէջ զգուշացնելով այսպէս.*

*Թէ հանդիպիս դու մօտ ի կին,*
*Զայս բանքըս մի՛ կարդալ նոցին.*
*Որ չանարգեն զգըրող սորին,*
*Կամ բանքս ելնէ յաչաց նոցին,*
*Կամ զի կաղն ոսկր է անըզգայ,*
*Ինքն ըստ ինքեան բան չիմանայ,*
*Վասն այն կընոջըն խելք չըկայ,*
*Զինչ որ լըսէ՝ չուտ հաւատայ:*

*Եւ այսպէս ամբողջ 36 տուն: «Կողն» այնքան մեծ տեղ է բռնում «Ադամգրքի այս երկրորդ մասի մէջ, որ ամբողջը կոչուել է նաեւ «Կողգիրք»:*

*Առաքելը չի բաւականացել երկու «Ադամգրքերով», որոնց մասին խօսուեց վերեւում. Նա նոյն 1403 թուականին, ինչպէս յիշատակարանից (էջ 270) իմացւում է, գրել է մի երրորդ (ըստ տպագրութեան Բ=երկրորդ) Ադամգիրք տասնումէկ (6+5) վանկանի տողերով սկզբից մինչեւ վերջը «էր» յանգով: Բովանդակութիւնը նոյնն է, ինչ որ նախորդ երկուսինը: Գրուածքն աւելի սեղմ է, վիպական մասը չատ չնչին է, աւելի ուշադրութիւն է դարձրած մեկնութեանը, թէ ի՛նչ «խորհուրդ» ունի Ադամի մեղանչումը: Կան, հարկաւ, նաեւ սակաւաթիւ գեղեցիկ տներ:*

*Առաքելն ունի եւ մի չորրորդ հատոր Ադամգրքի, որ դեռ չի տպագըրուած: Այդ կոչել են «Դրախտագիրք», գրուած է 4+4+5 վանկանի տողերով, ամբողջը նոյն յանգերով: «Հեղինակին նպատակն եղած է այս աշխարհի բնակիչներն իր հետ առնելով՝ փնտռելու ելնել այն անծանօթ քաղաքը՝ ուսկից արտաքսուած էր Ադամ»:*[1]

**5· Յօրինուածքի թերութիւնն եւ գրական արժէքը:**— *«Ադամգրքերի» գեղարուեստական կողմից թուլութիւնը ծագում է գլխաւորապէս այն հանգամանքից, որ հեղինակը կրկին նպատակ է դրել՝ 1· ոտանաւորով բանաստեղծօրէն պատմել Ս· Գրքի գրոյցը· 2· ոտանաւորով յօրինել հին մեկնաբանների կարծիքները Ս· Գրքի գրոյցի մասին եւ իրենից էլ, որքան կարելի է, չատ բան աւելացնել ուրիչների ասածների վրայ: Այդ վերաբերում է «մարդեղութեան խորհրդին», որով բացատրել են Ադամ-Եւայի գրոյցը:*

*Նա իր մեկնութիւններն անում է ոչ միայն յատուկ գլուխների մէջ, այն էլ երբեմն ընդհատելով պատմուածքը, այլ մէկ մէկ նաեւ պատմուածքի ընթացքում: Ինչքան էլ կոկ ոտանաւորներով են գրուած այդ կտորները՝ այժմ դրանք, բացի թերեւս սակաւաթիւ քառեակներից, գրական արժէք*

---

*1 «Բազմավէպ», Վենետիկ, 1913, մարտ, էջ 99. Մ. Պոտուրեանի «Մատենագրութիւնք Առաքել Սիւնեցւոյ» յօդուածի մէջ:*

չունեն: Առաքելի աշխատութեան այդ մասը մեզ համար հետաքրքիր է այնու, թէ որքան զօրեղ է եղել այն դարում սքոլաստիկական բացատրութիւնը, եւ որքան չնչնահաւատ են եղել այն ժամանակի գիտնականներն անգամ, որոնք իրենց «գիտնականութիւնը» ցոյց են տուել պարծանքով, բազմաթիւ այնպիսի համեմատութիւններ անելով եւ «խորհուրդներ» ու «խորհրդաւորութիւններ» գտնելով, որոնց վրայ միայն զարմանալ կարող է արդի մարդը: Այդ նկատմամբ այստեղ բաւական է միայն յիշատակել «Ադամգիրք Ա-ի» ԻԲ գլուխը (էջ 159 եւ հտն.): Բանաստեղծ Առաքելին կաշկանդել է Գրիգոր Տաթեւացու ազդեցութիւնը եւ կարծես նա մրցում է իր քեռու հետ, ոտանաւորներով մեկնութիւններ անելով երբեմն նոյն խնդիրների մասին, ինչ որ Տաթեւացին բացատրել է իր աշխատութիւնների մէջ: Եւ բնական է այդ, քանի որ Տաթեւացին է տուն տուել նրան Ադամի եւ Եւայի մասին գրելու եւ նոյնիսկ «ուղղել է ըղկարգ բանին» առաջին գրքի (ըստ տպագրուածին՝ Գ. գրքի) վերաբերմամբ:[1] Որ Առաքելը երեք գիրք է յօրինել նոյն նիւթի մասին, այդ ցոյց է տալիս, որ իր գրուածքներն ըստ երեւոյթին բաւարարութիւն չեն տուել նրա գեղարուեստական զգացմանը, անշուշտ հէնց այն սառն մեկնաբանական դատողութիւնների պատճառով: Նրա երեք Ադամգրքերը թողնում են այն տպաւորութիւնը, թէ դրանք առանձին փորձեր են մի մեծ քերթուածի համար, ինչպէս մի մեծ կոմպոզիցիայի համար կատարուած նախանկարներ, որոնց հիման վրայ պէտք է գեղարուեստագէտն ստեղծեր իր իսկական երկը: Բայց բանաստեղծն այդ չի արել, եւ նրա այդ երկերը մնացել են իրարուց անջատ եւ անկախ, բայց եւ չափազանց նման բաներ:

Եթէ առաջին Ադամգրքի մեկնաբանական մասերն (վերջի գլուխները եւ վերեւում յիշուած՝ Ը, Թ, Ժ, ԺԲ, ԺԳ, 56–77, 82–102) անջատուէին ի մի առանձին յաւելուած, — եւ դժուար չէր այդ անելը, եւ հեղինակը Բ եւ Գ (ըստ տպագրուածին) Ադամգրքերի վիպական գեղեցիկ կտորներն օգտագործած լինէր Ա Ադամգրքի մէջ, ապա կ՚ունենայինք մի հատիկ իսկական գեղեցիկ վիպական քերթուած, փոխանակ երեքի: Այնպէս էլ, սակայն, ինչպէս կայ, Առաջին Ադամգիրքը (ըստ գրութեան ժամանակի՝ երկրորդը), մեր երրորդ կրօնական բանաստեղծական մեծ երկն է, որ ունի իր բազ-

---

1 Առաքել Սիւնեցի, Ադամգիրք, Վենետիկ, 1907, էջ 324.

... Նա հրամայեց ինձ գըրելոյ
Զոտանաւորքս ըստ խորհըրդոյ:
Ասաց գըրել ինձ ըստ կարգի,
Յաղագս նախնեացն յիշատակի,
Վասն Ադամայ եւ Եւայի,
Ի դէմս օձին եւ բանսարկուի:
Րաբունապետ յոյժ պանծալի,
Ծով իմաստից ծաւալք շնորհի,
Ի նոյն շնորհէ մասն ինչ առի,
Զոտանաւորքս շարադրեցի:

Մի քիչ վերեւում էլ Գրիգոր Տաթեւացու համար ասում է.

Զի նա ուղղեաց ըղկարգ բանին,
Ըստ իւրաքանչիւր պատշաճին:

*մաթիւ առանձին գեղեցկութիւնները։ Առաջին երկուսը՝ Գրիգոր Նարեկացու Ողբերգութիւնը եւ Ներսէս Շնորհալու Ողբերգութիւնը («Յիսուս որդի») քնարերգութիւններ են։ Իսկ Առաքելի գործը մի առարկայական բանաստեղծութիւն է։ Այդ էր ժամանակի պահանջը։ Կրօնական ոգին չէր մեռած, բայց սառած էր․ մարդկանց հարկաւոր էին կրօնական բանաստեղծական գրուածներ, ոչ թէ նրանց վրայ աղօթելու եւ իրենց մեղքերն ողբալու համար, այլ զուարճութեամբ կարդալու եւ սովորելու։*

## ԱՌԱՔԵԼ ԲԱՂԻՇԵՑԻ[1]

*«Ողբ մայրաքաղաքին Ստըմպօլա եւ վասն գալստեան Ֆրանկաց ազգին եւ ազատիլ զաշխարհն Հայոց Առաքել վարդապետէ ասացեալ», տպուած է «Անահիտ», 1901, էջ 217․ «Վենետիկ վանք, Տաղարան թիւ 529, բաղդատած ուրիշ ձեռագրի մը հետ»։*

*Աթոռն էջմիածին տեղափոխուելուց յետոյ՝ չի դադարում քաղաքական անկախութեան մասին երազն ու երգը, որ սեւեռուած մնում էր նոյնիսկ մեր ժողովրդի ամենադժբախտ օրերին, երբ 1453 թ․ օսմանեան Սուլթան Մահմեդ II առնում է Կ․ Պոլիս, կոտորում քրիստոնեաներին, այդ դէպքը ցնցող տրտմական տպաւորութիւն է թողնում արեւելեան քրիստոնեաների վրայ... Վերջին քրիստոնէական պետութիւնը, որ արեւելեան քրիստոնեաների յենարանն էր, յոյսն ու ապաւէնը, ընկնում է։ Արեւելքն ամբողջ մնում է մահմեդականների ձեռին։*

*Այդ ցնցող տպաւորութեան տակ, ահա, Առաքելը, ինչպէս քերթուածից իմանում ենք, նոյն 1453 թուին ողբում է այդ եղելութիւնը։ Քերթուածը շատ մեծ է, 4+4+4+4 տողերով, սկզբի մասի բոլոր տողերը (թւով 52) վերջացնում է «Ստըմպօլ» անունով․*

*Արդ ամենայն ազգք եւ ազինք*
*ողբան ըզքեզ, քաղաք Ստըմպօլ․*

*Երկրորդ մասի (30 տող) ամենաառաջին տողը՝ «Բիւզանդիա» անունով․*

*Այլեւ կոչեմ զքեզ յանուանէ,*
*ընտիր քաղաք Բիւզանդիա,*
*Որ անօրէնք պաշարեցին*
*եւ արարին ըզքեզ ղազա․*

*Երրորդ մասը, 62 տող, բոլորը* իա *յանգով, բացի վերջին 6 տողը, որ* ի *յանգով է։*

*Կոծի պատճառն այն է, որ քրիստոնէութեան կենտրոնը դառնում է «չարագործաց հանգստարան»։ Հիացմունքով խօսում է Կ․ Պոլսի հին քրիստոնէական փառքի մասին, չյիշելով դաւանաբանական վէճերն ու հալածանքները յոյների կողմից, որ այդ ժամանակ չկային, այլ միայն ընդհանուր քրիստոնէական եւ կուլտուրական տեսակէտով մօտենալով քաղաքին։*

*1 Տես՝ Զարբհ., Պատմ. հայերէն դպրութ., Բ. Նոր մատենագրութիւն, Վենետիկ, 1878, էջ 250։*

Դու մարգարիտ տեսակ գանձուց
Հոգեւորաց, դու Ըստըմպօլ,
Ցանկարծակի կողոպտեցար
յանօրինաց դու Ըստըմպօլ:

Երկրորդ մասի մէջ գովում է Բիւզանդիայի նախկին փառքը եւ ողորմելի դառնալը եւ հեթանոսների ժամանակ ծաղրելի դառնալը. միակերպ հինը եւ արդէն տխուրը, եւ վերջը նորոգման յոյսը:

Վերջը գրում է.

Արդ ակն ունիմ կատարածին,
Թէ նորոգիս Բիւզանդիա,
Եւ ազատիս յանօրինաց բռնութենէ,
Բիւզանդիա:

Ի՞նչպէս պիտի ազատուի: Նորոգւում է խաչակրական արշաւանքների գաղափարը, «Փրանկաց ազգն», որ արեւմտեան քրիստոնեաները պիտի շարժին, միաբան,

«Գայցեն ծովով եւ ցամաքով որպէս զաստեղս, որ ոչ թուին»:
Նախ Ստամպօլ քաղաքը կ'առնին, ապա
«Ելցին յերկիրն Արեւելից եւ կոտորին զամենեսին,
Որպէս առիւծ մըռընչելով ի յանօրէնս համարձակին»:
Կ'առնին Երուսաղէմ.
«Անթիւ լինի զօրք Փըրանկին որպէս
զաւազ յեզրր ծովին»,
«Առցին զՀռոմոց աշխարհն ամէն,
մինչեւ ի Մըսըր հասանին,
«Քակին զդիւաց բնակարան, զանօրինաց ուխտատեղին»:
Կ'առնին Շահաստան, Դավրեժ, Խորասան, ամէնքին կը գերեն:

Եղեսիոյ ողբի նմանողութիւնը երեւում է: Իսկ Հայոց ազգի՞ն ինչ:

«Ազգըս Հայոց պայծառանայ,
զի յայլազգեաց ազատեցին,
Բերկրեալ ցնծան ամենեքեան
որպէս յաւուրս Լուսաւորչին»:

Յետոյ պատմում է Տրդատի ու Գրիգորի գնալը Հռոմ եւ մի տարի այնտեղ մնալը եւ «դաշինքը» Կոստանդիանոսի հետ, Հայոց ազգը Փրանկի հետ դաշինք կապեց,

«Սիրով դաշինս հաստատիցին՝
զազգըս Հայոց ընդ Փրանկին:
Զօրս հարիւր մարդ ի հոն թողին
յԱրշակունեաց Պահլաւունին,

Չի մընացին եւ աճեցին,
    Փրանկ ընդ Հայս միաբանին:
Արդ առաջնորդք նոքա լինին
    արիական Փրանկ ազգին:
Առցին զգաւառն Արարատեան,
    որ է տեղիք Լուսաւորչին.
Թագաւորին յէջմիածին
    Վաղարշապատ սուրբ քաղաքին»:

Հեղինակն իրեն համար վերջը գրում է.

«Ես անարժան ամենայնի
    որ վարդապետ անունս կոչի…
Եւ սասացին տէր ողորմի
    ինձ Բազմամեղ Առաքելի:

Դա չի կարող Սիւնեցին լինել, որ այդ ժամանակ կենդանի չէր լինիլ:

Ողբի կարեւոր նպատակն է մարգարէական տոնով քաջալերել լքուածներին եւ յուսադրել քաղաքական ազատութեան վերաբերմամբ, կենտրոնը Վաղարշապատ, որ չունի Շնորհալին:

Բանաստեղծութիւնը, որ իր գաղափարով կարեւոր եւ ուժեղ է, այնքան թոյլ է իր միակերպ ձեւով. բայց ժամանակակիցների համար անշուշտ արժէքաւոր, նրանց հարկաւոր է բովանդակութիւնը, որ է կենդանի, յուսալից շնչով ու հաւատքով, թէ հնուց «սուրբ հայրապետներից» մարգարէութիւն կայ Փրանկաց ազգի գալու համար, այն էլ իբր Տրդատի զօրքից (ազատներից) արեւմուտքում մնացած հայերի առաջնորդութեամբ:

Այդ հաւատը մնում է մինչեւ օրս, այժմ էլ նախորդ իմպերիալիստական պատերազմից հայ ժողովրդի եւ Հայաստանի մեծ աւերմունքի ժամանակ դեռ կենդանի մնում է յոյսն ու հաւատը, թէ Հայաստանը, ինչպէս առասպելական Փենիքսը, մոխիրների միջից կը վերակենդանանայ եւ կ'աճի:[1]

1 Առաքել Բաղիշեցու տաղերին եւ նրա մասին գրուած աշխատանքներին ծանօթանալու համար դիմել Հայկական ՍՍՌ Պետական Գրապալատի հրատարակած «Հայ հին եւ միջնադարեան գրականութեան համառօտ բիբլիոգրաֆիա»-ին, կազմեց Յով. Պետրոսեան, Երեւան 1941, էջ 163—164: Խմբ.

## ՏԱՂԱՍԱՑՈՒԹԻՒՆ[1]

1. Մկրտիչ Նաղաշ:— *Մինչեւ 14-րդ դարը մեր բանաստեղծութիւնն արդէն ունի ձեռք բերած իր գլխաւոր թեմաները՝ կրօնական-միստիքական զգացումն ու մտածութիւն, հայրենասիրութիւն, բնութիւն ու սէր, աշխարհի ունայնութիւն ու մահ եւ խրատական երգեր, այսինքն՝ քնարերգութեան գրեթէ բոլոր խնդիրները: Մի տեսակ ինքնուրոյն վերածնութիւն քրիստոնէականի եւ հեթանոսականի միացումով:*

*Յաջորդ դարերում այդ միեւնոյն անսպառ նիւթերի մասին միայն աւելի արուեստաւոր եւ ուժեղ ու նորանոր կողմերով պէտք է երգեր յօրինուէին: Բայց մեր կեանքը թաթարաց լծի տակ ճնշուած էր, երբ քաղաքական ազատութիւնը ոչնչացուած էր եւ խաւարած էին լուսաւորութեան կենտրոնները թէ՛ կենտրոնական Հայաստանում եւ թէ՛ Արեւելքում ու Արեւմուտքում: Բնականաբար այս աղետալից շրջանում չէր կարող զարգանալ այդ վերածնութեան ոգին: Զարմանալ միայն կարելի է, թէ այդ հարստահարութիւնների ու կեղեքումների, այդ անվերջ պատերազմների ու աւերմունքների շրջանում ի՛նչպէս չի մեռնում բոլորովին բանաստեղծութիւնը եւ դեռ մինչեւ անգամ երեւան են գալիս մի շարք բանաստեղծներ, որոնք իսկապէս զարգացնում են մեր բանաստեղծութիւնը: Դժբախտաբար, այդ բանաստեղծներից շատ բան չի մնացած, շատ բան էլ դեռ ձեռագրերի մէջ է եւ եթէ տպագրուած են՝ ցրիւ են, ուստի այժմ իսկապէս չենք կարող մեր բանաստեղծութեան զարգացման ճիշտ պատկերը տալ: Մենք խօսենք միայն մի քանիսի մասին, որոնց երկերն աւելի են յայտնի:*

*Դրանց մէջ առաջին տեղը, ըստ ժամանակի, ունի Մկրտիչ Նաղաշը՝ ծնուած Բաղէշ քաղաքի մօտ, Պոռ գիւղում:* 1430 *թ. ձեռնադրուել է եպիսկոպոս եւ այնուհետեւ եղել է առաջնորդ Ամիդ քաղաքի: Մեռած պիտի լինի* 1470–1480 *թուերի մէջ: Եղել է ծաղկող կամ նկարիչ, միաժամանակ եւ բանաստեղծ: Նա կեանքը նուիրած է եղել իր հօտի բարօրութեանն այն նեղ ժամանակներում, Ամիդի բռնակալներից ստանալով որոշ դիւրութիւններ եւ իրաւունքներ հին եկեղեցիները նորոգելու եւ նորերը շինելու:* 1440*-ական թուականներին, երբ մոլեռանդ մահմետական ամբոխը քանդում է նրա մեծ ջանքերով շինած գեղեցիկ կաթուղիկէն, նա սրտի ցաւից հեռանում է Ամիդից՝ պանդխտելով Կ. Պոլիս եւ ապա Կաֆա (Թէոդոսիա). բայց յետոյ նրան դարձեալ հետ են բերում իր վիճակը, ուր նա ոչ միայն բարեկարգութիւն է մտցնում, այլեւ Ջահանշահի աւերմունքների ժամանակ* (1450 *թ.*), *իբրեւ մխիթարող հովիւ է հանդիսանում իր հօտի համար, խնամք տանելով աղ-*

---

1 *Այս բաժինը կազմում է երրորդ շրջանի վերջին մասը:* Խմբ.

քաներին, գերիներին գնելով եւ ամէն տեսակ օգնութիւն հասցնելով կարօտեալներին:

Մկրտիչ Նաղաշը թէպէտ ունի մի–երկու երգեր վարդ ու բլբուլի մասին, ինչպէս եւ ուրիշները, ու ծաղիկներով այլաբանական երգեր, բայց գարունն ու սէրը, զուարթ բնութիւն երգելը չէ նրան յատուկ. Նա շատ լուրջ կրօնաւոր է եւ շատ տոգորուած է իր առաջնորդական վսեմ կոչմամբ, ուստի եւ իր բանաստեղծութեան մէջ եւս մի նպատակ ունի՝ մխիթարել, սովորեցնել, կրթել եւ այլն. Նա սովորեցնում է կրօնական ոգով քրիստոնէական բարոյականութիւնը:

Նրա խրատական ոտանաւորները, մասամբ ունենալով մի քանի գեղեցիկ ներշնչման կտորներ, ընդհանրապէս շատ տժգոյն, թոյլ ու միակերպ են, թէպէտ դրանց մէջ էլ երեւում է ազնիւ վարդապետն իր բարոյական հասկացողութեամբ եւ անկեղծ զգացումով: Այստեղ նա ամէն չարիքի աղբիւրը, աշխարհի սկզբից ի վեր, անձնական փորձից սովորած, համարում է մարդկանց երկու կիրքը՝ ագահութիւն («Վասն ագահութեան») եւ ոխակալութիւն («Սրտով խռով չկենալու եւ ոխ չպահելու»):

Ի սկզբանէ մինչ ի վախճան
Ամէն վնաս որ գործեցան,
Ագահութիւնն եղեւ պատճառ,
Որ ի բարեացն զրկեցան:

. . . . . . . . .

Ագահն գայլ է պատառող
Եւ ծարաւի արեան մարդկան...
Կաթուղիկոսքն շատացան
Անօրինացն բռնութեան,
Եպիսկոպոս օրհնեն անրան,—
Ամէնն վասն ագահութեան:
Եպիսկոպոսք զկանոնն անցան,
Որ պոռնկաց կուտան հրաման,
Կաշառ առնեն կարմիր դեկան,—
Ամէնն վասն ագահութեան:
Վարդապետերս որ նոր ելան,
Բանին եղեն վաճառական,
Եւ քարոզեն զհաճոյս մարդկան,—
Ամէնն վասն ագահութեան:
Հաբեղանին զվանքն ուրացան,
Եւ ի գիւղօրայքն ի շուրջ կուգան.
Սաղմոս ասելն մոռացան,—
Ամէնն վասն ագահութեան:
Երիցաներն յիրար կռուան,
Բիր վերուցին եւ դաւազան,
Փետեն մօրուս, կոտրեն բերան,—
Ամէնն վասն ագահութեան:

Ագահութեան հետ միասին աշխարհի չարիքների պատճառն է ոխակալութիւնը, վրէժխնդրութեան ոգին: Եւ, բնականաբար, Նաղաշը չափաւորութեան հետ քարոզում է եւ քրիստոնէական ներողամտութեան, խաղաղասէր ու անյիշաչար ոգին: Ոխակալ մարդը, ինչքան էլ աղօթք անի ու պահք պահի, Թեկուզ կուսութեամբ անց կացնի կեանքը ու աստուածային բոլոր օրէնքները պահի եւ իմաստութեան աղբիւրը լինի, — «բաժին չունի ի Քրիստոսէ»: Ընդհակառակը, հաշտ ու ներողամիտ ոգով, չարին բարի անելով՝

Թէ ի յատակս դժոխոց ծանր մեղօք ընկղմեալ ես,
Թէ խոնարհիս քո ընկերին, յերկնից խորանն վեր ելանես:

Եւ բանաստեղծը մէկ մէկ թւում է այն վատթար գործերը, որ գործուել են ու գործւում են ագահութիւնից, — գողութիւն, հաւատուրացութիւն, ընտանեկան երկպառակութիւն եւ այլն, պատերազմներ, արիւնհեղութիւն, աւերմունք ու գերութիւն: Նոյն ագահութիւնն է պատճառ դարձել եւ մեր եկեղեցու անկման. կաթողիկոսները շատանում են (ըստ ժամանակակից Թոմա Մեծոփեցու՝ մի քանի տարուայ մէջ վեց կաթողիկոս են փոխում եւ վեցն էլ թունաւորուած մեռնում), եկեղեցականների անկարգութիւնը մեծանում, բոլորը միայն ագահութեան համար: Մկրտիչ Նաղաշի այն կտորները, որ ժամանակի այս ընկած դրութեանն են վերաբերում, իսկապէս շատ կծու եւ դառն են, եւ դրանք մեր բանաստեղծութեան մէջ առաջին բաւական գեղեցիկ դսրովանքն են ապականուած եկեղեցականութեան:

Նաղաշն իբրեւ իսկական բանաստեղծ, Թէպէտ դարձեալ խրատական ոգով, հանդէս է գալիս չորս քերթուածի մէջ, որոնք ձեւով շատ անզարդ են, բայց լի են զօրեղ եւ համակող զգացմունքով. նա դրանց մէջ դրել է իր ապրած կեանքն ու սիրտը, եւ քնարականութեամբ զարդացրել խրատական բանաստեղծութիւնը: Բացի այդ՝ փայլուն ձեւի փոխանակ, որ պակասում է, նա երկու քերթուածի մէջ մտցրել է երկախօսութիւնը, որ շատ կենդանացնում է գրուածքի ընթացքը: Նիւթի տեսակէտից նոյնիսկ նորութիւն ու թարմութիւն ենք գտնում այդ բանաստեղծութիւնների մէջ:

Առաջին անգամ նրա մէջ գտնում ենք պանդխտութեան մեծ վիշտն ու Թշուառութիւնը պատկերացած, որ մեր ժողովրդի սրտի տխուր լարերից մէկն է եղել ամենահին ժամանակներից սկսած մինչեւ օրս, եւ որ բանաստեղծն զգացել է իր հոգու խորքով.

Զղարիպին հալն գիտեմ, որ վա՛յ կու տամ...
Զղարիպութիւնն յորժամ յիշեմ քան զուռ դողամ:

Պանդխտութեան երգերը, անշուշտ, Նաղաշից աւելի վաղ են ծագել մեզանում, քանի որ նրանից առաջ դժբախտ ճակատագիրը շատ անգամ ստիպել է հայերին ոչ միայն խմբերով գաղթել՝ բռնի եւ յօժարակամ կտրուելով հայրենիքից, այլեւ ժամանակաւոր կերպով դիմել օտարութեան՝ ընտանիքի ապրուստը ճարելու եւ բռնակալների հարկահանութեանը բաւականութիւն տալու համար:

Պանդխտել են եւ Նաղաշի՝ իրեն նման մարդիկ: Դրանց՝ այդ օտար երկիր թափառողների բոլորի վիճակը շատ խղճալի է, եւ այդ այնպես ուժեղ կերպով պատկերացնում է մեզ բանաստեղծը իր երկու երգի մէջ, որ նրան կարելի է համարել մեր առաջին մեծ պանդխտի երգիչը:

Ղարիպին կեանքն է լալի ողբերգական,
Դառն ու լեղի, լի տրտմութեամբ ի նեղ զընդան»...

. . . . . . . . . . . . . . .

Աւա՜ղ զղարիպն ասեմ, որ յօտար երկիր հանդիպի,
Աչերն արտասուօք ի լի, յերեսէն ի վայր կութափի.
Յորժամ ի մեջլիս նստի, յանկասկած սրտիկն արունի,
Ձաչերն ի բոլորն ածէ, կարեւոր եւ զոք նա չունի:

Առաջին մեծ ցաւը սրտնեղութիւնն է, որ ունի իր սիրելիներից զըրկուած պանդուխտը, այն, որ նրան ճանաչող ու հասկացող չկայ, չունի կարեկից ասպնջական. մարդը մենակ է մարդկանց մէջ, ինչպէս մի բանտում, նա խորտակւում, նուաստանում է հոգեպէս:

Որ թէ լինի պարոնորդի եւ աննման,
Հանած վարած ասեն նմա մոլորական:...

. . . . . . . . . . . . . . .

Ղարիպին խելքն է կորեր, միտքն է մոլար.
Եւ թէ լինի քան զՍողոմոն մտօք ճարտար,
Որ թէ խօսէ բան մի քանի անդլին ճոհար,
Սատեն նմա թէ լուռ կացի՛ր, անգէ՛տ յիմար:

Միայն բնական կարօտը չէ ուրեմն, որ նրան յիշել է տալիս իր սիրելիներին, ու ցանկանում է տուն դառնալ, այլեւ այն, որ նա ապրել է ուզում, ապրել մարդկանց մէջ, այդ է, որ նրա կեանքը դառնացնում է, հացը լեղի դարձնում, սիրտը փորում գալարեցնում.

Հողի՛, մի՛ ասեր ղարիպ,
Թէ չէ՛ իմ սիրտս կարունի,
Ղարիպն ի յօտար երկիր
Գեմ խիստ դիժար կուլինի:

Այս դեռ նիւթական պակաս չունեցող պանդուխտն է. իսկ աղքատ պանդուխտը եւ նրա անհանդիստ մտատանջութիւնը, անքուն գիշերների հոգսը թէ «վայ՜ւն ես ի՞նչ լինիմ դերիս, երբ լուսանայ»: Եւ բանաստեղծը նկարում է մեզ քաղցած ղարիպի շատ ողորմելի վիճակը, երբ նա «երես ի քաշ» փողոցներն է դուրս գալիս մի կտոր հաց մուրալու. շատերը նրա առաջը դուռը փակում են ու մի կաթ ջուր էլ չեն տալիս. եւ նա նստում, լալիս է: Բայց պէտք է ապրել, ճար չկայ. նա գնում փոխ է ուզում. ոչ ոք չի տալիս: Եւ նա ստիպուած գնում մտնում է մի տուն՝ քաշուելով «ի տան տիրուն զինչ ի շանէն խիստ վախելով», բայց դարձեալ դուրս են հրում

անարգելով, եւ նա ետ է դառնում տրտում եւ արտասուելով։ Եւ վերջապէս ամաչելով մտնում է մի տուն, ուր հազար բարիքով լի սեղան է դրած։

Նա՛ հազար դէչ ասեն նմա անարգելով,
Ապա թէ տան կտոր մի հաց տրտնջելով...

Բայց որքա՜ն թշուառ ու ողորմելի է, երբ այսպիսի ղարիպը հիւանդանում է փողոցում՝ անտէր, մէն մենակ, եւ մեռնում ու թաղւում է։ Շատ թանձր գոյնով է նկարում բանաստեղծն այս ողբալի տեսարանը, այս մեռնող պանդխտի հոգեկան ու ֆիզիկական տանջանքները եւ մարդկանց անգթութիւնը դէպի իրենց նմանը․

Եւ կայր անկեալ մէջ փողոցին անտիրական...
Ծիծաղելով առին տարան յեղեր հողին...

Բաւական չէ, որ բանաստեղծը հոգու խորին կարեկցութեամբ լցուած նկարագրում է այդ թշուառութիւնը, այլեւ նա չի մոռանում վերջում կարեկցութիւն քարոզելու իբրեւ վարդապետ եւ նոյնիսկ աղօթելու ամէն ղարիպների համար, որ Աստուած օգնէ նրանց եւ հասցնէ իրենց փափագին։ Մի քերթուածի մէջ, որ երկախօսութիւն է պանդխտի եւ իր բարեկամի մէջ՝ պանդուխտն իր վշտահար սիրտն է բաց անում, նմանեցնելով իրեն երամից զատուած ու մոլորուած մի երերուն թռչունի, որ հանգիստ կը գտնի միայն այն ժամանակ, երբ երամին կը հասնի։ Նրա համար այնքան սոսկալի է պանդխտութիւնը, որ նոյնիսկ «ղարիպ» բառը լսել չի ուզում։ Բանաստեղծն աշխատում է փորձել սփոփել պանդխտին, թէ հոգ չունի, մէկ [օր] Աստուած նրան էլ կը դարձնի հայրենիք։ Բայց պանդուխտն ամենեւին չի մխիթարւում, եւ վերջիվերջոյ բանաստեղծին ուրիշ բան չի մնում, բայց եթէ ասել․

Ամէնքս եմք ղարիպ, եղբա՛րք, հայրենի մարդ իսկի չունի,
Հաւասար գնալու եմք, զի այն կեանքն է մեզ հայրենի...

Այս միեւնոյն գործնական, խրատական մտքից է ծագում նաեւ Մկրտիչ Նաղաշի հայեացքն ու երգն աշխարհի ունայնութեան մասին, որ բաւական մօտ է Կ․ Երզնկացուն, թէպէտ ոչ այնպէս փայլուն ու գունագեղ, բայց ոչ պակաս ներքին ուժով եւ ինքնայատուկ շնորհքով։ Նա եւս աշխարհի ունայնութիւնը տեսնում է նրա անհաստատութեան մէջ։ Աշխարհը մարդուս բարիք չի տալիս․ եթէ մի օր ուրախութիւն է տալիս, յետոյ գալիս է մշտական դառնութիւնը․ մարդս միմիայն խաբուսիկ յոյսերով է ապրում, եւ իզուր հանգիստ, ուրախութիւն ու հարստութիւն որոնելով՝ աշխարհի հոգսերով ու մեծ աշխատանքներով տառապում, եւ դեռ ոչինչ չստացած՝ մէկ օր էլ յանկարծ գալիս է մահը եւ «յարեւուն դատարկ հանէ եւ առնէ ողորմ ու լալի»։ Եւ ագահութեան դէմ երգող վարդապետի համար՝ խրատական եզրակացութիւնը պիտի լինէր յորդորը՝ չսիրել աշխարհը աւելի, քան կարեւոր է, չփարուել նրան եւ ապրել անասունի նման, չցանկալ հարստութիւն ու մեծութիւն, այլ բարին գործելով բաւականանալ կերակրով ու հանդերձով,

որովհետեւ «աւելին քեզ ցաւ կը լինի»: Ունայնութեան երգն, ուրեմն, Նաղաշի գրչի տակ դառնում է մի խրատ, շատ զգացուած ու խորը գիտակցուած, մի բացատրութիւն, թէ չպէտք է ագահ լինել, որովհետեւ ագահութեան մէջ ոչ մի խորհուրդ չկայ, քանի որ մարդն ինքը չի վայելում իր մեծ աշխատանքները.

Բայց դու զայս գիտացի՛ր թէ յի՞նչ կու դառնաս,
Երբ թողուս օտարաց 'ւ ի հող մտանես:

Անշուշտ, Նաղաշը չի քարոզում անգործութիւն եւ ոչ էլ աշխարհուրացութիւն, ինչպէս միստիք Նարեկացին. այլ միայն անցաւորի համար, որ մարդ ինքը չի վայելելու, չաշխատել անասունի նման եւ չմոռանալ հոգեւորը, յաւիտենականը. նա միայն չափաւորութիւն է քարոզում.

Աշխարհս տուն է լի գանձով,
Փարթամութեամբ եւ մեծութեամբ.
Այլ եւ սեղան է բարելի,
Որ ամենայն ոք ցանկանան.
Որք իմաստուն են, հաւատով
Ըզչափաւորն առնուն, գնան:

Եր. 13

Ինչքան էլ աշխարհն ունայն է համարում, եւ մարդկանց աշխարհի մէջ մի ժամանակաւոր հիւր միայն, բայց եւ այնպէս նա չի արհամարհում աշխարհը, ուստի եւ բոլորովին անտարբեր չի համակերպում մահուան առաջ.—

Ճանապարհ հեռաւոր ունիս գնալու.
Ճար չունի՛ս, ճար չունիս փրկիլ ի մահու.—

յուզուած բացականչում է նա մահուան համար, դիմելով ինքն իրեն, եւ ապա նկարագրում իր իսկ տենչն ապրելու մահուան րոպէին.

Յորժամ մահ քեզ տիրէ 'ւ օրն հասանի,
Եւ հոգիդ ի մարմնոյդ ելեալ բաժանի,
Նա՛ հայիս աստ եւ անդ ողորմ ու լալի,
Ոչ օգնէ քեզ եղբայր եւ ոչ սիրելի:
Շուրջ ածես ողորմուկ զաչերդ ու նայիս,
Հետ թափես արտասուք ու հետ շուարիս.
Ոչ օգնէ մեծութիւն 'ւ ոչ սէր աշխարհիս,
Զինչ բարի գործեցեր՝ նա զայն տի տանիս:

Եր. 6–7

Մահը եւ ապրելու այս տենչն աւելի զօրեղ կերպով երգել է Նաղաշը «Ողբ վասն մեռելի» քերթուածի մէջ, գրուած 1469 թ. Մերտին քաղաքի կոտորածի մասին ժանտախտից, որ վարդապետն ինքն իր աչքով տեսել է.

Աչօք տեսայ դառն կսկիծ ողորմագին․
Լալով լացի եւ ողբացի արտասուագին,
Դառն արտասուօք զողբս ասացի նոր մեռելին…

Այդ ողբը մի ժամանակ մեծ ժողովրդականութիւն է գտել՝ երգուելով Նորատի ննջեցելոց յուղարկաւորութեան ժամանակ եւ մինչեւ անգամ մտել է Մաշտոցի մէջ, ուստի եւ փոփոխութեան է ենթարկուած, մէջն աւելացրած են տներ, որ ուրիշ օրինակներում չկան։ Բանաստեղծին, բնականօրէն, ոչ մի հասակի մարդու մահն այնպէս ցաւ չի պատճառում, որքան անմեղ երեխաների, Նորատի մանուկների ու երիտասարդների, որոնք այնքան հեռու են մահից, եւ նա, ծերութեան հասակում, շատ սրտառուչ, խորին յուզմունքով նկարագրում է այդ մահը, որ ամէնից արտասուելի է․

Լացէ՛ք այսօր եւ ողբացէ՛ք ամենեքեան,
Դառն արտասուօք հառաչեցէ՛ք դուք միաբան․
Զի հանց կսկիծ այլ չէ տեսեր մարդ բանական,
Որ սար ու ձոր եւ ծառ ու ճեղ ամէն կուլան։
Աղէկ մանուկ աղւոր պատկեր արեւնման,
Ցունքն կամար, աչքն կանթեղ էր յանդիման,
Ցամէն անձամբ եւ հասակօք ինքն աննման,
Ամէն մարդոյ էր սիրելի եւ սիրական…
Մանուկ անկեալ եւ թաւալէր ողորմագին,
Քանզի հասեալ էր օր մահու բուռն առենին,
Հայէր ողորմ յաջ եւ ի ձախ, քակտէր հոգին,
Ճար չունէր, ոչ օգնական յայնմ առենին։
Ցայնժամ ելաց, լալով ասաց․ «Ինձ խղճացէ՛ք,
Եւ զենէհար ի մահուանէն զիս թափեցէ՛ք,
Եւ ի ձեռաց սուրբ հրեշտակին ազատեցէ՛ք,
Զի դեռ մանուկ եմ, զենէհար, զիս գնեցէ՛ք»։

Այս մեռնողը ողիողորմ կերպով հօր երեսին է նայում, աղաչելով, որ օգնի իրեն․ Թշուառ հայրը պատասխանում է հառաչելով՝ թէ պատրաստ է հոգին տալու որդու փոխանակ, բայց ոչ մի բան չունի փրկելու նրան, եւ որդուն ուրիշ բան չի մնում, բայց եթէ լալ իր «կանաչ արեւն մանկութեան»։

Գեղեցիկ գոյնն երեսաց թառամեցաւ,
Եւ ծովային աչքն ի լուսոյ պակասեցաւ,
Վայելուչ զօրեղ բազուկըն թուլացաւ,
Լար արծաթոյ ոսկի մանեակըն մանրեցաւ։

Եւ մեռնողն իր վերջին հրաժեշտը տալով եւ իր համար պատարագի հող տանելով ընկնում է «դառն ու դժուար ճանապարհը», որ նա չի կամենում գնալ, որովհետեւ դեռ ժամանակը չէ․ դեռ սրտում փափագներ ունի, որ նա անկատար հետը գերեզման է տանում։ Այս մահը եւ Նարեկացու մահը արդէն որքա՜ն տարբեր են․ վերջինս ամենեւին չի յուզւում եւ չի ցաւում,

թէ կեանքից զրկուելու է, այլ միմիայն իր հոգու փրկութեան համար է հոգում, մեռնելիս անգամ միմիայն ապաշխարելու եւ աղօթելու վրայ մտածելով· իսկ այստեղ էականն է այս դառն ցաւը աշխարհը թողնելու համար· փրկութիւնն արդէն ձեւական է դարձել· «Ջենէհար ինձ պատարագ դրէք պաշար», «սուրբ աղօթիւք զիս յիշեցէք դուք միաբան, պատարագօք հաշտեցուցէք զԱստուածն բան, որ զիմ հոգիս արքայութեան առնէ արժան»։

2· Քերովբէ։— *Մահուան այս երգը, որ մեր քնարերգութեան ամենադըլխաւոր թեմաներից մէկն է, իր ձեւով եւ բովանդակութեամբ կատարելութեան է հասել «Քերոբէի տաղի» մէջ («Հայ էջեր», եր·* 76, 1 *տ·*)*։ Թէ ո՛վ է այդ տաղի հեղինակ Քերոբէն, ո՞ր դարում է ապրել եւ ունե՞նք արդեօք նրանից մնացած ուրիշ քերթուածներ եւս, այդ յայտնի չէ։ Ըստ Հ· Պատուբեանի* (Les Trouvères Arméniens, *եր·* 163)՝ *նա ապրած պիտի լինի* 15–*րդ դարու վերջերում։ Այսպիսի երգիչը չէր կարող ուրիշ տաղեր եւս յօրինած չլինել· բայց դժբախտաբար մինչեւ այժմ բան յայտնի չէ։ Այդ տաղի մէջ նա հանդիսանում է իսկական արուեստաւոր երգիչ։ Նիւթը Մկրտիչ Նաղաշի նոյն երիտասարդի մահն է, եւ նկարագրի մէջ էլ մէկ–մէկ նոյնը։ Բայց մինչ Նաղաշը ինքն է երգում եւ մեռնող մանուկին ու իր հօրն է խօսել տալիս, այստեղ բանաստեղծը գերեզմանից դուրս է կանչում նոր թաղուած մեռելին եւ նրան խօսել տալիս իր մասին։ Բանաստեղծը քնարերգութիւն չի յօրինում, այլ վէպ· սեղմ, խորացրած գործողութեամբ ու նկարագրով, որ խիստ սրտառուչ ազդեցութիւն է թողնում, երբ բանաստեղծն իր սեփական զգացումն արտայայտում է «Վա՛յ անձն իմ, եղուկ, հազար վա՛յ» բացականչութիւններով, որ կրկնում է ամէն էջում իր պատմածի եւ թէ մեռելի՝ ամէն մի անից յետոյ եւ ուժեղ ցնցում ընթերցողին, մտածմունքի մէջ ձգելով, չնայելով ինչը բանաստեղծը եւ նոյնիսկ գերեզմանից խօսող մեռելը շատ մեղմ ու հանդիստ են պատմում։ Բանաստեղծն իր ամբողջ էութեամբ զգացել է մահուան սոսկումը, որ շատ մեծ է եւ մեծ է յուզիչ կացութիւններով եւ կեանքի ու մահուան զօրեղ հակադրութիւններով։ Հէնց սկզբից մարդուս Փիզիկականի համար ստանում է մի սարսուռ գերեզմանի առաջ, որի մէջ հոտում է գեղեցիկ ու խիստ նազելի մանուկը·*

*Երէկ հողվերօքն անցի, հոտ առի զքիմըս կափուցի,*
*Բայլ մ' երկուք յառաջ գնացի, նեղ ու խոր գնդան մի տեսի·*
*Վա՛յ անձն իմ, եղո՛ւկ, հազար վա՛յ։*
*Մանուկ մի պառկած տեսի գեղեցիկ ու խիստ նազելի,*
*Հարցուկ ես նորա եղայ թ' ի՞նչ կանես, այդ քեզ չէ տեղի·*
*Վա՛յ անձն իմ...*
*Դարձաւ ու ճուղապ ետուր թէ՝ կանգնե՛ց, կորիճ գովելի,*
*Ես ա՛յլ քան ըղքեղ էի գեղեցիկ ու այլ ցանկալի·*
*Վա՛յ անձն իմ...*

*Մեռելի առաջին խօսքերից մենք խորն զգում եւ տեսնում ենք մարդուս դառն ճակատագիրը, որ ոչինչ է ինքը, եւ այսօրուայ զուարթ ու փարթամ մարմինը վաղը մի զզուելի դէշ է, եւ ի զուր կափուցանում է քիմքը ու*

հեռու փախչում, քանի որ ինքը մեռելի ընկերն է, բայց երբ մանուկն սկսում է պատմել իր անցած կեանքը, իր հոգեւարքի գալարումները, նրա ամէն մի խօսքը մուրճի պէս հարուածում է մեզ, որովհետեւ մենք տեսնում ենք քաղցր եւ լաւ բաների կործանումը, տեսնում ենք կեանքի եւ մահուան անհուն տարբերութիւնը եւ մարդուս կատարեալ անզօրութիւնը: Մի կեանք, որ ճոխ, ուրախ ու լիառատ, անհոգ ու առոյգ է, մի մարմին, որ ուժեղ ու գեղեցիկ, առոյգ եւ շնորհալից է, մի մարդ, որ ամէնքի համար ցանկալի ու հիանալի է, շրջապատուած սիրելի ազգականներով ու բարեկամներով, մի խօսքով՝ ամէն բարեմասնութիւններով լի, մի կատարեալ բախտաւոր մարդ, որ մահուան մասին երբեք էլ չի մտածում եւ իր բարի գործով չի պատրաստուել անդէնի համար. որովհետեւ մահն իրենից շատ հեռու է երեւակայել, այլ միայն կերել, անուշ խմել է, ճարտար խօսել, այս մարդը յանկարծ ցաւից բռնւում է. նա սկզբում զարմանում է, որ հիւանդացել է, բայց շուտով ընկնում է անկողին, թուլանում ու կարկամում է: Ողորմագին ուզում է, որ օգնեն իրեն, բայց չեն կարողանում օգնել, մարմինը թուլանում է, լուսատու եւ ցանկալի աչքերը կուրանում են, զօրաւոր բազուկը անշարժ է մնում, զարմանալի ճարտարախօս լեզուն կապւում է եւ վերջիվերջոյ ասում է մանուկը.

Հոգիս ի մարմնոյս ելաւ, ու մընաց մարմինս դարշելի,
Այն իմ սիրելիքն ամէն ողբալով լային դէմ ինձի.
Վա՛յ անձն իմ, եղո՛ւկ, հազար վա՛յ:

Բայց այդ չէ միայն մարդուս ոչնչութիւնը. լսենք մեռելին եւ տեսնենք նրա ողբալի վիճակը, որ անխուսափելի ճակատագրականութիւն է:

Այն իմ քոյր 'ւ եղբայր՝ որ խուրեանց էի ցանկալի,
Շուտով ինձ պատանք բերին՝ «Թէ՛զ հանէք որ, խիստ չհոտի»:

Սիրելինե՛րն իսկ, ուրեմն շուտ դէն են շպրտում իրենց սիրեցեալին, որ արդէն «դարշելի» է: Դրանից էլ աւելի դառնութիւն չի կարող լինել:

Կոստանդին Երզնկացու մէջ արդէն, որ նոյնպէս երգում է գեղեցկի մահը, կայ այդ դարշութիւնը, բայց նուրբ. այնտեղ մահը գեղեցիկ մարդկանց միայն «քաշէ զերեսին գոյնն, որ է զերդ ծաղիկ», «ոչ այլ գեղեցիկ երեւին սուրաթով», «որ ոչ աչք ունին, ոչ լեզու կամ բերան. դարձել են փոշի եւ ոսկերք են ցամաք, այն անձն, որ պայծառ էր, քան զճիւն ըսպիտակ»: Մկրտիչ Նաղաշի մէջ «աւաղ զայն աղուոր մանկտիքն, որ դարձան ի հող եւ ի փոշի»: Իսկ Քերովբէի մէջ գեղեցկութիւնը գարշանքի է վերածւում, մի զզուելի ոչնչութեան, որից թրթռում է բանաստեղծի վշտահար սիրտը:

Բայց այդ չէ միայն: Նրանք ինչպէս գերու, կողոպտում են նրան՝ կարծես ապացուցելու համար, թէ չպիտի սիրել աշխարհի փառքն ու հարըստութիւնը, խլելով զարդարանքներն ու հագուստը, ու իրենցից շատ հեռու խոր ու պէճ զնդանի մէջ հողով ծածկում եւ ասում, թէ «անշարժ եղիցի»:

Ահա թէ ի՛նչ է պահուած մարդու համար, թող նա քիմքը չկափուցանի

եւ չշտապի հեռու փախչել: Միջնադարեան հաւատացեալի համար, սակայն, մահուան արհաւիրքն աւելի երկարատեւում է հանդերձեալի տեսարանով, մահով չի ոչնչանում մարդը, մեղաւոր մարդը,

Խիստ ողորմելի է մարդ, որ մեղօքն ի հողն իջանի.
Երթայ նա անլոյս խաւար, տարտարոս 'ւ ի հուր գեհենի.
Ոչ սուրբ բարեխօս լինի, ոչ եղբայր եղբօրն օգնելի:

Մկրտիչ Նաղաշի մէջ գոնէ այն միամիտ հաւատը կար, թէ պատարագը, մնացողների աղօթքը կ՚օգնի մեռելին. այստեղ այդ ամէնը անարժէք է. միակ բարեխօսը մնացել է Աստուածածինը, որին դիմում է նաեւ Նաղաշը, եւ միակ միջոցը սեփական բարի գործն է կենդանութեան ժամանակ, բայց այդ էլ չի անում մարդ, հարուստ մարդը,[1] որովհետեւ չի հաւատում իր մահուան, եւ իր գործն այնպէս չի բռնում, որ մեռնելիս չչուարի:

Մըսքին Քերովբէ՛ անխել բանքդ է պաղ ու խօսքդ է քամի,
Թէ խիստ իմաստուն ես դու, նայ արա ճարակ դու քեզի.
Քանի յաշխարհիս կայեր՝ չես գործեր դու գործ մի բարի,
Ըզփառս աշխարհիս սիրէ՛, որ կորուստ է՛ քեզ 'ւ ամենի:
Վա՜յ անձն իմ, եղո՜ւկ, հազար վա՜յ:

3. Յովհաննէս Թլկուրանցի:[2] — Մինչ Քերովբէի տաղի մէջ աւելի մարդուս ոչնչութիւնն ենք տեսնում, քան սարսափը մահից, Յովհաննէս Թլկուրանցու մահուան երգերի մէջ՝ ընդհակառակն: Այս բանաստեղծը, որի կենսագրութիւնից միայն այսքանը գիտենք, որ 1489—1525 թ. եղել է Սսի կաթողիկոս, իր ամբողջ էութեամբ դողում ու սարսափում է մահից, որովհետեւ ամենամեծ չարիքը, որ կայ մարդու համար, դա մահն է.

Է՜, մա՛հ, քանի ըզքեզ յիշեմ՝
Կու դողամ եւ կու սարսափիմ.
Չկայ քան ըզքեզ լեղի,
'Ի ամենայն լեղւոյն լեղի ես:
Լեղի՛, 'ւ ամենայն լեղւոյ՝
Մի՛թէ դու ի քե՞զ նման ես.
Դժոխք քան զքեզ լեղի,
Եւ յետոյ զայն ալ դու բերես:
(Եր. 46)

Նա այնքան ատում է մահը, որ նոյնիսկ բողոքում, զայրանում է Աստուծոյ դէմ, որ քէն պահելով մարդոց դէմ՝ մի յանցանքի համար մահ է ստեղծել:

Է՛, մա՛հ, դու քէն ունիս,
'Ի Ադամայ որդին կու հանես.
Կամ՝ մեղաց հարուած ես դու,
Ի մահու պտղէն ծնեալ ես:

---

1 Ասլան աղա:

2 Կ. Կոստանեանց, Յովհաննէս Թլկուրանցին եւ իւր տաղերը, Թիֆլիս, 1892:

Մահուան մնացած պատկերացմամբ եւ առհասարակ աշխարհի անցաւորութեան մասին իր հասկացողութեամբ Թլկուրանցին չի տարբերւում նախորդներից․ միայն որովհետեւ նա խիստ ատում եւ սարսափում է մահից, ուստի եւ հանգիստ երգել չի կարողանում այդ նիւթերը, այլ ընդհակառակը, նոյնիսկ եօթանասուն տարեկան հասակում մի բուռն եւ ուժգին թափով պատկերացնում է մահուան ոչ միայն դաժանութիւնը, այլեւ ամենայաղթ ուժը, որ ոչ մի մարդու, ոչ սրբի ու մարգարէի, ոչ ուժեղի ու թագաւորի մոհլ չի տալիս, այլ ամէնքին հաւասար ընկճում, հաւաքում է իր բռան մէջ ու խորտակում, եւ ինչպէս Քերովբէի տաղի մէջ, գեղեցկութիւնը անուշահոտ մի զարշելի «դէշ» բան դարձնում․

Թէ հագիր է վեց զրահ,
Նետ նետես 'ւ ի թափ անցընես,
Տանիս զնա ի բանտ ածես,
Դէմ դռանն քար մի ձգես:
Արծիւ ես, յերագ թռչիս,
Լայնածիր զթեւդ տարածես,
Զինչ աշխարհս հզօր մանուկ,
Ի թեւիդ ծայրն ծրարես:
Հազար երանի՛ նորա,
Զոր բարի գործով գտանես․
Հեղեղ բոցեղէն տարեր,
Զոր ի մէջ մեղացն ըմբռնես:
(Եր. 47)

Թլկուրանցու այս անհանգստութիւնն ու սարսափը, նրա զայրոյթը, ատելութիւնն ու զարշանքը մահից՝ ծագում են նրա ընդհանուր խառնուածքից, որի էական գիծն է կենսասիրութիւնը: Նա ոչ միայն ապրելու տենչ ունի, այլեւ գեղեցիկ, ուրախ ու զուարթ ապրելու, եւ կ'ուզէր յաւիտեան այդպէս ապրել՝ միայն սիրելու եւ գեղեցկութիւնը դիտելու համար, Բայց դրան խանգարում է մահը, ոչ միայն նրանով, որ զրկում է սիրելուց ու գեղեցկութիւնը տեսնելուց, այլեւ նրանով, որ, ժամանակի հայեացքով, այդպիսի կեանքն ու սէրն ընդհանրապէս, այս աշխարհի համար վտանգաւոր էր, իսկ այն աշխարհը մարդուս բերողը մահն է: Եթէ չլինէր մահը, մարդ այդ վտանգից ազատ կը լինէր եւ կը սիրէր ու վայելչութեամբ կ'ապրէր ընդմիշտ՝ առանց որեւէ վրդովմունքի: Բայց այն միտքը, թէ մահ կայ, ինչպէս մի թոյն միշտ կաթում է նրա վայելչասիրութեան մէջ, — ահա թէ ինչո՛ւ մահն ամէնից մեծ չարիքն է․

Թէ չէր մահո՛ւն օրն ու դժոխքն
Եւ կամ սարսափ դատաստանին,
Նա՛ այս աղէկ էր զինչ ասաց
Տէր Յովհաննէս Թլկուրանցին:
(Եր. 36)

Այսպէս է վերջացնում Նա իր կենսուրախ սիրոյ երգերից մէկը (տե՛ս եւ եր. 28, 30–31, 37, 49–50)։ Այսպէս է յաճախ վերջացնում, երբեմն եւ սկսում սիրոյ երգերը (տե՛ս նաեւ «Հայ էջեր», եր. 32)։

Բանաստեղծը փորձում է արդարացնել իրեն, թէ սէրը մարդկային բնութեան մի պահանջ է, որի համար մեղադրել կարելի չէ իրեն, քանի որ Ադամից սկսած (եր. 27–33) մարդիկ միշտ յաղթուել են նրանից (եր. 33–34) եւ սուտ է, թէ կրօնաւորներն անզգայ են.

Ինձ մեղադիր յէ՞ր կու լինիք,
Հարիւր տարւոյ հաբեղանին,
Որ ճերմակն է դարձեր դեղին,
Կարէ զկօրտիկ պատարագին
Ու զքեզ ուզէ առջեւ խաչին (եր. 32)։
Սէրն կուտանի զամօթն երեսէն
Ի հաբեղայէն եւ ի վարդապետէն.
Երէց, սարկաւագ կու ձգէ ի կարգէն,
Տանի գլխելքն ի գլխուն, զամօթն երեսէն (եր. 34)։

Թէ վարդապետն զձեզ տեսնու,
Մոռնայ զուսումն ու շատ գրունք (եր. 16)։
...Զմիակեցին խելքն տանիս,
Որ կացեր է զօրն անարատ (եր. 29)։

Եւ վերջապէս Աստուած կնոջը ստեղծել է սիրոյ համար (դու ստեղծիր զկինն ի կողէն վասն Ադամայ սիրոյն համար) (եր. 27), եւ նրան սիրում են ոչ միայն մարդիկ, այլ ինքն Աստուած է սիրում, քանի որ գեղեցիկ կինն արարչութեան պսակն է.

Պարծանք ու վա՛շ քո ծնողին,
Փառք ու պատիւ քո Արարչին (եր. 22)։

Բայց այս մտածումներն ամենեւին չեն հանգստացնում բանաստեղծին, որովհետեւ սէրը դարձեալ մնում է իբրեւ մի մեղանչականութիւն («Ով որ մեղաց ճաշակն առնու՝ այլ Աստուծոյ չի տար խաբար») (եր. 28), ուստի եւ Նա տանջւում է երկուութեան մէջ, ու Նրա սիրոյ եւ ուրախութեան երգերը, մահուան յիշատակով, վերջում մեծ մասամբ դառնում են եւ զղջման երգեր.

Բացէն ասեմ, ճարակ չկայ.
Մահու մեղաց Ներքեւ եմ ես.
Հայիմ ի քեզ, հայիմ ի Նա,
Որ ի հողոյ ստեղծեր զքեզ։
(Եր. 39)

Բայց ինչքան էլ մահը թունաւորում է Նրա հոգին, ինչքան էլ մահուան երգերի մէջ Նա երգում է անցաւորութիւնը, բայց եւ այնպէս Թլկուրանցին յոռետես չէ. աշխարհը Նրա համար ոչ միայն ոչինչ չէ, այլ, ընդ-

հակառակն, ամենալաւ բանն է, եւ նոյնիսկ Ադամայ անմահութեան դրախտից լաւ, որ պիտի վայելել: Երբ գարունն է պայծառ, այգի ու պարտէզ, դաշտ ու լեռներ զարդարւում են կանաչ զգեստներով ու ծաղիկներով, երբ շնչում է անուշ քամին, թռչուններն անուշ երգում, քաղցր գալիս է սոխակի ձայնը, եւ մարդ նստում է վարդենիների մօտ, ծառի թանձր ստուերում, առջեւն ունենալով արագ վազող խոխոջուն ջուրը, ու թեւն ընկերի վզով ձգած՝ սիրով խմում է անուշ գինին եւ ուրախութիւն անում: Դա մի այնպիսի բան է, ասում է Թլկուրանցին, որ դրանից լաւ բան չկայ, եւ մարդ նոյնիսկ Ադամայ դրախտի հետ չի փոխիլ այս կեանքը, եթէ միայն չլինէր մահը («Տաղ գարնան», եր․ 35):

Այս աշխարհասիրութիւնն արդէն այն չէ, ինչ որ Կոստանդին Երզնկացին ունէր իր գարնան եւ արեգակի, լուսոյ եւ սիրոյ փառաբանական երգերի մէջ, որտեղ ամէն ինչ մի կրօնական հրճուանք էր աստուածային բնութեան գեղեցկութեան ու յաւիտենականութեան առաջ: Այստեղ արդէն մարմինն է իշխում իր թանձրացած, երկրաւոր, ցանկական պահանջով․ մարդը երկնային ոլորտներից իջել է իրական աշխարհը եւ իրական կեանքի վայելքը: Իսկ այդ վայելքի մէջ էական տեղը մեր Թլկուրանցու համար բնութիւնը չէ [գրաւում] իր գեղեցկութիւններով եւ խորհրդաւոր ուժերով, որ մարդուն մի հոգեւոր վայելչութիւն է ընծայում, այլ ինքը, մարդու մարմինը․ բնութիւնը նրա, այդ մարմնի համար միայն մի գեղեցիկ զբօսավայր է, մի կանաչ պարտէզ, ուր կարելի է ծառի ստուերում նստել, վայելք քաշել, խնդում անել: Այդ պատճառով Թլկուրանցին, գոնէ ինձ ծանօթ երգերի մէջ, չունի բնութեան երգեր, ինչպէս Կոստանդինը: Նրա «Գարնան տաղը» նոյնիսկ (եր․ 35) մի «ուրախութեան» տաղ է, եւ գարունը նրա համար միայն ուրախութեան ամենալաւ ժամանակն է, որովհետեւ

Գարնանային ամիսն երբ գայ,
Հաւսար ծաղկի ձոր ու դալար․
Գետերդ յորդոր գնացք առնուն,
Ի լեռներուն թափին ի վայր:

Այդ ժամանակ, բնութեան այդ զարթումի հետ՝ զարթնում է մարդու մէջ ուրախութեան եւ սիրոյ բնական յոյզը —

Գէնա բահար, այլ՚ւի բահար,
Այլ՚ւի կու տան սիրոյ խաբար:

Այս պատճառով, սիրելի կինը բանաստեղծին ներկայանում է գրեթէ [միայն] իր գեղեցիկ մարմնով, որ յափշտակում է նրան եւ որին մեծ սիրով նւիրում է տաղեր: Գեղեցիկ մարմնի նկարագրի համար, Նարեկացու ժամանակից սկսած, ուրեմն 10-րդ դարուց, կազմուած է եղել որոշ ձեւ ու ճաշակ, որով թւում են, ինչպէս անում է Նարեկացին, հասակը, աչք եւ ունքը, այտերը, ձեռքերը, բերանն ու շրթունքը, լեզուն ու ձայնը, ծամերը կամ վարսերը, ծոցը, ժպիտը, պատմուճանը, գօտին (քամար), քայլուածքը, կեցուածքն ու շարժուածքը: Դրա հետ միասին առաջ են գալիս ոչ միայն

արտաքինի նկարագրի համար ընդհանուր պատկերներ եւ նմանութիւններ երկնային լուսատուներից, բոյսերով ու այլներով, որ բանեցնում են երգիչները, այլեւ գեղեցկութեան մի ընդհանուր իտէալական պատկեր, որի մէջ առանձին բանաստեղծները շատ քիչ փոփոխութիւն են մտցնում նայելով իրենց ճաշակին կամ սիրած կնոջը եւ կամ իրենց հակումներին, աւելի կամ պակաս տեղ տալով մարմնին: Երգչի անհատականութիւնը երեւում է, գլխաւորապէս, ոչ այդ նկարագրով, այլ իր տրամադրութեամբ, որ նա դնում է իր երգի մէջ: Թէպէտ եւ մինչեւ Թլկուրանցին յայտնի են միայն երկու երգիչ՝ Նարեկացի, Կոստանդին, որ ունեն այդ նկարագիրը, և Թլկուրանցին առաջինն է, որի երգերի մէջ մեծ տեղ է բռնում արտաքինը, բայց եւ այնպէս այդ երեքի համեմատութիւնից հենց պարզ երեւում է վերեւում գրածի ճշդութիւնը: Շատ բան Թլկուրանցու մէջ ընդհանուր տեղիք է, թէպէտ եւ առանձնայատուկ ուժով արտայայտուած:

Այդ գեղեցկութեան իտէալն, անշուշտ, մեր հին երգիչներից է գալիս եւ 10-րդ դարում արդէն գրեթէ ամբողջ պատրաստ է. թէ արաբական ազդեցութիւն կա՛յ դրա մէջ թէ չէ՝ այդ չգիտեմ, բայց քանի որ 10-րդ դարու է, նոր պարսկական չկայ: Երգոց երգի ազդեցութիւնն անպայման երեւում է, բայց այդ ճաշակը շատ հեռու է հին հրէականից:

Կոստանդինին, քանի որ նրան հետաքրքրում է աւելի ներքինը, գրաւում է գեղեցիկ պատկերը իր մի քանի էական գծերով, իր մորճ ու չիտակ հասակով եւ մանաւանդ պայծառ դէմքով եւ ոլորուն սեւ մազերով: Թլկուրանցուն, ընդհակառակը, մարմնի բոլոր մասերի հետ՝ ամէնից առաջ յափշտակում են ծով-ծով աչքերը, թուխ ու մեծ (եր. 29, 37, 25, 31, 33, 36, 39, «Հայ էջեր», 32), որ արեգակի նման փայլում են.

Արեւնման շողշող կը տաս,
Ցորժամ սիրով զաչերդ ածես (եր. 29):

Մի պատկեր եւ նմանութիւն, որ նոյնիսկ Վահագնի երգի մէջ ենք գտնում՝ «Աչկունքն էին արեգակունք», որ եւ Նարեկացու մէջ նմանեցրած է ծովի.

Աչքըն ծով ի ծով ծիծաղախիտ,
Ծաւալանայր յառաւօտուն
Երկու փայլակնաձեւ արեգական նման:

Այս բոլորի հետ՝ այս գեղատեսիլ պատկերը ներքին գրեթէ ոչ մի արժէք չունի, բայց եթէ այն, որ «անուշ քաղցր եղանակ» ձայնով զրոյց անում եւ բնական գեղեցկութիւնը բաւական չէ, արուեստով էլ գեղեցկանում է եւ ծեքծեքում, ու դրանով աւելի գրաւիչ դառնում ու յափշտակում մարդկանց թունաւորելու համար: Այդ է Թլկուրանցու երգի կինն իր թանձրացած մարմնով, որ բանաստեղծի համար ամէն ինչ է:

Կինն քաղցրիկ զրոյց ունի,
Խայթաւ ի հետ առնէ գալար,
Ցանկարծ զթիւնքն ի մարդ թափէ,
Որպէս զակնատ բռնէ անճար:

Յունքն քաշէ, պաչքն դեղէ,
Խենէշանայ քան զբելիար,
Միշտ պռունկն ծամռէ,
Ջմարդիկ կու ձգէ ի քարն ի վայր (եր. 27):
Պաղ մի յերեսէդ կ՚ա՛ժէ զԽորասան,
ԶՀապաշ ու զԵմէն տիլու Հնդստան,
Երկու վարսդ է գին Չինի եւ Խութան,
Պուլղար, Ստամպօլ է Շէհրի եազդան (եր. 34):

Այսպիսի մարմին երգողի ու գնահատողի համար, բնականաբար, սէրն այլեւս մի ներքին մտերմական ուժ չէ, հոգեկան գաղտնի ցաւերի ու վշտի աղբիւր, այլ ֆիզիքական յոյզի մի բռնկում միայն գեղեցիկ կնոջ տեսքից, բայց այնպիսի բռնկում, որ նրան յափշտակում, վառում է եւ սպառում. եւ այսպէս ամէն անգամ, երբ նրան երեւում է գեղեցիկ պատկերը: Բանաստեղծն այդ ժամանակ դառնում է մի աչք, սեւեռած գեղեցիկ սիրելիին կամ բարեկամին, ինչպէս անուանում է նրան երգիչը, նրա մարմնին եւ մարմնի բոլոր մասերին, եւ նրանից խելքամաղ լինելով՝ տանջւում է ինքն եւս մարմնով: Դրա համար եւ նրա երգի մէջ մարմնի նկարագրի հետ տեսնում ենք եւ երգչի իրեն մարմնի խորտակումը, որ ունենում է սիրոյ առարկայից:

Կնոջ տեսքից նա, մանաւանդ երբ յանկարծ է պատահում, եւ այս մոտիւը սովորականն է, ալեկոծւում է (եր. 25), նրա մարմնով սարսափ է անցնում, ամբողջ մարմնով դողում, շունչը կտրւում է, սիրտը մարում եւ ուշագնաց լինում («Հայ էջեր», 8, 32).

Հանդոյն այլովդ տեսիլ զմրուխտ,
Տպագիոն ակն ու ջուհար
Ինձ անկասկած ի դէմ ելաւ,
Շունչս քաղեցաւ,
Զթողիր յիս համբերութիւն (32):
Քանի տեսնիմ՝ կուսարսափիմ,
Սրտիկս ի փորիկս կանցնու կրծիցս (եր. 32):
Թէ վարդապետն զձեզ տեսնու...
Ամեն անձամբ ի դող ելնու (եր. 36):
Յանկարծակի մէկ մի տեսայ,
Թուլցայ անկայ ի տեսլենէն...
Երբ իմ աչերս ի քեզ դիպաւ...
Զարհուրեցայ ի տեսլենէն...(«Հայ էջեր» ,32):

Սէրը նրա համար խաւարած սրտի լուսատու ճակը չէ, ինչպէս Կոստանդնի համար. Թլկուրանցու սիրոյ արեգակը, ինչքան էլ փայլուն է, երեւան է գալիս իր այրող, խորտակող ուժով, որին ոչինչ չի դիմանում. Նա երգչի սիրտը անվախճան կրակ է լցնում (եր. 31) եւ այրում, վառում է նրան.

Քո սէրն ի յիս դիպաւ, սառոյդ կայրիմ ես (38)։
Ես քեզ տեսայ նման լուսոյ,
Չէտ արեգակն որ նոր կելնու,
Սիրտս այրեցաւ բարկ կրակով,
Ես մնացի խեւ կապելու (49)։
Ջինքն ճօճար՝ զէտ զուռի ճեղ,
Հրով այրէր դերկիր ամէն...
Երբ իմ աչքերս ի քեզ դիպաւ,
Նա փառեցայ զէտ մոմեղէն («Հայ էջեր»,32)։
Ես եմ ափ մի հող, դուն հրեղէն ես,
Քանի՛ զիմ այրած սիրտն արխնես (39)։
Քո սէրն զիս մոմ արար,
Դու ինձ պողպատ ու կայծքար ես (38)։
Արեւ նման չողչող կրտաս,
Յորժամ սիրով զաչերդ ածես...
Դու զվէմերն խորտակես,
Դու զլերունքն հալ հանես,
Զով դու սիրես, նաղար առնես,
Անանց կրակով զանձնիկն այրես...
Ծոհան վզովդ բերդեր քակես (29)։
Ձեզ ի՞նչ դադար ես դիմանամ,
Որ դուք հալէք, հանէք լերունք,
Սիրով քակէք բարձր բերդեր․
՚Ւ ի դիլ հանէք վէմք ու սարունք (37)։

Բնական է, որ այսպիսի սիրոյ առարկան չպիտի ներկայանար իբրեւ թագաւոր, որ ծառայութիւն ու սորկութիւն է պահանջում, կամ իբրեւ ազատութիւն բերող տիրուհի (ինչպէս Կոստանդնի համար), այլ իբրեւ մի դահիճ, որ զոհ է, մատաղ է (եր․ 30) պահանջում, ինչպէս սիրոյ հին անողոք աստուածուհիները․ նա սպանում է, կեանքից կտրում է (եր․ 34), —

Դու ինձ լեր դատաւոր, արա՛ դատաստան,
Սիրով մի՛ սպաներ, ճէլլէտ էֆենտի․

Եւ այս վերջին տողը նա կրկնում է ամէն տան համար։

Դու գիչեր եւ ցերեկ մէջ իմ սրտին ես,
Անմահ ու անգրող զարխնս հեղեր ես...
Զարկամն զայդ չէր անէր՝ զինչ որ դուն կ՚անես․
Անթուր ՚ւ անդանակ զարխնս հեղեր ես (38)։

Այսպիսի սէրն արդէն մի հիւանդութիւն է, որ, ինչպէս ասում են, առաջնաում է կախարդուելուց միայն, եւ գրաւելով դրանով բռնուածի ամբողջ էութիւնը, գիշեր ու ցերեկ դրանով զբաղեցնելով միայն՝ տանում է ինքնամոռացման ու խելացնորութեան եւ դարձնում է նրան քնից կտրուած մի խելագար։

Յորտեղ որ կընստիմ զիս կըմռռնամ ես․
Մի՞թէ զիս դեղեցիր, կամ կախա՞րդ ես․
Ջքռ ծով ծով աչերդ դեղով լցե՞ր ես (39)։
Սէրն հանէ զմարդն ի խելաց
Որ այլ ըսկի չկայ խաբար,
Իմաստութիւնըն խափանի,
Եւ հանց դառնայ քան զդիւահար(27, 49, 32)։

Մարդ որ սիրոյ կուհանդիպի,
Նա քան զկրակ կուլինի վառ,
Այլ ոչ աղօթք ի միտ կուգայ,
Ոչ յայսմաւուրք կարդայ ու ճառ (26, 36)։
Սէրն կուտանի զամօթն երեսէն
Ի հաբեղայէն եւ ի վարդապետէն… (34)։
Ով որ մեղաց ճաշակն առնու,
Այլ Աստուծոյ չի տար խաբար (26)։

Եւ այսպիսի հիւանդին բժշկողը միայն իր սիրոյ առարկան կարող է լինել, որի կողքին նստելով եւ նրա երեսին նայելով միայն կը հանդարտի․—

Հանցեղ նետով զիս խոցեցիր,
Որ այլ չունեմ բժշկարար (25)։
Հիւանդ եմ ես, ողջանամ, երբ նստիս ինձ յաջ (33)։
Նիստ որ հայիմ յերեսդ ի վայր․ (31)։
Արի ինձ դեղ արա, իմ ճարն դու ես (38)։

Իր սիրոյ այս ամբողջ նկարագրի, իր այս հոգեկան վիճակի հետ, Թլկուրանցին մեզ չի տալիս գեղուհու ներքին արժանիքը, որ ինքը չունի ոչ մի քնքշութիւն դէպի իր բարեկամը։ Մի տեղ միայն նա գրում է․

Է՛ մեղր ու կարագ եւ կեղեւած նուշ,
Քեզ ծուռ նայողին յաչքն հազար փուշ,
Սիրով մի՛ սպաներ, ճէլլէտ էֆենտի (34)։

Բայց այստեղ եւս ոչ թէ սիրելիի մասին է հոգ տանում, այլ իր «դահճին» համոզել է ուզում իր անկեղծութեան մասին, ինչպէս եւ ուրիշ տեղ՝

Թէ զիս յիշես, թէ չյիշես,
Ես կուսիրեմ սրտով զքեզ (29)։

Բայց այդ սիրելին երեւի անպատասխան է թողնում, որ երգիչը մի տեղ յանդիմանում է նրան՝

Աշխարհս խորոտիկ գէմ դու մենակ չե՞ս
Աստուորս շատ իկէ ՚ւ այլ տի գայ քանց քեզ (39)։

«Հայ էջերի» մէջ տպուած է «Տաղ Յովհաննէսի վասն սիրոյ», որի

վերջում հեղինակն ինքն իրեն կոչում է «Խեւ Յովհաննէս»։[1] Այդ տաղն անպայման Թլկուրանցունն է, ոչ միայն «Խեւ Յովհաննէս» անուան համար, այլ մանաւանդ իր ոգով եւ տրամադրութեամբ ու բովանդակութեամբ։

Այս մեծ ուժն ու խորութիւնն առաջանում է նրանից, որ երգիչը թողնում է իր բարեկամի մարմինը մի կողմ, եւ միայն սիրոյ մեզ արդէն ծանօթ ազդեցութիւնն է վեր հանում իր բոլոր կողմերով։ Այսպէս վարւում է նա, որովհետեւ այստեղ ոչ թէ իր հրճուանքը, բախտաւոր սէրն է երգում, այլ սիրոյ ցաւը, որովհետեւ, ասում է նա,

Քաղցր լեզուով խոցոտեցայ․․ ․
Կերակրեցաք ի մի սեղան, ու խմեցաք ի մի կթխայ,
Մէկտեղ ելաք, մէկտեղ նստաք, ան ժամանակն ո՞ւր է հիմայ․
Ո՞ւր է ղուլըլտ, ո՞ւր է երդումն, որ բռնեցաք զաստուած վկայ,
Ի վար անկաք, օտարցաք, չարկամն եղեւ մեզ մահանայ։

Այսպիսի վիճակը բնականաբար կարիք չի զգում բարեկամին գովելու, այլ միայն իր վիշտը երգելու։ Եւ երգում է նա «արիւն արցունքով»։

4․ Գրիգոր Աղթամարցի։[2]— Յովհաննէս Թլկուրանցուց կրտսեր, բայց երիտասարդ ժամանակ նրան ժամանակակից է մեր երկրորդ սիրերգող կաթողիկոսը, Գրիգոր Աղթամարցի, ծնուած 15–րդ դարի վերջերում։ 1515 թ․ արդէն ունի բանաստեղծութիւններ, իսկ 1569 թ․ դեռ կենդանի է յիշւում։

Սա իր աշխարհայեցողութեամբ եւ երգի վերջում դրած ապաշաւանքով շատ չի տարբերւում Թլկուրանցուց․ նոյն հայեացքն ունի ունայնութեան եւ մահուան մասին, ինչ որ նախորդները, նոյնպէս երգեր՝ նուիրուած սիրոյ, գեղեցկութեան եւ աշխարհային վայելքների ու մահուան, ինչպէս Թըլկուրանցին, միայն աւելի գեղեցիկ ձեւով, բուռն աւիւնով եւ մաքուր ու խորացրած բովանդակութեամբ։ Ժողովրդական ձեւով մի երգի մէջ բողոքում է մահուան դէմ, որ գալիս, բռնի եւ անագորոյն կերպով զրկում է մարդուս աշխարհի վայելչութիւնից․

Յամէն առաւօտ եւ լոյս
Պիւլպիւլն էր նստեր յայգւոյս,
Քաղցրիկ ձայնէր վրայ վարդոյս,—
Կ՚ասէն, թ՚արեկ ե՛լ այգւոյս։

Աշխարհը նրա համար մի «ուրախարար» տեղի» է, մի նորատունկ, գարնանային ծաղկած այգի, շրջապատած ցանկապատով, տնով, աւազանով, անուշ ջրերով, ծաղիկներով, կարմիր ու սպիտակ վարդերով․ մարդն ուզում է վայելել այդ ուրախարար տեղը, կեանք ու լոյս տեսնել, այդ այգու պտուղն ուտել, վարդի հոտն առնել, գինին խմել․—

---

1 Թլկուրանցին իր տաղերի մէջ կոչում է իրեն «Թլկուրանցի» (28), «Խեւ Յովհաննէս Թլկուրանցի» (30, 31, 33, 36, 37, 37, 44, 49 50, 56), «Յովհաննէս» (39), «Խեւ Յովհաննէս» (42), «Յովհաննէս Թլկուրանցի» (45, 47). իսկ երկու տաղի մէջ (Ե, ԺԵ) հեղինակ չի յիշուած։

2 Կ. Կոստանեանց, Գրիգորիս Աղթամարցին եւ իւր տաղերը, Թիֆլիս, 1898։

Քաղեմ փունջ մի վարդ այգուս,
Դնեմ մէջ կարսի գինուս,
Ուրախանամ այս հոտոյս:

Ահա թէ ի՛նչ է մտածում մարդս միշտ, բայց եւ ինչ են նրան ասում՝ դուրս արի քո այդ այգուց: Մարդը բողոքում է.

Չեմ էլներ ես այս այգուս,
Այս իմ նորատունկ այգուս,
Ցայս ուրախարար տեղուս,
Եւ այս նորաշէն տներուս…
Դեռ չեմ տեսեր կեանք եւ լոյս…
Ի՛նչպէս ելնեմ ես այգուս:

Բայց աւա՛ղ, երիտասարդ կեանքը ստիպուած պիտի զրկուի այդ վայելքից եւ նրա համար աշխարհը կործանուի.—

Ծաղկունքն վերացան յայգուս.
Վարդն թափաւ իմ այգուս.
Ցանկն քակեցաւ յայգուս,
Ահա՛ որ ելայ այգուս:

Բայց մարդուս այս դառն ճակատագիրը, թէպէտ Աղթամարցուն եւս միշտ ապաշաւել է տալիս Թլկուրանցու նման, բայց չի խանգարում գարուն եւ առանձնապէս սէր երգելու հոգեզմայլ արբեցութեամբ (Կոստանեան, Նոր Ժողովածու, Բ. պրակ, եր. 16).

Գարունն է բացուեր, վարդ ի պաղչանին.
Քաղցր եղանակեն պիւլպիւլն ու ղումրին.
Սիրով են վառեալ ի կարմիր թփին,
Կանաչ ու կարմիր տերեւ կու հագնին:
Գինով եմ, գինով, հարբեր եմ սիրով,
Գինով եմ, գինով, ցերեկս արեւով.
Գինով եմ, գինով, գիշերս երազով:

Եւ նա իր արբեցման ու երազանքի առարկան երգում է մի «բեղուն խանդով, գոյների հարստութեամբ եւ թարմութեամբ», որոնց մէջ շատ բան, հարկաւ, նախորդ բանաստեղծներից, ուրեմն եւ «Երգ երգոց»-ից է առած իբրեւ սովորական ձեւեր, բայց իր անկեղծ աւիւնով այնպիսի գեղ ու փայլ տուած նրանց, որ շլացնում է ընթերցողներին, ինչպէս եւ Աղթամարցին ինքը շլացած է եղել իր գեղուհու «աստուածագիծ պատկերից»: Իսկոյն երեւան է գալիս կրակոտ բնաւորութիւնը, որ վառուած է, յափշտակուած է մի ճոխ անձից եւ ուզում է նկարել այն: Եթէ նա նկարիչ լինէր, կ՚առնէր վրձինն ու ներկով կը հանէր այդ, որ միշտ իր աչքի առաջն է.—

Եթէ յաչաց մարմնոյս ծածկիս,
Մտաց աչօք ինձ երեւիս (80):

*Բայց նա խօսքերով է ուզում նկարել, եւ բառերը բաւականութիւն չեն տալիս նրան՝ այդ պատկերն իր ուզած նրբութեամբ գծելու եւ միշտ նորանոր գոյների, նորանոր ձեւերի է դիմում՝ օգնութեան կանչելով բազմաթիւ ծառեր ու ծաղիկներ, հրեղէններ ու թռչուններ, բուրաւէտ խնկեր ու ակներ, բնութեան երեւոյթներ ու լուսատուներ: Նմանութիւնների այս կուտակութիւնը, ծնուած սիրազգաց սրտից, վերջիվերջոյ դարձեալ գոհացում չի տալիս նրան, որովհետեւ իր գեղուհին աստուածանման է: Նա ոչ միայն մարմնով կատարեալ է, այլեւ վերնային է իր հոգով.—*

*Վերնոց վեհագոյն եւ աշխարհի զարդ,*
*Ուշիմ եւ խոհեմ անօրինակ մարդ...* (63).
*Տիպ եւ գաղափար Տեառն Աստուծոյ ես,*
*Պատկերով պատուեալ, քան զՄիքայէլ ես,*
*Ի մէջ հողեղինացս հրեղէն ես* (62):
*Դու սքանչելագործ, քան Զօրաւոր խաչ* (64):
*Մաքուր պատկերով նման հրեշտակի...* (57):
*Սոսկալի վարսաւոր սրովբէ* (76):

*Գեղուհու այս ներքին մասի հետ, որ առաջին անգամն է երեւում մեր բանաստեղծութեան մէջ, մենք տեսնում ենք Աղթամարցու քնքուշ գորովական վերաբերմունքը դէպի իր սիրոյ տիրուհին, որին նուիրում է իր երգը, մի վերաբերմունք, որ չունէր Թլկուրանցին:*

*Պատկեր ես քո Ստեղծողին շաղկապեալ ի քառանիւթէ*
*Տիպն իւր գոյացոյց զքեզ, նկարեաց 'ւ եհան յարգանդէ.*
*Զի՞րդ օրինակ տամ քեզ յանշնչից եւ յանզգայէ,*
*Ցայս իմ այրեցած սրտէս զայս ընծայ ընկալ ընդունէ:*
(Եր. 77)

*Ուրիշ տեղեր քնքուշ հոգատարութեամբ երգում է.*

*Օրհնութիւն Փրկչին ի քեզ իջանի,*
*Կամօքն Աստուծոյ կենաս կենդանի.*
*Գունդ չար այսոյն ի քէն հալածի,*
*Զերդ զարեգակն փայլես ի յերկրի* (64):
*Միշտ կանաչ կենաս քան զնշդարենի...*
*Քաղուի լոյս աչաց քո Թշնամւոյն:*
*Քեզ միշտ հովանի բանն հայրական,*
*Միքայէլ հրեշտակն քեզ պահապան,*
*Աշխարհիս կենաս անփորձ 'ւ անսասան,*
*Անմեղ 'ւ անարատ եւ անապական* (եր. 69):
*Ի յամէն դիմաց ըղխէ քեզ բարին,*
*Եւ քեզ հովանի նշան սուրբ խաչին,*
*Պահապան լիցի աջն հայրենին,*
*Եւ փրկէ զքեզ ի չար վտանգէ:*
(Կոստ., Բ. պրակ. եր. 18)

Այս քնքշութեան հետ երեւում է նաեւ մաքուր եւ ազնիւ տարփանքը դէպի գեղուհին, որ ինքն եւս մի հրեշտակ է, հեռու Թլկուրանցու հեշտալից բորբոքումից, աւելի մօտ Կոստանդինին: Սակայն Աղթամարցու սէրը դրա համար պակաս ուժեղ եւ կարօտակէզ չէ, նա էլ պակաս չի այրւում, հալւում ու մաշւում եւ ծարաւի (68) տեսնելու նրան. Նրա սէրն էլ շղթայում, փշխում է նրան իր ուժով.—

Հանց սխասաթով իջնուս քան զխան,
Դրիր զգերիս զընճիլ ու զընտան (59):

Բայց նա տանջանք բերում է միայն իր բացակայութեամբ.—

Ունէրդ է քաշած քան զթափած թուր,
Թարթափդ քո թեք քան զնշտար սուր.
Սպանանես դերիս օրն հազար բիւր...
Ոսկի ի Հնդկաց, ակն պատուական,
Շուրջ գամ եւ փնտրեմ զքեզ անխափան.
Ես եմ քեզ խնդրող եւ վաճառական
Ի բազում մտաց ծածուկ 'ւ անդուման:
Նայեա՛ց մէկ ընդ իս աչօքդ մէատան,
Կամ քաղցրիկ խօսէ կամ տո՛ւր պատասխան...
Ով որ դու նայիս եւ առնուս նատար,
Լինի քան զմոմ՝ պողպատ է թէ քար:
Սիրով լափեցիր ու արիր սիրտս խոց,
Կուտապիմ 'ւ այրիմ որպէս զհնոց,
Սրտէս կուլթափի յոլով հուր ու բոց,
Զայդ աստուածազիծ պատկերդ քո ինձ ցո՛յց:
Քո մէջքդ է բարակ քան զուռի վարոց.
Սպիտակ ատամունք, մարգարտէ շարոց.
Դու քաղցրատեսիլ եւ պտուղ ծառո՛ց.
Այդ չիրին լեզուէդ տո՛ւր երկու զրուց:
Քան զշամբայ եղեգն ելեր ես չիտակ.
Ունէրդ է կամար որպէս զաղեղնակ,
Աչերդ է պայծառ որպէս զծովակ,
Ղարղ եղայ ի ներս, եղայ անճարակ:
Թարթափդ է խանչար՝ ինքն պաւղպատ զուտ,
Այտով դիս հարիր 'ւ արիր խուրդ ու մուրտ,
Ամպի պէս ածիր ինձ սաստիկ կարկուտ,
Թէ ես մեռանիմ քեզ շահ չէ, օգուտ (57, 59):
Վտա՛կ Եդեմայ եւ գե՛տ Յորդանան,
Սելովմայ աղբիւր եւ ջուր ես յուզման,
Անկեալ եմ հիւանդ մերձ առ քո դրան,
Սպասեմ հանապազ ես առողջութեան...
Ելանես զնաս, ես լինիմ յառաջ,
Կամ խօսի՛ր ընդ իս կամ նստի՛ր ի յաջ:
Գիշեր եւ ցերեկ եմ ես երերուն,

Ոչ կենամ ի դուրս, ոչ օդիմ ի տուն...
Զարկած է վրադ քեզ կարմիր վրան,
Բազմիս ահաւոր 'ւ ես քեզ յանդիման,
Սիրտս փափագի եւ կայ ի դողման,
Աչերս է կարօտ տեսոյդ աննման:
Զիա՞րդ բաժանիմ ի քէն կենդանի,
Առանց քո տեսուդ շունչս կուքաղի (62—64):

Իսկ իր սիրոյ ներկայութեամբ, սիրուհու տեսքը ոչ միայն չի ջախջախում նրան, այլ, ընդհակառակը, նրա սիրտը լցնում է մի անուշ բերկրալից երջանկութեամբ, նրան հանգստացնում ու լուսաւորում է եւ հոգով փարթամացնում (62)․

Պայծառ արուսեակ ի յառաւօտու,
Ես եմ քեզ փափագ, ի յինէ ես հեռու․
Իմ շուշան ծաղիկ, կարմիր վարդն դու...
Լինի՛ թէ աչուերս քեզ արժանանայ:
Իմ սուն իմ սրտի 'ւ իմ ուրախութիւն,
Իմ շունչ ու հոգի 'ւ իմ կենդանութիւն...
Բերկրութեան բաժակ, ոչ ապի յայաթ,
Ես եմ ծարաւեալ, արբո՛ ինձ մի կաթ... (67—68):
Նոր գարուն եղեւ, եւ նոր առաւօտ...
Նոր ձայն արձակեց, նոր նստաւ ի մօտ...
Հեռացաւ ու գնաց յինէն տրտմութիւն,
Եկն եհաս այսօր ինձ ուրախութիւն․
Այլ փափագ չունիմ, իմ փափագս դուն...(69):
Գեղեցկագեղ, քաղցրաբարբառ
Սէր քո ունի խորհուրդ անճառ,
Իմանալի արեւ պայծառ,
Լուսաւորեա՛ միտս իմ խաւար...
Երեւեցան ծաղկունք յերկրի,
Նստցուք ընդ քեզ ի պարտիզի․
Երգեցից սէ՛ր քեզ, սիրելի՛,
Սիրտ իմ ի սէր քո տոչորի...
Բնակեալ ես դու յիմում սրտիս,
Ծրարեալ ունիմ զքեզ ի հոգիս...
Թէ տեսանեմ զքեզ կրկին,
Լուսաւորի միտս իմ մթին,
Եւ տամ համբոյր շրթանց քոյին,
Նա՛ վերանամ ես ի յադին (80):

Աղթամարցին իր սէրը բուռն ուժով երգել է երկու անգամ․ նախ՝ վարդ ու սոխակի այլաբանութեամբ, մի սիրավէպով, երկրորդը գրած 1523 թ․, որի մէջ այն մոտիւն է, ինչ որ միւս երգերի մէջ․ այն է՝ վիշտ սիրոյ բացակայութիւնից եւ հրճուանք նրա ներկայութեամբ: Աշուն է․ վարդը

չկայ այգում, սոխակը անհանգիստ որոնում է վարդը՝ նրան գովելով եւ վախենալով նրա վիճակի համար, որ փորձանք պատահած չլինի։ Նա անիծում է այգին, որ չի պահել վարդը։ Միգուցէ այգեգործն է արել այդ, կամ ծաղիկները քէն պահելով՝ վրէժ են առել։ Ծաղիկները պատասխանում են, թէ տեղեկութիւն չունեն վարդի մասին։ Սոխակը թռչուններին է հարցնում վարդի մասին. թռչուններն էլ բան չգիտեն. սոխակի ցաւը մեծանում է։ Այգեգործը մխիթարում է նրան, թէ վարդը չի կորել, կը գայ։ Սոխակը ուրախացած օրհնում է այգին, եւ նամակ գրելով վարդին՝ իր վշտահար սէրն է յայտնում եւ խնդրում է տեսակցութիւն։ Վարդը ժողովում է ծաղիկներին ու ամէնքի առաջ կարդալով նամակը, ինքն էլ նամակով պատասխանում է, թէ սոխակը քիչ համբերէ, եւ ժամադիր է լինում պարտէզում։ Սոխակն ուրախութեամբ սպասում է։ Գարունը բացւում է, բացւում է եւ վարդը։

Երբոր արեւն ի խոյն եկեալ ժամանեաց,
Ամպն ի վերուստ ցօղով յանկարծ ոռոգաց.
Բուսան ծաղկունք յերկրի հազարք հազարաց,
Վարդն չէր ի միջի, պլպուլն որոնեաց...
Յետոյ տեսաւ կանաչ զտերեւն վարդին,
Այլ պատուական պայծառ որպէս զառաջին,
Վարդն էր վարագուրով ի մէջ գահոյին,
Ծաղկունքն հաւասար երկրպագեցին [43]։

Պլպուլն ուրախացած փառք է տալիս Աստուծուն, որ իր աչքով տեսնում է վարդը թփերի մէջ։

Երկրորդ «Գարնան տաղը» մի տեսակ շարունակութիւն է առաջինին։ Երբ հեռացած պլպուլը գալիս է այգին, ծաղիկները աչքալոյս են տալիս վարդին՝ թէ գալիս է իր սոխակ սիրելին։ Սոխակը կանչում է զումրին (տատրակին), որ միասին տեսնեն վարդի ելքը։ Նրանք վրան են խփում պարտիզում, վարդի կանաչ թփի դիմաց, վարդը քնած է կոկոնում. սոխակը սկսում է երգել ղազէլներ.

Գիշեր ցերեկ կամ էրէրուն,
Եւ ես կ՚այրիմ ի դէմ վարդուն.
Թէ ե՞րբ ելնէ ինքն ի քնուն,
Քանի՜ կանչեմ զար իւր սիրուն... (46)։

Ծաղիկները նախանձելով ասում են, թէ բաւական է անժամանակ երգի, թող սոխակը ելնի գնայ իրենց պարտէզից։ Սոխակը պատասխանելով իր սէրն է գովում եւ սիրտը բանում։ Վարդը նրան քաջալերում է, որ ուշադրութիւն չդարձնէ նախանձողներին եւ իր երգը շարունակէ։ Ծաղիկները դարձեալ ասում են — «Քանի՜ կանչես, մէկ պահ լռէ»։ Սոխակը պատասխանում է.

Ասաց, թէ սէրն կունեղէ,
Որ վրայ վարդին աչրդ եղէ,

Սիրտս վկայ հետ իւրն հերթ,
Քանի՛ խոցէք, ասէք թէ ե՛րթ,
Հողմն չարժէ զվարդին թերթ,
Նա ի դողման դառնայ իմ լերթ...
Աղաղակեմ արտասուալի,
Ցայգւոյս չերթամ ես այլ տեղի: [49]

Այդ միջոցին վարդը հետզհետէ կարմրում է, անմահութեան հոտ բուրում, պլպուլը սիրով արբենում եւ ուրախանում. վարդը տեսնելով, պլպուլն անուշ երգում է.

Ծիծաղեցաւ ինքն մէկ պահ,
Պայծառացաւ տիպն քան զլահ.

եւ կարմիր գոյնով վառում է, իսկ սոխակը

Հոտոյն եղեւ խեւ ու արբած (49 եւ հտ.):

Վարդը, սակայն, ամաչկոտ է, պատ չէ իր սիրոյ համար: Թռչունները կատակելով ծաղրում են սոխակին, թէ «Վարդն չի նայեր ինքն երակ»: Նա տանջւում է, գանգատւում է վարդին, կասկածում է, թէ մի գուցէ վարդըն իրեն չի սիրում, եւ հաւատացնում է վարդին իր սիրոյ անկեղծութեան մասին: Վարդը քաջալերում է նրան, որ երգէ եւ իր՝ վարդի ահն ու երկիւղը վերացնէ.

Զկանաչ փարտէս ես կուրանամ,
Զքեզ որ տեսնում, ուրախանամ,
Այլ ի քեզնէ ոչ հեռանամ (50):

Պլպուլը զարթնում է կէս գիշերին, վարդը փթթում է առաւօտեան, սոխակը յափշտակւում է եւ մտնելով վարդի վրանը՝ սիրոյ գովական համբոյր է ուզում: Վարդը, սակայն, սիրելով հանդերձ՝ դեռ անառիկ է, նա միայն գովում է սոխակին, ուղարկելով դարձեալ ուրիշ ծաղիկների մօտ: Հաւատարիմ դումրին մխիթարում է սոխակին եւ համոզում վարդին, որ պըլպուլն ընտրէ եւ ոչ ուրիշ թռչունների: Բայց վարդը պատասխանն ուշացընում է.

Եղեւ պլպուլն թեւաթափ,
Թէ ե՛րբ ածեմ զվարդն ի յափ.
Քանի՛ Փիրղան կանչեմ անչափ,
Ի դէմ վարդին հարկանեմ ծափ:
Ի ձեր սրտին դուք սէր չունիք,
Վասն այն զիմ ձայնըս չընդունիք»:
Վարդըն կ'ասէ. «Մ'ենե՛ր հերիք,
Ես կուկանչեմ, ունեմ կարիք» (52 եւ հտ.):

Այս վէպի մէջ գործողութիւնը սիրավէպի մի սքեմայ է. բայց դըրա գեղեցկութիւնը գործողութեան մէջ չէ, այլ սիրոյ գեղգեղանքի մէջ, որ բարձրանում է ցօղաթուրմ պարտիզում, գեղազարդ բուրմունքի մէջ, սիրա-

տարփ սրտի այն խռովածութի նուաղումների, անհանգիստ որոնումների ու տպաւորումների մէջ, երբ սէրը հեռու է կամ անպատասխան, եւ այն դաշն հրճուանքի մէջ, երբ յոյսը զօրանում է։

5. Քուչակ Նահապետ։[1]— Վանայ Խառակոնիս գիւղում թաղուած են Քուչակ աշըղ եւ իր մեծ պապ Նահապետ, «որ մականուն աշըղ Քուչակ ասի»։ Նրանց գերեզմաններն ուխտատեղի են տեղացիների համար։ Թոռ Քուչակը, «անուն բարի մտական», իր ստացած մի աւետարանի յիշատակարանի մէջ, գրուած 1637 թուին, յիշում է իրեն եւ իր մեծ պապին։ «Մեծ պապ» ասելով անպայման պէտք է հասկանալ պապի հայրը կամ պապի պապը, եւ իրաւամբ եզրակացնում է Կոստանեանը, թէ «այն ժամանակ 1637 թուից չորս հինգ սերունդ դէպի յետ գնալով՝ կը տեսնենք, որ Քուչակ Նահապետն ապրել է 16–րդ դարու սկզբներում»։ Այդ հաշուով Նահապետ Քուչակը ժամանակակից է դառնում Աղթամարցուն։ Քուչակի երգերի առաջին հրատարակող Տեւկանց «Հայերգի» մէջ յիշում է նրա երգի համար, թէ «օրինակուած է ՌԼԱ (1582) ի Սեբաստիա եւ նոյն օրինակէն հանած է կրկին ՌՃՂԵ (1746) թուին Պետրոս երէց»։

Թէ ո՛վ է եղել այդ Նահապետ Քուչակը եւ ի՛նչ կեանք է ունեցել՝ այդ մասին էլ ուրիշ ոչ մի բան չգիտենք։ Նա «վարպետ» աշուղ է եղել եւ իր արուեստի համար անպայման թափառել է շատ կողմեր։ Եւ վերջապէս նրա անունով հրատարակուած երգերի նրանը լինելը միայն Տեւկանցի վկայութիւնից գիտենք, որ ասում է, թէ «Այս ծովական գիշերս ի քուն» երգը[2] Նահապետ Քուչակինն է, անշուշտ ձեռագիրներից առնելով այդ տեղեկութիւնը։ Կոստանեանց «Նոր ժողովածուի» Գ. պրակի եր. 44–ում բերում է մի տաղաչարք 1682 Թ. գրած մի տաղարանից «Հայրենի կարգաւ» վերնագրով։ Դրա մէջ որոշ երգեր նոյնանում են «Հայերգի» երգերի հետ։ Զօպանեանն էլ Վենետիկի մի տաղարանից, գրուած 1642 թուին, բերում է տաղեր, որոնցից մի մասը եւս կայ Կոստանեանցի 1682 թուի տաղարանի մէջ, մասամբ նաեւ «Հայերգի» մէջ եւ, վերջապէս, Պարիզի ազգային գրադարանի մի տաղարանի մէջ կան տաղեր, որ կան նաեւ Վենետկի վերոյիշեալ տաղարանի մէջ, ինչպէս եւ «Հայերգի» մէջ։ Տաղերը բոլորը անանուն են։ Երկու երգ միայն Կոստանեանցի Գ. պրակի եր. 37, 38 («Ես ան հաւերուն»..., «Բանիկ մի»...), 1617 թուին Կաֆայում գրուած տաղարանի մէջ գրուած են Ֆրիկին վերագրած տաղաչարքի մէջ, որոնք կան նաեւ Վենետկի տաղաչարքի մէջ, առաջինը նաեւ «Հայերգի» մէջ։

Խրատականները կամ անանուն են, կամ վերաբերում են Յովհաննէս Պլուզին ու Ֆրիկին։[3]

Ակնայ ժողովրդական երգերը շատ նման են Քուչակի երգերին իրենց դարձուածներով ու ձեւով, երբեմն ամբողջ բովանդակութեամբ եւ ձեւով ու չափով։ Պէտք է կարծել կամ Քուչակն օգտուել է այդ երգերից, կամ նա երկար ապրել է այնտեղ, որ նրա երգերն այդտեղ ժողովրդականացել են,

1 «Նահապետ Քուչակի դիւանը», Փարիզ, 1902։

2 Իսկապէս այդ երգով սկսուող տաղաշարքը։

3 Նահապետ Քուչակի դիւանի մէջ բոլորը, լինեն անանուն, թէ Պլուզի կամ Ֆրիկի անունով, թէ Քուչակի, դրուած են իբրեւ Քուչակի երգեր։

եւ նա կեանքի վերջում միայն հաստատուել է Խառակոնիսում: Այն կարծիքը (Les trouvères Arméniens), թէ Խառակոնիսցի Քուչակի, Պարիզի Ազգային գրադարանում գտած մի տաղն իր լեզուով ու ոճով բոլորովին տարբերւում է Քուչակ Նահապետի երգերից, անշուշտ այն է ապացուցում, որ Խառակոնիսում երկու Քուչակ են ապրել, դա թոռ Քուչակի երգն է: Քուչակի առեղծուածը յիշուած հրատարակութեամբ մթնել է. պէտք է Պլուզի եւ Ֆրիկի տաղերը ջոկել եւ անանունները միայն Քուչակին վերագրել: Եւ սիրոյ երգերը մեծ մասամբ անանուն են, բացի մի երկուսից:

Կոստանեանցի Բ. պրակ, եր. 60 երգի վերջում — «Ես Քուչակն եմ Վանեցի, ի գեղէն Խառակոնիսայ, լցեր եմ հարիւր տարին, էլ չի գար մաքիկս ի վերայ», եւ իսկապէս երգն աղաւաղուած է չափով ու բովանդակութեամբ: Եւ այդ երգը Քուչակինը չէ, այլ մի սարկաւագի. Քուչակն ուրեմն աշուղ է, լոկ երգող եւ հեղինակ: Արդեօք նոյնը չէ՞ եւ այս դէպքում:

Ի՞նչ են այդ սիրոյ երգերը: Դրանց «Հայրենի կարգաւ» վերնագիրը, երգի մէջ յիշուած «հայերէն ասել», «հայրին», «հայրէն ասաց», «հայերէն կասէ», «հայրին ասի», «հայերէն ասա՛» բառերը աղաւաղումն են «հայերէն» բառի: Ժողովրդական երգի մէջ յիշւում է պարզապէս «հայերէն ասել»[1], ինչպէս Ակնայ երգերի մէջ «անտունի ասել»: Դա կապուած է եղել, անշուշտ, որոշ եղանակի եւ տեսակի հետ:

Եւ իսկապէս, մինչդեռ սովորական տաղաչափութիւնն իր էական բնաւորութեամբ նման է արաբական եւ ուրիշ երգերի տաղաչափութեան եւ շատ հաւանական է արաբերէնից անցել է հայերէնին՝ առանձնայատուկ ձեւ առնալով, եւ նոյնիսկ չարականների ազատ տաղաչափութիւնը գտնում ենք ուրիշ ազգերի մէջ, այդ երգերի տաղաչափութիւնը միայն հայերէնին է յատուկ, յամբ-անապեստեան մի ոտանաւոր, որ կազմւում է 4 տողերից կամ 8 կիսատողերից, շեշտ ունենալով 2,5,7,10,12,15 վանկերի վրայ, որոնցից 2 եւ 12 վանկերի շեշտերը կարող են ազատութիւն ունենալ, իսկ մնացած շեշտերը, եթէ ոտանաւորը չի աղաւաղուած, անպայման հաստատուն են: Ցանգը տողավերջում է լինում, բայց կարող են կիսատողերը եւս յանգ կազմել, որով ոտանաւորը վերածւում է ութեակների.—

Կարմի՛ր վարդ կանանչ թփով,
Կանանչ թո՛ւփ կարմիր խնձորով,
Քանի՛ լամ ու դքեզ ուզեմ,
Զարթըցընեմ ոգոց հանելով.
Թէ դու կու սիրես սրտովդ,
Ինձ ասա՛ — ես եմ կարօտով.
Թէ չես ի սիրել սրտով՝
Սուրբ Սարգիս 'ւ Աստուած քեզ խռով:

Հնագոյն գործածութիւնն այս տաղաչափութեան գտնում ենք Նարեկացու տաղերի մէջ, որոնք անյանգ են դեռ: Այնուհետեւ նոյն չափը

---

1 «Հայերէն բաներ», «Հայերէն մասալ ու առակ» (Ֆրիկ):

բանեցրել են Ն. Շնորհալի, Մկրտիչ Նաղաշ, Գրիգոր Աղթամարցի եւ ուրիշ շատերը: Հնագոյն ժողովրդական երգը՝ 13-րդ դարուց «Աւաղ զլեռնն տեսեմ, որ տաճկա՛ց դուռն ընկել դերի» այդ չափով է: Նոր ժողովրդական երգերի մէջ այդ չափը [կայ] միայն Ակնայ երգերի մէջ, որոնք բովանդակութեամբ եւ ձեւով էլ նման են Քուչակի երգերին: Միջին դարում անշուշտ կարող է երգիչների մէջ յիշողութիւն պահուած լինել այդ չափի բնիկ հայերէն լինելու մասին:

Ի՞նչ է եղել այդ չափով յօրինուած նախքան Նարեկացին. հոգեւոր երգը Շարակնոցի մէջ այս չափով չէ. անպայման աշխարհիկ երգերն են յօրինուած եղել այս չափով, որ Նարեկացին գործ է ածում երկու տաղի համար, նոյնպէս եւ Շնորհալին, իսկ 13-րդ դարուց, երբ աշխարհիկ ոգին զօրանում է՝ դա դառնում է սիրելի չափերից մէկը մեր բանաստեղծների եւ երգիչների համար, մեծ մասամբ դարձեալ աշխարհիկ նիւթի համար: Կը նշանակէ 10-րդ դարից առաջ եւ յետոյ աշխարհիկ երգը, ուրեմն գլխաւորապէս սիրոյ երգը, հետագայում նաեւ պանդխտի երգը, յօրինուելիս է եղել այդ չափով: Եւ քանի որ այդ չափը բանեցրել են հասարակ երգիչները կամ ժողովրդի մարդիկ, ուստի դա մնացել է ժողովրդական տարրական ձեւի մէջ, իբրեւ երկու կիսատողերից կազմուած քառեակներ, որին հետագայում փոխանակել է մեր արդի քառեակը: Եւ իբրեւ այդպիսին՝ շատ յարմար է եկել իմաստական-խրատական յօրինուածքի համար, եւ ապա հետզհետէ, նոյնպիսի մի քանի աւելի մեծ քերթուածների համար գործածուել, որոնց տները, մեծ մասամբ, դարձեալ անջատ կարող են առնուել:[1]

Քանի որ այդ չափը բնիկ հայերէն է, բնականաբար եւ այդ չափով յօրինուած սիրոյ երգերի մէջ մենք պիտի գտնենք մեր ժողովրդի իսկական սիրոյ երգը. դրանից է առաջանում այն, որ մինչ մեր միւս քնարերգուների մէջ անհատական բնոյթը եւ օտար ազդեցութիւնն աւելի է երեւում, մինչ նրանց գրուածքների եւ ժողովրդականի մէջ համեմատաբար պակաս նմանութիւն կայ, — «Հայերէնի կարգով» երգերը կան իբրեւ ժողովրդական երգեր, դրանց ամբողջութեան մէջ մի անհատական բնոյթը պակասում է, եւ որ գլխաւորն է՝ օտար ազդեցութիւնը նոյնպէս: Ընդհանուր բնոյթը եւ երգելու եղանակը մէկ է: Դրա պատճառն այն է, որ դրանց հեղինակը, իսկապէս հեղինակները, հին ժողովրդական երգերն են առել մշակել, — ինչ-

1 Աղթամարցի. եր. 72, 76 (սիրոյ), 83 (խրատական), 85 (խրատական), 92 (մահ, առաջին կիսատող): Մ. Նաղաշ, եր. 3 (ունայնութիւն), եր 29 (առաջին կիսատող, ծաղկունք), եր. 35 (ղարիպի): Նոյն չափով Կոստանեան (ժողովրդական), Բ. եր. 55, 60 (վանեցի Քուչակի երգ. Խառակոնիսցի), Գ. պրակ, եր. 28 (Ունայնութիւն), եր. 30 (Վասն կենաց). 35 (Ֆրիկի, խրատական), 40 (Ֆրիկի Վասն ողորմութեան), 44 («Հայերէնի կարգաւ», սիրոյ): Ա. պրակ, եր. 38 (Մարտիրոս Ղրիմեցու, Վասն քաղաքին Ամասիա), եր. 68 խրատական Հայերգի հետ նոյն): «Հայ էջեր», եր. 13 (տաղ իշխանացն, ողբ), եր. 13 (Տաղ Վարդանանց խառնուած), եր. 32 (դարձեալ հայերէն, Ունայնութեան վրայ, Յովասափ Քիստացի), եր. 35 (Ֆրիկ, Վասն ողորմութեան), եր. 39 (Ֆրիկ, Ընդդէմ Ֆալաքին), եր. 42 (Ֆրիկ Ա. հատուած խրատական), եր. 55 (առաջին կիսատողով), եր. 63 (առաջին կիսատող), եր. 76 (տաղ Քերովբէի), եր. 86 (մահ), եր. 87 (մահ), Մանանայ, եր. 274—«Զկթղայն ի ձեռն առեալ սաս»: Նոյն, 272 (Յով. ողբ. վարդավառ եւ...):

պէս այժմ անում է Յովհաննէս Թումանեանը, — եւ նորից ետ է դարձրել ժողովրդին:

Թէ դրանք մի բանաստեղծի չեն՝ երեւում է եւ նրանից, որ կան քառեակներ, որոնք կնոջ կողմից են ասուած, ինչ որ գտնում ենք եւ ժողովրդական երգերում (ԻԳ, ԼՁ, ԽԷ, ԾԷ, ԾԹ, ՅՀ, ՂԵ, ՃԺ, ՃԾԲ, ՃՀԱ, ԼԷ, Խ, ԽԷ, ԻԹ, ՁԳ.):

Դրանք իսկական ժողովրդական երգեր չեն, ուրեմն, այլ ժողովրդականը՝ մշակութիւն կրած գրագէտների ձեռով, եւ դրա համար մտած տաղարանների մէջ:

Թէ ե՛րբ է սկսել այդ մշակութիւնը՝ այդ մասին հաստատ բան կարելի չէ ասել: Պէտք է սպասել հին ձեռագրերի: Սակայն դժուար է կարծել, թէ Կոստանդին Երզնկացուց առաջ, ուրեմն 14-րդ դարուց առաջ, որեւէ եկեղեցական, նոյնիսկ աշխարհական երգիչ, ձեռք առնէր մշակելու այդ: Դրանց ազատ բնաւորութիւնը պահանջում է, որ սիրոյ երգն ինքն եւս ազատուած լինէր այլաբանական կաշկանդումից եւ մեղանչական համարուելուց: Արդ՝ այդ ժամանակը Թլկուրանցու եւ Աղթամարցու շրջանն է, 15—16-րդ դարերի մէջ, ուրեմն մօտաւորապէս այն ժամանակ, երբ ապրել է Քուչակ Նահապետը: Կարող էին նոյն բանն անել նաեւ աշխարհական երգիչները, — եւ անպայման մասամբ այդպէս էլ է, — բայց գրագէտ աշխարհական երգիչ այդ դարերից առաջ դժուար թէ լինէր, որ այդ բանը հոգեւորականներից անկախ անէր եւ այնպիսի ազատ մտածութիւն ունենար, որ հոգեւոր սրբութիւնը սիրոյ երգի վերածէր, ինչպէս ԼԷ, ԼԸ (եր. 50): Դա 15—16-րդ դարուց առաջ սրբապղծութիւն պիտի համարուէր՝ գրի առնելու եւ մշակելու, եւ սէրը կրօնականից բարձր դասուէր:

Ի՞նչ է այս սիրոյ երգերի արժանիքը, — նոյնը, ինչ որ մեր ժողովրդական երգերինը, միայն աւելի մեծ աստիճանով, որովհետեւ դրանք մշակուած են: Նախ ձեւի կողմից այդ երգերը լինելով քառեակներ, — կամ շատ-շատ՝ զարգացած 2—4 տողով, ուրեմն վեցեակներ կամ ութեակներ (ինչպէս յատուկ է մեր ժողովրդական երգին), — իրենց փոքրիկ ծաւալի մէջ, ինչպէս եւ ժողովրդական քառեակները, տեղ չեն տալիս ոչ զգացմունքի եւ ոչ մտքի ընդարձակուելուն ու ճապաղելուն, այլ, ընդհակառակն, միայն մի միտք ու մի զգացում են արտայայտում — սեղմ ու հակիրճ, բայց այնպէս բիւրեղացած ու փայլուն, որ երբեմն նոյնիսկ շլացուցիչ են իրենց նուրբ, սուր ու համարձակ դարձուածքներով, երեւակայութեան յանկարծական վառ ու շքեղ թռիչքներով: Խօսքի գիւտերն ու պատկերները երբեմն մեզ զուարճացնում են, երբեմն հիացում պատճառում, երբեմն էլ ժպիտ պատճառում իրենց սրամտութեամբ եւ միամիտ չարաճճիութեամբ (170), եւ միշտ հրապուրիչ են իրենց սրտաբուխ թարմութեամբ եւ ինքնատիպ եւ մեզ ընտանի զգայնութեամբ եւ միշտ համապատասխան արտայայտած գաղափարին ու զգացման: Նկարագիրն անում է շատ ճոխ ու կենդանի, միանգամայն եւ զգացուած, ազնիւ եւ ուժեղ, ինչպէս ԻԵ, ԻԸ (եր. 48): Բայց, որ գլխաւորն է, բանաստեղծն իր երգի մէջ արտաքին գեղեցկութեան նկարագիրն անելիս, սովորաբար, ոչ թէ լոկ նմանութիւնների է դիմում, ինչպէս Թլկուրանցին ու Աղթամարցին, այլ, ինչպէս լինում է եւ ժողովրդական երգի մէջ,

ամէն ինչ դնում է շարժուն գործողութեան մէջ, եւ եթէ լուկ նկարագիրն է անում՝ մանրամասներով ընդարձակում է նմանութեան առարկայի մի գործողութեամբ կամ վիճակով. հմմտ. Զ. (եր. 44), ԾԾԶ (եր. 75)։ Նոյնպէս վարւում է նաեւ հոգեկան վիճակի նկարագրի համար, ինչպէս հետեւեալի մէջ (Դ. եր. 44). մենք տեսնում ենք, թէ ինչպէս սիրահարը կարօտակէզ ման է գալիս եւ յանկարծ պատահում է իր եարին եւ սրտի պապակն անցնում է։[1] Բանաստեղծն այդ հոգեկան վիճակը յայտնում է մի լուկ նմանութեամբ, բայց այնպէս կենդանի եւ ուժեղ, որ այլեւս ոչ մի պակաս չի մնում։ Կամ տեսէք, թէ ինչպէս հետեւեալի մէջ, խսկը Նարեկեան պատկերով, հանում է իր սրտի անձկութիւնը եւ ամբողջ մարմնով տանջուելը սիրոյ ցաւից.—

> Սրտիկս է խալկին եղեր, զօրն ըղքո դուսան կու եփէ.
> Անձիկս է չոր փայտ եղեր ու զկրակն ի վառ կու պահէ.
> Տեսեր եմ որ միսն եփի նա զկրակն դադրեցունէ.
> Թողե՛ր միսն զիր ոսկորն, դեռ ի կրակն փայտ կու ձգէ։
>
> (ԸԳ Եր. 56)

Կամ հետեւեալի մէջ աղեղ ունքերի ուժը.—

> ... Ունքերդ է կամար կապեր ու կ՚երթայ ի Մսրըն թալան,
> Շատ առ չատ գերի բերէ, չատ խօճայ ու չատ պազրկան.
> Գերիս ալ ի հետ բերիր ձգեցիր ի ծով ի զընդան։
>
> (Եր. 75. 78)

Այսպիսի երեւակայութեամբ եւ արտայայտութեան ուժով է հէնց, որ մեր սիրերգերի այս «հայրենի կարգը» մեր նոյն տեսակի երգերի մէջ առաջին տեղն են բռնում, եւ դրանց երգիչը՝ Նահապետը՝ մեր երկրաւոր սիրոյ երգի մեծ վարպետն է, ինչպէս Նարեկացին՝ երկնաւոր սիրոյ, երկուսըն էլ բխած նոյն ցեղի միեւնոյն հանճարից եւ միեւնոյն ոգուց, եւ արուեստի որքան նմանութեամբ, միանգամայն եւ մեծ տարբերութեամբ — մինչ Նարեկացին իր ամէն «բանի» մէջ պատկերների մի յորդահոս ու պղտոր հեղեղով արտայայտում է մի գաղափար ու մի զգացում երկնային սիրոյ, կազմելով նոյն նիւթի համար բազմատեղնեան դրուագներ, — նոյնն անում է Քուչակը երկրաւոր սիրոյ ընդարձակ վէպից առնելով ամէն քառեակի մէջ մի գաղափար ու մի զգացում, բայց արտայայտելով մի պատկերով, մի կարճ խօսքով, միայն այնպէս թափանցող, հզօր եւ միանգամայն պարզ ու վճիտ։ Նարեկացու սէրը զղջման եւ անձնազարչանքի, աշխարհի ոչնչացման բուռն տոգորումն էր միստիքական մղձաւանջից, մռայլ անձկութեամբ, մինչ Քուչակը կապուած է երկրին, զուարթ ու լուսաւոր, հեշտալից ու բուրաւէտ երկրին. դրա համար՝ մինչ Նարեկացու հեծկլտացող թառանչների հետ մենք զալարւում ու սարսում ենք, մեզ վրայ զգալով միջնադարեան ճգնաւորի տուայտանքները մութը խուցում, այստեղ մենք միայն դիւթանում ենք քնքուշ ու հաճելի երազանքներով, սրամիտ խօսքերով, եւ սրտի խորքից դուրս թռած սիրոյ հառաչանքը նոյնիսկ, առանց տառապանքի

1 «Պաղ ջուր պրծել կու գայ սարէն»։

*ճչերով բռնանալու մեզ վրայ՝ մեզ օրօրում է պատանեկական մի թեթեւ ու քաղցր աւաղով եւ տանում այն պարզ ու գեղջուկ կեանքը, այն ժպտուն բընութեան գեղեցիկ ծոցը, որից ծագել են այդ ազնիւ երգերը սկզբնապէս:*

*Գարնանային զբօսանքը, լուսաշող պարտէզը, առաւօտեան ցօղաթաթախ ու կանաչ, անուշաբոյր ծաղիկներով, գունազարդ եւ ծաղկած ծառերի ստուերներով, պարտէզի միջով անցնող առուակը իր կանաչ եզրներով (ՂԷ), թռչնիկների սիրոյ երգը եւ ծառերի ստուերում նստած խմելը (ՃԺԴ), ձորակից իջնող ջրերը, զբօսանքը սարերում եւ սիրելիի համար ծաղիկ քաղելը (ԽԳ) եւ այնտեղ հէնց քնելը կաքաւների, թռչունների երգի տակ՝*

*Այս գիշեր լերանց բարձանց*
*Ծաղկունանց ի մէջն եմ ի քուն,*
*Իմ եարն ի վերեւ գլխուս կու խմէ,*
*Ես անհոգ ի քուն (ՃԿՁ),—*

*կամ լուսնկայ խաղաղ պարզ գիշերները (49) եւ այլն: Այս ամէնը մի հեշտալից դիւրութիւն է ընծայում: Մենք տեսնում ենք այս լեռնային թարմ բնութիւնը, այս այգին ու սարը, այս զբօսանքը, այս «հայերէն» երգն ու ուրախութիւնը, որ անում են հէնց այդ երգի ստեղծողները այգիներում: Դա մի երիտասարդական անհոգ ու խաղաղ կեանք է, որ բոլորովին հեռու է միստիք տանջագին ոգուց եւ բոլորովին հեռու մեր ազգային դարաւոր տառապանքից: Կարծես այդ երգիչները եւ իրենց հասարակութիւնը, ինչպէս մանուկները, ոչ մի ուրիշ ցաւ չեն ունեցել, բացի իրենց սիրոյ վըշտից, կարծես դրանով մեր բանաստեղծութիւնը վրէժ է առնում դարաւոր ողբերից:*

*Այս երգերի գրաւչութիւնը գլխաւորապէս հէնց նրա մէջ է, որ մեր ժողովրդի հարազատ ոգին ենք տեսնում այնտեղ, այն էլ կենդանի կեանքից նկարած, բազմազան վիճակների մէջ, սիրահար տղան ու աղջիկը, սիրող ամուսինները, աղջկայ անուան կոտրուելը (115), աղջկայ անուան համար հոգացող մայրը, որ արգելք է լինում սիրահարների տեսակցութեանը, փողով աղջիկ գնելը (167), բռնի ամուսնութիւնը (12 գ, 34), ընտանեկան կեանքը, պանդխտի վիշտը եւ այլն, բոլորը բազմազան ձեւերով պատկերացուած են այս երգերի մէջ, որ եւ ապացոյց են այդ երգերի ժողովրդական ծագումն ունենալուն, որովհետեւ միայն ժողովրդական երգը այսքան լիառատ կեանք է ցոլացնում իր մէջ: Այստեղ առաջին անգամ, առակներից յետոյ, մեր գիւղացու, մասամբ եւ քաղաքացու մաքուր ձայնն ենք լսում, առանց որեւէ դիտման կամ այլաբանութեան, ինչպէս առակների մէջ:*

*Մտքի ու գաղափարների խորութիւն եւ հարստութիւն եւ կազմակերպուած աշխարհայեցողութիւն որոնել այս երգերի մէջ կարելի չէ, ինչպէս ամէն նոյնպիսի ժողովրդական երգերի մէջ, քանի որ դրանց հեղինակների հոգին եւս խորը չէ, եւ իրենց առօրեայ կեանքից, իրենց վայրկեանի մտածմունքներից ու զգացումներից շատ հեռու չեն գնում: Այդ երգերը սիրով տոգորուած թռչունի անուշ ու դաշն մի-մի կարճ ճռուողիւն են միայն, մերթ ուրախ ու զոհ, յաճախ տխուր ու դժգոհ, երբեմն սիրոյ գովա—*

սանք ու հրճուանք, զանգատ ու լաց, յաճախ տենչանք ու կարօտ եւ սրտի այրոց ու հառաչ, որովհետեւ ինչքան էլ սէրն աշխարհի ամենաքաղցր բանն է, «Քան զսէրն այլ քաղցրիկ պտուղ ի յաշխարհս չհաւատամ թէ լինի» (63), բայց դա միաժամանակ ունի եւ իր դառնութիւնները, ամենամեծ դառնութիւնները, որովհետեւ յոյզերից ամենազօրեղն ու ամենապահանջկոտն է․ Նա պատասխան է ուզում եւ ամէն մի չնչին բանից վրդովւում եւ ցաւ է չինում իր համար եւ տանջւում նոյնիսկ այն ժամանակ, երբ երջանիկ է։ Դրանից է առաջանում սիրոյ երգի էական տխուր ու լալագին գիծն ընդհանրապէս բոլոր նոյնպիսի երգերի մէջ․ սիրոյ երգը մի սիրոյ էլեգիա է, մի ողբերգութիւն սիրոյ բանտի մէջ չղթայուածի։

Վերլուծել այդ սիրոյ բոլոր քաղցրութիւններն ու դառնութիւնները՝ մեզ հեռու կը տանէր, այստեղ միայն մի քանի կէտեր մատնանիշ կ՚անենք․

1․ 12—14—48․ Թէ ինչպէս սկսւում է սէրը, եւ սկզբից հէնց կաշկանդում սիրահարին, որ առանց սիրածին չի կարող ապրել, եւ անիծում է միայն բաժանողին։

2․ Աղջիկը նազերով գրաւում է տղային (17, 16)․ սա սրտայոյզ կերպով աշխատում է ողոքել անձնատուր չեղող աղջկան (119, 22)․ տղան հեռանում է, բայց սէրը բորբոքւում է եւ վերադառնում է (126, 143, 155)։

Աղջիկն անողոք եւ անմատչելի է եւ պահանջում է հաւաստիք իրեն արժանի լինելու (57, 59, 11), եւ աղջիկն ընկնում է ակնատը (90)։ Տղան սպառնում է սարերն ընկնել եւ մեռնել եւ դրանով պատիժն առնել (19, 111), հաւատալով, որ աղջիկը պիտի ողբայ իրեն, եւ այն ինչպէ՜ս (51)։

3․ Սիրուն խանգարողներ կան, բայց տղան յարատեւում է (106, 103), աղջիկը համբերութիւն է քարոզում (13, 11), տղան ուզում է համբերել, բայց դժուար (130)։

4․ Տեսակցութիւն միայն գիշերը, որովհետեւ բամբասանքը մեծ է (58, 64, 65), տղան ուզում է հեռանալ յայտնի սիրելու համար (132, 34)։

5․ Տղան հանդիպում է եւ աղջիկը խոստանում է գիշերն ընդունել (158), տղան գնում է, եւ աղջիկը խնդում եւ ցանկանում է, որ գիշերն երկարի (171, 41), բայց մոլլան ազան է տալիս (117) եւ լոյսը բացւում է, եւ պէտք է հեռանայ (137)։

Ահա Ռոմէոյ եւ Ջուլիետտայի տեսակցութիւնը, անմեղ սրտերի տեսակցութիւնը։ Եւ մեր սիրոյ երգերը, որոնց թրթիռն ու գեղգեղանքը թէպէտ միշտ սիրոյ ցանկութիւնից է ծագում, միշտ մի անարատ ու անբիծ ըղձացմունքով լի, բացի մի երկու քառեակից, երբեք բանբառակ, յայրատ ու պագշոտ։ Տեսէք, թէ մի սխալ, անպատշաճ խօսքի համար ինչպէս վիրաւորուել է գեղուհին եւ ինչպէս սիրահարը ամաչում է դրա համար եւ տանջուելով զղջում է իր ասածի համար եւ աշխատում հաւատացնել իր սիրոյ մաքրութեանն ու անկեղծութեանը (73)։

Այսպիսի մաքրութիւնը, բնականաբար, ծագում է ցեղի իրեն ոգուց, որ եւ քրիստոնէական դարաւոր կրթութեամբ աւելի զտուած էր։

Ա՛յ իմ նշենի ծաղիկ,
Դեղնեցար ու դարձար ի նուշ,
Բերանդ է փոքրիկ, անուշ,
Պուկներդ է ամրաւ ու նուշ,
Այն օրն ի մօրէդ ծնար,
Դու լայիր 'ւ ամէն խնդային,
Հանց մաքուր ել ի յաշխարհէս,
Թ՝ երկիր լա՛յ նա՝ դու ծիծաղիս (54)։

Ահա թէ ի՛նչ է խրատում սիրահարն իր սիրականին։

16–րդ դարում սիրոյ երգն, ուրեմն, բուն ժողովրդական աղբիւրին դիմելով այսպէս ազնուանում է եւ կատարելապէս աշխարհականանում․ բայց դրանք ժողովրդական լինելով՝ չունին ոչ մի ակնարկ, թէ ինչպէս հին կրօնական ոգին այս վիճակին է հասնում։

Քուչակի երգերի մէջ միայն մաքուր խրախճանքը նուրբ ու քնքուշ, փառաբանւում է երգը, գինին եւ ուրախութիւնը․

Աշուն էր, եղաւ դարուն,
Ա՛հ, քանի՛ կենանք մենք ի տուն․
Եկէք որ պաղչան մտնումք
Ու խմենք հետ ծառ չքերուն․
Պլպուլն ի վարդին սիրուն
Համբերէ՝ զինչ մանչն ի գինուն․
Նստեր ի վերայ ճղին՝
Սաղմոսէ ինքն տունէ տուն (65)։

Ուրիշ տեղ (78) իր եարին հիւրասիրող կինն ասում է․

Հընցկուն հարիֆնի բերեմ,
Որ ամէնն ի քեզ նմանի,
Ծովերդ քեզ գինի անեմ,
Ու նավերդ ի տստօքանի։

Կամ տեսնում է իր եարին խրախճանք անելիս (74)․

… Նստեր է ծառին չքին,
Կը խմէ զիւր լուրջ ապիկին․
Կխմէ ու հայերէն կ'ասէ թէ
Ի՛նչ անուշ է սէրն ու գինին (74)։
… Նա տեսայ իմ եարն ալ ի հաց․
Կթխակ ի գինով լեցած՝
Իմ եարին առջեւն է դըրած․
«Իմ եա՛ր, խըմէ՛ իմ դիաց,
Որ ելնէ հոգիս քո դիմաց» (59)։
Ա՛յ իմ նշենի ծաղիկ,
Ծաղկեցար ու դարձար ի նուշ

*Բերանդ է աղուշ մաղուշ,*
*Գըռկըներդ է ամրաւ ու նուշ…*
*Զարախդ՝ որ ափիդ ունիս,*
*Դու խմէ՛ որ տեսնեմ՝ անո՛ւշ.*
*Պագնեմ զայդ բերնիդ բոլորն,*
*Որ գինոյն հոտ գայ անուշ* (59)։

*Այստեղ, այս «հայերէն կարգի» երգերի մէջ միայն մենք տեսնում ենք հանդարտ ու մեղմ երգուած խրախճանքը, որի մէջ հաւասար փառաբանւում են երգ, կին ու գինի։ Բայց երգը ինչքան ազնիւ է, չունի այն բուռն աւիւնը եւ զուարթ յափշտակութիւնը, որ յատուկ է այդ կարգի երգերին, էական տեղն այստեղ բռնում է սէրը, գինին ու երգը միայն նրա անբաժան զարդարանքն են։*

6. Աշխարհիկ երգ, ուրախութիւն։— *Սակայն մենք ունեցել ենք և բուն խրախճանքի երգեր։*

*Ներսէս Շնորհալին Հայաստանի անցած փառքը ողբալիս գրում էր հարսանեկան ուրախութեան համար.*

*Ո՛ւր պարարակ եղն ամոլին,*
*Զիարդ ի քեզ ոչ զենանին,*
*Եւ կամ* մատռուակքըն բաժակին
*Զի ոչ բաշխեն* զանոյշ գինին.
*Ուր բարեկամք զուարճակիցք…*
*Ուր քաղցրահամ* Երաժշտի
*Կամ գեղգեղումն եղանակի…*
*Ուր են ազատքն ի տաճարի*
*Կամ տեառնորդիքն* ի ծաղկոցի…
*Մանկունըք քո զուարճալի*
*Նըման նորոգ բուրաստանի,*
*Դստերըք քո պաճուճալի*
*Յերգ եւ ի* ճնար *միշտ ի* խաղի (12–16)։

*Այս խրախճանքի երգերից դժբախտաբար ոչինչ չի մնացել մեզ։ Կեանքն ինչքան էլ աւերածութիւնների պատճառով դառն լինէր, բայց ունէր եւ իր ուրախութեան պահանջը, եւ աշխարհականների մէջ անպայման շարունակուել են ուրախութեան երգերը, որ յիշում է Եղիշէն։ Կրօնաւորները, սակայն, դժուար թէ շատ վաղ սկսէին մշակել ուրախութեան երգը, որի մէջ փառաբանուէին միաժամանակ կին ու գինի, պար ու նուագ, սիրով կեր ու խումը բնութեան ծոցում։ Դրա համար պէտք էր, որ մտածութիւնը բոլորովին ազատուէր միստիքական մղձաւանջից եւ մարմնին ոչ միայն սիրոյ կողմից, այլեւ կերուխումի՝ տրուէր կատարեալ ազատութիւն. Թլկուրանցին* (+1525) *նոյնիսկ, որ հոգով սիրում է, ինչպէս տեսանք, ուրախութիւնը բնութեան գրկում, «Զթեւն բոլոր վզին, սիրով խմէր զանուշ գինին», այդ լաւ է համարում, եթէ չլինէր մահուան օրն ու դժոխքը եւ դատաստանի սարսափը։ Նա նոյնիսկ արբեցութեան դէմ գրուած մի տաղում խրատում*

է — «Թէ սէր ունիս հետ Աստուծոյ, դու զգինին ու բոզք ատէ· գինին է մայր ամենայն չարեաց... Քան զգինին յետեւ հացէն երկու երեք՝ այլն անչահ է»: Այսպիսի հայեացքի տէրը, բնականաբար, ինչքան էլ սէր երգէր, չէր կարող խրախճանքի երգ յօրինել, եւ եթէ երգելու լինէր՝ պիտի դիմէր այլաբանութեան:

17–րդ դարու սկզբի տաղարաններում գտնում ենք մի քանի ուրախութեան երգեր, ուրեմն ամէնից ուշը 16–րդ դարու երգեր, որոնց մէջ գինին եւ խրախճանքն են փառաբանում: Սարկաւագ Բերդակցին (թերեւս այն սարկաւագը, որի մի սիրոյ երգը Կոստ. Բ. եր. 60–ում աղաւաղուած երգել է Խառակոնիսցի Քուչակ Նահապետը) գովում է խաղողը (Կոստ. Գ. եր. 67) իբրեւ մի «անմահութեան պտուղ», որ բոլոր պտուղներից գեղեցիկն է եւ նրանց թագաւորը.—

Թելդ քաշած է յոսկւոյն միջէն,
Դու մարգարիտ ոսկի շարած,
Քո մէկ պտուղդ աժէ ճուհար,
Տպազիոն ակն ու գոհար...
Զքեզ հրեշտակն եբեր Նոյի,
Որ քո պտղովդ ուրախանայր:

Ապա առանձին սիրով պատմում է գինի պատրաստելը, գինին, որ մարդու սիրտ բաց է անում, սիրով մոռանալ տալիս չարակամութիւնը եւ ներող է դարձնում մարդուս.

Յորժամ խմէ աղքատն ի քէն,
Որ զհացն եւ զջուրըն մուրանայր,
Նա եւ լինի տէր աշխարհիս,
Արարածոցըս պատապար:
Յորժամ խմէ կոյրն ի քէնէ,
Որ ի մօրէն ծներ խաւար,
Հանց քաղաքաց տայր մեկնութիւն,
Որ չէ տեսեր, չունի խապար:
Յորժամ խմէ մունճն ի քէնէ,
Որ ի լեզուէն քամ ու տկար,
Զերտ ղթութակն առնու լեզուն,
Մասխարանայ, քան զդիւահար:

Շատ պարզ երեւում է արդէն գինու սիրահար զուարթ երգիչը, որը, սակայն, չի կարողանում դեռ ազատ երգել եւ ինքն իրեն յանդիմանում է դրա համար.

Ո՛վ Սարկաւա՛գ Բերդակացի,
Դու ի գինւոյն ի՞նչ շահեցար,
Այնչափ ունիս սէր հետ գինւոյ,
Որ գովեցիր սրտովդ յօժար:

Եւ Սարկաւագն իրեն արդարացնում է, թէ գինին չէ երգում, այլ պատարագի «բաժակը», որ «հոգուն է լուսարար», քանի որ առանց գինու «ոչ ժամ լինի, ոչ պատարագ»: Գինու գովքն, ուրեմն, դեռ այն սքողուած, այլաբանական, անհամարձակ վիճակի մէջ է, որ ունէր սկզբում նաեւ սէրը:

Նոյն նիւթը «վասն խաղողի» (Կոստ. Գ. 63) մշակել է Աստուածատուր անունով մէկը (1617 թ. ձեռագիր), պարզաբար իբրեւ գինու գովք, զուարթ եւ ուրախ:

Ա՛յ լի՛ց ու տո՛ւր, ա՛յ լի՛ց ու տո՛ւր,
Անապակէդ ա՛յ լի՛ց ու տո՛ւր:

Կրկնում է շարունակ երգիչը:

Սկզբում, բոլոր պտղաբերներից առաջ, այգում խաղողն են տնկել, ասում է, եւ բարձր ձայնով գովել, ապա պատել են այգին, պայծառ ծաղիկներով ու պտուղներով լցրել ու գինու գովքն ասել:

Քո կոճերդ է ի կանգուն,
Ողկոյզն մեծ եւ քաղցրագոյն,
Պտուղն ի վառ դէմ արեւուն
Քան զկանթեղ մէջ գիշերուն:
Ա՛յ լի՛ց եւլն:

Ապա նոյնպէս պատմում է գինեգործութիւնը եւ գինու գործածութիւնը պատարագին, բայց ոչ արդէն աշխարհիկ մտքով.

Քո անունդ լինի բաժակ,
Որ գուն ի շուռ գաս համարձակ...
Դու ես գունով զէտ մանուշակ,
Կարմիր եաղութ ակն սուտակ,
Քեզ քահանայքն են մատուցակ...
Սարկաւագունք յառաջ եկին,
Սաղմոսելով մեծարեցին,
Տարան դրին եկեղեցին,
Եւ սուրբ խնկօք զարդարեցին:
Ա՛յ, լի՛ց ու տո՛ւր...
...Զգաւաթն ի լի արա՛ ու տո՛ւր
Թո՛ղ շատ ապրի՛ս ի՛մ Խաչատո՛ւր:
Ա՛յ, լի՛ց ու տո՛ւր...

Իսկական ուրախ զուարճութեան գիներգու է Մարտիրոս Խարասարցին իր երկու երգերով, որոնք յօրինուած են այբբենական սկսուածքով (Կոստ. Բ. 47 հտ.): Սա ոչ թէ գինին է երգում, այլ գինարբուքը, տօնական հացկերութիւն (եր. (49)՝ հիւրերի ու դրացիների հետ մի ուրախ ազգային դէպքի առթիւ: Բազմական են քահանաներ, հիւրեր, դրացիներ եւ ռամիկներ, որոնց հոգսը տանում է երախը: Գինին գովւում է արդէն իբրեւ կպա-

*տակ, եւ երգիչն ուրախանում է, որ ձեռքին ունի նորից անուշ, պարզ, անխառն գինու գաւաթը, եւ կամկար չատ ուտել–խմելը տանձ ու խնձորով, նուռով զարդարած սեղանի չուրջը և ծաղիկներով զարդարած կարասի չուրջն ուրախանալը ու նոր կարաս բանալը հրճուանք է պատճառում նրան.—*

*Այսօր տօնեմք, ձեզ աւետի՛ս,*
*Ահա ցնծամք յայսմ տօնիս,*
*Բարով տեսայ գաւաթն յափիս.*
*Աւետիս տամ Հայոց ազգիս...*
*Ինձ մեծ աման տո՛ւր թէ ունիս,*
*Ի քեզ նայեմք երիցանիս,*
*Լի՛ց տո՛ւր, եղբա՛յր, ի՞նչ կու նայիս,*
*Աւետիս տամ Հայոց ազգիս:*
*Խնդամք ամէն չուրջ կարասիս,*
*Խորվենք հող տաք ոչխըրի միս,*
*Ծաղկունք բերենք մէջ ժողովիս,*
*Աւետիս տամ Հայոց ազգիս:*
*Ձերմակ գինի, լաւ դեղ սրտիս,*
*Ձաչակն անոյչ, համն ա՛ռ տե՛ս.*
*Մեք այլ այտից, խմենք այտից.*
*Աւետիս տամ Հայոց ազգիս:*
*Ցարի՛ ի վեր, հաչտեա՛ց ընդ իս,*
*Ցարի՛ խմէ՛, համբուրէ՛ զիս,*
*Նոյնպէս ամէն ժողովրդիս,*
*Աւետիս տամ Հայոց ազգիս* (49 *եւ հտն.*):

*Սէրը, հաչտութեան համբոյրը, հիւրասիրութիւնը, պատուելը, աննենգ սիրտը, միաժամանակ սիրոյ բարեմաղթութիւնները, ազգի հոգսը նոյնիսկ, եւ ծաղրը, ծիծաղը անբաժան ընկերներն են այսպիսի ուրախութիւնների:*

*Այսօր խմենք քաղցր եւ յորդոր,*
*Բարեկամաց ի հետ բոլոր.*
*Գինիս աղէկ, ճաչակն աղւոր,*
*Անո՛յչ խմենք քաղցր եւ յորդոր:*

*Դա ազատ ուրախութիւնն է լաւ խմողի, որ սիրում է գինին ու խընջոյքը իր բոլոր սրտով եւ առանց քաչուելու ի ցոյց է դնում մարմնապաչտութիւնն առանց որեւէ չնորհալիութեան եւ խորութեան, այլ, ընդհակառակը, մի տեսակ կոպտութեամբ, պարծենկոտութեամբ, որ ինքը կարողանում է լաւ խմել. «Չի խմող մարդն է ծովի խոր».*

*Այո՛, խմենք քաղցր եւ յորդոր...*
*Հիւծեալ մաշիմ գլուխ ի կոր,*
*Փառասիրիմ մարմնով զինչ հօր,*
*Քե՛զ, Մարտիրո՛ս, գինով խոչկոր,*
*Անոյչ խմենք քաղցր եւ յորդոր* (49):

**Նաղաշ Յովնաթան**։[1]— Խրախճանքի ամէնից նուրբ եւ ազնիւ ու ճաշակաւոր երգիչն է Նաղաշ Յովնաթանը՝ ծնուած 1661 թ. Շոռոթ գիւղում, եւ իր հայրենի գիւղում էլ վախճանուած 1722 թուին։ Սա իսկական բանաստեղծ եւ նկարիչ է, որ շատ եկեղեցիներ զարդարած է եղել իր նկարներով, մի «շնորհալից վարպետ իմաստուն», լաւ ծանօթ իր ժամանակի ուսմունքներին, շատ ճանապարհորդած, իբրեւ սարկաւագ մերթ ծառայած եկեղեցում, շատ յարգուած եւ դիրք ունեցող մի մարդ։

Նրանից յայտնի են 26 տաղ, որոնցից մի քանիսը կրօնական եւ խրատական ու երգիծական են, մեծ մասը սիրոյ եւ ուրախութեան։

Նաղաշ Յովնաթանը խոհուն մարդ է եւ կորովի, բարոյականութիւն որոնող. Նա շատ մարդ է տեսած եւ աւելի շատ մտածած. իր բանաստեղծութեան մէջ մենք տեսնում ենք մի ամբողջական աշխարհայեցողութիւն, որով քրիստոնէական ոգին եւ աշխարհասիրութիւնն արդէն հաշտուած են, ինչպէս արդի մարդու համար, եւ վերջ է տրուած մեր հին բանաստեղծութեան ցաւագին շեշտերին։ Դա մի աշխարհական հայեացք է եւ ոչ կրօնական։

Ճիշտ է, աշխարհս նրա համար եւս սուտ, անցաւոր մի երազ է, խաբեբայ եւ անհաւատարիմ, քանի որ «էս գիշեր հոգիդ ի բաց պահանջին», եւ մարդ պիտի դատաստանին ներկայանայ, — բայց աշխարհիս ունայնութիւնն ու մահը նրան այլեւս սարսուռ չեն ազդում եւ բնաւ չեն պղտորում նրա պարզ եւ քնքուշ հոգին։ Որովհետեւ եթէ Աստուած մարդուս համար տնկել է այն կեանքի արքայութեան դրախտն իր պտուղներով ու ծաղիկներով, իր լուսաւոր օթեւաններով եւ հրեշտակների սազերով ու տաղերով, — նա եւ մարդուս համար այս աշխարհում պարգեւել է գարնանային դրախտը, հացն ու գինին, «աստուածազարդ սեղանը» (85, 88, 90 եւ այլն)։ Պէտք է, ուրեմն, եւ այս վայելել եւ այն չմոռանալ։ «Մարմնաւոր ուրախացէք, հոգեւորին մի՛ կենայք ծոյլ» (85)․ «Մարմնով խմէք, ուրախացէք, հոգով մեղաց զղջացէք» (88), — այս է նրա ամբողջ աշխարհայեացքի սեղմ արտայայտութիւնը։

Հոգեւորի համար բաւական է միայն, որ մարդ արդարութեամբ ապրի, եւ նա դրա համար տալիս է իր գործնական խրատները՝ «Խրատ պիտանի վասն հոգւոյ» (եր. 75)․ չլինել հպարտ, ապերախտ, նախանձոտ, ունենալ սէր․ լինել աղքատախնամ, ծնողասէր, չար չանել ուրիշներին, չսիրել հայհոյանք, աղքատի դատաստանն արդարութեամբ վարել եւ առհասարակ արդար լինել յարաբերութիւնների մէջ․ ժամ գնալ, աղօթել, «պատուել վարդապետն ու քահանէն», նրանց օրհնութիւնը տնից անպակաս անել, որովհետեւ «նոքա են մեր կերակրին աղըն», — բոլորը սովորական աւանդական խրատներ, որ Յովնաթանը մանկութիւնից սովորել է։

Այս են այն գործնական խրատները, որ տալիս է Յովնաթանը, սրանք սովորական քարոզներ են, բայց այնպէս համեղ եւ անուշ ասուած, իսկը ժողովրդական ձեւով ու մտածութեամբ եւ շնորհալի կերպով, հանդիստ ու խաղաղ սրտով եւ այնպէս ծանրութեամբ ու կշռով, խորը համոզուած իր ասածին, եւ բնական ձեւով, առանց որեւէ արուեստականութեան, որ այդ տաղը մեր խրատական մեծ տաղերի տեսակի (եւ ոչ քառեակների) մէջ կարելի է ամէնից ազնիւը եւ գեղեցիկը համարել։

1 «Նաղաշ Յովնաթան աշուղը եւ Յովնաթան Յովնաթանեան նկարիչը», Փարիզ, 1910 թ.։

Այս աւանդական խրատներից, սակայն, մի բան նա դուրս է ձգում·—

Պաս կու պահես ու սէր չունիս՝ էն սուտ է՛·
Ի՞նչ օգուտ սատանայէն՝ ամէն օր պաս է,
Որ անզեղջ նախանձոտ չար ու վասվաս է·
Անշէջ կրակն է նորա եաթաղըն (77)։

Պաս պահելը, մարմինը տանջելն, ուրեմն, ոչ մի արժէք չունի հանդերձեալ կեանքի համար։ Այսպիսով մի կողմ է դրւում մարմնատանջ ճգնաւորական միտքը, եւ բանաստեղծը կարող է ազատ կերպով, հանգիստ խղճով «մարմնաւոր ուրախանալ», առանց հոգուն վնասելու երկիւղի։ Մարմինն իր պահանջն ունի եւ նրան բաւականութիւն պիտի տալ իր պահանջի համեմատ· հոգին էլ իրն ունի, նրան էլ «արդարութեան խօսքերը» կատարելով պիտի բաւականութիւն տալ։ Այս երկուսն այլեւս իրար չեն խանգարում։

Մի անգամ որ մարմնատանջ հայեացքը դէն է դրուած, աշխարհի ունայնութիւնն ու վերահաս մահը նրան այլեւս ոչ միայն արգելք չեն լինում մարմնաւորապէս ուրախանալուն, այլ նոյնիսկ պատճառ են դառնում, որ մարդ վայելի եւ, որքան կարելի է, շատ եւ լաւ վայելի այս աշխարհի բարիքները։ «Թասըն գինի լից տուր խմեմք», ասում է նա, «Չէրա յաշխարհս օր քան զօր չարըն կու շատանայ» (86), որովհետեւ «Անցեալ օրին օր չի հանիլ» (90) եւ «Այսօր քանց վաղըն աղէկ» է (68), որովհետեւ «Սուտ աշխարհըս անցաւոր է, մարդըն երազ կու նմանի» (եր· 85) եւ մարդ իր հետ ոչինչ չի տանելու, «աշխարհիս մալըն կու մնայ աշխարհիս վերան» (91), ուստի մարդ «քանի սաղ է՝ ածէք խմի» (58)։

Կեանքը շատ կարճ է, ուստի պէտք է րոպէն ձեռքից չթողնել՝ վայելչութիւն անելու համար։

Այլ կե՛ր խըմէ՛ հետ ընկերաց,
Քանի որ Փրանգ կայ ձեռաց,
Գալ տարի ո՞վ սաղ, ո՞վ մեռած·
Խարճէք, եղբա՛րք իմ, ցնծալով,
Ուրախութեամբ եւ պարելով,
Ծափըս ծափի հարկանելով։
Է՞ր պարապ կու մնաս, սաղի,
Ցալաքն է մեր յօմրին եաղի·
Աշխարհս մեզ չէ մնալ պաղի,
Լի՛ց, տո՛ւր, եղբայր իմ, ցնծալով,
Ուրախութեամբ եւ պարելով,
Ծափըս ծափի հարկանելով (78)։

Նաղաշն որ այս դառըն կեանքըս մէկ օրէն հիւր է,
Վաղըն մեռնիմ՝ կ'ասեն «Նաղաշ Յովնաթան ո՞ւր է»·
Մեզ ողորմի տուողի հոգւոյն անմահութեան հոտըն բուրէ·
Սիրով խըմէք, խաղաղութեամբ ուրախ լիցուք (86)։

Եւ բանաստեղծի սիրոյ եւ ուրախութեան երգերը, տոգորուած այս մտքով, մի առանձին հրապոյր ու գեղ, աւելի խորութիւն ու ներքին բովանդակութիւն են ստանում, մանաւանդ որ նրա ուրախութեան երգերը երբեք հոգու պահանջը չեն մոռանում իր ուրախութեան վայրկեաններին]:

Ապա ում սրտի քէն ունի՝ հանի, հաշտութեամբ մընայ,
Լաւ մարդըն այն է՝ ոնց որ եկեալ՝ այլ այնպէս գնայ (81)։
Սիրով խըմէք, խաղաղութեամբ ուրախ լիցուք,—

կրկնում է նա մի երգի մէջ (85).

Աստուած սիրէք՝ ում սրտում նախանձ կայ՝ հանի (85):
Թոյլ միք տալ, որ եղբայրութեան սէրն հովանայ (86):
Պարտիմք ընտրել զբարութիւնս, մերժել ի մէնջ զչարիս (87):
Թէ ձեր մէջըն խռով մարդ կայ՝ ելէք սիրով հաշտեցէք (88):
Մինակ մի՛ ուտէք, բաժանեցէ՛ք, հաւասար չարէ՛ք (82):
Եկայք այսօր ժողովեցէք, ընկերք միաբան,
Պարկեշտութեամբ բազմիլ սեղան, եղբայրք պատուական,
Զուարճանալով արասցուք սէր եւ բարեկենդան (90):

Այս պատճառով Յովնաթանի ուրախութեան տաղերը մեր հին բանաստեղծութեան ամէնից զուարթ եւ լուսաւոր երգերն են, որոնց մէջ կեանքի հրճուանքն արտայայտուած է ամենազօրեղ, միաժամանակ եւ ազնիւ չեշտերով: Նրա երգը այլեւս լաւ ուտողի մի սին պարծանք չէ, կոպտաբար փառաբանող ուտել խմելու հաճոյքը, ինչպէս մի Մարտիրոսի երգ, այլ բարոյախօսի ու ճաշակաւոր արուեստաւորի մի նուրբ ու գեղեցիկ վայելչութիւն, որի մէջ աւելի շատ հոգեւոր զուարճութիւնն է տեղ բռնում. Նրա սեղանը ինքը ոչ միայն բարելի է, այլեւ զարդարուն է —

Սեղանըս լի է ծաղիկ (68):
Սեղանըս լցեալ միրգ ու ծաղիկ,
Զլինի վեր քաղէք (81):

. . . Վարդ ըռեհան եւ զարանֆիլ ծաղկունք խորհրդաւոր...
Նարգիզ, զամպաղ եւ սուսամբար, եասաման եւ սըմպուլ (85),—

դրուած է միշտ գեղեցիկ բնութեան մէջ եւ մարդիկ ուրախանում են՝ ծափ տալով ու ցնծալով, երգելով եւ Աստծուն փառք տալով, իրար համբուրելով եւ մեծարելով.

Բերէք տաղարան չարական,
Թողէք մանկունք ձայնիւ կարդան (71):
Կանչէք տաղեր եւ չարական (79):

Սազերն ածէ՛ք, տաղերն կանչեցէ՛ք, ծափ տուք եւ պարէ՛ք (82):
Մանկունքն երգեն տաղ չարական քաղցր որպէս բլբուլ (85):
Ո՛վ մանկունք սուրբ եկեղեցւոյ, քաղցր ձայնիւ երգեցէք (88):

Հաճույքը ստանում են ոչ թէ գինիներից ու կերակուրներից, որոնք լոկ պատճառ են լինում սրտերը բանալու, այլ աւելի բնութիւնից, գեղարուեստից եւ մարդկանց բարեկամութիւնից:

Զգիտեմ ընկերներին ով աւելի լաւ սրտի խօսք է ասել, քան այս Նաղաշը.—

Այսօր ուրախութեան օր է,
Թասերըս կարգաւ բոլորէ՛...
Եղբարք նստած չարէչար,
Որպէս Թագ մարգարտաշար...
Պարոնայքն պատուելի,
Մէկ քան ըզմէկ սիրելի...
Դուք որպէս աստղ պայծառ էք,
Վարդ եւ կնդրուկ հոտ առէք,
Քաղցր ձայնիւ բարբառէք... (67).
Նորահաս մանկունք հանճարեղ,
Խելքըն բոլոր, խօսքըն համեղ,
Զեռացներըն վարդ ու զամբեղ.
Հոտ առէք, եղբա՛րք, ցնծալով,
Ուրախութեամբ եւ պարելով,
Ծափըս ծափի հարկանելով (78):

Այս ուրախ ընկերութեան մէջ վատ մարդ չկայ, որ «մէկ խօսքի չհամբերելով մէջլիսն աւելի», այդպիսին դուրս է ձգւում (78): Նրանք բոլորը սիրով լի են եւ սրտով պայծառ, ինչպէս նրանց շրջապատող բնութիւնը եւ օրը, որ հէնց սիրտը բաց է անում եւ ոչ գինին,—

Այսօր նման է վարդի,
Եւ ծառոց ծաղկազարդի,
Սիրտ կու բացուի շատ մարդի (67):

Գեղեցիկ բնութիւնն իր զարդարանքներով անհրաժեշտ պահանջ է խըրախճանքի համար.—

Զիման լինի կանաչ խոտ,
Մանուշակ ըմպուլի հոտ... (68):

Նորափոր գնացք առուոց փրփնջագոյ պաղպաջունակ...
Այլ եւ ցուրտ աղբիւր բղխեալ քաղցր եւ անուշ խիստ գովելի,
Աւազան ջրով լցեալ պարզ եւ մաքուր որպէս հայելի...
Թունկ եւ կուժ գինով լցեալ ի մէջ ջրոյն սաստիկ ցրտացեալ,
Ջրոյն երեսն միրգ եւ ծաղկունք, վարդ ըռեհան,
խնձոր կարմրացեալ (74):

Ցաւուրս գարնան ժամանակին՝
Փթթեալ ծաղկեցաւ այգին.
Հնչէ քաղցըր ձայն տատրակին... (77):

Վարդըն որ փըթըթեալ բացուի եւ այլ ծաղկունք զանազան,
Ծառոց պտուղ անուշահամ, հոտ կընդըրկի պատուական,
Մէջլիսըն զարդարեալ ցնծայ զինչ դըրախտըն եդեմական…
Անմահութեան հոտըն բուրէ աստուածազարդ սեղանէս (88)։
Մեր առջեւն կանաչ պաղչա, ծաղկունք եւ չիման,
Աստուածազարդ սեղան եղեալ աչաց յանդիման… (60)։

Բնութեան մի հրճուալից գովք է Զատկի տաղը (103) եւ «Ի վերայ գարնան եւ ուրախութեան» (107)։

Այս կենսուրախ երգիչը, հակառակ Նարեկացուն, որ մեռնելուց յետոյ ուզում էր, թէ իր գիրքն ուրիշների բերանով աղօթէ, մի բան է միայն ցանկանում մնացականներից, որ իր մահից յետոյ էլ նրանք ուրախանան· «Ցիչեցէք Նաղաշ Յովնաթան, ածէք խմէք կարմիր կթխան» (71), յաճախ կըրկնում է նա։

Այս միեւնոյն կենսախինդ հայեացքով նա երգում է եւ սէրը, որ կեանքի խնջոյքի մի մասն է, կինը, բնութիւնը։ Գինին եւ երգ ու պարը անբաժան մի ընկերութիւն են կազմում նրա ուրախ ու բախտաւոր կեանքի համար, եւ եթէ խրախճանքի երգերի մէջ կինը երեւան չի գալիս ընկերների հասարակութեան մէջ, որովհետեւ սէրը սրտի ծածկարանում է, երգերի մէջ, սակայն, անբաժան են գինին, երգն ու բնութիւնը։

Սիրոյ ամենալաւ ժամանակն է օրհնեալ գարունը (41, 50), երբ բացւում է պարտէզի վարդը, որով զարդարում է սիրականն իր գլուխը, պարտէզ տանելով (40) գինի մաղայ եւ ուրախանում (89), թաս տալով տարփաւորին (36), ծաղիկ քաղելով ու ծիծաղելով· բաղչի նման զարդարուած գեղուհին, ինքը մի նոր կանաչ պարտէզ·

Ես տաղ կանչեմ, դու է՛լ խաղա (38)։
Պաղչի մէջըն մեկնենք խալի,
Սեղաններ՝ գինոյ սիւրահի,
Պագ տուր, որդիդ Աստուած պահի (41)։
Վարդըն ձգեցիր գոգիս մէջ, գոգիս…
Թասըն դէպ ինձ մօտ խմեցիր (41)։
Թող Յովնաթան մէկ տաղ ասէ քո թասին»(42)
Դու քո ձեռօքն թաս մի՛ խմեր,
Եկ միատեղ նստեմք սեղան (64),
Մէկ ձեռնիդ գինւոյ թասըն,
Մէկ ձեռնիդ ամբուլն (66, 54, 59)։

Նա նոյնպէս ազատ, անվախ վայելել է ուզում սէրը, որովհետեւ այստեղ եւս երիտասարդութիւնը շուտ անցնում է եւ մահը վերահաս է·

Ծոցիդ չամամներըն խիստ է նորահաս,
Վախեմ թէ թառամի, չատ մի՛ կենար պաս… (63)։
Նոր փռուած վարդի նըման ես,

Ափսո՛ս որ խիստ շատ նազ կ՚անես․
Գնաց դովլրան՝ կու փոշմանես... (43)։
Դու էլ կու մեռնիս, չես անմահական,
Ինձ է՞ր կու պահես տրխուր տրտմական (63)։
Գիտեմ որ դու քանց զիս սիրոյ թամահ ես․
Նրռներըդ հող կու դառնայ, է՞ր պինդ կու պահես,
Թող համբուրեմ օրհնեմ, հոգով զարդարուես (41)։

Այս միեւնոյն հայեացքը գտնում ենք նաեւ Քուչակեան մի երգի մէջ․—

Թուխ աչք ու ունքեր ունիս, լայն ճակատ ու կարմիր երես,
Այդ ճերմակդ որ դուն ունիս, պչամամ ծիծերդ որ ի ներս,
Մեռնիս այլ անդին երթաս՝ զայդ ճերմակ ծոցիկդ ի՞նչ անես
Զամէն որդերն ուտեն, դու է՞ր զիս մահրում կու պահես (47)։

Եւ եթէ այստեղ սիրահարի փորձը՝ ողոքել իր անտաիկ գեղուհուն՝ ցոյց տալով նրան աշխարհի ոչնչութիւնը՝ մի ինքնաբուխ խօսք է, իսկ Նաղաշի այդ խօսքերը բխում են նրա որոշ աշխարհայեացքից, այդ երկուսը սակայն, հոգով շատ մօտ են իրար, եւ Նաղաշի սիրոյ երգերը, ինչպէս եւ Քուչակինը, մեր հին սիրերգութեան մի-մի առանձին տեսակի կատարելագործութիւն են, նոյն ժողովրդական ոգով, մաքուր եւ զգաստ, եւ նոյնիսկ տարփալից վայրկեաններում նուրբ․ Քուչակինը միայն մօտ են աւելի արեւմըտեան ժողովրդական երգերին, իսկ Նաղաշինը՝ արեւելեան։ Այդ պատճառով եւ՝ մի կողմից Նաղաշի երգերի, միւս կողմից Քուչակեան ու ժողովըրդական երգերի մէջ ոչ միայն նոյն ընդհանուր ոգին ենք գտնում, այլեւ շատ մոտիւներ, արտայայտութիւններ, դարձուածներ եւ պատկերներ ու դրութիւններ նոյնն են․ նոյնիսկ մեր այժմեան հասկացողութեամբ շատ ազատ, հեշտասէր։ Տների մէջ, որոնց թիւը մի քանիսն է, Յովնաթանը չի հեռանում Քուչակից կամ ժողովրդական երգից։ Միայն մինչ «հայրենի կարգի» սիրերգը, ժողովրդական քառեակների մշակութիւն լինելով, սեղմ կերպով պարունակում է ընդհանրապէս սիրավէպից բազմազան միջադէպեր, շատ գաղափարներ եւ արտայայտութեան ձեւեր, Յովնաթանի սիրերգն անհատական կեանքի արտայայտութիւն լինելով՝ համեմատաբար միատեսակ է թէ՛ իր յըղացման, թէ՛ իր ընդհանուր եղանակի եւ թէ՛ արտայայտութեան ձեւի մէջ։

Դժբախտաբար նրա կենսագրութիւնը չգիտենք, բայց երգերից երեւում է, որ նա սիրուել է եւ մէկ անգամից աւելի, եւ նրա երգերը ոչ [թէ] արուեստով յօրինուած ընդհանուր դրութիւններ են, այլ առնուած են ապրած կեանքի պատահարներից (48...), այսինքն երգիչը ոչ թէ ընդհանուր զգացումներ է երգում, այլ իր սեփականը։ Այդ պատահարներն, անշուշտ, մանր բաներ են, բայց սրտի համար մեծ՝ եւ նա դրանով երջանիկ է։

Նրա եարը կա՛մ յայտնում է, որ սիրում է նրան, կամ խօսք ուղարկում (35, 60, 46, 48), կամ ծիծաղում նրան (36, 39), կամ նամակ գրում (36, 37, 39, 44, 47, 56), կամ բարեւ տալիս (40, 43), բարեւ ուղարկում (47, 48, 54, 58), կամ նրա մօտ գնում (40, 48), նրա հետ խօսում կամ վարդ ու ծաղիկ ձգում նրան (41), կամ նրա սիրով ծարաւ է (42, 54), ծոցը նշանց

տալիս (42), ծիծաղելով աչքով անում (44, 46, 49, 53, 65), խնդրում, որ պատկերը քաշէ (47), նամակ ուզում տարփաւորից (47), մօտիկ տալիս Նաղաշի աշխատանքին (52), կամ նրանից վարդ առնում (65), կամ պայման եւ ուխտ դնում նրան (69)։

Բանաստեղծը նրա համար տաղ է գրում (44, 48, 52), ծաղկում (48), նրա պատկերը քաշում (47, 49), նամակ է գրում (47), խաբար խնդրում (58)։

Եւ այդպիսի կենսուրախ ու սիրոյ մէջ բախտաւոր երգիչը, որ րոպէն լիակատար վայելել է ուզում, չէր կարող իր խորքում տխուր սիրերգ յօրինել, այլ միայն ուրախ. բայց եւ այնպէս նրա երգերն իրենց արտայայտութեան եղանակով մեծ մասամբ տխուր են եւ չունեն այն հրճուալից բնաւորութիւնը, ինչ որ խրախճանքի երգերը։ Այստեղ պէտք է նկատի ունենալ երկու դրութիւն։ Նա իր սրտի ուրախ թրթիռն է միայն յայտնում իր տարփածուին, միայն [թէ] ողբագին եղանակով, որովհետեւ նրա ուրախութիւնը շատ մեծ է։ Երգիչը լալիս, արտասւում է, բայց ոչ թէ տրտմութեան արտասուք է թափում, այլ ուրախութեան։ Մեծ ուրախութիւնը, չափազանց մեծ հաճոյքը նոյնպէս է ազդում մարդուս վրայ եւ նոյնպէս հիմնովին քայքայում մարդուս կազմութիւնը, ինչպէս չափազանց տրտմութիւնը, եւ վերջ ի վերջոյ մի թախծալից հիւանդագին հանգստացնող վիճակի մէջ ձգում սիրահարին։ Այսպիսի վիճակի մէջ է Յովնաթանն իր սիրով։

Այդ բուռն սէրը, որ «քաղցր, միանգամայն եւ դառն է», ինչպէս ասում է Սափֆոն իր մի նշանաւոր սիրերգի մէջ, բնականաբար պէտք է երգուէր դժբախտ սիրոյ ձեւով, տխրագին եղանակով, որովհետեւ դա եւս տարփաւորին ձգում է նոյն հոգեկան անհաւասարակշռութեան եւ արբեցութեան մէջ, որովհետեւ այդ սէրը բուռն է անսահման՝ ուզում է փորձել սէրը։ Եւ այս յատկանիշը ունեն մոլոր մեծ սիրերգուները, մանաւանդ արեւելեան, որոնց մէջ սէրն աւելի կրքոտ ու խանդակաթ է։ Երջանիկ սէրը երգըւում է դժբախտ սիրոյ ձեւով, որովհետեւ այդ ժամանակ մարդս կորցնում է իր հոգեկան հաւասարակշռութիւնը եւ բուռն հարբեցութեան մէջ ձգւում. «կուզեմ հոգիս հանեմ»։ Եթէ տխրում է նա իսկապէս, ոչ թէ նրա համար, որ չի սիրւում եւ սէր է պաղատում, ինչպէս «Հայրենի կարգի» մէջ, այլ կամ հեռու է սիրականից, կամ մի երկու օր լուր չունի նրանից, թշնամուց քաշուելով լուր չի ուղարկում, հետը չարունակ տեսնուել է ուզում, սիրականը նազեր է անում։

Յովնաթանն այն երջանիկ վայրկեանին, երբ իմանում է, թէ իր սէրը փոխադարձ է, իր սէրը երգում է նոյն յատկանիշներով, ինչ որ «Հայրենի կարգի» մէջ դժբախտ սիրահարը, բայց մի մեծ տարբերութեամբ, որ երգն այստեղ մեղմ է, հանդիստ, որովհետեւ արդէն իր էական պահանջը, որ է փոխադարձ սիրուելը, բաւականութիւն է ստացած։

Իմ եարըն նըստել դամով,
Լեզուն քանց շաքար համով,
Ինձ կու սիրէ իւր կամով.

Զա՛լում, ուրախ եմ, ամա՛ն, աման (35):
Պաղչումըն ծաղիկ քաղես,
Ծածուկ դէպ ինձ ծիծաղես,
Կրակով սի՛րտս դաղես.
Զա՛լում, էրվել եմ, ամա՛ն, ամա՛ն:
Գիր ես գրել տուչխարով,
Մէջըն լցրել շաքարով,
Յովնաթանին շատ բարով.
Զա՛լում, կարդացի, ամա՛ն, աման (36):

Այսպիսի մի երգի մէջ «զալում» հնչիւնն արդէն դառնում է փաղաքշութիւն, ինչպէս եւ ժողովրդական երգի մէջ «Պուճուր աղջիկ, զալում ես». Նա զալում է ոչ թէ իբրեւ «անգութ, վայրագ, հարստահարիչ», ինչպէս նշանակում է այդ բառն իսկապէս, այլ իբրեւ մի շնորհքով ու յաջողակ եւ կտրիճ, որ կարողանում է գրաւել տարփաւորին, եւ ծաղիկ քաղելով ու ծիծաղելով նայելով միայն «սիրտը կրակով դաղել, այրել, բայց ոչ անյոյս տանջանք, այլ անոյշ հաճութիւն բերող կրակով. Նոյնպէս ոչ թէ յուսահատ օգնութեան մի ճիչ է այլեւս «ամա՛ն, ամա՛ն» բացականչութիւնը, ինչպէս հին «զէնահար», այլ դա միայն ցոյց է տալիս, թէ ինքը որքան շատ սիրում է իր գեղուհուն: Եւ երբ որ նա նոյն երգի մէջ իրեն «վըշտահար» (դարդլու) է անուանում, — կամ հիւանդ է «խոցուած սրտով» — այլեւս ոչ ոք չի հաւատում, թէ նա իսկապէս վշտահար է, հիւանդ, այն մըտքով, թէ դժբախտ է, այլ դա միայն ցոյց է տալիս, թէ սէրը որքան յաղթահարէ է եւ ջարդում է նրան:

Եւ վերջապէս նոյն երգի մէջ, եարի խօսքը, թէ սիրում է երգչին, միայն աւելի եւս բորբոքում է նրան՝ «խօսքդ սիրտըս կու էրէ», եւ նա աւելի եւս կարօտում, ծարաւում է իր տարփածուին ու ցանկանում նորանոր անճալի լուրեր ստանալ նրանից, ցանկանում է, որ նա իր ծարաւը յագեցնի եւ համբոյրով բժշկի իրեն: Բայց որովհետեւ այդ չկայ, ուստի նա եւ գանգատւում է եւ գութ հայցում, ինչպէս ապերջանիկ սիրահար:

Այսպէս, ուրեմն, Նաղաշի երգերով մեր քնարերգութիւնը կատարելապէս աշխարհականացել է, նա արդէն նոր ժամանակի երգիչ է: Նրա երգը պէտք է երեւան գար ոչ թէ 17-րդ դարի վերջերում, այլ 15—16-րդ դարերում: Բայց 14-րդ դարու վերջերից Հայաստանը Լանկթամուրի արշաւանքից սկսած (1387 թ.) եւ նրա մահից յետոյ սոսկալի աւերածութիւններին ենթակայ եղաւ զանազան բռնակալների ձեռին կռիւների ասպարէզ դառնալով. քաղաքներ ու գիւղեր աւերուեցան, գերութիւն, սով, գաղթ, կոտորած... Ապա օսմանցոց եւ պարսից շահերի մէջ ծագած պատերազմը, որ 250 տարուց աւելի տեւեց (1473 թուից), մերթ օսմանցոց, մերթ պարսից ձեռն անցնելով. մինչեւ 1639 թ. հաշտուեցին եւ Երասխ ու Կուր գետերի մէջ եղած երկիրը անցաւ պարսից, եւ ութսուն տարու չափ մեր արդէն բոլորովին աւերուած երկիրը խաղաղութիւն ունեցաւ, երբ հայոց մէջ սկսուեց վերածնութեան շրջանը:

Այս խաղաղութեան շրջանի որդին է ահա Նաղաշ Յովնաթանը, որ ապ-

րել է պարսից համեմատաբար բարւոք կառավարութեան շրջանում, մի լիառատ ժամանակ, ինչպէս նկարագրում է Զաքարիա սարկաւագը, որով եւ հասկանալի է եւ նրա երգերի ուրախ բովանդակութիւնը: Այդ ժամանակ եւ նոր պարսկական ազդեցութիւնը զօրանում է հայ ժողովրդի վրայ եւ դրա հետեւանքն է, որ Նաղաշի երգերը իրենց վրայ կրում են արդէն պարսկական բանաստեղծութեան ազդեցութիւնը, ոչ միայն բառերի եւ պատկերների, այլեւ ոտանաւորների վրայ. Նրա գործածած չափն արդէն երբեմն տարբերւում է մեր հին բանաստեղծական մաքուր շեշտական չափից, եւ երբեմն դարձել է զուտ վանկական, մօտիկ ֆրանսերէնին: Նրանով իսկապէս փակւում է մեր հին երգիչների շարքը եւ սկսւում է նոր աշուղների շրջանը: Նաղաշը միջին տեղն է բռնում հինի եւ նորի:

# ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

## ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՆՈՐՈԳՈՒՄԸ 17—19-ՐԴ ԴԱՐՈՒՄ

### ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

16–րդ դարը եւ 17–րդ դարու առաջին քառորդը հայոց կեանքի եւ գրականութեան ամէնից անկեալ շրջանն է: Մահմեդական Թուրքերն էին բարձրացել բիւզանդական գահի վրայ եւ իրենց պատերազմական բնաւորութեամբ, շարունակ արշաւանքներ էին անում՝ աւերելով թէ՛ իրենց եւ թէ՛ դրացի երկիրները: Հայաստանը, ինչպէս առաջ, աւերիչ պատերազմների ասպարէզ էր երկու մահմեդական, քրիստոնէութեան եւ քաղաքակրթութեան թշնամի պետութիւնների մէջ: Մի կողմից տաճիկներն էին աւերում եւ սոցա թողածը՝ պարսիկները:

Եթէ այդ՝ դարեր շարունակ տեւող պատերազմների մէջ քիչ ու շատ լինում էին կարճատեւ խաղաղութեան շրջաններ՝ այդ ժամանակ էլ ժողովուրդը կրօնի պատճառով հալածուած, ճնշուած հարկերի տակ, ենթակայ կեղեքումների:

Անկումն իր վերջին ծայրն հասնում է 17–րդ դարու սկզբին, երբ պարսից Շահ-Աբաս Թագաւորի ձեռով երկրի աւերմունքն իւր վերջին ծայրն է հասնում — հարիւր հազարաւորների բռնի գաղթեցնելով, եւ ապա սով ու ջալալիք:

Այդ վերջին աւերմունքը եւ վերջին հարուածն է տալիս հայոց հին քաղաքակրթութեանը, որ արդէն նուազած էր շատ: Հայերն այնուհետեւ կամ պէտք է ոչնչանային եւ վայրենանալով ընկնէին, եւ կամ, եթէ ազգի մէջ կենսունակութեան դեռ ուժ կար՝ մեծ ջանքերով նորից ձգտէին կենդանութեան: Բարեբախտաբար այդ ուժը կար հայոց մէջ, եւ վերջին ծայր հասած աւերմունքից յետոյ, անմիջապէս նորոգութեան ձեռնարկութիւնն սկսուեցաւ եւ այն շատ կողմերից: Սկսուեցաւ մի վերածնութեան շրջան հայոց կեանքի եւ գրականութեան մէջ, որ սկզբում շատ դանդաղ առաջ գնաց՝ Հայաստանի անկայուն քաղաքական դրութեան պատճառով, եւ յետոյ՝ շատ

արագ քայլերով, երբ այս դարու առաջին քառորդից յետոյ՝ այդ ամէն տարուայ պատերազմներին վերջ դրուեցաւ:

Մեր հնի եւ նորի բաժանումը լինում է ոչ թէ 18-րդ դարում, այլ 16-րդ դարու վերջերը եւ 17-րդի սկզբներում, երբ համատարած իշխում էր աւերակ եւ թանձր տգիտութիւն. երբ «տգիտութեամբ խոպանացեալ եւ կորդացեալ էր ազգս Հայոց, — ինչպէս գրում է Առաքել պատմագիրը, — եւ ոչ միայն ոչ ընթեռնուին, այլ եւ ոչ զգիրս գիտէին եւ զզօրութիւն գրոց. վասն զի անպիտանացեալ էր գիրքն յաչս մարդկան եւ իբրեւ զկոճեղս փայտից անկեալ յանկեան ուրեք՝ լցեալ հողով եւ մոխրով»: — Անկումը սոսկալի էր. մեր հին քաղաքակրթութիւնը գրեթէ ամբողջապէս ոչնչացել էր այդ ժամանակ: Մարդիկ կտրուել էին հնից այն աստիճանի, որ հոգեւորականներն եկեղեցուց դուրս աշխարհական հագուստով էին շրջում, տրեխներով ու չուխայով սեղան բարձրանում եւ մոռացել էին նոյնիսկ շատ եկեղեցական կարգեր:

Եւ հնի հէնց այս մահուան մէջ է, որ սկսում է ծնուել նորը՝ հնի վերածնութեամբ: Պէտք էր հայութիւնը փրկել վերջնական անկումից եւ վայրենացումից: Եւ ահա՛ 17-րդ դարու սակաւաթիւ լաւագոյն մարդկանց բոլոր ձգտումը կենտրոնանում է այն բանի մէջ, որ կենդանացնեն մեռնող հայ կեանքը: Դրա համար երկու ճանապարհ է ներկայանում նրանց — վերածնել հին հայ կեանքը, գիրն ու գրականութիւնը եւ ապա օգտուել եւրոպական լուսաւորութիւնից, որ մեր նոր գրականութեան համար նոյն դերը պիտի խաղար, ինչ որ հին բիւզանդականը մեր հին գրականութեան համար: Այս երկու ուղղութեամբ առաջ է ընթանում մեր մտաւոր շարժումը Ծահարաս Ա.-ի օրերից սկսած մինչեւ 19-րդ դարու վերջը, հարկաւ ժամանակի բնական շրջափոխութեամբ: Եւրոպացիներից ազդուելը սկզբում շատ թոյլ էր, առաջ էր գալիս միայն գաղթականների, վաճառականների, կաթոլիկ քարոզիչների եւ տպագրութեան համար եւրոպա գնացող մարդկանց ձեռով, բայց այդ ազդեցութիւնը հետզհետէ զօրանում է եւ 19-րդ դարու երկրորդ կէսից առաջին տեղն է բռնում. մինչ հնի վերածնութիւնը հէնց սկզբից զօրեղ է եւ նոյն թափով շարունակւում է մինչեւ 19-րդ դարու կէսերը, երբ թողնելով իւր կրօնական բնաւորութիւնը՝ աշխարհականանում է:

Հնի մեռելութեան մէջ վերածնութիւնն առաջ են բերում ոչ թէ Մխիթար Աբբան եւ Մխիթարեանները, այլ Ամբերդցի Սարգիս եպիսկոպոսը (մեռել է 1620 թ.), որ միաբան էր Սաղմոսավանքի, եւ Տրապիզոնցի Տէր Կիրակոսը (մեռել է 1621 թ.), որոնք բուն երկրի մէջ հիմնում են Սիւնեաց Անապատը Տաթեւի մօտ: Դրանցից անբաժան պիտի համարել եւ Սիւնեցի Մովսէս վարդապետին, որոնք եւ եղել են «առիթ լուսաւորութեան ազգիս Հայոց»: Դրանք եւ դրանց աշակերտներն են, որ մտածում եւ գործում են մեր խոպանացած կեանքը նորոգելու համար:

Այդ մարդիկն իբրեւ վերածնողներ, ինչպէս յատուկ է ամէն վերածրնութեան մարդու, աչքերը դարձնելով դէպի մեր հինը՝ շատ ճիշդ նկատում են մեր հին կեանքի ամէնից կարեւոր կողմը: Այնտեղ նրանք տեսնում են ամէնից առաջ՝ ծաղկած վանքեր եւ անապատներ եւ իրենք եւս մեծամեծ ջանքերով կարողանում են հետեւելով հներին՝ նորերը հիմնել: Զար-

մանալի է, թէ ինչպէս 17-րդ դարու այն անասելի աղքատութեան մէջ հնարաւոր է լինում ոչ միայն բազմաթիւ հին վանքեր նորոգել, այլեւ շատ նորերը կանգնեցնել՝ դարին յատուկ մի ճարտարապետութեամբ։ Մխիթար Աբբան իւր հիմնած վանքով ահա այս միեւնոյն գործն է շարունակում, ինչ որ տեղի է ունեցել 17-րդ դարում Հայաստանում։

Վանքերը կենդանանալով՝ կենդանութիւն եւ թարմ հոսանք են մտցնում ժողովրդի թմրութեան մէջ։ Զարթնում է նոր ուժով կրօնական ոգին։ Արդարեւ այդ վանական եւ անապատային կեանքի հետ անխուսափելի կերպով նորոգում են նաեւ հին ճգնաւորութիւնն ու խստակրօն կեանքը, նոր ուժ են ստանում հին անպէտք հասկացողութիւններն ու աշխարհայեացքը, բայց դա արգելք չէր լինում, որ մեր վանքերը մի անգամ էլ կատարէին իրենց պատմական քաղաքակրթական դերը, որ ունեցել էին 10-րդ դարում։ Դրանք մեղմացնում էին ժողովրդի կոշտացած ու բրտացած բարքերը եւ, որ գլխաւորն է, գիր ու գրագիտութիւն էին տարածում։ Որովհետեւ վանականներից շատերը լոկ աղօթքով չէին պարապում եւ իրենց ամբողջ կեանքն աշխարհից կտրուած չէին անց կացնում, այլ սովորում էին կարդալ, գրել եւ մտնելով ժողովրդի մէջ՝ քարոզում էին նրան եւ երեխաների համար «դըպրատներ», այսինքն դպրոցներ հիմնում։ Մեր վանական եւ ծխական դպրոցների սկիզբն ահա՛ այս ժամանակից է գալիս։

Ապա այդ մարդիկը մեծամեծ, իսկապէս հիացմունք պատճառող ջանքերով աշխատում են կարդալ եւ հասկանալ մեր անհասկանալի դարձած ու մոռացուած գրականութիւնն ամբողջ, թէ՛ եկեղեցական եւ թէ՛ աշխարհիկ բնաւորութիւն ունեցող ձեռագիրները՝ ինքնուրոյն թէ թարգմանական երկերը՝ որքան որ կային կամ ճարում էին։ Նրանք արտագրում են բազմաթիւ նոր ձեռագիրներ, աշխատում են գտնել ունիթոռների ձեռով լատինացած գրաբար լեզուն. յօրինում են քերականութեան, տրամաբանութեան եւ այլ նոր դասագրքեր՝ օգտուելով գլխաւորպէս հին գրքերից, եւ նոյնիսկ թարգմանութիւններ էլ են անում։ Շարժման գլխաւոր կենտրոններ հանդիսանում են Էջմիածին եւ Նոր Ջուղայ, որտեղից եւ այս մտաւոր շարժումն անցնում է Կ. Պոլիս։ Այս ամէնի հետեւանքն այն է լինում, որ բնականաբար առաջ է գալիս մի գրաբար գրականութիւն, որի առաջին ներկայացուցիչները լինում են Սիմէոն Ջուղայեցի եւ Առաքել Դաւրիժեցի, իսկ վերջինը Արսէն Բագրատունի։

Իմ նպատակը չէ 17 եւ 18-րդ դարերի գրականութեան մասին խօսել այստեղ. այլ այն միայն շեշտել եմ ուզում, որ ինչպէս մեր՝ 19-րդ դարու կեանքի ձգտումը, նոյնպէս եւ գրաբար գրականութիւնը բնական շարունակութիւն է նախորդ երկու դարերի։ Այն, ինչ որ 17-րդ դարն սկսել էր եւ որ այդ եւ յաջորդ դարում շատ դանդաղ կերպով եւ մեծ ընդհատումներով էր առաջ գնացել բուն երկրի մէջ, 19-րդ դարն ստանում է իբրեւ ժառանգութիւն եւ աւելի յաջող հանգամանքների մէջ աւելի արագ է առաջ տանում եւ զարգացնում։ Անցած դարու նոր գրաբար գրականութեան սկիզբն, ուրեմն, 17-րդ դարու շարժման մէջ պէտք է տեսնել եւ ոչ 18-րդ դարու մէջ։ Եւ որովհետեւ 19-րդ դարու գրաբար գրականութիւնը կարելի չէ բաժանել աշխարհաբար գրականութիւնից, քանի որ առաջինն իւր գրական

խնդիրներն աւանդում է երկրորդին եւ լինում է ժամանակ, գրաբարից աշխարհաբարին անցման շրջանում, երբ միեւնոյն մարդիկը երկու լեզուն եւս, հինը եւ նորը, բանեցնում են, — ապա եւ մեր նոր գրականութիւնն սկսւում է 17-րդ դարում, եւ այս վերջին երեք դարերը շարունակութիւն են միմեանց: 17-րդ դարն է միայն, որ շարունակող չէ նախորդին, այլ միայն վերածնող: Ի՞նչ է մեր նոր գրաբար գրականութեան իշխող գաղափարն ու զգացումը սկսած 17-րդ դարից մինչեւ վերջը: — Երկու բան, կրօնասիրութիւն եւ հայրենասիրութիւն, որոնք երկուսն էլ զօրեղ կերպով արտայայտուած գտնում ենք արդէն Առաքել Դաւրիժեցու երկի մէջ: Կրօնասիրութիւնը, կամ աւելի ճիշդ՝ կրօնական-եկեղեցական զգացումը նորոգուած էր նոր վանական կեանքով՝ հնի ազդեցութեամբ եւ նմանողութեամբ. բայց եւ հայրենասիրական գաղափարը, որ, իհարկէ, 17 եւ 18-րդ դարերում միշտ այնպէս չէին հասկանում, ինչպէս այժմ, արդիւնք էր հին գրականութեան ազդեցութեան: Եւ այս մասին հներից անպայման ամենամեծ դերն է կատարել Մովսէս Խորենացին, որ այս շրջանում սիրուած, շատ կարդացուած եւ ամէնից շատ արտագրուած գիրքն է եղել մեր հին պատմագիրների մէջ: Այս է պատճառը, որ մեր հին պատմագիրներից առաջին անգամ նրա Հայոց պատմութիւնն է տպագրւում 1695 թուին՝ աշխատութեամբ Վանանդեցի Թովմայ եպիսկոպոսի, որ դրա համար մինչեւ Ամստերդամ է գնում: Մի անգամ որ տպագրութեան արուեստը բանում էր հայ գրքերի համար, պէտք էր մատչելի դարձնել եւ տարածել սիրուած պատմական երկը: Եթէ Խորենացու Հայոց պատմութեան երեւան գալն իւր ժամանակին՝ իբրեւ առաջին պատմութիւն Հայոց՝ նշան է եղել ազգի ինքնագիտակցութեան, այժմ էլ ամէնից առաջ նոյն գրքի տպագրութիւնը պիտի լինէր ազգի մէջ ինքնաճանաչութիւն եւ հայրենասիրութիւն մտցնելու համար:

Բայց Խորենացին մենակ բաւական չէր հին կեանքի վերածնութեան համար: Ուստի եւ 18-րդ դարու սկզբից Կ. Պոլսում, որ ժամանակի յարմարաւոր մտաւոր կենտրոնն էր հայոց համար, աշխատում են տպագրել եւ հետըզհետէ տպագրում են մի շարք մեր հին մատենագիրներից, ինչպէս՝ Ագաթանգեղոս, Փաւստոս Բիւզանդ, Եղիշէ, Զենոբ Գլակ, Մեսրոպ Երէց, Ստեփանոս Օրբէլեան եւ այլն. իսկ կրօնական բովանդակութիւն ունեցողներից՝ Նարեկացի, Յաճախապատում, Եզնիկ, Լամբրոնացու Ատենաբանութիւն, Ճառընտիր եւ այլն: Հին գրականութեան մի պատկառելի վերածնութիւն, ուրեմն, տպագրութեան միջոցով, եւ այս ա՛յն ժամանակ, երբ Վենետկի հայ միաբանութիւնը դեռ նոր էր հիմնւում եւ երբ նա դեռ շատ ուշ, միայն 18-րդ դարու վերջին քառորդում պիտի երեւան գար իբրեւ հին լեզուի վերածնող եւ գրականութեան հրատարակիչ:

Բարեբախտութիւնը սակայն այն էր, որ Մխիթար Աբբայից յետոյ (1676—1749), որի մեծ գործը գրաբարի համար է՛ նրա Բառարանը, Մխիթարեանների մէջ գոնէ 18-րդ դարու վերջին քառորդում հանդէս են գալիս մի քանի իսկապէս աշխատող եւ բեղմնաւոր անձեր: Միքայէլ Չամչեանն իւր քերականութեամբ (1779 թ.) եւ Հայոց պատմութեամբ (1784—1786 թ.) միանգամից բարձրացնում է Մխիթարեանների անունը, որ մինչ այդ գրեթէ յայտնի չէր, եւ խոշոր ազդեցութիւն է թողնում հետագայ սերունդների

վրայ: Մխիթարեանները սեփական տպարան ձեռք են բերում միայն 1788 թուին, երբ սկսում են մտածել եւ Նախնեաց տպագրութեան մասին. բայց այս մեծ գործը շատ դանդաղ եւ առանց որոշ ծրագրի է առաջ գնում: Հազիւ մի չորս-հինգ գիրք լոյս ընծայած՝ վախճանւում է երկրորդ աբբահայր Ստ. Մելքոնեանը (1750—1800) եւ դադարում է գործը եւ միայն Սուքիաս Սոմալի (1824—1846) օրով դարձեալ սկսւում է, այս անգամ կանոնաւորապէս եւ յաջողութեամբ: Վենետկի Մխիթարեանները դրանով վաստակում են Նախնեաց մատենագրութեան հրատարակիչներ լինելու փառքը, թէպէտ եւ առաջնութիւնը նրանց չի պատկանում: Բայց այս հանգամանքն ի հարկէ չի պակասեցնում նրանց վաստակի արժանիքը:

Նրանց անուան փայլը գնալով աճում է. որովհետեւ եթէ մի կողմից Չամչեանը իւր Քերականութեամբ գրաբար լեզուն էր յստակում եւ միջոց ընծայում հեշտութեամբ սովորելու այն, իսկ իւր Հայոց պատմութեամբ ազգային անցեալի ուսումնասիրութիւնն էր դիւրացնում, միւս կողմից Ինճիճեանը իւր Հնախօսութեամբ եւ Հայաստանի աշխարհագրութեամբ Հայոց հին ու նոր աշխարհն էր ծանօթ դարձնում. եւ վերջապէս այս ամէնի վրայ աւելանում էր Հայկազեան լեզուի նոր բառագիրքը (1836—1837 թ.), մի հսկայական աշխատանք, որով անգնահատելի ծառայութիւն է մատուցել եւ դեռ շատ երկար կը մատուցի մեր լեզուի ուսումնասիրութեան համար: Դրանց հետ միացած եւ բազմաթիւ դրքեր ու դասագրքեր՝ կրօնական-եկեղեցական, փիլիսոփայական, պատմական, աշխարհագրական եւ այլ բովանդակութեամբ, յաճախ նոյնիսկ մեծամեծ հատորներով, հրատարակում են անխոնջ աշխատութեամբ: 19-րդ դարու առաջին կէսը մի բուռն գործունէութեան շրջան է Մխիթարեանների համար, երբ նրանք հրապարակը լցնում են իրենց գրական աշխատանքներով եւ թարգմանութիւններով, աւելի շատ գրքերով, քան կարդացողներ կային եւ շատ շատ աւելի, քան հասկացողներ:

Այսպիսով Մխիթարեանները գլուխ են բերում այն, որ երկու հարիւրից աւելի տարիներ առաջ ձեռնարկել էին հայ վարդապետներն Արեւելքում. բայց բուն երկրի մէջ մեծամեծ դժուարութիւնների եւ քաղաքական դժբախտ պատահարների հետ կապուած լինելով՝ գլուխ չէր գալիս այնպէս, ինչպէս կը ցանկանային կատարած լինել այդ գործի համար աշխատողները: Մխիթարեանները բարեբախտաբար իրենց ձեռքն են առնում գրականութեան այս վերածնութիւնը եւ վայելելով եւրոպական յարմարութիւնները եւ խաղաղ ու անվտանգ կեանքի դիւրութիւնը՝ անընդհատ առաջ են տանում: Նրանք մատչելի են դարձնում մեր հին գրականութեան կարեւորագոյն մասը. կենդանացնում են, միայն գրքերում, հին գրաբարը ոչ միայն կատարելապէս զտելով լատինաբանութիւններից, այլեւ նորոգելով, հարստացնելով եւ ազնուացնելով այն աստիճանի, որ ընդունակ է դառնում այնպիսի բանաստեղծական գրուածքների արտայայտութեան համար, որ չէր ունեցել հնումը:

## ՊԱՏՄԱԳՐՈՒԹԻՒՆ

Վերածնութեան շրջանի մէջ պատմագրութիւն իսկական իմաստով՝ գոյութիւն չունի: Մի քանի այդ անունը կրողները լոկ անարուեստ նկա-

րագրողներ են իրենց ժամանակի, կամ իրենցից սակաւ առաջ պատահած դէպքերի, որոնք Հայաստանի կամ հայոց գլխով են անցել, գլխաւորապէս օտարներից կրած հարստահարութիւնների ու ճնշումների նկարագիրը: Այդ պատմագիրները, իհարկէ, գրականութեան նիւթ չեն կարող լինել, որքան պատմութեան ուսումնասիրութեան համար իբրեւ աղբիւր կարող են ծառայել:

Մարդկանց հետաքրքրութիւնը զարթնած է եւ ուզում են ծանօթանալ հին ու նոր մարդոց: Հների ծանօթութիւնը ձեռք են բերում հին մատենագիրներ եւ յատկապէս Խորենացի կարդալով, իսկ ժամանակակից իրողութիւնների ծանօթութիւնը՝ ականատեսների պատմութիւնը լսելով, եւ որպէսզի կարողանան ամէնքն այդ պատմութիւնը լսել, կարիք է զգացւում ականատեսների վկայութիւնը գրի առնելու: Եւ գրի են առնում: Բայց այդ գրուածների մէջ քննադատութիւնը, դոկումենտների խուզարկութիւնը եւ վկայութիւնների (ականատեսների) կոնտրոլը բոլորովին բացակայում է: Գիտական երկեր չեն:

Այդ պատմագիրներից են.—

1. Առաքել Դաւրիժեցի:[1] Առաքել վարդապետ, Թաւրիզ քաղաքից, Փիլիպպոս կաթողիկոսի աշակերտներից, Ս. Էջմիածնի միաբանութիւնից, սնուած (երեւի մանկութիւնից) եւ «վարժեալ» Մայր Աթոռում, եւ ծերութեան օրերը հասած, եւ այնտեղ էլ, ինչպէս ինքն «ակն ունէր ընդ հովանեաւ նորին ամփոփիլ ի հող», մեռած ու թաղուած միաբանութեան գերեզմանատանը ՌՃԺԹ=1670 թուին. (տապանագիրն է — «Պատմագիրն այս է տապան Առաքել վարդապետի ՌՃԺԹ»): Իր ժամանակակիցների վկայութեամբ՝ բաւական անուն ստացած, անշուշտ իր ուսման կամ հմտութեան համար.«Ստեփաննոս Լեհացի իր մէկ թարգմանութեան(Դիոնիսիոսի Արիսպագացւոյն գրոցը) յիշատակարանի մէջ Էջմիածնի ուսումնարանի վրայ խօսելով՝ կը գրուցէ — «Զայնու ժամանակաւ բազում էին երեւելի վարդապետք (յԷջմիածին), քաջաբանք, բանաստեղծք աստուածային գրոց, քաջք գիտունք եւ հմուտք, յորոց մի է եւ Առաքել վարդապետն վիպասան, որ զժամանակագրութիւնս հայրապետաց եւ թագաւորաց գեղեցիկ յարմար բանիւ դրոշմեալ» (Զարբհ., եր. 172), որի պատճառով նոյնիսկ կենդանութեան ժամանակ յայտնի էր Առաքել պատմագիր անունով:

Այս վկայութիւնից երեւում է, որ Առաքել վարդապետը ժամանակի նշանաւորներից մէկն է, շատ ճանապարհորդած Արեւելքում եւ Արեւմուտքում, նուիրակ Փիլիպպոս կաթողիկոսի Ցունաց աշխարհում, Ասպահան, Ամասիա, Սեբաստիա, Ուռհա, Հալէպ:

Առաքելի ծննդեան թիւը յայտնի չէ: 1651 թ. սկսել է գրել իր Պատմութիւնը Փիլիպպոս կաթողիկոսի յորդորով. Նրա մահից յետոյ դադարել է գրելուց, եւ այնուհետեւ Յակոբ կաթողիկոսի հրամանով վերջացրել է 1662 թ.: ՌՃԺԱ=1662 թուին, երբ նա իր Պատմութիւնը վերջացնում է,

---

1 «Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ սակս դիպուածոց Հայաստանեայց եւ գաւառին Արարատայ եւ մասին Գողթան գաւառի, սկսեալ ի ՌԾԴ թուականէն Հայոց մինչ ի ՌՃԺԲ թ.», Վաղարշապատ, 1884:

յիշում է եւ (գլ. Ժ.), որ ինքը ծերացել է եւ «Կարի պակասեալ ի զօրութեանց, եւ մահն եկեալ հանապազօր իմոց աչացս կանգնեալ»: Իսկ յիշատակարանի մէջ (ԺԶ.) «այլեւ դիպեցաւ պատահել ինձ այս գործ, ոչ ի ժամանակս առոյգ երիտասարդութեան, այլ յողորմելի ծերութեան, վասն զի ծեր էի, նաեւ յոյժ ցաւագար մարմնով, եւ ի լուսոյ աչքս պակասեալ եւ ի պնդութենէ ձեռքս թուլացեալ դողայր. սոյնպէս եւ յայլոց յամենայն կարողութեանց տկարացեալ, եւ մահու հրաւէրք ամենեքեան հանդէպ աչացս եկեալ կացեալ»:

Պատմագրի անձնական վկայութիւնն իր ծերութեան համար ոչ թէ նրա գոյութեան վերջին տարու՝ 1662 թուականի համար պէտք է հասկանանք, այլ աւելի՝ Պատմութիւնը գրելու ամբողջ ընթացքի համար եւ գուցէ նոյնիսկ սկզբնաւորութեան ժամանակի համար, որ է ՌՃ=1651: Արդ, եթէ ընդունենք իր պատմութեան ընթացքի կէսին 1656 թ. նա ծեր է եղել, եւ ուժից ընկած, եւ աչքի լուսից պակասած, իսկ այդպիսի ծերութեան համար պէտք է ընդունենք առնուազն, որ 60–65 տարեկան է եղել այդ ժամանակ, իսկ 1670 թուին, ուրեմն, 74–79 տարեկան հասակում մեռել է, որ եւ մի անհաւանական թիւ չէ: Ուստի ըստ այնմ նա ծնուած կը լինի 1591–1596-ին: Այս հաշուով, նա Շահաբասի առաջին արշաւանքի ժամանակ, ՌԾԲ=1603 թուին 7–12 տարեկան պիտի եղած լինի: Եւ այս համարւում է խօսքին.— «Ես ինձէն իսկ տեսանելով զաւերս Հայաստան աշխարհին եւ զնուազիլն մերոյս ազգին, եւ զչարութիւնն մահմեդականաց», իսկ երկրի աւերումը եղել է Շահաբասի բանի գաղթից, Ջղալօղլու եւ Շահաբասի կախւներից եւ նոցանից յետոյ եկած Ջալալոց եւ սովի ձեռից, որ տիրել է ՌԾԵ=1606–1609 թուականներին, երբ «եղեն ցիր եւ ցան ազգն Հայոց եւ գնացին իւրաքանչիւր ոք հանդէպ երեսաց իւրոց գտանել տեղի կելոյ եւ ապրելոյ... Զի յազգէն Հայոց՝ որքան ղարիպականք կան յասացեալ գաւառս, յայս ժամանակիս եւ յայս պատճառէս են գնացեալք» (եր. 65, գլ. Է):

Ուրեմն Հայաստանի աւերմունքը, ըստ Առաքելի 1603–1609 թ. լինելով, որ եւ պատմում է սրտառուչ գրչով (այնուհետեւ եղած աւերմունքը մասնակի է եւ հայրենիքից դրսի համար է պատմում), պէտք է ենթադրենք, որ ականատես համարուելու համար այդ դէպքերը (1603–1609) կատարուել են նրա գոնէ 7–13 կամ 12–18 տարեկան հասակի ընթացքում, որ համապատասխան է մեր ենթադրած թուականին:

Սակայն այս տարիքը հակասական է թւում, Առաքելն իրեն Փիլիպպոս կաթողիկոսի աշակերտ է անուանում, իսկ Փիլիպպոս կաթողիկոսի համար գրում է. «Գալով սորա ի տես տղայութեան չորեքտասան ամաց աւելի կամ պակաս», երբ ութ ամսից յետոյ սա հանդիպում է Մովսէսին, երբ սա դեռ կաթողիկոս չէր[1]:

---

1 Կաթողիկոս եղել է 1629 թուին. եւ Սարգիս պարոն տէրը (մեռած ՌԿԹ=1720) յանձնում է սրան քարոզչութեան ժամանակ: Մովսէս քարոզչութեան է ելնում Սրապիոնի մահից յետոյ (մեռել է ՌԾԵ=1606), ուրեմն շուրջ 1610—Փիլիպպոս 15-ի մօտ պիտի լինի, որով նա ծնուած պիտի լինի 1590-ի մօտերը. ուրեմն Առաքելը հասակակից է Փիլիպպոսին: Այս ասենք անսովոր չէ:

Եթէ 1606–ին Փիլիպպոս 15 տարեկան լինէր, ուրեմն նա ծնուած պիտի լինէր 1591 թուին եւ հասակակից Առաքելին: Այս ժամանակի համար մի անսովոր բան չէ հասակակցի մօտ ուսում առնելը, երբ փոքրերն էլ մեծերից ուսում էին առնում: Այլ մանաւանդ թէ Առաքելն իրեն Փիլիպպոսի աշակերտ է անուանում ըստ «կարգի վարդապետաց», սկսեալ ի Գօշէ Մխիթարայ գաւազանաւն՝ որ իջանէ յԷջմիածնի դասատունն»:

Ցամենայն դէպս ինչ որ էլ լինի՝ Առաքելն Էջմիածնի դպրոցի վարդապետ է, ուրեմն բաւականին մեծ հասկում Էջմիածին եկած եւ Փիլիպպոս կաթողիկոսից ստացած վարդապետական գաւազան: Եւ իբրեւ Էջմիածնի դպրոցի գիտուն աշակերտ՝ հետաքրքիր է նրա հայեացքն ու զարգացումը տեսնել թէ որքան է: Ինչպէս երեւում է, այդ դպրոցը կարողացել է կարճ միջոցում բաւական ուսում տալ իր աշակերտներին, թէպէտ եւ գրաբարի ոչ կատարեալ ուսումը, հին գրաբարի, բայց եւ այնպէս գրեթէ անսխալ պարզ շարադրութիւն կարողացել է անել եւ, որ գլխաւորն է, իբրեւ Սիմէոն Ջուղայեցու քերականութեան աշակերտ, լատինացած լեզուին ենթարկուելու տեղը, աւելի հետեւել է ժողովրդական պարզ շարադրութեանը, կենդանի ժողովրդական ձեւերին ու դարձուածներին, չխորշելով, ճշտութեան ու պարզութեան համար, նոյնիսկ գաւառական ու թուրքերէն բառերից, որ եւ ոչ թէ պատմագրի պակասութիւն, այլ առաւելութիւն պէտք է համարել, զի ամէն պատմութիւն կամ զրոյցների ժողովածու, ինչպէս է Առաքելի Պատմութիւնը, իւր կենդանութիւնը, գոյնն ու երանգը ստանում է միայն ժամանակի կենդանի լեզուով պատմուելովը: Առաքել պատմագիրը, անշուշտ, ոչ շատ անգամ հասկանալով, գեղեցիկ գործածել է մանաւանդ ուրիշների խօսքերը մէջ բերելիս, չխորշելով նոյնիսկ զուտ աշխարհաբարից: Բայց նա նոյնիսկ այդ հասկանալով է անում, քանի որ թուրքերէն եւ գաւառական բառերի դիմաց յաճախ գրաբար բառեր է դնում փակագծի մէջ: Այս լեզուն լատինացած հայերէնով գրողների համար, հարկաւ, ինչպէս Ոսկանի, որ առաջին տպագրողն է Ամստերդամում, պիտի համարուէր «աղաւաղեալ ի գրչաց անհմտաց եւ անուղղայից արանց եւ բանաստեղծից»:

Սակայն այդ դպրոցը, միւս կողմից, տուել է Ս. Գրոց բաւական ծանօթութիւն եւ հին սովորութեամբ Առաքելն եւս իր գրուածքի մէջ ցոյց է տալիս, որ ինքը գիտէ Սուրբ Գիրքը, թէ Ս. Գրքի ձեւերից օգտուելով եւ թէ, որ աւելի յաճախ է պատահում, խրատական կամ նկարագրական օրինակներ բերելով Սուրբ Գրքից:

Եկեղեցու հարազատ զաւակ, եկեղեցական ոգւով սնուած, առանց աշխարհական գաղափարների մասնակցութեան: Կրօնասիրութեան եւ անարատ բարոյականութեան հետ՝ աւելի զօրեղ է պատմագրի մէջ հայրենասիրութեան ոգին, որից նրա պատմութիւնն աւելի շունչ է ստանում, ինչպէս է բռնի գաղթի նկարագիրը:

«Եւ զօրապետացն՝ յետ ընդունելոյ զայսպիսի զաշխարհակործան եւ զսաստիկ հրաման ի թագաւորէն, եկեալ իւրաքանչիւր զօրավար իւրով գնդաւն՝ դիմեցին յիւրաքանչիւր հրամայեալ գաւառսն աշխարհիս Հայոց· եւ իբրեւ հողմնախառն հուր ընդ եղէգն ընթացեալ, հապճեպ տագնապաւ վաղվաղակի զամենայն բնակիչս գաւառացն կարգեալք յիւրաքանչիւր բնա–

կութեանց, եւ արտասահման արարեալ յիւրաքանչիւր տեղեաց, իբրեւ զջոլիրս բազմութեան հօտից եւ հանդէոց զառաջեաւ արարեալ՝ բռնութեամբ վարեալ՝ ածեալ բերեալ հասուցին ի գաւառն Արարատու, եւ զլայնանիստ դաշտն նորա լցին ծագէ ի ծագ. քանզի ի ստորոտէ լերանցն Գառնւոյ մինչ ի յեզրն Երասխայ մեծի գետոյն, լայնութիւնն էր բանակին. իսկ զերկայնութիւնն դովիմբ կշռեաց դու, բայց ես ասեմ աւուր միոյ ճանապարհ. եւ յայլուր տեսի՝ որ հինգ աւուր ճանապարհ էին գրեալ» (28):

«Եւ եղեն երեք բանակք մեծամեծք եւ անհունք. առաջին՝ բանակն ժողովրդեանն, երկրորդն՝ բանակն Պարսից, երրորդն՝ բանակն Օսմանցւոց: Եւ այնպէս դիպեցաւ պատահումն՝ զի յորժամ չուէր բանակ ժողովրդեանն, իջեալ բանակէր ի հանդրուանս նոցա Շահաբասն զօրօքն Պարսից. եւ ի չուելն նոցա բանակէր ի նոյն տեղին Ջղալօղլին զօրօքն Օսմանցւոց, եւ այսպէս զհետ միմեանց կրնկակոխ գնալով գնացին, մինչեւ հասին ժողովուրդքն եւ Պարսիկքն ի գեղն Ջուղայ, եւ Օսմանցիքն հասին ի Նախչուան: Եւ այնուհետեւ ո՛չ թողացուցին Պարսիկքն ժողովրդեանն զկա՛յ առնուլ՝ եւ ոչ ժամ մի, այլ կարի սաստիկ տագնապաւ նեղէին զժողովուրդն, զոմանս մահու հարուածով զանելով, զոմանց զունչս եւ զականջս հատանելով, եւ զոմանց զգլուխն կտրեալ ի ձող ցցէին, որպէս զեղբայր Առաքել կաթուղիկոսին, որում անունն էր Յօհանջան, զսորա եւ զայլոյ ումեմն առն զգլուխսն կտրեցին, եւ ի ձող ցցեցին յեզր գետոյն Երասխայ. զայսոսիկ եւ առաւել քան զայսոսիկ խոշտանգանս կատանաց ածէին ի վերայ ժողովրդեանն, ի յա՛հ եւ յերկիւղ ժողովրդեան եւ տեսողացն, զի փութանակի անցցեն զգետն: Զայս ամենայն վտանգս ածէին ի վերայ ժողովրդեանն խորամանկ ազգն Պարսից յահէ Օսմանցւոց, որք զկնի նոցա գային» [29]:

«Իսկ ողորմելի ժողովրդեանն հայէին յառաջ զանհուն գետն տեսանէին իբրեւ զծով՝ որ խեղդէր, եւ յետուստ զսուրն Պարսից՝ որ սպանանէր, եւ ճարակ փախչելոյ ոչ գտանիւր. եւ առհասարակ աղիողորմ ողբս, եւ յորդ արտասուս յաչաց հեղեալ առնէին երկրորդ Երասխ. եւ ձայն լալեաց, եւ հառաչանաց, ճչանաց, վայոց կսկծանաց, մորմոքանաց ընդ միմեանս խառնեալ զոչեցուցանէին ուժգին աղաղակաւ. իսկ ողորմութիւն եւ փրկութիւն ոչ ուստեքէ էր:

Աստանօր կարի հարկիւ պիտոյ եղեւ մերում ժողովրդեանն հինն Մովսէս՝ եւ նորին աշակերտն Յեսու առ ի փրկել զնորս Իսրայէլ ի ձեռանէ երկրորդիս Փարաւոնի, եւ կամ դադարեցուցանել զուղխս յորդահոսան եւ լայնատարած գետոյն մեծի, եւ ոչ եղեւ գտեալ. քանզի յորդութիւնք մեղաց մերոց փակեցին ընդդէմ մեր զդուռն ողորմութեան գթածին Աստուծոյ:

Եւ անողորմ զօրացն Պարսից վարեալ զժողովուրդն լնուին ի գետն, եւ նոքա ի մէջ գետոյն եւս քան զեւս բազմացուցանէին զձայն աղաղակին եւ զողբոցն ի վտանգէն: Եւ ոմանք ի նոցանէ կալեալ զեզերս նաւացն, եւ ոմանք զափոցն, եւ ոմանք զագիս ձիոց՝ եւ զեզանց զգոմշոց, եւ ոմանք խուռնի լողեալք անցանէին: Եւ որք անհմուտք էին լողելոյ եւ անզօրք, ծերք եւ պառաւունք, տղայք, եւ աղջկունք, եւ մատաղ մանկտիք լցեալք էին յերեսս ջրոյն. եւ գետն առեալ տանէր զնոսա իբրեւ զխոտ ի ժամանակս գարնայ-

նոյ. եւ գետատար մարդով ծածկեալ էր երեսն գետոյն, եւ թէպէտ անցին, որք անցինն, այլ բազումք այնք էին՝ որք հեղձմամբ ջրոյն մեռան:

Եւ հեծեալք ոմանք ի զօրացն Պարսից՝ որք ունէին ուժեղ ձիս եւ ինքեանք արք արի եւ կարօղ, հրջելով ի մէջ քրիստոնէից տեսեալ նկատէին զուստերս եւ զդստերս քրիստոնէից, եւ որոց հաւանեալ սիրտք իւրեանց, եթէ կանանց, եթէ աղջկանց, եւ եթէ տղայոց. էր զի խաբէին զանեարսն, թէ տուր՝ զի վասն քո անցուցից ընդ գետն յայնկոյս, եւ իբրեւ անցուցանէր, ո՛չ դնէր անդէն ի գետնի, այլ առեալ երթայր յո՛ եւ կամէր: Եւ այլք զողութեամբ առեալ տանէին: Եւ այլք յափշտակութեամբ եւ սպանութեամբ առեալ ի տեարցն տանէին: Եւ բազումք մարք զողայս, եւ տեարք զհիւանդս ի ճանապարհին ընկեցիկ արարեալ լքեալ թողեալ դնային, վասն անհանդուրժելի եւ անըմբռնելի վտանգին, որ ժամանեալ էր ի վերայ նոցա: Եւ միանգամայն ասեմ՝ զի թշուառութիւնք՝ եւ արհաւիրք անտանելիք հասին ի վերայ ազգիս մերոյ, եւ ոչ բաւեմ թէ որով տարազու հիւսեցից ողբս դամբանականս եւ աշխարանաց ի վերայ բեկման հայկական սեռիս, որք այսքան չարակամութեանց եղեն ընդունակք: Զի թէպէտ ըստ սարասի հնոյն Իսրայէլի լինէին վարեալք գերի ձեռամբ երկրորդիս Բաբելացւոց, այլ ոչ դոյր Երեմիա, որ խրատէր, եւ ո՛չ Եզեկիէլ, որ լուսաւորէր եւ ո՛չ Յեսու կամ Զօրաբաբէլ՝ որ զդարձն առաջնորդէր, այլ եղեալք իբրեւ զհօտս անհովիւս ցրուեալք եւ հալածեալք առաջի գայլոց պատառողաց եւ գիշատող գազանաց, որք վարէին բռնութեամբ: Եւ նոքա երթալով երթային եւ լային, որք բարձեալ տանէին զսերմանս իւրեանց:

Իսկ յաջորդ սորին, ո՛չ եղեւ տեսանելի՝ որ սաէ, գալով եկեսցեն, եւ ցնծասցեն, վասնզի ոչ եկին եւ ոչ եղեւ ցնծութիւն, այլ անդէն մնացին ուր եւ տարեալ արգելին այսինքն, յաշխարհն Պարսից» (30–32):

[Այսպիսի] նկարագիրներ մեր պատմութեանց մէջ քիչ կը պատահենք Եղիշէի ժամանակից ի վեր:

Ոգին, ուրեմն, մեղքով բացատրելը նոյնն է, ինչ հների մէջ: Սակայն նա մեղքի համար համարելով հանդերձ այդ պատահարները՝ խիստ ուրախանում է, որ մատնիչները իրենց պատիժն են ստանում, ինչպէս երկու եպիսկոպոսների համար (եր. 35): Բայց, միւս կողմից, չատ սառնասրտութեամբ պատմում է (եր. 157) Մելքիսեթ կաթողիկոսի իւր միսն ուտեցնելը, այլեւ (եր. 159) սքանչանում, հիանում է, որ Մելքիսեթն իւր պատիժն է ստանում, [որ] Սրապիոնին արհամարհել էր: Առաքելը մոռանում է նոյնիսկ, որ այդ անարգ վարմունքն հայ կաթողիկոսի հետ է լինում, ինչքան է անարժան լինէր: Սակայն այդ մոռացումն եւս պատմագրի հայրենասիրութիւնից է: Եւ ի՞նչպէս չուրախանայ Առաքելը, քանի որ իր պատմական նեղ հայեացքով Հայաստանի աւերման եւ աղքատութեան նախապատճառը Մելիսեթին է համարում, որ հրաւիրել էր Շահին այն աւերմունքների, որոնց համար գրում է.

«Եւ զայս ամենայն լսելով եւ գրելով մեր, ճմլին սիրտք մեր, եւ գալարին աղիք որովայնի մերոյ, եւ աչք մեր վտակս արտասուաց թորեալ իջուցանեն, վասն եկելոյ հասելոյ թշուառութեանս ժողովրդեանս մերոյ: Եւ ոչ բաւեմք աստանօր՝ թէ որով օրինակաւ՝ եւ կամ որով տարազու ողբս

առեալ աշխարհեսցուք ի վերայ բեկման ազգին եւ աշխարհին մերոյ, յաղագս որոյ ել հրաման մահաբեր ի բերանոյ երկրորդ Սաբիւռոսին եւ չունչ հրախառն յրնդզաց նորին՝ եւ եկեր զեղեւնափայտս Լիբանանու, քանզի անմարդաբնակ արար միահաղոյն զամենայն եւ գյուղթի աշխարհս Հայոց: Վասն զի ի քշելն զերկիրս՝ ո՛չ թէ զմի կամ զերկու գաւառս վարեաց ի պարսկաստան, այլ զբազումս: Եւ սկսեալ ի սահմանացն Նախչուանու եւ անցեալ ընդ եղեգաձոր, առ եղբբ Գեղամայ, եւ Լօռւոյ, եւ զՀամզաչիման գաւառն, զԱպարան, զՇարապխանէն, զՇիրակուան, զՋարիշատ, եւ մասն ինչ ի գեղօրէիցն Կարսայ, եւ զձօրն Կաղզվանու բնաւին, եւ բովանդակ զերկիրն Ալաշկերտու, եւ զգեղօրայսն Մակուայ, եւ զերկիրն Աղբակու, և զՍալմաստու, եւ զԽոյայ, եւ զՈրմի, եւ որ ինչ պանդուխտք և զարիպականք մնացեալք էին ի քաղաքն եւ ի գեղօրայսն Թարվիզու, զդաշտն Արարատու բովանդակ, եւ զԵրեւան քաղաք, զերկիրն Ղրխբուլաղայ, զԾաղկունուց ձոր, զԳառնու ձորն, զՈւրծաձորն: Եւ յառաջ քան զայս՝ զգաւառն Կարնոյ, եւ զԲասենու, եւ զԽնուսայ, եւ զՄանազկերտու, եւ զԱրծկէոյ, եւ զԱրճէշոյ եւ զԲերկրու, եւ զՎանայ, աւարով եւ գերութեամբ բերեալ էին յԵրեւան, եւ ընդ սոսա քշեցին եւ տարան:

Արդ՝ զայս ամենայն գաւառքս՝ եւ որք ընդ սոքօք էին, հրամայեաց շահն, որ քշեցին եւ տարան յաշխարհն Պարսից, եւ արար աւերակ եւ անմարդաբնակ զվայելուչ աշխարհս Հայոց:

Որ եւ այժմ տեսանեմք զարդաւանդ եւ զբերրի զհող, զարտ եւ զանդաստանս սորա, եւ զաւերակս բազմապատիկ գեղօրէիցն եւ զմեծանիստ աւանացն:

Նա եւ զաւերումն և զտապալումն եւ ղքայքայումն զանառիկ և զամուր և զհաստահեղոյս վիմարդեամբք և կրով մածուցեալ զանմատոյց բերդորէիցն:

Եւս առաւել զմեծափառ եւ զհռչակաւոր վանորայսն, զտեղի եւ զհանգըստարան սրբոցն Աստուծոյ:

Եւ զերկնանման եւ զբարձրաբերձ եւ զգմբէթաշէն կոփածու և հաստահեղոյս վիմօք կառուցեալ զեկեղեցիս աշխարհիս հայոց: Յօրում յօրինեալ զանազան եւ պէս պէս նկարս եւ տեսակս շուշանաց եւ կենդանակերպից, գեղեցիկ յօրինուածովք քանդակեալք ի վէմս՝ պէս պէս հնարակերտութեամբ: Որոց ձեւն եւ դիր շինուածոյն եւ սիւնքն եւ ախաւեղագէսք կամարացն ազգի ազգի, եւ լուսանցոյցքն եւ դրունքն, եւ ամենայն ինչ խորհրդական:

Նա եւ զբարեհամ եւ զականակիտ զմշտահոսան աղբերակունս ջուրցն: Եւ ղկարկաջահոս ծիծաղախիտ յաւէտընթաց յառաջախաղաց վտակս ջուրցն, որ ի գլխոց ձիւնաբարդ սպիտակափայլ բարձրաբերձ լերանց առ ի ստորեւ հոսեալ իջանէ ի դաշտ անդր եւ զշինութիւն նոցին մատակարարէ:

Նա եւ զքաղցրաշունչ եւ զառողջարար եւ զկենդանապարգեւ զօդ եւ զհողմ սորին: Եւ զայլ ամենայն վայելչութիւնս սորա տեսանելով հեղձամըղձուկ եղեալ փղձկիմք՝ եւ հարեալ յարտասուս ողբամք եւ աշխարեմք՝ զի անապատ եղեւ վայելուչ եւ քաղցր աշխարհս մեր: Եւ ազգ եւ ժողովուրդ մեր խլեալք ի տեղեաց եւ անջատեալք ի հայրենի եւ ի բնիկ ժառանգութեանց, եւ յօրհնեալ յերկրէ, որ լի է նշխարօք սրբոց Աստուծոյ, եւ ոռոգեալ արեամբ սրբոց վկայից՝ և օրհնեալ քարոզութեամբ սրբոց առաքելոց՝ եղեն վտարան-

դեալք եւ տարամերժեալք յերկիր օտար եւ յազգ այլասեռ եւ այլալեզու, որ եւ թշնամիք հոգւոյ եւ հաւատոյ, եւ արեան ծարաւիք մարմնոյ: Որք եւ անդէն օր աւուր առ սակաւ նուազին, ոմանք մահուամբ եւ կորստեամբ, եւ ոմանք հաւատոյ ուրացութեամբ, որք դառնան յանօրէն օրէնս պղծոյն անապատի:

Եւ յաղագս երկնանման եւ ադինասարաս եկեղեցեաց զի՞նչ ասացից՝ որք ի խաւարի մնացեալ եւ ի բնակչաց թափուր եղեալ՝ մերկացեալ ի զարդուց՝ եղեալ հանգրուանք համբարուաց եւ ջայլամանց ըստ Եսայեայ տեսանողի, որջք աղուեսուց եւ նապաստակաց, մակաղատեղք խաշանց եւ անդէոց, բոյնք թռչնոց եւ աւերաբնակ բուաց: Փոխանակ օր աւուր նորոգման, օր զհետ աւուր խարխալեալ եւ քայքայեալ աւերեալ փլուզանի. փոխանակ բուրման խնկոց անուշից՝ լցեալ ողբովք՝ լռեալք ձայնք փառաբանչաց, եւ կատարմունք տօնից տարեկանաց, եւ մատուցմունք փրկական պատարագաց» (38–40):

Եւ իրաւ, Խորենացու հայրենասիրութեան ոգին անցել է այդ վարդապետին. Խորենացին այդ «Դասատան» սիրելի դասագիրքը պիտի եղած լինի, որ եւ Առաքելի մահից 25 տարի յետոյ իբրեւ «չքնաղավէպ» եւ գեղեցկաշար պատմութիւնս նախնեաց մերոց», որ Թոմաս եպիսկոպոս «ընծայէ ծաղիկ բերկրութեան ցանկալի ազգին Արամեան»: Խորենացու հայրենասիրութեամբ, բայց եւ առանց Խորենացու ճարտասանութեան, պարզ ու բնական, Խորենացուց աւելի սրտառուչ է ողբում իր հայրենիքը, որից աւելի գեղեցիկ չէր կարող ոչ մի իրեն ժամանակակից բանաստեղծ ողբալ:

Եւ կամ հետեւեալ կտորը (43–44), որի մէջ Ջուղայեցոց՝ բանալիները դետը ձգելն է նկարագրում, որին կարծես ինքն էլ մասնակցում է: Որքան սրտառուչ եւ տխուր իր պարզութեան մէջ, կարծես ամբողջ վիշտ լինի եւ, իրաւ, արտասուքով գրուած, մի բանաստեղծութեան կենդանի պատկեր է: Եւ ի՞նչպէս չմորմոքուէին, քանի որ նրանք պիտի թողնէին ամենայն բարութեամբ լի աշխարհը (եր. 150), ուր «լիութիւն եւ առատութիւն է», ուր են «դերեզմանատունք հարց եւ նախնեաց նոցա, վանորայք եւ ուխտատեղիք, ուր դամբարանք են սրբոց, եւ մանաւանդ մեծահանդէս աթոռն սուրբ Էջմիածին, ուր կայ սուրբ աջն Գրիգոր Լուսաւորչին, որով օրհնի սուրբ մեռոնն, ուստի գնացեալ սփռի յազգս Հայոց յամենայն աշխարհ ուր եւ իցեն. վասն որոյ ամենայն ազգն Հայոց հնազանդին սրբոյ Աթոռոյն Էջմիածնի եւ կաթողիկոսի նորա՝ որ անդ նստի... Քանզի ի վերայ աջոյն եւ Էջմիածնի ամենայն ազգն Հայոց կանգնեալ կան»: Եւ այդ յիշելով ուզում էին գերիները դառնալ հայրենիք: Սակայն անյոյս, զի «նոքա երթալով երթային եւ լային», եւ «ո՛չ եղեւ տեսանելի՝ որ ասէ, դալով եկեսցեն եւ ցնծասցեն» (32):

Թէ Առաքել վարդապետը ո՛րքան ճիշդ ըմբռնել է հայի ժամանակակից զգացմունքն ու տենչանքները եւ ոգին, եւ շատ գեղեցիկ կերպով արտայայտել, մեզ համար պարզ կը լինի, եթէ համեմատենք ժամանակակից մի ոտանաւորի հետ.— «Ափսո՛ս քեզ, հայոց խղճիկ ժողովուրդ»: Եթէ Աբրահամ վարդապետի ասածը չլինէր, ոչ ոք կարող չէր ասել, թէ դա Առաքել վարդապետինը չէ, նոյն զգացմունքը, նոյն ձեւերով եւ նոյնիսկ նոյն բառերով

արտայայտուած։ Նոյն հայրենասիրութեամբ լցուած, նա զայրանում է այն «անմիտների» վրայ, որոնք գաղթականութիւնը լաւ բան են համարում, որոնք «լուան զարհուրականքն Նախջուանու, թէ չահն զզարհուրականսն Թաւրիզու քշեց տարաւ ի պարսից աշխարհն։ Լաւ իմն գործ զայն ինքեանց համարեցան». եւ գալիս իրենք էլ շահխնեվան են դառնում, Պարսկաստան գնալու համար, «եւ չահն վասն հաճելոյ զմիտս նոցա եւ զնոցին նման անմտացն պատրելոյ, հրամայեաց խղլաթ (պարգեւ) տալ նոցա», եւ քշել տանել, որտեղից այլեւս չպիտի վերադառնային (եր. 110, գլ. ԺԳ)։

Բայց որքան աւելի մեծ սրամտութեամբ լցւում է, երբ հայերը, Պարսկաստանում աղքատացած, շահից օգնութիւն են ուզում եւ նա դրամ է փոխ տալիս, երեք տարուց յետոյ ետ ստանալու պայմանով, իսկ եթէ չկարողանան տալ՝ կամ իրենք մահմետական դառնան, կամ որդին ու դուստրը «թագաւորական ծառայ» դառնան։

«Այլ իբր անբան եւ անմիտ անասունք գոլով՝ գնացին եւ առին զթագաւորական գանձն, որ էր որպէս զմահարար թոյնս օձի, եւ պատճառ նոցին կորստեան. եւ ոչ եղեն մտախոհ, թէ որպէս զփուշս օձի է գանձն այն մահացուցանող։ Այլ երկոքին մելիքն իւրեանց ժողովրդովքն առին զթագաւորական գանձն, Ղարապաչ մելիքի ժողովուրդքն առին երեք հարիւր թուման։ Ղրխեալան մելիքի ժողովուրդքն առին հարիւր թուման, եւ լաւ իմն գիւտ բարւոյ համարեցան զայն անձանց իւրեանց» (եր. 112–113)։

Կարծես թէ Խորենացու, մեր այդ ամենամեծ հայրենասէր մատենագրի խօսքերն ենք լսում, որ անաչառ կերպով խարազանում է հայ ազգի քաղաքական անհեռատեսութիւնն ու անմտութիւնը. «իսկ արբշիռ, եւ անագորոյն, եւ անիմաստ, եւ անասնաբարոյ ազգս Հայոց՝ ոչ ի սկիզբն խորհեցան, եւ ոչ ի վերջն հայեցան՝ թէ զինչ է լինելոց վերջ գործոյս այսորիկ»։ Մի գործ նրանց դէմ լարուած՝ օրինաւորութեան քողի տակ՝ նրանց դէմ կրօնական հալածանք հանելու եւ դէպի հոգեւոր ու ազգային կորուստ տանելու։

Ժամանակի վիճակն էր այդ. կրօնի պատճառով հայ ազգը հալածւում էր, եւ կարելի է ասել, որ Առաքելի ամբողջ գրուածքը գրեթէ մի համազգային վկայաբանութիւն եւ նահատակութիւն է, ինչ որ ընդհանուր ազգին է վերաբերում, բայց եւ մասնաւոր նահատակութիւններով էլ լի է Առաքելի Պատմութիւնը (գլ. ԽԴ—ԽԸ), որոնք մի տեսակ յաւելուած են Առաքելի Պատմութեան, եւ կարեւոր յաւելուած՝ ժամանակի վիճակը լաւ ըմբռնելու համար։ (ԻԷ—«Վասն նահատակութեան տէր Անդրէաս քահանային»), որ եւ ամէնից գեղեցիկն է, եւ նախնի վկայաբանութիւնների հետ կարող է մրցել։[1]

Սակայն այդ վկայաբանութեանց մէջ՝ մեզ պատմագիրը չի տալիս երեւակայական կամ առասպելական զարդարեալ պատմութիւն, այլ մի իրական թշուառ աշխարհի նկարագիր, որի մէջ եթէ պատմելու ձեւը ժողովրդական պատմողների եւ մեծ մասամբ ականատեսների բերանից առած լինելով՝ ժողովրդական բնաւորութիւն է ստացել, հիմքը իրական է։ Այստեղ

1 Մուրացանի վէպը։

մենք տեսնում ենք մոլլաների, մահմեդական սուլտանների եւ մուֆթիների կառավարութիւնը, թէ ինչպէս մահմեդականը քրիստոնէին անպատուել կարող է ամէն տեսակ, եւ քրիստոնեան պէտք է լռէ, թէ չէ նահատակութիւնը նրա համար պատրաստ է: Ջուր խմելիս կամ լուացուելիս աղբիւրից՝ եթէ մահմեդականը գայ՝ հայը պիտի հեռանայ, եթէ չի ուզում նահատակուել: Նոյնիսկ լամուկները կարող են նեղել հային, եւ հայը պէտք է լռի, եթէ չի ուզում նահատակուել: Բաւական է մի հայի համար սուտ ասեն, թէ նա ցանկացել է մահմեդական դառնալ, եւ պիտի դառնայ, եթէ չէ ուզում նահատակուել եւ այն էլ ինչպէս եւ ինչ չարչարանքներով:

Եւ Առաքելը, ինչպէս իւր ժամանակակիցները, իրենց կենդանի հաւատքով չէին կարող անտարբեր մնալ այդ ազգայինների բազմաթիւ նահատակութիւնների առաջ:

Եւ այսպիսով, վկայաբանական պատմութիւնը գրաւել է մեր հայրերի մտքերը հնուց ի վեր, թէ թարգմանութեամբ եւ թէ ինքնուրոյն հեղինակութեամբ, թէ օտար եւ թէ մանաւանդ հայ վկաների: Այդ տեսակի ընթերցանութիւնը սիրելի էր ազգին այն ժամանակ, եւ Առաքելը չէր կարող իւր Պատմութեան մէջ չառնել այդ պատմութիւնները, եւ հէնց այդ պատմութիւնները պէտք է նրա ժամանակակիցների վրայ մեծ տպաւորութիւն թողնէին, եւ Առաքելի Պատմութիւնը մի սիրելի եւ ժողովրդական գիրք դարձընէին, ինչպէս եղել է իրօք:

Ժամանակի ոգին հերոսական էր, որը բռնի գաղթի ժամանակ ծնեցընում էր դիւցազներ եւ դիւցազնուհիներ. «Կանայք եւ աղայք եւ աղջկունք... իբրեւ տեսին զինքեանս մատնեալս ի ձեռս անիրաւ մարդադէմ գազանաց, որ վարեն զնոսա ի գերութիւն եւ պէս պէս աղտեղութեամբ ապականեն զսրբութիւն նոցա... պատէին զերեսս փակեղամբ եւ ձորձով իւրեանց եւ յամբաւ բարձրութենէն ի յայրէ անտի ի վայր արկանէին զինքեանս եւ մեռանէին» (եր. 37):

Այսպէս եւ բազմաթիւ քաջ նահատակներով աւելի եւս զօրանում էր ժողովրդի մէջ ազգային եկեղեցու հաւատը, ջերմեռանդ փափագանօք համբուրելով «զսուրբս», նրանց մարմնի մասունքը եկեղեցիների մէջ դնելով եւ բոլոր բազմութեամբ դիմելով սրբի թաղմանը, մի ազգային մեծ հանդէս կատարելով այն տխուր ժամանակին, երբ հայը զրկուած էր ամէն հանդէսից ու մի տեղ խմբուելու հնարաւորութիւնից, թէպէտ եւ մահմեդականներն այդպիսի տխուր հանդէսներ կատարելն անգամ արգելում էին (եր. 417): Մինչդեռ ազգային մխիթարութիւնն այդպիսիների գլխին լոյս է իջեցընում, չարաչար պատժում է հաւատուրացներին, որ միեւնոյն է՝ ազգուրացներին:

Այդպիսի մի պատմութիւն գտնում ենք ԽԹ. գլխում (428 եր.), մի Ղարաչորակի վրայ, որ հաւատ ուրանալու վրայ գոռնադաք է լինում: Եթէ Առաքելն իր քրիստոնէական բարեպաշտութեամբ հաւատում է լոյս իջնելուն, նա հաւատում է եւ գոռնադաքութեանը, որով հասարակ ժողովրդից բարձր չէ նա իւր սնոտիապաշտութեամբ: Բայց նրա

անտարապաշտութիւնն աւելի լաւ երեւում է «Ջոհարների» մասին գրածից (գլ. ԾԳ., ԾԴ.), որ իւր պատմութեան հետ բնաւ կապ չունի, այլ կցուած է.— «Կայծ, որ է եաղութ... ով որ ի հետն պահէ՝ նա ի մարդիկ ընդունելի լինի, եւ զարկուածի լաւ է»: «Սարդիոնն... ի հետն պահելն զարիւն կտրէ», նոյնպէս միւս գոհարների համար.«Վնասակար թունաւորք չմերձենան ի նա. սեաւ հազ..... փորցաւութեան լաւ է, երկու պատերազմողի որ կողմն որ աւելակշիռ ալմաստ լինի՝ այն կողմն յաղթող լինի, կինն որ ի ծնունդն զալմաստ քարն ի բազուկն կապեն արձակի Աստուծով»:

Արդ, այսպիսի մի մարդ, որի բոլոր գիտութիւնը միայն մի քանի կրօնական գրքեր կարդացած լինելն էր եւ շատ ճանապարհորդութիւնների ժամանակ իւր հարցասիրութեամբ ձեռք բերած ծանօթութիւնները, — չմոռանանք, որ մինչեւ 1662 թ. 24 գիրք էր միայն հայերէն տպուած, որից 5-ը Սաղմոս, 3-ը Յիսուս որդի, 2-ը Ժամագիրք, -ը Տօմար, 1-ը Հարանց վարք, 1-ը Աղթարք, 1-ը Կիպրիանոս. իսկ մնացածները ուրբանեան կաթոլիկ դպրոցի կրօնական եւ քերականութեան ու պատմութեան գրքեր, — Պէտք է գրէր մի մեծ շրջանի պատմութիւն, որ շարունակութիւն էր նախորդ դարերի եւ որի պատմական նշանակութիւնը ապագայի համար մեծ պիտի լինէր: Այդպիսի մի անձն չէր կարող, անշուշտ, պատմական առողջ դատողութիւն ունենալ եւ ոչ իսկ պատմական ընդարձակ աշխարհայեցողութիւն, որ կարողանար իրողութիւնները կշռադատել իրենց պատճառներովն ու ծանրակշիռ հետեւանքներով: Ուստի եւ նրա գրած պատմութեան մէջ նոյնիսկ շատ հրաշալի բաներ են մտնում, որոնց նոյնիսկ ինքը հաւատում է. օրինակ, թէ ինչպէս Փիլիպպոս կաթողիկոսը մի դիւահար է բժշկում աղօթքով, կամ Պօղոս վարդապետի եղնիկները, որոնց կանչում է իւր մօտ (գլ. ԺԹ.), կամ Պօղոս վարդապետի դռնբացէքին՝ դռների ինքն իրեն բացուելը. կամ նոյնիսկ մեռելին յարութիւն տալը (ԻԱ. գլ., եր. 197), եւ նոյն ինքը հաւատում է այդ պատմութեանը, վասն զի «ամենեքեան արժանացեալք էին շնորհաց Սրբոց Հոգւոյն»... եւ այսպիսի պատմութիւնները համարում է «արժանի լսելոյ... վասն զի հոգին Աստուծոյ վերակացու էր նոցա»:

Այսպիսի բաների հաւատքով եւ հասկացողութեամբ Առաքել վարդապետը ոչնչով բարձր չէ ռամիկ ու տգէտ ժողովրդից: Բայց եւ այնպէս, չնայելով իւր մեծ միամտութեանը, նա լաւ կերպով ըմբռնել է ժամանակի ոգին եւ մանաւանդ Շահաբասի քաղաքականութիւնը, ձգտումներն ու նպատակը, գործ դրած խորամանկ միջոցները, մինչդեռ իր ժամանակակիցները չեն հասկացել այդ թագաւորին, եւ նա զանազան գրողների հերոս դարձած, նոյնիսկ քրիստոնեասէր է համարուել:

«Արդ՝ որք գովեն զայս շահս թէ քրիստոնէասէր եւ աշխարհաշէն եւ խաղաղարար թագաւոր էր, այս է նորա քրիստոնէասիրութիւնն, որ զամենայն աշխարհն քրիստոնէից՝ զՀայոց եւ զՎրաց աւերեաց. եւ զամենեսեան սպառեաց սրով եւ սովու եւ գերութեամբ. եւ զմնացեալսն վարեալ տարաւ ի Ֆահրապատ եւ յԱսպահան, որ նոքա եւս օր աւուր անդէն սպառին

պէս պէս կերպիւ: Եւ ով ոք որ գովել կամի զնա, թող յառաջ հայեցեալ նկատեսցէ զարարեալ գործս նորա, զոր արար ընդ քրիստոնէից՝ եւ ապա գովեսցէ զնա» (եր. 100):

Ինչպէս երեւում է շատ գովողներ եղել են, խաբուած նրա խորամանկ միջոցներից, որ գործ էր դնում՝ բռնի գաղթեցրած հայերի սիրտը շահելու համար: Սակայն Առաքելը նրա հոգու բոլոր մանրամասնութեանց մէջ է, կարծես մի քաղաքագէտ եւ հոգեբան լինի: Նա Շահաբասի հոգու խորքն ու սկիզբն է մտնում վերլուծելով. «Հանճարեղնի խորհուրդս չարեաց (եր 52). Հարուստն ի խորհուրդս չարեաց Շահաբաս (եր. 73). խորամանկն ի հնարս չարեաց Շահաբաս (եր. 75). կամայօժար կամարարն անկելոյ արուեստին Շահաբաս» (եր. 86):

Նա տալիս է մեզ իրողութիւնների նկարագիրը, այն էլ ոչ միշտ ժամանակագրական կարգով, որովհետեւ ժամանակը չէ պահած, այլ խառն: Այս ժամանակագրութեան մի լրացումն պէտք է համարել Գլ. ԼԱ. կաթողիկոսների ժամանակագրական կարգը, ինչպէս եւ ԾԱ. եւ ԾԲ. գլուխները, որոնց մէջ օսմանցոց եւ պարսից թագաւորների ժամանակագրութիւնն է տալիս, որքան որ կարողացել է ժողովել: Եւ պատճառաբանական պատմութիւն նա գրել էլ չէր կարող, քանի որ իրողութիւնները հազիւ թէ ժողովել է նա, այն էլ գրեթէ միմիայն բերանացի աղբիւրներից (38, 63, 66, 67, 68, 70, 92, 151, 161, 162, 137, 147, 148, 149). գրաւոր աղբիւրներ քիչ է գործածում (եր. 28—111):

Նա ամէնքի բերանից ժողովում է իրողութեանց ճիշդ մանրամասնութիւնները, մեծ ծախքով եւ նեղութեամբ, կատարելով «յոքնաշխատ եւ զբազմաերկ զտաժանելի գործս եւ՝ աւուրս յոլովս ի սմին դեգերելով եւ ի յոլով երկիրս եւ յաշխարհս շրջագայելով ի խնդիր զրուցած պատմութեան ոչ միայն ի քրիստոնէից, այլեւ յայլոց ազանց հարցանելով, եւ ամենեցունց զասացեալսն գրելով, եւ վասն ստուգութեան բանին գտանելոյ, եղեւ զի զմի պատմութիւն տասն անգամ եւ աւելի կրկնելով գրեցի, եւ զամս ինն ի սմին դեգերելով, եւ զինչս ծախելով, հազիւ թէ զայսքան պատմութիւնս ի մի վայր հաւաքեցի եւ գրեցի, եւ բնաւ ոչ ոք եղեւ ինձ ձեռնտու» (յիշատակ.): «Այլ եւ թէպէտ ի շրջագայութիւնս աշխարհաց ի բազում տեղիս մասնաւորաբար եղեւ գրեալ ի սմանէ, սակայն սկիզբն սորին եղեւ ի բարձրագահ աթոռն, ի սուրբ Էջմիածին, եւ կատարումն եւս ի նոյն տեղին»:

Առաքելի պատմութեան ընթացքից հէնց երեւում է նրա հարցասիրութիւնը եւ պատմութեան նիւթ հաւաքելու համար շրջագայելը: Այնպէս որ նրա այս վկայութեանը լիովին հաւատալ կարող ենք: Նա հարցասէր է եւ յիշատակարան պահող, հետաքրքիր ծանօթութիւն ձեռք բերելու եւ պատմելու: Սակայն, դժբախտաբար, նա պատմութեան ամբողջութիւնը եւս սկսում է շարադրել հէնց այդ 1615—1662 թ. ընթացքում, երբ ծանօթութիւնների մեծ մասը ձեռք է բերում շրջելով, առանց ժամանակ ունենալու նախ ծանօթութիւնները դասակարգելու եւ խմբագրելու: Եւ թէպէտ նա արագութեան ետեւից է ընկած, բայց նա խիստ զգայուն է հայ ազգի եւ եկեղեցու շահերին, սրտով ու հոգով հայ լինելով, խիստ յաճախ ցոյց է

տալիս իր տեղեկութիւնը առ ամէնը, ինչ որ կորստաբեր է համարում հայ ազգին եւ եկեղեցուն:

Բայց եւ այնպէս նրա պատմութիւնը, միւս կողմից, ցոլացնում է այն մարդոց կրքերը, որոնք իբրեւ գործիչ կամ ականատես՝ տեղեկութիւն են տուել նրան, թէպէտ եւ նա ստուգութեան համար տասն անգամ փոփոխութեան է ենթարկում իր պատմութիւնը: Սրա հետեւանքն էլ այն է լինում, որ արտաքին ձեւի մէջ անխուսափելի կրկնութիւններ եւ աւելորդաբանութիւններ շատ է անում (եր. 152):

Սակայն այդ ամէնը աւելի նրանից են առաջանում, որ նա իր աղբիւրները խիկապէս չէ կարողանում մշակել, այլ, կարելի է ասել, զանազան մարդկանցից ինչպէս լսել է, այնպէս էլ շարել է: Այնպէս որ Առաքելի պատմութիւնը կարելի է համարել զանազան զրոյցների անմշակ ժողովածու, որոնք ծերերի բերանին շատ անգամ պատմուել են, եւ ինքը դուցէ ուրիշներին, եւ պատմուելով արդէն մի որոշ ձեւ ու կերպարանք են ստացել: Օրինակ՝ մի պատմող կը լինէր Այրարատի քչելու մասին, միւսը Ջուղայի քչելու մասին: Նա եր. 33 Այրարատի քչելու պատմութիւնը վերջացնում է Սպահանում տեղաւորելով, եւ եր. 33 նորից սկսում է Գառնուոյ քըշելը — դարձեալ դարձցուք...», որովհետեւ այդ պատմութիւնը ուրիշից է լսել: Եր. 40 նորից դառնում է Ջղալօղլուն, եր. 41 նորից Ջուղայեցոց քչելուն:

Այդպիսի մի-մի անկախ զրոյցներ են եւ բազմաթիւ նահատակութիւնները եւ Ջալալիների մասին պատմածները (Զորակ, Սուլէյման-բեկ եւ այլն) եւ վկայութիւններն ու Շահաբասի մասին պատմածները եւ առհասարակ գրեթէ բոլոր պատմութիւնները:

Այսպիսի դէպքերում, անշուշտ, կարելի չէ խօսել Առաքել պատմագրի գրուածքի գեղարուեստականութեան մասին, գրական արժէքի մասին: Նրա ոճը միայն կենդանի է, որովհետեւ զգացմունքով գրուած է, եւ որովհետեւ ժողովրդի բերնից է առնում անմիջապէս եւ բարբառախառար լեզուն շատ չէ փոփոխում: Այդպիսի ժողովրդական հերոսների կենդանի պատմութիւն է պիղծ Զոմարի սատակումը:

Առաքելը մատենագիր չէ, բայց նա չունէր նոյնիսկ մատենագիր լինելու պատրաստութիւն, որ կարողանար մի միութիւն մտցնելով իր գրածի մէջ, մատենագրական մի երկ տալ մեզ, որի մէջ իրողութիւնները, մի կենտրոնի շուրջ խմբուած, պատկերանային բանաստեղծական կենդանութեամբ:

Սակայն եւ այնպէս, նրա պատմութեան բուն մասը, իրերի բնական ընթացքով, երկու բանի շուրջ է պտտում.

ա) Հայաստանի (մասամբ եւ Վրաստանի) աւերումը եւ անկումը Շահաբասի եւ Օսմանցոց ձեռով (գլ. Ա.).

բ) Վերածնութեան սկիզբը Հայաստանում նոյն միջոցներին Առաքել կաթողիկոսի մահից (1586—1662), երկու սերնդի վարդապետների միջեւ եղած կռիւներով, մինչեւ Մովսէս կաթողիկոսի օրով նոր սերունդը յաղթում է եւ վերանորոգութիւն է սկսում Մովսէսի եւ Փիլիպպոսի օրով, մինչդեռ հին սերունդը ի դէմս՝ Դաւթի, Մելքիսէթի, Սահակի աւերմունքներ է

գործում: Առաքելի համակրութիւնը, հարկաւ, նոր սերնդի կողմն է, որի համար եւ իւր պատմութիւնը գրում է: Ինքն էլ դոցանից մէկն է: Ծարունակ գովում է նոր սերունդը, իսկ հինը պախարակում:

Բուն պատմութիւնը վերջանում է ԻԶ. գլխում, Փիլիպպոսի մահով եւ վանքերի շինութեամբ (Վերջին թիւը յիշուած ՌՃԸ=1658): Ո

Այնուհետեւ եկած գլուխներն արդէն իբրեւ յաւելուածներ պէտք է համարել: Եւ ապա վկայաբանական եւ իւղկահարների պատմութիւն, ինչպէս եւ մի քանի տարեգրական տեղեկութիւններ: ԾԴ. գլուխը «Պատմութիւն Ազուանից աշխարհին արարեալ Ծարեցի Յովհաննու վարդապետին»: Այդ յաւելուածներից մի քանիսը շատ ուշ աւելցրած է, ինչպէս Հրէից Սաբեթար պատմութիւնը, որ միայն Աւետիք երիցու գրչագրի մէջ կայ:

2. Զաքարիա Սարկաւագ:[1]— Ծնուած Քանաքեռում ՌՃԼԶ (1136+551 =1686—60=1627) թուին, ինչպէս ինքը յիշում է (Գ. հատոր, եր. 2), 1687 թուին 60 տարեկան է եղել:

Զաքարիա սարկաւագն իր գրութեան եղանակով Առաքել վարդապետի աշակերտն ու հետեւողն է, թէպէտ եւ իւր գրաբար լեզուով Առաքելից բարձրը է շատ անգամ, բայց իբրեւ պատմագիր ստոր է կանգնած Առաքելից: Ճշմարիտ է, Առաքելը եւս շատ անգամ բաւական միամիտ է, բայց նա քիչ ու շատ էլի ճաշակ ունի, կարողանում է նիւթերի մէջ ընտրութիւն անել, դատել եւ պատճառներն ու հետեւանքները վերլուծել եւ փոքր ինչ դասաւորել նիւթը: Մինչդեռ Զաքարիան, այդ ժամանակի կրթուած ու շատ ճանապարհորդած եկեղեցականը կատարեալ պարզամիտ է մի լեռան հովուի, մի ուղտապանի չափ: Խիստ նեղ հայեացքով, գրեթէ ամէն բանի, որ լսել է, հաւատում է:

Բաւական չէ նրա գրածների մէջ նահատակների վրայ լոյս իջնելը, դեւերի՝ մարդկանց գլխին կատարած գործերը ճշմարիտ պատմութիւններ են համարւում, մի բան, որին հաւատում էին բոլոր ժամանակակիցները, այլեւ այնպիսի զրոյցներ ու ժողովրդական սնոտիապաշտութիւններ է բերում Զաքարիան իբրեւ պատմական իրողութիւններ, որոնք նոյնիսկ մի ժամանակում կազմուած չեն, այլ դարեր շարունակ ապրում են ժողովրդի մէջ: Եւ Զաքարիան, այդ զարգացած, ճանապարհորդած դրագէտը հաւատում է այդ ամէնին: Պէտք է երեւակայել, ուրեմն, թէ Զաքարիայից ստոր կրթութեամբ մարդիկ՝ եկեղեցականներ ինչերին կարող էին հաւատալ այն ժամանակ, — էլ չենք ասում թանձր խաւար մարդիկ:

Նա իւր վաթսունամեայ հասակում, ՌՃԼԶ=1678 թուին, ժամանակի Յովհաննավանքի առաջնորդից, «Ի Սարգիս վարդապետէ խոհեմայ եւ բանասիրէ» հարկադրուած սկսում է գրել կամ անել «Կոնդակ սուրբ ուխտին Յովհաննու վանից», որ եւ նոյն 1687 թուին աւարտում է: «Ցամենայն օր դեգերէի, — գրում է Զաքարիա, — թէ ընդէր ոչ գոյ հաստատուն կոնդակ վանացս, որ ամենայն արձանք որմոցն գրեալ լինի ի նմա, եւ վարանէի միշտ առ այն»: Զաքարիան միշտ մտածում է այդ անել, բայց ձեռնհաս

[1] Զաքարիա Սարկաւագի Պատմագրութիւն, Ա. Բ. Գ. հատոր. Վաղարշապատ, 1870:

չի լինում, որովհետեւ իւր առաջին տէրերը Զաքարիա եւ Յովհաննէս վանահայրերը նրան մարմնաւոր գործերով են զբաղեցնում: Սարգիս վանահայրը դրդում է նրան այդ անելու՝ լինելով բանասէր:

Եւ նա գրում է Յովհաննավանքի կոնդակը կամ պատմութիւնը, «թէ ի պատմագրաց, թէ ի յիշատակարանաց, թէ ի յարձանաց եւ թէ ի լրոյ իմաստուն արանց եւ ի գիտուն ծերոց»:

Եւ Զաքարիան, հաւատարիմ իւր ծրագրին, նախ համառօտաբար խօսում է, թէ ընդհանրապէս ե՞րբ են հայոց մէջ վանքեր շատ շինուել եւ թէ յատկապէս ե՞րբ է շինուել Յովհաննու վանքը, որի հնութիւնը մինչեւ Լուսաւորիչ է հասցնում: Այնուհետեւ խօսում է այդ վանքի թեմի եւ վիճակի մասին, թէ ե՞րբ է այդ վանքը նորոգուել եւ ծաղկել:

Իւր գրութեան եւ ապացուցման եղանակով հետեւում է Առաքելի Ը. գլխին — «Պատմութիւն վասն սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչի աջոյն»: Բայց մի բանի վրայ յատուկ ուշադրութիւն է դարձնում Զաքարիան. բացի մատենագիրներից ու գրքերի յիշատակարաններից՝ օգտւում է եւ արձանագրութիւններից, նա ընդօրինակում է պատերի վրայ եղած արձանագրութիւնները եւ մանրամասն ճշդութիւն մտցնում իւր Կոնդակի մէջ, որով Զաքարիան հանդիսանում է մեր հնագրական արձանագրական թանկագին յիշատակարանները ժողովողների նախահայրը: Մի բան, որ շատ կարեւոր է:

Այնուհետեւ աշխատում է Յովհաննավանքի առաջնորդների անունը, որքան որ կարողացել է ձեռք բերել՝ յիշատակել ժամանակագրական կարգով, յիշելով միանգամայն եւ իւր աղբիւրները: Առանձնապէս կանգ է առնում իւր ժամանակի երեք նշանաւոր առաջնորդների վրայ՝ Զաքարիա Վաղարշապատցի (ՌՁԶ=1637—1659—ՌՃԸ), Յովհաննէս Կարբեցի, (1659—1679—ՌՃԻԸ) եւ Սարգիս Կարբեցի, որի ժամանակ եւ գրում է Կոնդակը: Վերջացնում է Կոնդակը՝ տեղեկութիւն տալով նոյն վանքի Ս. Յովհաննու մասունքի մասին, որի համար ժողովում են այնտեղ ամենայն ուրուկք եւ գօթիք: Եւ թէ ինչպէս Մողնու վանքն է շինւում եւ մասունքն այնտեղ փոխադրւում: Վերջին գլուխներում իւր նախորդների պատմութիւնն է անում: Այս գրուածքը հնագրական—պատմական կարեւոր տեղեկութիւններ ունի, եւ արժէքը միայն այդ տեղեկութիւնների մէջ է:

Երեւի Զաքարիայի այս Կոնդակը հաւանութիւն է գտնում, եւ նրան մի քանի բանասէրներ յորդորում են պատմութիւն էլ գրելու:

Պատմութիւնը երկու հատոր է:

Զաքարիայի Պատմութիւնն իսկապէս պատմութիւն չէ, սուտ ու ճշմարիտ, առասպել ու իրողութիւն վայրիվերոյ, խառնիխուռն ժողովուած են մի տեղ՝ առանց որոշ դասաւորութեան, առանց որեւէ կարգի: Ժամանակագրական ճշդութիւն, ի հարկէ, պահանջել կարելի չէ մի պարզամիտ մարդուց, որ պարզ սուտը ճշմարտից ջոկել չի կարողանում եւ առօրեայ չնչին, մանր ու մունր դէպքերը իբրեւ կարեւոր պատմական եղելութիւն՝ արձանագրում է:

Զաքարիայի Պատմութեան երկու հատորները մէկմէկուց բոլորովին տարբեր արժէք ունին: Առաջին մասը, սակաւ բացառութեամբ, որ առնուած

է յիշատակարաններից եւ Առաքել պատմագրից կամ ականատեսից է լսած (Ա. ԺԶ., եր. 28)՝ իբրեւ պատմական երկ՝ արժէք չունի, որովհետեւ զուտ ժողովրդական զրոյցներից եւ երգերից է առնուած, որոնց հիմքը, սակայն, անշուշտ պատմական է: Առաջին հատորը, իսկապէս, մի ժողովրդական բանաստեղծութեան ժողովածու պիտի համարել եւ ոչ պատմագրութիւն որով եւ Զաքարիան, այս միամիտ մարդը, անգիտակցօրէն, իր պարզամտութեան պատճառով, հանդիսացել է հայոց Փոլկլորի—ժողովրդագիտութեան առաջին հաւաքողը Խորենացուց յետոյ, բայց եւ Խորենացուց աւելի հարուստ ու հարազատ կերպով, քանի որ նա, հաւատացած լինելով թէ պատմութիւն է տալիս, մեզ ժողովրդական անգիր բանահիւսութեան օրինակներ է տալիս եւ կամ բովանդակութիւնը, առանց փոփոխելու եւ հետաքրքիր մանրամասնութիւններով, որով նա հանդիսանում է իբրեւ ժողովրդական գրող, որի գրուածի մէջ մնում են ժողովրդական պարզութիւնը, կոպիտ, բայց թարմ կեանքը:

15 եւ 16 ու 17—րդ դարը մի դիւցազնական շրջան է. 15—րդ դարում, Լանկթամուրի արշաւանքից յետոյ նոր ազգեր եւ պետութիւններ էին կազմակերպւում, մի կողմից օսմանեան պետութիւնը եւ ազգը, միւս կողմից քրդերն էին ձգտում պետութիւն կազմելու (Ղարա Եուսուֆ Սասունում, Իսկենդար, Ջհան շահ), միւս կողմից թաթարների հին պետութիւնը կործանուել է Լանկթամուրի յաջորդ Շահրուխի ձեռով նոր պետութիւն պիտի կազմուէր եւ, վերջապէս, Միջագետքում Ջհանգիր Թուրքմէնների իշխանապետութիւնը: Մինչեւ որ Ջհանշահի մահից յետոյ Ուզուն Հասան, այս Ջհանգիրի որդին բարձրանում է պարսից գահը եւ Հայաստանի միահեծան տէրը դառնում (1468 թ.): Բայց նոյն ժամանակ օսմանցիք Կ. Պոլիսն առնում են եւ կազմակերպւում, եւ սկսւում է երկու նոր կազմակերպուած պետութիւնների մէջ երկուս ու կէս դար շարունակ կռիւ: Ուզուն Հասանը յաղթւում է (1473): Ուզուն Հասանից յետոյ խռովութիւն է ընկնում, եւ Շահ Իսմայիլ Սեֆեան իշխանը հակառակորդներին ընկճելով՝ Թաւրիզում հաստատում է իւր գահը: Յետոյ Թահմազ որդին, Խուտաբանդ, Շահաբաս:

Այսպէս նորոգւում է Սեֆեան ցեղով պարսից պետութիւնը եւ յաղթական կերպով մեծ պատերազմներ է մղում օսմանցոց դէմ, դիւցազնական կռիւ, եւ շատ բնական է, որ ինչպէս պարսից բոլոր հարստութեանց սկզբնաւորութեան մասին, նոյնպէս եւ այս հարստութեան մասին կազմւում են շատ զրոյցներ եւ երգեր, որոնցից է եւ Շահ Իսմայիլի եւ ապա Շահ Թահմազ Խուտաբանդի, Շահաբասի եւ Շահսեֆիի մասին: Ահա այդ զրոյցներն ու երգերն են եւ Զաքարիայի պատմութեան նիւթը կազմում:

Սակայն եթէ այդ զրոյցները պատմութիւն չեն, նոցա հիմքը պատմական է եւ նոցա մէջ շատ գեղեցիկ երեւում է ժամանակակից կեանքը, բնաւորութիւններ եւ դէպքեր, կենցաղական գծեր, որոնք հետաքրքիր են, որովհետեւ Զաքարիան անպաճոյճ, բայց բնական ու կենդանի է հանում, եւ այս տեսակէտից Զաքարիայի պատմութեան այդ զրոյցների մասը լրացուցիչ է իւր ժամանակի բուն պատմութեանը:

Այդ գրոյցների կամ անեկդոտների, ինչ որ հայոց է վերաբերում, կենտրոնը կազմում է Շահաբասը:

Այսպիսի պարզամիտ մարդը բնականօրէն ոչ միայն ինչ որ Շահաբասի վրայ պատմում է՝ պիտի բերէր իբրեւ Շահաբասի պատմութիւն, այլեւ ուրիշ շատ առասպելներ եւ սնոտիապաշտութիւններ եւ այնպիսի նկարագիրներ, որոնք պատմութեան հետ բնաւ կապ չունին:[1]

Ինչ որ լսել է կամ տեսել եւ իրեն կարեւոր է թուացել, առել է իւր պատմութեան մէջ. երկրաշարժ, արեգակի խաւարում, սով, մարախ, երկնային օդերեւոյթներ, հետաքրքիր զրոյցներ, առասպելազարդ պատմութիւններ, որոնք իրողութեան վրայ հիմնուած թէ զուտ առասպելական՝ բոլորը կարեւոր բաներ են Զաքարիայի աչքին, այն պատճառով, որ քննադատութեան կատարեալ բացակայութիւն է:

Զաքարիայի պատմութիւնը, առաջին հատորի վերջում եւ Բ. հատորի մէջ ներկայանում է, այսպիսով, իբրեւ մեծ պատկեր, որի հիմքը պատմական է, յիշատակարաններից քաղած եւ կամ անձամբ տեսած, իսկ այդ հիմքի վրայ շարուած են առասպելները եւ զրոյցները, ականատեսի նկարագրութիւնների հետ միասին խառն: Եւ այդ իսկ պատճառով թէ ինչով էր զբաղւում իւր ժամանակի հայ եւ պարսիկ մարդու միտքը, հայ ժողովրդի մտաւոր կեանքն ու աշխարհհայեցողութիւնը, բարքերը, նիստն ու կացը, սովորութիւնները, սնոտիապաշտութիւնները, հաւատալիքը՝ աւելի եւս պարզ են երեւում այդ գրուածքի մէջ, քան մեր որեւէ ուրիշ պատմական կարեւոր երկի մէջ: Առաջին անգամ մենք այստեղ ենք տեսնում հայ գիւղը, այն էլ դըլխաւորապէս Արարատեան երկրի, Քանաքեռը, որը Զաքարիայի ծննդավայրըն է, մի գիւղ, որ յետոյ տաղանդով պիտի նկարագրէր Աբովեանը:

Այստեղ մենք տեսնում ենք, թէ ինչպէս նենգութեամբ են վարւում իրար հետ պարսիկները եւ օսմանցիք: Շահը տիրում է Երեւանի բերդին եւ հրաման է տալիս օսմանցի բերդապահներին՝ ուր ուզում են երթան. «Եւ նոքա առին զգէշն Մուրթուզայ փաշային, եւ ելին ի գնալ: Իբրեւ գնացին կէս աւուր ճանապարհ, նենգաւոր ազգն Պարսից գնացին զկնի նոցա, եւ կոտորեցին զնոսա, եւ յափշտակեցին զինչսն» (Բ. Ջ. եր. 12): Նոյն հայեացքը պարսից վրայ, ինչ որ Առաքելն ունի, որ այսպիսի դէպքեր նոյնպէս բերում է: Կամ ինչպէս պարսիկ ծառայողը դաւաճանում է իւր ազգին եւ օսմանցոց հրաւիրում՝ խոստանալով Երեւանը նոցա տալ (Բ. Գ. եր. 5): Կամ ինչպէս պարսիկ խանը Մաղասբերդի սուլթանին, որ պարսից դերիչխանու-

1 Օրինակ՝ Բ. գլ. ԾԴ. եր 108 «Վասն միւս նշանին երկնից», որ վիշապ հանելու պատմութիւնն է: Կամ Բ. գլ. եր. 55 «Վասն դեւին կերպարանեալ կին», նոյնը եւ Գանձակեցու մէջ, որ եւ Մխիթ Այրիվանեցին իբրեւ նշանաւոր դէպք առնում է ժամանակագրութեան մէջ, մարդկանց հետ յարաբերութեան մէջ մտնող պարիկի յայտնի առասպելն է: Նոյնպէս Բ. Լ. եր 31—«Վասն որոտալատառ առն», «որ ի միում ժամու ասոն գոյնս փոխեաց», կամ աւելորդաբանութիւններ ու դատարկախօսութիւններ, ինչպէս Բ. ԼԱ. եր. 53 «Պատմութիւն միւս վիշապին», եւ յաջորդ գլուխը «Վասն օձահար առն», որպէսզի եզրակացնէ. «ամօթ այնոցիկ որ ասեն, ընդէ՞ր ստեղծան այսպիսի անարգ կենդանիք»: Բ. Ի եր. 12, - «Պատմութիւն կռապաշտ առն», որ պատժըւում է Աստուծոյ անունը չտալու համար: Այսպէս եւ պատմութեան մէջ առնում է իբրեւ տարեգիր, Բ. ԼՋ, եր. 63—«Վասն իջանելոյն լուսոյն երկնից», կամ Բ. ԾԳ. եր. 108 – « Վասն նշանացն երկնից» երկրաշարժից առաջ:

*թեան տակ էր, խղճալու տեղ, տիկ է հանում եւ շահին ուղարկում, — բաւական չէր, որ նրա բացակայութեան ժամանակ նրա բերդն օսմանցիք առել էին եւ նրա որդուն սպանել եւ կինն էլ իրեն գահավէժ արել: Բայց պարսիկը երեւում է եւ իւր լաւ յատկութեամբ. Թահմազ ղուլի բէկը, պատուի զգացմամբ լցուած՝ սպանում է գերութեան մէջ այդ ղաւաճան Մուրադ բէկին եւ Խոնթկարն ասում է — Բարւոք արար, զի ծառայն իւր սպան» (Բ. Դ. եր. 7 եւ հտ.):*

*Այստեղ մենք տեսնում ենք թէ՛ հայոց եւ թէ՛ մահմեդականների մէջ տիկ հանելը, կոպիտ բարքեր հայ գիւղացոց մէջ, որոնք իրենց գլխին մահմեդականներից եկած խստութիւնն ու գազանաբարոյութիւնը իրենց համագիւղացիների վրայ են գործադրում՝ գազանաբար պատժելով հասարակաց ստացուածքը գողացող տանուտէրին (Բ. Բ. եր. 1 եւ հտ.), եւ մեր սարկաւագը կարծես համակրում է «եւ աստ տե՛ս դու զչարչարանս նորա» (Բ. եր. 4), «տեսէք եւ այժմ լուարուք» ասում է ոգեւորութեամբ:*

*Մարդկանց սրտերն ամբողջապէս քարացած են, եւ միայն նիւթական շահի ետեւից են ընկած, անիրաւութիւնը, սպանութիւնը նրանց համար սովորական երեւոյթ է: Եւ այդ բոլոր առաքինութիւններն ու արատները Զաքարիան մեր աչքի առաջ է դնում եւ մեզ համար շօշափելի դարձնում, մեզ ցոյց է տալիս դրանք գործողութեան մէջ եւ զանազան մասնաւոր անցքեր պատմելով: Կենդանի արտայայտիչ պատկերներ, բայց եւ մեծ մասամբ զըզուելի ու քստմնելի:*

*Եւ այդ բրտութիւնը, կոպտութիւնը նոյնիսկ մտնում է Զաքարիայի պատմութեան մէջ, նրա ոճի մէջ, քանի որ մի լուսանկար է անում նա: Կոպիտ խօսուածք, լեզու, նկարագրութիւն ու մտածմունք: Խաները մի-մի բռնակալներ են, ինչպէս եւ ամէն զօրեղ. նրանց ձեռին է սպանել ու ներել ամէնքին: Ոչ միայն շահը խիստ պատժել գիտէ, այլեւ նոյնիսկ իւր զուարճութեան համար տանջել ժողովրդին:*

3. Աբրահամ կաթողիկոս Կրետացի:[1] — *Ծննդեան եւ կրթութեան մասին ոչինչ յայտնի չէ: Ծնուած է Կրետէի Կանդիա քաղաքում: Քսան եւ հինգ տարի առաջնորդ եղած Թեքիրտաղի (Ռոդոսթօ), կամ ինչպէս ինքն է գրում՝ Թրակիոյ քաղաքին, ուստի եւ երբեմն Աբրահամ Թեքիրտաղցի է կոչւում: 1734 թ. հայոց ՌՃՋԴ կաթողիկոս է դառնում (ուխտի եկած լինելով Էջմիածին) եւ մեռնում է 1736 թ.: Սիմէոն կաթողիկոսի «Ջամբռում» խիստ գովասանքով է խօսւում Աբրահամ կաթողիկոսի մասին, թէ «էր ահարկու եւ չքեղատես, մեծանձն եւ խելօք, ճարտարալեզու եւ հանճարեղ»: Այս պատճառով եւ սիրելի է լինում Պարսից Նադր Շահին, որ Աբրահամ կաթողիկոսին «յինքն պահէր եւ շատ խորհուրդ եւ առնելիս իւր ընդ սմա տնօրինէր եւ հարցանէր»: Նոյն «Ջամբռը» սրա համար ասում է. «քան զամենեսին առաւել արար զբարերարութիւնս եւ զօգուտս սրբոյ Աթոռոյս եւ ազգիս եւ բոլոր երկրիս մերոյ: Նադր Շահ կոչեցեալն այնքան էր ահեղ եւ զարհուրելի, մինչ քարինքս հալէին յահէն, եւ յանուանէն: Սակայն ողորմածն Աս-*

---

*1 Աբրահամ կաթողիկոսի Կրետացւոյ Պատմագրութիւն անցիցն իւրոց եւ Նադր շահին պարսից, Վաղարշապատ, 1870:*

տուած այնքա՛ն քաղցրացոյց յաչս Նորա զօրքազն Հայրապետս մեր, որպէս զՑովսէփ առ Փարաւոն եւ զԵսթեր առ Արտաշէս, որոյ բան եւ խնդիր մի ոչ անկանէր յերկիր առաջի այնպիսոյ բռնաւորին»։

Աբրահամ կաթողիկոսի Պատմագրութիւնից հէնց այդ եւս երեւում է, ինչ որ «Ջամբռը» Նրա համար գովեստով գրում է։

Այդ պատմութիւնն իսկապէս պատմութիւն չէ, այլ անձնական յիշատակարան (mémoires), եւ իբրեւ այդպիսին՝ մեր պատմութեան մէջ մի առանձին տեղ է բռնում եւ, կարելի է ասել, եզակի է իր տեսակի մէջ, քանի որ մեզանում պատմական յիշատակարաններ շատ չկան։ Աբրահամն այն է մանրամասն արձանագրում, ինչ որ ինքն արել ու գործել է, կամ մտածել է։ Շատ քիչ բան՝ ուրիշներից լսած։ Հէնց այդ պատճառով եւս Աբրահամի յիշատակարանը շատ հետաքրքիր է, նա ուրիշներին նկարագրելով հանդերձ՝ դարձեալ աւելի ինքն իրեն է նկարագրում, իւր ճաշակը, հասկացողութիւնները, առաքինութիւններն ու արիութիւնը, բայց նա ինքն իրեն նկարագրելով՝ նկարագրում է միանգամայն եւ ժամանակի ընտիր հայ եկեղեցականներին, որոնց լաւագոյն օրինակներից մէկն էլ ինքն է։

Այստեղ մենք տեսնում ենք, ամէնից առաջ, թէ ինչպէս մի պաղթական հայ մարդ մանկութիւնից բարեպաշտական կարօտութիւն ունի սուրբ աթոռները տեսնելու, մանաւանդ «Վասն Հայաստան երկրի վանօրէից եւ ուխտատեղեաց»։ Եպիսկոպոսը թողնում է իւր Թրակիոյ վիճակը (ՌՃԿԸ=1719 թ.) տասներորդ տարում առաջնորդութեան եւ գնում Երուսաղէմ ուխտ, իսկ ապա, 15 տարի յետոյ, ճանապարհ է ընկնում, հարիւր օր ճանապարհորդելով՝ հասնում է Ս. Էջմիածին, երկրպագում է սուրբ տեղերին։ Ապա ցանկանում է Տարօնի Ս. Կարապետ ուխտ գնալ, վեհը չի թողնում եւ նա լսում է։ Բայց եւ այնպէս՝ փափաղանօք ուխտ է անում Արագածի ստորոտների վանքերին։ Եւ թէպէտ՝ «տկարացեալ անձամբ», բայց գնում է Արարատի միւս վանքերն էլ ուխտ «այնու մտօք եւ հաւատով, զի բուժեցիմ ի չարաչար տենդէ ցաւոյս». Խոր Վիրապ, Ակոռւ մօտ՝ Մասիսի Ս. Յակոբայ աղբիւրը, Հաւուց Թառ, Աղջոց վանք, Ս. Գեղարդ, Գետարգել։—Միւս վանքերն այլեւս չէ կարողանում շարունակել այցելել, զի վեհը մի քանի պատճառներով իւր մօտ է կանչում։

Գալուստին իսկոյն ներկայացնում են Աբրահամ վեհապետին՝ սրբազան կաթողիկոսին, «որ էր նստեալ ի պարտէզն՝ ի ներքոյ մեծի այւանին»։ Կաթողիկոսը սիրով ընդունում է, «զի սաստիկ սէրն որ արծարծեալ էր ի սրտի մերում Ի. ամէ ի վեր բոցափայլեալ յայտնի երեւիր», գրում է պարզապէս Աբրահամ։ Նա ամենայն ակնածութեամբ է վերաբերւում Աբրահամ կաթողիկոսին, որ չի թողնում մեր Կրետացուն իրենից հեռանալ, «որքան պաղատեցի եւ աղաչեցի, չեղեւ հնար. եւ ոչ ետ թոյլ եւ հրաման, այլ ասաց, եթէ Տէր կամեսցի, ի գալ ամի եւ ես կամիմ գնալ ի Տարօն... Կա՛ց առ իս աստէն եւ ի միասին գնասցուք եւ անդ կատարեա զուխտ քո»... «Եւ ես խոստացայ մնալ մինչեւ ցայգեկութն, եւ ապա չուել. որ եւ ծիծաղեցաւ երանելին եւ ասաց բարի է, այնպէս եղիցի»։

Կաթողիկոսի հետ ուխտի է գնում Յովհաննավանք, որի առաջնորդ Յակոբ վարդապետը գալիս հրաւիրում է «զվեհն վասն օծման ս. խորանին»,

ապա Սաղմոսավանք եւ միւս սրբատեղիքն ուխտ անում։ Այստեղ սիրուն նկարագրում է կաթողիկոսի հետաքրքրութիւնը, եւ թէ ինչպէս «նորահայեաց» է նա եւ «ցաւեցող վասն ամենեցուն», եւ ասպնջականներին ձանձրութիւն չտալու համար աճապարում է ս. Աթոռը, մանաւանդ որ ժամանակը խառնակ էր եւ Թահմազ խանի արշաւանքի զրոյցները պտտւում եւ հասնում են վեհի ականջին։ Կաթողիկոսը շտապում է, որ հոգայ «զհոգս ամենեցուն եւ զի այսպէս բնաւորեալ է»... (եր. 4 եւ հտ.)։

Շատ ճիշդ բնութագրում է Աբրահամը մեր սեւագլուխներին՝ ադէտ եւ ապերախտ, ոչ մի բանի հոգ տանել եւ ոչ ցաւել, իւրաքանչիւրն իր հանգըստութիւնը, բարեկեցութիւնը որոնող եւ դրա համար ջանացող եւ այն ապահովող, հասարակացբոլոր հոգսը, «զամենայն ցաւս ընկենուլ ի վերայ գըլխոյն», «պաշտիչ ուրուականին իւրոյ», կեղծաւոր ու չողոքորթ մեծաւորի առաջ՝ այն էլ իւր օգտի եւ բարեկեցութեան համար, իսկ մեծաւորի մեռնելուց յետոյ՝ երբ այլեւս շահ չունին, ապերել եւ հեգնել «որպէս ի բնաւստ անոտի ունին զայն ազգն մեր, որոյ զպատճառն՝ ոչ այլ ինչ գիտեմ, եթէ ոչ զագխոտութիւն եւ զապերախտութիւն»։ Ինչո՞վ է տարբերւում այս բնութագիրն այժմեան վիճակից։ Մի՞թէ Աբրահամ կաթողիկոսն իւր ժամանակի մարդկանց լաւ չի ճանաչում եւ որքա՜ն գեղեցիկ նկարագրում է նրանց, սուր, կտրուկ, չոր, բայց այրող։

Մի՞թէ այսպիսի մարդկանց մէջ կաթողիկոսն իրաւունք չունէր ասելու Աբրահամին «զքեզ ինձ Աստուած առաքեաց տեսանելով զխեղճութիւնս իմ... լե՛ր ինձ խորհրդակից, ցաւակից եւ կարեկից»... Մի կաթողիկոս, որի «սիրտը կարի նեղացեալ է, զի ի հեռուն հետէ ի դուրս չեմ ելեալ», եւ որի վրայ է ս. Աթոռի ամբողջ հոգսը, որ թէպէտեւ նոյն բարեպաշտական փափագն ունէր մի քանի մերձակայ վանքեր ուխտի գնալու, «բայց ցաւն ժամանակիս եւ զբաղմունքն ոչ ետուն թոյլ» (եր. 5)։

«Եղանակն եւ տարին ծանր էր եւ յօդն ապականեալ», շատերը հիւանդանում եւ մեռնում են, հիւանդանում է եւ վեհը, եւ մեր Աբրահամը տառապում եւ վատանում է (եր. 7) եւ չի ուզում հեռանալ կաթողիկոսի մօտից, թէպէտ եւ «երանելին» երեք–չորս անգամ ասում է, «գնա՛ հանգստացիր, խեղճ ես, եւ ի ճանապարհէ եկեալ դադրած ես», եւ եպիսկոպոսը գնում է միայն մտածելով, թէ մի՛ գուցէ հիւանդը նեղանայ կամ տրտմի իւր չգնալու համար. այնուհետեւ եւս «զմահճովն նստելով՝ վարանէաք, եւ ընդ միմեանս հայելով լռելեայն տրտմեալ երեսօք տարակուսէաք»։ Մինչեւ որ երանելին իւր օրհնութիւնը տալով «աջ ձեռն ի մէջ ձեռացս հեշտ եւ հանդիստ աւանդեաց զմաքուր հոգին իւր ի ձեռն հրեշտակի բարւոյ, ա՛յնպէս, որպէս թէ ոք հանգէ խնձոր մի ի ծոցոյ եւ տացէ բարեկամին կամ սիրելոյ իւրոյ»։

Եւ այդ այն ժամանակ, երբ այդը կատարելուց յետոյ Նադիր խանի արշաւանքի ահից Երեւանի հայ բնակիչներից կանայք ու մարդիկ փախըստեայ գալիս են Էջմիածին։

Այս ծանր տարին ոչ ոք չի ուզում, երեւի, կաթողիկոս լինել։ Ամէնքը Աբրահամին են մատնացոյց անում, որ հրաժարւում է՝ ասելով «թէ չեմ բաւական այդմ գործոյ... մանաւանդ ղարիպ եւ օտար եմ»։ Զոռով

քարշում տանում են Երեւանի փաշայի մոտ․ Աբրահամը լալիս ողբում է, չի ուզում կաթողիկոսությունը, որովհետեւ ընտրութիւն պիտի լինէր եւ Սպահանի ու Ստամպոլի քաղաքցիք պիտի ընտրեն — «Ապա թէ ոչ՝ Սուրբ Աթոռին եւ կաթողիկոս նստողին մեծ վնաս կը լինի» (9)։ Բայց փաշան առարկում է, «եթէ Սպահան եւ Ստամպօլ մինչեւ երթեւեկութիւն գրերաց լինի եւ ընտրութիւն վասն ումեմն, ի մէկ տարին չլինիր, եւ ահա երկուց կողմանց զօրք եւ պատերազմունք երեւին, եւ Էջմիածին ի վերայ ճանապարհին է, մինչեւ ցայն օրն վանքն պիտի քակուի, եւ միաբանքն անգլուխ գոլով մինն ոչ մնայ, այլ ցրուին․ այնուհետեւ ի՞նչ օգուտ է ձեր ընտրութիւնն»։ Ահա համոզող պատասխան։

Ժողովւում են շրջակայ իշխաններն ու եպիսկոպոսները եւ Նրան զոռով դնում են «ի ծառայութիւն եւ ի ներքոյ լծոյ սուրբ Էջմիածնի եւ Աթոռոյն մեծի սուրբ հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչի»։

Եւ մեծ հոգացողութեան մէջ է նորընտիր կաթողիկոսը, անծանօթ երկրին, մարդկանց ու միաբաններին, ել ու մուտքին եւ արարողութեան։ Եւ, որ գլխաւորն է, ամենեւին փող չկայ, իսկ վանքի ծախքը մեծ եւ անթիւ։ Բայց որ գլխաւորն է՝ Ղարսում ջարդում է Նադիր շահն օսմանցոց, եւ եկել է Արարատի կողմը։ Կաթողիկոսին Մելիքջան քալանթարն իմացնում է, որ պիտի ելնել Նադիր խանի առաջ ընծաներով։ Նադիր խանը սիրով ընդունում է, երեք օր իւր մօտ պահում։

Եւ մայր Աթոռի ու եկեղեցու օգուտը խորհող կաթողիկոսն օգտուելով յաջող հանգամանքից, ոչ միայն իւր կաթողիկոսական հրովարտակն է առնում, այլեւ ուրիշ երեքը Էջմիածնի պահանջները թողնելու, եւ «զի թուրքացողքն ի հայրենեացն զրկեցին, եւ մի՛ ոք գայցէ ի վանքս, եւ նեղացուցէ առանց հրամանաց խանին»։ «Յորմէ եւ ես վստահացեալ հրաւիրեցի զնա գալ ի վանքն Թամաչայ եւ ղիարաթ»։ Եւ նա գալիս է ու բանակում գեղի մօտ անդում․ «զցորեանն եւ զգարին խապառ կերցուցին երիվարացն եւ արաթուր կոխեցին, զի ժամանակ էր հնձոց․ եւ զի եւս էր հնձեալ», գանգատւում է կաթողիկոսը, եկած օրը կաթողիկոսը խանին ընդառաջ չի գնում, որովհետեւ «այլք․․․ խելացնորեալք ոչ ուսուցին զիս զծէսս պարսից եւ զսովորութիւնն երկրին»։

Սարսափում է ծերունի կաթողիկոսը․ «ահիւ պակեայ, եւ ի կենցաղս յուսահատեցայ, եւ սկսայ այնուհետեւ զյետին եւ զհրաժարական զողջոյնն տալ, ներումն եւ աղօթս խնդրել յամենեցունց․ եւ մտեալ ի սուրբ տաճարն՝ անկեալ առաջի սուրբ իջման տեղւոյն, լալով եւ հառաչանօք, եւ դառն արտասուօք յանձնելով զհոգի իմ յԱստուծոյ, եւ այսպէս պաշարեալ երկիւղիւ, եւ լքեալ սրտիւ դնացի ի բանակն կիսամեռ»։ Բայց որքան է մեծ լինում Նրա սրտի ուրախութիւնը, որ «մինչ ակն ունէի տանջանաց եւ մահու», խանը իբրեւ մարդ է վարւում եւ «խիլայեաց ինձ», եւ «ո՞վ ոք ոչ զարմացի, — բացականչում է ծերունին, — փա՛ռք ա՛յ հրաշագործութեանն, մեծ են գործք քո տէր, եւ յոյժ խոր են խորհուրդք քո», եւ ապա խաչով ու թափորով բերում են խանին Էջմիածին։ Եւ խանն ամենայն հետաքրքրութեամբ դիտում է ու լսում է ժամերգութիւնը եւ մինչեւ իսկ 300 փլորի ողորմութիւն տալիս։ Եւ նոյն գիշերը իւր կանանցն է ուղարկում վանքը տես-

նել. միւս օրը լուսանալիս՝ նորից գալիս, խօսում, ուրախանում է, մինչեւ անգամ շնորհակալութիւն յայտնում եւ մխիթարում՝ ասելով «մի հոգար եւ մի՛ տրտմիր եւ բնաւ մի՛ երկնչիր, այս օճաղս մեր է»...

Կաթողիկոսն այժմ խրատուած՝ ընծաներով հետը մինչեւ Փարաքար է գնում:

Լինում է Եղիվարդի դաշտում մեծ ճակատամարտը, օսմանցիք կոտորւում ու փախչում են, եւ կաթողիկոսը դիակների ու վիրաւորների միջից անցնում է, ազատում շատ վիրաւորներ կոտորելուց — թուրք, հայ, հոռոմ, ու խնամում:

«Հանճարեղն եւ երկրորդ Աղեքսանդրն» պաշարում է Կարսը, նեղը լծում օսմանցոց, Երեւանը եւ Այրարատն ընկնում են պարսից ձեռը եւ խաղաղութիւն է լինում: Նադիր խանը արշաւում է Թիֆլիս եւ կանչում է խաներին եւն., նաեւ կաթողիկոսին եւ խիստ պատուէրներ տալիս Երեւանայ խանին, որ լաւ վարուէն կաթողիկոսի եւ հայերի հետ, եւ կաթողիկոսը շատ ռաղամներ է ստանում հայոց համար, այլեւ ազատում 300 տուն հայեր՝ Թիֆլիսից Խորասան քշելուց: Այլեւ հոգ է տանում երկրի հարկի մասին, որ աղքատներին չնեղեն:

## ԵՐԳԻՉՆԵՐ

Այդ երկու հարիւրից աւելի տարիների ընթացքում եկեղեցականների եւ եկեղեցական նիւթի մէջ բանաստեղծութիւն չկայ, բայց բուն ժողովրդի մէջ եղել է, անշուշտ, բանաստեղծութիւն, եւ աւելի ժողովրդական երգիչների մէջ, որոնք մեծ մասամբ աշխարհաբար լեզուով են երգել, իրենց տեղական բարբառով, շատ քիչ տեղեկութիւն ունենալով Ս. Գրքից եւ գրաբար լեզուից: Այդպիսի շատ երգիչների անուններ են յիշւում 17-րդ եւ 18-րդ դարերի համար եւ սրանց ժառանգները յարատեւում են մինչեւ մեր օրերն իսկ: Բայց դժբախտաբար դրանց երգածները չեն ժողովուած ու գրի առնուած, ուստի եւ կորած են. իսկ գրուածներն եւս հրատարակուած չեն:

Այսպէս, 17-րդ դարու երկրորդ կէսի երգիչներից մէկն է Խաչէկ Երէց, որ երգել է արեւմտեան բարբառով, խառն գրաբարի հետ. ունի երեւի կրօնական կրթութիւն, եւ երէց լինելով՝ Աստուածածնի վրայ էլ տաղեր է ասել, որոնք, սակայն, տպուած չեն: Կոստանեան Բ. պրակ, եր. 11, կայ՝ «Տաղ ի վերայ վարդին եւ անուշահոտ ծաղկանց», որ սովորական ձեւով մի հասարակ գովեստ ու նկարագիր է վարդի եւ ծաղիկների, թէպէտ եւ ստոր հին բանաստեղծներից, բայց ճաշակը դեռ երեւում է ոտանաւորի եւ բառերի ընտրութեան մէջ: Աւելի գեղեցիկ է 1670 թուին գրած մի տաղ (Կոստ. Գ. պրակ, 15)՝ «Տաղ սիրոյ եւ ուրախութեան», որ նկարագիր է գարնան բնութեան, ծաղկող այգու, ծառ ու ծաղկի եւ երգեցիկ թռչունների, յատկապէս պլպուլի եւ վարդի (որի համար «Խումբ առեալ պայծառագեղեցաւ վարդն կարմիր սպիտակ, յայտնեցաւ ի մէջ կոկոնին երփնազարդ ճշմարտապէս», իսկ պլպուլը.— «Աղաղակէր քաղցր ձայնիւ պլպուլն վարդին սիրուն, ոչ դադարէր երագ շրջելոյ վարդին սիրոյն»... «Առաւօտէն մինչ իրիկուն գովք ասէր»...) :Գեղեցիկ նկարագրուած է սոխակի սէրն առ վարդը, թէ ինչ-

*պէս նա զարթնում է կէս գիշերին, կաքաւում, ծիծաղում, արտասւում ծիծաղելով. կամ երգելով ու ճռուողելով փարւում վարդի շուրթը, անթարթ աչքով նրան նայում: Իսկ միւս կողմից՝ ինչպէս վարդը ննջում է ցօղի մէջ մանրամասնիկ ողողուելով, մինչդեռ միւս ծաղիկները «հոտ անուշ բուրեն ի թփին գոյնզգոյն ծաղկածաւալ» մի տեղ խմբուած ու պար առած սոխակի քաղցր ձայնով հրճւում են, գովում են բոլոր թռչուններին ու սոխակի համար արքայական գահոյք պատրաստում:*

*Անշուշտ այս երգն այլաբանական է՝ թռչունք—աղայք, ծաղկունք—աղջկերք. վարդը սիրուհին, եւ ծաղիկները նրա ընկերուհիք: Բայց հէնց առանց այդ այլաբանութեան եւս ուղղակի իբրեւ բնութեան երգ՝ մեր գեղեցիկ երգերից մէկն է:*

*Խասպէկ երէցից ուղիղ հարիւր տարի յետոյ ապրել է Սայեաթ-Նովա, — որ աւելի մեծ եւ զուտ քնարական երգիչ է, մեծ թերեւս զուցէ նրա համար, որ նրա գրածներից աւելի բան ունինք: Սակայն Սայեաթ-Նովան ուրիշ կարգի երգիչների է պատկանում: Նա աշուղ է:*

1. Սայեաթ-Նովա:[1]— *Սայեաթ-Նովան աշուղ է, այսինքն՝ ժողովրդական երգիչ:*

*Սայեաթ-Նովայի հայեացքն աշուղութեան վրայ երեւում է նրա մի քանի երգերի մէջ: Ախվերդեանի հրատարակութեան մէջ գրած առաջին երգը (1759 թ. գրած) մի գովասանք է քամանչայի. արծաթէ ականջով, գլուխը ջահաւիր քարած, շիրմայի (փղոսկրեայ) կոթով, փորը սադափով նախշ արած, ոսկէ սիմով, էրկաթը փանջարայ արած, վարադնած ճիպոտով, ռաշի պոչից ձարը:*

*Քամանչան (աշուղի նուագարանը) «Ամէն սազի մէջըն գոված դասն» է, որ «պարապ վախտին րափա» է ուզում, «մեձըրւում է այինումը» չայով ու սուրձով. նրա «բոլորքը» շարւում են «գոզալնիրը», եւ նա «մէջլիսի կէսն է». Նա «շատ տխուր սիրտ խնդացնում է, հիւանդի դողը կտրում», «երբ քաղցր ձայնը վեր է ունում» կամ «քաղցր յանգով խօսում», ոչ միայն «ածողին երկու է շինում», եւ «հետը խաղացողի սիրտը բաց անում», այլեւ լսողներին «քաղցր զօղ ու սափա է ցոյց տալիս», այն աստիճանի, որ «շատին զարթուն լուսացնում է», շատին էլ օրօր կարդալով «քնեցնում է բանգով՝ ինչպէս մի անուշահամ գինով լիքը ոսկէ թաս»:*

*Երգիչն իւր նուագարանի արտաքին գեղեցկութիւնը նկարագրելով՝ պատրաստում է նրա ներքին ազդեցութիւնը ըմբռնելու: Այդ նպատակով* պիտի *խօսքով է ասում, քամանչայի արժանաւորութիւնը զգալ տալու համար:*

---

*1 Սայեաթ-Նովա, լոյս գցած աշխատասիրութենով Գէորգայ Ախվերդեան, Մոսկուա, 1852:—Մի բժիշկ, Գէորգ Ախվերդեան, որի վաղաժամ մահը զրկել է հայոց գրականութիւնը իւր բանիբուն ու սիրող մշակից,— Ախվերդեանը դժբախտաբար միայն իւր մի հատորն է լոյս ընծայել՝ «Գուսանք», առանց ժամանակ ունենալու միւս գուսանների ժողովածուն եւս հրատարակելու, ինչպէս եւ «Առակ, ասած, վիճակախաղեր եւ ամենայն տեսակ խաղեր», որոնց ժողովելու, կարգաւորելու սիրահար էր նա. Նրա հրատարակութիւնն իւր յառաջաբանով եւ ծանօթութիւններով ոչ միայն իւր ժամանակին, այլեւ այժմեան ժամանակին պատիւ կը բերէր ամենայն մարդու (անշուշտ մի քանի բան հնացած):*

Սակայն «նաքազ» (վատթար) մարդը չի կարող քամանչի այդ ազդեցութիւնը տեսնել, քամանչէն նրա «պասն է», ուստի եւ երգիչը յորդորում է «ջանք անել աւելի եւս լաւ օրերի», այսինքն գործերի ետեւից լինել:

Ահա այսպէս գիտէ երգիչը իւր նուագարանի ու երգի ուժը, որ ոչ ոք կարող է վիճելով (ըստ աշուղների) նրա ձեռքից խլել, այսինքն նրան յաղթել, իսկ, ընդհակառակն, «քանի սաղ է Սայեաթ-Նովան, շատ բան կը տեսնի այդ քամանչէն», շատ յաղթանակներ կը տանի, միայն հարկաւոր է, որ խալխն աղօթք անէ, որ «ապրի նորա ածողն»:

Ի՞նչ պիտի լինի այդ երաժշտութեան նպատակը, արդեօ՞ք միայն ուրախացնել: Երգիչն արդէն այն խօսքով թէ՝ «նաքազ մարդ քիզ չի կանայ տեսնի, դուն նրա պասն իս» ակնարկում է իւր մեծութեան եղանակին: Նա իրեն անուանում է մի տարի առաջ, 1758 թ. գրած (ԼԲ. եր. 131) երգի մէջ «խալխի նոքար», որ «համով պիտի ծառայէ» ամէնքին, թէպէտ եւ այդ ծառայութեան մէջ շատ դառնութիւն է կրում: Եւ ինչ է այդ դառնութիւնը. նա իբրեւ խալխի նոքար խալխի կամքը պիտի կատարէ. իսկ խալխի կամքն է զուարճանալ ու սիրոյ երգ լսել. սակայն աշխարհը միայն զուարճութիւն ու սէր չէ. «վուր տեղ հարսնիք, վուր տեղն սուք, վուր տեղ սոյբաթ խաղ է ըլում, վուր տեղ ժամ, վուր տեղ պատարագ, վուր տեղ սիրով տաղ է ըլում», — այսինքն ուրիշ խօսքով՝ զուարճութեան հետ խառն է եւ սուգը, մարմնի հետ միացած է եւ հոգին: Մարդս երկուութիւնից է կազմուած, որոնք իրար հակադիր են ըստ քրիստոնէական հայեացքի, եւ Սայեաթ-Նովան կանգնած երկուութեան առաջ՝ չի իմանում ի՛նչ վճիռ տայ, «թէ որ հոգուտ կամքն իս անում, մարմինդ բեզամաղ է ըլում», եւ բացականչում է՝ «վո՞ւր մէ դարդին կու դիմանաս, դուն ջրատար Սայեաթ-Նովա»:

Հոգին պահանջում է եւ ասում է. «թէկուզ իմանաս, գիտենաս աստղերու համբարքն սիրուն, անբարի գուրծն կորած է», այդպէս է ասում «Հարանց վարքն սիրուն, Աւետարանի խօսկերն՝ մարգարտէ կարգը սիրուն». նա քարոզում է, «թէ էս կենաց փառքն չուզես՝ էն կենաց ալմասն կուտան. թէ հոգուտ խաթիր չալ հագնես՝ զար քաշած ատլասն կուտան». Նա պահանջում է մեղքը խոստովանել եւ անձնուրացութիւն: Սակայն աշխարհն էլ իւրն է պահանջում. նա այդ քարոզից խելքի չի գալիս, նրա անձի մէջ նստած է անախտելի չար դեւը», որ մինչեւ դուրս չգայ, մարդ չի ուղղուիլ. խօսք ու խրատներով բան չի լինում, նրանց համար աւետարանի խօսքերը «լալ ու գովար են խոզի առջեւ ածած», ուստի «թէկուզ դպրատանն պահ տաս՝ ծեծով չի խրատուի խիւն... բեզասըլն ասըլ չի դառնայ. թոլով չի սպտակուի սեւն, ծուռ փետըն չի դրստի ռանդան»: Ուստի եւ Սայեաթ-Նովան ի զուր կամենում է դրստել իբրեւ «դուրդար» այդ ծուռ փայտը: Նրան չեն հասկանում եւ նրանից ուրախ երգ են ուզում, «խալխին համով զուլում անել» միայն: Բայց դեռ նա բարի է, ինքն իրեն մխիթարում է աշխարհի այդ անուղղելիութիւնից եւ կոչում. «ով քիզի լեղի պարքեւէ, դուն տո՛ւ շաքար», միայն պէտք է ջանք անել, որ իր «շուշէն չկոտրին, չխփին քար», եւ շարունակում է միաժամանակ եւս խալխին համով ծառայել:

Սակայն այս երկուութիւնը նրան հանգիստ չի թողնում: Նրա աչքի

տաղ (ԼԴ., եր. 136, գր. 1759 Թ.) կանգնած է չարունակ աշխարհի ունայնութիւնը մի պատուհանի պատկերով, որի միջից նայելով՝ տեսնում է կեանքի բազմատեսակ եղանակները. այդ պատուհանից մտիկ տուողը խոցւում է դաղերով, այնտեղ «սուտը չատացել է», ղուրթը ճամպայ չէ գնում, բարեկամները թշնամի են դառնում», «դովլաթն էյթիբար չունի»։ Կամ եր. 143, երգ ԼԷ. (1759 Թ.) «Շուռ էրիտ չարխ ու փալագն, դովլաթն միզնից խռով ա, ում հաքին հին չալ ին տեսնում, էլ չին ասում թէ էս ո՞վ ա». «Իմաստուննիրն չտեսան էս աշխարհիս հուտն ու համքն»։

Սակայն այդ ունայն աշխարհն էլ ոչ մի մարդու մնալու չէ, մահը պատրաստ է. ոչ ոք չի կարող ասել, թէ «առաւօտից մինչեւ մութն կարող է ապրել», քանի որ Աստուծու ձեռին «հեշտ է մարդու աշխարհք ել ու մուտքը»։ Եւ «Ջուրս գլխանի ռաչի վրէն ոջալն դրիլ է Թամքն», «մէր ու մանուկ բաժանուեցան, մանուկն էնդուր ունի լալու», եւ, որ ամէնից դըժուարն է՝ «Սատանէն մէ դամբ է դրի Ադամի զաթն որսալու. չատն սատանէն է տանում, վիրջն մնում է վա՛յ տալու»։

Այս ամէնն ի նկատի ունենալով գող ու սափան այլեւս չեն զուարճացնում երգչին. անցել է նրա «վաղուան քաղցր փառքը», նրա դառն վիճակը չատանում է հետզհետէ եւ մանաւանդ համբերութիւնը հատնում է, չի դիմանում խալխի դափին։ Նա կեանքից ձանձրանում է. «Մարթ համաչայ մէկ չի ըլի»։ Եւ այդ դառնութիւնը հետզհետէ աւելի մեծանում է, որովհետեւ «էրէկ լաւ էր, կանց վուր էսօր», իսկ ապագայի համար եւս յոյս չունի, քանի որ նա յաճախ յուսախաբուել է՝ «վաղէրումէն բեզարիլ իմ»։ Միանգամ արդէն այդ քրիստոնէական յաւիտենութեան հայեացքին հասած՝ այլեւս նա, անշուշտ, «խաղերից էլ պէտք է բեզարէր», ինչպէս որ բլբուլը լաց է լինում, երբ վարդի խարը չատանում է, այնքան կոկոն քաղում են, որ չեն թողնում ժամանակին բացուի վարդը։ Լալիս է, ողբում է երգիչը աշխարհի վրայ, ուր սուտը չատացել է, եւ ցանկանում է «բաղերից բեզարած բլբուլի պէս դուրս թռչել» աշխարհից, զի «լաւ մարթն էն է՝ գլուխն պահէ աշխարումս էյթիբարով» կամ «լաւ մարթն էն է՝ սիրով անէ բարի հրեշտակներու կամքն»։

Բայց ի՞նչպէս պէտք է պահել գլուխն աշխարհում էյթիբարով։ Շատ պարզ է այն ժամանակի հայեացքով։ Պէտք էր ուրանալ աշխարհն ու մարմինը եւ միշտ հոգու ետեւից երթալ։

Թէ ի՞նչպէս է հասկանում ժամանակակից մարդն այդ անձնուրացութիւնը, որ հետեւանք է այն հայեացքի, թէ՝ «աշխարհս միզ մնալու չէ, մալ անիլն ինչի՞ն է չահ» (եր. 136, 143), կամ «վուր չէ Ունիելի նման, կալ անիլն ինչի՞ն է չահ», չատ գեղեցիկ երեւում է Գ. երգից, եր. 52, գրած դեռ 1753 թուին։ Այդ է՝ նախ կրթել իրեն «հայա (ամօթ), ադաբ (համեստութիւն), ար (ամօթ) սիրելով», ապա «Աստուած, հոգի, եար (ընկեր, աւետարանական իմաստով) սիրել, «գիր, ղալամ, դաւթար սիրել»։ «Խրատ, սաբր (համբերութիւն) ու շար (արդարութիւն, դատաստան) սիրել», «աղքատ, ղոնաղ, տար սիրել», եւ վերջիվերջոյ «վանք, անապատ, քար սիրել»։ Այս է «Աստծոյ չարքումը», այս խրատներն են գրած «Հարանց վարքումը», «հալալ

մտիկ անիլ հացի ու աղի (արդարութեան), հպարտութիւն չանիլ, այլ խոնարհ լինել»։

Բոլորը կրօնաւորի համար եղած պահանջներ (նոյնպէս գիր սիրելը), որոնցով մարդ Աստծոյ դուր կը գար, բայց որոնցով «հոգու խաթեր մարմնու ումբրը կէս է լինում»։ Ուստի եւ դեռ 1753 թուին երանի է տալիս իրեն, եթէ միայն այդ կարողանայ անել։ Այդ աշխարհուրացութեան հայեացքը հետըզհետէ զօրանում է նրա մէջ, որքան աւելի նա յուսախաբ է լինում, եւ մեր երգիչը վերջապէս քաշւում է վանք, հակառակ իւր խոստմանը, թէ «քանի սաղ է Սայեաթ-Նովէն, չատ բան կուտեննիս, քամանչա»։

Սայեաթ-Նովան աշուղ է, եւ իբրեւ աշուղ իւր բանաստեղծութեան նիւթ ունի սէրը, որ երգւում է սովորաբար վէճերի եւ ուրախութիւնների ժամանակ։ Նրա երգերի մեծ մասը նուիրուած է այդ նիւթին, որ երգւում է աշուղական ձեւերով։

Սայեաթ-Նովայի այդ իդէալի նկարագիրը երբեմն մի կանխանմանութիւն է միայն, մի թեմայի զարգացում, որ նման ձեւերով արդէն չատ բանաստեղծներ արել են. գրեթէ բոլոր նմանութիւնները կարելի է գտնել 15—16-րդ դարու բանաստեղծների մէջ։ Եւ ինքը, Սայեաթ-Նովան անկախ չէ գտնում այդ ձեւերը, այլ չատ հաւանօրէն պարսկերէն կամ թուրքերէն երգերից պատրաստ առնում է, որին ապացոյց են եւ յանգերը՝ օտար բառերով։ Անհատականութեան կնիք գրեթէ չկայ։ Եւ եթէ մենք Սայեաթ-Նովայի տիկինը համեմատելու լինենք Աղթամարցու տիկնոջ հետ, ոչ մի առանձին տարբերութիւն չենք գտնիլ, որովհետեւ դա մի որոշ տիկին չէ, որ գովում են, այլ տիկնոջ՝ «արեգակնափայլ» երեսով տիկնոջ գաղափարը, գեղեցկութեամբ, եւ գրեթէ միայն արտաքին գեղեցկութեամբ կնոջ վերացականութիւնը։

Ամէնից առաջին տեղը բռնում է կնոջ արտաքին գեղեցկութեան գովքը, կնոջ պաշտամունքը, սիրոյ արտայայտութիւնը, մարմնական աննման գեղեցկութիւնը, որի «նման աշխարհիս մէջ չի տեսած» (Զ., 61, դ.). կամ՝ «թամամ աշխար պտուտ էկայ, չթողի Հարաչ, Նազանի. Զտեսայ քու դիդարի պէս՝ դուն դիփունին բաչ, Նազանի» (ԻԵ., 112 ա.)։

Ընդհանուր պատկերի մէջ, բնականօրէն, ամէնից աւելի գրաւում են աչքերը, որոնց համար զանազան նմանութիւններ է բերում.— «Օսկու մէջն մինայ արած աչկիրդ ակնակապ թաս է» (ԺԸ., 93, բ.), կամ՝ «աչկիրդ կարմիր վարդ, նուր բացարած տուխտ» (ԺԶ., 88 դ.)։

Դոշ ու թիկունք.— «բոյէմէդ չուրս մատն աւելի լցուիլ է դաշդ ու թիկունքդ» (Դ. 55, բ.)։

Ռանգդ չաքարի» (ԺԶ. 88 ա.)
«Ռանգդ փռանգի ատլաս է» (ԺԸ., 93, բ.)
«Քու տէրն բաղն ինչ կոնէ, քու հուտն ռեհան խս չինի...
«Աշխարքն ծով, դուն մէջըն նաւ, ման խս գալի, լանգ խս
անում» (ծփալ) (ԼԵ., 139, դ.)

«Ղուրբան իմ ծուցիդ նռանը» (ԼՁ., 141, բ.)
«Լիզուդ օսկէ ղալամի պէս». (ԽԱ., 151, դ.)
«Մէջկդ՝ հաղիդեմէն (գործիք՝ պղնձէ թել քաշելու) քաշած սիրմա մաւթուլի (արծաթեայ) նման է»... (Լ. 127, դ.)
«Երիք հարուր ու վաթսուն ու վից ամէն անդամդ ղարարի» (Դ. 55, դ.)։

Ցաճախ Սայեաթ-Նովան իւր եարին նմանեցնում է ծաղիկների եւ յատկապէս վարդի, սակայն վարդի եւ սոխակի այլաբանութիւն չի անում, այլ լոկ նմանութիւն. այլաբանական երգ չունի Սայեաթ-Նովան. ամէնից գեղեցիկ համեմատութիւնը իւր եւ իւր եարի վիճակի համեմատութիւնն է (Ժ. 73).

Ուստի՞ դու քաս, ղարիբ բլբուլ,
Դու մի՛ լաց 'լի, ես իմ լալու.
Դու վարթ պըտռէ՝, ես գօղալին,—
Դու մի՛ լաց 'լի ես իմ լալու։

Արի՛, բլբուլ, խօսի՛ բառըն,
Օխնըւի՛ քու էկած սարըն.
Քի վարթն էրից, ինձ իմ եարըն,—
Դու մի լաց 'լի, ես իմ լալու...

Բնութիւնն առհասարակ գրեթէ տեղ չունի. միայն եարի ման գալը պարտիզում (ԻԲ. 154)։ Սայեաթ-Նովայի սիրած նմանութիւններն են նաեւ թանկագին քարեր եւ մետաղներ։ «Անգին ակն վրէդ չարած՝ անբան օսկու ախտ իս, գօղալ»... (ԻԱ., 102, ա.),

«Սկանդարի Զուլղարի թողած ջաւահիր իս, անգին լալ իս,
Դանգն դանգի միչէն հանած, հիդքաշած մախալ մախալ իս» (ԻԱ. 102, գ.)։

Հագուստը եւ զարդը նոյնպէս գովասանքի առարկայ է.—

... Թէ խամ հաքնիս, թէ զար հաքնիս,
Կու չինիս զումաշ, նաղանի...

. . . . . . . . . . . . . . . .

Բարակ միչքիդ թիրմա շալն՝ նման է օսկէ քամարին.

. . . . . . . . . . . . . . . .

Ղալամն ձեռին չ'է կանգնում, մաթ չինեցիր նաղըշքարին։

. . . . . . . . . . . . . . . .

Դուն կրակ, հաքածդ կրակ, վո՞ւր մէ կրակին դիմանամ։

. . . . . . . . . . . . . . . .

Հինդու ղալամքարու վրէն ծածկիլ իս՝ մարմաշ, նաղանի։

. . . . . . . . . . . . . . . .

Դաստամազիդ թիլի մէչըն մէ շաղա մարջան է քաշած (ԻԵ., 112)։

Զնայելով Սայեաթ-Նովան ժամանակի բոլոր թանկագին բաներով գովում է իւր գոզալին, բայց եւ այնպէս յաճախ բառ չի գտնում գովելու·

«Եար, քեզ ինչո՞վ թարիփ անիմ՝ աշխարումս բան չմնաց·
Կրակէ ծովեմէն դուս էկած՝ ռաշ, ջէյրան իս ինձ ամա»։
ԺԸ., 93, դ.)։

«Ղումաշ ասիմ՝ չուրեղէն է կու մաշուի,
Սալբի ասիմ՝ ախըր մին օր կու տաշուի,
Ջէյիրան ասիմ՝ շատ մարթ քիզիդ կու յաշուի (համեմատուել),
Բաս վո՞ւնց թարիփ անիմ՝ միրա (երկին) իս, գոզալ։
Թէ մանուշակ ասիմ՝ սարեմէն կուսին,
Թէ ջաւայիր ասիմ՝ քարեմէն կուսին,
Թէ վուր լուսին ասիմ՝ տարրեմէն կուսին,—
Արեգագի նման՝ փարա (լոյս բոլորակ) իս, գոզալ։
(ԺԶ., 88, բ. դ.)

Ներքին գեղեցկութիւնը շատ քիչ է ոգեւորութեան նիւթ դառնում Սայեաթ-Նովայի համար, ինչպէս առհասարակ մեր ժողովրդական երգերի համար։ Բանաստեղծը բաւականանում է մի քանի ընդհանուր ակնարկներով· «դուն խամ էն գլխէն գոված իս, ես քիզ նուրմէկ գովիմ արի» (Դ. 55, դ.), բայց դեռ արտաքինն է գովում։ Կամ՝ «դուն էն գլխէն իմաստուն իս, խելքդ յիմարին բաբ մի անի» (Ը., 66, ա.), կամ ազգն է գովում «ասլդ ասլերում գոված» (Ը., 66, բ.), — «խօսկիրդ քաղցր քաղցր է, լիզուդ շաքար ու նաբաթ է» (ԺԴ. 84, դ., ԺԷ., 90, բ., ԺԸ., 93, բ.)։

Ինչպէս կնոջ պատկերի մէջ անհատականութիւն չկայ, նոյնպէս եւ յաճախ զգացումների արտայայտութիւնների մէջ տարբերութիւն չկայ· զգացումները միեւնոյն ձեւով կամ ֆորմուլով են արտայայտւում։ Հէյրան լինել (Թ., 69, բ.), այրուել սիրուց, «էրած խորված ման իմ գալի, մի տեղ չկայ մար ունենամ» (ԺԳ., 81, գ.), «Սիրտս էրից՝ ջէյիրանի նման ման գալդ», կամ՝ «վախում իմ թէ՝ ինձ էլ էրիս՝ անհանգչելի հուր իս, ախպեր», «Հուր իս էշխով կրակած» (ԺԱ., 75, ա. բ.), «Կրակ ընդած վառ իս էլի» (ԺԱ., 76, ե.), «Ինձ հուրեան, բիրեան արիր» (76, դ.)։

Սայեաթ-Նովան կնոջ պաշտամունք ունի եւ սէր է գովում, եւ սէրը երգում է կանխանման ձեւերով, բայց զուտ անձնական չեշտերով։ Այդ սէրը մի իդէալական գաղափար չէ, այլ մի իրական նիւթական զուարճութիւն, բայց ոչ ֆիզիկական կրքի զուարճութիւն, հեթանոսական սէր — Սայեաթ-Նովայի միտքը հեռու է այդ բանից, երկրաւոր զգայականութիւնից։ Եւ այդ սէրն անարատ մաքուր է։

Սէրը պէտք է հաստատ լինի (Ը. 66, դ.), եւ մարդ մի հատիկ եար ունենայ։ Այդպիսի սէր ունենալու համար պէտք է երկուսն իրար հաւասար լինեն (ԺԳ., 81, ա.)։ Այդպիսի եարն անգին է, որից ոչ մի բանով բաժանուել ու հեռանալ չի լինի, ոչ մարգարտով ու ալմաստով, ոչ մահով, ոչ ահով եւ ոչ շահի հրամանով (Բ. 50)։

Նրա անձնական զգացումը երեւում է դժբախտ սիրոյ մէջ, երբ եարը

նազ է անում (ԺԷ., 90 ե., Թ. 69, բ.) եւ հեռացնում է եարին (Ը., 66, գ.) ուրիշին լսելով. երբ նրա եարն իրենից նեղացած է եւ աշխատում է սիրտն առնել (ԻԸ., 119 եւ հաւատացնել, որ ինքը յանցանք չունի (Ը., 66, բ. ե. 58, ա.)։ Այդ ժամանակ կսկծում ու լաց է լինում անհատական կերպով (Զ., 62, ե. ԻԴ., 111, ե., ԺԸ., 93, գ.) կամ մահ ցանկանում (ԻԲ., 106, ե., ԺԱ., 103, ե.), որովհետեւ առանց սիրեկանի՝

«... ինչ կոնիմ սոյբաթն ու սազն,
Ջեռնեմէս վեր կոծիմ չանգիրն մէկ–մէկ,
Ձունքի ուչկ ու միտկըս իրար շաղեցիր,
Փահմէս կու հիռացնիմ յանգիրն մէկ–մէկ»։

. . . . . . . . . . . . . . .

«Առանց քեզ ինչ կոնիմ աշխարհիս մալըն...
Կու հաքնիմ մազեղէն, կու հաքնիմ շալըն,
Կ՚երթամ ու ման գուքամ վանքիրն մէկ–մէկ։
Բըլքամ մէ մարթ ռաստ գայ՝ վուր ինձ խրատէ.
Գո՛զալ, քու էչխեմէն սիրտըս ազատէ»։ (Է. 64)։

Եարից խռոված եւ հաստատուն երդում է ուզում՝ հաստատ երդում խոստանալով (ԻԵ. 112, ե.)։ Այսպիսի երգերի մէջ պակաս չեն հնչիւններ, որոնք իրօք մի փափուկ բանաստեղծի սրտից են բղխում ու մեզ տանում ի ցաւ եւ ի խնդութիւն։

Նա թափառել է ուզում իբրեւ աշուղ, երբ սիրեկանը մերժում է իրեն (Ը. 67, ե. ժ.)։ Աղաչում, խնդրում է գթալ իրեն (Զ. 61, գ. ը.), ասելով՝ որ պակսի՝ եարին կը պակսի (Ը. 67. ե.)։

Եւ իսկապէս Սայեաթ–Նովան դժբախտ է իւր սիրոյ մէջ. «Ինչո՞վ չ՚էլաւ, չռաստ էկա՞ր մէ յա՛ւ եարին, Սայեաթ–Նովա» (ԺԳ. 82, ե.)։ Նա դժբախտ [է], որ իւր սիրածն ուրիշին է պատկանում։

## 19-ՐԴ ԴԱՐԻ ՍԿԶԲԻ ԳՐԱԲԱՐ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆԸ

1. XIX դարի սկզբի մխիթարեան բանաստեղծները եւ նրանց նախորդողները։—Վերածնութեան առաջին շրջանի մարդիկը, հազիւ գրել–կարդալու եւ գրոց լեզուի ուսումը սովորած, առանց արտաքին ծանօթութիւնների, մի քանի կցկտուր ճարտասանական, տրամաբանական ու պատմական տեղեկութիւններ ստացած մի սերունդ, անշուշտ չէին կարող ոչ միայն բանաստեղծութիւն, այլեւ ընդհանրապէս արժէքաւոր գրականութիւն առաջացնել, մանաւանդ որ վերածնութեան գործը նպաստաւոր պայմանների մէջ չէր բուն երկրում եւ շարունակ ընդհատւում էր։ Եւ եթէ այդ մարդիկն արտադրէին էլ գրական երկեր, դրանք պիտի լինէին մեր հնի նմանողութեամբ պատմագրութիւն ու քնարերգութիւն։ Ուսումն ու գրագիտութիւնը եկեղեցականների ձեռին էր, եւ բնականօրէն գրականութեան մշակութիւնն էլ նրանք պիտի անէին. բայց հոգեւորականը իւր կոչմամբ արդէն ընդունակ չէ բազմակողմանի գրականութիւն եւ մանաւորապէս բանաստեղծութիւն

առաջ բերելու: Այդ շրջանի մարդկանց միտքն զբաղուած է գլխաւորապէս կորցրած ծանօթութիւնները հետ բերելով, գեղեցկի վրայ ոչ մտածելու ժամանակ ունէին եւ ոչ հնարաւորութիւն: Գեղեցկի բաւականութիւնը նրանք տալիս էին հին երգարաններ արտագրելով կամ տպագրելով, կամ, երբեմն տաղեր յօրինելով, որոնք շատ աւելի ստոր են, քան իրենց նմանողութեան օրինակները:

Այս նոր երգերի ու տաղերի նիւթն եւս կազմում են, հարկաւ, վարդն ու սոխակը, կամ խնջոյքի ուրախութիւնը, բայց ամէնից առաջ՝ կրօնական–քաղաքական գաղափարները: Ժամանակի ոգին էր այդպէս. կրօնական ջերմեռանդութիւնը մեծ էր, ուստի եւ պահանջ էր զգացւում ոչ միայն նոր կրօնական տաղերի ու գանձերի, այլեւ նոր աղօթքների: Նոյնիսկ ժողովրդական երգիչները, որոնց մէջ գլխաւոր տեղը բռնում է Սայեաթ–Նովան 18–րդ դարու երկրորդ կէսում, կրում են իրենց մէջ ժամանակի այդ ոգին:

Սակայն միայն քնարերգութեամբ ու աղօթքներով չի բաւականանում մեր վերածնութեան միտքը. 17–րդ դարում արդէն ձգտումն է երեւում նաեւ վիպական բանաստեղծութիւն առաջ բերելու. բայց դարձեալ կրօնական–եկեղեցական բովանդակութեամբ: Ուստի վէպի նիւթ են Ս. Գրքի եւ ուրիշ կրօնական պատմութիւններ, որոնք ոտանաւորի են վերածւում, ինչպէս եղել է եւ մեր հին գրականութեան մէջ: Եւ ինչպէս սիրոյ ու կրօնական տաղերը, նոյնպէս եւ այս բանաստեղծութիւնը շատ կոնվենցիոնէլ է, զուրկ կենդանի երակից, չոր ու ցամաք պատմուածքներ, եւ միայն ոտանաւորով հետեւակ գրուածք:

Տէր Կոմիտաս քահանայ:— Այս մեռած բանաստեղծութեան մասին գաղափար կազմելու համար բաւական է յիշատակել այստեղ Կ. Պոլսեցի Տէր Կոմիտաս քահանայի «Ոտանաւորք բանք ի գործս առաքելոց», որ տպուած է Կ. Պոլսում 1704 թուին: Հեղինակն ինքը գրքի վերջում ասում է, թէ մի պատմագիրք է տեսել, որի մէջ գրուած է եղել, թէ 536 թ. Յուստինիանոս կայսրի օրով «հռչակեալ Արադորոս՝ կիսասարկաւագ սրբուհւոյ եկեղեցւոյն Հռոմայ զարմանալի Փիլիսոփոս եւ վարդապետ տաղաչափութեանց» ոտանաւոր է դարձրել «Գործք առաքելոցը». ինքն էլ իմանալով, որ Հայոց մէջ չկայ այսպիսի բան՝ իւր կողմից տաղաչափում է այդ գիրքը, հետեւելով Ներսէս Շնորհալու «Յիսուս որդի» երկին: Բայց ո՞ւր «Յիսուս որդին», ո՞ւր սրա աշխատութիւնը. այնտեղ ստեղծագործութիւն կայ եւ ջերմ զգացում, որով համակւում է ընթերցողը. իսկ այստեղ սառն, մեքենայական տաղաչափութիւն միայն «Գործք առաքելոցի» բառերի:

«Զբանն առաջին զոր արարի
Սակս փրկութեան ամենայնի,
Ո՛, Թէոփիլէ այր բարի
Աշակերտ բանին ճշմարտի:
Զոր սկսաւ Յիսուս առնել
Եւ ապա մեզ ուսուցանել:
Մինչեւ յօրըն պատուիրելոյ
Սրբոց առաքելոցն իւրոյ:

Ի ձեռն Հոգւոյն վկայեալ
Ընտրեալ գնոսա եւ վերացեալ:
Որոց եցոյց զինքն կենդանի
Յետ չարչարանացն եւ խաչի:
Բազում արուեստս նոցա ցուցեալ
Յաւուրս քառասուն նոցա երեւեալ»:

Եւ այսպէս մինչեւ վերջը:

Աստաբատցի Աբրահամ վարդապետ:— Աւելի լաւ վիճակի մէջ չէ գրականութիւնը է՛ւ 18-րդ դարու վերջում, է՛ւ )-րդի սկզբում: Հայրենասիրական գաղափարը, որի վերջին դարու բանաստեղծութեան գլխաւոր չարժիչն է, դեռ չի զատուած կրօնական-եկեղեցականից: Այդ ներկայանում է կամ դեռ ողբի ձեւով, ինչպէս մեր հին գրականութեան մէջ է եղել. կամ թէ, ինչպէս դարձեալ յաճախ հնումը եղել է, կենտրոնացած է Էջմիածնի չուրջը, որի անունը ժողովրդականացնելու եւ սիրելի դարձնելու համար գրում են ներբողեաններ ու տաղեր: Թէ ինչ աստիճանի ցամաք ու սնանկ է գրականութիւնը այս մասին, այդ կարելի է տեսնել 1807 թուին Կ. Պոլսում տպուած «Ներբողեան սրբոյ Աթոռոյն Էջմիածնի» գրքոյկից, որ յօրինել է նուիրակ Աստաբատցի Աբրահամ վարդապետը «Զկնի Աստուծոյ՝ օրհնեալ ազգիս Հայոց հոգեւոր հայրն եւ մայրն՝ են երկոքին սոքա. այսինքն Լուսաւորիչն հոգւոց մերոց սուրբն Գրիգոր. որ ամս հնգետասան ի բովս չարչարանաց՝ որպէս ոսկի մաքրեցաւ. եւ Աստուածակերտ աթոռս սուրբ Էջմիածնի... Սոքա են յետ Աստուծոյ երախտաւորք մեր եւ բիւր բարեաց պատճառք. զորս պարտիմք ճանաչել. եւ առաւել սիրոյ արժանի համարել ըստ առաքելոյն: Թեսաղ. Ի. 12. 13. զշնորհս բարերարութեանցն մի՛ մոռանալ ըստ Սիրաքայ, ԻԹ. 20.: Եւ յամենայնի զոցանէ դոհանալ. ի հաւատս սոցա հաստատուն մնալ» եւ այլն: Մարդ սպասում է, թէ Էջմիածնի համար մի կենդանի ներբող դտնի, որի մէջ ցոյց տրուի նրա նշանակութիւնը հայ կեանքի մէջ, նրա կատարած դերը եւ տեղը, գտնում է մի աղքատիկ կուտակութիւն Սուրբ Գրքի վկայութիւնների, որ ծայրայեղ աստիճանի սքոլաստիկ մեկնութիւններով յարմարեցրած են Էջմիածնի վրայ:

«Վասն զի՝ որպէս ասէ Արիստոտէլ դլուխն ճեմականաց դասուն, ի սեռս իւրաքանչիւր իրաց՝ մին է առաջին եւ գովելի քան զամենայսն: Զորօրինակ՝ ի յիննեակ դասակարգութիւնս հրեշտակաց՝ առաջին եւ գովելի են Սերովբէքն. ի տասն երկինս՝ հրեղէն երկինքն. ի մէջ լուսաւորաց՝ արեգակն. ի չորս տարերս՝ հուրն. ի մէջ հողմոց՝ հարաւայինն. ի յօթն հրահալելիս՝ ոսկին. ի մէջ ականց՝ ադամանդն. ի մէջ ծաղկանց՝ վարդն. ի քաղցրահամ ուտելիս՝ մեղրն. ի կերակուրս՝ հացն. ի հեղուկ նիւթս՝ բաղասանն. ի վերինս՝ Սիոն. ի քաղաքս՝ սուրբ Երուսաղէմ. ի տասն սեռականագոյն սեռս՝ գոյացութիւնն. ի յառաքինութիւն՝ սէրն. եւ ի յաղօթս Աստուածաւոյց աղօթքն: (Զորոց ամենեցուն գովութեան պատճառս՝ տե՛ս ի մեկնութեան Հայր մերին, ի դլուխն եօթներորդ, յօրինեալն ի մէնջ:) Արդ՝ որպէս ի սեռս իւրաքանչիւր էակի՝ մին է գլուխ ամենայնի, առաջին եւ գովելի քան զամենայն, ըստ որում կարգաւ ցուցաք. ըստ այսմ օրինակի՝ ի վանորայս եւ

ի յեկեղեցիս Հայկազեանս ազգի՝ է ամենագովելի եւ առաջին՝ գլուխ եւ մայր ամենեցուն՝ Քրիստոսահիմն եւ Աստուածակերտ Աթոռս մեր՝ Սուրբ Էջմիածին։ Եւ սոյն այս ցուցանի՝ ըստ տասն ստորոգութեանցն Արիստոտէլի» (էջ. 16)։ — եւ ապա վարդապետը Արիստոտելի տասն ստորոգութիւններով ապացուցանում է, թէ ինչպէս Էջմիածինը գովելի է «ըստ գոյացութեանն, ըստ քանակութեանն, ըստ առնչութեանն, ըստ որակութեանն, ըստ երբին, ըստ ուրին» եւ այլն։

Բայց այդ դեռ բաւական չէ։ Գովելի է Էջմիածինը նաեւ նրա համար, որ եօթն սեղան ունի. իսկ սեղանների եօթն թուի մէջ մեծ խորհուրդ կայ, եւ ի՞նչ է այդ խորհրդաւորութիւնը։ «Նախ զի եօթն են մոլորական աստեղքն։ Երկրորդ՝ զի Նահապետն Նոյ առ ջրհեղեղաւն, յամենայն սուրբ անասնոց եօթն եօթն եմոյծ ընդ իւր ի տապանն... Երրորդ՝ զի թիւն եօթնեակ ի Թուաբանից կոյս կոչի... Չորրորդ՝ զի եօթն էին ընտիր եւ գեղեցիկ հասկքն՝ որք միանգամ ելանէին ի միում փնճի, ի նշանակ լինութեան եօթն ամաց, զոր Փարաւոն ետես եւ Յովսէփ մեկնեաց... Հինգերորդ՝ զի եօթն էին ճրագարանքն ոսկիաձոյլ Աշտանակին, զոր արար Մովսէս... Վեցերորդ՝ զի եօթն էին գիսակք գլխոյն քաջին Սամփսոնի»... եւ այսպէս մի ահագին շարք, ամբողջ վաթսուն երես, որոնց մէջ Էջմիածնի անունը բարձրացնելու համար բացատրում է եօթն թուի խորհրդաւորութիւնը։ Նոյնպիսի մի շարքով (61 երես) գովաբանելով Էջմիածնի հինգ կաթողիկէն, չորս սիւնը, ցոյց է տալիս հինգի եւ չորսի խորհրդաւորութիւնը, եւ վերջապէս գովում է էջմիածին անունը, եւ մինչեւ անգամ գումարում է տառերի թուական նշանակութիւնը եւ եզրակացնում. «Էջմիածին՝ խորհրդաւոր անուն, որոյ տառքն ըստ համարողական հաշուի բաղկացուցանեն զթիւ ՌՇՂԸ։ Եւ ասա հազար հինգ հարիւրն՝ (որ է երիցս հինգ), զամենասուրբ Երրորդութեանն եւ զհնգից զգայութեանց կատարեալ կենդանւոյ ցուցանէ խորհուրդս։ Ե· իննսուն որ է իննիցս տասն՝ զՔրիստոսի բնակելոյն ինն ամիս ի յորովայն սրբոյ Կուսին, եւ զիննեակ հրեշտակաց, եւ զաստիճանաւորացն եկեղեցւոյ՝ նշանակէ՝ խորհուրդս։ Այլ եւ ՝ցուցանէ զտասն երկինս եւ զտասնաբանեա օրէնս, զտասն խորանս, եւ զտասն ստորոգութիւնս, զտասն եղանակս ձայնից, զտասն հոլովս անուան, եւ զտասն զօրութիւնս հոգւոյն» եւ այլն։

Ահա թէ ինչպէս եւ ինչպիսի միջոցներով են մի դար առաջ աշխատել բարձրացնել Էջմիածնի անունը եւ կռուել օտար քարոզիչների դէմ։ Ինչ որ ասես՝ կայ այդ ներբողեանի մէջ, բայց Էջմիածինը չկայ։ Աբրահամ վարդապետը, որ իւր ժամանակի գիտնականներից մէկն է եղել, մինչեւ անգամ տաղեր է յօրինում Էջմիածնի համար եւ եղանակներն էլ նշանակում, թէ ինչպէս պիտի երգեն։ Նոյնիսկ աղօթքներ էլ է գրում ուղղուած Էջմիածնին, եւ այս ամէնը Աստուածաշնչի խօսքերը ժողովելով եւ յարմարեցնելով Էջմիածնի վրայ։ Դա «գիտնական» տիրացութեան մի արդիւնք էր, որ դրանից աւելի բան չէր կարող արտադրել «ի փառս Մօրն Հաւատոյ»։ Դժբախտաբար այդ անմտութիւններն էին գրաւում ժամանակի հասկացողներին։

Գրիգոր Գապասախալեան։— Նոյնպիսի մի տիրացութեան արդիւնք է եւ Կեսարացի Գապասախալեան Գրիգոր դպրի «Երգարանը», տպ. Կ. Պոլիս,

1803 թուին։ Այդ մարդն եղել է ժամանակի ականաւոր երգիչը, ծանօթ արեւելեան եղանակներին եւ երաժշտութեան, եւ անպայման գործնական նըպատակի համար հրատարակել է իւր երգարանը, որի երեսին «չարադրեցեալ» է գրում, բայց ունի եւ մի երկրորդ մաս, որի երգերն իրենը չեն։ Այստեղ ամենայն ինչ կայ, ե՛ւ թուրքերէն ու յունարէն երգեր իրենց թարգմանութիւններով, ե՛ւ աղօթքներ, ե՛ւ երաժշտութեան մասին։ Իւր յօրինածն առաջին մասն է, որի տաղերի մեծ մասի համար նշանակած է թէ ինչ եղանակով պիտի երգուին. եղանակները թուրքական կամ արաբական են։

Մի կողմ թողնելով աղօթախառն երգերը՝ «Աղերս առ Ս. Հոգին Աստուած», «Առ Հայրն երկնաւոր», «Առ Մայրն երանութեան» եւ այլն, ինչպէս եւ բարոյակրթական երգերը՝ «Երգ խրատօրէն» կոչուածները, մենք այստեղ տեսնում ենք, որ տաղասաց դպիրը սիրահար է բնութեան, գարնան, վարդի ու երգնակի (սոխակի), որոնց եւ վերաբերում են տաղերի խոշոր մասը։ Բայց նա բնութիւն երգելով հանդերձ բնութիւն չի տեսնում. նրա երգած երկինքը երկինք չէ, այլ միջնադարեան երեւակայութեան երկինքը։ Ահա թէ ինչպէս է սկսում նրա «Երգն ի վերայ երկնի»։

Ի յոչնչէ էացելոց.
Համաեղեալ գոյացելոց.
Նախաըսկիզըն՝ հանրիցնոցին.
Ի յԱստուծոյ դոյ ածելոց.
Կամարատես՝ մեծ շրջանակ.
Յօյժ աննըման՝ լայն ընդարձակ։

Եւ այսպէս, մինչեւ տների սկզբի տառերը կազմեն «Ի Գրիգորէ»։ Երկինքը բանաստեղծի համար է դեռ մի «գերակայան», մի «բախճանական տեղ ցնծութեան յորում բարիքն երանութեան», մաքից ու խելքից վեր մի լուսաւոր տեղ, մի «անսիւն խորանայարկ», լայն ընդարձակ, ուր սրբերի հոգլերն են կենում եւ տեղի է լուսնի եւ արեւի։ Դա կրօնական հայեացքով երկինքն է, «Վերին Երուսաղէմը», որ եւ մի ուրիշ երգով դարձեալ գովում է Գապասախալեանը։ Շատ հասկանալի է, որ այսպիսի երկինքը չպիտի տեսնէր բանաստեղծը եւ այդպիսի բնութիւնից ոչ մի տպաւորութիւն չստանալով՝ նրա երգն էլ բնութեան տրամադրութիւն չպիտի զարթեցնի։

Այսպէս եւ «գեղեցկատեսիլ յերեսս երկնի կարի ցանկալի, արծաթանման բոցաճաճանչ յոյժ զարմանալի» աստղերը նիւթ են դառնում տաղաւորի ոչ իրենց թողած տպաւորութեամբ, այլ իրենց մասին եղած աւանդութիւններով, հաւատալիքներով ու սնապաշտութիւններով։ Այսպէս եւ օդը, երկիրը, ծովը գովում է Գապասախալեանն առանձին երգերով, նա միայն ֆիզիկական եւ կրօնական աշխարհագրութիւն է գրում եւ ոչ թէ բանաստեղծութիւն։

Մեծ թւով երգեր ունի նուիրուած եւ վարդին ու երգնակին, որ սրան էլ հրապուրում են ինչպէս մեր միջնադարեան երգիչներին. բայց ոչ մէկի մէջ չի երեւում այն եռանդն ու կրակը, արտայայտութեան այն ուժը, որ ունին

Յովհաննէս Թլկուրանցին կամ Գրիգոր Աղթամարցին. չկայ ոչ մի նոր գեղեցիկ գիւտ խօսքի: Այստեղ էլ անշուշտ վարդն ու սոխակն իրենց սիրոյ տրխրութեամբ եւ ուրախութեամբ անբաժան են գարնան ծաղկալից, գեղեցիկ եղանակից: Այստեղ էլ վարդը բացւում է ու բուրում փայլելով. գարունը ծաղկում է. դաշտերը զարդարւում եւ ուրախանում են, գետերը հոսում, քամին փչում, Թռչունները կարկաչում քաղցրանուագ եւ վարդը կարիք է զգում, որ «զարմանատիպ» սիրահար սոխակը երգէ իրեն եւ կանչում է նրան, — եւ այս է ամէնը, ինչ որ Գրիգոր դպիրը հեղեղում է իր սիրոյ երգերի մէջ: Եւ այս ամէնը յօրինուած են հների փշրանքներով՝ միայն մի բարի նպատակով, որ հայերէն բառեր լինին յայտնի եղանակներն ասելու համար: Հետեւեալները Գապասախալեանի լաւագոյն երգերն են.

## Ի ՎԱՐԴԷ ՑԵՐԳՆԱԿՆ

Արի՛, սէր իմ, արի՛ երգեա ցնծալի.
Եղանակաւ՝ միշտ քաղցրաձայն բաղձալի.
Ահա եհաս գարուն ծաղկեալ՝ սխրալի.
Սիրտ վշտալի՝
Ես վիրալի
Վարանեալ.
Եմ ադալի՝
Միշտ խղճալի
Ընկեցեալ:

Ողբերգական երգով եկ ձայն արձակեա.
Ինձ լալագին եղանակաւ ձայնակցեա,
Ձայն դոելի՝ երգ ցանկալի դու երգեա.
Սիրտ վշտալի եւ այլն:

Լալով, ողբով, աղաղակաւ արտասուեմ.
Զքնաղ ձայնիդ՝ քոյին ահա ըսպասեմ.
Նուաւ յաւէտ՝ զուանալով հանդարտեմ.
Սիրտ վշտալի եւ այլն:
(Սորա ձայնն է՝ ողբերգական՝ լո՛ւր սէր իմ:
Պիր կիտէրիմ՝ պիր արտըմա պադարըմ):

## ԱՌ ԵՐԳՆԱԿՆ

Արի՛ երգնակ դու ցանկալի,
Շըքեղաձայն զարմանալի.
Գեղեցիկ ես Թռչնոց համայնց,
Երգեա սիրով միշտ ցնծալի.
Գովելի, գովելի, գովելի, գովելի լի լի:

Սիրով ցընծա՛ ոստոստելով
Քաղցրիկ ձայնիւ երգակցելով.

Ջայն քո սիրուն զարմանալի
Արի երգեա երգ ցընծալի·
Գովելի եւ այլն:

Սիրակարկաջ դու պանծալի,
Զարմանաձայն հիանալի·
Արժան բարի՝ երգ արկելոյ·
Երգեա՛, սէր իմ, միշտ սխրալի,
Գովելի եւ այլն:

Ուրախացեալ՝ ցընծա՛ սիրով·
Արի՛ փութով ձայնիւ երգով
Ահա է ժամ երգս առնելոյ,
Գարուն եհաս՝ հոտ բուրելով:
Գովելի եւ այլն:

Էվլիճ Ջայնիւ՝ սաէ սըմա:
Կէօրտիւմ պիր դօն՝ չէ յիրանայ:

Ղուկաս Ինճիճեան:— Նոյն անկենդան, կեանքից կտրուած և հետեւակ բանաստեղծութիւնն են անում մինչեւ երեսնական թուականները նաեւ Վենետիկի Մխիթարեանները: Առաջին մեծ ոտանաւոր գրողն է սրանց մէջ 18-րդ դարու վերջում Ղուկաս Ինճիճեանը (1758–1833): Ինճիճեան եւ բանաստե՜ղծ, չատ տարօրինակ է, բայց Մխիթարեանների յատկութիւնն է այդ. նոյնն եղել է եւ Ալիշանը եւ ուրիշները: Բայց մինչ Ալիշանն իսկական բանաստեղծ է, Ինճիճեանը միայն հնախօս եւ աշխարհագրութիւն ու պատմութիւն գրող: Եւ եթէ ես այստեղ կարեւոր եմ համարում կանգ առնել դրա, ինչպէս եւ նախորդների վրայ, միայն նրա համար, որ պարզ լինի թէ ինչ վիճակի մէջ է եղել բանաստեղծութիւնը անցեալ դարու առաջին քառորդում:

Ինճիճեանը, հարկաւ, ոչնչով չէ տարբերւում իւր նախորդներից ու ժամանակակիցներից, բայց եթէ նրանով, որ ինքն աւելի կարդացած ու զարգացած մարդ է. ուստի աւելի իմաստալից է գրում: Նա իբրեւ քերթող հանդէս է գալիս 1794 թուին Վենետիկում տպուած «Ամարանոց Բիւզանդեան» գրքով, որ երկու մասից է կազմուած: Առաջին մասի մէջ, որ ունի վերնագիրս՝ «Ծանօթութիւնք աշխարհագրականք առհասարակ նեղուցին Կ. Պոլսոյ», նա տալիս է «ի մի հաւաքեալ համառօտիւ գրեթէ զամենայն կարեւոր եւ ղերեւելի տեղեկութիւնս նեղուցին ի հին եւ ի նոր պատմութիւնս եւ զստորագրութիւն դրից նորա»: Այս աշխատանքը Ինճիճեանի հնասէր եւ փորձ գրչի արդիւնք է, որ այժմ եւս կարդացւում է իբրեւ բազմազան ծանօթութիւնների մի ժողովածու: Դա իւր ժամանակի համար մի գեղեցիկ ուղեցոյց է եղել Կ. Պոլսի: Բայց Ինճիճեանը դրանով միայն չի բաւականացել. կցել է եւ մի երկրորդ մաս բանաստեղծական՝ «Ամարանոց Բիւզանդեան», որի մէջ «ոտանաւոր չափմամբ ստորագրեն ծավեզերեայ գիւղօրէք նոյն նեղուցին», նախ եւրոպական ափը եւ ապա ասիականը:

Ինճիճեան բանաստեղծն այստեղ միեւնոյն վարդապետն էւ աշխարհա-

գրութիւն գրողն է: Չնայելով որ նա բնութեան գեղեցկութիւններն է նկարագրում եւ գովում, ուրեմն աշխարհական նիւթ է բանեցնում, բայց կրօնական նպատակի համար: Եթէ հին աստուածաբանները բնութեամբ Աստուծու գոյութիւնն էին ուզում ապացուցանել, հնախօս կրօնաւորն այս գրուածքում շարունակ զգալ է տալիս Աստուծու մատը բնութեան մէջ եւ բնութեան գովեստը շուռ է տալիս եւ դարձնում փառաբանութիւն Աստուծու: Վարդապետը բնաւ չի ուրանում ինքն իրեն. ուստի կարեւոր է համարում մի երկրորդ երգ եւս գրել, որի մէջ խրատներ է կարդում բիւզանդացիներին արծաթսիրութեան, անձնասիրութեան, աշխարհասիրութեան ու փառասիրութեան մասին: Եւ այսպէս նա տաղաչափում է մի «նախերգանքից» ու երկու երգից» կազմուած բանաստեղծութիւն, մօտ երեք հազար տող, քառեակներով տների բաժանուած, բոլորը 10-վանկանի տողեր՝ միայն իճ յանգով: Նա նորոգում է Շնորհալու ժամանակի ճաշակը յանգերի վերաբերութեամբ, որ նոյնիսկ Կոմիտաս քահանային դիւր չէր եկել:

Ինճիճեանը հարկաւ բանաստեղծութիւն չէ անում: Այս ահագին գանգուած տողերի մէջ շատ քիչ քառեակներ են պատահում, որոնք զգացում ունին. բանաստեղծութեան փոխանակ ճարտասանութիւնն է բռնում. առանց գործողութեան միակերպ սառն նկարագիր է: Բնութիւնը չի կենդանացնում ընթերցողին, որովհետեւ ինքը հեղինակն էլ, թէպէտ ազդուած է երեւում Բիւզանդիոնի գեղեցիկ տեսարաններից, ուր ծով, լեռ, հովիտ, դաշտ ու անտառ միացած են, բայց չի կենդանացնում իւր երեւակայութեան մէջ այդ բնութիւնը: Եւ հետեւանքը այն է լինում, որ հեղինակն իւր աշխատութեան այս մասի մէջ եւս՝ աւելի իւր տեղագրական եւ հնագրական հմտութիւնն է ցոյց տալիս, քան թէ բնութեան առաջացրած տրամադրութիւնը: Առաջին երգն ամբողջ մի ոտանաւորով աշխարհագրութիւն է. իսկ երկրորդ երգը մի հասարակ խրատ: Ժամանակի պահանջն է այդպէս ոտանաւոր շինել մի նիւթ, որի համար ոտանաւոր պէտք չէ: Այսպէս է, օրինակ, եւ Մկրտիչ Աւգերեանի (1762–1854), մեծ բառարան կազմողի «Բան գործնական» (1812 թ.), որ է գրաբար ոտանաւորով մի «կրթութիւն չորս բարոյական առաքինութեանց վրայ», եւ կամ Ման. Ջախջախեանի Արուեստ աստուածսիրութեան» խրատականը (1819 թ.):

Բայց չնայելով այս ամէնին՝ Ինճիճեանի գրուածքը իւր ժամանակին իւր տեսակի մէջ մի նորութիւն է եւ մի քայլ առաջ է տանում մեր բանաստեղծութիւնը: Նորութիւնը նիւթի ընտրութիւնն է. այն՝ որ Ինճիճեանը ցոյց է տալիս, թէ բացի կրօնականից, «խրատօրէն երգերից», էջմիածնի ներբողեանից եւ գարնան վարդ ու սոխակից՝ ոտանաւորի նիւթ կարելի է դարձնել եւ բնութիւնը, երգել բնութեան տեսարանները, կամ, ինչպէս ինքն է ասում, կենդանագրել Արարչի այդ գեղեցկագիր գործը, «կրկին նորոգել բնութեան ստեղծուածը»: Նա իւր երկի սկզբում, ինչպէս հներն անում էին, դիմում է «զուարթուն ոգուն», որ սովորեցնէ իրեն «գգոլ նիւթական յաննիւթ գոլ բանին» հեղուլ, բայց դժբախտաբար զուարթուն ոգին օգնութեան չէ հասնում եւ Ինճիճեանի միայն նպատակն է գովելի մնում:

Այս շրջանում անարժէք ոտանաւորներ են շինում եւ միւս Մխիթար-

եան քերթողները՝ Աւետիքեան, Ջախջախեան, Թոմաճեան եւ նոյնիսկ Բագրատունի, որոնց բանաստեղծութիւնները բաւական ուշ, 1852 եւ 1853 Թ.Թ. ամփոփուած են երկու հատորի մէջ՝ «Տաղք Մխիթարեան վարդապետաց»: Երրորդ հատորը, հրատար. 1854 Թ., իւր մէջ՝ ունի Եդուարդ Հիւրմիւզի (1799–1876) տաղերը, որ սակայն ես նկատի չունիմ՝ ձեռի տակ չունենալով:

Գաբրիէլ Աւետիքեան:— Գաբրիէլ Աւետիքեանի (1751–1827) վեց երգերից իսկական բանաստեղծութեան հոտ բուրում է միայն «Մօրն սրբոյն Աղեքսիանոսի եղերերգը», եւ հենց այդ պատճառով կասկածելի է թւում Թէ արդեօք արդեկորոյս մօր այդ սրտառուչ ողբը մի Թարգմանութիւն կամ նմանութիւն չէ՞ որեւէ եւրոպացի բանաստեղծի: Միւս երգերը՝ Տրդատի, Շուշանի, Գարեգին Սրուանձտեանի, Վարդանի ու Վահանի վրայ գրած տաղեր են, բոլորը կրօնական բովանդակութեամբ:

Մանուէլ Ջախջախեան:— Աւետիքեանի ոտանաւորներից չատ աւելի բարձր չեն Մանուէլ Ջախջախեանի (1770–1835) քերթուածները: Այդ ոտանաւորների արժէքը իմանալու համար հարկաւոր է իմանալ Թէ ինչպէս են յօրինուել դրանց մեծ մասը: Մխիթարեանների այս մեծ սերնդի մէջ մի տարօրինակ գրական սովորութիւն է եղել. նրանք զուարճացել են ոտքերով ու յանգերով եւ ոտանաւոր գրելով՝ իրար հետ հանաքներ են արել: Զբաղուած լինելով ուրիչ գրական ծանր աշխատանքներով՝ բառարան գրելով, Թարգմանութիւններ անելով եւ այլն, մէկ մէկ էլ պէտք են զգացել հանգստանալու եւ իրենց հանգստութիւնը գտել են քերթողութեան մէջ: Բայց քերթողութիւն ի՞նչ տեսակի: Ինչպէս հին աշուղները իրար հետ բաս մտնելիս՝ միմեանց առեղծուածներ էին առաջարկում յանգեր ու ոտքեր տալով, եւ մրցակիցը պէտք է իւր ոսոխի պատասխանը տար առաջարկուած յանգերով ու ոտքերով, ճիշդ նոյն ձեւով իրար հետ մրցում են եւ Մխիթարեան ընկեր քերթողները: Իրենց բառով ասեմ, նրանք յօրինում են «բոնայանգ» եւ «բոնակարգ» ոտանաւորներ: «Յորժամ տացի բանաստեղծին նիւթ ինչ հանդերձ յանգական բառիւք, եւ ըստ այնմ պահանջեսցի զտաղն, կամ Թէ քերթողն ինքնին՝ այլոյ ուրուք տաղի յանգաւոր բայիւք եւ չափովք յօրինեսցէ ինչ կամ դարձուսցէ նմին պատասխանի, այս ազգ քերթուածաց կոչի բռնայանգ»: Նիւթը եւ յանգն ու չափն ուրեմն տալիս են քերթողին եւ պատուիրում նրան, որ բանաստեղծէ եւ նա բանաստեղծում է «բռնայանգեր»: Բայց այս դեռ քիչ է. այստեղ քերթողն երեւի ազատ է դեռ տրուած յանգական բառերը դասաւորելու մէջ. բայց «եԹէ որով առեալն իցէ կարգաւ գծայլրայանգ յայնոսն՝ անփոփոխ նովին իւրումն անատերիւր պահեսցի տաղի, ասի յայնժամ եւ բռնակարգ»: Ահա՛ Թէ ինչով են զուարճանում այս քերթողները. նրանք «բռնադբօս» յանգեր» են չարժում:

Այսպէս Առան Սիսակեանը, այսինքն Արսէն Բագրատունին 1825 Թուին առաջարկում է Վահրամ Ռուբինեանին, այսինքն Ջախջախեանին (Մխիթարեան քերթողներն աշուղների պէս իրենց կեղծ անուններն ունին» գրել մի բռնայանգ եւ բռնակարգ ոտանաւոր հենց իրեն Ջախջախեանի այդ տեսակի քերթողութեան վրայ, ընդամէնը չորս տուն 15–վանկանի տողերով. առաջին տան յանգերը պիտի կազմեն լայնալին ճահին, խին, կապին բառերը. երկրորդինը՝ բարերար, կամար, չար, անդադար. երրորդինը՝ նպատակ, ախոր–

ժակ, օրինակ, ժամանակ․ *իսկ չորրորդինը՝* կենաց, հիւսեաց, բարեաց, ի բաց: *Եւ Ձախջախեանը գրում է այդ ոտանաւորը* (*Տաղք․ Բ․* 89)։ *Զարմանալ պէտք է, թէ ինչպէս նա այսպիսի բռնազբօսութեամբ դեռ կարողանում է իմաստ դնել իւր ոտանաւորի մէջ։ Բագրատունին ինքն էլ ապա նոյն յանգերով պատասխան է գրում Ձախջախեանի ոտանաւորին* (*Տաղք Ա․* 143)։ *Եւ այդ դեռ բաւական չէ, Ձախջախեանը նորից ուրիշ ոտանաւորով, նոյն յանգերով պատասխանում է Բագրատունուն, եւ սիրահարուելով այդ յանգերին՝ դարձեալ ուրիշ երկու ոտանաւոր էլ է գրում «Ցուսով խաբիմք» եւ «Յամենայնի խոհեմութիւն»։ Եւ այդ անում է նա մեծ սիրով եւ պարծանքով․*

*Եթէ դիպուած բռնազբօսիկ ինձ կարկառէ նպատակ,*
*Իմ մեղուօրէն ճախրէ զնովաւ քերթողական ախորժակ —*

*Ձախջախեանը վարպետն է այս կարգի ոտանաւորների․ ունի մօտ յիսուն այսպիսի քերթուած․ նրա ոտանաւորների մէջ բազմաթիւ են եւ այնպիսիները, որոնք միեւնոյն յանգերով են կազմուած, ինչպէս՝* 19 *քերթուած միեւնոյն մեհեւանդ–դահաւանդ, երթեւեկեւ տաբեկ եւ այլն յանգերով* (*Բ․* 68–82)։

*Ասել չի ուզիլ, որ այսպիսի ոտանաւորները լոկ մեքենայական արդիւնք են մի տեսակ սրամտութեան․ բանաստեղծութիւն որոնել այդտեղ կարելի չէ․ քերթողին տրւում է յանգ եւ ասւում է գովիր յոյներին եւ նա գրում է «Գովեստ յունաց»* (*Բ․* 62)։

*Զելլենական զարմիցն* ըզպերճ
*Առնում գովել նիւթ ոչ* ըստերջ:
*Վարժեաց ուսմամբ մեծըն* Սողոն
*Զազգ սովորեալ յանգործ* գողոն․
*Զորսըդ ձըկանց եւ* գլխեչափառ
*Իմաստութեամբ լից* լուսավառ․
*Եւ որք վարժեալ քաղել զհօրոտ,*
*Զարեսական ուսան* զորոտ: *Եւ այլն:*

*Բայց նոյն քերթողը նոյն յանգերով եւ հակառակն է գրում՝ «Պարսաւ Յունաց»:*

*Ազգ պանծալի երբեմն* պերճ,
*Ամենայնիւ կաս արդ* ըստերջ․
*Եւ զոր ուսոյց Թաղէս*, Սողոն,
*Եգիպտական էր այն* գողոն:
*Արհեստ քո արդ է* գլխեչափառ
*Կամ ձուկն որսալ լուսնոյն* ի վառ․
*Հեռի ի քէն նախնին* որոտ,
*Թութ քաղեաջիր տնկեա* հօրոտ: *Եւ այլն:*

Ապա նոյն բանաստեղծը զղջում է իւր վերջին գրուածքի վրայ եւ նոյն յանգերով գրում է «Ձեղջ ընդ պարսաւին Ցունաց»․

Թէ ազգն Հելլէն երբեմն ըզգօն եւ զինուք պերճ
Այդ յիմաստից յամենայն բարեաց բատերջ,
Մի զարմանար, ծնցի կրկին Լիկուրգ Սողոն․
Թողցեն դարձեալ համակեալ կան ի գողօն:
Ի նըւագիլ լուսոյն ծիւրի եւ խեչափառ․
Եւ պատարի յորժամ լուսինն լուսավառ․
Եւ երբ թխպին երկինք հողմուտ յամպրոպ յորոտ,
Եւ գեղեցիկն ի դաշտ տապաստ դընի հօրոտ: Եւ այլն:

Ի՞նչ կարելի է ասել այս ողայամիտ խաղերի համար, որ անում են Վենետիկեան քերթողներն իրենց հասուն տարիքում, եւ որ սահմանուած են միայն ընկերներին զուարճացնելու համար:

Առեր ահա՛ զոր լինձ ետուր յանդ ի վըսեր,
Խնդրուածոյդ մի՛ անլաող զիս դու ասեր․
Թէ քաղցրացի երգս անպաճոյճ քան ըղհանուրց,
Ցետ կարդալոյդ արկ ի մախաղդ եւ կամ քուրձ:

Եւ իսկապէս, «քուրձ ձգելու» բաներ են դրանք: Եւ բանաստեղծներն իրենք եւս, նոյն ինքն Ջախջախեանը մեծ բան չեն համարում այս տաղերը․

Գիտեմք անշուշտ նիւթեալս աւիշկ չէ ինչ ախորժ յօրինակ,
Եւ ո՞ գիտէ վարձահատո՞յց լիցի ներող ժամանակ:
Ոչ չուք անձանց այլ դիւրութիւն միայն խնդրեմք մեր կենաց․
Ոչ թէ պըսակ զոր բաղդն ագահ հէգ քերթողին ոչ հիւսեաց․
Բանդեալն եռմոս թէ մըմնջէ ա՞կն ունիցի ինչ բարեաց․
Իմ, Սիսակեան, լուր նըւագիս․ թէ չախորժես կաց ի բաց:

Այս «բանտեալ եռմոսները», չղթայակապ տաղերը, շատ բան չեն տալիս մեր մտքին, եւ ոչինչ մեր զգացումին: Այդ տաղերի մէջ Մխիթարեան քերթողները զբաղւում են իրենց առանձին խնդիրներով, ընկերական կեանքի մանր դէպքերով․ ոտանաւորով գովում են միմեանց, կարծես մի տեսակ սիրահարուած են մէկմէկու եւ իրար կրթել ու խրատել են ուզում: Նրանք փակուած իրենց վանական պատերի մէջ՝ իրենցից, իրենց գրական աշխատանքներից, իրենց բառախաղերից դուրս աշխարհ գրեթէ չեն տեսնում: Եւ այս ամէնը երգւում է ներդաշնակ, երաժշտական ոտքերով, լիահնչիւն յանգերով, մի խօսքով հիանալի տաղաչափութեամբ, բայց աւա՜ղ, միայն այդքան: Մարդ ցաւում է որ այդ գեղեցիկ տողերը, լիքը յանգերը չունին լի եւ հարուստ բովանդակութիւն․ որ այդ ներդաշնակ տողերից չի կազմւում եւ ներդաշնակ միութիւն յօրինուածքի․ այլ միայն կցկտուր, յաճախ անյարիր չարուածքներ են առաջ գալիս, լաւագոյն դէպքում հատ հատ առածանման, իմաստալից խօսքերով, որոնց վրայ դոնէ մէկ մէկ հանգչում է կարդացողի ծանրացած միտքը:

Բարոյական գաղափարները, որ Ջախջախեանը դնում է իր «բռնայանդ» եւ ոչ «բռնայանդ» ոտանաւորների մէջ, շատ սովորական վարդապետական քարոզներ են, բոլորն ընդհանուր բնաւորութեամբ: Աստուած իր գերագոյն իմաստութեամբ մարդկանց վիճակը պէս պէս է ստեղծել, որպէսզի հնարաւոր լինի աշխարհում ապրել. ուստի մարդ չպիտի դժգոհի իր վիճակից. որովհետեւ

Եթէ անցնիւր ոսկի թագից էր արժանի,
Ի քոյդ փարախ կամ յաղօրիս ո՞ տարժանի:
Կամ թէ գեղջուկ քո պէս մրէ անպէտ քարտէզ
Ո՞ր բան յայնժամ ըղձոյդ հեշտին բըրէր պարտէզ:

Մի հին գաղափար, որ զբաղեցրել է մեր վարդապետներին, այն է թէ աշխարհում անպէտք բան չկայ. աստուածային տեսչութեամբ, որ չպէտք է ուրանալ, ամենայն ինչ որոշ նպատակի համար է ստեղծուած.

Ոչ թօնք անպէտք եւ ոչ երաշտ,
Ոչ առիւծուց ոչ վագերց վաշտ...
Ոչ անպիտան տեսցես դու գիժ,
Եթէ յաչացդ առցես զբիժ...

Աշխարհի մէջ ամենաբարձր բանը, որ արժանի է երգչին կիթառին՝ է առաքինութիւնը միջնադարեան քրիստոնէական կրօնական իմաստով: Առաքինի է նա, որ «ճարտարապէս ընդոտնէ զընդդիմակից մարմին հեստ», որին չեն գրաւում աշխարհի փառք ու պատիւը, ճոխութիւնը, ոչ քաջութեան անունը, ոչ աշխարհի սէրը, որ յաղթում է կրքերին եւ որի ուշ ու միտքը միշտ Աստուծուն է ուղղուած.

Երբ նստի յառուակ, եւ կամ կողմանի ի ծաղկեայ պարտէզ
Տիթք չիւղք ամենայն զԱստուած նկարեն իբրեւ ի քարտէզ:

Ունեցածով գոհանալ, հող չտանել աշխարհում գանձ ժողովելու, որ մարդուս համար ցեց է: Թէպէտեւ ուսումնականներին չեն յարգում մեր ազգի մէջ, բայց միշտ պէտք է աշխատել, աշխատութիւնն ամէն բանի կը յաղթէ.

Վաստակք չըքեղք՝ իմ ժառանգ յաւերժակից պայազատ,
Անմահութիւն քանդակեալ նահատակիս ի ճակատ,—

Ահա՛ Մխիթարեան կուսակրօնի մխիթարութիւնը իր մենաւոր կեանքի մէջ: Ամէն բանում խոհեմութիւն է հարկաւոր եւ քաջ մտածողութիւն.

Թէ ոչ կըշռէ ակըն դիտող,
Ինչ որ արժէ ձիդ լայնալիճ.
Թէ ոչ ըղձամ գիտէ որսող,
Ջարժեն եւ խուռն հաւք ի ճահիճ:

Այս նիւթերի վրայ պիտի աւելացնել եւ այն, որ տաղերգութեան

տարկայ են դառնում Ջախջախեանի համար նաեւ կրօնական բաներ— Աստուածածնի ծնունդ, Փրկչի ծնունդ, սրբեր եւ այլն, ապա բուն Մխիթարեան ընտանեկան կեանքի դէպքեր, ուղերձներ, ձօներ՝ ուղղուած այցելուներին. իրենց «աստուածապատիւ» հոգեւոր տիրոջը, աթոռակալներին, նորընծաներին, «ի հանդէս ընդունելութեան վարդապետական գաւազանի երկուց նորընծայ վարդապետաց», «ի հանդէս պքեմաութեան», «ի հանդէս ուխտադրութեան» եւ այլն. բոլորը միայն Մխիթարեաններին, այն էլ միայն ժամանակակից Մխիթարեաններին հետաքրքրող բաներ, զուտ Մխիթարեան «հայրենասիրութեամբ» գրուած:

Ընդհանուր հայ ազգայինը, հայ ազգային վիճակը, խնդիրները չեն հետաքրքրում Ջախջախեանին, եթէ այդ խնդիրների մէջ չուզենանք դնել լեզուի այն երկար գովեստը — «ի վերայ լեզուի բան», որի մէջ սակայն հայ լեզուի մասին չէ խօսւում, այլ ընդհանրապէս լեզուի: Նոյնպէս «ի պարսաւագիրս նախնեաց երգիծաբանութեան» մէջ մարդ սպասում է գտնել գովեստ հայ նախնիների, բայց այդ խոշոր, բոլորը ար. յանգով կազմուած քերթուածի մէջ այն միտքն է յայտնւում, թէ ամենայն բան, որով ներկայ դարը պարծենում է, իւր սկիզբն ունի հին դարի մէջ, եւ միայն ի միջի այլոց հետեւեալ միամիտ ազգային սնափառութեան տողերն են մէջ գալիս.

Երբ Ցոյնն ի դաշտ՝ մեր ցրտահար
Ընդ վայրասուն ցիռ եւ իշեար,
Եւ կամ որսայր զանգօր ճագար,
Եւ բուտ քաղէր կաղին եւ խար,
Հայկ նախահաւ գիրապարար
Ցատք ցորեան եւ ի յաշար,
Ջեռնոյր թիկունք յիւր ի քովթար
Եւ ի սամոյրն ի յոսկեկար...
Բամբիշն Հայոց էր ի ժանուար,
Աշխոյժ մանկտին քաջ ձիավար...

Բանաստեղծութեան նիւթ դառնում են եւ գրքերի տպագրութիւնը, Ի միջի այլոց Խորենացու տպագրութիւնն եւս ոգեւորել է այս քերթողին. եւ պէտք է խոստովանել, թէպէտ եւ դարձեալ «բռնայանգ», բայց լաւագոյն տողերն է ներշնչել նրան.

Երգել խնդրես զանշուք Խորնի
Որ առ ինեւ պերճ քան զԱնի,
Որ զԱրամեան զարմ եւ համբաւ
Պայծառացոյց ի շուք անրաւ:
Այո՛ հնչեմ կերկեր ի փող
Քերթողահօր իմում ներբող,
Որ զիմս երգէ դիւցազուն Հայկ
Տոհմիս որդւոց արեւ եւ այգ.
Որ ինձ վիպէ զքաջն Արամ
Հիւսեալ նմին հիւսք անթառամ:

Քարենչան մեզ այս տարի,
Որ յիւր եղիտ բաղուկ արի,
Զնորայն կանգնել արձան արդար
Ի տիպ աչաց գործոց տիպար,
Տալ յընթերցուած ազգին Հայոց
Զորս են ի փառս եւ զոր ի խոց,
Զոր նայն սուլեաց քաղցր ի յառաջ,
Եւ կնքեաց յողբ ու ի թառաջ:

Պէտք է կարծել թէ Խորենացու Ողբը գոնէ պիտի ազդէր քերթողին, եւ նա այստեղ պիտի բարձրանար ընդհանուր ազգային վիճակին եւ իսկական հայրենասէր դառնար. բայց ոչ: Նա ողբում է միայն Հայոց ձեռագիրների կորուստը, մնացածն անտարբեր է նրա համար.

Ինձ զի՞ պիտին կոթողք եւ սիւն,
Զոր հուր վատնեաց ներկեաց արիւն.
Ինձ առիմէ՞ խոյր քո եւ բարձ,
Զոր աջ անդութ վաղուց եբարձ...

Կամ նոյն յանգերով եւ նոյն խնդրի մասին գրած երկրորդ բանաստեղծութեան մէջ.

Ոչ զամբարտակս եւ ոչ զսիւն
Ողբամ յարտօսր ողջամբ արիւն:
Զոր բաղդ Յոնեաց՝ բաղդն եւ եբարձ,
Զթագ ազգիս զգահն եւ զբարձ:

Եւ այսպէս, «Աստուած տուաւ եւ Աստուած առաւ», ուրեմն «Աստուծով մխիթարուիս»: Եւ այս «Աստուծով մխիթարուիսը» այն աստիճանի դեռ իշխում է, որ տեղ է գտել նոյնիսկ սգաւոր «Ոգի Հայաստանի» պատկերի տակ, որ երեւի առաջին անգամ այս մեծ Մխիթարեաններից մտածուած եւ զետեղուած է Խորենացու այս 1828 թուի տպագրութեան վերջում: Ահա՛ թէ ինչպէս է հնչում Զախջախեանի այդ ոտանաւորը՝ «Արձանագիր առ ոգին եղերերգակ ընդ կործանումն Հայկազեան գահու».

Ոգիդ վսեմ, զթագն եւ զբարձ
Թէ ինձ ողբաս զոր բաղդն եբարձ,
Մի՛ լար. բաղդին բարքն են անդարձ:
Թէ զբարձման սրդաս դու խանձ,
Լա՛ց, ա՛ռ եւ զիմ արտօսր անսանձ.
Ո՛հ, լա՛մ ըղձեղ հեռ եւ նախանձ:

Մինչ Խորենացու սրտից արիւն է կաթում, երբ յիշում է գահի անկումը, 19-րդ դարու ուսեալ վարդապետը, Յունաստանի ազատութեան օրերում նրա ողբի տակ ասում է. «Մի՛ լար. բաղդին բարքն են անդարձ»: Բայց եւ նոյն վարդապետը լալիս է եւ լացի հրաւիրում, որ այդ անկման պատճառն են եղել «հեռ եւ նախանձը»: Եւ ուրիշ բան էլ սպասել կարելի

չէր մի կրօնաւորից, որի համար բանաստեղծութեան գլխաւոր նիւթը ընդհանուր բարոյական խրատն է կազմում: Ահա թէ ինչ է ասում նա այս մասին մի բռնայանգ, բայց գեղեցիկ տողերով հարուստ քերթուածի մէջ՝ «Մուսայն առ Արամեան քերթողս».

Նիւթ քերթածաց նախ եղիցի ձեզ Արամազդ,
Գործք եղիւսեանց եւ ուղղութիւնք հանճարիմաստ.
Խոստումն ախտից եւ կրթութիւնք մտաց հրահանգ»...

Անշուշտ, անմարմին վերացական բարոյականը չէ, որ երգի նիւթ դառնալով պիտի կարողանար «զանհազներգակն ի յԱրամեանց ջնջել արատ», ինչպէս ցանկանում է Զախջախեանը վերոյիշեալ երգի մէջ, այլ բուն ազգային կեանքը, մարդուս թրթռուն սիրտը: Եւ այն, ինչ որ Զախջախեանը խրատներ կարդալով ուղղում է հայ բանաստեղծներին, դրանով իսկապէս իւր եւ իւր ընկերների երկերն է բնորոշում.

Առ ի՞նչ չարժիք դուք զերկնուղէշ սօս եւ նոճի
Առ սիւք հողմոյ, թէ բանիցդ յերգ՝ սիրտ ոչ ճօճի:
Կամ թէ քերդողն ամեհացեալ զերդ սէգ առիւծ,
Բաչ ծածանէ՝ ծեծէ զձեռ, բայց սիրտն է հիւծ.
Կամ թէ սրավար ասա անդ սուրայ իբրեւ թռչուն,
Զբօյն մռռանայ եւ ոչ գիտէ ո՞ւր իջէ չուն...
Են եւ քերդողք երկայնաթռիչք քան զՄասիս,
Յորոց ճախրել թէեւ պչնուս՝ խոնջեալ կասիս:

Մեր «սիրտը չի ճօճում» այդ «երկայնաթռիչ» բանաստեղծութիւնից, ու «խոնջացած ետ ենք կասում», որովհետեւ գրուածքի «սիրտն է հիւծ» եւ որովհետեւ բանաստեղծը իւր «բոյնը մոռանում է», բայց բոյնը ոչ այն վերի տողերի իմաստով: Բանաստեղծութեան բոյնը ժողովուրդն ու իրական կեանքըն է, որ չունի Զախջախեանը: Նրա ամբողջ բանաստեղծութեան մէջ միայն «ի սուրբ Վարդանաւս» բռնայանգում, գրուած 1828 թուին, հետեւեալ տողերն եմ գտնում ժամանակակից կեանքի մասին.

Նըստի մշակ ընդ հովանեաւ ի բարտի
Լայ դիւր փաստակ ծածկէ զլալիս զոր պարտի.
Հայի ի քիրտն յամարայնի 'ւ ի գարուն,
Ոչ իւր մընայ մեղուացն անմեղ գունդ պարուն:
Զհօտ իւր խլէ Մար յուղկահար չոյտ ի քայլ.
Ոչ թէ ըզմին որպէս ներող քան զայն դայլ:

Ահա թէ ի՛նչը պիտի լինէր մեր բանաստեղծութեան «բոյնը», որ վերջում միայն գտել է Զախջախեանը, բայց դժբախտաբար այն ժամանակ, երբ արդէն ուշ էր: Բայց նա մեր ապագայ բանաստեղծութեան այդ նիւթը գտել է կիսատ. նա շատ չափաւոր է իւր տենչանքների մէջ: Վարդանանց գործքը գովելով Եղիշէի նմանողութեամբ, նա խնդրում է.

Ո՛ւր Վարդանանք, զայս երգ ձօնէ իմ գուսան
Ընդ փունջ ծաղկանց որ յարենէ ձեր բուսան.
Վարձ ոչ հայցեմ զահ Պահլաւկաց հաւասար,
Ոչ զԱրծրունեաց զոր հիմնարկեաց Սանասար....
Դարձցի մաղթեմ անդրէն Մասիս եւ Մարփուդ,
Կանգնել ձեզ սուրբ տաճար ի կորդ ի մարմանդ...

Եւ այս հատկանշալի է մի բանաստեղծի համար, որ մի քիչ վերեւում Մուսայից Այրարատ հրաւիրելով՝ խնդրում է

Ոչ զԱրամեան երգաձայնել ինձ բաղդ յոյր
Զքաջահաղթ նախապըսակ կամ Պարոյր.
Եւ ոչ զարին վիշապայաղթ զոռ Տիգրան,
Շամփրեալ ըղթոք ի նիզակին սուր ճիրան.
Այլ Վարդանանց արեան զոր հեղ զոռ Սասան,
Լեր դրուագօք բարձրաձայնիւք վիպասան....
Ո՛վ երջանիկ սրբոյ զարուն գերդաստան,
Ի գա պանծա՛ ի գա ողո՛րմ Հայաստան.
Ոչ թէ ի Հայկ ոչ ի Տիգրան կամ յԱրայ,
Ոչ եւ բերրի դաշտ զոր ցանեաց քեզ Շարայ:

Հեռո՛ւ ուրեմն ամենայն ինչ որ աշխարհական է. հեռո՛ւ հայրենի աշխարհ եւ քաղաքական կեանք, եւ դեռ սրբեր ու սրբեր միայն:

Վերջում յիշենք եւ այս, որ 1789, 1804 եւ 1815 թուերին գրուած երեք քերթուածներ կան, — «Նուագ յաղթութեան ի հանդէս մենամարտութեան Որատեանց, Ողբերգեալ ի թատեր Մխիթարեանց», «Ի նենգախոշոշ մահ Յոսրովայ Մեծի յաւարտ ողբերգութեանն եղերերգ», «Ի թատերական ողբերգութեան Երուանդայ Հայոց արքայի»: Սրանցից յայտնի էր լինում, որ 18-րդ դարու վերջերում արդէն Մխիթարեանց [կողմից] հայերէն ներկայացումներ են տրուած, եւ երեւի Ջախջախեանը հայերէն, ի հարկէ, գրաբար, պիէսներ է գրել պատմական բովանդակութեամբ: Նոյնպէս Թոմաճեանի քերթուածների մէջ կան երկու երգ «Ցողբերգութենէ սրբոյն Արգըմանհի», գրած 1802 թուին:

Եղիա Թոմաճեան:— *Եղիա Թոմաճեանի* (1777—1848) *մեծ վաստակը մեր գրականութեան համար է՝ Հոմերոսի Իլիականի եւ Ոդիսականի թարգմանութիւնը. իբրեւ ինքնուրոյն բանաստեղծ սակաւաթիւ քերթուածներ ունի եւ շատ աննշան է, թէպէտեւ Ջախջախեանի չափ բռնայանդեր չի կազմում: Այդպիսիներն ընդամէնն երկու են թուով՝ «Ցարկածս իւր ողբ եկեղեցւոյն Հայաստանեայց», մի հին նիւթ, որ սա էլ դնում է իւր բռնազբօս յանգերի մէջ, ապա «Առ Հայաստան խրախոյս ի պարտութիւն Տաւղրիկայ ի Մանազկերտ»: Այս վերջին նիւթը նոյն յանգերով եւ յանգերի նոյն դասաւորութեամբ երգել է նոյն 1828 թուին եւ Արսէն Բագրատունին, երեւի մրցելով Թոմաճեանի հետ: Տաւղրիկի այդ պարտութիւնը Մանազկերտի մօտ, որ ոչ մի առանձին նշանակութիւն չի ունեցել թուրքերի յառաջխաղացման շարժման համար եւ բնաւ չի ազդել Հայաստանի բախտի*

վրայ, անչափ ոգեւորում է այս երկուսին եւս անշուշտ միայն այն պատճառով, որ «բանայանգ եւ բանակարգ» ոտանաւոր են գրում, այսինքն նիւթն եւ յանգերը տուողը պատուիրել է նրանց ոգեւորուել այդ նիւթով եւ խաչորացընել այդ դէպքը: Եւ այսպէս վարուել են մեր քերթողները: Բագրատունու քերթուածը՝ «Հայաստան առ Խուժաստան ի Մանազկերտ» անպայման շատ աւելի բարձր է քան Թոմաճեանինը, իւր թափով ու ուժգնութեամբ, որ առաջանում է սակայն ոչ թէ նիւթից, այլ զօրեղ խօսքերից: Բերենք մի մի հատուած երկսից եւս:

Գլուխ տարւոյդ հաս Նաւասարդ,
Վառեա՛ց հայկազն ի զէն ի զարդ.
Հաստահարուստ իբրեւ բարտի,
Ճօճեա զտէգդ որպէս պարտի:
Թագիդ, բարէ, եհաս դարուն.
Դու յարքայից անց ի պարուն:
Քո երկնաճեմ սար ի Մասիս.
Ահ արկանել ազգաց կասի՞ս.
Զի ցնծասցէ քաջն իմ Արամ,
Եւ մանկըտոյն Նորուն երամ:
Օ՛չ լիասցին իբրեւ Շարայ,
Իցի՛ւ առլէզք կանգնեն զԱրայ.
Զի զող մեղուդ Տուղրիլըն բոռ,
Տապաստ մեղուացն անկցի ի գոռ:
Եւ դու ըզթագդ առցես, Թորգոմ,
Ճաճանչ հատցէ չիջեալըդ մոմ.
Դո՛ւ բարձրասցիս գեղով նոճի,
Որ ի զեփիւռ անուշ ճօճի: Եւ այլն:

Իսկ Բագրատունին գրում է.

Ի գալ ամսոյն մեր Նաւասարդ
Զգեցան ազինք զինուց ըզզարդ,
Բարձրացաւ բախտ մեր զերդ բարտի,
Գունդ թշնամեաց մերոց պարտի.
Իբր այծեմանց հօյլք ի գարուն
Խայտան Հայոց կօյսք ի պարուն,
Եւ ի բոլորըս քո, Մասիս,
Որ հօվանի ոչ պակասիս,
Խռնեալ կաքաւ կայթէ Արամ
Որդւովք իւրովք երամ երամ:
Առատութիւն գայ քեզ, Շարայ,
Զիք Շամիրամ Դըժբախտ Արայ.
Հալածեցան իբրեւ ըզբոռ
Ի ծուխ ցաման մարտկացըս գոռ:

Նիստ կեր զմեղըր քո, Թորգոմ,
Զախ ատեղաց վառեա քեզ մոմ։
Ի բաց կացցէ շիրմաց նոճի,
Որ ի մռունչ տխուր ճօճի։ Եւ այլն։

Թոմաճեանի միւս ոտանաւորներն են «Ի սուրբ Դաւիթ մարգարէ», «Ի հարսանիս մեծաց պայազատաց բարերարաց ազգիս», «Առ ազնուազարմ պատանի Յ. Գարեգին Տատեան», — «որ ուսումնական յաղթանակաւ արքունի հրովարտակին զարձ առնէր ի Փարիզոյ ի հայրենիս անդր ընդ Վենետիկ անցեալ յայց վանացս»։ — Այս վերնագիրներն արդէն ցոյց են տալիս արժէքն այդ բանաստեղծութիւնների, որոնք քառասնական թուականների ծնունդ են։ Աւելի աչքի է ընկնում 1843 թուին գրած «Տաղերգութիւն ի մեծն Մխիթար Աբբայ»։ Հոմերոսի Ոդիսականի թարգմանչին վայել էր այսպէս նմանողութեամբ այսպէս սկսել իւր այդ տաղերգը.

Ինձ, երկին, զԱյրն երգեա, որ յազգէ հողածին
Վերառեալ հրաշացաւ որպէս մարդ երկնային.
Ինքն ողջոյն լուսազգեաց իբր արփի գերակայ,
Եւ զերկրորդն զխաւար փարատեաց Թորգոմայ։
Ինձ զարձեալ զայն ասա. այրն անյանց զի՞ զի
Բազմադէմ լըլկանօք տանջեցաւ յաշխարհի.
Բայց եւ ճետ զիւր ձգեաց ի Նորոգ գերդաստան,
Բերկրեցաւ ծնընդովք, բերկրեսցի եւ յապայն։

Սպասում ենք մի նոր Ոդիսականի, բայց բարեբախտաբար կարճ է կտրում Թոմաճեանը, մի երկու խօսքով նկարագրում է Հայաստան դրախտը, Ադամ, Զրհեղեղ, Նոյ, Հայկ։

Ծեաք սորա քաջազունք, որ ի վէպս հրաշանան.
Զի թէպէտ փոքր յածու, գործ ցուցին աննըման։

Եւ ապա Արամին, Տիգրանին ու Վահագնին յիշելուց յետոյ՝

Մի՛ այլ շատ, իմ քընար, զիմ ըղքաջս յուշ ածեր,
Զի մի՛ երդ քո յապայն ցաւ ածցես կարեվէր։

Հայաստանի վիճակը թշուառ է. աւեր այգի, աւեր տունք է նա.

... Հարուածեալ տուն Հայկայ դիւցազին,
Ա՛հ խպառ խըրթնացաւ, հետքն անգամ չերեւին։

Հայաստանը մի կոյրերի աշխարհ է, ուր մարդիկ

Զեռն ի ծնօտ գերարտօսր յորդ հեղուն ի յարկին,
Զայն յողորմ այր ընդ այր կողկողին, ո՞ւր է լոյս.
Այսպէս ազգն իմ նըստեր եւ անյոյս։...
Գուժ հարաւ Արարչին. «մինչեւ ցե՞րբ այդ խաւար
Թախծութեամբ պաշարէ զԱրամեանն ըղզաւառ»։
Զայն հնչեաց աստուածեան, «Հա՛պա լոյս եղիցի».
Եւ եղեւ լոյս արհի Մըխիթարս արփենի։

Մխիթարն ուրեմն է Հայաստանի լուսաւորիչ արեգակը եւ նրա ծնունդները միմեանց հետ մրցում են հայերի մէջ «իմաստից ճրագը» վառելու համար․

Ոմն յիմաստ ստուածեան, ոմն ի վարժըս բնական,
Կէսք յաշխոյժ Պառնասին, կէսք ի գիր հայկաբան։

Այդ ոտանաւորն իւր չօշափած խնդրով, թէպէտ թոյլ արտայայտութեամբ, աւելի մեծ նշանակութիւն ունի քան Մխիթարեան քերթողների միւս բազմաթիւ ոտանաւորները․ սրա մէջ գոնէ ազգի լուսաւորութեան հոգն է տարւում։ Բայց Թոմաճեանը գրանով ոչ մի առանձին նշանակութիւն չի ստանում մեր բանաստեղծութեան համար, որովհետեւ նրանից առաջ, ինչպէս կը տեսնենք, ուրիշները նոյնն արդէն երգել են աւելի գեղեցիկ եւ ուժեղ կերպով։ Մխիթարեան վարդապետն ուշացել է եւ նա իւր «Արփենի Մխիթարի» տաղերգութեամբ 1843 թուին, միայն թոյլ արձագանք է տալիս ուրիշների երգածին եւ սրբացնում Մխիթարին։ Թոմաճեանը ոչ նիւթի եւ ոչ ձեւի ստեղծող է, նա չէր կարող ուղղութիւն տալ մեր գրականութեանը։

Արսէն Բագրատունի։ Նոյնիսկ Արսէն Բագրատունին (1790—1866), Մխիթարեանների այս համբաւեալ քերթողը, իւր ստուարահատոր տաղերով, կարելի է ասել՝ ոչ մի շարժում չի մտցնում մեր բանաստեղծութեան մէջ։ Ես կրկին անգամ համբերութիւն ունեցայ սրա, ինչպէս եւ միւսների տաղերը ծայրէ ծայր կարդալու, շատ տաղեր նոյնիսկ կրկին ու կրկին անգամ, եւ ցաւում եմ, որ չգտայ արժանի այն գովեստին, որ տալիս են նրանք իրենք վենետիկեցիք առաջ եւ այժմ՝ համարելով նրան մեծ բանաստեղծ, «ատտիկեցի եւ լատին քերթողաց արժանաւոր անձն՝ իր լեզուովն, մտքովն ու սրտով», այնպէս որ «ոչ լոկ ազգային՝ այլ նոր ժամանակաց ընդհանուր մատենագրութեան ասպարիզին մէջ ալ, իրաւամբք եւ պատուով նշանաւոր տեղ մը կրնայ գրաւել»։ «Կը փայլի քերթողական եւ իսկաշնորհ հանճար, վառվռուն միտք եւ բացատրութիւն, զարդարուն գեղեցիկ լեզու մը։ Անկարելի է կարդալ Եղերք սոխակին, Գանգատ Պառնասայ եւ Դատաստան Ապողոնի, Յաղթանակ արդարոց, Դաշտիկն յաւար, ու անոնց նման տաղերը եւ չխոստովանիլ թէ ասոնք արտադրողը սովորականէ դուրս հանճար մըն է ու նախնի քերթուածոց աշխուժին ու եռանդով կրթուած միտք»։

Բայց դժբախտաբար այդպէս չէ։ Արդարեւ Բագրատունին անխոնջ պարապող մարդ է եղել․ լաւ իմացել է մեր գրաբարը եւ հին ու նոր օտար լեզուներ․ շատ կարդացել է Աստուածաշունչ, ինչպէս եւ Հոմերոս եւ ուրիշ դիւցազներգութիւններ, մեր հին մատենագրութիւնը․ ուսումնասիրել է օտար բանաստեղծութիւններ, որոնցից եւ թարգմանել է բաւական բան․ նա արտադրել է ինքնուրոյն շատ բան, — բայց այս ամէնով հանդերձ նա մեր գրականութեան համար ծառայել է ոչ իւր ինքնուրոյն բանաստեղծութեամբ։ Նա է՛ եւ կը մնայ իբրեւ թարգմանիչ, հայկաբան, քերականութիւն գրող։ Իսկ իբրեւ բանաստեղծ ոչ միայն արժանի չէ այն գովեստին, որ տալիս են նրան, այլեւ չի կարող իւր ժամանակի առաջնակարգ հայ բանաստեղծների շարքը դասուել։ Նա առաջին տեղն է բռնում միայն Մխիթա-

րեան այս առաջին քերթողների մէջ, բայց եւ իւր էութեամբ շատ էլ բարձր չէ նրանցից:

Նրա տաղերը, հրատարակուած 1852 թուին, կազմում են մի մեծադիր ստուար հատոր եւ բաժանուած են մի քանի մասերի՝ «տէրունականք», «կրօնականք», «բարոյականք», «կենցաղականք», «սթափականք», եւ ապա «թարգմանութիւնք»: Ի՞նչ է այս տաղերի նիւթը. ինչո՞վ է հետաքրքրում եւ ոգեւորում Բագրատունին. ի՞նչ նորանոր գաղափարներ է արծարծում նա իւր երգերի մէջ:

Նրա «տէրունական» տաղերը նուիրուած են Քրիստոսի ծննդին եւ մոգերի երկրպագութեանը: Նիւթն ուրեմն շատ հին է եւ մեր շատ բանաստեղծներից յաճախ երգուած: Բագրատունին եւս իւր երիտասարդ հասակում, երեւի նոր կրօնաւոր դարձած, 1811—1814 թուականներին իւր հարկն է վճարում այդ հին նիւթին: Առաջին տաղն՝ «Ի ծնունդ Տեառն», որ գրուած է 18-րդ դարու իտալացի նշանաւոր բանաստեղծ Մետաստազիոյի (1698—1782) նմանողութեամբ, իսկապէս մի գեղեցիկ քերթուած է շնորհալի ու փափուկ անուշութեամբ, կենդանի ու հարուստ երեւակայութեամբ, թէպէտ եւ սովորական գաղափարներով. այն է՝ մանուկ Փրկիչը գարնանային մի առաւօտ է ծագում մարդկանց համար, մի ճշմարիտ ոսկեղէն դար բանում, գթութիւն ու սէր, հաւասարութիւն ու խաղաղութիւն բերելով աշխարհ: Եթէ Բագրատունին բաւականացած լինէր միայն այս քերթուածով, շատ էլ չէինք ցաւիլ. բայց նրա գրիչը բեղմնաւոր է, եւ հէնց սկզբից հակուած է դէպի վիպականութիւնը. ուստի եւ նրա կրօնական զգացումին չէր կարող գոհացում տալ միայն «ըստ Մետաստասեայ» քնարերգութիւնը: Պէտք է նորից մի քանի անգամ նոյն բանն երգել մեծամեծ քերթուածներով, երկար, վիպական տողերով, առանց սակայն մի որեւէ խորութիւն մտցնելու նիւթի մէջ. այլ, ընդհակառակն, ծանծաղացնելով այն, եւ ոչ միայն մտքերի, այլեւ խօսքերի եւ նոյնիսկ հատուածների կրկնութիւններ անելով: Այսպէս, օրինակ, ամբողջ տասնութ տող 1812 թ. գրած մի քերթուածից, առանց այլեւայլութեան, բառացի անում գնում է 1813 թուին գրած մի ուրիշ քերթուածի մէջ:

Բագրատունին իւր այս հասակում արդէն երեւում է տարուած է հեթանոսական դիւցազներգութեան: Բայց ի՞նչ աւելի անդիւր եւ անպատեհ՝ քան Փրկչի խոնարհ ծնունդը վիպել հեթանոսաբար եւ Քրիստոսին անուանել «վեհազուն ծնունդ անմահին Ոլիմպեան» (եր. 29), եւ կամ «Ծիրանեփառ» հայր Աստուծուն դնել Ոլիմպոսի կատարին, ինչպէս հոմերական Զեւս, բարձր գահի վրայ: Այսպէս, ծնւում է մանուկ Յիսուսը անշուք այրում. հաւատքը անձնաւորել իբրեւ մի լուսազգեստ, պատուած կոյս, ներկայ է նրա ծննդեանը, բայց երկբայում է թէ նորածին մանուկը լինի նա, որին չորս հազար տարուց ի վեր սպասում է ինքը: Այդ ժամանակ նա

Կոչէ ի սըրտէն զարտօսր զթառաչ զաղերս մաղթանաց:
Եւ հոգւոց ելեալ սաէր առ Նոսա դիմօք սըգազգեաց:

Բաւական չէ, որ Հաւատքը, վերացական գաղափարն անձնաւորեալ է, նրա արտասուքն ու մաղթանքներն եւս, ըստ հին մեկնաբանների, անձնա-

ւորեալ են այստեղ. եւ Հաւատքը պատուիրում է դրանց գնալ Բարձրեալի մօտ եւ հարցնել թէ արդեօք մարում ծնուածը նա՞ է, որ պիտի գայ: Եւ ահա այդ արտասուքն ու մաղթանքները սեւազգեստ խմբով, թեւերը բաց են անում, գլխակոր, աչքերը խոնարհած հասնում են Ողիմպոս, պատում են Ծիրանեփառի բարձր գահը, լաց ու կոծով փարում են նրա ծնկներին եւ ասում նրան ինչ որ պատուիրել էր Հաւատքը:

Խոնարհեաց բարձրեալն ի վերին գահուն զունկն իւր անմոլար
Անժըպիտ դիմօք զաղերսըն լսել, սակայն հեզաբար:
Առ ապա ի վեր ըզգլուխ իւր ահեղ եւ զուլան կամար,
Ի շարժել յօնից սասանեալ դողաց Ողիմպեայ կատար:
Եւ ո՞ հանդարտէր ի լուր պատգամաց լեզուին ազդարար.
Հայեցաւ յերկիր, ձայն ետ որոտման ի սոյն յայս տիպար:

Ճիշդ ինչպէս ամպրոպային Զեւսը Ողիմպոսի գլխին: Նա Հաւատքի դեսպաններին բացատրում է թէ նորածինն իւր որդին է եւ ապա կանչելով հրեշտակների բանակը՝ հրամայում է, որ գնան պաշտեն իւր որդուն.

Եւ ընդ բարբառոյն որոտաց երկին շանթից ի փայլակ,
Հոգւոց անմահից ծածանեալ յերեր սոսափիւն բանակ,
Եւ երկրպագեալ տէրունեան ոտից գընան յանդաստակ,
Գըլուխ ոսկեվարս լուսաթեւ թըռչին արի պատանեակք:

Հրեշտակներն իմաց են տալիս եւ հովիւներին, որոնք նոյնպէս գալիս են երկրպագելու նորածին արքային:

Այս միեւնոյն նիւթը, ինչպէս եւ մոգերի երկրպագութեան մասին քերթուածը՝ «Ի յայտնութիւն Տեառն» նա վերածած ունի նաեւ բեմական ձեւի, բաժանուած չորս փոքրիկ արարուածների, երեւի Մխիթարեանների աշակերտական թատրոնում խաղալու համար: Դրանք առաջին հայ օրատորիաներն են, կրօնական թատերգութիւններ, որոնց ներկայացման համար առանձին բեմական յարմարութիւն չի պահանջւում: Բաղրատունին այստեղ էլ ներշնչուած է անշուշտ Մետաստազիոյից, որը նոյնպէս ունի բաւական թուով օրատորիաներ: Գործողութիւնը ի հարկէ շատ պարզ է, չկայ դրամատիկական զարգացում եւ ոչ բնաւորութիւնների ուսումնասիրութիւն. դրանց, ինչպէս պէտք էր, փոխանակում է կրօնական–բարոյական այլաբանութիւնը, որով երեք մոգերի տեղ հանդէս են գալիս անձնաւորեալ Հաւատք, Յոյս եւ Սէր, եւ ապա իշխում է Աստուածային հրաշալիքն ու սքանչացումն այդ հրաշալիքի վրայ: Բայց դժբախտաբար սառն է հնչում Բաղրատունու քնարերգութիւնը, եւ մանաւանդ միջի երգերը չունին այն ցնծագին խանդավառ յափշտակութիւնը, որ անհրաժեշտ է:

Ինչպէս էլ լինի, Բաղրատունին իւր այս կրօնական դրամաներով մի մեծ նորութիւն է մտցնում մեր գրականութեան մէջ, մի բոլորովին նոր տեսակ, որ մինչ այդ գոյութիւն չի ունեցել մեզնում: Արդարեւ, ինչպէս տեսանք, Ջախջախեանի եւ Թոմաճեանի ոտանաւորների մէջ յիշւում են 1789, 1802 եւ 1804 թուերի համար «Մխիթարեանց թատր», կամ «Թատե–

բական ողբերգութիւն», բայց Բագրատունու այս օրատորիաները, գրուած 1812 եւ 1813 թուերին, ինձ ծանօթ հնագոյն գրուածքներն են իրենց դրամատիկական ձեւով, թէպէտեւ քառասուն տարի յետոյ միայն հրատարակուած, ուստի եւ ոչ մի ազդեցութիւն չթողած մեր գրականութեան վրայ:

Բագրատունու «Կրօնական» տաղերը պէտք է հասկանալ կրօնաւորների եւ կրօնաւորութեան վերաբերեալ: Դրանք նուիրուած են նորընծայ կրօնաւորեալներին, այս կամ այն ձեռնադրութեանը, սրա կամ նրա սքեմ ընդունելուն, նորընծայ բարեկամների առաջին պատարագին, Մխիթարեան Աթոռակալի ընտրութեանը, օծմանը եւ այլն, — բոլորն էլ ըստ աւուր պատշաճի յօրինուած ոտանաւորներ, Մխիթարեան ընտանիքի մէջ տեղի ունեցող դէպքերին հանդիսաւորութիւն տալու համար: Տաղերիս նիւթից հէնց կարելի է գուշակել, թէ ինչպիսի գաղափար պիտի արծարծուի դրանց մէջ: Դա հոգու եւ մարմնի, երկնքի եւ երկրի միջնադարեան կռիւն է: Պէտք է կռուել աշխարհի բռնակալ սիրոյ դէմ, որ մարդուս հոգին շղթայակապ, քշում է դէպի խաւար անդունդը. պէտք է յաղթել այդ կործանարար սէրին եւ ամաչեցնել սատանային, որ մարդուս թշնամին է: Եւ այդ նորընծայ կրօնաւորողները, նորոգուելով անունով ու գործով, իբր քաջ զինուորներ մարտընչում են չար թշնամի հրեղէն սպառազէնների դէմ. եւ այդ նրանք կարողանում են անել, որովհետեւ կատարելով ամենամեծ գործը, այսինքն իրենք իրենց ինքնակամ նուիրելով Աստուծուն իբրեւ զոհ, դառնում են հրեղէն հրեշտակներ եւ սարդենի պսակներով ելնում են դէպի երկինք, մտնում Փրկչի տունը՝ երկնային կամարը, ուր յաւիտեան պիտի ապրեն: Կրօնաւորը նման է փիւնիկի, որ ինքն իրեն ողջակիզելով՝ հրաշալի կերպով կրկին նորոգւում է յաւիտենական կեանքի համար:

Այս է ահա՛ այդ կրօնական տաղերի նիւթը, որ անհրաժեշտօրէն չարունակ հեղհեղում է քերթողը, քանի որ բոլորը միանման դէպքերից առթուած բաներ են: Դա մի շատ հին նիւթ է, որ շատ աւելի գեղեցիկ կերպով երգել է Կոմիտաս կաթուղիկոսը՝ Հռիփսիմեանց մի Անձինքի մէջ, որի խորութիւնն էլ չունին Բագրատունու այս տաղերը: Հռիփսիմեանք իրենց նուիրելով Քրիստոսի սիրուն՝ դառնում են Հայաստանի փրկութեան պատճառ. բայց եւ մեր բանաստեղծն անկեղծ սրտով ուրախանում է իւր նորընծաների ձեռնադրութիւնների համար, ուրախանում է նրա կարծիքով եւ «հարսն անարատ Հայաստան», որովհետեւ

Արդէն սարսին սանդարամետք ի խաւար,
Եխած զմատն արիւն ակամբ Բելիար,
Զի յաջորդէ Յեսու զՄովսէս յամս յամայր
Քակել զամուրս, թափել ժանիսն ընդ աւար:

Աթոռակալին նուիրուած քերթուածների մէջ մեր քերթողը մեծ թեթեւութեամբ չափազանցութեան մէջ է ընկնում, ուժգին տողերով գովելով նրան իբրեւ Աստուծու ընտրածի, եւ զուտ մխիթարեան տեղական դէպքը խոշորացնելով իբրեւ մի համազգային բան.

Զարթիր, զարթիր, տուն Սիսակայ, զարթո՛ եւ պար նուագածու.
Հայրենի մեր աշխարհին սուրբ թագաւոր օծաւ իշխան,
Առէք տաւիղ կընդընդոց փող եւ բամբիռըն Գողթան,
Գողթան չըռինդն յարուցէ զըլուրս եւ զանտառ
Ցաղթող երգոց ձայնիւ գոչել մըրցական
Ըզխոնարհ միտս իմաստնոյն՝ ըզսիրտն ի տէր սիրոյն ի վառ:

Այդ նոր առաջնորդը, «Թագաւորը», որ յաւելեալ կոչում ունի «Դի–տապետ Սիւնեաց», է մի արեգակ, որին երգում է տիեզերքը, որովհետեւ նա ձմեռուայ կապանքը քանդում է եւ այլն:

Ո՞վ է սա նոր արքայ եկեալ ի Սիւնիս,
Անձաւք լերանցըն Սիսակայ հարցանեն:
Ընտրեալն է դա եթերին նորապըսակ տէր երկրիս,
Գայ ի պարտէզ քո սիրելի շունչ հարաւոյ ի հիւսիս.
Հոյլ վարդից եւ շուշանաց եւ համասփռամ ցիր նըկարէն
Փըթթեանդ ոտիւք տէրունեան գարշապարաց լուսեղէն:

Ահա թէ ինչպէս բարձրացնել գիտէ Բագրատունու Մուսան իւր մեծա–ւորին: Եւ ինչի՞ համար, որովհետեւ

Ցաւուրց Մուշեայ պակասեցին հարք որդւոց,
Պակասեցին ի տուն Հայկայ պետք հարանց,
Մինչեւ յարեաւ Մըխիթար, մինչեւ յարեաւ դէտն Ազգնց,
Որ այդ յերկնից պատշգամէն յառեալ ի մեր յոյժ լալոնս,
Զի՞ յամէ մեզ, ասէին, աթոռակալ ժառանգ մանկանց:

Եւ այժմ այդ ուշացած աթոռակալն ընտրւում եւ օծւում է:

Մխիթարեանց այս սովորութիւնը, որ կարծեմ Կ. Պոլսից է ծագել, անցնում է եւ Կ. Պոլսի վրայով Հայոց եկեղեցու մէջ եւ երկար ժամանակ, կարելի է ասել մինչեւ մի տասն ու հինգ տարի առաջ, էջմիածնում եւս պարտք էին համարում գրաբար ճոճուն ոտանաւոր ուղերձներով շնորհա–ւորել կաթողիկոսի գալուստը, օծումը, նոր տարին եւ այլն: Դրանք քնա–րերգութիւն չեն հարկաւ, այլ միայն մտածուած յանգեր ու ոտքեր, որոնց մէջ սակաւաթիւ տողեր միայն ունին զգացմունքի չեշտ: Դրանց կատա–րելատիպը կարելի է համարել ահա՛ Բագրատունու այս քերթուածները, որոնց մէջ փայլուն արտաքին, զարդարուն լեզու, փարթամ ասացուածներ՝ որքան ասես՝ կայ, բայց ի զուր կը լինի որոնել զգացմունքի ուժեղութիւն, եթէ չասեմ զգացմունք. իսկ իմաստ ու գաղափարի նկատմամբ դատարկու–թիւն է իշխում:

Նոյնպիսի չնչնութիւն են ներկայացնում գաղափարներով եւ «բա–րոյական» տաղերը: Աշխարհումս խաղաղ կեանք ասածը չկայ, այլ միայն ցաւ ու աղէտ, թախիծ ու տագնապ.

Գանձեալ կան քեզ աղէտք ցաւոց դարան,
Սրտի մտաց երերական

Բքայորդոր ձմեռն ալեաց խուժան
Փոթորկայոյզ ծով դառնութեան:

Աշխարհս մի ծով է եւ մարդս նրա վրայ մի նաւ, որ ալիքների ձեռին խաղալիք է դարձած, դիւաշունչ հողմը առնում տանում է դէպի նաւաբեկութիւն, — մի հին գաղափար եւ նոյնիսկ նմանութիւն, որ սակայն Բագրատունին մանրամասնութեան մէջ նորոգում է: Նոյնպիսի մի նորոգած ձեւով երգում է նա վերջին դատաստանը, որ մեր հին բանաստեղծների սիրած առարկան է եղել եւ որի ժամանակ երեւում է որ վերջին յաջողութիւնը ոչ թէ անօրէնն ունի, այլ արդարը:

Բագրատունու «կենցաղական» կոչած տաղերը, որոնք թւով ամենից շատն են եւ լի գովեստի արժանացած, նիւթով շատ աւելի բարձր չեն: Դրանք մասամբ ուղղուած են իւր ընկերներին. մէկի մէջ իւր սէրն է յայտնում, միւսի մէջ իւր շնորհակալութիւնը ստացած պարգեւի համար. կամ թէ լացով ճանապարհ դնում իւր ընկերին. մի չորրորդի մէջ գանգատւում, որ իւր սրտի հատոր ընկերն իրեն նամակ չի գրում: Կան եւ կաղանդի շնորհաւորութիւններ իրենց հոգեւոր տիրոջը կամ «Առ կարդակիցն ճանապարհորդ ի Հնդիկս օգտախնդիր ազգիս», իսկ թէ ինչ է այդ օգուտը՝ չի իմացւում. այդ կարդակիցն արիութեամբ ծովեր է անցնում, սրտում ունենալով ազգի սէրը:

Հայկ կառուցող հայրենեաց
Զքեզ որդի դաւանեաց.
Պարթեւն արթուն եւ ցանկալին քո Սահակ,
Մխիթարայ զօրավարք՝ քեզ հարկանեն փողոց հըռչակ.
Տես արդէն, տես ի տըխուր դէմս հայրենեաց
Քաղցր շողեալ ըղժըղխտ որդեգորով քո գըգուանաց:

Կան եւ ուղերձներ նուիրուած Աղեքսանդր Ռափայէլ Ղարամեանին նրա գալուստը կամ ծնունդը շնորհաւորելու համար, որովհետեւ նա դպրոց է բացել: Մի քերթուած Ռուսաց Աղեքսանդր Բ. կայսեր այցելութեան առթիւ. ուրիշները Լեւոն ԺԲ. պապի Ուրբանեան դպրոցի սաների հետ ճաշկերոյթի առթիւ, եւ այլն: Եւ վերջապէս բռնայանգ խաղեր Զախջախեանի հետ, եւ ահագին թւով ոտանաւորներ նուիրուած Տիւզեան ընտանիքի որեւէ զուտ ընտանեկան դէպքի, ինչպէս ծնւում է մի երեխայ, պէտք է ոտանաւոր գրել. մեռնում է մէկը՝ դարձեալ ոտանաւոր է հարկաւոր. հիւանդութիւնից առողջանում է մի ուրիշը՝ ինչպէ՞ս կարելի է ոտանաւորով խնդակցութիւն չյայտնել. հապա երբ հարսանի՞ք է լինում, ի հարկէ պէտք է հարսին գովել... Բագրատունին այդ բազմաթիւ տաղերի մէջ դառնում է Տիւզեանների տանու քերթողը, որ իւր՝ նրանցից վայելած բարիքների համար գրաբար յանգերով ու ոտքերով վարձահատոյց է լինում: Դրանք գրչի վարժութիւններ են միայն երբեմն ձիգ ու երկար տողերով, եւ սահմանուած են միայն մասնաւոր մարդկանց սրտերը շոյելու համար:

Նրա կենցաղական տաղերի մէջ շատ գովւում են «Դաշտիկն յաւար, եզերք մշակի», որ մի ութվանկանի զուգայանգ ոտանաւոր է մեծավերջ

եւ չափի պատճառով հէնց աշխուժ եռանդով է ընթանում։ Բովանդակութիւնը մի շատ հասարակ բան է։ Երիտասարդ որդին ծերունի հօր հետ, քաղաքից հալածուած, գալիս բնակւում են բնութեամբ հարուստ մի ամայի դաշտում. մշակում են. հինգերորդ տարուայ վերջը մշակութիւնը տալիս է իր արդիւնաւէտ պտուղը։ Այդ ժամանակ հայրը մեռնում է, եւ որդին մեն մենակ է մնում ու ասում է.

Այն ինչ արդարն յինէն գնաց,
Վեհն յեթերէ զմեզս իմ յիշեաց.
Ցիւրմէ գընդէն եւ ասպատակ
Առնուլ վրէժ արագ արագ։

Իսկ թէ ի՞նչ է արել որդին, ի՞նչ մեղք է գործել նա, որի համար Աստուած վրէժ է առնում, յայտնի չէ այդ։ Անշուշտ մի մեղք գործել է, որ ասպատակաւորները երեք կողմից վրայ են տալիս, աւերում են արտ ու այգին, տիրում երկրին եւ իրեն մշակին էլ «հանեալ գանիւ ու ի քարշ ընդ երիզուտ վարեն զիս գարշ»։ Եւ նա այնուհետեւ մի մխիթարութիւն ունի, — յիշելով իր անցեալ աշխատանքը ողբալ։

Նախաբանն այնպէս է, որ մարդ սպասում է մի դառնագին զօրեղ ողբի, մի զգացմունքների բուռն զեղման.

Մելպոմենէ, հար ինձ քընար
Երգել ձայնիւ ողբերգաբար...
Լացցեն նուաղ լերանց փապարք,
Մըրընչեսցեն ձորք եւ անտառք.
Երեսք մարգաց հարցեն դալուկ,
Արտօսր հեղցեն սողեալ առուք.
Ցաւերժահարսանց պար գեղեցիկ
Ձեռն ի ծնօտի նըստցին լըռիկ.
Զի մեր դաշտիկն յաւար եղեւ,
Ցոյս վաստակոցս եղ ի դերեւ։

Բայց այդ նիւթն աւելի վիպական-նկարագրական է քան քնարական։ Բնութեան նկարագիրները շատ ընդհանուր են եւ ամէն տեղի. մշակութեան եւ աւերմունքի նկարագիրը նոյնիսկ համաչափ չէ տարուած, եւ վերջը բանաստեղծի թափը թուլանում է եւ սառն է հնչում այն մասը, երբ հեծեծագին ողբը պիտի լինէր։ Գուցէ կարելի է այլաբանութիւն համարել այս քերթուածը եւ Հայաստանի պատկերը տեսնել մէջը, բայց այդ կը լինէր ձըգձըգուած բացատրութիւն։

Նիւթով շատ աւելի ստոր բան է եւ միւս գովուած քերթուածը «Ի մահ սոխակին եղերգ հովուի», որի գեղեցիկ մասը հէնց սկիզբն է.

Աչք գեղեցիկ ցօղագին
Լացէք զմահ սոխակին։
Վա՜յ եւ եղո՜ւկ ինձ հիքիս,
Սուգ եւ ի յիմ սիրելիս.

*Զամենեսին մի խաւար*
*Դընէ յարտօսր անդադար։*
*Մի՛ գիս, մի՛ գիս ըսփոփէք,*
*Մի՛ դիւր սըրտիդ տայք երբէք.*
*Զի սէր սոխակն իմ լըռեաց*
*Սան իմ սիրուն երգասաց,*
*Զի սէր հաւիկն իմ մեռաւ*
*Սան իմ սիրուն անպարսաւ։*
*Նըզով ի սեւ օրն եւ ժամ*
*Յոր գիւր տարմին լիք երամ,*
*Օրն եւ տեղին սեւ նըզով՝*
*Ուր տեսի զնա մօտ երգով։*

*Եւ այս բոլորն ինչո՞ւ համար։ Մի արճեշցի հովիւ մի անգամ սրինգ է փչում։ Լսում է մի սոխակ նրա նուագը, մօտենում է եւ ինքն էլ երգում է։ Հովուի խնդրի վրայ այդ սոխակը նախ նստում է նրա ուսին, եւ ապա*

*Անդուստ ածեալ ըզթեւերն*
*Ի ծայր սըրնգիս գայր նըստէր։*
*Ելեալ եւ իմ մեղմաքայլ,*
*Երգ փոխելով այլ եւ այլ*
*Եկի ՚ւ ի տուն իմ մըտի։*

*Հովուի կինը սրնգի ծայրից ընդունում է սոխակին, փայփայելով դնում է վանդակում, ուր երգելով նա զուարճացնում է հովուին եւ իւր ընտանիքին։*

*Սակայն ի սեաւ մանգաղէ*
*Ժպիրհ մահուն ո՞վ ապրէ։*

*Մի ամառ այդ սոխակը սատկում է եւ կարծես աշխարհը կործանւում է. կարծես այդ սոխակից էր կախուած ոչ միայն հովուի, այլեւ աշխարհի բախտը։ Եւ ողբում է ու ողբում հովիւը ու չի մխիթարւում։*

*Ո՛հ, մի՛ ստիպէք երկարել,*
*Սիրտ ոչ բերէ զբանիս թել...*
*Ոչ բըժըշկի սըրտիս խոց...*

*Եւ այսպէս մօտ երկու հարիւր տողանի մի ահագին քերթուած, որի մէջ այլաբանութիւն էլ կարելի չէ լինում տեսնել, ուստի եւ ծաղրական մի բան է դառնում իւր մեծավայելուչ լրջութեամբը։ Ծաղրելի է դառնում մանաւանդ եւ նրանով, որ արճեշցի հովուի բերանից լսում ենք՝ Ամինդաս, Անակրէոն, Տիբուլ, Որփէոս, Ոսիան, Բարդ, Պռոմեթեւս, Առիւծ լիբեան, Հիմալայք եւ այլն, եւ այլն։ Եթէ կլասիկական կեանքից առած ոտանաւորների մէջ, ինչպէս «Ի մահն Կեսարու», կարդում ենք ժողովուրդ արխեան, դիք եւ կամ դից անուններ, այդ հասկանալի է, որովհետեւ նիւթն է պահանջում այդ։ Բայց երբ մի արճեշցի հովիւ է այսպիսի անուններ արտասա-*

նում եւ կամ նոյն ինքը Բագրատունին մխիթարեան մի վարդապետ, այդ արդէն տաղտկալի է:

Եւ Բագրատունու ամենամեծ ծառայութիւնը մեր գրականութեան համար՝ այն է, որ նա այդ կեղծիքը՝ կեղծ դասական ուղղութիւնը մտցրել է մեր բանաստեղծութեան մէջ: Կրթուած լինելով կլասիկական գրականութեան վրայ, նա կարծում է թէ աստուածները կամ դից առասպելները, որ յիշում են հին բանաստեղծները, մի բանաստեղծական պաճուճանք են միայն եւ այդ պաճուճանքը կարելի է եւ հայ կեանքի քերթուածների մէջ գործածել: Նրա համար դրեթէ չկայ Աստուած, այլ աստուածք, դիք, անմահք: Եւ այդ անմահները մի քանի քերթուածների մէջ վխտում են՝ Մուսա, Մելպոմենէ, Պոլիմնիա, Մնեմոսինէ, Պիդաս, Արամազդ, Ապողոն, Պիմպլայք, Փայթոնք, Փեբոս, Արէս, Պոսիդոն եւ այլն եւ այլն. նոյնպէս Հելիկոն, Պինդոս, Պառնաս եւ այլն եւ այլն. դրանից հետ բազմաթիւ ակնարկութիւններ հին կլասիկական առասպելների: Ընթերցողն անպայման պէտք է ձեռի տակ ունենայ մի յատուկ անունների բառարան, ապա թէ ոչ՝ բան չի հասկանալ Բագրատունու լաւագոյն համարուած քերթուածներից: Որովհետեւ, օրինակ, ի՞նչ կը հասկանայ մարդ առանց բառարանի հետեւեալ երկտողից՝

Մեզ տիտոնեան հարսն սիրած
Պարզէ գգլխով վրան ներկած:

Բառարանը միայն մեզ տեղեկացնում է, որ Տիթոն եղել է Տրոյացի իշխան, Պրիամոս թագաւորի եղբայրը, որին իր գեղեցկութեան պատճառով սիրում է Արշալոյսը, Ավրորան, եւ անմահացնում նրան: «Տիտոնեան սիրած հարսն» ուրեմն արշալոյսն է, եւ փոխանակ պարզաբար ասելու թէ «մեզ արշալոյսն գգլխով պարզէ վրան ներկած», Բագրատունին վերի տողերն է կազմում: Ջախջախեանն իւր լաւագոյն քերթուածի մէջ, «Մուսայն առ Արամեան քերթողն», դրում է հետեւեալը.

Բառք անապակք՝ որպէս ուսոյց հաւ ձեր Թորգոմ.
Բայց ոչ մտայլք՝ մինչ լուցանել լապտեր եւ մոմ.
Կամ ի Տարօն չուել պանդուխտ կամ ի Դըւին,
Մեռելահարց՝ զի՞նչ այն բառից ձեզ միտք թըւին:

Բագրատունու քերթուածները հասկանալու համար ահա՛ հէնց այդ միջոցներին պիտի դիմել: Այդ պատճառով թէկէտ եւ քանի քանի անգամ կարդացի նրա գոված «Առ գանգատ Պաննասեաց եւ դատաստան Ապողոնի» տաղը, որի մէջ քառասուն-յիսունից աւելի դիցաբանական անուններ միայն կան,— բայց շատ քիչ բան հասկացայ: «Լապտեր եւ մոմ» էլ վառեցի, բայց զարմեալ գոհ չեղայ թէ իրօք կատարելապէս ըմբռնել եմ այդ քերթուածի միտքը: Այո՛, իմացայ, որ Առանը, այսինքն բանաստեղծ Բագրատունին, իրեն երեւակայում է հովիւ Բիւրակնեան լեռներում, իւր տաղավարում ճաշում է զմայլելով բնութեան գեղեցկութեանը: Այդ ժամանակ յանկարծ վերեւից տեսնում է իջնում են

Կառըս կրկին երկաձի քառահոլով անուագործ,
Ութոտանի երիվարք ի դիլ դոլով քաջափորձ:

Այսինքն երկու, ոտանաւորով գրած նամակներ է ստանում, որ եւ առիթ են լինում այս քերթուածը գրելու,—ասած է ծանօթութեան մէջ, թէ չէ ընթերցողն ինքը չէր հասկանալ: Եւ ապա դժուարանում եմ ասել որոշ բան, բայց եթէ այն, որ հեղինակը մեծ տենչանք ունի մեծ բանաստեղծ դառնալու սրաթեւ Պեգասի վրայ նստած՝ Պինդոս բարձրանալու եւ մեծ բանաստեղծների հետ անմահութեան մահով մեռնելու: Բայց «չիք սէր Կամենայց, ո՜հ, յանտերունչ իմ գրոհիս· սակաւ բնատուր վեհ ոգի՝ աստուածաստեղծ մեծութիւն», ասում է քերթողը: «Պարք Մուսայից հայկազանց փախեան ի գոգ Ադրիոյ», այսինքն Վենետկի Մխիթարեան վանքը· բայց այդտեղ էլ նրանք բանաստեղծութեան համար պահանջուած յարմարութիւնը, հանդիստն ու պարապը չունին: Իսկ Հայաստանը հո՛ բնաւ յարմարութիւն չունի բանաստեղծներ ծնեցնելու համար· բայց մի ժամանակ այդպէս չէ եղել, մեր բուն երկրում էլ մի ժամանակ մուսաները զուարճացել են:

Ինչքան այս քերթուածի մէջը մութ եւ դանդաղ է, այնքան վերջին մասը կենդանի է եւ գեղեցիկ, որովհետեւ խօսում է իրական կեանքը, սիրտը: Բանաստեղծը մտքով սլանում է Հայաստան, բայց ինքն օտար աշխարհում է, որ նման չէ իւր երեւակայած եդեմական աշխարհին:

Եւ դառն ողբոց յիշատակ, ով ցանկալի հայրենիք,
Անդ էր երբեմն հեշտասուն քո Մուսայից ճեմելիք...
Բիւրակն ի ծիր ծաղկազուարճ բիւր խոխոջիւք բարեհամ
Թայթայ ի բոյլըս հոտից, հազար երէ խուռներամ.
Փըչէ հովուիկ նուրբ սըրինգ, հօտք ըդկընի իւր դըրդին,
Նաւի գողտրիկ օրիորդ, կըթէ զըստինըս նոցին:
Հայլ վըտակին կարկաջոտ, անդ Երասխայ քարավէժ
Եւ ծիածան ի ցընցուղն՝ հերքել սաստիցն ըզվըրէժ...
Երկինք ջերին կապուտակ՝ ամպք ոսկեփայլ շուրջ ի խիտ,
Շաղն ի ցօղել շայեկան ի ծոց երկրին մարգարիտ...
Անդ է հոգւով իմ Մուսայն, սակայն մարմնով աստ պանդուխտ
Ի խորշ նըստի Ադրիոյ յեղափուր ծովուց ի քերցն ուխտ:...

Քերթուածի այս գեղեցիկ վերջը, որ ես ամբողջը չբերեցի, որից կարծես ազդւում է Գամառ Քաթիպան իւր «Իմ սոխակին» երգը երգելիս, — գոնէ նմանութիւն կայ, — է եւ միակ հայրենասիրական արտայայտութիւնը Բագրատունու քերթուածների մէջ: Այո՛, ուրիշ դէպքերում էլ յիշում է նա Հայաստանի անուններ, բայց հայրենիքը հեռուից մշուշով պատած է երեւում նրան· հայրենիքը եւ հայրենի յիշատակութիւնները երգի նիւթ չեն դառնում, այլ միայն իբրեւ մի արտաքին ձեւ օգնում են նրան, ճիշդ ինչպէս եւ յունական աստուածների, աշխարհագրական տեղերի անուններն եւ նրանց առասպելներն ու զրոյցները:

Մի կողմ թողնելով մի քանի պատմական անձերի վրայ տաղերը, ինչպէս եւ «սթափական» բունայնդերն «ի հերխայն», «անէծք ի ճանճս», որոնց

մասին խօսել չարժէ, — տեսնում ենք որ Բագրատունու բանաստեղծութիւնների նիւթը ամենամեծ մասամբ հասարակ բաներ են. նա աղքատ է եղել մտքերով եւ նրա մտքերն ու տրամադրութիւնն ընդհանրապէս պրոզայիկ են։

Ինչի՞ մէջ է ուրեմն քերթող Բագրատունու արժանիքը։ Երկու բանի մէջ, նախ՝ նա բնութիւն սիրող է, գիտէ զգալ եւ նկարագրել բնութիւնը. եւ ապա՝ նա հասարակ ու պրոզայիկ նիւթերն եւս հարուստ ու ճոխ լեզուով արտայայտել գիտէ։ Կարելի է ասել Բագրատունին առաջիններից է, ի հարկէ ժամանակով, մեր նոր գրականութեան մէջ, որ կարողանում է իսկական բնութիւն տալ, լինի այդ ընդարձակ նկարագիրներով, թէ կարճ պատկերների ու նմանութիւնների մէջ.

Երփնիւ ծաղկանց դաշտ եւ հովիտ
Վէտ վէտ խաղայ ծիծաղախիտ.
Նըկարակերպ բուսոց կանաչ
Հիւսկէն օթոց սըփռի ընդ առաջ.
Բացեալ մարմանդք զիւրեանց զծոց
Գըրգուեն զայգիս սիրեալ տնկոց.
Աղբերականց պարղեալ խոխոջ
Գոչէ ՚նդ ծործոր լերանց խառոջ.
Հեզիկ ի մարգ սողոսկ ընդ դար
Հազիւ կըքեն ըզգեղ դալար։
Բացատ լերանց գեղեցկադիր
Ոսկեզօտիք փայլեն ի ծիր.
Ցաւերժ մայրեաց խրոխտ յեթեր
Ընդ սոսաւիւն չարժին ըստուեր.
Պարզ եւ յըստակ օդ քաղցրասիգ
Բուրեն վարդից հոտ անուշիկ։
Մեզ Տիտոնեան հարսըն սիրած
Պարզէ զգըլխով վըրան ներկած
Ոսկետըրտուն վարդապըսակ
Ընդ աշալուշն եւ ընդ երեակ.
Շուրջանակի յաչաց եզերք
Հոյլ հոյլ ոսկի սփռին իւր հերք։

Բերեմ մի օրինակ էլ նմանութիւններից.

Որպէս ալիք անդնդոց
Ի ծուփ երկմիտ տատանին
Ի խիստ հողմոց դուպարած,
Մինչ ուժգնագոյնն անկասկած
Ոստեալ վարէ ի Հանդրին.
Եւ կամ զօրէն Եփրատէս
Գարնանազայր թափ առեալ
Վանեալ գըլէ ամեհի
Թումբ եւ կամուրջ եւ մայրի՝

Թումբ եւ կամուրջ եւ մայրի՝
Ըզբնաւս ի մի տառ ձուլեալ...

Երբեմն նմանութիւնները հոմերական ձեւով այնպէս ընդարձակւում են, որ ինքնուրոյն բնաւորութիւն են ստանում եւ մարդ գրաւուելով նկարագրած տեսարանից՝ մոռանում է նոյնիսկ երգի բուն նիւթը: Այս ազդեցութիւն է անշուշտ իւր ընթերցանութեան. ինչպէս պատմում են, Իլիականը նա բերան առելիս է եղել: Բայց ընդհանուր առմամբ Բագրատունու տաղերի մէջ աւելի ճարտասանութիւն կայ քան բանաստեղծութիւն. աւելի սովորովի է, արուեստ ունի, քան ինքնաբուխ ստեղծագործութիւն եւ զգացում. ուստի նրա նկարէն ու պերճ ոճը իւր բոլոր սեթեւեթանքով հանդերձ՝ միակերպ է, ձանձրալի է իւր դիմումներով, պարաւոր նուագներով եւ այլն: Նա ոչ միայն իշխան է լեզուի, այլեւ ոտանաւորի. միանման յաջողութեամբ նրա գրչի տակից դուրս են գալիս ե՛ւ կարճ, սրընթաց տողեր, ե՛ւ դանդաղ, ծանր ու մեծավայելուչ ասացուածներ երկար տողերով: Հեշտալուր հնչիւններն ու վանկերը, երաժշտական շեշտերն ու յանգերը երբեմն յափշտակում են ընթերցողին: Բայց աւա՛ղ, այդ ամէնն ապարդիւն են անցնում, որովհետեւ տաղերն արտաքին գեղեցկութեան [համեմատ] չունին ներքին հարստութիւն, եւ մարդ յոգնում, նոյնիսկ ուժասպառ է լինում, երբ կարդում է մի չնչին միտք անվերջ երկարութեամբ զարգացրած, մանաւանդ երբ յաճախ այդ չնչին միտքն եւս բառերի եւ խօսքերի հեղեղի մէջ կորչում է: Մարդ զգում է չարունակ, որ մի սնամէջ քերթողութեան հետ գործ ունի. իսկ այդ բաւական է ամենայն բանաստեղծութիւն մեռցնելու համար:

Եւ այս ամէնն առաջանում է նրանից, որ Բագրատունին քնարական բանաստեղծ չէ, քնարական ոչինչ չունի, բայց եւ այնպէս նա իւր գեղեցիկ հասակը կորցնում է քնարերգութիւն անելով: Նա «դիւցազանց մարգարէ» է, ինչպէս ինքն իրեն անուանում է մի տեղ, ծնուած եւ վիպական բանաստեղծ եւ առանձնապէս դիւցազներգու լինելու: Եւ 1830 թուից յետոյ նա այդ զգում է եւ ինքն իրեն նուիրում է միայն իւր «Հայկ դիւցազնին», դադարելով այլեւս քնարական քերթուածներ յօրինելուց, եւ եթէ դարձեալ գրում է բաւականաչափ մեծ ու փոքր քերթուածներ, դրանք, այսպէս ասած, ի պաշտօնէ չինուած բաներ են, գրեթէ բոլորը նուիրուած Տիւզեան ընտանիքին:

Բագրատունու բանաստեղծութեան զարգացումը ի հարկէ «Հայկ դիւցազնի» մէջ է. բայց ես այդ քերթուածն իւր ժամանակին առանձին կ՚առնեմ. որովհետեւ դա ծնունդ է մեր 19-րդ դարու բանաստեղծութեան ոչ թէ առաջին, այլ երկրորդ երեսնամեակի:

Գրիգոր Փեշտիմալճեան:— Ինճիճեանի ու Գապասախալեանի ժամանակակից է Գրիգոր Փեշտիմալճեան (+ 1837), որի բանաստեղծութիւնը զուտ կրօնական է: Կենսագրութիւնն ինձ յայտնի չէ: Եղել է «մեծիմաստ պատուելի վարժապետ» Կ. Պոլսում, — եւ այսքանն էլ բաւական է: Իբրեւ վարժապետ յօրինած ունի դասագրքեր՝ Քերականութիւն (Կ. Պոլիս 1829), Տրամաբանութիւն (Երուսաղէմ 1854), Լուսաշաւիղ, «որ է բացա-

տրութիւն Նիկիական հանգանակին» (Կ. Պ. 1848) եւ նոյնիսկ Բառգիրք Հայկազեան լեզուի. ունի եւ մի բանաստեղծական երկ «Դիմառնութիւն» (Կ. Պ. 1845): Մահից յետոյ կատարուած այս տպագրութիւնները ցոյց են տալիս, որ նա յարգանք ու հեղինակութիւն է վայելել իւր աշակերտների մէջ. եւ իսկապէս մեծ անուն է ունեցել Փեշտիմալճեանը: Գերմանացի բողոքական քարոզիչները մինչեւ այժմ մեծ գովեստով են խօսում նրա մասին՝ անուանելով նրան Հայ Էրազմոս,[1] որ իբր իսկապէս բողոքականութեան է դարձած եղել, ծածուկ մասնակցել է նրանց ժողովներին եւ իբր մինչեւ մահը հաւատարիմ բարեկամ է եղել Աւետարանական եկեղեցուն, թէպէտեւ երբեք արիութիւն չի ունեցել հրապարակով ինքն իրեն բողոքական խոստովանելու: — Այդ պատմութիւնը ցոյց է տալիս միայն, որ Փեշտիմալճեան պատուելին քարացած մարդ չի եղել. հետաքրքրուել է Հայոց եկեղեցուց դուրս եղած բաներով, եկեղեցական վերանորոգութեան խնդրով եւ շատ հեռու է եղել իւր ժամանակակիցների հալածասիրական ոգուց: Լինելով ջերմ կրօնասէր, նա ծարաւի է եղել կենդանի ոգու եւ դուցէ կարծել է, թէ այդ կը գտնի բողոքականների ժողովում: Բայց որ նա բողոքականութեան յարած լինի, այդ հաւանական չէ: Այդ ժամանակ ով որ Հայոց եկեղեցուց կաթոլիկների կամ բողոքականների հետ յարաբերութիւն էր ունենում, թէկուզ արտաքին, համարւում էր կաթոլիկ կամ բողոքական եւ հալածանքի ենթարկւում. նոյն սխալ հայեացքն, ինչպէս երեւում է, ունեցել են եւ ժամանակի բողոքական քարոզիչները՝ բողոքական համարելով նրանց, որոնք իրենց մօտ գնացել եկել են: Յայտնի է Մատթէոս պատրիարքի նեարդային աններող վերաբերմունքը դէպի կաթոլիկներն ու մանաւորապէս դէպի բողոքականները. իսկ արդ նա Փեշտիմալճեանի յաջորդներից մէկն է եղել եւ նրա «սրտի իղձը» կատարելու համար՝ նրա մահից ութ տարի յետոյ, 1845 թուին Կ. Պոլսում տպագրել տալիս նրա «ցանկալի մատեանը», որ է «Դիմառնութիւն ի չարչարանս Քրիստոսի Փրկչին մերոյ», եւ այս՝ «յօգուտ ազգիս»:

Այս գրքի մէջ, բացի Փեշտիմալճեանի վերոյիշեալ դլխաւոր աշխատանքից, զետեղուած են իբրեւ մի չորրորդ մաս նաեւ նրա տասնուվեց «մաղթանքներն առ Աստուած եւ առ սուրբս նորա»: Դրանք աղօթախառն տաղեր են, որ հեղինակն «աղերս» է անուանում, եւ որոնց մէջ առանձնապէս աչքի է ընկնում այն հանգամանքը, որ նրան գրաւում են ամէնից աւելի հայ եկեղեցին եւ հայ ազգային սրբերը, ինչպէս՝ Ս. Էջմիածին, Լուսաւորիչ, Արդար Թագաւոր Հայոց, Տրդատ Թագաւոր, Ս. Թարգմանիչք, Ներսէս Շնորհալի, Վարդան Մամիկոնեան:

Փեշտիմալճեանն իւր բանաստեղծութեան վրայ նայում է նախ՝ իբրեւ վարժապետ. նա ոտանաւորներ է գրում «ի հրահանգութիւն մանկանց» իւր դպրոցի, որպէսզի նրանք իրենց վարժապետի օրինակներով վարժուեն «ի յօրինուածս նմանատիպ գրուածոց»:

---

1 Mission und Evangelisation im Orient. 1908, եր 76. Տեղեկութեան համար շնորհակալ եմ իմ աշակերտ Գալ. Իսքենդերեանից:

... Որք չեն վարժ ի յուսման
Քերթողական բանից չափման,
Կըրթին ի սա՛ գէթ անաղան,
Իբր ի նըկար ինչ ուրուական:

Ապա՝ նրա հայեացքով բանաստեղծութիւնը մի բարեպաշտական գործ է, որ մանուկներին տալիս է կրօնական հոգեւոր կրթութիւն, եւ կարծում է, ճիշդ ինչպէս Նարեկացին, թէ իւր աշխատանքը հոգեւոր բժշկութիւն եւ առողջութիւն պիտի բերէ ընթերցողներին:

Այս հայեացքը բնականօրէն թելադրել է նրան նախ՝ «աղերսներ» գրել եւ ապա՝ իւր «աղերսների» մէջ բանեցնել բազմազան տաղաչափական ձեւեր, որոնց մէջ, եր. 245, աչքի է ընկնում «Աղերս առ ս. Խաչն աստուածընկալ» որ գրուած է Բագրատունուց առաջ Բագրատունու «հայկական» կոչուած չափով: Մի անգամ որ այդ աղերսները այդպիսի ծագում ունին, այլեւս դրանից կարելի չէ պահանջել բանաստեղծութիւն. դրանք մեծ մասամբ միակերպ յօրինուած բաներ են, դիմումներ սովորական նմանութիւններով. օրինակ՝ Շնորհալու աղերսն այսպէս է սկսւում.

Աղբիւր ես բարի, կենաց վտակի
Որպէս եղջերու փափագի,
Հոգիս ծարաւի:
Ծրագ լուսարփի, Արամեանս ազգի
Յոլացո՛ ըզլոյս քո պայծառ,
Աչացս իմ սրտի:

Այսպէս եւ Շնորհալուն կոչում է՝ սոտ դաւաղանի, ծաղիկ նազելի, ուռ ողկուզալի, երկիր բերրի, պարարտ ձիթենի, լեառն կնդրկի, մառան բարելի եւ այլն, եւ այդ նմանութիւններին համապատասխան մէկ մէկ խընդրուածքներ անում նրանից:

Նման ձեւով գովում է եւ Էջմիածինը, — «Աղերս առ շնորհածին ծնողըն մեր Սուրբ Էջմիածին».

Լուսակերտ խորան փառաց՝
Երկնաւորին,
Կառուցեալ յԱրարատեան
Մեծի դաշտին:
Սեպհական պարծանք ազգիս
Պըսակ անգին.
Դու լե՛ր միշտ պատսպարան
Իմոյ անձին. եւ այլն:

Փեշտիմալճեանի երկերը ժամանակի կրօնական պահանջին բաւարարութիւն տալու են սահմանուած: Խրիմեան Հայրիկը պատմում էր, թէ ժամանակակից պատրիարքներից մէկը (անունը մոռացել եմ) մի անգամ ասել է Գրիգոր պատուելիին, թէ ամէն սրբերի գովեցիր ու աղօթեցիր, մեր ս. Թադէոս Առաքեալին ինչո՞ւ մոռացել ես: Պատուելին պատասխանում է,

թէ Թադէոս Առաքեալը շատ հեռու է ընկած, ուստի միտը չի եկել նա: Բայց մի քանի օրից յետոյ նա բերում է եւ Հայաստանեայց առաքեալի աղերսը, որի սկիզբն է՝ «Առաւօտ լուսաբեր Հայաստան երկրի, Թադէոս առաքեալ, ընդէ՞ր կաս հեռի»: Աղերսը հաւանութիւն է գտնում, եղանակ յարմարեցւում նրան եւ երգւում: Եւ Գրիգոր պատուելիի բազմաթիւ աղերսներից այդ մէկը, որ չի առնուած նրա «Դիմառնութեան» մէջ, իւր եղանակի պատճառով ապրում է մինչեւ այժմ իբրեւ երգ: Խրիմեան Հայրիկի սիրած տաղերից մէկը դա էր:

Փեշտիմալճեանին եւ նրա հոսանքով ընթացողներին անշուշտ եկեղեցուց եւ սրբերից շատ աւելի մեծ ոգեւորութեան նիւթ պիտի տար եւ աւետարանական պատմութիւնը, որին նուիրուած է մեր այս քերթողի «Դիմառնութիւնը», գրուած 1820 թուականի մօտերը: Այս երկը, որի մէջ մի քանի հատուածներ դարձեալ ջերմ աղօթքի կերպարանք ունին, համեմատաբար աւելի բարձր է քան աղերսները. բայց եւ այնպէս սա եւս բանաստեղծական յղացման արդիւնք չէ: Եթէ Ինճիճեանը ոտանաւորով աշխարհագրութիւն է անում, Փեշտիմալճեանը մի բանաստեղծական կրօնագիտութեան գիրք է գրում Քրիստոսի տնօրէնութեան վրայ, որի մէջ ոտանաւորով պատմուած եւ մեկնուած են Փրկչի չարչարանքը, խաչելութիւնը եւ այլն, հետը միացրած եւ Հին Կտակարանից ակնարկներ եւ նոյնիսկ աւանդութիւններ: Լինելով մեր վերածնութեան շրջանի միմիայն ներքին հոգեւոր ուղղութեան արտայայտիչ, առանց եւրոպական ազդեցութեան, նա մտածում է այնպէս, ինչպէս միջնադարում մտածում էր, օրինակ՝ Ներսէս Շնորհալին: Այդ հասկացողութեամբ պահանջւում է, որ պրոզայիկ նիւթն եւս բանաստեղծօրէն գրուի, որպէսզի տպաւորութիւն թողնի եւ երեխաները հեշտ սովորեն.

Ոտիւք չափեալ քերթողական,
Առ անձանձիր վերծանութեան.
Եդեալ ի ձեւ դիմառնական,
Առ չարժութիւն կրից հոգեկան:

Փեշտիմալճեանը նոյնիսկ իւր լեզուով եւ ոտանաւորով եւս ազդւում է Շնորհալուց. վերջինիս պէս նա շատ պարզ ու վճիտ է գրում. սիրում է ութվանկանի տողեր, եւ ամբողջ խոշոր հատուածներ միեւնոյն յանգով է վերջացնում. բայց բոլոր երկը նոյն յանգով չի յօրինում, ինչպէս վարւում են Ինճիճեանը եւ Յովհան Վանանդեցին իւր առաջին գրուածքների մէջ: Նա ճաշակով համեմատաբար բարձր է իւր ժամանակակիցներից:

Զունենալով ոչ մի գաղափար թատերգութեան մասին՝ Փեշտիմալճեանը յօրինում է մի տեսակ թատերական երկ: Նա ոչ թէ մեկնում կամ պատմում է Քրիստոսի տնօրէնութիւնը, այլ դրամատիկական ձեւով գործող անձեր է մէջ բերում եւ միայն նրանց խօսել տալիս, եւ այս ձեւը պահում է սկզբից մինչեւ վերջը: Դա մի բոլորովին նոր ձեւ էր մեր գրականութեան մէջ, որ իւր արտաքին նորութեամբ միայն պիտի հաճելի լինէր ժամանակակիցներին: Հէնց այս պատճառով եւ նա իւր երկը կոչում է «Դիմառնութիւն», որովհետեւ այստեղ մեռած անձերը, եւ նոյնիսկ երկինք, եր-

կիր, ասող եւ այլն կենդանանում եւ խօսում են իբրեւ կենդանի անձեր: Այս երկը կը դառնար միջնադարեան քրիստոնէական թատերգութեան նման մի բան, եթէ միայն հեղինակը ներկայացման մասին մտածած լինէր եւ քիչ ու շատ յարմարեցրած դրան: Բայց նա այդ ձեւն ընտրել է միայն աւելի եւս ազդու անելու համար. ուստի եւ ոչ թէ արարուածների ու տեսարանների է բաժանում նա «Դիմառնութիւնը», այլ մասերի եւ գլուխների, որով եւ նրա երկը բռնում է մի տեսակ միջին տեղ դրամատիկական ու վիպական ձեւերի մէջ. մինչդեռ նոյն ժամանակներում Բագրատունու գրուածքն, ինչպէս տեսանք, արտաքուստ դրամատիկական է: Եւ այս հասկանալի է. Փեշտիմալճեանը հին մարդ է, երիտասարդ Բագրատունին համեմատաբար նոր, եւ սրան ծանօթ էր դրամատիկական ձեւն օտար գրականութիւններից: Դրանց երկերն առաջին ձգտումներն են դրամատիկական տեսակն առաջ բերելու մեր գրականութեան մէջ, եւ այս տեսակէտից հետաքրքիր:

Այսպէս, թելադրուած անշուշտ Կռակ-Գրքից, Փեշտիմալճեանն առաջին արարուածի առաջին տեսարանի մէջ (հեղինակի առաջին մասի առաջին գլխի մէջ) երեւան է հանում Քրիստոսին խաչի վրայ, դեռ չմեռած. Կոյսը խաչի առաջ ողբում է ինքն իրեն եւ իւր որդուն երկինք ու երկիր կանչելով իրեն սփոփելու.

Ո՛վ որ սրդոյ, որ մահաբեր,
Որ խաւարի անլոյս գիշեր,
Եհար ըզսիրտ իմ կարեվէր
Սաստիկ ցաւոց սըրեալ սուսեր:
Աչացըս լոյս եղեւ բստուեր,
Շիջաւ յանկարծ սրտիս լապտեր.
Կար զօրութեան իմ կենսաբեր
Բարձաւ յինէն որպէս թէ չէր…
Երկի՛նք, երկի՛ր, լուռ կայք ընդէ՞ր,
Փութացարո՛ւք զիս սփոփել.
Զի բաց ի ձէնջ չունիմ ընկեր
Ոչ ի ստորինս եւ ոչ ի վեր:

Եւ ահա՛ բեմ են մտնում երկինքն ու երկիրն անձնաւորեալ եւ յուսադրելով Կոյսին՝ յայտնում են, թէ Յիսուս պէտք է խաչուի, որպէսզի մարդկային ազգն ազատուի՝ սատանայի ձեռով անկումից.

Զի եղիցի մահուան իւր գին
Ազատութիւն մարդկան ազգին:

Այս խօսքի վրայ ներս է մտնում Բանսարկուն եւ ինքն իրեն [illegible]ա-ցընելով՝ մարդու անկման պատճառը մարդուն իրեն է համարում: [illegible]յա-ւում է մի վիճաբանութիւն, որի ժամանակ բեմ են գալիս եւ մա[illegible]մ վէճին նաեւ հրեշտակներ, եւ վերջը Բանսարկուն ստիպուած է լինում [illegible]ո-կածելու, թէ մի՛ գուցէ այս Խաչեալը կործանէ իւր իշխանութիւնը [illegible]-տէ իւր կապեալ ոգիները դժոխքի բանտից:

Տարունակութեան մէջ տեսարանն անփոփոխ միեւնոյն է մնում․ Կոյսն անդադար ողբում է, դիմելով այն ամէնքին, Աստուածաշնչի այն բոլոր անձերին, որոնք ըստ մեկնաբանների որեւէ կերպով գուշակել են Քրիստոսի մարդեղութիւնը, եւ զարմանքով հարցնում է, թէ ինչո՞ւ նրանց գուշակութիւնները չեն կատարւում․ իւր որդին ահա՛ խաչւում է։ Այդ անձերը՝ Գաբրիէլ հրեշտակ, մոգեր, հովիւներ, Եղիսաբէթ, Զաքարիա, Յովհաննէս Մկրտիչ, Սիմէոն ծերունի եւ ուրիշներ, ինչպէս եւ Հին Կտակարանի նահապետներ, մարգարէներ եւ այլք, պարտք են համարում հետզհետէ հանդէս գալ եւ մխիթարել Կոյսին եւ յայտնել, թէ այդպէս էլ պէտք է լինի եւ թէ իրենց մարգարէութիւնից ոչինչ չի վրիպիլ, իսկ քահանայապետներն ու դպիրները եւ հրէից ամբոխը միւս կողմից հրճուանքի մէջ են․ դեւերը սակայն երկիւղով կասկածում են։ — Կրօնուսոյցն ուրեմն ոչինչ պակաս չի թողնում, ինչ որ Քրիստոսի կեանքին է վերաբերում․ երբեմն մանրամասն, երբեմն համառօտ ակնարկներով անցնում է ամէն բան։ Սակայն այսպէս լինելով հանդերձ՝ չատ հատուածների մէջ նա իւր երեւակայութեամբ կենդանացնում է խօսքն ու նկարագիրը․

Առ քեզ գոչեմ արտասուահոս,
Ե՛կ, մերձաւորդ իմ Ղազարոս․
Տե՛ս, որ զքեզ ձայնիւ յարոյց,
Ի փայտ մահու լռէ անխօս։...
Դառըն խորշակ հարաւ գըլխոյս․
Եկէզ ըղտունկըս բարեբոյս․
Թառամեցաւ ծաղիկն հոգւոյս․
Եղէ ես ծառ պըտղակորոյս։

Իսկ Ղազարոսը սփոփելով Նրան՝ պատմում է իւր դրութիւնը գերեզմանի, որ միեւնոյն է դժոխքի մէջ․

Եհաս օրհաս կենաց հիքոյս,
Ժամանեցի ի բանդ անլոյս...
Խուժան դիւաց անդընդասոյզ
Պըտուտկէին զինեւ ի խոյզ․
Ըսպառնային ըզցաւս անբոյժ,
Ըզհուր անշէջ, զանմեռ որդունս։
Ուր խանչէին որպէս ըզխոզ
Ամբարշտաց ժողովք յայլ կոյս․
Ի ծով հըրոյ ծըծըմբայոյզ
Ի լեղ անկեալ որպէս զեռունս։
Օձք եւ կարիճք զեղուին թոյնս
Որպէս ըզգետս առատահոս․
Գազանք հըրէշք սուր ի լեզուս
Գիշատէին ըզմեղաւորս։...

Այս ամէնը տեսնելով՝ սարսափած մնում է Ղազարոսը․ բայց երբ Քրիստոս ձայնում է Նրան,

Յայնժամ շարժեալ դրանց դժոխոց
Խռովեցան անդունդք խորոց,
Զահի հարեալ զումարք այսոց
Մատեան միմեանց ի հարց ի փորձ.
«Այս ի՞նչ, այս ի՞նչ», — ասեն այլոց,
«Գոչեաց ուխծ ահեղագոչ.
Իբրեւ ամպրոպ չփոթ ամպոց
Զամենեսին ահիւ պակոյց»: —
Անդ բանսարկուն ասէ նոցին.
«Զայս մի անգամ լուեալ է իմ
Մինչ յանէից ի գոյ եկին
Երկիր, երկինք, եւ մեք ի նմին:
Ահա՛ այս ձայն է Արարչին,
Որ դղրդեաց զամենեսին.
Արդ կասկածիմ եկեալ ինքնին
Յաւար առցէ զիմ տուն զանձին»:

Դեւերը խորհուրդ են տալիս Բանսարկուին հաւաքել իւր զօրքը եւ պատերազմի պատրաստուել. Նա չի համաձայնում՝ քաջ իմանալով Արարչի զօրութիւնը: Այն ժամանակ կատաղում են դեւերը եւ

Գոռան, խանչեն մոլեգնաձայն.
«Արդ գիտ հնար, ով զու իշխան,
Պատճառ չարեաց մեր կորստեան»...
Անդ բանսարկուն գոչէ այսոց.
«Ի դուրս արկէք զՂազարոս.
Դեռ քառօրեայ չէանց միջոց,
Նարկ աղմուկ ի տարտարոս»:

Այս խօսքի վրայ մի այլանդակ դեւ վազում է դէպի Ղազարոսը եւ նրան դուրս ձգում գերեզմանից:

Ասել չի ուզիլ, որ բոլոր անձնաւորութիւնները խրտուիլակներ են միայն եւ ոչ մարդիկ. նրանք ծառայում են լոկ Աստուածորդու մեծութիւնը եւ մարդեղութեան խորհուրդը բացատրելու համար: Բայց մի վեհ պատկեր է ներկայացնում ինքն Տէրը, այսինքն Յիսուս խաչի վրայ. Նա լուռ տանջւում է ամենայն համբերութեամբ. քիչ է խօսում եւ խօսում է միայն Նրա համար, որ ցոյց տայ, թէ որովհետեւ աշխարհի անկումը Բանսարկուի հպարտութիւնից ու ըմբոստացումից է ծագել, ուստի եւ ինքը խաչի վրայ ամենամեծ խոնարհութեամբ պիտի բարձրացնի անկեալ աշխարհը: Նա մէկ մէկ արտասանում է իւր «եօթն խօսքերը», ինչպէս «Հայր, թող դոցա, զի ոչ գիտեն զինչ գործեն» եւ այլն եւ բացատրում, թէ ինչպէս արդարութեան օրէնքի տեղ դնում է գթութեան օրէնքը: Մխիթարում է իւր մօրը եւ քնքշութեամբ հոգում Նրա մասին:

Վշտահար մայրը պահում է չարունակ նոյն ողբացող վիճակը. լալիս է իւր եւ իւր որդու վրայ. գովում է որդուն. չի կարողանում հասկանալ,

թէ ինչու մարդկային ազգը չպիտի փրկուէր առանց իւր որդու անարգ վիճակին եւ տանջանքներին: Նրա վիշտն աւելի մեծանում է, երբ յիշում է իւր որդու հրաշագործութիւնները: Նրա դառնագին հեծեծանքը, ողորմագին տեսիլն այն աստիճանի է հասնում, որ նոյնիսկ որդուն խաչի վրայ մոռանալ է տալիս իւր ցաւերը: Եւ այստեղ, այս ողաւոր մօր ողբի ու բողոքի մէջ Փեշտիմալճեանը մէկ մէկ իսկական քնարերգու է դառնում:

Տեսարանը սկսում է փոխուել միայն այն ժամանակ, երբ Յիսուս վերջին խօսքն է արտասանում: — Երրորդ մասի սկզբում Քրիստոս արդէն գերեզմանի մէջ է. նա մտնում է դժոխք եւ կործանում չարի իշխանութիւնը: Դժոխքում կապուած հոգիները մէկ մէկ, Ադամից սկսած Հին Կտակարանի բոլոր յայտնի անձերը միանման կերպով դիմաւորում են Փրկչին, որ նրանց ամէնքի հետ կարճ կամ երկար խօսքեր փոխանակելուց յետոյ՝ բանտարկութիւնից ազատում է նրանց: Արդարներից յետոյ առաջ են գալիս մեղաւորները իրենց լաց ու կոծով, յուսակտուր աղաղակով. սակայն այս չարանին վերջը լռեցնում են դեւերը, գոչելով.

Կարկեցարո՛ւք, չարեաց գումարք,
Վայրաղօղանջ չո՛ւնք նետահարք:

Այստեղ իսկապէս վերջանում է Քրիստոսի չարչարանքի դիմառնութիւնը, սակայն կրօնադիտութեան դասագիրքն ամբողջական անելու համար՝ ետեւից գալիս են եւ երեք պատկերներ Յարութեան, Համբարձման եւ Հոգւոյ գալստեան համար, որոնք իրարուց անկախ բնաւորութիւն ունին:

Մեր այժմեան պահանջին ի հարկէ Փեշտիմալճեանը բաւարարութիւն չի տալ. բայց պատմութեան մէջ ամենայն բան իւր տեղում պիտի առնել եւ այն ժամանակ յաճախ այժմեան անարժէքը ստանում է արժէք՝ դառնալով մի օղակ դէպի կատարելութիւն դիմող զարգացման շղթայի մէջ: Այս տեսակէտից դատելով՝ հասկանալի է լինում, թէ ինչո՛ւ ժամանակակիցները գրաւել են այդ «մեծիմաստ» եւ «պերճիմաստ» պատուելիի տաղաչափութեամբ: Բաւական է միայն համեմատենք նրա աղերսները Ղազար Ջահկեցու աղօթքների եւ կամ իրեն ժամանակակից Գապասախալեան դպրի եւ Աստապատցի Աբրահամ վարդապետի աղերսների հետ, որպէսզի համոզուենք, թէ Փեշտիմալճեանն աւելի անկեղծ զգացող է եւ պարզ ու մաքուր մտածող. իսկ նրա «Դիմառնութեան» հետ բնաւ համեմատուել կարող չէ հարիւր տարի առաջ հրատարակուած «Գործք առաքելոցը» Կոմիտաս քահանայի: Նա մի աստիճան ազնուացնում է մեր վերածնութեան շրջանի կրօնական բանաստեղծութիւնը եւ մինչեւ անգամ ազդում յաջորդների վրայ, ինչպէս Խրիմեան Հայրիկի: Բայց եւ այնպէս Փեշտիմալճեանն իւր ամբողջ էութեամբ, ինչպէս նկատեցի, մի տնաստւն քերթող է, որ հոգւով մեր միջնադարեան բանաստեղծների կարգին է պատկանում եւ մի առանձին թարմ երակ չի մտցնում մեր, թէկուզ կրօնական, բանաստեղծութեան մէջ: Եւ այս հասկանալի է թէ ինչո՛ւ:

**Դպրոց, լրագրութիւն, թարգմանական եւ ինքնուրոյն գրականութիւն:** — Մեր հնի վերածնութիւնը եւ հնի նմանողութիւնը միայն բաւական չէր

կենդանի բանաստեղծութիւն առաջ բերելու: Եւրոպական միտքը պէտք է ներգործէր· բայց մինչ այդ եւրոպացոց հետ ունեցած հայոց յարաբերութիւնը արտաքուստ էր, ուստի եւ ազդեցութիւնը աննշան:

Եւրոպական մտքի իսկական ազդեցութիւնը շատ բնականօրէն սկսւում է գաղթավայրերում եւ դպրոցով եւ այս միայն 19-րդ դարու առաջին քառորդից: Արդարեւ Կ. Պոլսում 18-րդ դարու վերջերից արդէն բացւում են ժողովրդական դպրոցներ, բայց դրանք հին ձեւով են կազմուած եղել եւ ժողովրդի մէջ գրագիտութիւն տարածելով հանդերձ՝ հային երկար ժամանակ չեն կարողացել ծանօթացնել եւրոպական քաղաքակրթութիւնը: Դրանց պատուելիները փակուած են մնացել մեր ներքին նեղ շրջանակի մէջ, եւ միշտ պատկառանքով են նայել դէպի Վենետիկեցիք՝ համարելով նրանց կատարելութիւն եւ նմանողութեան աղբիւր, չմտածելով անգամ մրցել նրանց հետ: Ռուսաստանի հայերն աւելի ուշ են կենդանութեան նշան ցոյց տալիս, բայց մի անգամ շարժուելուց յետոյ՝ գլխաւոր հոգսը հէնց սկզբից տանում են նոր ձեւով դպրոցներ հիմնելու համար: Աղաբաբեան դպրոցն Աստրախանում (1810 թ.), Լազարեան ճեմարանն (1816 թ.) ու Ներսիսեան դպրոցը (1824 թ.) հաստատուած հայ գաղթավայրերում, հետագայում պիտի իրենց բարերար ազդեցութիւնն անէին նաեւ բուն երկրի հայ ժողովրդի վրայ, որ 19-րդ դարու առաջին երեսնամեակում դեռ տառապում էր պարսկական եւ թիւրքական դժպետութիւնների ձեռքին:

Բաւական ժամանակ պիտի անցնէր սակայն, մինչեւ որ եւրոպական լեզուների եւ կեանքի ծանօթութիւնը այս նոր դպրոցների միջոցով մի առողջ հոսանք մտցնէր հայ անշարժութեան մէջ եւ հայ միտքը դուրս գալով ինքնագոհ դրութիւնից՝ կտրուէր միմիայն մեր միջնադարին նմանելուց եւ ազգի յառաջդիմութեան էական պայմաններից մէկը համարէր հայ կեանքի մէջ փոխադրելու ամէն ինչ որ եւրոպական է: Եւ այս ձգտումը եւրոպականին նմանելու, որ ծնւում է գաղթավայրերի դպրոցների մէջ, գնալով զօրանում է եւ կամաց կամաց ներքին բնաւորութիւն է ստանում: Առանց թուլանալու եկեղեցական-կրօնական զգացմունքի մէջ՝ մարդիկ տեսնում են, որ եկեղեցուց դուրս ուրիշ բան էլ կայ. եւ չեն բաւականանում հայ եկեղեցական անցեալով: Հայ միտքը բացւում է, եւ սովորում են դիտել եւ ուսումնասիրել կեանքը, բաղդատութիւն դնել հայի եւ օտարի ունեցածի մէջ. որոշւում է հայրենասիրութեան գաղափարը, որ հետզհետէ աւելի մեծ ծաւալ է ստանում: Հայրենասիրութիւնը նրանց եռանդ է ներշնչում հայ կեանքը մի նոր ձեւով նորոգելու: Իսկ դրա միջոցներ են համարւում նոր ուսումն ու գիտութիւնը, գիտական գրքերի թարգմանութիւնը եւ վերջապէս լրագրութիւնը:

Լրագրութիւնը ծնունդ է առնում արդէն 18-րդ դարու վերջում: Առաջին ամսաթերթը, «Ազդարար» (1794—1796) լոյս է տեսնում Մադրասում Յարութիւն քահանայ Շմաւոնեանի ձեռով, եւ ապա Վենետիկում հրատարակւում են Ինճիճեանի խմբագրութեամբ «Տարեգրութիւն» (1800—1802) եւ «Եղանակ Բիւզանդեան» (1803—1820), որոնք տարեթերթ են, այսինքն տարէնը մի գիրք են լոյս ընծայում:

Լրագրութիւնն ազդանիշ էր, որ հայութիւնը իւր նեղ շրջանակից պի-

տի դուրս գար։ Հայը սկսել էր հետաքրքրուել թէ իրենից դուրս, հեռւում ինչ է կատարւում։ Ահա «Ազդարարի» ծրագիրը. «Ազդ արարող յորմէ իմացումն լինելոց է ընթերցողաց ծայրաքաղ անցքն նոյնոյ ամսոյ, եթէ ի զանազան կազեթաց, եթէ ի զանազան քարտեսաց եւ եթէ այլոց զանազան գրոց. նաեւ բանք հարկաւորք եւ քաղցրալուրք, եւ ի վերջնումն տետրակիս՝ զօրացոյց մի հետեւեալ ամսոյ, պարունակեալ ի նմա զտօնս սրբոց եւ զաւուրս ծննդեան եւ լրման լուսնոյ»։[1] Ինճիճեանի ձեռով խմբագրուած տարեթերթերն եւս մանրամասն տեղեկութիւններ են տալիս նախորդ տարուայ մէջ զանազան երկիրներում կատարուած քաղաքական, եկեղեցական ու գիտական դէպքերի, գիւտերի մասին. գիտելիքներ՝ բժշկական, բնագիտական եւ այլն։ «Ազդարարի» օրացոյցին այստեղ փոխանակում է «գուշակութիւն օդերեւոյթ փոփոխութեանց», — կարծես բաւարարութիւն տալու համար մեր պապերի պահանջին, որ չէին կարող ապրել առանց էֆիմերտիական գուշակութիւնների։

1812 թուին Կ. Պոլսում կազմւում է մինչեւ անգամ «Արշարունեաց ընկերութիւնը», որ իրեն նպատակ է դնում «ազգին մէջ գրականութեան ոգի զարթուցանել՝ ոչ միայն նախնեաց մատենագրութիւնն ի լոյս ընծայելով, այլ եւ ազգին օգտակար գրոց հրատարակման ձեռնտու ըլլալով»։[2] Այս ազատասէր ընկերութիւնը իւր ծախքով 1815-ից տպագրում է Ինճիճեանի «Եղանակ Բիւզանդեանը»։ Այս ընկերութիւնն է, որ առաջ է բերում եւ «Դիտակ Բիւզանդեանը» (1812—1816), մի շաբաթաթերթ, որ սակայն ոչ Կ. Պոլսում, այլ Վենետիկում Մխիթարեանների ձեռով է խմբագրուած եւ տպագրուած, անշուշտ այն պատճառով, որ Կ. Պոլսի պատուելիներն ընդունակ չէին լրագիր խմբագրելու։ Դա սկզբում զբաղւում է գլխաւորապէս եւրոպական եւ նոյնիսկ ամերիկեան քաղաքական անցքերով, առանձնապէս Նապոլէոնի արարքների մասին լուրեր տալով, իսկ վերջին երկու տարին, երբ խմբագրում է Զախջախեանը, առանձին տեղ է տալիս նաեւ ուսումնական եւ բանասիրական խնդիրներին։ Դժբախտաբար, որքան քաղաքական լուրերին ընդարձակ տեղ է տրուած այս լրագրի մէջ, «ժամանակակից ազգային խնդիրներն եւ դէպքերը բոլորովին անյիշատակ են թողուած»։[3] Եւ այս հասկանալի է։ Մխիթարեանների հռչակը մեծ էր, բայց հեռու Վենետիկը չէր կարող ազգային կեանքը ցոլացնող եւ կեանքի հետ կապուած լրագիր հրատարակել այդ ժամանակ, մանաւանդ որ, տեսանք, վենետկեան քերթողներն անգամ նոյն միջոցին շատ էլ չէին հետաքրքրւում ազգային ժամանակակից խնդիրներով։ Բայց ինչպէս էլ լինի, այս առաջին վենետկեան լրագիրները, հրատարակուած ռամկական աշխարհաբարով, շատ նպաստել են հայերի աչքը բանալու եւ օտար ազգերի կեանքին ու գործունէութեանը ծանօթանալու։ Եւ եթէ Մխիթարեան խմբագիրներն ազգային կեանքն անուշադիր են թողած, բայց եւ այնպէս «առաջին անգամ հոս (Դիտակ Բիւզանդեան) կը հանդիպենք ազգային առաջադի–

---

1 Գ. Գալեմքերեան՝ Պատմութիւն Հայ լրագրութեան, Վիեննա, 1893, Ա, եր. 24։

2 Նոյն, եր. 28։

3 Նոյն, եր. 34։

մութեան յորդորակներու, Արշարունեաց ընկերութեան անդամներէն խօսուած»:[1] Եւ այս շատ էր արդէն:

Այս շարժումը բնականօրէն իւր հետ բերում է եւ պահանջ մի նոր տեսակի գրականութեան, որ չի եղել հնումը: Դասագրքերի, կրօնական, պատմական եւ այլ բովանդակութեան գրքերի հետ սկսում են մէկ մէկ երեւան գալ եւ բանաստեղծական թարգմանութիւններ եւրոպական ազգերի գրականութիւնից: 1793 թուին արդէն Նոր Նախիջեւանում տպագրւում է Ֆենելոնի Տելեմաքը, որ մի ժամանակ Եւրոպայում ամէնից ժողովրդական եւ տարածուած գիրքն է եղել եւ իւր խրատական բնաւորութեամբ շատ յարմար էր մեր գրագէտների այն ժամանակուայ ճաշակին. ուստի եւ մի քանի ուրիշ թարգմանութիւններ էլ է ունենում հետագայում, երկրորդ անգամ Ջախջախեանի ձեռով Վենետիկում 1826 թուին: Նոյն տեղում մի տարի առաջ տպագրւում է, դարձեալ Ջախջախեանի թարգմանութեամբ, Գեսների «Մահ Աբէլի», որ բնականութիւնից զուրկ մի հովուերգութիւն է եւ արժանացած հայերէն թարգմանութեան անշուշտ նրա համար, որ կրօնական բնաւորութիւն ունի, եւ որ մեր բանաստեղծներն այն ժամանակ շատ աւելի դրախտով, Ադամ-Եւայով էին հետաքրքրւում քան Հայաստանով: 1824 թուին լոյս է տեսնում Միլտոնի «Դրախտ կորուսեալի» արձակ թարգմանութիւնը Հ. Աւգերեանի ձեռքով: Հնդկաստանի հայերն եւս անմասն չեն մնում այս թարգմանութիւնների մէջ. Կալկաթայում, ուր 1821 թ. հիմնւում է Մարդասիրական ճեմարանը, 1826-ին Շատոբրիանի Ատալան է տպւում, իսկ Մադրասում, 1818-ին՝ Վոլտերի Յուլիոս Կեսարը, եւ 1812-ին՝ Ֆլորիանի Նումա Պոմպիլիոսը, որ Տելեմաքի յատկութեան մի գիրք է եւ երկրորդ անգամ արժանանում է թարգմանուելու Ե. Հիւրմիւզի ձեռքով:

Այս թարգմանութիւնները, գլխաւորապէս կրօնական-բարոյական ուղղութեամբ վիպական երկեր եւ նոյնիսկ թատերգութիւններ, դանդաղ, բայց անընդհատ շարունակւում են եւ հետագայում, գլխաւորապէս Վենետիկեցոց ձեռով, որոնք տալիս են հին եւ Ֆրանսիական կլասիկներից մի քանի կարեւոր երկեր՝ դժբախտաբար գրաբար լեզուով: Եւ այսպիսով նոյնիսկ 19-րդ դարու սկզբներից առաջ է գալիս գեղարուեստական թարգմանական գրականութիւն, որ գոյութիւն չունէր առաջ: Դա արդէն նշան էր, որ հայ գրական միտքը շարժւում էր եւ պիտի բաժանուէր սքոլաստիկայից եւ միջնադարեան միակողմանի ու միակերպ պրոզայիկ բանաստեղծութիւնից ու մի նոր ճանապարհով ընթանար: Հարկաւ դեռ շատ ժամանակ պիտի անցնէր, մինչեւ որ ճաշակը, գեղարուեստական հասկացողութիւնը դպրոցի եւ թարգմանութիւնների միջոցով ազնուանար ու բարձրանար եւ թօթափելով հինը՝ կարողանար նմանել եւրոպականին եւ առաջ բերել մի նոր տեսակի, թէկուզ նմանողական, բանաստեղծութիւն, որ արտայայտիչ լինէր կեանքի, իւր մէջ ցոլացնէր մեր իրականութիւնը եւ բաւականութիւն տար հասարակութեան ձգտումներին: Ամէնից առաջ յաջող կերպով այս բանը կարող էին անել Մխիթարեան բանաստեղծները, որոնք քիչ ու շատ

1 Նոյն, եր. 33:

ծանօթ էին եւրոպական բանաստեղծութեանը· բայց նրանք ժողովրդի կեանքով չէին ապրում, ուստի եւ իրենք ինքնուրոյն երկերի մէջ թոյլ, մանկական ու բաւական պարզամիտ են: Բայց եւ այնպէս դրանց բանաստեղծութիւնները, ինչպէս եւ Փեշտիմալճեանինը, եթէ ժամանակին տպագրուած լինէին, կարող էին որոշ չափով բաւականութիւն տալ ժամանակակիցներին, որոնք այդ նկատմամբ շատ էլ պահանջկոտ չէին: 19-րդ դարու առաջին երեսնամեակում սակայն, որքան գիտեմ, գրեթէ ոչինչ չէ տպագրուած:

1829 թուին Մոսկուայում Մուզայք Արարատեան շատ բան խոստացող անուան տակ հրատարակւում է մի գիրք: Դա Լազարեան ճեմարանի սաների բանահիւսութիւնների ժողովածուն է, որով նրանք եթէ մի կողմից պարծանքով ուզում են ցոյց տալ իրենց յառաջդիմութիւնը «քերթողութեան եւ ստեղծաբանութեան» մէջ, միւս կողմից «առ հասակակիցս արձակեն զառաջին զայս փունջ բանահիւսութեանց, հրաւիրեալ զնոսա յայս աղբիւր լուսաւորութեան, զալ աջակցել ի քերուբաքանդակ ճախարակութիւն տաղաչափութեանց»:

Շատ բնորոշ է այս կոչը իր ժամանակի համար: Մարդիկ կրթւում են դպրոցում, կարդում են եւրոպական լեզուներով բանաստեղծութիւններ, նոյնը որոնում են եւ հայոց մէջ ու չեն գտնում: Բայց դպրոցը տուել է նրանց ազգի պակասութիւնը հոգալու միտքը, չեն կարող անտարբեր մնալ: Չկայ բանաստեղծութիւն, բայց պէտք է ստեղծել: Ուրեմն ի՞նչ պէտք է անել: Պատասխանը շատ պարզ է եւ երեխայական: — Հարկաւոր է հրաւէր կարդալ հայ դպրոցների բանաստեղծներին, որ զարթնեն: Եւ այդ անում են Լազարեան սաներն իրենց աշակերտական շարադրութիւններով ու ճարտասանական վարժութիւններով, որոնք անշուշտ սրբագրուած ու շինուած են իրենց հայկաբանութեան ուսուցիչ Միքայէլ ծայրագոյն վ. Սալլանթեանցից:

Այն բազմաթիւ անուններից, որոնք դրուած են ոտանաւորների տակին, եւ ոչ մէկն էլ ապագայում գրական շնորհք չի ցոյց տուել, որքան յայտնի է· բայց եւ բոլոր գրածներն էլ աննշան բաներ են· մեծ մասամբ ձօներ՝ Զատկի, Ծննդեան, Նոր տարուայ եւ այլն առթիւ ուղղուած Լազարեան իշխաններին· մի սովորութիւն, որ տեսանք, միայն այդ Լազարեան սաների մէջ չի եղել եւ միայն նրանք չեն, որ իրենց երախտաւորներին տուել են այնպիսի մականուններ, ինչպէս՝ աստուածազոյգ, դիւցապատիւ, դիւցազնափայլ, սխրափայլ դասու դիւցազանց զուգաթոռ, դիւցածնունդ, մեծամեծարար հերոսք, արքայապսակ դիւցազանց վեհազնեայ անմահից բարձակից եւ այլն: Դա ժամանակի ողորմելի ոգու արտայայտութիւնն էր:

Սակայն այսպէս լինելով հանդերձ՝ այդ ժողովածուն մի մանկական թոթովանք է, որ ցոյց է տալիս, թէ լեզուն պիտի բացուի: Դրա մէջ արդէն երեւում է, որ «մուզաները» ոչ միայն բարոյական խրատներ ու Աստուածաշունչ են սիրում եւ տաղաչափում նրա հատուածները, այլեւ ոգեւորւում են մեր անցեալով ընդհանրապէս· ունին արդէն հայրենիքի գաղափար, որով պարծենում են, որովհետեւ այդ հայրենիքը դրախտ է· ցոյց են տալիս ուսման սէր եւ ուրախանում են, որ պարսից բռնակալ լծից ազատւում է հայ ազգը: Դրանք ոգեւորութեան նոր նիւթեր են, որ Լազարեան սաներն

առաջարկում են մեր բանաստեղծներին մշակելու, եւ որոնցով այնուհետեւ պիտի զբաղուէր մեր ապագայ բանաստեղծութիւնը:

Եւ առաջինը, որ նոյն ժամանակներում այս եւ նման խնդիրներ է նիւթ դարձնում բանաստեղծութեան, է Յովհան Վանանդեցին, որ թէպէտ Ինճիճեանի ու Փեշտիմալճեանի ժամանակակից է եւ Բագրատունուց մի սերունդ առաջ մեռած, բայց շատ կողմերով տարբերւում է նրանցից եւ իսկական հիմնադիրն է դառնում մեր նոր ոգով գրականութեան:

**Յովհան Վանանդեցի**:— Յովհան Միրզաեան Վանանդեցին (1772–1840) ծնւում է Վան քաղաքում: Չորս տարեկան հասակում որբ է մնում հօրից. աղքատ մայրը շատ նեղութիւն է կրում իւր բազմանդամ ընտանիքը պահելու համար եւ իւր ութ տարեկան որդուն տալիս է Կտուց անապատը իբրեւ փոքրաւոր մի ոմն Գասպար վարդապետի: Այստեղ նա ցոյց է տալիս առանձին սէր ուսման եւ կարդալը երեւի հէնց իւր վարդապետից է սովորում, իսկ գրելը վանքի կոնդակագրից: Միաբանները տեսնելով նրա ընդունակութիւններն՝ առանձին խնամք են տանում վրան. շուտով դպրութեան չորս աստիճան է ստանում՝ Ամիրզադէ անունը փոխելով Յովհանի: Ուսման փափաքը նրան Կ. Պոլիս է տանում իր քսանամեայ հասակում, Երբ լաւ ծանօթ էր Աստուածաշնչին, գիտէր շարական ու Նարեկ, ի հարկէ մեծ մասամբ անգիր սերտած, ինչպէս սովորական էր ժամանակի համար: Այս միջոցին նա անգիր անել է սկսում եւ «բառարանը»:

Մայրաքաղաքում նրան յաջողւում է մտնել «մայր դպրատունը», ուր ստանում է իւր ժամանակի իսկական մեծ ուսումը, սովորում է քերականութիւն, ճարտասանութիւն եւ տրամաբանութիւն «յոյժ գերիմաստ ուսուցչացն տիրացու Յարութեան եւ մահտեսի Մանասէի Կարնեցւոյ»: Սկզբում ապրում է մեծ նեղութեամբ, իւր հացը հայթայթում է ուրիշների համար նամակներ գրելով, բայց դպրատան վերակացու Շնորհք Մկրտիչ Միրիճանեան ամիրան, տեսնելով նրա ընդունակութիւնն ու յառաջդիմութիւնը, շաբաթական երեք դահեկան թոշակ է նշանակում նրան, որպէսզի աւելի մեծ եռանդով կարողանայ պարապել. եւ յետոյ նոյնիսկ իւր տունն է ընդունում նրան ապրելու, սեղանակից անելով իրան:

Վանանդեցին այս հասակում արդէն ցոյց է տալիս բանահիւսութեան շնորհք եւ յօրինում է ճառեր կրօնական բովանդակութեամբ, որոնցով զուարճանում էր Շնորհք ամիրան իւր ազատ ժամերին: Այդ ճառերից մէկը գրում է նա իւր մայր դպրատան, իւր հովանաւոր ամիրայի եւ իւր երկու վարժապետների վրայ, կամենալով երախտահատոյց լինել նրանց: Մի անգամ ամիրան խնջոյք է տալիս Զաքարիա պատրիարքին. եւ բազմականները խնդրում են Յովհանին, որ իրենց խնջոյքի առթիւ մի ոտանաւոր յօրինէ: Նա ճաշի միջոցին գրում է ուզած ոտանաւորը ու կարդում. ամէնքը հաւանում են եւ խնդրում պատրիարքին, որ մի «վերտառութեամբ», այսինքն մականուն դնելով, պատուէ Յովհանին: Ամիրայի ցանկութեամբ՝ պատրիարքը «Վանեցի» կոչումը՝ որ երեւի թիւր չէր գալիս ամիրային, փոխում դարձնում է «Վանանդեցի» ի յիշատակ Ղուկաս Վանանդեցու:

Վեց տարի սովորելուց յետոյ՝ Յովհան Վանանդեցին Շնորհք ամիրայից վարժապետ է ուղարկւում Զմիւռնիա, ուր եւ ուղեւորւում է 1798 թ.

ապրիլին: Այստեղ ամուսնանում է նա, եւ տասնութ տարի վարժապետութիւն անելուց յետոյ ձեռնադրւում է քահանայ եւ մի առանձին գրքով, «Կերակուր քահանայից», բացատրում է քահանաների պարտականութիւնները: Կեանքի վերջում տաս տարի յօդացաւութեամբ տանջուելով մեռնում է 1840 թ. փետրուարի 3-ին եւ ամէնքից յարգուած՝ պատուով թաղւում է:

Յովհան Վանանդեցին ունեցել է միայն հայ ուսում. չի իմացել ոչ մի եւրոպական լեզու, տեղեակ է եղել բացի տաճկերէնից նաեւ պարսկերէնի եւ արաբերէնի. եւ ինչպէս երեւում է պարապել է պարսից գրականութեամբ, որովհետեւ կենսագիրն[1] ասում է թէ պարսկերէնից թարգմանել է ոտանաւորով «Փէնտի ադդար» կոչուած բարոյական բանաստեղծութիւնը: Հին կլասիկներ չի կարդացել, բայց նրանց մասին, ինչպէս եւ դիցաբանութեան մասին, տեղեկութիւն ունի եւ մէկ մէկ գործ է ածում դից անուններ: Քաջ ծանօթ է եղել հայ մատենագրութեանը, որից եւ ստացել է իւր ամբողջ զարգացումը: Սիրող լինելով գրականութեան, նա աշակերտական հասակից արդէն գրել է ոտանաւորներ, բայց բանաստեղծութեամբ պարապել է իսկապէս Զմիւռնիայում եւ յօրինել է շատ բան: Նա գործել է սակայն եւ իբրեւ վարժապետ ու պատրաստել է շատ աշակերտներ, որոնցից յետագայում նշանաւոր է լինում Մսեր Մսերեանը, որ հիացմունքով ու մեծ ակնածութեամբ է խօսում իւր սիրած վարժապետի վրայ: Սա իւր աշակերտական երախտագիտութիւնն արտայայտելու համար 1853 թ. Մոսկուայում հրատարակում է Վանանդեցու «Ճառ ներբողական ի սուրբ Խաչն Քրիստոսի եւ պատմագրական առասացութիւն ի Սուրբ Նշանն Վարագայ», որ գրուած է 1815–16 թուին: Ճառի վերջում կայ եւ ոտանաւորով «Ներբող բարեբանութեան ի սուրբ նշանն Վարագայ»: Դա մի կէս քնարական, կէս վիպական ներբող է նման նոյն բովանդակութեան հին երկերին, լի մեկնաբանական բացատրութիւններով: Նրա գլխաւոր բանաստեղծական երկերն են՝ «Տեսարան հանդիսիցն Հայկայ, Արամայ եւ Արայի», որ ժամանակով ամէնից հինն է, բայց տպագրուած է 1856-ին Զմիւռնիայում. «Արփիական Հայաստանի», Կ. Պոլիս 1836 թ. եւ «Ոսկի դար Հայաստանի», որ տպագրուած է մահից մի տարի յետոյ, 1841 թ. Զմիւռնիայում:

Վանանդեցին նոյնպէս հին դպրոցի մարդ է եւ իւր մէջ կրում է իւր ժամանակակիցների բոլոր պակասութիւնները բանաստեղծական արուեստի նկատմամբ: Եղել է մտածող ոգի, օժտուած երեւակայութեամբ եւ խօսքի շնորհքով, բայց նրա բնատուր շնորհքն անկիրթ ու անմշակ է մնացել, եւ ինքն եւս զգում է այդ, ուստի եւ ցաւելով գրում է թէ բանաստեղծում է դիւցազներգութիւն «չունելով իսկ եւ տեսութիւն անգամ նախնի հաղներգութեանց մերոց կամ օտար ազգաց յայս վաստակ յարացոյց, եւ ո՛չ եւս ի նոյն պիտանեգոյն զամբողջ հնախօս մատեանս»: Այդ ժամանակ ոչ Հոմերոսի եւ ոչ Վիրգիլիոսի թարգմանութիւններն էին հրատարակուած եւ ոչ իսկ Բագրատունու տաղերը. իսկ Վիդայի Քրիստոսականը, թարգմ. Թոմաճեանի հրատ. 1832 թուին, չէր կարող ազդել Վանանդեցու երկին, քանի որ նա ծեր էր եւ իւր երկերը յօրինած արդէն: Բանաստեղծութեան վիպական

1 Ոսկի Դարի յառաջաբան:

ձեւն ուրեմն ամբողջ ինքը պիտի ստեղծէր, իսկ ինքն առանց նախորդների չէր կարող բնականօրէն նոր գեղեցիկ ձեւ առաջ բերել գրականութեան մէջ։ Այս պատճառով նրա երկն աչքի է ընկնում ճաշակի եւ արուեստի բացակայութեամբ։

Ամենամեծ թերութիւնը, որ վնասում է Վանանդեցու աշխատանքին, այն է՝ որ նա ոչ մի գաղափար չունի գեղարուեստական երկի միութեան մասին, եւ իբրեւ հին սերնդի մարդ, կարծում է, որ եթէ մի պատմական նիւթ բանաստեղծական ոճով ոտանաւորի վերածուի, կը դառնայ վիպական քերթուած։ Նրա «Արփիականն» ամբողջապէս Ագաթանգեղոսի Պատմութիւնն է ոտանաւորով գրած։ Յօրինուածքի կատարեալ բացակայութիւն է. նիւթի մասերի յարմարում, աւելորդ բառը դուրս ձգել եւ պակասը լրացնել չգիտէ նա։ Բայց եւ այնպէս, թէպէտ եւ անծանօթ արուեստի պահանջին, բնազդաբար զգացել է միութեան կարիքը եւ աշխատելով գործողութիւնը կենտրոնացնել Ս. Գրիգորի շուրջը՝ մի քանի մեծ փոփոխութիւն է մտցրել Ագաթանգեղոսի պատմութեան մէջ։ Նա տառացի չէ հետեւել Ագաթանգեղոսին սկըզբից մինչեւ վերջը, այլ ամբողջ սկզբի մասը, Խոսրովի պատերազմները, Անակի գործը, Տրդատի փախուստն ու Լիկիանէսի մօտ ծառայելը, պատմել է տալիս Գրիգորի դայեակին, եւ Գրիգորն այս պատմութիւնների ազդեցութեան տակ գնում է ծառայելու Տրդատի մօտ։ Այնուհետեւ Տրդատի քաջագործութիւնները պատմել է տալիս Լիկիանէսին Դիոկղետիանոսի առաջ, եւ վերջապէս Հռիփսիմեանց նահատակութիւնը հրեշտակն է պատմում Ս. Գրիգորին Խոր-Վիրապում։ Այս եւ սրանց նման փոփոխութիւններով գործողութիւնը որոշ չափով արագանում եւ սեղմ է դառնում, բայց դժբախտաբար ամբողջ միջին մասը, Լուսաւորչի քարոզութիւնը, բաց չի թողնում, որով եւ Վանանդեցու քերթուածի կէսից աւելին աւելորդ մի ծանրութիւն է դառնում եւ մի գործը երկուսի վերածւում։

Ինչքան էլ նա «Արփիականի» մէջ կապուած է մնում Ագաթանգեղոսին, չի վարւում սակայն Կոմիտաս քահանայի Գործք Առաքելոցի պէս։ Վանանդեցին բանաստեղծ է. նորից յօրինում է Ագաթանգեղոսը։ Ազատ զգալով իրեն մանրամասնութիւնների մէջ, ստեղծում է ամբողջական պատկերներ ու դրութիւններ եւ երբեմն իսկական վիպական ոգւով շատ յաջող կերպով կարողանում է մէջ բերել գրաւիչ ու կենդանի մանրամասնութիւններ, արտաքինի եւ հոգու նկարագիրներ։ Իսկ այս արդէն մի խոշոր յառաջդիմութիւն է մեր վերածնութեան վիպական բանաստեղծութեան մէջ։ Ահա թէ ինչպէս է նկարագրում Դիոկղետիանոսի վիճակը, երբ նա լսում է Գոթաց Հռչէ թագաւորի մենամարտի հրաւէրը.

Դիոկղետեայ յունկն հարեալ ուխտ այսանակ ամբակուռ,
Յոսկերս ողջոյն եւ ընդ իրանն ահռից տարաւ զսարսուռ.
Ի սաստկաչունչն որպէս յորժամ տատանս առնու հողմոց՝ ուռ,
Այնպէս դողայր ըստ ջերմնոտաց, իւր դալկացան դէմք համուռ։
Վարանական ի հոգս անկեալ՝ քունն հեշտին գայր ի խոյս,
Կասկած ընդոստ յՃրբերօէն զարդեանցն ի բաց մերժէր յոյս.

Զի ոսկերացն ուժոյ տկա՛ր ի գոռ խիզախ անխրախոյս,
Կնատաաուն միշտ փափկացեալ Արեւեան չէր ողւոյն կոյս։
Կարշնեղ ջղաց փոխան դյո՛յն մոաց ձկտէ՛ր աստ եւ անդ․
Հնարից ինչ մարթել ի գիւտ զանձն պահել անվկանդ»։

Ապա պատմում է թէ ինչպէս կայսեր կոչի վրայ՝ զանազան կողմերից իշխանները ժողովւում եւ ներկայանում են կայսրին․

Մարզից մարզից հապ խմբէին իշխանորեար ի մի վայր,
Որպէս յախորժ սրինդ հովուի խաշանց բազուրդ դառն ի մայր․

Լիկիանէսը պատմում է Տրդատի քաջագործութիւնները․

Ասաց, իսկոյն եւ Տրդատէս կայսեր եկաց յանդիման․
Սէդ ի հասակ ճետ Պահլաւիկ, ցոլք հրափայլք յիւր ական․
— Իմ է այդ գործ ի հաճելեաց, ասէ, կանգնիլ ախոյեան․
Վազիւ յայս ժա՛մ նա ձերբակալ չառադնեացի յայս ատեան։

Ապա մանրամասն նկարագրում է Տրդատի հագուստն ու զինումը եւ մենամարտի ելնելը․

Պղնձենիւթ փողոց զանգիւն ժամադրեցին ի պայքար,
Աչխոյժ յերկուց վառեալ կողմանց թնդիւն գործէ հիարար,
Սիրտ յոխերիմ ի ճակատուն դան ի տեղի վազրաբար,
Բաղձ ի հոգիս դէտակն ի պսակ մենամարտիցն ուժգնակար։
Սօս երիվարք գոռ ի փռինչ զափր հատանեն յասպարէզ,
Եւ կարախիւն յերկուց կողմանց րոց բոռբոքէ անձնակէզ․
Երկոքեանն ի՛սկ մորակ ի կուշտ տան արշաւել ի կրկէս,
Շրջանս առնուն արձակ խաղան, յերկար բաղխին սաստկապէս…

Եւ երբ Տրդատը բռնում բերում է Գոթաց թագաւորին կայսեր առաջ,

Ծափ զծափի սիրտ ի կայտիռ հռովմէական համագունդ,
Ի դոչ վաշից գքարանձաւս արձագանգեն տան ի թունդ…

Երբ Դիոկղետիանոսի մարդիկը թագաւորի հարսնացու են որոնում, բանաստեղծն առթից օգտւում է գեղեցկութեան հետեւեալ նկարագիրն անելու (եր․ 148)։

Հռովմայ ողջոյն թնդայր սահման յաղջկանցն ի վազ ճեպերաղ,
Գեղք չպարեալք ի հրապարակս փայլակէին կարգ ի կարգ․
Զփղոսկրեայն ուսովք ծածան վարսից խարտեաշըն գիսակ,
Նռճեսարաս զանդամայօղն յարդարեր պե՛րճ զհասակ։
Երփն գեղոց չքնաղացոյց դէմք շողէին արծարծուն,
Լուսնեացն երեսս ակն այծեմանց կաթնածով ի՛նչ լուսաբուն․
Ցօնք մրապարգք աղեղնակեալ կիսաբոլոր մէտ ի քուն,
Նռնակեղեւ այտիցն ցոլք հրավառեալք ի փաղփիւն։
Տաշտից խնոց ծնօտքն ի տիպ, բոյր անուշից հոտեւան․

Ռնգունքն որպէս Լիբանանու խիկ զաշտարակս գեղազան·
Շրթանց փափկիկ կարմրալարք երփն հարեալք ի յորդան,
Կաթուած մեղու լեզուին շնորհք զրոյց բղխին քաղցրաբան:
Կճեայ կրծոց փայլուն տեսիլ ի գոյն վառեալ շուշանաց,
Բարեյարմար մատանցն ճիւղք ձիւնապայծառք ընդ ձեռաց·
Նոյն եւ մարմնոյն համայն մասամբք անհամեմատն յօրինուած,
Զբնաւից գիտէր զսիրտ ի խանդ գերել տարփանաց:

Բայց երբ խնդրակները չար ոգու դրդմամբ բռնի կերպով մտնում են կուսանոցը,

... Հռիփսիմեա՛յ ցոլս արձակեալ դէմք հրաշատես զարփենին՝
Ստուեր զայլոցն ածէ գեղովք օրիորդաց նահանգին,
Ցապուշ հարեալ հոյլք յուղակաց ի սխրանս զան հիացման...
Իսկ երբ նրա պատկերը ցոյց են տալիս թագաւորին,
Որպէս ուրուք սիրտ կաթոգին ի սէր վառեալ երկրէից,
Անակնկալ ի ձեռս անճառ բերցէ ճոխանս զանմահից, —
Կամ ընդ ծաղկանց վաղաթարշամ վայելչութեան երանգից
Զանթառամից հասցէ ունիլ զպերճութիւն հրճուալից, —
Խանդ ի հոգի նոյնպէս ի ներքս ածեալ կայթէ՛ Քաջն արանց,
Ցայլս իբրու ի խելս եկեալ վաշ վա՛շ գանչէ հրճուանաց·
Համայնց ի բաց փախչին գեղձանք, յայն կայ եւ ե՛թ ակնբաց,
Վայրկեանք դարուց նմա բերեն երկարութիւն շրջանաց:

Ես կ'ուզէի, առանց երկարութիւնից վախենալու, մի երկու հատուած եւս մէջ բերել ցոյց տալու համար, թէ ինչպէս հանդարտ ու սիրուն պատմել գիտէ այս մոռացուած բանաստեղծը:

Խոր տխրութիւն զանհնարին աղունս ածեալ ի զուպար,
Զարքայն յանձուկն ի Հռիփսիմեայ գեղոյն լլկէր չարաչար:
Ցայգ եւ ցերեկ յանմխիթարն անկեալ ի սուգ անդարման,
Եւ յայլոյ խելս այլանդակեալ կոծէր ջայլէր ի կական·
Կուրքն դառինք եւ ըմպելիք հոտս ի ժահրիցն Ստիգսեան,
Ի քիմսն ազդեալ յանբերելի ածէն վշտացն ի տուգան:
Աւագանւոյն իւր ի չուարս անկեալ առ գիւտ հնարից,
Դիւրումն ի սիրտ ածել պետին յայն ի մորմոք ցաւալից·
Երէվայրեացն որսոյ տան ժամ բոլոր զօրացըն խմբից,
Փոքու զաղէտս մեղմել ցաւոց որ մահաբերն է սրտից...
Այն ինչ ի կառս Տրդատ ելեալ ելոն ճեպէր ընդ քաղաք,
Շեշտ ի վերայ գայր պատուհա՛ս չանթ բարկութեան երկնառաք...
Խոտաճարակ ի շամբս անկեալ անզգամէր չարաչար,
Մերկ զանձն ընդ դաշտսն կոծելով ընդ գայլս գայր կնճաբար...

Այս ցաւալի դէպքի վրայ սուգը բռնում է ամբողջ աշխարհը եւ նոյնիսկ բնութիւնը սգում է·

Բերկրանաց փախեան խնդիրք, բոխք ապալերք խանեցան,
Դաշտաց լերանց յեղծ եկին գե՛ղք, ծառք գեղուղէշք խամրացան․․․
Լցաւ քաղաքն պանծալի մառախլապատ խաւարաւ․․․
Նոճի հասակն անդ Աշխենայ մեծ Թագուհւոյն գեղապանծ,
Յաղէտաւոր յայս կորացեալ դիպուած դնէր ոտաքանց,
Ջայլէր կոծէր անմխիթար, վտակս հոսէր արտասուաց։
Ո՞ փառք, ասէր, Հայաստանի, այր ահընկէց չանթահար,
Ո՞ւր պանծագոյն քո այն գահոյք յարփեան ցոլմունս ակնասար,
Աւա՜ղ ցաւոյս․․․ արդ ի չամբից ի տիղմն գաս հիգաբար,
Ընդ բեհեզաց ծածկոյթ մարմնոյ գայլից շաղախք պատապար,
Զիա՞րդ սիրոյ քո սերտ ընկերս ափոփս առից գէթ ինչ խուն,
Որ յամենուստ արդ կողոպուտս եմ ի փառաց բարձրագոյն։
Զիա՞րդ սիրոյ քո սերտ ընկերս ափոփս առից գէթ ինչ խուն,
Որ յամենուստ արդ կողոպուտս եմ ի փառաց բարձրագոյն։
Ո՞ փութասցի յԱպողոնին անդր ի մեհեան երազմոյն
Ջելից ստոյգս առնուլ գուշակս այսմիկ դիպաց դառնագոյն։
Հա՜յր իմ հզօր, դու Աշխարադ պետդ Ալանաց ոգի սերտ,
Զքո դստրիկս եկ տեսանել խանձեալ ի ցաւս իբրու չերտ․․․

Բերած հատուածներից երեւում է թէ ինչպիսի վիպական ոգի է ունեցել Վանանդեցին եւ ինչպիսի եռանդով կենդանացնում է նա պատմուածքը։ Նա մի անգամից մեր թմրած, սառն ու անշունչ բանաստեղծութեանը հոգի ու շունչ է տալիս․ ափսոս միայն, որ Արփիականի տասն հազարից աւելի տողերից երկու երրորդ մասը աւելորդ բեռն է։

Պակաս չի վնասում Վանանդեցու երկին եւ նրա ճաշակը ոճի, գլխաւորապէս բառերի ընտրութեան նկատմամբ։ Ոտանաւորը կշռուած ոտքերով եւ հնչուն յանգերով, երկար վիպական տողերով, բաժանուած քառեակների, թողնում է նիւթին պատշաճ լրջութեան տպաւորութիւնը։ Բայց այն վայելքը, որ ընթերցողն ստանում է ոտանաւորից եւ խօսքի յարմարաւոր արտայայտութիւններից, որոնք այն ժամանակ նորութիւն են եղել մեր գրականութեան մէջ, յաճախ անսպասելի կերպով ոչնչանում է բառերի եւ երբեմն չարահիւսութեան անպիտանութիւնից։ Նա սիրող եւ հետեւող է 11–րդ դարու փչացած ճաշակին, որի նմուշը գտնում ենք Գրիգոր Մագիստրոսի եւ Նարեկացու տողերի մէջ, այլ է՝ լեզուի գեղեցկութիւնը որոնել խրթնութեան մէջ։ Վանանդեցու այս պակասութիւնը մասամբ ներելի է լինում, եթէ նկատի ունենանք, որ նա հին, մեռած լեզուով է գրում, եւ որ նա առաջինն է, որ խոշոր բանաստեղծական երկեր է յօրինում յանգաւոր ոտանաւորով, ուստի եւ ինքը պիտի ստեղծէր մի նոր բանաստեղծական լեզու, կարիք պիտի ունենար հարուստ բառարանի՝ յանգեր ու ոտքեր կազմելու համար։ Այս պատճառով նա բաւական ազատ է վարւում բառերի վերաբերմամբ․ գործ է ածում քիչ գործածական եւ դժուար հասկանալի բառեր, յաճախ այնպիսի արմատներ, որոնք պարզ կերպով գործածական չեն, կամ նորանոր բառեր է ածանցում եւ բարդում․ կամ բառերը մի բոլորովին անսովոր նշանակութեամբ բանեցնում։ Եւ վերջապէս կան բառեր եւս, որ Աւձեռն բառարանի մէջ չկան։ Այս ամէնը բաւական դժուարացնում է ըն–

Թերցողին, որ սակայն հետզհետէ վարժւում է այս խորթութիւններին:

Չպէտք է մոռանալ մի հանգամանք եւս: Մեր լեզուական կրթութիւնն այժմ հիմնուած է մեր կլասիկական համարուած գրաբարի վրայ. մենք այժմ շատ աւելի հեշտութեամբ հասկանում ենք մեր առաջին գրաբար մատենագիրները, որոնց լեզուն եւ աւելի է ազդել մեր աշխարհաբարի վրայ. մինչդեռ դրանց հետ զուգընթաց եւ դրանցից յետոյ կան շատ գրաբար գրուածքներ, որ դպրոցական ուսման նիւթ դարձած չլինելով՝ մինչեւ այժմ եւս խորթ են մնացել մեզ համար: Արդ՝ Վանանդեցու ժամանակ եթէ Մխիթարեան դպրոցում մեր հին լեզուի այս բաժանումն եղած էր եւ Մխիթարեան գրողներն արդէն հետեւում էին դասական գրաբարին,— ուրիշները սակայն այսպիսի խտրութիւն չէին դնում. ուստի եւ յաճախ այնպիսի լեզու են բանեցնում, որ մեզ դժուար հասկանալի է. մանաւանդ որ այդ ժամանակ Հայկազեան լեզուի ընդարձակ բառարանը դեռ չէր հրատարակուած եւ բառերի նշանակութիւնները դեռ ճշդուած չէին: Վանանդեցին ուրեմն ամէն ինչ ինքը պէտք է սովորէր գրքերից մեծ մասամբ առանց բառարանի օգնութեան, եւ երեւի դժուար բառերի համար անձամբ բառարան է կազմած եղել իւր համար. յաճախ ի հարկէ սխալ մեկնութիւններով, եւ այդ հազուադէպ երեւացող բառերը գործ է ածել անխտիր իւր քերթուածների մէջ:

Նոյն պակասութիւնները, որ ունի Արփիականը, կան եւ Ոսկի Դարի մէջ եւ մինչեւ անգամ աւելին եւս: Արփիականի մէջ, թէպէտ թոյլ կերպով, կայ գործողութիւն եւ նոյնիսկ մի միութիւն, որ առաջանում է անշուշտ նրանից, որ Ագաթանգեղոսն եւս որոշ չափով գեղարուեստական գրուածք է. Ոսկի Դարի մէջ այդ էլ չկայ: Այս խոշոր քերթուածը, մօտ 5600 15-վանկանի տողերից կազմուած, անասելի տուժում է նրանից, որ առանց որոշ ծրագրի եւ յաջորդականութեան է յօրինուած, եւ ծանրաբեռնուած է կրկնութիւններով եւ անպէտք մասերով: Բովանդակութիւնն է ընդհանրապէս Հայաստանն իւր պատմութեամբ եւ աշխարհագրութեամբ:

Առաջին երգի սկզբում Սահակ Բագրատունին խնդրում է Խորենացուն գրել Ոսկի Դարի մասին, եւ Խորենացին պատմում, իսկա՛պէս նկարագրում է Ոսկի Դարի կեանքը, բնութիւնը, համառօտ անցնելով Ադամից եւ մանրամասն պատմելով ջրհեղեղի մասին: Այստեղ մենք կը գտնենք եւ ամէն աւանդութիւն ժողովուած՝ Նախիջեւան, Ակոռի, Սիմ, Տարրան, Մարանդ անունների համար, եւ վերջը թէ ինչպէս մարդիկ տարածւում են Հայոց աշխարհի զանազան կողմերը: Նիւթը դիւցազներգութեան համար մի անպէտք բան է, բայց կան մէջը կենդանի երեւակայութեամբ եւ աշխոյժ եռանդով առաջ տարուած այնպիսի հատուածներ, որոնց նմանը չունի մեր հին բանաստեղծութիւնը: Այսպէս, օրինակ, կենդանիների ելքը Նոյեան տապանից (եր. 14 եւ հտն.), որից աւելորդ չի լինել մի քանի տներ դնել այստեղ, քանի որ այս բանաստեղծն այժմ այլեւս չեն կարդում:

Բայց յապրացու մեր տապանին բացման՝ զնոր տեսարան
Մեր իսկ աչօք անդր ի Մասեաց տեսաք լերին յարտեւան.
Օդոյն զի՞րդ դղորդէր յարկ թռչնոցն ի թափ թեւածման,

Եւ գետնոյն զի՞ թնդէր յատակ ցամաքայնոցն ի կայթման։
Մինչս առիծն որոտացեալ եւ յագին տա՛յր ուժգին թափ,
Իբրեւ զանիւ հիւայր հրոյ յորսոյն ի գիւտ պառ ի թափ.
Խոժոռադէմ բիբս ի բնաւից բացեալ վերայ զանթարթափ,
Եւ ընդ խռան յանձն ապաստան երկիր խաղայր հարթատափ։
Ընդ առապարս ցռուն սաստիկ հնչեալ բառանչ բոմբահան,
Ի դալարեացն անկեալ խնդիր, հովտաց յածէր ընդ սահման.
Զազատութեան հարեալ դիպաց յանձկանաց չէ՛ր կապարան,
Եւ ոչ ունկանցն աղդէր քրքինջ քանզի չունէր հարկահան...
**Վա՛չ վա՛չ՝ ո՞րպէս իբր ի փողոյ լուր վառեալ չեչտ յասպարէս,**
Փառք զլանջօք ձին որոտայր դափր հատեալ ի կրկէս.
Ախնջադռ իբրեւ տօնից սուր արշաւեալ ի հանդէս,
Ընդ զառիվայր խաղայր լերին յարօտ դիմել փութապէս։
Նապաստակին սուր էր վազումն ականջ ընդ ուղն ի կռուան,
Առ ի կողաց յածեալ լերին վէմ գտանել յօթեւան.
Յանձինն ի պուրծ հանճարադիւտ շրջան գործէր ի սուրման,
Ցնդոյր ի կեանս յառապարացն եղեալ ամուրս ապաստան։

Այսպէս իրենց բնաւորութեան համեմատ մի քանի խոշոր գծերով նըկարագրուած են եւ միւս չորքոտանիներն ու թռչունները. իսկ կաքի՞կը.

Կաքիկ ի դէմս անդ ծամածուռ նոցուն տարեալ զուրուական,
Խաղայր, կայթէր, խլիրաս տայր, սողէր, սուրայր մունջ ի բան.

Զկենդանեաց նմա զբօսանք էր խառնիճաղանճ կարաւան,
Յայն զմայլուն յամպախաղաց մնայր լերին յարտեւան։

Երկրորդ երգի մէջ դարձեալ սկսում է երկու նախաստեղծից եւ պատմում է արուեստների ու երկրագործութեան գիւտը, անելով մի տեսակ ազգագրական եւ դիդակտիկական բանաստեղծութիւն։ Ապա թէ ինչպէս մարդիկ ցրւում են Հայաստանից դէպի Սենաար, Հայկի եւ Բէլի մասին, Հայկի գալը Հայաստան, Բէլի կռիւը եւ այլն։

Երրորդ երգն սկսւում է Արամից եւ Խորենացու համառօտ պատմութիւնն է անում, խօսում է Հայոց առեւտրի մասին եւ թէ ինչ գաղթականութիւններ են եկել Հայաստան։ Արշակունիներից յետոյ գրում է Բագրատունեաց մասին եւ Հայոց պատմութիւնը համառօտ տեսութեամբ բերում հասցընում է մինչեւ նոյնիսկ Ռուսաց տիրապետութիւնը։

Չորրորդ երգի մէջ նորից դառնում է դրախտին եւ հիացմունքով նկարագրում է, երբեմն առանձին գեղեցկութեամբ, Հայաստանի բուսականութիւնն ու բնութիւնն ընդհանրապէս։ Ապա մի անպէտք հնախօսութիւն է անում ապացուցանելու, թէ դրախտը Հայաստանում է եղել։ Հետեւելով Ինճիճեանին՝ ոտանաւորով Հայաստանի աշխարհագրութիւնն է անում, նկարագրելով լեռները, գետերը, գաւառները։ Վերջը Հայոց աստուածապաշտութիւնն ու կրօնն է գովում եւ պաշտպանում եւրոպացի քարոզիչների դէմ, վիճելով նրանց հետ։

Ի՞նչ է այս բանաստեղծութեան արժէքը։

Վանանդեցու գլխաւոր արժանիքն ի հարկէ ձեւի մէջ չէ, որը շատ անկատար է իւր ամբողջութեան մէջ: Թէպէտ մանրամասնութիւնների ստեղծող է հանդիսանում եւ գիտէ զգալ բնութիւնն ու երբեմն սիրուն նկարագրել, բայց նա ընդհանրապէս պրոզա եւ բանաստեղծութիւն չի տարբերում եւ ամէն ինչ խառն ի խուռն ոտանաւորի է վերածում: Նրա գլխաւոր վաստակը, որով նա մեր գրականութեան մէջ տեղ պիտի բռնի, շօշափած գաղափարների եւ նոր տեսակի զգացումների մէջ է: Այս նկատմամբ Վանանդեցին իսկապէս խոշոր նորամուծութիւններ է բերել մեր բանաստեղծութեանը, երբ համեմատում ենք սրա գործն իր նախորդների ու նոյնիսկ ժամանակակիցների հետ եւ երբ ի նկատի ենք ունենում այն ազդեցութիւնը, որ նա թողել է յաջորդների վրայ: Նրանով է իսկապէս սկսւում մեր նոր բանաստեղծութիւնը, որովհետեւ նրա գրուածքների մէջ առաջին անգամ գտնում ենք մեր 19-րդ դարու գեղեցիկ գրականութեան գրեթէ բոլոր գլխաւոր գաղափարներն ու զգացումները: Շատ բան ի հարկէ սաղմնային դրութեան մէջ է, որովհետեւ 19-րդ դարու առաջին երեսնամեակում շատ գաղափարներ էլ դեռ նոր էին ծնւում մեր մէջ եւ պարզուած չէին:

Վանանդեցին մի կողմից շարունակելով հին կրօնական ուղղութիւնը, միւս կողմից բանաստեղծութեան առաջ դնում է մի նոր խնդիր, ազգային քաղաքական անցեալը: Նրա ձեռքով սկսւում է, այսպէս ասած, Հայոց քաղաքական անցեալի բանաստեղծութիւնը, քաղաքական անցեալից առած հայրենասիրական քերթուածների շարքը, որ հետզհետէ աւելի ընդարձակւում է, եւ որի մէջ աւելի ու աւելի ուշադրութեան է առնւում ներկայ կեանքը: «Տեսարանի» մէջ արդէն, որ միւսներից վաղ է գրուած եւ յիշւում է «Արփիականի» մէջ, վիպական քերթուածների նիւթ դարձնում է Հայկ,[1] Արամ, Արա․ առանձին երգերով եւ ապա մի չորրորդ երգով եւս՝ «Ցորդոր Նմանիլ Նախնեաց», ամփոփումն է անում առաջին երեք երգերի: Նոյն նիւթը նա յեղյեղում է եւ Ոսկի Դարի մէջ եւ մասամբ նոյնիսկ Արփիականի մէջ:

Սա արդէն մի մեծ յեղափոխութիւն է մեր բանաստեղծութեան մէջ: Դարեր շարունակ քաղաքական կեանքը մերժուած է եղել երգի արժանանալուց․ քերթողները միակերպ միայն վարդ ու սոխակ, պարտէզ ու գարուն են երգել եւ կամ եկեղեցի ու սրբեր, կրօնական խնդիրներ, Հին ու Նոր Կտակարանը, շատ շատ՝ Հայոց եկեղեցական անցեալից՝ հայ սրբեր․ իսկ այժմ բանաստեղծը առանց թողնելու կրօնականը՝ ոգեւորւում է Հայոց քաղաքական անցեալով: Նա աչք դարձնելով դէպի հեռաւոր անցեալը, այնտեղ բացի սրբերից տեսնում է նաեւ քաղաքական աշխարհական կեանքը եւ հեռաւոր անցեալի միջից հանում է մեր պատմութեան առասպելական դիւցազներին, որոնք նրա համար սակայն իրական էին, եւ պարծանքով երգում է «Հայ-

1 «Հանդէս դիւցազին մերոյ Հայկայ» երգի բովանդակութիւնն է՝ Հայկի ծնունդն ու սնունդը, Հայաստանի աստուածապաշտութիւնն ու մարդկանց զեղծումը, ջրհեղեղի մասին․ մարդկանց բազմանալը եւ բաժանուիլը: Աշտարակաշինութիւնը, Հայկի ապստամբութիւնը, պատերազմը եւ յաղթութիւնը, Հայկի միապետութիւնը, աշխարհաշինութիւնը եւ մահը:—Այս «Հանդէս դիւցազին մերոյ Հայկայ» ուրեմն նախագաղափարն է Բագրատունու «Հայկ դիւցազնի»:

վեան ազատութեան» համար կռիւը, որով սկսւում է հայ ազգի «անեղազդին տէրութիւնը» (Տեսարան, եր. 51) եւ թէ ինչպէս օտարները հնազանդւում են հայերին եւ

Ցորէ անտի պայծառ փայլէ պարծանք ազգին,
Երբ միապետ հանդիսանայ մեր այս նախնին.
Ցաջողք բարեաց ի Հայաստան յաճախեցին
Զքնաղ ցուցեալ համայն ազանց այլ աշխարհին։

Զհայ քաղաքական ազատութիւն առանց հայրենիքի, եւ Վանանդեցին մեր անցեալ կեանքի հետ բնականօրէն յիշեցնում է մեր մոռացուած հայրենիքը, որ մեր անցեալի հետ հաւասար եւ նրանից էլ աւելի գրաւեցնում է քերթողին։ «Ո՞րն է աշխարհ Հայաստան», ինքն իրեն հարց է տալիս նա. եւ պատասխանն այն ժամանակի համար շատ պարզ էր։ Մենք մի այնպիսի հայրենիք ունինք, որի նմանը չի ունեցել եւ չունի ոչ մի ազգ։ Մեր հայրենիքը դրախտն է, մարդկութեան առաջին եւ երկրորդ օրօրանը, — մի հին աւանդութիւն, որ վաղուց արդէն բնիկ գրոյց էր դարձել եւ որ 18-րդ դարու վերջում եւ 19-րդի սկիզբներում շնորհիւ Զամչեանի եւ Ինճիճեանի զօրեղ կերպով նորոգուել էր հայ գրագէտների շրջանում եւ ազգային մեծ պարծանք էր համարւում. ուստի եւ պէտք է տեղ գտնէր բանաստեղծութեան մէջ։ Եւ ահա՛ Վանանդեցուց սկիզբն է առնում Դրախտ Հայաստանի եւ Նոյեան Հայաստանի գովքը, որ այնուհետեւ երկար ռդեւորում է մեր բանաստեղծներին, մինչեւ անգամ աշխարհաբար դրողներին, ինչպէս Գամառ Քաթիպա եւ ուրիշները։ Դա մի սին պարծանք էր, բայց սիրով կապում էր սրտերը երկրի հետ, այն երկրի, որ ուրանում էին իր բնիկները.

Հրճուի՛մ, վա՜յ ինձ, Հայկեա՛ն է տուն ուր եւ դրախտն էր գետեղ.
Ուստի քառից բաշխին գետոցն առաջք ուխել յաղթաղեղ.
Երկիր բեղնուտ, վայր փափկութեան յերփն ծաղկանց լուսագեղ,
Եւ նախահարցն իսկ նախ քան ջուրց կացեալ գողող տուն չքեղ,
Անդէն եւ Նոյ գվեցդարեան ձգեալ զաւուրս իւր կենաց...
(Ոսկի Դար, 9)։

Դրախտը, Նոյի փրկութեան տեղը, մեր երկիրը, մերն է եղել. եւ բընական եզրակացութիւնն այն պիտի լինէր, թէ ինչո՛ւ պիտի թողնել, որ օտարները խլեն մեզնից այդ պարծանքը, որ մերն է եւ մենք պէտք է գովենք ու սիրենք։

Զի թէ մարդկան յերկեակն աճուրդ մեր կաց երկիր նախապար,
Զմեր եւ հի՞մ կալցին պարծանս, որ յետինն են դեհք օտար։
(Նոյն, 3)։

Եւ Վանանդեցին ձեռնարկում է մի դիւցազներգութիւն դրելու, որով կարողանար հայ երիտասարդներին հասկացնել Հայոց ազգի պարծանքը թէ անցեալի եւ թէ հայրենիքի նկատմամբ։

Բանաստեղծն ուրեմն սկսել է արդէն մտածել ազգի եւ հայրենիքի վը-

րայ, համեմատել ներկայ վիճակն անցեալի հետ եւ երազել ապագայի համար: Ազգն ու հայրենիքն է շարունակ նրա մտքի մէջ.

Հուր է սեղանոյ իղձ ազգասիրին
Արծարծուն վառեալ ի ներքս ի հոգին.
Ուր խաղաղականք եւ այլք ըստ կարգին
Ազգային դարձուածք հաճոյ ճենճերին:

Այդ ազգն ու հայրենիքը անցեալում՝ ներկայանում են նրան գաղափարականօրէն գեղեցիկ, համակ քաջութիւն, քաջազնութիւն եւ բարեչինութիւն:

Ի Հայաստան նախ կանգնեցան շէնք եւ քաղաքք ի հիմանց,
Անդեայք եւ հօտք անդ խայտացին նախ ի ծնունդս սերմանց...
Հայաստանին են նախարուեստ վաճառականքն ի հանճար,
Որք զառաջինն ի տուրեւառս կարգ հաստեցին զճարտար, եւ այլն:
(Ո. Դ. 88):

Ամէն ինչ լաւ է եղել անցեալում, ասում է բանաստեղծը, ափսոս միայն, որ իմաստութիւնը պակաս է եղել Հայոց միջից: Մեր նախնիքը յաճախ, մինչ հաւատարիմ ծառայել են օտարին, զինուել են իւրայինների դէմ եւ պատրաստ են եղել իրենց պետութիւնն ուրիշներին մատնելու, — իրենցը քանդել են ուրիշինը շինելու համար:

Բա՛րէ փառաց քոց, Հա՛յաստան, զի Հաստողին շնորհաց բան
Ի քեզ յառաջ հնչեաց յատուկ ի մարդկաձայն բարբառման...
Քոյդ հնչեցին անձաւք լերանց նախ արձագանգ պարզ ի դարձ,
Քոյոց կայից ծառք եւ ծաղկունք յակնճիռ հարան չքարարձ,
Գետք եւ աղբիւրք ի քէն բղխման ուխս յորդեցին նախապարծ,
Բայց էցի՛ւ թէ քոյին որդիք զքոյդ գիտէին շուք, յանկա՛րծ...
(Ո. Դ. 353):

Եւ հայրենիքի արժէքը չճանաչելու, իսկ օտարներին հաւատարիմ ծառայելու այդ ոգին մեր պապերից ժառանգել ենք մենք եւ պահում ենք մինչեւ այժմ մեր արիւնի մէջ.

Ի Մոսկովայ հայեա՛ց Կայսեր՝ զոր Հայոց տայ գովութիւն,
Ազգ է անկեղծ եւ մտերիմ առ ո՛ եւ է տէրութիւն.
Զոր եւ արդիւնքն ի նորս եւ հինս հաւաստիս տան հաստատուն,
Սակայն զի՞նչ շահ, զի յանհոգս են զիւրեանց յարգել բնիկ տուն:
(Ո. Դ. 325):

Ի՞նչ շահ հայ ազգի ամէն բարեմասնութիւններից, երբ անհոգ են մընում բնիկ տունը յարգելու: Եւ ոչ միայն դրանից օգուտ չունին, այլեւ տեսէք թէ ինչ է եղել դրա հետեւանքը.

Վայրավատին ուստի Հայկեան եղեալ սերունդք ի հուար,
Ծքեղ պատուոյն անկան փոխան՝ մերգուզանացն ի խաւար.
Ոսկեղրուագ յարկացն չէնք եւ սրահից գեղապար,
Յաւով ասեմ, յատակեցան յանչէնս եղեալ առապար:
Ստրկութեան անուրն ի մերս անլոյծ կապեալ պարանոց,
Հայրենատուրն խապառ քերքեալ ի վիճակէն աւալոց.
Երկիր՝ որ դրախտն էր փափկութեան անմահութիւն ծաղկանոց,
Դժնեայն եղեւ ազգաց կոխան՝ մեր յանդարման սրտից խոց:
Խեթիւ ի մեզ զի հայեցաւ Արփին արդարն յիւրն ի գատ,
Զմեր դիմացն ի տխրաթոյր մերկել տեսիլն ըղախատ,
Մերացն եղեալ ժանտ դրացեաց կատականաց ի նախատ…

(Ռ. Պ. 326):

Եւ այս ամէնը ինչո՞ւ համար, ի՞նչ մեղք են արել, որ Աստուած պատժում է հայերին: Այո՛, մեղանչել են, բայց այլեւս ոչ միջնադարեան հայեացքով, այլ միայն նրանով, որ օտարասէր հայն անհոգ է իր բնիկ տունը յարգելու համար, եւ դրա համար հէնց այդ օտարների նախատինքի, ծաղր ու ծանակի առարկան է դարձած: Արդարեւ եղել են մեր պատմութեան մէջ շրջաններ, երբ հայերն ընկած դրութեան մէջ են եղել, բայց ոչ այժմեան պէս, որովհետեւ այն ժամանակ առաջ են եկել տղամարդիկ, որոնք «փոյթ յանէին յաղգին պատիւ ձեռնարկուք», իսկ ա՞յժմ… այժմ բանաստեղծն անմխիթար է.

Սակայն զարդիս անփառունակն եմք աղետից ողբերգուք.
Աշխարհակալ մեր միացաւ պայծառ թագին փայլատակ,
Արքայազանց համակ բարձաւ առհմեղութեան յիշատակ.
Զի ցան եւ ցիր յոլորտս անկան յօտարազգեացն ի պառակ,
Նորոգութեան ոչ ունելով զակնկալեաց նպատակ:

Ահա թէ ինչ վիճակի մէջ է պատկերանում հայ ազգն ու աշխարհը բանաստեղծին, եւ նրա սիրտը կտրատւում է տեսնելով այդ ամէնը, եւ սրտի խորքից ձայնում է.

Ո՛վ, զի՞ հոգւոյս փղձկէ զկայս չարախառավար այս արկած,
Եւ կենդանւոյն զմահուն տայ կլնուլ օրհաս վայրանկած:

Եւ այսպէս մեր բանաստեղծութիւնն արդէն գտել է իւր իսկական խոր զգացմունքի աղբիւրը. դա hայրենասիրութիւնն է իսկական ընդարձակ իմաստով, որ միանգամից իւր բոլոր թափով դալիս է բարձրացնելու մեր քերթուածները եւ զօրեղ չեչտեր հնչել տալու նրանց: Եւ Վանանդեցու այդ չեչտերի մէջ մենք գտնում ենք ե՛ւ Ալիշան, ե՛ւ Գամառ Քաթիպա, ե՛ւ Պեշիկթաշլեան եւ նոյնիսկ Աբովեան: Եւ այլապէս էլ չէր կարող լինել, քանի որ բանաստեղծութիւնը կապւում է կեանքի հետ, իսկ կեանքն ու կեանքի ձգտումները նոյն են եղել դրանց ժամանակ:

Բանաստեղծն առաջին անգամ սկսում է վերլուծել ներկայ հայ կեանքը, որի մէջ ոչ մի մխիթարական բան չի գտնում: Հայն ընկած է, «վայրան-

*կած» այն պատճառի, որ շատ Հայեր Հայ անունն անարգանք են Համարում իրենց Համար․*

*Անունն՝ որ բուն էր պարծանաց ի նախնեաց քաղցր դարուն,*
*Այժմիկ, վա՛յ ինձ, յանախորժակն անկեալ դնի հիգութիւն.*
*Չի են բազումք, որք անարգանս անձանց դնեն Հայ զանուն,*
*Ցայլոց միտեալ յիմար մտօք ագնուանալ յետին տուն։*
*Ի ծայրայեղն այո՛ մոլիլ կենցաղագէտ չէ մարդկան,*
*Բայց մերքն եւ յայս անզգամեալ զսիրտ կալան խժական։*
*(Ո. Դ. 326)։*

*Հայն այլասերուել է․ քաղաքական իշխանութեան անկումից յետոյ՝ սկսել է ցրուել այլ եւ այլ կողմեր եւ իւր բնիկ ազգային ոգին հեշտութեամբ յեղափոխում է իւր դիւրափոխ բարքերով․ նայելով թէ որ երկրում է, նըրանն էլ ընդունում է շարունակ փոփոխելով, այն պատճառի, որ*

*«Մինչեւ զհայութեան անուն չյիշել յայլազանց երկրին․*
*Որով օր աւուր կորուսեալ զյարգ եւ զչուք անձին․*
*Առ օտարազգիս անկած ցուցանեն զազգն գլխովին»։*
*(Տեսարան, եր. 140)։*

*Սրանից էլ աւելի ստորանալ չի լինիլ մի ազգի Համար։*

*Ի՞նչ է դրա պատճառը եւ ի՞նչ պիտի լինի դրա ճարը, — Հարց է տալիս բանաստեղծը եւ պատասխանում։*

*Ոչ թէ ընդհանուր ազգի բնաւորութիւնն է պատճառ այս խորին անկմանը, այլ* կրթութեան *պակասութիւնը։ Ուրեմն պիտի կրթել Հայութիւնը։ Եւ ո՞վ պիտի Հոգայ կրթութեան Համար։ — Ամենայն Հայ մարդ եւ յատկապէս քերթողները։ Եւ այսպիսով բանաստեղծութիւնը Վանանդեցու գրչի տակ ստանում է մի նոր ազնիւ նպատակ․ նա մինչեւ հիմա գրում էր Աստուծու եւ սրբերի, վարդի ու սոխակի փառաբանութեան Համար, իսկ այնուհետեւ պիտի պարապի ազգի վերաշինութեան գործով, Հասարակութիւն կրթելով։ Եւ այս նպատակին նուիրում է Վանանդեցին իւր երկերը։ Լինելով ժամանակակից Ինճիճեանի ու Փեշտիմալճեանի, նա նոյնիսկ իւր Արփիականը գրում է «ոչ ի պատիւ այնքան սրբոց Հռչակ Հարեալ զովութեան․․․ Ամենապարծ քանզի նոքա ի փառս կան պարաւոր», որքան Հայաստանի «երգակների» Համար․ եւ նա Համոզուած է, որ իւր օրինակին պիտի Հետեւեն շատերը նոյնպիսի երգեր յօրինելով․*

*Վեհազանցն այո՛ ի սիրտ վառեսցի խանդումն անուշակ*
*Երագ ի յորդոր գալ քաջազնութեան յարդեանցն ի դուշակ։*

*Եւ Հայ բանաստեղծների այդ աշխատանքի արդիւնքն այն պիտի լինի վերջը, որ պիտի դադարի դժնեայ զանգատն ազգից, որ արդէն ձգտում է յարութիւն առնելու, եւ պիտի գայ մի օր, որ պիտի կործանուի Հայ ազգի խաւար ու խարխուլ ամբարտակը, որ կարծես նրա կոչումն է դարձել․*

*Զմրեսցի զազգէն, որ յառնել դիտէ, դժնեայ քանքարտակ,*
*Նսեմն այն կոչման հիմն ի վեր դայցէ խարխուլ ամբարտակ:*

Ահա թէ ինչո՛վ է ոգեւորւում եւ ի՛նչ նպատակ է դնում Վանանդեցին մեր բանաստեղծների համար. նրան ոգեւորողը ազգի սէրն է, եւ այս սէրն է դրդում նրան գրիչ առնելու.

*Մշտատենչիկ սոյն այս խանդանք յազգին ի սէր սիրավառ*
*Նշածաղիկս իմոց ալեաց զերկանց մատոյց նոր պատճառ:*

Ի՞նչպէս եւ ինչո՞վ պիտի առաջ բերել ազգի վերաշինութեան գործը: Վանանդեցին այդ մասին ունի որոշ հայեացքներ, որ ցրուած են նրա երկերի մէջ եւ որոնք ամփոփուած են նրա «Տեսարանի» չորրորդ երգի մէջ, որ մի դիդակտիկական քերթուած է, ամբողջական մտածութեամբ, լի հարուստ եւ առողջ գաղափարներով: Այստեղ հանդէս է գալիս վարժապետ եւ քահանայ բանաստեղծը, որի գլխաւոր հոգսն է կրթել աճող սերնդի սիրտն ու միտքը: Դաստիարակութեան մի ամբողջ ծրագիր է բանում նա ընթերցողի առաջ:

Ուսման էական հոգին պիտի կազմի նմանող լինել մեր հայրերին, թէ հոգեւոր եւ թէ մարմնաւոր: Այս պատճառով եւ Վանանդեցու դրեթէ բոլոր բանաստեղծութիւնը զբաղւում է մեր քաջ եւ իմաստուն նախնիքների արարքները ի տես հանելով: Նոյնիսկ «Տեսարանի» այս չորրորդ երգի մէջ համառօտ, բայց ուժեղ կերպով թւում է մեր նշանաւոր նախնիքները Հայկից սկսած մինչեւ անգամ բիւզանդական հայազգի կայսրները:

*Մեր այս են նախնիք եւ որք ի սոցայն կարգի գերազանց.*
*Ծոխ բարեկրթութեան ազգին յայտնեցան հայր ի Հայկազանց.*
*Գանձեալ եւ զարդիւնս լցին զաշխարհ մեր ի շուք պարծանաց,*
*Անպարտ զօրացան ի կոր կործանել զոգին թշնամեաց:*

Մանուկը պէտք է աշխատի իր ընտիր նախնիքների հարազատ զաւակը լինել.

*Հետեւեա, որդեա՛կ, անշեղ հետեւեա ուշ ընդ կուրծս ածեալ,*
*Զի ընտրագոյն հարց զաւակ զարդասցիս հարազատ ընտրեալ:*

Եւ ի՞նչ է հայրերին նմանող լինելը,—եթէ ոչ նախնեաց արդիւնքը, որ ամբարուած կայ ազգաշինութեան համար, մարդ պէտք է ճանաչէ եւ ինքն էլ աշխատի վրան եւ մի քայլ առաջ տանէ: Պէտք է հայրերի գործով ոգեւորուել եւ նրանց գործը շարունակել.

*Ապա մանուկ դո՛ւ, հարազատ ծնունդ գերաբուն քաջաց,*
*Զօրացի՛ր հզօր անմոռաց պահել զշուք քոց նախնեաց.*
*Զանք յարավաստակ մի անգործ կացցէ ի քեզ եւ թմբած,*
*Զազգին զօգտաւէտն ի հանդէս կացո՛ յամենայն շարժուած:*
*Զաւակ ես քաջաց, մի՛ շիջցի ի քեզ ոգին նախահարց.*
*Զարմ ես վեհազանց, յարեա՛ց ի նոսա յօրանալ ի վարձ.*

*Քանզի զի՞նչ օգուտ ունիլ զնախնիս ի մեծ դիւցազանց,*
*Եւ նուաստանալ անտոհմից գործովք ի կարգ վատ արանց:*

*Ազգասիրութիւնն ուրեմն ազգաշինութեան մէջ է տեսնում բանաստեղծը եւ անհատը պարտական է անել ամէն բան հասարակութեան եւ ազգի համար:*

*Քեզ յատուկ պարտիս զհասարակաց բարին վերագրեալ.*
*Զի թէ մեռանիլ վասն հայրենեաց քաղցր է եւ գովեալ,*
*Զի՞նչ այլ ինչ մնայ՝ որում ազգայինք չեն պարտաւորեալ:*

*Իսկական հայրենասիրութիւնը ազգին յարելու, միութեան մէջ է եւ ոչ երկպառակութեան, ներքին կռիւների, բաժան բաժան լինելու մէջ: Եւ քերթողը ժամանակի կրօնական կռիւներին ու պառակտումներին ակնարկելով՝ կոչ է անում.*

*Յարեսցուք յազգ մեր, սիրեսցուք զազգ մեր սէր համեստագին.*
*Մի՛ զփառըս մեր թողցուք ի յագուրդ որդւոց օտարին:*

*Այսպիսի ազգասիրութիւնն ահա՛, որ միութեան ու ազգաշինութեան մէջ է երեւան գալիս, դառնում է աղբիւր ազգի բարգաւաճման.*

*Ազգին շինութեան սէրն է նախաղբիւր յերկնից վտակեալ*
*Որով ազգային գործոց դարաստանք ծաղկին ոռոգեալ:*

*Այս տողերի մէջ մարդ կարդում է ապագայի Պեշիկթաշլեանի «Եղբայր եմք»-ը: Բայց եւ Վանանդեցին հայրենի հաւատի աւանդապահութիւնը քարոզելով՝ ընդունում է խղճի ազատութիւն եւ խրատում է կրօնի վէճ չհանել, օտարազգիներին յարգել:*

*Վարեսջիր անկեղծ ընդ օտարազգիս հոգւով հեզութեան.*
*Մի՛ նիւթեր զչար, կա՛լ խաղաղութիւն՝ որքան մարթական.*
*Մի՛ բամբասանօք եղծեր զնոցուն զաւանդն այլական,*
*Զի ի հարց նոցին յատուկ է նոցա իսկ գործադրութեան:*

*Կրօնի ազատութիւն ընդունելով հանդերձ՝ նա իւր կեանքի վերջում սակայն սաստիկ զայրանում է ամերիկեան բողոքական քարոզիչների դէմ, որոնք այդ ժամանակ հաստատուել էին Զմիւռնիայում: Անշուշտ նա շատ վիճաբանութիւններ է ունեցել նրանց հետ եւ պղտորուել է իւր հոգու խաղաղութիւնը, որ հարկ է համարել իւր Ոսկի Դարի վերջում վիճաբանել նրանց հետ: Այդ հատուածը, որ յետոյ աւելացրած բան է եւ վնասում է երկի ամբողջութեանը, ցոյց է տալիս այն առելութիւնը, որ նա տածում է դէպի օտար քարոզիչները, որոնք փոխանակ հեթանոսներին երթալու, քրիստոնեաների մէջ քրիստոնէութիւն էին քարոզում:*

*Մերոց կարդաց մեք սիրահաճ եմք ի սրտէ եւ հաւան...*
*ՅԱմերիկեան ձեր դարձարուք յորջ նորափոր ոսկեծոր,*
*Ի վայրենեաց ճեպեցէք սարս որսալ էրէս ի ծործոր.*

Սինէ, Ճեարոն եւ որ այլք են անհաւատից մոլար փոր,
Զձեզ կոչեն, է՞ր յուլանայք, հա՛ վաղեցէք ուժգնասար:

Վանանդեցու զայրոյթը շատ հասկանալի է. կաթոլիկութեան վէճերը դեռ չվերջացած՝ վրան աւելանում է եւ բողոքականութեան վէճը, որով եւ ազգաշինութեան գործը խանգարւում է նոր երկպառակութիւններով: Ուստի եւ մեր բանաստեղծը բողոքում է ասելով.

Ցիմանալին մի՛ սողոսկիք յԱրփաւորչին մեր այգի,
Դալարագեղ զի ծաղկեսցի պտուղ բերել զյարգի.
Մշտահարուածն՝ ի թշնամեաց անմեղ մանկունք Հայ ազգի
Հարան մարմնով, մի՛ եւս հարցին վէրս ընդունել ի հոգի:

Երբեմն նկարագրելով միսիոնարների վարմունքը, դրանց բանեցրած հնարները, խաբեբայութիւններն եւ խորամանկութիւնները, լիառատ դանձի միջոցով միամիտ մարդկանց հրապուրելը, հայոց հին կարգերի ոչնչացնելը, չի համբերում եւ սրտմտած բացագանչում է վերջը.

Շանց եւ թռչնոց դէչ ձեր ոսկերց օ՛չ թէ մատներ կոտրած:

Նա դէմ է դուրս գալիս եւ բողոքականների կրօնական գրքերին, որոնք «ընդդէմ մերոց ծիսից բերեն զբան բարեքանդ», եւ իրաւունք է տալիս Պատրիարքին, որ նզովում է նրանց գրքերը.

Մունջ կարկեսցի՛, մեզ չէ պիտոյ Ամերիկեան սին քարոզ...
Մանկունք Հայկեան, մի՛ յայնոսիկ իղձս լայնէք վայրապար.
Մի՛ ընթեռնուք զգիրս նոցա, ուր իմաստութեան չիք նշար:

Եւ այսպէս Վանանդեցին իւր ծերութեան օրերում դառնում է երգիչ միսիոնարների դէմ կռուողների: Նրա մոլեռանդութիւնը սակայն միայն կրօնական գրքերի դէմ է ուղղուած. որովհետեւ իսկոյն անմիջապէս աւելացնում է, թէ չպէտք է փակուած մնալ միայն հայ ուսման մէջ:

Մի՛ մոռանար եւ յայլ առուաց թռչակ առնուլ պիտանի,
Միայն զի մի՛ զքո զեղծցեն վայելչութիւն մայրենի:

Այստեղ արդէն դարձեալ երեւան է գալիս երիտասարդ Վանանդեցին իւր յառաջդիմական ոգով, որ ազգի փրկութիւնը տեսնում է ուսման մէջ, ուսում լայն, ընդարձակ մտքով:

Ծնողք մարմնաւորք, թէեւ չէք ծանօթ գրական շնորհին,
Մի՛ անգրագէտ թողուք զմանկունս ի թարմ հասակին:

Բայց ուսումը պիտի լինի նախ մայրենի լեզուով եւ հայրենի հոգւով եւ ապա նոր օտար ազգերի: Ո՛րքան այժմէութիւն ունին հետեւեալ տողերը.

Մատիցեն մանկունք նախ ի հայրենի վարժն գրաւոր,
Ամբարել ի միտս զնախնեացն ազգիս զարդիւնս օգտաւոր...
Ջանա՛ նախագոյն յուսումն լեզուի քո հայրենական,

Ապա յայլ լեզուաց վարժումն գայցես ըստ վայելչութեան։
Անկարգ եռանդն է զոր ունին ոմանք ի չաւիղ ուսման,
Լքեալ զսեպուհն՝ զօտարացն ունիլ զգենուն զջան։

Այսպէս միայն կրթուած մանուկը կը լինի իւր հայրերի հարազատ զաւակ եւ կը կարողանայ իւր պարտքը կատարել իւր ազգի նկատմամբ, եւ այն երեք միջոցով.

Ազգային գործոց երիւք վճարել փորձն մեզ յայտնեաց.
Ի գիր, ի սուր եւ յարիեստսն ի պէտս հասարակաց։

Գրի ընդունակութիւն ունեցողը դրանով պիտի աշխատի բարձրացնել իւր ազգը՝ գործելով գրականութեան, գիտութեան եւ փիլիսոփայութեան համար. ով արհեստի ընդունակութիւն ունի, պիտի արհեստները զարգացնի եւ հարստացնի իւր ազգը։ Իսկ սո՞ւրը։ Ինչի՞ է պէտք դա։

Ինչքան էլ հայերն անտարբեր հանդիսատես լինէին յունական ազատութեան կռիւներին, այդ մեծ յեղափոխութիւնը չէր կարող չազդել նրանց վրայ, եւ Վանանդեցին, Զմիւռնիայում նստած, չէր կարող չմտածել այդ մասին։ Եւ ինչպէս երեւում է նա երկար խորհրդածել է այդ մասին եւ եկել է մի որոշ եզրակացութեան։ Նա երեւի լաւ կշռել է հայ մարդու հոգին, որ սրի գործածութիւնը քարոզելով՝ հարկ է համարում ամէնից առաջ մի զգուշութիւն անելու.

Ծնա՞ր ի սուսեր, մի՛ գազանացիս հեղումն արեան։

Իւր ժամանակի համար նա զէնքի գործածութիւնը քարոզում է ինքնապաշտպանութեան համար.

Ըստ մեր վիճակի այժմիկ չեն եւ պէտս զէնք զինուորութեան,
Այլ ի պաշտպանել անձին ի դիպուածըս ուղեւորման,
Ի գործ արկ որպէս օրէնք բնութեան տայ քեզ հրաման։

Սակայն Վանանդեցին դրանով միայն չէ սահմանափակում զէնքի նշանակութիւնը։ Դա ունի եւ մի այլ կարեւոր ու օգտակար գործածութիւն։ Ինչպէս ինքնապաշտպանութեամբ մարդս իւր անձն պաշտպանում բնական օրէնքով, նոյնպէս մարդ պարտական է սիրով, արիաբար եւ աննկուն սըրտով նաեւ ազգի շահերը պաշտպանել, որ եւ անհատինն են։ Նա պարտական է զէնքով անսասան դէմ դնել ամէն վտանգների, որ արգելք են լինում ազգային շահերին. ոչ՛մի դէպքում չպիտի վախենալ.

Աննկուն սրտիւ տոկալ վտանգացն դժուարութեան,
Որք շահուց ազգին եւ քո իսկ անձին բերեն զխափան...
Նա՛ ի մահուանէ որ զամենայնիւ թուի ահռական,
Ոչինչ վահրատիլ, երբ չիք ի նմա վատանուն նշան։

Արդեօք Վանանդեցին ապստամբութի՞ւն է քարոզում։ Բնաւ ոչ. նա շատ լաւ ճանաչում է հայ ազգի վիճակը. գիտէ, որ դա իւր ժամանակին յիմարութիւն կը լինի եւ մեծամեծ չարիքների պատճառ կը դառնայ։ Պէտք է

հանգամանքները լաւ կշռել, ինչպէս Վահան Մամիկոնեանը եւ ուրիշ քաջարի հայկազուններն են արել։ Խոհեմութիւն է հարկաւոր եւ շրջանկատութիւն․

Զասեմ քեզ այսուիկ ոգի զգենուլ զյանդգնական,
Մխեալ զանձն ի վիշտս որք ի քոյ կարեաց անյաղթիկ մնան․․․
Առանց պատճառի ի վտանգ մխիլ ի վեր քան զարժան,
Փորձել է զԱստուած, ասաց Տէրն մեր առ փորձիչ սատան։

Ինչպէս որ նաւաստիները, երբ ալիքները յուզւում են, նրբին խորհրդով ալիքների դէմ են գնում եւ առանց նաւաբեկութեան՝ նաւը տեղ են հասցնում, այսպէս եւ դու, հայ մարդ, պէտք է որ մարմնի ուժը բանեցնես շրջահայեաց մտքով եւ այդ դէպքում միայն դու քո հայրերի հարազատ որդին կը դառնաս եւ կ'առնես «զպատիւ յերկուս յաւիտեան»։ Մի կողմ ուրեմն այժըմ մեր ուժից վեր յանդգնութիւնը, որ աստուածափորձութիւն է․ այժմիկ միայն ինքնապաշտպանութիւն։ Բայց եթէ հանգամանքներն աւելին են ստիպում անել, ա՛յն ժամանակ ինչպէս պիտի վարուել․

Այլ թէ քեզ հասցէ վտանգ ինչ կարի ահաւորական,
Մի՛ կորուսցես անդ կնատ մեղկանօք զոյժ տեւողութեան։

Այն ժամանակ ուրեմն պիտի արիանալ եւ զգաստացնել հայկին ոտնատակ տուողներին․

Իսկ թէ յարիցէ ոք ոտնահարու շքոյ Հայկազին,
Կամ զգաստացուսցէ կամ ընդ վայր հարցէ միութեան Ոգին։

Ես չեմ ուզում այլեւս կանգ առնել այն բարոյական խրատների մասին, որ Վանանդեցին տալիս է աւանդութիւնից։ Դրանք ընդհանուր բաներ են։ Բայց այն ամէնը, ինչ որ վերեւում բերեցի, նրան ներկայացնում են իբրեւ մի նոր տեսակի քերթող, որ իւր մէջ ամփոփում է իւր ժամանակի ոգին։

Նա է առաջին անգամ մեր բանաստեղծութիւնը մօտեցնում կեանքին եւ ծառայեցնում կեանքի համար։ Եւ նրա բացած ճանապարհով ընթանում են ուրիշները յաջորդ երեսնամեակում։

## ԱՌԱՋԻՆ ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՍԱՐԿԱՒԱԳ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՆ ՇՈՒՐՋԸ

1. Որտեղացի է նա:— Այս նշանաւոր անձի մասին կենսագրական տեղեկութիւնները տատանւում են: Այստեղ դնենք նախ Վարդան Արեւելցու հաղորդածը:[1] «Էին եւ վարդապետք յայնմ ժամանակի՝ Յովհաննէս, որ եւ Սարկաւագ՝ ի գաւառէն Փառիսոսայ ի քահանայական ազգէ, որոյ յիշատակք ճառագայթիցն փայլին մինչեւ ցարդ ի բանս իւր եւ ի նմանէ աշակերտեալսն.— Երեմիա, որ եւ Անձրեւիկ, որ եւ զամս երեսուն չորակեր եղեւ, եւ այնչափ հլու եղեալ վարդապետին իւրոյ, որ ի սաստելն երբեմն, թէ՝ «լուռ լե՛ր», զամս երիս ընդ այլ մարդ ոչ խօսեցաւ, բայց եթէ ընդ վարժիչս [այլ ընթերց. վարժիչն] իւր ի կարիս [վար. ի կարասիս, որ սխալ է].— եւ Սամուէլ երէց աշխարհի, որ զգաւազանսն յօրինեաց զՔրոնիկոնին՝ Անեցին [այլ ընթ. Սամուէլ երէց Անեցին, որ...].— եւ նախ զսոսա Անանիա, որ զԱռաքեալսն համառօտեաց հրամանաւ կաթողիկոսին Պետրոսի՝ Սանահնեցին: Իսկ Սարկաւագ [այլ ընթ. սուրբ] վարդապետն կացեալ ի ժիր մշակութեան զաւուրս իւր՝ հանգեաւ ի հինգ հարիւր վաթսուն եւ ութ [ՇԿԸ=568+551=1119. Վենետկի տպագր. մէջ՝ «հինգ հարիւր վաթսուն եւ ութ=1139.] թուին. եւ զկնի ամի միոյ՝ լծակիցն իւր Ալաւկայ որդին Դաւիթ, որ Կանոնքըն գրեաց դիւրահաս [այլ ընթ. որոյ Կանոնքն է դիւրահաս. որ Կանոնքն էր դիւրահաս].— եւ Թոքակերայ որդին կոչեցեալ աշակերտ նորին, եւ այլ արք ճգնաւորք ի յԱղուանս, որպէս Պետրոս Խոնթկայ որդին եւ Յակոբ սքանչելին... Էին եւ կանայք թագաւորազունք կրօնաւորեալք կուսութեամբ ի Քորայրն՝ Խորասու եւ Մարիամ, առ որս գրէր սուրբ վարդապետն Սարկաւագ զգուշական խրատս»:

Ըստ Վարդան Արեւելցու, ուրեմն, Սարկաւագ Վարդապետը Փառիսոս գաւառից է, քահանայական տոհմից, — ինչպէս եւ գրել ենք վերեւում նրա կենսագրութեան մէջ: Սխալ է ասել, թէ «Վարդանի աւանդութեան համեմատ անոր հայրը ամուսնացած երէց մըն էր:[2] Վարդանն այդպիսի բան չի յայտնել. նա գրում է՝ «ի քահանայական ազգէ». իսկ մէկը կարող է քահանայական տոհմից լինել նաեւ իբրեւ քահանայի թոռ, բայց աշխարհականի որդի:

---

1 Մեծին Վարդանայ Պատմութիւն Տիեզերական, Մոսկուա, 1861, էջ 159—160: Մեր գործածածն այս է: Վարդան Վարդապետ Մեծն, Հաւաքումն Պատմութեան Վարդանայ Վարդապետի, Վենետիկ, 1862: Այլեւ ՀՍՍՌ Մատենադարան, համար 1770 Ձեռ., 63—64. ընդօրինակած է 1589 թ. Աստուածատուր գրիչը:

2 Հ. Ոսկեան, Յովհաննէս Սարկաւագի կեանքը. «Հանդէս Ամսօրեայ», Վիեննա, 1925, էջ 28:

Սամուէլ Երէց Անեցին գրում է.[1] «Ի ՇՀԸ [=578+551=1129] թուին փոխի յաշխարհէս մեծ վարդապետն Սարգիս, որ է ի Փառխոսոյ՝ որդի քահանայի միոյ, եւ աշակերտ սորա Երեմիա, որ եւ յասելն վարդապետին, թէ՝ «Լուռ լե՛ր», զամս Գ. [=երիս] լուռ եկաց, ընդ միտս եւ ընդ Աստուծոյ խօսէր, որ եւ Անձրեւ կոչեցաւ: Եւ ընկերք սորա՝ տէր Խաչատուր եւ Գրիգոր եւ Յովհաննէս եւ Սամուէլ. ամենեքին սոքա Անեցիք»:

Վարդան Արեւելցու եւ Սամուէլ Երէցի գրածների բովանդակութիւնը նոյնն է. վերջինիս յիշած «Գրիգորը»՝ առաջինի «Թոքակերայ որդին» է. աւելի են «Խաչատուր» եւ «Յովհաննէս» անունները: Բայց այս էական չէ: Ինչ որ Վարդանը գրում է «Յովհաննէս Սարկաւագի» մասին, նոյնը Սամուէլը դնում է Սարգիս անունով «մեծ վարդապետի» համար: Եւ իսկապէս եղել է Սարգիս անունով մի յայտնի վարդապետ, քանի որ Սամուէլը (էջ 132) յիշում է նրա մահը: «Ի ՇՁԸ [=588+551=1139] թուին ի ժէ. արեգ ամսոյ շարժմամբ կործանեցաւ Գանձակ քաղաք. եւ սուրբ վարդապետքն Գրիգոր [=Թոքակերի որդին] եւ Սարգիս՝ ընկղմեցան, եւ եկեղեցին Հայրապետաց փլուզանի»: Հիմա, ի՞նչպէս պիտի բացատրել, որ նոյն բովանդակութիւնը պատմուել է երկու տարբեր անունների վրայ: Անհաւանական է ենթադրել,[2] թէ «Սարկաւագ» անունն արտագրողների ձեռով դարձած լինի «Սարգիս». զի այս նկատմամբ մի մեծ դժուարութիւն կայ: Սամուէլը քիչ յետոյ գրում է. «Ի ՇՀԸ [=578+551=1129] ամին փոխեցաւ ի Քրիստոս մահուամբ վարդապետն մեծ որ Սարկաւագն կոչիւր՝ ի Հաղբատ». եւ ապա՝ «Ի ՇՁ [=580+551=1131] թուին... Ննջեաց յայսմ ամի լուսաւորիչ եւ սուրբ վարդապետն Դաւիթ Ալաւկայ որդի»: Եթէ «Սարկաւագ» անունն աղճատմամբ «Սարգիս» դարձած լինէր, ապա այլեւս ինչո՞ւ պէտք է Սամուէլը նրա մահը քիչ յետոյ երկրորդ անգամ յիշէր[3]: Պէտք է ասել եւ հետեւեալը: Կիրակոս Գանձակեցին խօսելով երեք «սքանչելի» վարդապետների մասին, որ են Սարկաւագ Վարդապետ, Թոքակերի որդի Գրիգոր եւ Ալաւկայ որդի Դաւիթ, աւելացնում է. «Սոքա երեքեանս էին յաշխարհէն Գանձակայ, ուստի եւ ես»: Զի հիմնաւորուած ծանօթութեան մէջ դրած այս բացատրութիւնը «Յաշխարհէն Գանձակայ» այս է՝ Արցախայ, որում մէկ գաւառն ալ է Փառխոս»:[4] Ըստ այսմ առանց այլեւայլութեան նոյնացրած է «աշխարհ

---

1 Սամուէլի քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց յաղագս գիւտի ժամանակաց մինչեւ ի ներկայս. Վաղարշապատ, 1893, էջ 128:

2 Այսպէս ենթադրում է Հ. Ոսկեան. Յովհ. Սարկաւագի կեանքը, «Հանդ. Ամս.», 1925, էջ 28:

3 Սարկաւագ Վարդապետին վերաբերեալ գլուխն եւ այս յաւելուածը Հայկական ՍՍՌ Գիտութիւնների Ակադեմիայի «Տեղեկագրի» մէջ (հասարակական գիտութիւններ, թիւ 1—2, Երեւան, 1945, էջ 31—60) եւ «Առանձին արտատպութեամբ» հրատարակուելուց յետոյ՝ Պետ. Մատենադարանի (Ձեռագրատան) գիտ. աշխատակից Լ. Խաչիկեանը հաղորդեց ինձ հետեւեալը. «Սամուէլ Անեցու 1176 թուին հեղինակի ձեռագրից արտագրուած գրչագրում (թիւ 5619) «Սարգսի» հատուածը չկայ, ուստի այն ներմուծուած է Պատմութեան մէջ հետագայում: Սրանից հետեւում է, որ այն նոյնպէս կարող է Սարկաւագին վերաբերել»:— Ուրիշ խօսքով՝ ներմուծումը եղել է Սարկաւագ անուամբ, որ յետոյ դարձել է Սարգիս: Բայց ներմուծումը կարող է հէնց սկզբից Սարգիս անունով եղած լինել:

4 Հ. Ոսկեան, Յովհ. Սարկաւագի կեանքը. «Հան. Ամս.» Վիեննա, 1925, էջ 28, ծան.:

Գանձակայ» եւ Արցախ: Ինչքան էլ քաղաքական սահմանները փոփոխական լինէին այն դարում եւ Գանձակի ամիրան, ինչպէս տեսանք, 1003 թ. գրաւել էր Փառիսոս գաւառի մի մասը, բայց եւ այնպէս Արցախը եւ ոչ իսկ Փառիսոս գաւառը չէին կարող կոչուել «աշխարհ Գանձակայ», որ է Գանձակ քաղաքի շուրջն եղած գաւառները: Հաւանական է կարծել, որ գանձակեցիները նշանաւոր վարդապետներին տեղական փառասիրութեամբ կապած լինին իրենց կողմերի հետ: Վերջապէս՝ պէտք է նկատի ունենալ եւ հետեւեալը: Վերջերս յայտաբերուած մի ձեռագրի մէջ, որ յիշուեց Յովհաննէս Սարկաւագի կենսագրութեան առթիւ, գրուած կայ նրա մասին. «Որ իբրեւ զիմաստուն մեղու՝ բարձեալ յանդամս մտաց զծաղիկս յերանգոց գունոց եւ հոտոց եւ համոց բերէր ի քաղաք իւր եւ տեղի սննդեան ի քաղաքմայրս Անի, եւ լի առնէր զտունն ի փարթամութենէ անտի...»[1]: Ընդգծուած բառերից կարելի է հետեւցնել, որ Սարկաւագ Վարդապետն Անեցի է եղել: Բայց նրա ծնողները կարող էին Փառիսոս գաւառից լինել եւ Յովհաննէսի մատաղ մանկութեան ժամանակ Անի տեղափոխուած, եւ Յովհաննէսն այստեղ մեծացած ու սնուած, ուստի եւ Անին նրա համար կարող էր համարուել «քաղաք իւր եւ տեղի սննդեան»: Այսպիսի եղելութիւնները ոչ սակաւ են:

Այսպիսով դեռ բացատրութեան կարօտ է մնում Յովհաննէս Սարկաւագ Վարդապետի որտեղացի լինելը: Այդ կը պարզուի միայն այն դէպքում, երբ երեւան գան այնպիսի ձեռագրական ընթերցուածներ, կամ այնպիսի նոր գրական յիշատակարաններ, որոնցով կը ստուգուի նրա ծննդավայրը:

2. Երբ է վախճանուել նա:— Կասկածի տակ է դրուած Սարկաւագ Վարդապետի եւ մահուան թուականը, որ է 1129 ըստ Սամուէլ Երէցի եւ ըստ Կիրակոս Գանձակեցու: Վարդան Արեւելցու ձեռագիրների մի մասի եւ Մոսկուայի հրատարակութեան մէջ է ՇԿԸ [=568+551=1119] թուականը, իսկ Վենետիկի տպագրութեան մէջ՝ «հինգ հարիւր ութսուն եւ ութ» [=588+551=1139], եւ ծանօթութեան մէջ «Հին Օ. ՇԿԸ, որ է հինգ հարիւր վաթսուն եւ ութ: Այլ ժամանակագիրք՝ ՇՀԸ ասեն, որ է հինգ հարիւր եօթանասուն եւ ութ [=1129], որ ուղղագոյն թուի» (էջ 121): Յայտնի բանասէր Կ. Կոստանեանցն իր մի յօդուածի մէջ[2] ընդունում է Վարդանի որոշ ձե-

1 Այս քաղում եմ վերեւում Սարկաւագի կենսագրութեան մէջ յիշուած յօդուածից (Պետ. Համալս. Գիտ. Աշխատութիւններ, հատոր XIII. Երեւան, 1940, էջ 346 եւ հտն. Աբ. Մովսիսեան, «Հայագիր դպրոցի ծագումը եւ հետագայ վիճակը»): Յօդուածագիրը, էջ 414, տողատակի լուսանցքում, դրել է հետեւեալ ծանօթութիւնը. «Սարկաւագի դպրոցի վերաբերեալ նիւթերը վերցուած են յիշատակարան «Հարանց վարք»-ից, որը արտագրել է Մատթէոս Երէցը հայոց ՊԻԸ թուին Անգեղակոթում: Հին ձեռագիրը գրուել է հայոց ՇԸ թուին Հաղբատում:— «Հին ձեռագիր» բառերով, երեւի, պէտք է հասկանալ այն գրչագիրը, որից արտագրել է Մատթէոս Երէցը: Դրա գրութեան թուականը՝ Հայոց ՇԸ=508+551=1059 թ. բացարձակ սխալ է, գուցէ արտագրութեան կամ տպագրութեան վրիպակ: Այս թուականին Սարկաւագը չէր կարող Անիում անուանի ուսուցիչ լինել, բացի այդ՝ յիշատակագիրը Սարկաւագի մասին այնպէս է գրում, որ նա արդէն վախճանուած պիտի լինէր. «Սա ի մանկական անտի տիոց մինչեւ ցվերջին որոշումն հոգւոյն յերկրորդէն (յերկրէն? Մ. Ա.) ոչ երբեք շեղեալ սայթաքեցոյց երբեք զուշ ոգւոյն ի նպատակէ ընթերցման, ուսանելոյ եւ ուսուցանելոյ...»: Պէտք է կարծել, թէ ՇԸ թուի տեղ պիտի լինի ՇՂ=590+551= 1141, այսինքն Սարկաւագի մահից մի 12 տարի յետոյ:

2 «Ազգագրական հանդէս», ԺԴ գիրք, 1906, էջ 105 եւ հտն. «Դաւիթ Ալաւկայ որդի»:

տագիրների մէջ եղած 1139 թուականը, եւ որովհետեւ թէ՛ ըստ Վարդանի եւ թէ՛ ըստ Կիրակոսի մի տարի յետոյ վախճանուել է Ալաւկայ որդի Դաւիթը, ուրեմն, ըստ Կոստանեանցի, նրա մահն ընկնում է 1140 թուին: Նա այդպէս դատում է նկատի ունենալով հետեւեալը: Կիրակոս Գանձակեցին Աղուանից կաթողիկոսների մասին գլխի մէջ յիշելով նրանց անուններն ու կաթողիկոսութեան տարիները՝ էջ 188 գրում է. «եւ տէր Ստեփաննոս՝ ամ մի եւ կէս, ի տես պատրանեկութեան վախճանեալ ի ՇՁԸ [=588+551=1139] ամի թուականին Հայոց»: Դրանից յետոյ Կիրակոսը պատմում է, թէ Հայոց Գրիգորիս կաթողիկոսի ժամանակ քսան եւ հինգ տարի թափուր է մնացել Աղուանից կաթողիկոսական աթոռը. «Ապա մանուկ մի էր յազգէ կաթողիկոսացն Գագիկ անուն, որդի Գէորգեայ, զոր սնուցին, եւ ուսուցին, եւ իբրեւ ի չափ հասաւ մանուկն, ապա գրեն թուղթ մաղթանաց Գրիգոր վարդապետն՝ որդին Թոքակերի, եւ Դաւիթ՝ որդի Ալօկայ, եւ այլ աշխարհն Աղուանից, առ մեծ հայրապետն Հայոց Գրիգորիս… զի ձեռնադրեսցէ զնա եպիսկոպոս»: Նա ձեռնադրւում է եպիսկոպոս, յետոյ՝ կաթողիկոս: Այս կատարւում է նոյն 1139 թ., որովհետեւ սոյն տարին սաստիկ երկրաշարժ է լինում, կործանւում է Գանձակ քաղաքը, «եւ շնորհօքն Աստուծոյ ապրեալ եղեւ նորընծայ կաթողիկոսն, բայց մեռաւ ի շարժմանէն մեծ վարդապետն Գրիգոր»:[1] Արդ՝ մի կողմ թողնելով Կ. Կոստանեանցի մի քանի ուրիշ անհիմն ենթադրութիւնները՝ առնենք միայն հետեւեալը: Որովհետեւ Ալաւկայ որդի Դաւիթը մէկն է 1139 թ. Հայոց Գրիգորիս կաթողիկոսին թուղթ գրողներից, «հետեւաբար նրա մահը չէր կարող հանդիպել 1140 թուից առաջ, պէտք է հաւանական համարուի Վարդանի ցուցումը, թէ Սարկաւագ Վարդապետի մահը եղել է 1139 (ՇՁԸ) թուին: Ըստ այսմ՝ Դաւթի մահը պատահել է Սարկաւագ Վարդապետից մի տարի յետոյ, 1140 թուին»: Սոյն թուականը Դաւթի մահուան համար, անշուշտ, Կոստանեանցից առնելով, ընդունում է եւ Խ. Սամուէլեանը:[2] Այս խնդիրը, սակայն, այդպէս հեշտ չի լուծւում:

1. Սխալ է ոչ թէ Կիրակոսի եւ ուրիշների յիշած 1129 թուականը, այլ այն տեղեկութիւնը, թէ մանուկ Գագիկի համար թուղթը գրուել է եւ Դաւիթ վարդապետի մասնակցութեամբ: Այս դէպքից աւելի քան հարիւր տարի յետոյ, երբ գրել է Կիրակոսը, ճիշդ յիշողութիւն պահուած չէր լինիլ գանձակեցիների մէջ, նրանք կարող էին՝ չիմանալով թէ ե՛րբ է մեռել իրենց նշանաւոր հայրենակից Դաւիթ վարդապետը, սրա անունն էլ կապել յիշուած թղթի հետ, եւ Կիրակոսն այդ գրոյցը լսելով՝ այդպէս էլ գրի է առել, առանց ուշ դարձնելու, որ ինքն իր գրքի մէջ (էջ 107) Դաւթի մահն արդէն գրել էր 1130 թուին, Սարկաւագի մահից մի տարի յետոյ:

2. Կ. Կոստանեանցն այնպէս է գրում, իբր թէ «Վարդանի ցուցումն» է 1139 թուականը. բայց այս տարեգրի ուրիշ ձեռագիրների մէջ, ինչպէս վերեւում ասուեց, է 1119 թուականը: Այդ ցոյց է տալիս, որ նրա ձեռագիրների մէջ Սարկաւագ Վարդապետի մահուան թուականն աղճատուած է: Այդ կարող էր լինել 1129, ինչպէս է՛ Սամուէլ Անեցու Ժամանակագրութեան

1 Կիր. Գանձ. Պատմ. Հայոց, էջ 188 եւ հտ.: Երկրաշարժի մասին նաեւ էջ 108. այլեւ Սամուէլ, էջ 132:

2 Խ. Սամուէլեան, Հին հայ իրաւունքի պատմութիւնը, Երեւան, 1939, էջ 74:

*եւ Կիրակոս Գանձակեցու Պատմութեան մէջ: Վերեւում տեսանք, որ ինչ որ Վարդանը գրում է Սարկաւագ Վարդապետի մասին, նոյնը Սամուէլ Անեցին գրում է Սարգիս վարդապետի համար: Արդ՝ Սամուէլն այս վերջինի մահը դնում է* 1129 *թուին: Պէտք է կարծել, որ Վարդանի մէջ բովանդակութեան նոյնութեան հետ՝ թուականն էլ նոյնն է եղել, որ յետոյ աղճատուել է: Այդ հաստատւում է հետեւեալով:*

3. *Ժամանակագիրները, որոնց թւի մէջ եւ Վարդանը, յօրինում են տարեթուերի կարգով: Նա էջ* 154 *եւ հտն.* (*Մոսկուայի տպագր.*) *յիշում է* 565 (=1116) *թուականը, յետոյ՝* 567 (=1118) *թ.*), *ապա՝ «ի գալ տարոյն», այսինքն յաջորդ տարին, ուրեմն* 1119 *թուականը: Այնուհետեւ նա առանց թուականներ յիշելու պատմում է մի շարք եղելութիւնների մասին, որոնց թուականները գիտենք այլ աղբիւրներից. այդպիսիք են՝ Վրաց Դաւիթ թագաւորի տիրելն Անի քաղաքին, որ կատարուել է* 1124 *թ.*, *Աբլսուարի որդի Փատլունի տիրելը նոյն քաղաքին, որ եղել է* 1126 *թ.: Ապա Փատլունի մասին մի երկու բան պատմելուց յետոյ՝ նա խօսում է Սարկաւագի եւ միւս վարդապետների մասին, այսինքն՝ գրում է այն հատուածը, որ բերուեց վերեւում «(Էին եւ վարդապետք յայնմ ժամանակի» — որ է Դաւիթ թագաւորի եւ Փատլունի ժամանակին), եւ այդտեղ Սարկաւագի մահը դըրուած է, ըստ որոշ ձեռագիրների,* 1119 *թ., իսկ ըստ այլ ձեռագրի՝* 1139 *թ.: Արդ՝ այդ երկու թուականներն էլ աղճատուած են. պէտք է լինի* 1129, *որովհետեւ դրանից յետոյ յիշում է Փատլունի մահը «ի հինգ հարիւր եօթանասուն եւ ինն* [=1130] *թուին», եւ յետոյ պատմում է դէպքեր՝ յիշելով* 1131 *թուականը, ապա՝ Գանձակի երկրաշարժը* 1139 *թուին, եւ այսպէս շարունակում է կարգով յիշելով* 1141, 1145 *եւ այլն: Քանի որ նա պատմում է Փատլունի մասին* 1126–1130 *թուականների մէջ ընկած դէպքեր, սպասելի էր, որ Սարկաւագի մահուան տարին նա դնէր վերջին երկու թուականների միջեւ, ուրեմն* 1129 *թուին, եւ ոչ թէ ետ դառնար մինչեւ* 1119 *թուականը, կամ թէ թռչէր առաջ մինչեւ* 1139 *թուականը, եւ ապա դարձեալ ետ դառնար* 1130 *թուին, Փատլունի մահուանը, եւ այլն:*

4. *Կայ մի ուրիշ հանգամանք էլ, որ պէտք է ուշադրութեան առնել: Հայոց տոմարի նորոգումը եղել է* 1084 *թ. Սարկաւագ Վարդապետի ձեռով, ուրեմն, եթէ նա մեռած լինի* 1139 *թ., նրա մահից յիսուն եւ հինգ տարի առաջ: Եթէ նա մեռած լինի, դիցուք, խորին ծերութեան ժամանակ՝* 80–85 *տարեկան, տոմարի նորոգման թուականին նա պիտի լինէր* 25–30 *տարեկան: Բայց նախ քան* 1084 *թուականը պէտք է առնուազն մի հինգ տարի միջոց լինէր, երբ մի կողմից՝ Սարկաւագ Վարդապետն աշխատէր այդ գործի վրայ, եւ միւս կողմից՝ մտքերը պատրաստէին այնպիսի մեծ փոփոխութիւնն ընդունելի անելու համար. որովհետեւ խնդիրը միայն շարժական տարին անշարժի վերածելը չէր, այլ պէտք էր Նաւասարդի* 1*–ը փետրուարի* 29*–ից տանել օգոստոսի* 11*–ի վրայ, եւ սրբերի տօնակատարութեան օրերն ըստ այնմ փոփոխութեան ենթարկել: Արդ՝* 1084 *թուականից մի չորս–հինգ տարի առաջ, ըստ վերեւի հաշուի, Սարկաւագը պիտի լինէր* 20–25 *տարեկան: Դժուար է ենթադրել, թէ այս տարիքի մի երիտասարդ, ինչքան էլ նա ընդունակ լինէր, այնքան մեծ հեղինակութիւն ունենար, որ կա՛մ իր*

սեփական նախաձեռնութեամբ, կա՛մ ուրիշների յանձնարարութեամբ ձեռնարկէր այնպիսի պատասխանատու գործը եւ գլուխ բերէր այն՝ ընդունելի դարձնելով ուրիշներին:[1] Իսկ եթէ նա վախճանուած լինի 1129 թ., ապա ուրեմն 1084 թուից մի հինգ տարի առաջ նա կը լինէր 30–35 տարեկան, եւ այդ տարիքին կարող էր արդէն հեղինակաւոր ու ազդեցիկ լինել եւ ձեռնարկել այդ գործը, այսինքն 1084 թուականից առաջ նախապատրաստել տոմարագիտական հաշիւները: Բայց այս չի նշանակում, հարկաւ, թէ նա 1084 թուականից յետոյ էլ չի զբաղուել նոյն գործով եւ այդ մասին գրաւոր աշխատանքներ թողել:

Վերջապէս՝ 5. Պէտք է նկատի ունենալ և հետեւեալը: Սարկաւագ Վարդապետի կենսագրութեան մէջ տեսանք, որ, ըստ Կիրակոս Գանձակեցու հաղորդածին, նրան շատ սիրելիս է եղել Վրաց Դաւիթ թագաւորը (1089–1125 թ.) եւ նրա օրհնութիւնն է խնդրելիս եղել: Նոյնը բաւական նման ձեւով պատմուած կայ եւ «Վրաց տարեգրութեան» («Քարթլիս ցխովրեբա»–յի) 12–րդ դարում կատարուած հայերէն թարգմանութեան վերջաբանի մէջ, ուր ասուած է նաեւ, թէ թագաւորը «Նըստէր ընդ նմա եւ փարէր զպարանոցաւ նորա, եւ նա ասէր. «Լուծեալ եմ եւ հոտեալ ի ծերութենէս, ի բաց դնա յինէն, զի մի աշխատ լիցիս»: Եւ թագաւորն համբուրէր եւ ասէր. «Անպակաս լիցի հոտս այս յինէն, հայր պատուական»:[2] Արդ, եթէ այդպիսի մի դէպք պատահած լինի, — ինչ որ շատ հաւանական է, — այն էլ թէկուզ Վրաց այդ թագաւորի վերջին տարում, 1125 թ., այն ժամանակ արդէն Սարկաւագ Վարդապետը շատ ծեր պիտի լինէր, մօտաւորապէս 80–85 տարեկան: Հիմա, եթէ նա վախճանուած լինի 1139 թ., ուրեմն այդ դէպքից (1125 թուից) յետոյ 14 տարի էլ պիտի ապրած լինի եւ մեռած 94–99 տարեկան հասակում, ինչ որ հաւանական չէ, քանի որ նա 1129 թ. արդէն, — եթէ ոչ սրանից առաջ, — «ծերութիւնից լուծուած եւ հոտած» է եղել:

Յիշուած բոլոր պարագաներն ապացոյց են, որ Սարկաւագ Վարդապետը վախճանուած է 1129 թ. եւ ոչ թէ 1139–ին:

### ԵՐԿՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ԲԱՐԱՌՆՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՀԵՂԻՆԱԿԸ

1. Խաչատուր Կեչառեցու բարառնութիւններից յետոյ[3] գրեթէ բոլոր ձեռագիրների մէջ կայ այս յիշատակարանը. «Որք լսէք զաղխողորմ բարառնութիւնս զյարմարող սորա [այլ ընթերցուած՝ «սորին»] զԽաչատուր Կեչառուեցիս յիշեցէք ի Քրիստոս տէր մեր»: Ոչ մի հիմք չկայ կեղծ համարելու այս յիշատակարանը: Խաչատուր Կեչառուեցին շատ պարզ կերպով իրեն

---

1 Թէպէտ եւ մեր ժամանակագիրները չեն յիշում. բայց անպայման անհրաժեշտ պիտի լինէր իշխանութեան հաճութիւն այդ գործի համար, եւ հաւանօրէն այն եղել է Անիում նստող Բարսեղ եպիսկոպոսի կողմից, որ 1081 թ. Հաղբատի վանքում ձեռնադրուել է կաթողիկոս: Հաւանօրէն այս թուականներին էլ յանձնարարուել է Սարկաւագին գլուխ բերել այդ գործը:

2 Տես Լ. Մելիքսեթ-Բեկ, Յովհաննէս Սարկաւագ վարդապետ Հաղբատցու »Վասն շարժման եւ սասանութեան երկրի», «Տեղեկագիր» ՍՍՌՄ Գիտ. Ակադ. Հայկ. Ֆիլ. թիւ 1, 1943, էջ 75:

3 Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, Վենետիկ, 1842, էջ 189–195: Տես եւ Յիշատակարանը, էջ 195, ծան.:

անուանում է բարառնութիւնների հեղինակ։ Բայց չնայելով դրան՝ Հ. Տաշեանը[1] մի շարք խղճուկ պատճառաբանութիւններով ճգնում է ցոյց տալու հակառակը, որպէսզի վերջը դրանց հեղինակ համարի «Աղեքսանդրի Պատմութեան» հայ թարգմանչին, որ է, ըստ նրա կարծիքի, Մ. Խորենացին։ Տեսնենք նրա փաստարկումները։

Առաջին՝ նա ընդգծելով «զյարմարող սորա» բառերը՝ գրում է, թէ դրանով «չի կարող հասկացուել բարառնութիւնների յօրինումը· ապա թէ ոչ գոնէ «զյարմարող սոցա» պէտք էր ըսուէր»։ Նախ՝ «յարմարել» բառն ինքը Կեչառեցին ուրիշ տեղ էլ գործածել է «յօրինել» բառի իմաստով։ Աղեքսանդրի եւ Քրիստոսի համար արած իր 18 բարառնութիւններից յետոյ՝ նա յիշատակարանի մէջ գրում է· «Ընթեռնելով զսա՝ [այսինքն 18 բարառնութիւնները], յիշմամբ արժանի լիցի ի ձէնջ Խաչատուր Կեչառուեցի· զի ի յարմարումն սակաւ բանիցս [այսինքն 18 բարառնութիւնների] եւ գրչութիւն գրոցս հաւատով աշխատեցայ»։ Ահա մի ուրիշ օրինակ եւս· «Եւ ոչ գիտեմ, եթէ զիարդ յարմարեցից զուլերգութիւնս»,[2] գրում է Մ. Խորենացին, «յարմարել» բայը «յօրինել» բառի նշանակութեամբ։ Այսպէս եւ ուրիշները։ Եւ ինչո՞ւ չպիտի նոյն Կեչառեցին նոյն բառը գործածէր նաեւ իր բարառնութիւնների համար։

Ապա՝ գալով «սորա» բառի եզակի ձեւին, Հ. Տաշեանը, եթէ ուզենար, շատ հեշտութեամբ կը բացատրէր, թէ «սոցա» ձեւն աղճատումով դարձել է «սորա», մանաւանդ որ այս դերանուան անունը՝ «զբարառնութիւնս» կարող էր արտագրողից հասկացուել եզակի՝ իբրեւ «այս բարառնութիւնը»։ Բայց կարիք էլ չկայ աղճատման դիմելու· նոյն Կեչառեցին, ինչպէս վերեւում բերած ցիտատից կարելի է տեսնել, իր 18 բարառնութիւնների համար, որ յոգնակի ձեւով անուանում է «բանք», դրել է եզակի ձեւով «զսա» դերանունը, եւ ոչ «զսոսա»։

Երկրորդ՝ Տաշեանը առանց հիմքի յայտնում է, թէ Կեչառուեցին «զյարմարող սորա» բառերի տակ «անշուշտ կը հասկանայ միայն Կալիսթենեայ օրինակութիւնը՝ [=արտագրութիւնը] բարառնութեանց եւ իւր յօրինած Յառաջաբանին եւ Վերջաբանութեան հետ ի միասին», այսինքն ամբողջ գիրքը։ Վիեննայի բանասէրը մոռանում է, որ այդպէս հասկանալու համար Կեչառեցին «գիրքը» կարդացողներին պիտի դիմէր եւ գրէր «Որք ընթեռնուք զգիրս», եւ ոչ թէ գրէր՝ «Որք լսէք զաղխողորմ բարառնութիւնս»։

Երրորդ՝ «Կեչառուեցւոյ խեղճ ու ռամիկ [ընդգծումը հեղինակինն է] լեզուին քով բարառնութեանց լեզուն շատ ու շատ բարձր է, մանաւանդ վերջին չորրորդ բարառնութեան մէջ», — գրում է Տաշեանը, եւ յետոյ աւելացնում· «Որպէսզի յախուռն չերեւայ լեզուի եւ ոճոյ կողմանէ առեալ մեր դատաստանը՝ դնենք հոս պատառիկ մը միայն երկու գրութեանց, որ ամէն տեսական համեմատութենէն աւելի պարզ կը ցուցնէ իրը»։ Եւ նա բերում է հետեւեալները, ընդգծելով որոշ բառեր։

---

1 Յ. Տաշեան, Ուսումն. Ս. Կալ., էջ 106—111։

2 Մ. Խորենացի, Գիրք երրորդ, ԿԸ. «Ողբի» մէջ։

Նշխար Խաչատրոյ Ոտնաւորներէն.
«Ասաց մատրուակ գինոյն
Որ զկըթդայս ի ձեռս է առեր.
Առէ՛ք ըմպեցէք զգինիս
Ու հերիք արէք զըրուցել.
Յերկար ճանապարհ ունիս
Գնալու, ես անհոգացել.[1]

Զայս տիկնոջ մըտօքն ասէր,
Որ վախէր ըղնա[2] սպանանել»:

Նշխար Դ. բարառնութեան.

«Զայս ասելով ի յողբ չարժին, պատառեն զպատմուճան, ներկ(ան) են արեամբ զերեսս, փետտեն զհերս վարսից, ճողեն զմօրուս իւրեանց, հող զգլխով արկանեն, տան զերեսս միգախառն մոխրի, հնչեն զգալարափողս... զաշխարանն այսպէս հրատարակեն. Տէր արքայ, այսքան ժամանակս աշխատ եղաք ի գործ պատերազմի, ծովակուրս եւ գազանաբեկ լինելով», եւ այլն, եւ այլն:

Այս կտորները ոչ մի բան «պարզ» չեն ցոյց տալիս, բայց եթէ նրանց ցիտողի պարզամտութիւնը գրական եւ լեզուական խնդիրների նկատմամբ, եթէ ոչ աւելին: Տաշեանը կարծում է, թէ Կեչառեցին 13-րդ դարում չէր կարող հին գրական լեզուով յօրինել, այլ միմիայն «խեղճ ու ռամիկ» լեզուով. իսկ ինքը, Տաշեանը 19-րդ դարում կարող էր եւ գրաբար յօրինել եւ աշխարհաբար. նոյնպէս եւ Ա. Բագրատունին կարող էր հին լեզուով «Հայկ Դիւցազն» քերթել, իսկ «Տարերք քերականութեան» գրքի մէջ ասել՝ «ասանկ ալ կ'ըլլայ, անանկ ալ», եւ այլն, եւ այլն:

Այսպէս եւ շատ ուրիշ գրողներ: Եթէ այդպէս դէմ ու դէմ դնենք նոյն հեղինակների գրաբար եւ աշխարհաբար լեզուներով յօրինած երկերը, շատ շատերի համար պիտի ասենք, թէ գրաբար յօրինածները նրանցը չեն, օրինակ՝ «Հայկ Դիւցազնը» Բագրատունու գործը չպիտի համարուի: Տաշեանն այդպիսի «յախուռն» փաստարկումն է արել, երեւի չիմանալով, որ 13-րդ դարում բանաստեղծութիւնների, առանձնապէս հայրէնների համար, արդէն իշխող էր մեր միջին հայերէնը, որ Մխիթարեաններն անուանում են «ռամկօրէն»: Եւ Կեչառեցին իր վերեւում բերուած կաֆան յօրինել է միջին հայերէն լեզուով. իսկ «բարառնութիւնները» նա յարմարել է հին հայերէնով: Եւ այլապէս էլ չէր կարող լինել, քանի որ այդ տիպի երկերի-ճառերի, ներբողեանների եւ նմանների համար ընդունուած չի եղել միջին հայերէնի կիրառութիւնը: Այդպէս վարուել են նոյն դարերում եւ ուրիշները, ինչպէս Յովհաննէս Երզնկացին (Պլուզ): Ապա՝ Տաշեանը Դ. բարառնութիւնից իր բերած կտորի համար գրում է, թէ «Ե. դարու գոնէ

1 Տաշեանը տպագրել է «գնալ ու ես անհոգացել»: Ուղղել եմ ըստ իմաստին եւ ըստ ոտանաւորի չափին: «Ես անհոգացել» միջին հայերէնում նշանակում է՝ «անհոգացել ես»:

2 Տպուած է «ղնա», ուղղում եմ ըստ չափին «ըղնա»:

Ոչ հիանայ ընդ վազն արի
Քաջազնաբար յափըն գետի,
Այլ զներբողեան Հոմերոնի,
Բաղկացական բան գովեստի։
Այսպէս եւ դո՛ւ առ ի մտի,
Ծոյլ եւ ծանակ Կեչառեցի։

Առաջին չորս տողի մէջ ամփոփ դրուած է Կալիսթենէսի պատմածը. յետոյ մեր բանաստեղծն աւելացրել է վերջին երկու տողը։ Ի՞նչ է այս երկու տողի իմաստը։—Անպայման այն, որ ինքն էլ չպիտի զարմանայ Աքիլլէսի ցատկելու (վազն) վրայ, այլ Հոմերոսի ներբողի, գովեստի վրայ։ Ապա թէ Աղեքսանդրի ծաղըն իր արարքները գովել ցանկացող քերթողի վերաբերմամբ՝ համեմատութեամբ Հոմերոսի գործի՝ վերաբերում է նաեւ իրեն՝ Կեչառեցուն, որ ոտանաւորներ է գրում Աղեքսանդրի գործերի վրայ։ Պարզ է, որ Կեչառեցին մեծ կարծիք չունի իր քերթուածների վերաբերմամբ. բայց այսպէս «ծաղ[1] ու ծանակ» է համարում իրեն՝ համեմատութեամբ Հոմերոսի, — որին հաւասարուելը երբեք չէր էլ անցել նրա մտքից։

Հինգերորդ՝ Տաշեանը բերում է եւ հետեւեալն իբրեւ ապացոյց իր կարծիքի համար. «Լաւ կը ճանչնանք դարձեալ գիտաչատուր, որ այնպէս «անխայելուչ» կը գտնէր «հեթանոսական» դրուածքները, որ այսպիսի գիրք մը գրելու համար թողութիւն խնդրելու պէտք կը տեսնէր. մինչ բարառնութեանց հեղինակը՝ յարմար կամ անյարմար՝ հեթանոսական դիցաբանութեան յաճախ՝ նաեւ ոչ ճիշդ՝ ակնարկներով ճոխացնել կ՚ուզէ իւր գրչութիւնը... Նման բացատրութիւնք... Կեչառեցւոյ գրչէն դժուարաւ կրնային ելնել»։ «Դժուարաւ կրնային» խօսքով, հարկաւ, չի ժխտում, որ «կրնային ելնել»։ Բայց ուրիշ բաներ էլ տեսնենք։ Նախ՝ Տաշեանը չի բերում եւ իր ուսումնասիրութեան մէջ էլ չի բերած, թէ Կեչառեցին ո՛ր դէպքում ո՛ր տողերով ներողութիւն է խնդրել «Աղեքսանդրի Պատմութեան» գիրքը գրելու համար։ Այդպիսի բան չկայ։ Ընդհակառակն, նա, Կեչառեցին, այդ գրքին մեծ արժէք եւ կարեւորութիւն է տուել, որ արտագրել է անձամբ, ինչպէս յիշատակարանի մէջ յայտնում է. «Գրեցի իմով ձեռամբս սակս աղտի ինձ. եւ այլ համբակաց, որք կամին աղտիլ յԱղեքսանդրէ»։ Նա այնքան մեծ նշանակութիւն է տուել այդ գրքին, որ կաֆաներ է յօրինել. դրա համար Աղեքսանդրի գործերը համեմատել է Քրիստոսի «տնօրինականների» հետ եւ այս արել է հաւատալով իր գործին։

Ապա՝ Կեչառեցին, ինչպէս տեսել ենք, Աղեքսանդրի Պատմութեան մէջ գտել է նաեւ չատ սնոտի կարծիքներ ու խաբէութիւն. բայց այդ մի պատճառ չէր կարող լինել, որ նա բարառնութիւնների մէջ հեթանոսական բան չդնէր։ Որ նա իր այդ գործի մէջ արել է հեթանոսական դիցաբանութեան ակնարկներ, այդ ցոյց է տալիս նրա բարձր հասկացութիւնը գրական արուեստի մասին։

Նա, ինչպէս վերեւում բնորոշեցի, «ողբասացներին իրենց խօսքն ասել

---

1 «Ծաղ ու ծանակ [=ծաղածանակ] հաւանօրէն աղճատմամբ դարձել է «ծոյլ ու ծանակ»:

է տալիս իրենց դարին եւ հաւատալիքներին համեմատ, ինչպէս մեր օրով վարւում են պատմական վէպեր գրողները»: Մի բան խառնում է Տաշեանը. այլ բան է, եթէ քրիստոնեայ Կեչառեցին իր կողմից իր անձնական քնարերգութեան մէջ գործածէր հեթանոսական ակնարկները, — ինչպէս արել են յաճախ կեղծ կլասիկ գրողները, նոյնիսկ մեր գրականութեան մէջ, — այլ բան է, երբ այդ կիրառել է նա հեթանոս հերոսների կողմից, նրանց բերանից ընդամէնը վեց անգամ, այն էլ մեծ մասամբ առնելով հերոսների կեանքից այն, ինչ որ կայ «Աղեքսանդրի Պատմութեան մէջ»: Տաշեանը չի կարող ասել, օրինակ, թէ Մովսէս Խորենացին բարեպաշտ քրիստոնեայ չի եղել եւ հաւատում էր հեթանոսական աստուածներին. բայց ահա մեր այդ Պատմագիրն իր յօրինած նամակի մէջ, որ իբր Վաղարշակն է ուղղել Արշակին, սրա համար գրում է՝ «որոյ անձն եւ պատկեր... մեր աստուածոց» (Խոր. Ա. 9): Ահա եւ թէ ինչպէս է սկսում նա մի ուրիշ թուղթ. «Ինքնակալ Յուլիանոս, ծնունդ Ինաքայ, Արամազդայ որդի, եւ ճակատագրեալ յանմահութիւն...» (Խոր. Գ. 15), կամ մի երրորդ թուղթ, «Մազդեզանց քաջ եւ բարձակից արեգական Շապուհ արքայից արքայ» (Խոր. Գ. 17): Այսպէս եւ շատ բնական է, երբ Աղեքսանդրը մահամերձ ողբում է իրեն՝ ասելով. «Կարծես առեալ եղջիւրօք անմահ կալ մնալ իբր թէ յԱմոնէ կամ յԱրամազդայ հելլենական նուագօք ի Կրաւնոսէ եւ յՌայէ սերեալ ազգաբանութեամբ, եւ այժմ յիմարեալ անճողոպրելի ի մահուանէ», կամ երբ ասում է. «Ոտք իմ սրընթաց իբր զյարշապարս յուշկապարիկ օդապարիկ լինելով իբր զՔսէներքայ եւ Պագիսոս, արդ վրիպեալ կապեալ ի մեռաղս մահճաց»: Այսպէս եւ երբ նա յիշում է իր ուսանելն «ի մայրն իմաստութեան առ Աթենայ իսկուհւոյն». կամ երբ Ողոմպիադան ողբալով ասում է ակնարկելով իր յղացմանը «եգիպտական մարգարէն ազդեաց ինձ զգալն Ամոնայ», նոյնպէս եւ «Այժմ պիտոյ է ինձ տապարն Հեփեստոսի առ ի հերձանել զգլուխ ծնողիս Աթենայ», կամ երբ Հռոքսիանէն լալով դիմում էր Աղեքսանդրին ասելով. «Որպէս հանդերձեալ ես յաստուածոցն խառնիլ երամս, այսպէս եւ զիս արա քեզ դերեզմանակից եւ մահակից»: Կեչառեցին հո չէ՞ր կարող այն հեթանոս ողբացողներին յիշել տալ քրիստոնէական Աստուծուն կամ սրբերին, կամ Աղեքսանդրին ասել տալ, թէ «իմ ոտները որ սրընթաց էին ինչպէս արագահաս սուրբ Սարգսի ճերմակ ձիունը...»: Այսպէս եթէ սակաւաթիւ հեթանոսական ակնարկները մի բան ապացուցում են, այդ ոչ թէ այն է, թէ բարառնութիւնների հեղինակը Կեչառեցին չի կարող լինել, այլ այն, որ մեր «շնորհօք ծաղկեալ» հռետորը հմուտ է եղել իր արուեստին:

Վերջապէս բնաւ արժէք չունի այն, թէ բարառնութիւնների համար էլ «նմանողական ոտանաւոր» են յօրինել ուրիշները Կեչառեցուց յետոյ, եւ կամ այն, թէ մի ձեռագրի լուսանցագրութիւնը... Բ. բարառնութեան նմանողութեամբ շինուած... ոտանաւորը Կեչառեցու անուամբ կը յիշէ յօրինուած»: Նախ միւս ձեռագիրների մէջ այդ չկայ, իսկ մի ձեռագրի մէջ էլ այդ ոտանաւորը Գրիգոր Աղթամարցուն է վերագրուած:[1] Ապա՝ որ կաֆաների հեղինակների անունները իրար հետ շփոթուած են, այդ ինքը Տա-

1 Տաշեան, Ուս. Ստ. Կալ., էջ 108:

չեանը լաւ ցոյց է տուել: Եւ երկրորդ՝ դիցուք թէ մի ձեռագրի լուսանցագրութեան հաղորդումը ստոյգ իրականութիւն է, եւ Կեչառեցին ինքը «Բ. բարառնութեան նմանողութեամբ» մի ոտանաւոր է յօրինել («նմանողութիւնը» Տաշեանը չի պարզում), այդ ոչինչ ու ոչինչ չի ապացուցում: Մի՞թէ նորանշան մի երեւոյթ է, որ բանաստեղծները, նոյնիսկ մեծ բանաստեղծները, երբեմն յօրինում են թէ՛ իրենց մի երկի «նմանողութեամբ» եւ թէ՛ նոյն նիւթը երկու երեք անգամ են բանեցնում, կամ առաջ յօրինում են արձակ, յետոյ նոյնը՝ ոտանաւորով:

Այսպէս ուրեմն, Հ. Տաշեանը ոչ մի կերպ չի ապացուցել, թէ կեղծ է բարառնութիւնների յիշատակարանը եւ դրանց հեղինակը Խաչատուր Կեչառեցին չէ: Մենք իրաւունք չունենք մեր նշանաւոր հռետորին զրկելու իր սեփականութիւնից: Այլ բան է, եթէ փաստեր լինէին, հիմնաւոր եւ համոզիչ:

## ԵՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՖՐԻԿԻ ԿԵՆՍԱԳՐՈՒԹԵԱՆ ՇՈՒՐՋԸ

1. Թուականներ:— *Ֆրիկի կենսագրութեան միակ աղբիւրը նրա բանաստեղծութիւններն են: «Ընդդէմ Ֆալաքին» քերթուածի մէջ*[1] *կան հետեւեալ տողերը.*

*Հիմիկ դըժարեց բաներս,*
*Որ թաթարն եղաւ թագաւոր:*

Պարզ է, որ բանաստեղծն ապրել է թաթարական իշխանութեան օրով, այն էլ սրա առաջին շրջանում, երբ դեռ չէր մոռացուել նախորդ Զաքարեան իշխանութեան բարի յիշողութիւնը: Նա վերոյիշեալ բանաստեղծութեան մէջ մարդուս բախտի անկայունութեան համար իբրեւ օրինակ բերում է հետեւեալը.

*Սահիպ Դիւանին ասենք,*
*Որ մըլքեց զերկիր նա բոլոր.*
*Հանցեղ սխասաթ*[2] *ունէր,*
*Որ չունէր ոչ ոք թագաւոր.*
*Զինչ որ խանորայք կային*
*Յափն ունէր զինչ ըզմի խընձոր.*
*Ֆալաքն երբ ի սիրտ ելաւ,*
*Նա արար զինչ երկու կտոր:*

Արդէն ցոյց է տրուած,[3] որ այս Սահիպ Դիւանին նոյն անձն է, որին յիշում է եւ Ստ. Օրբելեանը՝ ասելով, թէ Սիւնիքի իշխան Սմբատը

1 Ֆրիկ, «Բանաստեղծութիւններ, էջ 216 եւ հտն. «Նորին Ֆրկանն ասացեալ բան պիտանի»:

2 Տպուած է «սխաաթ», «խոնարայք». պէտք է ուղղել «սխասաթ», «խանորայք»:

3 «Արարատ» 1918, էջ 181, 192—194. վերեւում յիշուած յօդուածը՝ «Մոռաց.. մի հայ երգիչ» Տիրայր եպս.-ի:

«ինքն իշխէր ամենայն իշխանութեանց աւագին: Եւ տայ զդուստր նորա զԽոշաքն ի կնութիւն մեծ խօջային Սահիպ Դիւանին, որ ունէր ի բուռն զամենայն աշխարհս տէրութեան Ապաղայ ղանին… եւ նա էր դիւանի գլուխ եւ վերակացու ամենայնին. եւ էր այս յ718 [718+551=1269] թուին»:[1] Նա անցնում է մահմեդական դարձած Ահմադ ղանի կողմը եւ, ինչպէս բերել ենք վերեւում («Թաթարական իշխանութիւնը 13–րդ դարում» պարագրաֆի մէջ), սպանւում է այս ղանի եւ նրա համախոհների հետ 1286 թ., երբ իշխանները թագաւորեցնում են Ապաղայի որդի Արղունին:[2] Ըստ այսմ Ֆրիկի «Ընդդէմ Փալաքին» բանաստեղծութիւնը քանի որ սրա մէջ յիշատակւում է Սահիպ Դիւանի Խօջայի անկումը, յօրինուած է ոչ առաջ քան 1286 թուականը, հաւանօրէն հէնց այս թուականին կատարուած դէպքի թարմ ազդեցութեան տակ:

Այս միեւնոյն քերթուածի մէջ Ֆալաքը բարկացած՝ ասում է հեղինակին. «Մի՛ հաջել, անդէտ ալեւոր»: «Ալեւոր» նշանակում է՝ սպիտակ մազեր, սպիտակած միրուք ունեցող, շուրջ 50 տարեկան, ինչպէս սովորաբար ընդունում են,[3] երկրորդաբար նաեւ՝ ծեր: Արդ՝ քանի որ Ֆրիկը 1286 թ. յիշւում է իբրեւ ալեւոր, շուրջ 50–ամեայ, հետեւաբար նա ծնուած պիտի լինի շուրջ 1236 թուականին: Այս հաւանական է դառնում եւ հետեւեալով:

Ներքեւում քիչ յետոյ կը տեսնենք, որ Ֆրիկի «Վասն Արղուն ղանին եւ Բուղային» քերթուածը յօրինուած է 1289 թուականից ոչ առաջ եւ հաւանօրէն սոյն թուականին: Այդ բանքի մէջ բանաստեղծը խօսում է, ինչպէս տեսել ենք, թաթարական հարստահարիչ իշխանութեան—«մասախ» եւ «մասուչիների» մասին, եւ ասում է.

Աւուրքս անցաւ հետ մասախս,
Եզըր չըկայ, հուն չերեւին:

Այս տողերը բառացի նշանակում են՝ «օրերս անցան [=կեանքս անցաւ] այս մասախի հետ, որի վերջը չկայ, ծայրը չի երեւում»: «Մասախ» բառն, ինչպէս տեսել ենք, վերաբերում է թաթարական կեղեքիչ իշխանութեանը: Երբ բանաստեղծն ասում է, թէ օրերս անցան, կեանքս անցաւ այս «մասախի» հետ, այդ պարզապէս նշանակում է, որ նա ծնուել է կամ, ինչպէս ժողովուրդն ասում է, աչք է բացել «մասախի» հետ: Արդ՝ թաթարական արշաւանքն ի Հայաստան եղել է առաջին անգամ 1236 թ., հետե–

1 Ստ. Օրբել. Պատմ. նահ. Սիս., Թիֆլիս, 1910, էջ 418 եւ հտ:

2 Լեն-Փուլ, Մահմեդական տէրապետութիւնը, (ռուս.), Ս. Պետեր. 1899, էջ 182. Արղունի թագաւորութեան սկիզբը դրուած է 1284 թ.: Բայց ստոյգ պիտի համարել Օրբելեանին, որ ոչ միայն ժամանակակից է, այլեւ մօտիկ ծանօթ է եղելութիւններին:

3 Այսպէս, օրինակ, հին գրողներից Գրիգոր Տաթեւացին մարդու հասակի համար վեց շրջան՝ երեխայ, մանուկ, պատանեակ, երիտասարդ, ծեր եւ զառամացեալ՝ ընելուց յետոյ, աւելացնում է մի ուրիշ կերպ բաժանումն. «Եւ դարձեալ հասակ մարդոյ չորիցս ունի զփոփոխումն. այսինքն՝ ի մանկութիւն, երիտասարդութիւն, յալեւորութիւն եւ ծերութիւն» Քառասուն եւ վեց (ԽԶ) տարիքի համար ասում է. «Աստ տիրէ ալիք եւ սկիզբն լինի ծերութեան»: Գրիգոր Տաթեւացի, Գիրք հարցմանց, Կոստանդնուպոլիս, ի թուին Հայոց ՌՃԻԸ [=1178+551=1729], էջ ՄԿԵ=265:

ւաբար եւ նա ծնուել է շուրջ 1236 թ. եւ 1286 թուականին եղել է շուրջ 50 տարեկան, իսկ 1289 թ. շուրջ 53 տարեկան:

Պատմական եղելութիւնը, որով ստոյգ որոշւում է «Վասն Արղուն ղանին եւ Բուղային» քերթուածի գրութեան, հետեւաբար եւ բանաստեղծի ապրած ժամանակը հետեւեալն է: Ստ. Օրբելեանի «Ողբ»-ի մասին խօսելիս, «Թաթարական իշխանութիւնը 13-րդ դարում» պարագրաֆի մէջ տեսանք՝ որ մահմեդականութեան յարած Ահմադ ղանի եւ քրիստոնեաների վրայ յենուող Արղուն ղանի կռուի մէջ 1286 թ. վրաց թագաւորը եւ հայոց իշխան Տարսայիճը Արղունի կուսակից էին, եւ սրա ձեռով առաջ էր եկել Հայաստանի քաղաքական միութիւնը: Երեք տարի յետոյ դաւադրութիւն են սարքում Արղուն ղանի դէմ: Ստեփանոս Օրբելեանը (էջ 430) պատմում է, թէ «Երկպառակեցան զօրքն դան Արղունին. եւ անկաւ չփոթումն մեծ ի մէջ մեծամեծացն գլխաւորաց, եւ հանին բազում արեան ճապաղիս. զի կալաւ Արղունն զմեծ զօրավարն զԲուղայ Չինճսանն, որ կոչի աւագաց աւագ կամ տէրանց տէր, եւ եսպան զնա, զի խորհուրդ նենգութեան էին խորհեալ նմա. ընդ նմա եւ զամենայն համախոհս նորին՝ զՂապանն եւ զԹուխլուխ հազարապետն, զԱրուխն, զԱւճանն եւ այլ բազումս»: Այդ ժամանակ, 1289 թ., զրպարտելով սպանում են եւ վրաց Դեմետր թագաւորին: Դրանով չի ոչընչանում դաւադրութիւնն Արղունի դէմ: Ինչպէս յետոյ նոյն Օրբելեանը (էջ 467 եւ հտ.) գրում է, Արղուն ղանը 1291 թ. իր սիրած հարճից թունաւորուելով մեռնում է: «Որ եւ ի մահուան նորա լինի կոտորուած բազում մեծամեծ աւագանւոյն՝ Խօջանին որ էր գանձապետ արքային, եւ Սուլտանին որ էր ի վերայ կերակրոցն եւ ըմպելեացն. եւ Չիչուին եւ Աւրդուղանին որք էին ի վերայ դատաստանացն, եւ մեծ դիւանին Սադադաւլին՝ բարբարոյ Չհտին որ էր ի վերայ ամենայն հարկաց աշխարհի»: Այս անգամ էլ սպանւում են Արղունի մարդիկը:

Արդ, ինչպէս արդէն ցոյց է տրուած,[1] Ֆրիկի «Վասն Արղուն ղանին եւ Բուղային» քերթուածը յօրինուած է Արղունի դէմ կազմակերպուած առաջին դաւադրութեան մասին, որ տեղի է ունեցել 1289 թ.: Ապա ուրեմն այս երկը գրուած պիտի լինի ոչ առաջ քան 1289 թուականը, եւ ոչ թէ (դուցէ վրիպակով) «ոչ առաջ քան 1282 թուականը»:[2] Ապա ընդունելի կարելի չէ համարել եւ այն, թէ Ֆրիկի տուեալ քերթուածի մէջ իբր երեւում են Արղուն ղանի մահուան ժամանակ կատարուած դէպքերն եւս, «այն է մինչեւ 1291 թուականի վերջը»[3] կամ թէ հետեւեալը, որ ասուած է առանց որեւէ հիմնաւորման, հետեւելով նախորդին. «Վասն Արղուն ղանին եւ Բուղային» տտանաւորում Ֆրիկը, Բուղայի ապստամբութիւնից յետոյ, նկարագրում է մի քանի դէպքեր եւս, որոնք կատարուել են 1291 թուին: Այսպիսով Ֆրիկի

---

1 «Արարատ» ամսագիր, 1918, էջ 182 եւ հտն. Տիրայր եպս. «Մոռացուած մի հայ երգիչ»: Այլ եւ «Ֆրիկ, Բանաստեղծութիւններ», 1941, էջ 6 եւ հտն. Մ. Մկրեան, «Ֆրիկի ստեղծագործութիւնը»: Այս երկրորդն օգտուած է առաջինից՝ առանց իւր աղբիւրը ցոյց տալու: Ընդհանուր եզրակացութիւնը մասամբ ճիշդ համարելով հանդերձ՝ ընդունելի չեմ համարում այս երկու յօդուածների էլ որոշ մանրամասնութիւնները:

2 «Արարատ», 1918, էջ 187:

3 Անդ, էջ 189, 193, 194:

այս ոտանաւորը չէր կարող 1291 թուից առաջ գրուած լինել: Միւս կողմից էլ այն չէր կարող 1295 թուից յետոյ գրուած լինել...»:[1] Ուրեմն իբր 1291 եւ 1295 թուականների մէջ է գրուած այն: Բերուած երկրորդ ապացուածի վերջին մասը, որ վերաբերում է 1295 թուականին, կարեւորութիւն չունի. որովհետեւ թէ որոնք են այն «մի քանի դէպքերը», որ իբր կատարուած են 1291 թ., այդ մասին ոչ մի խօսք:

Որ Ֆրիկի այս բանաստեղծութիւնը վերաբերում է Արղուն ղանի դէմ 1289 թ. կազմակերպուած դաւադրութեանը, այդ շատ պարզ է: Քերթուածի մէջ յիշուած եղելութիւններն եւ անունները միայն բաւական են ապացուցելու այդ: Թէ՛ Ֆրիկի քերթուածի եւ թէ՛ Օրբելեանի Պատմութեան մէջ դաւադրութեան պարագլուխն է Ջինքան բուղան, որ կամեցել է «նենգել» Արղունին, կամ, ինչպէս Օրբելեանը գրում է, «խորհուրդ նենգութեան էին [էր?] խորհեալ նմա»: Ֆրիկը Բուղայի համախոհներից յիշում է Արուխին, նոյնը կայ նաեւ Օրբելեանի Պատմութեան մէջ: Ըստ Ֆրիկի՝ դաւադրութիւնըն իմանում է Սուլթան Աղան, որին յիշում է Օրբելեանը իբրեւ Արղունի հաւատարիմներից մէկը: Վերջապէս երկուսի մէջ էլ յիշւում է Արղունի բարեկամ Սադադաւլ(ին), որ Արղուն ղանի կուսակից աւագանիներից մէկն էր, որին ուրիշների հետ, ինչպէս պատմում է Ստ. Օրբելեանը, սպանում են Արղունի մահուան ժամանակ: Այս քերթուածի մէջ նա յիշւում է իբրեւ դեռ կենդանի:[2] Նոյնպէս դեռ կենդանի է ներկայանում եւ Արղուն ղանը: Եթէ այն գրուած լինէր 1291 թուից յետոյ, Ֆրիկն անպայման աւելի եւս բուռն զայրոյթով կը խօսէր այդ թուականին կատարուած եղելութեան մասին. բայց ոչ մի ակնարկ չկայ Արղուն ղանի թունաւորման եւ նրա կուսակիցների կոտորածի վրայ: Ընդհակառակն, նա Արղուն ղանի մասին խօսում է իբրեւ կենդանի մարդու, եւ գոհ է, որ նա չէր սպանուել:

Բուղա՛, դու ո՞նց կամիր [=կամէիր] նենգել.
ԶԱրղուն ղանն սատուած եղիր,
Ով է յաղթող Արղուն ղանին:

Այսպէս չի կարող գրուել իր կուսակիցներով հանդերձ արդէն սպանուած մի մարդու մասին: Կամ հետեւեալը.

... Աղաչենք ըզտէր Աստուած,
Որ ցուցանէ Արղուն ղանին,
Թէ չէ՛ աղէկ այն արտասուքն,
Որ թափեցին օրթախընին:

1 Ֆրիկ, Բանաստեղծութիւններ, 1941, էջ 8:

Չհիմնաւորուած կերպով առաջարկուած է Ֆրիկի քերթուածի «Ղուջան» անունը համարել «Ղազան» անուան աղճատում, եւ Ղազան անուան մէջ տեսնել Արղուն ղանի Ղազան որդուն, որ իր հօր մահուան ժամանակ Խորասանում է եւ 1295 թ. իր հակառակորդներին յաղթելով՝ դառնում է թագաւոր: Նոյնպէս մի չհիմնաւորուած առաջարկ է «Թաչար» անուան մէջ տեսնել Ստ. Օրբելեանի (էջ 171) յիշած «մեծ բիւրապետ Թաչարին», որ պատերազմի ժամանակ անցել է Ղազանի կողմը: Տե՛ս «Արարատ» 1918, էջ 188 եւ հտ. Տիրայր եպս-ի վերեւում յիշուած յօդուածը՝ «Մոռացուած մի հայ երգիչ»:

*Եթէ Արղուն ղանն արդէն սպանուած լինէր, այլեւս ինչո՞ւ պիտի բանաստեղծը գրէր «Աղաչենք Աստուծուն, որ ցուցանէ» նրան, թէ լաւ բան չէ օրթախների թափած արտասուքը։ Այսպէս ուրեմն, «Վասն Արղուն ղանին եւ Բուղային» քերթուածը գրուած է 1291 թուականից առաջ եւ 1289 թ. ոչ առաջ. իմ կարծիքով՝ քերթուածի ամբողջ բնաւորութիւնից երեւում է, որ դա յօրինուած է հէնց այս 1289 թուականին կատարուած եղելութեան անմիջական տպաւորութեան տակ անմիջական բռնկումով։*

*Երրորդ թուականը վերաբերում է «Գանգատ» քերթուածին։ Խաչատուր Կեչառեցու «Ողբի» մասին գրելիս՝ արդէն տեսել ենք, որ Ղազան ղանի թագաւորութեան սկիզբներում սոսկալի հալածանք է հանել քրիստոնեաների դէմ մահմեդականութեան յարած Նաւրուզ զօրավարը. քանդել են եկեղեցիները, կոտորել են քահանաներին ու շատ քրիստոնեաների, շատերին կողոպտել ու գերի տարել։ Այդ դրութիւնը, որ արտայայտուած է Կեչառեցու «Ողբի» մէջ, աւելի զօրեղ կերպով երեւում է Ֆրիկի «Գանգատ» («Բան ի Ֆրիկ դրքոյն») քերթուածի[1] մէջ։*

*Այլ կամք ի ձեռս անօրէնի,*
*Որք կու վարեն անդին գերի.*
*Ո՞րքան քակեն եկեղեցի.*
*Քանի՞ չինեն պիղծ մըզկիթնի։*
*Քանի՞ կանայս առնեն այրի,*
*Եւ ո՞րքան որբ քրիստոնէի.*
*Ո՞րան արիւն հեղուն յերկրի։*

*«Քանի որ թաթարական տիրապետութեան նախորդ շրջանում եկեղեցիներ քանդելու մասին յիշատակութիւն չկայ, ուրեմն կարելի է հաստատ եզրակացնել, որ «Բան ի Ֆրիկ դրքոյն» բանաստեղծութիւնը գրուել է 1295 թուից* յետոյ»։[2] *Ըստ իս՝ այդ քերթուածը յօրինուած է ոչ թէ 1295 թ.* յետոյ *որ է՝ 1296 թուականին կամ աւելի ուշ, այլ հէնց նոյն 1295 թուականին, Խորասանից Ղազան ղանի գալու ժամանակները եւ Ղազանի թագաւորութեան սկիզբներում, երբ եւ տեղի է ունեցել եկեղեցիների քանդումը։ Այդ հաստատւում է հետեւեալով։ Հէնց այդ ժամանակներում էլ Կիլիկիայի Հայոց Հեթում թագաւորը, որ եկել էր Ղազանի նախորդի մօտ, «եւ հասաւ յայս տագնապ չփոթի», — գրում է Ստ. Օրբելեանը,[3] — գնում է Ղազանի մօտ եւ խօսում է նրա հետ այդ հալածանքի մասին։ «Իսկ նորա [=Ղազանը] ի չքմեղս եղեալ ասէր. ես ոչ գիտեմ զայդ, այլ Նաւրուզն գործեաց զամենայն։ Եւ հրամայեաց առ ժամայն գրել հրովարտակ ընդ ամենայն աշխարհ, զի մի՛ իշխեսցեն ձեռնարկել յեկեղեցիս եւ ի քրիստոնեայս. այլ խաղաղութեամբ բնակեսցէ ամենայն ոք՝ զիւր հաւատ եւ պաշտօն համարձակ ունելով։ Եւ յայսմանէ սակաւ մի խաղաղացեալ եղեն հէնք տագնապին... Իսկ Ղազանն առեալ զիշխանութիւն յ744 (=1295) թուին յաշունն... կացուցանէր նա ի վերայ ամենայն զօրաց իւրոց եւ աշխարհաց զԽութլու—*

1 *Ֆրիկ, «Բանաստեղծութիւններ», էջ 232։*
2 *Անդ, էջ 9 «Ֆրիկի՝ ստեղծագործութիւնը», Մ. Մկրեանի։*
3 *Ստ. Օրբ., Պատմ. նահ. Սիս., էջ 474 եւ հտ.։*

*չահն՝ այր բարի եւ հզօր եւ յաղթող ի պատերազմունս, որ էր յոյժ բարեկամ եւ օգնական քրիստոնէից. որ եւ փեսայացաւ արքայի առնլով զքոյր նորա ի կնութիւն. եւ ի սադրելոյ սորա լինէր խաղաղութիւն մեզ եւ ամենայն աշխարհիս Հայոց». Իսկ Նաւրուզը գնում է Խորասան, ուր եւ մտածում է գաւել Ղազանին, բայց իր տոհմով ոչնչացւում է Խութլուշահի ձեռով: «Ահա՛ տեսէք զեղջիւր եկեղեցւոյ, եթէ որպէս մեծագոյն պատառեաց զթշնամին իւր, — գրում է Օրբէլեանը, — եւ խնդրեաց զվրէժ քակտելոյն իւրոյ, զի* ոչ տեւեաց իշխանութիւն նորա (*Նաւրուզի*) ամ մի. *այլ իսպառ ջնջեցաւ ազգաւ»: Այս ամէնն, ուրեմն, կատարուել է մի տարում՝* 1295 *թուականին: Եւ Ֆրիկի «Գանգատ» բանաստեղծութիւնն էլ գրուած է հէնց նոյն թուականին հայերի այդ մեծ հալածանքի օրերին եւ ոչ թէ հալածանքը դադարելուց յետոյ, «*1295 *թուից յետոյ»: Ուշադրութիւն պիտի դարձնել, որ Ֆրիկը յօրինում է բայերի ներկայ ժամանակով՝ «կամք, վարեն, քակեն» եւ այլն. ուրեմն «կանք», «գերի են տանում», «եկեղեցիները քանդում են» եւ այլն: Այսպէս գրում են մարդիկ, երբ գրելիս հէնց կատարւում է այն եղելութիւնը, որի մասին գրում են:*

*Ըստ երեւոյթին նոյն* 1295 *թուականի հալածանքի ժամանակ է Ֆրիկը գրել իր մի ուրիշ բանքն եւս՝ «Վասն անմիաբանութեան քրիստոնէից», որի մէջ յիշում է եկեղեցիների հալածանքը («զեկեղեցիս հալածեն») եւ դիմում է Աստուծուն ասելով «Յարո՛ մեզ եղջիւր փրկութեան...»:*

*Քանի որ, ինչպէս տեսանք, մեր այս բանաստեղծը ծնուած պիտի լինի շուրջ* 1236 *թ., հետեւաբար նա* 1295 *թ. իր նշանաւոր «Գանգատ» բանքը յօրինել է մօտ* 59—60 *տարեկան պատկառելի հասակում: Դրանից յետոյ էլ նա ապրել է շատ տարիներ, եւ հասել է լի ծերութեան, քանի որ նա մի բանքի մէջ, որի սկիզբն է «Ջանացի թէ լոյսն ելնեմ»* (*էջ* 79), *գրում է.*

*Ալիքս է դեղին դարձել:*

*Ընդունելով այսպիսի հասակը* 70—75*-րդ տարին, նա վախճանուած պիտի լինի* 14*-րդ դարի առաջին տասնամեակներին:*

2. Ֆրիկի որդու գրաւ դրուելու խնդիրները:— *Այս բանաստեղծի կենսագրութեան մէջ տեսանք, որ թաթարների իշխանութեան ժամանակ, երբ պահանջուած հարկը չէին կարողանում վճարել, հարկի պարտքի տեղ հարկատուների զաւակներն էին առնում: Կարծում են, թէ Ֆրիկի որդուն էլ տարել են հօր պարտքի փոխանակ:*[1] *Բայց այն բանաստեղծութիւնը, որի մէջ յիշատակւում է այդ, ինչպէս կենսագրութեան մէջ ասացինք, դեռ կարօտ է բանասիրական քննադատութեան: Դնենք այստեղ Ֆրիկի այդ գեղեցիկ բանքը,*[2] *որի մասին խօսուել է նրա կենսագրութեան մէջ: Մասերը նշւում են* 1 *եւ* 2 *թուանշաններով:*

Նորին Ֆրկանն ասացեալ

1. *Գնաց մանկութեան հասրաթն,*

---

1 *«Արարատ» 1918, էջ 83 եւ հտ.: Այստեղից էլ ունի «Ֆրիկ, Բանաստեղծութիւններ», էջ 10:*

2 *Ֆրիկ, Բան., էջ 80 եւ հտ.:*

Ու երեկ լինձ հոգս անիհուն․
Ջըրկած եմ երկու կենօք,
Վասն այնոր չեմ ելնել ի հուն։
  Գազան ՚ւ անասուն ու հաւ
Գէմ ունին իւրեանց տուն ու բուն․
Ոչ տուն ու ոչ տեղ ունիմ,
Կու խոցիմ զօրն ի յայն հարկուն։
[Վարիանտ՝ կու խոցիմ ի յանհաւատնուն]։
  2․ Ցաւել թէ գինի խմեմ,
Նա՛ ծըփամ զինչ նաւն ի յալուն․
Գընա, թող ի բաց զամէն,
Ու եղիր սիրող վանքերուն։
  Ցիշխան մի՛ յուձալ, եղբա՛յր,
Ճար չըկայ ի յադամորդուն․
Գընա, ծառայէ նորա,
Որ տէր է անձին ու հոգուն։
  Գէմ զայն խասիաթս գիտեմ,
Կեանքըս չի մընա մարըդոյն․
Ճարակ անտէնին արա,
Որ չլինիս ի հօն դու լալուն։

Ժողովածուն կազմողը՝ Տիրայր եպիսկոպոս՝ Ֆրիկի այս բանքը հանել է երեք ձեռագրից (x'a'b), որոնց մէկի մէջ միայն (x ձեռ․) եղել է սովորական վերնագիրը՝ «Նորին Ֆրկանն ասացեալ», միւս երկուսը (a'b) չեն ունեցել վերնագիր։ Նա մի չորրորդ ձեռագրի (c) մէջ գտել է վերեւում դրուած բանաստեղծութեան միայն առաջին (1) երկու քառեակն առանց վերնագրի, ուրեմն առանց Ֆրիկի անուան․ իսկ յաջորդ երեք քառեակի (2 մասի 12 տողի) փոխանակ տարբեր 14 տողեր, որոնց մէջ է եւ հեղինակի որդու գրաւ դրուելը։ Բերենք եւ այդ «անանուն բանքը»։

  1․ Գնաց մանկութեան հասրաթն,
Ու երեկ ինձ հոգս անհուն․
Զրկեալ եմ երկու կենօքս,
Վասն այնոր չեմ ելնել ի հուն։
  Գազան ՚ւ անասուն ու հաւ
Գէ՛մ ունին իրենց տուն ու բուն,
Ոչ տուն ու ոչ տեղ ունիմ,
Կու խոցիմ ի յանհաւատնուն։
  2․ Կասեն թէ խմէ գինի,
Որ լինես դու մի պահ ի քուն․
Ուսկա ի պարտուց յահուն[1]
Կու դողամ զինչ ուռն ի քամուն։

1 «Արարատ», 1918, էջ 81 «յահուն», իսկ «Ֆրիկ, Բանաստ.» էջ 40 տպուած է «յալուն»։

*Դըրի զիմ որդին դըրաւ*
*Ուստի ճուղապ դընալուն.*
*Միթէ թագաւորն երկնից*
*Նայ բերէ զիմ որդին ի տուն:*
*Հազար ցեղ թապտիր կածեմ*
*Թէ... ներուս թէ ելնեմ ի հուն,*
*Ժամ ժամ ի դէպ կապ կուգայ,*
*Զի ընկնիր իմ ջուրն ի յառուն:*
*Ջանցի թէ հանց բան այնեմ*
*Որ էր... (թերթ ընկած եւ պակասաւոր):*

*Ժողովածուն կազմողն այս «անանուն բանքի» (2) մասը, վերջին* 14 *տողերը, որոնց մէջ է յիշւում հեղինակի որդու գրաւ դրուելը, համարել է մի այլ ընթերցուած. Ֆրիկի բանքի, այսինքն վերեւում դրուած «առաջին բանքի», փոխանակ սրա* (2) *մասի, այսինքն վերջին* 12 *տողերի (սկսած՝ «Ցաւել թէ գինի խմեմ» տողից) եւ իբրեւ այսպիսին էլ գծի տակ տպուած է ժողովածուի մէջ, որից եւ օգտւում ենք մենք: Այսպէս վարուելու հիմքը միայն այն է եղել, որ այս կարծեցեալ «այլ ընթերցուածից» առաջ եղել է Ֆրիկի բանքի («առաջին բանքի») սկզբի մասը՝* (1) *առաջին ութ տողերը: Բայց այդ մեծ հատուածն իր բովանդակութեամբ կապ չունի Ֆրիկի բանքի երկրորդ* (2) *մասի հետ, որ սրա այլ ընթերցուածը համարուի: Միակ նմանութիւնը որ կայ երկուսի մէջ՝ է «գինի խմեմ», «խմէ գինի»: Բացի այդ՝ ոչ մի հաստատ հիմք չկայ պնդելու, թէ այդ հատուածի հեղինակը Ֆրիկն է: Այսպէս ուրեմն, ունենք երկու առանձին բանքեր, «Ֆրիկի բանք» կամ «առաջին բանք» եւ «անանուն բանք» կամ «երկրորդ բանք», որոնց սկզբի ութ տողերը նոյնն են, իսկ շարունակութիւնը՝ տարբեր:*

*Այլ եւ այլ վարկածներով կարելի է բացատրել այդ երկու բանքի յարաբերութիւնը: Եթէ ընդունուի, թէ այդ երկուսի էլ հեղինակը Ֆրիկն է, ապա այդ դէպքում պէտք է ենթադրել, թէ նա դրանցից մէկն ու մէկը յօրինելուց յետոյ առել է իր բանքի սկզբի* (1) *մասը, առաջին ութ տողը եւ շարունակութիւնը նոր բովանդակութեամբ յօրինել, որով առաջացել են երկու տարբեր քերթուածներ՝ իրենց սկզբի մասերի նոյնութեամբ: Իրենց աշխատութիւնների հետ այսպէս վարուող քերթողներ էլ կան. բայց այդ դժուար է ընդունել Ֆրիկի նման առատաբան եւ հեշտ յօրինող մի բանաստեղծի համար: Նա իր մի քերթուածի տողերն առնելու փոխանակ՝ ամենայն թեթեւութեամբ նոր տողեր կը շարադրէր նոր բանքի սկզբում: Բացի այդ՝ քանի որ հեղինակի անուան յիշատակութիւն չկայ երկրորդ բանքի համար, ուստի վերջին հաշւով ենթադրական է մնում դրա հեղինակի ով լինելը, հետեւաբար եւ Ֆրիկի որդու գրաւ դրուելը, որ յիշւում է այդ անանուն բանքի մէջ:*

*Դարձեալ կարող է առաջ գալ եւ այս ենթադրութիւնը. Ֆրիկը յօրինել է երկու բանքերից առաջինը, որի վերնագրի մէջ կայ Ֆրիկ անունը, եւ մի ուրիշ քերթող՝ խլացնելով նրա քերթուածի առաջին ութ տողերը, շարունակութիւնը ինքն է յօրինել, եւ այսպէս կազմուել է «անանուն բանքը»*

կամ երկրորդ բանքը»։ Այսպիսի վերաբերմունքը մի անսովոր երեւոյթ չէր Ֆրիկի ապրած շրջանում, երբ ուրիշի հեղինակութիւնների հետ ազատ էին վարւում։ Այս դէպքում, սակայն, ժխտւում է, թէ Ֆրիկն իր որդուն գրաւ է դրել, քանի որ այդ յիշւում է «անանուն բանքի» մէջ։

Երրորդ՝ կարելի է ենթադրել, թէ այդ «անանուն» կամ «երկրորդ» բանքն առաջացել է որեւէ դրչի ձեռով պատահաբար այսպէս։ Ֆրիկի բանքի, այսինքն վերեւի «առաջին բանքի» ետեւից դրուած է եղել մի ուրիշ բանք, երբ գրիչը Ֆրիկի բանքն արտագրելիս հասել է «Ցաւել թէ գինի խմեմ» տողին, նա անզգուշութեամբ սկսել է արտագրել ետեւի ուրիշ բանքի նման տողից՝ «Կ'ասեն թէ գինի խմէ», որով եւ առաջացել է «անանուն բանքը»։ Այսպիսի թռիչքներ արտագրութեան ժամանակ սովորական են․ այդ առաջանում է նոյն բառերի եւ նոյնանման խօսքերի ազդեցութեամբ։ Եթէ այսպէս ծագած լինի «անանուն բանքը», քանի որ դրա՝ ուրիշ քերթուածից ծագած մասի մէջ է հեղինակի որդու գրաւ դրուելը, իսկ այդ ուրիշ քերթուածի հեղինակի ով լինելը յայտնի չէ, ապա ուրեմն դարձեալ ենթադրական է Ֆրիկի որդու գրաւ դրուած լինելը։

Չորրորդ՝ կարելի է ենթադրել, թէ այդ «անանուն բանքը» ծագել է այսպիսի մի կերպով։ Ֆրիկի բանքը գրուած է եղել որեւէ ձեռագրի մի թերթի երկրորդ էջի վրայ․ ետեւից նոյն էջի ցածի մասում՝ մի ուրիշ քերթուածի սկզբի մասը։ Որեւէ պատճառով պատռուած հանուած է այդ թերթի ցածի մասը, որի վրայ եղել են Ֆրիկի բանքի երկրորդ (2) մասը եւ այն ուրիշ քերթուածի սկզբի մասը։ Յետագայում մի դրիչ արտագրել է Ֆրիկի բանքից մնացածը, որ է առաջին (1) մասը, եւ ապա յաջորդ թերթից առաջին էջը, որի վրայ գրուած է եղել այն ուրիշ քերթուածի շարունակութիւնը, եւ այսպէս մեխանիկօրէն միացել են Ֆրիկի բանքի առաջին (1) մասը եւ մի ուրիշ քերթուածի մնացած մասը, եւ առաջացել է «անանուն բանքը»։ Այսպիսի դէպքեր պատահում են ձեռագիրների մէջ, բայց այսպիսի դէպքում էլ, քանի որ Ֆրիկի անունը յիշուած չկայ «անանուն բանքի» համար, չգիտենք թէ ո՛վ է հեղինակը ենթադրական ուրիշ քերթուածի, ապա դարձեալ չենք կարող հաստատ ասել, թէ Ֆրիկի որդին է պարտքի տեղ գրաւ դրուած եղել։

Վերջապէս՝ կարելի է կարծել, թէ այդ երկու՝ «առաջին» և «երկրորդ» բանքերը» սկզբնապէս ոչ թէ տարբեր բանաստեղծութիւններ են եղել, այլ Ֆրիկի մի գեղեցիկ քերթուածի մասեր, որոնք պատահաբար անջատուած են ամբողջութիւնից։ Այդ քերթուածը ենթադրաբար եղել է այսպէս․

1․ Գնաց մանկութեան հասրաթն,
Ու երեկ ինձ հոգս անիհուն․
Զըրկած եմ երկու կենօք,
Վասն այնոր չեմ ելնել ի հուն։
Գաղան 'ւ անասուն ու հաւ
Գէմ ունին իւրեանց տուն ու բուն․
Ոչ տուն ու ոչ տեղ ունիմ,
Կու խոցիմ զօրն ի յայն հարկուն․

[Վարիանտ՝ կու խոցիմ ի յանհաւատնուն]։
2· Կասեն թէ խմէ՛ գինի,
Որ լինիս դու պահ մի քուն·
Ուսկա ի պարտուց յահուն[1]
Կու դողամ զինչ ուռն ի քամուն·
Դըրի զիմ որդին գըրաւ,
Ուստի ճուղապ դընալուն·
Միթէ թագաւորն երկնից
Նայ բերէ զիմ որդին ի տուն։
Հազար ցեղ թապտիր կածեմ,
Թ՚է... ներուս թէ ելնեմ ի հուն·
Ժամ ժամ ի դէպ կապ կու դայ,
Չի ընկնիր իմ ջուրն ի յառուն։
Ջանցի թէ հանց բան այնեմ,
Որ էր... («թերթ ընկած եւ պակասաւոր»)։
3· Ցաւել թէ գինի խմեմ,
Նա՛ ծըփամ զինչ նաւն ի յալուն·
Գընա, թող ի բաց զամէն,
Ու եղի՛ր սիրող վանքերուն։
Ցիչխան մի՛ յուսալ, եղբա՛յր,
Ճար չըկայ ի յադամորդոյն·
Գընա, ծառայէ՛ նորա,
Որ տէր է անձին ու հոգուն։
Գէմ զայն խասխաթս գիտեմ,
Կեանքըս չի մընալ մարըդոյն·
Ճարակ անտէնին արա,
Որ չլինիս ի հօն դու լալուն։

Այս ենթադրական ամբողջական քերթուածից 3-րդ հատուածի դուրս ընկնելով առաջացել է վերեւի «անանուն» կամ «երկրորդ բանքը»· եւ ժողովածուն կազմողը յայտնում է այդ մասին գրելով՝ «թերթ ընկած եւ պակասաւոր»։ Իսկ Ֆրիկի բանքը կամ «առաջին բանքը» առաջացել է այսպէս։ Գրիչն արտագրել է ենթադրական ամբողջական քերթուածի 1· մասը· երբ հասել է 2· մասին, որ սկսւում է «Կ՛ասեն թէ գինի խմէ», նա անզգուշութեամբ, «գինի խմելու» զուգորդութեամբ, թողել է 2· մասը եւ արտագրել է 3· մասը, որ սկսւում է «Ցաւել թէ գինի խմեմ» տողով։ Այսպիսով պատահաբար ծագել է «Ֆրիկի բանքը» կամ «առաջին բա՛նքը», որի պակասաւոր լինելն ըստ իմաստի զգալի չէ, եւ ուրիշներն արտագրել են նոյնը։ Եթէ ընդունուի այսպիսի վերականգնուած ամբողջական քերթուածը իբրեւ Ֆրիկի մի երկ, ապա պէտք է ընդունուի նաեւ Ֆրիկի որդու գրաւ դրուած լինելը։ Բայց ինչքան էլ հնարաւոր եւ հաւանական է այդպիսի ամբողջական քերթուածի գոյութիւնը եւ նրա միջից կամ վերջից հատուածներ

1 «Արարատ», 1918, էջ 81՝ «յահուն», իսկ Ժողովածուի մէջ է «յալուն»։

դուրս ընկնելը, դարձեալ մի ենթադրութիւն է այդ, հետեւաբար այս դէպքում էլ ենթադրական է մնում Ֆրիկի որդու գրաւ դրուած լինելը: Այդ ստոյգ որոշելու համար՝ պէտք է սպասել նոր հաւաստի տեղեկութեան:

## ՉՈՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՇԱՀՆԱՄԱՅԻ ՁԵՒԱԿԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆԸ

1. **«Ասել ձայնով»**:— Կոստանդին Երզնկացուց, ինչպէս տեսել ենք, խնդրում է յօրինել մի քերթուած այնպիսի չափով, որ կարելի լինի «ի Շահնամայի ձայն ասել, կարդալ», կամ «ասել ձայնով», ինչպէս Շահնաման էին ասում: Եւ Կոստանդինը, նմանելով պարսկական դիւցազներգութեանը, յարմարում է մի բանք, ասելով, թէ «ի Շահնամայի ձայն կարդացէք»: Անկարեւոր չէ այստեղ բացատրել, թէ ինչպիսի է եղել այդ նմանողութիւնը, եւ թէ ինչ է նշանակում մի ոտանաւոր ասել ձայնով, եւ որն է «Շահնամայի ձայնը», որի համեմատ պիտի ասէին Կոստանդնի յօրինած ոտանաւորները:[1]

Հին ժամանակ բանաստեղծութիւնը կատարում էին երեք կերպ, երգում էին, «ի թիւ» էին ասում եւ «ի ձայն» կամ «ձայնիւ» էին ասում: Երգելը պարզ է, թէ բանաստեղծութեան որպիսի կատարումն է: «Ի թիւ ասելը», դա «ի թիւ» ուսած, այսինքն՝ բերան արած՝ արտասանելն է առանց որեւէ եղանակի, սովորական կարդալու կամ պատմելու ձեւով, որքան կարելի է, պարզ եւ մեկին: Այսպէս «ի թիւ» է ասուել, մասամբ եւ երգուել, մեր հին վիպասանութիւնը կամ վիպասանքը, որ եւ այդ պատճառով կոչուել է նաեւ «Թուելիք», «թուել» բառից, որ նշանակում է նաեւ պատմել:[2] «Թիւ են ասուել» եւ դեռ այդպէս ասւում են, եւ քիչ մասով միայն երգւում մեր «Սասնայ Ծռերը», ինչպէս նմանապէս նաեւ ուրիշ ազգերի ժողովրդական վէպերը:

«Ձայնով ասելը», դա մի առանձին տեսակի եղանակաւոր ասելն է, որ երգելու եւ թիւ ասելու միջին տեղն է բռնում: Եթէ թիւ ասում են սովորական խօսակցական կամ դրուցատրական ձեւով ու ձայնով, որոշ դէպքերում նաեւ սովորականից էլ ցած ձայնով, «ձայնով ասելու» ժամանակ ձայնը բարձրացնում են սովորականից աւելի: Արձակ խօսքի, պրոզայի այսպիսի արտասանութեան ժամանակ խօսքի մէջ որոշ բառերի վրայ, նայելով բովանդակութեանն ու բառերի կապակցութեան խմբերին, ուժեղ շեշտեր են դրւում եւ վանկերի ժամանակը, այսինքն տեւողութիւնը, երկարացւում է, այնպէս որ արձակ ասացուածը ստանում է մի առանձին ռիթմ ու եղանակաւորութիւն: Մինչեւ այժմ էլ մեր «Սասնայ Ծռեր» պատմողները, եթէ չեն երգում այն հատուածները, որ ուրիշները երգում են, յաճախ «ձայնով են ասում», եւ յայտնում են, թէ այդ ինչ կտորը պէտք է ձայնով

---

1 Ֆիրդուսի, Բանաստեղծի ծննդեան հազարամեակին նուիրուած ժողովածու, Երեւան, 1943, էջ 117—128, Մ. Աբեղեանի յօդուածը՝ «Շահնամայի ոտանաւորի չափը հայ բանաստեղծութեան մէջ»:

2 Տե՛ս սոյն աշխատութեան Առաջին հատոր. էջ 44 եւ հտ. «Թուելիք, Թուելեաց երգք»:

ասել։ Նոյնիսկ վէպի պատմուածքի ընթացքում, վէպի բնագրի մէջ այդպիսի հատուածների համար գործածւում է կամ «երգել», «խաղով (=երգով) ասել», կամ թէ չէ՝ «ձէնով ասել» արտայայտութիւնը։[1]

Ոտանաւորներն «ի ձայն ասելը», կամ «ձայնով կարդալը», դա նոյն ձայնով ասելն է, միայն այս դէպքում առանձնապէս շեշտւում ու երկրացւում են, ոտանաւորի կազմութեան համեմատ, ռիթմական ոտքերի ու անդամների այն վանկերը, որոնք իրենց վրայ պէտք է կրեն ռիթմական շեշտերը։ Բացի այդ՝ ռիթմական ոտքերը կամ անդամները մի մի փոքրիկ դադարով անջատւում են յաջորդ ռիթմական ոտքերից կամ անդամներից։ Այսպիսի արուեստական արտասանումի ժամանակ վանկերը միակերպ մեկին են հնչում, ռիթմական շեշտերը միակերպ ուժեղ եւ այդ շեշտերը կրող վանկերը միակերպ երկար տեւողութեամբ, այնպէս որ ունկնդիրների համար անջատ-անջատ լսելի են լինում առանձին ռիթմական ոտքերը կամ անդամները։ Այսպիսի արտասանումն ահա, որ կոչւում է «ի ձայն» կամ «ձայնով ասել» կամ «ոգել ձայնիւ», սիրուած է եղել մեզնում մինչեւ 19-րդ դարի կէսերը եւ նոյնիսկ մինչեւ 1880-ական թուականները գրաբար ոտանաւորների համար։ Այսպիսի արուեստական արտասանումով կարդացել են եւ Շահնաման եւ դեռ կարդում են մինչեւ մեր օրերը։ Դրանով ուժեղ կերպով արտայայտւում է այդ վիպասանութեան չափը։

Պարսկական ոտանաւորի էական հիմունքը կազմում է վանկերի երկարութիւնն ու կարճութիւնը։ Շահնամայի չափի իւրաքանչիւր ոտքը կազմուած է երեք վանկերից, որոնց առաջինը կարճ է եւ ռիթմօրէն անշեշտ, երկրորդն ու երրորդը երկար են. ռիթմական ուժեղ շեշտը, որը անկախ է պրոզայիկ շեշտից, այսինքն սովորական արտասանութեան շեշտից, դրւում է երկրորդ վանկի վրայ, երրորդ վանկը կրում է երկրորդական, թոյլ շեշտ։ Այս չափի իւրաքանչիւր տողը, որ 11-վանկանի է, կազմուած է չորս այսպիսի ոտքերից, որոնց վերջինը չունի երրորդ վանկը։ Երկու տողը միասին կազմում են մի տուն (բեյթ) եւ նոյնայանգ են։ Ձայնով կարդալու ժամանակ՝ ամէն ռիթմական ոտք յաջորդ ոտքից բաժանւում է մի փոքր դադարով, որ կարող է ընկնել նաեւ բառամէջերում։ Շահնաման, ուրեմն, յօրինուած է հետեւեալ սքեմայով՝ ⏑ ⊥ ⊥ ⏑ ⊥ ⊥ ⏑ ⊥ ⊥ ⏑ ⊥,

Վանականները Կոստանդնին խնդրել են հայերէն լեզուով այնպիսի ոտանաւոր յօրինել, որ կարելի լինի «Շահնամայի ձայնով ասել»։ Այսպիսի չափով հայերէնում խիկապէս հնարաւոր չէ ոտանաւորներ գրել, զի հայոց լեզուն չունի երկար եւ կարճ ձայնաւորներ։ Մեր բանաստեղծը հայերէն ոտանաւորի ոտքերն էլ կազմում է երեք վանկից, բայց իւրաքանչիւր ոտքի միջին երկար եւ զօրեղ շեշտուած վանկի փոխանակ, ելնելով հայերէնի պրոզոդիայից — առոգանութիւնից, դնում է շեշտուած վանկ, որ հայերէնում

1 Մինչեւ այժմ էլ հայոց եկեղեցու ժամերգութեան ժամանակ պահուած է ոչ միայն երգելը, այլ եւ թիւ ասելն ու ձայնով ասելը որոշ դէպքերի եւ առանձին տիպի ընթերցուածների համար։ Տես՝ Մ. Աբեղեան, Հայ ժողովրդ. առասպելները Մ. Խորենացու Հայոց պատմ. մէջ, Վաղարշապատ, 1899, էջ 56—71։ «Ասել, Վիպասանք, Երգք վիպասանաց, ի թիւ ասել, Թուել, Թուելեացն երգք»։

համեմատաբար երկար է արտասանւում, քան միւսները եւ հարկաւոր ժամանակ կարելի է աւելի եւս երկարել: Այսպիսի կազմութեամբ ոտանաւորը կարելի է ազատ կերպով «ի Շահնամայի ձայն» ասել: Բայց դա, եթէ բովանդակութեան համեմատ կարդանք, իսկապէս հայկական անապեստեան ոտանաւոր է ,սկզբից մի յամբական ոտքով, եւ արուեստական արտասանումով միայն ստանում է բարձրացող-ընկնող ռիթմ: Ռիթմական շեշտերը կրող երկար վանկերը նշանակելով հայերէնի երկար (՛) նշանով, իսկ ոտքերի երրորդ վանկերը (որ պարսկերէնում ունի երկրորդական ռիթմական շեշտ), նշանակելով հայերէնի բութ (՝) նշանով, եւ ոտքերի միջի դադարները՝ շեղակի գծով (/), Կոստանդնի հետեւեալ տողերն՝ ըստ Շահնամայի՝ ձայնով ասւում են այսպէս·

Այսկեա՛նքսէ՝ / ունա՛յնեւ՝ / ժառա՛նգե՝նք / մահո՛ւ,
Զունի՛մե՝ք / զըրո՛ւնքրա՝– / բութեա՛նեւ՝ / չահո՛ւ.
Երա՛զէ՝ / խաբո՛ղեւ՝ / խայալա՝ն– / ցաւո՛ր,
Է սո՛ւտսի՝– / բելի՛եւ՝ / ընկե՛րնե՝ն– / դաւո՛ր:

Կարելի չէ կարծել, թէ հայերին Կոստանդին Երզնկացու ապրած շրջանում միայն ծանօթ է եղել Ֆիրդուսու Շահնաման եւ նրա բանեցրած չափը, որ պարսից մեծ բանաստեղծից առաջ էլ ուրիշները գործածել են: Եւ իսկապէս Գրիգոր Նարեկացին արդէն ունի այդ չափով մի տաղ («Եկեղեցւոյ»), որ Շահնամայի ձայնով կարդալիս՝ ստանում է նոյն բարձրացող-ընկնող ռիթմը·

Երկինքն ի յերկիրս եւ երկիրս ի յերկինքն,
Վայրէջք ի խոնարհ եւ վերելք ի բարձունս...

Ձայնով ասելիս՝

Երկի՛նքնի / յերկի՛րսեւ / երկի՛րսի / յերկի՛նքն,
Վայրէ՛ջքի / խոնա՛րհեւ / վերե՛լքի / բարձո՛ւնս...

Այսպէս ուրեմն, 10-րդ դարում, Ֆիրդուսու ապրած ժամանակից արդէն մեր բանաստեղծութեան մէջ գործածուած կայ Շահնամայի ոտանաւորի չափը:[1] Բայց չենք կարող ասել, թէ Գրիգոր Նարեկացին այդպէս յօրինել է պարսկականի ազդեցութեամբ, ինչպէս Կոստանդինը: Սա նմանում է Շահնամային, բայց, ցաւօք, միմիայն ձեւական կողմից, բովանդակութեամբ բոլորովին հեռու պարսկական հռչակաւոր դիցազներգութիւնից: Նա, ինչպէս ասուեց, յօրինում է աշխարհի ունայնութեան եւ մահուան երգը, արժանի իրեն խնդրող կրօնաւորներին, եւ ոչ թէ մի աշխարհիկ բովանդակութեամբ քերթուած, կամ մի ազգային հերոսական վէպ:

---

1 Մանրամասնութիւնները՝ վերեւում յիշուած «Ֆիրդուսի» ժողովածուի մէջ, էջ 117 եւ հտն., Մ. Աբեղեանի «Շահնամայի ոտանաւորի չափը հայ բանաստեղծութեան մէջ»: Իսկ պարսկերէնի համար տեսնել՝ Persische Grammatik, von C. Salemann und V. Schukowsky, Berlin, 1899, եւ «Քերականութիւն Պարսկերէն Լեզուի», հեղ. Միրզա-Ջաֆար (ռուսերէն), Մոսկուա, 1901:

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՑԱՒԵԼՈՒԱԾ

# ԱՆԱՆՈՒՆ ՏԱՂԵՐ

*Բազմաթիւ տաղեր կան, որոնց մէջ երգուած են, աւելի կամ պակաս գեղեցկութեամբ, նոյն հիմնական մօտիւները կամ նիւթը: Դրանցից՝*

1. *մէկն է* մեռելների վիճակը յարութիւնից յետոյ, *արդարների ու մեղաւորների վիճակը:*

*Այդպիսի գեղեցիկ տաղերից մէկն է եւ հետեւեալը (Անահիտ, Դ. 1902, էջ 27, Վենետկի Վ. Տաղարան 459 է. Բ.)*

*Հայրենի չափով ու գեղեցիկ պատկերներով.*

*Տ ա ղ   ա զ ն ի ւ*

*Յորժամ Գաբրիէլ գոչէ,*
*Յառնին մեռեալքըն ի հողոյն.*
*Կէսքըն լուսափայլ յառնին՝*
*Աստեղաց նըման գոյնզգոյն.*
*Կէսքըն սեւերես յառնին,*
*Գըլխիկոր ի խիստ ամօթոյն.*
*Լալի եւ ողորմ ու խեղճ՝*
*Արտասուքն նըման թուխ ամպոյն:*

*Այնուհետեւ 12 տողով նկարագրում է արդարների յաւիտենական վիճակը.*

*Բազմին յառագաստ լուսոյ,*
*Ճաշակին անմահ սեղանոյն,*
*Եւ կենդանարար բաժակ*
*Միշտ ըմպին ի ժամ ծարաւոյն:*

*Ուրեմն մարմնական վայելչութիւն: Սոսկալի տանջանքներով մեղաւորների դրութիւնը.*

*Կրակ ու ցուրտ սառնամանիք*
*Անչափ հառաչին եւ լան,*
*Որ դառնայ արտասուքն արիւն,*
*Եւ միշտ կրերած կենայ*
*Զինչ չարժի տերեւն ի քամուն...*

2. *Մի առանձին թեմա է* հայ ազգի վիճակի դառնութիւնը, անիշխան դրութիւնը *եւ* ներքին յոռի վիճակը:

*Այդ երգուած է (Վիեննայի վանք, Ձեռ. թիւ 136, Անահիտ, 1901, էջ 259, Bis) թոյլ բան է ձեւի կողմից, բայց զգացմունքով գրուած է, պարզում է ազգային դրութիւնը.*

*Ո ղ բ*

*Կողկողագին դիմօք զազգն իմ աւաղեմ,*
*Եւ փղձկեալ ի սրտէս լալով արտասուեմ...*

Արդ ո՞ւր են մեր իշխանք եւ ո՞ւր երեւլին,
Նոցա պետութիւնք, որք ոչ երեւլին…
Զպատուիրան սիրոյն ընաւ մոռացաք,
Եւ ոխակալութեամբ զիրեարս մատնեցաք։
Գոեհիկք եւ անպիտանք ազգինս տիրեցին,
Եւ զարս ազնուականս զգետնի հարին,
Եւ այնու զօրէնս մեր աւերեցին։

[Մի հին թեմա, Ղազ. Փարպ.].

Տգէտք եւ տմարդիք քահանայացան,
Լիրբք եւ անբարտաւանք զկարգս առացան…
Զոմանս ի բանտ մատնեն, զոմանս տուգանեն,
Զոմանս բրածեծ առնեն, զոմանս կաշառեն…
Եղբայր զեղբայր մատնէ, զերէցն քահանայն…

3. Մի երրորդ մեծ թեմա է սէրը.
Նոյն վերեւի Անահիտ, էջ 259, B.

Տաղ սիրոյ

Գիշեր ու ցերեկ ի քո տարտէն
Հառաչեմ, հառաչեմ,
Կ'ուզեմ զանունդ յայտնել,
Կ'ամաչեմ, կ'ամաչեմ։
Ա՛յ անօրէն, միս եմ ու ոսկոր եմ,
Գէմ քար չեմ, դէմ քար չեմ.
Ցայլ չեմ կրնար զաղտուկ ապրիլ,
Կու կանչեմ, կու կանչեմ, եւ այլն։

Բնական ձեւով երգուած եղանակով, հասարակ մարդու յօրինած։

4. Հին ժամանակից սիրուած է եղել Աստուածածնի սուգը «Յուդի ուրբաթ գիշերը». արտասանում կամ երգում էին տաղեր, ժամերգութիւնից դուրս եւ լացացնում սգաւոր ժամաւորներին։ Գեղեցիկներից մէկն է «Տաղ Ս. Աստուածածնի» («Անահիտ, 1901, էջ 215, Վենետկի վ. տաղարանի, ԺԹ թիւ, 1063 է. ա.)։ Ինքն Աստուածածինը պատմում է սրտառուչ կերպով իր եւ իր որդու վիճակը։ Գործողութեամբ, որ յաճախացած չէ.

Յորժամ Նստեալ կայի ի տան,
Ցանկարծ լուայ ըզլուրըն զայն,
Թէ զմիածինըն քո տարան. —
Միա՛կ որդեակ, միա՛կ որդեակ,
Իմ միածին Յիսուս որդեակ։
Իբրեւ խելաթափ դուրս ելայ,
Ցանկարծ ըզխաչն յուսըն տեսայ,
Մարմնովս յերկիր տարածեցայ, —
Միա՛կ որդեակ եւ այլն.

Մայրն այլեւս չի տեսնում, թէ ուր տարան. նա ընկած է գետնին. ասում է.

Ո՛վ Մագթաղենացի, հասի՛ր,
Ներքոյ ձեռին իմոյ մատիր,
Զգառնուկն իմ տարան ի խաչել, —
Միակ որդեակ եւ այլն.
Կանա՛յք Երուսաղեմացիք,
Միթէ զորդեակն իմ դուք տեսի՞ք
Զճանապարհն ինձ ցոյց տայիք. —
Միակ որդեակ եւ այլն.
Իսկ նոքա ի ճանապարհին
Զկաթիլքն արեան նշան տային.
Հեռուստ տեսայ զգայլքն ի գառին. —
Միակ որդեակ եւ այլն.

Իսկական մայրական սրտով զգում է, թէ մի՛ գուցէ իր մօտ գնալով աւելի վիշտ պատճառէ չարչարուող որդուն: Ուստի շատ ազդու է շարունակութիւնը.

Երբ մըտօք իմացաւ որդիս,
Եթէ մայր իմ գայ ի յետիս,
Յայնժամ խոցեաց սուրն ի սրտիս.
Միակ որդեակ եւ այլն.
Սրտէ ի սիրտ խօսէր առիս,
Թէ՝ «Մի՛ գայր, մաքո՛ւր աղաւնիս,
Զի յաւելուս ցաւն ի սրտիս». —
Միակ որդեակ եւ այլն:

Ուրեմն իր ցաւը մոռանում է. հոգում է որդու համար:

Առեալ տարան ի Գողգոթա,
Մերկացուցին զմարմին նորա,
Տարածեցին խաչին վերայ, —
Միակ որդեակ եւ այլն:

Մայրը հեռու է կանգնած, չի տեսնում, բայց զգում է.

Իբրեւ լուայ զձայն բեւեռին,
Զսիրտ իմ բոլոր կտրատեցին,
Ո՛րպիսի աչք է որ տեսին. —
Միակ որդեակ եւ այլն:

Ես արտագրեցի ամբողջը մօր կողմից պատմած եւ երգուած. կրկնակներն այդ են ցոյց տալիս:

5. Սիրու երգի մի ձեւ է Աստուածածնի գովքը, որ եթէ սկզբում (Նարեկացի) կրօնական է, յետոյ արդէն իսկական սիրոյ երգ է դառնում: Այդպի-

սիներից մէկն է «Տաղ ասացեալ ի վերայ Ս. Կուսին Մարիամու» (Անահիտ, 1901, էջ 216, Վիեննայի Վ. Տաղարան, թիւ 405), որ իսկապէս աշխարհիկ սիրոյ երգ է կրօնական քողի տակ: Միակ կրօնականը «սիրով Քրիստոսին» բառերը:

Այդ էլ երգուած է կրկնակներով, թողնում է 17–18–19–րդ դարերի երգի տպաւորութիւն. ձեւական կրկնութիւններով, ինչպէս Գապասախալեանի մօտ: —

Մաքուր եւ սուրբ առանց քոյին
Փափաքիմ, սէ՛ր իմ, փափաքիմ
Յոյժ յոյժ կարօտով.
Դարձուցանել սիրով առ նոյն
Պաղատիմ, սէ՛ր իմ, պաղատիմ,
Ելով ի խոր թշուառութեան
Տառապիմ, սէ՛ր իմ, տառապիմ,
Յոյժ յոյժ կարօտով.
Ակն ունելով նախնի սիրոյս՝
Արդ այրիմ սիրով քո այրիմ:

Այս վերջին տողը կրկնակ է: — Ձեւը տիրացուական, զուգէ եւ այլազգական: Այսպէս կրկնուած «խաղերով» են միւս տները, որոնց մէջ յայտնում է իր ծարաւելը կարօտով, տոչորուելը սիրով, իր տարփմամբ խամրանալը, «ներքնապէս համայն՝ կրիւք պապակիլը». կարօտից թալկանալը, եւ զարմանալը թէ ինչպէս է ապրում առանց սիրածին եւ վերջը

Յօղեա՛ սիրով ըղձնորհըս քո մեղմագին, սէ՛ր իմ, մեղմագին.
Ձի զովացոյց ըստ քո առատ պարգեւին, սէր իմ, պարգեւին»:

Յոյս ունի ունենալ իր նախնի սէրը: Ամբողջապէս աշխարհիկ է:

Ձեւը 10–րդ դարու:?[1]

## ՎԵՑԵՐՈՐԴ ՑԱՒԵԼՈՒԱԾ

## ԳՈՒՍԱՆԱԿԱՆ ՏԱՂԵՐ

1. Վանի Խարակոնիս գիւղացի Աշուղ Քուչակի անունով արդէն երեւան են եկել բաւական թուով ե՛ւ հայերէն, ե՛ւ թուրքերէն երգեր, որոնք ոչ մի նմանութիւն չունեն լոկ խօսքով նրան վերագրուած տաղերի հետ:

2. Այս վերջինները առանձին տիպի գուսանական ժողովրդական երգեր են, մեր հին աշխարհիկ քնարերգութեան մնացորդները, ոչ թէ մէկ հեղինակի, այլ բազմաթիւ բանաստեղծների, մասամբ եւ բանաստեղծուհիների գործեր, որոնք յօրինուել եւ աւանդուել են բերանացի եւ գալիս են մեծ մասամբ շատ աւելի հին ժամանակներից, քան 16–րդ դարը: Դրանց մի քանիսի մէջ յիշուած յատուկ անունները՝ «Մարայ թալան», Մոլքաթ Խո–

[1] Հարցականը Մ. Ա.-ինն է: Խմբ.:

*բասան, Հռոմ եւ այլն, պարզ ցոյց են տալիս, որ այդ անուններն ունեցող տաղերը յօրինուած են 12–13րդ դարերում. ուրիշները, թերեւս, աւելի վաղ։*

*3. Ձեռագիր տաղարանների մէջ այդ երգերը դրուած են այսպիսի վերնագիրների տակ՝ «տաղ սիրոյ», «տաղ սիրու», «հայերէն» կամ սղուած ձեւով՝ «հայրէն», «հայերէն սիրոյ», «հայերէն վասն սիրոյ», «հայերէն վասն ուրախութեան» եւ այլն, այլեւ «հայրենի կարգաւ», որ նշանակում է՝ «հայերէնի ոտիքով (կարգ—ոտիք, ոտանաւոր)։ Այս տաղերն ըստ ձեռագիրների «հայերէն» կոչուել են իրենց առանձին տեսակի ոտանաւորի, բանաստեղծական չափի համար, որ համարուել է հայերէն, այսինքն հայկական։*

*Հնագոյն յիշատակութիւնը որ ունենք այդ «հայրենի» ոտանաւորի գործածութեան մասին, է այն, որ ողբասաց կանայք, «բանահիւս կանայք լալականք», այդ չափով, այն էլ յանդաւոր «լալեաց բանաստեղծութիւն», այսինքն մեռելի ողբեր, «լացեր» («լալիք») են յօրինելիս եղել հին ժամանակներում։ Ապա՝ 10–րդ դարուց ի վեր շատ բանաստեղծներ բանեցնում են այդ չափը զանազան բովանդակութիւն ունեցող երգերի համար։ Դրա «հայերէն» կոչման մասին, սակայն, ցարդ յայտնի ամենահին յիշատակութիւնը գտնում ենք Ֆրիկի տաղերի մէջ (13–րդ դար)։*

*4. Հայերէնի չափի կազմութիւնը հետեւեալն է։ Ամէն երկու տող միասին ե՛ւ ձեւով, ե՛ւ բովանդակութեամբ կազմում են մէկ միութիւն, որ կոչւում է «տուն» (բէյթ)։ Առաջին տողը 7–վանկանի յե—յամբ, անապեստ, յամբ (o′ oo′ o′) ոտքերով, երկրորդ տողը՝ 8–վանկանի, — անապեստ, յամբ, անապեստ (oo′ o′ oo′) ոտքերով։ Տան երկու տողի միջեւ, սակաւ բացառութեամբ, կայ դադար, որով առաջին տողն զգալի կերպով անջատւում է երկրորդից, եւ այդ երկուսը միասին մէկ ռիթմական միութիւն կազմելով հանդերձ՝ մի մի առանձին ռիթմական միութիւն էլ են կազմում։ Այսպիսով, եթէ ոտանաւորները յաջող են յօրինուած, միաժամանակ լսելի են լինում ե՛ւ պարզ ոտքերի, ե՛ւ տողերի, ե՛ւ տների ռիթմը։*

*Ինչպէս մեր ուրիշ չափերի մէջ, այստեղ էլ կայ անշեշտ վանկերի գործածութիւն ռիթմօրէն շեշտելի վանկերի տեղում։ Բայց առաջին տողի մէջ անպայման շեշտուած են 5–րդ եւ 7–րդ վանկերը, իսկ երկրորդ տողի մէջ՝ 3–րդ եւ 8–րդ վանկերը։ Բացի այդ՝ այստեղ էլ մէկ մէկ շեշտի տեղափոխութիւն է լինում, առանձնապէս առաջին տողի սկզբի վրայ, իսկ երկրորդ տողի սկզբում գործածւում է քօղարօրր (•o•) կոչուած ոտքը, որով մի շեշտ աւելի է լինում տողի սկզբում։ Տողասկզբում զօրեղ շեշտուած եւ երկար արտասանուող մէկ վանկն անցնում է երկու վանկի տեղ («Հա՜յ, իմ փոքրիկ չամամ»)։ Բայց այսպիսի գործածութիւնը հայրենների կայ մի քանի անգամ, մինչդեռ մեր հին բանաստեղծների մօտ դա յաճախուած է։ Եւ վերջապէս՝ պէտք է նկատի ունենալ, որ զօրեղ շեշտից առաջ եւ յետոյ եղած շեշտերը, ինչպէս միշտ, թուլանում եւ նոյնիսկ կորչում են («Կրակն ի՛մ գլուխն է վառած»։ «Որ Մօրա՛յ տէրըն կու պահէ»։*

*Ինչ որ չի համապատասխանում «հայրենի կարգի» այս ընդհանուր յօրինուածքին, դա առաջանում է մեծ մասամբ աղճատումից, որ յաճախ ուղղւում է վարիանտների օգնութեամբ։ Եւ ոտանաւորի ձեւն ինքը, ինչպէս միշտ, օգնում է աղճատումը նկատելու եւ հիմք է տալիս ուղղելու այն։*

Ինչքան էլ այս չափի մէջ տունը (բէյթը) կազմում է մի ամբողջութիւն, բայց տունն անկախ իբրեւ մի բանաստեղծութիւն երեւան չի գալիս հին հայրէնների մէջ: Այդպիսիներ կան նոյն չափով յօրինուած նոր ժողովրդական երգերի մէջ: Հայրենի չափով ամենափոքր հին բանաստեղծութիւնն է երկտուն քառեակը (քառատողը)· բայց սովորական ձեւն է քառատուն ութեակը, որ կազմուած է ութ տողից կամ երկու քառեակից: Կան եւ աւելի մեծերը:

Գալով յանգերին՝ պէտք է ասել, որ քառեակները յաճախ ըստ յանգերի նոյն յօրինուածքն ունեն, ինչ որ մեր արեւելեան նոր ժողովրդական քառեակները, այն է՝ 1-ին, 2-րդ եւ 4-րդ տողերը նոյնայանգ են, իսկ 3-րդ տողը մնում է անյանգ (զերօ), այսպէս՝ aa 0a: Երբեմն բոլոր չորս տողերն էլ նոյնայանգ են, կամ նոյն յանգն ունեն 2-րդ եւ 4-րդ տողերը, իսկ առաջին եւ 3-րդ տողերն անյանգ են, այսպէս՝ aaaa կամ 0a0a Այս վերջին երկու ձեւով են յաճախ նաեւ աւելի մեծ տաղերը: Բայց դրանց մէջ կան շատերը, որ զազէլի կազմութիւն ունեն, այսինքն՝ 1-ին, 2-րդ, 4-րդ, 6-րդ, 8-րդ, 10-րդ··· տողերը նոյնայանգ են, իսկ 3-րդ, 5-րդ, 7-րդ, 9-րդ տողերըն՝ անյանգ, այսպէս՝ aa 0a 0a 0a 0a

Յանգերի վերաբերմամբ պէտք է նկատի ունենալ եւ հետեւեալը: Հնագոյն շրջանում հայերէններն անյանգ են եղել եւ հետագայ շրջաններում եւս դրանք ձգտել են անյանգ դառնալու: Բացի այդ՝ կան մեծ հայերէններ, որոնք առաջացած են սկզբնապէս անկախ քառեակների միացումից· ուստի եւ յանգերի դասաւորութիւնը երբեմն շեղւում է վերեւի ձեւերից· զազէլների մէջ, օրինակ, փոխանակ անյանգ մնալու՝ նոյն յանգն ունի չորրորդ կամ վերջընթեր տողն եւս: Մի կողմն ենք թողնում աղճատումն ու «բանաստեղծական ազատութիւն» կոչուածը:[1]

5· Տաղարանների մէջ յաճախ իրար ետեւից գրուած են նոյնայանգ տարբեր հայերէններ, որոնք, սակայն, միմեանց յաջորդում են սովորաբար ոչ այնքան նոյն յանգերի համար, որքան նրա համար, որ իրենց մէջ ունեն որեւէ ընդհանուր բան — նոյն բառերը կամ տողերը, նման բովանդակութիւն եւ այլն: Այսպիսով՝ այդ տաղերը երեւան են գալիս զանազան մեծ ու փոքր շարքերով, որոնք գրուած են իբրեւ երգ մէկ ընդհանուր վերնագրի տակ՝ «տաղ սիրոյ», «հայերէն սիրոյ», «հայերէն վասն ուրախութեան»: Միեւնոյն հայերէնները գրուած կան ե՛ւ այս, ե՛ւ այն վերնագրի տակ: Եւ այս հասկանալի է: Սիրոյ տաղերն էլ եղել են «հայերէն վասն ուրախութեան»:

6· Այդ տաղերն այսպէս «վասն ուրախութեան» կոչուել են, զի դրանք երգուել են խնջոյքների ժամանակ, երբ հարսանիքներին կամ այլ առիթով ժողովւում էին մի տեղ բազմութեամբ կերուխում անելու, կամ, ինչպէս ասում էին, «ուրախութիւն» անելու, «ուրախանալու»: Նախ ուտում էին կերակուրները, մի քանի բաժակ միայն գինի խմելով· ապա սկսւում էր

---

1 Հայերէնների չափի մասին մանրամասն ուսումնասիրութիւնը տես՝ Մ. Աբեղեանի «Հայոց լեզուի տաղաչափութիւն», Երեւան, 1933, էջ 267 եւ հտն., այլեւ «Հին գուսանական ժողովրդական երգեր», Երեւան, 1931, էջ 21 եւ հտն.:

գինարբուքը, «խումը» կամ բուն խրախճանքը։ Ուրախակիցները քաշւում էին սրահի պատերի տակ, մէջտեղը թողնում էին պարի համար բաց տարածութիւն, որ կոչւում էր ատեան»։ Մատռուակներն սկսում էին գինի բաշխել։ Խմում էին «տոստաքանը», ընդհանուր բաժակը։ Գուսաններն ու վարձակները (կին գուսանները) նուագում ու երգում էին, եւ երիտասարդներն «ատեանի» մէջ «պարում էին» (կլոր պար) եւ կաքաւում։ Եւ այսպէս յաճախ մինչեւ լոյս։

7. Գուսանները հնումն բանեցնում էին ուրախութեան ժամանակ՝ թմբուկ, սրինգ, քնար եւ փող, իսկ «լալիքը», որ է մեռելի ողբը, կատարելիս՝ փող, փանդիռ ու վին։ Հետագայում յիշւում են նաեւ ուրիշ «գուսանական գործիքներ»․ «Երգեցիկ գուսաններն» ու վարձակները նուագում էին գլխաւորապէս քնար եւ զարկում էին թմբուկ։

Գուսանները երգել են նաեւ վիպական երգեր, բայց խրախճանքների ժամանակ նրանք ասել են աւելի սիրու տաղեր։ Այդ պատճառով եւ սիրու տաղերը կոչուել են ոչ միայն «սիրու բաներ», այսինքն սիրու բանաստեղծութիւններ, այլ եւ «բանք ի ժողով», այսինքն «ժողովի», խնջոյքի բանաստեղծութիւն։ «Խնջոյքը», որ նշանակում է ժողով, ամենահին ժամանակներից կոչուել է նաեւ համանիշ «ժողովք», «ժողով» բառով։ Յետին դարերում դրան փոխանակել է օտար «մէջլիս» բառը, իսկ «գուսան» բառին՝ «մտրուպ» բառը, որ այժմ մոռացութեան է տրուած։

Գարնան ու ամռան «ուրախութիւնն» անում էին պարտէզներում ծառերի հովանու տակ։ Մի հին բանաստեղծութեան մէջ՝ «Տաղ գարնան եւ ուրախութեան» մանրամասն նկարագրուած է գարունն եւ հէնց այդպիսի բացօթեայ «մէջլիսը» կամ «ժողով ի բուրաստան»։ Գուսանն այս մեծ երգի մէջ արդէն կոչւում է «մտրուպ» եւ բանեցնում է «չաչտա» կամ «չաչտա», որ վեցլարանի նուագարան է։

— Մտրո՛ւպ, դու սազէ՛ պչաչտան,
Որ մորճըն խաղայ յատեան։
«Ա՛յ մորճ, ու բարակ 'ւ երկան,
Քո տեսն ի լուսին նման,
Աչերդ է ի ծով նման,
Ունքերդ աղեղան նման, եւ այլն։

Շարունակութեան մէջ գովւում է «մորճի», այսինքն նորատի աղջկայ պատկերը, շրթունքը, լեզուն, ձայնը։ Եւ վերջը դարձեալ․

— Մտրո՛ւպ, դու լարէ՛ պչաչտան,
Խօսի մեզի սիրու բան։
(Վար. խօսին ի սիրոյ շատ բան)։

Ապա գալիս է գուսանի մի մեծ «սիրու բան», սիրու տաղ․

Հոգի՛, աչերուս ես լոյս,
Երբ որ իմ դիմացն ելնուս, եւ այլն։[1]

1 Տես՝ Հ. Մ. Պոտուրեան «Կոստանդին Երզնկացի», Վենետիկ, 1905, էջ 173 եւ հտն., այլեւ «Հին գուսանական ժողովրդ. երգեր», էջ 182 եւ հտն.։

Այս է ահա յիշուած «ուրախութեան» տաղի բովանդակութիւնը — գարուն ժողովք (խնջոյք) բուրաստանում, գինարբուք, գուսանի նուագ ու երգ, մորճի պար, մորճի գովք եւ ընդհանրապէս սիրու երգ: Եւ այս «ուրախութիւնն» է եղել հին ժամանակ մեր, ինչպէս եւ ամէն ազնուականութեան գլխաւոր զուարճութիւններից ու ժամանցներից մէկը:

8. Գուսանները, որ ծագումով եղել են հասարակ մարդիկ, իրենց արուեստը բանեցրել են սովորաբար ոչ թէ աշխատաւորների, «տառապեալների», այսինքն աղքատների համար, այլ «հարուստների», այսինքն հարկանողների, խփողների, հարստահարողների— ազնուականութեան համար. «Եւ բազում հատեալ յարբշռութիւն... ըմպէին անդ գինի բողօք եւ փարձակօք եւ գուսանօք եւ կատակօք (=խեղկատակներով)... Եւ... էին յուրախութեան մեծի... ուտէին եւ ըմպէին» (Փ. Բուզանդ): Ահա 4-րդ դարում «ուրախացող» ազնուականները: Եւ այսպէս ոչ միայն 4-րդ ու 5-րդ դարերում, այլ եւ հետագայ դարերում, եւ արաբացիների, եւ Բագրատունիների, եւ Արծրունիների իշխանութեան ժամանակ, եւ Անի քաղաքում, եւ ընդհանրապէս Հայաստանում մինչեւ 11-րդ դարի կէսերը, երբ «Թուլացան եւ աղարտեցին զպատերազմ եւ սիրեցին զգինի եւ զգուսանս» (Սմբատ Սպարապետ), եւ «Ուրախական երգոց եւ ռանից միայն լինէին հանդէսք. ուր եւ ձայնք փողոցըն եւ ծնծղայիցն եւ այլ երգեցողական արուեստիցն զլսողացն անձինս լի առնէին ուրախական բերկրանօք» (Արիստակէս Լաստիվերացի):

Երբ բարձրանում են քաղաքները, 10 եւ 11-րդ դարերում, դուցէ եւ աւելի վաղ, գուսանները ծառայում էին նաեւ հարուստ ու փարթամ քաղաքացիներին, այս նոր «հայ ճոխերին», որոնք «թմբկօք եւ պարուք զգինին ըմպէին» եւ «ի կաքաւս խաղուց եւ յերգս գուսանաց հեշտանային»:

9. Գուսանների ուրախական երգերը, ուրախութեան հայրէնները, քանի որ յօրինուել եւ երգուել են սկզբնապէս ազնուականութեան եւ հարուստ քաղաքացութեան համար, բնականաբար եւ նրանց կեանքի արտադրութիւնը եւ արտայայտութիւնն են: Եւ մեր հայրէնների մէջ իսկապէս երեւան է գալիս միայն այդ երկու դասի կենցաղը, ճոխ կեանքը — մետաքսէ հագուստ, «որ նախշած է ոսկի թելերով», շար շապիկ, մարգարտէ շարոց, ոսկեթել ծածկոց, ականջի ոսկի օղեր, վարդաջրով լի շիշ, մուշկ ու անպար, ապրշում խալի, Ֆրանկի ղումաշ, Ֆրանկի կողպէք, բարձրիկ սեղան եւ այլն: Մի քանի հայրէնների մէջ «մեր առաջ պատկերանում է միջնադարեան ազնուականի անառիկ բերդը անտառապատ ու ժայռոտ լեռնազանգուածի մէջ»...

Քո տունն ի յանտառ մորին,
Եւ քո դուռն ի դէմդ ի ժայռին,
Քո բերդն ի զանճիլ նման,
Ուր հազար մի սար զանճլին...

Ուրիշ հայրէնների մէջ տեսնում ենք քաղաքացի վաճառականին օտար երկրում ապրանք ծախելիս եւ նմանները:

Արդարեւ այս տաղերը, իբրեւ ժողովրդի մարդկանց գործեր, հարուստ են ժողովրդական կենդանի լեզուի այնպիսի դարձուածքներով եւ ժողովրդական կեանքին յատուկ այնպիսի բազմազան գծերով ու դրութիւններով, բուն

ժողովրդական բարքերով, որոնք բոլորը երեւան են գալիս նաեւ մեր գիւղական ժողովրդական երգերի մէջ· բայց եւ այնպէս հայրէնները գիւղական բանաստեղծութիւն չեն: Դրանց մէջ չկայ իսկական գիւղական կենցաղին վերաբերեալ ոչ մի բնորոշ գիծ, ինչպէս են գիւղական աշխատանքի զանազան կողմերը, — վար ու ցանք, հունձ ու կալ եւ այլն, որոնցով լի ու լի են մեր գիւղական խաղիկներն եւ այլ սիրու երգերը: Մէկ պանդխտական հայրենի մէջ միայն յիշւում է գիւղը՝ ...«Ձայս գեղիս քարերն արիւնէս կարմիր լուանամ» («Գուսանական տաղեր», 361):

Հայրէնների հասարակութեան մարդիկը հեռու են այդպիսի հողագործական, այլեւ որեւէ գիւղական աշխատանքից: Նրանց հետաքրքրում են միայն իրենց սիրու կեանքին վերաբերեալ առօրեայ մանր–մունր դէպքերը, իրենց սիրային ապրումները, տենչերն ու սիրուց տանջանքները, ծնողների վերաբերմունք, վարձանք, սիրականին փախցնել, նրան հանդիպել, սիրականի գեղեցկութիւնն ու նրա զովքը եւ շատ նմանները, որոնք բոլորն ընդհանուր են եւ ազնուականի, եւ քաղաքացու, եւ գիւղացու համար:

10· Ինչպիսի բովանդակութեան երգեր էլ որ ասելու լինէին գուսանները, բուն ուրախութեան, այսինքն գինու, թէ սիրու կամ լացի, դրանց հակառակ է եղել եկեղեցին: Սա 4–րդ դարում արդէն արգելել է մեռելների ողբը: Իսկ սէրն, ուրախութիւնն ու գինեխումը խոտելի եւ անարգ են համարուել խստակրօն եկեղեցականներից եւ հակառակ են եկեղեցու քարոզած ժուժկալութեան սկզբունքներին: Մինչդեռ եկեղեցին պատուիրում էր հրաժարուել աշխարհի վայելքներից, առանձնապէս կերուխումից եւ նոյնիսկ ամուսնանալուց, հայրենի գուսանն, ընդհակառակն, խնջոյքի երգիչն էր եւ երգում էր առանձնապէս գինարբութիւն եւ սիրու հեշտանքը·

Նստեր է ծառի շքին,
Կը խմէ գիւր լուրջ ապիկին·
Խմէ հայրէն կ'ասէ·
Թ' ի՞նչ անուշ է սէրն ու գինին:

«Սէր ու գինի» եւ «հայրեն ասել» — ահա ըստ եկեղեցու ատելի եւ նոյն իսկ «դիւական» բաներ, որոնք, սակայն, ըստ գուսանութեան կազմում են կեանքի նպատակը: Ով որ խմել ու սիրել չգիտէ, նա չպիտի ապրի, — մի սկզբունք, որ լաւ արտայայտուած է հետեւեալ հայրէնի մէջ:

Գիշերս ես ի դուրս ելայ,
Թէ եար մի գտնեմ սիրելու·
(Վար· Թէ զիմ եարն գտնում խմելու)·
Գրողն այ իմ դէմս ելաւ,
Թէ՝ «Ձհոգեկդ ունիմ տանելու»:
— Գրո՛ղ, ՚ւ անհաւատ Գրո՛ղ,
Ես մանուկ եմ, չեմ տանելու·
Եկ որ քեզի մարդ ցցնում,
Տանելու, չլին զարնելու·
Ձայախն (բաժակն) ի յափին ունի,
Ոչ խմէ, ոչ տայ խմելու·

Ջաղացքն ալ իր գիրկն ունի,
Ոչ գրկէ, ոչ տայ գրկելու:

Գուսանութեան եւ եկեղեցու սկզբունքներն այսպէս հակառակ են եղել միմեանց: Այս է պատճառը, որ եկեղեցին միշտ հալածել է «վաւաշ գուսաններին», «գայթակղութիւն» է համարել նրանց արուեստը, որ դարձադրւում էր սովորաբար ցոփ խրախճանքների ժամանակ: Գիշերային չուայտ խումբերի վրայ ասուած հայրէններն էլ, հարկաւ, մասամբ զեխ բնաւորութիւն են ունեցել, երգել ու փառաբանել են սեռական կիրքը: Այդպիսիները պակաս չեն նոյնիսկ մեզ հասածների մէջ:

Եթէ եկեղեցին հալածել է «մորճի», մանկամարդ կնոջ մարմինը երգող գուսաններին, սրանք էլ, որ շատ հեռու են եղել եկեղեցուց եւ զերծ որեւէ բարեպաշտութիւնից, իրենց կողմից իրենց հայրէնների մէջ չեն խնայել եկեղեցու սրբերին, նրա կարգերն ու ծէսերը. սուր երգիծանքներով ծաղրել են քրիստոնէական տաճարը, քահանաներին, աբեղաներին, կեղծաւոր վանականներին, որոնք սէրը մեղք են համարել, բայց թաքուն սիրել են:

Այսպէս՝ գուսանական հայրէնները՝ իբրեւ «աշխարհի բաներ», արդիւնք են հակադիր աշխարհայեցութեան, քան ինչ որ եկեղեցունն է եղել: Դրանք իրենց մէջ չունէին որեւէ գիծ իբրեւ եկեղեցական դասի արտայայտութիւն: Եւ չէր էլ կարող այդ լինել: Գուսանների, այդ «փոքր եւ աննշան մարդկանց» կրօնական գիտելիքները շատ չնչին եւ շատ սահմանափակ են եղել, ինչպէս տեսնում ենք հայրէններից:

11. Այս այսպէս լինելով հանդերձ՝ հայրէնների տաղաշարքերի մէջ կան այնպիսիները, որոնք իմաստական բանաստեղծութիւններ են, հոգեշահ խրատներ, եւ նոյնիսկ իսկական կրօնական հայրէններ: Այս վերջիններն առանձնապէս ՀԵ-ի տաղաշարքի մէջ, որի վերնագիրն է «Յաղագս հոգւոյ եւ սիրոյ ոտանաւոր է բանս: Դրանք գուսանների ստեղծագործութիւն չեն, այլ կրօնական ուսում առած մարդկանց, որոնք իրենց դասակարգի արտայայտիչն են դարձել այդ երգերով: Դրանց մի մասի հեղինակները յայտնի են եւ ապագայում գուցէ ուրիշներն եւս երեւան գան:

Հայրէնների տաղաշարքերի մէջ այդ խրատական ու կրօնական տաղերը մտել են մեքենայօրէն: Երբ ուրախակիցները շատ տաքանում էին գինով, նրանք երգում ու երգել էին տալիս նաեւ ամէն տեսակի տաղեր, որոնք իրենց բովանդակութեամբ ոչ մի կապ ու աղերս չունէին «ուրախութեան» հետ: Ինչե՛ր ասես չէին երգում նոյնիսկ 19-րդ դարի վերջերում այդպիսի խրախճանքների ժամանակ, էլ «ազգային երգեր», էլ դառն ողբեր, էլ շարականներ, էլ «Առաւօտ լուսոյ» եւ նմ.: Նոյնը կատարուել է եւ հնումն: Գուսանները ոչ թէ միայն իրենց ստեղծագործութիւններն են երգել, այլ յաճախ նաեւ ուրիշների — գրագէտների եւ նոյնիսկ հոգեւորականների: Գուսանների բերանից գրի առնողներն էլ ինչ որ լսել են, այն էլ գրել են: Նրանք հայրէնների տաղաշարքերի մէջ մտցրել են եւ վերոյիշեալ բովանդակութիւնն ունեցող տաղերը: Եւ ոչ միայն այդ: «Հայերէն վասն ուրախութեան» վերնագիրը կրող տաղաշարքի մէջ սիրու երգերի միջեւ յանկարծ գտնում ենք նաեւ «Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ» գրքի կաֆաներից, Ալեքսանդրի ու իր մօր մասին, կամ մի ուրիշը Դարեհի մասին:

Դրանք բերանացի չեն ապրած ժողովրդական երգերի կեանքով եւ չեն ժողովրդականացած ինչպէս միւս հայրէնները:

12· Հայրէնների տաղաչարքերի մէջ կան նաեւ բաւական թուով պանդխտութեան երգեր: Սրանք, բացի մի քանիսից, իրենց բովանդակութեամբ վերաբերում են սիրու, իսկապէս առանձին տեսակի սիրու երգեր են, եւ որ գլխաւորն է՝ ժողովրդականացած են:

Դրանց, ինչպէս եւ միւս ուրախական երգերի մի մասը իբրեւ ժողովրդական երգեր դեռ ապրում էին նոյնիսկ մինչեւ մեր օրերը, աւելի արեւմտեան հայերի մէջ: Եւ այս ունեցել է իր պատմական պատճառները:

13· Երբ սելջուկեան թուրքերի արշաւանքից սարսափած՝ Հայ ազնուականներն ու ճոխերը քաշւում են դէպի Արեւմուտք, Կիլիկիա եւ Փոքր Հայաստան, նրանց հետ գնում են եւ գուսանները, եւ այնտեղ յաջորդ 12-րդ դարում եւ յետոյ դեռ առանձնապէս զարգանում է գուսանութիւնը հարստանիքներում եւ ընդհանրապէս ուրախութեան խնջոյքներում: «Հայերէն» բառը «հայրէն», «հերէն» ձեւերով «յերգ» նշանակութեամբ մինչեւ վերջերս գործածւում էր շատ տեղերում, ինչպէս՝ Խարբերդ, Չմշկածագ, Արաբկիր, Ակն: Հայրէնների մնացորդներն եւս, իբրեւ ժողովրդական երգեր հայրենի չափով կամ այդ չափի աղճատուած ձեւով, գրի առնուած կան աւելի Ակնում ու շրջակայ գիւղերում, այլեւ ուրիշ կողմերում, ինչպէս՝ Վան, Կինճ, Բասէն եւ նոյնիսկ արեւելեան հայերի մէջ: Վանի կողմերի մի ժողովրդական երգի հայրենի չափով մի քառեակի մէջ «հայերէն ասել», Վանի բարբառով «Խայերէն ասել», գործածւում է սիրու (վարդի) եւ պանդխտութեան երգերի համար·

Ելաւ Խեկ[1], ելաւ լուսին,
Կան եկան[2] մէջ վարդընոցին·
Իրեք խայերեն ասաց,
Մէկ՝ վարդին, երկուս կարիբին:

Ակնի ժողովրդական երգերի մէջ էլ «հարեն ասել», «հարեն կանչել» գործածուած կայ հարսանեկան երգերի համար[3]· բայց դա մի մնացորդ է «հայրէն» բառի հին նշանակութիւններից մէկի: Ակնում, ինչպէս ասուեց, «հարէն» նշանակում է արդէն ընդհանրապէս «երգ», իսկ հին հայրէնների մնացորդներն այնտեղ կոչուել են մի նոր բառով՝ «անտունի»:

Ի՞նչ են անտունիները:

14· Գուսանական հայրէնները, ինչպէս ժողովրդական երգերը, բերանացի էին յօրինւում եւ աւանդւում, կրելով ժողովրդական երգին յատուկ ամէն տեսակ փոփոխութիւններ: 13-րդ դարից, եթէ ոչ աւելի վաղ, առաջ է գալիս նաեւ գրաւոր սիրու երգեր ունենալու պահանջը, եւ հայրէններն էլ զանազան ժամանակներում ու կողմերում այլեւայլ մարդկանց ձեռով, — ուստի եւ միմեանցից տարբեր տաղաչարքերով ու բազմազան փոփոխակներով գրի են առնւում եւ մտնում տաղարանների մէջ: Դրանք մեզ

1 Խեկ—Հայկ, Օրիոն համաստեղութիւնը:
2 Ման եկան:
3 Տես՝ «Հին գուս. ժող. երգեր», էջ 17 եւ հտն., 209 եւ հտն.:

հասած հայրէններն են, որ մեզ յայտնի են անտարեթիւ կամ ամենավաղը 16-րդ դարի տարեթուեր ունեցող տաղարաններից:

15. Բայց հայրէնների բերանացի աւանդումը եւ յօրինումը չի մեռնում: Այդ տաղերը շարունակում են բերանացի ապրել մինչեւ մեր օրերը: Ապրում է նաեւ հայրէն յօրինելու արուեստը, դպրոցը: Երգում են հին հայրէնները, նորերը յօրինում հների ձեւով, հների նմանութեամբ: Գուսանները շարունակում են հարսանիքների ու խնջոյքների ժամանակ այդ երգերը երգել քաղաքներում, ապա նաեւ քաղաքագիւղերում ու գիւղերում: Գուսաններից ու վարձակներից այդ տողերն ու նրանց արուեստն, — անշուշտ, շատ հին ժամանակներից ի վեր, — անցնում ու պահւում են նաեւ սովորական քաղաքացիների ու գիւղացիների մէջ, մինչեւ որ մի երկրորդ անգամ այդ ժողովրդական երգերը գրի են առնւում Ակնում ու նրա շրջակայ գիւղերում, մի քանիսը նաեւ ուրիշ կողմերում: Ակնում դրանք կոչւում են «անտունի»:

Անտունիները, ուրեմն, ուրիշ բան չեն, բայց եթէ բերանացի ապրած եւ մինչեւ մեր օրերը հասած, հարկաւ՝ որոշ փոփոխութիւններ, վերամշակութիւններ ու զարգացում կրած, հին հայրէնները, այլեւ այս վերջինների արուեստով ու նմանողութեամբ, նոյն բանաստեղծական չափով, բայց մեծ մասամբ անյանգ, յօրինուած նորերը: Ի՞նչ է նշանակում «անտունի»:

«Անտուն» բառը նշանակում է նաեւ «պանդուխտ»: Ինչպէս եղել են «հարսի հարէն», այսինքն հարսանեկան հայրէն, ուրախութեան հայրէն, սիրոյ հայրէն, այլեւ օրօրոցի հայրէն, «լացի հայրէն» նոյնպէս եղել է եւ պանդխտի հայրէն, որ Ակնում, հաւանօրէն վերջին դարում, կոչուել է «անտունի հայրէն»: Ապա՝ ինչպէս «հայրէն տաղ» ասելու փոխանակ ասուել է լոկ «հայրէն», այդպէս եւ «անտունի հայրէն» ասելու փոխանակ ասել են լոկ «անտունի»: Եւ վերջապէս, աւելի ուշ ժամանակներում, երբ «հայրէն» բառը նշանակութեան ընդարձակումով ստացել է «երգ» բառի իմաստը, ապա «անտունի» բառի նշանակութիւնն էլ ընդարձակուել է, եւ այդպէս կոչուել են ամէն տեսակի հայրէններ, հայրէնի չափով յօրինուած ամէն մի բանաստեղծութիւն: «Անտունի ասել» նշանակել է նոյնը, ինչ որ հին տաղերի մէջ «հայրէն ասել»:[1]

16. Անտունիների մէջ կան այնպիսիները, որ գրեթէ բառացի նոյն են հին ձեռագիրներից հանուած հայրէնների հետ. կան անտունիներ էլ, որոնք հին հայրէնների փոփոխակներ են: Եւ վերջապէս, անտունիներ, որոնց մէջ աւելի կամ պակաս չափով գտնում ենք հայրէնների քառեակներ կամ տներ ու տողեր, արտայայտութեան ձեւեր:

---

1 Կոմիտասը «Սիրտս նման էր» յայտնի ժողովրդական երգի ձայնագրուած հրատարակութեան վերնագիրը դրել է «Անտունի»: Դա թիւրիմացութեան տեղիք է տալիս: Այդ երգը յայտնի չափով չէ եւ բնաւ Ակնի անտունիներից չէ: Դա Մոկաց ժողովրդական երգ է, սովորական տասնվանկանի տողերով, որի տանաւորը տողերից գրողն է վերականգնել վարիանտների բաղդատութեամբ: Դա մի երգ է «տնաւեր» պանդուխտի մասին: «Հազար ու մի մաղի» Ա. յիսնեակի առաջին տպագր. մէջ կայ «Ղարիբի սիրտն է պղտոր ու մոլոր». այս տողը երկրորդ տպագրութեան մէջ, ժողովրդական վարիանտից առնելով, փոխել եմ՝ «անտունի սիրտն է պղտոր ու մոլոր»: Կոմիտասն այս տողի ազդեցութեամբ վերնագիրը դրել է «անտունի», չմտածելով, թէ դա թիւրիմացութեան առիթ կը տայ:

17․ Կան եւ փոքր անտունիներ–քառեակներ եւ նոյնիսկ մի երկու եռեակներ․ կան եւ բաւական մեծերը։ Բայց երբ ուշադրութեամբ վերլուծում ենք այս վերջինները, տեսնում ենք, որ դրանք, ինչպէս եւ մեծ հայրէնները, կազմուած են մի քանի միմեանցից անկախ երգերի միակցութիւնից եւ կամ հեշտութեամբ վերածւում են իրարուց անկախ առանձին, համեմատաբար աւելի փոքր երգերի, որոնք մեխանիկօրէն միայն միացած են իրար հետ։ Դրա պատճառն այն է, որ ինչպէս հայրէնները, նոյնպէս եւ «անտունիները սովորաբար հարսանեաց եւ խնջոյից մէջ կ՚երգէին եւ կը նուագէին»։ Իսկ այդ ժամանակ երգեցողութիւնը երկար էր տեւում, ուստի եւ կարիք էր զգացւում յաջորդաբար երգելու բազմաթիւ հայրէններ կամ անտունիներ, որով եւ առաջացել են դրանց տաղաշարքերը։ Երգիչների բերանից գրի առնողներն ինչպիսի միակցութեամբ լսել են, այնպէս էլ գրել են ե՛ւ հայրէնները, ե՛ւ անտունիները։ Դրա համար եւ այդ միակցութիւնները, ծագած լինելով զանազան երգիչներից, միմեանց նման չեն։

Բերանացի աւանդուելու հետեւանքով՝ թէ՛ հայրէնների եւ թէ՛ անտունիների երգիչներն առհասարակ կատարեալ ազատութեամբ են վարւում ե՛ւ տողերի ու տների, ե՛ւ քառեակների ու նոյնիսկ ամբողջ տաղերի վերաբերմամբ։ Երբեմն նոյն տողերը, տներն ու քառեակները, եւ անգամ աւելի մեծ հատուածներ, գտնում ենք տարբեր քառեակների, տների ու տողերի հետ միացած․ քառեակներն ու հատուածները՝ նաեւ իբրեւ անկախ երգեր։ Դրանք, այսպէս ասած, շարժուն վիճակի մէջ են, իրար հետ միանում են կամ միմեանցից բաժանւում են, նայելով երգչի յիշողութեանը կամ տրամադրութեանը։ Երգիչներն ազատ կերպով օգտւում են երգերի հին պատրաստի նիւթերից նոր երգեր, յաճախ աւելի մեծերը — մեծ անտունիներ — յօրինելու համար․ կամ հին տաղերը երգելիս՝ ուրիշներից տներ ու քառեակներ են միացնում, կամ հին երգերի մի մասը դուրս են ձգում եւ փոխանակ երգում են մի հատուած մի ուրիշ տաղից, կամ նորը յօրինում եւ այլն։ Այս ամէնը կատարուել է հայրէնների մէջ մինչեւ նրանց գրի առնուելը, այն էլ դարերի ընթացքում, երգիչների բերանին երգելու ժամանակ։ Նոյնը եղել է եւ անտունիների մէջ։ Եւ այդ կատարուել է երբեմն պատահական զուգորդութեամբ․ ուստի առաջացել են տարտամ ու մութ երգեր․ երբեմն էլ ըստ բովանդակութեան եւ վերամշակումով, ուստի կազմուել են իմաստալից տաղեր եւ առաջ են եկել զանազան փոփոխակներ, որոնք երբ տարբեր բովանդակութիւն ունեն, տարբեր էլ տաղեր կարող են համարուել։

18․ Անտունիներն իրենց բովանդակութեամբ «սովորաբար առ պանդուխտն ուղղեալ եւ սիրահարական են, թէպէտ կան զանազան նիւթոց վերաբերեալ անտունիներ ալ», այս են «օրօր եւ լաց կամ մահերգ», հարսանեկան անտունիներ եւ այլն։ Պանդխտի անտունիները, որոնք էապէս դարձեալ սիրու երգեր են, համեմատաբար աւելի շատ են եւ աւելի զարգացած են, քան պանդխտի հայրէնները։ Դա հետեւանք է ժամանակի հասարակական վիճակի։ Հնումն պանդխտում էին գլխաւորապէս սակաւաթիւ վաճառականները,— եւ այդ երեւում է հայրէններից,— իսկ 19–րդ դարում հայրենի երկրից աշխատանքի համար հեռանում էին աղքատութիւնից տառապողներն, այն էլ մեծ խմբերով։ Դրա համար եւ պանդխտութեան անտունիները շատ

սիրուած են եղել եւ ընդարձակուած են, կազմուած լինելով մի չարք տաղերի միակցումով, լինին սրանք սիրու երգեր, մաՀերգ, թէ այլ երգ։[1]

Ձեռագիրների մէջ մի քանի Հայրէնների Համար կան կրկնակներ։ Բոլոր անտունիները, սակայն, ունեն իրենց յատուկ կրկնակը՝ «Հա՛ եար, Հա՛ եար» կամ «Հա՛յ եար, Հա՛յ եար», որ երգւում էր ամէն տողի սկզբում։

Վիպական տարրն եւս անտունիների մէջ աւելի զարգացած է, քան Հայրէնների։ Հետաքրքիր է այն, որ մի քանի պանդխտական անտունիների երգիչները մէջ-մէջ պատմում եւ երգում են։ Պատմուածքն արձակ է եւ ծառայում է իբրեւ բացատրութիւն՝ Հասկանալու Համար երգուած մասերը, որոնք ոտանաւորներ են։ Ճիշդ այդպէս են վարւում մեր օրերում եւ վէպեր յօրինող աշուղները։

Վերջապէս պէտք է նկատել եւ Հետեւեալը։ Միեւնոյն անտունիները, երբեմն շատ փոքր փոփոխութեամբ, երգւում են եւ իբրեւ սիրու կամ օրօրոցի երգ, եւ իբրեւ պանդխտի կամ լացի երգ։ Բայց որոշ թւով անտունիներ երեւան են եկել միայն իբրեւ օրօրոցի կամ լացի երգեր եւ չեն գտնուած սրանց Համապատասխան Հայրէններ կամ ուրախութեան եւ այլ երգեր։ Դրանք են, որ դրուած են լացի եւ օրօրոցի առանձին չարքերի մէջ։ Կան Հայրէններ եւս, որոնք մեր ժամանակներում երգուել են, երբեմն մի քանի փոփոխակներով, թէ՛ իբրեւ սիրու երգ եւ թէ՛ իբրեւ Հարսանեկան կամ լացի, օրօրոցի, վիճակի երգ։ Հնումն, անշուշտ, եղել են եւ այդպիսի Հայրէններ — օրօրոցի, վիճակի։

Վերեւում ասւեց, որ Հնումն ողբասաց կանայք, նաեւ դուսանները, Հայրենի չափով լալիքի ողբեր էին յօրինում եւ ասում մեռելների վրայ. դուսանները նաեւ նուագում էին։ Այս այսպէս լինելով՝ պէտք է ընդունել, որ ոչ միայն սիրու եւ պանդխտութեան անտունիների, այլեւ լացի անտունիների կամ «լացի Հայրէնների» աւանդութիւնը գալիս է Հնուց. առաջինները, ինչպէս տեսանք, սիրու Հայրէններից, միւսները՝ Հին լալիքի Հայրէններից։ Այսպէս եւ մեր օրերի վարձկան լալկան կանայքն եւ դուսանները, որ շատ տեղերում կատարել են եւ դեռ կատարում են իրենց այդ դերը, դրանք էլ մնացորդներն են Հին «սեւազգեստ եւ աչխարող կանանց», Հին ողբասաց դուսանների։[2]

Գանք Հայրէնների եւ անտունիների լեզուին։

---

1 Տես «Հին գուս. ժող. երգեր», էջ 242 եւ Հտն. «Պանդխտութեան երգերի զարգացումը Հայրէններից»։

2 Տես «Բիւրակն», 1899, էջ 803, «Երգը» յօդուածը։— Լալկան կանայքն եւ դուսաններն այդ դերը մինչեւ վերջերս կատարել են եւ դեռ կատարում են նաեւ Երեւանում։ Անցած 1937 թուի ամառը պատաՀեց ինձ ներկայ լինել այդպիսի մի ողբի՝ մեռելի թաղման նախորդ օրը (Հին կրօնական «անբիծք» կոչուած ծէսը կատարելու միջոցին)։ Երեք վարձուած դուսաններ (սազանդարներ) նուագում էին քամանչա, թառ եւ թմբուկ, երգում էին մաՀերգեր ու լացացնում Հանգուցեալի ազգականների եւ բարեկամների ժողովուած բազմութեանը։ Երգերը, երեւի, Հին էին, բայց յարմարեցրած էին երիտասարդ Հանգուցեալի տարիքին, մաՀուանն եւ ընտանեկան դրութեանը։

19· Մեր այս հին տաղերը, լինելով աշխարհականների բանաստեղծութիւն, յօրինուած են ոչ թէ հին եկեղեցական հայերէնով, գրաբար լեզուով, այլ ժամանակի կենդանի խօսակցական լեզուով, որ 12-րդ դարուց սկսած դարձել է գրական լեզու։ Դա միջին հայերէնն է, որ մի անցման լեզու է հին հայերէնից դէպի նոր հայերէնը եւ թէպէտ գրաբարին դեռ աւելի մօտ է, քան աշխարհաբարը, բայց նրանցից մեծ չափերով տարբեր է։ Գրաբարի ազդեցութիւնը, գրական ճանապարհով, չի երեւում հայրէնների մէջ, ինչպէս յաճախ այդ տեսնում ենք նոյն միջին հայերէնով յօրինող բանաստեղծների երգերի մէջ։ Գուսանական երգերը հէնց այդպէս էլ զերծ պիտի լինէին գրաբարի ազդեցութիւնից, որովհետեւ գրաբարը վաղուց դադարած է եղել կենդանի ժողովրդական լեզու լինելուց։

Պէտք է նկատի ունենալ եւ այն, որ այդ գուսանական ժողովրդական տաղերը յօրինուած են զանազան դարերում եւ այլեւայլ տեղերում, եւ դրանց հեղինակները եղել են զանազան բարբառներով խօսող մարդիկ։ Բնականաբար այդ փոքրիկ երգերի լեզուն միակերպ չէ· դրանց մէջ երեւան են գալիս նաեւ տարբեր բարբառների ձեւեր։ Ապա՝ քանի որ դրանք ապրել են բերանացի, դրանց լեզուն եւս, ինչպէս ժողովրդական երգերի լեզուն ընդհանրապէս, միշտ ենթակայ է եղել փոփոխութեան, միշտ վերանորոգուել է։ Վարիանտները նկատի ունենալով՝ տեսնում ենք, որ հին լեզուական ձեւերին, հնացած բառերին ու բառաձեւերին, բառերի հին շարադասական ձեւերին փոխանակել են նորերը։ Յաճախ բուն հայերէն բառերի տեղ անցել են օտար բառեր· մի բարբառային ձեւ կամ բառ փոխուած է մի ուրիշ բարբառային ձեւի կամ բառի։ Այսպէս՝ նոյն բառերը գործածուած գտնում ենք տարբեր ձեւերով՝ օնքեր, ունքեր, ուներ, յուներ, այլ, ալ, էլ· այն, ան, էն· կայր, կար, կեր· ոտից, ոտվնու· անկաւ, ինկաւ, ընկաւ· տեսանել, տեսնել, տեսնուլ· ելանել, ելնել, ելնուլ· չեմ ի սիրել, չեմ սիրել, չեմ սիրեր եւ այլն։ Երբեմն այսպիսի տարբեր ձեւեր կան ոչ միայն վարիանտների, այլեւ միեւնոյն հայրէնի մէջ· հին ձեւի հետ նորը, մի բարբառային ձեւի կողքին մի ուրիշ բարբառայինը։ Դա առաջանում է նրանից, որ այս ամէնը կատարուել է բընական ճանապարհով, առանց որեւէ գիտակցութեան, անզգալիօրէն։

Բացի այդ՝ կան հայրէններ, որոնց լեզուն աւելի հին է, կան հայրէններ եւս, որոնց լեզուն միջին եւ նոր (արեւմտեան) հայրէնների խառնուրդ է։ Այս վերջինների համար կարելի է ենթադրել, որ յօրինուած են աւելի ուշ ժամանակ, երբ լեզուն միջինից նորին էր անցնում, կամ թէ յօրինուած են միջին հայերէնով եւ յետոյ, 15—16-րդ դարերում կրել են նոր հայերէնի այս կամ այն բարբառի ազդեցութիւնը։

Բայց եւ այնպէս, չնայելով այս բոլոր լեզուական շերտաւորումներին, հայրէնների մէջ իշխող լեզուն միջին հայերէնն է, որ պատկանում է մեր արեւմտեան բարբառներին։

20· Խապէս միջին հայերէն է եւ անտունիների, այդ «հնաւանդ» երգերի լեզուն, որ կրած է Ակնի բարբառի ոչ մեծ ազդեցութիւնը եւ շատ աւելի խճողուած է օտար բառերով։

Ինչպէս անտունիները «հին ժամանակներէ ի վեր կը շարունակուին» (Հ· Ճանիկեան — «Հնութիւնք Ակնայ»), նոյնպէս եւ անտունիների լեզուն

«պատկառելի հնութեան մը դրոշմը կը կրէ, ողողուած ըլլալով գրաբարի յատուկ բառերով, հոլովումներով, ասութիւններով եւ դարձուածներով, «ի» նախդրի յաճախակի գործածութեամբ եւ իր քերականական համաձայնութեան հայկական դրոշմով» («Նաւասարդ», տարեգիրք, 1914)։

Թէպէտ եւ 19-րդ դարի վերջին քառորդում են Ակնի քաղաքացիներից եւ շրջակայ գիւղերի բնակիչներից գրի առնուած այդ ժողովրդական երգերը, բայց եւ այնպէս դրանց լեզուն շատ աւելի մօտ է Հայրէնների լեզուին, քան Ակնի խօսակցական բարբառին։ Այս բարբառի եւ անտունիների լեզուի տարբերութիւնը անչափ մեծ է։ «Դրա պատճառը գլխաւորապէս ոտանաւորն է, որ անտունիների մէջ պահուած լինելով՝ արգելք է հանդիսացել, որ այդ տաղերը ամբողջապէս նորոգուեն նոր լեզուական ձեւերով. մինչդեռ նոյն Հայրէնների լեզուն ուրիշ կողմերում, ոտանաւորի տեսակը փոխուած լինելով կամ ոտանաւորն աղճատուած լինելով, գրեթէ ամբողջապէս վերածուած է տեղական բարբառներին։

## ԵՕԹԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՎԵՐԱԾՆՈՒԹԻՒՆԸ ՀԱՅՈՑ ՀԻՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՄԷՋ

Ես Հայոց հին գրականութիւնը ենթարկել եմ հետեւեալ պերիոդիզացիային, որ եւ պահում եմ այժմ։

Ա. Սկզբից մինչեւ 5-րդ դար։ Աւանդական բանահիւսութիւն, Փէոդալական բովանդակութեամբ եւ ձեւով, վէպ (էպոս), որ նոր մշակութեամբ եւ նոր ստեղծագործութեամբ յարատեւում է մինչեւ մեր օրերը իբրեւ ժողովրդական բանաստեղծութիւն։

Բ. 5–11-րդ դար։ Եկեղեցական գրականութիւն, եկեղեցա-Փէոդալական բովանդակութեամբ, եկեղեցական ձեւով եւ տեսակներով։

Գ. 11–17-րդ դար։ Գրականութեան աշխարհականացումը, արդիւնք հայկական ինքնուրոյն վերածնութեան՝ քաղաքների աճման հետեւանքով, ձգտում դէպի աշխարհիկ կեանքն ու բնութիւնը, մերժում կղերա-միստիկական գաղափարախօսութեան, դրական նոր թեմաներ եւ նոր տեսակներ, ժողովրդական լեզուով։

Դ. 17–19-րդ դարի առաջին երրորդը ներառեալ։ Եկեղեցական գրականութեան վերածնութիւն նոր գրականութեան չարժման հետեւանքով 14–16-րդ դարերի անկումից յետոյ։ Նոր գրաբար եւ աշխարհիկ գրականութիւններ, տարբեր հոսանքներով եւ ազդեցութիւններով։

Մեզ այժմ հետաքրքրողը երրորդ շրջանի գրականութիւնն է։ Բայց նախ մի քանի խօսք այն մասին, թէ ի՛նչ են հասկանում «վերածնութիւն» ասելով՝ եւրոպական գրականութեան մէջ։

«Վերածնութիւն» անունով կոչում են Արեւմտեան Եւրոպայի եւ առանձնապէս Իտալիայի վաղ-բուրժուական (քաղաքացիական) կուլտուրան 14–16-րդ դարերում։ Այդ ժամանակ արդէն գլխաւոր հասարակական դեր էր կատարում բարձրացած նոր դասակարգը — բուրժուազիան (քաղաքացութիւնը), որի դասակարգային շահերի արտայայտութիւնն էին դառնում՝ գի-

տութիւնը, արուեստն ու գրականութիւնը: Կուլտուրայի կենտրոն էին քաղաքները: Առեւտրական կապիտալով փարթամացած քաղաքացիները, հակադրուելով ֆէոդալին եւ եկեղեցականին, ճոխ կեանք էին վարում պարսպապատ քաղաքներում շինուած շքեղ բնակարաններում, ազնիւ հագուստներով, թանկագին կարասիքով, ընտիր անօթներով, աշխատելով ձեռք բերել ամէն վայելք խնջոյքներով ու երաժշտութեամբ, եւ այլն:

Այս նոր դասակարգի կուլտուրայի առաջին յատկանիշն է աշխարհականացումը դպրոցի եւ գրականութեան՝ հակառակ հոգեւորական սքոլաստիկայի. ձգտում է լինում ուսումնասիրելու բնութիւնը, բնագիտութիւնը, մաթեմատիկա, իրաւաբանութիւն:

Նախորդ դարերում անհատականութիւնը ոչնչացած էր. անհատն իրաւունք չունէր եկեղեցուց անկախ մտածելու: Վերածնութեան ժամանակ սկսում են տեսնել մարդու անձի ազատութեան գաղափարը: Առաջ են գալիս մարդիկ, որոնք համարձակւում են եկեղեցու պէս չմտածել:

Այդ ժամանակներում աւելի մօտից ծանօթանում եւ ուսումնասիրում են անտիկ, այսինքն՝ հին յունական եւ լատինական արուեստը, գրականութիւնն ու փիլիսոփայութիւնը: Առաջ է գալիս անտիկ գրականութեան ընտիր ձեւերի սէր, եւ ձգտում կեանքի եւ ստեղծագործութեան մէջ յարութիւն տալու անտիկ աշխարհի կուլտուրային: Այդ են համարել այս նոր կուլտուրայի հիմնական յատկանիշը, ուստի եւ ծագել է «վերածնութիւն» տերմինը, իբրեւ անտիկ կուլտուրայի վերածնութիւն, հակառակ միջնադարեան ճգնաւորական ու սքոլաստիկական կուլտուրայի: Իբր միջնադարը եղել է անկման շրջան, եւ անտիկ կուլտուրայի ազդեցութեամբ վերածնուել են գիտութիւն, փիլիսոփայութիւն, արուեստներ ու գրականութիւն:

Բայց 19-րդ դարի վերջից այս տեսակէտը փոխուել է: Զմերժելով անտիկ կուլտուրայի զօրեղ ազդեցութիւնը՝ վերածնութեան արմատները գտնում են աւելի վաղ ժամանակներում: Վերածնութեան վաղ շրջանի սկիզբը եղել է միջնադարեան բարեպաշտութեան ժամանակ: Այսպէս՝ վերածնութիւն են տեսնում Դանտէի (1265—1321) եւ մի քանի ուրիշների մէջ՝ չնայելով նրանց բարեպաշտութեանը եւ միստիցիզմին: Նոյնը երեւան է գալիս նաեւ Պրովանսի տրուբադուրների եւ գերմանական մինեզենգերների երգերի մէջ: Դրանք նախակարապետներն են վերածնութեան:

Լատիներէն լեզուն դեռ երկար մնում է իբրեւ ընդհանուր միջազգային լեզու գիտութեան, փիլիսոփայութեան եւ այլի համար, բայց առաջանում է ձգտում գրելու մի այնպիսի լեզուով, որ հասկանային ոչ միայն գիտնականները, այլեւ ուրիշները: Ուստի առաջ են գալիս հասկանալի լեզուով ազգային գրականութիւնները, ազգային գրական լեզուները:

Բանաստեղծութեան ու պրոզայի մէջ ստեղծւում են նոր գրական ձեւեր եւ տեսակներ, որոնց մի մասը փոխառութիւն են անտիկ գրականութիւնից: Դրանցից են, օրինակ, Դանտէի «Աստուածային կոմեդիան», հռչակաւոր սոնէտները Պետրարքայի (1304—1374), նովելները Բոկաչիոյի (1313—1375), էպիգրամմա, սատիրա եւ այլն:

Հայկական վերածնութիւնն ինքնուրոյն է: Դա ազգային գրականութեան շարունակական զարգացումն է, արդիւնք այն ռէալիստական

*շարժման, որ հարիւրամեայ խաղաղութեան ընթացքում առաջ էր եկել՝ ըսկըսած 10-րդ դարի կէսերից, երբ զարգանում էր ճարտարապետութիւնը, իսկ գրականութեան մէջ դուսանների ուրախութեան երգերը, հայրէնները, որոնք վերածնութեան նախակարապետներն են։*

*Մեր գրականութիւնը, ինչպէս եւ արուեստն ընդհանրապէս, հարկաւ, կտրուած չի եղել այլազգիների, առանձնապէս արեւելեան գրական հոսանքներից, բայց 10—11-րդ դարերում դժուար է տեսնել մեզնում անտիկ արուեստի ու գրականութեան այնպիսի ծանօթութիւն, որի հետեւանքով կերպարանափոխուէր մեր եկեղեցական գրականութիւնը։ «Վերածնութիւն» բառը ես պահել եմ մեր գրականութեան այս վերափոխուած շրջանի համար, որովհետեւ այդ ժամանակ վերածնուել է հեթանոսական դարերի բուն աշխարհիկ ոգին եւ աշխարհայեցութիւնը՝ հակառակ կրօնա-եկեղեցականի, եւ որովհետեւ մեր այս վերափոխուած գրականութեան գլխաւոր յատկանիշներն ընդհանրապէս նոյնն են, ինչ որ եւրոպական վերածնութեան գրականութեան մէջ։ Դա գրականութիւն է հայ քաղաքացութեան, հայ բուրժուազիայի։*

*Ե՞րբ է եղել հայկական վերածնութեան սկիզբը։ — Ոչ մի գրական նոր հոսանք, — ինչպէս եւ ուրիշ մտաւոր, կուլտուրական երեւոյթներ, — մի քանի տարում չի սկսւում եւ երեւան գալիս որոշ գծագրուած կերպով եւ բարդաւաճ վիճակում։ Ինչպէս Անանիա Շիրակացին գրում է, ամէն բնական երեւոյթի «Լինելութիւնն է սկիզբն ապականութեան, եւ ապականութիւնն դարձեալ անդրէն է սկիզբն լինելութեան»։ Այս դիալեկտիկական, ըստ Շիրակացու, «անվնաս հակառակութեամբ» ծագում ու մահանում է նաեւ գրական երեւոյթը՝ տեղի տալով նորին, հարկաւ, իր փունկցիան կատարելուց յետոյ, կամ, ինչպէս սովորաբար ասում ենք, բարդաւաճելուց յետոյ։ Նորի սկիզբը հէնց այդ հնի մէջ է, նոյնիսկ նրա բարդաւաճութեան մէջ։ Հին կրօնա-եկեղեցական ուղղութեան ամենաբարդաւաճ ժամանակը մեզնում եղել է 10-րդ դարի երկրորդ կէսին, երբ դա ցայտուն կերպով արտայայտուել է ճարտարապետութեամբ եւ Գրիգոր Նարեկացու գրական երկերով։ Բայց հէնց այդ ժամանակ է սկիզբը հնի «ապականութեան» քայքայման, որ եւ ըսկիզբն է նորի «լինելութեան», վերածնութեան գրականութեան։ Գրիգոր Նարեկացին իր էութեամբ պատկանում է նախորդ գրական շրջանին, բայց նրա երկերի մէջ արդէն երեւում են վերածնութեան սաղմերը, ոչ այնքան բովանդակութեամբ, որքան ձեւով։*

*Մեր վերածնութիւնը լաւ հասկնալու համար՝ պէտք է նկատի ունենալ նախորդ եկեղեցական շրջանը։*

## ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ ԵՒ ՃԳՆԱՒՈՐԱԿԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆԸ

*Եկեղեցին իր ձեռքի տակ ունեցած միջոցներով ձգտում է ամբողջ քրիստոնէութիւնը մի ապաշխարող, աշխարհուրաց դրութեան մէջ դնելու։ Դրան հասնում են միայն 10-րդ դարում, երբ ամէն տեղ իշխում էր քրիստոնէական աշխարհայեցողութիւնն Աստծու եւ սատանայի, մեղքի եւ քաւութեան, դրախտի եւ դժոխքի, այս աշխարհի եւ այն աշխարհի մասին, երբ*

թագաւորում էր այս աշխարհի եւ կեանքի ունայնութեան գաղափարը. իսկական կեանքն ու աշխարհը եւ մարդուս իսկական հայրենիքը դրախտային աշխարհն ու կեանքն էին համարում մահից յետոյ: Իսկ դրան հասնել կարելի էր միայն մեռնելուց յետոյ. ուրեմն եւ պէտք էր մեռցնել մարմինը՝ տանջանքների ենթարկելով իրեն եւ մարդ որքան աւելի ապաշխարէր, տանջէր իրեն քաղցով ու ծարաւով եւ այլ միջոցներով, այնքան աւելի լաւ՝ հոգու համար:

Հոգու այս կռիւը մարմնի դէմ եւ մարմնի ոչնչացումն իր գործնական արտայայտութիւնն է գտնում վանական եւ ճգնաւորական կեանքի միջոցով, որ 10-րդ դարում խիստ զարգանում է հայերի մէջ: Այդ պատճառով եւ մեր կրօնական բանաստեղծութիւնը հետեւելով կեանքին, իր մէջ արձանացնում է հէնց այդ ճգնաւորական միստիկ աշխարհայեցողութիւնը, եւ Գրիգոր Նարեկացու ձեռով առաջ է գալիս ճգնաւորական ողբերգութիւնը, մի քնարական տխուր բանաստեղծութիւն, որի մէջ ապաշխարողը պատկերացւում է իր հոգեկան ձգտումներով եւ սարսուռներով:

Գրիգոր Նարեկացին, առաջին հայ մեծ բանաստեղծը, որդին է Անձեւացեաց Խոսրով եպիսկոպոսի, որ իր ժամանակի յայտնի անձերից մէկն է եւ հմուտ եկեղեցական գիտութեան, եւ որից մնում են երկու մեկնութիւններ: Գրիգորը ծնուած է 940-ական թուականների մէջ: Մանուկ հասակից նա մեծացել եւ ուսում է առել ժամանակի ամենանշանաւոր գիտնական վարդապետի, Անանիա Նարեկացու մօտ, Նարեկայ վանքում: Ուսումն աւարտելով՝ այնտեղ էլ նա մնում է իբրեւ ուսուցիչ. միշտ պարապում է գիտութեամբ եւ գրականութեամբ, միաժամանակ եւ իրեն ենթարկում է ճգնարանի նոյն խստութիւններին, ինչ որ ուրիշները: Նա մեռել է ծերութեան հասակում՝ 11-րդ դարի առաջին տասնամեակներում:Նրանցից մնում են՝ մի թուղթ, մեկնութիւններ, ներբողներ, տաղեր եւ մի մեծ «Մատեան Ողբերգութեան»: Վերջինս նրա ամենամեծ բանաստեղծական աշխատանքն է, որով եւ մեծ հռչակ է վայելել. գրուած է 1001 եւ 1002 թուականներին:

Բանաստեղծի այս երկի մէջ քրիստոնէական միստիցիզմը կատարեալ արտայայտութիւն է գտել: Շարունակ խորասուզուելով ինքն իր մէջ՝ նա քրքրում, վերլուծում է իր մեղաւոր հոգին. շարունակ տեսնելով Աստուծուն՝ աշխատում է կտրուել զգալի աշխարհից, արհամարհելով մարմինը՝ նա ինքն իրեն անվերջ նուաստացնում է ու մեղադրում եւ հեծութեամբ, ողբ ու աղաղակով դիմում Աստուծուն, նրա գթութիւնն ու շնորհը հայցելով, որպէսզի անբաժանելի կերպով միանայ նրա հետ, որ ամենայն կատարելութեան լուսատիպն է. որպէսզի ստանայ մի աստուածային անդորրութիւն, Աստուծու հետ եւ նրան հաւասար մնայ անճառելի լոյսի մէջ, այնպէս որ մարդն Աստուծու մէջ լինի՝ եւ Աստուած՝ մարդու մէջ:

Այս միստիկական ձգտման մէջ, սակայն, նա երբեք հանգստութիւն չգտնելով՝ միշտ տոչորւում է խռովայոյզ դրութեամբ, որովհետեւ միշտ զգում է, նոյնիսկ տեսնում է իր կողքին կանգնած սատանային, որ նրան շարունակ մեղքի փորձութեան մէջ է ձգում. որովհետեւ նա տեսնում է, որ անհնարին է ուրանալ մարմինը եւ աշխարհը: Այս անհնարութիւնն ահա դառնում է նրա համար նորանոր հոգեկան տանջանքների եւ ներքին յու-

ղումների աղբիւր եւ Փիզիկապէս էլ նրան կեղեքում է: Բայց դա դառնում է միանգամայն եւ իսկական քնարերգութեան աղբիւր:

Եւ այն ժամանակ, երբ թւում էր, թէ ոչ մի մաքուր քնարերգութիւն չպիտի առաջ գար, որովհետեւ եկեղեցին արդէն հոգացել էր ամէն բանի համար, երբ ամէն մետաֆիզիկական խնդիր արդէն առաջուց որոշուած էր եւ բանադրանքի սպառնալիքով[1] ոչ ոքի թոյլ չէր տրւում եկեղեցուց դուրս եւ եկեղեցուց տարբեր մտածել եւ զգալ, ուրեմն եւ փակուած էր անձնականութիւնը, քնարերգութեան աղբիւրը,— այն ժամանակ ահա Գրիգոր Նարեկացու հանճարով մեր կրօնական երգը դառնում է արտայայտութիւն անհատական երազանքների, կրօնական զօրեղ անհանգստութիւնների, այս աշխարհի ունայնութեան, իրական կեանքի ոչնչութեան եւ մարդու թուլութեան, այլեւ այն աշխարհի եւ Աստուծու, եւ մահուան ու յաւիտենականութեան խնդիրների:

Բայց որովհետեւ հսկող Նարեկացին մենակ չէր իր ապաշխարութեամբ, իր ձգտումով ոչնչացնել մարմինը եւ միանալ Աստուծուն, այլ նրա նման բիւրաւորներ կային այն ժամանակ, ուստի եւ մեր այս բանաստեղծութիւնը միաժամանակ դառնում է եւ այդ ընդհանրութեան արտայայտութիւնը:

Մի անգամ որ բանաստեղծութեան համար գիտակցական պահանջ է դառնում անկեղծ ներշնչումը (եւ այս գիտակցութիւնն ունի մեր բանաստեղծը), եւ մարդկային հոգին ու բնութիւնը մտնում են քնարերգութեան մէջ, բանաստեղծութիւնը ձեւով էլ կերպարանափոխւում է: Նարեկացու ողբերգութիւնն այլեւս նմանութիւն չէ, մի քանի ընդհանուր սովորական եղանակներով յօրինուած, ինչպէս շարականներն են մեծ մասամբ: Բանաստեղծի երեւակայութիւնը, որը շատ մեծ եւ բազմակողմանի է, ազատ շարժւում է՝ ստեղծելով արտայայտութեան նորանոր ձեւեր եւ պատկերներ, լեզուական ու բանաստեղծական գիւտերի անչափ ազատութիւն եւ յաճախ ամբողջ տեսարաններ, ինչպէս տեսիլներ՝ դժոխքի, սատանայի, վերջին դատաստանի, իր մահուան եւ թաղման եւ այլն: Եւ նա տեսնում է սովորաբար ոչ թէ հեռուից ընդհանուր էական գծերով, այլ մօտից, պատկերի մանրամանութեամբ եւ բոլոր պայծառութեամբ: Վերլուծութիւնը, լինի մարմնի թէ հոգու, տեսարանների թէ դրութեան, նրա երեւակայութեան եւ մտածողութեան էական կողմն է, եւ դրանով նա առաջ է բերում մեծ ազդեցութիւն:

Նարեկացու ձեռով այսպէս փոխւում է ոչ միայն տխուր հոգեւոր երգը, այլեւ ուրախ երգը: Եթէ ապաշխարութեան շարականների տեսակը զարգանալով դառնում է ողբերգութիւն, որին հետագայում հետեւում են ուրիշները, ուրախ շարականներն էլ վերածւում են տաղերի, որ առանձին տեսակի հոգեւոր երգեր են, յօրինուած՝ ուրախ տօնակատարութիւններին հանդիսաւորութիւն տալու համար:

Այս նոր տեսակի հոգեւոր բանաստեղծութիւնն եւս, որի՝ ժամանակով

---

1 Գրիգոր Նարեկացին ամբաստանւում է իբրեւ հերձուածող եւ գրում է թուղթ ընդդէմ թոնդրակեցիներին. նրա հայրը, Խոսրով եպիսկոպոսը, ծերութեան հասակում բանադրւում է կաթողիկոսից իբրեւ հերձուածող. նրա ուսուցիչ Անանիա Նարեկացին, մերձիմահ հիւանդ ժամանակ, կատարելով կաթողիկոսի հրամանը, անիծում է թոնդրակեցիներին:

առաջին մեծ ներկայացուցիչը դարձել Գրիգոր Նարեկացին է, ձեւով կատարելապէս տարբերւում է շարականներից: Բանաստեղծը, որ բնութեան զգացում ունի, չի խորշում մեղսական համարուած բնութիւնից, այլ ընդհակառակն, ձգտում է բնութիւնից ու կեանքից իդէալական գեղեցիկ պատկերներ առաջ բերել: Այս պատճառով, հակառակ ճգնաւորական ոգուն, նրա երեւակայութիւնը, որ մռայլ է Ողբերգութեան մէջ, տաղերի մէջ, երեւի երիտասարդական հասակում գրուած, խաղում է գարնանային մեղմ ու զուարթ, ամբողջապէս լուսաշող գեղեցկութիւնների մէջ:

Բնութեան հետ, նա, առաջին անգամ մեր բանաստեղծութեան մէջ, իր սիրոյ եւ կանացի գեղեցկութեան երգն է երգում. միայն այդ սէրը չունի ոչինչ նիւթական: Դա երկնային սէրն է, ուղղուած առ Ս. Կոյսը, որին սակայն նա այնպէս է նկարագրում, ինչպէս մի աշխարհական բանաստեղծ իր սիրած կնոջ պատկերը, չմոռանալով նոյնիսկ ձայնը, շարժմունքները եւ հագուստը: Դա արդէն նշան էր, որ բանաստեղծութիւնը փոխուելու էր»:[1]

Նա (Ս. Կոյսը) ամբողջապէս մի «վարդ» է, նռճի ու նշտարենի հասակով. «յունիցն նրբենից ի մի կից կամար», կարծես, «միջօրէի ժամն» է ծագում:

Աչքըն ծով ի ծով ծիծաղախիտ
Ծաւալանայր յառաւօտուն,
Երկու փայլակնաձեւ արեգական նման.
Շողն ի ժմին իջեալ յառաւօտէ լոյս:

Նրա նռնենի այտերը, կամարակապ ձեռները եւ ամբողջ արտաքինը պատկերացւում են կենդանի եւ ուժեղ.

Բերանն երկթերթի, վարդն ի շրթանց կաթէր.
Լեզուին շարժողին քաղցր երգանայր տաւիղն...
Վարսիցն երամից զարդ ոլորս են առեալ,
Եռահիւսակն բոլորեալ այտիւք.
Ծոցըն լուսափայլ, կարմիր վարդով լցեալ.
Ծղիքըն ծիրանի մանուշակի հոյլք:
Խնկեալ ի կնդրկէ բուրվառ՝
Հրով աստուածայնով լցեալ.
Ձայն քաղցրանուադ ի նմանէ հնչէր:

Չի մոռացւում նոյնիսկ գեղեցիկ, կապոյտ, ծիրանի բեհեզեայ պատմուճանը, ոսկեշող, արծաթափայլ ոսկետուն գօտին, զարդարուած թանկագին քարերով, եւ նոյնիսկ քայլուածքը.

Գօտին արծաթափայլ, ոսկետուն,
Կամարակապ, յականց շափիւղայ,
Մանրամասին յօրինուածով պճնեալ:

---

1 Առաջին հատուածի այս մասը (տես «Առաջաբանի» 11-րդ կէտը), ինչպէս նաեւ ամբողջ երկրորդ հատուածը, վերցուած է «Համառօտութիւնից», հետագայ կտորը վերցուած է «Գրիգոր Նարեկացի» հետազօտութիւնից: Խմբ.

Անձինն ի շարժել մարգարտափայլ գեղով,
Ոտիցն ի գնալ՝ շողն ի կաթել առնոյր:

Դա մի գեղեցիկ պատկեր է, մի սքանչելի տեսիլ, որ

Հանդարտիկ խաղայր, թիկնիթեկլին ճեմէր,

այսինքն՝ կոտրատուելով, ուսերը շարժելով հանդարտ ճեմում էր.

Որոյ սիւնն ի սրտին նուսխայօրէն
Կարկաջայր սաթբերունի սէր:

Մարդ ակամայ յիշում է Պեշիկթաշլեանի «Ճեմք ի լեառն Հսկային», որի մէջ բանաստեղծը հրապուրւում է գեղեցկութիւններով բնութեան, որի ամենամեծ զարդն է երգող կոյսը... Դա իսկապէս սրտից բխած մի օրհներգութիւն է միայն, ուղղուած առ Ս. Կոյսը, որ ոչինչ այլաբանական չունի իր մէջ, երբ սիրոյ առարկան ի դէմս Սրբուհու երգուած: Բայց այդ օրհներգութիւնն ամբողջապէս թարմութիւն է, այնպէս զգացուած է եւ մարդկօրէն նկարուած ամէն ինչ, որ անպայման իրական կեանքի մէջ տեսածից ու զգացածից է առնուած: Միւս կողմից, սակայն, այն սէրը, որ գովում է բանաստեղծը, մի աննիւթական սէր է, որովհետեւ երգուած կոյսն ինքն աննիւթ է.

Սերովբէանման, քերովբէաթոռ,
Հուպ երրակին, լոյս գերաղանց,
Լուսոյն արփի վեհինաճեմ:

Նա, ինչպէս «Աստուածածնի ներբողի» մէջ գրում է.

Ի մարդկային զարմէ հրեշտակ երկնային,
Ցեղծականացս սեռից անմահ սերովբէ.
Ի հողային նիւթոյ ոսկի Սոփերայ,
Ի ծովային բերմանց շնորհալոյս մարգարիտ,
Ի Ցեսսեանն բուսոյ քաղցրապտուղ ծաղիկ...
Ցօղոյն հանդարտիկ ամպ անձրեւաձիր,
Արեւուն ծագման ակն արփիափայլ,
Մերկացելոյ այգոյն աստղ առաւօտին,
Գիշերային մթոյն խօնակ բերկրանաց...
Վեհին պատկեր կերպիւ կչոորդեալ,
Թեթեւ պարզութիւն հիւթիւ բաղկացեալ...

Նա մի անհասանելի պաշտելի էակ է, երկնքի խնկուհին, «մեծ, երջանիկ, անարատ դշխոյ», մի լուսեղէն պատկեր, որի բարեխօսութեանն է դիմում յաճախ բանաստեղծը խոնարհ, գետնաքարշ աղօթքներով, որոնց մէջ զգայական սիրոյ հետք անգամ չի նշմարւում...

Մի ուրիշ տեղ գրում է.

Աղաչեմ զքեզ, սուրբ Աստուածածին,
Հրեշտա՛կ ի մարդկանէ,

Մարմնատեսի՛լ քերովբէ,
Երկնաւո՛ր արքայուհի,
Անխառն իբրեւ զօդ,
Մաքուր որպէս լոյս,
Անշաղախ ըստ նմանութեան
Պատկերի Արուսեկին բարձրութեան,
Գերազանց քան զընութիւն,
Անկոխելին սրբութեանց...

Այսպէս հէնց սկզբից մեր բանաստեղծութեան մէջ եւրոպացիներից շատ առաջ, կնոջ պատկերը դրւում է մի միստիկական խորհրդաւորութեան մէջ, որին մօտենում է բանաստեղծը մի խորին ակնածութեամբ ու հոգեւոր հիացումով: Բանաստեղծն արդարեւ երկրաւոր սիրոյ չքեղ պատկերներով է նկարագրում, — եւ այլապէս էլ չէր կարող, — բայց նա այդ բոլորը ծառայեցնում է միայն իր հոգեւոր հիացմունքի առարկան զգալի դարձնելու համար: Եւ ո՛րքան նուրբ, ազնիւ ու մաքուր կերպով, միաժամանակ եւ վառ արտայայտութիւններով է նա այդ անում եւ պայծառ գծագրում մի կնոջ իդէալական պատկեր, որ այնուհետեւ իշխում է մեր հին բանաստեղծութեան, մեր սիրոյ երգի մէջ:

## ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԱՇԽԱՐՀԱԿԱՆԱՑՈՒՄԸ

(11-րդից 17-րդ դար)

### Ա. Աշխարհայեցութեան փոփոխութիւնը

Այս երկրորդ շրջանում շարունակւում են հին գրական տեսակները՝ մեկնութիւն, ճառ, հոգեւոր երգ եւ այլն. բայց 11-րդ դարի երկրորդ կէսից մինչեւ 14-րդ դարի սկզբները ժողովրդական, աւելի ճիշդ աշխարհիկ տարրը հետզհետէ մտնում է եկեղեցականի յօրինած գրականութեան մէջ, առաջ են գալիս նոր գրական տեսակներ, նոր լեզուով յօրինուած, մինչեւ որ բանաստեղծութիւնը կատարելապէս աշխարհիկ է դառնում եւ մեր հին քնարերգութիւնը ձեռք է բերում գրեթէ բոլոր կարեւոր թեմաները:

Այս փոփոխութիւնը հետեւանք էր կեանքի եւ աշխարհայեցողութեան փոփոխութեան: Մինչդեռ քրիստոնեայ աշխարհի ուրիշ կողմերում դեռ ընդհանրապէս իշխում էր թանձր միջնադարը, 11-րդ դարի առաջին կէսին արդէն մեր կեանքի եւ մտածողութեան մէջ մտնում է մի յեղաշրջում, մի տեսակ ինքնուրոյն վերածնութիւն, որով կրօնական-ճգնաւորական ոգին տակաւ առ տակաւ տեղի է տալիս աշխարհական ոգու առաջ:

Երկարատեւ խաղաղութեան շրջանում մեծ քաղաքները ու շահաստանները, ինչպէս Անի, Արծն եւ ուրիշները, բարձրացել էին. հին ազնուականութեան եւ եկեղեցականութեան կողքին դիրք էին ձեռք բերում եւ հարուստ քաղաքացիները: Հին խստակեցութիւնն ընկնում է, կեանքն ու աշխարհը

տանում էին արժէք, մարդիկ հարստացած՝ սկսում էին ճոխ ապրել, զարդարուած ու շրջապատուած ճարտարարուեստի պաճուճանքներով եւ գեղարուեստով։ Նրանք սիրում էին ուրախ ու զուարթ կեանք, երգ ու երաժշտութիւն եւ պար։ Աշխարհիկ շքեղութիւնը եւ ուրախ կեանքը մտնում էր նոյնիսկ եպիսկոպոսների բնակարաններն ու կաթողիկոսարանը, որ ոչնչով ետ չէր մնում թագաւորական պալատներից. այնտեղ էլ արծաթը յարգի էր դարձել, եւ անարատ բարեպաշտութիւնը պակասում էր։

Միաժամանակ զարգանում էր մի կրօնական շարժում — Թոնդրակեցոց աղանդը, որի սկիզբը դնում են 9-րդ դարում, որ մերժում էր եկեղեցու նուիրապետութիւնը, բոլոր խորհուրդները, հանդերձեալ կեանքը, անմահութիւնը։ Այդ աղանդաւորների համար մեղքը նոյնպէս գոյութիւն չունէր. ուստի մեղքի պատիժ էլ չկար։ Ճգնաւորական ուսման եւ մինչեւ իսկ եկեղեցուն հակառակ մի վարդապետութիւն ուրեմն, որ տարածւում էր 11-րդ դարի առաջին կէսին եւ ընդունելութիւն գտնում նոյնիսկ հոգեւորականների մէջ։ Դա ծայրայեղութեան հասած մի բողոք էր ճգնաւորական կեանքի, եկեղեցու կարգերի ու գաղափարների դէմ, նման Պրովանսում 12–13-րդ դարերում ծաւալուած Ալբիգոյեան աղանդի։

Ազնուականների մտաւոր վիճակն եւս բարձրանում էր. նրանք սկսում էին ուսում առնել եւ գիտութեամբ ու գրականութեամբ պարապել։ Այսպէս՝ Թոնդրակեցոց աղանդի դէմ կռուող նշանաւոր իշխան Պահլաւունի Գրիգոր Մագիստրոսը (990–1058 թ.), լաւ ծանօթ եկեղեցական գիտութիւններին, յունական փիլիսոփայութեանը, հռետորութեանը եւ առասպելներին, շարունակ թարգմանութիւններ է անում, յունարէնից թարգմանում է Պլատոնի Տրամախօսութիւնը եւ Եւկլիդեսի Երկրաչափութիւնը. գրում է մեկնութիւն Դիոնիսի քերականի, յօրինում է ներբողներ, ոտանաւորով գրում է Ս. Գրքի բովանդակութիւնը, եւ վերջապէս ուրիշ ոտանաւորներ եւ բազմաթիւ թղթեր, ոչ միայն կրօնական, այլեւ աշխարհիկ բովանդակութեամբ, լի յունական, հայ եւ արեւելեան առասպելներով։

Այս փոփոխութեան և ազատախոհութեան իբրև հետեւանք զգալի պիտի լինէր ձգտում դէպի բնութիւնը եւ մի նոր արուեստի պահանջ։ Եւ իսկապէս դարի վերջերում ժամանակի Հաղբատի վանքի համբաւաւոր վարդապետը, Յովհաննէս Սարկաւագ (մեռ. 1129 թ.), — որ մեծ գիտնական է, փիլիսոփայ, մատենագիր, տոմարագէտ, պատմագիր, հեղինակ կրօնական ներբողների, միաժամանակ եւ բանաստեղծ, — արուեստի մի նոր տեսութիւն է առաջ բերում իր մեզ հասած միակ մեծ քերթուածի մէջ։ Նա արուեստը, ուրեմն եւ բանաստեղծութիւնը, նմանողութիւն է համարում բնութեան, եւ բնականն ամէնից բարձրն ու մաքուրը, ուստի եւ բանաստեղծը պիտի աշխատի նմանել բնութեանը։ Դժբախտաբար, մեզ չեն հասել նրա ուրիշ բանաստեղծութիւնները, որ տեսնենք, թէ ինչպէս է գործադրել նա իր այս տեսութիւնը։

Այս հայեացքի անմիջական հետեւանքը, սակայն, այն է լինում, որ յաջորդ դարերում բանաստեղծներն եւ առհասարակ մատենագիրները թողնում են սեթեւեթ շինծու ձեւերը եւ խրթնաբան ու ճոռոմ ոճը, որ նոյնիսկ բանաստեղծութեան մէջ էր մտել։ Պարզութիւնն ու բնական մտածողութիւնը սկսում են ընդհանրապէս իշխել։ Գրականութեան մէջ երեւան է գալիս 12-րդ

դարում կենդանի խօսակցական լեզուն, որ արդէն բաւական հեռացած էր գրականութեան մէջ ընդունուած հին լեզուից:

## **Բ. Հայրենասիրական ողբերգութիւն**

Բայց եւ այնպէս այս մտաւոր շարժումն ու փոփոխուած ոգին չեն զարգացնում մի նոր կենսուրախ բանաստեղծութիւն. ժողովրդական սիրոյ եւ պարի ուրախ երգը չի բարձրանում իր բնական դրութիւնից: Գոնէ մինչեւ այժմ յայտնի չեն եղել գրագէտ աշխարհականի կամ հոգեւորականի յօրինած այդպիսի երգեր: Դրա պատճառն այն է, որ հայ կեանքը չի շարունակում ընթանալ իր բնական շաւղով:

Գրիգոր Նարեկացու Ողբերգութեան հրատարակութիւնից մի քանի տարի չանցած՝ սելջուկեան Թուրքերը սկսում են հրոսել Հայաստան: Բիւզանդացոց ձեռքով ետեւէ ետեւ քայքայւում եւ ընկնում են հայ իշխանութիւնները: Եւ այնուհետեւ մի կողմից յոյները, միւս կողմից Թուրքերի վայրենի հրոսակները մինչեւ 11-րդ դարի վերջերը քանդում, հրդեհում են շէն ու մշակուած աշխարհը, աւերում են հարուստ քաղաքները. ազնուականութիւնը ոչնչանում կամ երկրից դուրս է հալածւում: Աւերւում է առանձնապէս երկրի կենտրոնը, ուր ծաղկում էր ուսումն ու գիտութիւնը, եւ գրականութիւնը ապաստան է գտնում կամ հիւսիսային Հայաստանի անտառապատ լեռների վանքերում, ուր մնում են հայ փոքր իշխանութիւններ, կամ հեռու Սեւ լեռների անապատներում, յետագայում նաեւ Կիլիկիայում, ուր կազմւում է մի նոր հայ իշխանութիւն: Ազնուականներն անընդհատ կռիւների մէջ լինելով՝ միջոց չունէին այլեւս ուսման ու գրականութեան վրայ մտածելու. ուստի գրականութիւնը մնում է մենաշնորհ վանականների: Իսկ սրանք պարապում են հնուց հետէ դաւանաբանական վէճերով, մեկնութիւններով, ճառերով եւ հակաճառութիւններով. ժողովում են վկայաբանութիւններ ու ներբողներ, թարգմանելով ասորերէնից եւ յունարէնից, որոնցով առանձնապէս յայտնի է լինում Գրիգոր Մագիստրոսի որդին՝ Գրիգոր Բ. Վկայասէր կաթողիկոսը (կաթող. 1065–1105), որ եւ դրա համար ստացել էր իր մականունը:

Ժամանակի աղետալից վիճակը ստիպում է մարդկանց նորից ետ դառնալ եւ կրօնի մէջ գտնել մխիթարութիւն եւ իրենց դժբախտ կեանքի բացատրութիւնն ու ելքը որոնել: Առաջին հարցը, որ տալիս են մտածողները, է՝ ինչո՞ւ են գալիս մեր գլխին այս աղէտները. հայերը, որ այնքան բարեպաշտ էին, այնքան եկեղեցիներ ու վանքեր էին շինել Աստուծու փառքի համար, ինչո՞ւ են տառապում Թուրքերի ձեռքին: — Պատասխան գտնելը դժուար չէր. հին մատենագիրներն արդէն պատրաստել էին այն գաղափարը, թէ մարդիկ մեղք են գործում, և Աստուած նրանց պատժում է մեղքի համար: Պէտք էր ուրեմն ապաշխարել, որ Աստուած պատիժը վերացնի: Մինչեւ հիմա ճգնաւորներն ու նրանց արտայայտիչ բանաստեղծը ողբում էին անհատական մեղքը. հիմա մեղաւոր է ազգը, նա պէտք է ապաշխարի: Բայց նմանութիւնը միայն այսքան է: Անհատն ապաշխարում էր իր մարմինը տանջելով իր հոգու փրկութեան համար, որ հանդերձեալ կեանքում է լինելու. իսկ այստեղ ապաշխարութիւնը քարոզւում է ազգի փրկութեան համար,

որ այս աշխարհում պիտի լինի, այն էլ ոչ թէ մարմինը մեռցնելով, այլ բարքերի մաքրութեամբ եւ առաքինի կեանքով:

Աշխարհն արդէն ստացել էր արժէք այն աստիճանի, որ նոյնիսկ կրօնասէր մարդը, սգաւոր պատմիչ Արիստակէս Լաստիվերտցին խորին սիրով սիրում է այն, սիրում է իր հայրենիքի մշակած դաշտերը, ժողովրդի բարեկեց կեանքը, ուրախ–զուարթ աշխատանքը, կատարած ուրախութիւնները, երգերն ու պարերը, թագաւորն իր փառաւորութեամբ, զօրքերն ու կռիւները, որոնք կային մի ժամանակ եւ չկան այլեւս: Ուստի եւ այժմ, ասում է նա, «յողբս փոխեցաւ մեզ ամենայն»: Այդ աշխարհասիրութիւնից է, որ նա կրօնական ձեւի տակ, բայց իսկապէս մեր աշխարհիկ կեանքի ողբերգուն է դառնում: Թուրքերի եւ յոյների գործած աւերմունքները նկարագրելիս, որոնց անձամբ ականատես է եղել, նա յաճախ բանաստեղծութիւն է յօրինում արձակ լեզուով եւ սրտառուչ կերպով լալիս է իր հայրենիքի կործանուած փառքը, կուլտուրական եւ քաղաքական կեանքի անկումը, եւ երգում է այնպէս խոր եւ անկեղծ ու յուզիչ, որ դարեր շարունակ, նոյնիսկ 19–րդ դարում, նմանողութեան աղբիւր է դարձել:

Եւ այսպէս հայոց թագաւորութիւնների անկումից յետոյ, Մեծ Հայաստանում սելջուկեան թուրքերի տիրապետութիւնը դեռ չհաստատուած, սկսում է հայոց քաղաքական իշխանութիւնը վերականգնելու երազը եւ դրան նուիրուած բանաստեղծութիւնը — հայրենասիրական ողբերգութիւնը:

Համազգային հայրենասիրութեան գաղափարն ու զգացումը՝ ծնուելով ժողովրդի դառնաղէտ վիճակից՝ հետզհետէ ընդհանրանում է, ազգային միութեան ազդակներից մէկը դառնում, անբաժան մնալով թշուառ ու տանջուող ժողովրդի վիճակի արտահայտութիւնից, — ահա թէ ինչ է կազմում այս նոր ողբերգութեան էութիւնը: Քաղաքական կեանքը, հին անկախութիւնն ու ազատութիւնը վերականգնելու տենչը այնպէս խոր թափանցում է հայ ժողովրդի մէջ, որ դա դառնում է մի նուիրական իղձ ու աղօթք, եւ նոյնիսկ շատ վաղ, Յովհաննէս Սարկաւագի ձեռքով, մտնում է ժամերգութեան մէջ: Նա իր հոգեւոր երգերից մէկի մէջ խնդրում է Աստուծուն, որ ցրուած եւ արտասուահոս տրտմութեամբ վտարուած հայ ժողովրդին ժողովի ուրախութեամբ եւ փրկի: Դրանով մեր բանաստեղծութիւնը, կրօնական զգացումից յետոյ, գտնում է արդէն իր քնարերգութեան կարեւոր եւ մեծ թեմաներից մէկը, որ այլեւս կրօնական չէ: Ձեւը մնում է դարձեալ հին ոճը, բայց բովանդակութիւնն ու ոգին փոփոխւում են: Եւ այդպիսի զարգացումն էլ բնական էր. խիստ կրօնականից մի անգամից թռիչք չէր կարելի անել դէպի մաքուր աշխարհականը, քանի որ բանաստեղծները դեռ հոգեւորական էին:

Հայրենասիրական բանաստեղծութեան առաջին մեծ ներկայացուցիչն է Ներսէս Շնորհալի կաթողիկոսը (1102–1173 թ.), մեր եկեղեցու նշանաւոր հայրերից մէկը, որ ուսում է առել Սեւ լեռների մի վանքում: Նա մի բեղմնաւոր հեղինակ է. պարապել է թարգմանութիւններով, թողել բազմաթիւ արձակ եւ աւելի՝ ոտանաւոր երկեր, թղթեր, մեկնութիւններ, բազմաթիւ հոգեւոր երգեր, տաղեր, մի կրօնական մեծ ողբերգութիւն, դաւանաբանական գրուածքներ, ներբողներ, խրատական ոտանաւորներ, պատմու-

թիւն ոտանաւորով, առակներ եւ վերջապէս մի մեծ քնարական վէպ՝ «Ողբ Եդեսիոյ», որ գրուած է այս քաղաքի 1144 թ. առման եւ կործանման առթիւ Հալէպի ամիրայի ձեռքով: Ի դէմս Եդեսիա քաղաքի նա ողբում է իսկապէս Հայաստանի վիճակը: Ամբողջապէս իսկական բանաստեղծական յղացմամբ եւ արուեստով գլուխ բերած մի քերթուած է, լի հայրենասիրական ոգեւորութեամբ, հարուստ եւ փայլուն նկարագիրներով, լինի խաղաղ և բարօր կեանքի, բնութեան եւ շէն քաղաքների, թէ քաջամարտիկ կռիւների, որ քրիստոնեաները մղում են Թուրքերի դէմ ինքնապաշտպանութեան համար, եւ թէ Թուրքերի գործած վայրագութիւնների: Սրտի կսկծից նա մերթ բուռն ճիգեր է արձակում այդ թշնամիների դէմ, մերթ մեղմ է եւ անուշ, բայց ոչ պակաս խոր եւ սրտառուչ տխրութեամբ լցուած՝ հառաչում է Հայաստանի անցած փառքի համար: Ամբողջի մէջ տեսնում ենք մի անկեղծ կարօտալից վիշտ ու թախիծ կորած քաղաքական ազատութեան ու մեծութեան, շէն ու խաղաղ կեանքի համար, միաժամանակ եւ մեծ յոյս, որ այդ ազատութիւնն ու վերակենդանութիւնը պիտի լինի մի օր արեւմտեան քրիստոնեայ ազգերի օգնութեամբ:

Ներսէս Շնորհալու մեծ արժանիքներից մէկն էլ այն է, որ նա մշակում է մեր տաղաչափական արուեստը եւ աշխարհիկ տաղաչափութեամբ, որ գործածական է եղել, ինչպէս ինքը գրում է, «ափրոդիտեան երգի» մէջ, յօրինում է հոգեւոր բանաստեղծութիւններ: Նրա գործածած չափերը, որոնցից մի քանիսը գտնում ենք Գրիգոր Նարեկացու եւ Գրիգոր Մագիստրոսի տաղերի մէջ, խիստ բազմազան են, բայց դրանցից մի քանիսը նա այնպէս զարգացրել է եւ ռիթմիկ դարձրել, որ յաջորդների համար օրինակելի են մնացել եւ մեր հին գրականութիւնից նոյնիսկ նորին են անցել: Նրա ամէնից սիրած ոտանաւորն է ութվանկանի քառատակը, կազմուած երկու յամբական բարդ տակտերից, որոնց մէջ առաջին տակտերը կարող են եւ անշեշտ լինել: Ոտանաւորը, սակաւ բացառութեամբ, յօրինւում է յանգերով, որ 10-րդ դարում արդէն գործածական են եղել մեր աշխարհիկ բանաստեղծութեան մէջ: Հին հոգեւոր երգերը, սակայն, առանց յանգի են: Գրիգոր Նարեկացին էլ դեռ գրում է անյանգ ոտանաւորներ. Ողբերգութեան մէջ միայն մի երկու տեղ նա, ինչպէս ինքն ասում է, նմանելով ժողովրդական «լալեաց բանաստեղծութեան», յանգեր է կազմում: Գրիգոր Մագիստրոսն արդէն յանգը բանեցնում է կրօնական բովանդակութեամբ ոտանաւորների մէջ. բայց նրա փորձն ընդունելութիւն չի գտնում, մինչեւ որ Ներսէս Շնորհալու ձեռով յանգի գործածութիւնն ընդհանրանում է հոգեւոր բանաստեղծութեան մէջ եւս, եւ այնուհետեւ յանգը դառնում է ոտանաւորի էական պայմաններից մէկը: Բայց այդ ժամանակ դեռ նոյն յանգը, ինչպէս նոյն դարերում ուրիշ ազգերի բանաստեղծութեան մէջ եւս, անցնում է կամ ամբողջ քերթուածի մէջ, կամ մի շարք տողերի մէջ: Ներսէս Շնորհալին դրանից առաջացած ձանձրոյթն զգում է, բայց եւ այնպէս միայն երբեմն ամէն տուն առանձին յանգով է կազմում:

## Գ. Ուսուցական գրականութիւն եւ առակներ

Շնորհալու օրով, 12-րդ դարի երկրորդ կէսին, հայերը զօրանում են ոչ միայն Կիլիկիայում, ուր դարի վերջում նոյնիսկ թագաւորութիւն են հաստատում՝ երկրի սահմանները հասցնելով մինչեւ Եփրատ, այլեւ հիւսիսային եւ արեւելեան Հայաստանում։ Այստեղ դարի վերջին քառորդին հայ իշխանները, միացած վրացիների հետ, նուաճում են թուրք աթաբեկութիւնները եւ վրաց թագաւորի անուանական գերիշխանութեան տակ՝ երկրի իշխանութիւնն իրենց ձեռքն են առնում։ Առաջ են գալիս նոր մանր հայկական իշխանութիւններ Սիւնիքում, Գուգարքում եւ նոյնիսկ Այրարատում, որոնք առանձնապէս հովանաւորում են վանականներին եւ գիտութեամբ պարապող վարդապետներին։ Քաղաքական վերածնութեան հետ լինում է եւ կուլտուրական վերածնութիւն։ 1230 թուից, սակայն, թաթարների արշաւանքի պատճառով երկիրը մի քանի տարի տակնուվրայ է լինում, մինչեւ որ նրանք վերջնականապէս տիրում են Հայաստանին։ Հայ իշխանները ենթարկւում են նրանց հարկատուութեամբ։ Թէպէտ հարկերը ծանր էին, բայց որովհետեւ թաթարները մինչեւ մահմետականութիւն ընդունելը Հայաստանի ներքին գործերին շատ չէին խառնւում, ուստի 13-րդ դարի վերջին քառորդից սկսած, հայ կուլտուրական գործը ծաւալւում է։ Մինչեւ անգամ արեւմտեան Հայաստանում առաջ են գալիս ուսման կենտրոններ, ինչպէս Սեպուհ լեռան վանքերում։ Այս պատճառով մեծանում է նաեւ գրականութեամբ պարապողների թիւը, որոնք նոյն հին եկեղեցական տեսակներն են մշակում։ Սակայն գրականութեան աշխարհականացումը շարունակւում է, եւ առաջ են գալիս նոր տեսակներ. բժշկութեան եւ օրէնքի վերաբերեալ գրուածքներ, եւ մանաւանդ առակը, բարոյախօսութիւնն ու խրատը, որ շատ համապատասխան էր հոգեւորականի կոչմանն իբրեւ ուսուցչի եւ խրատողի։

Ներսէս Շնորհալին արդէն, բացի խրատական ոտանաւորներից, ունի նաեւ «Առակք», որ իսկապէս հանելուկներ են ժամանակի խօսակցական լեզուով գրուած, մասամբ նոյնիսկ ժողովրդական տարրերով։ Նա ունի եւ մի ոտանաւոր տեսութիւն երկնքի մասին՝ «Յաղագս երկնից եւ զարդուց նորա», որ գրել է «ի խնդրոյ առն բժշկապետի եւ աստեղագիտի Մխիթարայ»։ Այս բժիշկ Մխիթար Հերացին ինքն էլ պարապում էր գրականութեամբ իր արուեստին վերաբերեալ. նրանից մնացել է «Ջերմանց մխիթարութիւն» կոչուած բժշկական աշխատանքը, որ գրուած է ժամանակի խօսակցական լեզուով։

կազմւում են եւ օրէնքների ժողովածուներ։ Ներսէս Լամբրոնացին (1154-1199), որ Կիլիկիայի յայտնի եպիսկոպոսներից է, շատ հմուտ մի մարդ, եկեղեցական պերճախօս, մեկնաբան, հոգեւոր երգիչ ու թարգմանիչ, — թարգմանում է «Բիւզանդական օրէնսգիրք» եւ «Ջինուորական օրէնսգիրք»։ Իբրեւ հայ օրէնքների ժողովող եւ խմբագրող հանդիսանում է, սակայն, արեւելեան մեծ վարդապետներից Մխիթար Գոշն (վախճանուած 1213 թ.) իր «Դատաստանագրքով» (գրուած 1184 թ.), որի առաջաբանի մէջ հեղինակը մանրամասն բացատրում է իր հայեացքը օրէնքի, դատաստանի ու դատա-

ւորների մասին: Այս Դատաստանագիրքը լեհաստանում գործադրուել է մի քանի կողմերի հայերի մէջ:

Մխիթար Գոշի անունով, բացի եկեղեցական տեսակներից, մնացել է նաեւ առակների մի ժողովածու, հմուտ գրչի գործ: Նրանից առաջ, սակայն, Եզոպոսից թարգմանած առակներ եղել են մեր գրականութեան մէջ: Բացի այդ, 7-րդ դարում թարգմանուած են Ոլիմպիանու առակները, որ Եզոպոսի առակներ են հռետորական խմբագրութեամբ: 11-րդ դարում, ինչպէս Գրիգոր Մագիստրոսի նամակներից երեւում է, դպրոցներում աշակերտներին քնարերգութեան եւ ճարտասանութեան հետ սովորեցնում էին եւ «առասպելաւարժութիւն», այսինքն աշակերտներին գրել, անգիր անել եւ մեկնել էին տալիս առակներ: Առակների հին ժողովածուներ եւ մշակութիւններ, սակայն, մինչեւ Մխիթար Գոշի առակները, յայտնի չեն, եւ այդ առակների մէջ հեղինակի գրած ծանօթութիւններից երեւում է, որ դա իսկապէս այս տեսակի առաջին գործն է մեր գրականութեան մէջ:

Այնուհետեւ առակների ժողովածու է կազմում նշանաւոր քարոզիչ Վարդան Այգեկցին, որ ապրել է 12 եւ 13-րդ դարերի մէջ Սեւ լեռների անապատներում, գրել է բազմաթիւ ճառեր, խրատներ ու թղթեր վերին աստիճանի պարզ ու կենդանի լեզուով, յաճախ առակներով, որ նրա քարոզած գաղափարները հասկանալի եւ գրաւիչ են դարձնում: Նա ինքը, ապա եւ ուրիշները, ճառերի մէջ եղած այդ առակներից կազմում են առանձին ժողովածուներ: Նրանց հետեւելով մինչեւ 17-րդ դարը ուրիշներն այդ ժողովածուների վրայ աւելացնում են ուրիշ առակներ զանազան գրաւոր եւ ժողովրդական աղբիւրներից, եւ առաջ են գալիս առակների բազմաթիւ եւ բազմազան ժողովածուներ, որ յայտնի են մի ընդհանուր անունով «Վարդանայ առակներ», որ մեր հին գրականութեան հարստութիւններից մէկն է: Բայց այդ առակների մէջ, որոնց թիւը 485 է մինչեւ այժմ եղած հրատարակութեամբ, ոչ միայն առակներ կան իսկական մտքով, այլեւ ամէն տեսակի պատմուածքներ, առասպելներ, յաճախ ընտիր ու կենդանի ոճով, սրամիտ ու համեղ, լուրջ կամ պարզամիտ, հոգեւոր պատմուածքներ, զուարճալիքներ եւ այլն. միայն բոլորն առակի ձեւ ստացած, վերջից մի խրատական մասով:

Առակների հետ միաժամանակ զարգանում է խրատական եւ իմաստական բանաստեղծութիւնը, սովորաբար փոքրիկ իմաստալից քերթուածներ լուրջ բնաւորութեամբ, երբեմն միացած պարսաւի կամ խորհրդածութեան հետ: Դրանք խրատական բանաստեղծութիւն լինելով հանդերձ՝ երբեմն իսկական քնարերգութիւններ են, որովհետեւ գրուած են անձնական տրամադրութեամբ, ջերմ եւ խոր զգացած, ուժեղ եւ գունագեղ արտայայտուած: Մեծ մասի մէջ, ինչպէս եւ առակների, բարոյախօսականը կրօնական ուղղութեամբ բարոյական խրատն է:

Բայց եւ այնպէս այս երկու տեսակի մէջ գտնում ենք արդէն բուն ժողովրդական ոգին, հասարակ դասի իրական կեանքը՝ փոխուած աշխարհայեացքով, յաճախ կենդանի խօսակցական լեզուով: Չկայ այլեւս հին եկեղեցականութիւնը: Հին ճգնաւորական ուղղութիւնն արդէն երբեմն ծաղրի առարկայ է դառնում. հաւատքի վէճն այլեւս չի հետաքրքրում նոյնիսկ հո-

*դեւորականներին. երեւան է գալիս մի կեանք, որ զուարթ, ծիծաղող ու ծաղրող է, զուարճացող:*

*Միւս կողմից հանդէս է գալիս զանազան* դասակարգերի յարաբերութիւնը, քննադատական ոգի, երգիծանք *վատ կարգերի, դժգոհութիւն եղած դրութիւնից, աշխատաւոր դասի բողոքն ու ատելութիւնն ընդդէմ հարուստ ու վայելող եկեղեցականի եւ պատարկապորտ ու անպէտք եւ նոյնիսկ վնասակար ազնուականի: Եւ վերջապէս ընկերական անհաւասարութիւնների եւ հայ ազգի կրած տառապանքների պատճառով բանաստեղծութեան մէջ երեւում է մինչեւ անգամ* երկրայութեան ոգին, *բողոքի ձեւով ընդդէմ Աստուծու կամ, հեթանոսաբար, ճակատագրի վճռի (Ֆրիկի «Գանգատ» եւ «Ընդդէմ Փալաքին»): Մարդիկ ոչ միայն, ինչպէս առաջ, կասկածում են Աստուծու դատաստանի արդարութեան մասին, այլեւ բանաստեղծութեան նիւթ են դարձնում այն»:*[1]

## Դ. Աշխարհիկ քնարերգութիւն

*Այս ամէնի հետ միասին տեսնում ենք, որ 13-րդ դարում արդէն* անհատն *ընդհանրութիւնից անջատուելով՝ ստանում է իր արժէքը եւ ցուցադրում է իրեն, հոգալով իր յիշատակի համար: Ծնւում է* անձնական բանաստեղծութիւնը, *որի համար նիւթ են դառնում բանաստեղծի իրեն անձնական հանգամանքները, սէրն ու ատելութիւնը, բախտն ու դժբախտութիւնը: Մարմնին տրւում է իր իրաւունքը, դրա հետ եւ սկսւում է* բնութեան եւ սիրոյ երգը, *վարդ ու սոխակի պատկերով կամ առանց այլաբանութեան: Եւ վերջապէս բարձրանում է* աշխարհի ունայնութեան եւ մահուան ցաւագար երգը, *բոլորովին տարբեր Գր. Նարեկացու մահուան երգից, իբրեւ մխիթարութիւն սոցիալական կամ ազգային անարդար եւ անհաւասար դրութեան կամ իբրեւ վախճան անհատական տանջալից կեանքի, կամ իբրեւ սարսուռ գերեզմանի առաջ, որի մէջ քայքայւում է գեղեցիկ մարմինը եւ մարդ իր ոչնչութիւնն է զգում:*

***Երեք բանաստեղծներ առանձնապէս աչքի են ընկնում* 13–14–*րդ** *դարերի մէջ:* Ֆրիկ, *որի բանաստեղծութիւնները բաւական շատ են եւ շատ սիրուած ու տարածուած են եղել, բայց դեռ ամբողջական հրատարակութիւն չունենք: Նա ընդհանրապէս մի բարոյախօս բանաստեղծ է, հարուստ փափուկ ու համեղ շեշտերով, երբեմն ըմբոստացող եւ բողոքող սոցիալական կարգերի դէմ:* Յովհաննէս Երզնկացի (*մոտ* 1250–1326), *կոչւում է նաեւ Պլուզ կամ Ծործորեցի, հանգիստ, գիտուն վարդապետ, աւելի մտածող, քան զգացող: Սրա բանաստեղծութիւններն եւս դեռ հաւաքուած եւ մի տեղ հրատարակուած չեն:*

*Այս երկուսից շատ աւելի բարձր է* Կոստանդին Երզնկացին (1336 *թ. յիշւում է իբրեւ ծերունի): Նա մանուկ հասակից սովորել է Երզնկայի մօտ*

*1 Այս մասին հետագայում հեղինակը հրատարակեց իր ընդարձակ աշխատութիւնը Ֆրիկի կապակցութեամբ. «Պրոֆ. Մ. Աբեղեան, Հայոց միջնադարեան առակներն եւ սոցիալական յարաբերութիւնները նրանց մէջ», արտատպ. «ՀԽՍՀ Կուլտուրայի պատմութեան ինստիտուտի աշխատութիւնները» ժողովածուի 1-ին հատորից, Երեւան, 1935 թ.:*

*գտնուած վանքերից մէկում եւ շատ վաղ հասակից ցոյց է տուել գրական շնորհք: Կոստանդինը մի զգայուն բանաստեղծ է, աւելի քնարերգու, քան բարոյախօս: Նա իր անձնական չեչտերով երգում է ոչ միայն իր սեփական ապրումները, այլ նոյնիսկ խրատական ոտանաւորները: Եթէ Յովհաննէս Երզնկացին աւելի մտածելով է մարմնին տալիս իր իրաւունքը, Կոստանդինն իր խառնուածքով նոյնիսկ անհնար է համարում չսիրել աշխարհի կեանքը, բնութիւնն ու մարդկայինը: Իր եղբայրակից միաբաններից դրա համար նա հալածանքի է ենթարկւում, եւ ինչքան էլ նա հպարտութեամբ արհամարհել է ուզում նրանց, բայց եւ այնպէս հոգով վրդովւում ու դառնանում է եւ իր բանաստեղծութիւնների մէջ կռիւ է սկսում այդպիսիների դէմ:* Կեանքի եւ բնութեան այս սէրն *ահա եւ դրա համար կրած թախիծն ու վիշտը կազմում են նրա բանաստեղծութիւնների յատկանիշը: Բնութիւնից նա առնում է ընդհանրապէս մեղմ ու փափուկ տեսարանները, արեգակի ծագումը՝ լուսով ու գոյնով, գարնանային կեանքով ու բուրմունքով լցուած: Որովհետեւ նա բնութեան եւ կեանքի էութիւնը տեսնում է լուսոյ եւ սիրոյ մէջ, ուստի նրա երգերի մէջ լոյսն ու սէրը մի տեսակ պաշտամունքի առարկայ են դարձած: Մեր սիրոյ երգը, որ սկսուած էր նախ՝ Աստուածածնի գովքով, ապա վարդ ու սոխակի պատկերով, Կոստանդնի ձեռքով ազատւում է այլաբանութիւնից,[1] եւ եթէ հետագայում եւս այլաբանութեան են դիմում բանաստեղծները, այդ ոչ թէ նրա համար, որ թոյլատրուած չէր բացայայտ երգել, այլ որ այլաբանական ձեւը դուր էր գալիս կրօնաւորներին:*

*Որ մեր բանաստեղծութիւնն այսպէս շուտ է թօթափել միջնադարեան ոգին, դրա պատճառն անշուշտ ցեղի ընդունակ բնաւորութեան եւ իր հայրենիքի դրութեան մէջ պէտք է տեսնել: Բացի արեւմտեան քրիստոնեայ ազգերից, հայերը շփւում էին նաեւ արեւելեան հեթանոսների, պարսիկների եւ արաբների հետ: 13-րդ դարում Շահնաման երգւում եւ նոյնիսկ սիրով լսւում էր Սեպուհ սարի վանքերում: Շահնամայի ոտանաւորի չափը բանեցրել է Գրիգոր Նարեկացին, այլեւ Կոստանդին Երզնկացին, այն էլ եղբայրակից կրօնաւորների խնդրով՝ Շահնամայի «ձայնով» ոտանաւոր յօրինել:*[2]

*Բայց մեր բանաստեղծութիւնն այնուհետեւ դարձեալ փարթամ կերպով չի ուռճանում՝ առաջ բերելով խոշոր գրական երկեր, հանճարեղ անձեր, — դրա պատճառը պէտք է տեսնել դարձեալ մեր պատմական չարաբաստիկ կեանքի մէջ: Երկիրը շատ է աւերւում մահմեդական թաթարների տիրապետութեան շրջանում եւ աւելի եւս Լանկթամուրի կոտորածներով, նրանից յետոյ թուրքմէն մանր իշխանութիւններով եւ վերջապէս օսմանցոց եւ պարսից դարեր տեւող պատերազմներով: Այս աւերմունքներն այն աստիճանի են հասնում, որ 15 եւ 16-րդ դարերում, մինչեւ 17-րդի կէսերը, փակւում են դպրոցները, եւ եկեղեցական գրականութիւնը մեռնում է, մի*

---

*1 Խնդիրը գրագէտ եկեղեցականների գրածների մասին է, թէ չէ, գուսանական սիրոյ երգերը, հայրէնները, հնուց ի վեր առանց այլաբանութեան են:*

*2 Այս մասին կարելի է մանրամասնութիւնները տեսնել Մ. Աբեղեանի «Շահնամայի ոտանաւորի չափը հայ բանաստեղծութեան մէջ», որ տպուած է ՀՍԽՀ Կուլտուրայի պատմութեան ինստիտուտի «Ֆիրդուսի» ժողովածուի մէջ, Երեւան, 1934:*

վերջին անգամ եւս փայլելով 14-րդ դարում Տաթեւի դպրոցում, որի վարդապետները՝ Յովհան Որոտնեցի եւ Գրիգոր Տաթեւացի՝ իրենց աշակերտների հետ ուսումնասիրում են հների կրօնական եւ փիլիսոփայական երկերը եւ կռւում կաթոլիկ ունիթոռների դէմ իրենց մեկնութիւններով, քարոզներով եւ այլն:

Բանաստեղծութիւնը, սակայն, այդ աւերմունքների դարերում չի մեռնում, այլ, ընդհակառակն, աւելի եւս բարձրանում է: Նոյնիսկ փորձեր են լինում վիպական կրօնական բանաստեղծութիւն զարգացնելու. Գրիգոր Տաթեւացու քեռորդի Առաքել Սիւնեաց եպիսկոպոսը 1401—1403 թ. բանաստեղծօրէն յօրինում է աշխարհի ստեղծագործութիւնը եւ առաջին մարդկանց անկումը:

Բայց աւելի զարգանում է աշխարհիկ քնարերգութիւնը. Հնարաւոր է լինում ոչ միայն հին թեմաները պահպանել, այլեւ նոր թեմաների մասին գրել, ինչպէս պանդխտութեան, որ հին ժամանակներում մեր ժողովրդի մեծ ցաւերից մէկն էր իբրեւ հետեւանք բռնապետական կեղեքումների, — այլեւ հին նիւթերի մասին աւելի արուեստաւոր, ուժեղ եւ փայլուն ձեւերով նորանոր կողմերից երգել: Աշխարհի ունայնութիւն, մահ, բնութիւն եւ սէր, ահա այն յաւիտենական անսպառ խնդիրները, որոնցով յուզւում են՝ Քերովբէ (15-րդ դարի երկրորդ կէսին), Մկրտիչ Նաղաշ, Ամիդի եպիսկոպոսը (ձեռնադր. 1430 թ., մեռած մօտ 1480 թ.), Յովհաննէս Թլկուրանցի (1489—1525 թ. կաթողիկոս Սսի, մեռած խորին ծերութեան հասակում) եւ Գրիգոր Աղթամարցի, Աղթամարի կաթողիկոսը (ծն. 15-րդ դարի վերջերին, 1569 թ. դեռ կենդանի) եւ ուրիշները:

Դրանցից ամէն մէկը երգում է իր անհատական խառնուածքի համեմատ, առանձին տեսակի յոյզի, վայելչութեան կամ տրտմութեան աղբիւր գտնելով սիրոյ կամ մահուան մէջ: Այդ պատճառով էլ դրանց երգերը, թէպէտ ըստ երեւոյթին իրար նման, բայց ունեն իրենց առանձնայատկութիւնները: Յովհաննէս Թլկուրանցու մի սիրոյ երգը զօրեղ կերպով տարբերւում է Կոստանդին Երզնկացու, Գրիգոր Աղթամարցու կամ Նահապետ Քուչակի նոյնպիսի երգերից, ինչպէս եւ նրանց երգերը մէկ-մէկուց:

Կրօնական միստիկայից յետոյ՝ բնական էր, որ առաջին սիրոյ երգիչ Կոստանդին Երզնկացու սիրոյ երգը լինէր արտայայտիչ աւելի միստիկական հոգեւոր սիրոյ, քան Ֆիզիկական տարփանքի: Սէրը նրա բանաստեղծութեան մէջ դարձած է մի տիեզերական աստուածային ուժ, յաւերժ կենդանութեան աղբիւր, որ լոյսի հետ ներգործում է բնութեան բոլոր երեւոյթների մէջ. սիրած կինը նրա համար մի պաշտելի էակ, մի սրբութիւն է միստիկի Աստծու յատկութիւններով:

Հետզհետէ այդ սէրը, 14—17-րդ դարերում մարմին է առնում, կապւում կենսասիրութեան հետ: Յովհ. Թլկուրանցու սիրոյ երգի մէջ արդէն թանձրացած երկրաւոր տարփանքն է իշխում, բռնակալ եւ այրող կրքի կենտրոն ունենալով կանացի գեղեցիկ մարմինը, որի տեսքից ամէն անգամ մարմնով դողում է բանաստեղծը, սիրտը մարում, ուշագնաց է լինում:

Ցանկարծակի մէկ մի տեսայ,
Որ կու ցօղայր գունն երեսէն․
Թուլցայ անկայ ի տեսլենէն,
Շողայր կաթէր լոյսն ի վզէն։
Աչքերն է ծով, ունքերն է թուխ ամպ,
Մազն է դեղձան ոսկի թելէն․
Զինքն ճօհար՝ գէթ զուռի ճեղ,
Հրով այրէր զերկիր ամէն․
Ձոխազընաց, մանրաքայլող,
Հոգիքն ի մարմնէ քակող,
Լութֆն է ծածկեր զամէն աշխարհս,
Շաքար կաթէր իւր քարամէն։
Երբ իմ աչերս ի քեզ դիպաւ,
Նայ վառեցայ զէտ մոմեղէն․
Խելագնաց ի վայր մնացի,
Զարհուրեցայ ի տեսլենէն…

Իսկ Գր․ Աղթամարցուն սէրը ձգում է մի հոգեզմայլ յափշտակութեան, մի հոգեւոր արբեցութեան մէջ, որ սակայն շատ հեռու է զգայական տարփանքից, շատ զգաստ եւ մաքուր է․

Գարունն է բացուեր վարդն ի բաղչանին,
Քաղցր եղանակեն բլբուլն ու զումրին,
Սիրով են վառեալ ի կարմիր թփին,
Կանաչ ու կարմիր տերեւ կու հագնին։
Գինով եմ դինով, հարբեր եմ սիրով․
Գինով եմ դինով, ցերեկս արեւով․
Գինով եմ գինով, գիշերս երազով…

Սա արդէն հեթանոսաբար մտածուած սէրն է, իբրեւ մի կիրք, որ Աստղիկ դիցուհին գարնանը բորբոքում է մարդկանց սրտերի մէջ։ Սակայն եւ այնպէս դրանց ամէնքի մէջ էլ հեթանոսութիւնը եւ քրիստոնէութիւնը դեռ կատարելապէս չեն հաշտուած․ այդ երգիչները դեռ չեն կտրուած հին կրօնական հայեացքից, որովհետեւ այդպէս կրթուած են, եւ այդպէս թելադրում է նրանց եկեղեցական կոչումը։

Վերջապէս 16–րդ դարում, գուցէ եւ աւելի վաղ, իր զօրեղ ձայնն է բարձրացնում նաեւ մեր ժողովրդական քնարերգութիւնը Քուչակ Նահապետի սիրոյ երգերի մէջ։ Այս բանաստեղծի անձնաւորութեան մասին մենք ոչինչ չգիտենք։ Այդ անունով երգիչ իսկապէս եղել է Վանայ կողմերում, բայց կասկածելի է, որ Քուչակի անունով յայտնի երգերը նրանը լինեն։ Դրանք ժողովրդական երգեր են, միայն առանձնապէս մշակութիւն կրած։[1] Այդ

1 Այժմ տողերիս գրողը իր «Հին գուսանական ժողովրդական երգեր» հետազօտութիւնից յետոյ (տպուած Երեւան, 1931 թ.), այդ երգերից ոչ մէկը Նահապետ աշուղ Քուչակինը չի ընդունում։

փոքրիկ քերթուածները, ինչպէս բուն ժողովրդական քառեակները, տեղ չեն տալիս ոչ զգացմունքի եւ ոչ մտքի ընդարձակուելուն ու ճապաղուելուն, այլ, ընդհակառակն, միայն մի միտք են յայտնում, սեղմ ու հակիրճ, բայց այնպէս բիւրեղացած ու փայլուն, որ երբեմն նոյնիսկ շլացուցիչ են իրենց նուրբ, սուր ու համարձակ դարձուածներով, երեւակայութեան յանկարծական վառ ու շքեղ թռիչքներով: Խօսքի գիւտերն ու պատկերները երբեմն մեզ զուարճացնում են, երբեմն հիացում պատճառում, կամ ժպիտ յարուցանում իրենց սրամտութեամբ կամ միամիտ չարաճճիութեամբ, եւ միշտ հրապուրիչ են իրենց արտաքուստ թարմութեամբ: Այս երգերը մշակող բանաստեղծը մեր երկրաւոր սիրոյ բանաստեղծութեան մեծ վարպետն է, ինչպէս Գրիգոր Նարեկացին երկնաւոր սիրոյ, երկուսն էլ բխած են ցեղի նոյն հանճարից ու ոգուց: Բայց մինչ Նարեկացու սէրը զղջման եւ անձնազարչանքի բուռն տոգորումն է, մի միստիկական մռայլ անձկութիւն, մի զօրեղ ձգտում աշխարհից կտրուելու եւ մարմինն ու աշխարհը ոչնչացնելու ինքնատանջի հեծկլտացող թառանչներով, որոնք սարսռեցնում են մեզ՝ տանելով մեզ միջնադարեան ճգնաւորի մթին խուցը, — Քուչակն, ընդհակառակն, կապուած է միայն զուարթ ու լուսաւոր, հեշտալից ու բուրաւէտ երկրին: Մենք նրա հետ դիւրանում ենք քնքուշ ու հաճելի երազանքներով. սրտի խորքից դուրս թռած հառաչանքը նոյնպէս մեզ օրօրում է մի անուշ կարկաջով եւ տանում այն պարզ ու գեղեցիկ կեանքը, այն ժպտուն բնութեան ծոցը, որից ծագել են սկզբնապէս այդ երգերը: Եւ մենք, կարծես, տեսնում եւ զգում ենք թարմ այգին, գարնանային լուսաշող պարտէզը եւ պատանիների ու պատանուհիների զբօսանքը եւ ուրախ երգը... երիտասարդ մի անհոգ կեանք, որ բոլորովին հեռու է թէ՛ միստիկի տանջահար ոգուց եւ թէ՛ մեր դարաւոր ազգային տառապանքի ողբերգութիւնից: Կարծես, այդ երգիչը, իսկապէս երգիչները եւ իրենց հասարակութիւնը, ինչպէս մանուկներ, ոչ մի ուրիշ ցաւ չեն ունեցել, բացի իրենց սիրոյ վշտից:

Մեր քնարերգութիւնը, այսպէս, երկնքից կատարելապէս իջել է արդէն երկիր, իրական աշխարհը: Եկեղեցական է երգիչը թէ աշխարհական, այդ այժմ այլեւս նշանակութիւն չունի: Աշխարհիկ ոգին իշխում է: Բայց որովհետեւ 15—17-րդ դարերում ուսումնականը, չասենք գրագէտը, դեռ միայն եկեղեցականն էր, ուստի աշխարհիկ ոգու տեսութիւնը, երկրի առաւելութիւնը երկնքից հիմնաւորում է նոյն հոգեւորականը: Ներսէս Մոկացի վարդապետը, հիմնադիր Լիմ անապատի վանքի (1622 թ.), իր «Վիճաբանութիւն երկնքի եւ երկրի» գեղեցիկ քերթուածի մէջ, այդ երկուսի փառաւորութիւնը ցոյց տալուց յետոյ, առաւելութիւնը տալիս է երկրին, որի առաջ խոնարհւում է նոյնիսկ երկինքը: Մենք եւս պիտի խոնարհենք երկրի առաջ, ասում է նա, որովհետեւ նա գեղեցիկ է, եւ մենք նրա ծնունդն ենք, այսօր նրա վրայ ման ենք գալիս, վաղը նրա ծոցը պիտի մտնենք: — Դա արդէն վերջ էր եկեղեցական-կրօնական ոգու եւ հայեցքի: Եւ ի՞նչ էր մնում մեր բանաստեղծութեանը զարգացնելու, որպէսզի հին հեթանոսական երգը կատարեալ լինէր: Դա խրախճանքի երգն էր:

Նստեր է ծառին շքին,
Կը խմէ գինի լուրջ ապիկին·
Խմէ ու հայրէն[1] կ՚ասէ՝
Թ՚ինչ անուշ է սէրն ու գինին:

Միստիկ ճգնաւորի համար այս բոլորն էլ մեծ մեղքեր էին· սէրն էլ, գինին էլ, ուրախութեան երգն էլ, բնութիւնն էլ: Բայց Քուչակի մէջ այդ բոլորը միացած են մի վայելչութեան համար: Դա է իսկապէս ուրախութեան երգը, որ հնագոյն ժամանակներում անգամ եղել է մեր մէջ եւ երբեք չի դադարել գոյութիւն ունենալուց: Բայց այդ երգը բաւական ուշ է արժանանում հոգեւորականներից մշակուելու, քանի որ պահք ու ծոմ պահողների եւ մարմինը քաղցով ու ծարաւով տանջողների դարերում ի՞նչ աւելի մեծ մեղք, քան ուտել-խմելը գովել:

Այստեղ էլ սկզբում օգնութեան է հասնում այլաբանութիւնն ու սրբազան կերպարանքը· խաղողն ու գինին գովաբանւում են իբրեւ հաղորդութեան մաս: Այս գինեխումի եւ հացկերոյթի երգեր են երեւան գալիս առանց որեւէ նորացման եւ խորութեան, լաւ ուտողի եւ լաւ խմողի սին պարծանքով, մինչեւ որ 17-րդ դարում երբեմնի սարկաւագ եւ յայտնի նկարիչ Նաղաշ Յովնաթանի (1661—1722 թ.) գրչի տակ այդ երգերն ազնուանում են, ստանալով միանգամայն եւ լուրջ բովանդակութիւն:

Նրա տաղերի մէջ քրիստոնէական ոգին եւ աշխարհասիրութիւնը հաշտուած են, եւ վերջ է տրուած մեր հին քնարերգութեան ցաւագին շեշտին, որ կայ նոյնիսկ Յովհաննէս Թլկուրանցու եւ Գրիգոր Աղթամարցու մէջ: Յովնաթանին այլեւս բնաւ չի տանջում հոգու եւ մարմնի հին կռիւը: Նա ինքն ազատ ու հանգիստ խղճով «մարմնաւոր ուրախանում է» առանց հոգուն վնասելու երկիւղի, եւ ուրիշներին էլ շարունակ դրդում է «մարմնաւորին ուրախացէք, հոգեւորին մի կենայք ծոյլ»: Հոգին ուրեմն իր պահանջներն ունի, եւ նրան բաւարարութիւն պիտի տալ բարի գործով, հոգեւոր առաքինութիւններով· մարմինն էլ իր պահանջներն ունի, նրան էլ բաւականութիւն պիտի տալ խրախճանքով, երգելով ու պարելով, կին ու գինի սիրելով, այն էլ բնութեան գեղեցիկ ծոցում: Այս երկուսն այլեւս իրար չեն խանգարում: Աշխարհի ունայնութիւնն ու մահը նոյնպէս՝ այլեւս սոսկում չեն պատճառում բանաստեղծին եւ թունաւորում նրա վայելչասիրութիւնը: Այլ, ընդհակառակն, դա պատճառ է դառնում աւելի եւս վայելելու այս կեանքը: Մի անգամ որ աշխարհն ունայն է, սուտ երազ եւ մարմնաւոր ուրախութիւնը չի արգելուած, հետեւաբար պէտք է, որքան կարելի է, շատ վայելել, բայց ազնիւ կերպով, այս աշխարհի դրախտային կեանքը, սէրը եւ ուրախութիւնը:

Վաղիւըն ոչ գիտենք թէ զինչ ծնանի,
Մարդուս կեանքն վայրի ծաղկի նմանի,
Որ այսօր բացուել է՝ վաղիւն անցանի·

1 «Քուչակեան» երգերի տեսակը կամ ոտանաւորը կոչւում է «հայերէն կամ «հայրէն», «հայերէնի կարգ»:

*Խմե՛նք, եղբայրք, գինի, մեզ անո՛ւշ լինի,*
*Ածէ՛ք, խմե՛նք գինի, բանն Աստուած չինի...*

Եւ այսպէս, հայ քնարերգութիւնը վերջապէս հասնում է իր սկզբնական հեթանոսական զուարթ ու լուսաւոր աղբիւրին. բայց միայն քրիստոնէական հողով անցած լինելով՝ աւելի ազնուացած է, տարփալից վայրկեաններում նոյնիսկ՝ պարկեշտ ու զգաստ է. որովհետեւ մարմնաւոր հաճոյքը, ֆիզիկական վայելքը չէ միայն՝ որ դառնում է կեանքի նպատակը: Մարդս ինչքան էլ յարգում է մարմինը, խրախճանքի մէջ անգամ չի մոռանում, որ հոգի էլ ունի: Այս պատճառով եւ Յովնաթանի սիրոյ եւ ուրախութեան տաղերը, մի տեսակ խառնուրդ լինելով հեթանոսականի եւ քրիստոնէականի, մեր հին բանաստեղծութեան ամէնից զուարթ եւ պայծառ երգերն են, որոնց մէջ կեանքի հրճուանքն արտայայտւում է նուրբ, միանգամայն եւ զօրեղ կերպով: Ծնունդ 17-րդ դարի 80-ամեայ խաղաղութեան ժամանակի, նա ապրել է պարսից համեմատաբար բարւօք կառավարութեան շրջանում արեւելեան Հայաստանում մի լիառատ ժամանակ, որով եւ հասկանալի է նրա երգերի ուրախ եւ անդորր բնաւորութիւնը: Այդ ժամանակ եւ արեւելեան հայերի մէջ զօրանում է նոր պարսկական ազդեցութիւնը, որը երեւում է նաեւ Յովնաթանի երգերի մէջ, սկսւում է նոր երգիչների — աշուղների շրջանը: Յովնաթանն իսկապէս փակում է հին երգիչների շարքը՝ մի տեսակ միջին տեղ բռնելով հների եւ նորերի մէջ, բայց աւելի հներին պատկանելով, քան նորերին:

Դժբախտաբար այս հին բանաստեղծութիւնն իր լեզուով, ձեւով եւ ոգով չի շարունակւում մինչեւ 19-րդ դարը, որովհետեւ 17-րդ դարում առաջ է գալիս հնի, կրօնա-եկեղեցականի վերածնութեան եւ նոր գրաբար գրականութիւն:

# ՅԱՆԿ

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ

# ՅԱՆԿ

# ԱՇԽԱՐՀԻԿ ՈԳՈՒ ՎԵՐԱԾՈՒՄ



# ԱՌԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԵՐԿՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ԵՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՉՈՐՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ՎԵՑԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ



## ԵՕԹԵՐՈՐԴ ՅԱՒԵԼՈՒԱԾ